АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# ИСТОРИЯ АРМЯНСКОГО НАРОДА

РЕДАКЦИОННАЯ КОЛЛЕГИЯ МНОГОТОМНИКА

*Агаян Ц. П., Акопян А. М., Аракелян Б. Н., Галоян Г. А., Еремян С. Т., Нерсесян М. Г., Хачикян Л. С.*

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН · 1976

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ԲԱԶՄԱՀԱՏՈՐՅԱԿԻ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

*Աղայան Ծ. Պ., Առաքելյան Բ. Ն., Գալոյան Գ. Ա.,
Երեմյան Ս. Տ., Խաչիկյան Լ. Ս., Հակոբյան Ա. Մ.,
Ներսիսյան Մ. Գ.*





ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ · 1976

# ТОМ III

# АРМЕНИЯ В ЭПОХУ РАЗВИТОГО ФЕОДАЛИЗМА (С СЕРЕДИНЫ IX ПО СЕРЕДИНУ XIV ВВ.)


**РЕДАКЦИЯ ТОМА**

*Аракелян Б. Н.* (ответственный редактор),
*Бабаян Л. О.* (зам. отв. редактора), *Мнацаканян А. Ш.*, *Тер-Гевондян А. Н.*

# ՀԱՏՈՐ III

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԶԱՐԳԱՑԱԾ ՖԵՈԴԱԼԻԶՄԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ (IX Դ ԿԵՍԵՐԻՑ ՄԻՆՉԵՎ XIV Դ ԿԵՍԵՐԸ)

**ՀԱՏՈՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

*Առաքելյան Բ. Ն. (պատասխանատու խմբագիր),*
*Բաբայան Լ. Հ. (պատ. խմբագրի տեղակալ), Մնացականյան Ա. Շ., Տեր-Ղևոնդյան Ա. Ն.*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԲԱԺԻՆ Բ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ



272—65

## ԲԱԺԻՆ Գ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

## ԲԱԺԻՆ Դ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԵՎ ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## ԲԱԺԻՆ Ե

## ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ XII—XIII ԴԱՐԵՐՈՒՄ



## ԲԱԺԻՆ Զ

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՈՆՂՈԼ-ԹԱԹԱՐԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## ԲԱԺԻՆ Է

## ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

# ԱՌԱՋԱԲԱՆ

Հայ ժողովրդի պատմության սույն հատորը ամփոփում է զարգացած՝ ֆեոդալիզմի (ավատատիրության) IX դարի կեսից մինչև XIV դարի կեսն ընկած ժամանակաշրջանի պատմությունը։ Ինչպես հասարակական-տնտեսական, այնպես էլ քաղաքական ու մշակութային բոլոր ասպարեզներում այդ դարերը նշանակալից են հայ ժողովրդի անցյալի պատմության մեջ։

Արաբական տիրապետության ժամանակ երկրում մեծ փոփոխություններ էին կատարվել։ Ժառանգական խոշոր հողատիրությունը Հայաստանում թախտվել էր, սակայն IX դարում այն վերականգնվեց նոր հիմունքներով և աննախընթաց ձևով ընդարձակվեց, կազմավորվեցին ֆեոդալական խոշոր տիրույթներ։ Երկրի հասարակական տնտեսական զարգացման տեսակետից ավելի նշանակալից երևույթ էր ֆեոդալական մասնատիրական խոշոր կալվածքի ձևավորումը, որի վրա աշխարհիկ հողատերերը և վանքերը վարում էին սեփական ընդարձակ տնտեսություն։

Ֆեոդալական խոշոր տիրույթի ձևավորումը և նրա վրա բնակվող գյուղացիներից ռենտայի գանձումը, մանավանդ ֆեոդալների խոշոր սեփական տնտեսության առաջացումը և աշխատող ձեռքերով նրա ապահովման պահանջը, անխուսափելի դարձրեցին կախյալ գյուղացիության մի մասի հողին ամրացումը և անձնական կախման ենթարկումը։ Այսպիսով IX դարի վերջերին և X դարում սկսվեց գյուղացիության մի մասի ճորտացումը, որն Հայաստանում դրսևորվեց թույլ ձևերով և մնաց սահմանափակ շրջաններում։

Անցումը զարգացած ֆեոդալիզմին պայմանավորող հասարակական տնտեսական խոշոր երևույթներից մեկն էլ ֆեոդալական քաղաքի ձևավորումն էր, քաղաքներում կենտրոնացած արհեստավորության արտադրանքի, մասամբ նաև գյուղատնտեսական արտադրանքի ապրանքային բնույթ ստանալը և առևտրափոխանակային, վաշխառուական հարաբերությունների զարգացումը։ Դրանց անմիջական հետևանքը եղավ ֆեոդալական հասարակության մեջ քաղաքային դասի ու մեծատունների քաղաքային վերնախավի առաջացումը՝ առևտրա-վաշխառուական, ինչպես նաև վարչա-տնտեսական պաշտոնեության միջավայրից։ Քաղաքները անջատվելով գյուղից, դարձան արտադրական, տնտեսական, սոցիալական, քաղաքական ու մշակութային բնագավառների առաջընթացը պայմանավորող և բարդ կառուցվածք ունեցող խոշոր կենտրոններ։

Հողատիրության և հողօգտագործման նոր ձևերն ու հարաբերությունները մի կողմից և ֆեոդալական քաղաքի ձևավորումն ու առևտրա-փոխանակային

հարաբերությունների զարգացումը մյուս կողմից, ավելի խորացրին գյուղացիության կախումը ֆեոդալներից և սաստկացրին նրա շահագործումը։ Դրա հետևանքը եղավ գյուղացիության և իշխող ֆեոդալական դասակարգի ներհակությունների աննախընթաց սրումը, որը հանգեցրեց գյուղացիական սոցիալական ծավալուն ու երկարատև շարժման առաջացմանը՝ Թոնդրակյանների գաղափարախոսական դրոշի ներքո և գյուղացիական ապստամբությունները Սյունիքում և Այրարատում։

Խոշոր փոփոխություններ տեղի ունեցան նաև Հայաստանի քաղաքական կյանքում։ Հայ ժողովուրդը ազատագրվելով արաբական լծից, վերականգնեց իր պետականությունը։ Բագրատունյաց թագավորությունը, որն առաջացավ IX դարի երկրորդ կեսում ու հարատևեց մինչև XI դարի կեսերը, հանդիսացավ միջնադարյան Հայաստանի ոչ միայն քաղաքական, այլև հասարակական տնտեսական կյանքի առավել նշանակալից երևույթը։ Երկիրը բարգավաճեց և ապրեց նկատելի առաջադիմություն։ Բագրատունի թագավորները երկարատև ու համառ պայքար մղեցին համահայկական միասնական պետության ստեղծման և նրա կենտրոնացման համար։ Սակայն IX—XI դդ. սոցիալ-տնտեսական համապատասխան նախադրյալներ դեռևս չէին հասունացել, ընդհակառակը, ավելի զորեղ գտնվեցին երկրի միասնությանը և պետության կենտրոնացմանը հակազդող գործոնները, որոնց հետևանքը եղավ երկրի ֆեոդալական մանրատումը։ Հայաստանում բացի Բագրատունիների կենտրոնական թագավորությունից առաջացան Վասպուրականի, Կարսի, Սյունիքի և Տաշիր-Ձորագետի մանր թագավորությունները, ինչպես նաև մի քանի առանձին իշխանություններ ու ամիրայություններ։

Բագրատունյաց կենտրոնական թագավորության տնտեսական ու ռազմաքաղաքական գերադաս նշանակության և արտաքին վտանգին դիմագրավելու վճռական դերի շնորհիվ գավառական թագավորություններն ու իշխանությունները ճանաչում էին Բագրատունի թագավորների գերիշխանությունը և գտնվում էին կախման մեջ, սակայն դա չվերացրեց նրանց միջև եղած հակասությունները և չփրկեց ավելի զորեղ արտաքին թշնամիների ոտնձգություններից։

XI դարի քսանական թվականների սկզբներին ընկավ Վասպուրականի թագավորությունը, իսկ քառասունական թվականներին՝ Բագրատունիների կենտրոնական թագավորությունը։ Հայաստանը կարճ ժամանակով նվաճեցին բյուզանդական զորքերը և ապա սելջուկ-թուրքական հորդաները։ Բագրատունիների օրոք տեղի ունեցող տնտեսական վերելքն ու բարգավաճումը ավելի քան մեկ դար ընդհատվեցին։ Բուն Հայաստանը երկար դարերով զրկվեց իր անկախ պետականությունից։

Հայաստանից կատարվող արտագաղթերի հետևանքով Փոքր Ասիայում, Միջագետքում և Կիլիկիայում հաստատվեցին հայ բնակչության զանգվածները և ձևավորվեցին հայկական իշխանություններ։

Կիլիկիայում կազմավորվեց հայկական կայուն պետականություն, որը գոյատևեց մինչև XIV դարի վերջերը, ունեցավ հասարակական, տնտեսական, քաղաքական, մշակութային աչքի ընկնող զարգացում և հարուստ բաժին բացեց հայ ժողովրդի պատմության մեջ։

Բուն Հայաստանի մի մասում շարունակվում էր սելջուկյան թուրքերի տիրապետությունը, իսկ Հյուսիսային Հայաստանը XII դարի վերջին քառորդից, Հարևան Վրաստանի օգնությամբ, ազատագրվել էր և ապրում էր տնտեսական ու մշակութային մի նոր վերելք, ուր ավելի զարգացան արհեստներն ու առևտուրը, բարգավաճեցին քաղաքները։

Հակառակ Հայաստանի քաղաքական պատմության մեջ տեղի ունեցած որոշ ողբալի ու խաթարիչ անցքերի, Բագրատունյաց ժամանակաշրջանում, ինչպես և XII դ. վերջերին և XIII դ. առաջին երրորդում, երկիրը հասարակական տնտեսական խոշոր առաջադիմություն ապրեց, որով և նախադրյալներ ստեղծվեցին հայ մշակույթի աչքի ընկնող վերելքի համար։ Այդ դարաշրջանում հայ ժողովրդի մտավոր և մշակութային կյանքում խոշոր տեղաշարժեր կատարվեցին, և միջնադարյան հայ մշակույթը հասավ իր բարձրակետին։ Առավել նշանակալից էր հասարակական մտածողության, գրականության, արվեստի բնագավառում տեղի ունեցող աշխարհականացման երևույթը։ Եկեղեցական իշխող գաղափարախոսությունը և մշակույթը դեռևս X—XI դդ. տվեցին առաջին ճեղքերը, որոնք առավել խորացան XII—XIII դդ.։ Ժողովրդի, մանավանդ քաղաքային բնակչության, աշխարհիկ միտքն ու ճանաչողությունը ուղիներ էին որոնում և այս կամ այն չափով գտնում, թե հոգևոր, և թե նյութական մշակույթի գրեթե բոլոր բնագավառներում։ Բուն Հայաստանում և Կիլիկիայում ձևավորվում էր մի առաջադեմ, աչքի ընկնող մշակույթ, որը զարգացած միջնադարին բնորոշ բարձր մակարդակի քաղաքային մշակույթի կերպարանք ստացավ։ Այս ամենը այնքան նշանակալից էր և ակնառու, որ մի շարք գիտնականներ հայկական մշակույթի զարգացումը X—XIII դդ. որակում են իբրև «արևելյան վերածնունդ» (ռենեսանս) սաղմնավորում, երբեմն էլ այդտեղ տեսնելով նախավերածննդային երևույթներ։

Մի բան անվիճելի է՝ Հայաստանը X—XIII դդ. մի շարք երկրների հետ միասին ընթանում էր իր դարաշրջանի ժողովուրդների հասարակական, տնտեսական ու մշակութային զարգացման առաջին շարքերում։

Սակայն արևելքի երկրները, նրանց թվում և Հայաստանը, պատմական զարգացման իրենց ուղին նույնպիսի հաջողությամբ շարունակելու բախտը չունեցան։ Արևելքի առաջավոր երկրներում սրվել էին դասակարգային ներքին հակասությունները, ծայր էին առել երկպառակություններ և նկատելի էր այդ երկրների թուլացումը։ Ահա այս պայմաններում այնտեղ ձևավորվում էր աշխարհակալ մի ահավոր ուժ, որը շուտով պիտի ողողեր ամբողջ Միջին և Մերձավոր Արևելքը, ռուսական տափաստանները՝ իր նվաճումների և աշխարհակալության բացասական հետևանքներով գերազանցելով բոլոր նախորդ նվաճողներին։

XIII դ. երեսնական թվականներին սկսվեցին մոնղոլական նվաճողական արշավանքները և հաստատվեց նրանց տիրապետությունը բազմաթիվ երկրների ու ժողովուրդների վրա։

Մոնղոլները նվաճված երկրներում պատվաստեցին իրենց տնտեսաձևը՝ հետամնաց կիսաքոչվորական անասնապահությունը և Մանջուրիայից մինչև Եփրատի ափերը ավերեցին դարերի ընթացքում ժողովուրդների մեծագույն

ջանքերով կառուցած ոռոգման սիստեմները, քայքայեցին ոռոգելի երկրագործությունը, արգավանդ վարելահողերը վերածելով արոտատեղերի։ Մոնղոլները ստեղծեցին վարչական ճնշման և հարկային կողոպուտի մի ահավոր սիստեմ և նվաճված ժողովուրդների պարանոցին դրեցին ծանր ու դաժան լուծ։ Կ. Մարքսը, խոսելով մոնղոլական լծի մասին ընդգծում է, որ դա «մի լուծ էր, որը ոչ միայն ճնշում, այլև անպատվում ու ցամաքեցնում էր նրա տակ ընկած ժողովրդի հոգին իսկ։ Մոնղոլ թաթարները հաստատեցին սիստեմատիկ ահաբեկման մի վարչակարգ, որի սովորական ինստիտուտներն էին ավերն ու մասսայական կոտորածները»։

Մոնղոլական տիրապետության հետևանքով քայքայվեց ոչ միայն երկրագործությունը, այլև արհեստային արտադրությունը, ծանր ու անտանելի անկում ունեցան Հայաստանի բարգավաճ քաղաքները, ոչնչացվեցին դարերով կերտված մշակույթի շատ հուշարձաններ, առավել զանգվածային բնույթ ստացավ հայ ժողովրդի աղետալի արտագաղթը, իսկ ամայացող երկրում կիսավաչկատուն անասնապահ օտար ցեղերն էին հաստատում իրենց վրանները։

Սակայն տեղում մնացած խոշոր զանգվածները, կառչած մնալով Հայաստանի լեռնային անմատչելի բարձունքներին, շարունակեցին գոյամարտը հանուն ազգային անկախ պետականության և ինքնուրույն մշակույթի զարգացման։

Հայ ժողովրդի տնտեսական, հասարակական, քաղաքական ու մշակութային պատմության շուրջ կես հազարամյակ ընդգրկող սույն հատորը շարադրելու համար հեղինակները օգտագործել են հայկական, արաբական, բյուզանդական, վրացական, պարսկական և այլ բազմազան մատենագրական աղբյուրներ, հայերեն վիմագիր արձանագրություններ և հնագիտական պեղումների արդյունքները։ Լայնորեն օգտագործվել են նաև դարաշրջանին վերաբերող հայագիտական ուսումնասիրությունները։

* * *

Հատորը պատրաստել է հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով՝ Լ. Ռ. Ազարյան, Բ. Ն. Առաքելյան, Ս. Ս. Արևշատյան, Լ. Հ. Բաբայան, Հ. Մ. Բարթիկյան, Ս. Վ. Բոռնազյան, Ս. Տ. Երեմյան, Մ. Կ. Զուլալյան (տվյալ գլուխը գրել է Գ. Գ. Միքայելյանի «История Киликийского армянского государства» աշխատության համապատասխան բաժնի հիման վրա), Ն. Կ. Թահմիզյան, Ն. Ռ. Թովմասյան, Խ. Ա. Թորոսյան, Օ. Խ. Թոփուզյան, Լ. Գ. Խաչերյան, Ա. Ս. Կծոյան, Բ. Հ. Հարությունյան, Վ. Մ. Հարությունյան, Ռ. Ի. Մաթևոսյան, Ա. Շ. Մնացականյան, Խ. Ա. Մուշեղյան, Վ. Մ. Վարդանյան, Ա. Ն. Տեր-Ղևոնդյան, Բ. Ա. Ուլուբաբյան։ Անձնանունների ցանկը կազմել է Ռ. Ի. Մաթևոսյանը, տեղանունների ցանկը՝ Ժ. Մ. Ադոնցը։

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

## 1. ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

Արաբական խալիֆայությունը, որը միջին դարերի համաշխարհային հզոր տերություններից մեկն էր, IX դարում սկսեց թուլանալ և դեպի անկում ընթանալ։ Խալիֆայությունը զուրկ էր տնտեսական միասնական հիմքից, նրան ենթակա երկրները գտնվում էին զարգացման տարբեր մակարդակի վրա և իրար հետ տնտեսական սերտ կապեր չունեին։ Տարբեր լեզու, դավանանք և տարբեր շահեր ունեցող ժողովուրդների բռնի միավորումը մի ընդարձակածավալ պետության մեջ, կայուն և շատ երկարատև լինել չէր կարող։ Ակնհայտ էր դառնում խալիֆայության նաև ռազմական թուլացումը։ Արաբական ցեղերից կազմված աշխարհազորը դադարել էր նրա հենարանը լինելուց, ուստի Մուտասիմ խալիֆան (833—842) ստեղծեց գերազանցապես թուրք վարձկաններից բաղկացած մշտական հեծելազոր, որի ձեռքին շուտով խաղալիք դարձան հենց իրենք խալիֆաները։ Խալիֆայության ներքին հասարակական-տնտեսական, քաղաքական ներհակությունները գնալով ավելի ու ավելի խորանում էին։

Ֆեոդալական հարաբերությունների զարգացումը Արաբական խալիֆայության երկրներում, հատկապես ժառանգական հողատիրության աստիճանական ամրապնդումը և ընդարձակումը, հիմք դարձան կենտրոնախույս ուժերի զորեղացման և, ընդհակառակը, պատճառ՝ խալիֆայության կենտրոնական իշխանության թուլացման։ Դրանով տնտեսական և քաղաքական նախադրյալներ էին ստեղծվել տեղական անկախ իշխանությունների գոյացման համար։ Խալիֆայության դեմ ծագած ապստամբությունները Եգիպտոսում, Իրաքում, Իրանում, Անդրկովկասում և այլուր, մասնավորապես խուռամյանների ժողովրդական բնույթ ստացած ապստամբությունը Բաբեկի գլխավորությամբ, խարխլեցին Արաբական խալիֆայության հիմքերը։ Հենց այս ապստամբության տարիներին էր, որ խալիֆայությունը տվեց առաջին ճեղքերը և առաջացան Թահիրյանների պետությունը՝ Խորասանում (821) և Դուլաֆյանների իշխանությունը՝ Ատրպատականում՝ Համադան կենտրոնով (825)։ Խալիֆայության ներքին սո-

ցիալական ցնցումների արտահայտությունը եղավ նաև ստրկական իրավազուրկ վիճակում գտնվող զինջիների 869—883 թթ. ապստամբությունը։

Անկախության համար պայքար էին մղում Արաբական խալիֆայության լծի տակ ընկած համարյա բոլոր ժողովուրդները։ Թուլացած և դեպի անկում ընթացող խալիֆայությունն արդեն ի վիճակի չէր ոչ կանխել և ոչ էլ ճնշել ամենուրեք ծագող ապստամբությունները։ Ավելին՝ նա հարկադրված էր ճանաչել առաջացած տեղական իշխանությունները, ջանալով գեթ ձևականորեն պահպանել իր գերիշխանությունը նրանց վրա։

Հայաստանում իրենց ժառանգական հողատիրական իրավունքները վերականգնել, ընդարձակել և աննախընթաց կերպով զորեղացել էին Բագրատունյաց, Արծրունյաց և Սյունյաց նախարարական տները։ Բագրատունիների տիրույթները փռվում էին Տարոնից մինչև Սպեր, Շիրակ և Աշոցք, Արծրունիները տիրացել էին Վանա լճի արևելյան և հարավային ավազաններին, իսկ Սյունյաց նախարարները Սյունիքին էին միավորել Գեղարքունյաց երկիրը՝ Սևանա լճի ավազանը, ինչպես նաև Գողթն ու Նախճավան գավառները։

Արաբական խալիֆայությունը դեռևս VIII դարի վերջին ճանաչել էր Բագրատունի Աշոտ Մսակերի իշխանությունը Հայաստանի վրա, սակայն արաբ ոստիկանի գերիշխանությամբ։ Աշոտի մահից հետո հայոց իշխանի պաշտոնն անցել էր Տարոնի տեր Բագարատ Բագրատունուն, որին խալիֆ ալ-Մամունը (813—833) ճանաչեց իբրև «հրամանատար և իշխան իշխանաց հայոց»[1] կամ բատրիկ ալ-բատարիկա (պատրիկների պատրիկ), ինչպես անվանում է Թաբարին[2]։ Բագարատի եղբայր Սմբատ Բագրատունին, որը տիրում էր Շիրակին, դարձավ երկրի սպարապետը[3]։ Այսպիսով, արաբական իշխանությունների կողքին և նրանց ենթակա վիճակում առաջացան Հայաստանի տեղական վարչական և ռազմական իշխանությունները, որոնք անցան Բագրատունիների ձեռքը, թեև բաժանված նրա երկու ճյուղերի միջև։ Հայաստանի հարավում ստեղծվել էր Արծրունիների և Տարոնի Բագրատունիների խմբավորումը, որի մեջ մտնում էին Արծրունի 16 իշխաններ՝ Աշոտ Արծրունու գլխավորությամբ, Տարոնի Բագրատունիները՝ Բագարատ Բագրատունու գլխավորությամբ, ինչպես և Ամատունյաց, Գնունյաց, Մոկաց իշխանները։ Նրանք դաշինք էին հաստատել արաբական տիրապետության դեմ կռվելու համար։ Բագարատի իշխանաց իշխան դառնալը նկատելիորեն զորացրեց այս խմբավորման դիրքերը։

Երկրի հյուսիս-արևելքում առաջացել էր նախարարական մի այլ խմբավորում, որի մեջ մտնում էին Շիրակի Բագրատունիները, Սյունյաց իշխանները և ուրիշներ։ Այս խումբը, որի գլուխ կանգնած էր Սմբատ սպարապետը, ավելի զորեղ էր, մանավանդ կաթողիկոսական աթոռն էլ հյուսիսում էր գտնըվում, իսկ Վրաստանի և Աղվանքի իշխանների հետ հաստատված էին սերտ բարեկամական կապեր։

Եթե Բագարատ Բագրատունին, որոշ զգուշավորությամբ հանդերձ, գլխավորում էր արաբական բանակների անմիջական ներխուժմանը մշտապես են-

1 Հովհաննես Դրասխանակերտցի, Պատմություն Հայոց, Երուսաղեմ, 1867, էջ 147։
2 Տե՛ս Tabari, III, Leiden, 1885, S. 13—14.
3 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 145։

թակա հարավի իշխանների՝ խալիֆայության դեմ պայքարելու մարտական տրամադրությունները, ապա Սմբատ Բագրատունին նկատելիորեն զսպում էր հյուսիսի նախարարներին և ձգտում էր երկրի ինքնուրույնությանը հասնել արաբների հետ լեզու գտնելու և նրանցից քայլ առ քայլ զիջումներ ձեռք բերելու եղանակով։ Այսպիսով, երկու խմբավորումներն էլ ձգտում էին թոթափել արաբական լուծը։

Հայկական իշխանությունների դիրքերի ուժեղացմանը հետևեց հարկերի վճարման անկանոնությունը և քանակի նվազեցումը։ Հայոց իշխանների ժառանգական հողատիրության վերականգնումը մի կողմից և հարկերի նվազումը մյուս կողմից նպաստեցին երկրում սկսվող տնտեսական վերելքին և ամրապնդեցին անկախության համար մղվող պայքարի նյութական հնարավորությունները։ Մինչդեռ Արաբական խալիֆայությունը թուլանում էր վերջնականորեն։ Ջաֆար ալ-Մուտավաքիլ խալիֆայի (847—861) գահը կործանվելու աստիճան երերուն էր, ուստի նա ավելի պինդ կառչեց թուրք վարձկան զորքից, գործադրեց ամեն տեսակի անզոր ու անողոք բռնություններ։ Ավելին, նա բորբոքեց մահմեդական հոգևորականության և ժողովուրդների կրոնական մոլեռանդությունը։ Եթե դեռևս Օմար խալիֆայի օրոք մշակված մի շարք կանոնները, որոնցով իսլամին չհետևող ժողովուրդները շատ բաներում ստորադրվում էին իսլամի հետևորդներին և ստորացվում, արդեն զանց էին առնված, ապա Մուտավաքիլ խալիֆան կարգադրեց վերականգնել և խստագույնս գործադրել այդ կանոնները[4]։ Այս միջոցառումները ավելի ևս սրեցին ներհակությունները Արաբական խալիֆայության և նվաճված երկրների միջև։

Արաբական տիրապետությունից ազատագրվելու պայքարը Հայաստանում թևակոխել էր իր վերջին՝ վճռական փուլը և դրսևորվում էր ժողովրդական հուժկու ապստամբությունների ձևով։

Ապստամբություն էր բռնկել Հայաստանի հարավում, որտեղ Բագարատ Բագրատունու, Արծրունյաց և մյուս իշխանների գլխավորությամբ ջախջախվեցին Ալա Սավաֆիի (հայ աղբյուրներում Ծովափի կոչված) և Մուսա իբն Զուրարայի հրամանատարությամբ Վասպուրական և Տարոն ներխուժած արաբական բանակները։

Բացառիկ նշանակություն ունեցավ սասունցիների և խութեցիների ապստամբությունը Հովնան Խութեցու գլխավորությամբ և արաբական բանակի գլխովին ջախջախումը Մուշ-Տարոնում, որտեղ սպանվեց նաև արաբ զորավար Յուսուֆը[5]։ Այդ ապստամբությամբ ոչ միայն ձախողվեցին արաբական խալիֆայության նոր ոտնձգությունները, որոնք հղի էին ծանր հետևանքներով, այլև ժողովուրդը ցուցադրեց արաբական լուծը թոթափելու իր ուժն ու կամքը։

Յուսուֆի անփառունակ վախճանից հետո Հայաստանում, ինչպես նաև Վրաստանում ու Աղվանքում, ապստամբությունները նոր թափ ստացան։

Ըստ էության արաբների համար անհաջողությամբ վերջացան նաև Բու-

---

[4] Տե՛ս *H. Daghbaschean*, Gründung des Bagratiden Reiches durch Aschot Bagratuni, Berlin, 1893, S. 12—13: Լեո, *Հայոց պատմություն, հատ. 2, Երևան, 1947, էջ 440—441։*

[5] *Սասունցիների և խութեցիների ապստամբության վերաբերյալ մանրամասնությունները տե՛ս նախորդ հատորում։*

ղայի արշավանքը և չորս տարի տևած պատերազմները։ Բուղան իր ետևում թողել էր շատ ավերակներ, հայերի և արաբ զինվորների տասնյակ հազարավոր դիակներ, այնուամենայնիվ նա ոչ միայն չէր իրականացրել Հայաստանը սրով, սովով և գերեվարությամբ հնազանդեցնելու Մուտավաքիլ խալիֆայի քաղաքական ծրագիրը, այլև կրել էր բարոյական պարտություն։

850—852 թթ. ժողովրդական ապստամբությունը և դրան հետևած քառամյա պատերազմները, որոնք ուղեկցվում էին փոփոխակի հաջողություններով, ոչ միայն չամրապնդեցին արաբական տիրապետությունը Հայաստանում, Վրաստանում և Աղվանքում, այլև երևան բերեցին խալիֆայության կատարյալ անկարողությունը։ Բուղայի քառամյա կռիվները, փաստորեն, խալիֆայության վերջին, ամենախոշոր, բայց ապարդյուն ճիգերն էին՝ զսպելու հայերի և նրա հարևանների անհնազանդությունը։

Վրաստանը և Աղվանքը անընկճելի մնացին, իսկ Հայաստանը, չնայած դաժան ավերին ու սրածությանը, պահպանեց իր դիմադրական ուժը։ Վասպուրականը դեռևս պարզած էր պահում ապստամբության դրոշը։ Սյունիքում, որը քիչ էր տուժել, զորեղացել էին Բագրատունիներին դաշնակից իշխանները, իսկ Շիրակը և Բագրատունիների մյուս ընդարձակ տիրույթները, զերծ մնացին ասպատակությունից ու ավերից և ապահովեցին Բագրատունիների տնտեսական ու քաղաքական գերակշռությունը։

Բուղայի հեռանալուց հետո Հայաստանը շուտով ամոքեց իր վերքերը և հաջողությամբ շարունակեց պայքարը անկախության համար։ Աղվանքում և Կասպից ծովի ափերին կազմավորվել էին Շաքիի, Շիրվանի (Շամախի կենտրոնով) իշխանությունները, որոնք IX դ. կեսերին հիմնականում միավորվեցին Շիրվան շահերի բավականաչափ ընդարձակ իշխանության մեջ, որը դեռևս հարկատու էր Արաբական խալիֆայությանը։ Վրաստանում ևս առաջացել էին Ափխազաց թագավորությունը և ինքնուրույն իշխանություններ։ Այստեղ հաստատվել էր Բագրատունիների մի ճյուղը Ատրներսեհի որդի Աշոտ Բագրատունու գլխավորությամբ, որը 775 թ. խալիֆայության դեմ ապստամբության մասնակից Վասակ Բագրատունու թոռն էր։ Աշոտը ստեղծեց մի ընդարձակ իշխանություն[6], միավորելով Կղարջքը, Կողքիսը, Շավշեթը և այլ հողեր, կենտրոն ունենալով Արտանուջ քաղաքը։ Ինչպես Աշոտը, նույնպես և նրա հաջորդները՝ վրաց Բագրատունիները սերտորեն գործակցում էին հայ Բագրատունիներին։

Բագրատունիները արդեն ներկայացնում էին տնտեսական, ռազմական և քաղաքական մի ուժ, ընդունակ գլխավորելու հայկական պետականության վերականգնման համար մղվող պայքարը և իրենց շուրջ համախմբելու մյուս իշխաններին։

Բուղայի արշավանքից հետո խալիֆայությանը պարզ դարձավ, որ անհնարին է հաշվի չնստել հայոց իշխանների, մանավանդ Բագրատունիների հետ։ Այս պայմաններում է, որ սպարապետության պաշտոնը 855 թ. անցնում է Սմբատի որդի Աշոտ Բագրատունուն, որը խաղաղ և շատ ավելի նպաստավոր պայմաններում շարունակում է վարել երկրի վարչական և զինվորական իշխա-

---

[6] Տե՛ս „Histoire de la Géorgie", I, 261—264, Վարդան, Պատմություն, էջ 77։

նությունն իր ձեռքը կենտրոնացնելու քաղաքականություն։ Շուտով մի հարմար առիթ պես.ք է նպաստեր Աշոտին՝ ընդարձակելու իր տիրո.յթները։ Արաբական գերությունից փախչելով, Գրիգոր Մամիկոնյանը վերադառնում է Բագրևանդ։ Արաբ իշխանավորները վարձատրություն են նշանակում Գրիգորին սպանողին, որպեսզի նրա տիրույթ-կալվածքները հարքունիս գրավվեն։ Արաբական իշխանությունները հրամայում են Աշոտին՝ ձերբակալել Գրիգոր Մամիկոնյանին։ Վերջինս, սակայն, վերադարձից յոթ օր անց վախճանվում է։ Այսպիսով Աշոտը ազատվում է ոչ միայն հնարավոր ախոյանից և Մամիկոնյան իշխանի հետ ընդհարվելու անցանկալի հարկադրանքից, այլև ձեռք է բերում Մամիկոնյանների վերջին տիրույթը՝ Բագրևանդ գավառը[7]։ Մամիկոնյան, ինչպես և Կամսարական հզոր տոհմերի թուլացումը և անհետացումը պատմության թատերաբեմից նպաստեցին Բագրատունիների զորեղացմանը[8]։

Բագրատունիների տիրույթներն այնքան էին ընդարձակվել, որ բռնում էին Հայաստանի մի խոշոր մասը՝ իրենց սահմաններում ունենալով Շիրակը, Վանանդը, Տաշիրը, Կոգովիտը, Բագրևանդը, Տարոնը, Սասունը, Վասպուրականի մի մասը և Մոկաց աշխարհը։ Նրանց ազդեցությունը տարածվում էր նաև Այրարատի կենտրոնական ու հյուսիսային գավառների և այլ վայրերի վրա։ Աշոտ սպարապետի հեղինակությունը ճանաչված էր Վասպուրականի, Սյունիքի, ինչպես նաև Հայաստանի Արևելյան կողմանց և Վրաստանի շատ իշխանների կողմից[9]։ Նրան հարեցին նաև 857—859 թթ. գերությունից վերադարձած հայ իշխանները։

Հայկական պետականության վերականգնման համար նպաստավոր պայմաններ էին ստեղծվել նաև տնտեսական առումով։ Երկրի բնակչությունը, օգտվելով 855 թ. հետևած երեք տասնամյակ տիրող խաղաղությունից, շենացնում էր երկիրը, մշակում դաշտերն ու այգիները, հոտերով ու նախիրներով ծածկում լեռներն ու արոտները, զարգացնում արհեստներն ու առևտուրը. վերակենդանանում էին նաև հին քաղաքները, կառուցվում նորերը։ Այս ամենի շնորհիվ մեծանում էր երկրի տնտեսական և ռազմական զորությունը։

Արաբական խալիֆայության կազմալուծումը անդառնալիորեն խորանում էր։ Կենտրոնական կառավարությունը համարյա կորցրել էր իր իշխանությունը անկախության կամ անջատման ձգտող ծայրամասերի վրա։ Կենտրոնում վտանգավոր ուժ էր դարձել թուրքական վարձկան զինվորությունը, տեղի էին ունենում գահակալական խժդժություններ։ Գահ բարձրացած խալիֆա Ահմադ ալ-Մուստայինը (862—866) ոչինչ չկարողացավ անել խալիֆայության քայքայումը կանխելու համար։

## 2. ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՈՒՄԸ

Հայկական պետականության վերականգնման համար ստեղծված նպաստավոր պայմաններում քաղաքական ասպարեզում գործում էր Աշոտ Բագրա-

7 Տե՛ս Վարդան, էջ 81։

8 Տե՛ս *M. Ghazarian*, Armenien unter der arabischen Herrschaft, s. 197—199.

9 Տե՛ս Թովմա Արծրունի, *Թիֆլիս, 1917*, էջ 335, Վարդան, էջ 85։





տունին, մի նշանավոր ռազմական և քաղաքական գործիչ և նույնքան շնորհալի դիվանագետ։ Աշոտ Բագրատունին շտապեց օգտագործել այս բարենպաստ իրադրությունը։ 859 թ. Հայաստանի ոստիկան նշանակվեց Ալի Իբն Յահիա անունով մեկը, որն ի դեպ հայկական ծագման համար կոչվում էր ալ-Արմանի։ Հայ իշխանների պնդումով նա միջնորդից խալիֆայի առաջ, որը Աշոտ Բագրատունուն ճանաչեց Հայաստանի իշխանաց իշխան։ 862 թ. Աշոտին հանձնվեց նաև ամբողջ երկրի հարկահանությունը, «սակս հայոց և ամենայն բեկար արքունիս»[10], որով վճռականապես փոխվեց արաբական հարկահանության բռնություններով, կամայականություններով և կողոպուտներով ուղեկցվող կարգը։ Նվազեց նաև երկրից գանձվող հարկերի քանակը։ VIII դարի վերջերի 13 միլիոն դիրհեմի փոխարեն, IX դարի կեսերին, ինչպես վկայում է իբն Խորդադբեհը, Արմինիան վճարում էր 4 միլիոն դիրհեմ։ Ստացվող եկամուտների մեծագույն մասն այժմ մնում էր երկրում, նպաստելով նրա վերելքին ու բարգավաճմանը։

Աշոտը, ստանձնելով երկրի փաստական կառավարումը, իր եղբորը՝ Աբասին, որը քաջ զորավար էր, նշանակեց սպարապետ։ Շուտով Բագրատունիների քանակն աճեց և զինվորների թիվը հասավ 40 հազարի։ Այսպիսով, թեև տակավին արաբական տիրապետության և ոստիկանի վերահսկողության ներքո, Բագրատունիների ձեռքում կենտրոնացավ երկրի ինչպես վարչական և ռազմական, նույնպես և տնտեսական իշխանությունը։ Հսկայական նշանակություն ուներ նաև այն փաստը, որ երկրի իշխանաց իշխանի և սպարապետի պաշտոնը, որը դրանից առաջ գտնվում էր Բագրատունիների տոհմի երկու (Տարոնի և Շիրակի) իրար մրցակից ճյուղերի ձեռքում, այժմ միայն Շիրակի Բագրատունիների ձեռքն անցավ։ Արաբական տիրապետությունն այնուհետև ձևական բնույթ էր կրում։ Աշոտի իշխանությունը ճանաչում էին համարյա բոլոր հայ իշխանները։ Խոսելով Աշոտի իշխանաց-իշխան դառնալու մասին, Հովհաննես կաթողիկոսն ասում է. «Եվ այսպես Հայոց բոլոր նախարարներից ամենապատվականը և առաջինը նա եղավ, և ամենքը դաշինք էին կապում նրա հետ՝ որպես իսկական թագավորազնի հետ։ Այլև բոլորի մտքում կար, որ եթե հարկավոր դեպքը վրա հասնի, որ նաև նրա տոհմը՝ արժանի լինի թագավորական տոհմերի շարքը դասվելու, (ապա) նրանց պետք է ընտրել այլ նախարարական տոհմերի միջից»[11]։

Հայկական պետականության վերականգնման համար նպաստավոր էր նաև դարավոր ախոյաններ՝ Արաբական խալիֆայության և Բյուզանդական կայսրության մրցակցությունը։ IX դարի կեսերին այդ երկու հզոր տերությունների ուժերը համարյա հավասարակշռվել էին, ուստի հայկական ռազմական ուժերի օժանդակությունը մեկ կամ մյուս կողմին կարող էր խոշոր նշանակություն ունենալ։ Խալիֆայությանը մնում էր, ինչ գնով էլ լինի, պահպանել իր տիրապետությունը Հայաստանում և կանխել նրա բյուզանդական կողմնորոշումը, իսկ կայսրությունը ձգտում էր իրեն ենթարկել Հայաստանը կամ դարձնել նրան իր կրտսեր դաշնակիցը։ Հայաստանը պիտի ջանար օգուտ քաղել ախո-

---

10 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 169։

11 Նույն տեղում։

յան երկու պետությունների նմանօրինակ փոխհարաբերություններից և դիրքից։

Հայաստանն իր կողմը թեքելու նպատակով Բյուզանդական կայսրությունը դավանաբանական հարց բարձրացրեց՝ հայկական եկեղեցին բյուզանդականի հետ միավորելու վերաբերյալ։ Այս առթիվ Փոտ պատրիարքը համապատասխան նամակով դիմում է Աշոտին և չի զլանում շռայլել մեծարանքի հետևյալ խոսքերը. «քաջայաղթ բարետոհմութեամբ, հզօրագոյնդ ճոխութեամբ, բարձրագոյնդ ի համասեռս, Աշոտ իշխանդ Հայոց Մեծաց... ով վսեմագոյնդ»[12]։

Շիրակավանում 869 թ. գումարված եկեղեցական ժողովի որոշման համաձայն Աշոտը մերժում է դավանաբանական միավորման առաջարկը, միաժամանակ հարգալից եղանակով հասկացնում, որ կողմնակից է քաղաքական դաշինքի՝ կայսրության հետ[13]։

Աշոտ Բագրատունին ծավալում է եռանդուն գործունեություն, հատուկ ուշադրություն է դարձնում բանակի ամրապնդման և զինվառության վրա, վերականգնում է ավերված բերդերը։ Շատ շուտով առիթ ստեղծվեց ցուցադրելու հայկական բանակի ուժն ու զորությունը։ Աշոտի իշխանաց իշխան դառնալուց մի տարի էր անցել, երբ արաբ իշխանավոր Սևադայի որդի Ջահապը որոշեց ընդհարվել Բագրատունիների հետ և խլել նրանց տիրույթների մի մասը։ Այդ նպատակով նա մեծ զորքով մտավ Արշարունիք և եկավ հաստատվեց Արաքսի աջ ափին՝ Քառասունք կոչված վայրում։ Այստեղ, Կաղզվանի մոտ, նրա վրա հարձակվեց Աբաս սպարապետը՝ 40 հազար զորքով և գլխովին ջախջախեց նրան։ Պատմիչի ասելով Շահապին (իմա՝ Ջահապին) հազիվ հաջողվեց փախչել 26 մարդկանցով և փրկել գլուխը[14]։

Աշոտը մեծ ջանքեր գործադրեց հայ նախարարների միջև ծագած գժտությունները վերացնելու և իր իշխանությունը նրանց վրա ամրապնդելու ուղղությամբ։ Շուտով նա Զաքարիա կաթողիկոսի հետ մեկնեց Վասպուրական՝ միջամտելու Արծրունի իշխանների գժտություններին։ Գործը ավարտվեց խաղաղությամբ և խնամիական կապերի հաստատմամբ. Աշոտն իր դստերը կնության տվեց Վասպուրականի Դերենիկ գահերեց իշխանին[15]։ Իշխաններին իր շուրջը համախմբելու և դաշինք հաստատելու նպատակով նա իր Մարիամ անունով աղջկան էլ ամուսնացրեց Գեղարքունիքում իշխող Սյունյաց Վասակ Գաբուռ իշխանի հետ[16]։ Քաղաքական բնույթի այս ամուսնությունները նպատակ ունեին ամրապնդելու իշխանաց իշխանի դիրքը երկրում։ Երբ արաբական գերությունից վերադարձավ Վասպուրականի Աշոտ գահերեց իշխանը և Արծրունյաց իշխանների միջև նոր գժտություններ ու ընդհարումներ ծագեցին, դարձյալ միջամտողը և խաղաղություն վերականգնողը իշխանաց իշխան Աշոտ Բագրատունին էր, որի հեղինակությունը հանրաճանաչ էր դարձել։ Խոսելով Աշոտի մասին, Ստեփանոս Տարոնեցին վկայում է, որ նա, նախքան թագավոր

---

12 «Գիրք թղթոց», էջ 279—281։

13 Տե՛ս նույն տեղում, էջ 293—294։

14 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 110։

15 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 334—336։

16 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 171։

դառնալը, երեսնամյա մի միջոց եղել է «իշխանաց իշխան, իշխան Հայոց և Վրաց, յաղթող ամենայն ազգացս շուրջանակի»։

Աշոտ իշխանաց իշխանը շուտով պիտի միջամտեր նաև վրաց գործերին։ Կղարջքի Աշոտ կուրապաղատի մահից հետո արաբները խլել էին Քարթլին։ Աշոտի որդի Բագրատը ետ ստացավ այն, իսկ մյուս որդին՝ Գուարամը իր իշխանությանը միացրեց նաև Ջավախքը, Թռեղքը, Տաշիրքը, Աշոցքը (Աբոց) և Արդահանը (Արտան)[17]։ Բագրատի մահից հետո (876) Թռեղքում հաստատվեց վրաց իշխան Լիպարիտը, իրեն հովանավոր ճանաչելով Բագրատի որդի Դավթին, իսկ Ափխազաց թագավորը գրավեց Քարթլին։ Ահա այս կռիվներին էր, որ միջամտեց Աշոտ իշխանաց իշխանը և զորքով մտավ Քարթլի։ Վրաց Դավիթ և Լիպարիտ իշխաններն անցան նրա կողմը, իսկ Գուարամը՝ Ափխազաց թագավորի կողմը։ Աշոտի գերակշիռ ուժերն ու հեղինակությունն օգնեցին վերջ դնելու ծագած կռիվներին։ Հաշտություն և բարեկամություն հաստատվեց նաև Աշոտի ու Գուարամի միջև։ Աշոտը իր քրոջը կնության տվեց Գուարամին, իսկ վերջինս իշխանաց իշխանին զիջեց Աշոցքը[18]։

Այս ժամանակ արաբական վարչական միավոր Արմինիայի ոստիկան Իսա իբն Շայխը Պարտավի քաղաքապետ էր նշանակել Մուհամմադ Աբուլվերին (հայ աղբյուրներում Եմենիկ Մահմեդ որդի Ապլվիտա), որը խռովություն բարձրացրեց ոստիկանի դեմ։ Վերջինս Աշոտ իշխանաց իշխանի օգնությամբ նրան ճնշել փորձեց, բայց Աշոտը չընդառաջեց։ Նշանակված լինելով Միջագետքի կուսակալ, Իսա ոստիկանը գնաց իր պաշտոնավայրը, իսկ Մուհամմադ (Մահմեդ) Եմենիկը ինքը կամեցավ դառնալ Արմինիայի ոստիկան։ Սակայն հայ իշխանները, Աշոտ Բագրատունու գլխավորությամբ, մերժեցին նրա հավակնությունները և խալիֆային խնդրեցին ոստիկան ուղարկելու Ահմադ իբն Խալիդին (հայ աղբյուրներում Ահմաթ որդի Հալթի), որը տարիներ առաջ վարել էր այդ պաշտոնը։ Խալիֆը ընդառաջեց հայերի պահանջին, և ոստիկան նշանակված Ահմադը՝ Բաղեշի վրայով հասավ Դատվան, որը արաբների սեփական ժառանգությունը կազմող մի ավան էր Վանա լճի արևմտյան ափին։ Այստեղ նրան նվերներով դիմավորեցին Վասպուրականի մի քանի իշխաններ՝ գահերեց իշխան Գրիգորի Դերենիկի գլխավորությամբ, Տարոնի Աշոտ Կուրապաղատը, Պարտավի տեր Եմենիկ Մուհամմադի պատվիրակները, Մոկաց իշխան Մուշեղ Բագրատունին և ուրիշներ։ Ինքը՝ Աշոտ իշխանաց իշխանը ուղարկել էր իր կրտսեր եղբորը՝ Շապուհին, հարկ չհամարելով անձամբ ներկայանալ նոր ոստիկանին։ Դատվան էին եկել նաև Մանազկերտի Կայսիկ ամիրա Աբու-լ-Վարդը (Թովմայի մոտ Ապլբառ) և հարավի այլ արաբ իշխանավորներ։

Դատվանում Ահմադը, Եմենիկ Մուհամմադի ներկայացուցիչները, Աբու-լ-Վարդը և արաբ մյուս իշխանավորները դավադրություն ծրագրեցին, որի նպատակն էր կոտորել հայ նախարարներին, վերացնել հայկական իշխանությունը և ամբողջովին տիրանալ երկրին։ Դավադրության ծրագրի համաձայն նոր ոստիկան Ահմադը Պարտավի ամիրա Եմենիկ Մուհամմադին նամակ է ուղար-

---

17 Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934, էջ 201։

18 Տե՛ս նույն տեղում։

կում, որի մեջ, Թովմա Արծրունու ասելով, գրում է. «երբ ես մտնեմ Դվին քաղաքը և արքունի հարկը վերցնեմ և հայոց իշխանների կասկածները փարատեմ, և երբ նրանք մոտս գան՝ դու ճակատամարտի պատրվակով իմ վրա զորք գումարիր և դուրս արի իմ դեմ պատերազմի, և միասին սրանց մեր ձեռքը կգցենք և կզրկենք Հայաստանի իշխանությունից»[19]։

Սակայն Աշոտ իշխանաց իշխանը, որը հեռատես պետական գործիչ էր, բոլոր ճանապարհների, կամուրջների վրա ու ձորերում դրել էր իր հետախույզներին, որոնք բռնում են Մուհամմադին ուղարկված նամակը։ Դատվանում Աբու-լ-Վարդը և մյուսները դիմում են նաև բանսարկությունների, որ իբրև թե, հայ իշխանները կամենում են վնասել ոստիկանին։ Դերենիկ Արծրունուն էլ հայտնում են, թե Աշոտ Կուրապաղատը նրան չարախոսել է ոստիկանի առջև, կամեցել է նրան իշխանությունից գցել և նման այլ բաներ։ Վասպուրականի իշխանները հասկանալով, որ դավադրություն է նյութվում, որսի դուրս գալու պատրվակով հեռանում են իրենց երկիրը։ Նույն միջոցին է դիմում նաև Աշոտ Կուրապաղատը, բայց Դերենիկ Արծրունին կալանավորել է տալիս նրան, և Տարոնի իշխանությունը անցնում է Բագարատի մյուս որդուն՝ Դավթին։ Դատվանից հեռանում են նաև մյուս իշխանները, իսկ Ահմադը, կայսիկ զորքի ուղեկցությամբ, գալիս է Դվին՝ հույս ունենալով իրականացնել ծրագրված դավադրությունը։ Աշոտ իշխանաց իշխանը, ձևացնելով, թե ոչնչից տեղյակ չէ, նվերներով գալիս է Դվին, միաժամանակ եղբորը՝ Աբաս սպարապետին պատվիրում է զորքով մտնել քաղաք՝ դավադրությունը ճնշելու պատրաստությամբ։

Ահմադ իբն Խալիդը տարակուսանք չունենալով դավադրության հաջողության վերաբերյալ, ավելի էր գոռոզացել։ Մի օր էլ, երբ նա շքեղ վրանում բազմած մեծամեծներից պատիվներ էր ընդունում, սպասելով նաև Աշոտ իշխանաց իշխանին, վերջինիս փոխարեն ներս է մտնում Աբաս զորավարը և նրան է պարզում Մուհամմադին ուղարկված նամակը։ Խարդախ ոստիկանը թակարդն էր ընկած։

Ոստիկանի և Կայսիկ ամիրայի զորքերը զինաթափ են արվում և ազատ արձակվում, իսկ Ահմադին, նժույգի փոխարեն ջորու վրա նստեցրած իշխանաց իշխանի որդի Շապուհը իր զորքով տանում է մինչև Միջագետքի սահմանը և ազատ արձակում, որ «գնա այնտեղ, որտեղից եկել էր»[20]։

Այսպիսի անփառունակ վախճան ունեցավ արաբական տիրապետությունը Հայաստանում, որն ավելի քան երկու դար տևեց։

Հավանական է, որ այս անցքերը տեղի են ունեցել 874—875թթ.։ Աշոտ իշխանաց իշխանը, այնուհետև, առանց ժամանակ կորցնելու, ջանում է ամրապնդել իր իշխանությունը երկրի հյուսիսային մասերում։ Վրաց կուրապաղատի որդի Գուարամի միջոցով Աշոտը ձերբակալել տվեց Տփղիսի արար ամիրային։ Այնուհետև նա շարժվելով դեպի հարավ, հնազանդեցնում է Բերկրիի և Խլաթի ամիրաներին, ապա պաշարում Մանազկերտը։ Բայց տեղեկանալով որ Վասպուրականում ծագած ներքին գժտությունները խորացել են և վտանգ է սպառնում գահերեց իշխան՝ իր փեսա Դերենիկի կյանքին, շտապ հաշտություն

19 Թովմա Արծրունի, էջ 353։

20 Նույն տեղում, էջ 358—359։

*է կնքում Մանազկերտի Աբու-լ-վարդ ամիրայի հետ և ուղղվում Վասպուրական, որտեղ, Գեորգ կաթողիկոսի հետ միասին, խաղաղությամբ վերջ է դնում Վասպուրականի իշխանների, ինչպես նաև նրանց ու Տարոնի կյուրապաղատի միջև ծագած գժտություններին։ Թովմա Արծրունին, թեև Վասպուրականի Արծրունիների տոհմական պատմիչն է, մեծ դրվատանքով է խոսում իշխանաց իշխան Աշոտ Բագրատունու մասին, ասելով, որ նա «բարձրագույն և հանճարեղագույնն էր, քան զընաւ Հայաստանեայս»[21]։ Իսկ Հովհաննես կաթողիկոսը, ինչպես նշվեց, ասում է, որ ամենքը Աշոտի հետ դաշինք էին կնքում իբրև թագավորազնի հետ[22]։ Դեռևս 870-ական թվականներին, ինչպես երևում է Սևանի 874 թ. արձանագրությունից, Աշոտ Բագրատունին հայ նախարարների կողմից ճանաչված էր թագավոր Հայոց, իսկ Գառնիի 879 թ. արձանագրության մեջ նրա տիկինը՝ Կատրանիդեն կոչվում է Հայոց թագուհի։*



**Սևանա կղզի. ս. Առաքելոց եկեղեցին, կառուցված 870-ական թթ.**

*Բյուզանդական կայսրությունն էլ շուտով դաշինք է առաջարկում Աշոտին։ Բյուզանդիայում 867 թ. գահ էր բարձրացել ծագումով հայ Վասիլ Ա կայսրը, որը, այսպես կոչված Մակեդոնական հարստության (867—1057) հիմնադիրը եղավ։ Հովհաննես կաթողիկոսը վկայում է. «այլ և հունաց Բարսեղ մեծ կայսրը խաղաղության և հաճության և սիրո փոքր պայման չէր, որ հաստատեց մեր արքա Աշոտի հետ»[23]։ Վասիլ Ա կայսրը, որը ուշի ուշով հետևում էր Հայաստա-*

21 Թովմա Արծրունի. էջ 357։

22 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 169։

23 Նույն տեղում, էջ 177։

նի զորեղացմանը և ինքնուրույնության վերականգնմանը, 876 թ. Հայաստան ուղարկեց Նիկիտ անունով պալատականին և Աշոտ Բագրատունուն խնդրեց, հայ Արշակունիների ժամանակների ավանդությամբ, իբրև թագադիր ասպետ, թագ ուղարկելու իրեն՝ Վասիլին։ Այդ ավանդական սովորության հանկարծակի վերհիշումը ոչ այլ ինչ էր, եթե ոչ քաղաքական դաշինքի ստեղծում երկու երկրների միջև։ Մի դաշինք, որը խիստ օգտակար էր թե՛ մեկ, և թե՛ մյուս կողմին, քանի որ ապահովում էր Վասիլի ժամանակ զորեղացած Բյուզանդիայի կատարյալ գերակշռությունը խալիֆայության նկատմամբ, իսկ հայերին էլ օժանդակում էր ավելի վճռական լինել երկրի անկախությունը վերականգնելու իրենց պայքարում։

Այս նպաստավոր պարագաներում Աշոտ Բագրատունու իշխանությունը ավելի էր ամրապնդվել և նրան «չէր ինչ պակաս՝ բայց ի թագէ...»[24]։ Եվ ահա հայ իշխանները, որոնք համախմբված էին Աշոտի շուրջը, միջնորդեցին խալիֆայի առջև՝ նրան թագավոր ճանաչելու։ Անցքերին ժամանակով մոտիկ Հովհաննես կաթողիկոսը ասում է. Հայոց նախարարները միաբանությամբ խորհուրդ անելով թագավորեցնելու նրան (Աշոտին) իրենց վրա, զեկուցում են ամիրապետին (խալիֆային) Շեխի որդի Հիսեյի (Իսա իբն Շայխ) միջոցով[25]։ Ստեփանոս Օրբելյանի վկայությամբ խալիֆայի առաջ միջնորդել և Աշոտին թագավոր են դարձրել Սյունյաց և Արծրունյաց իշխանները, հայոց մյուս իշխանների հետ միասին[26]։ Այս տեղեկությունները կարևոր են նաև նրանով, որ վկայում են Բագրատունիներին մրցակից երկու նախարարական տների՝ Արծրունիների և Սյունյաց նախարարների համերաշխությունը՝ Աշոտի հետ։

Մուտամիդ խալիֆան չէր կարող հաշվի չնստել փաստական իրադրության հետ և մերժել հայ իշխանների միահամուռ պահանջը, դրա համար նա բավարար չափով ուժեր չուներ։ Բացի այդ, մերժումը կլիներ անզգույշ քայլ, որը հայերին ամբողջովին կմղեր Բյուզանդիայի կողմը։ Ստեղծված պայմաններում խալիֆային մնում էր մի ելք՝ ճանաչել Աշոտին հայոց թագավոր՝ պահպանելով թեկուզ իր անվանական գերիշխանությունը Հայաստանում։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ նույն Իսա Իբն Շայխն էր, որ խալիֆայից Աշոտին բերեց թագ, նաև թագավորական զգեստներ, պարգևներ, պատիվներ և նժույգներ՝ զենքերով ու զարդերով[27]։ 884 կամ 885 թվականին հավաքվում են երկրի իշխանները, Գեորգ կաթողիկոսը և հանդիսավոր կերպով թագադրում Աշոտին[28], որին շտապեց Հայաստանի թագավոր ճանաչել նաև դաշնակից Բյուզանդիան։

Արշակունյաց թագավորության անկումից (428) մոտ չորս և կես դար անց վերականգնվում է հայկական պետականությունը։

Դա հայ ժողովրդի պատմության մեջ հսկայական նշանակություն ունեցող,

---

24 Վարդան, Հավաքումն պատմութեան, Վենետիկ, 1862, էջ 85։

25 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 175։

26 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 175։

27 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 175—176։

28 Աշոտ Ա-ի թագավորության տարեթվի առթիվ տե՛ս «Մանր ժամանակագրություններ», կազմեց Վ. Ա. Հակոբյան, հատ. 2, Երևան, 1956, էջ 156—162։

կարելի է ասել շրջադարձային և դարակազմիկ մի եղելություն էր։ Հայ ժողովուրդը դարավոր ընդմիջումից հետո կրկին դառնում էր պետականություն ունեցող ինքնուրույն ժողովուրդ։ Հայկական պետականության վերականգնումը սոսկ քաղաքական նշանակություն չուներ, այն ապահովեց երկրի տնտեսական բարգավաճումը և մշակութային աննախընթաց զարգացումը։ Բագրատունի թագավորների իշխանությունը տարածվում էր երկրի մեծագույն մասի վրա։ Հայաստանից անջատվել էին միայն արևմտյան գավառները, որոնք մտել էին Բյուզանդական կայսրության կազմի մեջ և հարավ-արևմտյան գավառները, որոնք միացված էին Միջագետքի արաբական իշխանությանը։ Այդ ժամանակներում հայոց թագավորի վարչա-քաղաքական իրավասությանը ենթակա էին նաև Արևելյան Վրաստանը և Աղվանքի հայաբնակ մասը, քանի որ մինչև թագավոր դառնալը Աշոտը արաբական Արմինիա վարչական միավորի իշխանաց իշխանն էր։

Աշոտ Բագրատունու թագադրությունը, Ահմադ ոստիկանին երկրից վտարելուց հետո, Հայաստանի փաստորեն վերականգնված անկախության իրավական ճանաչումն էր՝ խալիֆայության և Բյուզանդիայի կողմից։ Լինելով պետական խոշոր գործիչ և երևան բերելով ռազմա-քաղաքական, տնտեսական և դիվանագիտական մեծ ձեռներեցություն, Աշոտ արքան հետագայում է՛լ ավելի ամրապնդեց իր թագավորությունը։

Աշոտ Ա-ը հայ ժողովրդի պատմության մեջ նշանակալից դեր խաղաց։ Բագրատունյաց ժամանակաշրջանի պատմիչ Ստեփանոս Տարոնեցի Ասողիկը բարձր է գնահատում նրան որպես նորոգիչ Հայոց թագավորության, «երրորդ նորոգումն թագաւորութեանս Հայոց ի ձեռն Աշոտոյ Բագրատունւոյ (եղեւ)»[29]։

29 Ստեփանոս Տարոնեցի, էջ 157։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ԵՐԿԻՐԸ ՄԻԱՎՈՐԵԼՈՒ ՁԳՏՈՒՄ ԵՎ ՊԱՅՔԱՐ ՕՏԱՐ ՆԵՐԽՈՒԺՄԱՆ ԴԵՄ

## 1. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԵՎ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Աշոտ Ա-ը, ինչպես և նրա հաջորդ Սմբատ Ա-ը ջանք չէին խնայում, որպեսզի իրենց թագավորական իշխանությանը ենթարկվի ամբողջ Հայաստանը։ Սակայն դրան մեծապես խանգարում էին ֆեոդալական ժառանգական հողատիրության ձևավորման վրա հիմնված մեծ ու փոքր իշխանությունների անջատողական ձգտումները, ինչպես և արտաքին թշնամի ուժերը։*

*Աշոտ Ա-ի օրոք, երբ պայքարը հիմնականում ընթանում էր հայ պետականության վերականգնման և ամրացման ուղղությամբ, ֆեոդալական անջատական ձգտումներն ու պայքարը ցայտուն դրսևորումներ չունեցան, քանի որ դեռևս շարունակվում էր կռիվը իշխանական տոհմերի ներսում՝ նրանց առանձին ճյուղերի տիրույթների սահմանները, նույնիսկ սրի ուժով, որոշելու համար։*

*Այդպիսին էր դրությունը Սյունիքում, մանավանդ Վասպուրականում, որտեղ այդ պայքարի զոհը դարձավ Աշոտ թագավորի փեսա Դերենիկը։ Աշոտ Ա-ը միջամտում էր թե մեկ, թե մյուս նահանգի գործերին՝ որպես Հայաստանի թագավոր և գերագույն տեր։*

*Մտնելով Վրաստան Աշոտ արքան 887 թ. հասավ մինչև Կովկասի գլխավոր լեռնաշղթան, ընկճեց այստեղի անհնազանդ ցեղերին և վերջ դնելով միջֆեոդալական խլրտումներին, բարեկամական դաշինք կնքեց Եգերաց թագավորի հետ ու վերադարձավ Հայաստան։*

*Աշոտ թագավորի գերադասությունը ընդունում էր նաև նոր միայն թագ ստացած Աղվանից Համամ թագավորը։ Աշոտը խաղաղություն հաստատեց նաև Արծրունյաց իշխանների միջև և Վասպուրականի գահերեց իշխան նշանակեց իր փեսա Դերենիկի ավագ որդուն՝ Սարգիս-Աշոտին, որը դեռևս պատանի էր և մշտապես երախտագետ ու հավատարիմ մնաց իր թագակիր քեռուն։*

*Այնուհետև Աշոտ Ա-ը իր որդի Սմբատի գլխավորությամբ, որին իշխանաց իշխան էր կարգել, զորք ուղարկեց Գուգարք և Ուտիք՝ վերջ տալու այնտեղ եղած որոշ իշխանների անհնազանդությանը։*

*Դրությունը շատ ավելի բարենպաստ ու կայուն էր Սյունիքում։ Այստեղ գահերեց իշխան Վասակը և նրան հաջորդած Աշոտ իշխանը հավատարիմ ու*

հնազանդ էին հայոց արքային և խաղաղ շինարարությամբ էին զբաղված։ Այսպիսով, Աշոտ Ա թագավորը տնտեսական և քաղաքական նշանակալից գործունեություն ծավալեց, ցուցաբերելով իր կարողությունը նաև պետական շինարարության բնագավառում։

Հայկական թագավորությունը նկատելիորեն ամրապնդված էր, և երկրում հաստատված խաղաղությունը իր պտուղներն էր տալիս։

Դրվատելով Աշոտ թագավորի խաղաղ և շինարար գործունեությունը, Հովհաննես կաթողիկոսը գրում է. «Եվ այնուհետև բազում և երևելի կարգեր սահմանեց իր տերութեան երկրում, կարգավորումներ (յօրինուածս) արեց տոհմերի, տների, քաղաքների, շեների, դաստակերտների և հավասարապես յուրաքանչյուրին համապատասխան կարգեր սահմանեց՝ լեռնականների և ջերմահովիտ բարեխառն դաշտաբնակների (համար)։ Եվ բոլոր հարթավայրերում ագարակներ և գոմեր դրեց, իսկ մեղմ վայրերը այգիներով և բուրաստաններով զարդարեց. և այն ամենում ինչը վայել էր թագավորությանը և ինչ որ թագավորության ներսում կամ ինչ որ թագավորության շուրջը պիտի կարգավորվեր՝ ոչ մի բանում չհապաղեց. և գրեթե մեր բոլոր թագավորներից հարստագույն և խոհեմագույն գտնվեց։ Եւ այսպես նորոգված թագավորության մեջ մեր Թորգոմյան ազգը բարձրացրեց»[1]։

Պատմիչի այս վկայությունից երևում է, որ Աշոտ Բագրատունին կարգավորել է երկրի ինչպես ներքին, նույնպես և արտաքին գործերը։ Նրա օրոք զարգանում էին երկրագործությունը, արհեստները, առևտուրը, աճում էին քաղաքները։

Աշոտ Ա-ի գերագույն իշխանությունը ճանաչում էին նաև վրաց գահերեց իշխան Ատրներսեհը և Հայաստանի հարավում կազմավորված արաբական ամիրայությունները։ IX դարի վերջերին Մանազկերտի ամիրա Աբու-լ-Վարդը զորեղացել էր և տիրում էր նաև Խլաթ, Արճեշ ու Բերկրի քաղաքներին, սակայն ճանաչում էր Աշոտ արքայի իշխանությունը։ Այս առթիվ բյուզանդական Կոստանդին Ծիրանածին կայսրը գրում է. «Մանցիկիերտին էր տիրում Ապելվարդը, որը գտնվում էր իշխանաց իշխան Աշոտի՝ իշխանաց իշխան Սմբատի հոր իշխանության ներքո։ Իշխանաց իշխան Աշոտը այս Ապելվարդին տվեց նաև Խլիատ ամրոցը, Արզեսը և Պերկրին, քանզի արևելքի բոլոր շրջանները գտնվում էին վերոհիշյալ իշխանաց իշխան Աշոտի՝ իշխանաց իշխան Սմբատի հոր ձեռքում»[2]։

Աշոտ Ա Բագրատունին բարեկամական հարաբերություններ էր հաստատել նաև Բյուզանդական կայսրության հետ[3]։

Աշոտի թագավորության հետագա տարիներին երկիրը խաղաղ էր։ Իր մահից (890 թ. վերջերին) հետո նա հետնորդին ժառանգություն թողեց բավականաչափ ընդարձակ և խաղաղ բարգավաճող երկիր։

Աշոտի մահից հետո գահը, ըստ հին հայկական սովորության, պետք է անցներ նրա ավագ որդի, իշխանաց իշխան Սմբատին։ Սակայն արքայական

---

1 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 176։

2 Կոստանդին Ծիրանածին, Թարգմանություն բնագրից, Առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 10։

3 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 177։

*թագին տիրանալու հավակնություն ուներ նաև Աշոտ Ա-ի եղբայր Աբաս սպարապետը, որը փորձեց իր կողմը գրավել վրաց գահերեց իշխան Ատրներսեհին, բայց վերջինս հավատարիմ մնաց Սմբատին և նրան անձամբ հագցրեց թագավորական զգեստներ։ Զրգռված Աբասը կալանավորեց Ատրներսեհին և փորձեց գահը խլել զենքի ուժով։ Աբասի և Սմբատի միջև նույնիսկ պատերազմական ընդհարումներ ծագեցին, որոնց հետևանքով նկատելիորեն տուժեցին Շիրակը և Վանանդը։ Սա ֆեոդալական երկպառակությունների հետևանքով առաջացած առաջին ճեղքվածքն էր, որը խորանալով պետք է խախտեր Բագրատունյաց թագավորության միասնությունը։ Գեորգ կաթողիկոսի և ուրիշների միջամտությամբ հաշտություն կնքվեց մրցակիցների միջև, և Սմբատը հաստատվեց հոր գահին։ 892 թ. խալիֆան արքայական թագ, զգեստներ և այլ ընծաներ ուղարկեց Սմբատին. դրանք Հայաստան բերեց Սաջյան Մուհամմադ Աֆշինը, որը շուտով պիտի դառնար Սմբատի կատաղի թշնամին։*



Շիրակավանի եկեղեցին, կառուցված 9-րդ դ. վերջերին

*Սմբատ Ա թագավորը պետական խոշոր գործիչ էր և իր հոր արժանի հաջորդը։ Թագադրության հանդեսները Շիրակավանում ավարտվելուց հետո, Սմբատը շարունակեց երկրի խաղաղ շինարարությունը, պետության ամրապնդումը և վարեց արտաքին շրջահայաց քաղաքականություն։ Շարունակելով*

ճանաչել Արաբական խալիֆայության սույն ձևական գերիշխանությունը, Սմբատը միաժամանակ պատգամավորություն ուղարկեց Կոստանդնուպոլիս՝ հայազգի կայսր Լևոն Զ Իմաստասերի մոտ։ Ամրապնդվեց բարեկամությունը կայսրության հետ և 893 թ. կնքվեց առևտրական համաձայնագիր, որով Հայաստանը ավելի լայն չափերով դառնում էր տարանցիկ առևտրի գլխավոր կենտրոնը՝ Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության երկրների միջև, հանգամանք, որը մեծապես նպաստում էր երկրի տնտեսական վերելքին։

Երկրի բարգավաճման համար ստեղծվել էին ներքին և արտաքին բարենպաստ պայմաններ։ Հովհաննես կաթողիկոսը, խոսելով Աշոտ Ա-ի և Սմբատ Ա-ի ժամանակների մասին, նկատելի հռետորական ոճով գրում է. «Իսկ մեր Հայաստան աշխարհին նրանց օրոք Տերն էր այցի եկել, և պատսպարված և բոլոր բարի գործերի մեջ հաջողած, բնակեցվեցին ամենքը իրենց ժառանգությունների մեջ և սեփականելով հողը՝ տնկեցին այգիներ և արմատացրին ձիթենիների և պարտեզների բուրաստաններ. հերկեցին հերկերը ազատելով փշերից և հարյուրապատիկ պտուղ հավաքեցին։ Լեփ լեցուն էին ցորենի շտեմարանները, երբ հունձը ավարտվեց, լցվեցին գինու հորերը՝ այգեկութին, և լեռները ցնծություն զգեցան, որովհետև նրանց վրա բազմացան արոտական առջառների նախիրները և ոչխարների հոտերը»[4]։

Նույնն է հաղորդում նաև Ստեփանոս Տարոնեցին. «Իսկ Սմբատը թագավորելով տիրում է իր բոլոր երկրներին... Սրա և հոր իշխանության օրոք շինություն, խաղաղություն էր մեր Հայոց աշխարհում, ըստ մարգարեության՝ ամեն ոք իր որթի և թզենու ներքո էր հանգստանում»[5]։

Թովմա Արծրունին իր հերթին դրվատում է Դերենիկի օրոք՝ 870—880-ական թվականներին Վասպուրականում հաստատված խաղաղությունն ու շինարարությունը[6]։

Սմբատ արքան ամրապնդեց իր իշխանությունը նաև Նախճավանի, Երնջակի, Ալաշկերտի, Բասենի, Ապահունիքի, Հարքի և Տարոնի վրա։ Այսպիսով, IX դարի վերջերին և X դարի սկզբներին Բագրատունյաց թագավորությունն ընդգրկում էր Հայաստանի մեծ մասը, և նրա սահմանները հասնում էին Շամխորից մինչև Կարին, Կուր գետից մինչև Վանա լճի հարավային ափերը և Տարոն։ Սմբատի գերիշխանությունը ճանաչում էին Սյունիքի իշխանները, Վասպուրականի Արծրունիները, Վրաց գահերից իշխան Ատրներսեհը, Աղվանքի Համամ թագավորը, Մանազկերտի և Խլաթի արաբ ամիրաները։

## 2. ՊԱՅՔԱՐ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ ՍԱՋՅԱՆ ԱՄԻՐԱՅՈՒԹՅԱՆ ՆԵՐԽՈՒԺՄԱՆ ԴԵՄ

Պատմական այս ժամանակաշրջանում Հայաստանի հարևանն էր մի ընդարձակ ամիրայություն, որը չպիտի հանդուրժեր Բագրատունյաց թագավորության

4 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 250—251։
5 Ստեփանոս Տարոնեցի, էջ 161։
6 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 351։

զորեղացումը։ Դա Ատրպատականի Սաջյան ամիրայությունն էր։ Նրա հիմնադիրը եղավ վերևում հիշատակված Մուհամմադ Աֆշինը, որը խալիֆայից թագ բերեց Սմբատին։

889 կամ 890 թվականին Աֆշինը նշանակվեց Ատրպատականի ամիրա (կառավարիչ)։ Հենվելով տեղական ուժերի վրա և օգտվելով Արաբական խալիֆայության կազմալուծումից, նա Ատրպատականը դարձրեց մի ինքնուրույն ֆեոդալական իշխանություն, որը սոսկ ձևականորեն էր ճանաչում խալիֆայի գերիշխանությունը։

Արաբական խալիֆայությունը, ինչպես և բավականաչափ ընդարձակ ու զորեղ Սաջյան ամիրայությունը չէին հաշտվում այն բանի հետ, որ Հայաստանը վերականգնել էր իր անկախ պետականությունը և զորեղանում էր։

Սաջյանների զորությունը Հայաստանի դեմ ուղղելու մտադրությամբ խալիֆան Սաջյան Աֆշին ամիրային պաշտոնապես ճանաչեց Ատրպատականի և Արմինիայի ոստիկան, նրան շնորհելով Հայաստանի հարկերի հավաքումը և հանձնումը խալիֆայությանը։ Իսկ Աֆշինը Հայաստանի դեմ ոտնձգություններ սկսելու առիթ էր որոնում։

Առաջին առիթը եղավ Հայաստանի և Բյուզանդիայի միջև կնքված առևտրական համաձայնագիրը։ Աֆշինը լավ էր հասկանում, որ դա սոսկ առևտրական համաձայնություն չէր, այլև քաղաքական դաշինք Բյուզանդիայի հետ, ուստի և զորաժողով արեց ու հարձակվեց Հայաստանի վրա։ Սմբատը ժամանակին Ատրպատականի կողմերն ուղարկեց 30 հազարանոց մի բանակ և պատգամավորների միջոցով փորձեց համոզել Աֆշինին, թե այդ առևտրական համաձայնագրից անհամեմատ ավելի մեծ օգուտներ կքաղեն հենց Արաբական խալիֆայությունն ու Ատրպատականը։ Տեսնելով իր դեմ հանված 30 հազարանոց կազմ և պատրաստ բանակը, Աֆշինը նախընտրեց առերես բարեկամությամբ հանդիպել Սմբատին, որից հետո նրանք բաժանվեցին փոխադարձ նվերներով ու հաշտությամբ[7]։

Սմբատը հետամուտ էր ամբողջացնելու իր պետության սահմանները, մինչդեռ Արարատյան դաշտի մի մասում, Դվին մայրաքաղաքով, կային արաբ իշխանավորներ, որոնք ապստամբեցին արքայի դեմ։ Անհրաժեշտ էր ոչ միայն ճնշել անհնազանդներին, այլև օտարների ձեռքից ազատագրել Դվինը՝ իր բարեբեր գավառով, այլապես այն կարող էր հենարան դառնալ Սաջյանների ոտնձգությունների համար։ Սմբատը զորքով արշավեց Դվինի վրա և պաշարեց քաղաքը։ Ամուր պարիսպներ ունեցող Դվինը, որը արհեստագործության, մանավանդ զինագործության խոշոր կենտրոն էր, շրջապատված բերրի դաշտերով, այգեստաններով և լի՝ ամեն տեսակի պաշարեղենով, դիմադրության մեծ հնարավորություններ ուներ։

Սմբատ արքան որոշեց ընկճել հակառակորդի ուժը՝ երկարատև պաշարումով, որը տևեց երկու տարի։ Ի վերջո Սմբատը գրավեց Դվինը, իսկ նրա արաբ իշխանավորներին շղթայակապ ուղարկեց Լևոն Իմաստասեր կայսրին՝ ի նշան դաշինքի անխախտության[8]։

---

7 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 201։

8 Տե՛ս նույն տեղում, էջ 202։

Նոր էր Դվինն ազատագրվել, երբ 893 թ. երկրաշարժի հետևանքով մեծ աղետի և ավերածությունների ենթարկվեց։ Քաղաքի պարիսպները և շատ շենքեր, եկեղեցիներ փլատակվեցին և, պատմիչների ասելով, տասնյակ հազարավոր զոհեր եղան[9]։

Սմբատի նոր հաջողությունները հանգիստ չէին տալիս Աֆշինին, և երբ հայոց արքան զբաղված էր երկրաշարժից կործանված Դվինի վերաշինության հոգսերով, 894 թ. նա մեծ բանակով մոտեցավ հայոց սահմանին, գրավեց Նախճավանը, ապա՝ Դվինը։ Սմբատը շուտափույթ զորաժողով կատարեց և բանակը կենտրոնացրեց Արագած լեռան հարավային ստորոտում գտնվող Վժան գյուղում։

Սմբատին անհրաժեշտ էր ժամանակ շահել, մինչև հյուսիսային կողմերի զորքերը հասնեին օգնության, ուստի Գեորգ կաթողիկոսին նա ուղարկեց Աֆշինի մոտ՝ հաշտության բանակցություններ վարելու։ Աֆշինը պահանջեց, որ Սմբատը անձամբ ներկայանա իրեն, սակայն այս առաջարկը չընդունվեց, իսկ Աֆշինի մոտ կրկին բանակցությունների համար վերադարձած կաթողիկոսը կալանավորվեց։

Ընդհարումը անխուսափելի դարձավ։ Ճակատամարտը տեղի ունեցավ Արագածոտն գավառի Դողս գյուղի մոտ, որը պսակվեց Սմբատի հաղթանակով։ Դրանից հետո Աֆշինն ինքը հաշտության առաջարկով դիմեց Սմբատին, պահանջելով սակայն խալիֆայությանը տրվող հարկերը։ Հարկերը վճարվեցին և հաշտությունը կայացավ։

Դողսի հաղթանակը ամրապնդեց Սմբատի դիրքերը և մի քանի տարով ապահովեց երկրի խաղաղությունը։

Չկարողանալով խորտակել միավորված Հայաստանի զորությունը, Ատրպատականի ամիրան փորձեց օգտագործել հայ ֆեոդալական խոշոր տների կենտրոնախույս ձգտումները և ջլատել երկրի ուժերը։

Կենտրոնախույս տրամադրություններ և հակասություններ կային Վասպուրականում, քանի որ այդ ժամանակ Արծրունի իշխանների (Սարգիս-Աշոտի և Գագիկ Աբումրվանի) միջև պայքար էր գնում տիրույթների սահմանագծման և գահերեցության համար։

Չնայած Սարգիս-Աշոտը և Գագիկ Աբումրվանը Սմբատ Ա-ի քրոջ զավակներն էին, սակայն Աբումրվանը ավելի հավատարիմ էր թվում արքային և վայելում էր նրա համակրանքն ու օժանդակությունը։ Հենց այս հանգամանքն էլ օգտագործեց Աֆշինը։ Իր մոտ հրավիրելով Սարգիս-Աշոտին նրան թագ խոստացավ և պահանջեց, որ ենթարկվի իրեն։ Հակառակ դեպքում սպառնաց զենքի ուժով զավթել Վասպուրականը։

Նման մի փորձ Աֆշինը կատարել էր Սյունյաց Վասակ գահերեց իշխանի նկատմամբ, առաջարկելով նրան արքայական թագ, սակայն Վասակը շարունակեց հավատարիմ մնալ Հայոց միացյալ թագավորությանը[10]։

Վասպուրականի դրությունն ավելի բարդ էր։ Սմբատ Ա-ը Սարգիս-Աշոտին

---

9 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի. էջ 204—205։
10 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 289։

*որկել էր իշխանությունից, իսկ նա մտել էր Վասպուրական՝ զորք ստանալով Աֆշինից։ Տեղի էին ունենում ներքին կռիվներ և խժդժություններ։*

*Այդ ժամանակ Հայաստանին սպառնացող մի մեծ վտանգ էլ գալիս էր Միջագետքից, որի կուսակալն էր Իսա Իբն Շեյխի որդի Ահմադ Շայբանին։ Նա տիրացել էր Ամիդ մեծ քաղաքին և, առաջ շարժվելով, Բագրատունի իշխաններից գրավել էր Տարոնը, որը Բագրատունյաց թագավորության հարավ-արևմտյան հզոր հենակետն էր։ Ահմադին էին ապավինել նաև Վասպուրականի մի քանի իշխաններ՝ Գագիկ Արծրունու հակառակորդներից։*

*Ներխուժած թշնամուն ետ մղելու և Տարոնը ազատագրելու նպատակով 896 թ. Սմբատ Բագրատունին 60 հազարանոց բանակով շարժվում է Ահմադի դեմ։ Զորքին առաջնորդում էր ինքը՝ Սմբատ թագավորը, որին ուղեկցում էր Գագիկ Արծրունին։ Բայց արքան չգիտեր, որ Արծրունին թշնամու հետ գործակցած՝ կործանման էր տանում հայոց բանակը՝ առաջնորդելով Վանա լճի արևմտյան ափերի ապառաժոտ և անջուր վայրերով։ Թուլխ կոչվող գյուղի մոտ թշնամին հանկարծակի հարձակվում է հայոց հոգնատանջ բանակի վրա։ Ջնած այս վիճակին, հայոց զորքը ցուցաբերում է զարմանալի արիություն, մինչև որ Արծրունին դիմում է մի նոր դավադրական քայլի։ Ասպատակներ մտցնելով հայոց բանակի ճամբարը, կեղծ լուր է տարածում, թե թշնամին խուժել է զորքի թիկունքը։ Այսպիսով նա խուճապ է առաջացնում հայկական բանակում, որը և վճռում է ճակատամարտի ելքը։ Իսկ Սմբատ արքան հազիվ ազատվելով, խույս է տալիս դեպի Բագրևանդ գավառը[11]։ Հայոց բանակից, Թովմա Արծրունու ասելով, ռազմի դաշտում ընկավ հինգ հազար մարդ[12]։*

*Այս դեպքերից հետո ավելի խորացան Բագրատունի թագավորի և Արծրունիների հակասությունները։ Աֆշինը դրան էր սպասում և նախապատրաստվեց նոր արշավանքի։ Նա կրկին իր մոտ հրավիրեց Սարգիս-Աշոտ Արծրունուն, սակայն Սմբատ արքան կանխեց նրան։ Դրան օգնեց այն, որ Վասպուրականի գահերեց իշխան Սարգիս-Աշոտի հակառակորդ Գագիկ Արծրունին սպանված էր և Սարգիս-Աշոտը տիրանալով Վասպուրականին, երես թեքեց Աֆշինից ու իր զորքով միացավ թագավորին։*

*Սմբատի և նրան ենթակա իշխանների ուժերը, սակայն, Թուլխի ճակատամարտից հետո ցրվել էին և թուլացել, իսկ Աֆշինը վաղօրոք նախապատրաստվել էր պատերազմի։ Զորքը տանելով հյուսիս, Ուտիքի, Գուգարքի վրայով նա խուժում է Վրաստան ու դուրս գալիս Սմբատ արքայի թիկունքը։*

*Այս կողմերի ֆեոդալներն ամրանալով իրենց բերդերում, ուժեղ դիմադրություն են ցույց տալիս թշնամուն, այնուհետև Աֆշինն անցնում է Վանանդ, իսկ Սմբատը ստիպված խույս է տալիս Տայոց անառիկ աշխարհը։ Իմանալով, որ հայոց թագուհին ուրիշ ազնվական կանանց հետ ամրացել է Կարս քաղաքում, որտեղ գտնվում էին թագավորական գանձերը և թանկագին կարասին, Աֆշինը պաշարում է քաղաքը։ Կարսի հրամանատար Հասան Գնթունին, համառ դիմադրությունից հետո, քաղաքի և նրա բնակիչների անվտանգության երաշխիքներ ստանալով, հարկադրված է լինում հանձնել Կարսը։ Գերի վերցնելով*

11 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 219—222։
12 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 382։

Թագուհուն, մյուս ազնվական տիկնանց և բերդապահ Հասան Գնթունուն. Աֆշինը գնում է Դվին՝ ձմեռելու։ Սմբատը վերադառնում է Կարս, բայց քաղաքը կողոպտված գտնելով, այնտեղից անցնում է իր ձմեռոցը՝ Կաղզվան։

Սմբատի և Աֆշինի միջև բանակցություններ են սկսվում և կնքվում է հաշտություն՝ ծանր գնով։ Սմբատը հարկադրված էր մեծամեծ նվերներից բացի, պատանդ տալ Թագաժառանգ Աշոտին, իր եղբոր՝ Սահակի որդի Սմբատին, իսկ մյուս եղբոր՝ Շապուհի դուստրն էլ կնության տալ Ատրպատականի ամիրային։ Այս ամենը նշանակում էր պարտության ճանաչում և ստորացում, բայց ուրիշ ելք չկար, մանավանդ, որ այդ պայմանով միայն գերությունից ազատվեցին Թագուհին և Հասան Գնթունին։

Աֆշինը, սակայն, շուտով մի նոր առիթ գտավ կրկնելու իր արշավանքը։ Առիթը եղավ այն, որ Սմբատը Թագադրեց իր հավատարիմ զինակից՝ վրաց Ատրներսեհ գահերեց իշխանին։ Մինչ այդ արդեն հաստատվել էր Արևմտյան Վրաստանի՝ Եգերաց Թագավորությունը։ Արդեն հասունացել էր նաև Արևելյան Վրաստանի անկախության հարցը և, բնականաբար, հայկական և վրացական Թագավորությունները պիտի լինեին բարեկամ ու դաշնակից։ Սմբատը դրան ձգտելով «կացուցանէ զնա Թագաւոր Վրաց աշխարհի և երկրորդ իւրոյ տէրութեանն զնա հաստատէր»[13]։

Աֆշինը պատճառաբանելով, Թե Թագադրության իրավունքը միայն խալիֆային է պատկանում, նոր արշավանք է սկսում Հայաստանի և Վրաստանի դեմ։ Տփղիսի և Շիրակի վրայով Աֆշինը հասնում է Դվին, Հայաստանը հայտարարում է իր հսկողությանը ենթակա երկիր և տեղապահ է Թողնում իր որդի Դևդադին ու մի ներքինու։

Այնուհետև նա ասպատակում է Վասպուրականը, այստեղ ևս նշանակելով կառավարիչներ՝ մեկին Վանում, մյուսին՝ Ոստանում։

Սմբատ Բագրատունին չի ընկրկում անհաջողությունների առաջ։ Հենվելով բարգավաճող երկրի ներքին ուժերի վրա և դաշինք ունենալով Վրաստանի ու Աղվանքի Թագավորների հետ, նա հոգ է տանում բարելավելու և ամրապնդելու իր Թագավորության վիճակը։ Մի պատահականություն շուտով պիտի սատար լիներ նրան։ Վերադառնալով Շիրակ և Անիում հանդիպելով Աֆշինի նշանակած ներքինապետին, Սմբատն օգտագործում է վերջինիս պառակտումը Աֆշինից, ազատում է արքայազն Աշոտին, որը պատանդ էր Թշնամու ձեռքին և օժանդակում ներքինապետին՝ անցնելու Միջագետք։ Իմանալով այս մասին, Աֆշինը նոր արշավանք է ձեռնարկում Սմբատի դեմ, սակայն նրա զորքի մեջ ծագած համաճարակը խափանում է այդ արշավանքը։ Համաճարակին զոհ դարձան ոչ միայն նրա զինվորներից շատերը, այլև ինքը՝ Աֆշինը և Վասպուրականի նրա նշանակած կուսակալները, իսկ Դևդադը, տեղեկանալով պատահածի մասին, գիշերով Դվինից փախավ Ատրպատական[14]։

898 Թ. տեղի ունեցած այս դիպվածը Թշնամու դեմ շահած մեծ ճակատամարտից ավելի նշանակություն ունեցավ Հայաստանի համար, քանի որ դրանից հետո «մեր երկիրը շունչ քաշեց (և մարդիկ) բնակվեցին՝ խաղաղությամբ,

---

13 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 231—232։

14 Տե՛ս նույն տեղում, էջ 239։

յուրաքանչյուրն ըստ իր հասակի չափի՝ մեծամեծներից մինչև փոքրերը, գոհանալով աստծո գթությունից»[15]։

Հայաստանը, թեկուզ ժամանակավորապես, ազատվեց Ատրպատականին ենթարկվելու վտանգից։ Երկրում առժամանակ վերահաստատվեց խաղաղություն. շինարարական աշխատանքները նոր թափ ստացան։ Կրկին նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հայկական իշխանությունները միասնական պետության մեջ համախմբելու համար։

Սյունյաց իշխանները հավատարիմ էին Բագրատունյաց գահին, Վասպուրականի գահերեց իշխան Սարգիս-Աշոտ Արծրունին, դառը փորձով խրատված, հայկական ուժերի միասնության մեջ էր տեսնում պաշտպանությունը արտաքին վտանգից։ Եվ իրոք, երկրի ուժերի համախմբվածությունը չհապաղեց տալու առաջին պտուղները։

Մանազկերտի Կայսիկ ամիրան այլևս չէր ընդունում Սմբատի իշխանությունը և դադարել էր նրան հարկեր վճարել։ Սմբատը զորքով շարժվեց Ապահունիք։ Ճակատամարտը սկզբում հաջողություն չէր խոստանում թագավորին, բայց երբ նրան միացան Վասպուրականի Սարգիս-Աշոտը, Մոկաց և Անձևացյաց զորքերը, որոնք թշնամու դեմ կռվում էին մեծ ախրանքով, նահանջի պատրաստվող Սմբատ թագավորը կրկին հարվածեց թշնամուն և ետ մղելով՝ պաշարեց Մանազկերտը։ Արծրունյաց իշխանի միջամտությամբ Կայսիկ ամիրան կրկին ճանաչեց հայոց արքայի գերիշխանությունը։

Սմբատ թագավորն այս ծառայությունների համար Աշոտ Արծրունուն մեծամեծ նվերներ տվեց, որոնց թվում՝ Նախճավան քաղաքը, որը գտնվելով Վասպուրականի և Սյունիքի սահմանագլխում, վեճի առարկա էր դարձել երկու իշխանությունների միջև։ Թագավորի այս անզգույշ քայլը, սակայն, ավելի բորբոքեց կրքերը և ավելի սուր ընդհարումների պատճառ դարձավ։ Առևտրական մայրուղու վրա գտնվող Նախճավանը մեծ կարևորություն էր ներկայացնում Սյունիքի համար, ուստի չհաշտվելով այդ կորուստի հետ, Սյունյաց գահերեց իշխան Սմբատը ապստամբեց Սմբատ թագավորի դեմ, հրաժարվեց նրան հարկ ու զորք տալուց և հայտարարեց, որ հարկերը տալու է Ատրպատականի ամիրային։ Շարուրի դաշտում հակառակորդ զորքերը նույնիսկ ընդհարվեցին, սակայն Բագրատունիների և Արծրունիների գերակշիռ ուժերից պարտություն կրելով, Սյունյաց իշխանը ենթարկվեց Հայոց թագավորին։

Պետք ասել՝ ո՛չ Սմբատի ռազմական ընդհարումները ներքին պառակտիչ ուժերի և Միջագետքի Ահմադ Շայբանի ամիրայի հետ և ո՛չ էլ Աֆշինի արշավանքները երկարատև և մեծ պատերազմների բնույթ չէին կրում, ուստի ծանր հետևանքներ չունեցան։ Աշոտ Ա-ի ժամանակ սկսված տնտեսական, մշակութային վերելքն ու բարգավաճումը շարունակվեց նաև Սմբատի օրոք՝ մինչև նրա թագավորության վերջին տարիները։

Աֆշինի մահից հետո, 901 թ. Ատրպատականի ամիրայության գլուխ անցավ նրա եղբայր Յուսուֆ իբն աբու Սաջ Դևդադը։ Սա խնդրեց խալիֆայից, որպեսզի Հայաստանից խալիֆայությանը վճարվող հարկերը նորից գանձվեին

15 Թովմա Արծրունի, էջ 390։

Ատրպատականի ամիրայի միջոցով։ Այլ խոսքով, նա կամեցավ իրենից կախման մեջ դնել Հայաստանը, ինչպես մի քանի տարի առաջ այդ բանը փորձել էր Աֆշինը։ Ալի ալ-Մուքթաֆի Բիլլահ խալիֆան (902—908) մերժեց այդ առաջարկը։ Սակայն Յուսուֆը որոշեց այդ իրավունքը ձեռք բերել զենքի ուժով։ Նա Աղվանքի վրայով արշավեց Հայաստան, մտավ Շիրակ, անցավ Արարատյան երկիրը և հաստատվեց Դվինում։

Սմբատ թագավորն էլ իր բանակը կենտրոնացրեց Արուճ ավանում։ Շուտով, սակայն, կողմերի միջև բանակցություններ սկսվեցին։ Յուսուֆը պահանջեց Սմբատից ճանաչել իր, թեկուզ ձևական, գերիշխանությունը և հարկեր վճարել, դրանց չափի սահմանումը թողնելով Հայոց արքային[16]։ Սմբատն ստիպված էր համաձայնել։ 903 թ. գարնանը նրանք, մեծամեծ նվերներ փոխանակելով, խաղաղության դաշինք կնքեցին, որը տևեց մի քանի տարի։

Կովկասում հաստատված այս խաղաղությունը մի պահ վրդովվեց, երբ Եգերաց (Ափխազաց) աշխարհի Կոստանդին թագավորը փորձեց զենքի ուժով գրավել Վրաց Ատրներսեհ թագավորի հողերը, որոնք ձգվում էին մինչև Ծանարների երկիրը և Դարիալի կիրճը (Ալանաց դուռ)։ Սմբատը և Ատրներսեհը միասին ելան Կոստանդինի դեմ. վերջինս ստիպված հաշտություն խնդրեց։ Սակայն Ատրներսեհը և այլ իշխաններ, ժամանելով բանակցությունների վայրը, կալանավորեցին Կոստանդինին և հանձնեցին Սմբատին, որը նրան շղթայակապ, բայց արքայավայել պատվով պահում էր Անիում։ Եգերաց աշխարհի հետ հարաբերությունները չվատացնելու համար Սմբատը չորս ամսից հետո, պատիվներով և նվերներով, ազատեց Կոստանդինին։ Սմբատի դեմ այժմ էլ ըմբոստացավ Ատրներսեհը, առանց որի համաձայնությունը հարցնելու նա ազատ էր արձակել Ափխազաց թագավորին[17]։

Սակայն միայն վրաց թագակիրների փոխհարաբերության հարցում չէ, որ հայոց արքան գտնվում էր տարտամ վիճակում։ Այդ ժամանակ Ատրպատականի ամիրա Յուսուֆը, ձգտելով անկախության, ապստամբել էր խալիֆայի դեմ։ Յուսուֆին հնազանդեցնելու նպատակով խալիֆան դիմել էր իր գերիշխանությունը ընդունած երկրներին, որոնց թվում և Հայաստանին։ Սմբատը կանգնած էր ծանր երկընտրանքի առջև։ Խախտել Յուսուֆի հետ կնքած հաշտության դաշինքը՝ վտանգավոր էր, մերժել խալիֆային, տվյալ պարագաներում, թերևս ավելի վտանգավոր լիներ։ Ի վերջո նա հարկադրված էր հազար մարդուց բաղկացած մի օգնական գունդ ուղարկել խալիֆային և միաժամանակ նամակով հայտնել Յուսուֆին, որ զորքը նրա դեմ չի ուղարկված[18]։ Յուսուֆը, իհարկե, հասկացավ Սմբատ թագավորի դիվանագիտական քայլի էությունը։ Շուտով նա զենքը վայր դրեց, հաշտության եզրը գտավ խալիֆայի հետ և Հայաստանից վրեժ լուծելու առիթ էլ ունեցավ։

Յուսուֆը ավելի համարձակ քայլերի դիմեց 908 թ., երբ նրան սաստող խալիֆային հաջորդեց Ջաֆար ալ-Մուկտադիրը, որի օրոք (908—932) արաբական խալիֆայությունը ծայր աստիճան թուլացավ։ Յուսուֆը Սմբատից պահանջեց

16 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 247։
17 Տե՛ս նույն տեղում, էջ 252—255։
18 Տե՛ս նույն տեղում, էջ 256—257։

իրեն վճարել արքունական հարկերը, բայց նույնպիսի պահանջ ներկայացրեց նաև խալիֆան։ Հայոց թագավորն ընկել էր անելանելի վիճակի մեջ՝ բավականաչափ ուժեր չուներ երկու թշնամու դեմ կանգնելու, ոչ էլ նյութական միջոցներ՝ նրանց կրկնվող սպառնալից պահանջները կատարելու։ Իր թագավորության դրսից սպառնացող վտանգը հեռացնելու միտումով Սմբատը դիմեց մի արտակարգ միջոցի՝ կրկնապատկեց ամբողջ երկրից գանձվող անասնահարկը[19], որպեսզի լրացնի խալիֆայի և Յուսուֆի պահանջած հարկերի գումարը։ Ըստ գոյություն ունեցող կարգի ջրարբի հողերից գանձվում էր հնգեկ, այսինքն բերքի 1/5-րդ մասը, իսկ անջրդի հողերից, ինչպես և անասուններից գանձվող հարկը տասանորդն էր՝ 1/10-րդ մասը կամ տասը գլխից մեկը։ Սմբատը «հրամայում է իր տիրության բոլոր երկրներում հնգորդել ձիերի երամակները, խոշոր եղջերավոր անասունների նախիրները և ոչխարների հոտերը՝ ապօրինի (բնագրում զրադատ) տուգանքի գումարը վճարելու համար»[20]։ Այլ խոսքով, ստեղծված ծանր վիճակից ելքը թագավորը որոնում է ժողովրդի հաշվին։ Ամենուրեք տեղի է ունենում արտակարգ հարկահանություն, առաջացնելով ժողովրդի դժգոհությունն ու վրդովմունքը։ Դժգոհ էին նաև երկրի իշխանները, որովհետև անասնահարկը գանձվում էր նրանց օգտին, իսկ նրանք իրենց հերթին հարկատու էին պետությանը։ Այժմ թագավորը կրկնապատկելով այդ հարկը, հրամայել էր այն տալ օտարի «զրադատ տուգանքը» վճարելու համար։ Դժգոհ նախարարները ոմն Հասան իշխանի գլխավորությամբ, որը «իշխան և հրամանատար (կարգադրիչ) էր բոլոր տերությանն արքայի» դավադրություն են կազմակերպում Սմբատ Ա թագավորի դեմ, կամենալով սպանել նրան և գահը հանձնել դավադրության մասնակից Արևելյան Վրաստանի թագավոր Ատրներսեհին, որը Սմբատի վասալն էր և ծագումով Բագրատունի։ Դավադրությանը մասնակցում էին Վանանդի և Հավնունյաց իշխանները, թվով 15 մարդ։ Թագավորի սպանությունը հանձնարարվում է Հավնունի մի իշխանի, որը Հասանի աներն էր։ Դավադրությունը նոր կողմնակիցներ էլ է ունենում։ Օգտվելով թագավորի բացակայությունից, որը Տաշիրում էր գտնվում, խռովարարները ձևացնելով, թե թագավորին ծառայության են եկել, բազում զորքով մտնում են Շիրակ գավառը և գրավելով Անիի արքայական ամրոցը, հանձնում են Ատրներսեհին, իսկ իրենք հաստատվում են արքայանիստ Երազգավորս ամրոցում։

Սմբատ թագավորը զորքով շտապում է դեպի Շիրակ։ Դավադիրները կողոպտելով Անին, հապշտապ խույս են տալիս դեպի Տայքի ամրոցները։ Բանակը թիկունք է կանգնում թագավորին, և Սմբատը զորքով մտնում է Ատրներսեհի թագավորության սահմանները, բայց խստիվ արգելում է որևէ բռնություն և արյունահեղություն, պահանջելով միայն, որ իրեն հանձնվեն դավադիրները։ Ատրներսեհը ներումն է խնդրում և իր որդուն պատանդ տալով, հաշտություն է կնքում։ Սմբատը խոհեմաբար ներողամիտ է գտնվում իրեն դրկից վրաց թագավորի հանդեպ, բայց խիստ պատժում է դավադիր հայ նախարարներին՝ հա-

19 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 258։

20 Նույն տեղում, էջ 258։

նել տալով նրանց աչքերը, որպեսզի կանխի դավադրության նման փորձը հետագայում[21]։

Յուսուֆին, որը վաղուց փայփայում էր Հայաստանի վրա արշավելու ծածուկ միտքը, ձեռնտու էին հայոց իշխանների միջև ծագած երկպառակությունները և նա դաշնակիցներ է որոնում նրանց մեջ։ Այդպիսի դաշնակից հանդիսացավ Վասպուրականի գահերեց իշխան Գագիկը։

Սմբատ թագավորը լավ էր հասկանում երկպառակությունների վտանգը, ուստի Վասպուրականի տերերին իր կողմը գրավելու համար Գագիկ Արծրունուն հռչակել էր «զորավար Հայոց Մեծաց»՝ իրավունք վերապահելով նրան զորքի առջևից տանելու խաչադրոշը. ուրեմն նա պետք է լիներ թագավորի եղբոր՝ Շապուհ սպարապետի աջ թևը։ Գագիկի կրտսեր եղբայրն էլ մեծարվել էր «մարզպան Հայոց» տիտղոսով, նա պետք է ենթակա լիներ արքայի մյուս եղբորը՝ «իշխանաց իշխանին»։

Արծրունի երկու եղբայրներն իրար միջև բաժանելով Վասպուրականը, 904—906 թվականների ընթացքում կռիվներ վարեցին իրենց տիրույթները ընդարձակելու համար՝ Գուրգենը Ուրմիա լճի կողմերում, իսկ Գագիկը՝ Վանա լճի հյուսիս-արևելյան ափերին[22]։ Նրանց հաջողվեց գրավել և Վասպուրականին միացնել զգալի տարածություններ։ Գագիկն, անգամ, Բերկրիի Ութմանիկներից խլեց Ամյուկ ամրոցը։ Յուսուֆը չխառնվեց այս անցքերին, որով, փաստորեն, քաջալերում էր Գագիկ Արծրունուն։ Սմբատ արքան՝ իբրև երկրի գերագույն իշխանավոր, որին ենթարկվում էին նաև Ութմանիկների և Կայսիկների ամիրայությունները, միջամտեց վեճին։ Գագիկից խլեց Ամյուկ ամրոցը, բայց կրկին վերադարձրեց նրան՝ ստանալով «գանձս բազում»[23]։ Բացի այդ, Սարգիս-Աշոտ Արծրունու մահվանից հետո Սմբատը ետ էր վերցրել Նախճավանը և նորից հանձնել Սյունյաց իշխանին։

Մրցակցությունը և հակասությունները Բագրատունիների և զորեղացած Արծրունիների միջև սաստիկ սրվեցին։ Յուսուֆը, բնականաբար, պետք է հովանավորեր Գագիկին՝ ընդդեմ Սմբատի։

908 թ. իր մոտ հրավիրելով Գագիկ Արծրունուն, Յուսուֆը նրան ոչ միայն թագ և մեծամեծ պատիվներ տվեց, այլև հռչակեց «թագաւոր ամենայն Հայոց»[24]։ Այսպիսով, Յուսուֆին հաջողվեց հասնել հայկական թագավորության միասնության շլատմանը, որը ծանր հետևանքներ պիտի ունենար։ Երկիրը ոչ միայն պառակտվելու էր երկու մասի, այլև նրա մի մասը՝ Վասպուրականը, դաշնակցած Ատրպատականի հետ, պիտի իր զենքը ուղղեր մյուսի դեմ։ Այս ճանապարհով Յուսուֆը հույս ուներ նվաճել ամբողջ Հայաստանը։

Սմբատ արքային մնում էր մի վերջին ճիգ գործադրել՝ կանխելու Յուսուֆի կողմից նախապատրաստվող պատերազմը։ Նա հաշտության և խաղաղության առաջարկով Ատրպատական ուղարկեց Հովհաննես կաթողիկոսին՝ «ար-

---

21 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 259—262։

22 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 403—404։

23 Նույն տեղում, էջ 462։

24 Նույն տեղում, էջ 466։

քունի թանգարաններից» և կաթողիկոսական գանձարաններից[25] վերցրված մեծամեծ նվերներով։

Այդ ամենը, սակայն, զուր ջանքեր էին։ Յուսուֆը կալանավորում է կաթողիկոսին և, իր մոտ հրավիրելով Գագիկ Արծրունուն, նախապատրաստվում է արշավանքի Բագրատունյաց թագավորության դեմ։

909 թ. ապրիլին, երբ հայերը զատիկն էին տոնում, Յուսուֆը մի ստվար բանակով մտնում է Հայաստան։ Նախանշվանում իրենց զորքերով Յուսուֆի բանակին են միանում Գագիկ և Գուրգեն Արծրունիները[25]։ Յուսուֆը հարվածն ուղղում է Սյունիքի դեմ։ Թեև սյունեցիք բռնում են լեռնանցքները և համառ դիմադրություն ցույց տալիս, բայց ոչինչ չեն կարողանում անել այդքան գերակշիռ ուժերի դեմ, որոնք ասպատակում և ավերում են երկիրը։ Սմբատ արքան ամրացնում է երկրի բերդերը և խուսափում մեծ ճակատամարտերից։ Սյունիքի դրությունը հուսահատական է դառնում։ Սմբատ գահերեց իշխանը ստիպված հեռանում է Վասպուրական, իսկ Սահակ իշխանը՝ Գուգարք իրենց աներների մոտ։ Գեղարքունյաց իշխան Գրիգոր Սուփանը, հուսալով, թե կկարողանա փրկել երկիրը դաժան ասպատակությունից, հանձնվում է Յուսուֆին։ Սուփանը թագավորի քրոջ՝ Սևանում կատարած շինարարությամբ բարի հիշատակ թողած Մարիամի որդին էր և հավատարիմ ծառայում էր Սմբատին։ Ուստի նրա հանձնվելը Յուսուֆին մի նոր հարված էր հայկական միասնությանը։ Սուփանի օրինակին հետևեց նաև Սյունիքի մեկ այլ իշխան՝ մանկահասակ Վասակը[27]։

Սյունիքում մնացել էր Բաբկեն իշխանը, իսկ Սմբատի մայրը, կինը և ուրիշներ ամրացել էին Երնջակ անառիկ ամրոցում։

Չկարողանալով գրավել Երնջակը, Յուսուֆը անցնում է Դվին, իր հետ տանելով շղթայակապ կաթողիկոսին։ Սմբատ արքան պատրաստվում էր լեռնային կռիվների, երբ Յուսուֆը առաջարկեց տալ մեկ տարվա հարկը և հաշտություն կնքել։ Սմբատը ստիպված էր վճարել հարկը՝ «իբրև կշիռս վաթսուն հազար դահեկանաց»[28]։ Ստանալով այդ գումարը, Յուսուֆը նորից դրժեց խոստումը և սկսեց հետապնդել Հայոց թագավորին։ Վերջինս անցավ Գուգարք, Տայք և ապա ապաստանեց Կղարջքի լեռնային ամրություններում։ Ամբողջ ամռան և աշնան ընթացքում թշնամու զորքերը հետապնդեցին Սմբատ թագավորին, սակայն ձեռք ձգել չկարողացան։ Ասպատակելով Հայաստանի մի շարք գավառներ, գրավելով և կողոպտելով Տփղիս քաղաքը, նրանք վերադարձան Դվին՝ ձմեռելու[29]։

Օգտվելով այս բանից Սմբատը վերադարձավ Շիրակ և ամրացավ Երազգավորսում։ Սակայն նրան սպասում էր մի նոր ծանր հարված։ Այս անգամ էլ թշնամուն անձնատուր եղավ Հայոց սպարապետ Աշոտը՝ Շապուհ Բագրա-

---

25 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի. էջ 265։

26 Տե՛ս նույն տեղում, էջ 268։

27 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 186—187։

28 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 270։ Դահեկանը ոսկեդրամ էր մոտ 4,5 գրամ քաշով։

29 Տե՛ս նույն տեղում, էջ 270։ Ստեփանոս Տարոնեցի, էջ 164, Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները, հատ. Ա, էջ 202։

տունու որդին[30]։ Միայն կաթողիկոսը կարողացավ մեծ փրկագնով ազատվել գերությունից և ստիպված վարեց աստանդական կյանք՝ Աղվանքում, Վրաստանում և Գուգարքում։

Ջմռան դադարից հետո, 910 թ. գարնանը, պատերազմական գործողությունները վերսկսվեցին։

Այս անգամ Յուսուֆը մնաց Դվինում, իսկ Սմբատի կազմած բանակի դեմ ուղարկեց գերազանցապես հայկական գնդեր՝ Գագիկ Արծրունու գլխավորությամբ։ Ծերունի Սմբատ թագավորի զորքերին առաջնորդում էին նրա քաջարի որդիները՝ Աշոտը և Մուշեղը։ Հակառակորդ բանակները հանդիպում են Նիգ գավառի Ջկնավաճառ կոչվող վայրում։

Նախահարձակ լինելով հովտում հանգստացող հակառակորդի վրա, թվում էր, թե Աշոտը և Մուշեղը հաջողություն պետք է ունենային, սակայն մարտի թեժ պահին Ուտիք գավառից հավաքագրված Սևորդյաց զորքերը լքում են կռվի դաշտը՝ իրենց հետ տանելով Աշոտ թագաժառանգին, իսկ քաջաբար մարտնչող Մուշեղը գերի է ընկնում[31]։

Ջկնավաճառի ճակատամարտում, որտեղ գերազանցապես հայկական գնդերն էին իրար դեմ ելել, Սմբատ թագավորի վերջին ուժերը ջախջախվում են, և երկիրն ու նրա բնակչությունը դառնում են ասպատակության, բռնություննե֊րի, սրածության, կողոպուտի և գերեվարության առարկա։ Յուսուֆն արդեն պատերազմը շահած էր համարում, ուստի կարող էր ցույց տալ իր իսկական դեմքը՝ իր կողմն անցած հայ իշխանների նկատմամբ։ Մուշեղ արքայազնը, Գրիգոր Սուփանը, արքաեղբայր Սահակի որդի Սմբատը սպանվեցին, իսկ մյուսները ահաբեկման և տագնապի մեջ էին։ Պատմաբան կաթողիկոսը, որը գտնվում էր այս անցքերի հորձանքում, դառնությամբ է խոսում երկրին հասած աղետների մասին[32]։ Իր հաղթանակը ապահովելու համար, Յուսուֆը հրամայում է Գագիկ Արծրունուն՝ գրավել Վաղարշակերտը և փակել Երասխաձորի արևմտյան ելքը, որտեղ ամրացել էր Սմբատ արքան։ Վերջինս թեև ծանր պարտություն էր կրել և լքված էր ամենքից, չէր կորցրել ոգու արիությունը, նա վերջին ճիգերն էր գործադրում ստեղծված դրությունից ելք գտնելու համար։ Եվ թեպետ չկային ուժեր երկրի ներսում, դեռևս հույս կար դաշնակիցներ գտնելու դրսից։ Նախ՝ նկատի ունենալով, որ Յուսուֆը հաշվի չէր նստում նաև Բաղդատի խալիֆայի հետ, նա Մոկաց Գրիգոր մեծ իշխանին ուղարկեց վերջինիս մոտ՝ խնդրելով նրա օգնությունը։

Սակայն ծայր աստիճան թուլացած խալիֆայությունը, որի դեմ ապստամբություններ էին ծագել Եգիպտոսում և այլուր[33], որևէ օգնություն ցույց տալ չկարողացավ։ Սմբատը դեսպան ուղարկեց նաև Բյուզանդիա՝ Լևոն Իմաստասեր կայսեր մոտ, որը չնայած խոստացավ օգնություն, բայց մեռավ 912 թ. մայիսին՝ խոստումը չկատարած։ Նրան հաջորդած Ալեքսանդր կայսրը, որը եղբայրն էր Լևոն Իմաստասերի, բոլորովին անտարբեր գտնվեց Հայոց արքայի խնդ-

30 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 271։
31 Տե՛ս նույն տեղում, էջ 275—276։
32 Տե՛ս նույն տեղում, էջ 277—278։
33 Տե՛ս նույն տեղում, էջ 292։

րանքի հանդեպ, մանավանդ որ նրա դեմ էլ խռովություններ էին ծագել[34]։ Փոքր ինչ հույս կարելի էր դնել նաև Գագիկ Արծրունու վրա, որն արդեն հասկացել էր Յուսուֆին և գիտակցում էր, որ Սմբատի հետ հաշվեհարդար տեսնելուց հետո, զենքը իր դեմ էր ուղղելու։ Ուստի նա գաղտնի բանակցությունների մեջ մտավ Սմբատ արքայի հետ և դաշինք առաջարկեց, որը և ընդունվեց։ Դրա իրականացման ուղիները, սակայն, փակ էին[35]։ Հակառակ դրան Յուսուֆը պահանջում էր Գագիկից ապացուցել իր հավատարմությունը՝ կռվել Սմբատի դեմ մինչև վերջ, գրավել Վաղարշակերտն ու արքայի վերջին հենարան Կապույտ բերդը (պատմական Արտագերս ամրոցը՝ Կաղզվանի մոտ), որն այժմ պաշարված էր Յուսուֆի կողմից[36]։ Միաժամանակ շարունակվում էր երկրի ասպատակությունն ու ավերը, բնակչության գերեվարումն ու կոտորածը։

Փրկության հույսը կորցրած Սմբատ արքան, բռնում է թշնամու ողորմածությանը հանձնվելու, ոչինչ բարի չխոստացող և մեծ վտանգներով լի ուղին, թեև Յուսուֆը Սմբատին խոստանում էր անձի անվտանգություն և երկրի ավերածության դադարեցում։

Մինչ այդ Գագիկ Արծրունուն հաջողվել էր իր զորքով հեռանալ Յուսուֆի բանակից և ամրանալ Վասպուրականի բերդերում ու Կորդվաց աշխարհի անանցանելի լեռներում։

Յուսուֆը, փաստորեն, բաց էր թողել սեփական կամքով իր ճանկն ընկած որսը, բայց նրա ձեռքին էր Հայոց արքան, որին նա շղթայակապ Դվին բերեց, իսկ այստեղից էլ տարավ Երնջակ ամրոցը։ Դաժան տանջանքների ու խոշտանգումների ենթարկելով Սմբատ արքային, Յուսուֆը պահանջեց, որպեսզի սա հանձնվելու հրաման տար Երնջակ բերդի պաշտպաններին։ Սմբատը հրաժարվեց այս պահանջը կատարելուց։

Եվ չնայած Յուսուֆը գրավոր խոստում էր տվել Սմբատի անձի անձեռնմխելիության համար, այսուհանդերձ հրամայեց կտրել նրա գլուխը, իսկ մարմինը խաչ բարձրացնել Դվին քաղաքի հրապարակում[37]։

Թագավորելով 17 տարի համեմատաբար խաղաղ և հինգ տարի փոթորիկների մեջ, 914 թվականին նենգ թշնամու ձեռքով խաչ հանվեց Բագրատունյաց երկրորդ գահակալը՝ վաստակելով խաղաղ շինարարի և նահատակի անուն։ Նա մաքառեց հանուն հայկական միավորված զորեղ պետության և զոհ դարձավ ֆեոդալական ներքին երկպառակություններին և օտար նվաճողների ոտնձգություններին։

## 3. ԱՐԱԲՆԵՐԻ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՎՏԱՐՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻՑ

Սմբատ Ա-ի սպանությունից հետո Յուսուֆը մնաց Հայաստանում։

Բագրատունյաց թագավորության շատ քաղաքներն ու բերդերը գրավված էին, թվում էր, թե բռնությունն ու կողոպուտը վերջ չեն ունենալու։ Այսուհան-

34 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 292—293։

35 Տե՛ս նույն տեղում, էջ 291։

36 Տե՛ս նույն տեղում, էջ 293—294։

37 Տե՛ս նույն տեղում, էջ 297—300։

դերձ Հայկական թագավորության հիմքերը դեռ խախտված չէին։ Երկիրը, թեև պարտված, թուլացած, զրկված չէր թշնամուն դիմադրելու կարողությունից։ Հետագա պայքարը Յուսուֆի բանակի դեմ գլխավորեց մի այնպիսի կորովի զորավար, որպիսին էր նահատակ արքայի որդի քաջարի երիտասարդ Աշոտը։

Իր եղբայր Աբասի հետ գնդեր կազմելով, հանկարծակի և սրընթաց հարձակումներով նա ջախջախում է այստեղ-այնտեղ բուն դրած կամ ասպատակության ելնող թշնամու ջոկատները և քայլ առ քայլ ազատագրում Հայոց երկիրը։ Աշոտը խուսափում էր մեծ ճակատամարտերից։ Հենվելով ժողովրդի լայն օժանդակության վրա, լեռնային մանր կռիվներում նա հանկարծակի և հատու հարվածներ էր հասցնում թշնամուն։

Աշոտի և Աբասի հրամանատարությամբ գործող հայկական զորագնդերը անսպասելիորեն երևում էին մերթ Բագրևանդում կամ Շիրակում, մերթ Գուգարքում և Տաշիրքում կամ Աղստև գետի հովտում, Արշարունիքում և այլուր՝ թշնամուց ազատագրելով բերդերն ու քաղաքները։

Պատմիչը դրվատելով Աշոտի քաջությունն ու սխրագործությունները ասում է, թե կարծես նա հոնիական պատերազմ էր հայտարարել սարակինոսների դեմ և սրաթև արծվի նման հարձակվելով թշնամու վրա, ի սուր սուսերի մաշելով նրա զորքերը, կարճ ժամանակամիջոցում ամբողջովին վերանվաճեց իր հոր տերության բոլոր ամրոցները[38]։

Բագրատունյաց թագավորության հողերը, այսպիսով, համարյա ամբողջությամբ ազատագրվեցին։ Դրան օգնեց նաև այն, որ երկարատև պատերազմից հոգնած ու բազում կողոպուտներից հղփացած թշնամու զորքերը կորցրել էին իրենց մարտունակությունը և չէին կարողանում ուշքի գալ հայերի անընդհատ հարվածներից։

Աշոտ թագաժառանգը հարձակվեց նաև Տփղիսի վրա, ջախջախեց Յուսուֆի կայազորը, գերի վերցրեց ատրպատականցի և արաբ մեծամեծներին՝ գերության մեջ գտնվող անվանի հայերի հետ փոխանակելու համար[39]։

Այսպիսով, Աշոտը համառ մարտերով և փայլուն զորավարությամբ էր արժանի դառնում հոր գահին։ «Այս Աշոտը,— ասում է Ստեփանոս Տարոնեցին,— որն ըստ յուր քաջապինդ արիության Երկաթ անվանվեց՝ արիության բազում գործեր ցույց տալով... հալածեց արաբների զորքը մեր Հայոց աշխարհից»[40]։

Աշոտ Բ-ի հաջողությունների բուն գաղտնիքը ոչ թե թշնամու բարոյալքվածությունն էր, այլ հայ ժողովրդի միահամուռ ու հետևողական պայքարը թշնամու զորքերի դեմ։

Թեև երկրի միասնությունը լրիվ վերականգնված չէր, սակայն պայքարը ծավալված էր ամենուրեք՝ Բագրատունյաց թագավորության բուն սահմաններում, Սյունիքում, Վասպուրականում։ Գագիկ Արծրունին, ամրացած Կորդվաց լեռներում, նույնպես զգալի հարվածներ էր հասցնում Յուսուֆի զորքերին և հաղթանակներ տանելով ամրապնդում Վասպուրականի թագավորությունը[41]։

---

38 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 304—306։

39 Տե՛ս նույն տեղում, էջ 306։

40 Ստեփանոս Տարոնեցի, էջ 169—170։

41 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 307—308։

*Սյունյաց Սմբատ և Սահակ իշխանները, վերադառնալով Վասպուրականից ու Գուգարքից և գործակցելով Աշոտ Երկաթի հետ, ազատագրում են իրենց երկիրը*[42]։



**Աշոտ Երկաթի զորքերի երկաթե խաչադրոշը**

*Անհաջողություններից գազազած Յուսուֆը վրեժը հանում էր ժողովրդից։ Տեղահան անելով և գերի վերցնելով բնակչությանը ուղարկում էր ստրկավաճառության։ Այնտեղ, ուր նրա զորքերը կարողանում էին ճնշել բնակչության դիմադրությունը, քստմնելի խոշտանգումներ էին կատարում։ Շատ տուժեցին. մանավանդ Վասպուրականի դաշտային մասերի բնակիչները*[43]։

*Այդ ժամանակ Հայաստանի համար մի նոր պատուհաս հանդիսացավ*

---

42 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 193—194*։

43 *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 309—310*։

հյուսիսային ցեղերի արշավանքը։ Հովհաննես կաթողիկոսի վկայությամբ «Հիւսիսային ազգք բնակեալք առ ոտամբքն Կովկասու» տարակուսելով, որ հայոց շեն երկրի վրայով Յուսուֆի զորքերը հյուսիսն էլ կարող են ասպատակել, որոշեցին ամայի մի գոտի ստեղծել Հայաստանում, որպեսզի Ատրպատականի ամիրայի զորքերը հյուսիս շարժվելու հնար և տրամադրություն չունենան։ Ուստի իրենք ասպատակեցին և դաժանորեն ավերեցին ու կողոպտեցին երկրի հյուսիսային գավառները, մանավանդ Արարատյան դաշտը՝ իր քաղաքներով։

Այդ վնասն այնքան մեծ էր, որ նույն պատմիչն ասում է՝ «և քաղաք մեր կործանեցան առ ի չգոյէ բնակչաց, և երկրագործք մեր սպառեցան և սուգ զգեցան»[44]։

Դրան ավելացավ մարդակերության հասնող դաժան սովը, որը հետևանք էր մի կողմից ձգձգվող պատերազմական գործողությունների պատճառով հողերի անմշակ մնալուն, իսկ մյուս կողմից՝ բնական արհավիրքների, մասնավորապես երաշտի։

Այս ամենին ավելացան սոցիալական սուր բախումները և նորից ծայր առած երկպառակությունները, մանավանդ որ Յուսուֆի զորքերն էլ դեռևս երկրից վերջնականապես վտարված չէին և նրանց նոր հարձակման վտանգը վերացված չէր։

Բյուզանդական Կոստանդին Ծիրանածին կայսրը, ուշի ուշով հետևում էր Հայաստանում, Վրաստանում և Աղվանքում ստեղծված դրությանը, կամենալով այս երկրները իր կողմը թեքել։ Ահա թե ինչու բյուզանդական պատրիարք Նիկողայոսը բարեկամական նամակ է հղում Հովհաննես կաթողիկոսին՝ առաջարկելով Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի միասնությունը Բյուզանդիայի հետ[45]։ Բանակցությունների համար Կոստանդնուպոլիս են հրավիրվում Հայոց արքան և կաթողիկոսը։ Աշոտ Երկաթը շտապում է ամրացնել դաշինքը Բյուզանդիայի հետ, իսկ Հովհաննես կաթողիկոսը հապաղում է Բյուզանդական մայրաքաղաքը գնալ, հասկանալով, որ առաջ կքաշվեն դավանաբանական հարցեր։

Աշոտ արքան վերադարձավ Հայաստան, իր հետ բերելով բյուզանդական օժանդակ զորք։ Սակայն այս զորքը շուտով ետ վերադարձավ, քանի որ Յուսուֆը հեռացել էր Հայաստանից և պատերազմի էր պատրաստվում իր իշխանության սահմանները դեպի արևելք ընդարձակելու համար։

Հեռանալով Հայաստանից Յուսուֆը որոշեց Աշոտ թագավորի դեմ հանել Աշոտ սպարապետ Շապուհյանին, որին իր մոտ կանչեց և թագադրեց[46]։

Թվում էր, թե ընդհարումը երկու Աշոտների միջև անխուսափելի է, սակայն Հովհաննես կաթողիկոսի միջամտությամբ հաշտություն կնքվեց, և Աշոտ սպարապետը Կողբից ու Դվինից բացի, որոնք նրա ժառանգությունն էին, իբրև տիրույթ ստացավ նաև Վաղարշապատը՝ իր շրջակայքով[47]։

---

44 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 322։

45 Տե՛ս նույն տեղում, էջ 333—337։

46 Տե՛ս նույն տեղում, էջ 366։

47 Տե՛ս նույն տեղում, էջ 366, 373։

Այնուհետև Աշոտ արքան իր եղբայր Աբասի հետ գնաց Շամշուլդե՝ հնազանդեցնելու Սմբատ Ա-ի կողմից այստեղ կառավարիչներ նշանակված Վասակ և Աշոտ Գնթունի եղբայրներին, որոնք չէին ընդունում նրա գերիշխանությունը[48]։ Պատժելով ապստամբներին, Աշոտ Բ-ը (Երկաթ) շուտով վերադարձավ Արարատյան դաշտ, որտեղ Աշոտ սպարապետը որոշ տարածություններ էր զավթել թագավորի տիրույթներից։ Նրանց միջև պատերազմական ընդհարումներ սկսվեցին, որոնք փոփոխական հաջողությամբ ավելի քան երկու տարի տևեցին և դարձյալ կաթողիկոսի միջամտությամբ հարթվեցին հաշտությամբ[49]։

Այնուհետև Աշոտ Բ-ը զորքով շարժվում է դեպի Ուտյաց աշխարհը, որտեղ իր իսկ նշանակած Մովսես իշխանը, օգտվելով խառը դրությունից, ապստամբել էր արքայի դեմ։ Ջենքի ուժով պարտության մատնելով Մովսեսին, Աշոտը կուրացնում է նրան[50]։ Պայքարի մեջ է մտնում նաև արքայի եղբայրը, իշխանաց իշխան Աբասը։ Սա, միացած Կախեթի Գուրգեն իշխանի հետ, դավադրություն է կազմակերպում թագավորի դեմ։ Աշոտը պաշարում է Դվինը, այնտեղից անցնում Կախեթ, հետապնդում Գուրգենին[51]։ Այստեղ լսելով, որ իր դեմ ապստամբել է իր աներ Սահակ Սևադա իշխանը, ապատակել Ջորոփորի Կայեն ամրոցը և մերձակա մի այլ ամրոց, գերիներ է տարել և ամրացել Տավուշի ձորերից մեկում ու կամենում է թակարդը գցել թագավորին, Աշոտը հանդուգն հարձակմամբ ցիրուցան է անում ապստամբի զորաջոկատը և պատժելով Սևադային, գրավում է Գարդմանի բերդը և Սևադայի բոլոր տիրույթները[52]։

Աշոտ Երկաթի մղած այս ներքին կռիվների էությունը պարզ էր՝ իշխանները ձգտում էին ինքնուրույնության, իսկ արքան՝ երկրի միասնության։

Այս պայքարի մեջ հաղթող դուրս եկավ արքան, որին հաջողվեց միավորել երկիրը իր թագավորության մեջ, բայց դա դեռևս կատարյալ հաղթանակի չվերածվեց, որովհետև միասնական պետություն ստեղծելու համար անհրաժեշտ տնտեսական և քաղաքական պայմանները դեռևս նպաստավոր չէին։ Բացի դրանից կային նաև արտաքին խանգարող գործոններ։

Աշոտի հաղթանակները ամրապնդեցին նրա իշխանությունը՝ երկրում և հեղինակությունը՝ երկրից դուրս։ Յուսուֆն ստիպված էր ճանաչել Աշոտ Բ-ի գահակալությունը և նրան թագ ուղարկել[53]։ Այդ ժամանակ հակասությունները Յուսուֆի և Բաղդադի խալիֆայի միջև էլ ավելի էին սրվել։ 918 թ. Յուսուֆը պատերազմ սկսեց Ռեյ քաղաքը գրավելու համար, բայց պարտվեց, գերի ընկավ (919) և, Բաղդադ տարվելով բանտ նետվեց՝ չորս տարով։ Այժմ էլ խալիֆան է թագ ուղարկում Աշոտին՝ Յուսուֆի փոխարեն Ատրպատականում կառավարիչ նշանակված Սբուքի միջոցով։ Ըստ որում, խալիֆան ճանաչեց Աշոտ

48 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 369—371։
49 Տե՛ս նույն տեղում, էջ 372—376։
50 Տե՛ս նույն տեղում, էջ 378—379։
51 Տե՛ս նույն տեղում, էջ 385—386։
52 Տե՛ս նույն տեղում, էջ 386—392։
53 Տե՛ս նույն տեղում, էջ 375։

Երկաթի գերագույն իրավունքը մյուս թագավորների նկատմամբ և շնորհեց նրան շահնշահի կամ արքայից արքայի տիտղոս[54]։

Թվում էր, թե Աշոտ Երկաթի գահը ամրապնդված է, սակայն նրա դեմ նորից ապստամբեց Շամշուլդե բերդի կառավարիչ Վասակ Գնթունին, որը դաշինք էր կնքել Կախեթի իշխան Գուրգենի հետ։

Գուրգենն ինքն էր կամենում զենքի ուժով խլել Շամշուլդեն, սակայն Աշոտ Երկաթը պաշարեց, գրավեց բերդը և դերի վերցրեց այնտեղ ամրացված Գուրգենի զորագունդը։ «Եւ այնուհետեւ ապա հիւսիսական ազգքն այնոքիկ,— ասում է Հովհաննես կաթողիկոսը,— ընդ ձեռամբ նորա նուաճեալ հնազանդէին 'ի ծառայութիւն, և ըստ աջողակ այցելութեանն Աստուծոյ երթալով երթայր և զօրանայր»[55]։

Աշոտի այս հաջողությունից հետո Աշոտ սպարապետը վերջնականապես ընդունեց արքայից արքայի հաշտության առաջարկը և, հրաժարվելով գահին տիրանալու մտքից, հաստատվեց Դվինում, որտեղից էլ շուտով հեռացավ։ 922 թ. Դվինի վրա հարձակվեցին բյուզանդացիք, սակայն պարտություն կրեցին Սբուքի և Աշոտ Երկաթի միացյալ ուժերից։

Աշոտ Երկաթը լուր է ստանում, որ իր դեմ ապստամբել է Ցլիկ Ամրամը, որին ինքն էր կարգել Ուտյաց աշխարհի կառավարիչ, իր աներ Սահակ Սևադայի պարտության մատնելուց և կուրացնելուց հետո։ Ուտիքը չէր կամենում ենթարկվել Աշոտ արքային։ Լավ նախապատրաստվելով ապստամբության, նրա տերը հպատակվել էր Կախեթի իշխանաց իշխան Գուրգենին։

Աշոտ Երկաթը իր դաշնակից Եգերաց թագավորից ստացած զորագնդով մտնում է Տավուշի անձուկ և մացառախիտ կիրճերից մեկը և ընկնում շրջապատման մեջ։ Նրա զորքը չուներ մթերքներ, անգամ խմելու ջուր։ Թագավորին, թեպետ դժվարությամբ, այնուամենայնիվ հաջողվում է ճեղքել թշնամու օղակը, դուրս գալ ծուղակից և ապավինել Կաքավաքար բերդի պարիսպների ամրությանը։ Շատերից լքված Աշոտ արքան այլևս անզոր էր կանխել ներքին խռովությունները, և նորից ասպարեզ բացվեց օտար նվաճողների համար։

Այդ ժամանակ, ազատվելով կալանքից, Ատրպատական վերադարձած Յուսուֆը, իր զենքն ուղղեց Վասպուրականի, Կորդվաց աշխարհի ու Աղվանքի դեմ, տեղի իշխաններից պահանջեց հարկատու դառնալ իրեն։ Օգտվելով իր հակառակորդ Սբուքի մահից, նա նորից փորձեց տնօրինել Հայաստանի բախտը և ոստիկանի պաշտոնով Հայաստան ուղարկեց ոմն Նասրի։

Հայաստան մտնելով, Նասրը բռնություններ սկսեց Յուսուֆի երկարատև պատերազմների հետևանքով Ատրպատականի դատարկված գանձարանը լցնելու համար։ Երբ նա հասել էր Նախճավան, Սյունյաց իշխան Բաբկենը, որը զժտվել էր Սահակ մեծ իշխանից, ներկայացավ նրան։ Նասրը կանչեց նաև Սահակին և երկուսին էլ կալանավորեց։ Այսպես վարվեց նաև Դվինից իրեն դիմավորելու եկած 40 մեծամեծների հետ, որոնց կապանքներով Դվին տարավ, հետագայում փրկավճարով ազատելու միտումով։

Նասրը չխնայեց նաև Հովհաննես կաթողիկոսին, որը բանակցություններ

54 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 393։

55 Նույն տեղում, էջ 398։

էր սկսել նրա հետ՝ Դվինի իր կաթողիկոսարանում հաստատվելու համար։ Նախ գրավոր համաձայնություն տալով, ապա դրժելով այն, Նասրը հետապնդեց նրան, կողոպտեց Այրիվանքը, որտեղ մինչ այդ գտնվում էր կաթողիկոսը։ Դրանից հետո նա հարձակվեց կաթողիկոսին պատկանող Բյուրականի բերդի վրա, կոտրելով բերդի բնակիչների ու վանականների համառ դիմադրությունը, գրավեց կաթողիկոսարանի ինչքը և նրան պատկանող գյուղերը։

Յուսուֆը շուտով Նասրին ետ է կանչում Ատրպատական, Դվինում թողնելով Բըշր (Բշիր) զորավարին։ Սա որոշում է հարվածն ուղղել Աշոտ Երկաթի դեմ։ Ինչպես երևում է, Աշոտ Երկաթի վճռական միջոցառումները պառակտիչ իշխանների դեմ, ոմանց դուր չէին եկել, և նրանք Աշոտից երես էին դարձրել։ Անգամ Հովհաննես կաթողիկոսը, որը միասնական և կենտրոնացած թագավորության գաղափարի վճռական ու ջերմ պաշտպանն էր, նախապատվությունը տալիս էր Աշոտ Շապուհյանին, որի մոտ Բագարանում նա մինչ այդ ապաստան էր գտել։

Աշոտ Երկաթը, խուսափելով արաբական զորքերից, մի փոքրիկ գնդով ամրանում է Սևանա կղզում, իսկ Բշիրն ասպատակում է մերձակա գավառները։ Այս միջոցին Աշոտ Բ շահնշահի Գեորգ անունով զորավարը «Ելեալ շրջէր զգաւառօքն սակաւամասնեայ շինութիւն աշխարհին ամրացուցանել ի հենից թշնամեաց»։ Գեորգ Մարզպետունին էր սա, որը երկրի շինարարության և բերդերի ամրացման վրա էր հսկում։ Բշիրը հարձակվում է Գեորգ իշխանի սակավաթիվ ջոկատի վրա։ Վերջինս, սակայն, անօրինակ քաջագործությամբ, ջարդում և ետ է մղում Բշիրի զորքը դեպի Դվին։ Միաժամանակ անց, կարգի բերելով իր զորքերը, Բշիրը ավելի մեծ ուժերով նորից շարժվում է դեպի Սևան և ջանում է իր ձեռքը ձգել Աշոտ Երկաթ թագավորին, բայց նախահարձակ է լինում Աշոտը, որը տասնմեկ նավակների վրա տեղավորելով 70 քաջակորով և ընտիր աղեղնավորների, որոնք «զրեթէ մազու ոչ վրիպէին» ափ է դուրս գալիս, հանկարծակի բերում թշնամու զորքերին և մեծ կորուստ պատճառելով նրանց, խուճապահար փախուստի է մատնում։ Դա Աշոտ Բ թագավորի վերին աստիճանի խիզախ և հանդուգն ճակատամարտերից մեկն էր, որը նրան հանեց ծանր դրությունից և խոշոր նշանակություն ունեցավ երկրի ազատության համար։

Նահանջելով դեպի Դվին, Բշիրը ճանապարհին կամենում է անսպասելի գրոհով գրավել Քեղա բերդը, սակայն այստեղ էր գտնվում նույն Գեորգ իշխանը, որն ամրոցից դուրս գալով հարձակվում է բարոյալքված թշնամու վրա, նոր կորուստներ պատճառելով նրան։ Բշիրը հազիվ է ազատում իր գլուխը և արաբա-ատրպատականյան զորքը ճողոպրում է դեպի Դվին։

Այս միջոցին նորից Հայաստան էր վերադարձել Նասրը, որը ժամանակավորապես էր ոստիկանի պաշտոնը զիջել Բշիրին։ Նա փորձում է հարձակվել Սյունիքի վրա, բայց Սյունյաց Սմբատ գահերեց իշխանը ամրացրել էր իր բերդերը և պատրաստ էր դիմադրության։ Նասրը հարկադրված հաշտություն է կնքում նրա հետ; վերադառնում է Դվին և փրկավճարով կալանքից ազատում Սյունյաց Բաբկեն և Սահակ իշխաններին։ Նասրը, ի վերջո, հաստատվում է

Դվինում՝ տիրելով նաև շրջակայքի բերդերին ու բնակավայրերին բայց անզոր է լինում նոր արշավանքներ ձեռնարկել։

Աշոտ Բ-ը վերադառնալով Շիրակ, նորից ամրապնդել էր իր իշխանությունը։ Կաթողիկոսը, ինչպես երևում է, գժտված նրանից հեռացել էր Վասպուրական՝ Գագիկ Արծրունու մոտ, որտեղ և մեռնում է 929 թ.։

Բնորոշ է, որ այդ մանրապատում կաթողիկոս պատմիչը 923 թ. Սևանի դեպքերից հետո, ինչպես և Թովմա Արծրունին, այլևս ոչ մի տեղեկություն չեն հաղորդում Բագրատունյաց թագավորության մասին։ Մինչդեռ հենց այս ժամանակամիջոցում էին տեղի ունենում այնպիսի պատմական եղելություններ, որոնք բախտորոշ նշանակություն ունեցան Հայաստանի համար։

Բշիրի և Նասրի անհաջողությունները հետևանք էին Ատրպատականի Սաջյան ամիրայության թուլացման։ Կասպից ծովի հարավային ափերին հանդես էր եկել Բուվայհյանների պետությունը, որն ընդարձակվեց և զորեղացավ։ Ատրպատականը նրան մրցակից լինել չէր կարող, Յուսուֆն էլ ընկել էր պատերազմում, իսկ նրա հետնորդները անկարող եղան բռնել նրա տեղը։ Ավելի կարևոր էր այն եղելությունը, որ Արաբական խալիֆայությունից անջատվել էին ոչ միայն Միջին Ասիան, Իրանը, Հայաստանը, Վրաստանը, Շիրվանը, Ատրպատականը, այլև Եգիպտոսը, որտեղ հաստատված Թուլունինները (իսկ հետագայում Ֆաթիմյան խալիֆաները) տիրացել էին նաև Ասորիքին (Սիրիա)։ Արաբական խալիֆայության երբեմնի հզոր վեհապետը դարձել էր երկրորդական կարգի իշխանավոր և խաղալիք խալիֆայության փլատակների վրա գոյացած պետությունների նոր գահակալների ձեռքին։

Ահա այս պայմաններում Հայաստանը ազատագրվում է ոչ միայն Ատրպատականի Սաջյանների ոտնձգություններից, այլև վերջնականապես դադարում է ճանաչել արաբական խալիֆայության թեկուզ անվանական գերիշխանությունը, հրաժարվում խիստ կրճատված հարկերն իսկ վճարելուց[56]։

Թեև աղբյուրները ծայրաստիճան ժլատ տեղեկություններ են ավանդում 923 թվականից մինչև Աշոտ Երկաթի մահը (929), ինչպես և նրա հաջորդ Աբասի օրոք (929—953) տեղի ունեցած անցքերի մասին, սակայն մի բան որոշ է. Բագրատունյաց թագավորությունն ամրապնդված էր, երկիրը հասել էր կատարյալ անկախության և, վայելելով խաղաղություն, ընթանում էր տնտեսական ու մշակութային բարգավաճման ուղիով։

---

[56] *R. Grousset*, Histoire de l'Arménie, p. 394—395, Լեո, Հայոց պատմություն, հատ. Բ, էջ 589։

ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

# ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄԸ

## 1. ՏԵՎԱԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ

Բագրատունյաց թագավորությունը թեև չկարողացավ վերականգնել երկրի նկատելիորեն խախտված միասնությունը, այդուհանդերձ հսկայական նշանակություն ունեցավ հայ ժողովրդի պատմական բախտի համար։ Այդ թագավորության վերականգնումը և ամրապնդումը տեղի էր ունենում երկրում սկըսված տնտեսական և մշակութային վերելքի պայմաններում, իսկ Հայաստանի անկախության հաստատումն իր հերթին մի կարևոր ազդակ հանդիսացավ նրա բարգավաճման համար։ Նմանօրինակ վերելք Մերձավոր Արևելքում տեղի էր ունենում ամենուրեք՝ ֆեոդալական հասարակության արտադրողական ուժերի զարգացման հիման վրա և համեմատական խաղաղության շնորհիվ։

Այս համեմատաբար բարենպաստ պայմաններում էր, որ Աշոտ Երկաթից հետո գահ բարձրացավ Աբաս Բագրատունին և թագավորեց բավականին երկար՝ 929—953 թթ.։ Նրա օրոք Բագրատունյաց թագավորության մայրաքաղաքն էր Կարս անառիկ ամրոցը, որն աճելով դարձավ Հայաստանի նշանավոր քաղաքներից մեկը։ Աբաս Բագրատունու թագավորության այս, կարելի է ասել, նշանակալից ժամանակաշրջանի վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները, դժբախտաբար, սակավ են ու կցկտուր։ Մի բան, սակայն, պարզ է՝ միջազգային իրադրությունը նպաստավոր էր երկրի խաղաղ զարգացման համար։

Կազմալուծված արաբական խալիֆայությունը տրոհվել էր ինքնուրույն պետությունների և մանր ու մեծ ամիրայությունների, իսկ Բյուզանդական կայսրությունը կռվի էր բռնված մի կողմից՝ Բուլղարիայի հետ, որը զորեղացել էր Սիմեոն թագավորի օրոք (892—927), մյուս կողմից՝ սահմանակից արաբական ամիրայությունների հետ, իսկ ծովում նրա դեմ դուրս էր եկել արաբական նավատորմը։ Բյուզանդական կայսրության զորքերը Հովհաննես Կուրկուասի գլխավորությամբ, քսան տարի տևող (922—942) համառ մարտերում հաղթանակներ տարան արաբների դեմ։ Կայսրության արևելյան սահմանները նկատելիորեն ընդարձակվեցին արաբների հաշվին։ Կուրկուասի զորաբանակը Մելիտինեն գրավելով՝ մինչև Խլաթ հասավ, իսկ նրա եղբայր Թեոփիլոսը գրավեց Կարնո քաղաքը[1]։

---

[1] Հայ պատմիչները Կարին են կոչում գավառը, իսկ Թեոդոսուպոլիսը՝ Կարնո քաղաք։

Տարոնի Բագրատունիները արաբական վտանգից պաշտպանվելու համար խուսանավում էին արաբների և Բյուզանդիայի միջև, դաշինք դնելով և որոշակի կապեր հաստատելով կայսրության հետ։ Նույն բանը, թերևս ավելի պակաս չափով, կարելի է ասել Տայքի մասին, որտեղ կազմավորվել էր անկախ իշխանություն, ընդգրկելով մասնավորապես Տայքը, Կղարջքը։ Այս իշխանությունը ևս բարեկամական կապեր էր հաստատել Բյուզանդիայի հետ և կայսրությանը երաշխիք էր տվել, որ արաբական զորաջոկատները Արաքս գետից հյուսիս չեն անցնի։

Բյուզանդական կայսրությունը, թեև գերակշռություն էր ստացել կազմալուծված Արաբական խալիֆայության նկատմամբ և նեղում էր Մոսուլի, Հալեպի և այլ սահմանակից ամիրայություններին, իր հողերին էր միացրել նշանավոր Մելիտինեն ու Կարնո քաղաքը, բայց դեռևս ի վիճակի չէր ծավալուն նվաճողական քաղաքականություն վարել։ Մանավանդ Բյուզանդական կայսրությունը պետք է լուծեր նաև ներքին շատ կարևոր հարցեր, կապված այն համառ պայքարի հետ, որ մղում էր գյուղացիությունը կալվածատերերի և զինվորականների կողմից հողերը զավթելու լայն ծավալ ստացած երևույթի դեմ։

Այս հանգամանքների շնորհիվ Բագրատունյաց Հայաստանում հաստատվել էր տևական խաղաղություն։ Եթե չհաշվենք ներքին մասնակի բնույթ կրող ընդհարումները իշխանների միջև և սոցիալական սուր բախումները, ապա Աշոտ Երկաթի թագավորության վերջին տարիները և նրա եղբայր Աբասի երկարատև թագավորության ամբողջ ժամանակաշրջանը անցան արտաքին վտանգից ազատ և խաղաղ պայմաններում։

Աբաս Բագրատունու օրոք երկրի մասնատվածությունը հաղթահարված չէր և մի շարք իշխանություններ բավական ինքնուրույն էին։ Այդ ինքնուրույնությունը շեշտելու և երկրի մասնատվածությունը խորացնելու միտումով, Բյուզանդական կայսրությունը դիվանագիտական կապեր է ստեղծում հայկական առանձին իշխանությունների հետ։ Կոստանդին Ծիրանածին կայսրը թվարկում է այն հայկական իշխանությունները, որոնց հետ բյուզանդական արքունիքը դիվանագիտական նամակագրություն ուներ։ Հայոց Բագրատունի թագավորներից հետո նա հիշում է՝ Վասպուրականը, Կոգովիտը, Տարոնը, Մոկքը, Անձևացիքը, Սյունիքը, Վայոց Ձորը, Խաչենը և Սևորդիքը (Ուտիք)[1]։

Այնուամենայնիվ Աբասի օրոք Հայաստանն այնքան էլ թույլ չէր։ Բագրատունի թագավորի հեղինակությունը մեծ էր և գոյություն ուներ որոշ համախմբում իշխանությունների միջև։ Իր նոր մայրաքաղաք Կարսում Աբասը շինարարական աշխատանքներ է կատարում։

Աբասի օրոք ռազմական բախումները[2] իշխանական խոշոր տների և նրանց ճյուղերի կամ առանձին խմբավորումների միջև դադարել էին, քանի որ ամբողջ IX դարի ընթացքում և մինչև X դարի սկզբները տեղի ունեցող սուր պայքարի հետևանքով ժառանգական խոշոր հողատիրությունը վերջնականապես

---

[1] *Const. Porph.*, De ceremoniis, Bonnae, 1825, p. 686–687.

[2] Ստեփանոս Տարոնեցի, *էջ 172, 173։*

վերականգնվել և ձևավորվել էր։ Ֆեոդալական տների և նրանց ճյուղերի տիրույթների սահմանները արդեն որոշվել էին, իսկ իշխանությունների փոխհարաբերությունները իրենց հիերարխիկ ձևերով՝ վերից վար, համեմատաբար հաստատուն կերպարանք էին ստացել։ Երկիրն ընթանում էր տնտեսական և մշակութային բարգավաճման ուղիով։

Խոսելով Աբաս թագավորի ժամանակների մասին, Ստեփանոս Տարոնեցին (Ասողիկը) վկայում է, որ Աբասը ոչ միայն Հայոց աշխարհի խաղաղության և շենության պատճառ եղավ, այլև քաջազոր զորությամբ «յաղթող եղեւ շուրջանակի» և վերացրեց Հայաստանը ասպատակելու վտանգը։



Կարսի եկեղեցին. 10–րդ դ.

Երկրի տնտեսական բարգավաճման համար նպաստավոր էր և այն հանգամանքը, որ Հայաստանն այլևս հարկատու չէր ուրիշներին։ Երկրում արտադրվող նյութական բարիքները մնում էին նրա ներսում և նպաստում սկսված տնտեսական վերելքին և շինարարական աշխատանքներին։

## 2. ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՎԵՐԵԼՔԸ X ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍՈՒՄ

Հայաստանի տնտեսական և մշակութային վերելքը, որն սկսվեց IX դարի երկրորդ կեսին և X դարում շարունակվում էր խաղաղ պայմաններում, խոր սոցիալ-տնտեսական պատճառներ ուներ։ Ամենից առաջ այն հետևանք էր ֆեո-

դալական հասարակության արտադրողական ուժերի զարգացման, որը թեև այդ հասարակությանը բնորոշ դանդաղությամբ, բայց և այնպես նկատելիորեն առաջ էր ընթանում։

Միջնադարյան հասարակության հիմքը ֆեոդալական հողատիրությունն էր, ուստի տնտեսության զարգացման համար վճռական նշանակություն ուներ երկրագործությունը, որը նկատելիորեն առաջադիմում էր։ Արտադրողական ուժերի զարգացման հարցը դիտելիս պետք է ամենից առաջ պարզել, թե ինչ փոփոխություններ էին տեղի ունենում երկրագործության մեջ։ Փոփոխություններից առավել նշանակալիցը ֆեոդալական խոշոր հողատիրության ընդարձակումն ու ամրապնդումն էր և աշխարհիկ ու վանական սեփական խոշոր տնտեսության ձևավորումը։ Ֆեոդալների ու վանքերի տիրույթները բաժանվում էին երկու մասի. մեծագույն մասը կազմում էին նրանց ընդհանուր տիրույթները՝ կախյալ և հարկատու բնակչությամբ։ Մնացած՝ փոքր մասի վրա նրանք վարում էին սեփական տնտեսություն։ Նման խոշոր տնտեսությունները նպաստավոր պայմաններ էին ստեղծում նաև երկրագործության ընդհանուր առաջադիմության համար։

Ցամաքային կլիմա ունեցող Հայաստանի երկրագործության համար բացառիկ նշանակություն ուներ ջուրը՝ ոռոգումը, ուստի նոր ջրանցքների անցկացումը և ջրամբարների կառուցումը հասարակության հոգատարության գլխավոր առարկաներից մեկն էր։

Մատենագրական և հնագիտական տվյալներից երևում է, որ տնտեսական վերելքի այս ժամանակաշրջանում Հայաստանում, մասնավորապես Արարատյան նահանգում, Շիրակում, Սյունիքում և Վասպուրականում, կառուցվել են ջրամբարներ, անցկացվել բազմաթիվ ջրանցքներ ու առուներ[3]։

Դարերով խոպան մնացած հողային տարածությունները յուրացվում էին ոռոգման և մշակման միջոցով։ Հովհաննես կաթողիկոսը վկայում է, որ Հայաստանի բնակիչները «հերկեցին հերկս արտաքոյ փշոց...»[4]։

Հողի, իբրև արտադրության հիմնական միջոցի, դերն ու նշանակությունը մեծանում էր։

Տնտեսության երկրորդ ճյուղը՝ անասնապահությունը նույնպես զարգանում է։ Խոշոր եղջերավոր անասունների նախիրները, ձիերի երամակները և ոչխարների ու այծերի հոտերն ունեին ամառային հրաշալի արոտներ ալպյան մարգագետիններում և մասամբ ապահովված էին նաև ձմեռային արոտներով՝ տաք դաշտավայրերում, դրանք բազմացել էին. «և ընբինք զցնծութիւն զգեցան. զի բազմացան՝ի նմա (Հայաստանում) արօտականք անդեայք արջառոց և հօտք ոչխարաց»[5]։

Արաբական տիրապետության և արաբա-բյուզանդական սուր ընդհարումների ժամանակաշրջանում միջազգային տարանցիկ առևտուրը խիստ թուլացել

3 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 253—254, 355, 262—263, «Վիմական տարեգիր», էջ 2, 9, 49, 146, Թովմա Արծրունի, էջ 476։

4 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 250։

5 Նույն տեղում։

էր։ Սակայն IX դարի վերջերից այն կրկին աշխուժանում և ավելի լայն ծավալ է ընդունում։ Հայաստանը խոշոր դեր էր խաղում այդ առևտրի մեջ[6]։

Նշանակալից երևույթ էր բազմաթիվ արհեստների զարգացումը։ Արհեստային արտադրանքի զգալի մասը դառնում էր առևտրի առարկա և նպաստում առևտրի և շուկայի զարգացմանը երկրի ներսում։ Զարգացող արհեստագործությունն, ավելի լայն հիմքերի վրա քան հին դարերում, անջատվելով երկրագործությունից, կենտրոնանում էր քաղաքներում, որոնք դառնում էին արհեստային արտադրանքի և առևտրի կենտրոններ, այսպիսով ձևավորվում էր ֆեոդալական քաղաքը, դառնալով տնտեսական կարևոր կենտրոն։

IX—X դարերում տեղի էր ունենում նաև երկրի բնական հարստությունների օգտագործման ընդարձակումը։ Հայաստանի բազմաթիվ վայրերում հանվում էր երկաթ, պղինձ, ոսկի, արծաթ, աղ, բորակ, մկնդեղ, ծծումբ և այլ հանածոներ, օգտագործվում էին նաև անտառների բարիքները։

Արտադրողական ուժերն աճում, ընդարձակվում էին կազմելով սկսված տնտեսական և մշակութային վերելքի ընդհանուր առաջադիմության հիմքը։

Երկրի բարգավաճումը նշանավորվեց նաև միջին դարերի համար բավականաչափ ծավալուն շինարարությամբ։ Արաբական տիրապետության ժամանակ շուրջ 200 տարի ընդհատված շինարարական աշխատանքները վերսկսվում են IX դարի երկրորդ կեսին և հետզհետե ավելի են ընդարձակվում։ Ամենից առաջ դա վերաբերում է նոր քաղաքների հիմնադրմանն ու շինարարությանը։ Անց են կացվում ճանապարհներ, կառուցվում կամուրջներ, քարավանատներ։ Քաղաքացիական շենքերի և կառուցվածքների շինարարությունը դառնում է նշանակալից երևույթ։

Վերսկսվում և ծավալվում է նաև եկեղեցական շինարարությունը։ Տվյալ դարաշրջանի համար բնորոշ էր վանքերի առաջացումը, սկսվում է վանական համալիրների ձևավորումը։

Սկիզբ առավ երկրի հոգևոր մշակույթի զարգացման մի նոր շրջան։ Վանքերին և եկեղեցիներին կից բացվում են դպրոցներ, ձեռագրերի արտադրության և նկարազարդման արհեստանոցներ, գրատուն-գրադարաններ, զարգանում են գիտության տարբեր ճյուղերը։ Եթե VIII դարը տվել է միայն մի պատմիչ՝ Ղևոնդ Երեցին, ապա X դարի սկզբներում հանդես են գալիս Հովհաննես կաթողիկոսը, Արծրունիների տոհմական պատմիչ Թովմա Արծրունին և նրա անանուն շարունակողը, Շապուհ Բագրատունին։ Վերջնականապես ամբողջանում է «Աղվանքի պատմություն» աշխատությունը։

Զարգանում է նաև եկեղեցական գրականությունը։ Մաշտոց կաթողիկոսը (մեռել է 897 թ.) կազմել է աղոթք-օրհնությունների մի ժողովածու, որն իր անունով էլ կոչվում է «Մաշտոց»։ Հորինվում են հոգևոր երգեր և այլ գործեր։

Երկրում սկսված տնտեսական, հասարակական և մշակութային վերելքը նշանավորում էր զարգացման մի նոր ավելի բարձր աստիճան՝ ֆեոդալական հասարակությունը զարգացման վաղ ֆեոդալական դարաշրջանից թևակոխում էր զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը։

---

6 Տե՛ս Հ. Մանանդյան, Հայաստանի քաղաքները 10—11-րդ դարերում, Երևան, 1940, էջ 9—10։

## 3. ԱՆԻՆ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ

Դեռևս X դարի 20-ական թվականներին՝ Աշոտ Երկաթի օրոք հաստատված խաղաղությունը, որը շարունակվեց Աբասի դահակալության ամբողջ ժամանակամիջոցում, մեծապես նպաստեց երկրում տեղի ունեցող տնտեսական և մշակութային վերելքին։ X դարի երկրորդ կեսում Բագրատունյաց թագավորությունն ապրեց իր ծաղկման ժամանակաշրջանը։

Այս շրջանը սկսվեց Աբասի մահից հետո, Աշոտ Գ թագավորի գահակալությամբ (953—977)։ Աշոտին է վերագրվում բորոտներին, հիվանդներին, կաղերին, կույրերին պատսպարելու համար ուրկանոցների և այլ բարեգործական հաստատությունների հիմնադրումը, այստեղից էլ նրա «Ողորմած» մականունը[7]։

Նոր էր Աշոտը գահ բարձրացել, երբ փորձեց թագավորությանը վերամիավորել Դվին քաղաքն իր գավառով, որին տիրացել էր Մուհամմադ իբն Շադդադը։ 953 թ. նա 30 հազարանոց զորաբանակով հարձակվեց Դվինի վրա, սակայն չկարողացավ կոտրել ամրապարիսպ քաղաքում փակված Մուհամմադի դիմադրությունը և ետ վերադարձավ։ Մի տարի անց՝ 954 թ. Դվինը գրավեցին Ատրպատականի ամիրա Սալար Մարզուբանի զորքերը։ Ատրպատականի Սալարյանները բավականին խանգարեցին Աշոտ Գ-ին՝ Արաքսի հովտի Դվին—Գողթն հատվածի ազատագրության համար մղվող պայքարում։ Այդուհանդերձ, որոշ վկայություններից երևում է, որ այս հատվածը առժամանակ (մոտավորապես 957—966 թթ.) գտնվել է հայոց թագավորության գերիշխանության ներքո[8]։

Աշոտի գահակալության սկզբում կովկասյան լեռնաբնակ ցեղերը ավարառության նպատակով ներխուժեցին Հայաստան։ Սակայն Աշոտ արքան երկու մասի բաժանած զորքերով մոտ երեք տարի շրջում էր իր թագավորության տարբեր կողմերում և կոտորում ու դուրս էր քշում ասպատակներին[9]։

959 թ. փոքր ինչ անց Հայաստանի դեմ արշավանք ձեռնարկեց Աղձնիքի Համտուն ամիրան, որը ծանր ջարդ կրելով ետ շպրտվեց[10]։

Բագրատունյաց թագավորությունը հաստատորեն ընթանում էր վերելքի ուղիով։ Սակայն Բագրատունիները չունեին իրենց հիմնական նստավայրը և խստորեն զգացվում էր խոշոր կենտրոնի՝ մայրաքաղաքի պակասը։ Առաջին Բագրատունիները հաստատվել էին մերթ Բագարանում, մերթ Երազգավորսում (Շիրակավան)։ Աբասը նստում էր Կարս քաղաքում, որը ընկած լինելով թագավորության ծայրամասային մի գավառում, մայրաքաղաքի բուն նշանակություն, կարելի է ասել, չստացավ։ Դվինը գտնվելով Բագրատունյաց թագավորության հարավ-արևելյան սահմանագլխին, հաճախ անցնում էր հարևան ամիրայությունների ձեռքը։

Բարգավաճող Բագրատունյաց թագավորությանը խիստ անհրաժեշտ էր մի միավորող կենտրոն՝ իսկական մայրաքաղաք, թագավորող տոհմի կենտրո-

---

7 Կիրակոս Գանձակեցի, էջ 87։

8 Տե՛ս «Հիշատակարանք ձեռագրաց», Անթիլիաս, 1960, էջ 122։

9 Տե՛ս Չամչյան, Պատմութիւն Հայոց, հատ. Բ, էջ 836։

10 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, էջ 3։

*նական տան տիրույթում։ Նպատակահարմար էր Շիրակի նշանավոր Անի ամրոցը, որը Կամսարականներից էր անցել Բագրատունիների ձեռքը։ Անին իր առջև փռված ավանով, դեռևս IX դարի վերջերին ընդարձակվել, դարձել էր կարևոր կենտրոն, իսկ 961 թ. հռչակվեց «թագավորանիստ քաղաք Հայոց» և շուտով ձեռք բերեց մեծ շուք ու համբավ։ Դա տեղի ունեցավ Բագրատունիների զորեղացման և երկրի տնտեսական բարգավաճման պայմաններում, որով նկատելիորեն մեծանում էր միասնական ուժեղ պետություն ստեղծելու հույսը։*



Անիի միջնաբերդը

*Նույն՝ 961 թ. մայրաքաղաք հռչակված Անիում գումարվեց մի մեծ ժողով, որին մասնակցում էին «ամենայն իշխանքն տանն Հայոց», հայոց ամբողջ զորքը, ինչպես նաև Աղվանքի Փիլիպե թագավորն իր շքախմբով ու զորքով և Աղվանքի կաթողիկոսը՝ քառասուն եպիսկոպոսների հետ միասին։ Այս բոլորի ներկայությամբ Անանիա կաթողիկոսը մեծ շուքով օծեց Աշոտ թագավորին։ Նա հռչակվեց շահնշահ՝ արքայից արքա, քանի որ նրա գերագույն իշխանությունը ճանաչում էին Վասպուրականի և Աղվանից թագավորները։*

*Աշոտի թագավորությունը օրինական ճանաչվեց Բյուզանդական կայսրության, Աբխազաց թագավորի և հարևան ամիրայությունների կողմից, որոնք նվերներ ուղարկեցին հայոց արքայից արքային։ «Եւ լինէր ուրախութիւն մեծ ամենայն տանն Հայոց, վասն զի տեսին նորոգեալ զաթոռ թագաւորութեան աշխարհիս Հայոց՝ ըստ առաջին հարցն»[11]։*

*Աշոտ թագավորը 963—964 թվականներին մեծ շինարարություն ձեռնար-*

---

[11] Մատթեոս Ուռհայեցի, *էջ 3—4*։

*կեց իր նոր մայրաքաղաքում։ Կառուցվեցին քաղաքի պարիսպները, որոնք ձգվելով Ախուրյանի ձորից մինչև Անի գետակի ձորը, իրենց մեջ էին առնում աճող քաղաքի մի մասը, իսկ Կամսարականների նախկին ամրոցը՝ ընդարձակվելով դարձավ Անի քաղաքի միջնաբերդը, որը նույնպես շրջապատված էր անառիկ պարիսպներով։ Միջնաբերդում և քաղաքային թաղամասերում կառուցվեցին պալատական և բնակելի շենքեր, բաղնիքներ, եկեղեցիներ և այլ շինություններ։ Անին իրոք դարձավ քաղաքամայր և խոշորագույն դեր խաղաց միջնադարյան Հայաստանի հասարակական, քաղաքական և մշակութային կյանքում։*

*Անիից զատ, շինարարական աշխատանքներ կատարվեցին նաև այլ վայրերում՝ քաղաքներում, ավաններում և վանքերում։*

*Բագրատունյաց թագավորությանը նորից համահայկական պետության բնույթ հաղորդելու գործում խոշոր նշանակություն ուներ նրա ռազմական հզորությունը։ Աշոտ Ողորմածը հոգ տարավ նաև այդ ուղղությամբ։ Նրա գահակալության սկզբում հայկական զորքը բաղկացած էր երկու մասից՝ մարզպանական բանակից, որի մեջ մտնում էին հայ իշխանների բոլոր զորագնդերը՝ թվով 45 հազար զինվոր և արքունական գնդից, որը Բագրատունիների սեփական զորքն էր[12]։*

*Դա մի զգալի ուժ էր, որ շուտով պետք է ավելի զորեղանար։ Խոշոր նշանակություն ուներ նաև եկեղեցու միավորվածությունը և կաթողիկոսական աթոռը Շիրակ փոխադրելը։ Ամենայն հայոց կաթողիկոսը պետք է ոչ միայն սատար կանգներ թագավորին, այլև ընդգծեր Բագրատունիների թագավորության գերադաս դիրքը։*

*Հայ եկեղեցու թեմերի անջատական ձգտումներն ուրիշ բան չէին, քան հայկական իշխանությունների անջատական ձգտումների արտահայտություններ, հետևաբար կաթողիկոսի պայքարը թեմերի պառակտման դեմ առաջին հերթին քաղաքական նշանակություն ուներ և հենվում էր Բագրատունիների զորեղության և հեղինակության վրա։ Սյունիքի թեմի օրինակը դրա ցայտուն դրսևորումն էր։*

*Դեռևս Աբասի թագավորության վերջին տարիներին Սյունյաց Հակոբ եպիսկոպոսը, Սյունյաց իշխանների անջատական ձգտումներից օգտվելով, չկամեցավ ենթարկվել հայոց կաթողիկոսի գերագույն իշխանությանը, փորձեց դուրս գալ նրա իրավասությունից և միաբանել Աղվանից կաթողիկոսության հետ։ Աղվանքի եկեղեցու անջատական ձգտումները երկար պատմություն ունեին, իսկ IX դարի վերջերից՝ Համամ թագավորի գահակալության տարիներից, Աղվանքում ժամանակավորապես առաջացել էր ինքնուրույն կաթողիկոսություն[13]։*

*Սյունյաց եպիսկոպոսի անջատական քայլերի համար նպաստավոր էր և այն հանգամանքը, որ Հայոց կաթողիկոսական աթոռը, դեռևս Հովհաննես կաթողիկոսի օրերից, գտնվում էր Վասպուրականի թագավորության սահմաններում։ Անանիա Մոկացի կաթողիկոսը լավ էր հասկանում, որ Աղվանից եկեղե-*

---

12 *Տե՛ս* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 3։*

13 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 281—282։*

ցու և Սյունյաց թեմի գժտություններին վերջ դնելու համար պետք էր ապավինել Բագրատունյաց ավելի զորեղ թագավորության հեղինակությանը։ Անանիան Վասպուրականից շտապեց Կարս և, Աբաս թագավորի հետ խորհրդակցելուց հետո, ժամանակավոր նստավայր ընտրեց Անիից հյուսիս գտնվող Արգինայի վանքը։ Ապա նա իր մոտ հրավիրեց Աղվանքի Սահակ կաթողիկոսին և Սյունյաց Հակոբ եպիսկոպոսին, բայց սրանք հրաժարվեցին ներկայանալ։ Անանիան ինքը ուղևորվեց Սյունիք և հնազանդեցրեց Հակոբին։ Շուտով, սակայն, Սահակի մահից հետո, Աղվանից կաթողիկոս դարձավ Գագիկը, և Հակոբը գործակցեց նրան։ Սյունյաց Սմբատ և Ջևանշեր իշխաններն իրենց պաշտպանության տակ առան Հակոբ եպիսկոպոսին, և գժտությունը ութ տարի երկարեց, մինչև որ Անանիան 959 թ. Սյունյաց եպիսկոպոս ձեռնադրեց Ջևանշեր իշխանի որդի Վահանին, որը Սյունյաց իշխանների համաձայնությամբ հնազանդություն հայտնեց Հայոց կաթողիկոսին[14]։

Շուտով, Արցախի և Ուտիքի իշխանների առաջարկությամբ, Անանիան Աղվանքի կաթողիկոս է հաստատում Դավիթ անունով մի կրոնավորի, որը նույնպես ճանաչում է Հայոց կաթողիկոսի գերադաս իշխանությունը[15]։

Սյունյաց, մանավանդ Աղվանից աթոռների հնազանդեցումը ոչ այնքան Հայոց կաթողիկոսության, որքան Բագրատունյաց թագավորության հաղթանակն էր, նրա զորեղության և հեղինակության աճման արգասիքը։

Զուր չէ, որ Անանիա Մոկացին, թեև ոչ վերջնականապես, փոխադրվել էր Շիրակ և հաստատվել Արգինայում, որտեղ և վախճանվեց ու թաղվեց։ Պատահական չէ նաև այն, որ դրանից հետո նոր կաթողիկոսի ընտրությունը տեղի ունեցավ Աշոտ թագավորի հրամանով՝ Շիրակավան արքայական ամրոցում գումարված եպիսկոպոսական ժողովում։ Այնուհետև, երբ վեճ ծագեց նոր կաթողիկոսի քաղկեդոնական լինելու վերաբերյալ, ժողով գումարվեց Անի քաղաքում և ժողովականները «հրամանաւ Աշոտ թագաւորի կարգեցին ի տեղի նորա զայլ ոմն կաթողիկոս և լուծին զՎահան», որ հեռացել էր Վասպուրական[16]։

Բագրատունիների քաղաքական ազդեցության ներքո գործող և նրանց նեցուկը հանդիսացող Հայոց կաթողիկոսի աթոռը չէր կարող Շիրակից դուրս մնալ։ Եթե Անանիա Մոկացին Արգինան դարձրեց նստավայր, ապա Խաչիկ Արշարունի կաթողիկոսը 972 թ. հռչակավոր ճարտարապետ Տրդատի ձեռքով կառուցել տվեց Արգինայի Կաթողիկե տաճարն ու կաթողիկոսարանը և վերջնականապես հաստատվեց այստեղ՝ Անիի կողքին։ Դրանով լուծվեց հոգևոր իշխանությունը Շիրակում կենտրոնացնելու խնդիրը։

Խոշոր նշանակություն ունեին նաև Հայաստանի փոխհարաբերությունները հարևան երկրների հետ։

Ինչպես տեսանք, հայաքնակ Աղվանքը ճանաչում էր Շիրակի Բագրատունիների գերադասությունը։ Վրաստանի հետ ևս հարաբերությունները լավ էին։ Աբաս թագավորի գահակալության ժամանակ աբխազների Բեր թագավորի հետ

---

14 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 284—285։

15 Տե՛ս նույն տեղում, էջ 286։

16 Ստեփանոս Տարոնեցի, էջ 185, 187։

*տեղի ունեցած փոքրիկ ընդհարումից հետո «ուխտ խաղաղութեան» հաստատվեց՝ «մի այլ լինել պատերազմ ի մէջ նոցա»*[17]։

*Այդ ուխտն իրոք չխախտվեց, որը մի կարևոր երևույթ էր իրար հարևան ֆեոդալական պետությունների համար։*

*Արաբական խալիֆայության երկրները, որոնք ջլատված և մանր ամիրայություններ էին, հարավից վտանգ չէին սպառնում Հայաստանին, իսկ հարավ-արևմուտքում՝ Միջագետքի և Սիրիայի (Ասորիքի) ամիրայությունները չէին կարողանում դիմակայել բյուզանդական զորքերին, որոնք կայսրության հայազգի զորավարներ Նիկեփոր Փոկասի և Հովհաննես Չմշկիկի (հայկական աղբյուրներում Կիւռ Ժան) գլխավորությամբ ջախջախիչ հարվածներ էին հասցնում նրանց։ Նիկեփոր Փոկասը, որ 963 թ. տիրել էր բյուզանդական դահին, արևելյան զորքերի ընդհանուր հրամանատար Հովհաննես Չմշկիկի գործակցությամբ 964—965 թթ. նվաճեց Կիլիկիան։ 969 թ. կայսերական գահի վրա էր արդեն ինքը՝ Հովհաննես Չմշկիկը։ Սա 971 թ. երկու ճակատամարտերում պարտության մատնեց Բուլղարիա մտած Սվյատոսլավ ռուս իշխանի բանակը, իսկ բուլղարական Բորիս թագավորին, զրկելով արքայական ծիրանիից, մագիստրության աստիճան շնորհեց և Բուլղարիայի արևելյան մասը միացրեց կայսրությանը։ Կրկնելով իր նախորդների փորձը, Չմշկիկը՝ կայսրության հյուսիսային սահմանները պաշտպանելու համար, Փոքր Ասիայի և Բյուզանդական կայսրությանը ենթակա հայկական նահանգներից գերազանցապես հայերից բաղկացած մեծ քանակությամբ աղանդավորների գաղթեցրեց Թրակիա։*

*Պակաս նշանակալից չէին բյուզանդական զենքի հաղթանակները Արևելքում, բայց դրանք վտանգավոր էին, որքանով սպառնալիք էին ստեղծում նաև Հայաստանի համար։ 966 թ. Տարոնն արդեն ենթակա էր Բյուզանդական կայսրությանը, իսկ 970 թ. կայսերական զորքերը Կայսիկներից խլեցին Մանազկերտը։ 973 թ. բյուզանդական բանակը Մլեհ զորավարի գլխավորությամբ գրավեց Մելիտինեն ու պաշարեց Ամիդը, սակայն վերջինս օգնական ուժեր ստացավ, և բյուզանդական զորքը պարտություն կրեց*[18]։

*Բյուզանդական հզոր կայսրությունը և նրա հռչակավոր զորավար-կայսրը չէին կարող մոռանալ Ամիդի պարտությունը։ 974 թ. մի մեծ բանակի գլուխ անցած, Չմշկիկը եկավ Տարոն, որպեսզի Հայաստանի վրայով մտնի Միջագետք։ Դժվար է ասել, թե ինչ մտադրություն ուներ կայսրը Հայաստանի նկատմամբ, համենայն դեպս Ամիդում կրած պարտությունից հետո դաշինքը հայոց հետ օգտակար պիտի նկատվեր։ Աշոտ արքան պատշաճ համարեց իր բանակով շարժվել Հարք գավառը, որտեղ հավաքվեցին նաև նրա զինակիցների՝ Վասպուրականի, Սյունիքի, Հայոց Աղվանքի և Սասունի իշխանների զորքերը, կազմելով 80 հազարանոց մարտական մի բանակ։*

*Չմշկիկը և Աշոտ շահնշահը պատգամախոսներ փոխանակեցին և կնքեցին դաշինք, որի համաձայն Աշոտը Բյուզանդական կայսրին տալիս էր 10 հազար ընտիր զինվորներից կազմված օգնական զորագունդ*[19]։

---

17 Ստեփանոս Տարոնեցի, *էջ 173*։

18 *Տե՛ս* Մատթէոս Ուռհայեցի, *էջ 14—16*։ Լեո, *Հայոց պատմություն, հատ. Բ, էջ 608*։

19 *Տե՛ս* Մատթէոս Ուռհայեցի, *էջ 17—18*։

Զմշկիկը Տարոնի վրայով շարժվեց հարավ. գրավվեցին Մծբինը, Ամիդը, Եդեսիան, սակայն Զմշկիկի բուն նպատակը խալիֆաների մայրաքաղաք Բաղդադի գրավումն էր, որը չիրականացավ։ Հաղթանակներով և հսկայական ավարով բյուզանդական բանակը վերադարձավ Կոստանդնուպոլիս, իսկ հաջորդ տարին ռտնատակ տվեց Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆաներին ենթակա Սիրիան, Փյունիկիան, Պաղեստինի նվիրական վայրերը։

Աշոտ արքայի դաշինքը Զմշկիկի հետ[20] ժամանակավորապես կանխեց բյուզանդական վտանգը և նկատելիորեն ուժեղացրեց Բագրատունիների միջազգային դիրքը։

Այսպիսով, Աշոտ արքայի ներքին և արտաքին քաղաքականության նպատակն էր՝ զորեղացնել Բագրատունյաց թագավորությունը և իր իշխանության ներքո միավորել ամբողջ Հայաստանը։

Պատմական այս ժամանակաշրջանում Հայաստանը մեկ պետության մեջ միավորելու համար կային որոշ նպաստավոր հանգամանքներ, այն է՝ օտար տիրապետությունից երկրի մեծ մասի ազատագրված լինելը, սկսված տնտեսական վերելքն ու բարգավաճումը, Բագրատունյաց թագավորության գերակշիռ դերն ու զորեղությունը ֆեոդալական մյուս իշխանությունների նկատմամբ և, ի վերջո, արտաքին վտանգի առկայությունը, որն ստիպում էր օտարների ոտնձգություններից պաշտպանվելու համար միասնականության ձգտել։

Սակայն միասնական պետություն ստեղծելու համար հաստատուն հիմքեր դեռևս բավարար չափով չկային։ Երկրի տնտեսական զարգացման մակարդակը անհրաժեշտ բարձրության չէր հասել, տարբեր գավառների միջև տնտեսական կապերը շատ թույլ էին, քաղաքային կենտրոններն ավելի շուտ գավառական կենտրոններ էին, տնտեսական կյանքը շարունակում էր ամփոփված մնալ գավառական մասշտաբներով՝ հիմք հանդիսանալով ֆեոդալական տեղական իշխանությունների առաջացմանը։ Միասնականությանը մեծ չափով խանգարում էին նաև արտաքին հարձակումները։ Այսպիսով, Հայաստանը մեկ պետության մեջ միավորելու քաղաքականության որոշ հաջողությունների հետ մեկտեղ, իշխող հասարակական-տնտեսական պայմաններում դրան հակազդող ուժերը (ներքին և արտաքին) ավելի զորեղ գտնվեցին և Հայաստանում, բացի Վասպուրականի թագավորությունից, շուտով առաջացան նաև այլ թագավորություններ և իշխանություններ, որոնք առայժմ ճանաչում էին Շիրակի Բագրատունիների վերադաս իշխանությունը և ոչ միայն արտաքին քաղաքականության և պատերազմների, այլև մի շարք այլ հարցերում ենթակա էին Բագրատունյաց կենտրոնական թագավորությանը և միավորված էին նրա հետ։

---

20 Բյուզանդական բանակի այս արշավանքների մասին տեղեկությունները պահպանվել են, իբրև թե, Զմշկիկ կայսեր գրած նամակներում՝ ուղղված Աշոտ շահնշահին, Տարոնի բյուզանդական զորավարին և ոմն Ղևոնդ Իմաստասեր վարդապետի։ Այդ նամակները, որոնք պահպանվել են Ուռհայեցու մոտ (էջ 19—28), ոմանք վավերական են համարում, ոմանք էլ մերժում են դրանց վավերականությունը։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. ԱՐԱԲԱԿԱՆ ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄՈՒՄ

*Հայոց թագավորության միասնականությանը խանգարում էին առաջին հերթին տեղական արաբական ամիրայությունները*[1]։

*Աշոտ Բագրատունի իշխանաց իշխանի, ապա և թագավորի իշխանությունը Արաբական խալիֆայությունը ճանաչել էր ամբողջ Հայաստանի վրա, ուստի նրանից կախյալ դրության մեջ ընկան ոչ միայն հայ իշխանները, այլև արաբ ամիրաները, այն է՝ Ապահունիքի Կայսիկները, Բերկրիի Ութմանիկները և, մասամբ, Կարնո քաղաքի (Թեոդուպոլսի) ամիրաները։ Կոստանդին Ծիրանածինի վկայությամբ, Աշոտ թագավորին ենթակա էին նաև Հերը և Սալմաստը։ Այս ամիրայությունները, իբրև կախյալ իշխանություններ, պարտավոր էին հարկ վճարել ու զորք տալ հայոց Բագրատունի թագավորներին*[2]*։ Թագավորն իրավունք ուներ միջամտելու նրանց տիրույթների ժառանգության առթիվ ծագած վեճերին և կայացնելու իր վճիռը։*

*Այսպիսով, նախկինում խալիֆայության վստահելի հենարան համարված ամիրաները հայկական պետականության վերականգնումով դարձան Բագրատունի թագավորի սովորական հպատակներ։ Տեղի տալով ուժերի գերակշռության առջև, բայց բնավ չհաշտվելով ստեղծված դրության հետ, նրանք ամեն կերպ ջանում էին թուլացնել և քայքայել Հայոց թագավորությունը։*

*Ամիրայությունների մեջ ամենակարևորը Կայսիկներն էին։ Նրանցից առաջինը, որ հիշվում է աղբյուրներում Աբու-լ-Վարդն է։ Ըստ Կոստանդին Ծիրանածինի*[3]*, Աշոտ Բագրատունի իշխանաց իշխանը Աբու-լ-Վարդին զիջել էր Խլաթ և Արճեշ քաղաքները։*

*Բերկրիի Ութմանիկները, որոնք ծագմամբ, հավանաբար, ցեղակից էին Ապահունիքի Կայսիկներին, Բուղայի արշավանքի ժամանակ՝ իջնելով Վանա*

---

[1] *Այս բառը ծագում է արաբերեն «ամիր» (իշխան, հրամանատար) բառից, ուստի հայերեն, հավասար չափով, կարելի է գործածել ամիրայություն և ամիրություն ձևերը։*

[2] *Տե՛ս* *Const*, *Porph*., De adm. imp., I, c. 44, p. 201.

[3] *Տե՛ս նույն տեղում, էջ 199.*

լճի արևելյան ափով, գրավել էին Ամյուկ բերդը և հասել մինչև Վարագա սարը։ Տեղական իշխաններից Ռոստոմ Վարաժնունու սպանությունը առիթ դարձավ, որ Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունին հարձակում գործեր Ութմանիկների վրա։ Սա թեև չկարողացավ գրավել Ամյուկը, սակայն նվաճեց Վարագա սարը[4]։

Հայոց թագավորության հետ սերտորեն կապված էին Զուրարիկները։ Բուղայի ձեռքով Մուսա իբն Զուրարայի գերի տարվելուց և Զուրարիկներին կոտորելուց հետո այս ամիրայության հողերը՝ Բաղեշ կենտրոնով մասամբ անցան Աղձնիքի Շայբանիներին։

Մուսայի սպանությունից հետո, որդին՝ Աբու-լ-Մաղրան (Դրասխանակերտցու մոտ՝ Ապլմախրա), հավանաբար վախենալով հարևան Շայբանիների հզորացումից, ամուսնացել էր Արծրունի իշխանուհու հետ, մանավանդ, որ իր մայրն էլ հայուհի (Բագրատունի) էր։ Աբու-լ-Մաղրան վարչականորեն ենթակա էր Շայբանի ամիրա Իսա իբն ալ-Շայխին և մասնակցում էր նրա մղած կռիվներին, այնուամենայնիվ Զուրարիկներն աստիճանաբար կծկվեցին Վանա լճի հարավ-արևմտյան անկյունում, որը մտնում էր Հայոց թագավորության մեջ։ Ըստ Թովմա Արծրունու, Վասպուրականի իշխան Գուրգեն Ապուպելճին ենթակա էր Զուրարիկների հիմնական տիրույթը՝ Արզնը։

Փոքրիկ ամիրայություններ էին առաջացել նաև Հեր և Զարևանդ գավառներում։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ Վասպուրականի իշխան Աշոտ Արծրունու որդի Դերենիկը հնազանդեցրել էր Հեր և Զարևանդ գավառների արաբ ամիրաներին։ Վերջիններս թեպետ և առերես հպատակություն էին հայտնել, սակայն առիթ էին որոնում ազատվելու Արծրունիների գերիշխանությունից։

Յուրահատուկ էր Կարնո քաղաքի վիճակը։ Քաղաքը իր շրջակայքով ձևականորեն մտնում էր Հայոց թագավորության մեջ, սակայն նրա զինվորական կառավարիչները նշանակվում էին խալիֆայության կողմից, քանի որ Կարինը առաջնակարգ ռազմական նշանակություն ուներ։

Հայոց թագավորության կազմավորումը կասեցրեց արաբների տարածումը Հայաստանում և որոշ տեղերում նույնիսկ ետ մղեց։ Օրինակ, Դվինը իր շրջակա Ոստան գավառով դարձավ Բագրատունիների տիրույթ[5], իսկ ընդհանուր առմամբ Բագրատունի թագավորներն ու Արծրունի իշխանները կարողացան ձախողել արաբ ամիրաների ոտնձգությունները։

Սմբատ Ա-ի իշխանության (890—914) առաջին տարիներին Հայաստանի նկատմամբ Ատրպատականի կառավարիչ Աֆշինի բռնած սպառնալից դիրքը և գործողությունները հույսեր ներշնչեցին Հայաստանի ամիրայություններին, որոնք ձգտում էին դուրս գալ հայոց թագավորի գերիշխանությունից։ Հավանական է, որ Ատրպատականի ոստիկանը որոշ հարաբերության մեջ էր մտել այդ ամիրաների հետ։

Առաջին հերթին գլուխ բարձրացրեց Դվինը։ Այդ ժամանակ Դվինը կառա-

---

4 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 214։

5 Տե՛ս „Opus geographicum auctore Ibn Haukal", II, p. 343.

վարում էին արաբ եղբայրներ, որոնց պատմիչն անվանում է «գլխավոր ոստիկանք և հրամանատարք քաղաքին»[6]։

Պատմիչը վկայում է, որ նրանք զլացան թագավորի նկատմամբ ունեցած իրենց պարտականությունների մեջ և նույնիսկ հարկերը լրիվ չէին վճարում։ Սմբատը հարձակվեց Դվինի վրա, երկու ապստամբ կառավարիչները փախան քաղաքից, բայց ճանապարհին բռնվեցին ու բերվեցին թագավորի առջև, որը նրանց շղթայակապ ուղարկեց Բյուզանդիա։

893 թ. Դվինում տեղի ունեցած մեծ երկրաշարժը և նրան հաջորդող Աֆշինի հարձակումը պատճառ դարձան, որ կաթողիկոսը, որը հայ իշխանների միջնորդությամբ նոր էր ազատվել գերությունից, լքի Դվինը և հաստատվի Վաղարշապատում[7]։

Պարզ չէ, թե Դողսի 894 թ. ճակատամարտում Աֆշինի կրած պարտությունից հետո Դվինը ում ձեռքում մնաց, համենայն դեպս, քանի դեռ Նախճավանը և Արաքսի հովիտը հայ իշխանների ձեռքում էին, օտար տարրը Դվինում դժվարությամբ կարող էր իշխել։

Հայոց թագավորության հողերի նկատմամբ հավակնություններ ունեին ոչ միայն Ատրպատականի Սաջյան ամիրաները, այլև Շայբանիները, որոնք մնալով Աղձնիքում, չէին հրաժարվել հայկական գավառների նկատմամբ իրենց ակնկալություններից։

IX դարի վերջին տասնամյակում Շայբանիների իշխանն էր Իսա իբն ալ-Շայխի որդի Ահմադը։ Սա նախ նվաճեց Արզնի ամիրայությունը, որի տերերն այնքան էին մերձեցել հայ նախարարական տներին, որ մասամբ հայացել էին։ Ահմադը կալանքի առավ Մուսա իբն Զուրարայի որդի Աբու-լ-Մաղրային և գրավեց նրա բոլոր հողերը, վերջ դնելով Արզնում Զուրարայի տան իշխանությանը։

Ահմադը պայքար սկսեց նաև Տարոնի իշխան Դավիթ Բագրատունու դեմ, գրավեց Սասունը (Սիմ լեռ), իսկ Դավթի մահվանից հետո, երբ իշխան դարձավ սրա եղբորորդին՝ Գուրգենը, Ահմադն սպանեց նրան (895) և գրավեց Տարոնը[8]։ Այս ժամանակ էր, որ Սմբատ Ա-ը Ահմադ Շայբանու դեմ հանեց իր բանակը՝ շարժվելով դեպի Աղձնիք, բայց, ինչպես ասվել է, անհաջողության մատնվեց Գագիկ Ապումրվանի վարքագծի պատճառով։

Այս բարդ իրադրությունների ժամանակ հանգիստ չմնաց նաև Ապահունիքը։ Աշոտ Ա-ի իշխանության տարիներից մեզ հայտնի Աբու-լ-Վարդին հաջորդել էր որդին, որն, ինչպես երևում է, կարճ իշխեց։ Ըստ Կոստանդին Ծիրանածինի[9], սրա մահվանից հետո Կայսիկների տիրույթներում իշխում էին նրա երեք որդիները։

Օգտվելով Սմբատ թագավորի Աղձնիքում կրած պարտությունից և Աֆշինի՝ Հայաստանի վրա ձեռնարկած հարձակումից, երեք եղբայրները (որդիքն

6 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 202։
7 Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, Բեյրութ, 1959, էջ 1065։
8 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 231, Հովհաննես Դրասխանակերտցի. էջ 219։
9 Տե՛ս Const, Porph., De adm. imp., c. 44, p. 201.

Արզաահմանի) հրաժարվեցին հարկ վճարել և զինվորական ծառայություն կատարել հայոց թագավորի համար[10]։

Կայսիկ եղբայրների ապստամբությունը ճնշելու համար Սմբատ Ա-ը ստիպված եղավ մեծ զորք գումարել, քանի որ Մանազկերտի Կայսիկները միայնակ չէին այս կռվում։ Թովման հստակ կերպով զանազանում է երկու զորք՝ «Կայսիկքն և որք ընդ նոսա»՝ առաջինը բուն Կայսիկների գնդերն էին, իսկ մյուսը՝ այն մահմեդական գնդերը, որոնք հոծ զանգվածներով եկել էին կռվելու Բյուզանդիայի դեմ[11]։ Հույների առաջխաղացումը IX դարում ահազանգ էր հնչեցրել մահմեդական աշխարհում, և ահա կամավոր զորքերը գալիս էին սահմանային շրջանները՝ ինչպես օրինակ, Հյուսիսային Սիրիա, Ամիդ (Աղձնիք) և վերջապես Արևմտյան Հայաստան, հուսալի կայան ունենալով Ապահունիքը, որտեղից շարժվում էին դեպի իրենց վերջին ռազմական կետը՝ Կարնո քաղաքը։ Չնայած օգնական գնդերի աջակցությանը, Կայսիկները ջախջախիչ պարտություն կրեցին և հաշտություն կնքեցին Սմբատի հետ՝ պարտավորվելով նորից վճարել սահմանված հարկը, ինչպես նաև պատանդներ տվեցին։ Պատմիչի վկայությամբ, այս դեպքերը տեղի էին ունեցել հայոց ՅԾԱ (902) թվականին[12]։

## 2. ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՋԱՏՎԵԼԸ ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԻՑ

Իններորդ դարի վերջում Հայաստանի արաբական ամիրայությունների կազմի մեջ տեղի էին ունեցել որոշակի փոփոխություններ։ Այլևս գոյություն չուներ Բերկրիի Ութմանիկների ամիրայությունը, իսկ մյուս կողմից Արաքսի հովտում կազմավորվել էին Դվինի և Գողթնի նոր ամիրայությունները։ Աղձնիքում անհետացել էին Զուրարիկները, իսկ հաջորդ դարի առաջին քառորդում խիստ թուլացան, ապա շարքից դուրս եկան Աղձնիքի Շայբանիները։

Սմբատ Ա թագավորի՝ Յուսուֆից կրած պարտությունից հետո ստեղծված մասնատվածության պայմաններում Հայաստանում իրենց գոյությունը պահպանող արաբական ամիրայությունները մեծ մասամբ դարձան ինքնուրույն միավորներ։

*ա)* **Դվինի և Գողթնի ամիրայությունները:** Դվինը ընկնելով Սաջյանների ձեռքը, վերածվեց ռազմական հենակետի և դարձավ Սմբատ Ա-ի դեմ մղված երկարատև պայքարի կարևոր կայան։ Այստեղ էր, որ Յուսուֆը բանտարկել էր իր ձեռքն ընկած իշխաններին, ինչպես նաև Հովհաննես կաթողիկոսին։ Սաջյանների մոտավորապես երեսնամյա տիրապետության շրջանում Դվինը որոշ չափով կտրվեց հայոց թագավորությունից։ Օտար տիրապետությունն էր գլխավոր պատճառը, որ կաթողիկոսական աթոռը վերջնականապես տեղափոխվեց այս քաղաքից։

Դվինը թեև ընկել էր Սաջյանների ձեռքը, սակայն դեռևս անմիջականորեն

---

10 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 245։

11 Տե՛ս նույն տեղում, էջ 246։

12 Տե՛ս նույն տեղում, էջ 247։

կապված չէր Ատրպատականի հետ։ Ուստի Յուսուֆը Արաքսի հովտի՝ Դվինից դեպի Ատրպատական ընկած մասում ստեղծեց Գողթնի ամիրայությունը Մինչ այդ Գողթն գավառը կազմում էր Սյունյաց նահանգի մի մասը[13]։

X դարի սկզբին, հավանաբար հենց Յուսուֆի իշխանության տարիներին, այս գավառին տիրացավ մի եկվոր արաբ ամիրա, որին պատմիչը պարզապես հագարացի է անվանում[14]։ Սա վայելում էր Սաջյանների հովանավորությունը։ Երնջակի գրավումից հետո Յուսուֆը այս ամրոցը ևս հանձնեց նրան[15], և Գողթնի ամիրայությունը ավելի ուժեղացավ՝ կրկին Սյունյաց իշխանների տիրույթների հաշվին։

Երբ Աշոտ Բ-ը օգնական զորքով վերադարձավ Բյուզանդիայից, Յուսուֆը նրա ախոյանին՝ Աշոտ Շապուհյանին հրավիրեց Դվին և թագ տվեց նրան։ Աշոտ Շապուհյանի և Աշոտ արքայի հաշտությունից հետո նրանք միասին եկան Դվին։ Ինչպես երևում է, քաղաքում դիրք ունեցող մահմեդական դժգոհ տարրերը (հավանաբար հոգևորականները) թշնամական գործունեություն էին ծավալել, ուստի թագավորը հնազանդեցրեց նրանց[16]։ Սակայն դեպքերի հետագա ընթացքը ցույց է տալիս, որ Աշոտ Շապուհյանը երկար չմնաց Դվինում, այլ նախընտրեց տեղափոխվել Բագարան։

Աշոտ Բ-ի համարձակ հարձակումները Դվինի վրա ուժ տվեցին Սյունյաց իշխաններին, որոնք փորձեցին ետ խլել Երնջակ գավառն ու ամրոցը Գողթնի ամիրայից, սակայն հաջողություն չունեցան։

Երբ խալիֆան բանտից ազատ արձակեց Յուսուֆին, ապա վերջինս Հայաստան ուղարկեց Նասր ալ-Սուբուքիին[17], որը նախ կանգ առավ Նախճավան քաղաքում և հենց այստեղ ձերբակալեց իրեն դիմող Սյունյաց իշխաններին, ապա՝ Քարունջ գյուղաքաղաքում նրան ընդառաջ եկած Դվինի իշխանավորներին ու մեծամեծներին[18]։ Ինչպես երևում է, Աշոտ Շապուհյանի իշխանության տարիներին հայ տարրը նորից դարձել էր դրության տերը Դվինում, մանավանդ, որ Աշոտ շահնշահը կոտրել էր մահմեդականների դիմադրությունը։

Շուտով Նասրը վերադարձավ Ատրպատական։ 929 թ. վերացավ Սաջյանների խիստ թուլացած իշխանությունը, և Հայաստանն ազատվեց իր անհաշտ ախոյանից։

Սաջյանների դեմ մղված մոտավորապես երեսնամյա պայքարից Հայաստանը մեծապես տուժել էր, և Աբաս թագավորը (928—953) փորձ չարեց նոր պատերազմ սկսել Դվինը վերանվաճելու համար։ Մոտ 12 տարի (929—941) Դվինը մնաց բախտի քմայքին[19]։

---

13 Տե՛ս Ալիշան, Սիսական, Վենետիկ, 1893, էջ 310, Թովմա Արծրունի, էջ 252։

14 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 384։

15 Տե՛ս նույն տեղում։

16 «և անդ զմոլորութիւն պաշտօնէիցն հեթանոսաց յինքեանս դրաւեալ ընդ ձեռամբ նուաճէին», Դրասխանակերտցի, էջ 400։

17 Տե՛ս Ibn al-Athir, Chronicon, lugd, Bat. 1851—1876, VIII, p. 129.

18 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 417։

19 Այս շրջանից մեզ հասել է մի արաբական դրամ, որի վրա կա 319 թ. (931) և կրում է Յուսուֆի անունը։ Թողարկման վայրը նշված է «Արմինիա», որն այս շրջանի համար կարող էր

Մոտավորապես 930-ական թվականների վերջերին Ատրպատականի կողմից Հայաստանի վրա հարձակվեց, պատմիչի ասելով, «այր մի արաբացի ազգաւ, այր հմուտ պատերազմաց և գործոց զինուորութեան»։ Սա «կոկոզավիզ ամբարտաւանութեամբ» փորձեց իշխել Հայաստանի վրա, ուստի մտավ Գողթն, ապա Նախճավանի վրայով անցավ Շարուր և գրավեց «մայրաքաղաք» Դվինը։ Նա պահանջեց, որ Աբաս թագավորը հարկեր վճարի իրեն։ Այսպիսի սպառնալիքի առջև միացան Աբաս թագավորն ու Վասպուրականի Գագիկ Արծրունին։ Աբասը, շտապելով առանձին հարվածել թշնամուն, պարտություն կրեց, սակայն շուտով վրա հասան Գագիկի զորքերը և մարտն այլ կերպարանք ստացավ։ Խորվիրապի մոտ տեղի ունեցած ճակատամարտում հայոց զորքը գլխովին ջախջախեց հակառակորդի 13 հազար զինվորներից բաղկացած զորախումբը, որից ութ հազարը, պատմիչի ասելով, ընկան մարտում։ Այնուհետև հայկական զորքերը մտան Դվին, տեղի իշխանություններին խիստ պատժելու մտադրությամբ, սակայն քաղաքի մեծամեծները («ծերք քաղաքին») խաղաղություն խնդրեցին՝ տալով հարկ և պատանդներ[20]։

Ասպատակող զորավարը հավանաբար Լաշքարի իբն Մարդին էր, որը ներխուժեց նաև Վասպուրական։ Նրա ասպատակությունների նկարագրությունը պահպանել է իբն Միսքավայհը[21], որը հիշում է, թե ինչպես Լաշքարին 937/938 թթ. հարձակվեց Անձևացիք (ազ-Զաուազան) գավառի վրա, որտեղ իշխում էր Աթում-իբն Ջուրջինը (Ատոմ որդի Գուրգենի), որը «հայերի թագավոր իբն ալ-Դայրանիին (Դերենիկի որդի Գագիկ Արծրունու) ազգական էր»։ Ատոմը առաջարկեց Լաշքարիին վերջ տալ ասպատակություններին, սակայն մերժում ստանալով՝ մի նեղ կիրճի մեջ նրա զորքը ջարդեց։ Ըստ արաբ պատմիչի վկայության, Ատոմը հինգ հազար մարդ կոտորեց, որոնց մեջ էր նաև Լաշքարին։

Արծրունիների այս հաղթանակը նպաստեց, որպեսզի Ատրպատականում իշխանությունը իր ձեռքը վերցներ Դայսամ իբն Իբրահիմ ալ-Քուրդին, որը միշտ Վասպուրականն իր դաշնակիցն էր համարել։ Սրանից հետո Դայսամն իրեն ենթարկեց նաև Դվինը։ Այդ մասին է վկայում Լենինգրադի Էրմիտաժում պահվող և ակներևորեն Դվինում կտրված մի դրամ, որը կրում է հիջրի 330 (941—942) թվականը և Դայսամ իբն Իբրահիմի անունը[22]։

**բ) Կայսիկների ամիրայությունը.** Բագրատունյաց Հայաստանի բոլոր արաբական ամիրայությունների մեջ Մանազկերտի Կայսիկների ամիրայությունը յուրահատուկ տեղ էր գրավում։ Դա իր ժամանակին բնորոշ մի ավատական տիրույթ էր ժառանգական իշխանությամբ, մի բան, որը չի կարելի ասել ոչ Դվինի, ոչ էլ Կարնո քաղաքի ամիրայությունների մասին, որտեղ իրար

---

նշանակել միայն բուն Հայաստան։ Այս դրամի գոյությունը ցույց է տալիս, որ Դվինի փողերանոցն այդ ժամանակ գործում էր։

20 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 299—302։

21 Տե՛ս „History of Ibn Miskawayh", London, 1920—1929, I, p. 401—402.

22 Տե՛ս *А. Быков*, Дайсам ибн Ибрахим ал-Курди и его монеты. Эпиграфика востока, X, 1955, стр. 14—19.

հաջորդում էին մեծ մասամբ պատահական տիրակալներ։ Կայսիկների պատմության համառոտ շարադրանքը գտնում ենք Կոնստանդին Ծիրանածինի մոտ[23], որն արաբական և հայկական աղբյուրների տվյալների հետ միասին հնարավորություն է տալիս կազմելու Կայսիկների համեմատաբար ամբողջական պատմությունը։

Ինչպես տեսանք 902 թ. դեպքերի ժամանակ Բերկրիի Ութմանիկներն անցել էին Սմբատ Ա թագավորի կողմը՝ ընդդեմ ապստամբ Կայսիկների, որոնք նրանցից խլել էին Երիկավ ամրոցը, որը արքան վերադարձրեց Ութմանիկներին, սակայն Սմբատ թագավորի մահվանից հետո, Կայսիկ Աբու-լ-Ասվադը, որը տիրում էր Արճեշին, նվաճեց նաև Բերկրին։ 902 թ. դեպքերից հետո Ութմանիկները պատմական աղբյուրների մեջ այլևս չեն հիշվում։

Սմբատ Ա-ի մահվան ժամանակ Կայսիկների ամիրայությունը գտնվում էր երեք եղբայրների ձեռքում, որոնք իրենց հոր ժառանգությունը բաժանել էին միմյանց միջև[24]։

Կայսիկ երեք եղբայրները[25], ինչպես երևում է, Բագրատունյաց թագավորությունից անկախացել էին, բայց պարտավոր էին դիմագրավել բյուզանդական վտանգը։

Նկատելով Բյուզանդիայի նվաճողական ձգտումները, Աշոտ Բ-ը շուտով խզեց իր կապերը կայսրության հետ և Բյուզանդիայից ստացած օգնական զորքն էլ ակներևորեն ետ ուղարկեց։ Սակայն Հայաստանի արևմտյան որոշ գավառներ Սմբատ Ա-ի մահվանից հետո երկար ժամանակ մնացին բյուզանդական ազդեցության տակ։ Կոստանդին Ծիրանածինը վկայում է, թե այն հարկը, որ Կայսիկ երեք եղբայրներն առաջ վճարում էին Սմբատ Ա-ին, նրա մահվանից հետո տալիս էին Բյուզանդիային։

Իրականում այս ենթարկումը սահմանափակ բնույթ է կրել, որովհետև Արևմտյան Հայաստանի որոշ գավառներ (Կարին, Բասեն, Մանանաղի, Հարք, Ապահունիք, Աղիովիտ, Առբերան, Տարոն և այլն) մնում էին քաղաքական անորոշ դրության մեջ։ Հայոց թագավորությունից նրանք կտրվել էին, Բյուզանդիան ձգտում էր տիրանալ, իսկ մահմեդական աշխարհն էլ չէր ուզում հրաժարվել, լավ գիտակցելով դրանց ռազմական մեծ նշանակությունը՝ հատկապես Բյուզանդիայի գրոհները դիմագրավելու առումով։

Կայսիկները տիրում էին բացառապես Տուրուբերանի գավառներին (Ապահունիք, Կորի, Հարք, Վարաժնունիք, Աղիովիտ, Խորխոռունիք և Բզնունիք)։ Դեպի արևմուտք նրանց տիրույթները շատ հեռու չէին գնում, որովհետև Ողնուտում տիրում էին Տարոնի Բագրատունիները։ Կայսիկները կազմում էին իրենց բոլոր տիրույթների բնակչության վերնախավը, այն էլ հիմնականում քաղաքներում, իսկ գյուղական վայրերում նրանց դիրքերը խախուտ էին, քանի որ այստեղ ոչ միայն գյուղական բնակչությունն էր զուտ հայկական, այլև

---

[23] Տե՛ս „De adm. imp.", c. 44, p. 198–204.

[24] Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches. Bruxelles, 1955, s. 147.

[25] *T. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, s. 305.

հայերն էին հողատեր մանր իշխանները։ Կայսիկների միակ հենարանը քաղաքներում հաստատված արաբ տարրն էր, որը հիմնականում ռազմիկներից էր բաղկացած։

Շայբանիների քայքայումը հնարավորություն տվեց Կայսիկներին տիրանալու նաև Բաղեշ քաղաքին։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԸ, ԲՅՈՒԶԱՆԴԻԱՆ ԵՎ ՀԱՄԴԱՆՅԱՆՆԵՐԸ

Բյուզանդական կայսրության ռազմական ճնշումը արաբական աշխարհի վրա X դարի քսանական թվականներից սկսած ավելի էր սաստկացել և հետզհետե ընդգրկում էր Եփրատից դեպի արևելք ընկած հողերը, մասնավորապես Հայաստանի հարավ-արևմտյան և հյուսիս-արևմտյան գավառները։ Ինչպես տեսանք, Կայսիկները հարկատու էին դարձել Բյուզանդիային, որն իր ազդեցությունն էր տարածել նաև Տարոնի վրա։ 922 թ. բյուզանդական բանակը Հովհան Կուրկուասի (Գուրգեն) գլխավորությամբ ներխուժեց Հայաստան և հասավ մինչև Դվին։ Դվինում հաստատված Սբուք ամիրան Աշոտ շահնշահի օգնությանը դիմեց, և արաբական ու հայկական զորքերով պաշտպանված Դվինը անառիկ մնաց։ Հունական զորքերը հարկադրված էին վերացնել քաղաքի պաշարումը և հեռանալ[26]։

Սևանի ափին Բշիրի կրած պարտությունից հետո, օգտվելով Դվինի անկայուն վիճակից, Բյուզանդիան երկրորդ փորձն արեց գրավելու այն։ Հույները Բասենի վրայով անցան Արշարունիք և Արաքսի ափերով իջան Դվին։ Իբն ալ-Ասիրը այս արշավանքը դնում է հիջրի[27] 315 թվականին (927—928)։ Հայտնի չէ, թե այս անգամ Աշոտ արքան ինչպիսի վերաբերմունք ցուցաբերեց բյուզանդական հարձակմանը։ Սակայն, ինչպես աղբյուրները ցույց են տալիս, Դվինի բնակչության համակրանքը հարձակվողների կողմը չէր, որոնք այս անգամ էլ պետք է ետ դառնային ձեռնունայն։

Հովհան Կուրկուասը մի քանի անգամ ասպատակեց Բագրատունյաց թագավորությունից անջատված հայկական արևմտյան գավառները։ Ծիրանածինը բնական գտնելով Արևմտյան Հայաստանի ասպատակումը, գրում է, որ Ռոմանոս Լեկապենոսի իշխանության ժամանակ Կուրկուասը Դվինի դեմ արշավելիս ամայացրեց ամբողջ Բասենը, որը «սարակինոսների» ձեռքում էր գտնվում։ Բասենում նման արշավանք կատարեց նաև Կուրկուասի եղբայրը՝ Թեոփիլոսը, որը Խաղտիք բանակաթեմի զինվորական կառավարիչն էր։

Դվինի վրա անհաջող արշավանքից հետո Հովհաննես Կուրկուասը հարձակվեց Կայսիկների վրա, առանց արյունահեղության գրավեց Խլաթը, ապա նաև Բաղեշը։ Իբն ալ-Ասիրը վկայում է, որ հիջրի 319 (931) թվականին հույները մեծ բազմությամբ մտան Հայաստան, ավերեցին Խլաթն ու Բերկրին, մահմեդականների մի մասին կոտորեցին, իսկ մյուսներին էլ գերեցին[28]։ Այս արշավանքի ժամանակ Հովհան Կուրկուասի ճնշման տակ Գագիկ Արծրունին

---

26 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 170։

27 Տե՛ս *Ibn al-Athir*, VIII, 129.

28 Տե՛ս նույն տեղում, էջ 173։

հարկադրված է լինում նամակով դիմելու Ռոմանոս կայսրին, որ սա հայերին վերցնի իր հովանավորության ներքո[29]։ Կուրկուասի դիվանագիտական այդ քայլը հետապնդում էր Վասպուրականը նվաճելու նպատակը։

Բյուզանդական զորքերի հաղթական արշավը տագնապ առաջացրեց ամբողջ խալիֆայության մեջ։ Մահմեդական ռազմիկները կանոնավոր կամ խառնիխուռն դիմում էին սահմանային գոտին, որը տարածվում էր հիմնականում Միջերկրականից մինչև Վերին Եփրատի շրջանները։ Սակայն այս բոլորի հետ մեկտեղ հարկավոր էր մի տեղական ուժեղ իշխանություն, որը կարողանար պատվար կանգնել հույների ներխուժման դեմ։ Այդ դերը X դարում կատարեցին Համդանյանները։

X դարի երկրորդ քառորդում Վերին Միջագետքը և Հյուսիսային Սիրիան դարձան Համդանյան ամիրայական տան տիրույթներ, որոնք միաժամանակ սահմանակից էին Բագրատունյաց Հայաստանին։ Մոսուլի Համդանյանները հարևան էին Վասպուրականի հարավում Անձևացյաց գավառի լեռնային շրջաններին, իսկ Հալեպի Համդանյանները, որոնք տիրել էին ամբողջ Աղձնիքին (արաբ. Դիար Բաքր) սահմանակից էին Տարոնի Բագրատունիների՝ իր ինքնուրույնությունը գեռևս պահպանող իշխանությանը և Վանա լճի արևմտյան ու հարավային շրջաններին, որտեղ կային Մոկաց և Արծրունյաց ինքնուրույն իշխանություններ։

Շուտով Համդանյանները տարածվեցին դեպի Աղձնիք, որի հին տերերը՝ Շայբանիները արդեն քայքայվել էին։ 930-ական թվականներին զորեղ իշխանություն էր ստեղծել մանավանդ Համդանյան Նասիր ալ-Դաուլա ամիրան։ 936 թ. նրա դեմ ապստամբեց այդ ժամանակներում Արզնում հաստատված և Համդանյաններին ստորադաս Ալի իբն Ջաֆար Դայլամցին (Դելմիկը)։ Նասիր ալ-Դաուլան նրա դեմ ուղարկեց իր եղբորը՝ Սայֆ ալ-Դաուլային, նշանակելով նրան Դիար Բաքրի (Աղձնիքի) կառավարիչ։ Արզնի ապստամբ ամիրան դիմեց Տարոնի օգնությանը, սակայն ապստամբը պարտվեց, իսկ Տարոնը ենթարկվեց հաղթողների ասպատակությանը[30]։

Հենց այս ժամանակվանից Սայֆ ալ-Դաուլան սկսեց Բյուզանդիայի դեմ ռազմական գործողությունների այն շարքը, որի համար նա նշանավոր դարձավ արաբների պատմության մեջ։ 939 թ. Մծբինից արշավանքի ելավ դեպի Հայաստան, անցավ Մանազկերտի վրայով և ուղղվեց դեպի Կալիկալա (Կարնո քաղաք), որի դիմաց հույները կառուցել էին Հաֆջիջ (Հաւճիճ) անունով մի քաղաք։ Ըստ արաբ պատմիչի վկայության, վերջիններս հենց որ լսեցին Սայֆ ալ-Դաուլայի գալուստը, ավերեցին քաղաքը և փախան[31]։

940 թ. գարնանը Սայֆ ալ-Դաուլան մի նվաճողական արշավանք ձեռնարկեց Հայաստանի հարավ-արևմտյան գավառների վրա, նպատակ ունենալով ամրապնդել իր դիրքերը՝ Բյուզանդիայի դեմ։

Նա Նփրկերտից ուղղվեց Դատվան (Վանա լճի ափին), Արծրունիներից խլեց երկու ամրոց, Կայսիկներից վերցրեց Բաղեշ քաղաքը, երկու ամրոց էլ

29 Տե՛ս «Գիրք թղթոց», էջ 295—301։

30 Տե՛ս M. Canard, Les Hamdanides et l'Arménie, p. 84—85.

31 Տե՛ս „Receuil des Textes relatifs a Sayf al-Daulah", Paris, 1934, p. 71.

Սասունի Բագրատունիներից։ Ապա գրավեց Խլաթն ու Մուշը և հարձակում ձեռնարկեց Բյուզանդիայի դեմ։

Սկզբնաղբյուրներից պարզվում է, որ Կայսիկ եղբայրները ենթակա էին դարձել Սայֆ ալ-Դաուլային։ Նեղ դրության մեջ էին նաև Տարոնի Բագրատունիները, որոնք շրջապատված էին թշնամի ուժերով։

Գագիկ Արծրունին Խլաթում բանակցելով Սայֆ ալ-Դաուլայի հետ, զերծ պահեց իր թագավորությունը թշնամու ներխուժումից, խոստանալով ավազակներից պաշտպանել ճանապարհները։

Արաբական ամիրայություններում[32] տիրող խառը վիճակը[33] նպաստավոր էր Բյուզանդիայի համար, և կայսրությունը որոշեց լուծել Կարնո քաղաքի հարցը, որը արաբական ամենահզոր հենակետն էր բյուզանդական սահմանի վրա։ Առանց այդ հենակետի գրավման առաջխաղացումը դեպի արևելք անհնարին կլիներ։ Արաբներն էլ իրենց հերթին ամուր կառչել էին Կարնո քաղաքին, որտեղ բնակեցրել էին մեծ քանակությամբ ռազմիկներ[34]։

Դեռևս Լևոն կայսեր օրոք (886—912) արաբները Կարնո քաղաքի պաշտպանությունն ուժեղացնելու նպատակով Բասեն գավառի եկեղեցիները վերածել էին ամրությունների։ Կայսրը զորքեր էր ուղարկել, որոնք կործանեցին արաբների բոլոր ամրությունները և ասպատակեցին Բասենը[35]։

Կարին և Բասեն գավառներում, ըստ Ծիրանածինի, կային երեք քաղաքներ, որոնք գտնվում էին արաբների ձեռքում՝ Կարինը, Ավնիկը և Մաստատոնը։ Հայոց թագավորությունից կտրված այս գավառների նկատմամբ հավակնություններ ունեին ոչ միայն բյուզանդացիները, այլև Տայքի կուրապաղատները, ուստի խուսափում էին որևէ օգնություն ցույց տալ բյուզանդացիներին։

Շուտով կայսրությունը վճռական քայլերի դիմեց։ Բյուզանդական զորքերը ավերածություններ գործելով Ավնիկի շրջակայքում, այրելով նրա գյուղերը, իրենց հնազանդեցրին քաղաքի ամիրային։ Այնուհետև գրավեցին Մաստատոնը։

949 թ. հույները վերջապես գրավեցին Կարինը և մեծ ավերածություն գործեցին թե քաղաքում, թե շրջակա գյուղերում՝ գերեվարելով ժողովրդին։

Կարնո քաղաքի գրավման մի հակիրճ, բայց հետաքրքրական նկարագրություն կա Ասողիկի մոտ[36]։ Ըստ նրա, ՅՂԸ (949) թվականին Կոստանդին Ծիրանածին կայսրը Հովհան Չմշկիկին ուղարկեց Կարնո քաղաքի դեմ։ Սա հաղթելով արաբական զորքերին, ճեղքեց քաղաքի խրամատը (խանդակը) և քանդելով բարձրաբերձ աշտարակները, գրավեց այն։ Նրա վկայությամբ, Կյուռ Ժանը (Չմշկիկ) այստեղ մեծ քաջագործություններ ցույց տվեց։

Քաղաքի ռազմական կառավարիչ նշանակվեց Թեոփիլոս զորավարը։ Կարնո քաղաքի գրավմամբ սկիզբ դրվեց Բյուզանդիայի՝ դեպի արևելք առաջխաղացմանը, որը ծանր հետևանքներ պիտի ունենար Բագրատունյաց Հայաստա-

---

32 Տե՛ս „De adm. imp.", c. 44, p. 203.

33 Տե՛ս *Ibn al-Athir*, VIII, p. 180—181.

34 Տե՛ս նույն տեղում, էջ 101։

35 Տե՛ս „De adm. imp.", c. 44, p. 209.

36 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 179։

նի համար։ Այդ ժամանակներում Կայսիկների պառակտված իշխանությունը միավորված էր Աբու-լ-Վարդի գլխավորությամբ։ Մակայն Սայֆ ալ-Դաուլայի ստորադրյալներից մեկը՝ Նաջա անունով, որը 964 թ. ապստամբել էր իր տիրոջ դեմ, սպանեց Կայսիկ Աբու-լ-Վարդին և տիրացավ նրա կալվածներին։ Նաջային էլ սպանել տվեց Սայֆ ալ-Դաուլան և տիրացավ Կայսիկների քաղաքներին։

Համդանյանները, սակայն, երկար չմնացին Հայաստանում։ 967 թ. Սայֆ ալ-Դաուլան մեռավ և նրա իշխանությունը քայքայվեց։

## 4. ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԵՐԸ ԵՐԿՐԻ ԿՅԱՆՔՈՒՄ

Հայաստանի ամիրայությունները ունեին որոշ առանձնահատուկ գծեր, որոնցով տարբերվում էին Հայաստանի մանր թագավորություններից և իշխանություններից։ Գլխավոր տարբերիչ գիծն այն էր, որ ամիրայությունները գերազանցապես քաղաքային տիրույթներից էին բաղկացած։ Արաբ և այլ ամիրաները ձգտում էին դեպի վաճառաշահ քաղաքները, քաղաքի շուրջը գտնվող գյուղերից այն կողմ նրանց այնքան էլ չէր հրապուրում, մանավանդ, որ գավառներում արաբ գյուղացիություն բոլորովին չկար։ Արաբական բոլոր ամիրայությունները մնացին գավառական նեղ սահմաններում և բավարարվեցին քաղաքներով։

Ամիրայությունների և հայկական ֆեոդալական իշխանությունների միջև երկրորդ կարևոր տարբերիչ գիծն այն էր, որ հայկական իշխանությունները, ունենալով անջատական տրամադրություններ, ձգտում էին ինքնուրույնության, բայց միաժամանակ ճանաչում էին Բագրատունի թագավորների գերիշխանությունը, արտաքին վտանգի ժամանակ բոլորը հավաքվում էին Հայոց Բագրատունի թագավորի դրոշի ներքո և համատեղ դուրս էին գալիս սպառնացող վտանգի դեմ։ Եվ եթե եղել են դեպքեր, երբ հայ իշխանները դաշնակցել են թշնամու հետ, ինչպես օրինակ՝ Գագիկ Արծրունին Սմբատ Ա-ի դեմ կամ Աշոտ Շապուհյան Բագրատունին Աշոտ Բ-ի դեմ, ապա այստեղ սոսկ գահի նկատառմամբ նրանց ունեցած հավակնություններն էին դրդապատճառը, և նրանց հակառակորդը օրվա Բագրատունի թագավորն էր և ոչ թե հայոց թագավորությունը։

Հայաստանում իշխող ամիրաները ոչ միայն ջանում էին ազատվել հայոց թագավորի գերիշխանությունից և մշտապես խուսափում էին գործակցել Բագրատունիների հետ, այլև ընդհանրապես հայոց թագավորության թշնամիների դաշնակիցներն էին և մեծ չափով նպաստում էին նրանց արշավանքների հաջողությանը։ Այս տեսակետից խիստ բացասական դեր խաղաց Դվինի ամիրայությունը, որը երկար ժամանակ հենարան դարձավ Ատրպատականի կողմից դեպի Հայաստան ուղղված արշավանքների համար։ Սաջյանների բոլոր ասպատակությունների ժամանակ Դվինը նրանց ռազմական գործողությունների հենակետն էր։ Սալարյանները նույնպես, քաջ գիտակցելով Դվինի մեծ նշանակությունը, Հայաստանի դեմ իրենց ոտնձգությունների համար այն ձեռքից բաց չթողեցին։

Հաստատվելով հանգուցային նշանակություն ունեցող քաղաքներում և սեպի պես խրվելով հայկական իշխանությունների միջև, ամիրայությունները նպաստեցին հայոց թագավորության մասնատվածության էլ ավելի խորացմանը։ Դվինի, Բերկրիի և Մանազկերտի ամիրայությունների գոյությունը և թշնամական դիրքը նկատելիորեն նպաստեց նաև Վասպուրականի մեկուսացմանը և անջատմանը։ Մանազկերտի Կայսիկ ամիրայությունը ուղղակի կտրել էր կապը Բագրատունի թագավորների և Տարոնի Բագրատունիների միջև, դրանով իսկ թուլացնելով Բագրատունիների թագավորությունը և վտանգի ենթարկելով Տարոնի հայկական իշխանությունը։

Ամիրայությունների դեմ պայքարը Բագրատունի թագավորներից պահանջում էր ավելի մեծ զոհողություն ու եռանդ, քան պայքարը հայ նախարարների դեմ, որովհետև ամրիայությունների դեմ ամեն մի հարձակում կարող էր հարևան մահմեդական պետությունների հետ հարաբերությունների վատացման, նույնիսկ ընդհարման առիթ դառնալ։

Արաբական ամիրայությունները հայ ժողովրդի պատմական բախտում խիստ բացասական դեր խաղացին։ Սկսած հայ ժողովրդի կազմավորումից մինչև արաբական տիրապետությունը, Հայաստանը ազգաբնակչության կազմով միշտ էլ եղել է միատարր (չհաշված քաղաքներում հաստատված որոշ օտար գաղթականություններ)։ Արաբական ամիրայությունները հաստատվեցին Հայաստանի հենց կենտրոնական մասերում՝ Տուրուբերան ու Այրարատ նահանգներում և առաջին լուրջ ճեղքը բացեցին երկրի ազգաբնակչության կազմի մեջ, մի ճեղք, որը հետագայում պիտի խորանար և անհնարին դարձներ հայկական միասնական պետականության վերականգնումը ամբողջ Հայկական լեռնաշխարհում։

### ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԸ IX—X ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

*Բագրատունի թագավորներից հետո Հայաստանում մեծ հեղինակություն ունեին Վասպուրականի Արծրունիները։*

*Մինչև IX դարը Արծրունյաց նախարարական տունը իշխում էր միայն տոհմական ոստան Աղբակում և Մարդաստանում։ Բացի Արծրունիներից, Վասպուրականի որոշ մասերում իշխում էին նաև Ռշտունիները, Ամատունիները, Բագրատունիները, Անձևացիք, Ակեացիք և ուրիշ տներ։ Հետևաբար այդ պատմաշրջանում Վասպուրականը լոկ աշխարհագրական ըմբռնում էր, բաժանված մի քանի մանր ու մեծ իշխանությունների։ Այնուհետև Արծրունիներն այնքան ուժեղացան, որ Վասպուրականն արդեն համարվում էր նրանց «բարձրագույն և սեփական» նահանգը[1]։ Արծրունի գահերեց իշխանները ձգտում էին ամբողջ Վասպուրականի քաղաքական միասնությանը, այդ ճանապարհին քայլ առ քայլ հաղթահարելով նույն տոհմի մյուս իշխանների անջատողական ձգտումները։ Վասպուրականի միասնությունը անհրաժեշտ էր նաև Հայաստանի քաղաքական վերածնության համար։ Բուղայի արշավանքներից հետո Վասպուրականում դրության տեր է դառնում Արծրունյաց տան երկրորդական ճյուղի ներկայացուցիչ Ապուպելճի որդի Գուրգենը, որն ստիպված էր զենքի ուժով պաշտպանվելու թե արաբներից, թե բյուզանդացիներից և թե ճնշելու Արծրունյաց տոհմի մյուս իշխանների պառակտողական ձգտումները[2]։ Գուրգեն Ապուպելճը հաղթանակով դուրս եկավ պայքարից, Վասպուրականը լրիվ մաքրեց արաբներից և, ինչպես տեսանք, Բուղան ստիպված էր նրան ճանաչել Վասպուրականի իշխանապետ։*

*Այսպիսով, Արծրունիների տարագրության միջոցին (852—858) Գուրգեն Ապուպելճի ջանքերով դրվում է Վասպուրականի միավորման սկիզբը։ Երբ Արծրունի իշխանները վերադարձան գերությունից, Գուրգենը գահերեց իշխանի*

---

1 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 426։

2 Տե՛ս նույն տեղում, էջ 315—317, 320—322։

*իրավունքները պահպանելու համար, սկզբնապես որոշ դիմադրություն ցույց տվեց Գրիգոր-Դերենիկին[3], սակայն կողմերը ողջամիտ գտնվեցին, և վեճը հարթվեց երկուստեք զիջումներով ու դաշինքով։ Շուտով գերությունից վերադարձավ Դերենիկի հայրը՝ Աշոտ Արծրունին, և պայքարը վերսկսվեց նոր ուժգնությամբ, բայց Վասպուրականի իշխանների միջամտությամբ գահերեց իշխան ճանաչվեց Աշոտ Արծրունին։*

*Վասպուրականի քաղաքական կշիռն է՛լ ավելի է մեծանում Աշոտ Արծրունու որդի Գրիգոր-Դերենիկի իշխանապետության տարիներին (875—885)։ Այդ միջոցին զորեղացել էին նաև Սյունյաց իշխանները, և հայկական պետականությունը վերականգնելու Բագրատունիների ջանքերը ամուլ կմնային, եթե Արծրունիներն ու Սյունեցիները սատար չլինեին նրանց։ Բագրատունիները լավ էին ըմբռնում այս իրողությունը և ամեն կերպ ամրապնդում էին բարեկամական կապերը իշխանական այդ երկու տոհմերի հետ։ Այդուհանդերձ նրանք չկարողացան վերացնել հակասությունները ֆեոդալական այդ տների, մանավանդ իրենց և Արծրունիների միջև։ Դրությունը բարդանում էր նաև այն հակասություններով, որոնք կային Վասպուրականի և հարևան արաբական ամիրայությունների միջև։ Այս հանգամանքն ինքնին Արծրունիներին մղում էր ուժեղացնելու Վասպուրականի պաշտպանունակությունը՝ հարևան ամիրայությունների դավադիր խաղերին զոհ չգնալու համար, մանավանդ, որ նրանց թիկունքին հաճախ կանգնած էր լինում Արաբական խալիֆայությունը։ Այս ուղղությամբ Արծրունիների թափած ջանքերը որոշ հաջողություններ ունեցան։ Տակավին 860-ական թվականներին Աշոտ Արծրունին Ութմանիկներից զենքով ետ խլեց հնավանդ Վարագա վանքը[4]։ Դերենիկի գահերեցության տարիներին, երբ Աշոտ իշխանաց իշխանը կտրուկ և զգալի հարվածներ էր հասցնում Ահմադ ոստիկանի դավադրությանը մասնակից ամիրաներին, Վասպուրականին միացվեցին Հերի և Սալմաստի մահմեդական իշխանների տիրույթները[5], որոնք կազմում էին Պարսկահայք նահանգի մասերը։*

*Դերենիկի օրոք Վասպուրականը զգալի զորության էր հասել։ Մի պահ Դերենիկի ազդեցության տակ ընկավ նույնիսկ Տարոնը, որտեղ իշխում էին Աշոտ և Դավիթ Բագրատունի եղբայրները։ Դերենիկի և Տարոնի գահերեց իշխան Աշոտի միջև գժտություն ծագեց, որը հարթվեց իշխանաց իշխան Աշոտ Բագրատունու վճռական միջամտությամբ։*

*Դրանից հետո էլ Դերենիկը շարունակում է իր ինքնագլուխ քայլերը՝ օրինակ, նա ձերբակալել տվեց Աշոտ իշխանաց իշխանի հետ մերձավոր կապեր ունեցող Գագիկ Ապումրվան Արծրունուն։ Սակայն շուտով Դերենիկը սպանվեց Հերի քաղաքապետ Ապլբերսի (Աբու-լ-Ֆարիս) դարանամուտ մարդկանց ձեռքով՝ Ճուաշ գավառի Մարական ավանի իր ձմեռանոցը գնալիս[6]։*

*Աշոտ Բագրատունին հույս ուներ, որ գոնե որոշ ժամանակ Դերենիկի դե-*

---

3 *Արծրունյաց տոհմի գրեթե բոլոր ականավոր գործիչները կրկնանուն էին. անուններից մեկը հայկական էր, մյուսը՝ փաղաքշական կամ օտար։*

4 *Տե՛ս* **Թովմա Արծրունի,** *էջ 346—347։*

5 *Տե՛ս* **Հովհաննես Դրասխանակերտցի,** *էջ 178։*

6 *Տե՛ս* **Թովմա Արծրունի,** *էջ 365—366։*

ռահաս որդիները՝ Աշոտը, Գագիկը և Գուրգենը չէին վրդովի Հայաստանի քաղաքական մթնոլորտն իրենց կամածին արարքներով, մանավանդ որ նրանց գլխին խնամակալ էր կարգել իր նկատմամբ վստահելի Գագիկ Ապումրվանին։

## 2. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԸ ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱԶՄՈՒՄ

Դերենիկի ավագ որդու՝ իննամյա Աշոտի խնամակալ նշանակված Գագիկ Ապումրվանին, որը Վասպուրականի փաստական իշխանապետն էր, տեղի ազատանին խուլ ընդդիմություն ցույց տվեց։ Դրությունը հարթելու համար Հայոց թագավոր Աշոտ Ա-ը, որ նոր էր թագ ստացել, եկավ Վասպուրական. ըմբոստ իշխանները առժամանակ հանդարտվեցին, և Ապումրվանի դիրքերը ամրացան։ Այդ նպատակն էր հետապնդում Ապումրվանը՝ Աշոտ Արծրունուն փեսայացնելով իր դստեր՝ Սեդայինի։ Մյուս կողմից՝ նա Վասպուրականը բաժանել տվեց Արծրունի եղբայրների միջև, որպեսզի չլատեր նրանց միասնությունը, թեև գահերեցի իրավունքը անվանապես վերապահվեց ավագ եղբորը՝ Աշոտին, որը անվարան վստահություն էր տածում իր աներոջ նկատմամբ։ Ապումրվանին վստահում էր նաև Աշոտ Ա-ին հաջորդած Սմբատ թագավորը[7]։ Ապումրվանին աստիճանաբար հաջողվում է դառնալ Վասպուրականի գերագույն տերը, թեև տեղի իշխանները դարձյալ դժգոհում էին նրա անձնահաճ արարքներից և «զգեյս իրացն ջանային գտանել»[8]։

Վասպուրականում զարգացող դեպքերին ակնդետ հետևում էր Ատրպատականի ոստիկան Աֆշինը, որը, Հայաստանի միասնությունը պառակտելու միտումով, նամակներ է հղում Արծրունիներին, հորդորելով նրանց՝ դաշնակցել իր հետ։

Աշոտ Արծրունին, Վասպուրականի որոշ իշխանների կամակցությամբ, մեկնում է Աֆշինի մոտ և հպատակություն հայտնում նրան։ Այս քայլից զայրացած Հայոց թագավորը Վասպուրականի ազատանու մեջ բարձր հեղինակություն վայելող Գուրգեն Անձևացուն և Գագիկ Ապումրվանին իրավունք է տալիս ժառանգել Վասպուրականի իշխանությունը։

Այնուհետև սուր պայքար է բորբոքվում Ապումրվանի և Աշոտ Արծրունու միջև, որն ուղեկցվում է դավադրություններով և բանտարկություններով[9]։ Մի քանի իշխաններ, դժգոհ Ապումրվանից և նրան հովանավորող Սմբատ արքայից, դիմում են Միջագետքի ամիրա Ահմադ Շայբանիի միջամտությանը, թեև սա նվաճողական ախորժակներ ուներ Հայաստանի նկատմամբ և, նվաճելով Սասունն ու Տարոնը, կամենում էր, ինչպես պատմիչն է ասում՝ «ամիրայապետել ամենայն Հայոց»[10]։ Վասպուրականի իշխանների և Ահմադի մերձենալը առաջին հերթին ուղղված էր Գագիկ Ապումրվանի դեմ, ուստի վերջինս Հայոց Սմբատ թագավորից գաղտնի, հարաբերության մեջ մտավ Միջագետքի տիրոջ հետ, ակնկալելով մնալ Վասպուրականի տիրակալ, թե Սմբատ Ա-ի և թե Ահ-

7 Տե՛ս Շապուհ Բագրատունի, Պատմություն, Էջմիածին, 1921, էջ 71։

8 Թովմա Արծրունի, էջ 374—375։

9 Տե՛ս նույն տեղում, էջ 378—379, 442—443, Շապուհ Բագրատունի, էջ 71։

10 Թովմա Արծրունի, էջ 380, Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 219—220։

մադ Շայբանիի հաղթանակի դեպքում։ Իսկ երբ Սմբատ Ա-ը ռազմի ելավ Ահմադի դեմ, Գագիկ Ապումրվանը, խալիֆայությունից թաղ ստանալու հույսով, Հայոց բանակը տարավ այնպիսի ճանապարհներով, որ անխուսափելի դարձավ նրա պարտությունը Թուղխի ճակատամարտում։

Սակայն Ապումրվանին վիճակված չէր երկար վայելելու իր նենգադավ արարքների պտուղները։ Բանտից ազատված Գագիկ Արծրունին, Ամատունյաց և Վահունյաց իշխանների օգնությամբ, 894 թ. սպանում է նրան, կալանքից ազատելով իր եղբայրներին։

Սմբատ Ա-ը Աշոտ Արծրունուն անմիջապես վերահաստատում է Վասպուրականի գահերեցի դիրքում, իսկ Աշոտի եղբայրներ Գագիկին ու Գուրգենին սիրաշահելու նպատակով գործակալական պաշտոններ է տալիս իր արքունիքում։

Արծրունիների նկատմամբ բարեկամություն է ցուցաբերում նաև Սմբատ Ա-ի հետ պատերազմող Ատրպատականի ոստիկան Աֆշինը։ Նա հերթով իր մոտ է հրավիրում Արծրունի իշխաններին, հորդորելով դաշնակցել իրեն՝ ընդդեմ Հայոց թագավորի։ Զուր հույսեր։ Սմբատ Ա-ի համար բախտորոշ այդ պահին Արծրունի եղբայրները պահում են նրա կողմը, իսկ Աշոտ Արծրունին Բաղրևանդի վրայով օգնություն է շտապում թագավորին[11]։ Սակայն, երբ Սմբատը նահանջում է Վրաստան, Աշոտը ստիպված վերադառնում է Վասպուրական՝ Աֆշինի սպասվող արշավանքը կանխելու համար։ Բանակցությունները արդյունք չեն տալիս։ Աֆշինը մի ստվար զորախմբով ներխուժում է Վասպուրական և գրավում իշխանանիստ Վանը, իսկ Աշոտ Արծրունին ու իր եղբայրները խույս են տալիս Փոքր Աղբակի կողմերը։ Դրանից հետո էլ չի դադարում վասպուրականցիների դիմադրությունը թշնամուն, մինչև որ Աֆշինի մահվամբ (901 թ.) միառժամանակ դադար են առնում պատերազմական գործողությունները։

Օգտվելով խաղաղ պայմաններից, Աշոտ Արծրունին զբաղվում է Վասպուրականի ներքին կյանքով։ Նա դատաստան է տեսնում թշնամուն գործակցած Հասան Արծրունու նկատմամբ։ Այնուհետև Աշոտը վասալական կախման մեջ է դնում Մոկաց և Անձևացյաց տերերին, այնպես որ 902 թ. անհնազանդ Կայսիկների դեմ կռվող Սմբատ Ա-ին օգնության հասած Աշոտ Արծրունու հետ մեկտեղ տեսնում ենք նաև Մոկաց և Անձևացյաց իշխաններին[12]։ Երբ Կայսիկներն ու նրանց օգնող Ատրպատականի ուժերը Հայոց թագավորին ստիպում են բռնել նահանջի ճանապարհը, դրությունը շտկում են վասպուրականցի ռազմիկները, որոնք «Քաջագոյնս արիացան... արձանացան իբրև զմի այր՝ և յանգուգն դիմացուածով խուռն յարձակմամբ հարեալ ի դիմի... պատառեցին զգունդն և պարտեցին ղախոյեանսն[13]...»։ Այնուհետև, Մանազկերտում պաշարված Կայսիկներին ուրիշ բան չէր մնում անելու, եթե ոչ Աշոտ Արծրունու միջնորդությամբ հաշտություն կնքելու Հայոց արքայի հետ։ Ահա այս առիթով է, որ Սմբատ Ա-ը նրան է տալիս Նախճավանը։

11 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 448։

12 Նույն տեղում, էջ 395—396։

13 Նույն տեղում։

Նախճավան քաղաքը հարևան երկրների տնտեսական ու քաղաքական շփման հանգուցակետն էր, որտեղից դռներ էին բացվում ոչ միայն դեպի Հայաստանի տարբեր նահանգներ, այլև դեպի Ատրպատական ու Իրան։ Ատրպատականի ոստիկանը ձգտում էր զավթել Նախճավանը, ինչպես և Դվինն ու Գողթնը և սեպ խրել Հայաստանի կուրծքը, երկիրը ճեղքելով երկու մասի։ Թերևս այդ ծրագիրը կանխելու հույսը որոշ դեր խաղաց այն բանում, որ Հայոց թագավորն այդ գավառը շնորհեց Արծրունի գահերեցին։ Արդարև, դրանից հետո Աշոտ Արծրունին, ընդհուպ մինչև իր կյանքի վերջը, հավատարմորեն ծառայեց Հայոց արքային, սատարելով նրան խափանելու Յուսուֆի դիտավորությունները։ Նույնիսկ Սյունյաց գահերեց Աշոտը (Թովմայի մոտ սխալմամբ Սմբատ է գրված), որ 903 թ. Յուսուֆի հետ մերձակցության եզրեր էր որոնում և ապըստամբել էր հայոց թագավորի դեմ, ստիպված է լինում տեղի տալ Աշոտ Արծրունու միջնորդության առջև, հաշտվելով Սմբատ Ա-ի հետ[14]։

Դժբախտաբար, գնալով ավելի էին սրվում հայ իշխանների ապակենտրոն նկրտումները, սպառնալով ծանր փորձությունների ենթարկել Հայաստանի հազիվ գլուխ եկած միասնությունը։ Այս առումով տխուր դեր էր վիճակված հատկապես Վասպուրականի տերերին։

Աշոտի մահից հետո (904 թ.) գահերեցության իրավունքը ժառանգեց նրա միջնեկ եղբայր Գագիկը, աթոռակից ունենալով կրտսեր եղբորը՝ Գուրգենին։ Վասպուրականը կիսվում է եղբայրների միջև. Հյուսիսային 13 գավառները բաժին են ընկնում Գագիկին, իսկ Հարավի 12 գավառները՝ Գուրգենին[15]։ Վասպուրականի մի քանի գավառներ էլ նվաճել էին հարևան ամիրաները։ Այս հանգամանքը ավելի էր սրել հակադրությունները Վասպուրականի և հարևան ամիրայությունների միջև։ Գագիկի իշխանության սկզբի տարիներին (904—908) հիմնականում այս հակասությունն էր իրեն զգացնել տալիս, ուստի Արծրունիները զգում էին Բագրատունիների պաշտպանության կարիքը։

Այս շրջանում Արծրունիներին հաջողվում է Վասպուրականի հետ վերամիավորել հարավային որոշ շրջաններ, ինչպես և Կորճայքի Ճահուկ գավառը։ Գագիկը գործում էր արագ և վճռականորեն։ Նույնիսկ, երբ հարկ եղավ զսպելու իր ապստամբ աներոջը՝ Գրիգորին, Գագիկը կանգ չառավ նրա Արճուճ ամրոցը հողին հավասարեցնելու առջև։ Հարևան ամիրայությունների դեմ մղվող կռվում իր զորությունը մեծացնելու նպատակով նա նվաճեց Մոկքը[16], որտեղ իշխող Բագրատունիները Աշոտ Արծրունու մահից հետո հրաժարվել էին ճանաչել իրենց կախվածությունը Արծրունիներից[17]։

Նույնպիսի հաջողությամբ Գագիկ Արծրունին Ութմանիկներից խլեց Ամյուկ անառիկ ամրոցը, քարավեժ արեց դիմադրողների պարագլուխներին, որը գրգռեց շրջակա արաբ իշխանավորներին և առիթ ծառայեց ավելի լայն ընդհարումների։ Ութմանիկներին օգնության եկան զանազան ցեղեր, Թովմա Արծրունու ասելով՝ «Մարաց և ի Պարսից, յՕլամացւոց և ի Խուժաստանէ, ի

14 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 397—398։

15 Տե՛ս նույն տեղում, էջ 403—404։

16 Տե՛ս նույն տեղում, էջ 456։

17 Տե՛ս նույն տեղում, էջ 458։

*Կրմանայ և ի Մուկանաց, ի Թուրքաստանէ և ի Խորասանայ»։ Ուժերը կենտրոնացնելով Սալմաստում, թշնամիները հարձակման անցան, սակայն Ճուաշ գավառում (Վասպուրականի սահմանագլխին) նրանց վճռական հակահարված տվեց Գագիկը, զորագլուխ կարգված քաջակորով Թադեոս Ակեացու հետ միասին։*

*Այժմ Արծրունիներն իրենք են հարձակման անցնում։ 905 թ. Գուրգեն Արծրունին Վասպուրականին է միացնում Պարսկահայքի Տամբեր և Ըռնա գավառները։ Ընդհարումները վասպուրականցիների և հարևան ամիրաների միջև փոփոխակի հաջողություններով շարունակվում են, մինչև որ խորամանկ Յուսուֆը, Արծրունիների համակրանքը շահելու միտումով, հանդես է գալիս հաշտարարի դերում։ Արծրունիները, որ հակված էին հաշտության, տալիս են իրենց համաձայնությունը, և կռիվները կողմերի միջև դադարում են*[18]*։*

## 3. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՒՄԸ ԵՎ ԴՐԱ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ

*X դարում Հայաստանի քաղաքական մասնատվածության և պառակտման առաջին օրինակը տվեց Վասպուրականը, որը դարձել էր ընդարձակ և տնտեսապես բարգավաճ մի իշխանություն։ Իսկ առիթը Նախճավանի հարցն էր։*

*Ինչպես ասվեց, Նախճավանը 902 թ. Հայոց թագավորի կողմից շնորհվեց Աշոտ Արծրունի գահերեց իշխանին նրա ծառայությունների դիմաց, սակայն իբրև պայմանական և ոչ ժառանգական սեփականություն։ Այս հանգամանքի ուժով Աշոտ Արծրունու մահից (904) հետո այն խլվեց Վասպուրականից և քիչ հետո (թերևս 908 թ. սկզբներին) տրվեց Սյունիքին, որով խիստ սրվեցին հակասությունները Բագրատունիների և Արծրունիների միջև։*

*Արծրունիների կողմից գրավված Ամյուկ բերդը նրանց ձեռքից խլելուց և «բազում գանձով» միայն նրանց հանձնելուց հետո, Նախճավանի ետ խլելը լցնում էր Արծրունիների համբերության բաժակը։ Սմբատ թագավորը մերժել էր Նախճավանը Գագիկին վերադարձնել, մինչդեռ Յուսուֆը 908 թ. տվեց նրան թագ ու պսակ և, «ամենայն Հայոց թագավոր» տիտղոսը*[19]*։ Իրականում Գագիկը թագավորեց Վասպուրականում, Մոկքում և հարևան մի քանի գավառներում, իսկ «ամենայն Հայոց թագավոր» տիտղոսը միջոց էր Գագիկին Սմբատ թագավորի դեմ հանելու։ Այսպիսով Յուսուֆը հասավ իր հետամտած նպատակին։ Հայաստանը պառակտված էր երկուքի։ Մուկտադիր (Աբուլ Աբբաս) խալիֆան Յուսուֆի ախոյանը Հայաստանի նկատմամբ ավելի գրգռելու միտումով 909 թ. նրան վերապահեց նաև Հայաստանից հարկեր ստանալու և Բաղդադ փոխանցելու իրավունքը*[20]*։ Սակայն հետագա իրադարձությունները, հայ ժողովրդի*

---

18 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 418—419։*

19 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 466—467, Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 264, «Մանր ժամանակագրություններ», հատ. 1, կազմեց Վ. Հակոբյան, Երևան, 1951, էջ 384։ Նույն թվին Յուսուֆը երկրորդ անգամ է թագ ուղարկում Գագիկին։ Գագիկ Արծրունուն որոշ ժամանակ ամենայն հայոց թագավոր էր համարում նաև Արաբական խալիֆայությունը և մասամբ Բյուզանդիան։*

20 «Тарих-ал-Камиль ибн ал-Асира», стр. 78.

ազատագրական համառ պայքարի շնորհիվ, ինչպես տեսանք, անդառնալիորեն թաղեցին թե խալիֆայի և թե Յուսուֆի ակնկալությունները։

Արծրունիներին իր կողմը գրավելով, Յուսուֆը պատերազմի նախապատրաստվեց՝ ընդդեմ Հայոց թագավորի։ Երբ Սմբատը նվերներով Յուսուֆի մոտ ուղարկեց Հովհաննես կաթողիկոսին՝ Ատրպատականի ամիրային Հայաստանի վրա արշավելու մտքից ետ պահելու առաքելությամբ, համարյա նույն միջոցին Յուսուֆի մոտ եկավ Գուրգեն Արծրունին, որը, ինչպես պնդում է պատմիչը, ընդհակառակը, պիտի հակազդեր կաթողիկոսի առաքելությանը[21]։ Քիչ հետո Յուսուֆի մոտ է մեկնում նաև Գագիկը հավաստիացումներ տալով, թե կգործակցի Յուսուֆին՝ Սմբատ թագավորի դեմ։ Եթե Յուսուֆի նպատակն էր՝ վերջ տալ Հայաստանի անկախությանը, ապա Արծրունիները ձգտում էին Բագրատունիներից խլելու ամենայն հայոց գահի արքայական մականը՝ հավատալով Յուսուֆի նենգ խոստումներին։

Յուսուֆի մտայնությունը երևան եկավ նախ նրանով, որ Նախճավանը փոխանակ Արծրունիներին զիջելու, տվեց իրեն հավատարիմ մի ամիրայի, որպեսզի Դվին—Նախճավան—Գողթն ամիրայությունների միջնորմով ապահովապես անջատի Վասպուրականն ու նրան կից շրջանները Բագրատունիների թագավորությունից։ Յուսուֆը Գագիկ Արծրունու հրամանատարությամբ Հայոց թագավորի դեմ է ուղարկում մի բանակ, որը, սակայն, շոշափելի հաջողության չի հասնում։ Զուր են անցնում Բագրևանդին տիրանալու Գագիկի ջանքերը[22]։ Յուսուֆի բանակը շարունակում է իր խժդժությունները Հայաստանում։

Հայ ժողովուրդը խորին ատելությամբ է լցվում Յուսուֆի և նրան գործակցող Արծրունիների դեմ։ Խմորվող իրադրությունը ոչ մի լավ բան չէր խոստանում վերջիններիս։ Երևույթներն այնքան պարզ և ակնհայտ էին, որ խորագետ Գագիկը չէր կարող հասու չլինել դրանց։ Յուսուֆը ոչնչացնում էր իրեն հանձնված հայ իշխաններին։ Հերթն, անշուշտ, Արծրունիներին էլ կհասներ։ Ուստի վերջիններիս ոչինչ չէր մնում, քան լքել Ատրպատականի տիրոջը։ 912 թ. ամռանը Արծրունիները հեռացան Վասպուրական։

Արծրունիներին հարկ չեղավ երկար սպասել Յուսուֆի հարձակմանը։ Վերջինս, Աշոտ Երկաթից պարտություն կրելուց հետո, 914 թ. գարնանը զենքն ուղղեց Վասպուրականի դեմ։ Այստեղ, անշուշտ, հանկարծակիի չեկան, որքանով պաշտպանողական որոշ քայլեր արդեն արված էին։ Բացի դրանից, Աշոտ Երկաթի խիզախ արարքները խրախուսում էին վասպուրականցիներին։ Գագիկ թագավորը եղբոր հետ վճռական և հաջող դիմադրություն կազմակերպեց Պարսկահայքի վրայով երկիր խուժած Յուսուֆի զորաջոկատների դեմ, որոնց հարձակումները տեղի էին ունենում «բազում անգամ... առ ստորոտով աշխարհին Կորդուաց և Ռստակաց[23] և Ատրպատականի»— հաղորդում է Հովհաննես Դրաս-

---

21 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 265—266։

22 Տե՛ս նույն տեղում, էջ 218, 274, 289—290։

23 Ռստակ կամ Ռոտկա գավառը Հյուբշմանը տեղադրում է Պարսկահայքում (տե՛ս Հյուբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, Վիեննա, 1907, էջ 22), VII դ. «Աշխարհացույց»-ում այս գավառի անունը չի հիշատակված։

խանակնրտցին[24]։ Դվինում որջ դրած Յուսուֆը քաշարի վասպուրականցիների դեմ է նետում նաև Հերի, Զարևանդի ու Մարանդի ամիրաներին, սակայն հաղթանակը դարձյալ շահում են հայերը։ Այնուհետև Յուսուֆն անձամբ վասպուրականցիների դեմ է առաջնորդում մի՛ ստվար բանակ։

Ռազմապես անհամեմատելիորեն հզոր հակառակորդի հետ բաց դաշտում բախումներից խույս տալով, Գագիկ թագավորը առաջին հերթին ժողովրդին հեռացնում է անմատույց վայրեր, քանի որ Յուսուֆն սպառնացել էր առանց խտրության սրի քաշել բոլորին։ Վասպուրականցիներից զենք կրելու ընդունակ մասը զինավառ մանր խմբերով բարձրանում է լեռները, անսպասելի հարձակումներով շլատում թշնամու ուժերը և երկամսյա համառ դիմադրությունից հետո՝ 914 թ. աշնանը Վասպուրականից դուրս է շպրտում թշնամուն։

Մուկտադիր խալիֆան, որ տեղյակ էր Հայաստանում զարգացող իրադարձություններին, անհնազանդ Յուսուֆին հակակշիռ, ջանում է իր արքունիքի հետ կապել Գագիկ Արծրունուն, այս անգամ արդեն Միջագետքի ամիրայի միջոցով, որի ձեռքով 914 թ. աշնանը նա առաջին անգամ Գագիկին ուղարկում է թագ և արքայական զգեստներ[25]։

Հաջողություններից թևավորված Գագիկ Արծրունին, օգտվելով Բագրատունիների թուլությունից, նույն ժամանակ Վասպուրականին է միացնում Բագրևանդ, Կոգովիտ, Արտազ և Մասյացոտն գավառները։

Դիվանագիտության մարզում ևս Արծրունի գահակալը հասավ ակնառու հաջողությունների, օգտվելով Յուսուֆի և խալիֆայի միջև ծայր առած հակասություններից։ 919 թ. երբ խալիֆայի զորապետ Մունիսը պատժարշավի էր ելել Ատրպատականի դեմ, խալիֆան կրկին թագ է ուղարկում Գագիկ Արծրունուն, իսկ Յուսուֆը բանտ է նետվում։

Գագիկը ինքնուրույն քաղաքականություն է վարում նաև Յուսուֆի հաջորդ Սբուքի օրոք, որը կամեցավ զենքի լեզվով խոսել Վասպուրականի տիրոջ հետ, բայց վերջինս քիչ ուժեր ուներ և կարողացավ բանակցություններով կանխել թշնամու հարձակումը։ Կնքված հաշտությամբ Սբուքը, փաստորեն, հրաժարվեց Վասպուրականի նկատմամբ գերիշխանություն ձեռք բերելու մտքից։ Գագիկն ու Սբուքը դաշնակիցներ դարձան, սակայն դա սոսկ հաշտության, խաղաղության դաշինք էր։

Գագիկի թագավորության տարիներին բարենպաստ հանգամանքների բերումով կատարվեցին շինարարական ծավալուն աշխատանքներ։ Առաջին աշխատանքները ձեռնարկվեցին տակավին Գագիկի գահերեցության տարիներին (904—908)։ Այս շրջանում ամենից առաջ Արծրունիների ուշադրության առարկան է դառնում հրաշալի դիրք ունեցող Ոստան քաղաքը, որի ավերված միջնաբերդը վերաշինելուց հետո, նորոգվում է նաև քաղաքի ս. Աստվածածին եկեղեցին։ Գագիկ Արծրունին ավելի խոշոր աշխատանքներ է ձեռնարկում Վան քաղաքում։ Նախ հոգ է տարվում քաղաքի միջնաբերդի՝ «Ամրական քարանձավի» վերաշինության մասին։ Միջնաբերդում շինվում են եկեղեցիներ և դեպի ջրամ-

---

24 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 245։
25 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 468։

բարը տանող սանդուղք։ Այնուհետև Վարագա լեռան ստորոտներից քարաշեն ստորգետնյա ջրմուղ է անցկացվում դեպի Վան[26]։

Գագիկ Արծրունին այս շրջանում ավարտում է նաև Վանի ժայռաբերդում իր հոր սկսած պալատի շինությունը, որն ուներ պերճաշուք հորինվածքով ոսկեզօծ սրահներ։ Շքեղազարդ էր նաև Ճուաշռոտ գավառի Գետն ավանում կառուցված խրախճանատեղին, որը, փաստորեն, Արծրունիների ամառային հանգստավայրն էր։ Արծրունիների ձմեռոց Մարական ավանում, որը գտնվում էր Արաքսի վտակ Կարմիր գետի ափին, կառուցվում է ամուր միջնաբերդ՝ շքեղ ապարանքով, մերձակա զբոսատեղիներով։ Ռշտունիքի Մահռաշտ գյուղում, Աղամակերտում կառուցվում են վանքեր, իսկ Օձ կոչվող ձորի գլխին հիմնվում է Գագկակերտ ձեռակերտը, ուր տեղափոխվում են ամբողջ գյուղեր՝ իրենց բնակիչներով։

Ավելի բեղուն էր 919 թ. Վասպուրականում ծավալված շինարարության երկրորդ շրջանը, որը պսակվեց ճարտարապետական մեծագործություններով։ Դարձյալ առաջին հերթին գահանիստ Ոստանն էր ուշադրության կենտրոնում։ Քաղաքի միջնաբերդը վերաշինելով՝ վերածվում է թագավորական դղյակի[27]։

Ծավալուն շինարարական աշխատանքներ են կատարվում Աղթամարում։ Կղզում Արծրունի թագավորը հիմնադրում է նույնանուն քաղաքը՝ իր նավահանգստով[28]։

Կառուցվում են քաղաքացիական բնույթի այլ շինություններ, որոնցից ամենանշանավորը արքայական պալատն էր։ Պալատն ուներ մի շարք օժանդակ շինություններ՝ ամրապարիսպ, շտեմարան, համբարանոց, զինապահեստ, հանգստի տեղեր։

Իր նոր գահանիստին էլ ավելի մեծ կշիռ հաղորդելու համար, Գագիկ Արծրունին քաղաքացիական շինություններն հիմնականում ավարտելուց հետո, 919—921 թթ. կառուցել է տալիս Աղթամարի հոյակերտ տաճարը, շքեղորեն զարդարելով բազմազան քանդակներով։

Վասպուրականի թագավորությունը Հայաստանի գավառական թագավորությունների շարքում ամենախոշորն էր։ Գագիկ Արծրունու օրոք նրա տարածքը ձգվում էր հյուսիսից հարավ՝ Արաքսից մինչև Կորդվաց լեռները և արևմուտքից արևելք՝ Վանա լճից մինչև Կապուտան (Ուրմիո) լիճը։ Հարավում նրա սահմանային գավառներն էին Մոկաց աշխարհի հարավային շրջանները, Կորճայքի Ճահուկ գավառի հարավային սահմանը կազմող Մեծ Զավ գետը, արևելքից՝ Պարսկահայքի արևմտյան մի քանի շրջանները՝ Կարմիր գետի ավազանով։ Այնուհետև Կարմիր գետի և Արաքսի միախառնման կետից սահմանը Արաքսով ձգվում էր մինչև Արտաշատի մոտերքը, ապա թեքվելով դեպի հարավ-արևմուտք՝ Աղիովիտ գավառի արևմտյան մասով հասնում Վանա լճին։

Թագավորության հիմնական մասն էր Վասպուրականը, որը Մեծ Հայքի խոշորագույն նահանգն էր և ուներ 35 գավառ։ Դրանցից 33-ը (բացառյալ Գաբիթյանն ու Պարսպատունիքը) մտնում էին Վասպուրականի թագավորու-

---

26 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 406։

27 Տե՛ս նույն տեղում, էջ 476—477։

28 Տե՛ս նույն տեղում, էջ 479։

*թյան մեջ։ Նահանգի մյուս գավառները տարածվում էին Վանա լճի արևելյան, հյուսիս արևելյան. մասամբ հյուսիսային և հարավային ավազանում։ Վասպուրականին բնորոշ են լեռնային սարահարթերը, լեռների արանքում սեղմված բարձրադիր հովիտները, որոնց միջով անցնող ոչ մեծ գետերի ջրերը կյանք են տալիս նրանց։ Վանա լճի ափերին փռվող հովիտների կլիման մեղմ*



Գագիկ Արծրունի. Վասպուրականի թագավոր, Աղթամարի եկեղեցու քանդակներից

*է, նպաստավոր երկրագործության, մանավանդ պտղատու և խաղողի այգիների մշակման համար։ Լեռնային արոտները հնարավորություն էին ընձեռում անասնապահության զարգացման համար։*

*Բացի Վասպուրականից Արծրունյաց թագավորության կազմի մեջ մտնում էին նաև Մոկք նահանգը, Պարսկահայքի Տամբեր և Ըռնա գավառները,*

Հեր և Զարևանդ գավառների մի մասը։ Կորճայք նահանգից Վասպուրականի թագավորության մեջ մտնում էին Ճահուկ և Փոքր Աղբակ գավառները և այլն։ Գագիկ Արծրունու օրոք Վասպուրականի թագավորությանը միացվեցին Այրարատի Կոգովիտ, Բագրևանդ և Մասյացոտն գավառները, որոնք հետագայում անջատվեցին։ 1000 թ. թագավորությանը միացվեցին նաև Խլաթը, Մանազկերտը, Բերկրին, Արճեշը և Արծկեն իրենց շրջակայքով։

## 4. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԲՅՈՒԶԱՆԴԻԱՅԻ ԵՎ ՄԱՀՄԵԴԱԿԱՆ ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Վասպուրականի բնակչությանը, սակայն, վիճակված չէր երկար վայելելու խաղաղության բարիքները։ Բանտից դուրս եկած Յուսուֆի ձեռքերը դարձյալ ազատ են արձակվում։ Այժմ արդեն խալիֆայի ձեռքին անհնազանդ ժողովուրդներին ճնշելու գործիք դարձած Յուսուֆը պիտի ետ պահեր բյուզանդական զորքերի առաջխաղացումը դեպի Արևելք, և սա հարմար առիթ էր Վասպուրականի թագավորության վրա արշավելու։ Յուսուֆը հարձակման է անցնում, ռազմուղի ընտրելով Միջագետք—Կորդուք—Վասպուրական գիծը[29], որպեսզի հանկարծակիի բերի Գագիկ թագավորին, վասպուրականցիներին զրկի Մոկաց և Կորդվաց լեռներն ապաստանելու հնարավորությունից։ Բայց Յուսուֆի հաշիվները չարդարացան։ Գագիկը երկրի անապահով վայրերից բնակչությանը տեղափոխեց Բագրատունյաց բուն թագավորությանը սահմանակից Կոգովիտ և Ծաղկոտն գավառների դժվարամատույց լեռները։ Առաջապահ զորամասերը Գագիկի և Գուրգենի գլխավորությամբ ետ էին պահում թշնամուն, որն այնուամենայնիվ մտնում է Անձևացյաց և Աղբակ գավառները։ Ամենուրեք բնակչությունը կամ լքում է իր տունն ու տեղը կամ զենք վերցրած կռվում է։ Ուստի Յուսուֆը, ինչպես հաղորդում է Հովհաննես Դրասխանակերտցին, համոզվելով, «որ չի կարող հասնել Գագիկ թագավորի նկատմամբ իր մտահղացած չարամիտ խորհրդին..., շուտափույթ և դյուրին հաշտության հասնելու համար» դեսպաններ է ուղարկում նրա մոտ, արքունի հարկը վճարելու առաջարկով։ Իսկ Գագիկը, որոշ վարանումով հանդերձ, պատերազմից, սրածությունից և մահից գերադասելով խաղաղությունը, ազատներից և ժողովրդից հավաքում է ոսկի, արծաթ, զանազան ունեցվածք, ձիեր ու ջորիներ և վճարում է հարկը։ Դրանից հետո Յուսուֆը հեռանում է Ատրպատական[30]։

Այսպիսով, Արծրունյաց թագավորությունը վերստին դիմանում է ժամանակի քաղաքական հողմերին, և Վասպուրականը շարունակում է ընթանալ խաղաղ բարգավաճման ուղիով։ Գագիկ Արծրունին իր թագավորության անկախ դիրքը և հեղինակությունը շեշտելու միտումով Աղթամար հրավիրեց Հովհաննես Դրասխանակերտցի կաթողիկոսին, իսկ վերջինիս և Աշոտ Երկաթ թագավորի մահից հետո, իրեն վերապահեց կաթողիկոս կարգելու իրավունքը[31]։

---

29 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 409։

30 Տե՛ս նույն տեղում, էջ 411—418։

31 Տե՛ս Միք. Չամչյան, Պատմութիւն Հայոց, Բ, Վենետիկ, 1785, էջ 822, հմմտ. Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, էջ 1072—1078։

Գագիկ Արծրունին Աբասի նկատմամբ բարեկամական մի ցույց է անում նրա թագավորության հենց սկզբին։ Հրավիրելով հայոց իշխանաժողով Վասպուրականում, հանդիսավոր կերպով թագադրում է նրան Հայոց թագավոր, ընդունելով նրա գերադասությունը։

Հարևան ամիրայությունների կողմից սպառնացող գրեթե մշտական վըտանգի պայմաններում՝ Բագրատունի և Արծրունի թագավորների միջև տակավին Աշոտ Երկաթի ժամանակ նշմարվող մերձեցումը՝ Աբասի օրոք ավելի է խորանում։ Հայոց Աբաս թագավորը Արծրունիների նկատմամբ վարում է շրջահայաց և ողջամիտ քաղաքականություն։ Տնտեսական և մշակութային վերելքի ուղին բռնած Վասպուրականի թագավորության համար ապահովության հաստատուն երաշխիքներ կարող էր ընձեռնել միայն նման մերձեցումը, որը նույնքան անհրաժեշտ էր նաև Բագրատունյաց թագավորությանը։

Ճանաչելով Բագրատունիների գերիշխանությունը, Գագիկ Արծրունին գործակցեց նրանց հետ և համեմատաբար խաղաղ պայմաններում իշխեց, հավանաբար, մինչև 942—943 թթ.[32]։

Գագիկ Արծրունու հետնորդների օրոք Վասպուրականի թագավորությունը, կախման մեջ լինելով Բագրատունիներից, շարունակեց իր սերտ համագործակցությունը նրանց հետ։ Այդ գործակցությունն անհրաժեշտ էր առաջին հերթին Վասպուրականին, որը գտնվում էր շրջակա ամիրայությունների ճընշման ներքո, երբեմն էլ ենթարկվում էր ասպատակությունների, իսկ քիչ հետո այդ ամենին պիտի ավելանային Բյուզանդիայի ոտնձգությունները։

Ստեղծված իրադրության մեջ Արծրունիները պետք է դաշնակիցներ որոնեին նաև հարևան ամիրայություններում։ Գագիկին հաջորդած Դերենիկ Արծրունու (943—958) օրոք ավելի որոշակիորեն դրսևորվեց դեռևս նրա հոր ժամանակ նշմարվող հայ-քրդական մերձեցումը։ Այդ ժամանակ քրդական տարրը դեռևս չէր թափանցել Հայաստան, և Վասպուրականի ու դրացի քրդական ցեղերի շահերը հաճախ համընկնում էին, որով հող էր ստեղծվում բարեկամական կապերի համար։ Բյուզանդական կայսրությունն էլ, ելնելով իր շահերից, խրախուսում էր այդ մերձեցումը։ Դերենիկի ժամանակ Սալարյանների դեմ մարտնչող Դայսամ իբն Իբրահիմը 953 թ. դարձյալ օգնություն է ստանում Վասպուրականի թագավորից, որով «Նա,— ասում է Իբն ալ-Ասիրը,— կարողացավ պահպանել իր գոյությունը»[33], շարունակելով պայքարը 941 թ. Ատրպատականին տիրացած Սալարյանների դեմ։ Արաբ պատմագիր իբն-Միսքավայհը ևս վկայում է Դերենիկի և Դայսամ Իբրահիմի բարեկամական հարաբերության մասին։

Երկյուղ կրելով Սալարյանների զորեղացումից, Դերենիկ Արծրունին բա-

---

[32] Ստեփանոս Տարոնեցու (Ասողիկի) վկայությամբ Գագիկ Արծրունին թագավորել է 29 տարի։ Ջամչյանը, Օրմանյանը, Լեոն նրա թագավորությունը հաշվում են 908 թվականից (երբ Գագիկը թագ ստացավ Յուսուֆից) մինչև 935—36 թվականները։ Մինչդեռ Գագիկը մասնակից է եղել 940—941 թվականների անցքերին, որով պարզվում է, որ նրա գահակալությունը հաշվվել է 914 թվականից, երբ Աբբասյան խալիֆան նրան թագ ուղարկեց։

[33] Տե՛ս *Ибн ал-Асир*, Тарих ал-Камиль, стр. 101.

*րեկամաբար վարվեց նաև նրանց հակառակորդ, Դվինին տիրացած Շադդադյանների հետ*[34]։

*Դերենիկ Արծրունուն հաջորդում է եղբայրը՝ Աբուսահլ-Համազասպը (958—968), որի օրոք Բյուզանդիան իր շոշափուկներն ավելի ու ավելի էր տարածում դեպի արևելք, նպատակ ունենալով նվաճել հայկական հողերը։ Կայսրությունը կամենում էր նախ և առաջ հաստատվել Հարավային Հայաստանում, որով իսկ հնարավորություն կստեղծվեր հարավից թևանցել Բագրատունյաց Հայաստանը, իսկ հյուսիսից՝ Միջագետքը։ Վասպուրականի և Բյուզանդիայի մերձեցումն, այդպիսով, կարող էր մեծապես վնասել Բագրատունյաց թագավորությանը։*

*Վասպուրականի թագավորին դեպի կայսրությունը թեքելու միտումով Կոստանդնուպոլիսը իր գործակալներն է ուղարկում Վասպուրական։ Նման առաքելությամբ 960-ական թվականների սկզբներին Աբուսահլ-Համազասպի մոտ է ուղարկվում Պանդալեոն քահանան։ Նա շողոքորթում է Աբուսահլ-Համազասպին, մեծարում նրան՝ «Երկրորդ տիեզերակալ», «արքայից արքայ Մեծ պետութեանս տանս Հայոց» սին հորջորջումներով*[35]*, կամենալով քաղաքական շփումների եզերք գտնել Նիկեփոր կայսեր և Աբուսահլ-Համազասպի միջև։ Պանդալեոնը ջանում էր նաև Վասպուրականի վրա տարածել հույն եկեղեցու ազդեցությունը։*

*Աբուսահլ-Համազասպին հաջորդում են նրա երեք որդիները, որոնք միաժամանակ թագավորում են Վասպուրականում, ավագ եղբոր՝ Աշոտ-Սահակի գերադաս իրավունքների ձևական պահպանմամբ։ Այսպիսով Վասպուրականը ենթարկվեց մասնատվածության և նկատելիորեն թուլացավ։*

---

34 *Տե՛ս V. Minorsky,* Studies in Caucasian History, London, 1953, p. 5—6, 12—13.
35 Գարեգին Ա կաթողիկոս, *Ցիշատակարանք ձեռագրաց, Ա, Անթիլիաս, 1951, էջ 117։*

ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՏԱՐՈՆԻ ԵՎ ԱՐՑԱԽԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## 1. ՏԱՐՈՆԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Հայոց թագավորության հարավ-արևմուտքում գտնվող Տարոնի Բագրատունյաց իշխանությունը[1] վաղ շրջանից ինքնուրույնություն ձեռք բերեց։ Մամիկոնյանների հինավուրց Տարոն գավառը Բագրատունի տան տիրույթը դարձավ դեռ Աշոտ Մսակերի օրոք, իսկ նրա որդին՝ Բագարատը առաջին Բագրատունի իշխանն էր, որ Տարոնը նստավայր դարձրեց, բայց քանի որ նա Հայաստանի, ինչպես նաև Վրաստանի ու Աղվանքի իշխանաց իշխանն էր, Տարոնը դեռ մեկուսացման ենթակա չէր։*

*Բագարատի գերեվարությունից (851) հետո, նրա որդիները՝ Տարոնում ապստամբած Աշոտն ու Դավիթը, ձերբակալվելով գերի տարվեցին։ 858 թ. այլ իշխանների հետ նրանք ևս ազատ արձակվեցին և վերադարձան Տարոն։*

*Աշոտը դարձավ Տարոնի գահերեց իշխան, սակայն ստույգ հայտնի չէ, թե քանի տարի իշխեց։ Կուրապաղատ տիտղոսը նա ստացել էր կայսրությունից։ Արծրունյաց իշխան Դերենիկը 878 թ. նրան գերի վերցրեց բանսարկության պատճառով և հաջորդ նշանակեց եղբորը՝ Դավիթ Արքայիկին, որն իր քրոջ՝ Մարիամի ամուսինն էր։*

*Բագրատունյաց թագավորության հաստատմամբ Տարոնը մնաց նրան ենթակա իշխանություններից մեկը և նրա անբաժանելի մասը, քանի որ տիրող իշխանները տոհմակից էին թագավորական տանը։*

*Ըստ Թովմա Արծրունու, Դավիթ Արքայիկը իշխել է 7, իսկ Ն. Ադոնցի կարծիքով՝ թերևս 17 տարի։ Դավթի գործունեությունից մեզ շատ բան հայտնի չէ, թեև նա վաստակել է «մեծ իշխան» տիտղոսը։*

*895-ին իշխան դարձավ Դավթի եղբոր՝ Աշոտի որդի Գուրգենը։ Սակայն նույն տարում սպանվեց Աղձնիքում իշխող Ահմադ Շայբանիի կողմից, որը նվաճեց Տարոնը։ Հայոց թագավոր Սմբատը 898 թ. պատերազմ սկսեց Ահմադի դեմ, պաշտպանելու համար օրինավոր ժառանգորդ Աշոտի (Դավթի որդու)*

---

1 *Տարոնի իշխանության մասին տե՛ս N. Adontz*, Les Taronites en Armenie et á Byzance, „Etudes Arméno-byzantines", Lisbonne, 1965.

իրավունքները, սակայն հաջողություն չունեցավ։ Նույն տարում մեռավ Աշոտը, և նորից Տարոնում իշխեցին հին տերերը։

Այդ ժամանակ երկպառակություն սկսվեց Տարոնի իշխանների միջև։ Դավթի որդու Աշոտի զարմիկ Գրիգորիկը[2] գերի վերցնելով Դավթին ու նրա եղբորը, ինքը իշխեց Տարոնում։ Գրիգորիկը (Տարոնացի կոչված) անկախ դիրք էր ստեղծել իր համար, չենթարկվելով հայոց թագավոր Սմբատին, և միաժամանակ որոշ բարեկամական հարաբերություններ պահպանելով Բաղդադի խալիֆայի ու Բյուզանդիայի կայսեր հետ։

Անհանգստանալով Գրիգորիկ Տարոնացու ձեռքը գերի ընկած Աշոտ Բագրատունու և եղբոր համար, Հայոց թագավոր Սմբատ Ա-ը դիմեց Լևոն կայսրին, խնդրելով նրա միջամտությունը ազատ արձակելու երկու եղբայրներին։

Լևոն կայսրը Տարոն ուղարկեց պրոտոսպաթարիոս Կոստանդինին՝ կայսերական նամակով և ընծաներով։ Վերադարձին Կոստանդինը, իր հետ Պոլիս տարավ Գրիգորիկի որդի Աշոտին, որին կայսրը պրոտոսպաթարիոս տիտղոսը շնորհեց և ապա նույն Կոստանդինի հետ ուղարկեց հոր մոտ։ Այս անգամ կայսերական պատվիրակը իր հետ մայրաքաղաք բերեց Տարոնի տիրոջ եղբորը՝ Ապուղանեմին և Դավիթ Արքայիկի երկու որդիներին։ Ապուղանեմը նույնպես ստացավ պրոտոսպաթարիոս տիտղոսը և վերադարձավ Տարոն։ Կոստանդինը երրորդ անգամ եկավ Տարոն և այս անգամ արդեն կարողացավ իր հետ տանել հենց Տարոնի տիրոջը՝ Գրիգորիկին։ Կայսրը մեծ պատիվներով ընդունեց նրան, շնորհեց մագիստրոս և Տարոնի ստրատեգ տիտղոսները, և նույնիսկ մի ապարանք Պոլսում, որը կոչվում էր «Բարբարոսի տուն», ինչպես նաև տարեկան ռոճիկ՝ տասը լիտր ոսկի և նույնքան արծաթ։ Գրիգորիկը Տարոն վերադարձավ նույն Կոստանդինի ընկերակցությամբ։

Սակայն այս բարեկամական այցելությունները սոսկ արտաքին երևույթներ էին և, փաստորեն, Տարոնի շուրջը հյուսվող կայսերական դիվանագիտության բաղկացուցիչ մասն էին կազմում։

Շուտով կայսրը «Բարբարոսի տունը» տվեց Գրիգորիկի եղբորը՝ Ապուղանեմին, որին և պատրիկի տիտղոս էր շնորհել։ Կայսրության խաղը շարունակվում էր, և, Կոստանդնուպոլիս այցելելով, Գրիգորիկը կրկին ստացավ «Բարբարոսի տունը», բայց միշտ առանց ոսկեկնիք հրովարտակի։

Ռոմանոս Լեկապենոսի (920—944) կայսերակից դառնալուց հետո Գրիգորիկը դիմեց նրան և «Բարբարոսի տան» փոխարեն կալված ստացավ Կեղցին (Եկեղյաց) գավառում[3], որպեսզի զերծ մնա արաբների հարձակումներից։

Սեպ էր խրված Գրիգորիկի և նրա եղբոր՝ Ապուղանեմի տների միջև։ Ապուղանեմի որդի Թոռնիկը կայսրին բողոքեց վերջին որոշման դեմ, հիշեցնելով, որ «Բարբարոսի տունը» իր հորն էր տրված, և հորեղբայր Գրիգորիկը իրավունք չուներ այն փոխանակել այլ կալվածի հետ։ Ուստի խնդրում է վերականգնել իր իրավունքները։

---

2 Ն. Ադոնցը ենթադրում է, որ այս Գրիգորիկը որդին էր Թոռնիկի, որը Բագարատի որդիներից էր, իսկ ըստ Յ. Մարկվարտի, Գրիգորիկը որդին էր Թովմա Արծրունու հիշած Սողոմոն Բագրատունու։ *I. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen. S. 495.

3 Տե՛ս *Const. Porph.*, De adm., imp., c. 43, p. 220.

Կայսրության քաղաքականությունը դրվատելու միտումով Կոստանդին Ծիրանածինը հաղորդում է, թե հայոց և վրաց տիրակալները նախանձով էին նայում Գրիգորիկին տրված դրամական և հողային պարգևների վրա[4]։ Իբր թե Վասպուրականի Գագիկ Արծրունին, Վրաց Ատրներսեհ թագավորը և նույնիսկ Հայոց Աշոտ Բ թագավորը[5] գրել էին կայսրին, բողոքելով այս անիրավության դեմ, և պահանջել, որ իրենք ևս նման շնորհների արժանանան։

Ռոմանոս Լեկապենոսը որոշեց, որ այնուհետև Գրիգորիկը իր ռոճիկն ստանա ոչ թե դրամով, այլ ընծաների ձևով։ Իսկ երբ Գրիգորիկը բողոքեց, կայսրը բոլորովին վերացրեց այդ ռոճիկը, բավականանալով նրանով, որ Պոլիս հրավիրեց Գրիգորիկի որդուն՝ Աշոտին, ու նրան շնորհեց պատրիկի տիտղոս։

Գրիգորիկի մահվանից հետո եղբորորդին՝ Թոռնիկը կայսեր հետ տեսակցություն խնդրեց և ստացավ կռվախնձոր «Բարբարոսի տունը» և պատրիկի տիտղոսը։

Տարոնի իշխանությունը արդեն երկու մասի էր բաժանված՝ Գրիգորիկի որդիներ Բագարատի ու Աշոտի և Ապուղանեմի որդի՝ Թոռնիկի միջև։ Բագարատը, որպես ավագ, գնաց Կոստանդնուպոլիս, ստացավ պատրիկի տիտղոս և Տարոնի ստրատեգ դարձավ։ Նա ամուսնացավ կայսերական տնից մի իշխանուհու հետ և իր կնոջ համար կայսրից ստացավ Եկեղյաց գավառի կալվածը, որը, սակայն, վերջինի մահվանից հետո պետք է արքունիքին վերադարձվեր։ Շուտով Թոռնիկ իշխանը մահացավ և նրա տիրույթներն անցան Բյուզանդիային, որոնց դիմաց կայսրը Բագարատին և Աշոտին զիջեց Ողնուտը։ Այսպիսով, ամբողջ Տարոնի իշխանությունն անցավ տարոնացի երկու եղբայրներին, որպես մեկ ամբողջական տիրույթ։

Սրանց օրոք էր, որ 936 թ. Արզնում (Աղձնիք) հաստատված Ալի Իբն Ջաֆար Դայլամցին ապստամբել էր Վերին Միջագետքի կառավարիչ Համդանյանների դեմ, դիմել Տարոնի տիրոջ «Իբն Թոռնիկի»[6] (Թոռնիկի որդու) օժանդակությանը, համոզելով նրան, որ Համդանյանների հաստատումը Աղձնիքում սպառնալիք է նաև Տարոնի իշխանության համար։ Շուտով՝ 940 թ. գարնանը, Համդանյան Սայֆ-ալ-Դաուլան արշավեց Հայաստան, անցավ Խլաթի կողմերը, ապա մտնելով Տարոն, ասպատակեց Թոռնիկի որդու[7] երկիրը և ավերեց հայկական մի եկեղեցի Մուշ քաղաքում։ Իբն Ջաֆիրի սույն տեղեկության դիմաց նույն արշավանքի մասին պատմող իբն ալ-Ազրակ ալ-Ֆարիկի պատմիչը

---

4 Տե՛ս Const. Porph., De adm. imp., c. 43, p. 220.

5 Այստեղ թյուրիմացություն կա, քանի որ գրեթե նույն ժամանակ՝ 922 թ. Աշոտ Բ-ը կռվում էր Բյուզանդիայի դեմ, Դվինի պարիսպների առջև (տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 170)։

6 Տե՛ս M. Canard, Les Hamdanides et l'Arménie, p. 84—85.

7 Արաբ պատմիչի հիշած «Թոռնիկի որդի» անվան տակ Ն. Ադոնցը ուզում է տեսնել Գրիգորի որդի Բագարատին, սակայն կարելի է բացատրել նաև այլ կերպ։ Արաբները սովորություն ունեին իշխանական տները կոչել որևէ տոհմապետի անունով։ Բագրատունիք կոչվում էին «Սմբատի որդիներ», Արծրունիք՝ «Դերենիկի որդիներ» և նույն ձևով Իբն Թոռնիկը կարելի է ընդունել որպես Թոռնիկյաններին հոմանիշ արտահայտություն։ Նման դեպքում գուցե կապ գտնենք «Տարոնացի» իշխանների և մեկ դար հետո երևան եկած Սասունի Թոռնիկյանների միջև, որոնք, ոմանց կարծիքով, Մամիկոնյաններ էին։

հստակ կերպով հիշում է Տարոնի տիրոջ անունը՝ Աշութ իբն Ջարջուր Բաթրիկ ալ-Բաթարիկա (պատրիկների պատրիկ Աշոտ որդի Գրիգորի)։

Արաբ պատմիչը հաղորդում է, որ Սայֆ ալ-Դաուլան մտավ Սասունի երկիրը, որը նվաճեց Աշոտից և տիրեց Խուլփ ու Սուլայման ամրոցներին՝ իրենց շրջակայքով[8]։

Աշոտը իշխեց մինչև 966/67 թվականը. նրա մահից հետո կայսրությունն իրականացրեց վաղուց նախապատրաստած իր ծրագիրը՝ Տարոնի գրավումը։ Ասողիկը հետևյալ խոսքերով է նկարագրում Տարոնի իշխանության վախճանը. «Եւ ապա ի ՆԺԵ թուականին խաւարեցաւ արեգակն եւ վախճանեցաւ Տարօնոյ իշխանն Աշոտ։ Եւ Տարօնոյ Հոռոմք տիրեցին»[9]։

Ըստ բյուզանդացի պատմիչ Կեդրենոսի, հանգուցյալ Աշոտի որդիներ Գրիգորն ու Բագարատը Տարոնը «զիջեցին» կայսրությանը և փոխարեն ստացան պատրիկության աստիճան ու կալվածներ։ Ինչպես նշում է Ն. Ադոնցը կայսրությունը երկու եղբայրներին պարզապես ստիպել էր հրաժարվել իշխանությունից, որի հստակ ապացույցն է նրանց միանալը Վարդ Սկլերոսի ապստամբությանը, Ռոմանոս Տարոնացու և Մոկաց Ջափրանիկ իշխանների հետ։

Սակայն Բյուզանդիային չհաջողվեց նվաճել ամբողջ Տարոնը։ Գրավվեց դաշտային մասը, որտեղ կառավարիչ նշանակվեց պրոտոսպաթարիոս Լևոնը, իսկ Լեռնային Սասունը միշտ մնաց անկախ իշխանություն, որը սերտորեն կապված էր Վասպուրականի Արծրունիների և ընդհանրապես Հայոց թագավորության հետ։ Երբ 974 թ. Հովհան Չմշկիկ կայսրը Տարոն մտավ և նրա դիմաց դուրս եկավ Հայոց Աշոտ Գ Ողորմած թագավորը, նրա դրոշի տակ հավաքված հայ իշխանների թվում հիշվում է «Բովանդակ ամենայն տունն Սասանու[10]»։ Կայսրը կանգնեց Այծյաց բերդի դիմաց, իսկ Սասունի հետևակազորը բազում նեղություն պատճառեց հոռոմներին։

Սասունը իր անկախությունը պահեց նաև Մրվանյանների Աղձնիքում և Խլաթում հաստատվելուց հետո։ 1035—1036 թթ., երբ Ատրպատականից եկող մահմեդական «ուխտավորների» մի մեծ խումբ ինչ-որ նպատակներով ճանապարհը թեքել էր և անցել Հայաստանի միջով, Վանի ու Ոստանի բնակչությունը դուրս եկավ նրանց դեմ։ Օգնության հասած Սասունի հայկական զորքը կոտորեց ու գերեվարեց այդ «ուխտավորներին»։

Սասունը անկախ մնաց նաև հետագայում։

## 2. ԱՐՑԱԽԻ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հայաստանի արևելքում գտնվող ինքնամփոփ Արցախ նահանգին հնուց ի վեր տիրում էր Առանշահիկ (Եռանշահիկ) իշխանական տոհմը։

Առանշահիկ ու VII դարում Ուտիք թափանցած Միհրանյան տոհմերի՝

---

8 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965, էջ 152—153։

9 Ստեփանոս Տարոնեցի, էջ 183։

10 Մատթեոս Ուռհայեցի, էջ 18։

*շուրջ 200 տարի երկարած դաժան պայքարը IX դարի սկզբին ավարտվում է առաջինի հաղթանակով։*

*IX դարում Առանշահիկ Սահլ Սմբատյանի, մանավանդ նրա որդի և հաջորդ Ատրներսեհի ու Թոռ Գրիգորի իշխանապետության օրոք վերստին այս տոհմի ձեռքն են անցնում Ուտիքը, և անդրկուրյան Կամբեճան կոչվող գավառը։ Այսպիսով, Առանշահիկների տոհմը նոր վերելք ու բարգավաճում է ապրում IX դ. սկզբին, երբ Հայոց արևելից կողմանց բնակչության ազատագրական շարժումների գլուխն են անցնում երկու նշանավոր իշխաններ՝ Սահլ Սմբատյանը և Եսայի Աբու-Մուսեն։*

*Նախորդ դարերում երկրամասի (Արցախ, Ուտիք) տնտեսական կյանքը բավական զարգացել էր։ Կառուցվել էր Պարտավ-Դվին մայրուղին, որն անցնելով Արցախի ու Սյունիքի վրայով՝ մեծապես խթանել էր այս շրջանների տնտեսական առաջընթացին։ IX—X դարերին վերաբերող արաբ աղբյուրները վկայում են, որ Պարտավից Դվին տանող ճանապարհի բոլոր քաղաքները հայկական էին և պատկանում էին Աշոտ Բագրատունու թագավորությանը*[11]*։ Պարտավում էլ սկզբնապես հայ բնակչության թիվը զգալի էր և այստեղ 768 թվականին գումարվեց հայ եկեղեցու «Պարտաւի ազգային ժողովը»*[12]*։ Սակայն հետզհետե Պարտավում ստվարանում էր տիրապետողների կողմից հովանավորվող մահմեդական տարրը։ Եվ պատահական չէ, որ բնիկ հայ իշխանապետներն իրենց համար ամրոցներ ու կենտրոններ էին ստեղծում Արցախի անմատչելի վայրերում, Գորոզը՝ Դիզակում, Գյուտականը՝ Մեծառանքում, Սահլի ու նրա հաջորդների բերդ-ամրոցները՝ Ծարում և այլն։*

*Այս անմատչելի ամրոցներին ապավինած հայությունն արաբական տիրապետության ամբողջ շրջանում պահպանում էր որոշ ինքնուրույնություն։ Հաճախ ոտնձգություն կատարող բռնակալները հանդիպում էին համառ դիմադրության և տեղի էին տալիս։ IX դարի առաջին կեսին այս դիմադրական բռնկումների քաջ ու շրջահայաց կազմակերպիչն էր Սահլ Սմբատյանը։*

*Մովսես Կաղանկատվացին Սահլին ներկայացնում է որպես Առանշահիկ տոհմի ներկայացուցչի՝ «Սահլի Սմբատեան Եռանշահիկն տէր»։ Իսկ նրա պատմության նախկինում տպագրված բնագրից դուրս մնացած հատվածի լրացուցիչ տեղեկությունից իմանում ենք, որ Սահլը շառավիղն է այն Ջարմիհր Առանշահիկի, որը հրաշքով փրկվել էր Միհրանյանների խարդավանքից, երբ սրանք Առանշահիկ տոհմը բնաջնջելու նպատակով նրանցից 60 հոգու «հաց կորստեան» տվին ու կոտորեցին*[13]*։*

*Պատմիչը Սահլին հիշում է այսպես. «էր ի տոհմէն Հայկայ և տէր Սիւնեաց և բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ»*[14]*։ Սահլի անվան հետ առնչվում են նաև Շիկաքարը, Ամարասը և այլ վայրեր։*

---

11 Բ. Խալաթյանց, *Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին, Վիեննա, 1919, էջ 25։* СМОМПК. вып,. 29, стр. 33, 93—94, вып. 38, стр. 93.

12 *Տե՛ս «Կանոնք Պարտաւի ազգային ժողովի» (Սիովն կաթողիկոսի), Վաղարշապատ, 1905։*

13 *Տե՛ս «Արարատ», 1897, էջ 162։*

14 Մովսէս Կաղանկատուացի, *էջ 273։*

Սահլի որդին և հաջորդը Ատրներսեհն էր, որն իշխում էր Վերին Խաչենին, Ծար գավառին ու Սևանի արևելյան ափերին (Գեղամա գավառ)[15]։ Սոդքում նա հիմնեց Հանդաբերդը, իսկ Վայկունիքում կառուցեց ապարանքներ և դարձրեց իշխանանիստ, «ուր և բաղանիքն են արքունականք»։

Սոդքն ու Վերին Խաչենը եղել են Սահլի տիրույթները, և նա այստեղից էլ «բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ», որը հենց անմիջապես Սոդքին սահմանակից էր արևմուտքից[16]։

Սահլի վերաբերյալ «տէր Սիւնեաց» արտահայտությունը, ինչպես իրավամբ նշել է Ն. Ադոնցը, պետք է հասկանալ «Փոքր-Սիւնեաց» իմաստով, իսկ այս անվամբ կոչվում էր Արցախը կամ այդ ժամանակների Խաչեն երկիրը։

Կարևոր է Սահլ Սմբատյանի մյուս տիրույթի՝ Շիկաքարի տեղադրությունը։ Շիկաքար է կոչվել այժմյան Ստեփանակերտի շրջանի Քարագլուխ գյուղն իր շրջակայքով, որը հնում եղել է բերդ և իշխանական նստավայր[17]։ Շիկաքարը իբրև Սահլ Սմբատյանի տիրույթ հիշատակվում է դեռևս 821 թ. Պարտավում հաստատված արաբների ձեռնարկած ասպատակության և Սահլի ջախջախիչ հակահարվածի առթիվ։

Պատմիչները Սահլին ներկայացնում են որպես մի խիզախ ու անհնազանդ հայկազուն իշխանի, որը պայքարում էր օտարների բռնակալ տիրապետության դեմ։ Մովսես Կաղանկատվացին նրան դրվատում է «արի», «քաջարի» և նման այլ ածականներով։

Սահլը մաքառել է նաև Բուղայի դեմ։ 854 թ. հայ մյուս իշխանների հետ Սամառա է քշվել՝ «Սահլ՝ որդի Սմբատայ» իշխանը՝ իր երկու որդիներով (Ատրներսեհ և Հովհաննես)[18]։

Սահլ Սմբատյանի մյուս ժամանակակիցը Դիզակի քաջ իշխան Եսային է, որի անունն արաբների դեմ մղված պայքարում ունի իր պատվավոր տեղը։ Նրա դիմադրությունը Բուղայի զորքերին մի կատարյալ հերոսամարտ էր։

Հայ պատմագիրները Եսայի աբու-Մուսեին համարում են Արցախի հարավային մասի՝ Դիզակի իշխան։ Լեոյի կարծիքով նրան էր պատկանում նաև Վարանդայի գավառը[19]։ Կաղանկատվացին նրան բնորոշում է որպես «այր խաղաղութեան» և միաժամանակ նկարագրում նրա քաջագործությունները նվաճողների դեմ մղած պատերազմներում։

---

15 Մովսէս Կաղանկատուացի, էջ 273։

16 Ստ. Օրբելյան, էջ 272։ Թովմա Արծրունին, Սահլի մասին խոսելիս, նրան համարում է «Շաքեոյ տէր», որը, սակայն, ժխտվում է հայկական առավել հին աղբյուրների և արաբական հեղինակների տեղեկություններով։

17 Տե՛ս Մ. Բարխուդարյանց, Արցախ, էջ 165—167։

18 Թ. Խալաթյանց, Արաբացի մատենագրեր Հայաստանի մասին, էջ 100—101։ Այս վկայության հետ անհարիր է Աշ. Հովհաննիսյանի ենթադրությունը, որի համաձայն՝ «Իբն ալ-Ասիրը նշում է Սահլի որդուն նրա արաբական՝ Մուավիա, իսկ Դասխուրանցին նրա քրիստոնեական՝ Ատրներսեհ անունով» (տե՛ս «Դրվագներ», գիրք առաջին, էջ 120)։

Ակնհայտ սխալ է Մուավիայի ու Համամ Բաբկպաշտի նույնացումը Նիկ. Ադոնցի կողմից (տե՛ս «Բագրատունեաց փառքը», էջ 121—131), քանի որ Մուավիան տաժանակրության գնաց Արաբիա, իսկ Համամը մնաց և դրանից հետո տիրացավ իշխանության։

19 Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. 2, էջ 446։

Պատմագիրների վկայություններն ու նյութական մշակույթի հուշարձանները հնարավորություն են տալիս որոշելու Եսայի իշխանի նստավայրը։ Տումի գյուղի թիկունքում է գտնվում Դիզակի իշխանների գերեզմանոցը։ Այստեղ են նաև այն ավերակները, որ տումեցիները ավանդաբար անվանում են «թագավորի պալատ»։ Գյուղի հարավային կողմում կանգնած հինավուրց եկեղեցու պատին Մ. Բարխուտարյանցը կարդացել է. «Ի ՆԽԹ թվ. (1000) և ի թագաւորութեանս տեառն Գագիկայ որդոյ Մուշէի ես Ոսկի դուստր Մուշէի շինեցի զտուն Աստուծոյ ի փրկութիւն հոգո իմոյ և ծնողաց իմոց»[20]։ Գագիկ թագավորը Եսայի Աբու-Մուսեի թոռն էր, Մովսես կամ Մուսե իշխանի որդին։ Տումիի գերեզմանոցում կա հսկայական մի շիրմաքար, որը կոչվում է «թագավորի գերեզման»։ Այս բոլորը վկայում են, որ Դիզակի տերերի աթոռանիստը եղել է Տումին, իսկ նրանց գլխավոր բերդը՝ Գտիչը (Քթիշ) Տումուց ոչ այնքան հեռու, Տող (Դող) գյուղի մոտ, Տողասարի վրա։

Եսայի Աբու Մուսեի գերեվարությունից հետո էլ նրա հաջորդները շարունակեցին տիրել Հարավային Արցախին։

Սահլ Սմբատյանի ճյուղը Հայոց արևելից կողմանց Առանշահիկ տոհմի մեջ ամենահզորն էր և առավել կենսունակը։ Աքսորից վերադարձավ Սահլի կրտսեր որդին՝ Ատրներսեհը։ Նա դեռևս 821 թ. ամուսնացել էր Միհրանյան տոհմի վերջին ներկայացուցիչ Սպարամի հետ, որով Առանշահիկների օգտին էր լուծվել նրանց՝ շուրջ երկուդարյա վեճը Գարդման թափանցած պարսիկ Միհրանյան տոհմի ներկայացուցիչների հետ։ Իր կյանքի վերջին տարիներին Ատրներսեհը զբաղվեց խաղաղ շինարարությամբ։

Ատրներսեհն ունեցել է երկու որդի՝ Գրիգոր և Ապուսեթ։ Գրիգորը խոշոր դեր կատարեց արևելից կողմանց պատմության մեջ։ Նա կառուցեց Հավքախաղաց բերդը Թարթառի աջ ափին, տիրացավ ամբողջ Արցախ-Խաչեն աշխարհին և իր իշխանությունը տարածեց նաև Կուր գետից այն կողմ[21]։

Հետազոտողներից ոմանք այս Գրիգորին նույնացնում են Հայոց Արևելից կողմանց թագավորական հարստության վերականգնող Համամ Բարեպաշտի հետ[22]։

Մովսես Դասխուրանցին ասում է. «Ապա բարեպաշտն Համամ նոյնպէս զկործանեալ թագաւորութիւն տանն Աղուանից նորոգէր, որպէս Աշոտ Բագրատունի զՀայոց թագաւորութիւն. այսք ի միում ժամանակի գործեցան»[23]։

Համամ թագավորը ճանաչեց Բագրատունի թագավորների գերագահությունը[24]։

Համամի աթոռանիստը՝ Ծարը կամ Վայկունիք գավառն էր։ Նրա գլխավոր արձանագրությունը պահպանվել է Մեծ-Մազրայում։

Համամը, չբավարարվելով հոր թողած ժառանգությամբ. «շինէ զՀաւախաղացին բերդն, և յայնկողմն (Կուրայ) ձգէ զձեռն իւրոյ իշխանութեանն»։

---

20 Մ. Բարխուտարյանց, Արցախ, էջ 79։
21 Տե՛ս Մովսէս Կաղանկատուացի, էջ 273։
22 Գրիգորի նույնացումը Համամի հետ կարոտ է ավելի լուրջ հիմնավորման։
23 Մովսէս Կաղանկատուացի, էջ 273։
24 Տե՛ս Արշակ Ալպոյաճյան, Պատմական Հայաստանի սահմանները, էջ 173։

Կուրից այն կողմ՝ Կամբեճանում (Շաքի-Հերեթ) իշխանություն է հիմնում Համամի Ատրներսեհ որդին։ Մասուդին վկայում է, որ X դարի կեսին «Շաքեցիների թագավորը... Ադրներսեհ իբն Համամն է»[25]։

Համամի հինգ որդիներից ավագը՝ Ապուլին, սպանվեց իր եղբայր Սմբատի ձեռքով, մյուսը՝ Սահակ-Սևադան, «այր քաջ և յաղթող, սա առհասարակ տիրեաց Գարդմանայ և Քաւսայ և Փառնայ գաւառաց, այլ և աւազակապետաց Ձորոյ գետոյն բովանդակ եղև իշխան»[26]։

Այս անցքերի մասին խոսող ժամանակագրի վկայությամբ Տարր կամ Վայկունիքը, Քուստի-Փառնեսը (Գարդմանքով և Ձորադետով հանդերձ), Հավքախաղացը (Գանձասարով) և Կուրից այն կողմ՝ Շաքե Կամբեջանը դառնում են Առանշահիկ տոհմի չորս ճյուղերի կենտրոնները։

Հավքախաղացն իր շրջակայքով (Խոխանաբերդ, Գանձասար և այլն)[27] դառնում են օրրան Համամից սերված մի նոր ճյուղի համար, որից արձակված նոր ոստերը դառնում են Ներքին Խաչենի տերեր և հետագայում ծավալում են նշանակալից քաղաքական ու մշակութային գործունեություն։

Արցախի կողմերում X դարում կազմավորվեց Փառիսոսի թագավորությունը։ Աղբյուրները կցկտուր տեղեկություններ են հաղորդում իր գոյությունը կարճ ժամանակ պահած այս փոքրիկ թագավորության կամ իշխանության մասին։ Ասողիկը, Կարսի Աբաս թագավորի մասին խոսելիս, հիշում է, որ նրա մայրն էր «բարեպաշտուհի ի բարեպաշտ ծնողաց, որ էր քոյր թագաւորացն Փառիսոսոյ Սենեքերիմայ և Գրիգորի...»[28]։

990 թ. Անիում գահ բարձրացած Գագիկ Բագրատունին, տիրեց «յոլով բերդից և գաւառաց ի սահմանացն Վայոց ձորոյ, Խաչենոյ և Փառիսոսոյ...»[29]։

Փառիսոս անունն իսկ խոսում է այն մասին, որ նրան է պատկանել Արցախի Փառնես կամ Փառիսոս գավառը[30], որը տարածվում էր Շամքոր գետակի վերին ավազանում, Փոքր Սյունիքի լեռնաշղթայի փեշերով դեպի հյուսիս ու արևմուտք, մինչև Շամքոր։

Փառիսոս էր կոչվում նաև իշխանանիստ քաղաքը՝ ժամանակի կարևոր բնակավայրերից մեկը։ Այն միշտ եղել է նաև հոգևոր թեմի առաջնորդի նստավայրը[31]։ Վրաց մի ժամանակագիր 700-ական թվականներին վե-

---

25 СМОМПК, вып. 38, стр. 57.

26 Մովսէս Կաղանկատուացի, էջ 273։

27 Սխալվում էր Մ. Բարխուտարյանցը, երբ Հավքախաղացը, առանց որևէ հիմքի, տեղադրում էր Դադի վանքի դիմաց («Արցախ», էջ 211, նաև Հ. Մանանդյանը՝ Քննական տեսություն, հատ. Գ, էջ 205)։

28 Ստեփանոս Տարօնեցի, էջ 198։

29 Նույն տեղում, էջ 256։

30 Աղբյուրներում հաճախ կոչվել է «Քուստ-ի Փառնես», որ նշանակում է Փառնես գավառ պարսկերեն «քուստ» կամ «քուստակ» բառից (տե՛ս Աշ. Աբրահամյան. Շիրակացու մատենագրությունը, էջ 350). «Քուստիփառնէս», որի ճիշտը կլինի «Քուստ-ի Փառնէս»։

Հետազոտողներից ոմանք սխալմամբ այս «Քուստի»-ն համարել են նոր մի գավառ և մտցրել Արցախի գավառացանկը։

31 Տե՛ս Մովսէս Կաղանկատուացի, էջ 277—278։

րաքերող դեպքերի կապակցությամբ Փառիսոսը հիշում է որպես կարևորագույն աշխարհագրական կետ. վրաց զորքերը «ելին ընդ դուռն Փառիսոսայ և փութով անցին ընդ Կուր գետ»[32]։ Անկասկած այստեղ խոսքը ոչ թե Քուստ-ի Փառնես գավառի, այլ նրա կենտրոն Փառիսոսի մասին է։ Փառիսոս քաղաքը տեղադրվում է Ադրբեջանական ՍՍՀ Շամքոր գետակի վրա, Կալաքենդ գյուղի տեղում[33]։

«Աղվանից աշխարհի պատմությունն» արձանագրում է, որ Հովհաննես-Սենեքերիմը թագավորություն է հիմնում Փառիսոսում, իր տիրապետության տակ ունենալով նաև Գարդմանքը և ուրիշ հողեր Ուտիքի գավառներից[34]։ Անկասկած այս թագավորության հիմք պետք է ճանաչել Սահակ-Սևադայի ստեղծած իշխանությունը (IX դարի վերջ—X-ի սկիզբ)։

Հովհաննես-Սենեքերիմի թագավորությունը ճանաչում են Պարսից արքունիքը և բյուզանդական կայսրը. «թագաւորն Պարսից մեծամեծ զարդուք պատուէ և տայ նմա զթագ հօր իւրոյ և զնորին երիվարն», իսկ կայսր, ավելի ճիշտ՝ նրա ներկայացուցիչը, «որ Յունացն էր Մագիստրոս՝ Դաւիթ կոչեցեալ անուն, թագ զարմանազան և ծիրանիս թագաւորական առաքէր 'ի պատիւ և ի գովեստ աստուածայաչող առն այնորիկ...»[35]։

Այս մեծարանքը, որքան էլ չափազանցված, իր մեջ պարունակում է մի պարզ ճշմարտություն, որ Առանշահիկ Հովհաննես-Սենեքերիմը հիմք է դրել Փառիսոսի թագավորության։

Թագավորության ժամանակի հարցը կարելի է մոտավորապես պարզել Դասխուրանցու ժամանակագրության և Անանիա Մոկացի կաթողիկոսի հայտնի թղթի տեղեկությունների օգնությամբ։

958-ին Անանիա կաթողիկոսը Խաչեն եկավ, և նրան դիմավորեցին Խաչենի մեծ իշխան Գրիգորը, ապա «թագաւորն որ կոչէր Իշխանիկ՝ որդի տեառն Ատրներսեհի, և Սենեքերիմ Աղուանից իշխանաց իշխան, Սենեքերիմ՝ որդի Գրիգորի Խաչեան իշխանի... Վաչագան Գորոզուաց իշխան, Գուրգեն Արևելեաց իշխան»[36]։

Ասողիկի տեղեկության համաձայն՝ Անանիա Մոկացուն դիմավորող Գրիգորն ու Սենեքերիմը եղբայրներ էին։

X դարի կեսերին Սենեքերիմը հիշատակված է իբրև Փառիսոսի թագավոր։ Այս փոքրիկ թագավորությունն ստեղծելն ավելի դյուրին եղավ, քան պահպանելը։ Ճիշտ է, Փառիսոսի ու Խաչենի միասնությունը և նրանց ամենասերտ ազգակցությունը Բաղաց Կապան ամրոցում նստող թագավորների հետ

---

32 «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Ա, էջ 155։

33 Տե՛ս Մ. Բարխուդարյանց, Արցախ, էջ 306—307։ Երվանդ Լալայան, Գանձակի գավառ, «Ազգագր. հանդես», Ե գիրք, էջ 325։ Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 88 ևն։

34 Պատմիչը Սենեքերիմի պապ Սահակ-Սևադայի նվաճումներն այսպես է բնութագրում. «սա առհասարակ տիրեաց Գարդմանայ և Քաւսայ և Փառնայ (կարդալ՝ Քուստ-ի Փառնեայ) գաւառաց, այլև աւազակպետաց Ջորոյ գետոյն բովանդակ եղև իշխան» (Մովսես Կաղանկատվացի, էջ 373)։

35 Մովսես Կաղանկատվացի, էջ 373—374։

36 «Արարատ», 1897, էջ 144։

(Նրանց տոհմակիցներն էին և այնտեղ թագավորած Սենեքերիմները, և Գրիգորը, և Հասանը) որոշակի ուժ կարող էր ներկայացնել թշնամիներից պաշտպանվելու համար, սակայն կային այս կողմերում ձևավորված այլ թագավորություններ էլ, օրինակ Տաշիր-Ձորագետի թագավորությունը, որը ձգտում էր ընդլայնել իր տիրապետությունը Փառիսոսի տիրույթների հաշվին։ Իսկ Հայոց Բագրատունի թագավորներն ու Գանձակի ամիրայությունը, որն առաջացել էր X դարի 70-ական թվականներին, Փառիսոսի թագավորությունը վերացնելու առիթ էին փնտրում։ Ասողիկի տեղեկությամբ՝ Հայոց թագավոր Գագիկ Բագրատունին և Գանձակի նորընծա ամիրա Փատլունն իրենց մեջ են բաժանում Փառիսոսը։ Այդ, իբր, տեղի է ունենում Սենեքերիմ և Գրիգոր եղբայր-թագավորների մահվանից հետո. «Ի ՆԾԲ (1003) թուականին իշխանքն Փառիսոսոյ, որ ի Հայկազեան ազանց՝ բաւեալ մինչև ցՍենեքերիմ և ցԳրիգոր՝ սպառեցան մահուամբ։ Զորոց զաշխարհն բաժանեալ հակառակութեամբ ի միջի իւրեանց արքայն Հայոց Գագիկ և Փատլուն ամիրայն Գանձակայ»[37]։

Սենեքերիմի ու Գրիգորի մահվամբ Փառիսոսի թագավորությունն անմիջապես չվերացվեց։ Ասողիկը, հավանաբար, շփոթում է, և ավելի ճիշտ է Վարդան Արևելցին, որի հանգամանալից տեղեկությունների համաձայն Փառիսոսի անկումը տեղի ունեցավ Գրիգորի որդի Փիլիպեի օրոք և Փատլունի ձեռքով։

Գրիգորի մահից հետո նրա որդի Փիլիպեն բարեկամության այցով («սիրոյ աղագաւ») գնում է Փատլունի մոտ։ Սա կալանավորում է Փիլիպեին «և առնու զնմանէ զՇաշուաղ և զՇօթս»[38]։ «Շաշուաղ»-ը Շողակն է կամ Շոգվագը, իսկ «Շօթ»-ը՝ Սոդքը։

Ըստ Վարդանի՝ այս դեպքերը պետք է կատարված լինեն 1044 թ. հետո։

Փառիսոսի կարճակեցության պատճառը, հարկավ, նրա տկարությունն էր։ Ի՞նչ կարող էր անել մի փոքրիկ գավառապետություն, թեկուզ և զարդարված թագավորության շքեղ տիտղոսով, նվաճողական հակումներ ունեցող մեծ ու փոքր տերությունների ճամփաբաժանի վրա, և այն էլ այնպիսի մի անպաշտպան դիրքում, ինչպիսին երեք կողմերից բաց Փառիսոս գավառն էր։

Փառիսոսի անկումը ճակատագրական նշանակություն չունեցավ Արցախի կամ՝ այդ ժամանակներում արդեն գործածական դարձած՝ Խաչենի իշխանության համար[39], որը XI դարի երկրորդ կեսից սկսած ավելի է զորեղանում։

---

37 Ստեփանոս Տարոնեցի, էջ 283։

38 Վարդան, էջ 135։

39 X դարից սկսած Արցախ տեղանվանը փոխարինում է Խաչենը, որովհետև այս ժամանակից հետո իշխանանիստը միշտ էլ գտնվում էր նահանգի Խաչեն գավառում։ Կոստանդին Ծիրանածինը Հայաստանի այս նահանգի իշխողի հասցեն գրեր որպես «Խաչենի իշխանին, Հայաստան» (տե՛ս «Բյուզանդական աղբյուրներ», Բ,. Կոստանդին Ծիրանածին, էջ 151)։

ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ԿԱՐՍԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԿԱՐՍԸ ՍՊԱՐԱՊԵՏՆԵՐԻ ՆՍՏԱՎԱՅՐ ԵՎ ՀԱՅՈՑ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ

*Բագրատունյաց թագավորության համար Կարսը առաջնակարգ ռազմական նշանակություն ուներ։ Քաղաքի վրա իշխող Կարսի հռչակավոր միջնաբերդը պաշտպանում էր Շիրակի մատույցները Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆայության դրածոների հարձակումներից։ Սրանց սադրանքով Կարսի միջնաբերդում նստած հինավուրց Վանանդեցի նախարարական տոհմի ներկայացուցիչ Վարդի որդի իշխան Սահակ Մլեհը 888 թ. ապստամբեց Աշոտ Ա-ի դեմ[1]։ Վերջինս օգտագործեց Վանանդ գավառի տիրակալի խռովությունը և հայոց սպարապետ Աբաս Բագրատունին, Աշոտ Ա-ի եղբայրը, Վանանդեցի նախարարական տոհմը զրկեց սեփականատիրական իրավունքից ու Վանանդ գավառը Կարս քաղաքով միացրեց Բագրատունիների տիրույթներին[2]։ Աբաս սպարապետը ամրացրեց Կարսը, այնտեղ իր համար պալատ կառուցեց և այդ քաղաքը դարձավ հայոց սպարապետների նստավայրը[3]։*

*Շիրակի Բագրատունիների տիրույթների սահմաններում Կարսը IX—X դդ. շեմին ամենախոշոր կենտրոնն էր, միաժամանակ, իբրև հայոց սպարապետի նստավայր, այնտեղ էր կենտրոնացված Բագրատունիների արքունի զորքը։ Ինքը՝ Աբաս սպարապետը ամուսնացած էր վրաց Բագրատունիների ավագ ճյուղի ներկայացուցիչ Ատրներսեհ (Ադարնասե) իշխանաց-իշխանի դստեր հետ[4]։*

---

1 *Վանանդի նախարարական տան վերջին ներկայացուցիչ Սահակ Մլեհ իշխանը հիշվում է Հռչակավոր «Լազարյան» ավետարանի հիշատակարանում իբրև սույն ձեռագրի ստացող։ Տե՛ս* Գարեգին Ա կաթողիկոս, *Յիշատակարանք ձեռագրաց, Ա, էջ 87—88 (174), 175, 239—240, մանրանկար, 241, 672, ձեռագիր Երուսաղեմի, թիվ 2556։*

2 *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 183։*

3 *Տե՛ս նույն տեղում, էջ 135։ Տե՛ս* Օրմանյան, *Ազգապատում, հատ. Ա, 741, էջ 1075։*

4 *1917 թ. Կարսում ս. Առաքելոց կաթողիկեի շենքի մոտ Ս. Վ. Տեր-Ավետիսյանը գտավ հայերեն արձանագրություն հետևյալ բովանդակությամբ. «... [Բ]ագրատունի, դուստր Ատրներսեհի [իշխանաց իշխ]անի և ամուսին Աբաս Հայոց [սպարապե]տի կիսա[րիա]»։ Տե՛ս* *С. В. Тер-Аветисян,* О раскопках в Карсе и новооткрытой армянской надписи IX века, «Известия Кавказского историко-археологического института в Тифлисе», том III,. Тифлис, стр. 121—128.

Սակայն Շիրակի կողքին, Հարեան Վանանդ գավառում, նոր կենտրոնի ստեղծումը, այն դարաշրջանի տնտեսական մասնատվածության պայմաններում, միայն նպաստում էր անջատողականության ուժեղացմանը, մանավանդ, որ արեմուտքից նրա թիկունքումն էին գտնվում օրըստօրե ուժեղացող Տայքի կուրապաղատությունը և վրաց Բագրատունիների թագավորությունը։ Աշոտ Ա-ի մահից հետո Աբաս սպարապետը, ինչպես տեսանք, փորձ արեց, հենվելով զորքի վրա, իշխանությունը խլել իր եղբորորդի Սմբատ Ա-ից, սակայն հաջողություն չունեցավ։



Երկարե Շիզակի ծայր բշնամուն խացնելու և ձիուց վայր գցելու նարմարանքով

Սպարապետի անսահման իրավունքները ոչ թե օգնում էին կենտրոնաձիգ քաղաքականության, այլ, ընդհակառակը, դառնում են խոչընդոտ։ Սպարապետ նշանակված արքայորդին կամ արքաեղբայրը, հենարան ունենալով իրեն նվիրված զորքը, դառնում էր գահի հավակնորդ։ Այս կանխելու համար Հայոց թագավոր Աշոտ Երկաթը (914—928) սպարապետ է նշանակում իր հավատարիմ և անձնվեր հպատակներից մեկին՝ Գեորգ իշխանին, փաստորեն ռազմական ղեկավարությունը վերցնում է իր ձեռքը, իսկ իր եղբայր Աբասին նշանակում է իշխանաց իշխան և Կարս քաղաքի կառավարիչ (921—928)։ Սակայն ռազմական իշխանության կենտրոնացումը թագավորի ձեռքում չի կանխում ֆեոդալական հասարակարգին բնորոշ քաղաքական իշխանության մասնատվածության ընթացքը։

Աշոտ Երկաթը մահացավ անզավակ, ուստի գահ բարձրացավ նրա եղբայր Աբասը։ Այդ ժամանակ Բագրատունիների բուն տիրույթներում Կարսն արդեն բավականաչափ խոշոր քաղաք էր, և Աբասը դառնալով թագավոր, Կարսը դարձնում է ամբողջ Հայաստանի մայրաքաղաք իր գահակալության ընթացքում (928—953)[5]։ Այս ժամանակաշրջանից սկսած Կարսը Հայաստանի խոշորագույն կենտրոններից մեկն էր։

Կարսն իր գավառով փաստորեն արդեն ինքնուրույն միավոր էր, և ինքնաբավ տնտեսական կենտրոն լինելը նպաստավոր պայմաններ էր ստեղծում անջատողական ձգտումների համար, որոնք, ի վերջո, հանգեցրին Կարսի վասալական թագավորության կազմավորման։

Կարս քաղաքը տեղավորված էր հուշակավոր միջնաբերդի արևելյան լանջերին, իսկ թագավորական պալատներն ու այլ շինությունները՝ միջնաբերդում։ Աբաս թագավորի շինարարական գործունեության լավագույն հուշար-

5 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, էջ 1075։

ձանն է քաղաքի կենտրոնում, գետի ափին կառուցված սբ. Առաքելոց մայր եկեղեցին, որը կանգուն է մինչև օրս[6]։

## 2. ԿԱՐՍԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԵՎ ԾԱՂԿՈՒՄԸ

Հայոց թագավոր Աշոտ Ողորմածի (953—977) ժամանակ բարձրացել և Կարսի հետ մրցում էր Ախուրյանի ներքին հոսանքի խորաձոր ափին աճող ու մեծացող Անի քաղաքը։

Երբ Աշոտ Գ-ը 961 թ. մայրաքաղաքը փոխադրեց Անի, Կարսի կառավարիչ նշանակվեց նրա եղբայր Մուշեղ Բագրատունին, որը 963 թ. իրեն հռչակեց[7] Կարսի ու նրա գավառի թագավոր՝ «Թագաւոր Կարուց»։

Աշոտ Գ-ը հարկադրված էր ճանաչել նրա թագավորությունը, բայց որպես ենթակա իշխանություն։ Այսպես ստեղծվեց Կարսի ենթակա թագավորությունը, որը գոյատևեց մեկ դար (963—1064)։

Անիում նստող «շահնշահը» համարվում էր Վասպուրականի, Սյունիքի, Խաչեն-Փառիսոսի, Կարսի և Տաշիր-Ձորագետի թագավորությունների գահերեցը, իսկ հայ և վրաց Բագրատունիների նկատմամբ Անիի թագավորը համարվում էր «ազգապետ», մի հանգամանք, որով հիմնավորվում էր հայ Բագրատունիների գերադաս իրավունքները (IX—X դդ.) նաև վրաց Բագրատունիների նկատմամբ։

Ինչպես առաջներում Կարսում նստող սպարապետն ու իշխանաց իշխանները, լինելով Բագրատունյաց տոհմի լիիրավ ներկայացուցիչներ, իրենց համարում էին Բագրատունյաց կենտրոնական թագավորության գահի օրինավոր ժառանգներ, ուստի ամեն պատեհ առիթի հանդես էին գալիս նման հավակնություններով։ Օրինակ, Աշոտ Գ Ողորմածի մահվանից հետո, երբ նրա եղբայր՝ Կարուց թագավոր Մուշեղը փորձեց բազմել Անիի շահնշահների գահին, Անիի ավագանին շտապեց գահ բարձրացնել մահացած Աշոտ Գ-ի որդուն՝ Սմբատ Բ-ին, որը բավական ուժեղ անձնավորություն էր. և Մուշեղը հարկադրված եղավ հաշտվել ստեղծված դրության հետ։ Այժմ իրադրությունը փոխվել էր. եթե մի ժամանակ Կարսը հայ Բագրատունիների ամենախոշոր ու տնտեսապես ամենազարգացած և ամենահարուստ կենտրոնն էր, այժմ այդ դերն անցել էր Անիին։

Հայոց կենտրոնական թագավորության և նրան ենթակա Կարսի միջև բարեկամական փոխհարաբերությունների խանգարում էին նրանց հարևան հայ, վրաց և արաբ տիրակալները, որոնք վախենում էին Հայոց շահնշահների ուժեղացումից։

Այս տեսակետից բնորոշ է այն վեճը, որ ծագել էր Աղստաձոր լեռնանցքի և նրանից ոչ հեռու գտնվող Շամիկ սահմանային ամրության համար։ Այս երկու կետերն ունեին կարևոր ռազմա-ստրատեգիական և տնտեսական նշանակություն և առիթ էին հանդիսանում ռազմական ընդհարումների նրանց միջև, որից էլ օգտվում էին խալիֆայության ու Բյուզանդիայի դրածոները։

---

6 Տե՛ս Н. Токарский, Архитектура Армении IV—XIV вв., стр. 181.

7 Ստեփանոս Տարոնեցի, էջ 180։

Հայոց շահնշահ Սմբատ Բ-ը փորձում է տիրանալ Շատիկ սահմանային ամրությանը, Մուշեղը դիմում է Տայքի կուրապաղատ Դավթի (960—1000) օգնությանը[8], և վեճը հարթվում է խաղաղ ճանապարհով, այսինքն Կարսի թագավորության հսկողության ներքո են թողնվում Անիի համար կենսական նշանակություն ունեցող Աղստձոր լեռնանցքը և Շատիկ ամրոցը[9]։

Այս ժամանակաշրջանում Դվինի ամիրաները ենթակա էին Սալարյաններին, որոնք, ուժեղանալով, ձգտում էին անկախանալ Բաղդադում նստող խալիֆաներից։ Խալիֆաները Շիրակի Բագրատունիներին իրենք էին շնորհել «Շահնշահ Հայոց և Վրաց» տիտղոսները, որպեսզի սանձահարեն նաև մահմեդական ամիրաների անջատողական նկրտումները։ Այս հանգամանքը հաշվի չէր առել «Կարուց թագաւոր» Մուշեղը, որը Սմբատ Բ-ի դեմ հրահրում էր Դվինի ամիրա Սալարյան Աբուլ-Հայջային։ Վերջինս 982 թ. Երևանի մոտ անցնելով Հրազդան գետը, հանկարծակի ներխուժում է Անիի թագավորության թիկունքը և հասնում մինչև Անի քաղաքը։ Ինչպես երևում է արաբական զորքի թիկունքում բարձրանում է հայ ժողովուրդը և օգնում Սմբատ Բ-ին՝ ոչ միայն դուրս քշել թշնամուն Անիի մատույցներից, այլև ջախջախել նրան։

Անհրաժեշտ է նշել, որ Կարսի Մուշեղ թագավորը, ապա և նրա որդի Աբասը որոշ նկրտումներ ունեին Հայաստանի հյուսիս-արևելյան մասերում՝ Արցախի բարձր լեռնային անտառապատ բավիղներում գտնվող Փառիսոսի փոքրիկ թագավորության նկատմամբ։ Այդ ժամանակ այնտեղ թագավորում էին եղբայրներ Սենեքերիմ և Գրիգոր «Փառավոր», «Բարեպաշտ». պատվանունները կրող թագավորները, իսկ սրանց քույրը Կարսի թագուհին էր՝ Մուշեղ թագավորի կինը և Աբասի մայրը[10]։

Փառիսոսի Սենեքերիմ և Գրիգոր Փառավոր եղբայրները, որ միասին էին թագավորում, մահացել էին և վաղ թե ուշ պետք է հարց առաջանար Փառիսոսի ժառանգության մասին։ Անշուշտ նման նկրտումներ կարող էին ունենալ Մուշեղն ու Աբասը։ Վերջինիս մայրը՝ Կարսի թագուհին կարող էր ժառանգորդ համարվել Փառիսոսի ապագա թափուր գահի։ Այժմ, երբ Աբասը գահ էր բարձրացել Կարսում, պետք է փայփայեր իրեն այն մտքով, որ մի օր նա իր գահին կմիացնի նաև Փառիսոսի ժառանգությունը։ Այս հանգամանքները նկատի ունենալով հասկանալի է դառնում այն մտերիմ և լավ հարաբերությունները, որ գոյություն ունեին Աբասի և իր «աղգապետ» Սմբատ Բ Տիեզերակալի միջև։

Ստեղծված իրադրության պայմաններում Անիի թագավորության նոր հզորացումը ձեռնտու էր նաև Կարսի գահակալի համար, ուստի հասկանալի են վասալական նորմալ հարաբերությունները, որ գոյություն ունեին նրանց և Անիի շահնշահերի (այսինքն «արքայից արքաների») միջև։ Մուշեղի հաջորդը՝ նրա որդի Աբասը (984—1029) գահ բարձրացավ իր «աղգապետի»՝ շահնշահ

---

8 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 188։

9 Այս տեղով էր անցնում միակ ճանապարհը, որը կապում էր Շիրակի Բագրատունիների թագավորության հետ նրանց պատկանող Բագրևանդ գավառը։

10 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 198։

Հայոց Սմբատ Բ «Տիեզերակալի» հրամանով։ Կամ ինչպես վկայում է Մատթեոս Ուռհայեցին՝ «Նստաւ Աբաս ի Կարս թագաւորական իշխանութեամբ՝ հրամանաւ ազգապետին իւրոյ Գագկայ (պիտի լինի՝ Սմբատայ Հայոց արքային... և կայր ի հնազանդութիւն՝ տանն Շիրակայ»[11]։ Այսպես, իր 45-ամյա գահակալության ընթացքում Աբասը խաղաղ և լոյալ փոխհարաբերությունների մեջ էր Անիի շահնշահերի հետ և օգտվելով համեմատաբար երկարատև խաղաղությունից, զբաղված էր իր երկրի ներքին հարցերով։

Աբասի ժամանակակից Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ պատմիչը մեծ դրվատանքով է խոսում նրա մասին, վառ գույներով նկարագրելով նրան և նրա գործունեությունը։ «Սա առաջ նախքան թագավորելը,— գրում է Ասողիկը,— փութկոտ և կայտառ մանուկ էր և տեսնողներին կարծել էր տալիս, թե անհաղորդ է լինելու հոգևոր բարի գործերին։ Իսկ երբ հասավ թագավորական աթոռին, դարձավ շքեղ տղամարդ հանճարով լի իմաստուն, համարվելով իմաստունների մեջ առաջինը...»[12]։

Աբասը առաջին հերթին ձգտում էր խաղաղություն հաստատել իր թագավորության մեջ։ Նա իր երկրում վերացնում է ավազակությունը, որն այնպիսի չափերի էր հասել, որ մարդիկ իրենք իրենց ունեցվածքի տերը չէին։ Ամենայն խստությամբ պատժում, ոչնչացնում է հանցագործներին և ապահովում երկրի խաղաղ ու հանգիստ կյանքը։

Աբասը հատուկ ուշադրություն է նվիրում զինված ուժերին և կարմիր գույնի հատուկ զինվորական համազգեստ է մտցնում։ Իր աշխարհազորով Աբաս թագավորը մասնակցում է հայոց և վրաց համատեղ ռազմական արշավանքներին՝ ընդդեմ Հարավային Հայաստանի արաբ ամիրաների (994 թ.)։

Կարսի փոքրիկ թագավորության վիճակն անկայունացավ Բյուզանդիայի ու վրաց Բագրատունիների միջև տեղի ունեցող արյունահեղ պատերազմների ժամանակ, որոնց պատճառը մահացած Դավիթ Կուրապաղատի ժառանգության շուրջ ծագած վեճն էր։ Այդ ընթացքում Կարսի թագավորության տարածքը, որ կռվող կողմերի համար ռազմաբեմ էր դարձել, խիստ ավերածությունների ենթարկվեց։ Սակայն դրանից հետո Կարսի թագավորությունը կարողացավ խաղաղությունը պահպանել նաև Աբասի որդու՝ Գագիկ Կարսեցու օրոք (1029—1065)։

Գագիկ Կարսեցին սերտ ազգակցական կապեր ուներ ոչ միայն Շիրակի Բագրատունիների, այլև Տաշիր-Ձորագետի Կյուրիկյանների և Վասպուրականի Արծրունիների հետ։ Նա ամուսնացած էր «թագաւոր ափխազաց և վրաց» Բագրատ Դ-ի (1027—1072) քրոջ Գուրանդուխտի հետ։ Այս թագավորությունների հետ Գագիկը պահպանում էր բարեկամական հարաբերություններ։ Գագիկը փայփայում էր իր նախորդների ձգտումը՝ դառնալ հայոց «շահնշահ»։ 1045 թ., երբ ընկավ Անիի Բագրատունյաց կենտրոնական թագավորությունը, Անիի վերջին թագավոր Գագիկը գտնվում էր Կոստանդնուպոլսում, իսկ Անի մայրաքաղաքը ի վերջո հանձնվեց Բյուզանդիային, հայ Բագրատունիների ավագ ներկայացուցիչը մնաց Գագիկ Կարսեցին, որը և այնուհետև ձևականորեն

11 Մատթեոս Ուռհայեցի, էջ 10։

12 Ստեփանոս Տարոնեցի. էջ 196—197։

կրում է «շահնշահ» տիտղոսը[13]։ Սակայն նրան ևս վիճակված էր նույն ճակատագիրը, ինչ որ նրա ավագ ազգակից և անվանակից Գագիկ Բ-ին։ Գագիկ Կարսեցին վերջին թագավորն էր Կարսի գահի վրա։

## 3. ՏԱՐԱԾՔԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ

Կարսի թագավորության տարածքը գրավում էր Մեծ Հայքի Այրարատ նահանգի արևմտյան գավառները՝ Երասխ (Արաքս) գետի վերին հոսանքը, Ներքայալ Ախուրյան գետի վերին և միջին հոսանքը, Պաղակացիս (այժմ Չըլդըր) լճի գոգահովտի հետ, ինչպես և վերջինիս արևմուտքից հարող Փոս գավառակը մինչև Կուր գետը, Թագավորության տարածքը՝ Կարսի սարահարթը՝ իր ընդգրկած հին հայկական ութ գավառներով բարձրադիր էր և ուներ խստաշունչ կլիմա։

Կարսի թագավորության կենտրոնական գավառը Վանանդն էր, որի անունով երբեմն այս պետական կազմավորումը կոչվում էր «Վանանդի թագավորություն»։ X—XI դարերում Վանանդ գավառը բաժանվում էր երեք մասի՝ բուն Վանանդ կամ Կարուց երկիր Կարս կենտրոնով, Կարմիր փորակ, որը գտնվում էր Ախուրյան գետի ակունքների շրջանում, որտեղով հոսում էր Կարմիր փորակ կոչվող վտակը, և Զարիշատ[14], որն ընդգրկում է Պաղակացիս լճի գոգահովիտը, որի միջով հոսում է նշված լճից բխող Մեծագետը (այժմ Չըլդըր-չայ), որը թափվում է Ախուրյան գետի մեջ։ Գավառակի կենտրոնն էր Զարիշատ ավանը։

Մժնկերտ գավառում, որը հին հայկական Աբեղյանքն է, գտնվում էր Մժնկերտ բերդաքաղաքը։ Կարսի թագավորության գավառները պաշտպանված էին մի շարք ամրոցներով։ Հարավում տեղադրված էին Հավնունյաց գավառը (Հավնունի տոհմը X դարում դեռևս պահպանում էր իր գոյությունը), որտեղ գտնվում էր Ավնիկ բերդը, Աղորի գավառը Հավճիչ ամրոցով[15]։ Նախկին Արշարունիքի արևմտյան մասն էր կազմում Կեչրոր գավառը համանուն քաղաքով և Ծառաքար ամրոցով։ Սուկավետ (Ջրաբախշ) լեռնապարի, այժմ Հայկական պարի, հյուսիսային փեշերին էր փռվում Զարեհավան գավառակը համանուն ավանով (հին հայկական Զարեհավան քաղաքի տեղում)։ Կաղզվան գավառը համանուն կենտրոնով հարուստ էր աղի և մետաղների հանքերով։ Այն իր արևելյան մասով սահմանակից էր Բագրատունիների բուն տիրույթներին, որոնց հետ կապվում էր Հայկական պարի Աղտոձոր լեռնանցքով, որը պաշտպանված էր Շատիկ ամրոցով։ Գտնվելով առևտրական ճանապարհների վրա, այս ամրոցը Կաղզվանի և Կողբի աղի և այլ ապրանքների արտահանությունից ու առևտրական քարավաններից մաքսեր գանձելու կետ էր, ուստի,

---

13 Մատթեոս Ուռհայեցի. էջ 155։

14 Այս գավառակը իր անունն ստացել է Արտաշեսյանների օրոք (II—I դդ.) գոյություն ունեցող Զարիշատ քաղաքից։

15 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 106։

*ինչպես ասվեց, կռվախնձոր էր դարձել բուն Բագրատունյաց և Կարսի թագավորությունների միջև։*

*Իր ութ գավառների սահմաններում*[16] *Կարսի թագավորությունն ընդգրկում էր շուրջ 10 հազար քառ. կմ տարածություն և տնտեսական տեսակետից ներկայացնում էր մի ինքնամփոփ շրջան, որի կենտրոնն էր Կարս քաղաքը։ Այս քաղաքումն էր խփում այս փոքրիկ թագավորության զարկերակը, և դեպի այդ կենտրոնն էին ձգվում թագավորության բոլոր շրջանները։*

*Կարսի թագավորության գոյության շրջանը տնտեսական և մշակութային առավելագույն ծաղկման մի ժամանակաշրջան էր այդ փոքրիկ թագավորության համար։ Վանանդ գավառն իր բարձր լեռնային սարահարթով նպաստավոր պայմաններ ուներ երկրագործության և հացահատիկային բույսերի աճեցման համար։ Արաքսի հովիտը՝ հռչակավոր Երասխաձորը իր մեղմ և տաք կլիմայով հնարավորություն էր տալիս ունենալու զարգացած այգեգործություն և նրա հետ կապված գինեգործություն ու պարտիզագործություն։ Մեծրաց (ներկայիս Սողանլու-դաղ) լեռների անտառները վաղուց ի վեր շինանյութ էին մատակարարում։ Կարմիր փորակ (ներկայիս Ալլահյուակբար) ջրբաժան լեռնաշղթայի և Արջո-Առիճ հրաբխային զանգվածի ալպյան մարգագետինները նպաստավոր պայմաններ էին ընձեռում անասնապահության զարգացման համար, մանավանդ, որ մոտերքում գտնվող Երասխաձորը (Երասխի կիրճը Կաղզվանի շրջակայքում) իր մեղմ կլիմայով լավ ձմեռանոց էր անասունների համար։*

*Կարսի թագավորությունում մեծ համբավ ուներ լեռնագործությունը։ Հայտնի էին պղնձի, արծաթի, արճճի և երկաթի հանքերը, հիմնականում Կեչուան լեռներում, որոնց հիմքի վրա էլ քաղաքներում, հատկապես Կարսում, զարգանում էր արհեստագործությունը։ Զարգացող գյուղատնտեսության, լեռնագործության և արհեստագործության հիման վրա ընդլայնվում էր ապրանքափոխանակությունը, որը նպաստում էր քաղաքային կենտրոնների և առաջին հերթին մայրաքաղաք Կարսի վերելքին։*

---

16 *Կարսի թագավորության տարածքն ընդգրկող գավառների մասին տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 31, 40, 46, 52, 58, 62, 79, 82, 110, 117, 118։ Կարսի թագավորության մասին տես՝* *С. Т. Еремян*, Присоединение северо-западных областей Армении к Византии в XI веке. *«Լրաբեր» հասարակական գիտությունների, 1971, № 3, էջ 4—16։*

ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

# ՏԱՇԻՐ-ՁՈՐԱԳԵՏԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՅՈՒՍԻՍ-ԱՐԵՎՄՏՅԱՆ ԳԱՎԱՌՆԵՐԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԿՅՈՒՐԻԿՅԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բագրատունյաց Հայաստանում X դարում առաջացած քաղաքական նոր միավորումներից էր Տաշիր-Ձորագետի Կյուրիկյան[1] թագավորությունը, որն առաջացավ երկրի հյուսիսային ծայրամասում, ընդգրկելով պատմական Գուգարքի արևելյան շրջանները։*

*IX դ. վերջում Աշոտ Ա Բագրատունին մաքրեց արևելյան Գուգարքը արաբներից ու միացրեց բագրատունյաց ոստանին որպես պետական-արքունական հող՝ նշանակովի կառավարիչների իշխանության ներքո[2]։ Միացումը պետք է տեղի ունեցած լիներ IX դ. 80-ական թթ. կեսերին, որովհետև Հովհաննես Դրասխանակերտցին այդ մասին պատմում է Աշոտի թագավոր դառնալուց անմիջապես հետո։ 890 թ. խառնակություններ առաջացան Տաշիրում և վիճակի կարգավորումը հանձնարարվեց թագաժառանգ Սմբատին։ Բայց շուտով մահացավ նրա հայրը՝ Աշոտը, և Սմբատը վերադարձավ Բագարան։ Տաշիրում նա կառավարիչ նշանակեց Վասակ և Աշոտ Գնթունիներին, որպես «բերդապահ ու վերակացու», որոնց նստավայրը Շամշուլդե ամրոցն էր[3]։*

*Տաշիրը ու Աղստևի լեռնահովիտը X դ. առաջին քառորդում կարևոր նշանակություն ունեին Հայաստանի համար, նրանք պաշտպանում էին երկիրը հարևան արաբական ամիրայություններից։ Ատրպատականի ամիրաները (Ափշինը, Յուսուֆը) կամ նրանց զորապետները հաճախ այս գավառների վրայով էին ներխուժում Հայաստան։ Այսպես օրինակ, Ատրպատականի ամի-*

---

*[1] Կյուրիկյան թագավորությունն իր անունն ստացավ Բագրատունյաց տան Լոռվա ճյուղի հիմնադիր Գուրգենի անունից, որը տեղական ձևով արտասանվում էր «Կիւրիկէ»։ Սակայն թագավորությունը կոչվեց Կյուրիկյան ավելի ուշ, սկսած XIII դարից (օրինակ, Ստ. Օրբելյանի մոտ)։ Ժամանակակից պատմագիրները Լոռվա Բագրատունիներին մեծ մասամբ անվանում են Տաշիրի, երբեմն նաև Լոռվա կամ Ձորագետի տերեր։ Վրաց աղբյուրները նրանց անվանում են «Հայոց թագավորներ Սամշվիլդարի և Ձորոկերտելի» (տե՛ս* Ս. Երեմյան, *Լիպարիտ զորավարը և նրա նախորդները, Երևանի պետ. համալսարանի Հ. Մառի անվան կաբ. աշխ., 1947, № 2, էջ 129)։*

[2] *Հովհաննես* Դրասխանակերտցի, *էջ 177։*

[3] *Նույն տեղում, էջ 369։*

րաների 896 և 899 թթ. արշավանքները Հայաստան ձեռնարկվեցին Աղստև—Տաշիրի վրայով, ուստի Սմբատ թագավորը փակել էր այնտեղի կիրճերը։ 909 թ., երբ Յուսուֆը գրավել էր Դվինը, Սմբատը ստիպված էր ապաստանել Գուգարքում։ Նա որոշ ժամանակ մնաց Օձունում[4]։ Հաջորդ տարին, Ջկնավաժառի ճակատամարտից հետո, արաբները ապստամբեցին նաև Տաշիրն ու Կանգարքը, գրավեցին արքունի ոստանի բերդերը, բայց շուտով Աշոտ Բ-ը ամբողջ Տաշիրն ու Աղստևի լեռնահովիտը մաքրեց արաբներից և նորից միացրեց իր տերությանը[5]։

Նկատի ունենալով այս մարզերի կարևոր ռազմա-ստրատեգիական նշանակությունը Բագրատունյաց արքունիքը հատուկ ուշադրություն է դարձնում նրանց պաշտպանությանը։ Այդ նպատակով էր ստեղծվել տեղական (գավառական) իշխանություն, որի ղեկավարները միաժամանակ և զորապետներ էին։ Բայց ստեղծելով վերակացուների ինստիտուտը, արքունիքը հանդիպեց լրացուցիչ դժվարությունների։ Նշանակովի պաշտոնյաները խառնակ վիճակում, առանձնապես Ատրպատականի ամիրաների հարձակումների ժամանակ, հաճախ ըմբոստանում էին, ձգտելով ինքնուրույնության։

X դ. կեսերին կառավարման նման կարգը արդեն չէր բավարարում ժամանակի պահանջներին։ Նշանակովի պաշտոնյաների անհուսալիությունը ստիպեց իշխող դինաստիային արևելյան Գուգարքի կառավարումը հանձնել իր տոհմակիցներին և այդ եղանակով երկրամասը կապել կենտրոնի հետ։ Այդ նպատակով արքունիքը ձեռնարկեց արմատական վերափոխումներ։ Տաշիր—Ձորագետի գավառները միավորվեցին մեկ վարչական մարզի մեջ և ստացան քաղաքական ու եկեղեցական հատուկ իրավասություն։

Հայոց Աշոտ Գ թագավորի որդի Գուրգենը նախապես կառավարիչ էր նշանակված այդ մարզում։ Նրան թագավոր ճանաչելով, Բագրատունի թագավորները ձգտում էին Գուգարքը ավելի զորեղացնել, դարձնելով կենտրոնական իշխանության հենարանը պետության հյուսիսային սահմանների պաշտպանությունը ամրապնդելու համար։ Այսպիսով, Կյուրիկյան թագավորության և նույն դարի հայկական մյուս տեղական թագավորությունների առաջացման նախադրյալները նկատելիորեն տարբեր էին։

Եթե Վասպուրականի կամ Սյունիքի թագավորությունների ձևավորումը հետևանք էր տեղական հզոր ֆեոդալական տների կենտրոնախույս ձգտումների՝ պայմանավորված վերջիններիս քաղաքական-տնտեսական զորությամբ, մասամբ և դրսի թշնամի ուժերի՝ Հայաստանը մասնատելու և թուլացնելու քաղաքականությամբ, ապա Գուգարքում, ընդհակառակը, Հայոց շահնշահները ստեղծեցին այն որպես ամուր պատվար հյուսիսային սահմանամերձ շրջաններում, որը՝ կապված լինելով կենտրոնական իշխանության հետ և ենթարկվելով նրան, պիտի ստանձներ Արշակունյաց ժամանակաշրջանի բդեշխության դերը։ Այդուհանդերձ երկրի ֆեոդալական մանրատման միտումն այս դեպքում էլ առկա է։

Ընդգրկելով Գուգարքի արևելյան մասը, Տաշիր-Ձորագետի թագավորու-

4 Ստեփանոս Տարոնեցի, էջ 164։
5 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 306։

թյունը արևմուտքից սահմանակից էր Շիրակին, հարավից՝ Նիգ գավառին և Ծաղկոտնյաց լեռներին, հյուսիսից նրա սահմանները տարածվում էին մինչև Վրաստան։ Թագավորության վարչական կենտրոններն էին նախ Շամշուլդեն, ապա Լոռե բերդաքաղաքները։ Արևելյան սահմաններն էին Կայան գավառը և Կանգարքը՝ Գագ բերդով[6]։

Գուգարքի կառավարիչ, իսկ այնուհետև թագավոր նշանակված Գուրգենը իշխել է ավելի քան տաս տարի՝ 979 թ.[7] մինչև 991 թ., որի մասին, սակայն, մեզ հասած փաստերը մեկ-երկուսից չեն անցնում։ Առավել արժեքավոր է Մատթեոս Ուռհայեցու տեղեկությունը 974 թ. հայտնի զորահավաքին Գուրգենի մասնակցության մասին։ Այստեղ նա հիշատակված է թագավորների և նշանավոր իշխանավորների թվում, որոնք Աշոտ Գ-ի մոտ էին հավաքվել Չմշկիկ կայսեր արևելյան արշավանքի առթիվ։

Այլ տեղեկություններ նրա մասին չեն պահպանվել, իսկ արձանագրություններում վերջին անգամ հիշատակվում է 991 թ.։

Գուրգենին հաջորդած Դավիթը (մոտ 996—1048/49) առաջին իսկ տարիներին ընդարձակեց երկրի սահմանները հյուսիսային ուղղությամբ, գրավեց Դմանիսը և իրեն ենթարկեց Տփղիսի արաբ ամիրային[8]։ Դավիթը հաջողությամբ պայքարեց նաև վտանգավոր ախոյան՝ Գանձակի Շադդադյան ամիրայության դեմ։

Շադդադյանները X դարի 70-ական թվականներին հիմնելով իրենց իշխանությունը Գանձակում, ժամանակի ընթացքում գրավել էին մի շարք շրջաններ Հայաստանի սահմանամերձ գավառներում և ընդհուպ մոտեցել էին Վրաստանին ու Գուգարքին։ Շադդադյան Փադլուն ամիրան նվաճել էր Գուգարքին հարևան Փառիսոս գավառի կեսը, Խաչենը և այլ վայրեր։ Նրա հետագա խուժումը Հայաստանում անխուսափելի էր դարձնում բախումը Կյուրիկյանների հետ։

Դավիթ Բագրատունին կարողացավ պարտության մատնել Փադլունին և նրան շպրտել Գուգարքից։ Դեպքերի ժամանակակից պատմիչ Ասողիկը չի նշում թվականը, սակայն պարզ է, որ ընդհարումը պետք է տեղի ունեցած լիներ մինչև 1003 թ.[9]։

Դավիթը ճնշում է նաև կենտրոնախույս ուժերին, որոնց օժանդակում էին հարևան իշխանավորները։ Վերջիններս փորձեցին Լոռում իշխանության

---

6 Թագավորության քարտեզը կազմել է Ս. Տ. Երեմյանը (տե՛ս «ՀՍՍՀ Ատլաս», Երևան, 1961, էջ 105)։

7 Սանահնի Ամենափրկիչ եկեղեցու (կառուցվել է 966—972 թթ.) բարձրաքանդակում Գուրգենի զգեստը արքայական է։ Այս հանգամանքը հիմք է տալիս ենթադրելու, որ Գուրգենը գահակալությունը ստանձնել է 972 թ.։ Տե՛ս Ռ. Ի. Մաթևոսյան, Դիտողություններ Կյուրիկյանների պատմության վերաբերյալ, «Պատմա-բանասիրական հանդես», 1968, № 3։

8 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 256։

9 Նույն տեղում, էջ 257։ 1030 թ. Փադլունը հարձակվեց Վրաստանի վրա։ Այս անգամ ընդհանուր թշնամու դեմ կազմակերպվեց դաշնակցություն, որի մեջ մտնում էին Վրաց աշխարհի և Կախեթի թագավորները, Տփղիսի արաբ ամիրան և Դավիթ Կյուրիկյանը։ Դաշնակիցները ջարդում են Փադլունի զորքը։ Ցփմանալով ստացած ծանր հարվածին, Փադլունը շուտով մահանում է։

*գլուխ կանգնեցնել Կյուրիկյանների հակառակորդներին։ Նրանց հաջողվեց Կյուրիկյանների դեմ հանել Գագի իշխան Դեմետրեին։ Պատմագիր Ասողիկը վկայում է, որ Դեմետրեն օժանդակություն ստանալով դրսից, իր որդուն նշանակեց Տաշիրի կառավարիչ։ Ասողիկի խոսքերից երևում է, որ Դեմետրեն իր որդուն նշանակել էր եթե ոչ ամբողջ թագավորության, ապա նրա մի զգալի մասի կառավարիչ*[10]*։ Սակայն խռովարարները հաջողություն չեն ունենում։ Դեմետրեն պարտվում է, կորցնելով իր բոլոր տիրույթները*[11]*։*

*Լոռվա թագավորության ներքին և արտաքին դրության ամրապնդումը նախադրյալներ էր ստեղծում տեղական գահակալի անջատողական ձգտումների համար։ Դավիթը փորձ է կատարում ազատվելու Հայոց շահնշահի գերիշխանությունից։ Դավթի հավակնությունները իրենց արտացոլումն են գտնում նույնիսկ նրա պաշտոնական տիտղոսավորման մեջ։ Հաղբատի 996 թ. արձանագրություններից մեկում նա մեծարվում է «ինքնակալ արքայ» տիտղոսով*[12]*։ Շահնշահ Գագիկը ստիպված է լինում արշավանք ձեռնարկել դեպի Գուգարք և ուժի միջոցով ճնշել ըմբոստությունը։ Աղբյուրներում անբավարար է լուսաբանվում Լոռվա թագավորության պատմության համար այդ կարևոր դրվագը։ Միակ աղբյուրը Ասողիկն է, որը հաղորդում է, թե Գագիկը 1001 թ. մեծ զորքով գալով հյուսիս, շրջապատում է Շամշուլդեն, քանդում Դավթի բերդերը։ Դավիթը չի համարձակվում մարտի բռնվել Գագիկի հետ և դիմում է Սարգիս կաթողիկոսի միջնորդությանը, իր հպատակությունը հայտնելով շահնշահին*[13]*։ Դավթի փորձը հաջողություն չէր էլ կարող ունենալ, որովհետև Շիրակի Բագրատունիների թագավորությունը Գագիկ Ա-ի օրոք հասել էր իր հզորության գագաթնակետին, և Դավիթը ստիպված էր Գագիկին զիջելու որոշ բերդեր և հողեր*[14]*։*

*XI դարի 30-ական թվականներին Կյուրիկյանների դիրքը Անդրկովկասում զգալիորեն ուժեղացել էր շնորհիվ այն բանի, որ Գուգարքին և Քարթլիին սահմանամերձ Կախեթում իշխանությունն անցել էր Կյուրիկյան տան նոր ճյուղին։ Դա Դավիթ Անհողինի քաղաքական խոշոր հաջողությունն էր։ Լոռվա թագավորն ամուսնացել էր Կախեթի իշխան, քորեպիսկոպոս Կվիրիկեի քրոջ՝ Զորակրցելի հետ, ուստի Կվիրիկեի մահից հետո իշխանությունը ժառանգեց Դավթի որդի Գագիկը, որը և Կախեթի Կյուրիկյան հարստության հիմ-*

---

10 *Այդպիսի ենթադրությունը հիմնավորվում է նրանով, որ Տաշիր բառով Ասողիկը, սովորաբար, անվանում է Լոռվա թագավորությունը։*

11 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 257։*

12 *Տե՛ս* Կ. Ղաֆադարյան, *Հաղբատ, Երևան, 1963, էջ 264։* Կ. Կոստանյանց. *Վիմական տարեգիր, ՍՊԲ, 1913, էջ 11։*

13 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 280։*

14 *Մի շարք գիտնականներ (Ե. Պախոմով, Լ. Մելիքսեթ-Բեկ, Հ. Հարությունյան) ենթադրում են, որ բերդերի և հողերի կորուստը առիթ դարձավ, որպեսզի Դավթին տրվեր «Անհողին» մականունը։ Սակայն այդ տեսակետը սխալ է, որովհետև մինչև Գագիկի արշավանքը, Դավիթը մեզ հայտնի 996 թվականի Հաղբատի արձանագրության մեջ արդեն հիշատակվում է «Անհողին» անունով։ Ընդհանրապես պետք է նշել, որ «Անհողին»-ի առաջ գալու պատճառը պարզ չէ և բացատրության բոլոր փորձերը առայժմ անհաջող են։*

նադիրը հանդիսացավ, ազգակցական և քաղաքական սերտ կապեր հաստատելով Լոռվա Բագրատունիների հետ[15]։

1040-ական թվականներին Կյուրիկյաններին սպասում էր լուրջ փորձություն, որից նրանք հաջողությամբ ազատվեցին[16]։ Մատթեոս Ուռհայեցու վկայությամբ Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարը (ըստ Ուռհայեցու՝ Աբուսուար) մեծ զորքով ներխուժում է Գուգարք և մեկ տարվա ընթացքում գրավում թագավորության զգալի մասը։ Թշնամու գերազանց ուժը ստիպում է Դավթին խուսափել ճակատամարտից, սակայն երբ ընդհարումը դառնում է անխուսափելի, օգնության համար դիմում է Հայոց թագավոր Հովհաննես-Սմբատին, Կապանի և Ափխազաց թագավորներին։ Օգնական զորքի հետ միասին ձեռքի տակ ունենում է 20 հազար զինվոր։ Կազմվում է նաև աշխարհազոր։ Ուժերի մեծ լարումով Լոռվա տիրակալին հաջողվում է ջարդել թշնամուն։ Վճռական ճակատամարտում Աբու-լ-Ասվարը ծանր պարտություն է կրում և դուրս շպրտվում Գուգարքից[17]։

XI դարում Կյուրիկյանները փորձեցին գերիշխող դիրք գրավել Հայաստանում և գլխավորել երկրի քաղաքական կյանքը։ Օգտվելով Բագրատունյաց թագավորության քաղաքական ճգնաժամից, Դավիթը, իբրև Բագրատունիների գահի հավակնորդ, երկիցս փորձեց տիրանալ Անիին, բայց հաջողություն չունեցավ։

Անին գրավելու փորձը Դավթի կենսագրության մեզ հայտնի վերջին դրվագն է։ Դավիթը աչքի է ընկել նաև իր շինարարական գործունեությամբ։ Երկրի պաշտպանությունն ապահովելու նպատակով կառուցել է բազմաթիվ բերդեր, այդ թվում նաև Լոռվա նշանավոր բերդը։ Ապրելով ևս մի քանի տարի, նա մահանում է 40-ական թվականների վերջերին։ Սովորաբար նշում են 1046/48 թվականները։ Որոշ հիմք կա ենթադրելու, որ մահը տեղի է ունեցել 1049 թվականին։ Թաղվել է Սանահնում, Աստվածածին եկեղեցու արևելյան պատի մոտ, սակայն այժմ գերեզմանն անհայտ է։

Դավթին հաջորդեց ավագ որդին՝ Կյուրիկեն, սա միաժամանակ խաղաղ իշխեց Գուգարքում, որը շարունակում էր բարգավաճել։ Նրա օրոք Լոռի բերդը դարձավ թագավորանիստ քաղաք։

Դավթի և նրան հաջորդած Կյուրիկե Ա-ի գահակալության տարիները կազմում են Կյուրիկյան թագավորության առավել հզորության ժամանակաշրջանը։ XI դարի առաջին կեսում առաջացած իրադրությունը որոշ նախադրյալներ էր ստեղծել, որպեսզի Կյուրիկյանները ավելի նշանակալից դեր խաղային երկրի կյանքում։

Կյուրիկյան թագավորության տարածքը հարուստ է լեռնային մարգագետիններով. այստեղ անասնապահությունը կազմում էր տնտեսության առաջատար ճյուղը, զարգացած էր նաև դաշտավարությունը, մասնավորապես հացահատիկների մշակությունը, իսկ երկրի ընդերքը շատ հարուստ է մետաղի՝

---

15 Տե՛ս Ս. Երեմյան, *Լիպարիտ զորավարը և նրա նախորդները*, Երևանի պետ. համալսարանի Ն. Մառի անվան կաբինետի աշխատություններ, 1947, № 2, էջ 128—129։

16 Տե՛ս Ռ. Մաթևոսյան, *Արևելյան Գուգարքը XI դ. առաջին կեսին*, ՊԲՀ, 1969, № 2։

17 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 79—82։

մանավանդ պղնձի և երկաթի հանքերով, որոնք մշակվում էին հնագույն ժամանակներից սկսած։

Լոռվա թագավորության սահմանները որոշելու համար հիմնական սկզբնաղբյուրն է Սանահնի վանքի «Քյոթուկ» կոչված գրառումների մատյանում արտագրված Սմբատ Բ-ի 979 թ. հրովարտակը։

Կյուրիկյանների քաղաքական, հոգևոր և մշակութային կենտրոնն էր Տաշիր գավառը, որը Բազումի և Փամբակի լեռնաշղթաներով արևմուտքից սահմանակից էր Բագրատունյաց կենտրոնական թագավորությանը։ Գավառը տարածվում էր ներկա Փամբակ և Դեբեդ գետերի ավազաններում (այժմյան Գուգարքի, Ստեփանավանի, Կալինինոյի, Թումանյանի շրջաններ)։ Տաշիրում Կյուրիկյանները XI դ. կեսերին հիմնել էին երկրորդ մայրաքաղաք Լոռին (Լոռե)։ Գավառի անունով X—XI դդ. ամբողջ թագավորությունը անվանում էին «Տաշրա երկիր»։

Հյուսիսից Լոռվա թագավորությունը սահմանակից էր Վրաց թագավորությանը, ընդգրկելով իր տարածքում արևելյան Գուգարքի հյուսիսային շրջանները։ Կյուրիկյանների վարչական-քաղաքական կենտրոնը սկզբնապես գտնվում էր Շամշուլդե բերդավանում, որտեղ դեռ Աշոտ Երկաթի ժամանակ նստում էին Հայոց արքունիքից նշանակված կառավարիչներ։

Արևելյան սահմանի գլխավոր գավառն էր Ձորոփորը, թագավորության երկրորդ գլխավոր մարզը, որը տարածվում էր Աղստև գետի միջին հոսանքում (ներկայիս Իջևանի շրջան) և հարևան էր Ուտիքի Տավուշ գավառի հետ։ Այստեղից էին անցնում տարանցիկ առևտրական ճանապարհները դեպի Գանձակ և Կասպից ծով։ Գավառում կառուցվել էին ճանապարհները հսկող բերդեր, որոնցից գլխավորն էր Կայան բերդը (ներկայիս Աղջկա բերդը Իջևանի շրջանում), որի անունով XII—XIII դդ. ամբողջ գավառը կոչվում էր Կայան։ Արևելքից մյուս սահմանային գավառն էր Կանգարքը, որտեղ գտնվում էր նշանավոր Գագա բերդը (ներկայիս Նոյեմբերյանի շրջանի Կոթի գյուղից արևելք)։

Հարավից Կյուրիկյանների տիրապետությունը տարածվում էր մինչև Պահլավունիներին պատկանող Այրարատ նահանգի Նիգ գավառը (այժմ՝ Ապարանի և մասամբ Հրազդանի շրջաններ)։ Այստեղ թագավորության սահմանագիծը Պահլավունիների տիրույթների հետ անցնում էր Ծաղկունյաց լեռնաշղթայով։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՅՈՒՍԻՍ-ԱՐԵՎՄՏՅԱՆ ԳԱՎԱՌՆԵՐԸ

Բագրատունյաց թագավորության կազմավորումից հետո Մեծ Հայքի որոշ գավառներ մնացին բյուզանդական տիրապետության ազդեցության ներքո։ Դրանք այն գավառներն էին, որոնք նախապես ենթակա լինելով Բյուզանդական կայսրությանը, մտնում էին Խաղտիք, Սեբաստիա, Լիկանդոս, Կողոնիա, Արմենիակոն բանակաթեմերի մեջ։ Դրանց թվում հատկապես կարելի է նշել Խաղտիքի բանակաթեմում գտնվող մերձպոնտական շրջանները, մանավանդ ոսկու հանքերով հարուստ Սպեր գավառը, որը Բագրատունիների տոհմական հին տիրույթներից էր և ընդգրկում էր Ճորոխի ավազանի վերին մասերը։

Սպերի վրայով հայերը հարաբերության մեջ էին մտնում Բյուզանդիայի հետ դեռ նախորդ դարերում։ Այստեղ IX դ. հիշվում է Իշխանիկ Բագրատու-

նին[18], Արամանեակ ամրոցի տերը, որի մոտ ապաստանեց Վասպուրականի Գուրգեն Ապուպելճ Արծրունին Բուղայի արշավանքի ժամանակ, ցանկանալով կապ՛եր հաստատել կայսրության հետ։ Այդ ժամանակ Սպերը դարձել էր հայ ազատագրական պայքարի մասնակիցների ապաստաններից մեկը։

Խաղտիք բանակաթեմի մեջ էր Տրապիզոն քաղաքը, որը սերտ կապի մեջ լինելով Կարնո քաղաքի հետ Հայաստանի և խալիֆայության այլ երկրների համար կարևոր նավահանգիստ էր Սև ծովի ափին։

X դարում Բյուզանդիայի ձեռքում էին Բարձր Հայքի և Ծոփքի այն արևմտյան գավառները, որոնք նախորդ դարերում ընկած էին արաբա-բյուզանդական սահմանային գոտում։ Այստեղ կազմավորվեց Միջագետք (Մեսոպոտամիա) բանակաթեմը, որի մեջ էին Կամախ (Անի) ամրոցը և Երզնկան։ Կամախը ռազմական բացառիկ նշանակություն ուներ խալիֆայության և Բյուզանդիայի միջև մղված պայքարում և անցնելով վերջինիս ձեռքը, նկատելի գերակշռություն տվեց նրան։

Արմենիակոն բանակաթեմը և մանավանդ Սեբաստիա բանակաթեմը, որն ընդգրկում էր Փոքր Հայքի որոշ մասեր Սեբաստիա քաղաքով, ըստ հայ և հույն (Կոստանդին Ծիրանածին) պատմիչների, ուներ մեծաթիվ հայ ազգաբնակչություն։

Փոքր Ասիայում արաբները ունեին սահմանային ամրությունների երկարաձիգ գոտի, որը երկու հատվածի էր բաժանվում՝ Ասորիքի ու Վերին Միջագետքի։ Վերջինիս հետ սերտորեն կապված էր Հայաստանի արևմտյան գավառների ամրացված գոտին, որը հարավ-արևելքից ձգվում էր մինչև Եփրատի վերին հոսանքը։ Այս գոտում էին գտնվում Կայսիկների ու Կարինի ամիրայությունները, որոնց գլխավոր կենտրոններն էին Մանազկերտն ու Կարնո քաղաքը։

Մինչև Սմբատ Ա-ի մահը (914) արաբների ու բյուզանդացիների միջև ռազմական գործողությունները ավելի շատ կենտրոնացած էին Ասորիքի ու Միջագետքի սահմաններում, որովհետև Հայոց թագավորությունը երկու մեծ պետությունների համար չեզոք գոտու դեր էր կատարում։ Այդ շրջանում (IX դ. վերջ—914) Բարձր Հայքի ու Չորրորդ Հայքի արևելյան գավառները ենթակա էին Հայոց թագավորությանը։ Բայց դրությունը փոխվեց Սմբատ Ա-ի սպանությունից հետո, երբ նշված գավառները պոկվեցին Բագրատունյաց թագավորությունից և դարձան ընդհարումների թատերաբեմ խալիֆայության ու կայսրության միջև։

Բայց X դ. առաջին կեսին, մինչև Կարնո քաղաքի գրավումը, Բյուզանդիան Հայաստանի արևմտյան գավառներում միայն ասպատակություններ էր ձեռնարկում, առանց նվաճումներ կատարելու և այս մասում արաբա-բյուզանդական սահմանը մնում էր անփոփոխ[19]։ Սակայն X դ. կեսերին օրակարգի հարց է դառնում Կարինի նվաճումը, որն իր անառիկ միջնաբերդով արտակարգ կարևոր նշանակություն ունեցող ռազմա-ստրատեգիական հենակետ էր։

---

18 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 315։

19 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, նշված աշխատ., էջ 159—160, 184։

*Քաղաքին տիրանալու համար Բյուզանդիային անհրաժեշտ էր Կեցեոն քաղաքը, որը վրացիների ձեռքումն էր գտնվում։ Հակառակ կայսրության բոլոր խոստումներին, թե Կարինի գրավումից հետո Կեցեոնը կվերադարձվի վրացիներին, վերջիններս ոչ մի կերպ չզիջեցին այն Կայսրությանը։ Ուշագրավ է, որ Կարինի գրավմանը դեմ էին և՛ հայերը, և՛ վրացիները։ Նրանք նախընտրում էին, որ քաղաքը մնա արաբների ձեռքում, քան թե անցնի Կայսրությանը։ Այդ բացատրվում է նրանով, որ արաբները նրանց համար արդեն լուրջ վտանգ չէին ներկայացնում, հայերի ու վրացիների համար ավելի ձեռնտու էր իրենց ու Բյուզանդիայի միջև ունենալ այնպիսի մի քաղաքական միավորում, ինչպիսին էր Կարինի ամիրայությունը։ Բայց նրանց դիմադրությունը երկար չտևեց։ 949 թ. Բյուզանդիային հաջողվեց գրավել քաղաքը, վերջ տալ ամիրայությանը և ընդլայնել իր նվաճողական քաղաքականությունը դեպի արևելք ու հարավ-արևելք[20]։*

*Պատմական այդ ժամանակահատվածում Բյուզանդիայի ու Անդրկովկասի երկրների համար կարևոր նշանակություն է ստանում Տայքը ինչպես իր դիրքի, այնպես և տեղական բավականաչափ զորեղ իշխանության առկայության շնորհիվ։*

*Վաղ միջնադարում (IV—VIII դդ.) Տայքը հայ ազդեցիկ իշխանական տներից մեկի՝ Մամիկոնյանների ժառանգական տիրույթն էր[21]։ Բայց VIII—IX դդ. սահմանագլխին դրությունը փոխվեց։ 774—775 թթ. ապստամբության ժամանակ արաբներից կրած պարտությունը դժվարին կացության մեջ դրեց Մամիկոնյաններին։ Նրանք էին ապստամբության ղեկավարները և, բնականաբար, նրանց դեմ առաջին հերթին ուղղվեցին խալիֆայության հալածանքները։ Մամիկոնյան տան վերնախավը ստիպված եղավ ապաստանել Բյուզանդիայում, իսկ տեղում մնացին նրանց կրտսեր ներկայացուցիչները[22]։*

*VIII—IX դդ. սահմանագլխին Աշոտ Բագրատունի Մսակերը կարողացավ մասամբ զենքով, մասամբ դրամով հաստատել իր իշխանությունը Շիրակում, Արշարունիքում, Աշոցքում, իսկ Տայքում կառուցեց Կալմախ ամրոցը և այնտեղ տեղափոխեց իր ընտանիքը։ Նրա օժանդակությամբ Տայք տեղափոխվեց Գնունիների տոհմը, որը նեղվելով արաբներից դիմել էր Աշոտի օգնությանը[23]։*

*Այսպիսով Բագրատունիները, որոնք 775 թ. ապստամբությունից հետո հաստատվել էին Հայաստանի կենտրոնական, հյուսիս-արևելյան և արևմտյան նահանգներում ու բարեկամական կապերի մեջ էին Բյուզանդական կայսրության հետ, օգտվելով խալիֆայության թուլացումից, IX դ. կեսերին արդեն վերականգնել էին իրենց նախկին հզորությունը և ավելի զորեղ էին, քան VIII դ. վերջում՝ նախքան ապստամբությունը[24]։*

---

20 *Տե՛ս* Հ. Բարթիկյան, *Հայաստանի նվաճումը Բյուզանդական կայսրության կողմից, ՊԲՀ, 1970, № 2, էջ 83—84։*

21 *Տե՛ս Н. Адонц,* Армения в эпоху Юстиниана, стр. 231, 309, 403. Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույցի», էջ 84։*

22 *Հայաստանում մնացած Մամիկոնյաններից էին Թոռնիկյանները։ XII—XIII դդ. նրանց մի ճյուղը իշխում էր Դսեղում։*

23 *Տե՛ս* Վարդան, *էջ 105—106։* Լեո, *Հայոց պատմություն, հ. 2, էջ 413։*

24 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Քննական տեսություն, հատ. Բ, մաս Բ, էջ 225—227։*

Տայքի IX դ. պատմության վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները սուղ են, բայց հայտնի է, որ X դ. առաջին կեսին այնտեղ առաջացել էր կուրապաղատություն վրաց Բագրատունիների Տայքի ճյուղի գլխավորությամբ[25], իսկ բնակչությունը հիմնականում հայեր էին, որոնցից շատերը հարել էին քաղկեդոնությանը[26]։ Տայքի իշխանությունը Դավիթ կուրապաղատի օրոք (966—1000) բավականաչափ զորեղացել էր։ Այդ ժամանակներում սուր պայքար էր տեղի ունենում օտար տիրապետություններից ազատագրված Անդրկովկասի երկրների և հարավի ամիրայությունների միջև։ Հայոց և Վրաց թագավորությունների ու Տայքի կուրապաղատության միջև հաստատվել էր սերտ համագործակցություն, որը խոշոր նշանակություն ունեցավ նրանց պաշտպանության գործում։ Վրաց թագավորության հետ, որի կազմում էին Տայքի հյուսիսային գավառները, կյուրապաղատությունը սահմանակցում էր Բանակ-Օլթի գետերով, իսկ հարավից ու հարավ-արևելքից՝ կայսիկների ամիրայության և Կարսի թագավորության հետ (տե՛ս Հայկական ՍՍՀ «Ատլաս», էջ 105)։ Հյուսիս-արևմուտքից սահմանակից լինելով Բյուզանդական կայսրությանը, կուրապաղատությունը դիմագրավում էր կայսրության աշխարհակալությանը, որի զոհը ի վերջո դարձավ նաև ինքը։

* * *

949 թ. Կարինի վերջնական գրավումով սկսվեց հայկական հողերի աստիճանական զավթումը կայսրության կողմից։ 966 թ. գրավվեց Տարոնը, 969 թ. արաբներից խլվեց Մանազկերտը։ Բայց X դ. Բյուզանդիայի առաջխաղացումը միաժամանակ դրանով էլ սահմանափակվեց։

Վարդ Սկլերոսի ապստամբության ժամանակ կայսրության ծանր կացությունից օգտվեցին Մրվանյանները, Բատ ամիրան գրավեց Մանազկերտը։ Ահա այս վճռական պահին բյուզանդական արքունիքը դիմեց Տայքի տիրակալին։ Վասիլը խնդրեց Դավիթ Կուրապաղատին օգնական զորք տալ կայսերական արևելյան բանակին, որպես հատուցում խոստանալով ցկյանս հանձնել նրան նոր հողային տիրույթներ՝ Խաղտոյ առիճը, Կղեսուրքը, Ջորմայրին, Կարինը, Բասենը, Մարդաղի գավառը (կամ Սևուկ բերդը), Հարքն ու Ապահունիքը[27]։

---

25 Տե՛ս Ա. Հովհաննիսյան, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, հ. 1, Երևան, 1957, էջ 380։ Թ. Հակոբյան, Հայաստանի պատմական աշխարհագրություն, Երևան, 1968, էջ 261։ Մ. Ճանաշյան, Դավիթ կյուրապաղատ, Վենետիկ, 1972, էջ 14։ *М. Лордкипанидзе*, Из истории грузино-византийских взаимоотношений на грани X—XI вв., «Вопросы истории Грузии феодальной эпохи», т. II. Тбилиси, 1972, стр. 32. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Գ, էջ 16—18, 20, 25։

26 *Н. Я. Марр*, Аркаун, монгольское название христиан в связи с вопросом об армянах халкедонитах, стр. 1—41. Արիստակես Լաստիվերտցի, էջ 98։ Հակոբ Կարնեցի, Տեղագիր Վերին Հայոց, Վաղարշապատ, 1903, էջ 17—18։ Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 84։

27 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 191—192։ გიორგი მთაწმიდელი, ცხოვრება იოანესი და ეფთვიმესი, გამოსაცემად დაამზადა ივ. ჯავახიშვილმა, თბილისი, 1946, էջ 19։

Դավիթը ընդունեց առաջարկը և իշխանաց իշխան Ջոջիկի գլխավորությամբ կայսերական արևելյան բանակ ուղարկեց մեծ զորամաս, որը գործում էր Վարդ Փոկասի ընդհանուր հրամանատարությամբ։ Այդ զորամասը աջքի ընկավ Հալիս գետի ափին՝ Սարավենե դաշտում (բյուզանդական Խարսիան թեմում) տեղի ունեցած մեծ ճակատամարտում, որտեղ Սկլերոսի բանակը պարտություն կրեց[28]։

Կան տվյալներ, որ Դավիթը ինքն էր օգնության դիմաց պահանջել նշված գավառները, իսկ կայսրը ընդունել էր այդ պայմանը[29]։ Նեղ վիճակում գտնվող բյուզանդական արքունիքը դիվանագիտական նուրբ քայլի էր դիմել։ Դավթին փաստորեն ցկյանս տրվել էին Կարինը, ինչպես նաև այն հողերը, որոնք այդ խառնակ պահին կայսրությունը ի վիճակի չէր պաշտպանելու կամ նույնիսկ չէին նվաճված (Հարք, Ապահունիք)։ Այդ նշանակում էր, որ ոչ հեռու ապագայում, Դավթի մահից հետո, այդ հողերը նա ետ կստանար։ Ինչ վերաբերում է Դավթին, օգնելով Վասիլին, նա հետապնդում էր իր սեփական նպատակներն ու շահերը։ Որոշ հետազոտողներ նշում են, որ Սկլերոսի հաղթանակը ձեռնտու չէր Դավթին այն պատճառով, որ Սկլերոսը կդառնար նրա վտանգավոր մրցակիցը, իսկ օգնելով կայսրությանը նա կարող էր ընդարձակել իր տիրույթները[30]։

Սկլերոսի խռովությունը ճնշվեց 979 թ., որից հետո Դավիթը ստացավ խոստացած հողերը, բացի Հարք-Ապահունիքից։ Այդ գավառները Դավիթը չմտավ մինչև Բատ ամիրայի մահը։ Միայն 990 թ., Բատի հաջորդ Մրվանի ժամանակ, նրա բանակը պաշարեց Մանազկերտը։ Քաղաքի գրավումից հետո մահմեդական բնակչությունը արտաքսվեց և փոխարինվեց «Հայ և Վրացի բնակչօք ընդ իւրով (Դավթի) իշխանութեամբ»[31]։

Մանազկերտի կորուստը դրդեց հարևան ամիրայություններին միացյալ ուժերով դուրս գալ կուրապաղատի դեմ՝ Ատրպատականի ամիրա Մամլանի գլխավորությամբ, սակայն, ինչպես նշվեց նախորդ գլխում, հանդիպելով հայ-վրացական զորքերի միահամուռ դիմադրությանը, նրանք ետ նահանջեցին[32]։

Հակամարտ ուժերի պայքարը Բյուզանդիայում վերսկսվեց նոր թափով 980-ական թթ.։ Դավթի մասնակցությունը այդ պայքարում ճակատագրական նշանակություն ունեցավ Տայքի համար։ Այս անգամ Դավիթը միացավ կայսրի դեմ ապստամբ Փոկասին և իր զոկատը տրամադրեց նրան։ Եվ դա հասկանալի է, քանի որ Դավթին այժմ ավելի ձեռնտու էր որպես հարևան ունենալ ոչ թե ուժեղ, այլ երկպառակություններով թուլացած կայսրությունը։ Բացի դրանից, չնայած աղբյուրների լռությանը, գահի հավակնորդը իր դաշնակցին պետք է որոշակի հատուցում խոստացած լիներ, որը թերևս կարող էր վերաբերել Վասիլի հողային պարգևի խնդրին։

---

28 Տե՛ս *Н. Ломоури*, К истории восстания Варды Склира, «Труды Тбилисского гос. университета», 1957. т. 67, стр. 37.

29 Տե՛ս նույն տեղում, էջ 39։

30 Տե՛ս նույն տեղում։

31 Ստեփանոս Տարոնեցի, էջ 266։

32 Տե՛ս նույն տեղում, էջ 266—267։

*Վասիլ կայսրը օգնություն խնդրեց Կիևյան Ռուսիայի մեծ իշխան Վլադիմիրից, իսկ ապստամբներին Թիկունքից հարվածելու համար Տրապիզոն ուղարկեց մագիստրոս Տարոնեցուն (անունն աղբյուրներում չի հանդիպում), որը Խաղտիքում զորք հավաքեց ու շարժվեց Եփրատի կողմը։ Այժմ անմիջական վտանգ էր ստեղծվել Տայքի համար, ուստի Փոկասը ստիպված էր Դավթի զորամասը ետ վերադարձնել, որի հետ Տայք եկավ նաև նրա որդի Նիկեփոր Ծռվիզը։ Փոկասի ապստամբության ձախողումից հետո Դավիթը դիմելով կայսրին ներում խնդրեց, խոստանալով հպատակություն ու հնազանդություն և ստիպված եղավ ոչ միայն հրաժարվել պարգևական հողերից, այլև իր բոլոր տիրույթները կտակեց կայսրին։ Իր մահից հետո դրանք պետք է միացվեին Բյուզանդիային[33]։ Այսպիսով, կայսրը դարձավ Դավթի տիրույթների ժառանգորդը, իսկ ինքը՝ Դավիթը՝ վերջին կուրապաղատը Տայքում։*

*Դավթի ժառանգության հարցը կուրապաղատության պատմության հանգուցային խնդիրներից մեկն էր։ Նրա առաջին ժառանգորդն էր Վրաց միացյալ պետության հիմնադիր՝ վիրա--ափխազաց թագավոր Բագրատ Գ (975—1014), որին նա որդեգրել էր ու նշանակել իր հետնորդ[34]։ Բայց հետագայում նրանց հարաբերությունները վատացան և 988 թ. գործը հասավ բացահայտ ընդհարման[35]։ Նրանց գժտությունը համընկնում է Փոկասի ապստամբության տարիների հետ։ Ենթադրվում է, որ Բագրատին Դավթի դեմ լարել էր կայսրությունը, որը ձգտում էր դժվարացնել իր հակառակորդի վիճակը։ Այդ ժամանակ Տայքի զորամասը ապստամբների բանակումն էր, և Բագրատը օգտվելով Կուրապաղատի ժամանակավոր թուլացումից, թշնամական գործողություններ սկսեց նրա դեմ[36], իսկ Դավիթն օգնություն էր խնդրել Սմբատ Բ-ից։ Հայոց արքան մեծ բանակով, որի կազմում էին իր եղբայր Գագիկի, Կարսի Աբաս թագավորի, Վասպուրականի, Սյունյաց և Աղվանից իշխանների գնդերը, մտավ Ջավախք և միացավ Կուրապաղատի զորքին՝ Դլիվեկ գյուղում։ Գործերի այդպիսի ընթացքը ստիպեց Բագրատին տեղի տալ։ Դավիթը հաշտվեց նրա հետ, բայց պահանջեց զիջել Սմբատին Սակուրեթ ամրոցը[37]։ Միջադեպը կարգավորվեց, սակայն, կարծիք կա, որ հենց այդ քայլը պատճառ դարձավ, որ Դավիթը հրաժարվի Բագրատի օգտին կատարած կտակից[38]։*

* * *

*Հայոց (Անիի) Բագրատունի թագավորների, մյուս հայ ու վրաց գահակալների հետ Տայքի Բագրատունիների սերտ փոխհարաբերությունները մեծ*

---

33 *Տե՛ս* «Император Василий Болгаробойца. Извлечения из летописи Яхъи Антиохийского». Издал, перевел барон В. Р. Розн. стр. 27. Ստեփանոս Տարոնեցի, *էջ 275*։

34 *Տե՛ս* ქართლის ცხოვრება ტ. I, თბილისი, 1955, *էջ 274*։

35 *Նույն տեղում, էջ 277*։ Ստեփանոս Տարոնեցի, *էջ 252—253*։

36 *Տե՛ս М. Лордкипанидзе, նշված աշխատ., էջ 35—36*։

37 Ստեփանոս Տարոնեցի, *էջ 252—253*։

38 *Տե՛ս М. Лордкипанидзе, նշված աշխատ., էջ 36*։

*նշանակություն ունեցան Ատրպատականի ամիրայության X դ. վերջերին ձեռնարկած ռազմական արշավանքները հս մղելիս։*

*Կուրապաղատության վերջին կռիվները արաբների դեմ կապված էին Մրվանյանների հողերին տիրանալու նոր փորձերի հետ։ Այս անգամ հարվածն ուղղված էր դեպի Խլաթ։ Հարձակումը տեղի ունեցավ 997 թ., այսինքն, այն ժամանակ, երբ կուրապաղատության հողերն արդեն կտակված էին հունաց կայսրին։ Միանգամայն հասկանալի է, որ Դավիթը ձեռնամուխ չէր լինի քաղաքի գրավմանը մանավանդ, որ իր մահից հետո այն պիտի անցներ Բյուզանդիային։ Ամենայն հավանականությամբ հարձակումը կատարվել էր կայսրի դրդմամբ։ Որքան շատ քաղաքներ ու մարզեր Դավթին հաջողվեր խլել արաբներից, այնքան շահած կլիներ կայսրությունը։*

*Հարմար ժամանակ ընտրելով, 997 թ. ձմռանը Դավիթը զորք ուղարկեց պաշարելու Խլաթը։ Նրա զինվորները շատ նեղություններ պատճառեցին քաղաքին, բայց գրավել չկարողացան։ Հաջորդ տարվա գարնանը Կուրապաղատի բանակը պարտություն կրեց Մրվանյան ամիրա Աբու Մանսուր Սաիդից և նահանջեց, մեծ զոհեր տալով։*

*Տայոց տիրակալի պարտությունից օգտվեցին արաբ ամիրաները և փորձեցին վերադարձնել Մրվանյաններից խլած շրջանները, առաջին հերթին Ապահունիքը։*

*Ինչպես նախորդ՝ այս հարձակումը ևս գլխավորեց Ատրպատականի ամիրա Մամլանը, 998 թ. հսկայական բանակով նա մտավ Ապահունիք։ Դավթի խնդրանքով նորից օգնության հասան Բագրատունյաց կենտրոնական, Կարսի և Վրաց թագավորությունները։ Դաշնակիցների միացյալ բանակը պարտության մատնեց Մամլանին*[39]*։*

*Այդ դեպքից հետո կուրապաղատությունը գոյատևեց ևս երկու տարի, մինչև Դավթի մահը՝ 1000 թ.*[40]*։ Ստանալով Դավթի մահվան լուրը, կայսրը, որ այդ ժամանակ Կիլիկիայում էր, շտապ ժամանեց Հայաստան և շրջագայեց իր նոր տիրույթները, անցնելով Աղորի, Հարք, Ապահունիք, ապա Տայք և տիրացավ բազմաթիվ գավառների, բերդերի ու քաղաքների։ Եկեղյաց գավառում նրան դիմավորեցին Տայքի ազատները, որոնց նա մեծարեց առատ պարգևներով։ Ներկայացան նաև Բագրատ Գ և նրա հայր թագավոր Գուրգենը ու մեծարվեցին տիտղոսներով (առաջինը՝ կուրապաղատի, երկրորդը՝ մագիստրոսի)։ Բագրատին ցկյանս տրվեց նաև հողային պարգև Դավթի տիրույթներից (այս բաժնեմասի տեղադրությունը ճշտված չէ)։ Տայքում Վասիլը նոր վարչական ապարատ ստեղծեց, տեղերում նշանակվեցին աստիճանավորներ ու դատա-*

---

39 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 268—274։* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 36—37։*

40 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 22։* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 275։ Ուռհայեցու խոսքերով (էջ 38) Դավթին ննջած վիճակում խեղդեց ոմն Իլարիոն եպիսկոպոս։ Որոշ հեղինակների կարծիքով Դավթի սպանությանը մասնակից էին բյուզանդացիները, որոնք շտապում էին ձեռք բերել «ժառանգությունը»։ Համե՛տ.* Հ. Մ. Բարթիկյան, *նշված աշխատ., էջ 86,* Повествование Аристакеса Ластивертци, перевод с древнеармянского К. Н. Юзбашяна, Москва, 1968, стр. 21, 25—26.

վորներ, նախկին իշխանությունը վերափոխվեց բանակաթեմի[41] (ռազմավարչական մարզի)։

Կուրապաղատության անկումով բարդացավ Հայոց ու Վրաց թագավորությունների վիճակը, քանի որ նորաստեղծ բանակաթեմը դարձավ նրանց վրա հարձակվելու հենակետ[42]։ 1000 թ. տեղական գահակալների հանդիպումը կայսեր հետ, որին ներկայացել էին նաև Կարսի ու Վասպուրականի թագավորները ու Նըփըրկերտի ամիրան, մի փորձ էր, թեև ապարդյուն, հեռացնելու վերահաս վտանգը։ Բայց դրությունը Տայքում դեռ կայուն չէր, այստեղ ամբողջ ազնվականությունը չէ, որ հաշտվեց անկախության կորստի հետ, նա շարունակեց պայքարը կայսրության նվաճողական քաղաքականության դեմ, դաշնակցելով Վրաց թագավորության հետ։ 1015—1016 թթ. բուլղարների դեմ մղած պատերազմներից հետո, 1021 թ. Վասիլ կայսրը եկել էր Հայաստան լուծելու Վասպուրականի հարցը։ Նույն այդ ժամանակ Կարինից նա դիմել էր վիրա-ափխազաց Գեորգի Ա թագավորին (որն իրեն համարում էր Դավթի ժառանգորդը), պահանջելով հնազանդություն, սակայն վերջինս դրա փոխարեն այրել էր Ուղթիքի դաստակերտները, առանց բնակչությանը վնաս պատճառելու[43]։ Սկսվեց պայքարի վճռական փուլը և վեճը լուծվեց հօգուտ Բյուզանդիայի։ 1021 թ. Պաղակացիս (Չըլդըր) լճի մոտ և 1022 թ. Արշարունիքի Շղփա վայրում Գեորգին երկու ծանր պարտություն կրեց և հաշտություն խնդրելով կատարեց կայսեր պահանջը[44]։

Այսպիսով, 1022 թ. կայսրության հակառակորդները Տայքում վերջնականապես պարտվեցին, և նոր ըմբոստություններ չեղան։ Նվաճված հողերում կայսրությունը տարբեր եղանակներով (բռնությամբ կամ սիրաշահելով) ստիպում էր տեղական իշխաններին հրաժարվել սեփական կալվածքներից և անցնել Բյուզանդիա՝ զինվորական ծառայության[45]։

1045 թ. Բագրատունյաց Կենտրոնական թագավորության հողերի գրավումից հետո բյուզանդական արքունիքը ստեղծեց Արմենիա կատեպանությունը, նրա հետ Տայքը (Իբերիա բանակաթեմը) մի վարչական միավոր կազմեց, որի կենտրոնը դարձավ Անի քաղաքը և այնուհետև կոչվեց «Արմենիա և Իբերիա» բանակաթեմ։ Այդ վիճակում Տայքը մնաց մինչև բյուզանդական տիրապետության վախճանը։ Այսպիսով, հաստատվելով Հայաստանի հյուսիս-արևմտյան կողմերում, Բյուզանդիան հենարան ունեցավ հետագա առաջխաղացման համար։

Հայաստանի հյուսիս-արևմտյան գավառներում առաջացել էին մի շարք քաղաքներ՝ Կարինը, Արծնը, Երզնկան, Բաբերդը, որոնք արհեստա-

---

41 Տե՛ս Ստեփաննոս Տարոնեցի, էջ 275—278։ Արիստակես Լաստիվերտցի, էջ 22—24, Яхъя Антиохийский, стр. 41.

42 Տե՛ս Н. Скабаланович, Византийское государство и церковь в XI в., стр. 201։ Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հ. Գ, էջ 17։

43 Արիստակես Լաստիվերտցի, էջ 28—29։

44 Նույն տեղում, էջ 29, 37—38։ Е. Такайшвили, «Три хроники», Тифлис, 1900, стр. 162—168. Գեորգիի դաշնակիցն էր նաև Հայոց Հովհաննես-Սմբատ թագավորը (տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Գ, էջ 19—21)։

45 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 41—42։ Ստեփաննոս Տարոնեցի, էջ 278։ Яхъя Антиохийский, стр. 41.

*գործության, առևտրի ու մշակույթի նշանավոր կենտրոններ էին։ Այդուհանդերձ հիշյալ գավառների բնակչությունը զբաղվում էր գերազանցապես գյուղատնտեսությամբ՝ հացահատիկային կուլտուրաների մշակությամբ, այգեգործությամբ և անասնապահությամբ, որոնց համար կային նպաստավոր բնա-կլիմայական պայմաններ։ Բազմաթիվ գետակների ու վտակների ջրերը օգտագործում էին ոռոգման համար։ Խաղողի այգիներից բացի այդտեղ կային մրգատու՝ խնձորի, տանձի, ձիթապտղի այգիներ։ Աճում էին նաև թուզը, նուշը, սերկևիլը, նուռը և այլն[46]։*

*Լեռնային սիզավետ արոտավայրերը նպաստում էին անասնապահության զարգացմանը։*

*Տայքը հարուստ էր օգտակար հանածոներով, այստեղ Բող և Փառանգիոն կոչվող բերդերի շրջանում դեռևս հնում արդյունահանվում էր ոսկի[47]։ Երկրամասը հարուստ էր նաև շինանյութերով, որոնք լայնորեն օգտագործվում էին շինարարության, մանավանդ ռազմական նշանակություն ունեցող բերդերի-ամրոցների կառուցման համար։*

---

46 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 110։*

47 *Տե՛ս Procop*, De bello pers., I, 15, p. 18. Ղազար Փարպեցի, *Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1907, էջ 256—257։*

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

# ՍՅՈՒՆԻՔԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

*IX դարի երկրորդ և X դարի առաջին կեսերին Սյունյաց իշխանությունը հանդիսանում էր հայ Բագրատունիների թագավորության հավատարիմ վասալը, քանի որ անմիջականորեն սահմանակից լինելով Ատրպատականի արաբական ամիրայությանը, Սյունիքը զգում էր Բագրատունիների զորեղացած թագավորության հովանավորության անհրաժեշտությունը։ Բացի այդ՝ Սյունիքը, հատկապես Գեղամա լճի ավազանը և գահերեցներին պատկանող Վայոց ձորն ու մյուս կալվածները, ավելի ու ավելի էին ներառնվում Այրարատի և Շիրակի տնտեսական ոլորտի մեջ, որը բարերար ազդեցություն էր ունենում նրանց քաղաքական փոխհարաբերությունների վրա։ Ոչ պակաս կարևոր դեր էր խաղում նաև Հայ Բագրատունիների ճկուն և հովանավորական քաղաքականությունը Սյունյաց իշխանական տների նկատմամբ։*

*Սակայն, ավատական կարգերի հետագա զարգացման ու խորացման, ինչպես նաև արտաքին ուժերի միջամտության հետևանքով, դեռևս IX դարի վերջերից, թեկուզ և թույլ ձևով, իրենց զգացնել են տալիս Սյունիքի կենտրոնախույս ուժերը, որոնք ավելի ու ավելի վտանգավոր են դառնում X դարի կեսերից սկսած։ Սյունիքը, լինելով լեռնային մի երկրամաս, իր տնտեսական զարգացմամբ որոշ չափով ետ էր մնում Հայաստանի կենտրոնական նահանգներից։ Իսկ երբ Դվինից հարավ-արևելք ընկած շրջանում Արաքսի հովիտն ընկավ արաբական ամիրայությունների ձեռքը, նրա տնտեսական կապերը Հայաստանի կենտրոնական նահանգների հետ նկատելիորեն թուլացան և որոշ չափով նպաստեցին նրա անջատողական ձգտումներին։ Վերոհիշյալ գործոններին եկան միանալու նաև հայ Բագրատունիների թագավորության ռազմական և քաղաքական տկարացումը, ամբողջ Հայաստանը Բագրատունիների թագավորության մեջ միավորելու գործի անհաջողությունը և Վասպուրականի թագավորության առաջացումը, որոնց շնորհիվ այդ ձգտումներն առավել որոշակի ի հայտ եկան և հանգեցին Սյունյաց թագավորության հաչակմանը։*

*Դեռևս 890-ական թվականներին, լքելով Սմբատ արքային, Սյունյաց Վասակ Իշխանիկը հպատակվել էր Ատրպատականի ոստիկան Աֆշինին։ Սակայն, երբ վտանգն անցել էր, Վասակը կրկին ճանաչեց հայոց արքայի գերիշխանու-*

թյունը։ Հավանաբար այդ տարիներին Վասակը նույնիսկ թագ էր ստացել Աֆշինից, բայց Ստեփանոս Օրբելյանը վկայում է. «Մեծարէ Աֆշինն զՎասակ Սիւնի թագ կապեալ. և նա ոչ կամեցաւ ապստամբական անուն ժառանգել»[1]։

Պառակտման նոր առիթը Նախճավանի հարցը եղավ, երբ Ապահունիքի կայսիկների անհնազանդությունը 902 թ. ճնշելուց հետո Սմբատ Ա-ը Նախճավան քաղաքն իր շրջակայքով հանձնեց Վասպուրականի իշխանին։ Սյունիքը զրկվում էր շատ կարևոր տիրույթից, ուստի մի տարի անց Սյունյաց Սմբատ իշխանը գժտվեց թագավորից. «Եւ եղև ի գալ միւսոյ տարոյն՝ Սմբատ իշխանն Սիւնեաց ի բաց եկաց ի հնազանդութենէ թագաւորին Հայոց, արգել առնելով հարկացն տալ թագաւորին, թևակոխելով Պարսից բռնաւորին հատուցանել զհարկս և զհաս...»[2]։ Բայց գտնվելով Սմբատ Ա-ի և Վասպուրականի իշխանի զորքերի Սյունիք ներխուժելու սպառնալիքի ներքո և գիտակցելով իր թուլությունը, Սմբատ Սյունին կրկին հնազանդվեց հայոց թագավորին[3]։

Սյունյաց Սմբատ իշխանի կյանքի վերջին տարիներին նկատվում էր գահերեց իշխանության թուլացում և Բաղքի գահակալ իշխանների քաղաքական ու տնտեսական զորեղացում։ Այս բանը իրեն առավել զգացնել է տալիս X դարի 70—80-ական թվականներին։ Սմբատի մահից հետո, որը տեղի ունեցավ 942—949 թթ. միջև ընկած շրջանում, նրան հաջորդում է որդին՝ Վասակը, որը հորից ժառանգեց գահերեցությունը, Վայոց ձորն ու Ճահուկը և հավանաբար որոշ տիրույթներ հարակից գավառներում։ Չնայած այն հանգամանքին, որ գահերեցության իրավունքը ավելի ու ավելի անվանական էր դառնում, Վասակը դեռևս նկատելի ազդեցություն ուներ Սյունիքի մեծ մասում։ Վասակի տիրակալության շրջանը, սակայն, թաղված է մշուշի մեջ։ Ստ. Օրբելյանի մի վկայությամբ նա իշխել է երկար տարիներ և կատարել բազմաթիվ գործեր[4]։

Ինչպես երևում է Սյունյաց գահերեց իշխանը նույնպես մասնակից է եղել Արաքսի հովտում տեղի ունեցած կարևոր քաղաքական իրադարձություններին։

Հարկ է նշել, որ Դվինի և նրանից հարավ-արևելք ընկած Արաքսի հովտի համար պայքարը, հայկական պետության և արաբական ամիրայությունների միջև, բախտորոշ նշանակություն ունեցավ Սյունիքի անջատական ձգտումների համար։

Տիրելով Դվինին ու նրանից հարավ ընկած Արաքսի հովտին, Սալարյանները X դարի կեսերին կարողացան զգալի ազդեցություն ձեռք բերել Հայաստանում։ Աշխարհագրագետ Իբն-Հաուկալի վկայությամբ Մարզուբանի վեզիր Աբու-լ-Կասիմ Ալի իբն Ջաֆարը հիջրայի 344 թ. (955/956) կազմել էր մի հարկացուցակ, որտեղ նշված էին Մարզուբանի վասալների անունները և հարկաչափը[5]։ Հայաստանում նրա վասալներն էին Վայզուրի տեր Աբու-լ-Կասիմ ալ-

---

1 Ստ. Օրբելյան, էջ 299։

2 Թովմա Արծրունի, էջ 396—397։

3 Տե՛ս նույն տեղում, էջ 397—398։

4 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 299. «Վասակ՝ որդի Սմբատայ, յետ բազում իշխանութեանց և գովելի գործոց մեռանի»։

5 Տե՛ս СМОМПК, вып. XXXVIII, стр. 104—106.

Վայզուրին, Դայրանի (Դերենիկի) որդիները, Սմբատի որդիները և Խաչենի տեր Սենեքերիմը (Սենեքերիմ)։ Իրավացի ենթադրվում է, որ Վայզուրը Վայոց ձորն է, իսկ Աբու-լ-Կասիմ արաբական մականվամբ իշխանը, ըստ երևույթին, Սյունյաց Սմբատ գահերեցի որդի Վասակը[6]։ Հարկացուցակից երևում է, որ Սյունիքը ավելի մեծ կախման մեջ էր Սալարյաններից, քան Վասպուրականը կամ Արցախը։ Վայզուրի իշխանը պարտավոր էր վճարել 50.000 դինար և տալ նվերներ[7], որն անշուշտ, հավաքվում էր ողջ Սյունիքից, որովհետև հազիվ թե Վայոց ձոր գավառը ի վիճակի էր այդչափ հարկ վճարելու։

Աշոտ Գ Ողորմած թագավորը 953 թ. Դվինը գրավելու անհաջող փորձից հետո, ըստ երևույթին, նոր քայլեր է կատարում նրան տիրելու ուղղությամբ։ Մեզ են հասել Աշոտ Ողորմածի հրովարտակը Նախճավանից ոչ հեռու գտնվող սուրբ Ստեփանոս Նախավկայի վանքին կալվածներ նվիրելու մասին[8], Խաչիկ կաթողիկոսի հաստատության գիրը Աշոտ թագավորին՝ Նախավկայի վանքին նվիրած կալվածների վերաբերյալ[9] և Աշոտ Գ շահնշահի դուստր Հռիփսիմեի ընծայագիրը նույն վանքին[10]։

Ինչպես վկայում են այդ փաստաթղթերը, 976 թ. զորքով Մաղարդա Սուրբ Ստեփանոս Նախավկայի վանքն է գալիս Աշոտ Գ Ողորմածը և վանքին նվիրում ընդարձակ կալվածներ շրջակա Նախճավան, Ոստան և այլ գավառներում։ Այս փաստը չի կարելի մեկնաբանել այլ կերպ, քան Դվինից հարավ ընկած Արաքսի հովիտը Բագրատունյաց թագավորությանը միացնելու կամ նվազագույնը՝ նրա գերիշխանությանը ենթարկելու իրողություն։ Ստ. Օրբելյանը, թվարկելով Բագրատունյաց թագավորների անմիջական կալվածները, չի հիշատակում այս շրջանները։ Վերջապես, ինչպես երևում է հրովարտակից, թագավորը կալվածները գնել էր և նոր միայն նվիրել վանքին[11]։ Թե երբ էր Հայոց շահնշահին հաջողվել իր գերիշխանությունը հաստատել այս շրջաններում, դժվար է ասել, բայց կարելի է կարծել, որ այդ տեղի է ունեցել 70-ական թվականների սկզբին։ Այսպիսով, իրեն ենթարկելով Արաքսի հովտի արաբական ամիրայությունները և բազմաթիվ այլ գավառներ, Աշոտ Գ-ը իր թագավորության սահմանները հասցնում է մինչև Սալմաստ, Զարևանդ, Դարաշամբ (Շամբիձոր) և

---

6 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 173։

7 Տե՛ս СМОМПК, вып. XXXVIII, стр. 105: «Абу-Касима, Вейдзурийца, правителя Вейдзура, он обязал на 50000 динаров и дары».

8 Տե՛ս Հայր. Աբրահամյան, Կալվածագրեր և տնտեսական այլ գործարքների վերաբերյալ արխիվային վավերագրեր, պրակ Ա, էջ 3—5։ Սույն և հաջորդ վավերագրերը տպվել են «Կռունկ հայոց աշխարհին» ամսագրում (1861, № 5, էջ 636—638), սակայն սխալներով և թերի։

9 Տե՛ս նույն տեղում, էջ 5—7։

10 Տե՛ս նույն տեղում, էջ 9—10։ Որոշ ուսումնասիրողներ կասկածի տակ են առել այդ փաստաթղթերի վավերականությունը, համարելով դրանք հետագայում հարմարեցված վավերագրեր, սակայն դրանք թերևս պատմական իրողություն արտահայտող փաստաթղթերի պատճեններ են, մեզ հասած որոշ աղավաղումներով։ Այդ առթիվ տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 176։

11 Տե՛ս Հայր. Աբրահամյան, Կալվածագրեր, պրակ Ա, էջ 3. «զայն ես գնեցի, ոչ թէ բռնութեամբ կամ հարկաւ, այլ սիրով և պարգեւուք»։

*Մարանդ*[12]*։ Աշոտ Գ-ի այս խոշոր, բայց ժամանակավոր հաջողությունը կրկին ամրապնդեց Հայ Բագրատունիների գերիշխանությունը Սյունիքում, որն արդեն սկսել էր ձևական բնույթ ստանալ։ Նույ այս հաջողությամբ կարելի է բացատրել այն հանգամանքը, որ հայոց թագավորն ի վիճակի եղավ բյուզանդական Չմշկիկ կայսեր դեմ դուրս բերել 80.000-անոց բանակ, որովհետև նրա դրոշի տակ հանդես էին գալիս Հայաստանի համարյա թե բոլոր արքայիկներն ու իշխանները, դրանց թվում և Սյունյաց գահերեց իշխան Վասակն իր զորքերով։ Վասակը դեռևս ողջ էր և նա է հիշատակված 976 թ. ընծայագրի մեջ և ոչ թե մի ուրիշ Վասակ*[13]*։*

*Սյունյաց գահերեց Վասակի ողջ լինելը 976 թ. բացառում է տարածված այն տեսակետը, թե Սյունյաց թագավորությունը ստեղծվել է 970 թ.։ Վասակը մինչև իր մահը, որը, հավանաբար, տեղի է ունեցել 976—980 թթ. միջև, եղել է սոսկ գահերեց իշխան։ Նրանք, ովքեր Սյունյաց թագավորության հռչակումը դնում են 970 թ., հիմք են ընդունում, ամենայն հավանականությամբ, այն փաստը, որ Մատթեոս Ուռհայեցու հաղորդման համաձայն 974 թ.՝ դեպի Հայաստան շարժվող Չմշկիկ կայսեր առաջընթացը կասեցնելու համար հայկական 80.000 բանակի կազմում իր զորախմբով գտնվում էր նաև Կապանի Փիլիպե թագավորը*[14]*։ Ուսումնասիրողները կարծել են, որ Կապանի Փիլիպե թագավորը Սյունյաց թագավոր Սմբատն է, ուստի և թագավորության հիմնադրումը դրել են 970—973 թվականների միջև ընկած շրջանում։ Մինչդեռ հենց նույն Մատթեոս Ուռհայեցու այլ վկայություններից*[15] *պարզվում է, որ այս տեղեկությունը վերաբերում է ոչ թե Սյունյաց թագավորին, այլ Արցախի արքայիկներից մեկին*[16]*։*

*Վասակ գահերեցն ուներ երկու որդի՝ Սմբատ և Գագիկ*[17]*․ Սակայն նրա մահից հետո գահերեցությունն անցնում է Բաղքի իշխան Սահակի որդի Սմբատ իշխանին. «Իսկ Վասակ՝ որդի Սմբատայ, յետ բազում իշխանութեանց*

12 *Տե՛ս նույն տեղում, էջ 6. «Եւ ետու հնձէքս և հայրենիքս և դաս(տ)այկերտ և ընծայումն հին Մաղարդեվանաց սուրբ Ըստեփանոս Նախավկային... անդառնալի և բարձր հրամանաւ մերով՝ թէմ և վիճակ, .... նախ և առաջին՝ խոյակապ և հռչակաւոր մայրաքաղաքն Նախչուան, ի Կոկ գաւառն բոլորովին. ի Խոյ որ է Զարևանդ գաւառն և ամենայն վիճակն իւր բոլորովին մինչի Նուան ի Ղարա Դարայն, որ բաժանի առաքելոց յերկրէն և գնայ մինչև ի Ղարայ Թափան և բաժանի ի Սալմաստայ ի յՆրասխայ մինչև ի Մարանդայ գիրիւէն, Մարանդ իւր վիճակովն փշրին թալն իւր երկրովն, գնա մինչի դըղյակն Խոստրովու, ի յԱղստ և ի գիրեան ի Ջուղայ և իւր վանքն, ի յԱստապատ և իւր վանքն, ի Շամպ և իւր վանքն, ի Ջաղաստեղն, ի յԱբարքն և իւր վանքն և յամենայն դիտայպաւացդ յարևելից և յարևմտոյ. տուաք ընծայ և հայրենիք...»։ Հիշատակվող «Կոկ» գավառը, ըստ երևույթին, ոչ թե Կոգովիտն է, այլ Ներկայիս Խոյը իր շրջակայքով։*

13 *Տե՛ս նույն տեղում, էջ 7։*

14 *Տե՛ս* Մատթէոս Ուռհայեցի, *էջ 17։*

15 *Տե՛ս նույն տեղում, էջ 3—4. «... կոչեցին զՓիլիպպոս զթագաւորն Աղուանից՝ զայր աստուածային և զսուրբ, զորդին Գողազգակայ որդւոյ Վաչագանայ, որք էին թագաւորք Աղուանից աշխարհացս»։ Շփոթ առաջացնելով Մ. Ուռհայեցին մեկ այլ տեղում Փիլիպպոս կամ Փիլիպպե թագավորին կոչում է Կապանի թագավոր (էջ 17)։*

16 *Տե՛ս այդ մասին մանրամասն՝* Բ. Հարությունյան, *Սյունյաց թագավորության հիմնադրման տարեթիվը, «Բանբեր Երևանի համալսարանի», 1969, № 1, էջ 146—149։*

17 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 329։*

և գովելի գործոց մեռանի. և տիրէր համագունդ աշխարհիս Սիսական Սմբատ՝ որդին Սահակայ, գահերէց իշխանութեամբ»[18]։

Հավանաբար Վասակի որդիներն ընդունում են Սմբատի գահերեց իշխանությունը և շարունակում իշխել իրենց կալվածներում որպես սովորական իշխաններ։ Ուրեմն, 970-ական թվականների վերջին կամ 980-ականի սկզբին Սյունիքի քաղաքական կենտրոնը Վայոց ձորից տեղափոխվում է Բաղք։

Սալարյան Աբու-լ-Հայջայից կրած պարտությունից հետո Հայոց թագավոր Սմբատ Բ-ի դիրքերը բավական թուլացան։ Այս քաղաքական իրադրության պայմաններում կրկին իրենց զգացնել տվին Սյունիքի անջատողական ձգտումները։ Սյունիքի մեծ մասին տիրացած Սմբատ գահերեց իշխանը, Ատրպատականի ամիրայի օժանդակությամբ, X դարի 80-ական թվականներին իրեն հռչակում է թագավոր։ «Թագ կապեն գեղեցկահասակ և վայելչադիտակ առնն հայկազնոյ Սմբատայ՝ Սիւնեաց տեառն»[19]։ Ստ. Օրբելյանը շատ լավ հասկանալով, որ դա Բագրատունյաց կենտրոնական իշխանության կամքին հակառակ և նրա դեմ ուղղված քայլ էր, փորձել է մեղմացուցիչ հանգամանքներ գտնել. «Եւ զի յայնմ ժամանակի Բագրատունիքն իշխէին միայն Շիրակայ և Այրարատու մինչ ի Գեղամ և մինչ ի Ուխտիսն և մինչ ի Կարին և մինչ ի Վասպուրականի սահմանն և մինչ ի Ձորոյ գետն և մինչ ի Գարդման. և Սիւնիք կտրեալ էր ի նոցանէ, վասն որոյ ոչ ինչ քրէական մեղս համարեցաւ Սմբատ...»[20]։ Սույն վկայության առթիվ իրավացի նշված է, որ Սյունյաց պատմիչը ցուցաբերում է աչառու վերաբերմունք[21]։ Ճիշտ է, Արաքսի հովիտը մահմեդական ամիրայությունների ձեռքն ընկնելուց հետո Սյունիքն արդեն ինչ-որ չափով կտրված էր Բագրատունիների կալվածներից, սակայն այն սահմանակից էր այդ ժամանակ Բագրատունիների թագավորության մեջ մտնող Գեղամա երկրին։ Հետևաբար պետք է ենթադրել, որ Սմբատ Սահակյանն[22] իրեն թագավոր կարող էր հռչակել մի ժամանակ, երբ Հայաստանը, մասնավորապես Բագրատունիների թագավորությունը, ենթարկված լիներ արտաքին ծանր վտանգի։

Ստ. Օրբելյանի այն հաղորդումը, թե արդեն մինչև Սյունյաց թագավորության ստեղծումը Բագրատունիների կալվածների հյուսիսային սահմանը հասնում էր մինչև Ձորագետ, խոսում է անուղղակիորեն այն մասին, որ Լոռու թագավորությունը (կամ սկզբնական շրջանում իշխանությունը) ստեղծվել է Սյունիքի թագավորությունից առաջ։ Թերևս Սմբատը թագադրվել է Աբու-լ-Հայջայի 982 թ. արշավանքի ժամանակ։ Սակայն դա պակաս հավանական է թվում։ Իրենց մայրամուտն ապրող Սալարյաններն այլևս Ատրպատականում մեծ ուժ չէին ներկայացնում։ Պետք է ենթադրել, որ Սմբատի թագադրությունը տեղի ունեցավ 987 թ., երբ Ատրպատականում իշխանության գլուխ բարձրացած Ռավվադյաններից Աբու-լ-Հայջան հարյուրհազարանոց բանակով հար-

---

18 Ստ. Օրբելյան, էջ 299։

19 Նույն տեղում, էջ 300։

20 Նույն տեղում։

21 Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 214—215։

22 Միջնադարում ընդունված ձևով՝ Սահակյան նշանակում է որդի Սահակի։

*ձակվեց Աբու-Դուլաֆի վրա և գրավեց նրան պատկանող Դվինն ու նրանից հարավ ընկած Արաքսի հովիտը, որը վերջինս խլել էր Սալարյան Աբու-լ-Հայջայից[23]։ Դվինը գրավելուց հետո նա Սմբատ Բ շահնշահից պահանջեց անցած տարիների հարկը, որն ստանալուց հետո ետ վերադարձավ։ Նման պարագաներում Սմբատ Բ-ը ոչնչով չէր կարող խանգարել այն բանին, որ անջատման ձգտող Սմբատ Սահակյանը թագ ստանար Ատրպատականի աթաբեկից, որը կամենում էր դրանով թուլացնել հայկական պետականությունը, իսկ Առանի կամ Ռնայ ամիրան, այսինքն Գանձակի տիրակալը, ուներ նույն խնդիրները։*

*Ստեփանոս Օրբելյանն ամեն կերպ դրվատում է Սյունյաց թագավորության հիմնադրումը և, հավանաբար, արտահայտելով իր ժամանակին Սյունիքում իշխող մտայնությունը, ասում է, թե հայոց ազգի աջ բազուկ սյունեցիները «թագ կապեցին ընդդէմ չարին»[24], այսինքն օտարներին դիմագրավելու համար։ Ստ. Օրբելյանը չափազանցում է ասելով, թե. «Արդ՝ թագ կապեալ Սմբատայ ճոխ և երևելի փառօք յարգարէր զարքայութիւնն ըստ օրէնի ինք-*նակալ թագաւորաց»[25]։ *Սյունյաց Սմբատ արքան սկզբնապես ինքնուրույն էր, սոսկ Բագրատունյաց թագավորների նկատմամբ և այն էլ՝ շատ կարճ ժամանակով։*

*Ինչ վերաբերում է «...յարդարէր զարքայութիւնն ըստ օրէնի ինքնակալ թագաւորաց» արտահայտությանը, ապա պետք է ենթադրել, որ Սմբատ Սահակյան թագավորի օրոք ձևավորվում է պետական կարգը, ստեղծվում են գործակալություններ, պետական պաշտոնեություն, կարգի է բերվում բանակը, հիմնվում են դատարաններ։ Մեզ տեղեկություններ են հասել իշխանաց իշխանի պաշտոնի վերաբերյալ։ Սակայն, ի տարբերություն հայ Բագրատունիների թագավորության, որտեղ իշխանաց իշխանը կարգավորում էր ավատատերերի միջև եղած վեճերը և գլխավորում իշխանների հավաքը[26], Սյունիքում վերջինիս գլխավոր պարտականությունը «ազատակույտ զորաց» գլխավոր հրամանատար լինելն էր[27]։*

*Սյունիքի թագավորություն հռչակելուց շատ չանցած քաղաքական իրադրությունը փոփոխվեց։ 988 թ. մահացավ Աբու-լ-Հայջա Ռավվադյանը։ Դրանից օգտվելով Գողթնի ամիրա Աբու-Դուլաֆը կրկին տիրեց Դվինին ու նրանից հարավ ընկած մերձարաքսյան հողերին և Խաչիկ կաթողիկոսի միջնորդությամբ դաշն կնքեց Սմբատ Բ շահնշահի հետ[28]։ Կորցնելով Ատրպատականի տիրակալի հովանավորությունը և շրջապատված լինելով Հայոց թագավոր Սմբատ Բ-ի ու նրա դաշնակից Գողթնի ամիրայի տիրույթներով, Սմբատ Սահակյանը մի ելք ուներ՝ ճանաչել Սմբատ Բ շահնշահի վերադաս*

---

23 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 198։*

24 *Տե՛ս «Ստեփաննոս Օրպէլեան, Ողբ ի ս. Կաթուղիկէն», էջ 87։*

25 Ստ. Օրբելյան, *էջ 300—301։*

26 *Տե՛ս* Ս. Պ. Պողոսյան, *Հայ ժողովրդի պատմություն, հատ. 2 (IX—XVIII դդ.), էջ 49—50։*

27 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 301։*

28 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 200—201։*

իրավասությունը Սյունիքի նկատմամբ։ Դրա վառ ապացույցն այն է, որ Սյունյաց զորքերը հայկական բանակի կազմում մասնակցում են աբխազաց թագավորի դեմ Տայքի կուրապաղատ Դավթի, Հայոց Սմբատ Բ թագավորի և վրաց Բագարատ Բ թագավորի կազմակերպած արշավանքին, որը տեղի ունեցավ 988 թ.[29]։

Սմբատ Բ արքայի մահից հետո նրան հաջորդած Գագիկ Ա-ը ակտիվ պայքար մղեց կենտրոնախույս ուժերի դեմ և ամրապնդեց Անիի թագավորությունը։ Հասկանալի է, որ նա չէր կարող անտարբեր անցնել Սյունիքի անջատողական ձգտումների կողքով։ Խոսելով Գագիկի մասին, Ասողիկը որոշակի գրում է. «Եւ տիրեաց նա յոլով բերդից և գաւառաց ի սահմանացն Վայոց ձորոյ, Խաչենոյ և Փառիսոսոյ՝ առաւել քան զեղբայր իւր»[30]։

Կարելի է ենթադրել, որ Սմբատ Բ-ի մահից հետո Սյունյաց Սմբատ թագավորը Դավիթ Անհողինի նման անհնազանդություն է ցուցաբերել, որը առիթ է տվել Գագիկ արքային արշավելու Սյունիք և Սյունյաց տիրույթից խլելով՝ իր թագավորությանը միացնել Վայոց ձորը, Ճահուկը, Ծղուկք գավառի մի մասը (Ալլախ գավառ) և մի շարք այլ շրջաններ։ Այդ գավառներն իրենց աշխարհագրական դիրքով շատ կարևոր էին Բագրատունյաց թագավորության համար և որ Գագիկ Ա-ը իրոք գրավել էր դրանք երևում է այն բանից, որ հետագայում, թագավորության գոյության ամբողջ ընթացքում, չկա ոչ մի ուղղակի կամ անուղղակի վկայություն այն մասին, թե Վայոց ձորն ու Ճահուկը եղել են Սյունյաց թագավորության կազմում[31]։

Այս արշավանքի ժամանակը որոշակի հայտնի չէ, սակայն, հավանաբար, այն տեղի է ունեցել 990—992 թթ. այսինքն Գագիկ Ա-ի թագավորության առաջին տարիներին[32]։ Արշավանքի արդյունքն այն եղավ, որ Վայոց ձորը, Ծղուկքի մի մասը, Աղահեճքը, Ճահուկը քաղաքական և տնտեսական սերտ կապերով կապվեցին Այրարատի ու Բագրատունյաց թագավորության այլ մարզերի հետ։ Դրա հետևանքով խիստ մեծացավ Դվին—Պարտավ ճանապարհի նշանակությունը։ Այս ճանապարհը, որն անցնում էր Վայոց ձորով, վերածվեց տարանցիկ առևտրի խոշոր ուղու։ Սյունյաց տերը այժմ չէր էլ մտածում հանդես գալ Հայոց թագավորի դեմ, որովհետև Գագիկ Ա-ը, տիրանալով նաև Դվինին և Արաքսի հովտին, աքցանի մեջ էր վերցրել Սյունյաց թագավորի տիրույթները[33]։

Այս արշավանքից հետո Սյունյաց թագավորությունը ամփոփվեց որոշակի սահմանների մեջ, որոնք պահպանվեցին՝ համարյա առանց մեծ փոփոխությունների, մինչև XII դարի սկիզբը։ Հարավ-արևելքում թագավորության

---

29 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 252—253։

30 Նույն տեղում, էջ 256։

31 Տե՛ս Թ. Խ. Հակոբյան, Սյունիքի թագավորությունը պատմա-աշխարհագրական առումով, էջ 63։

32 Որ 990 թ. դեռևս Վայոց ձորը գտնվում էր Սյունյաց թագավորության կազմում, պարզորոշ երևում է Ազիզբեկովի շրջանի Հերհեր և Կարմրաշեն գյուղերի միջև ընկած հին գյուղատեղիի խաչքարերից մեկի արձանագրությունից՝ «Թ(Վ)։ ՆԼԹ (990) Ի թագաւորութեան Սմբատա որդո Վասակի կանգնեցաւ...» (տե՛ս «Դիվան հայ վիմագրության», հատ. Գ, էջ 41)։

33 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 177—182։

*սահմանը հասնում էր մինչև Հագարի գետը[34], իսկ հյուսիս-արևելքում, հավանաբար, մինչև Արցախի լեռների ջրաբաժանը[35]։ Թագավորության հյուսիսում սահմանն անցնում էր Բռնակոթից հյուսիս-արևմուտք ընկած ջրաբաժանով, այնուհետև թագավորության մեջ առնելով Սյունիք բնակավայրը (այժմ՝ Սիսիանի Տեղ գյուղը), այն հասնում էր Արցախի լեռնաշղթան՝ հատելով Հագարի գետը։ Արևմուտքում սահմանն իջնում էր հարավ՝ Սյունյաց լեռների (Զանգեզուրի լեռնաշղթա) ջրաբաժանով, իր մեջ էր վերցնում Երնջակ գավառի մեծ մասը, Շոռոթ նշանավոր բնակավայրը և կրկին Սյունյաց լեռների ջրաբաժանով հասնում մինչև Երասխ գետը։*

*Թեև Երնջակը X դարի սկզբին գրավվել էր Գողթնի ամիրայության կողմից, բայց, ինչպես երևում է, նույն դարի վերջին կրկին մտել էր Սյունիքի մեջ։ Աշոտ Գ և Գագիկ Ա, տիրանալով Արաքսի հովտին, այդ նշանավոր ամրությունը, անկասկած, չէին թողնի օտար իշխանությունների ձեռքին։ Դրա օգտին է խոսում նաև այն հանգամանքը, որ Երնջակից շատ հեռու Շոռոթ բնակավայրը գտնվում էր թագավորության մեջ[36]։ Ինչ վերաբերում է թագավորության հարավային սահմանին, ապա այն խիստ որոշակի էր և անցնում էր Երասխ գետով։*

*Տասնմեկ տարի թագավորելուց հետո Սյունյաց Սմբատ թագավորը 998 թ. մահացավ և թաղվեց Տաթևի վանքում։*

*Նրա կին Շահանդուխտը իր ամուսնու «հոգու փրկության» համար 998 թ.[37] Տաթևի վանքին է նվիրում Հաբանդ գավառի Տեղ գյուղը, որից կարելի է եզրակացնել, որ նա այդ թվականին այլևս կենդանի չէր[38]։*

*Սմբատ արքային հաջորդեց որդին՝ Վասակը, որը «… մեծահանդէս ժողովով և ազատակոյտ բազմութեամբ օծանի թագաւոր Սիւնեաց և Բաղաց ձեռամբ Տեառն Գրիգորի՝ Սիւնեաց եպիսկոպոսի»[39]։ Նա իր եղբորը՝ Սևադային, դարձնում է իշխանաց իշխան, իսկ նրանց մայրը՝ Շահանդուխտը դառնում է երիտասարդ թագավորի խնամակալը[40]։ Վասակ արքայի իշխանության տարիներին Սյունիքը մի քանի տասնամյակ շարունակ խաղաղություն էր վայելում և բարգավաճում էր։*

*Վասակ թագավորի օրոք վերստին հզորացավ Տաթևի եպիսկոպոսապետությունը, որը խիստ թուլացել էր գյուղացիական շարժման և X դարի կեսերին հայոց Անանիա Մոկացի կաթողիկոսի բանադրանքի ու նրա կողմից եպիսկոպոսարանը ավերելու հետևանքով առաջացած անիշխանությունից։ Շատ տեղերում, ստանալով գավառների գահակալ իշխանների կամ օտար նվաճող-*

---

34 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 197։*

35 *Տե՛ս* Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը X դարի վերջին և XI դարի սկզբին, տե՛ս «ՀՍՍՌ ատլաս», քարտեզ 105։*

36 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 307—308։*

37 *Տե՛ս նույն տեղում, էջ 292—293։*

38 *Մեկ այլ տեղեկությունից պարզվում է, որ Սմբատ թագավորը մահացել է Հակոբ եպիսկոպոսի հովվության տարիներին* (Ստ. Օրբելյան, *էջ 293—294), իսկ վերջինս, որոշակիորեն հայտնի է, որ Սյունյաց եպիսկոպոսության գլուխ է կանգնել 998 թ.։*

39 Ստ. Օրբելյան, *էջ 301։*

40 *Տե՛ս նույն տեղում, էջ 301, 293. «Ես վասն առաւել հաստատութեան գրեցի իմ ձեռօքս զայս վճիռս ես Վասակ՝ որդի Սմբատայ թագաւորի,* հրամանաւ իմ մօրս...»։

ների օժանդակությունը, հոգևոր առաջնորդները դադարել էին ճանաչել Տաթևի եպիսկոպոսի գերիշխանությունը։ Մաքենացոց վանքը հափշտակել էր Գեղարքունիքը, ինչ-որ մեկը տիրացել էր Վայոց ձորին և իրեն եպիսկոպոս հռչակել, իսկ Երնջակի ու Գողթնի հոգևոր առաջնորդները՝ անկախացել էին Գողթնի ամիրայի օժանդակության շնորհիվ։ Օգտվելով Տաթևի եպիսկոպոսապետության այդ խիստ թուլացումից, շատ իշխաններ նրա կալված հանդիսացող գյուղերը նվիրել էին իրենց ազատներին[41]։

Տաթևի եպիսկոպոսության նոր վերելքը բացատրվում է ոչ միայն Սյունյաց թագավորության առաջացմամբ, այլև Հայոց Գագիկ Ա թագավորի՝ արտաքին քաղաքականության ասպարեզում ունեցած հաջողություններով։ Վասակ թագավորին հաջողվում է Տաթևի եպիսկոպոսապետությանը վերադարձնել նրա նախկին վիճակի համարյա բոլոր բնակավայրերը և հողերը կամ նրանց մեծագույն մասը։ Վասակ թագավորի թողած կալվածագրերից (սիգելներից) մեկից պարզվում է, որ նա վերադարձրել է «...զՑաւղունի գիւղն և զԳոդեվան ի սուրբ քաղաքն Տաթև» որ առաջ եւ էր վերցված հայրապետանոցի քայքայման պատճառով ընդ նմին և բոլոր վիճակները («զՎայոց ձոր, զԳեղարքունի, զՓորակն, զՀամբանդ, զՋուղայ, զԵրնջակ»[42]) վերադարձվում են նրան և հաստատվում։ Բացառությամբ Հաբանդի և Երնջակի, մյուս բոլոր վիճակները այլևս Սյունյաց թագավորության մեջ չէին մտնում և տրվել էին Տաթևին՝ Գագիկ Ա շահնշահի և Հայոց կաթողիկոսի օժանդակության շնորհիվ։ Վասակ թագավորի այս սիգելից առաջ Տաթևի եպիսկոպոսական թեմի սահմանները որոշվել էին Հայոց Սարգիս կաթողիկոսի 1006 թ. շրջաբերական թղթով, ըստ որի Սյունյաց եպիսկոպոսական աթոռին ենթակա գավառներ են եղել «... Սիւնիք, Բաղք, Արևեաց տունն, Որդուատ, Արքուլիք, Վանանդ, Երնջակ, Նախիջաւան, Ջուղայ որքան Երասխայ գետն հատանէ, Ճահուկ, Վայոց ձոր խաչերոյ Խոռովն, Գեղաքունի կողայ բակովն, Երիշատ, Ջաղացաձորն, և Փորակն իսկ բոլորովին... Հաբանդ գաւառ... նաև Վանանդ և Գողթն բոլորովին...»[43]։

Որոշվում է նաև «զսահման Աղուանից Ըռմբի խուռն, Ծար գաւառ, Աղահեճ, ընդ որ Աղունոյ գետն հատանէ մինչ ի քարավազին կամուրջն...»[44]։

Ինչպես պարզ երևում է վերոհիշյալ վկայությունից, բացի Սյունիքի բուն գավառներից, Տաթևի թեմին էին ենթարկվում նաև Վանանդը, Որդուատը, Նախճավանը, Ջուղան և Գողթնը, սակայն դրա հետ մեկտեղ նա զրկվում էր Աղահեճք գավառից, որն անցել էր Աղվանից կաթողիկոսությանը։ Ենթադրել, թե Տաթևի թեմի ընդարձակումը համապատասխանում էր Սյունյաց թագավորության տարածքի մեծացմանը, ճիշտ չէ։

Գագիկ Ա թագավորի օրոք Սյունյաց թագավորը՝ չնայած իր տիտղոսին, հայկական պետության խոշոր ֆեոդալներից մեկն էր, լիովին ենթակա Հայոց թագավորին, որի անմիջական կալվածների մեջ էին գտնվում Տաթևի թեմին ենթակա մի շարք գավառներ։ Այսինքն քաղաքական, վարչական սահմանները միշտ չէ, որ համապատասխանում էին թեմական բաժանմանը։

---

41 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 304—305։

42 Նույն տեղում, էջ 305—306։

43 Նույն տեղում, էջ 310—311։

44 Նույն տեղում։

*X դարի վերջին և XI դարի սկզբներին Սյունիքում ծավալվում է լայն շինարարություն։ Տաթևի վանքում կառուցվում են բազմաթիվ հարակից շինություններ, գործատներ (արհեստանոցներ)։ 1000 թ. Սյունյաց թագուհի Շահանդուխտը ավարտում է Վաղաղնի սբ. Ստեփաննոս եկեղեցու շինությունը, որի կառուցումն սկսվել էր դեռևս Սմբատ թագավորի օրոք։ Շատ շուտով այստեղ հավաքվում են մեծ թվով կրոնավորներ, իսկ Շահանդուխտ թագուհին եկեղեցու առջև կառուցում է աղոթատուն, համբարանոցներ ու գործատներ և պարըսպում վանքը։ Վանքին են նվիրաբերվում բազմաթիվ անդաստաններ Վաղաղնում, Գոմեր ագարակը և զանազան թանկարժեք սպասքներ*[45]*։ 1006 թ. Շահանդուխտի կրտսեր որդի Սևադան սրբատաշ քարերով կառուցել է տալիս կենտրոնագմբեթ մեկ այլ եկեղեցի՝ սբ. Կարապետ անունով, և գավիթ՝ նրա արևմտյան կողմում*[46]*։ Անկասկած մեծ շինարարական աշխատանք է կատարվում նաև թագավորության այլ մասերում և մասնավորապես Կապան մայրաքաղաքում։ Այն հանգամանքը, որ նախկինում բավականին անհայտ Կապանը վեր է ածվում քաղաքի, արդեն խոսում է նրա մեծացման և բարգավաճման մասին։ XI—XII դարերում այն հանդիսանում էր Հայաստանի միջակ մեծություն ունեցող քաղաքներից մեկը, որտեղ անգամ զգալի թվով հրեաներ էին ապրում*[47]*։*

*Գագիկ Ա-ի մահից հետո, երբ նրա Հովհաննես-Սմբատ և Աշոտ որդիները երկարատև պայքարից հետո բաժանեցին Հայոց թագավորությունը, կրկին աշխուժացան շրջակա մահմեդական իշխանությունները։ Սյունյաց թագավորությունը գտնվում էր Աշոտի թագավորության ոլորտում, սակայն XI դարի երեսնական թվականներից սկսած այդ կախվածությունը միանգամայն ձևական բնույթ էր կրում։*

*Թե երբ է մահացել Վասակ թագավորը, ստույգ հայտնի չէ։ Ինչպես պարզվում է Տաթևի վանքի մի արձանագրությունից, նա 1043 թ. այլևս կենդանի չէր և թագավորում էր Սմբատը*[48]*։ Ուսումնասիրողների մեծ մասը նրա մահը դնում են 1040 թ.։ Չունենալով արու ժառանգներ, ըստ երևույթին իր թագավորության վերջին տարիներին արդեն, Վասակ թագավորը պետական կառավարման մեջ է ներգրավում իր փեսա Աշոտ իշխանի որդիներ Սմբատին և Գրիգորին*[49]*, որոնցից առաջինին կտակում է թագավորական գահը։ Սյունյաց պատմիչը վերոհիշյալ Սմբատին և Գրիգորին կոչում է Ավագ Աշոտյաններ*[50]*, որոնց կալվածները գտնվում էին Ծղուկ գավառում*[51]*։*

45 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 302։*

46 *Տե՛ս նույն տեղում։*

47 *Տե՛ս նույն տեղում, էջ 334։*

48 *Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 19. «Յամի յորում էր թիվն՝ ՆՂԲ, ի Թագաւորութեանն Սմպատա որդո Աշոտո ես տր Ցովանէս շինեցի զսրահս ազնականութեամբ Սմպատա, որք (ա)ղաւթէք յիշեցէք ի քոս»։*

49 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 306։*

50 *Տե՛ս նույն տեղում, էջ 318։*

51 *Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 89. «Թվ։ՆԿԶ։ (1017) Սմպատ որդի տն Աշոտո Սիւնեաց իշխանաց իշխանի յաղաւթս իշեցէք»։*

Դառնալով թագավոր, Սմբատ Աշոտյանը (1040—1044) իր եղբորն է հանձնում իշխանաց իշխանի պաշտոնը[52]։ Նրա իշխանության հենց սկզբում Լոռու թագավորությունը ստիպված էր կենաց և մահու պայքար մղել Գանձակի ամիրայության դեմ։ 1022 թ. տիրանալով Դվինին, Շադդադյանները ոչ միայն կրկին հաստատվեցին Հայկական լեռնաշխարհի կենտրոնում, այլև աքցանի մեջ առան Սյունյաց թագավորությունը և Արցախի իշխանությունները։ 1040 թ. Շադդադյան ամիրա Աբու-լ-Ասվարը մեծ բանակով արշավում է Լոռու թագավորության վրա։

Ասպատակության վտանգի ենթարկված էր նաև Սյունիքը, և Սմբատը 1040 թ. 2 հազար զինվորներից բաղկացած մի զորաջոկատով մասնակցեց Դավիթ Անհողինի տիրույթների վրա արշաված Շադդադյան Աբու-լ-Ասվարի բանակի ջախջախմանը[53]։ Այս հաղթանակը որոշ չափով մեղմացրեց հարևան ամիրայությունների ճնշումը հայկական իշխանությունների նկատմամբ, միաժամանակ բավականին բարձրացրեց Սյունյաց թագավորության հեղինակությունը։ Ստ. Օրբելյանը խոսելով Սյունյաց Սմբատ թագավորի մասին, չափազանցությամբ գրում է, որ նա էր «ահարկու յամենայն շրջակայ ազգսն»[54]։ Սակայն նրա թագավորության վերջին տարում՝ 1044 թ., ամենայն հավանականությամբ օգտվելով Անիի թագավորության խիստ թուլացումից, Ատրպատականի, Արդաբիլի, Ահարի, Թավրիզի ամիրայությունների զորքերը ներխուժում են Սյունիք։ Անցնելով Երասխը, նրանք արագ շարժվում են հյուսիս ու ավերում Սյունիքի հոգևոր և մշակութային խոշորագույն կենտրոն Տաթևի վանքը։ Այս արշավանքը ոչ այնքան նվաճողական, որքան սոսկ ավարառուական բնույթ էր կրում։ Տաթևի վանքը, որն ուներ բազմաթիվ կալվածներ, բազում հարստություններ, թանկարժեք սպասներ, գրգռում էր Ատրպատականի իշխողների ախորժակը։ Վերոհիշյալ հարձակումից առաջ վանքում կային շուրջ 1000-ի չափ միաբաններ, ճգնավորներ, մեծաթիվ արհեստավորներ, որոնք աշխատում էին վանքի գործատներում[55]։ Տիրանալով վանքին, թշնամիները սրի են քաշում վանականների մեծ մասին, որոնք չէին հասցրել փախչել. այրում և ավերում են Գրիգոր Լուսավորչի անունը կրող եկեղեցին և բազմաթիվ այլ շինություններ. փորձում են խորտակել Տաթևի վանքի նշանավոր շարժական սյունը. ոչնչացնում են գործատներն ու կից կառույցները և մեծ ավարով ետ վերադառնում[56]։ Հարձակման ժամանակ սյունյաց մետրոպոլիտ Հովհաննեսը վանքում չէր։ Տաթև են ժամանում Սմբատ թագավորը, նրա եղբայր Գրիգորը, Սիսական աշխարհի բոլոր ազատներն ու գավառակալները։ Նրանց օժանդակությամբ մետրոպոլիտը շուրջ երկու տարվա ընթացքում վերականգնում է վանքն իր բոլոր շինություններով։ Վանքին նվիրաբերվում են նաև նոր կալվածներ[57]։

52 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 318։

53 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 79—82։ «... Նոյնպէս և յուղարկեաց ի Կապանին թագաւորն. և նա տայր նմա արս երկու հազար» (էջ 80)։

54 Ստ. Օրբելյան, էջ 318։

55 Տե՛ս նույն տեղում, էջ 312։

56 Տե՛ս նույն տեղում, էջ 313։

57 Տե՛ս նույն տեղում, էջ 314—315։

Վանքի վերականգնումն ավարտվեց 1046 թ.[58], երբ Սյունիքում արդեն թագավորում էր Սմբատ արքայի եղբայր Գրիգորը (1044—1084)։ Նրա օրոք Արցախի իշխանական ընտանիքների և Սյունյաց թագավորության միջև բարեկամական կապերը ամրապնդվում են, և Գրիգոր արքան ամուսնանում է Արցախի իշխան Մեծն Սևադայի դուստր Շահանդուխտի հետ[59]։ Սյունիքը միաժամանակ խաղաղ բարգավաճում ապրեց։

Սյունյաց թագավորության տարածքը նրա գոյության առաջին շրջանում, այսինքն մինչև Գագիկ Ա թագավորի արշավանքը, իր մեջ ընդգրկում էր Սյունյաց աշխարհի 12 գավառներից 9-ը՝ Վայոց ձոր, Ծղուկք, Ճահուկ, Հաբանդ (Ձագեձոր), Երնջակ, Ձորք, Բաղք, Արևիք և Կովսական։ Սակայն Գագիկ Ա-ը 991—992 թթ. խիստ նեղացրեց Սյունյաց թագավորության սահմանները և վերջինս իր կազմում պահպանեց միայն Ծղուկք գավառի մեծ մասը, Երնջակ գավառի մեծ մասը, Հաբանդը, Բաղքը, Ձորքը, Կովսականը և Արևիքը։ Այսինքն, եթե սկզբնական շրջանում նրա տարածքը հավասար էր շուրջ 10.000 կմ², ապա X դարի 90-ական թվականների սկզբներին դարձավ շուրջ 5500 կմ²։

Վայոց ձորը Սյունյաց թագավորության մեջ մտնող ամենամեծ գավառն էր, համապատասխանում էր ներկայիս Եղեգնաձոր և Ազիզբեկովի շրջաններին ու Նախիջևանի ԻՍՍՀ Նորաշենի շրջանի հյուսիս-արևելյան մի փոքր հատվածին։ Այն սահմանակից էր հյուսիսում Գեղարքունիք և Սոդք, արևելքում՝ Վայկունիք և Ծղուկք, հարավում՝ Ճահուկ և արևմուտքում՝ Շարուր և Արած գավառներին։ Զարգացած ֆեոդալիզմի շրջանում գավառի տնտեսական կենտրոնն էր Եղեգիս գյուղաքաղաքը, որի անառիկ միջնաբերդի ավերակները մինչև այսօր էլ պահպանվել են Սմբատաբերդ անունով։

Ծղուկ գավառը սահմանափակված էր արևելքից Աղահեճք, Հաբանդ և Բաղք, հարավից՝ Ձորք և Երնջակ, արևմուտքից՝ Ճահուկ և Վայոց ձոր և հյուսիսից՝ Վայկունիք գավառներով։ Համապատասխանում էր ներկայիս Սիսիանի և Գորիսի շրջանների հարավ-արևմտյան ոչ մեծ հատվածին։ Կոչվել է նաև նեղ իմաստով Սիւնիք կամ Սիսական։ 991—992 թթ. հետո Ծղուկք գավառի հյուսիսային մասը, որը Ստեփանոս Օրբելյանի կողմից հիշվում է որպես Այլախ գավառ, Գագիկ Ա Բագրատունին Վայոց ձորի և Ճահուկ գավառի հետ միացնում է կենտրոնական թագավորությանը։ Գավառի կենտրոնն էր Սյունիք ավանը (այժմ Սիսիան շրջանային կենտրոնը)։ Այդտեղ էր գտնվում Տաթևի եպիսկոպոսապետությունը։

Ճահուկը Սյունյաց թագավորության համար կարևոր տնտեսական և ռազմական նշանակություն ունեցող գավառներից էր։ Այն ամփոփված էր հյուսիսից Վայոց ձոր, արևելքից՝ Ծղուկք և Երնջակ, արևմուտքից և հարավից՝ Նախճավան և Շարուր գավառների մեջ, և նրա միջով անցնում էր Նախճավանից Սյունիք տանող առևտրական ուղին։ Կենտրոնն էր Ճահուկ ավանը (այժմ Ջահրի)։

Հաբանդ կամ Ձագեձոր գավառը տարածվում էր Հագարու և Որոտան գետերի միջին հոսանքի շրջանում և իր մեջ էր առնում Գորիսի շրջանի, Աղբ-

58 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 315։

59 Տե՛ս նույն տեղում, էջ 318։

*ՍՍՀ Լաչինի շրջանի հարավային և Զանգելանի շրջանի հյուսիսային մասերի տարածքը։ Ներկայումս օգտագործվող Զանգեզուր աշխարհագրական հասկացությունը Ձագեձորի աղավաղված ձևն է։ Հաբանդը սահմանակցվում էր հյուսիսում՝ Աղահեճք, արևելքում՝ Արցախի Մյուս Հաբանդ, հարավում՝ Բաղք և արևմուտքում՝ Ծղուկք գավառներին։*

*Երնջակը Սյունյաց թագավորության անառիկ գավառներից մեկն էր։ Նրան էին սահմանակցում Ճահուկ, Ծղուկք, Ձորք, Գողթն և Նախճավան գավառները։ Նրա տարածքը համապատասխանում է Նախիջևանի ԻՍՍՀ Ջուլֆայի (Ջուղա) և Օրդուբադի (Որդուատ) շրջանների հյուսիսային մասին։ Գավառի կենտրոնն էր Երնջակ խիստ անառիկ ամրոցը (այժմ՝ Ալինջակալա)։*

*Ձորք գավառը ընդգրկում էր Ողջագետի և նրա ձախակողմյան վտակ Գեղվագետի ավազանները և սահմանակից էր հյուսիսում Ծղուկք, արևելքում՝ Բաղք, հարավում՝ Կովսական և Արևիք ու արևմուտքում՝ Երնջակ գավառներին։ Ձորքը Սյունիքի ամենալեռնոտ շրջանն էր՝ ծածկված խիտ և տեղ-տեղ կուսական անտառներով։ Այն Սյունյաց թագավորության առավել անմատույց և անառիկ գավառն էր։ Այստեղ էին գտնվում Բաղաբերդ նշանավոր ամրոցը և թագավորության մայրաքաղաք Կապանը։*

*Բաղք գավառը սահմանակից էր հյուսիսում՝ Հաբանդ կամ Ձագեձոր, արևելքում՝ Մյուս Հաբանդ, հարավում՝ Կովսական և արևմուտքում՝ Ձորք և Ծղուկք գավառներին։ Նրա տարածքը համապատասխանում է այժմյան Ղափանի շրջանի արևելյան և Ադր. ՍՍՀ Զանգելանի շրջանի արևմտա-կենտրոնական մասերին։ Արևելքում նրա սահմանն էր Հագարու գետը։*

*Արևիք գավառը իր տարածքով համապատասխանում էր Մեղրու շրջանին։ Այն սահմանափակված էր Գողթն, Ձորք, Կովսական գավառներով, իսկ հարավում՝ Երասխ (Արաքս) գետով։ Ղ. Ալիշանի և այլոց կարծիքով նախկինում եղել է Գողթնի մի մասը, սակայն հետագայում անջատվել է Գողթնից և միացվել Սյունիքին։ Արաքսի առափնյա շրջանները ունեն չոր մերձարևադարձային կլիմա։ Նրանց կենտրոնն էր Մեղրի ավանը։*

*Կովսական գավառը զբաղեցնում էր Ղափանի շրջանի հարավ-արևելյան և Ադր. ՍՍՀ Զանգելանի շրջանի հարավային մասերը։ Կովսականին սահմանակից էին հյուսիսից Ձորքը և Բաղքը, արևելքից և հարավից՝ Մյուս Հաբանդը և Պարսպատունիքը, արևմուտքից՝ Արևիքը։ Հարավից և արևմուտքից գավառի բնական սահմանն էին Արաքս և Հագարու գետերը։*

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

# ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ X ԴԱՐԻ ՎԵՐՋԻՆ ԵՎ XI ԴԱՐԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ

## 1. ԵՐԿՐԻ ԽԱՂԱՂ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄԸ

*Գավառական թագավորությունների առաջացումը, իհարկե, չէր կարող բացասաբար չանդրադառնալ երկրի քաղաքական միասնականության վրա, սակայն Հայոց Բագրատունի թագավորների պայքարը երկրի միավորման համար շարունակվում էր՝ հենված ավելի շատ թագավորության մեջ մտնող գավառների տնտեսական բարգավաճման, քան քաղաքական պայմանների վրա, որոնք Սմբատ Բ-ի թագավորության սկզբնական շրջանում այնքան էլ բարենպաստ չէին։*

*Երկրի տնտեսական վերելքին մեծապես նպաստում էր տևական խաղաղությունը։ Աշխատավոր բնակչությունը, ամենուրեք լծված իր աշխատանքներին, ցուցաբերում էր ստեղծագործական շնորհք բոլոր բնագավառներում և շենացնում էր գյուղերն ու քաղաքները։ Հայաստանն ապրում էր նշանակալից առաջադիմության և բարգավաճման մի շրջան։*

*Այս ժամանակներում արտաքին վտանգն էլ մեծ չէր։ Ճիշտ է, արևմուտքի հզոր հարևանը՝ Բյուզանդական կայսրությունը քայլ առ քայլ առաջանում էր դեպի Արևելք, և եթե բյուզանդական ճնշումը մի պահ դադարել էր, ապա դրա պատճառը կայսրության արևելյան մարզերում փոթորկող անցքերն էին, մասնավորապես Վարդ Սկլերոսի ապստամբությունը։*

*Բյուզանդական փոքրասիական բանակը, որի կազմում մեծ թվով հայեր և վրացիներ կային, կարևոր դեր էր խաղում կայսրության ոչ միայն ռազմական, այլև քաղաքական կյանքում, իսկ նրա ռազմական ավագանին առաջին անգամը չէր, որ փորձում էր Բյուզանդիայի գահի վրա բարձրացնել պատերազմներում աչքի ընկած իր զորավարներին։ Այդպիսին էր Հովհաննես Չմշկիկը, իսկ այժմ, երբ նա վախճանվել էր, և գահը անցել էր անչափահաս Վասիլ Բ-ին, փոքրասիական ռազմական ավագանին կայսրության նոր թեկնածու էր առաջադրում փառաբանված զորավար Վարդ Սկլերոսին, որը Չմշկիկի աներձագն էր։ Վարդ Սկլերոսը 976 թ. ապստամբություն բարձրացրեց կենտրոնական իշխանության դեմ և կայսրության արևելյան մարզերը երեք տարի շարունակ դարձրեց պատերազմական փոթորիկների թատերաբեմ։ Նրա հետ էին նաև*

*Տարոնի իշխաններ Գրիգորն ու Բագրատը, Մոկաց իշխան Զափրանիկը՝ իրենց զոկատներով, նաև Ամիդի և Նփրկերտի ամիրաները։ Կենտրոնական կառավարության զորքերը՝ կայսեր շատ խորամանկ ու հեղինակավոր պալատական պաշտոնյա, ներքինի Վասիլ Պարակիմենոսի գլխավորությամբ երիցս պարտություն կրեցին ապստամբներից։ Վարդ Սկլերոսը գրավեց Կեսարիան, Բյութանիան, նրա կողմն անցավ Անտիոքի կառավարիչը, որը հայազգի մի զորավար էր, ամբողջ Սիրիան, Կիլիկիան և Միջերկրականի ու Սև ծովի նավատորմը։ Սկլերոսի հաղթական առաջխաղացումը մեծ ծավալ էր ընդունել, ուստի ժամանակակից պատմիչն ասում է՝ «գրեթե հունաց ամբողջ աշխարհում տարածվեց պատերազմը, մինչև իսկ գյուղը գյուղի և քաղաքը քաղաքի հետ էր մարտնչում և ամենուրեք արյունահեղություններ էին տեղի ունենում»[1]։ Ապստամբ բանակը, շարժվելով դեպի Կոստանդնուպոլիս, գրավեց նրանից ոչ շատ հեռու գտնվող Նիկեա քաղաքը։ Մայրաքաղաքը վտանգված էր։ Վարդ Սկլերոսի դեմ կայսրը հանեց դարձյալ հայազգի նշանավոր զորավար Վարդ Փոկասին, որը Չմշկիկի դեմ ապստամբելու համար աքսորվել էր Քիոս կղզին։*

*Կայսերական բանակի ընդհանուր հրամանատարությունն ստանձնած Վարդ Փոկասը նույնպես երկիցս պարտություն կրեց ապստամբ բանակից։ Վասիլ Բ կայսրը և Վարդ Փոկասը որոշեցին հարվածել Վարդ Սկլերոսին թիկունքից։ Նրանք քաջ ծանոթ էին Արևելքի գործերին և գիտեին, որ Տայքում կայսրության բարեկամ Տայոց իշխանությունը Դավիթ Կուրապաղատի օրոք զորեղացել էր։*

*Դավիթ Կուրապաղատի հետ սկսված բանակցությունները ավարտվում են դաշինքի կնքմամբ, որի համաձայն Դավիթը պետք է կայսրությանն օգնության հասներ 12 հազարանոց հեծյալ բանակով։ Դրա փոխարեն կայսրությունը Դավիթ Կուրապաղատին էր զիջում ընդարձակ հողեր։ «զԽաղտոյառիճ Կղչսուրաւն, զՋորամայրի և զԿարին, զԲասեան և զՍևուկ բերդակ, որ է Մարդաղի, զՀարք և Ապահունիս (զորս և ետ իսկ), որպէս զի զօր առաքեսցէ յօգնականութիւն նմա»[2]։*

*Վարդ Փոկասը կայսերական բանակի ուժերը համախմբել էր ապստամբների դեմ՝ արևմուտքից, իսկ Դավիթ Կուրապաղատի բանակը, Թոռնիկ և Ջոջիկ զորավարների գլխավորությամբ, գործում էր արևելքից։ Այս անգամ Վարդ Սկլերոսը ծանր պարտություն կրելով փախչում է դեպի արաբական իշխանությունների սահմանները, իսկ այնտեղ նա բռնվելով շղթայակապ Բաղդատ է տարվում և բանտ նետվում[3]։*

*Տայքի Կուրապաղատությունը մեծ հեղինակություն էր ձեռք բերել իր խաղաղ շինարարական քաղաքականությամբ։ Խոսելով Դավիթ Կուրապաղատի մասին Ստեփանոս Տարոնեցին ասում է. «Մեր ժամանակի բոլոր թագավորներից ավելի հեզ և հանդարտ էր։ Եվ նա պատճառ եղավ արևելյան բոլոր երկրների, մանավանդ Հայաստանի և Վրաստանի խաղաղության և շենության...»[4]։*

---

1 Ստեփանոս Տարոնեցի, էջ 191։

2 Նույն տեղում, էջ 192։

3 Տե՛ս նույն տեղում, էջ 193—194։

4 Նույն տեղում, էջ 275։

*Պետք է ասել, որ Վարդ Սկլերոսի ապստամբության խառնակ տարիներին Մահմեդական ամիրայությունները նկատելիորեն աշխուժացել էին։ 982 թ. Դելմաստանի պարսից ամիրա Աբու-լ-Հայջան (Աբլհաճ) արշավանք ձեռնարկեց դեպի Հայաստան և գրավեց Դվին քաղաքը։ Այնուհետև նա խուժեց Բագրատունիների գլխավոր տիրույթը՝ Շիրակ գավառը, նույնիսկ մոտեցավ Անի մայրաքաղաքին և ավերեց նրա մոտ գտնվող Հոռոմոսի վանքը։ Սմբատ արքան, զբաղված խաղաղ շինարարական աշխատանքներով, անհոգ էր գտնվել երկրի պաշտպանության նկատմամբ և հանկարծակիի եկավ։ Բայց, բարեբախտաբար, վտանգը հեռացվեց ուրիշի ձեռքով։ Աբու-լ-Հայջայի դեմ դուրս եկավ Գողթնի Աբու Դուլաֆ (Աբուտլուփ) ամիրան։ Պարտության մատնելով Աբու-լ-Հայջային, նա ետ խլեց Դվինը և այլ քաղաքներ*[5]։

*Աբու Դուլաֆը, սակայն, դրանով չի բավարարվում և 983 թ. ներխուժում է Վասպուրական։ Արծրունյաց Աշոտ թագավորը հանձնարարում է իշխանաց իշխան Ապլխարիբին, Գրիգոր իշխանին և Տիգրան մարզպանին տանել Վասպուրականի զորքը թշնամու դեմ։ Հիշյալ զորավարները, սակայն, անհոգ են գտնվում և առանց հետևելու թշնամու շարժմանը, բաց են թողնում հեծելազորի ձիերը արածելու, իսկ դարանամուտ թշնամին խլում է դրանք։ Վասպուրականի զորքը ստիպված մտնում է ամրոցը, որը պաշարելով Աբու Դուլաֆը երդմամբ խոստանում է բոլորին բաց թողնել, եթե զենքը հանձնեն, բայց զենքը հանձնելուց հետո, խախտելով երդումը, մի կատարյալ սպանդ է շինում՝ սրի քաշելով զինվորներին, իսկ հրամանատարներին ազատում է փրկավճարով*[6]։

*987 թ. արշավանքով հանդես է գալիս մի նոր Աբու-լ-Հայջա (Աբլհաճ), որը Ատրպատականի ամիրան էր։ Մտնելով Հայաստան, նա գրավում է Դվին քաղաքը և մի քանի տարվա հարկ պահանջում Սմբատ թագավորից։ Բագրատունյաց գահակալը, որը շարունակում էր խաղաղ շինարարական աշխատանքները, խուսափելով պատերազմից, համաձայնվում է վճարել որոշ գումար*[7]։

*Այս Աբու-լ-Հայջան նույնպես ներխուժում է Վասպուրական՝ մեծ կոտորածի և Արծրունիներին ընկճելու սպառնալիքով, սակայն ճակատամարտի նախորդ գիշերը հանկարծամահ է լինում։ Օգտվելով դրանից Գողթնի ամիրա Աբու Դուլաֆը կրկին տիրանում է Դվինին և հաշտության ու խաղաղության դաշինք կնքում Սմբատ թագավորի հետ։*

*Սմբատը բարեկամական գործակցության դաշինք էր հաստատել Վրաստանի հետ և շուտով պիտի առիթ ունենար կատարելու դաշնակցի իր պարտականությունները նաև Վրաստանի հանդեպ։*

*Ափխազաց Թեոդոս (Թևտաս) թագավորին իր մեծամեծները կուրացրել էին և զրկել գահից։ Դավիթ Կուրապաղատը և Սմբատ արքան միջամտում են և համաձայնության գալով, Ափխազաց գահը հանձնում են վրաց Բագարատ թագավորի թոռ Սմբատին։ Բայց սա ինչ-որ բանից դժգոհ մնալով իր հոր՝*

---

5 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 188—189։*

6 *Տե՛ս նույն տեղում, էջ 189—190։*

7 *Տե՛ս նույն տեղում, էջ 198—199։*

Գուրգենի հետ զորաժողով է կատարում, բազմաթիվ զորքեր բերելով Կովկասյան լեռնաշղթայի հյուսիսից (ըստ բնագրի սարմատացիներից) դուրս է գալիս Դավթի և Բագարատի դեմ։ Վերջիններիս օգնության է հասնում Հայոց Սմբատ թագավորը, իր հետ բերելով նաև Վասպուրականի, Սյունյաց, Տարոնի, նաև Աղվանքի իշխանների զորքերը։ Հակառակորդ բանակները կանգնած էին Կուրի երկու ափերին։ Հայկական և վրացական դաշնակից զորքերի հսկայական գերակշռությունից երկյուղած ափխազները հաշտության դաշինք են կնքում, առանց պատերազմական ընդհարման[8]։

Ուշագրավ է, որ հայկական իշխանությունները ջանում էին ամեն կերպ պահպանել տնտեսապես բարգավաճող երկրի խաղաղությունը։



Անիի պարիսպները

Բագրատունյաց թագավորությունը, մանավանդ նրա մայրաքաղաք Անին, օրըստօրե ծաղկում էր։ Անիի առաջին պարիսպները կառուցելուց անցել էր ընդամենը քառորդ դար, բայց քաղաքն աճել ու մեծապես ընդարձակվել էր։ Սմբատ արքայի 989 թ. կանգնեցրած նոր պարիսպներն էլ ամբողջ քաղաքը չէին ընդգրկում։ Քաղաքի թաղամասերը, մանավանդ արվարձանները, ահագին տարածություն էին բռնում։ Շիրակից բացի, տնտեսական արագ վերելք էին ապրում նաև Վասպուրականը, Սյունիքը, Ջանանդը՝ մանավանդ Կարսի Աբաս թագավորի օրոք (984—1029)։ Ամենուրեք ծաղկում էին քաղաքները, արհեստները, առևտուրը, ծավալվում էր շինարարությունը։ Դրան մեծապես նպաստում էր նաև Հայաստանի ու Վրաստանի միջև ստեղծված սերտ դաշինքն ու համագործակցությունը։

---

8 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 252—253։

*Կովկասյան երկրների խաղաղության պահպանման համար նպաստավոր էր նաև Բյուզանդական կայսրության արտաքին խառը վիճակը, որը առաջացել էր Բուլղարական թագավորության հետ եղած հակամարտությունների հետևանքով։ Համախմբելով երկրի ուժերը, բուլղարների Սամուել թագավորը (976—1016) պատրաստվում էր դիմակայելու վերահաս վտանգը բյուզանդացիներից. հայտնի էր, որ Վարդ Սկլերոսի ապստամբությունը ճնշելուց հետո Վասիլ կայսրը սպառազմ էր պատրաստում բուլղարների դեմ։ Կայսրի միջոցառումներից մեկն էլ Բյուզանդիային ենթակա հայկական մարզերից մակեդոնական սահմանը նոր գաղթականություն փոխադրելն էր։ Բայց հայ իշխաններից ոմանք անցան բուլղարների կողմը[9]։*



Անիի պարիսպները

*Վասիլ Բ կայսրի ձեռնարկած 986 թ. արշավանքը բուլղարների դեմ ավարտվեց ծանր պարտությամբ։ Կտրելով բյուզանդական հեծելազորի նահանջի ճանապարհը, բուլղարները Տրայանոսի Դռներ կոչվող կիրճում գլխովին ջախջախեցին բյուզանդական բանակը, իսկ կայսրը հազիվ փրկվեց գերի ընկնելուց։ Կայսրությունը ծանր դրության մեջ էր ընկել, և սպասվում էր փոքրասիական բանակի ապստամբությունը՝ Վարդ Փոկասի գլխավորությամբ։ Սակայն կրկին հանդես եկավ Վարդ Սկլերոսը, որը Խլաթի և Նփրկերտի ամիրայի ջանքերով ազատվեց Բաղդադի բանտից, նույն ամիրայի զորքով նրանց արաբա-բյուզանդական սահմանագլխում և մտավ Մելիտինե քաղաքը։ Բանակի կողմից կայսր հռչակված Վարդ Փոկասը առաջարկում է Վարդ Սկլերոսին իրենց ուժերը միավորել Վասիլ Բ-ի դեմ, որին նա համաձայնվում է։ Բայց, երբ Սկլերոսը արձակեց արաբական զորքը, Վարդ Փոկասը կալանավորեց նրան և իր զորքերը շարժեց կայսրության մայրաքաղաք Կոստանդնուպոլսի վրա։*

9 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, *էջ 244*։

Առիթն օգտագործելով, արաբական բանակը ասպատակեց Հայաստանի հարավի գավառները՝ Մելիտինեից մինչև Ապահունիք, որոնք ենթակա էին կայսրությանը։

Չնայած այս ամենին, կայսրը չէր հրաժարվել բուլղարների դեմ պատերազմելու և նրանց ընկճելու մտքից։ Բայց ստեղծված պայմաններում կայսրին դաշնակից էր պետք, և այդ դաշնակիցը եղավ Կիևյան Ռուսիայի իշխան Վլադիմիրը։



Գագիկ Ա Բագրատունի

Վասիլ Բ դիմեց Կիևյան իշխան Վլադիմիրի օգնությանը, որը նոր էր քրիստոնեություն ընդունել, և դաշինքը ամրապնդելու համար իր քույր Աննային նրան կնության տվեց։ Վարդ Փոկասի ապստամբությունը, որը շուրջ երկու տարի տևեց, հաջողություն չունեցավ։ 989 թ. ճակատամարտը նոր էր սկսվել, երբ Վարդ Փոկասը մահացավ, իսկ նրա բանակը ցրվեց։ Կալանքից կրկին ազատված ծերունի Վարդ Սկլերոսի հետ Վասիլ կայսրը համաձայնության եկավ։

Այսպիսով, X դարի վերջերին Վասիլ Բ-ի ձեռքերն ազատված էին, և նա պետք է սկսեր իրականացնել իր նվաճողական քաղաքականությունը Արևելքում։ Տարբեր եղանակներով հաշվեհարդար տեսնելով Վարդ Փոկասին օժանդակած իշխանների և զորավարների հետ, նա մի զորաջոկատ էլ ուղարկեց Տարոն՝ Չորտուանել մագիստրոսի դեմ, որը չէր ենթարկվում կայսրին։ Կայսրի ուղարկած զորքերին հաղթանակ բերեց միայն երկրորդ ճակատամարտը՝ 990 թ., երբ ընկավ ինքը Չորտուանելը։

Ավելի ծանր հետևանքներ ունեցան Վասիլ կայսրի զորքերի արշավանքները Դավիթ Կուրապաղատի դեմ. ծերունազարդ Կուրապաղատը, որի տիրույթները սահմանակից էին կայսրությանը, տեսնելով, որ դիմադրությունն անհնարին է, հնազանդվեց դաժան բախտի կամքին, մանավանդ բյուզանդական զենքի հետ հավասար գործ էր տեսնում և խորամանկ դիվանագիտությունը։ Քանի որ Դավիթը ժառանգորդ չուներ, նրան առաջարկվեց իր հողերը մահից հետո կտակել կայսրությանը, որին նա ակամա համաձայնվեց։ Դրանից հետո էլ դեռևս տասը տարի Դավիթը շարունակեց իշխել Տայքում։

Բյուզանդական կայսրության մեջ և հարևան երկրներում տեղի ունեցող անցքերը Բագրատունյաց թագավորությանը դեռևս չէին վերաբերում և չէին

*խախտում նրա խաղաղ բարգավաճումը։ Սմբատի գերագույն իշխանությունը հայկական գավառական թագավորությունների նկատմամբ ամրապնդված և հաստատուն էր։ Մի վկայությունից երևում է, որ նա նաև ընդարձակել էր իր թագավորության սահմանները[10]։ Սմբատի հեղինակությունն այնքան մեծ էր, որ նրա կարգադրությունն ստանալով, իսկույն նրա մոտ հավաքվեցին Կարսի Աբաս թագավորը, Վասպուրականի, Սյունյաց և Աղվանից իշխաններն իրենց զորքերով[11]։*

*Ստեփանոս Տարոնեցին, որը Սմբատի եղբայր և հաջորդ Գագիկ Ա թագավորի ջատագովն է, ինչ-որ մեղքեր է վերագրում Սմբատին։*



Անիի Մայր տաճարը

*Ըստ պատմիչի, նրա մեղքերից մեկն այն էր, որ հակառակ իր եղբայր Գագիկի, խախտել էր Գողթնի ամիրա Աբու Դուլաֆի հետ դրած դաշինքը և օգնել նրա հակառակորդին՝ տիրանալու Գողթնին։ Բայց կողմնակալ պատմիչը չի բացահայտում Սմբատի այդ քայլի պատճառները։ Պետք է ենթադրել, որ Սմբատը դրանով իրենից կախման մեջ էր գցում Գողթնի նոր ամիրային, հետևաբար, իր պետության շահերից ելնելով, ճիշտ էր վարվում։ Ավելին, կարելի է ենթադրել, որ Դվինը Բագրատունյաց թագավորությանը միավորվել էր Սմբատի այդ քայլի շնորհիվ։ Վերջապես պատմիչը, իբրև սարսափելի չարագործու-*

---

10 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 256։*

11 *Տե՛ս նույն տեղում, էջ 252։ Աղվանից իշխաններ ասելով, այստեղ, Ստեփանոս Տարոնեցին նկատի ունի գերազանցապես Խաչենի իշխաններին։*

թյուն, նշում է, որ Սմբատը ամուսնացավ իր քրոջ դստեր հետ[12]։ Այս ամենն ասելով հանդերձ Ստեփանոս Տարոնեցին խոստովանում է, որ հայոց թագավոր Սմբատի գործերը հաջողվել էին թե երկրի ներսում և թե դրսում, և խիստ մեծացել էր առատությունը և լիությունը[13]։

Այս ամենը, մասամբ արդարացնում էր Սմբատի «Տիեզերակալ» տիտղոսը, և նա կնքելով իր մահկանացուն 989 թ., իր հետնորդին թողեց ամուր և բարգավաճող պետություն։

## 2. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶՈՐԵՂԱՑՈՒՄԸ

Սմբատ Բ-ի մահից հետո գահ բարձրացավ Գագիկ Ա-ը, որը Բագրատունյաց թագավորների շարքում առավել տաղանդավոր պետական և ռազմական գործիչներից մեկը եղավ։ Նրա օրոք (990—1020) Բագրատունյաց թագավորությունը հասավ իր հզորության և ծաղկման գագաթնակետին։

Գագիկը նկատելիորեն ընդարձակեց իր պետությունը։ Ասողիկի վկայությամբ. «Նվ տիրապետեց նա բազմաթիվ բերդերի և գավառների Վայոց ձորի, Խաչենի և Փառիսոսի սահմաններում՝ ավելի քան իր եղբայրը, և չկար մեկը, որ սարսափ պատճառեր Հայաստանին»[14]։ Նրա պետության կազմում էր գտնվում նաև Դվին մեծ քաղաքը՝ իր գավառով։

Հայաստանի սահմաններում նոր հողեր միացնելով իր պետությանը, Գագիկը հարևանների հետ շարունակեց վարել բարեկամական խաղաղ քաղաքականություն։ Այդպիսի մի հարևան և դաշնակից էր Տայքի և Կղարջքի (Տաո-Կլարջեթի) կուրապաղատությունը։

Բարեկամական էին հարաբերությունները Քարթլիի թագավորության հետ։ Այս բարեկամությունը տալիս էր իր դրական պտուղները։ Երբ Դավիթ Կուրապաղատը գրավեց Մանազկերտը, Ատրպատականի Մամլան ամիրան, որը Աբու-լ-Հայջայի որդին և հաջորդն էր, դաշնակցելով հարևան ամիրայություններ հետ, զորաժողով կատարելով, մտավ Հայաստան և շարժվեց դեպի Ծաղկոտն գավառը։ Սակայն հայ-վրացական դաշնակցությունն անխախտ էր և ավելի զորեղ։ Հայոց Գագիկ Շահնշահի, Կարսի Աբաս թագավորի, Դավիթ Կուրապաղատի, վրաց Բագարատ թագավորի միացյալ զորքերը դուրս եկան Մամլանի դեմ և թշնամին ընկրկելով, առանց ճակատամարտի նահանջի դիմեց[15]։

Սակայն, երբ Դավիթ Կուրապաղատի զորքերը 997 թ. Խլաթը գրավելու փորձ արեցին և զգալի կորուստներ տալով նահանջեցին, ապա այս անհաջողությունը մի նոր արշավանք ձեռնարկելու առիթ ծառայեց Ատրպատականի Մամլան ամիրային։ Նա ամեն կերպ ջանում էր գերակշռություն ստանալ հայերի և վրացիների նկատմամբ. նույնիսկ «տիրել Հայոց և Վրաց»[16]։ Ատրպա-

12 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 253—254։
13 Տե՛ս նույն տեղում, էջ 253։
14 Նույն տեղում, էջ 256։
15 Տե՛ս նույն տեղում, էջ 266—267։
16 Տե՛ս նույն տեղում, էջ 270։

տականի տիրողները շուրջ հարյուր տարի անց կրկին չէին հանդուրժում հայկական թագավորության բարգավաճումն ու զորեղացումը և փորձում էին առաջնությունը խլել Բագրատունիներից՝ զենքի ուժով։ Նրանց հանգիստ չէին տալիս նաև Վրաստանի զորեղացումը և հայ-վրացական դաշինքը։

998 թ., դաշնակցած Խորասանի ամիրայի հետ, Մամլանը զորաժողով կատարեց և, դուրս գալով Թավրիզից, Հերի սահմաններով «ծանր ամբոխիւ լայն բանակաւ՝ անցանէ ընդ աշխարհն Վասպուրականի, գայ իջանէ ի գաւառն Ապահունեաց», նպատակ ունենալով առաջին հերթին Դավթից խլել Մանազկերտը։

Այս անգամ դարձյալ իր վճռական դերը կատարեց հայ-վրացական դաշինքն ու միաբանությունը։ Ծերունազարդ Կուրապաղատը օգնության խնդրանքով դիմում է հայոց Գագիկ արքային և Վրաց Գուրգեն թագավորին, որը հաջորդել էր Բագարատին։

Հարվածն անմիջապես ուղղված էր Դավիթ Կուրապաղատի դեմ, ուստի Գագիկ թագավորը Կուրապաղատին է տրամադրում 6 հազար ընտիր զորք՝ Վահրամ Պահլավունու գլխավորությամբ, որի օգնականներն էին իր որդի Սմբատ Մագիստրոսը և մարզպան Աշոտը. նույնքան զորք էր տալիս Վրաց Գուրգեն թագավորը՝ Ջոջիկի որդի Փերսիի գլխավորությամբ։ Այս երկու զորաջոկատները միանում են Դավիթ Կուրապաղատի բանակին, որի հրամանատարի անունն էր Գաբրիել։ Հայ-վրացական զորքերը բանակ են դնում Ապահունյաց գավառում՝ Ծմբո գյուղի մոտ և, զգուշանալով թշնամու գերակշռությունից, ամրացնում են իրենց դիրքերը մի բլրի վրա, որոշելով նախահարձակ չլինել։

Մամլանի բանակը, որը պատմիչի ասելով շուրջ հարյուր հազար մարդուց էր բաղկացած, Դելմաստանի վահանափակ զորքով պաշտպանված, հարձակման է անցնում։

Հայ-վրացական զորքերը, որոնք պատրաստ չէին ճակատամարտին, կռվի բռնվեցին առանց ընդհանուր հրամանատարության, քանի որ ոչ մի թագավոր ներկա չէր և գերադասությունը զորավարներից ոչ մեկին չէր տրվել։ Երեք մասի պառակտված Վասպուրականն էլ չմասնակցեց Մամլանի դեմ մղվող կռիվներին։

Այնուհանդերձ, հայկական և վրացական զորաջոկատները կարողանում են համագործակցել և մեկը մյուսին գերազանցելով, ցուցաբերում են խիզախության ու ռազմական արվեստի փայլուն օրինակներ։ Աչքի են ընկնում բոլոր զորավարները, մանավանդ հայոց սպարապետ Վահրամ Պահլավունին, որը հարձակվելով թշնամու աջ թևի վրա, ջախջախում է նրան։ Այդ ժամանակներից էլ սկսվում է նրա, իբրև մեծ զորավարի, համբավը։

Ծանր պարտություն կրելով Ծմբոյի ճակատամարտում, Մամլանի բանակը, մեծամեծ զոհեր տալով, փախուստի է դիմում։ Հետապնդելով թշնամուն, հայ-վրացական ուժերը շարունակում են կոտորածը մինչև Արճեշ, Մամլանին դուրս են վտարում Հայաստանից և ավարով վերադառնում իրենց երկրները[17]։

---

17 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 269—274։

*Զինական այս համագործակցությամբ և ձեռք բերած վճռական հաղթանակով վերջ է տրվում Ատրպատականի ամիրայի հավակնություններին, որով առավել նպաստավոր պայմաններ են ստեղծվում երկրի հետագա բարգավաճման համար։*



Ամբերդ ամրոցը

*Է՛լ ավելի զարգացան արհեստներն ու առևտուրը, Անին փարթամացավ, զարդարվեց նորանոր հոյակապ կառույցներով։ 1001 թ. ավարտվեց միջնադարյան հայ ճարտարապետության գլուխգործոց Անիի մայր տաճարի շինությունը, որի հիմքերը դրվել էին Սմբատ թագավորի օրոք։ Գագիկը իր մայրաքաղաքում կառուցել տվեց Զվարթնոցի տաճարի տիպի մի եկեղեցի։ Կառուցվեցին այլ բազմաթիվ եկեղեցական ու աշխարհիկ շենքեր, քարավանատներ, կամուրջներ։*

*Խոշոր շինարարական աշխատանքներ կատարեցին նաև Բագրատունիների վասալ Ապուղամրենց տոհմի իշխանները, որոնք այդ ժամանակներում յուրացրեցին Պահլավունի տոհմանունը։ Բացի Անիում կառուցած շենքերից*

նրանք շինարարական աշխատանքներ ձեռնարկեցին իրենց տիրույթներում՝ Մարմաշենում, Ամբերդում, Բջնիում և այլուր։

Այս ժամանակներում սնոտիապաշտ մի լուր էր պտտվում, թե 1000 թվականը՝ Քրիստոսի ծննդյան առաջին հազարամյակը բոլորելու տարին, պետք է համընդհանուր կործանում բերի աշխարհին։ Սակայն բարգավաճող կյանքը Անիում, Կոստանդնուպոլսում և այլուր, հող չէր թողնում այդ զրույցի համար։ Մի բան հաստատ է՝ Բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականությունն Արևելքում թևակոխել էր իր նոր՝ ավելի վտանգավոր փուլը։

1000 թ. մեռավ Դավիթ Կուրապաղատը։ Վասիլ Բ կայսրը, համաձայն նախապես կնքված կտակի, զորքերով շարժվեց Արևելք և կայսրությանը միացրեց Տայքը։ Մելիտինեից նա մտավ Ծոփաց աշխարհը և Բալուի վրայով անցավ Երիզա։ Այստեղ նրան ներկայացավ Նփրկերտի և Խլաթի Մրվանյան ամիրան, ճանաչեց նրա գերիշխանությունը և մագիստրոսի պատվանուն ստացավ։

Այնուհետև Վասիլը գալիս է Հավճիջ քաղաքը՝ Երասխ գետի ակունքների շրջանում, որտեղ նրան ընդառաջ են ելնում ափխազների Բագարատ և Վրաց Գուրգեն թագավորները, որոնցից առաջինին Վասիլը շնորհում է կուրապաղատի տիտղոս, իսկ երկրորդին՝ մագիստրոսի[18]։ Դրանից հետո, երբ Վասիլը շարժվում էր դեպի Հայաստանի կենտրոնական շրջանները, նրան ներկայացան նաև Կարսի Աբաս և Վասպուրականի Սենեքերիմ թագավորները, որոնք նույնպես պատիվների արժանացան։ Դրանք իհարկե կայսրին հնազանդություն հայտնողներին տրվող պատիվներ էին։ Ապա կայսրը անցնում է Հարք, Մանազկերտ, այնտեղից էլ Բագրևանդ և բանակ դնում Վաղարշակերտ քաղաքի դաշտում։ Նա վստահ էր, որ իրեն պիտի ներկայանա նաև Բագրատունյաց Գագիկ Ա թագավորը, բայց Գագիկը, ինչպես վկայում է պատմիչը, «իբրև փոքրութիւն համարեալ զգնալն իւր առ նա»[19] չներկայացավ։

Օգտվելով առիթից, Գագիկի քրոջ որդի Աբուսահլ Արծրունին, որը տիրում էր Կոգովիտ և Ծաղկոտն գավառներին և դժգոհ էր թագակիր քեռուց, իր տիրույթները բյուզանդական նվաճումից փրկելու միտումով, ներկայացավ Վասիլ կայսրին և չարախոսեց նրան։ Դրան ի պատասխան Գագիկն իր որդի Հովհաննես-Սմբատի գլխավորությամբ զորք ուղարկեց և գրավեց Աբուսահլի տիրույթները[20]։ Կայսրը շարժվելով իր բանակը դեպի հյուսիս, մտավ Տայոց աշխարհը և հավատարիմ պաշտոնյաներ կարգելով այնտեղ, վերադարձավ Կոստանդնուպոլիս։

Այս արշավանքի ժամանակ Վասիլ Բ իրեն ենթարկեց Խլաթի ամիրային, գրավեց Մանազկերտը և Բերկրին, սակայն վստահ չլինելով, թե կարող է այս քաղաքներն իր ձեռքում պահել, լավ համարեց, որ դրանց տիրանան Գուրգեն և Սենեքերիմ Արծրունիները։ Բացի այդ, կայսրը դրանով իրենից կախման մեջ կձգեր Վասպուրականը, ավելին, նա հետապնդում էր հեռուն գնացող նպատակներ։

Դրանից հետո Հայոց երկիրը 14 տարի խաղաղություն վայելեց։ Սակայն

---

18 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 276։

19 Նույն տեղում, էջ 277—278։

20 Տե՛ս նույն տեղում, էջ 278։

Վասիլ Բ կայսրը հաշվեհարդար տեսնելով բուլղարների հետ, նոր թափով սկսեց իրականացնել իր նվաճողական քաղաքականությունը Արևելքում, և նրա առաջին զոհը պետք է դառնար Վասպուրականը։

Կոգովիտ և Ծաղկոտն գավառները իր թագավորությանը միացնելուց հետո, Գագիկ Բագրատունին իր ուժը և պետության կենտրոնացման քաղաքականությունը ցուցադրելու մի այլ առիթ էլ ունեցավ։ Դա Գուգարքի կամ Տա-



**Անիի ս. Փրկիչ եկեղեցին**

շիր-Ձորագետի թագավոր Դավթի (989—1048) անհնազանդության ճնշումն էր 1001 թվականին։ Երբ Գագիկ Բագրատունու բանակը մտավ Տաշիր-Ձորագետի սահմանները իր հորեղբոր գերիշխանությունից դուրս գալու համար ապստամբած Դավիթը հնազանդվեց Գագիկ թագավորին «իբրև որդին հորը» ասում է պատմիչը[21]։

1003 թ. Գագիկ Ա-ի թագավորության սահմաններն ընդարձակվեցին նաև Արևելքում, երբ Փառիսոսի փոքրիկ թագավորության հողերը իրենց մեջ բաժանեցին Գագիկ Ա և Գանձակի Փադլուն ամիրան[22]։

Գագիկ Ա-ի օրոք Բագրատունյաց բուն թագավորության սահմանները

21 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 279—280։
22 Տե՛ս նույն տեղում, էջ 283։

*հասնում էին Շամքորից մինչև Վաղարշակերտ և Կուր գետից մինչև Կոգովիտ ու Ծաղկոտն գավառները։*

*Բագրատունիներին ենթակա էին իբրև կախյալ թագավորություններ Վասպուրականի, Սյունիքի, Տաշիր-Ձորագետի և Վանանդի մանր թագավորությունները։ Նրանց, այսպիսով, հաջողվել էր միավորել երկիրը, թեև ոչ ամուր միասնությամբ։*

*Գագիկ արքան իշխեց երեսուն տարի, մինչև 1020 թ., համեմատաբար խաղաղ պայմաններում։*



Բջնի ամրոցը

*Մեր տեղեկությունները Գագիկի թագավորության վերջին ժամանակաշրջանի մասին սակավ են և վերաբերում են առավելապես առաջին 10—13 տարիներին, և Բագրատունյաց թագավորության քաղաքական պատմությունը մինչև Գագիկի մահը համարյա մնում է մթության մեջ։ Ստեփանոս Տարոնեցին, որը կարելի է ասել, Գագիկի պալատական պատմիչն էր, իր աշխատությունը հասցնում է մինչև 1004 թ., իսկ Արիստակես Լաստիվերտցին բավականանում է այդ շրջանի մասին միայն կցկտուր տեղեկություններ հաղորդելով։ Դրանք սոսկ ընդհանուր, բայց դրական գնահատականներ են։ Այդ ժամանակներում Հայոց աշխարհի թագավորը Գագիկն էր... «այր հզօր և յաղթող ի պատերազմունս, սա ի խաղաղութեան կալաւ զաշխարհս Հայոց»[23] գրում է պատմիչը և*

23 Արիստակես Լաստիվերտցի, էջ 25։

ավելացնում՝ թե Գագիկ թագավորը երկար ժամանակ վարելով թագավորությունը, բարի հիշատակի արժանի եղավ և խորին ծերության մեջ վախճանվեց[24]։ Գագիկ Ա-ի թագավորության վերջին շրջանում Բյուզանդական աշխարհակալությունը և նվաճողական քաղաքականությունը նորից զորեղացել և սպառնալից կերպարանք էր ընդունել, իսկ արքայի մահից հետո Բագրատունյաց թագավորությունը քաղաքական ճգնաժամ ապրեց։

---

24 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 26։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

# ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ԱՆԿՈՒՄԸ

## 1. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԽԱՂԱՑՈՒՄԸ ԵՎ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԱՑՈՒՄԸ

Բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականությունն ու առաջխաղացումը Արևելքում X դարի վերջերին և XI դարի սկզբներին վերին աստիճանի վտանգավոր կերպարանք էին ստացել և սպառնալիքի տակ էին դրել Հայաստանի՝ դժվարությամբ նվաճված անկախությունը և պետական ինքնուրույն զարգացումն ու առաջադիմությունը։

Վերևում տեսանք, որ դեռևս 949 թ. բյուզանդական զորքերը գրավեցին Կարնո քաղաքը, 966 թ. նվաճեցին Տարոնը, երկու տարի անց տիրացան Մանազկերտին, ապա Արճեշին ու Բերկրիին, սպառնալով Վասպուրականի թագավորությանը, իսկ 1000 թ., Դավիթ Կուրապաղատի մահից հետո, Տայքի նվաճումով՝ հյուսիսից և հարավից շրջապատեցին Բագրատունյաց թագավորությունը։

Բյուզանդական կայսրության նվաճողական քաղաքականության հաջորդ զոհը պիտի դառնար Վասպուրականը, որով և աքցանի մեջ կառնվեր Բագրատունյաց թագավորությունը։

X դարի երկրորդ կեսին Վասպուրականի թագավորությունը ոչ միայն չուժեղացավ, այլև ընթացավ ներքին պառակտումների և մասնատումների ուղիով ու բաժանվելով Դերենիկ Արծրունու որդիների միջև, տրոհվեց երեք իշխանությունների, որոնք շարունակվում էին կոչվել թագավորություն։ Տոսպում իշխում էր Աշոտը, Անձևացիքում՝ Գուրգենը, իսկ Ռշտունիքում՝ Սենեքերիմը։

Արտաքին քաղաքական հարցերում ևս միասնական գիծ չկար։ Այսպես, երբ 974 թ. Հովհան Չմշկիկ կայսեր Արևելք արշավելու առթիվ ստեղծված սպառնալիքից Հայաստանը զերծ պահելու համար Աշոտ Գ-ի կողմից զորաժողով հայտարարվեց, ապա Հայոց թագավորի կոչին արձագանքեցին Գուրգեն և Սենեքերիմ Արծրունիները, իսկ նրանց ավագ եղբայրը՝ Աշոտը չներկայացավ[1], թեև Բյուզանդական բանակի ռազմերթը ավելի մոտիկից և ավելի շատ սպառնում էր Վասպուրականին։

---

1 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 281։

Ծռատված քաղաքական իշխանությամբ Վասպուրականը խոցելի է դառնում հարևան մահմեդական տիրակալների համար։ Վասպուրականի հայկական բանակը մի շարք անհաջող, մեծ մասամբ պարտությամբ վերջացող, ընդհարումներ է ունենում նրանց հետ։ Երբ 983 թ. Ատրպատականի ամիրաներից մեկը ներխուժում է Վասպուրական, հայոց զորքը պարտվում է, իսկ Վասպուրականի սպարապետը և մարզպանը մի քանի իշխանների հետ գերի են ընկնում թշնամու ձեռքը[2]։

Նույնպիսի ելք է ունենում Հերի ամիրայի հետ, որոշ ժամանակ անց. տեղի ունեցած ընդհարումը։ Վասպուրականի թագավորության թուլության մասին է վկայում այն փաստը, որ երբ 998 թ. Ատրպատականի Ռավվադյան ամիրա Մամլանը վիրա-հայկական առաջխաղացումը ետ մղելու մտումով ռազմի ելավ հայ և վրաց ուժերի դեմ, ապա առ ոչինչ համարելով Վասպուրականի զորությունը, գրեթե անկաշկանդ անցավ նրա միջով՝ հասնելով Ապահունիք[3]։ Վասպուրականի թուլությունից պիտի շտապեր օգուտ քաղել Բյուզանդիան, բայց գործը սկզբից ևեթ տարվում էր դիվանագիտական խաղով ու ճնշմամբ։

1001 թ. Վասիլ Բ կայսրը Մանազկերտում իրեն ներկայացած Գուրգեն և Սենեքերիմ Արծրունիներին շնորհել էր ոչ միայն պատիվներ, այլև մահմեդականներից նվաճած Խլաթը, Մանազկերտը, Բերկրին, Արճեշը և Արծկեն, որով հույս էր ակնկալում վասալական կախման մեջ գցել Արծրունիներին, հեշտացնելով նրանց տիրույթների նվաճման գործը։ Կայսրը քաջ գիտակցում էր, որ հայ և վրաց ժողովուրդները կարող են միավորվել իր դեմ, ուստի Ապահունիքը և նրան կից շրջանները Արծրունիներին զիջելը հակադրություն կստեղծեր նրանց և նույն հողերի, որպես Տայքի Կուրապաղատության մի մասի նկատմամբ հավակնություններ ունեցող վրաց իշխանների միջև։

1003 թ. մահանում է Գուրգենը (Աշոտ Արծրունին մահացել էր դեռևս 990 թ.), Վասպուրականի թագավորությունը, փաստորեն, վերամիավորվում է Սենեքերիմի իշխանության ներքո, թեև Անձևացիքում իշխում էր նրա եղբորորդի Դերենիկը։

Սենեքերիմ Արծրունու թագավորելու տարիներին Վասպուրականը մի պահ վայելում է խաղաղություն, սակայն դա շատ կարճ է տևում։

Արևելքից արդեն իրենց զգացնել էին տալիս նոր վայրագ նվաճողներ՝ թուրքական ցեղերը, որոնք 1016 թ. խուժեցին Վասպուրական[4]։ Սենեքերիմ թագավորի որդի Դավթի և սպարապետ Շապուհի գլխավորությամբ Վասպուրականի զորքերը ուժեղ դիմադրություն են ցույց տալիս գերազանցապես նետաղեղով կռվող թուրքական հրոսակներին, սակայն պարտություն կրեցին նրանց գերակշիռ ուժերից, մասամբ և այն պատճառով, որ անսովոր էին նետաղեղով զինված թշնամու դեմ կռվելուն։ Առիթից օգտվելով Բյուզանդական կայսրությունն ուժեղացնում է իր ճնշումը Վասպուրականի վրա, մանավանդ պատրվակն էլ գտնվում է։ Սենեքերիմ թագավորը չէր մերժել 1015 թ. Վասիլի դեմ ելած վրաց Գուրգեն թագավորի օգնության խնդրանքը։

---

2 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 189—190։

3 Տե՛ս նույն տեղում, էջ 269—270։

4 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 46—48։

*Գուրգենը կռվում էր Տայքի ժառանգության համար, բայց Բյուզանդիան բնավ էլ չէր կամենում զիջել։*

*Վասիլ Բ կայսրը 1021 թ. իր բանակը շարժեց դեպի Կարնո դաշտ, ապա մտավ Բասեն, որն ավերելով, Վանանդի՛ հյուսիսային մասով դուրս եկավ Պաղակացիք (Փարվանա) լճի ափերը, որտեղ և տեղի ունեցավ գլխավոր ճակատամարտը։ Իբերա-աբխազական զորքերը կռվում են հերոսությամբ և մեծ կորուստներ են պատճառում բյուզանդական բանակին։ Բայց կայսերական զորքերի գերակշռությունն ակնհայտ էր, և Վասիլ Բ հրամայում է չխնայել ոչ ծերերին, ոչ երիտասարդներին, ոչ տղամարդկանց, ոչ էլ կանանց, և դաժան հաշվեհարդար է տեսնում իբերա-աբխազական թագավորության հարավ-արևմտյան 12 գավառների, մասնավորապես Տայքի բնակչության հետ, քանդում ու հրի է մատնում գավառների գյուղերն ու ավանները, իսկ բնակչությանը սրակոտոր է անում,— ցասումով ու ողբով նկարագրում է պատմիչը*[5]։

*Կատարվածը ահավոր էր։ Ի՞նչ էր սպասում Վասպուրականին, որն ի վիճակի չէր կռվելու և՛ թուրքական հրոսակների և՛ բյուզանդացիների դեմ։ Բագրատունյաց թագավորությունը Գագիկ Ա-ի մահից հետո թուլացած, պառակտված լինելով, չէր կարող օգնություն ցույց տալ Վասպուրականին։ Սենեքերիմ Արծրունին, անելանելի ծանր վիճակի մեջ ընկած, վերջնականապես վհատվել էր։ Նա ելքը որոնում էր հզոր հարևանի հետ լեզու գտնելու մեջ և 1021 թ. իր որդի Դավիթ արքայազնի գլխավորությամբ մի դեսպանություն ուղարկեց կայսրի մոտ։ Վասիլ Բ կայսրն իր հաշիվներն ուներ, նա խիստ ուրախացած էր, որ անարյուն հաղթանակ է տանում և կարող էր կայսրությանը միացնել ամբողջ Վասպուրականը, որը ոչ միայն ընդարձակ էր, բավականաչափ բարգավաճ, հայտնի էր արգավանդ դաշտերով, բնական հարստություններով, այլև ուներ խոշոր ռազմաստրատեգիական նշանակություն, ինչպես կայսրության հարավ-արևելյան սահմանների պաշտպանության, նույնպես և նոր նվաճումներ ձեռնարկելու համար։*

*Վասիլ Բ կայսրը Վասպուրականին պարտադրեց կործանիչ մի պայմանագիր, որով Արծրունյաց թագավորությունն իր 8 քաղաքներով, 72 բերդերով և 4000 գյուղերով միակցվեց Բյուզանդիային*[6]*։ Դրա դիմաց կայսրը Սենեքերիմին տվեց Սեբաստիա քաղաքն իր գավառներով*[7]*, որտեղ փոխադրվեցին Սենեքերիմն իր մերձավորներով, ազնվականության և զորքի հետ միասին։ Միայն տղամարդկանց թիվը 14 հազար էր, իսկ կին, երեխա, բոլորը միասին շուրջ 70—80 հազար։ Գաղթում էր ազնվականությունը, պետական իշխանությունը կրող հիմնական տարրը, որից միայն բեկորներ մնացին տեղում, գաղթում էր զինվորականությունը, որով Վասպուրականը զրկվում էր Բյուզանդական տիրապետության դեմ, ինչպես և այլ նվաճողների դեմ զենք բարձրացնելու հնարավորությունից։ Կցվելով կայսրությանը Վասպուրականը կազմեց նրա մի մարզը և համարվում էր հատուկ կատեպանություն*[8]։

---

5 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 30—31*։

6 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 500*, Սամուել Անեցի, *էջ 104*։

7 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 34*։

8 *Տե՛ս* «Извлечения из летописи Яхьи Антиохийского, Записки императорской Академии наук», том 44, СПб., 1883, стр. 62

## 2. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

Արտաքին ահեղ վտանգի առջև կանգնած Բագրատունյաց թագավորությունն ապրում էր հասարակական-քաղաքական ճգնաժամ։

Աշխարհիկ և հոգևոր հողատերերը կեղեքում էին աշխատավոր գյուղացիներին և մեծամեծ հարստություններ էին կուտակում։ Նրանք վարում էին ցոփ ու զեխ կյանք, իրար հետ մրցում էին հարստացման անհագ ձգտումով և եսասիրությամբ։ Առաջանում էր քաղաքային վերնախավը, որը զբաղվելով առևտրով, կապալառությամբ և վաշխառությամբ, սկսում էր մրցել խոշոր հողատերերի հետ։ Իշխող և ճնշվող դասակարգերի բևեռացումը մեծացել էր, խորացնելով նրանց միջև եղած վիհը։

Ծայր առտիճան սրվել էին դասակարգային ներհակությունները, թոնդրակյան շարժումը նոր ծավալ էր ստացել։ Միաժամանակ Բյուզանդական կայսրությունն սպառնում էր Բագրատունյաց թագավորության գոյությանը, արդեն իրենց զգացնել էին տալիս թուրքական քոչվոր ցեղերը։ Նման ծանր պայմաններում, երբ 1020 թ. վախճանվեց Գագիկ Ա թագավորը, նրա երկու որդիների՝ Հովհաննես-Սմբատի և Աշոտի միջև գահին տիրելու համար սուր պայքար սկսվեց։ Հովհաննես-Սմբատը թեև գրասեր, զարգացած մարդ էր, սակայն չէր փայլում ոչ ռազմական, ոչ էլ պետական գործչին անհրաժեշտ ընդունակություններով։ «Յովհաննէս աւագ էր քան զԱշոտ,— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— և իմաստուն և հանճարեղ յոյժ, բայց մարմնովն տարտամ և հեղգ և թուլամորթ ի պատերազմունս»[9]։ Նրա հակապատկերն էր Աշոտը, որ «էր արի և քաջ և զօրաւոր, անպարտելի և յաղթող ի պատերազմունս»[10]։ Գահակալական պայքարը պատճառ դարձավ հայոց երկրի երկու հակամարտ բանակների վերածվելուն։ Աշոտը իր եղբոր դեմ պայքարելու համար նույնիսկ ռազմական օգնություն խնդրեց Վասպուրականի թագավոր Սենեքերիմից և, ստանալով այն, հարձակվեց Անի քաղաքի վրա։ Հովհաննես-Սմբատը հնչեցրեց պատերազմական փողերը և հարձակվեց իր եղբոր վրա, թեև ինքը «ի գահոյսն անշարժ նստեալ կայր, վասն զի անհմուտ էր պատերազմի»[11]։ Մատթեոս Ուռհայեցու չափազանցված տվյալների համաձայն Աշոտի դեմ դուրս եկավ քառասուն հազար հետևակից և քսան հազար հեծյալներից բաղկացած բանակ։ Այդպիսի պայմաններում Բագրատունիների և Պահլավունիների մեծամեծները, կաթողիկոսը ջանքեր թափեցին դադարեցնելու արյունահեղությունը և գահակալական այդ վեճը լուծելու ուղիներ փնտրեցին։ Եղբայրներին հաշտեցնելու համար պետք եղավ նաև Ափխազաց և Վրաց թագավոր Գեորգիի միջամտությունը։ Կայացած համաձայնությամբ Հովհաննես-Սմբատը դառնում էր հայոց թագավոր՝ Անի մայրաքաղաքով։ Անիից բացի, նրա տիրույթների մեջ էին մտնում նաև Շիրակը, Արարատյան դաշտը, Աշոցաց ձորը, Ամբերդը, Կայան և Կայծոն բերդերը և Տավուշ գավառը[12]։ Բագրատունի-

---

9 Մատթեոս Ուռհայեցի, էջ 7—8։

10 Նույն տեղում, էջ 8։

11 Նույն տեղում։

12 Տե՛ս Վարդան, էջ 92։

յաց թագավորության մնացած հողերը՝ «դրսի աշխարհը», որ սահմանակից էր Պարսկաստանին, մասամբ և Վրաց, անցնում էին Աշոտի իշխանության ներքո, ընդ որում, Հովհաննես-Սմբատի մահից հետո Աշոտը պիտի լիներ «թագավոր ամենայն տանն Հայոց»։

Այսուհանդերձ, Հովհաննես-Սմբատի և Աշոտի միջև եղած հակամարտությունը չվերջացավ, ընդհակառակը, գնալով էլ ավելի խորացավ։ Աշոտը նույնիսկ դավադրաբար ձերբակալեց իր եղբորը և կամենում էր սպանել, բայց չհաջողվեց։

Այս երկպառակությունները թուլացրին Բագրատունյաց թագավորությունը։ Դեռ նոր էին հաշտեցվել երկու եղբայրները, երբ 1021 թ. Ատրպատականից Հայաստան խուժեցին դայլամցիների (դելմիկների) մոտ ծառայող թուրքերը, որոնք Դվինի վրայով հասան մինչև Նիգ (Ապարան) գավառը, ամենուրեք սփռելով ավեր և կողոպուտ։ Նրանց դեմ դուրս եկավ Բջնիի տեր Վասակ Պահլավունի իշխանը, որը քաջ զորավար էր։ Նա հեծելազորի գլուխն անցած ճակատամարտեց ասպատակողների դեմ Քասաղ գետի ափին, Սաղմոսավանքից ոչ հեռու, Սերկևլի կոչվող վայրում և թշնամիներից կոտորելով երեք հարյուր զինվոր, նահանջի մատնեց նրանց, բայց ինքն էլ պատահաբար սպանվեց անհայտ մեկի ձեռքով։

Ահա այդպիսի բարդ պայմաններում երկրի գլխին կախվեց բյուզանդական վտանգը։ Վասիլ Բ բուլղարների հետ իր հաշիվները մաքրելով, մեծ բանակի գլուխ անցած շարժվեց Արևելք։ Նա Հայոց և Վրաց դեմ մղվելիք պատերազմում ուզեց օգտագործել երկրի ներսում, և առաջին հերթին Հովհաննես-Սմբատի և Աշոտի միջև եղած սուր հակամարտությունը։ Աշոտն էլ, որ կարծում էր, թե կարող է Բյուզանդիայի օգնությամբ հաջողության հասնել իրեն չենթարկվող իշխանների և իր եղբոր նկատմամբ, դիմեց Վասիլ Բ-ին և ռազմական օգնություն ստացավ։

Վասիլ կայսրը նոր էր ավարտել Ափխազաց և Վրաց թագավոր Գեորգի Ա-ի դեմ մղվող պատերազմը, մահ ու ավեր սփռելով Տայքում և հարևան վրացական գավառներում։ 1021 թ. վերջերին Վասիլ Բ գնացել էր ձմեռելու Պոնտոսում։ Սպասվում էր, որ հաջորդ տարին նա արշավանք կձեռնարկի Բագրատունյաց թագավորության դեմ, առիթ ունենալով այն, որ Հովհաննես-Սմբատը օգնություն էր խոստացել Գեորգի Ա-ին, մանավանդ Վասպուրականի միակցմամբ կայսրությունը աքցանի մեջ էր առել Բագրատունյաց թագավորությունը։

Հովհաննես-Սմբատին պարզ էր, որ հազիվ թե հնարավոր լինի զենքի ուժով կասեցնել բյուզանդական կայսրի առաջխաղացումը և փրկել իր թագավորությունը ահեղ թշնամուց։ Բյուզանդական հարձակումը ժամանակավորապես կանխելու հույսով նա որոշում է բանակցություններ վարել Տրապիզոնում գտնվող կայսեր հետ, այնտեղ ուղարկելով հայոց Պետրոս Գետադարձ կաթողիկոսին։

Բյուզանդական կայսրությունն էլ, ինչպես միշտ, պատրաստ էր զենքի ուժին զուգորդել քաղաքական, դիվանագիտական հարկադրանքը և Բագրատունիներին պիտի պարտադրեր իրենց տիրույթները կայսրին կտակելու, Տայքում և Վասպուրականում արդեն հաջողությամբ փորձված, միջոցը։ 1022 թ.

Տրապիզոնում Պետրոս կաթողիկոսը Վասիլ Բ-ի հետ պայմանագիր է կնքում, որի համաձայն Հովհաննես թագավորի մահից հետո Անին անցնելու էր բյուզանդական կայսրին։ «Անգ եղև Հայոց կորստեան գիր և նամակ»,— գրում է Արիստակես Լաստիվերտցին։ Հովհաննես-Սմբատը հանձնարարել էր Պետրոս կաթողիկոսին, թե «Գրիր գիր և տուր կտակ թագաւորին (կայսրին), որ իմ վախճանից հետո իմ քաղաքը և երկիրը կտրվի նրան որպես ժառանգություն»[13]։

Տրապիզոնի պայմանագրի մասին պատմում են և բյուզանդական հեղինակները, արձանագրելով Վասիլ Բ-ի գործած ճնշումը Հայոց թագավորի վրա։ Սկիլիցան գրում է. «Այն ժամանակ, երբ Ափխազաց առաջնորդ Գեորգիոսը պատերազմ սկսեց հռոմայեցիների (իմա բյուզանդացիների) դեմ, նրան դաշնակցել էր Անիի տեր (κύριος) Հովհաննեսիկը (Ἰωβανεσίκης)։ Բայց որովհետև, ինչպես վերևում ասվեց, Վասիլ կայսրը զորքով գալով Իբերիա, կռվեց Գեորգիոսի դեմ, պարտության մատնեց նրան և ջախջախեց, Հովհաննեսիկը վախենալով, որ կայսրը հանկարծ զայրացած լինելով իր դեմ՝ Գեորգիոսի հետ դաշնակցած լինելու պատճառով, փորձանք կբերի իր գլխին, վերցնելով Անի քաղաքի բանալիները, անձնապես գնաց կայսեր մոտ, կամավոր կերպով հանձնվեց նրան և նրան հանձնեց բանալիները։ Կայսրը գովեց նրա խոհեմությունը, պատվեց նրան մագիստրոսի աստիճանով և նշանակեց Անիի և Մեծ Հայք կոչված երկրի ցմահ իշխան, նրանից նախօրոք գրություն վերցնելով, թե իր մահից հետո Հովհաննեսիկի ամբողջ իշխանությունը կանցնի իր՝ Վասիլի ձեռքը և կդառնա Հռոմեական կայսրության բաղկացուցիչ մասը»[14]։

1022 թ. հունվարի 6-ին, աստվածահայտնության տոնի օրը, Պետրոս կաթողիկոսը Տրապիզոնում Վասիլ Բ կայսեր և մեծաթիվ ամբոխի ներկայությամբ ջրօրհնեքի ծեսը կատարեց տեղի գետակի վրա՝ հայոց եկեղեցու կարգի համաձայն։ Մեռոնը ջուրը հեղելու պահին իբր՝ ջրից լույս ճառագայթեց։ Այս զրույցը հետագայում իր զարգացումն ունեցավ։ Հոգևորականները ժողովրդի մեջ տարածվեցին մի վարկած, համաձայն որի, գետակը կանգ առավ, սկսեց հոսել հակառակ ուղղությամբ՝ «հրաշագործ» կաթողիկոսի հոսեցրած մեռոնից։ Դրանից հետո Պետրոս կաթողիկոսը պատմության մեջ մտավ Գետադարձ մականվամբ։

Եկեղեցական հետագա մատենագիրներն այս զրույցն ստեղծել են հայ եկեղեցու և նրա պետի հեղինակությունը փրկելու միտումով, մինչդեռ անցքերին ժամանակակից Արիստակես Լաստիվերտցին ոչ միայն չի հիշատակում նման հրաշագործություն, այլև անարգանքի սյունին է գամում Պետրոս կաթողիկոսին. «Յոյժ գանձուց սիրող էր Պետրոս, որ և բազումք վասն այնր եպերէին (նախատում էին) զնա»[15], իսկ Հովհաննես-Սմբատի կտակը համարելով Հայաստանի վաճառք, ավելացնում է՝ «այս վաճառ անմարդագոյն գոլ թուի ինձ քան զՅուդայինն»[16]։

---

13 Արիստակես Լաստիվերտցի, էջ 32։

14 *Georgius Cedrenus*, t. II, p. 556—557.

15 Արիստակես Լաստիվերտցի, էջ 82։

16 Նույն տեղում, էջ 61։

1022 թ. գարնանը Վասիլ Բ կայսրը գնաց Տայք, շարունակելու վրաց Գեորգի թագավորի դեմ ընդհատված պատերազմը։ Այդ միջոցին կայսեր դեմ ապստամբություն բարձրացրեց Վարդ Փոկասի որդի Նիկեփոր Ծռվիզը, որը պատճառ դարձավ Գեորգիի դեմ մղվող պատերազմի ժամանակավոր ընդհատմանը։ Նիկեփոր Ծռվիզին դավադրությամբ սպանելուց հետո, Վասիլը վերստին շարունակեց պատերազմը։ Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ Բասեն գավառի Շղփա վայրում, որտեղ Գեորգին ծանր պարտություն կրեց։ Վասիլ Բ նամակ գրեց Ափխազաց և Վրաց թագավորին, թե «Մի կարծէր, թէ յաղթեցի քեզ, աւելի ինչ խնդրեմ ի քէն՝ քան զոր յառաջն. այլ տուր զիմ հայրենիքն՝ զոր կիւրապաղատն ինձ տուեալ է, և տուր զքո որդիդ ինձ պատանդ»[17]։ Գեորգին ստիպված համաձայնվում է, և հաշտություն է կնքվում։ Կայսրը «իշխանս ի վերայ գաւառին կացուցեալ, բաժանեն տուն առ տուն և գիւղ առ գիւղ և ագարակ առ ագարակ, որպէս յառաջինսն լեալ էր»[18]։

Այնուհետև Վասիլ Բ Հայաստանի միջնաշխարհով շարժվում է դեպի հարավ, կրկին գրավում է Բերկրին, բայց չի կարողանում զարգացնել նվաճողական պատերազմը հարավում, որովհետև զորքը հրաժարվում է շարունակել երկու տարի երկարած պատերազմը, մանավանդ շատ է նեղվում վաղ սկսված ցրտերից։

Տրապիզոնի պայմանագրի ստորագրումից հետո Հայոց թագավորության վիճակը արտաքուստ, ճիշտ է, որոշ չափով կայունացավ. Բյուզանդական կայսրությունը բացահայտ ոտնձգությունների չէր դիմում, ռազմական ընդհարումներ հայկական և բյուզանդական զորքերի միջև տեղի չէին ունենում։ Նույնիսկ ավանդություն է պահպանվել, թե Վասիլ Բ-ին հաջորդած Կոստանդին կայսրը (1025—1028) իբրև թե կամեցել է ետ վերադարձնել Հովհաննես-Սմբատի կտակը ոմն Կիրակոս եկեղեցականի միջոցով, իսկ սա թաքցրել է կտակը և հետագայում վաճառել Միքայել կայսրին։ Երկրի վիճակը, սակայն, շարունակում էր խախուտ մնալ, սոցիալական ներհակությունները սրվել էին։ Թոնդրակյան շարժումը կրկին բորբոքվել և սպառնալից կերպարանք էր ընդունել։ Այդպիսի պայմաններում քաղաքական ասպարեզ իջավ հոգևոր և պետական գործիչների մի խումբ, որն այդ ճգնաժամային վիճակից ելքը տեսնում էր երկիրը Բյուզանդիային միացնելու մեջ։ Երբ Պետրոս կաթողիկոսը Տրապիզոնում ստորագրում էր Վասիլ Բ-ի առաջարկած պայմանագիրը, նա պարզապես հետևում էր Հովհաննես-Սմբատին կայսրության կողմից պարտադրված համաձայնությանը[19]։ Հետագայում, սակայն, Պետրոսն արդեն սկսեց այդ ուղղությամբ ինքնուրույն գործել, գլխավորելով հայ ավագանու այն խումբը, որը կողմնակից էր Հայաստանում Բյուզանդական կայսրության իշխանության հաստատմանը։ Այդ խմբի աչքի ընկնող գործիչներից մեկը վեստ Սարգիսն էր, որը 1033 թ. թողած իր արձանագրության մեջ պարծենում է, թե հավատարիմ

---

17 Արիստակես Լաստիվերտցի, էջ 37—38։
18 Նույն տեղում, էջ 38։
19 Տե՛ս նույն տեղում, էջ 32։

ծառայել է բյուզանդական երեք կայսրերի և արժանացել մեծ պաշտոնների ու պատիվների։ «Որդիացեալ և սիրեալի ճորտ Սարգիս,— գրել է նա,— Գ-ից (երից) թագաւորաց Հոռոմոց առեալ Գ-ից պատիւ՝ անթիպատ պատրիկ, վեստ և դուկ արևելից»[20]։

Հովհաննես-Սմբատը թեև ստեղծված իրադրության ծանր պայմաններում հարկադրված էր եղել իր երկիրը կտակել Բյուզանդիային, բայց իրականում բնավ էլ չէր կամենում, որ Տրապիզոնի պայմանագիրը իրականանա և այդ հողի վրա նա խիստ ընդհարվեց Պետրոս կաթողիկոսի հետ։ Վերջինիս վարած բացահայտ բյուզանդասիրական քաղաքականությունից դժգոհում էր ոչ միայն Հովհաննես թագավորը, այլև ազնվականությունն ու ժողովրդական լայն զանգվածները։ 1033 թ. Պետրոս կաթողիկոսը զգալով վերահաս վտանգը, «յարուցեալ... յաթոռոյ իւրմէ ծածկաբար և գնաց ի Վասպուրական խռովութեան աղագաւ»[21]։ Նա գնաց Վասպուրական՝ փրկություն փնտրելու բյուզանդական կատապանի մոտ, ուր և, ամենայն հավանականությամբ, շարունակում էր իր հայրենադավ քաղաքականությունը։ Չորս տարի անց, 1037 թ. Վասպուրականի բյուզանդական կառավարչի միջամտությամբ Պետրոսը վերադառնում է Անի, բայց նա իսկույն ձերբակալվում է և արգելափակվում Բջնիում, Գրիգոր Մագիստրոսի կալվածքում, որը թեև անձնապես մոտիկ էր և Պետրոս կաթողիկոսին, և իր փեսա վեստ Սարգսին, բայց հաստատ չի կարելի ասել, թե բաժանում էր նրանց քաղաքական գիծը[22]։

Այս ծանր և բախտորոշ տարիներին Բագրատունյաց թագավորության զորավիգ և Հայաստանի անկախության նախանձախնդիր թևի պարագլուխը երկրի սպարապետ, մեծ զորավար Վահրամ Պահլավունին էր, որը ամեն կերպ աշխատում էր պահպանել Անիի թագավորության անկախ գոյությունը, ջանք էր թափում դիմագրավելու բյուզանդական առաջխաղացմանը։

Պետրոս կաթողիկոսը Բջնիում մնաց մոտ մեկ ու կես տարի։ Հովհաննես-Սմբատը և հայ նախարարները կաթողիկոսական աթոռին նստեցրին Սանահնի վանահայր Դիոսկորոսին, որը, սակայն, մեկ տարի և երկու ամիս աթոռակալելուց հետո հեռացվեց։ Նրան չընդունեց հայոց բարձր հոգևորականությունը «ի ձեռնադրութեանն նորա ոչ ժողովեցան եպիսկոպոսք և քահանայք և հայրապետք»[23]— գրում է Մատթեոս Ուռհայեցին։ Իր աթոռակալության ժամանակ Դիոսկորոսը եպիսկոպոս ձեռնադրեց Պետրոսի հակառակորդներին, մի բան, որն էլ ավելի մեծ դժգոհություն առաջացրեց հոգևորականների շրջանում,

---

20 Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, էջ 17։

21 Մատթեոս Ուռհայեցի, էջ 75։

22 Գրիգոր Մագիստրոսի քաղաքական դիրքավորման վերաբերյալ ուսումնասիրողները արտահայտել են հակադիր կարծիքներ, ոմանք գտնում են, որ նա սկզբից ևեթ ունեցել է բյուզանդական կողմնորոշում և գործակցել է Պետրոս Գետադարձի ու վեստ Սարգսի հետ, մյուսները պնդում են, որ նա որոշ շրջանում, չի բաժանել Պետրոսի և այլոց քաղաքական գիծը, ընդհակառակը հետևել է Բագրատունյաց թագավորությունը պահպանելուն կողմնակից խմբի պարագլուխ և իր հորեղբայր Վահրամ Պահլավունուն։

23 Մատթեոս Ուռհայեցի, էջ 76։

որոնք «ընդ նզովիւք փակեցին զթագաւորն և զամենայն նախարարսն Հայոց վասն հակառակութեան, որ եղև ի մէջ եկեղեցւոյն»[24]։ Երկպառակության առաջն առնելու նպատակով Հովհաննես-Սմբատը և իշխանները Աղվանից կաթողիկոս Հովսեփի միջնորդությամբ Պետրոսին վերականգնում են իր աթոռի վրա։



Մաղասաբերդ, որը պաշտպանում էր Անիի մատույցները ճարավից

Այս ամենը Բագրատունյաց թագավորության ապրած տարտամ և ճգնաժամային վիճակի արտահայտություններն էին։ Երկրի հասարակական-քաղաքական ճգնաժամը, ստեղծագործ շինարարական աշխատանքների խաթարվածությունը, աշխատավոր բնակչության կեղեքումը, սոցիալական սուր բախումները, օտարների ներխուժումները և երկրի անկախությանն սպառնացող վտանգը առաջացրել էին հոռետեսական անկումային տրամադրություններ, իսկ XI դարի 20—30-ական թվականներին գիսավոր աստղի երևալը և արևի խավարումը առիթ ծառայեցին այդ տրամադրություններն արտահայտող և աշխարհի վերջը ազդարարող գրականության երևան գալուն։

## 3. ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

1040 թ. վերջին վախճանվեց Հովհաննես-Սմբատ թագավորի եղբայր Աշոտը։ Իր հոր՝ Գագիկ թագավորի մահից հետո, երբ երկու եղբայրների միջև երկպառակություն էր սկսվել, Հովհաննես-Սմբատը թույլ չէր տվել, որ իր եղբայր Աշոտը մուտք գործի Բագրատունիների մայրաքաղաքը։ Ահա այժմ Աշո-

24 Մատթեոս Ուռհայեցի. էջ 77։

*տը, որ «ի կենդանութեան փւրում... ոչ մտաւ ի քաղաքն յԱնի»[25], դագաղի մեջ բերվում է Հայոց մայրաքաղաքը՝ թաղվելու համար Բագրատունիների տոհմական գերեզմանոցում։ Այդ միջոցին, ամենայն հավանականությամբ Բյուզանդական կայսրության գաղտնի դրդմամբ, Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարը, մեծաթիվ զորքի գլուխն անցած հարձակվեց Դավիթ Անհողինի տիրույթների վրա և մահ ու ավեր սփռելով գրավեց մի քանի գավառներ և բերդեր։ Դավիթ Անհողինը դժվար կացության մեջ ընկավ և դիմեց Հովհաննես-Սմբատ թագավորի օգնությանը, որը նրան տվեց 3—4 հազար զինվոր։ Օգնության հասան նաև Կապանի, Ափխազաց ու Վրաց թագավորները։ Միացյալ զորքը պարտության մատնեց Դվինի ամիրային և հալածական արեց ու ազատեց այլազգիների ձեռքն անցած հայկական շրջանները։*

*Սա Հովհաննես-Սմբատի քաղաքական գործունեության վերջակետը եղավ։ 1041 թ. սկզբին նա կնքեց իր մահկանացուն և թաղվեց Անիում։*

*Հովհաննես-Սմբատը վախճանվեց առանց ժառանգ թողնելու։ Դա պատճառ դարձավ գահակալական սուր պայքարի։ Բագրատունյաց գահին տիրանալու փորձ կատարեց Դավիթ Անհողինը, որը խուժեց Բագրատունիների գավառները, բայց հաջողություն չունենալով, ստիպված վերադարձավ իր տիրույթները։*

*Հովհաննես-Սմբատի մահվան լուրը Բյուզանդական կայսրություն հասցրեց վեստ Սարգիսը, որը ոչ միայն բյուզանդացիներին հրավիրում էր Անի, այլև հայոց թագավորական գանձարանը հափշտակելով, փակվել էր Անվո միջնաբերդում։ Հայոց գահին օտարի օգնությամբ տիրանալու ցնորքով տարված, նա սպասում էր բյուզանդական զորքերի գալստյան։ Բյուզանդական կայսրությունը, որ անհամբերությամբ սպասում էր «կտակատիրոջ» ժամ առաջ վախճանվելուն՝ նրա թողած «ժառանգությանը» տիրանալու համար, ամենևին էլ չհապաղեց։ Բյուզանդական մի մեծ բանակ հարձակում սկսեց Անիի թագավորության դեմ, սրի, ավարի ու գերության մատնելով երկիրը։ Բազմաթիվ շրջաններ ստիպված հպատակություն հայտնեցին բյուզանդացիներին։ Հերթը հասել էր Բագրատունիների նշանավոր ու շքեղ մայրաքաղաքին՝ Անիին։ Հայ ժողովուրդը ոտքի կանգնեց պաշտպանելու իր հայրենիքը, իր պետականությունը։ Շուրջ երկու դար տևող անկախությունից հետո դժվար էր հաշտվել այն մտքի հետ, որ հայրենիքը նորից պիտի կրի օտարի ծանր լուծը։ Մի փոքրիկ պետություն, ներքին ու արտաքին հարվածներից անչափ թուլացած, ընդդիմակայելու էր այդ ժամանակ աշխարհի խոշորագույն և հզորագույն պետությանը, բազմադարյան դիվանագիտական փորձ ունեցող Բյուզանդական կայսրությանը։*

*Բյուզանդական բանակը, պատմիչների ասելով, կազմված հարյուր հազար զինվորներից, պաշարել էր Անին, որի անկման համար հող էին պատրաստել իշխող վերնախավի ներքին երկպառակությունները։ Այս օրհասական պահին, սակայն, մեկ մարդու պես ոտքի կանգնեց մայրաքաղաքի աշխատավոր բնակչությունը և զորքը։*

---

25 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 79։*

*Հայոց զորքը՝ «բարկութեամբ որպէս զգազանս զայրացեալք և առ հասարակ ելեալ ի պատերազմ արք երեսուն հազար հետևակք ձիաւորք... որպէս զկայծակն հեղան ի վերայ զօրացն Հոռոմոց»[26]։ Ճակատամարտը տեղի ունեցավ Անիի պարիսպների տակ՝ Ծաղկոցաձորում։ Հայ կտրիճները, սպարապետ Վահրամ Պահլավունու գլխավորությամբ, անխնա կոտորում էին օտար նվաճողներին, որոնց մեծ մասը փորձեց փրկվել՝ փախուստի դիմելով։ Ախուրյան գետը, գրում է պատմիչը, կարմիր ներկվեց թշնամու արյունով։ Բյուզանդական զորքերը, որոնց գլխավորում էր Իբերիա բանակաթեմի դուքս Միքայել Իասիտեսը, ստիպված եղավ վերադառնալ ձեռնունայն։ «Եւ այլ ոչ ևս խնդրեցին զօրքն Հոռոմոց զքաղաքն Անի, այլ դարձան ամօթով և գնացին ի Կոստանդնուպօլիս առ Միխայլն»[27]։ Այս փայլուն հաղթանակից հետո Վահրամ Պահլավունին և նրա շուրջը համախմբած 30 հայ իշխաններ՝ Բագրատունյաց դահին նստեցնում են Հովհաննես-Սմբատի եղբայր Աշոտի 18-ամյա որդի Գագիկին և նրան օծում հայոց թագավոր (1042)։ Չնայած իր երիտասարդ հասակին, Գագիկը հանդես բերեց ռազմական և պետական գործչի մեծ ընդունակություններ։ Նրա հիմնական նպատակն էր «իմաստութեամբ իւրով հաստատել զաթոռ թագաւորութեանն Հայաստան աշխարհ»[28] և իր ծրագիրն սկսեց իրականացնել պայքարելով նախ և առաջ երկրի զորությունը ներսից քայքայողների դեմ։ Նա որոշեց ձերբակալել դավաճան վեստ Սարգսին, որն ամրացել էր Անիի միջնաբերդում, այնուհետև Սուրմառի բերդում, ծրագրելով Սուրմառին և այլ բերդեր, որոնք իրեն էին պատկանում, հանձնել բյուզանդացիներին[29]։ Գագիկ թագավորը ձերբակալեց ու խոշտանգեց վեստ Սարգսին, ետ վերցրեց արքունի գանձերը, որ նա հափշտակել էր Հովհաննես թագավորի մահվանից հետո։ Բայց Գագիկը հետևողական չգտնվեց և ըստ երևույթին ճնշման տակ ոչ միայն ազատ արձակեց վեստ Սարգսին, այլև պատանեկան դյուրահավատությամբ հավատաց նրա երդումներին և վերականգնեց նրան իր պաշտոնին։ Օգտվելով դրանից, վեստ Սարգիսը շարունակեց իր կործանարար գործունեությունը։*

*1042 թ. բյուզանդական դահին նստեց Կոստանդին Մոնոմախը։ Նա վճռեց ինչ գնով էլ լինի տիրանալ Անիին, գլուխ բերել այն գործը, ինչ չկարողացավ Միքայել կայսրը։ Նա դիմեց Գագիկ Բ-ին և, որպես Հովհաննես-Սմբատի «կտակի» ժառանգորդ, պահանջեց «իր» ժառանգությունը։ Գագիկ թագավորը լավ գիտեր, որ զենքի ուժով միշտ հնարավոր չէ չափվել հզոր Բյուզանդիայի հետ, ուստի և փորձեց դիմել դիվանագիտության։ Բյուզանդական պատմիչ Սկիլիցան գրում է, որ Գագիկը խաղաղություն էր պահպանում բյուզանդացիների հետ և դաշնակցություն, իրեն համարում էր կայսեր ծառան* (δοῦλος), *բայց չէր ուզում իր իշխանությունը զիջել կայսրին։ Վերջ ի վերջո տեսնելով, որ բյուզանդացիներին դա չի բավարարում, որ նրանց նպատակը Հայոց թագավորության վերացումն է և նրա կցումը Բյուզանդական կայսրության, Գագիկը որոշեց դիմադրել*[30]։

---

26 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 85*։

27 *Նույն տեղում, էջ 86*։

28 *Նույն տեղում, էջ 87*։

29 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 58*։

30 *Տե՛ս Georgius Cedrenus*, t. II, p. 556–557.

1044 թ. Կոստանդին Մոնոմախը որոշում է վերջ դնել Բագրատունյաց թագավորությանը և մեծաքանակ զորք տրամադրելով Միքայել Իասիտեսին, հրամայում է գրավել Անին։ Բայց բյուզանդական զորքերի այս երկրորդ արշավանքն էլ վերջանում է բյուզանդական բանակի խայտառակ պարտությամբ։ Կատաղած կայսրը նույն՝ 1044 թ. Գագիկի դեմ ուղարկում է բյուզանդական զորքերի սպարապետ ներքինի Նիկոլայոսին՝ իր սենեկապետին։ Մատթեոս Ուռհայեցին ծաղրում է բյուզանդական կայսեր այդ քայլը, գրելով, որ նա «զայր կին կամէր դնել պահապան աշխարհին Հայոց փոխանակ հզօր քաջին Գագկայ»[31]։ Անիի պարպասների առջև կրկին տեղի ունեցավ կատաղի ճակատամարտ, որտեղ հայերը սպարապետ Վահրամ Պահլավունու և Գագիկ Բ թագավորի գլխավորությամբ փայլուն հաղթանակ տարան ու փախուստի մատնեցին բյուզանդական զորքերին։ Զորավար Նիկոլայոսը ետ նահանջեց և ապաստանեց Ուղտիքում (Օլթի).

Սեփական ուժերով ի վիճակի չլինելով հաղթահարել հայոց դիմադրությունը, բյուզանդական կայսրը դիմեց մի ստոր քայլի՝ բանակցությունների մեջ մտավ Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարի հետ, առաջարկելով նրան ասպատակել Գագիկ թագավորի տիրույթները[32]։ Կայսրը խոստացավ նրան թողնել Բագրատունյաց թագավորությունից բոլոր այն շրջաններն ու բերդերը, որոնց կտիրի նա զենքի ուժով։ Դվինի ամիրան չհապաղեց գործադրելու բյուզանդական կայսեր հետ կնքած համաձայնությունը։

Բյուզանդիան էլ անգործ չէր մնում։ «Զօրքն Հոռոմոց,— գրում է Արիստակես Լաստիվերտցին,— չորս անգամ զկնի միմեանց մտին յաշխարհն Հայոց, մինչև մարդաթափ արարին զերկիրն ամենայն սրով և հրով և գերութեամբ»[33]։ Բայց այդ անգամ էլ թշնամուն չհաջողվեց կոտրել հայերի դիմադրությունը։ Հայ ժողովուրդը հերոսական պայքար էր մղում իր երկրի անկախության համար։ Անիի հերոսական պաշտպանությունը փաստորեն հայկական պետականության պահպանման համար մղվող անձնազոհ սխրագործություններով ուղեկցվող մի գոյամարտ էր, հզոր նվաճողների դեմ և ժողովրդի ինքնապաշտպանության փայլուն մի էջ։ Բայց այն, ինչ չկարողացան բյուզանդացիներն անել զենքով, արեցին նենգությամբ։ Վեստ Սարգսի խորհրդով Կոստանդին Մոնոմախը, իբր բանակցություններ վարելու համար, Գագիկ թագավորին հրավիրում է Կոստանդնուպոլիս։ «Կոչեա զԳագիկ պատճառանօք սիրոյ ի Կոստանդնուպօլիս և մի թողուր ելանել ի քաղաքէն մինչև զքաղաքն Անի առցես ի ձեռս»[34], խորհուրդ էր տալիս վեստ Սարգիսը Մոնոմախին։ Կոստանդին Մոնոմախը հավանություն է տալիս այդ ծրագրին և Գագիկին հրավիրում Կոստանդնուպոլիս երդվելով, թե «միայն ի տեսանելն զքեզ, դարձուցից ի քեզ զթագաւորութիւնդ քո, և դրեցից զքեզ ժառանգ յաւիտենից աշխարհիդ և քաղաքիդ քոյ»[35]։

---

31 Մատթեոս Ուռհայեցի, էջ 96։
32 Տե՛ս Georgius Cedrenus, t. II, p. 558—559.
33 Արիստակես Լաստիվերտցի, էջ 58։
34 Անդ, էջ 61։
35 Արիստակես Լաստիվերտցի, էջ 61։

*Վահրամ Պահլավունին և մնացած ազատանին, որոնք Գագիկին գահ էին նստեցրել, խորհուրդ չտվին նրան գնալ Կոստանդնուպոլիս, բայց Գագիկը տարտամ հույսով, թե կկարողանա խաղաղ ճանապարհով վերջ տալ պատերազմին և փրկել հայոց պետականությունը, երկար տատանվելուց հետո, գնաց կայսեր մոտ, բայց այլևս չտեսավ իր հայրենիքը։ Նա թռչունի պես ծուղակն ընկավ, գրում է Արիստակես Լաստիվերտցին։ Կայսրը Գագիկից պահանջեց Անին, փոխարենը խոստանալով Մելիտինե քաղաքը և շրջակա գավառները։ Գագիկը մերժեց. «Տէր և թագաւորն ես եմ տանն Հայոց.— ասաց նա բյուզանդական կայսրին,— ահա ես ոչ տաց զՀայք ի ձեռս քո»[36]։ Պետրոս կաթողիկոսը, վեստ Սարգիսը և նրանց համախոհները մինչ այդ Մոնոմախին ուղարկել էին Անիի բանալիները։*

*Հենց այդ ժամանակ էր, որ Գրիգոր Մագիստրոսն էլ գնում է կայսեր մոտ, տալիս նրան իր բոլոր տիրույթները։ Նա այդ քայլին դիմեց, երբ տեսավ, որ հայոց պետականության պահպանումը դարձավ անհնարին. «իբրև ետես եթէ ոչ են թողլոց զԳագիկ ի տեղի իւր, յառաջ կացեալ տայ զբանալին Բջնոյ ցԹագաւորն, և զամենայն զիւր զհայրենի ժառանգութիւնն. և մեծարեալ ի նմանէ՝ առնու զպատիւ մագիստրոսութեան, և զտեղիս բնակութեան ի սահմանս Միջագետաց գիւղս և քաղաքս, դրով և ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչև յաւիտեան»[37]։*

*Ստանալով Անիի բանալիները և բյուզանդական կողմնորոշում ունեցող իշխանների նամակը, Կոստանդին Մոնոմախը կրկին հարկադրում է Գագիկին իրեն հանձնել Անին և թագավորության բոլոր հողերը։ Սակայն Գագիկը հաստատուն է մնում իր դիրքում և պատասխանում է կայսրին, որ ինքն է Անիի և Արևելքի տերը իշխանների հետ միասին և առանց իր համաձայնության իշխանները չեն կարող հայոց երկիրը կայսրին տալ և ոչ էլ ինքը կարող է տալ առանց իշխանների համաձայնության, իսկ իշխաններից շատերը համաձայն չեն։ Գագիկ Բ-ի պատասխանը Մոնոմախին շատ ուշագրավ է ոչ միայն նրա հաստատուն դիրքի, այլև միջնադարյան հողատիրական իրավունքի տեսակետից։*

*Անիի ավագանին այս ծանր վիճակում որոշում է քաղաքը տալ Դավիթ Անհողինին կամ Ափխազաց և Վրաց Բագրատունի թագավոր Բագարատին։ Բայց մինչ այդ Պետրոս կաթողիկոսը դիմում է Սամոսատ, բյուզանդական արևելից զորավարին, խոստանալով Անին, ինչպես և այլ քաղաքներ ու բերդեր։ Բյուզանդական զորքերը կրկին երևում են հայոց մայրաքաղաքի պատերի տակ և տիրում են նրան։ 1045 թ. վերջ է դրվում Բագրատունիների կենտրոնական թագավորությանը, երկիրը դառնում է բյուզանդական սովորական մի նահանգ։ «Խափանեալ փլաւ տէրութիւն ազգին Բագրատունեաց»[38],— ողբում է Մատթեոս Ուռհայեցին։*

---

36 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 95*։
37 Արիստակես Լաստիվերտցի, *էջ 62*։
38 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 97*։

Բյուզանդացիների ձեռքն ընկած և իր թագավորությունը կորցրած Գագիկ Բ արքան ստանում է Կալոն Պեղատը և Պիզուն ու ապրում այնտեղ, մինչև որ բյուզանդացիները վերջ կտային նաև նրա կյանքին։

Բագրատունյաց թագավորության անկումը հույժ ողբերգական հետևանքներ ունեցավ Հայաստանի համար։ Հայ ժողովուրդը երկար դարեր կորցրեց իր ինքնուրույն պետականությունը բուն Հայաստանում։ Սկիզբ առավ զանգվածային արտագաղթը, որը հետզհետե ջլատեց հայ ժողովրդի ուժերը։

## ԲԱԺԻՆ Բ



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԸ IX-XI ԴԱՐԵՐՈՒՄ

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆ. ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ԽՈՇՈՐ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

### 1. ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՃՅՈՒՂԵՐԻ՝ ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Նախորդ ժամանակների նման երկրի տնտեսության հիմնական ճյուղերը կազմում էին երկրագործությունն իր երկու ենթաճյուղերով՝ դաշտավարությամբ և այգեգործությամբ, և անասնապահությունը։ Երկրագործությունից անջատված և քաղաքներում կենտրոնացած արհեստը նույնպես դարձել էր տնտեսության կարևոր ճյուղ, բայց իր տեսակարար կշռով և նշանակությամբ դեռևս զիջում էր երկրագործությանն ու անասնապահությանը։*

**Երկրագործություն:** *Միջնադարյան հասարակությունը խարսխված էր ֆեոդալական հողատիրության վրա, ուստի տնտեսության հիմքն էլ երկրագործությունն էր։ Վարելահողի, խոտհարքների, արոտների և ջրի հետ էր կապված գյուղատնտեսության մյուս ճյուղի՝ անասնապահության զարգացումը։*

*Երկրի տնտեսության այս հիմնական ճյուղերի վերելքի համար ստեղծվել էին բավականաչափ նպաստավոր պայմաններ։ Ամենից առաջ՝ ժողովրդի ուսերից թոթափված էր օտար տիրապետության լուծը, և հողագործն ու անասնապահը եռանդուն լծվել էին իրենց տնտեսության վերականգնման և զարգացման գործին։ Դրան մեծապես նպաստում էր նաև երկրում 920-ական թվականներից հետո հաստատված տևական խաղաղությունը։ Կարևոր նշանակություն ուներ և այն հանգամանքը, որ նոր հիմունքներով վերականգնվել և ձևավորվել էր ժառանգական խոշոր հողատիրությունը, իսկ հողային տիրույթների բաշխման ու վերաբաշխման համար իշխանների միջև մղվող ներքին կռիվները, որոնք ուղեկցվում էին ռազմական բախումներով ու խժդժություններով, նկատելիորեն հանդարտվել էին։*

*Հիմնական արտադրողը՝ գյուղացին, համախմբված գյուղական համայնքներում, վերստին անցել էր խաղաղ աշխատանքի և շենացնում էր երկիրը։ Խոշոր հողատերերն էլ ամեն կերպ ջանում էին մեծացնել իրենց սեփական տնտեսություն-կալվածքը և նրանից ստացվող եկամուտները։*

*Երկրագործական և անասնապահական մթերքների արտադրանքի մեծաց-*

մանը նպաստում էր նաև արհեստների, առևտրի զարգացումը՝ ստեղծելով մըթերքների, հումքի պահանջ և կապելով գյուղատնտեսությունը ներքին ու արտաքին շուկաների հետ։

Նպաստավոր պայմաններ կային ոչ միայն լրիվ օգտագործելու մշակվող բոլոր հողերը, այլև ընդարձակելու դրանց տարածությունները՝ լքված կամ դարերով խոպան մնացած հողերի հաշվին։ Բնորոշ են Հովհաննես կաթողիկոսի խոսքերը, թե այդ ժամանակներում Հայաստանի բնակիչները «հերկեցին հերկս արտաքոյ փշոց... տնկեցին այգիս և արմատացուցին բուրաստանս ձիթենեաց և պարտիզաց»[1]։

Նոր մշակելի դարձած հողերը, որոնք երևան էին գալիս ամենուրեք, կոչվում էին «նորք»։

Մշակելի հողերի տարածությունների ընդարձակման և ընդհանրապես երկրագործության զարգացման համար խոշոր նշանակություն ուներ ջուրը։ Ցամաքային կլիմա ունեցող Հայաստանի մեծ մասում, մանավանդ երկրագործության գլխավոր կենտրոն հանդիսացող դաշտավայրերում, առանց ոռոգման երկրագործությամբ զբաղվել հնարավոր չէր։ Այդ էր պատճառը, որ ամեն անգամ, երբ պայմաններ էին ստեղծվում երկրի տնտեսության զարգացման համար, բնակչությունը առաջին հերթին վերանորոգում, մաքրում էր գործող առուներն ու ջրամբարները, վերականգնում լքված ու շարքից դուրս եկածները, կառուցում նորերը։ Մատենագրական աղբյուրները և վիմական արձանագրությունները պահպանել են որոշ տեղեկություններ, որոնց համաձայն IX—XI դարերում ոռոգման գործը նորից ուշադրության կենտրոնում էր։ Դեռևս 783 թ. անցկացվել է Թալինի առուն, որը կառուցող Ուխտատար վանականը իր թողած արձանագրության մեջ նշում է. «... թէ իշխանաց ոք խլեսցէ, իմ մեղացս պարտական եղիցի»[2]։

932 թ. սյունյաց եպիսկոպոս Հակոբը 12 հազար դրամ և մի թանկարժեք գոհար տալով, Փիլիպե իշխանից գնում է Ջագեձորի Վարարակն կոչվող ջրի ակունքը, դարձնելով Տաթևի վանքի սեփականություն։ Ապա «բազում աշխատութեամբ և մեծամեծ ծախիւք» (ծախսերով) նա հանել է տալիս ջրանցք, հասցնելով մինչև վանքի դիմացի հողերը։ «Եվ առապար ու փշալից բոլոր վայրերը,— ասում է պատմիչը,— դարձրեց վարդուտ և տնկալից. տնկեց շատ այգիներ, խաղողի ընտիր որթեր, զանազան պտղաբեր ծառերի տնկիներ՝ ձիթենիների, թզենիների, նռնենիների տունկեր գցեց և ամեն տեսակի մրգաբեր ծառերի զարմանալի այգիներ դարձրեց. ընդարձակագույն ամբողջ վայրը զարդարեց թանձրախիտ ծառերով և քաջուղեշ որթերով՝ ի վայելումն միաբանության»[3]։ Առուն անցնում էր մի քանի գյուղի հանդերով և բավականաչափ մեծ պետք է լիներ, որպեսզի կոչվեր մատակ՝ մայր առու[4]։

985 թ. հանվել է Բյուրականի առուն։ Նույն ժամանակներում վերականգնըվել է Գեղարդից վերև՝ Գեղամա սարերում գտնվող հնագույն ջրամբարը,

---

1 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 250։
2 «Վիմական տարեգիր», էջ 2։
3 Ստ. Օրբելյան, էջ 253—254։
4 Տե՛ս նույն տեղում, էջ 255։

*որին արդեն տիրացել էր Գեղարդա վանքը։ Ոռոգման բավականաչափ ծավալուն աշխատանքներ էին տարվում ոչ միայն Այրարատում, Սյունիքում, Շիրակում, այլև Վասպուրականում և այլ վայրերում։*

*1008 թ. Ջկնարած գետի ակունքներից մի առու էլ անցկացվել է Գնդեվանքի «անշրդի ընդարձակ առապարը և ամբողջ լեռնակողմը ջրարբի դարձնելու համար...»[5]։*

*Ոռոգելի երկրագործությունը՝ ջրարբի հողատարածությունների ընդարձակմամբ խոշոր նշանակություն ուներ այգեգործության զարգացման, խաղողի և պտղատու նորանոր այգիներ տնկելու, ինչպես և դաշտավարության մեջ բերքի բարձրացման, բամբակի, քունջութի, ցանովի խոտերի, բանջարա-բոստանային մշակույթների տարածությունների ընդարձակման համար։*



**Թերև գուքանի խոփ, Դվին**

*Երկրագործության ընդհանուր վերելքը, մանավանդ հողատերերի և վանքերի խոշոր տնտեսությունների առաջացումը, նպաստավոր պայմաններ էին*

---

5 **Ստ. Օրբելյան,** *էջ* ***262—263***։

ստեղծել նաև երկրագործական գործիքների ու սարքերի, ինչպես և հողամշակման ձևերի առաջադիմության համար։

Հին ժամանակներից ի վեր հողը վարել են արորով, բայց IX դարից ոչ ուշ սկսել են գործադրել նաև գութանը։ Այդ են վկայում Ջվարթնոցում և Դվինում գտնված անիվավոր թեթև գութանի խոփերը, որոնք ոչ միայն հնարավորություն են տվել արտերը վարելու 25—27 սմ խորությամբ, այլև դրանց կորնթարդ մակերեսով մասամբ շրջվել է հողը[6]։ Նույն ժամանակներում, թերևս փոքր-ինչ ուշ, գործածության մեջ էր մտել նաև ծանր գութանը, որի խոփի առջևից ամրացված էր ձևիչը՝ հողը ճեղքելու համար, որպեսզի խոփը շուռ տար առը։ Դա արդեն խոշոր առաջադիմություն էր հողագործության մեջ։ Ձևիչով մեծ գութանի խոփ գտնվել է Անի քաղաքի պեղումների ժամանակ[7]։

IX—XI դարերում սկսել են կիրառել նաև հողի մշակման եռադաշտային սիստեմը, այսինքն հողերը բաժանվում էին երեք մասի, որոնցից մի մասը ցանվում էր, մյուսը ցել արվում, իսկ երրորդը՝ թողնվում խամ։



Ջրբճան

Աղբյուրներում տեղեկություններ են պահպանվել նաև հողերի և այգիների պարարտացման մասին. «բազում և յոլով անգամ պարտ է աղբել զվատ գետինն և ոչ մէկ հետ»[8]։ Պարարտացված հողերը կոչվում էին «աղբայինք» և վաճառելիս ավելի բարձր էին գնահատվում։ Երկրագործները դարավոր փոր-

---

6 Տե՛ս Բ. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում*, հտ. 1, էջ 42։

7 Տե՛ս *И. Орбели*, Каталог Анийского музея древностей, стр. 115.

8 «Գիրք Վաստակոց», գլ. ԼԴ։

ձով գիտեին, որ հողերը ավելի են բերքատու դառնում թիթեռնածաղիկ խոտաբույսերի (առվույտ, կորնգան) ցանքսից հետո։

Հողագործության մեջ կիրառվում էր նաև քաղհանը՝ մոլախոտերի հեռացումը։

Հայ շինականը հմուտ դաշտավար և այգեգործ էր։ Նա դաշտերն ու ցանքսերը, խաղողի այգիներն ու մրգատու պարտեզները լավ մշակելուց, պարարտացնելուց բացի, կիրառում էր բույսերի և պտուղների տեսակների բարելավում՝ սերմացուի և տնկիների ընտրության, ինչպես և մրգատու ծառերի պատվաստման միջոցով։ Նա պայքարում էր գյուղատնտեսության վնասատուների և հիվանդությունների դեմ ոչ միայն պարզ եղանակներով, այլև բուժիչ նյութերով։ Այդ մասին համապատասխան վկայություններ գտնում ենք միջնադարյան մատենագրության մեջ։ Այն տունկերը, որոնց ծաղիկները թափվում են, խորհուրդ է տրվում պատվաստել, իսկ պտուղներն ու ողկույզները ճիճուներից և նեխումից փրկելու համար «զանազան փորձեալ հնարիւք բժշկել...»[9]։

Երկրագործության վերելքի ցուցանիշներից մեկն էլ տեխնիկական բույսերի՝ բամբակի, թթենու, կտավատի, քունջութի, կանեփի մշակման ընդարձակումն էր։



Բաճ, Դվին

Բամբակի մշակումը, որ մինչև այդ ժամանակները սահմանափակ էր և հիշատակված է միայն Փայտակարանում[10], լայն տարածում է գտնում Առանում և Հայաստանում, մանավանդ Արարատյան դաշտում։ Բամբակենու նշանակությունը լավ է բացահայտված Մխիթար Գոշի մի առակում։ Բամբակի արտը ջրելիս, ջրվորները միմյանց զգուշացնում են, «զի մի՛ զծառս կոխեցեն զբամբակենիս»։ Սոսի ծառը լսելով զայրանում է, թե «ինչու է դա ինձ համանուն ծառ կոչվում»։ Եվ բամբակենին պատասխանում է՝ «Բարձր ես և ստվար, սակայն անօգուտ... իսկ ես թեպետ փոքր (չնչին) և տկար եմ, բայց բազմաշահ՝ ոչ միայն մեծատունների, այլև աղքատների համար. ինձ խնամում են, քաղում և գործում և դառնում եմ հանդերձ, ինչպես ոչխարների բուրդը և վուշը (թելը) կտավատից և մետաքսը՝ որդերից...»[11]։

Զարգանում է նաև շերամապահությունը։ Մերձավոր Արևելքում և բյուզանդական աշխարհում այն հայտնի է դարձել VI դարից հետո, երբ շերամի որդի հունդը բերվեց Չինաստանից։ IX—X դարերի արաբ հեղինակները մեծ

9 Ներսես Շնորհալի, *Թուղթ ընդհանրական*, էջ 29—31, «Գիրք Վաստակոց», գլ. ԼԴ։

10 Տե՛ս Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի*, էջ 109։

11 Մխիթար Գոշ, *Առակներ*, էջ 54—55։

դրվատանքով են խոսում ամբողջ Արմինիայի քաղաքներում, մանավանդ Պարտավում և Դվինում արտադրվող մետաքսե գործվածքների մասին։ IX դարի հայագիր հեղինակ Նանա Ասորին ասում է. «ոմանք յայլ իմն տկարագունիցն յորդանց զազրեցելոց հարստանան, յորոց մետաքսն յառաջ գան»[12]։ Ներսես Շնորհալին թթենու մասին գրած մի հանելուկում ասում է՝ տերևը կաշի է, բայց որդան ճաշակ դառնալով, «նարմով զգեստ մարդկան լինի, խիստ վայելուչ և ցանկալի»[13]։ Մխիթար Գոշը առակ ունի նաև շերամապահության մասին։ Ջիթենին պարծենում է, թե ձեթ է տալիս, որը նյութ է լուսավորության, իսկ թթենին պարծենում է՝ «ի քաղցրութիւն պտղոյ, և զի սաղարթ իւր նիւթ մետաքսոյ է, զոր որդունք ծնանին, յորմէ կերպասք լինին, զոր թագաւոր և իշխանք վայելեն»[14]։

Ընդարձակվում են վաղուց հայտնի ձիթատու և թելատու բույսերի՝ քունջութի, կտավատի և կանեփի ցանքսերի տարածությունները։

Դաշտավարության մեջ ցանովի խոտաբույսերից կարևոր տեղ էին գրավում առվույտը, կորնգանը։ Մշակում էին նաև սեխ, ձմերուկ, վարունգ, կաղամբ և այլ բանջարեղեններ։

Զգալի առաջադիմություն էր նկատվում երկրագործական մթերքների վերամշակման գործում։ Ջրաղացները, որոնք մինչ այդ աղբյուրներում համարյա չեն հիշատակվում, լայն տարածում են ստանում։ Երկրի դաշտավայրերում և նախալեռնային շրջաններում բազմանում է կտավատի և քունջութի ձիթհանների թիվը։ Անի քաղաքի ավերակներում Ն. Մառը և Հ. Օրբելին հայտնաբերել են շուրջ 19 ձիթհանի մնացորդներ[15]։

Խաղողի հնձանները, որոնք ձիթհանների նման շատ հին ծագում ունեին, այժմ կառուցվում էին ավելի մեծ թվով և ոչ միայն քաղաքներում, ավաններում, գյուղերում, ագարակներում, այլև բնակավայրերից դուրս՝ կալվածքներում, այգիներում։ Բացի կարասներից, գինին պահել են նաև գետնի մեջ՝ հատուկ ձևով կառուցված հորերում («գուբ գինւոյ»)։

Խաղողից պատրաստում էին նաև օղի (ցքի), դոշաբ (ռուպ) և այլ մթերքներ։ Չորացրած մրգերը դառնում են առևտրի առարկա և արտահանվում։

Հայաստանի պես լեռնային երկրում ամենուրեք չէ, որ կարելի էր զբաղվել այգեգործությամբ։ Լեռնային բարձրադիր գավառներում, անգամ նախալեռնային շրջանների մեծ մասում, ցանում էին գերազանցապես հացաբույսեր և կտավատ։ Անջրդի և քարքարոտ հողերից ստանում էին ոչ մեծ, հաճախ չնչին բերք։ Երկրագործությունն իր դաշտավարական և այգեգործական ճյուղերով, բնականաբար, զարգանում և բարգավաճում էր դաշտավայրերի բերրի և ջրարբի հողերում, որտեղ երկրագործի աշխատանքը մեծ արդյունք էր տալիս։ Հայաստանում կային զգալի թվով փոքր ու մեծ դաշտավայրեր, ընկած լեռների արանքում, մանավանդ փռված խոշոր գետերի հովիտներում, որոնք և հանդիսանում էին երկրագործության գլխավոր կենտրոններ։ Դրանցից ամենախո-

12 Գ. Հովսեփյան, *Յիշատակարանք ձեռագրաց*, հատ. Ա, էջ 61։

13 Ներսես կաթողիկոս, *տե՛ս՝ Մատենադարանի ձեռագիր № 7703, էջ 100ա—100բ*։

14 Մխիթար Գոշ, *Առակներ*, էջ 50։

15 *Տե՛ս И. Орбели*, Путеводитель по городищу Ани *գրքի վերջում կցված ցուցակը*։

*շորը և նշանավորը եղել և մնում է Արարատյան դաշտը՝ Արաքսի հովտում։ Արաքս, Քասախ, Հրազդան և Ազատ գետերի ջրերը բազմաթիվ առուներով հոսել են դեպի Արարատյան դաշտի արգավանդ հողերը, կյանք տվել այստեղ մշակվող ճոխ այգիներին և դաշտերին։ Զուր չէ Ղազար Փարպեցին գրվատել «զգաւառն Այրարատու», հռետորական ոճով ասելով. Հոյակապ է, հռչակավոր, երևելի, ամենաբույս, ամենաբուխ, ամենառատ, մարդկային պետքերի՝ օգուտների, ուտելիքների, կյանքի վայելչության և զվարթության համար ամեն բան ունեցող Այրարատյան գավառը։ Դաշտերը մեծատարած են և որսալից. շրջապատի լեռները գեղեցկանիստ են և խոտավետ արոտներ ունեն, լցված կճղակավոր և որոճացող էրեններով (որսի կենդանիներով), ինչպես և բազմազան այլ կենդանիներով։ Նրանց բարձր կատարներից հոսող ջրերը լիապես ոռոգելով դաշտերը, առատորեն մատակարարում են կանանց, տղամարդկանց և ընտանիքների անչափահաս բազմությամբ լցված ոստանին հաց, գինի, անուշահոտ մեղրահամ քաղցրություն ունեցող բանջարներ և զանազան յուղատու սերմեր[16]։*



**Մանգաղ, Անի**

*V դարի հեղինակի այս նկարագրությունը ավելի լայն առումով վերաբերում էր մեզ հետաքրքրող ժամանակներին։ Իրենց բարեբերությամբ և արգավանդությամբ հայտնի էին նաև Խարբերդի, Տարոնի (Մշո), Բագրևանդի (Ալաշկերտի) դաշտերը՝ Արածանի գետի հովտում, Վանա լճի ավազանը, ինչպես և Ծկեղյաց ու Դերջանի դաշտերը՝ Եփրատի վերին հոսանքի շրջանում, Կարնո դաշտը, Վանանդը (Կարսի նահանգ), Բասենը և Շիրակը, որը հռչակված էր իբրև հացի շտեմարան։*

**Անասնապահություն:** *Հայաստանը հարուստ է ալպյան ճոխ արոտներով, որոնք նպաստավոր են անասնապահության զարգացման համար։ Լեռնային և նախալեռնային շրջանների խոտհարք-հարոսները դաշտավայրերի խոտացանքսերը ապահովում էին անասունների ձմեռային կերը։ Բացի այդ, հնագույն ժամանակներից ի վեր, Հայաստանում անասնապահությունը կրել է սարվորա-*

---

16 *Տե՛ս* Ղազար Փարպեցի, *էջ 19—20*։

կան բնույթ, այսինքն՝ ամռան ամիսներին մինչև ուշ աշուն անասունները քըշվում էին սարերի ալպյան արոտները, իսկ ձմեռը՝ դաշտավայրերը։ Անասունների մեծ մասը պահվում էր գոմերում, իսկ մնացածը քշվում էր Արաքսի և Կուրի տաք հովիտները, որտեղ նրանք արածում էին անգամ ձմռան ամիսներին։

Հայաստանում հավասարապես զարգացած էին ինչպես խաշնարածությունը՝ մանր եղջերավոր անասունների, նույնպես և խոշոր եղջերավոր անասունների բուծումը, թեև լեռնային շրջաններում խաշնարածության դերն ավելի մեծ էր։ Պահվում էին նաև գոմեշներ, ձիեր, ջորիներ, ավանակներ, ուղտեր։

Օտար տիրապետությունից ազատվելը, տևական խաղաղությունը, երկրի տնտեսական ընդհանուր վերելքը լայն հնարավորություններ էին ստեղծել անասնապահության զարգացման համար։ Հովհաննես Դրասխանակերտցին մեծ գոհունակությամբ է արձանագրել. «Լերինք ցնծութիւն զգեցան, զի բազմացան ի նմա արօտականք անդեայք առջառոց և հօտք ոչխարաց»[17]։

Բացի մթերատու անասուններից, բազմացել էր նաև լծկան և բեռնակիր անասունների թիվը։ Հայաստանում բուծվող ձիերն ու ջորիները լավ համբավ ունեին և գովաբանված են արաբական հեղինակների կողմից։ Երկրի տնտեսական նոր վերելքի պայմաններում աշխատանքի բաժանումը երկրագործների և անասնապահների միջև, որը Հայաստանում սկիզբ էր առել դեռևս բրոնզե դարում, ավելի խորացավ։ Մի շարք լեռնային գավառներում անասնապահությունը կազմում էր բնակչության գլխավոր զբաղմունքը, իսկ ամբողջ երկրի տնտեսության մեջ առաջատարը, իհարկե, դաշտավարությունը և այգեգործությունն էին։ Երկրագործության և անասնապահության աճը աչքի էր ընկնում շատ որոշակի, ուստի արաբ հեղինակ Իբն ալ-Ֆակիհը X դարի սկզբներին խոսելով արաբական վարչական միավոր Արմինիայի մասին, ասում է, թե Ահմադ իբն Վադիհ Իսպահանին, որը երկար ապրել է Արմինիա երկրում և քարտուղար է եղել այդտեղի թագավորների և կառավարիչների մոտ, «չի տեսել ավելի հարուստ և անասունների թվով ավելի նշանակալից մի երկիր քան Արմինիան»[18]։

Հայաստանի բնակչության մի մասն էլ զբաղվում էր մեղվաբուծությամբ, որսորդությամբ և ձկնորսությամբ, որոնք տնտեսության մեջ օժանդակ դեր էին խաղում։ Աղբյուրները կարևոր տեղեկություններ են պահպանել մանավանդ, ձկնորսության մասին։ Հայտնի էին Վանա տառեխը, Սևանա լճի կարմրախայտը (իշխան) և գեղարքունի ձկները, Արաքսի բեխլուն և լոքոն (արաբական աղբյուրներում՝ սուրմահի)։

Օգտագործվում էին նաև երկրի բնական հարստությունները՝ անտառների բերքը՝ կաղին, շագանակ, հոն, խեժ (մազթաքե), աբեթ, և ավելի ու ավելի մեծ չափերով երկրի ընդերքի հարստությունները, մանավանդ զանազան մետաղներ։

Այդ ամենով հանդերձ երկրագործությունը և անասնապահությունն էին երկրի տնտեսության և ժողովրդի բարեկեցության հիմքը։ Նրանք բավարարում

17 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 250—251։

18 СМОМПК, выпуск XXXI, стр. 29.

էին գյուղի և քաղաքի բնակչության համար անհրաժեշտ մթերքների պահանջը, տալիս էին զգալի քանակությամբ հումք՝ արհեստների զարգացման համար։ Նրանց արտադրանքի շատ տեսակներ դարձել էին վաճառքի առարկա՝ ոչ միայն երկրի շուկաներում, այլև քարավանային առևտրի միջոցով արտահանվում էին հարևան և հեռավոր երկրներ։

## 2. ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԽՈՇՈՐ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ԽՈՇՈՐ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում (հատկապես VIII դ. երկրորդ կեսում), ինչպես վերևում նշվեց, հայ հողատերերի ժառանգական տիրակալական իրավունքները խախտվել և մասամբ պայմանական հողատիրության բնույթ էին ստացել, իսկ արաբական խալիֆայությունը համարվում էր հողի և ջրի, ինչպես և երկրի բնական հարստությունների գերագույն տիրակալը։ Սակայն պայմանական հողատիրությունը միշտ էլ անցողիկ և կարճատև երևույթ է եղել, ուստի ժառանգական խոշոր հողատիրությունը, որը սկսել էր վերականգնվել դեռևս VIII դարի վերջերից և մանավանդ IX դ. սկզբից՝ խալիֆայության թուլացման, ապա կազմալուծման պայմաններում, հետզհետե ընդարձակվում և ամրապնդվում էր։ IX դարում մինչև X դարի առաջին քառորդը տեղի էր ունենում հողերի վերաբաշխումը հայկական ֆեոդալական տների և նրանց ճյուղերի միջև, մյուս կողմից հողային ընդարձակ տիրույթներ էին ձեռք բերում արագորեն աճող վանքերը։ X դարում արդեն վերականգնըվել և նոր ու ավելի լայն հիմունքներով ձևավորվել էր ոչ միայն աշխարհիկ ֆեոդալների, այլև եկեղեցական խոշոր հողատիրությունը։

Բագրատունի թագավորները ձևականորեն համարվում էին երկրի հողի, ջրի և բնական հարստությունների գերագույն տերերը։ Եթե Բագրատունի առաջին թագավորները (Աշոտ Ա, Սմբատ Ա և Աշոտ Բ) IX դարի վերջերին և X դարի սկզբներին դեռևս պահպանում էին ժառանգական տիրույթների բաժանմանը և վերաբաժանմանը միջամտելու որոշ իրավունքներ, ապա հետագայում նրանք միայն հաստատում էին կամ նույնիսկ լռելյայն համաձայնվում հողային սեփականության կամ տիրակալության գործում ստեղծված իրավիճակի հետ։

Աշխարհիկ և հոգևոր ֆեոդալական խոշոր հողատիրության ձևավորման հիմնական միջոցներն էին հողերի վերաբաշխումը, որն ուղեկցվում էր միջֆեոդալական կռիվներով ու սուր բախումներով, գյուղական համայնքների հողերի հափշտակումը, հողատարածությունների գնումները, ինչպես և նվիրաբերությունները վանքերին։

Առանձին ֆեոդալական տների հողային տիրույթները մի քանի գավառներ և ամբողջ նահանգներ էին ընդգրկում։

Ամենախոշոր հողատերը Բագրատունիներն էին։ Թագավորական այտան տիրույթներն էին Շիրակը, Արշարունիքը, Վանանդը, Բագրևանդը, Արտազը, Այրարատյան նահանգի մեծագույն մասը, Գուգարքը։

Բագրատունիների մի ճյուղն էլ հաստատված էր Տարոնում և Մոկաց աշխարհում։

Հողային տիրույթների բաժանումը և վերաբաժանումը, ինչպես Բագրատունի թագավորական տան ճյուղերի, այնպես և Վասպուրականի, Սյունիքի և այլ վայրերի իշխանական տների և նրանց ճյուղերի միջև տեղի էր ունենում մասամբ խաղաղ համաձայնությունների, բայց առավելապես սուր բախումների, ընդհարումների, դավադրությունների միջոցով։ Դրա գլխավոր պատճառն այն էր, որ ժառանգական հողատիրության վերականգնումը և ամրապնդումը տեղի էր ունենում նոր հիմունքներով։ IV—VII դարերում՝ Արշակունիների օրոք և մարզպանական շրջանում նախարարական հողատիրության հիմքում ընկած էր տվյալ տոհմի նահապետի կամ տանուտերի իրավունքը ամբողջ տոհմի հողային տիրույթների նկատմամբ (որոնք չէին բաժանվում տոհմի տարբեր ճյուղերի միջև), իսկ հողային տիրույթների ժառանգման իրավունքը տեղի էր ունենում ըստ ավագության իրավունքի ուղիղ գծով՝ հորից ավագ որդուն։ Սեպուհների պայքարը նախարարական հողերի բաշխման համար անգամ IV—VII դարերում, Սասանյանների միջամտությամբ հանդերձ, լուրջ փոփոխություններ չմտցրեց գոյություն ունեցող նախարարական հողատիրության կարգի մեջ։

Այլ էր իրավիճակը IX—X դարերում։ Նահապետի կամ տանուտիրոջ իրավունքը փաստորեն վերացված էր, և հողային տիրույթները ենթակա էին բաշխման տվյալ տոհմի բոլոր ճյուղերի միջև՝ ինչպես Բագրատունի թագավորի և Բագրատունյաց տոհմին պատկանող մյուս իշխանների միջև, նույնպես և Վասպուրականի մեծ իշխանի և մյուս իշխանների կամ Սյունյաց գահերեց և գահակալ իշխանների միջև[19]։ Տոհմի ավագ թագավորի, մեծ կամ գահերեց իշխանի ավագության իրավասությունը ամբողջ տոհմի բոլոր ճյուղային տիրույթների նկատմամբ փաստորեն խախտված էր, և ավագության իրավունքը կամ ժառանգման իրավունքի անցումը ուղիղ գծով՝ հորից ավագ որդուն պահպանվում էր տվյալ տոհմի յուրաքանչյուր ճյուղի ներսում։ Նման պայմաններում ժառանգական խոշոր հողատիրության վերականգնումը և հողային տիրույթների բաժանումն ու վերաբաժանումը չէր կարող չուղեկցվել սուր պայքարով և բախումներով։

Այդպիսի պայքար, ինչպես վերևում տեսանք, տեղի էր ունենում Բագրատունյաց տոհմի ներսում Սմբատ Ա թագավորի և Աբաս սպարապետի, Աշոտ Բ թագավորի և Աշոտ սպարապետ Շապուհյանի միջև։ Այդ պայքարի ավելի ցայտուն փաստեր պահպանվել են Վասպուրականի և Սյունիքի վերաբերյալ։

Արծրունի 16 իշխաններից շատերին, նաև գահերեց Աշոտ իշխանին IX դարի 50-ական թվականներին արաբները գերի էին տարել, իսկ մնացածները բաժանվելով երեք խմբի «սկսան յուսելով ի վերայ չարեացն այլ չարիս, զի ընդ միմեանս մարտ և կռիւս դնէին յաղագս իշխանութեանն ցանկութեան, և ճեղքեցան ի միմեանց և զօրս գումարեցին... անամօթ և անարգել յափշտակութեամբ վրդովէին զբոլոր երկիրս»[20]։ Պայքարը իշխանության համար, պայքար էր հողային տիրույթների համար։

---

[19] Տե՛ս Հ. Մ. Ուքմազյան, Սյունիքը IX—X դարերում, Երևան, 1958, էջ 147—150։

[20] Թովմա Արծրունի, էջ 311—312։

Մրցակցության մեջ հաղթողը լինում է Գուրգեն Արծրունին, որը Վասակ Արծրունուց խլելով Ջղմար և Սրինգ ամրոցները՝ «յիւրն գրաւեաց զզօրավարութիւնն բոլոր Վասպուրական տէրութեանս»[21]։

Շուտով Ափխազիայից զորքերով վերադառնում է Աշոտ գահերեց իշխանի եղբայր Գրիգորը։ Սակայն վեճը պատերազմական ընդհարման չի հանգում, և Վասպուրականը բաժանվում է երկուսի միջև։ Գուրգենը հաստատվում է Ռշտունիքի Ոստան ամրոցում, իսկ Գրիգորը՝ Աղբակում։

Այնուհետև գերությունից վերադառնում է Աշոտի որդի Վահանը և զորքով հարձակվում Ոստանի վրա։ Այս անգամ ևս հաղթողը Գուրգենն էր։

Ժառանգական հողատիրությունն այդ ժամանակներում վերականգնված էր, սակայն դեռևս ամրապնդված չէր, և այն վերաբաժանելու համար ֆեոդալները չէին խորշում ոչ մի միջոցից, իսկ ամենավճռական միջոցը, իհարկե, ուժն էր, որը միշտ ուղեկցվում էր դավ ու սադրանքով։ Հողերին տիրելու միջոց էր նաև ամուսնական կապը։ Գուրգեն Արծրունին ամուսնանալով Անձևացյաց իշխանուհու հետ, որն այրիացել էր, տիրանում է այդ ընդարձակ գավառին։

Դերենիկ Արծրունին փորձեց նվաճել Անձևացյաց աշխարհը, բայց հաջողություն չունեցավ։ Ապա նա փորձեց զավթել Հասան Արծրունու և Գագիկ Աբումրվանի հողերը՝ գործադրելով և՛ զենք, և՛ դավ։ Աշոտ Բագրատունու հեղինակությունից օգտվելու նպատակով Դերենիկն ամուսնանում է նրա դստեր հետ և ջանում զենքի ուժով իրեն ենթարկել նաև Հեր և Զարևանդ գավառները, որտեղ իշխում էին արաբ ամիրաները։ «Զայսու ժամանակաւ մեծ իշխանն տանն Արծրունի Գրիգոր, որ Դերենիկն յորջորջէր, ձեռն զգաւառօքն և զքաղաքօքն արկեալ զկողմամբք Հերայ և Զարաւանդայ ի հնազանդութիւն ընդ իւրեաւ զկողմանսն զայնօսիկ նուաճէր»,— գրում է պատմիչը[22]։ Դերենիկը, սակայն, զոհ է դառնում դավադրության։

Համաձայնության գալով, Դերենիկի որդիները «Բաժանեն զաշխարհս յերիս մասունս...»[23]։

Ուշագրավ է ոչ միայն Վասպուրականի բաժանումը երեք եղբայրների միջև, այլև այն, որ նրանք կարող էին ընդարձակել իրենց տիրույթները «որքան իցէ հասումն ուժոյ» կամ «ուր և իցէ հնար ածել ձեռամբ»[24]։ Չէ որ հորից ժառանգածը, փողով գնածը և սրով գրավածը հավասարապես դառնում էին ժառանգական տիրույթ։

Այս կարգի փաստեր շատ կան և կարելի է ասել, որ IX դարի երկրորդ հիսնամյակը ամբողջովին հանդիսացել է Վասպուրականը Արծրունի իշխանների միջև վերաբաժանելու համար մղվող պայքարի մի ժամանակաշրջան։ Ըստ որում, դավերին հաջորդում էին ռազմական ընդհարումները, իսկ սրանց կրկին դավն ու սադրանքը՝ ուղեկցված բանտ ու թակարդով, իշխանների կուրացմամբ և սպանությամբ, մինչև որ Գագիկ Արծրունու օրոք, հողատիրության նոր հիմունքի հաղթանակով, վերջնականապես կձևակերպվեր ֆեոդալների խոշոր ժառանգական հողատիրությունը Վասպուրականում։

---

21 Նույն տեղում, էջ 319։

22 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 177—178։

23 Թովմա Արծրունի, էջ 374։

24 Նույն տեղում։

Նույն երևույթը տեղի էր ունենում նաև Սյունիքում։ Շուրջ հարյուրամյա ընդհատումից հետո՝ IX դարի սկզբին Սյունյաց իշխանները վերականգնում են իրենց հողատիրական իրավունքները, և Վասակը հիշատակվում է իբրև «Սիւնեաց տէր և իշխանաց իշխեցող»[25], «նահապետ բոլոր ազգին Սիսականու»[26]։ Սակայն նահապետական իրավունքը հակասում էր հողատիրության նոր սկզբունքին, ուստի 821 թ., երբ վախճանվեց այս «նահապետը», նրա որդիներն իսկույն երկիրը բաժանեցին իրենց միջև։ «Յետ Վասակայ բաժանեն զհայրեննի ժառանգութիւնս իւրեանց երկու որդիքն՝ Փիլիպպէ և Սահակ. և լինի Փիլիպպէ գահերեց իշխան Սիւնեաց...»։ Փիլիպեին, իբրև գահերեց իշխանի, բաժին էր ընկել բուն Սյունիքը, իսկ Սահակին՝ «գաւառն Գեղամայ բոլոր»[27]։ Նույն ժամանակամիջոցում եղել է նաև սյունեցի մեկ այլ իշխան՝ «Գրիգոր ի նույն ցեղէ, որ ունէր մասնաւոր ժառանգութիւն ի սեպհական հայրենեացն», իսկ իշխանական մյուս ճյուղը «ունէր ի բաժնի ժառանգութեան զԿովսական գաւառ և զՔաշունիք»[28]։

Փիլիպեի մահից հետո, 848 թ. գահերեց իշխան է դառնում նրա ավագ որդի Բաբգենը, իսկ Սևանի ավազանում իշխանությունն անցնում է Սահակի որդի Գրիգոր Սուփանին։ Նրանց միջև էլ ծայր է առնում գժտություն՝ վերածվելով զինված ընդհարման՝ տիրույթները վերաբաժանելու նպատակով։ «Ի վերայ հայրենեացն պատերազմին ընդ իրեարս...»[29], «որք և գումարտակ ի վերայ իրերաց կարգեալ պատերազմեցան»[30]։ Բաբգենը սպանում է Գրիգոր Սուփանին, իսկ ինքն էլ զոհ գնում վրեժխնդրության[31]։

Պատմիչը հիշատակում է, որ IX դարի վերջերին էլ Սյունիքում կար իշխանական երեք հիմնական ճյուղ՝ գահերեց իշխանական ճյուղը՝ Աշոտ Սյունու գլխավորությամբ, որը տիրում էր Սյունիքի մեծ մասին և Վայոց ձորին, Գեղամա գավառի իշխանական տունը՝ Վասակ Գաբուռի որդի Գրիգոր Սուփանի գլխավորությամբ և Բաղաց Ձագիկ իշխանի տունը[32], որին պատկանում էին Ձորք գավառը՝ Կապան քաղաքով, մյուս Բաղք գավառը կամ Քաշունիքը (Բաղքի մի մասը մնում էր գահերեց իշխանի ձեռքին)[33]։

Սյունյաց, Բագրատունյաց և Արծրունյաց իշխանական տոհմերի ներսում, ինչպես և նրանց միջև հողային տիրույթները բաշխելու և վերաբաշխելու համար տեղի ունեցող սուր և երկարատև բախումները դադարեցին X դարի 20-ական թվականներին, երբ արաբներն էլ վերջնականապես վտարվեցին Հայաստանից։ Խոշոր ժառանգական հողատիրությունը ձևավորվեց և ամրա-

25 Ստ. Օրբելյան, էջ 158։

26 Նույն տեղում, էջ 204։

27 Նույն տեղում, էջ 296—297։

28 Նույն տեղում, էջ 208—209։

29 Նույն տեղում, էջ 297։

30 Նույն տեղում, էջ 168։

31 Մանրամասն տե՛ս Հ. Մ. Ուրմազյան, նշված աշխ., էջ 78—80։

32 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 223։

33 Ըստ Հ. Մ. Ուրմազյանի՝ IX դ. վերջերին Սյունիքը բաժանված էր իշխանական հինգ ճյուղի միջև. տե՛ս նշված աշխատ., էջ 285 և հտն.։

*պնդվեց։ Աղբյուրներում այն անվանված է «հայրենիք», «բնիկ տէրութիւն»[34] կամ «բնիկ աշխարհ», «հայրենական սեպհականութիւն»[35]։*

*Ժառանգական հողատիրության վերականգնումը, ինչպես նշվեց, արաբական խալիֆայության կողմից կողոպտված իրավունքի պարզ վերահաստատումը չէր, ոչ էլ հին նախարարական կարգի վերականգնումը։ Այն մի բարդ և բազմակողմանի երևույթ էր, որը ձևավորվում էր երկրի հասարակական և տնտեսական զարգացման ավելի բարձր մակարդակի առկայությամբ, նոր պայմաններում և նոր նախադրյալներով։*

*Իշխանների միջև հողերի բաժանումը, վերաբաժանումը, այդ նպատակով տեղի ունեցող պայքարը՝ սկսած հաշտ դաշինքներից, ամուսնական կապերի օգտագործումից և վերջացրած զինված ընդհարումներով, այդ բարդ երևույթի միայն մի կողմն էր, որը դեռևս չէր արտահայտում դրա բուն էությունը։ Տեղի լին ունենում լուրջ փոփոխություններ ոչ միայն հողատիրական իրավունքի և ձևերի, այլև հողի, իբրև արտադրության հիմնական միջոցի օգտագործման, այդ հողերի վրա ապրող բնակչության սոցիալական վիճակի, ֆեոդալական կախվածության աստիճանի և նրանց շահագործման ձևերի մեջ։*

*Հողատիրության, հողօգտագործման եղանակների և հասարակական հարաբերությունների ընդերքում կատարված տեղաշարժերից նշանակալից էր ֆեոդալների սեփական խոշոր տնտեսության՝ տերունի կալվածի ձևավորումը IX—XI դարերում[36]։ Ֆեոդալական տիրույթը կազմող հողերի մի մասի վրա նրանք սկսեցին վարել սեփական խոշոր տնտեսություն, մշակել հացահատիկ, տեխնիկական բույսեր, խաղողի և պտղատու այգիներ, պահել մանր և խոշոր եղջերավոր անասուններ։ Այսպիսով, ֆեոդալական տիրույթը բաժանվում էր երկու մասի՝ մեծ մասի վրա բնակվում էին գյուղացիները, որոնք մշակում էին իրավական տեսակետից ֆեոդալին պատկանող հողերը և իբրև հավելյալ արդյունք վճարում էին նրան ստացված եկամտի մի մասը։ Հողերի փոքր մասը կազմում էր ֆեոդալական սեփական տերունի կալվածը։ Այսպիսի կալվածներ ունեին Բագրատունիները, մյուս իշխանները, ինչպես և խոշոր հոգևորականությունն ու վանքերը։*

*Բագրատունիների թագավորական տան կալվածներից էր, օրինակ, Երազգավորսը կամ Շիրակավանը՝ «և արքայ Սմբատ... գայ ի սեփհական կալուածս տէրութեան իւրոյ յԵրազգաւորս»[37]։*

*Բագրատունիների թագավորական տանը և նրա տարբեր ճյուղերին իբրև սեփական տիրույթ պատկանում էին մի շարք բնակավայրեր, ինչպես՝ Տեկորը, Մրենը, Բագարանը, Կողբը, Թալինը, Արուճը, Վաղարշապատը, Երերույքը, Նախճավանը (Անիի մոտ), Ալամնը, Տարուսը, Մաստարան, Կոշը, Սահառունին, Ավանը, Քեղարագոմը և այլն։ Այս վայրերում Բագրատունի թագավորը, թագուհին, Բագրատունյաց տոհմի մյուս իշխաններն ունեին այգիներ, ծա-*

---

34 Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 218,* Ստ. Օրբելյան, *էջ 40, 193։*

35 Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 251։*

36 *Տե՛ս* Ս. Պողոսյան, *նշված աշխ., էջ 67—68։*

37 Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 274, տե՛ս նաև էջ 181։*

ռաստաններ, պարտեզներ, արտեր, առուներ, ջրաղացներ, ձիթհաններ, քարավանատներ և վարում էին սեփական խոշոր տնտեսություն[38]։

Բագրատունի Աշոտ սպարապետը սեփական հողեր ուներ ոչ միայն Շիրակում, այլև Սևանա լճի ափին, որտեղ իր կառուցած Վանեվան կոչվող վանքին նվիրել էր «հինգ գեղոց սահման՝ Կոթաքարն, Աղաբոյ վանսն, Շաւառնահողն, Գետամէջն, Կթանոցն», մի ձկնորսարան՝ Գետավանաց ծովն և 2440 դիրհեմ դրամական հասույթներ՝ լճի մի քանի ձկնորսարաններից, գետերից և նավերից[39]։ Շապուհի սեփական կալվածն էր Բագարանը, որն անցավ նրա որդի Աշոտ սպարապետին[40]։ Աշոտի սեփական դաստակերտն էր Կողբը՝ իր աղահանքերով[41], որը հետո անցավ թագավորող ճյուղի ձեռքը։ Սմբատ արքայի եղբոր որդի Սմբատին պատկանում էր Դարոնը՝ Արտազ գավառում[42]։

Սևանա լճի ափին ընդարձակ սեփական տնտեսություն էր վարում Գրիգոր Սուփանը։ Այդ բանը պարզ երևում է Շողագա և Մաքենացոց վանքերին 901 թ. նրա տված նվերներից։ Գրիգոր Սուփանի սեփականությունն էր Կոթ գյուղաքաղաքը, որը նա անվանում է «կալուած իմոց նախնեացն»[43]։ Բայց նա սեփական հողեր, այգիներ, տներ ու կուղպակներ ուներ նաև Եղեգիսում, Գառնիում, Երևանում և այլուր։

Մաքենացոց վանքին նրա տված նվերները շատ բնորոշ են ֆեոդալի սեփական տնտեսության համար. «ետու զսեփական տեղն մեր ի սա... ամենայն սահմանօք՝ լերամբ և դաշտիւ, և ետու որս ձկանց, զԲողաշէն, սեղանոյն. և եօթն հարիւր դրամ ի Դեղձանագետոյ ղապալէն, երկու հարիւր դրամ և Կոթկայ, երեք հարիւր յիսուն յԱնմեռէն, որ լինի ՌՄԾ (1250) դրամ, և ետու հինգ կուղպակ յԱնի և հինգ այգի յԵրևան, և հինգհարիւր առու այգի ի գիւղաքաղաքն Գառնի, և երկու յԵղեգիս, և զամենայն պէտս սուրբ եղբայրութեանն լցի առատապէս, և փարթամացուցի ներքոյ և արտաքոյ. ետու և ջոլիրս եզանց և ջոկս զուարակաց (առջառների), և անդեայս (նախիրներ) և հօտս ոչխարաց...»[44]։

Այս տեղեկությունները վկայում են, որ Սուփանը վարում էր սեփական տնտեսություն մի քանի ճյուղերով, այն է՝ դաշտավարություն, այգեգործություն, անասնապահություն, նա ուներ նաև կապալով տրվող ձկնորսարաններ, ինչպես և կուղպակներ Անի քաղաքում, որոնք անհրաժեշտ էին իր արտադրած, ինչպես և գյուղացիներից ստացած մթերքների մի մասը վաճառքի հանելու համար կամ ըստ ժամանակի սովորության, տներն ու կուղպակները վարձով էր տալիս, ստանալով զգալի եկամուտ։

Բագրատունյաց, Արծրունյաց և Սյունյաց իշխանները ֆեոդալական հիերարխիայի առավել բարձր աստիճանի վրա կանգնած խոշոր ֆեոդալներ էին.

38 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերցի, էջ 244, «Վիմական տարեգիր», էջ 3, 8, 9, 10, 13, 14, 15, 18, 20, 21, 22 և այլն։

39 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 6։

40 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 181, 244, 283, 425։

41 Տե՛ս նույն տեղում, էջ 245, 366—367, «Վիմական տարեգիր», էջ 21։

42 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 283։

43 «Դիվան հայ վիմագրության», հատ. Դ, էջ 265։

44 «Վիմական տարեգիր», էջ 5։

որոնց ենթակա էին այդ սանդուխքի երկրորդ աստիճանի վրա կանգնած, առաջիններից վասալական կախման մեջ գտնվող հողատերերը, որոնց թվում կային բավականաչափ խոշոր հողային տիրույթներ ունեցող ֆեոդալներ։

Բագրատունիների ընդհանուր տիրույթների սահմաններում սեփական ամրոցներ, գյուղեր, հողեր և այգիներ ունեին նաև նրանց վասալ իշխանները։ Օրինակ, Վահրամ Պահլավունուն պատկանում էին Անբերդը՝ Արագածոտն գավառով, Մարմաշենը՝ իր շրջակայքով։ Նա ուներ մեծ քանակությամբ հողեր, այգիներ, որոնց մի մասը նվիրել էր Մարմաշենի վանքին՝ «այերամբ և դաշտաւք... գեղս և ագարակս գանձագինս». Բագարանի գյուղն իր ագարակով, Գողխսն, Պորտանգ, Արագեճ, Ազատա, Ասմանես, Եզնկա գյուղերը, այգիներ և երեք ջրաղաց Օշականում, երկու ջրաղաց Դողսում, այգիներ Աշտարակում, Կարբիում, Սերկևլի կոչվող վայրում, Վժանում, Մրենում, տներ և կուղպակներ Անիում[45]։ Տարակույս չկա, որ այդպիսի նվերներ անող սպարապետի հողերն ու այգիները, ջրաղացներն ու այլ անշարժ ունեցվածքը, այսինքն նրա վարած սեփական տնտեսությունը բավականաչափ մեծ պետք է լիներ։

Աշնակ գյուղը Պետրոս կաթողիկոսի սեփականությունն էր, և այդ հոգևոր կալվածատերը Աբլղարիբ Պահլավունուն նվիրել է Աշնակի այգին «որմով և ծառովք պտղաբերովք և անպտղօք և խոտագետնովք և Գ(3) օր ջուր ազատ ի խալաէ և ի գեղջէ յամենայն հասուց»[46]։ Աբլղարիբն էլ այդ այգին նվիրել է Անիի Փրկչի եկեղեցուն որն ինքն էր կառուցել։ Աբլղարիբը 1031 թ. Փրկչի եկեղեցուն նվիրել է նաև գանձագին այգի, հողեր, ձիթանոց և երեք կուղպակ[47], իսկ Առաքելոց եկեղեցուն՝ «զԿառնուտի արտն»[48]։ Նույն տոհմից Գրիգոր Պահլավունին (Մագիստրոսը), որին պատկանում էր Բջնի ոչ մեծ քաղաքն իր բերդերով, Բջնիի եկեղեցուն և Հավուց Թառի վանքին նվիրել է ընդարձակ հողեր[49]։

Մեջ բերված վկայությունների թիվը կարելի է ավելացնել։ Նրանք թեև պատահաբար են մեզ հասել, և առավելապես վերաբերում են ֆեոդալների սեփական տնտեսության այն չնչին մասին, որը նվիրաբերվել է վանքերին, այդուհանդերձ, դրանք տարակույս չեն թողնում խոշոր հողատերերի սեփական կալվածքի ձևավորման մասին։ Տերունի հողերի վրա խոշոր ֆեոդալական տնտեսության ստեղծումը, որը զգալի չափով կապված էր նաև շուկայի հետ, հասարակական,տնտեսական նոր երևույթ էր, որը քաղաքների ձևավորման և աճի հետ մեկտեղ նշանակում էր ֆեոդալական հասարակության զարգացման ավելի բարձր մակարդակ։

Այդուհանդերձ, դատելով մատենագրական աղբյուրների և վիմագիր արձանագրությունների տվյալներից, կարելի է ասել, որ ֆեոդալների տերունի կալվածները, որոնց վրա նրանք վարում էին սեփական տնտեսություն, կազմում էին նրանց շատ ընդարձակ տիրույթների մի փոքր՝ մասը և հաճախ ցըր-

45 Տե՛ս И. А. Орбели, Избранные труды, стр. 442.

46 «Դիվան հայ վիմագրության», հատ. Ա, էջ 48։

47 Տե՛ս նույն տեղում, էջ 44—45։

48 Նույն տեղում, էջ 22։

49 Տե՛ս նույն տեղում, էջ 14, 17։

ված էին տարբեր վայրերում։ Այս ցրված հողերն ու այգիները անվանված են «սեփական տեղ կամ հող», «մեր արկեալ էգի» կամ պարզապես տվյալ վայրի անունով։ Սակայն սեփական տիրույթ կազմող բնակավայրերի համար գործածական էին նաև հնից եկող հատուկ տերմիններ՝ «ագարակ» և «ձեռակերտ» կամ «դաստակերտ»[50]։ Դաստակերտ անվանվել են քաղաքատիպ բնակավայրերը կամ ավանները։ Կողբը, որը Սմբատ սպարապետի սեփականությունն էր, անվանված է «դաստակերտ»։ Եղեգիսը Սյունյաց գահերեց իշխանի նստավայրը և սեփական դաստակերտն էր[51]։

Թագավորների, իշխանների խոշոր հողային տիրույթներում բավականաչափ ստվար թիվ էին կազմում ֆեոդալական սանդուղքի երրորդ աստիճանի վրա գտնվող մանր հողատեր ֆեոդալները, որոնց հողային տիրույթները կարող էին պատկանել նրանց իբրև հայրենի կամ ժառանգական սեփականություն, բայց և նրանց թվում քիչ չէին պայմանական հողատերերը, որոնք հողը ստանում էին ծառայության, մասնավորապես զինվորական ծառայության դիմաց։

IX—XI դարերում խոշոր և մանր հողատերերի սեփական կամ հայրենի տիրույթները, անմիջապես ֆեոդալներին պատկանող կալվածները, լինեին դրանք այգի, հող, ագարակ, դաստակերտ, ավան, թե գյուղաքաղաք, ջրաղաց, քարավանատներ և այլն, օտարելի էին և մասամբ դարձել էին առ և ծախքի առարկա։

## 3. ՎԱՆԱԿԱՆ ԽՈՇՈՐ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

Հայկական եկեղեցին առաջացման առաջին իսկ օրերից ունեցել է իր հողային տիրույթները, սակայն վանական խոշոր կալվածատիրությունը նոր երևույթ էր։ Եթե հնում տարածված կրոնական հաստատությունները առանձին եկեղեցիներ էին և կային միայն հատ ու կենտ վանքեր, ապա IX—X դարերում առաջացան մեծ թվով վանքեր, որոնք աստիճանաբար ձևավորվեցին իբրև կրոնական և տնտեսական խոշոր միավորներ։ Այսպիսով, աշխարհիկ ֆեոդալների խոշոր կալվածատիրության վերականգնման և նոր հիմունքներով ձևավորմանը համընթաց, աճում և ձևավորվում էր նաև վանական խոշոր հողատիրությունը։

Հաճախ վանքերը հիմնադրվում էին բնակավայրերից, մանավանդ քաղաքներից հեռու։ Դա պայմանավորված էր նախ նրանով, որ քաղաքային բարքերն ու աշխարհիկ մտայնությունը չթափանցեին վանքի անձուկ պատերից ներս, և որ կարևորն է, որպեսզի վանքերը սեփականեին դեռևս անբնակ վայրերի հողն ու ջուրը, լեռն ու դաշտը, անտառն ու արոտը։

Քաղաքներում և այլ տիպի բնակավայրերում կամ նրանց մերձակայքում ևս կառուցվում էին եկեղեցիներ, հիմնադրվում վանքեր, որոնք նույնպես ձեռք էին բերում հողային տիրույթներ, և որ բնորոշն է՝ ջրաղացներ, ձիթհաններ, հյուրատներ, կուղպակներ, բնակելի տներ և անշարժ այլ ունեցվածք։

---

50 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 366—367։

51 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 193, 199։

Բագրատունիների տիրույթների սահմաններում առաջացած վանքերից նշանավոր էին՝ Հաղբատը, Սանահինը, Կիչառիսը, Այրիվանքը (Գեղարդ), Հավուց Թառը, Դպրեվանքը, Խծկոնքը, Մարմաշենը, Հոռոմոսի և այլ վանքեր։

Վասպուրականում և Սյունիքում ևս՛ առաջացել էին բազմաթիվ վանքեր։ Վիմական արձանագրություններում, մանավանդ, Ստեփանոս Օրբելյանի «Պատմության» մեջ պահպանվել են շատ ուշագրավ և արժեքավոր տեղեկություններ Սյունիքում վանական հողատիրության կազմավորման վերաբերյալ։ Ժամանակագրորեն այդ տեղեկությունները վերաբերում են վանական կալվածատիրության կազմավորման սկզբնական շրջանին, ուստի հարցի քննությունը հարկ է սկսել Սյունիքից։

Սյունյաց եպիսկոպոսական աթոռանիստ Տաթևի վանքը հայտնի է դառնում IX դարի երեսնական թվականներին, սակայն սկզբնապես վանքի տիրույթները կազմում էին նրա շուրջը փռված հողերը, որոնց սահմանները «յույժ նեղ և անձուկ» էին, ինչպես վկայում է պատմիչը։ Մինչև IX դարի վերջը վանքը ձեռք բերեց ութ գյուղ իր սահմաններով, լեռ ու դաշտով, վարելահողերով և արոտներով[52]։

Այս ամենով հանդերձ Սյունիքի մետրոպոլիտական աթոռը դեռևս մեծ փարթամության չէր հասել, հին եկեղեցին և Փիլիպե իշխանի կառուցած «գեղեցկաշեն» եկեղեցին փոքր և անշուք էին համարվում։ Անպատշաճ էր նկատվում, որ «աշխարհագումար ժողովարան» մայր վանքը կաթողիկե եկեղեցի չունենար։ Ուստի 895 թ. Սյունյաց եպիսկոպոս Հովհաննեսը, Աշոտ գահերեց իշխանի օգնությամբ, մեծամեծ ծախսերով ձեռնարկում է շինարարական աշխատանքներ, որոնք ավարտվում են 906-ին։ Ուշագրավ է, որ բացի վանքի գլխավոր շենքից, կաթողիկե եկեղեցուց և կրոնական այլ շենքերից, կառուցվում են և տնտեսական բնույթի շենքեր։ Պատմիչի ասելով վանքի միաբանների թիվը այդ ժամանակ հասնում էր 500-ի[53]։ Մեծ շքեղությամբ կատարվում են եկեղեցու բացման հանդեսները՝ նավակատիքը, որին մասնակցում էին Բագրատունի Սմբատ թագավորը, Հովհաննես կաթողիկոսը, իշխաններ ու եպիսկոպոսներ։

Միայն նավակատիքի ժամանակ Տաթևի վանքը պարգև է ստանում 14 գյուղ, մեկ մեծ ավան, մեկ բերդ, երկու վանք և նրան պատկանող գյուղերի թիվը քսանից անցնում է։ Բացի այդ, ստույգ որոշվում են վանքի սեփական կալված-տիրույթի սահմանները, որոնք բավական ընդարձակ էին։ Գյուղերից և նրանց սահմաններից դուրս վանքն ուներ նաև այլ տեղերում գտնվող հողեր, այգիներ, արոտատեղ-մարգագետիններ, խոտհարքներ, ջրաղացներ, ձիթհաններ և այլ անշարժ ունեցվածք։

Վանական կալվածատիրության կազմավորման մասին խոսելիս կարևոր է նշել, որ Տաթևին անցած գյուղերից երկուսը վանքն էր դրամով գնել, հինգը գնել և վանքին նվիրել էին Բագրատունի Սմբատ Ա թագավորը և մյուս իշխանները, իսկ 15 գյուղ նվիրաբերել էին իշխաններն ու իշխանուհիները իրենց սեփական տիրույթներից։ Դրանից հետո էլ վանքի տիրույթները շարունակում

52 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 205, 207, 216—217։

53 Տե՛ս նույն տեղում, էջ 226։

էին ընդարձակվել։ Նա իշխաններից նվեր է ստանում մի քանի գյուղ վանքից քիչ հեռու, ինչպես և Գեղամա ու Հաբանդ գավառներում՝ իրենց ալերամբ և դաշտովք, հողով, ջրով, այգօք, ընկուզօք, ջաղացովք և ամենայն մտիւք»[54]։ Վանքի հողերի ոռոգման համար անցկացվում է մեծ առու[55]։



Տաթևի վանքի ճոճվող սյուները

Պատմիչը իրավամբ գրում է, որ վանքը պայծառապես շքեղացել էր ինչքով և ստացվածքով և արծաթով ձեռք էր բերել բազմաթիվ ագարակներ, դաշտեր, հողեր, մարգ ու այգիներ, ստացել էր նաև բազմաթիվ նվերներ՝ իշխաններից ու ազատներից, որ եթե բոլորը գրի առնեինք, մեծ տաղտկություն կլիներ լսողներին և անչափ թանաք կծախսվեր։ Բայց մենք ընտրելով, շատից քիչն

54 Ստ. Օրբելյան, էջ 226։

55 Տե՛ս նույն տեղում, էջ 253—254, 267։

*ներ կարգել այստեղ՝ ինչ որ խիստ անհրաժեշտ էր[56]։ X դարի երկրորդ կեսում և XI դարում Տաթևի վանքը ձեռք է բերում էլի որոշ կալվածներ[57]։ Այս շրջանում պայքարն ընթանում էր առավելապես արդեն ձևավորված վանական կալվածները պահպանելու, իշխանների կողմից խլվածները վերադարձնելու և հին կալվածները կրկին ու կրկին վերահաստատելու ուղղությամբ։ Այսպես, Տաթևին են վերադարձվում Հարժիս և Ծածարդ գյուղերը, Բոլորաքար գյուղն իր «այգւով և ծառով և տնկով, հողով և ջրով»[58]։*

*Սյունյաց Վասակ թագավորը 1016 թ. վանքին է վերադարձնում Գրուակ գյուղը, իսկ 1019 թ. Սյունյաց ժամանակավորապես վերացված մետրոպոլիտության վերականգնման կապակցությամբ՝ նաև Տաթևից հափշտակված Ցողունի և Գոդեվան գյուղերը, վերահաստատելով վանքի վիճակը՝ իրավունքը Սյունյաց 12 գավառների վրա։*

*Այսպիսով, վանքը բացի հայրենի կամ ժառանգական հողային տիրույթներից, ուներ շատ ընդարձակ վիճակ, որի մեջ մտնող 677 գյուղի համայնքները տասանորդ էին վճարում նրան։*

*Տաթևի վանքի կալվածատիրության ձևավորումը շատ ցայտուն օրինակ լինելով հանդերձ՝ միակը չէր։ Կալվածատեր էին դարձել բոլոր վանքերը։ Նույն Սյունիքում IX—XI դարերում առաջացած վանքերի թվին էր պատկանում Վահանավանքը, որը հիմնադրվեց 911 թ. և շուտով դարձավ խոշոր վանական կենտրոն։ Նրա կրոնավորների թիվը 100-ից ավելի էր, իսկ տիրույթների մեջ մտնում էին դաշտեր, ձորեր, լեռնալանջեր, այգեստաններ, մի քանի գյուղեր և այլն։*

*Բուն Սյունիքի վանքերից խոշոր կալվածներ էին ձեռք բերել նաև Բղենո Նորավանքը[59] և Վաղատինի վանքը[60]։*

*Խոշոր հողատեր վանքեր առաջանում են Սյունյաց աշխարհի նաև մյուս գավառում՝ Վայոց ձորում։ Այդպիսին էին 910 թ. հիմնադրված Խոտակերաց կամ Քարակոփ վանքը իր հինգ եկեղեցիներով[61], 936 թ. Եղեգյաց ձորից վերև հիմնադրված Ահերմոնի վանքը[62] և այլ վանքեր։*

***X—XI** դարերում Վայոց ձորի ամենախոշոր կալվածատեր վանքը հին սրբատեղի Գնդեվանքն էր։ Սյունյաց Սմբատ իշխանի կին Սոփիա տիկինը 966 թ. այստեղ հիմնադրում է վանք, կրոնավորների անապատ, նվիրում է գյուղեր[63]։*

*Վանքից վերև և ներքև ձգվող ընդարձակ ձորը Սոֆիա տիկինը հրամայում է «առնել տնկախիտս ի մրգաբերաց ծառոց և յանուշաճաշակ պտղոց. և տնկեալ այգիս վայելուչս յոյժ բարութեամբ ի վայելումն առատապէս սուրբ եղբայ-*

---

56 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 273—274։*

57 *Տե՛ս նույն տեղում, էջ 291։*

58 *Նույն տեղում, էջ 294—295։*

59 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 245, 246։ Բղենո Նորավանքը չշփոթել Վայոց ձորի Նորավանքի հետ, որն ավելի ուշ է հիմնադրվել։*

60 *Տե՛ս նույն տեղում, էջ 302։*

61 *Տե՛ս նույն տեղում, էջ 237, «Վիմական տարեգիր», էջ 6—7։*

62 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 259—260։*

63 *Տե՛ս նույն տեղում, էջ 261, «Վիմական տարեգիր», էջ 7—8։*

*րությեանն և ամենայն կարոտելոց»[64]։ Վանքին նվիրաբերվում են նաև հողեր, ջրաղացներ։ Ջկնարած գետի ակունքից 1008 թ. ջուր է բերվում վանքի հանդաստանը ոռոգելու համար[65]։ Մեջ բերված փաստերը վկայում են, որ վանքի տիրույթների մի մասը նրա սեփական տնտեսությունն էր կազմում։*



Այգեպանի գործիք, Դվին

*Ավելի ընդարձակ տեղեկություններ են պահպանվել նաև Սյունյաց աշխարհի մյուս գավառի՝ Գեղարքունիքի վանական կալվածատիրության վերաբերյալ։ Սևանա կղզու վրա, առաջնորդ Մաշտոցի նախաձեռնությամբ՝ 871—874 թթ. կառուցվում են Առաքելոց և Աստվածածին եկեղեցիները, բնակարաններ հոգևորականության համար։ Վանքը զարդարվում է «մեծամեծ սպասուք», որոշվում են վանքի տիրույթների սահմանները, իսկ այցելության եկած իշխանաց իշխան Աշոտ Բագրատունին, որի դուստրն էր վանքը հիմնադրող Մարիամը, վանքին իբրև ժառանգություն տալիս է Վարսեր, Ցամաքաբերդ, Գոմաձոր, Բերդք, Ուռյաց տափ գյուղերը, Կռակծի որսը (ձկնորսությունը) և այգիներ՝ Գառնիում, Երևանում և այլ տեղերում[66]։*

*Խոշոր կալվածներ, գյուղեր, ագարակներ, հողեր, այգիներ, ձկնորսարաններից ստացվող դրամական եկամուտներ ունեին Շողագա վանքը, Վանեվանը,*

64 Ստ. Օրբելյան, էջ 261։

65 *Տե՛ս նույն տեղում, էջ 262։*

66 *Տե՛ս նույն տեղում, էջ 174։*

մանավանդ Մաքենյաց վանքը, որը Սևանի ավազանի ամենախոշոր կալվածատեր վանքն էր, ուներ նաև ջրաղացներ, կուղպակներ և մեծ քանակությամբ արոտներ ու անասուններ[67]։

Ստեփանոս Օրբելյանը Սյունյաց աշխարհի բոլոր գավառներում հիշատակում է 30 վանք, ավելացնելով «բայց այլ ևս բազումք կային, զորս ոչ թուեցաք»[68]։

Բազմաթիվ վանքեր կային նաև Այրարատյան նահանգում, Շիրակում, Վասպուրականում, Գուգարքում, որոնք նույնպես դարձել էին խոշոր հողատերեր։

966 թ. հիմնադրվում է Սանահնի վանքը Աշոտ Ողորմած թագավորի կնոջ՝ Խոսրովանույշ թագուհու հովանավորությամբ։ Վանքի խիստ բազմաթիվ միաբանության նյութական ապահովությունը հոգում են թագավորը և թագուհին, որոնք փարթամացնում են վանքը «զարդարանօք և յոլով (բազմաթիվ) դեղօրէիւք և հայրէնեօք՝ սարով և ձորով»[69]։ 979 թ. Սանահնի վանքը դառնում է եպիսկոպոսական աթոռանիստ, վանականների թիվը հասնում է 500-ի, և Սմբատ թագավորի հրովարտակով որոշվում են նրա վիճակի կամ թեմի սահմանները, որոնք բավականաչափ ընդարձակ էին, և հարյուրավոր գյուղեր պետք է տասանորդ վճարեին նրան[70]։ Դրանից հետո էլ վանքին նվիրաբերվում են գյուղեր, հողեր, նաև դրամական միջոցներ։

Նույն Խոսրովանույշ թագուհին 976 թ. հիմնադրում է Հաղբատի վանքը։ Անշուշտ, Աշոտ թագավորը և թագուհին, այս վանքն էլ, ինչպես Սանահնի վանքը ապահովում են կալվածներով։ X դարի վերջերին և XI դարում վանքը նվեր է ստանում գյուղեր, ագարակ, հողեր, այգիներ՝ մեծ մասամբ գանձագին (փողով գնված), նաև դրամական գումարներ։ Վանքը ուներ սեփական տնտեսություն՝ հողեր, այգիներ, ջրաղացներ, ձիթհաններ և այլն[71]։

Շիրակում խոշոր կալվածատեր դարձավ Մարմաշենի վանքը, որին գյուղեր, ընդարձակ կալվածներ, այգիներ, ջրաղացներ, տներ և կուղպակներ նվիրեց Վահրամ Պահլավունին[72]։

XI դարի սկզբներին ընդարձակ կալվածներ ուներ Պահլավունի իշխանների հիմնադրած Ծաղկաձորի Կեչառիս վանքը։ Գրիգոր Մագիստրոսը 1051 թ. այս վանքին նվիրել է երկու գյուղ և մի այգի. նույն ժամանակ որոշվել են նաև վանքի կալվածների և թեմի սահմանները՝ 25 գյուղ և մի քաղաք[73]։

Հողերի, այգիների, ջրաղացների, ձիթհանների, տների, կուղպակների, անգամ հյուրանոց-կարավանատների և այլ սեփականության տեր էին նաև Անիի եկեղեցիները[74]։

---

67 Տե՛ս նույն տեղում, էջ 179—183, «Վիմական տարեգիր», էջ 5—6։

68 Ստ. Օրբելյան, էջ 340։

69 Մատենադարան, ձեռագիր, № 3031, էջ 49։

70 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 3031, էջ 46—49։ Տե՛ս նաև Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը և նրա արձանագրությունները, էջ 97, 147, 187, 190—191։

71 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը..., էջ 145, 150—151, 154—157, 264, 269։

72 Տե՛ս И. А Орбели, Избранные труды, стр. 442.

73 Տե՛ս Ալիշան, Այրարատ, էջ 260։

74 Տե՛ս Ալիշան, Շիրակ. էջ 20—21, 52, 60, 82, 84, 126։

*Այրարատի և Շիրակի խոշոր կալվածատեր վանքերի թիվը մեծ էր և նրանց կալվածների վերաբերյալ տեղեկությունները բավականաչափ առատ են, բայց սահմանափակվենք արդեն մեջբերված տվյալներով, որոնք նույնպես, ինչպես Սյունիքի վանքերին վերաբերող տեղեկությունները, բավականաչափ ցայտուն կերպով ցույց են տալիս վանական ընդարձակ կալվածատիրության ձևավորումը IX—XI դարերում։*

*Պատկերը նույնն էր նաև Հայաստանի մյուս նահանգներում, օրինակ Վասպուրականում, որտեղ, ըստ աղբյուրների, XI դարի սկզբին կար 115 վանք[75]։*

*Դժբախտաբար, Վասպուրականի IX—XI դարերի վանական կալվածատիրության մասին մեզ հասած տեղեկություններն աննշան են, սակայն Աղթամարի Սուրբ խաչ վանքի վերաբերյալ Թովմա Արծրունու հաղորդած վկայությունը բնորոշ է։ Պատմիչի ասելով Դերենիկ Արծրունու զավակները դեռևս IX դարի վերջերին այս վանքին նվիրել էին չորս ագարակ՝ Փշոց վանքը, Ահավանք կոչվող ագարակը, «զքարն Մանակերտ... զԲերկրի և այլ բազում տեղիս»[76]։*

*Առասպելական էին Արծն քաղաքի քորեպիսկոպոս Դավթակի հարստությունները։*

*Ուռհայեցին գրում է, թե շատերից բազում անգամ լսել է, որ այս քորեպիսկոպոսի ունեցվածքը կողոպտելով սելջուկ զորավար Իբրահիմ Յաննալը, քառասուն ուղտի վրա բարձեց նրա գանձերը. և կարծես կամենալով բացահայտել այդ հարստության աղբյուրները, պատմիչն ասում է. «Ութ հարիւր վեցկի եզանց ելանէին ի տանէ նորա»[77]։ Կարելի է պատկերացնել, թե որչափ ընդարձակ պիտի լինեին քորեպիսկոպոսի սեփական կալվածները, որոնք վարելու համար նրա տանից դուրս էր գալիս երեք լուծ եզներով աշխատող 800 արոր՝ «վեցկե», որն այն ժամանակվա թեթև գութանն էր։ Եպիսկոպոսի մեծամեծ հարստություններն ու գանձերը ստացվում էին ամենից առաջ իր ընդարձակ կալվածներից, ապա և այն ութ հարյուր եկեղեցիների տուրքերից, որոնք եպիսկոպոսական հաս էին վճարում։*

*Որոշ տեղեկություններ պահպանվել են նաև հայոց կաթողիկոսի ունեցվածքի և կաթողիկոսարանի փարթամության վերաբերյալ։ Կաթողիկոսին պատկանում էին Կավակերտ և Հոռոմոց մարգ դաստակերտները՝ իրենց ագարակներով[78]։ X դարի սկզբներին Հայոց Հովհաննես կաթողիկոսը գնեց Բյուրականը, որը նա անվանում է «ձեռակերտ ամրոցիկն իմ... զոր ստացեալ էր իմ գանձիւ գնոյ»[79]։ Նույն դարի վերջերին Արգինան դարձավ կաթողիկոսի նստավայր և ավելացավ նրա տիրույթների շարքում։ XI դարի առաջին կեսում Պետրոս կաթողիկոսը այգիներ և հողեր ուներ Աշնակում[80]։*

---

75 *Տե՛ս* Սամուել Անեցի, *Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, էջ 104,* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 49։*

76 Թովմա Արծրունի, *էջ 369։*

77 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 103։*

78 *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 142։*

79 *Նույն տեղում, էջ 421։*

80 *Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 20։*

Այս պատահական վկայությունների կողքին մեզ հասել է նաև մի շատ բնորոշ տեղեկություն։

Երբ Տեր Պետրոսն էր հայրապետական աթոռին, ասում է Մատթեոս Ուռհայեցին, նա ուներ թագավորների կողմից տրված հայրենի կալվածներ, կազմված հինգ հարյուր գյուղից՝ «անվանի և մեծանիստ և շահավետ, ընտիր, ընտիր»։ Կաթողիկոսարանում կային 12 եպիսկոպոս, 4 վարդապետ, 60 երեց և 500 աշխարհական. «Եւ չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զթագաւորութեանն Հայոց»[81]։ Եկեղեցիներն ու հայրապետական տունն էլ լցված էին բազում, անհամար մեծամեծ և հրաշալի զարդարանքներով, ասում է պատմիչը։ Կաթողիկոսության գանձերի մեծությունը հռոմներին, այսինքն բյուզանդացիներին էլ հայտնի էր[82]։ Ուռհայեցու վկայությունից իմանում ենք, որ հայ կաթողիկոսին ենթակա 700 թեմ կար, որոնց գլուխ կանգնած էին 500 եպիսկոպոս, նաև բազմաթիվ գավառական տեսուչներ[83]։

Այսպիսով, պարզ երևում է, որ վանական հողատիրությունը ձևավորվում էր տարբեր եղանակներով։ Դեռևս չյուրացված հեռավոր վայրերում հիմնադրված վանքերը տիրանում էին շրջակա հողերին, արոտներին, մարգագետին-խոտհարքներին, անտառակներին, որսատեղիներին և տեղում եղած այլ բնական հարստությունների, ապա նրանք ստանում էին մեծամեծ նվերներ՝ հողեր, գյուղեր, ագարակներ, որոնք իշխանները երբեմն խլում էին գյուղական համայնքներից կամ գանձագին էին անում նախկին տերերից, իրենք վանքերը ևս գնման եղանակով ձեռք էին բերում հողեր, գյուղեր, ջրի աղբյուրներ և այլ անշարժ ունեցվածք, այգիներ, ջրաղացներ, ձիթհաններ և այլն։

Եկեղեցական կամ վանքապատկան հողային տիրույթները և անշարժ ունեցվածքը անօտարելի էին, դրանք չէր կարելի ոչ բաժանել, ոչ վաճառել կամ գրավ դնել կամ էլ ուրիշին նվիրել։ Ինչպես աշխարհիկ ֆեոդալները, վանքերը նույնպես իրենց տիրույթներում բնակվող գյուղացիներից ստանում էին հավելյալ արդյունք, իսկ տիրույթների մի մասի վրա կազմակերպում էին սեփական տնտեսություն։ Եկեղեցին, հետևաբար և վանքերը, սպահարկ էին և պետությանը կամ իշխաններին հարկ չէին վճարում։

Բացի վանքերից և եկեղեցիներից, ժառանգական հողատեր էր դարձել նաև բարձր հոգևորականության մի մասը։ Ըստ երևույթին հայոց կաթողիկոսի և Արծնի Դավթակ քորեպիսկոպոսի վերը հիշատակված ունեցվածքի մի մասը պատկանում էր կաթողիկոսությանը և եպիսկոպոսություններին, իսկ մի մասը՝ անձամբ նրանց։

Մատենագրական աղբյուրները և վիմական արձանագրությունները ցայտուն ու վառ երանգներով են պատկերում ոչ միայն աշխարհիկ, այլև վանական խոշոր հողատիրության և տնտեսության պատկերը, նրա կազմավորումն ու աճը Հայաստանում IX—XI դարերում։ Հողի հետ միասին հողատիրոջն էին պատկանում տվյալ տիրույթի սահմաններում գտնվող արոտները, խոտհարքները, անտառները, հողի մակերեսին և նրա ընդերքում գտնվող ամեն տեսակի

---

81 Մատթեոս Ուռհայեցի, էջ 153—154։

82 Տե՛ս նույն տեղում, էջ 137։

83 Տե՛ս նույն տեղում, էջ 154։

բնական հարստությունները՝ հանքերը, նաև քարհանքները, անտառում աճող պտուղները, անգամ սունկը, որից աբեթ էին պատրաստում։

Շատ հնից եկող մի սովորությամբ երկրի բոլոր մասերում և բոլոր իշխանների տիրույթների սահմաններում գտնվող ոսկու և արծաթի հանքերը պատկանում էին երկրի թագավորին, իսկ թանկագին քարերի հանքերը՝ թագուհուն, բայց զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանում այդ կարգը խախտված էր, և այդ ամենի տերը խոշոր հողատերն էր։

Նույն այդ աղբյուրները ցույց են տալիս, որ հողային սեփականության հետ միասին, իբրև նրա անբաժան մասը, ձևավորվեց նաև ոռոգող ջրի սեփականությունը[84]։

Իրավունքը ջրի նկատմամբ, միաժամանակ երևան էր բերում որոշ առանձնահատկություններ։ Ոչ մեծ գետակները, ինչպես և աղբյուրները պատկանում էին այն հողատերերին, որոնց տիրույթների սահմաններում գտնվում էին նրանց ակունքները, ուստի կարող էին առ ու վաճառքի առարկա դառնալ նաև դրանք, ինչպես Վարարակնը Սյունիքում[85]։

Մեծ գետերից հանված ջրանցքներն ու առուները, կամ խոշոր ջրամբարները պատկանում էին կառուցողներին, լինեին դրանք աշխարհիկ ֆեոդալներ, թե վանքեր։

Գյուղական համայնքներն իրավունք չունեին օգտվելու այդ ջրանցքներից։ 932 թ. Տաթևի վանքի հանած առուն անցնում էր մի քանի գյուղերի սահմանների միջով, սակայն, ասվում է, թե այդ գյուղերի բնակիչները՝ նորեցիները, խոտանանցիները, շնհերցիները, հալէցիները կամ ուրիշներ իրավունք չունեին այդ ջրից օգտվելու և չէին կարող արտի, մարգի կամ պարտեզի ջուրը վերցնել, բացի մարդկանց և անասունների խմելու ջրից[86]։

Նույն բանը ասված է նաև Գնդեվանքի 1008 թ. անցկացված առվի մասին, որից օգտվելու իրավունք չունեին ոչ պրակնցիները, ոչ կեչուտցիները, ոչ սահմանակից մյուս գյուղերի բնակիչները և ոչ այլ ոք, «բայց միայն թէ ըմպեն ի մատակէն (մայր առվից) մարդ և անասուն»[87]։

Խոշոր գետերը և գարնան ձնհալքից առաջացած ջրերը սեփականություն չէին համարվում, ուստի նրանցից օգտվել կարող էին նաև գյուղական համայնքները. Նրանց էին պատկանում համայնքի ջանքերով անցկացված առուները, թեև ֆեոդալներն ու վանքերը հաճախ փորձում էին տիրանալ նաև համայնքներին պատկանող ջրի ակունքներին կամ նրանց անցկացրած առուներին[88]։

---

84 Ջրի նկատմամբ սեփականության հարցը դնելով և հիմնականում ճիշտ լուծելով, պրոֆ. Խ. Սամվելյանը, սակայն, ելակետ է ունեցել անհիմն այն տեսակետը, թե հողը և ջուրը կազմել են պետության սեփականությունը (տե՛ս նրա «Հին հայ իրավունքի պատմություն», հատ. 1, էջ 197—207)։

85 Ջրի նկատմամբ սեփականատիրական իրավունքի հարցը ճիշտ է լուծել Ս. Հակոբյանը (տե՛ս «Հայ գյուղացիության պատմություն», հատ. 2, էջ 72—75)։

86 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 255։

87 Նույն տեղում, էջ 263։

88 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 3։

*Թագավորներն ու իշխաններն էին կարգավորում համայնքների միջև ջրի բաշխման գործը և լուծում ջրի առթիվ ծագած վեճերը։ Մի քանի գյուղերի համայնքներին պատկանող ջրանցքներն ու առուները այդ համայնքների մշտական հոգատարության առարկան էին հանդիսանում։*

*Հայաստանում ջրի նշանակությունը խիստ մեծ էր, իսկ ոռոգելի երկրագործության զարգացումը վճռական նշանակություն ուներ երկրի տնտեսական բարգավաճման համար։*

*Մատենագրական աղբյուրները բավական ցայտուն կերպով արտահայտում են այն իրողությունը, որ IX—X դարերում ժառանգական խոշոր հողատիրությունը նոր հիմունքներով վերականգնվեց և ընդարձակվեց։ Խոշոր հողատեր ֆեոդալները և վանքերը իրենց տիրույթները բաժանում էին երկու մասի և մեծ մասը տրամադրում էին գյուղական համայնքներին ու շինականներին մշակելու, նրանցից ստանալով հավելյալ արդյունք, իսկ մյուս, անհամեմատ փոքր մասի վրա վարում էին սեփական տնտեսություն։ Այսպիսով ձևավորվեց ֆեոդալական կալվածքը, որը նոր երևույթ էր միջնադարյան Հայաստանում և փոփոխություններ պիտի առաջացներ ոչ միայն հողօգտագործման ձևերի և տնտեսության մեջ, այլև շինականների սոցիալ-իրավական վիճակում՝ դուռ բացելով նրանց մի (թեև փոքր) մասի ճորտացման առջև։*

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ԱՐՀԵՍՏՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ։ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

## 1. ԱՐՀԵՍՏՆԵՐԻ ԱՆՋԱՏՈՒՄԸ ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԻՑ ԵՎ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

IX—X դարերում Հայաստանում տեղի ունեցող առավել նշանակալից երևույթներից մեկն էլ արհեստների, առևտրի զարգացումն էր և ֆեոդալական քաղաքի ձևավորումը։ Դա խոշոր նշանակություն ունեցավ ոչ միայն երկրի տնտեսական վերելքի, այլև հասարակական, քաղաքական և մշակութային առաջադիմության համար։

Միջին դարերում տնտեսության հիմնական ճյուղերն էին երկրագործությունը և անասնապահությունը։ Զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանում, երբ ձևավորվեց ֆեոդալական քաղաքը, արհեստը ևս ձեռք բերեց տնտեսական խոշոր նշանակություն և տնայնագործական երկրորդական զբաղմունքից վերածվեց ծավալուն արտադրության։ Արհեստագործությունն, իր մանր ապրանքային բնույթով հանդերձ, կազմում էր քաղաքների առաջացման ու զարգացման տնտեսական հիմքը։

Մինչև այդ աստիճանին հասնելը միջնադարյան արհեստագործությունն անցել էր զարգացման բավականաչափ երկար ուղի։

Միջին դարերում արհեստներով զբաղվում էին գյուղերում, բերդ-դղյակներում, վանքերում, գյուղաքաղաքներում, մանավանդ քաղաքներում։

Գյուղերում արհեստավորները կտրված չէին երկրագործությունից, անասնապահությունից և արհեստով զբաղվում էին պահանջված դեպքում, առավելապես երկրագործական աշխատանքներից ազատ ամիսներին։ Նրանք արտադրում էին համագյուղացիների պատվերով և սովորաբար նրանց նյութերով։ Շատ հաճախ արհեստով զբաղվում էին տվյալ գերդաստանի անդամները։ Այսպիսով, գյուղական արհեստագործությունն, ընդհանրապես, տնայնագործական բնույթ էր կրում և կոչված էր բավարարելու տվյալ գերդաստանի ու գյուղական համայնքի պահանջները, ինչպես երկրագործական գործիքների. հարմարանքների, նույնպես և կենցաղային առարկաների, հագուստեղենի և այլ կարգի արտադրանքի նկատմամբ։

Արհեստային արտադրանքը գյուղում երկար դարեր շարունակ բնատնտեսական-սպառողական բնույթ կրելով, ապրանքային արտադրանք չդարձավ։

Բերդ-դղյակներում և խոշոր վանքերում աշխատող արհեստավորները սպասարկում էին ֆեոդալական տվյալ տոհմի կամ տվյալ վանքի և նրա միաբանության տնտեսական-կենցաղային պահանջները։ Այստեղ ևս, որոշ բացառությամբ, արհեստային արտադրանքը ապրանքային բնույթ չէր կրում, իսկ արհեստավորը կախման մեջ էր գտնվում բերդատեր ֆեոդալից կամ վանքից։

Արհեստագործությունը թե գյուղում և թե ֆեոդալական ամրոցում կամ վանքերում զուրկ էր զարգացման քիչ թե շատ լայն հնարավորությունից, որովհետև փակ բնատնտեսության պայմաններում սպասարկում էր գյուղական համայնքի և ֆեոդալական տնտեսությունների սահմանափակ պահանջները։

Արհեստագործության զարգացումը միջին դարերում կապված էր աշխատանքի հասարակական երկրորդ մեծ բաժանման՝ երկրագործությունից արհեստների անջատման և քաղաքում կենտրոնացման հետ, որն այժմ կրկնվում էր նոր՝ ֆեոդալական հասարակությանը բնորոշող հիմունքներով և ավելի լայն մասշտաբներով։ Դա իր հերթին խոշոր ու վճռական նշանակություն ունեցավ ֆեոդալական քաղաքի առաջացման համար, որը Հայաստանում տեղի էր ունենում IX—X դարերում։

Քաղաքների առաջացումն, իհարկե, պայմանավորված էր ֆեոդալական հասարակության արտադրողական ուժերի զարգացման մակարդակով։ Քաղաքներն առաջանում էին տնտեսապես առավել զարգացած գավառներում, խիտ բնակչություն ունեցող արգավանդ դաշտավայրերում, առևտրական ճանապարհների վրա, բայց նրանց առաջացման անմիջական և վճռական նշանակություն ունեցող նախադրյալը աշխատանքի երկրորդ բաժանումն էր՝ արհեստների անջատումը երկրագործությունից և կենտրոնացումը քաղաքներում։

Արհեստները հողագործի ժամանակավոր և երկրորդական զբաղմունք լինելուց աստիճանաբար դառնում էին արտադրության ինքնուրույն բնագավառ։ Որպեսզի արհեստավորները մեծ թվով և մշտական սպառողներ գտնեին՝ կենտրոնանում էին խոշոր բնակավայրերում՝ ավաններում, ֆեոդալների վարչական կենտրոններում, որոնք սովորաբար ամրոցներ էին՝ իրենց առջև փռված ավաններով։ Հայաստանի համար բնորոշ է այն երևույթը, որ բացի Դվինից, նախկին Տիգրանակերտից (որը հետո Մարտիրոսուպոլիս, Նփրկերտ, ապա և Մայաֆարկին էր կոչվում) և Թեոդոսուպոլսից կամ Կարնո քաղաքից, հին Հայաստանի մնացած քաղաքները IV—VIII դարերում վերածվել էին բերդ կամ ամրոց ունեցող ավանների։ Բայց ուշագրավ է, որ դրանք պահպանում էին քաղաքի իրավառությունը։ Ինչպես հին, նույնպես և նոր բնակիչները այստեղ հաստատվում էին «ըստ պայմանի քաղաքականաց»[1] և գյուղական բնակչության համեմատությամբ վայելում էին որոշ արտոնություններ։ «Ըստ պայմանի քաղաքականաց», այսինքն, քաղաքային բնակչության համար սահմանված պայմանի համաձայն՝ արտոնությունները գալիս էին հին Հայաստանից։ Մովսես Խորենացին դրանց սահմանումը վերագրում է Վաղարշակ արքային,

---

1 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 112—113։

ասելով, թե նա «հրաման է տալիս, որ քաղաքացիների հարգն ու պատիվը ավելի լինի, քան գյուղացիներինը, որ գյուղացիները պատվեն քաղաքացիներին, ինչպես իշխաններին...»[2]։

Միջին դարերում այդ արտոնությունները փոփոխվել էին և ընդունել նոր կերպարանք։ Եթե հին կամ անտիկ դարաշրջանի քաղաքի ազատ բնակիչը իրավապես պատկանում էր հասարակության իշխող դասակարգին, ապա միջնադարյան քաղաքի ազատ բնակչությունը պատկանում էր տարբեր դասերի և դասակարգերի։ Ահա թե ինչու Մխիթար Գոշի մոտ այդ օրենքը գտնում ենք փոփոխված և նոր խմբագրությամբ։ «Արք քաղաքացիք առաւել քան զգեղջուկս պատուիցին և գեղջկաց նմանապէս առաւել պատիւ լիցի քան բնակչաց ագարակի. սոյնպէս լիցի բերդի բնակչաց և աւանի, զի և կարգ առաջնոցն է մերոց թագաւորացն այդոքիկ»[3]։ Գոշի մոտ արդեն քաղաքացիները իշխանի պատիվ չէին վայելում, այլ միայն «առաւել քան զգեղջուկս պատուիցին», բացի այդ, քաղաքացու արտոնությունները տարածվում են նաև բերդի և ավանի բնակիչների վրա։ Ավանները ստանում են նաև խոշոր տնտեսական արտոնություններ։ Գոշի Դատաստանագրքի մի այլ հոդվածից իմանում ենք, որ առևտուրը թույլատրված էր «թէ ի քաղաքս կամ յաւանս կամ յայլ ինչ տեղիս ի գաւառս»[4]։

Այս ամենի շնորհիվ քաղաքները և ավանները ձգողական մեծ ուժ են ստանում արհեստավորների համար, որոնք այստեղ կգտնեին արտադրելու և արտադրանքը վաճառելու լայն հնարավորություններ և կխուսափեին ճորտացումից։

Այսպիսով, գյուղական արհեստավորների հոսքը քաղաք, որը միջին դարերում մշտապես տեղի ունեցող երևույթ էր, ուներ իր տնտեսական, ինչպես և սոցիալական պատճառները։ Ավաններն աճում էին, ընդարձակվում, դառնալով արհեստային արտադրության և առևտրի առավել կամ նվազ կարևոր կենտրոն-քաղաքներ։ Այս երևույթը իր ժամանակին այնքան ակնառու և բնորոշ է եղել, որ Ստեփանոս Տարոնեցին ընդհանրացնելով ասում է. «Եւ այսպէս ագարակաց աւանացեալ և աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ և ընչեղութեամբ...»[5]։

Ոչ միայն վերստին քաղաք էին դառնում վաղ միջնադարում ավանի ու բերդի վերածված հին քաղաքները, այլև ավաններ ու քաղաքներ էին գոյանում բոլորովին նոր վայրերում։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ IX—X դարերում Հայաստանում արդեն առաջացել էր շուրջ 30 մանր ու մեծ քաղաք և մոտ 20 գյուղաքաղաք[6]։

Գյուղաքաղաքները հաճախ մեծությամբ և արտադրական դերով չէին տարբերվում տեղական նշանակություն ունեցող գավառական փոքրիկ քա-

---

2 Խորենացի, Բ, գլ. Ը։

3 Միխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 318։

4 Նույն տեղում, էջ 434։

5 Ստեփանոս Տարոնեցի, էջ 161։

6 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, հատ. 1, էջ 123—124։

ղաքներից. բայց քաղաք դառնալու համար նրանք ավելի պետք է աճեին և շրջափակվեին պարսպով։ Գյուղաքաղաքները պարիսպ չէին ունենում և սովորաբար փռված էին լինում ամրոցի առջև՝ պարիսպներից դուրս։

Արդեն IX—X դարերում քաղաքները Հայաստանում աչքի ընկնող զարգացում ունեցան։ Դրան մեծապես նպաստում էր այն հանգամանքը, որ անկախություն ձեռք բերած Հայաստանը իբրև չեզոք երկիր Բյուզանդիայի և Արաբական խալիֆայության շարունակվող հակամարտությունների պայմաններում դարձել էր Միջավոր Արևելքում կատարվող միջազգային տարանցիկ առևտրի խոշոր կենտրոն[7]։ Առևտուրը նպաստում էր քաղաքների աճին և բազմամարդ խոշոր կենտրոն դառնալուն։ Հայաստանի վրայով անցնում էին հյուսիսային և հարավային առևտրական մայրուղիները, որոնց վրա գտնվում էին Հայաստանի առավել նշանավոր քաղաքները՝ Նախճավանը, Դվինը, Անին, Կարսը, Կարինը, Արծնը, Երզնկան՝ հյուսիսային մայրուղու վրա, իսկ Հերը, Բերկրին, Արճեշը, Մանազկերտը, Խլաթը, Բաղեշը, Արզնը, Նփրկերտը, Խարբերդը՝ հարավային մայրուղու վրա։ Մինչդեռ ճանապարհներից դուրս գտնվող քաղաքները թույլ էին աճում և մնում էին գավառական փոքր քաղաքներ։

Արհեստների զարգացման շնորհիվ սկսեցին ավելի լայնորեն օգտագործել Հայաստանի ընդերքի հարստությունները՝ զանազան հանքերն ու հանքանյութերը, որոնք մշակվում էին անհիշելի ժամանակներից և ծառայում իբրև հումք արհեստագործության համար։ Հանքանյութերի հանույթը անհամեմատ ավելի ընդարձակվեց։ Երկրի ընդերքից հանվում էին երկաթ, պղինձ, կապար, ոսկի, արծաթ, աղ, ծծումբ, մկնդեղ, բորակ, պաղլեղ, մարմար, շինարարական քարեր և այլն։

Մատենագրական աղբյուրները, ինչպես և տարբեր տեղերում հայտնի դարձած մետաղաձուլական բովերն ու մետաղի հանքերի մշակումից առաջացած խարամի կույտերը ցույց են տալիս, որ հիրավի մետաղի հանույթը միջնադարյան Հայաստանում նշանակալից չափերի էր հասել[8]։ Աղբյուրներում մետաղի հանքերը հիշատակված են Անձևացյաց երկրում, Ռշտունիքում, Հյուսիսային Հայաստանում, Այրարատյան նահանգում, Տուրուբերանում և Աղձնիքում, Չորրորդ Հայքի Տուտխ կոչվող վայրում, Բարձր Հայքում։ Իրենց որակով և մշակման ծավալով հայտնի էին, մանավանդ, Աղձնիքի և Տուրուբերանի երկաթի հանքերը։

Արաբ հեղինակ Յակուտը իր աշխարհագրական բառարանում[9] նշում է, որ երկաթ հանվում էր Հայաստանի տարբեր գավառներում՝ Տուրուբերանում, Վարաժնունիքում, Բալուում, Վասպուրականի Ապահունիք գավառում, Դիարբեքիրի մարզի Հայնի քաղաքում։ Երկաթի հանքեր մշակվում էին նաև Հյուսիսային Հայաստանում, որտեղ հնագետները և երկրաբանները նկատել են հարյուրների հասնող բովերի հետքեր և երկաթի խարամի կույտեր։

---

7 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен. Տե՛ս նաև Հ. Մանանդյան. Հայաստանի քաղաքները X—XI դարերում, էջ 10։

8 Տե՛ս Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 349, տե՛ս նաև Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 107—108։

9 Jacut, I. էջ 455։

Հայաստանը հարուստ է մանավանդ պղնձահանքերով, որոնք մշակվել են հնագույն ժամանակներից։ Մատենագրական աղբյուրներում պղնձահանքերը հիշատակված են Այրարատյան նահանգում, Բջնո գավառի Աբասաձորում[10] (այժմ Հանքավան), Գուգարքում[11], Սյունիքում, Կապանի մոտ գտնվող Աչնան կոչվող վայրում[12], Բարձր Հայքում։ Արաբական աղբյուրներում պղնձահանքեր հիշատակվում են Մանանաղիում, Գուգարքում, Տաշիրում, Վաժունիում (Վարաժնունիք), Վասպուրականի Ապահունիք գավառում, Երզնկայի մերձակայքում[13]։ Կապարի հանքեր, արաբական աղբյուրների վկայությամբ, կային Հայաստանի մի քանի վայրերում[14]։

Հայաստանը հարուստ է եղել նաև ոսկու և արծաթի հանքերով։ Ոսկի հանվել է Սպեր գավառում, Տայքում[15], Տուրուբերանի Աղիովիտ գավառում, Այրարատ նահանգում, Աղստև գետի հովտում և հյուսիս-արևելյան Հայաստանի այլ վայրերում։ Հնագիտական տվյալները ցույց են տալիս, որ Սյունիքի Սոթից գավառի (այժմ Զոդ գյուղի մոտ) և Հանքավանի ձորում ու լեռներում գտնվող ոսկու հանքերը մշակվել են դարեր շարունակ՝ սկսած երկրորդ հազարամյակի վերջերից, իսկ Աղստևի վերին հոսանքում ոսկու հին հանքավայրերում գտնվել են հանքահորեր, գետնուղիներ և միջնադարյան երկաթե գործիքներ։

Արծաթ հանվել է Սպերում, Տայքում, Աղիովիտում, Այրարատյան նահանգում, Չորրորդ Հայքում, Բարձր Հայքում (Կարինի շրջանում)։

Հայաստանի ընդերքից հանվել են նաև այլ օգտակար հանածոներ՝ աղ (Կողբ, Կաղզվան, Ապահունիք, Դարանաղի, Վասպուրական, Աղիովիտ), սնդիկ, մկնդեղ (Վասպուրական, Կորճեք), բորակ (Վանա լիճ), պաղլեղ (Ուրմիա լճի ափերին), ծծումբ, կալիական աղեր, պղնձի թթվուկ (օքսիդ), թանկագին բյուրեղաքարեր՝ ակնեղենի համար, ներկանյութեր, իբրև շինանյութ ծառայող բազմազան քարեր, որոնց թվում և կճաքար (մարմար)։ Հայաստանն ուներ նաև լավ տեսակի կավեր՝ խեցեգործության և ավազներ՝ ապակեգործության համար։ Երկրագործությունից և անասնապահությունից ստացվող հումքի տարբեր տեսակները նույնպես խոշոր նշանակություն ունեցան արհեստագործության զարգացման համար։ Արհեստավորները լայնորեն օգտագործում էին անասունների կաշին, մորթին, բուրդը, ոսկորը։ Վերևում արդեն նշվեց, որ այս ժամանակաշրջանում արհեստագործության հետ կապված զարգանում էր թելատու բույսերի՝ բամբակի, վուշի, կանեփի մշակումը, ինչպես և շերամապահությունը։

Առհասարակ արհեստների զարգացման համար ստեղծվել էին բավականաչափ լայն նախադրյալներ։ Գյուղի և քաղաքի անջատմամբ արհեստային արտադրանքի նկատմամբ պահանջարկը մեծապես ընդարձակվել էր, զարգացել

---

10 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 216։

11 Տե՛ս նույն տեղում, էջ 222, 238, 321։

12 Տե՛ս *И. Петрушевский*, Хамдаллах Казвини как источник восточного Закавказья, стр. 909.

13 Տե՛ս Jacut, I, 455, Իբն Բատուտա, քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան, էջ 31։

14 Իբն ալ Ֆակիհի վկայությունը տե՛ս СМОМПК в. XXXI, стр. 39, տե՛ս նաև Jacut, I, 455։

15 Տե՛ս Ղազար Փարպեցի, էջ 256—257։ *Procop.*, De bello Persico I, 15, p. 18.

առևտուրը երկրի ներսում, Հայաստանը ավելի ու ավելի լայն չափերով էր մասնակցում միջազգային տարանցիկ առևտրին։

Այսպիսով, եթե աշխատանքի հասարակական բաժանումը՝ երկրագործությունից արհեստի անջատվելը, արհեստանոցն իր, թեև դանդաղ կատարելագործվող գործիքներով և հարմարանքներով, աշխատանքի նյութի կամ հումքի առատությունն ու բազմազանությունը և վարպետի դարավոր փորձն ու հմտությունը կազմում էին արհեստային արտադրության նյութական հիմքն ու պայմանները, ապա արհեստային արտադրանքի նկատմամբ պահանջարկի աճը և առևտրի զարգացումը կազմում էին նրա տնտեսական նախադրյալները։

## 2. ԱՐՀԵՍՏՆԵՐԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ՃՅՈՒՂԱՎՈՐՈՒՄԸ

Արհեստների զարգացմանը մեծապես նպաստեց նաև աշխատանքի բաժանման խորացումը հենց արհեստագործության մեջ։ Արհեստանոցի ներսում այն շատ սահմանափակ էր և դրսևորվում էր աշխատանքի բաժանմամբ վարպետի, ենթավարպետի, աշակերտների միջև։ Դրանցից ամեն մեկը կատարում էր տվյալ արհեստի հետ կապված բոլոր աշխատանքները՝ ըստ իր փորձի և կարողության։ Պահանջված դեպքում օգտագործվում էր նաև սևագործ աշխատավորի կամ, ինչպես աղբյուրներում կոչվում է՝ վարձկանի աշխատանքը, որը օրավարձային բնույթ էր կրում։

Արհեստագործության մեջ աշխատանքի բաժանման տեսակետից ավելի նշանակալից և միջին դարերի համար բնորոշ էր մայր արհեստների աստիճանական տրոհումը արհեստային բազմաթիվ նոր ինքնուրույն ճյուղերի, որոնք երբեմն հանդես էին գալիս իբրև բոլորովին նոր արհեստներ։ Միջնադարյան Հայաստանի քաղաքներում առաջացել էին մի քանի տասնյակ արհեստներ և արհեստային մասնաճյուղեր։ Աշխատանքի նման բաժանումը այն աստիճան ակնառու երևույթ էր, որ Գրիգոր Մագիստրոսը գրում է. «Հյուսների մոտ եղած կարգի համաձայն՝ ովքեր արհեստին գիտակ են, նախօրոք անտառ կամ մայրի չեն շտապում փայտ կտրելու, քանի որ դրանով ուրիշներն են զբաղվում և ուրիշներն են հարթում ու տաշում (փայտը), ապա ամենահմուտ վարպետները («ծայրագույնք») ճախարակներով և այլ հարմարանքներով («գործարանօք») փայտից պատրաստում են գահավորակներ, աթոռներ և այլ տեսակի հարմարանքներ՝ պանծալի գեղեցկությամբ։ Այսպես (անում են) նաև նրանք, ովքեր զբաղվում են ոսկու, երկաթի և պղնձի (արհեստներով)»[16]։

Արհեստների և արհեստագործական արտադրության զարգացման բարձր մակարդակի վերաբերյալ առատ նյութեր են տվել Հայաստանի միջնադարյան բնակավայրերի, մասնավորապես Անի և Դվին խոշոր քաղաքների, Ամբերդ և Գառնի ամրոցների պեղումները, որոնց արդյունքներին նվիրված մի շարք ուսումնասիրությունների մեջ արհեստներին մեծ տեղ է հատկացված[17]։ Արհեստները բաժանված են եղել բազմաթիվ ճյուղերի։

---

16 «Գրիգոր Մագիստրոսի Թղթերը», էջ 9։

17 Տե՛ս *Н. Я. Марр*, Ани, Книжная история города и раскопки на месте городища, М.—Л., 1934, վերահրատարակությունը տե՛ս Երևան, 1939։ *И. А. Орбели*, Избранные труды,

**Մետաղագործություն:** *Մետաղների մշակումը արհեստագործության առավել կարևոր բնագավառն էր, որովհետև նա էր տալիս երկրագործության և արհեստների մեջ օգտագործվող գործիքների հիմնական մասը, զինվորների զինավառությունը, կենցաղային շատ իրեր, պերճանքի առարկաներ։*

*Մետաղագործությունն այժմ կենտրոնանալով միջնադարյան քաղաքներում, ավելի բարձր մակարդակի հասավ։ Եթե հնում մետաղագործական հիմնական արհեստներն էին դարբնությունը, պղնձագործությունը և ոսկերչությունը, ապա IX—XI դդ. դրանցից անջատվելով, առաջացել էին մետաղագործական արհեստների մի շարք նոր ինքնուրույն ճյուղեր[18]։*



Կացիններ, Դվին

**Դարբնություն:** *Դարբնի արհեստը թերևս արհեստներից ամենակարևորն էր։ Մխիթար Գոշի առակներից մեկում նշված է, որ դարբինը և պղնձագործը, վիճելով առաջնության մասին, դիմում են ծերերի ատյանին, և «նոքա մեծարգոյ ցուցին զերկաթագործ ասելով, թէ հասարակաց (բոլորին) օգտակարն պատուական է»[19]։ Դարբնոցների հետքեր, մեծ թվով երկաթե գործիքներ և այլ առարկաներ գտնվել են Դվինի, Անիի, Գառնիի և Ամբերդի պեղումների ժամանակ։ Դրանց շարքում կան գութանի խոփեր, կացիններ, ուրագներ, մանգաղներ և այլ իրեր։ Միջին դարերում երկաթը լայն գործածություն ուներ։ Գործիքներ, զենքեր և այլ իրեր պատրաստելուց բացի, երկաթն օգտագործվում էր նաև շինարարության մեջ։ Թովմա Արծրունին վկայում է, որ Աղթամարի պալատական շենքի վրա ծախսվել է երկու հարյուր հազար լիտր (մոտ 80 տոննա) երկաթ[20]։*

*Դեռևս հին ժամանակներից, օգտագործելով կաղնու ածուխը, դարբինները կարողանում էին երկաթը եռ բերելու աստիճան չեռուցանել, որի շնորհիվ*

---

Կ. Ղաֆադարյան, *Դվին քաղաքը և նրա պեղումները,* Բ. Ն. Առաքելյան և Գ. Հ. Կարախանյան, *Գառնի, պրակ 3-րդ, 1949—1956 թթ. պեղումների արդյունքները (միջին դարեր).* Վ. Ա. Աբրահամյան, *Արհեստները Հայաստանում IV—XVIII դդ.,* Բ. Ն. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, հատ. 1, հատ. 2։*

18 *Տե՛ս* Վ. Ա. Աբրահամյան, *նշված աշխատ., գլուխ II,* Բ. Ն. Առաքելյան. *նշված աշխատ., հատ. 1, գլ. II և IX։*

19 Մխիթար Գոշ, *Առակներ, էջ 122։*

20 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 482։*

շիկացած երկաթին միանում էր ածխածնի որոշ քանակ՝ առաջացնելով պողպատ, որից պատրաստված գործիքները կոչվում էին «պողովատիկ» (պողպատե)։ Սառը ջրի մեջ «մխելու» եղանակով այդպիսի գործիքներին կարծրություն էին հաղորդում։



**Դաշույն և դանակներ, Գառնի, Դվին**

Դարբնի արհեստը այն աստիճան զարգացել էր, որ մի շարք բարձրորակ և համեմատաբար բարդ գործիքներ պատրաստելու արհեստը նրանից անջատվելով դարբնության ինքնուրույն ճյուղ էր դարձել։ Դվինի պեղումների ժամա-



Նիզակների ծայրեր, զրահի թիթեղներ. Դվին: Սուր և նետերի ծայրեր. Անի, Դվին:

նակ գտնվել են հյուսնի ուրագներ, սղոցի բեկորներ, դուր, մկրատներ և արհեստավորական այլ գործիքներ[21], որոնք ամեն մի դաբբին պատրաստել չէր կարող։ Ինքնուրույն արհեստ էր դարձել նաև պայտարությունը։ Անիում կար պայտարների հատուկ փողոց կամ շարք, որը կոչվում էր «նալպնդնոց»[22]։

Արհեստի ինքնուրույն ճյուղ էր դարձել փականագործությունը։ Փականագործ արհեստավորը կոչվում էր «կողպայքարար»[23]։ Անիում գտնվել են բրոնզից ձուլված քանդակազարդ կենդանիների՝ ձիու, առյուծի, կատվի, անգամ մարդու տեսք ունեցող կողպեքներ։

Դարբնությունից անջատվելով առանձին արհեստ էր դարձել նաև դանակագործությունը։ Ըստ այդմ վարպետն էլ կոչվում էր «դանակագործ» կամ «դանկրար»[24]։

Զինագործություն: Դարբնությունից դեռևս հնում անջատված զինագործությունն ինքն էր արդեն մայր արհեստ դարձել, ծնունդ տալով մի քանի դուստր ճյուղերի։ Զինագործները մետաղներից պատրաստում էին զենքեր, իսկ սլեհարար կոչվող վարպետները՝ զրահներ ու այլ պաշտպանական միջոցներ։ Զենքերի տեսակները բազմազան էին, իսկ միջնադարյան Հայաստանում սովորություն կար ըստ զենքի տեսակների խմբավորել նաև զորքը, օրինակ՝ «սուսերաւորք», «նիզակաւորք», «աղեղնաւորք» կամ «աղեղնաձիգք», «սակրաւորք», «վաղակաւորք», «վահանաւորք» և այլն։ Հարձակողական զենքերը սովորաբար լինում էին պողպատից, իսկ պաշտպանական միջոցները (վահաններ, սաղավարտներ, զրահներ և այլն) պատրաստվում էին պղնձից, բրոնզից, երբեմն արծաթից։

Իշխանավորների զենքերը զարդարված էին փորագրությամբ, քանդակներով, թանկագին մետաղներով ու քարերով, ոսկեջրումով և այլ հնարանքներով։

Հայաստանի խոշոր քաղաքները նաև զինագործության կարևոր կենտրոններ էին. իբրև այդպիսին նշվում է մասնավորապես Դվինը, որտեղ պեղումների ժամանակ զենքերի բազմաթիվ տեսակներ են գտնվել[25]։

Մեծ է մանավանդ պեղումների ժամանակ հայտնաբերված նետասլաքների երկաթյա ծայրապանակների քանակը, որոնք շատ բազմազան են նաև իրենց ձևերով։ Աղբյուրներից երևում է, որ նետ պատրաստելը զինագործության առանձին ճյուղ էր, և նետագործ արհեստավորն էլ կոչվում էր «նետրար»[26]։

Պղնձագործություն: Պղնձահանքերով հարուստ Հայաստանում պղնձագործությունը հնագույն ժամանակներից եկող և լայնորեն տարածված արհեստ էր։

Պղնձագործները իրեր, առարկաներ պատրաստելու համար օգտագործում էին ինչպես զուտ պղինձը, նույնպես և այլ մետաղների համաձուլվածքը՝ բրոն-

---

21 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 134—165։
22 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 78։
23 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 695, էջ 290ա։
24 Տե՛ս «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», էջ 363—366։
25 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 160—165։
26 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 695, էջ 219բ։

ղը, արույրը։ Պղնձից պատրաստում էին գերազանցապես տնային գործածության և կենցաղային առարկաներ, եկեղեցական սպասքներ, պաշտպանական միջոցներ և զարդեր։ Դվինում և Անիում բացված արհեստանոցների շարքում կան նաև պղնձագործների արհեստանոցներ, իսկ պղնձից պատրաստված իրերի երևան գալը պեղումների ժամանակ նույնպես սովորական է։ Դրանցից շատերը գեղարվեստական բարձրարվեստ մշակում ունեն և կիրառական արվեստի աչքի ընկնող գործեր են։



Բրոնզե կանթեղ, Անի

Պղնձագործության մայր արհեստից անջատվել էին նաև կաթսայագործությունը, ջահագործությունը և պղնձե զարդեր պատրաստելու արհեստը, որն ավելի մոտ էր ոսկերչությանը։

Պղնձագործության հետ կապված արհեստ էր պղնձե իրերի անագապատելը՝ կլեկարարությունը։ Անագապատված իրեր գտնվել են Անիի պեղումների ժամանակ։

**Ոսկերչություն:** *Ոսկերչությունը պղնձագործության պես հնագույն մետաղագործական արհեստ է։*

Միջնադարյան ոսկերիչները պատրաստում էին կենցաղային առարկաներ, սպասք՝ ունևոր բնակչության, եկեղեցիների ու վանքերի համար, մանավանդ

պերճանքի առարկաներ, հաճախ դրանք հարդարելով թանկագին քարերով։ Ոսկերիչները հավասարապես օգտագործում էին ոսկին և արծաթը։

IX—XI դարերում քաղաքային կյանքի, արհեստների, առևտրի զարգացման հետ մեծանում է պահանջը պերճանքի առարկաների նկատմամբ, իսկ ոսկերչության արհեստը նոր զարկ է ստանում։ Ֆեոդալներից և եկեղեցուց բացի, ոսկուց և արծաթից պատրաստված պերճանքի առարկաների սպառող է դառնում նաև նոր առաջացող քաղաքային վերնախավը։

Ոսկով և արծաթով հարուստ Հայաստանը արտահանում էր ոսկյա և արծաթյա պատրաստի իրեր։

Միջին դարերում ոսկերչության արհեստի հին ձևերին ավելացան նորերը՝ արծաթե իրերի վրա սև գույնի զարդեր ստանալու (սևադելու), ոսկյա իրերը էմալով զարդարելու (արծնապատելու), ինչպես և տարբեր մետաղներից ոսկեգույն համաձուլվածքներ ստանալու եղանակները[27]։

Միջին դարերից մեզ հասած շնորհալի վարպետների ձեռքով պատրաստված բազմաթիվ իրեր և զարդեր ապացույց են ժամանակի ոսկերչական արհեստի բարձր մակարդակի։

**Քարագործություն, շինարարական արհեստներ**: Լեռնային ու քարքարոտ Հայաստանը, բնականաբար, քարի ճարտարապետության երկիր է։ Շինարարության համար օգտագործել են տարբեր տեսակի ու գույնի տուֆ, բազալտ, սովորական որձաքար, մասամբ նաև կրաքար։ Շինարարական նպատակներից բացի, քարն օգտագործվել է զանազան կոթողներ, խաչքարեր, տապանաքարեր, տնտեսական ու կենցաղային նշանակություն ունեցող գործիքներ, սարքեր և հարմարանքներ պատրաստելու համար։ Քարի լայն և բազմակողմանի գործածությամբ էլ պայմանավորված էր մի շարք արհեստների զարգացումը։

IX—XI դարերում տեղի ունեցող տնտեսական վերելքը, աննախընթաց քաղաքաշինությունը, բերդերի, եկեղեցիների, վանքերի, քարավանատների, կամուրջների և այլ շենքերի կառուցումը մեծապես զարկ տվեց քարի մշակման և շինարարության հետ կապված մյուս արհեստներին։

Քարի հանքերը, որոնք կոչվում էին քարհատ, ձեռք էին բերել տնտեսական նշանակություն, ուստի կազմում էին հողատերերի և մեծահարուստ քաղաքացիների սեփականությունը[28]։

Քարը հանող, տաշող, քանդակող, քարե շենքեր շինող վարպետները, անգամ քանդակագործներն ու ճարտարապետները, օրինակ, անեցի հռչակավոր ճարտարապետ Տրդատը կոչվել են քարգործ[29]։

Ճարտարապետների համար սկսում է գործածական դառնալ նաև վարդպետ կոչումը, որը հանդիպում է ժամանակի շինարարական մի շարք արձանագրությունների մեջ[30]։

---

27 Տե՛ս Վ. Աբրահամյան, Արհեստները Հայաստանում, էջ 139—156, Բ. Ն. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. 1, էջ 170—186։

28 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 58։

29 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 251։

30 Տե՛ս Ս. Գ. Բարխուդարյան, Միջնադարյան հայ ճարտարապետները և քարգործ վարպետները, էջ 21։

*Քարե շենքերը կառուցում էին կրի շաղախով, ուստի պետք էր լինում գործածել մեծ քանակությամբ կիր, որը պատրաստում էին կրագործ վարպետները՝ կրաքարը հատուկ հնոցներում այրելու եղանակով։*



Հոռոմոսի տաճարի քանդակազարդ առաստաղը

*Սրբատաշ և ճեղքված, կոպիտ տաշած քարե շենքերից բացի, Հայաստանի դաշտավայրային գավառների քաղաքներում, ավաններում և գյուղերում, որտեղ քարի պակաս կար, կառուցվում էին նաև շենքեր թրծած, մանավանդ հում աղյուսից, երբեմն էլ լավ տրորած կավից դրվող կավակերտ պատերով։*

*Հասարակական և բնակելի շենքերը հաճախ սվաղվում էին կրով կամ գաջով, որ կոչվում էր բուռ, իսկ գաջագործը՝ բռագործ։ Սովորական սվաղարար վարպետներից բացի, կային որմնանկար անող վարպետներ, որոնք կոչվում էին նկարիչ։*

*Շենքերի ճարտարապետական հարդարման եղանակներից մեկն էլ եղել է գիպսե և ալեբաստրե զարդերի գործադրությունը։ Դրանցով ձևավորվում էին շենքերի պատուհանները, խորշերը և այլ մասերը*[31]*։ IX—X դարերում գիպսե զարդերը փորագիր էին, իսկ XI դարից սկսած դրանք թափվում էին կաղապարի օգնությամբ։ Դա էլ առանձին արհեստ էր դարձել*[32]*։*

*Միջնադարյան Հայաստանի առավել զարգացած արհեստներից մեկն էր քանդակագործությունը՝ քարի վրա փորագիր քանդակ անելը։ Բազմազան, շքեղ ու բարձրարվեստ քանդակներով զարդարում էին շենքերի տարբեր մասերը, ինչպես և առանձին հուշարձանները։*

*Հայ շինարարները ունեցել են շատ գովելի մի սովորություն՝ կառուցվածքների, խաչքարերի և տապանաքարերի վրա փորագրել են արձանագրություններ, հաճախ շատ ընդարձակ՝ սոցիալ-տնտեսական և պատմա-մշակութային բովանդակությամբ։ Քարի վրա արձանագրություն փորագրող վարպետը կոչվում էր գրիչ*[33]*։*

Փայտամշակություն։ *Այս արհեստը իր մի ճյուղով՝ ատաղձագործությամբ, կապված էր շինարարության հետ։ Ատաղձագործները պատրաստում էին շենքերի փայտյա ծածկերը, դռները և այլ մասերը։*

*Միջին դարերում Հայկական լեռնաշխարհում անտառներ ավելի շատ կային։ Հայտնի էին, մանավանդ, հյուսիս-արևելյան Հայաստանի և Սասուն-Խութի անտառները։ Արաբ հեղինակների վկայությամբ տեղ-տեղ անտառապատ են եղել անգամ Արարատ լեռան լանջերը, ուր աճել են մինչև քսան թզաչափ հաստության բուն ունեցող ծառեր։ Կային փայտահատ (փայտ կտրող) և խզրար (խզող-սղոցող և տախտակ պատրաստող) արհեստավորներ, սակայն փայտագործության գլխավոր արհեստը հյուսնությունն էր։*

*Հյուսները գործունեության բավականաչափ լայն ասպարեզ ունեին։ Նրանք շինում էին փայտե երկրագործական գործիքներ (սայլեր, լծասարք), կահույք (սեղան, աթոռ, գահավորակներ, բազմոցներ), զանազան հաստոցներ, օրինակ՝ ջուլհակների, գորգագործների համար ճախարակներ (հանդիպում է անգամ ճախարակագործ բառը), ռազմական մեքենաներ և սարքեր (խոյ, բաբան, փիլիկուան կամ բաղիստր), այլևայլ առարկաներ։*

*Փայտամշակության արհեստներից մեկն էլ նավաշինությունն էր, որը կոչվում էր նավարարություն։*

*Ինքնուրույն արհեստ էր դարձել փայտի գեղարվեստական փորագրությունը։ Փորագրությամբ զարդարում էին շենքերի դռներն ու սյուների խոյակները, պատուհանները, պատշգամբները, տնային և եկեղեցական կահույքը, կենցաղային իրերը։*

Կավագործությունը *միջնադարյան Հայաստանում ամենատարածված և*

---

31 *Տե՛ս* Կ. Ղաֆադարյան, *Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 121, 129—132։*

32 *Տե՛ս* Բ. Ն. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. 1, էջ 195—196։*

33 *Տե՛ս* Ս. Բարխուդարյան, *Միջնադարյան հայ ճարտարապետները և քարգործ վարպետները, էջ 185։*



Անիի Մայր տաճարի շինարարական արձանագրությունը՝ 1001 թ.

առավել զարգացած արհեստներից մեկն էր։ Բոլոր նյութերից ավելի մատչելի և դյուրամշակ կավից պատրաստված ամանեղենը, սարքերն ու հարմարանքները լայն գործածություն ունեին բնակչության առտնին կենցաղի, տնտեսության մեջ։ Իսկ շինարարական նպատակների համար աղյուսից բացի արտադրել են նաև ծածկի կղմինդրներ, որոնք X—XI դարերում արդեն հաղ-

վաղեպ են հանդիպում, որովհետև փոխարինվել են քարե սալերով։ Արտադրել են նաև կավե ցունգեր կամ փողրակներ, որոնք լայնորեն գործադրվում էին քաղաքներում, բերդերում և վանքերում՝ ջրմուղի գծեր անցկացնելու համար։

Կավագործության արտադրանքի այսչափ լայն ու բազմակողմանի օգտագործումը կավագործ արհեստավորներին՝ բրուտներին, ստիպում էր որոնելու և գտնելու ամաններ, իրերի պատրաստման, ձևավորման և հարդարման նորանոր միջոցներ ու եղանակներ։

Միջնադարյան խեցեգործության մեջ նշանակալից երևույթ էր ամեն գույնի և երանգի ջնարակով (ապակու շերտով կամ գլազուրով) պատած խեցեղենի, նաև սպիտակախեցի հախճապակու արտադրությունը։ Քաղաքային արհեստավորները խեցեղենն արտադրում էին բրուտի ճախարակի՝ դուրգի վրա։



Դուրգով աշխատող կավագործ

Անիի, Դվինի, Անբերդի, Գառնիի և միջնադարյան այլ բնակավայրերի պեղումների շնորհիվ հայտնաբերվել է մեծ քանակությամբ անջնարակ և ջնարակած խեցեղեն, որը վերին աստիճանի հարուստ է և բազմազան իր կիրառական նշանակությամբ, ձևերով ու գեղարվեստական մշակմամբ[34]։

Թանկարժեք խեցեղենը, մանավանդ հախճապակին, գործածական էր բիշխող դասի, ինչպես և քաղաքային վերնախավի կենցաղում, իսկ անջնարակ և կարմրախեցի ջնարակած անոթները շատ ավելի լայն կիրառություն ունեին քաղաքում, անգամ գյուղում։

**Ապակեգործությունը** ևս հին արհեստ է։ Փչելու եղանակով ապակյա անոթների արտադրությունը սկսվել էր դեռևս առաջին դարի սկզբներին։ IX—X դարերում ապակու արտադրությունը սովորական երևույթ էր։

Դվինի[35], Անիի և Գառնիի պեղումների ժամանակ գտնվել են ապակյա թասեր, վազեր, շշեր, ջրամաններ, անուշահոտ օծանելիքների և այլ սրվակներ, գլանաձև լայնաբերան անոթներ, ապակյա ճրագներ, ղամբարներ, ջահերի թասեր, պատուհանի հարթ ապակի, մեծ քանակությամբ ապակյա ապարանջաններ և ուլունքներ։

---

[34] Տե՛ս *И. Орбели,* Каталог Анийского музея древностей, вып. I, стр. 45—67. *И. А. Орбели,* Избранные труды, стр. 50—60 և հոն., *Б. А. Шелковников,* Поливная керамика из раскопок города Ани, Կ. Ղաֆադարյան, *Դվին քաղաքը և նրա պեղումները,* էջ 182—236։ *Т. А. Измайлова,* Керамика из раскопок Анберда. Труды Отдела Востока Государственного Эрмитажа, т. VI. Բ. Ն. Առաքելյան, Գ. Հ. Կարախանյան, *Գառնի, պրակ 3-րդ, 1949—1956 թթ. պեղումների արդյունքները (միջին դարեր)*։

[35] Տե՛ս Հ. Մ. Ջանփոլադյան, *Դվինի միջնադարյան ապակին IX—XIII դդ.,* Երևան, 1974։




Դուրգի սկավառակ, Դվին



Դրոշմազարդ փախով կարաս, Անի

*Բնակչության, մանավանդ վերնախավի կենցաղում ապակին զգալի դեր էր խաղում։*

*Բարձրորակ ապակեղենի արտադրությամբ համբավ էր հանել Կիլիկիան։ «Աղէկն ի Սիս լինի որպէս ասազ կա կու հալեն և այնտեղ ալ կու շինեն շատոր»[35]։*



**Հախճապակե թաս, Անի**

Անկվածագործությունը կամ ջուլհակությունը *միջնադարյան Հայաստանի առավել տարածված և զարգացած արհեստներից էր, որի արտադրանքը բավարարում էր ոչ միայն երկրի բնակչության պահանջը, այլև արտահանվում էր Արաբական խալիֆայության և Բյուզանդական կայսրության երկրները։ Արաբական աղբյուրներում բազմիցս նշվել է հայկական գործվածքների և գորգերի բարձրորակ և ընտիր լինելը։ Բրդի, վուշի և բամբակի թելերից գործվածքներ արտադրելու հետ միասին զարգացավ նաև մետաքսագործությունը։ Այն Հայաստանում սկզբնավորվել է, հավանաբար, VI—VII դարերում և լայն տարածում ստացել հետագայում։*

*Գործվածքների և գորգերի արտադրության հետ կապված զարգացել էին մի շարք արհեստներ՝ գզրարությունը, թել մանելը (մանողները կոչվում էին մազման), ջուլհակությունը կամ անկվագործությունը, ըստ որում, կային բրդե գործվածքներ արտադրող արհեստավորներ (ասվագործ կամ ասրագործ)։*

---

35 Կ. Ղաֆադարյան. *Ալքիմիան պատմական Հայաստանում, Երևան, 1940, էջ 125։*

վուշից կտավ պատրաստողներ (կտավգործ), բամբակի գործվածքներ արտադրողներ, մետաքսե գործվածքներ հյուսողներ (աբրեշմագործ)։

Թելը ձեռքի թեշիկներով կամ իլիկներով մանելու հետ միասին լայնորեն օգտագործվում էր ճախարակը կամ ջահրան։



Ապակե սափաչիչ, Դվին

Արտադրվում էին կոպիտ, միջին որակի, նուրբ, անզարդ և ծաղկազարդ, մետաքսաթել կերպասներ, շղարշներ, ոսկեթել դիպակներ և այլն։ Գրիգոր Մագիստրոսը, խոսելով ջուլհակության մասին, ասում է, որ կար երկու տեսակի ոստայնագործություն, ոմանք պաստառ են գործում, խոշոր, անհեթեթ, նոսր, որը անհարթությամբ կեմից գործածի (խսիրի) տեսք ունի՝ կարկատված և այլանդակված է մատերի մանվածքով։ Բայց թող սրա նման պարսավելի չհամարեն ճախարակի նրբաքաշ թելերից խիտ ու քանոնի հարթություն ունեցող պորփյուրիկոն ծիրանի գործվածքներ հյուսելու արհեստը[36]։

36 Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 204։

*Մետաքսաթելից գործված և որդան կարմիրով ներկված հայկական կերպասները Արաբական խալիֆայության երկրներում հայտնի էին «կրմզ» և «մարիզի», իսկ Բյուզանդական կայսրության շուկաներում՝ «պորփյուրիկոն» անուններով։ Ֆեոդալական վերնախավի պալատներում և դղյակներում, հարուստ վանքերում և եկեղեցիներում գործածական էին ոսկեթել, ոսկեթեզան, ոսկեճամուկ, ոսկեհուռ, ոսկեկար, ոսկենկար և արծաթաթել անվանված դիպակները, որոնք անուն էին հանել նաև միջազգային շուկաներում։ Դիպակներին և կերպասներին հատկացվում էր առաջին տեղը այն նվերների թվում, որ հայ թագավորները և իշխանները տալիս էին օտար արքաներին, իշխանավորներին, ինչպես և հայ եկեղեցուն[37]։*



Գույնզգույն գործվածք՝ դիպակ 9—10-րդ դդ.

*Միջնադարյան Հայաստանում արտադրված գործվածքների նմուշներ՝ նուրբ վուշից կամ մետաքսաթելից, ոսկեթելերով ձեռագործած պատկերներով*

---

[37] Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 250, 265։*

*շղարշի և դիպակի նմուշներ մեզ հասել են հին ձեռագրերի հետ որպես կազմաստառ, հայտնաբերվել են նաև Անիի պեղումների ժամանակ*[38]։

*Ջուլհակությունը կամ անկվածագործությունը զարգացած էր Հայաստանի բոլոր քաղաքներում, սակայն նրա խոշոր կենտրոններն էին Դվինը, Անին, Արծնը, Կարինը, Կարսը, Վանը, Խլաթը և Նփրկերտը։*

*Քաղաքներում զարգացած էր գործվածքներից տարբեր տեսակի զգեստներ կարելու արհեստը՝ դերձակությունը։ Աղբյուրներում նշվում է, որ Հայաստանից առևտրական քարավանները տանում էին նաև պատրաստի հագուստեղեն*[39]։

**Գորգագործությունը** *նույնպես սերտորեն կապված էր ակնվածագործության հետ։ Դատելով աղբյուրներից, այն միջնադարյան Հայաստանի զարգացած արհեստներից մեկն էր։ Գորգագործությունը առավելապես տնայնագործական, կարելի է ասել, տնային արհեստ էր, որով զբաղվում էին տվյալ ընտանիքի անդամները, մանավանդ դեռատի աղջիկները։*

*Արաբական աղբյուրները վկայում են, որ քաղաքներում ևս զբաղվում էին գորգագործությամբ, օրինակ, Դվինում, Վանում, մանավանդ Կարնո քաղաքում, որը համարվել է գորգագործության կենտրոն*[40]։ *Վկայություն է պահպանվել, որ 911 թ. Ատրպատականի ամիրա Աբուսաջը Մուքտադիր խալիֆային Հայաստանից ուղարկել է 400 ձի, 30 հազար դինար և յոթ հայկական գորգ, որոնցից մեկը 60 կանգուն երկարություն և նույնքան էլ լայնություն ուներ*[41], *այլ խոսքով, գորգի մակերեսը հավասար էր մոտ 960 քառ. մետրի*[42]։

*Բնակչության կենցաղում ավելի լայն գործածություն ունեին անխավ կապերտները, որոնք գործվում էին գույնզգույն շերտերով և եզրազարդերով, ինչպես և թաղիքները։ Թաղիքագործությունը կամ կաճագործությունը (կաճ-քեչա) ինքնուրույն արհեստ էր։ Տարբեր գույնի բրդի օգտագործումով արվում էին թաղիքի զարդերը, մի սովորություն, որը պահպանվել է մինչև XX դարը։ Քաղաքի և գյուղի աղքատ բնակչությունը միջոցներ չուներ օգտագործելու ոչ միայն գորգ ու կապերտ, այլև թաղիք, ուստի բավականանում էին ճիլ խոտերից գործած խսիրներով կամ փսիաթներով։*

*Մյուս արհեստների հետ զարգացավ նաև* **ներկարարությունը**: *Հայաստանի ներկերը հայտնի էին դեռևս հին աշխարհին։ Ներկեր պատրաստվում էին հանքային նյութերից, բույսերից և միջատներից։ Մեծ հռչակ էր վայելում հատկապես որդան կարմիրը*[43], *որով ներկված բրդե և մետաքսե գործվածքները գերազանցում էին մյուս բոլոր գործվածքներից։*

---

38 *Տե՛ս И. А. Орбели,* Каталог Анийского музея древностей, стр. 32—38.

39 *Տե՛ս* СМОМПК;...», вып. XXIX, стр. 19. *Տե՛ս նաև В. В. Бартольд,* Худуд ал-Алем, Рукопись Туманского, стр. 32б—33а.

40 *Տե՛ս Jacut,* IV, p. 19, 895, *տե՛ս նաև* СМОМПК..., вып. XXIX, стр. 19.

41 *Տե՛ս Н. Я. Марр,* Ани, стр. 237—238.

42 *Միջնադարյան Հայաստանի գորգագործության վերաբերյալ տե՛ս* **Վ. Ս. Թեմուրճյան,** *Գորգագործությունը Հայաստանում, էջ 26—47,* **Բ. Ն. Առաքելյան,** *Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. 1, էջ 290—294։*

43 *Որդան կարմիր ներկը պատրաստում էին Արարատյան դաշտում տարածված կարմիր որդերից։*

*X դարից սկսած ներկարարները գտան գործվածքները ներկելու մի շատ կարևոր եղանակ՝ գործվածքների դրոշմազարդումը (դաջելը)։ Փայտի վրա դրոշմվելիքը փորագրելով և տարբեր գույնի ներկեր զուգորդելով, կարելի էր ստանալ ուզած զարգաձևերը, այն էլ գույների հարուստ համադրությամբ։ Դրոշմազարդման եղանակի հայտնագործումը և կիրառությունը կապված էր գործվածքների համեմատաբար մասսայական արտադրության հետ, այլ խոսքով՝ դա հետևանք էր ապրանքային արտադրության զարգացման[44], ուստի պատահական չէ, որ դրոշմազարդումը ավելի լայն կիրառություն գտավ հետագա դարերում։*

Կաշեգործությունը *նույնպես հին արհեստ էր։ IX—X դարերում ճյուղավորվելով բաժանվում է մի քանի ինքնուրույն արհեստների, որոնցից էին կաշվի նախնական մշակումը, կոշկակարությունը, թամբագործությունը, մագաղաթ, թոկեր ու լարեր պատրաստելը և այլն։*




Կաշվե զգեստի զարդ, Անի

*Մշակված կաշվից պատրաստում էին ամեն տեսակի կոշիկներ՝ տարբեր խավերի պահանջի համեմատ, սկսած հասարակ մուճակներից մինչև իշխան-*

---

44 *Տե՛ս* Բ. Ն. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. 1, էջ 287—288, հատ. 2, էջ 13—14։*

*ների և արքաների ճոխավոր զարդարում և գունավոր կոշիկները։ Անիի վիմագիր արձանագրություններից երևում է, որ կոշկակարները քաղաքում ունեին իրենց արհեստավորական շարքը, որը կոչվում էր «Կօշկակարոց»[45]։*

*Անիում իրենց առանձին շարքն ունեին նաև թամբագործները։ Ձիու թամբ պատրաստող վարպետները կոչվում էին սառած, իսկ նրանց շարքը Սառած փողոց[46]։ Սառածները հիմնականում սպասարկում էին հեծելազորի, իշխանական տների և այլոց պահանջը։ Թամբերը հաճախ զարդարվում էին մետաղե օղերով ու կոճակներով, սադափով և այլ զարդերով։*

*Քաղաքներում եղել է նաև կաշեգործական մեկ այլ արհեստ, որը կոչվում էր լկամարարություն[47]։ Դա ձիու սանձեր պատրաստելու արհեստն էր։ Կարելի է ենթադրել, որ լկամարարները պատրաստում էին նաև ձիասարքի համար անհրաժեշտ փոկեր։*

*Կաշեգործությանը հարակից արհեստ էր լարարարությունը՝ անասունների աղիքներից լար պատրաստելը։ Լարարի արտադրանքներն օգտագործվում էին ռազմական աղեղների, գզրարների աղեղների, ինչպես և երաժշտական գործիքների համար։ «Լարարար» հիշատակված է Անիի արձանագրություններից մեկում[48]։*

**Մորթեգործություն** *մայր արհեստը նույնպես ճյուղավորվել էր։ Մորթեգործ էր կոչվում միայն մորթին մշակողը, որը անմաքուր և ծանր աշխատանք էր կատարում։*

*Նրբամազ կենդանիների պատրաստի մորթուց մուշտակ կարողները այլ արհեստավորներ էին և կոչվում էին մուշտակագործ կամ մուշտակարար։*

*Ոչխարի մորթին ամենից ավելի օգտագործվում էր գդակ կարելու համար։ Գդակակարները առանձին արհեստավորներ էին, որոնք Անիում ունեին իրենց շարքը կամ փողոցը, որը կոչվում էր Գդակկարոց[49]։ Իհարկե, գդակները պատրաստում էին նաև այլ նյութերից, սակայն ամենից ավելի՝ մորթիներից, այս դեպքում արհեստավորը կոչվում էր ճոն, որը վկայված է Անիի մերձակայքի վիմագիր արձանագրությունների մեջ[50]։*

**Գրքի և գրչության հետ կապված արհեստներ:** *Հայ ժողովրդի մշակութային դարավոր ժառանգության մեջ գիրքն ու գրչությունը առաջնակարգ տեղ են գրավել։*

*Հին ժամանակներից ի վեր հայ միտքը ոչ միայն հաղորդակից է եղել համաշխարհային հասարակական մտքի և գիտության նվաճումներին, այլև ինքն էլ հարստացրել է նրանց գանձարանը։ IX—XI դարերում, երբ երկիրն ապրում էր տնտեսական և մշակութային աչքի ընկնող վերելք, Հայաստանում գրվել և արտագրվել են մեծ թվով գրքեր։ Բավական է ասել, որ միջին դարերից պահպանվել և մեզ են հասել 25 հազար ձեռագրեր։*

---

45 *Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 95։*

46 *Տե՛ս նույն տեղում, էջ 78։*

47 *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 695, էջ 219։*

48 *Տե՛ս* Ալիշան, *Շիրակ, էջ 53։*

49 *Տե՛ս նույն տեղում, էջ 63։*

50 *Տե՛ս նույն տեղում, էջ 123։*

Գիրք պատրաստելը հնում դժվարին գործ էր, որի հետ կապված էին մի շարք արհեստներ։ Ամենից առաջ պետք էր արտադրել գրչության համար անհրաժեշտ նյութեր, իսկ դրանց թվում առավել կարևորը մագաղաթի և թղթի արտադրությունն էր։ Դատելով մեզ հասած ձեռագրերից, միջնադարյան Հայաստանում պատրաստում էին տարբեր տեսակի մագաղաթներ՝ հաճախ շատ բարձրորակ՝ «մագաղաթ շուշանափայլ նուրբ և ազնիւ»[51]։

Մատենադարանում պահվող միջնադարյան ձեռագրերի թվում կան շափազանց փոքր և հսկայական մեծության գրքեր։

Երզնկայում պատրաստված մի մեծ ձեռագրի վրա ծախսվել է ավելի քան 600 հորթի կամ ոչխարի կաշի և ամեն մի կաշուց ստացվել է մի թերթ։



Ձեռագրի էջ երկաթագիր տառերով

Գրքի և գրչության զարգացումը մագաղաթից բացի պահանջում էր գտնել մի նոր նյութ, որի վրա կարելի լիներ գրել ու նրանից գրքեր պատրաստել։

---

51 Միջնադարյան մի ձեռագրում ասված է, թե մագաղաթ պատրաստելու համար օգտագործում էին վայրի կամ ընտանի ուլի, վայրի ոչխարի, ձիան քուռակի, նապաստակի, հորթի և եղջերուի մորթի (Մատենադարան, ձեռագիր № 1849, էջ 156բ)։

Թուղթ պատրաստելու արհեստը, որը վաղուց հայտնի էր չինացիներին, դուրս գալով չինական պարիսպներից, VI—VII դարերում անցավ Կորեա, Հնդկաստան, Միջին Ասիա, խալիֆայության երկրներ, հասավ Կոստանդնուպոլիս, իսկ XIII դարում՝ Եվրոպա և Ռուսաստան։

Հայաստանում թուղթ պատրաստելը հավանաբար սկսվել է X դարի վերջերից ոչ ուշ։ Թղթի վրա գրված հայերեն ամենահին ձեռագիրը պատկանում է 981 թ.։

Գրքի և գրչության համար անհրաժեշտ էին զանազան ներկեր և թանաքներ։ Դրանց արտադրության բնագավառում միջնադարյան Հայաստանի վարպետները հասել էին հիացմունքի արժանի արդյունքների։ Այսօր էլ, դիտելով Մատենադարանի ձեռագրերը, մարդ զարմանում է ներդաշնակ գույների ու երանգների բազմազանությամբ, հարստությամբ ու թարմությամբ։ Միջնադարյան ձեռագրերում պահպանվել են մեծ թվով «կերպ»-եր՝ ներկեր պատրաստելու վերաբերյալ[52]։ Պարզվում է, որ այդ նպատակով օգտագործվել են բուսական, հանքային և կենդանական տասնյակ նյութեր։ Ըստ որում, տարբեր գույներ իրար խառնելու եղանակով ստանում էին բազմազան գույներ և երանգներ։ Որպեսզի թանաքները և մանրանկարների գույները չխամրեն ու չխունանան, օգտագործվում էին գույներին կայունություն և փայլ հաղորդող նյութեր։

Գրչության բուն արհեստը, այսինքն՝ գրքեր ընդօրինակելը և նկարազարդելը զարգացած էր քաղաքներում և վանքերում։ Հայաստանի բոլոր խոշոր վանքերն ունեցել են իրենց գրչության արհեստանոցները և դրատուն-պահոցները։

Ձեռագրեր արտագրելը մեծ շնորհք, ուշադրություն և համբերություն պահանջող ծանր գործ էր։ Զուր չէ, որ 1046 թ. արտագրված մի ձեռագրի գրիչ, ավարտելով գրքի արտագրությունը, հիշատակարանում գրել է. «զի որպէս նաւավարին յափն ծովուն հասանելն խնդութիւն է, նոյնպէս և գրչի՝ յետի գիծս»[53]։

Գրքի և գրչության գործով զբաղվող արհեստավորները մեծագույն նվիրումով արտագրել, նկարազարդել և կազմել են հազարավոր գրքեր, մեզ հասցնելով հինավուրց մի ժողովրդի դարավոր գրական ժառանգության անգնահատելի գանձերը։

**Այլ արհեստներ:** *Արհեստագործության վերը քննարկված հիմնական ճյուղերի կողքին կային և այլ ճյուղեր, որոնք նույնպես զգալի դեր էին խաղում բնակչության կյանքում և կենցաղում։ Դրանցից մեկն էր ոսկրի մշակումը։*

Անիի, Դվինի, Գառնիի պեղումների ժամանակ գտնվել են ոսկրե զանազան իրեր։ Ոսկորից և եղջյուրից սանր պատրաստելը դիտվել է իբրև առանձին արհեստ, որով զբաղվողը կոչվել է «սանրարար»։

Միջնադարյան Հայաստանում գործածական էին զանազան երաժշտական գործիքներ՝ փողային, լարային և հարվածային (թմբուկներ)։ Նկատի ունենա-

---

52 Տե՛ս Ա. Հարությունյան, Ներկերի և թանաքների գործածությունը հին հայկական ձեռագրերում, Երևան, 1941։

53 Տե՛ս Գ. Հովսեփյան, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 255։

լով, որ երաժշտական գործիքները պատրաստվում էին զանազան նյութերից և տարբեր եղանակով, պետք է ենթադրել, որ դրանք արտադրող վարպետներն էլ տարբեր արհեստավորներ էին։

Դերձանքի առարկաներից շատ գործածական էր ակնեղենը։ Ակնագործները թանկագին և կիսաթանկագին քարերից պատրաստում էին ամեն տեսակի զարդեր, որոնք ագուցվում էին թագերի, խույրերի, գահույքների, զենքերի, ազնիվ մետաղներից պատրաստված անոթների, տուփերի, եկեղեցական սպասքի, խաչերի, գրքերի մետաղե կազմերի և բազմազան այլ իրերի ու առարկաների վրա։ Նման քարերից էին պատրաստվում նաև իշխանավորների մատանի-կնիքները։ Միջնադարյան ակնագործները գիտեին նաև արհեստական մարգարիտ պատրաստելու գաղտնիքը։

Նշանակալից զարգացման էր հասել նաև դեղագործությունը։ Դեղերը պատրաստում էին գերազանցապես ծաղիկներից, սերմերից, տերևներից, ցողուններից, արմատներից, նաև հանքային նյութերից, որոնցից հայկավն ու հայքարը հայտնի էին Մերձավոր Արևելքի և Միջերկրական ծովի ավազանի երկրներում։ Շնորհիվ դարերով կուտակված փորձի, բժիշկները, դեղագործները պատրաստում էին ներքին և արտաքին գործածության ամեն տեսակի դեղեր։

Հայկական և արաբական մատենագրական աղբյուրները որոշակի ցույց են տալիս, որ դեղանյութերը կազմում էին միջազգային առևտրի առարկա, նրանց տարածման շառավիղը շատ մեծ էր և հասնում էր մինչև Չինաստան, Հնդկաստան, Հյուսիսային Աֆրիկա, Եվրոպա և Ռուսիա[54]։

Քաղաքային կյանքի զարգացմանը համընթաց, ավելի ու ավելի սովորական էր դառնում անուշահոտ յուղերի և նման նյութերի արտադրությունը։

Միջնադարյան արհեստավորները պատրաստում էին նաև օճառներ՝ թաց և չոր, սովորական և «պալատական»[55]։ Նրանք կարողանում էին ստանալ տարբեր տեսակի շաքարներ՝ շաքարեղեգնից, որը Հայաստանում թեև սակավ, բայց աճում էր։

Շատ սովորական էր մոմի արտադրությունը։

Հայաստանի միջնադարյան արհեստավորները կրակ ստանալու համար պատրաստում էին հրահան, աբեթ և «լուցկի»։

Միջին դարերում կային և մի շարք այլ արհեստավորներ՝ վարսավիրներ, հացթուխներ, կողով, զամբյուղ գործողներ, շրջիկ «ամանկարներ» (ջարդված կավե ամանները գամով կարողներ), ճախարակով դանակ և այլ գործիք սրողներ, որոնց արհեստները հասել են մինչև մեր օրերը։

Մի շարք զբաղմունքներ էլ, որոնք առաջացել էին քաղաքներում, օրինակ, մսագործություն, խոհարարություն (խապազութիւն), բաղնեպանություն, պարտիզպանություն, փայտակոտրություն (վառելափայտ կոտրելը), գուսանություն, խեղկատակություն և այլն, միջին դարերում համարվում էին արհեստ։

---

[54] A. Kreme', Kulturgeschichte des Orients,. Bd, II, S. 316—317։

[55] Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Ալքիմիան պատմական Հայաստանում, էջ 155։

Արհեստ էր անվանվում անգամ ալքիմիան, որը ձեռագրերում կոչված է «քիմիականություն»։ Միջնադարյան Արևելքում խիստ այն սերտորեն կապված էր արհեստագործության հետ։

Հայերեն ալքիմիական ձեռագրեր մեզ հասել են ուշ միջնադարից, սակայն նրանցից մի քանիսը կրում են իրենց ավելի հին նախօրինակների կնիքը։ Ալքիմիան, որը համարվում էր «Ծածուկ արհեստ» համեմատաբար ուշ մտավ գրականության մեջ։ «Ծածուկ արհեստը» Հայաստանում առաջին անգամ հիշատակում են XII դարի հեղինակները։

Ալքիմիան ծնվեց արհեստագործության գրկում, փորձելով թափանցել օգտագործվող նյութերի ֆիզիկա-քիմիական վիճակի փոփոխման գաղտնիքները, մշակել տեխնոլոգիական նոր մեթոդներ և, ընդհանրացնելով արհեստագործության դարավոր փորձը, հասնել նրա տեսական ճանաչմանը։ Ալքիմիան Արևելքում, նաև Հայաստանում, երբեք չկտրեց իր կապը իրեն ծնող արհեստներից։

Արհեստագործությունը միջին դարերում աշխատանքի բազմազան բնագավառներ ընդգրկող և լայն ճյուղավորում ունեցող մի զբաղմունք էր, արտադրության մի ամբողջ բնագավառ։ Երկրագործությունից անջատված և քաղաքներում կենտրոնացած արհեստագործությունը տարբերվում էր տնայնագործական արհեստից. այն, ըստ էության, միջնադարյան «արդյունաբերություն» էր իր բազմաթիվ ճյուղերով և կրում էր մանր ապրանքային արտադրության բնույթ։

Արհեստների ուսումնասիրությունը մեր առջև բացում է միջնադարյան Հայաստանի, մանավանդ նրա քաղաքների հասարակական, տնտեսական և մշակութային կյանքի զարգացման, ինչպես և բնակչության արտադրական առօրյայի ու կենցաղի բազմակողմանի պատկերը։

Արհեստի որոշ ճյուղեր, ըստ էության, թևակոխել էին արվեստի բնագավառը՝ տալով մինչև օրս էլ հիացմունքի և երախտագիտության արժանի շատ արժեքներ ու գլուխգործոցներ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ԱՌԵՎՏՈՒՐԸ

*Ֆեոդալական հասարակության արտադրողական ուժերի զարգացումը և դրա հետևանքով տեղի ունեցած աշխատանքի հասարակական բաժանումը, որը դրսևորվեց երկրագործությունից արհեստների անջատումով, խոշոր նշանակություն ունեցան ոչ միայն արհեստների, այլև առևտրի զարգացման համար։ Արհեստները և առևտուրը կենտրոնացան գերազանցապես քաղաքներում, որով և ձևավորվող միջնադարյան քաղաքը անջատվեց գյուղից։ Դրանով իսկ ապրանքափոխանակություն սկսվեց գյուղի և քաղաքի միջև։ Գյուղի երկրագործական և անասնապահական արտադրանքի մի մասը անհրաժեշտ էր քաղաքի բնակչությանը՝ իբրև սննդամթերք և հումք՝ արհեստային արտադրության համար։ Որքան աճում և բազմանում էր քաղաքի բնակչությունը և զարգանում էին արհեստները, այնքան մեծանում էր պահանջարկը գյուղական արտադրանքի նկատմամբ։ Քաղաքային արտադրանքի մի շարք տեսակներն էլ իրենց հերթին սպասարկում էին գյուղական բնակչության անմիջական սպառողական և տնտեսական պահանջները։*

*Հետզհետե առևտրի մեջ էր ներգրավվում նաև գյուղացիներից՝ բնամթերքով գանձվող հավելյալ արդյունքի, ինչպես նաև ֆեոդալների ու վանքերի տնտեսությունից ստացվող եկամտի մի մասը։ Ուշագրավ է, որ վանքերը դեռևս X դարի սկզբներին կուղպակներ ունեին քաղաքներում։ Հիշատակվում է, օրինակ, որ Մաքենացոց վանքը 901 թ. նվեր ստացավ հինգ կուղպակ, նոր առաջացող Անի քաղաքում*[1]։

*Վերջապես, հարկ է նշել առևտրի զարգացման ևս մի կարևոր նախադրյալի առկայությունը IX—XI դարերի Հայաստանում։ Դա Մերձավոր Արևելքում կատարվող միջազգային տարանցիկ առևտրի մեջ Հայաստանի խաղացած դերն էր։ Ակադ. Հ. Մանանդյանը իրավացի նշել է, որ մրցակից ու մշտապես իրար հետ բախվող արաբական և բյուզանդական երկրների միջև ընկած Բագրատունյաց Հայաստանը չեզոք երկիր էր և միջազգային տարանցիկ առևտրի իդեալական վայր*[2]։ *Այդ երկու տերությունների ենթակա, ինչպես և*

---

1 *Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 5։*

2 *Տե՛ս* Հ. Մանանդյան, *Հայաստանի քաղաքները X—XI դարերում, էջ 9—10։ Տե՛ս նաև* *Манандян Я. А.,* О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Ереван, 1954, стр. 203.

այլ երկրներից առևտրական քարավանները այցելում էին Հայաստան, որը դարձել էր միջազգային առևտրի կարևոր կենտրոններից մեկը, թե որպես ներմուծող և թե որպես արտահանող երկիր։

## 1. ՆԵՐՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Երկրի ներսում կատարվող առևտուրը խարսխված էր գյուղի և քաղաքի միջև կատարվող ապրանքափոխանակության ու քաղաքի արհեստավորության մանր ապրանքային արտադրության վրա։ Քաղաքների և արհեստների աճին ու ընդարձակմանը համընթաց մեծանում էր նաև պահանջարկը՝ ապրանքային արտադրության նկատմամբ։

Ճիշտ է, գյուղատնտեսական արտադրանքի մի փոքր մասն էր շուկա հանվում, իսկ գյուղերի տնայնագործ արհեստավորները շարունակում էին սպասարկել գյուղական բնակչության՝ արհեստային արտադրանքի նկատմամբ ունեցած պահանջարկի մեծ մասը, բայց և այնպես գյուղը հետզհետե կապվում էր քաղաքի հետ՝ վաճառքի հանելով ավելի շատ մթերքներ, հումք, ինչպես և ձեռք բերելով քաղաքային արհեստավորների ավելի որակյալ, երբեմն էլ ավելի մատչելի արտադրանքը, հատկապես զանազան գործիքներ, իրեր և առարկաներ, որոնք գյուղերում չէին արտադրվում։ Նույնը կարելի է ասել ֆեոդալական բերդ-դղյակների և վանքերի մասին։ Այստեղ ես կային ֆեոդալների և վանքերի համար աշխատող արհեստավորներ, սակայն աշխարհիկ և հոգևոր ֆեոդալները, մասնակցելով քաղաքներում կատարվող առևտրին, ոչ միայն իրացնում էին իրենց մթերքների և հումքի մի մասը, այլև ձեռք էին բերում քաղաքի արհեստային արտադրանքի շատ տեսակներ։ Բնորոշ է, որ Արագածի բարձրադիր լանջին տեղադրված Անբերդի պեղումների ժամանակ հայտնաբերվել են Անիում, Դվինում և այլ քաղաքներում արտադրված մետաղե բարձրարվեստ իրեր, ջնարակած խեցեղենի, հախճապակու, ապակու շատ նմուշներ, դրանց թվում նաև Չինաստանից և Իրանից ներմուծված խեցեղեն։

Քաղաքներում երկրագործությամբ և անասնապահությամբ զբաղվողներ կային, սակայն, խոշոր քաղաքների բնակչության մեծ մասը շուկայից էր ձեռք բերում առաջին անհրաժեշտության առարկաները՝ սննդամթերքը, հագուստը, տնային գործածության իրերը, կարասին, ինչպես և զանազան գործիքներ, տնտեսական գործածության սարքեր և այլ առարկաներ։ Այսպիսով քաղաքների արհեստային արտադրության նկատմամբ իրենց պահանջարկն ունեին ֆեոդալական հասարակության բոլոր դասերն ու խավերը, և այդ անընդհատ աճող պահանջարկն էլ կազմում էր արհեստների և առևտրի զարգացման տնտեսական պայմանը։

Մեծ քաղաքներում կային մի քանի շուկաներ, որտեղ վաճառվում էին տարբեր ապրանքներ՝ անասուններ, հացահատիկ, ընդեղեն, մրգեր, փայտ, արհեստային ամեն տեսակի արտադրանք և այլն։

Անի քաղաքի արհեստավորական շարքերը միաժամանակ շուկաներ էին։ Բացի այդ, բամբակի և բամբակեղեն գործվածքների համար կար հատուկ շուկա[3]։

---

3 Տե՛ս *Л. Т. Гюзалян,* Персидская надпись Кей Султана Шеддади в Ани, стр. 633.

Բացի շուկաներից, քաղաքներում կային նաև առևտրական տներ, որտեղ սովորաբար մեծածախ առևտուր էր կատարվում։ «Քաղաք,— ասված է մի գրվածքում,— տուրևառիկ վաճառացն տեղի սահմանեցաւ, որոշեալ ի նմա տունս վաճառաց և ընդարձակ վայրս, զի ամենայն գաւառականքն յամենայն կողմանց անդանօր ժողովելով, իւրաքանչիւր ոք գտցէ զիւր վճարիցէ»[4]։



Կարաս, Գառնի

Ուշագրավ է, որ այստեղ նշվում է ոչ միայն շուկայի և առևտրական տների առկայությունը քաղաքներում, այլև քաղաքի և գավառի կապը։

Գյուղի մթերքները քաղաք ձգող երկու պատճառ կար, նախ՝ գյուղացին իրացնելով իր մթերքները, ձեռք էր բերում ոչ միայն իրեն անհրաժեշտ ար-

4 Սարգիս Շնորհալի, *Մեկնութիւն եօթանց թղթոց կաթողիկեայց*, Կ. Պոլիս, 1826, էջ 145։

արտադրանք, այլև դրամ, որպեսզի կարողանար վճարել հետզհետե դրամով պահանջվող հարկերը։ Երկրորդ՝ քաղաքին պետք էին անմիջական սպառման մըթերքներ և հումք։ Հայաստանի, Աղվանքի և Գյուրջիստանի (Վրաստանի) քաղաքներում վաճառվող գյուղատնտեսական մթերքները, մրգերը, անասունները, դրանց առատությունն ու բարձր որակը բազմիցս հիշատակված են հայկական և արաբական աղբյուրներում[5]։

Անիի X—XI-րդ դարերի արձանագրությունների մեջ հիշատակված է, որ մթերքները քաղաք էին բերվում սայլերով, գրաստներով կամ շալակով[6]։

Ինչպես նշվեց, շուկայի դեր կատարում էին նաև արհեստավորական շարքերը, քանի որ արհեստավորը սովորաբար իր արտադրանքը վաճառում էր իր իսկ կուղպակ-արհեստանոցում։

Արհեստավորական շարք-շուկաների մասին տեղեկություններ, թեև սակավ, պահպանվել են Անիի շենքերի վրա փորագրված արձանագրություններում, որտեղ հիշատակված են ութ այդպիսի շարքեր[7]։

Արիստակես Լաստիվերտցին հիշատակում է Արծն մեծ քաղաքի վաճառափողոցները[8], իսկ Ներսես Շնորհալին, իբրև կաթողիկոս, պատվիրում է բոլոր այն քաղաքացիներին, ովքեր վաճառափողոցներում նստած գնում ու վաճառում են, և արհեստավորներին, որպեսզի նրանք չխաբեն, չխարդախեն[9]։

Առևտուրը շահավետ էր, գայթակղիչ և հաճախ իրեն էր ձգում նաև հոգևորականներին։ Բացի քաղաքի շուկաներում և արհեստավորական շարք-փողոցներում մշտապես կատարվող առք ու վաճառքից, կային նաև առևտրի այլ ձևեր՝ կիրակնօրյա շուկաներ, տոնավաճառներ, երբ անհամեմատ ավելի մեծ քանակությամբ գյուղատնտեսական և արհեստային արտադրանք էր շուկա հանվում։

Տոնավաճառների համար սահմանված էր լինում նաև հատուկ վայր և որոշակի ժամանակ։ Հայտնի էր Պարտավ քաղաքի տոնավաճառը, որը տեղի էր ունենում քաղաքի դռներից մեկի մոտ փռված մի ընդարձակ շուկայում՝ ամեն կիրակի օր, ուստի կոչվում էր «Կիւրակի»[10]։ Բացի հաճախակի գործող տոնավաճառներից, կազմակերպվում էր նաև տոնավաճառ տարվա մեջ մի անգամ, նախօրոք սահմանված օրերին։

Միջնադարյան մի գրվածքում պատմվում է, որ տոնավաճառի ժամանակը ստույգ հայտնի էր և նրան երկար ժամանակ պատրաստվում էին ամենքը, մանավանդ վաճառականները, «զի և մի տեղոջ կուտեալ ժողովին, և ինչս մեծագինս և զանազանս, զոր և պիտոյ է յաչս մարդկան անդ վաճառեսցին»[11]։

Վանա լճի ափին կազմակերպվում էր տառեխի տոնավաճառ՝ տարվա այն ժամանակամիջոցին, երբ այդ ձուկը ձվնկիթ նետելու համար անցնում էր լճի

---

5 Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. 2, էջ 18—30։
6 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 9, 27։
7 Տե՛ս Ալիշան, Շիրակ, էջ 25, 63, 117, 118—119, 123։
8 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 78։
9 Տե՛ս Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 106—107։
10 Տե՛ս СМОМПК, вып. XXIX, стр. 99, նաև Jacut, I, p. 558.
11 Մատենադարան, ձեռագիր № 4239, էջ 144ա-բ։

մեջ թափվող գետերը և դյուրությամբ կարելի էր որսալ մեծ քանակությամբ[12]։

Սովորական երևույթ էր նաև խաղող, մրգեր, ձուկ, այլ մթերքներ և արհեստային արտադրանքի որոշ տեսակներ, օրինակ, կավե ամանեղեն՝ սայլերով, գրաստներով և շալակով գյուղից գյուղ շրջելով փոխանակելը կամ վաճառելը, որը կատարվում էր տարվա որոշ շրջանում։ Ավելի տարածված էր շրջիկ մանրածախ առևտուրը։ Քաղաքում՝ թաղից-թաղ կամ գավառում՝ գյուղից-գյուղ շրջող մանրածախ վաճառականը կոչվում էր փերեզակ։

Առևտրի հիմնական վայրը, սակայն, քաղաքն էր, իր շուկաներով և արհեստավորական շարքերով։

«Առևտուրը քաղաքներում կարգավորվում էր ըստ թագավորների հրամանի», կամ թագավորի հրամանի համաձայն իշխաններն էին որոշում առևտրի տեղը։ Նույն եղանակով պետությունն էր սահմանում և կարգավորում չափերն ու կշիռները։

Քաղաքներում առաջացել էր շուկայական պաշտոնեություն, որի գլուխ կանգնած էր շուկայական վերակացուն՝ հարկային և ոստիկանական իրավունքներով օժտված շահապետը (մուհթասիբը)։ Նրան ենթակա էին շուկայական հսկիչ-վերակացուները՝ կափիճները[13]։

Կափիճները հետևում էին շուկայի կարգ ու կանոնին, հաշվի էին առնում ոչ միայն այն ամենը, ինչ վաճառվում էր, այլև քաղաքի բոլոր եկամտաբեր հաստատությունները՝ ջրաղաց, ձիթհան, ներկատուն, վաճառատուն և այլն՝ սրանց հասույթները պարզելու և հարկադրելու համար։

Շուկայում վաճառվող ապրանքների գները նույնպես սահմանվում էին իշխանությունների կողմից՝ տարվա բարեբերության, վաճառվող իրերի առատության կամ նվազության համեմատ։ Գները կարող էին փոփոխվել իշխանավորների կողմից, բայց գավառապետների և ժողովրդապետների[14], այսինքն՝ քաղաքային վարչության, թաղապետ-տանուտերերի, արհեստավորական եղբայրությունների (համքարությունների) ավագանու («ատեան ծերոց») համաձայնությամբ։

Շուկաների վրա սահմանված հսկողությունը, սակայն, չէր կարող վերացնել միջնադարյան քաղաքի համար բնորոշ խաբեությունն ու խարդախությունը։ Դիմելով առևտրականներին և արհեստավորներին, Ներսես Շնորհալին այսպես է խրատում նրանց. «Թող ձեզնից ոչ ոք խաբեությամբ ու նենգությամբ չվաճառի իր ունեցվածքը անմեղ գնորդներին, մանավանդ ստախոսությամբ և սուտ երդումով՝ ռամիկներին և չիմացողներին խաբելով... Թող ձեզ մոտ մեծ և փոքր կշռաքար կամ կրկնակի չափ չլինի.... այլ արդարությամբ և ճշմարտությամբ վաճառեցեք ձեր ձեռքի գործը և վաճառելիք նյութը»[15]։

Գյուղացիների, արհեստավորների և աշխարհիկ հոգևոր ֆեոդալների կողքին արդեն առաջացել էր քաղաքային բնակչության մի խավ, բաղկացած մանր և խոշոր առևտրականներից՝ «խանութպաններից» և «արգասու վաճառական-

---

12 Տե՛ս «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», էջ 139։

13 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 434—435։

14 Տե՛ս նույն տեղում։

15 Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 107։

ներից», որը պարապում էր միայն առևտրով, իբրև ինքնուրույն և շահավետ զբաղմունքով։ Ուրեմն, արդեն տեղի էր ունենում աշխատանքի երրորդ հասարակական բաժանումը՝ առևտրի անջատումը արտադրությունից։ Առևտրականը դառնում էր միջնորդ՝ արտադրողի և սպառողի միջև, սակայն աշխատանքի այդ բաժանումը շատ չէր խորացել, և դեռևս մանր արտադրողը հիմնականում ինքն էր վաճառում իր արտադրանքը։

Առևտուրը Հայաստանում IX—XI դարերում խիստ սպառողական բնույթ էր կրում, նրա հիմնական նյութը կազմում էին գյուղատնտեսական մթերքները, լայն սպառման առարկաները և սրանց արտադրության համար անհրաժեշտ հումքը, իսկ արտադրության գործիքների, մանավանդ հիմնական միջոցների՝ հողի, այգիների, ջրաղացների, ձիթհանների, վաճառքի դեպքեր թեև հանդիպում էին, սակայն դեռևս շատ սահմանափակ։ Անշարժ ունեցվածք վաճառողները և գնորդները դեռևս ֆեոդալներն էին։ Վանքերը հանդես էին գալիս միայն անշարժ ունեցվածքի գնորդի դերում։ Չնայած ներքին առևտուրը Բագրատունյաց ժամանակաշրջանում դեռևս բարձր զարգացման չէր հասել և լայն ծավալ չէր ընդունել, այդուհանդերձ այն սկսել էր գավառը կապել քաղաքի հետ։ Աղբյուրներում արդեն հանդիպում են վկայություններ, երբ խոշոր քաղաքը շրջապատող գավառը պատկերացվում է քաղաքի հետ միասին։ Այսպիսով ներքին առևտուրը խաղում էր որոշակի դեր ոչ միայն ֆեոդալական քաղաքի, այլև գյուղի տնտեսական, հասարակական և մշակութային զարգացման գործում։

## 2. ԱՐՏԱՔԻՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Հին՝ ստրկատիրական հասարակության կամ անտիկ շրջանի քաղաքների անկմանը հաջորդած վաղ ֆեոդալական դարաշրջանում, երբ հողատիրությունն էր դարձել հասարակության տնտեսական հիմքը և ֆեոդալական բերդը՝ քաղաքական իշխանության կենտրոնը, արհեստներն ու առևտուրը ամենուրեք անկում ապրեցին։ Միջազգային առևտրի համար աննպաստ էին նաև արաբաբյուզանդական անվերջ ընդհարումները։ Սակայն ֆեոդալական հասարակության առաջադիմությունը, արհեստների զարգացումը, ֆեոդալական քաղաքի ձևավորումը լայն նախադրյալներ ստեղծեցին նաև միջազգային առևտրի զարգացման համար։

Հայաստանի արտաքին առևտուրը միջազգային տարանցիկ առևտրի մի կարևոր օղակն էր։ Այդ առևտուրն ընդգրկում էր շատ լայն շրջաններ՝ ամբողջ Մերձավոր Արևելքը, Արաբական խալիֆայության և Բյուզանդական կայսրության երկրները, հասնելով մինչև Չինաստան, Հնդկաստան, Մալայա, Ցեյլոն՝ արևելքում, և մինչև հարավ-արևմտյան Եվրոպայի երկրները՝ արևմուտքում[16]։ Այս առևտրական կապերի շնորհիվ Արևելքի հարևան, նույնիսկ իրարից հեռու ապրող ժողովուրդները փոխադարձաբար հաղորդակից էին դառնում դարերի ընթացքում ձեռք բերած տնտեսական և մշակութային նվաճումներին, մի

[16] Տե՛ս W. *Heyd*, Geschichte des Levantehandels im Mittelalter, Bd. I—II, Stuttgart, 1879, *A. Kremer*, Kulturgecshichte des Orients unter den Chalifen, Bd. I—II, Wien, 1875.

հանգամանք, որը քիչ չէր նպաստում Արևելքի երկրների առաջադիմությանը։

Արևելքում ծավալված միջազգային առևտրի մեջ Հայաստանը խաղում էր շատ նշանակալից դեր։ Դա պայմանավորված էր նախ նրա աշխարհագրական դիրքով, որի շնորհիվ երկրի միջով անցնում էին միջազգային առևտրի առավել կարևոր մայրուղիները։ Երկրորդ՝ խոշոր նշանակություն ուներ նաև այն հանգամանքը, որ Հայաստանը իբրև չեզոք երկիր արաբական և բյուզանդական երկրներից եկող քարավանների այցելության առավել հարմար վայրերից մեկն էր[17]։ Վերջապես՝ Հայաստանը տնտեսապես զարգացած երկիր էր, ուներ խոշոր քաղաքներ և միջազգային առևտրին մասնակցում էր սեփական արտադրանքի շատ տեսակներով։

Հնդկաստանից, Չինաստանից, Միջին Ասիայից Իրանի միջով եկող առևտրական մայրուղիները հանգուցվում էին Թավրիզում, ապա հասնելով Մարանդ, նորից ճյուղավորվում էին, և մի ճյուղը գնում էր դեպի հյուսիս-արևմուտք, անցնելով Նախճավանի, Դվինի, Անիի. Կարսի, Կարնո քաղաքի, Արծնի, Երզնկայի վրայով, մտնում էր Փոքր Ասիա, հասնում Միջերկրական ծովի ափերը՝ Կոստանդնուպոլիս։ Արծնի վրայով անցնող ճյուղն էլ տանում էր դեպի Սև ծովի հարավային ափերը՝ Տրապիզոն։ Հյուսիսային մայրուղին Դվինից և Անիից գալով անցնում էր արևելք՝ Պարտավ, Գանձակ, ապա Դերբենդի վրայով՝ դեպի հյուսիս, իսկ Վրաստանի միջով հասնում էր Սև ծովի հարավ-արևելյան ափերը։ Հարավային մայրուղին նույն Մարանդից անցնում էր դեպի Հեր (Խոյ), Վան, Բերկրի, ապա Վանա լճի հյուսիսային ափերով Արճեշի, Մանազկերտի, Խլաթի, Բաղեշի վրայով ձգվում էր Արզն, Նփրկերտ, այնտեղից էլ դեպի Ամիդ և Միջագետք, Ասորիք (Սիրիա), ինչպես և դեպի Մելիտինե և Փոքր Ասիա։ Մի շարք այլ ճյուղերով այդ ճանապարհները կապվում էին իրար հետ և իրար էին հանգուցում Հայաստանի, Վրաստանի, Աղվանքի, Իրանի, Իրաքի, Ասորիքի և Փոքր Ասիայի քաղաքները[18]։ Հայաստանի միջով անցնող հարավային և հյուսիսային գլխավոր ուղեգծերը միջազգային տարանցիկ առևտրի առավել բանուկ և ապահով ճանապարհներն էին։ IX—XI դարերում ավելի մեծ դեր էր խաղում հյուսիսային մայրուղին, որի վրա գտնվող քաղաքները արհեստային արտադրության և առևտրի ավելի խոշոր կենտրոններ էին։

Բագրատունյաց թագավորությունը Հայաստանում հոգ էր տանում առևտրական ճանապարհների ապահովության ուղղությամբ և ջանում էր նպաստել միջազգային տարանցիկ առևտրին։ Բնորոշ է հետևյալ փաստը. երբ Ատրպատականի էմիր Աֆշինը իր դժգոհությունը հայտնեց Բյուզանդիայի հետ Բագրատունիների կնքած պայմանագրի առթիվ, ապա Սմբատ Ա թագավորը նրան պատասխանեց, թե համաձայնությունը կայսրի հետ նաև ձեր օգտին է, որովհետև ինչ որ խալիֆային և քեզ պետք է, հեշտությամբ կգտնեք կայսրության մեջ։ Բացի դրանից, ձեր վաճառականների առջև ճանապարհ կբացվի կայս-

---

17 Տե՛ս *Я. А. Манандян,* О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времсн, Երևան, 1954։ Տե՛ս նաև Հ. Մանանդյան, *Հայաստանի քաղաքները X—XI դարերում*։

18 Տե՛ս Հ. Մանանդյան, *Հայաստանի գլխավոր ճանապարհները, ըստ Պևտինգերյան քարտեզի*, Երևան, 1936։

րության հետ առևտուր անելու, որի շնորհիվ ձեր գանձարանները կփարթամանան[19]։

Այս պայմանագրից հետո Հայաստանը նաև պաշտոնապես ճանաչվեց իբրև միջազգային առևտրի կենտրոնատեղի։ Սկզբում Դվինն էր այն մեծ հանգույցը, որ առևտրական ճանապարհներով կապված էր բազմաթիվ այլ քաղաքների և երկրների հետ։ Հյուսիսում առևտրի կարևոր հանգուցակետ էր Պարտավ քաղաքը, որի միջոցով Դվինը կապվում էր Դերբենդի հետ։ Հետզհետե Հայաստանի առևտրական կապերն ավելի էին ընդարձակվում, մեծանում էր մյուս քաղաքների դերը։ Հայկական քաղաքների առևտրական կապերը Վրաստանի, Շիրվանի, Իրանի, Հյուսիսային Միջագետքի, Եփրատի աջ ափի, Փոքր Ասիայի, Սև ծովի հարավային և հարավ-արևելյան նավահանգիստների հետ սերտ էին ու անմիջական։

Հայաստանի մասնակցությունը միջազգային առևտրին՝ սեփական արտադրանքով, բազմիցս նշել են արաբ հեղինակները։

Ալ-Իսթախրին բարձր էր գնահատում Դվինում պատրաստվող բրդե գործվածքներն ու զգեստները, գորգերը, «հայկական արտադրության» այլ իրերը[20], որոնք արտահանվում էին։ Նա հիշատակում է նաև Դվինում արտադրվող բողյունը, որը մետաքսե ծաղկավոր ծանր գործվածք էր։

Ալ-Մուկադդասին, հիշատակելով արտադրանքի տեսակները, իր հերթին գովում է Հայաստանից արտահանվող գործվածքները, մանավանդ որդան կարմիրով ներկված մետաքսեղենը, բրդե սփռոցները, որոնք «աչքի են ընկնում բարձր հատկություններով և իրենց նմանը չունեն»[21]։

X դարի վերջին քառորդի մի այլ հեղինակ՝ Իբն-Հաուկալը ավելի ընդարձակ ու դրվատական է խոսել։ Նրա ասելով Դվինում պատրաստում էին աղվամազից և բրդից մանվածքներ՝ գորգերի, բարձերի, բազմոցների, գոտիների և այլ տիպի հայկական արտադրանքների համար՝ ներկած կրմզով (որդան կարմիրով)։ Դվինում,— շարունակում է նա,— պատրաստվում են շատ մետաքսե զգեստներ, որոնց նմանները շատ կան Ռումի երկրում (Բյուզանդիայում), բայց սրանք (հայկականները) ավելի արժեքավոր են։ «Ինչ վերաբերում է այն արտադրանքներին, որոնք կոչվում են «հայկական գործվածքներ»,— ավելացնում է Իբն-Հաուկալը,— ապա դրանք են բուտը (գործվածք գլխանոցի և չալմայի փաթեթի համար), բազմոցները, գորգերը, ծածկոցները, տապատակները (փոքրիկ գորգեր) և բարձերը. առարկաների մեջ չկան սրանց նմանները աշխարհի մի ծայրից մյուս ծայրը և բոլոր ուղղություններում»[22]։

Հայկական գործվածքները լայն տարածում ունեին և վաճառվում էին նաև Բյուզանդական կայսրության շուկաներում։ Ա. Կրեմերը, Վ. Հեյդը, Հ. Մանանդյանը արաբական աղբյուրների հիման վրա նշում են, որ հայկական մետաքսե գործվածքները վաճառվում էին Տրապիզոնում, և որ այս քաղաքի մեծ շուկան

19 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 201։
20 Տե՛ս СМОМПК, вып. XXIX, стр. 19.
21 Նույն տեղում, էջ 15։
22 СМОМПК, вып. XXXVIII, стр. 92

Հայ վաճառականներն իրենց ապրանքներով այցելում էին դեռևս IX դարում[23]։

Հայկական գործվածքները հասնում էին նաև հեռավոր երկրներ։ Ֆաթիմյան խալիֆաների Կահիրեի գանձարանում, իբրև շատ թանկարժեք իր, պահվում էր Մութավաքիլ խալիֆայի (847—861) վրանը, որը պատրաստված էր որդան կարմիրով ներկած ոսկեթել հայկական գործվածքից։

Հայկական բազմոցներն ու ծածկոցները այնպիսի համբավ ունեին, որ նրանց նմանները արտադրում և որդան կարմիրով ներկում էին Եգիպտոսի Ասիութ քաղաքի անկվածագործները[24]։

Միջազգային առևտրի մեջ հայտնի էին նաև հայկական գորգերը և տապաստակ կոչված փոքրիկ գորգ-օթոցները կամ աղոթքի գորգերը, ինչպես անվանում են դրանց արաբ հեղինակները։ Հայկական գորգերը, գործվածքները և պղնձե անոթները հիշատակված են 814 թ. Թրակիայում բուլղարների վերցրած ավարի մեջ[25]։

Հայկական գորգերը արաբական խալիֆայության երկրներն էին հասնում ինչպես առևտրի միջոցով, նույնպես և հարկային ճանապարհով[26]։

Իբն-Ֆադլանը X դարի 20-ական թվականներին, այցելելով Կամայի բուլղարների երկիրը, տեսել է, որ նրանց թագավորի վրանում, ուր կարող էր տեղավորվել հազար մարդ, փռված են եղել հայկական գորգեր[27]։ Վ. Բարտոլդը արաբական և պարսկական աղբյուրների տվյալների հիման վրա նշել է, որ հայկական գորգերը հռչակ էին վայելում ոչ միայն արաբական աշխարհում, այլև Իրանում, որտեղ նրանք զարդարում էին Ղազնևյան սուլթանների, ինչպես և Խորասանի ու Կաշգարի կառավարիչների պալատները[28]։

Հայկական գորգերը արտահանվում էին նաև Բյուզանդական կայսրության երկրները և Եգիպտոս։

Հայաստանը հնագույն ժամանակներից ի վեր արտահանում էր մետաղ և մետաղից պատրաստված իրեր։ Մետաղների հանույթի նկատելի ընդարձակման և մետաղագործական արհեստների ծավալման շնորհիվ մետաղի և մետաղե իրերի արտահանությունը մեծացել էր։ Արաբական հեղինակ Յակուտը, հատկապես նշելով Աղձնիքի գավառի Հայնի քաղաքի մոտ մեծ քանակությամբ հանվող երկաթի բարձր որակը, ավելացնում է, որ այն արտահանվում էր ուրիշ երկրներ[29]։

Հայաստանից արտահանվում էին նաև զանազան հանքանյութեր, օրինակ՝ Վանա լճից ստացվող բորակը, որը արաբական երկրներում հայտնի էր «պուրե արմանի» անունով և լավագույնն էր համարվում։ Արաբերենից հայերեն

---

23 Տե՛ս Я. А. Манандян, О торговле и городах, стр. 160—161.

24 Տե՛ս A. Kremer, Kulturgeschichte des Orients, Bd. I, s. 297.

25 Տե՛ս Theophanes Continuatus, Bonnae, 1838, p. 671.

26 Տե՛ս A. Kremer, նշված աշխ., հատ. 2, էջ 358։ Н. Я. Марр, Ани, ծանոթ. 165, էջ 237—238։

27 Տե՛ս «Путешествие Ибн Фадлана на Волгу», М., 1939, стр. 73.

28 Տե՛ս В. В. Бартольд, Историко-географический обзор Ирана, СПб., 1903, стр. 150.

29 Տե՛ս Jacut, I, p. 456։

*թարգմանված մի ալքիմիական ձեռագրում բորակի մասին ասված է՝ «ինքն ի Հայոց գայ»[30]։*

*Ուրմիա լճի ափին հանվող թութիան (ցինկի թթվուկ) և մկնդեղը, Իբն-Հաուկալի ասելով, արտահանվում էին Իրաք, Ասորիք, Եգիպտոս և մեծ եկամուտ բերում վաճառականներին[31]։ Նույն լճի հյուսիս-արևմտյան ափին հանվում էր նաև պաղլեղ, որը նույնպես առևտրի առարկա էր։*

*Միջնադարյան Հայաստանում արդյունահանվող աղը ոչ միայն բավարարում էր երկրի պահանջը, այլև վաճառվում էր հարևան երկրներում։ Մեծ քանակությամբ աղ ստացվում էր նաև Վանա լճից։*

*Իբն-Հաուկալի վկայությամբ այդ աղը տանում էին Ջազիրա (Միջագետք) և Իրաք՝ հացթուխներին վաճառելու համար[32]։ Բաղեշի կողմի սարերում բնակիչները կտրատելով սոճու նմանվող ինչ-որ ծառեր և դրանց մի ծայրը կրակի մեջ գնելով ստանում էին զգալի քանակությամբ խեժ, որը կժերով տանում էին ամեն կողմ՝ ծախելու[33]։*

*Հայաստանի ներկերն ու ներկանյութերը՝ որդան կարմիրը, տորոնը (որ տալիս էր կարմիր ներկ), կարմիր ներկաքարը (սուրիկ) և այլ նյութեր, վաճառքի սովորական առարկա էին միջազգային շուկաներում։*

*Վանա լճի տառեխ ձուկը վաճառվում էր շատ երկրներում։ Արաբ հեղինակները վկայում են, որ մի թզաչափ այդ ձուկը, աղ դրած, վաճառքի էին տանում Ջազիրա (Միջագետք), Մոսուլ, Ռակկա, Խառան, Հալեպ, Խորասան, անգամ Հնդկաստան[34]։*

*Միջազգային առևտրին Հայաստանը մասնակցում էր նաև անասունների և որոշ քանակությամբ գյուղատնտեսական արտադրանքի վաճառքով։ Հայաստանից արտահանվում էին ձիեր, մանավանդ ջորիներ։ Իբն-Հաուկալը ասում է, թե Ջավազանից (Անձևացյաց երկրից) և Հայաստանի այլ նահանգներից Իրաք, Ասորիք և ուրիշ երկրներ էին տանում ընտիր ջորիներ, որոնք աչքի էին ընկնում իրենց ազնվացեղությամբ, դիմացկունությամբ և դրանց մասին հիշատակելու հարկ չկա, որովհետև շատ հայտնի են[35]։*

*Գյուղատնտեսական մթերքներից արտահանվել են հացահատիկ, գինի, չորացրած մրգեր, բուսական յուղեր, մեղր և այլն։*

*Մեջբերված փաստերը տարակույս չեն թողնում, որ Հայաստանը եղել է միջազգային տարանցիկ առևտրի գործուն մասնակից և ոչ թե սոսկ առևտրական քարավանների անց ու դարձի կամուրջ Արևելքի և Արևմուտքի միջև, կամ էլ միայն կենտրոնատեղի, ուր տարբեր երկրներից քարավանները ապրանքներ էին բերում փոխանակելու համար։*

*Հայաստանը, Վրաստանը, Առանը (Աղվանք) և Ատրպատականը, որոնք արաբական խալիֆայության գլխավոր վարչական բաժանմամբ (հյուսիսա-*

---

30 Կ. Ղաֆադարյան, *Ալքիմիան պատմական Հայաստանում*, էջ 67։
31 СМОМПК, вып. XXXVIII, стр. 97.
32 *Տե՛ս նույն տեղում, էջ 97։*
33 *Տե՛ս Насири Хусрау,* Сафарнамэ, М.—Л., 1933, стр. 39.
34 *Տե՛ս* СМОМПК, вып. XXIX, стр. 25. *Jacut,* I, p. 513.
35 *Տե՛ս* СМОМПК, вып. XXXVIII, стр. 97.

չին փոխարքայություն) մի միավոր էին կազմում՝ Ար-Ռիհաբ անունով, համարվում էին շեն ու բարեբեր, զարգացած արհեստագործության և վաճառքի առարկաներով լի երկիր։ Ալ-Մուկադդասին, օրինակ, գովում է Ար-Ռիհաբի բրդե գործվածքները, սքանչելի գոտիները, որդան կարմիր ներկը, շուկաների առատությունն ու էժանությունը։ Նրա ասելով մի գառը երկու դիրհեմ արժեր, երկու հացը մի դանկ, իսկ մրգերը այնքան առատ էին, որ տրվում էին առանց հաշվի և կշռի։ Ար-Ռիհաբը,— շարունակում է նույն հեղինակը,— հրաշալի երկիր է, այնտեղ կան օգտակար ապրանքներ ու մեծ քաղաքներ։

Բնորոշ է, որ այս վկայությունները վերաբերում են X դարին, երբ Հայաստանը, հատկապես Բագրատունյաց թագավորությունն ու Վասպուրականը ապրում էին վերելքի և տնտեսական բարգավաճման ժամանակաշրջան։

Հայաստանը միջազգային առևտրին մասնակցում էր նաև իբրև դրսից ներմուծվող ապրանքների սպառող։ Այդ առթիվ մեր տեղեկությունները սակավ են և պատահական, միայն հնագիտական պեղումներն են որոշ լրացումներ մտցնում։ Հայ և օտար մատենագրական աղբյուրներից կարելի է եզրակացնել, որ Հայաստան են բերվել արևելյան կոչված ապրանքներ՝ հնդկական համեմունք, գոհարեղեն, չինական գործվածքներ և հախճապակի, բյուզանդական գործվածքների որոշ տեսակներ, պերճանքի առարկաներ, արաբական աշխարհից, Սիրիայից և Պաղեստինից նույնպես՝ պերճանքի առարկաներ և դեղորայք։

X դարի արաբ հեղինակ ալ-Մասուդին խոսում է ոչ միայն Հնդկաստանից, այլև Ցեյլոնից, անգամ Մալայան արշիպելագից Մերձավոր Արևելք բերվող գոհարեղենի և համեմունքների մասին։ Նա հատկապես հիշատակում է կանֆորան, խունկը, մեխակը, սանդալի փայտը, հոտավետ ընկույզը, կարդամոնը, քուբեբան և այլն[36]։ Մատթեոս Ուռհայեցին պատմում է, որ Անիի մայր տաճարի համար X դարի վերջերին Հնդկաստանից բերվել էր բյուրեղյա շքեղ ջահ, որի արժեքը 10 հազար դիրհեմ էր կազմում[37]։

Հնագիտական պեղումների ժամանակ հայտնաբերվել են չինական բարձրորակ խեցեղեն՝ պատրաստված կավճինից (պորցելան), պատած բաց կանաչավուն ջնարակով, միջին ասիական և իրանական խեցեղենի նմուշներ, Իրաքի և Ասորիքի խեցեղենի և ապակու որոշ տեսակներ, բյուզանդական ապակեղեն, արծնապատ (էմալած) գոտի և այլն։

Իրաքից, գուցե և Եգիպտոսից քարավանները բերում էին բամբակ։ Հիշատակված է նաև գործագործության համար պատրաստի թելի ներմուծումը Տիգրիսի ափին գտնվող Նահրաբան քաղաքից։

Դերբենդի վրայով անցնող ճանապարհով Անդրկովկասը կապվում էր խազարների, Վոլգայի բուլղարների և ռուսների հետ։ Խազարները, ալ-Իսթախրու վկայությամբ, գործվածքներ և զգեստներ չէին պատրաստում, և դրանք ամբողջովին տարվում էին նրանց մոտ Ջուրջանից, Թաբարստանից, Արմինիայից և Ռումից (Բյուզանդիայից)։ Խազարների երկրում, շարունակում է պատմիչ ալ-Իսթախրին, պատրաստվում և արտահանվում էր միայն սոսինձ, իսկ սնդիկը, մեղրը, մոմը, մորթիները և բուրդը, որոնք վաճառվում էին հա-

---

[36] Տե՛ս СМОМПК, вып. XXXVIII, стр. 9—10.

[37] Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 149։

րավից գնացող վաճառականներին, նրանց մոտ բերվում էին ուրիշ տեղից[38] (այսինքն ռուսների և բուլղարների երկրներից)։ Ռուսիայի հետ առևտրական կապերը իրականացվում էին նաև Սև ծովի նավահանգիստների՝ Տրապիզոնի և Սինոպի միջոցով։

Հյուսիսից և հյուսիս-արևելքից ապրանքները Անդրկովկաս բերվում էին նաև Միջին Ասիայի վրայով։ Հյուսիսի հետ կատարվող առևտրի գլխավոր կենտրոնը Դերբենդը և Իթիլն էին, որտեղ բնակություն էին հաստատել մեծ թվով վաճառականներ, դրանց թվում և քրիստոնյաներ[39]։



Ճենապակե թաս, չինական

Իթիլում և Դերբենդում վաճառվում էին գերազանցապես ռուսական ապրանքներ՝ ամենից ավելի մորթեղեն, ապա մեղրամոմ, վուշե գործվածքներ, զգեստներ և ստրուկներ[40]։

Քարավանային առևտուրը կապված էր մեծ դժվարությունների ու վտանգների հետ։ Երկրից երկիր ճանապարհվելով քարավանները ոչ միայն վճարում էին բավականաչափ բարձր մաքս ամեն մի պետության, նույնիսկ տեղական իշխանության սահմաններն անցնելիս, այլև հաճախ ենթարկվում էին հարձակման և կողոպուտի։ Այդ դժվարությունները հաղթահարելու նպատակով վաճառականները կազմում էին ընկերություններ, նրանց քարավաններում լի-

---

38 *Տե՛ս* СМОМПК, вып. XXXVIII, стр. 32.

39 *Տե՛ս А. Якубовский,* Феодальное общество Средней Азии и его торговля с Восточной Европой в X—XV вв., стр. 13.

40 *Տե՛ս В. Бартольд,* Место Прикаспийских областей в истории Мусульманского мира, стр. 35, *տե՛ս նաև նույնի՝* Сочинения, т. II, часть I, стр. 681.

նում էին ոչ միայն մեծ թվով վաճառականներ, այլև ուղեկցող զինված ջոկատներ։ Այդպիսի մի ընկերություն, որը կազմակերպված էր Վասպուրականում, պարապում էր աղ դրած տառեխի առևտրով։ Մատթեոս Ուռհայեցին պատմում է, որ 1084 թ. այդ քարավանը տառեխ ձկան բեռներով 80 ընտիր քաջերից բաղկացած ջոկատի ուղեկցությամբ հասել էր Անտիոք քաղաքը[41]։

Հողային սեփականությամբ հարստություններ դիզելու կողքին բացվել էր առևտրով փարթամանալու ճանապարհը, և այժմ զգալի թվով մարդիկ պարապում էին վաճառականությամբ։ Պետությունը և տեղական իշխանությունները հոգում էին ճանապարհների բարեկարգությանը և անվտանգությանը։ Ճանապարհների վրա քաղաքներում և նրանց մերձակայքում կառուցվում էին կամուրջներ, քարավանատներ և հյուրանոցներ, որոնք աղբյուրներում կոչված են հյուրատուն, փնդուկ (պանդոկ) և խանապար։ Անի քաղաքի և նրա մերձակայքի X—XI դարերի փնդուկներից մի երկուսը հիշատակված են վիմագիր արձանագրությունների մեջ[42]։ Պարզվում է, որ Անիում X—XI դարերում փնդուկներ ունեին ոչ միայն թագավորն ու վանքերը, այլև նորելուկ մեծատունները։ Հյուրատները, փնդուկ-պանդոկները և խանապարները օտարների հյուրընկալության և առևտրի հետ կապված հաստատություններ էին և, եթե առաջին երկուսը ավելի հարմարեցված էին մարդկանց ընդունման և սպասարկման պահանջներին, ապա խանապարները քարավանների ընդունման իջևաններ էին և մեծագին առևտրի վայրեր։

Հայտնի է, որ միջին դարերում առևտրական քարավանները պարապում էին նաև դիվանագիտությամբ, հետախուզությամբ, նրանք կարող էին նաև թշնամու ներխուժման անակնկալներ ստեղծել, ուստի դրանից խուսափելու համար կարգ էր սահմանված՝ ստուգել քարավանները, իսկ մայրամուտից հետո փակել քաղաքների դռները և քարավաններ ներս չթողնել։ Այդ նկատառումով քաղաքների մատույցներում կառուցվում էին քարավանատներ՝ քարավանները հյուրընկալելու համար։ Նման քարավանատների ավերակներ պահպանվել էին Անիի մոտ Ախուրյանի ձախ ափին՝ Ջրափի գյուղում, որտեղ կառուցված է եղել նաև Անի տանող ամենամեծ կամուրջը՝ 31 մետր թռիչք ունեցող մի կամարով։ Մի քարավանատուն էլ կառուցված է Անիից մի անցում (մեկ օրվա ճանապարհ) հեռավորության վրա՝ այժմյան Թալին շրջկենտրոնի մոտ։ Նման իջևան-քարավանատներ կառուցվում էին ճանապարհների վրա՝ լեռնանցքներում, դրանք հաճախ պաշտպանված էին լինում բուրգերով և կոչված էին ապահովելու քարավանների հանգիստն ու անվտանգությունը[43]։

Առևտուրը մեծամեծ եկամուտներ էր բերում ոչ միայն վաճառականներին, այլև ֆեոդալական պետությանը, իշխանություններին։ Քաղաքներում արտադրվող և տեղական շուկաներում վաճառվող բոլոր տեսակի ապրանքներից,

---

41 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 226։

42 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 20—21։

43 Տե՛ս Վ. Հարությունյան, Միջնադարյան Հայաստանի քարվանատներն ու կամուրջները, Երևան, 1960։

ինչպես և հասութաբեր զանազան հաստատություններից (ջրաղաց, ձիթհան, ներկատուն, հյուրատուն, պանդոկ, խանապար և այլն) գանձվում էր բաժ։ Մերձակա գյուղերից վաճառքի համար քաղաք բերվող մթերքներից և հումքից գանձվում էր բաժ կամ դռնագիր, որը նույն բաժի մի տեսակն էր։ Իսկ տարանցիկ առևտրի քարավաններից գանձվում էր մաքս,



Ապակե անոթ, բյուզանդական

Արաբական աղբյուրները որոշ տեղեկություններ են պահպանել մաքսի չափի վերաբերյալ, դրանցից երևում է, որ այն հետըզհետե աճում էր։ Օմայան խալիֆայության տիրապետության վերջում (VIII դարի կես) Արաբիա, Սիրիա և Եգիպտոս երթևեկող քարավաններից գանձվում էր՝ մահմեդականներից 40 դիրհեմից 1 դիրհեմ (2,5 տոկոս), ոչ մուսուլմաններից 20 դիրհեմից 1 դիրհեմ (5 տոկոս)։ X դարի արաբ աշխարհագիր Իբն Ռուստեի վկայությամբ Բուլղարում մաքս գանձվում էր ապրանքների արժեքի մեկ տասներորդի չափով (10 տոկոս)։ Կարելի է ենթադրել, որ բաժի չափն էլ տատանվում էր 5—10 տոկոսի սահմաններում։

Ֆեոդալական իշխանությունները, շահագրգռված լինելով առևտրի զարգացման մեջ, քարավանների անվտանգ երթևեկությունը ապահովելու համար առանձնացնում էին զինված ջոկատներ, որոնք ուղեկցում էին քարավանները՝ մինչև հարևան իշխանության սահմանները, դրանից ևս ստանալով համապատասխան վարձատրություն։

Միջազգային, մանավանդ ներքին առևտուրը IX—XI դարերում զարգանում էր և ծավալվում։ Դրանով հանդերձ ապրանքային արտադրությունը և առևտուրը դեռևս սահմանափակ էին և չէին կարող խախտել ֆեոդալական հասարակության բնատնտեսական հիմքերը, որոնց վրա տակավին հաստատապես հանգչում էին աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների տնտեսությունը և ամբողջ գյուղաշխարհը։ Դրամական շրջանառությունն էլ այս դարերում դեռևս սահմանափակ էր։

Առևտուրը Հայաստանում IX—XI դարերում լինելով երկրում տեղի ունեցող նշանակալից տնտեսական վերելքի, քաղաքների և արհեստների զարգացման հետևանք, իր հերթին խոշոր չափով նպաստում էր նույն այդ տնտեսական վերելքին, արհեստների և քաղաքների զարգացմանը, մանավանդ քաղաքների աճին և ձևավորմանը։

## 3. ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ

*Հայ Բագրատունի թագավորների կտրած դրամներ մեզ հայտնի չեն։ Նրանց թագավորության հաստատման նախօրյակին և հետո դրամական շրջանառությունը բնորոշվում էր հիմնականում աբբասյան արծաթ դրամների լայն տարածմամբ։ Աբբասյաններն իրենց տիրապետության բազմաթիվ քաղաքներում, այդ թվում և հայկական քաղաքներում, թողարկում էին արաբերեն քուֆի գրերով արծաթե և պղնձե դրամներ։*

*Դրամական հիմնական միավորը արծաթ դրամն էր՝ դիրհեմը, որը ապրանքա-դրամային հարաբերություններում ուներ միջազգային նշանակություն։ Պղնձե դրամները թողարկվում էին տեղական կարիքների համար, և պղինձը սովորաբար քաղաքային կամ գավառական շուկայի նեղ սահմաններից դուրս չէր անցնում։ Ոսկե դրամներ հայտնվում էին սահմանափակ չափերով։ Առևտրական գործարքներում ոսկե դրամն ուներ առավելապես հաշվային նշանակություն։ Ոսկու և արծաթի փոխհարաբերությունը դիտվում էր 1։10, երբեմն 1։14-ի չափով, ըստ որում այդ հարաբերությունները կայուն չէին։*

*Հայաստանում աբբասյան դրամների թողարկման կենտրոնը Դվին քաղաքն էր։ Դվինից բացի աբբասյան դրամներ էին թողարկվում Աղվանքի Պարտավ և Հյուսիսային Միջագետքի Մծբին քաղաքներում։ Հայաստանում շրջանառության մեջ էին ոչ միայն տեղում հատված աբբասյան դրամները, այլև այլ քաղաքներից, ինչպես նաև առանձին ամիրայություններից առևտրի միջոցով բերված արծաթ դրամները, օրինակ՝ Սաջյանների X դ. առաջին կեսին կտրված և Սալարյանների X դ. երկրորդ կեսում կտրված դրամները։ Հայաստանում և խալիֆայության այլ երկրամասերում աբբասյանների և նրանց ենթակա ամիրայությունների թողարկած արծաթե դրամները միջազգային առևտրի շնորհիվ թափանցում էին հեռավոր շուկաներ։*

*Հայաստանը մի տեսակ կամուրջի դեր էր կատարում նաև արաբական երկրներում կտրված դրամների շրջանառության համար։*

*Միջազգային առևտուրն արաբական արծաթ դրամները Հայաստան էր բերում և շրջանառության ընդհանուր հոսանքով Եվրոպա էր տանում Կասպից ծովի, Դերբենդի վրայով, ապա այնտեղից Վոլգայի ավազանով՝ դեպի հյուսիսարևմուտք։ Մերձվոլգյան շրջաններում այդ հոսանքը բաժանվում էր երկու ճյուղի, որոնցից մեկը ուղղվում էր դեպի Մերձբալթյան երկրներ ու Գոտլանդի վրայով հասնում Սկանդինավիա, իսկ մյուսը թեքվում Արևմուտք և Դնեպր-Վիսլա սիստեմով հասնում Գերմանիայի առևտրական շուկաները։ Արաբական դրամները Հայաստանի, Սև ծովի վրայով ևս թափանցում էին Դոնի ու Դնեպրի ավազանները և ավելի հեռու՝ Միջին Եվրոպա, Սկանդինավիա։ Դրամական գանձերի գյուտերը հիշյալ երկրներում ցույց են տալիս նաև Հայաստանի առևտրական կապերի ուղիները հյուսիսի հետ՝ IX—XI դարերում։*

*Սակայն X դարի վերջերին և հատկապես XI դարի սկզբից փոխվել էր Հայաստանի դրամական շրջանառության կազմը։ Նախ արծաթի դրամների թարմ հոսանքը նվազել էր, և նոր թողարկված արծաթ դրամները այլևս չունեին արծաթի պարունակության նախկին բարձր որակը։ Հաճախ արծաթապատում էին միայն դրամի մակերեսային շերտը։*

Արծաթի սղությունը XI դարի սկզբից նկատվում էր արևելյան շատ երկրներում։ Այն ծայր էր առել Միջին Ասիայից և աստիճանաբար տարածվել դեպի Արևմուտք։ Շուրջ երկու հարյուր տարի պետությունները թողարկում էին կամ զուտ պղնձյա դիրհեմներ, կամ «արծաթե» դրամներ արծաթի չնչին պարունակությամբ։ Առաջացել էր արծաթի կատարյալ ճգնաժամ։ Պղնձի խառնուրդով ցածրորակ արծաթ դրամները թողարկում էին Շադդադյանները 951—1096 թթ., որոնք XI դարում տեր էին դարձել Դվին և Գանձակ քաղաքներին։ Շադդադյան դիրհեմները, սակայն, արտաքին առևտրի մեջ ընդունելություն չգտան։



Դրամներ՝ Գառնիում գտնված գանձից

XI դարի սկզբից միջազգային առևտրի մեջ տիրապետող էին դարձել բյուզանդական ոսկե դրամները, իսկ ներքին շուկայի համար՝ պղնձե դրամները։ Ի տարբերություն Շադդադյան դրամների, բյուզանդական ոսկե և պղնձե դրամներ Հայաստանում հայտնաբերվում են ոչ միայն առանձին օրինակներով, այլև ամբողջական գանձերի ձևով։

Բյուզանդական ոսկե դրամները Հայաստանում հայտնի էին «բիզանդ» կամ «դահեկան», «ոսկի դահեկան» անուններով։

Առևտրի հայկական շուկաներում X դարի վերջերից և XI դարի ընթացքում ամենատարածվածը Քրիստոսի պատկերով, բայց առանց կայսեր անվան բյուզանդական պղնձյա դրամն էր։ Անիում այնքան շատ են գտնվել X—XI դդ. նման դրամներ, որ բացահայտ է դառնում նրանց խաղացած կարևոր դերը ներքին շուկայում։ Այդ դրամների վրա նշված չէ փողերանոցի անունը։ Սակայն շրջանառության դարավոր փորձերով հայտնի է, որ պղնձե դրամները արտաքին առևտրի հետ չէին առնչվում և ներքին շուկայի սահմաններից դուրս չէին անցնում։ Հետևաբար, հազիվ թե այդպիսիները բերված լինեին Հայաստան միայն կայսրության կենտրոնից։ Հավանական է, որ դրանք թողարկվում էին նաև Հայաստանում, մասնավորապես Անի քաղաքում, մանավանդ, երբ վերջինս 1045 թ. անցել էր բյուզանդացիների ձեռքը։ Հիրավի, Հայաստանում գտնված բյուզանդական պղնձե դրամների մեծ մասը թողարկման ժամանակով վերաբերում է XI դարի երկրորդ կեսին։

Նույն այդ ժամանակներում, երբ վերացել էր Մեծ Հայքի թագավորությունը, Տաշիր-Ձորագետի Բագրատունյաց ճյուղի Կյուրիկե թագավորն իր

անունից թողարկում է պղնձե դրամներ։ Տարաբախտաբար այդ դրամները պահպանվել են հատ ու կենտ նմուշներով։ Դրանց մի կողմի վրա պատկերված է Քրիստոսը, իսկ մյուս կողմում դրոշմված է հինգ տող հայերեն արձանագրություն, որի մեջ Կյուրիկեն հիշատակված է կուրապաղատ՝ բյուզանդական տիտղոսով. դա նշան է, թե նա ճանաչել է կայսրության գերիշխանությունը։ Լոռվա Հայոց թագավորության այդ դրամները բյուզանդական ու մահմեդական դրամների հոծ զանգվածում շատ աննշան էին, և, հավանաբար, Հայաստանի տնտեսության և առևտրի համար էական նշանակություն չեն ունեցել։ Այսուհանդերձ դրանք Բագրատունյաց ժամանակաշրջանի հայկական դրամների հետաքրքիր նմուշներ են։

ԳԼՈՒԽ ՅԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՇՈՐ ՔԱՂԱՔՆԵՐԸ

*Արհեստային արտադրության և առևտրի հարաճուն զարգացման շնորհիվ Հայաստանի մի շարք քաղաքներ IX—XI դարերում աճեցին, շենացան և դարձան տնտեսական ու մշակութային նշանավոր կենտրոններ։*

*Քաղաքներ առաջացել էին Հայաստանի բոլոր գավառներում, սակայն ավելի զարգացան, արհեստային արտադրության և առևտրի խոշոր կենտրոններ դարձան Հայաստանի միջով անցնող միջազգային առևտրի երկու մայրուղիների վրա գտնվող քաղաքները։*

## 1. ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՄԱՅՐՈՒՂՈՒ ՎՐԱ ԳՏՆՎՈՂ ՔԱՂԱՔՆԵՐԸ

*Հայաստանի միջով անցնող հյուսիսային մայրուղու վրա առաջացած խոշոր քաղաքներն էին Դվինը, Անին, Կարսը, Կարինը, Արծնը, Երզնկան։*

Դվին: *Արաբական տիրապետության ժամանակաշրջանում (VIII—IX դդ.) լինելով Հայաստանի վարչական կենտրոն, որտեղ նստում էր արաբական ոստիկանը (Արմինիայի կառավարիչը), Դվինը միաժամանակ Հայաստանի խոշորագույն քաղաքն էր։ Առևտրական մայրուղին Իրանից գալով Արաքսի ափը՝ Նախճավան քաղաքի միջով անցնում էր դեպի Դվին։*

*Դվինը առևտրական ճանապարհների և քարավանային առևտրի խոշոր հանգույցներից մեկն էր։ Արաբական տիրապետության ժամանակ Դվինում կտրվում էին պղնձե և արծաթե դրամներ՝* Դվին *և* Արմենիա *մակագրությամբ*[1]։

*IX դարի երկրորդ կեսում Դվինը արհեստային արտադրանքի և առևտրի ամենախոշոր կենտրոնն էր և պատահական չէ, որ այս ժամանակի աղբյուրներում նա միակ քաղաքն է, որ անվանված է շահաստան*[2]*։ Թե որքան մեծ և բազմամարդ քաղաք էր Դվինը, կարելի է դատել 893 թ. տեղի ունեցած երկրաշարժի առթիվ պատմիչների հաղորդած տեղեկություններից։ Ասված է, թե երկրաշարժը այնքան ուժեղ էր, որ քաղաքը հիմնիվեր կործանվեց, իսկ երկրաշարժից տուժած բնակիչների թիվը չասի լինել ոգի առաւել քան ՀՌ (70 հա-*

---

[1] *Տե՛ս Х. А. Мушегян,* Денежное обращение Двина по нумизматическим данным. Ереван, 1962, стр. 21.

[2] *Տե՛ս* Շապուհ Բագրատունի, *Պատմութիւն, էջ 72։*

*դար)[3]։ Եթե նույնիսկ չափազանցություն համարվի, այնուամենայնիվ, IX դարի վերջերի քաղաքի համար դա մի պատկառելի թիվ է։ Երկրաշարժից հետո քաղաքը շուտով վերականգնվեց և շարունակեց բարգավաճել։ Թովմաի երկի շարունակողը Դվինն անվանում է «մեծ մայրաքաղաք»[4]։ Հովհաննես կաթողիկոսը 909 թ. անցքերի կապակցությամբ նույնպես Դվինն անվանում է «մայրաքաղաք»[5]։ Բավականաչափ առատ և ուշագրավ են Դվինի մասին արաբական աղբյուրների պահպանած վկայությունները։ Ալ-Իսթախրին ասում է. թե Դաբիլը (Դվինը) մեծ է Արդաբիլից. այս քաղաքը Արմինիայի մայրաքաղաքն է, նրա մեջ է երկրի կառավարիչի պալատը... Դվինի շուրջը պարիսպ կա, այստեղ շատ քրիստոնյաներ կան, և գլխավոր մզկիթը եկեղեցու կողքին է[6]։*

*Իբն-Հաուկալը, կրկնելով Ալ-Իսթախրու ասածները, միաժամանակ նկատում է, որ «Դաբիլը... ամենանշանավոր վայրը և գավառն է ներքին Արմինիայում»[7]։ Ալ-Մուկադդասին, նկարագրելով քաղաքը, ասում է թե Դվինը ամրացված քաղաք է և միջնաբերդ ունի։ Քաղաքի հրապարակները խաչաձև են, տները կառուցված՝ աղյուսից և քարից։*

*Քաղաքն ունեցել է բազմաթիվ դռներ, որոնցից արաբ հեղինակը հիշատակում է՝ Բաբ-Կիյդարը, Բաբ-Թիֆլիսը, Բաբ-Անին, ապա ավելացնում. «քաղաքն ունի արվարձաններ, շրջապատված է այգիներով ու սքանչելի վարելահողերով»[8]։*



Երկաթե նիզակ. Դվին

*Աշխարհագրական մի երկում ևս նշվում է, որ Դվինը խոշոր քաղաք է, Արմինիայի կենտրոնը, բարիքներով լի հարուստ քաղաք, ունի շատ բնակիչներ և մեծ թվով վաճառականներ և նրան պատկանող հողերը հասնում են մինչև Ջեզիրայի սահմանները[9]։ Արաբ հեղինակները, ինչպես տեսանք, մեծ դրվա-*

---

3 Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 204։ «Յայսմավուրք» հոկտեմբերի ԺԴ։*

4 Թովմա Արծրունի, *էջ 488։*

5 Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 269։*

6 *Տե՛ս* СМОМПК, вып. XXIX, стр. 19.

7 *Նույն տեղում, էջ 92։*

8 *Նույն տեղում, էջ 9—10։*

9 *Տե՛ս* Հ. Փափազյան, *Անանուն տաջիկ աշխարհագիրը Հայաստանի, Ադրբեջանի և Արևելյան Վրաստանի մասին (X դար), «Տեղ.» ՀՍՍՀ ԳԱ, 1953, № 5, էջ 76, Худуд ал-алем,* Рукопись Туманского, Л., 1939, стр. 325.

*տանքով են խոսում Դվինում արտադրված գործվածքների և արտադրանքի այլ տեսակների մասին։*

*Ինչպես նշվել է, Դվինը X դարում՝ սկսած Աշոտ Բ-ի գահակալությունից մինչև Գագիկ Ա-ի գահակալության վերջը, գտնվել է մերթ Բագրատունյաց թագավորության կազմում, մերթ էլ արաբական կամ Ատրպատականի ամիրաների իշխանության ներքո։*

*1020-ական թվականներին Դվինում հաստատվում է Շադդադյանների մի ճյուղը, և քաղաքը դառնում է ամիրայության կենտրոն։*

*Դվինում 1937 թ. սկսված և մինչև այժմ շարունակվող պեղումները բացահայտել են միջնադարյան այդ խոշոր քաղաքի պատկերը, արհեստների զարգացման վիճակը, ինչպես և տնտեսական ու մշակութային կապերը հարևան երկրների հետ։ Քաղաքի միջնաբերդը գտնվում է Վերին Արտաշատ գյուղի մոտ՝ դաշտավայրում բարձրացող մի բլրի վրա, որը ստորին բերդի հետ միասին շրջապատված է բազմաթիվ աշտարակներ ունեցող հաստաբեստ պարիսպներով։ Դրանք կառուցվել են հում և թրծած աղյուսից, քարե հիմքերի վրա։ Պարիսպն իր հերթին շրջապատված է եղել ջրով լցված լայն և խոր փոսով։ Քաղաքի կենտրոնական թաղամասը, որտեղ գտնվել են Դվինի մայր տաճարը, կաթողիկոսական ապարանքը և այլ շենքեր, տեղադրված է մի ցածրադիր բարձունքի վրա և միջնաբերդի հետ կապվել է ջրով լցվող փոսի վրա ձգված կամուրջով։ Միջնաբերդից դեպի արևելք, հարավ և արևմուտք փռված են եղել քաղաքի ընդարձակ թաղամասերը, որոնք նույնպես առնված էին պարսպի մեջ։*

*Պեղումների շնորհիվ հայտնաբերված պատկառելի քանակ կազմող և խիստ բազմազան նյութերը ցույց են տալիս, որ Դվինում, բացի գործվածքներից, գորգերից, ներկերից և «հայկական արտադրության» այլ առարկաներից, որոնք այնքան դրվատված են արաբական աղբյուրներում, զարգացած են եղել բազմաթիվ ուրիշ արհեստներ, մանավանդ մետաղագործությունն ու զինագործությունը՝ իրենց տարբեր ճյուղերով, խեցեգործությունը, հասարակ, ջնարակած և բարձրարվեստ հախճապակու արտադրությամբ, ապակեգործությունը, շինարարական արհեստները։*

**Անի:** *V—X դարերում թեպետ Դվինն էր Հայաստանի վարչական կենտրոնը և ամենախոշոր քաղաքը, այնուամենայնիվ այն չդարձավ Բագրատունիների մայրաքաղաքը, որովհետև այդպիսին կարող էր առաջ գալ միայն Բագրատունիների գլխավոր տիրույթը կազմող Շիրակում։ Անին, որ Շիրակի հին ամրոցներից էր, քաղաք դարձավ IX դարի վերջերին և X դարում։ 961 թ. մայրաքաղաք հռչակվելով, Անին մյուս քաղաքներից ավելի արագ և բուռն զարգացում ունեցավ, իսկ X—XI դարերում դարձավ Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը։ Երկարամյա հնագիտական դիտողությունների հիման վրա Թորոս Թորամանյանը իրավացիորեն պնդում է, որ «Նախքան Աշոտի աթոռն այդտեղ փոխադրելը, արդեն քաղաքն ընդարձակված էր այսօրվա պարիսպներեն ոչ նվազ տարածությամբ»[10]։ Աշոտ Գ-ի օրոք կառուցված պարիսպը հին քաղաքն ամ-*

---

10 Թ. Թորամանյան, *Նյութեր հայկական ճարտարապետության պատմության, հատ. Բ, Երևան, 1948, էջ 323։*

բողջությամբ իր մեջ չէր առնում։ Այս պարսպից ներս Ախուրյան և Անի գետերի միացման տեղից ոչ հեռու, երկու ձորերի միջև խոյացող բարձունքի վրա գտնվում էր քաղաքի միջնաբերդը, որն իր պարիսպն ուներ։ Քաղաքը փռված էր միջնաբերդից հյուսիս և հյուսիս-արևելք՝ երկու կողմից ձորերով եզերված ընդարձակ դարավանդի վրա։ Հազիվ քառորդ դար էր անցել Աշոտի պարիսպները կառուցելուց հետո, երբ հարկ եղավ նոր պարիսպ կառուցել, որովհետև քաղաքը՝ մոտ չորս անգամ աճել, ընդարձակվել էր։ Բայց Սմբատի 989 թ. կանգնեցրած ընդարձակ պարսպից դուրս էլ փռվում էին քաղաքի արվարձանները[11]։ Սմբատի պարիսպը ձգվում էր 2,5 կիլոմետր երկարությամբ և ուներ զուգահեռ կրկնապարիսպ 8—10 մետր բարձրությամբ։ Նրա առջև՝ Իգածորի և Գլիձորի միջև ընկած հարթության վրա, պարսպի առավել խոցելի մասում, փորված էր ջրով լցվող խրամ, որն ուներ 500 մետր երկարություն և 10—12 մետր լայնություն։ Խրամը կասկադի տեսք ուներ, նրա բարձրադիր մասից ջուրը թափվում էր ցածրադիր մասերի մեջ, գոյացնելով պատերով իրարից կտրված ավազաններ, իսկ երկու ծայրերից հոսում էր դեպի ձորերը՝ պարտեզները ջրելու և ջրաղացները աշխատեցնելու համար։



Անիի պարիսպները, ձախից՝ մայր տաճարը, աջից՝ միջնաբերդը

X դարի վերջերին Անին, եթե արհեստային արտադրությամբ ու առևտրով դեռևս չէր անցել, ապա ետ էլ չէր մնում Դվինից։

Այս ժամանակներում հյուսիսային առևտրական մայրուղին ճյուղ տալով ձգվեց դեպի Անի։

XI դարում արդեն Անին բազմամարդ, մեծ ու փարթամ քաղաք էր։ Մատթեոս Ուռհայեցին, խոսելով Անի քաղաքին՝ սելջուկների 1064 թ. հասցրած հարվածների մասին, ասում է. «էր Անի բազմամբոխ, քաղաքն լցեալ բիւր բիւրոց արանց և կանանց, ծերոց և տղայոց, որ հիացումն արկանէր տեսողացն,

11 Տե՛ս Թ. Թորամանյան, նշված աշխ.։

*զոր կարծեալ զօրացն քաղմաց, եթէ մեծ մասն աշխարհիս Հայոց իցէ, և յայնմ աւուր հազար և մէկ եկեղեցի ի պատարագի կայր ի յԱնի»[12]։ Բյուզանդական հեղինակ Միքայել Ատտալիատեսը (XI դար) նույնպես վկայում է, թե «Անին մեծ և բազմամարդ քաղաք էր»[13]։ Արաբացի հեղինակ Իբն ալ-Ասիրի ասելով Անին մի մեծ ու բարգավաճ քաղաք էր, ուներ մեծ բնակչություն և ավելի քան 500 եկեղեցի[14]։ «Հազար ու մի եկեղեցի», իհարկե, դա թևավոր խոսք է, սակայն քաղաքում քիչ չեն եղել հարյուրավոր նրբակերտ կառուցված եկեղեցիներ և այլ շենքեր, որոնք Անին դարձնում էին ճարտարապետական արվեստի մի նշանավոր կենտրոն։*

*Անիում երկար տարիներ պեղումներ և հնագիտական աշխատանքներ կատարեցին Նիկողայոս Մառը, Հովսեփ Օրբելին և Թորոս Թորամանյանը, որոնք բացեցին ճարտարապետական մի շարք հուշարձաններ։ Հայտնաբերված նյութերը ցույց են տալիս, որ քաղաքում զարգացած են եղել մետաղագործական արհեստները, կավագործությունը. ջուլհակությունը, կաշեգործությունը, փայտի մշակումը, գեղարվեստական փորագրությունները և այլն։*

*Այստեղ ևս, ինչպես Դվինում, արտադրվում էին բարձրորակ հախճապակե և ապակեղեն, ամաններ, պերճանքի առարկաներ։ Զգալի թիվ էին կազմում ձիթհանները, ջրաղացները և հասութաբեր այլ ձեռնարկությունները։*

*Հենց այս ժամանակներում Անիում առաջացել էին արհեստավորական շարքեր, կար մի քանի շուկա. քաղաքն ուներ հյուրատներ, պանդոկներ, խանապար-իջևաններ։ X դարի վերջերին և XI դարի առաջին կեսում Անին դարձել էր Մերձավոր Արևելքի խոշոր քաղաքներից մեկը, դեպի ուր ձգվում էին միջազգային տարանցիկ առևտրի ուղիները։ Անին ուներ շառավղաձև բարեկարգ փողոցներ, որոնք կառուցապատված էին քարակերտ շենքերով, ուներին տալահատակված մայթեր։ Դիմացի սարից ջուր էր բերված քաղաք և ջրմուղի ցանցով բաժանված թաղամասերի վրա։ Անին միջնադարյան հայ մշակույթի, արհեստի, մանավանդ ճարտարապետության ամենանշանավոր կենտրոնն էր։*

*Անին աչքի էր ընկնում ցոփ բարքերով, վաշխառությամբ։ Նրա բնակչության վերնախավերի և ստորին խավերի միջև առաջացել էր խոր վիհ և խիստ սրվել էին սոցիալական ներհակությունները։*

*X—XI դարերում Անին դարձել էր նաև գրի, գրչության և մշակույթի խոշոր կենտրոն։ Քաղաքում և նրա մերձակայքում հիմնվել էին վանական դպրոցներ, որոնց թվում աչքի էր ընկնում Դպրեվանքի բարձր տիպի դպրոցը։*

**Կարս:** *IX դարում Կարսը բերդ էր՝ Վանանդ նահանգում, որտեղ հաստատվել էր հայոց սպարապետ Աբասը[15]։*

*X դարի առաջին քառորդում Կարսը արդեն ձեռք էր բերել տնտեսական նշանակություն և աճելով դարձել էր քաղաք։ Անին դեռևս մայրաքաղաք չէր և զարմանալի չէ, որ Աբաս Բագրատունին (929—953) Կարսը դարձրեց իր թա-*

---

12 Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն, էջ 147։*

13 *Michaelis Attaliatae*, Historia, p. 79.

14 *Տե՛ս* «Из Тарих ал-Камиль Ибн ал-Асира», перевод П. К. Жузе, Баку, 1940, стр. 120.

15 *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 183։*



Կարսի պարիսպները

գավորանիստ քաղաքը։ Այդ հանգամանքն իր հերթին նպաստեց Կարսի արագ աճին և միջնադարյան այդ խոշոր քաղաքի ձևավորմանը։ Այստեղ ևս կային ճարտարապետական նշանավոր կառույցներ[16]։

Երբ Անին մայրաքաղաք հռչակվեց, Կարսը մնաց Վանանդի վասալական թագավորության կենտրոնը և շարունակեց աճել ու ընդարձակվել։ X դարի վերջերին Կարսը դարձել էր Հայաստանի խոշոր քաղաքներից մեկը, ուստի Ստեփանոս Տարոնեցի պատմիչը կարող էր անվանել նրան «մայրաքաղաք»[17]։

Կարսը նաև արհեստային արտադրանքի և առևտրի աչքի ընկնող կենտրոն էր։ Նա խոշոր դեր էր խաղում տարանցիկ առևտրի մեջ։ Առևտրական մայրուղին Անիից անցնում էր Կարս, իսկ վերջինս բավականաչափ բանուկ ճանապարհներով կապված էր Կարնո քաղաքի, Արծնի, նաև Վրաստանի Արտանուջ և Տփղիս քաղաքների հետ։ Արտանուջի, ինչպես և Կարին, Արծն, Բաբերդ քաղաքների վրայով անցնող ճանապարհներով Կարսը կապված էր Սև ծովի նավահանգիստների հետ։

Պատմիչի դիպուկ բնութագրությամբ կարսեցիները փարթամացել էին՝ «հարստացեալք բազում ընչեղութեամբ՝ ի ծովէ և ի ցամաքէ ամբարեալ»[18]։

Կարսի արագ աճմանը նպաստեց և այն հանգամանքը, որ քաղաք դառնալու օրից մինչև XI դարի կեսերը այն պատերազմական վտանգների և արհավիրքների չէր ենթարկվել[19]։

Քաղաքը շրջապատված էր քարակերտ ամուր պարսպով, իսկ բարձրադիր մի բլրի վրա գտնվում էր միջնաբերդը։

**Կարնո քաղաքը** (Կարին, Թեոդոսուպոլիս) հյուսիսային առևտրական մայրուղու արևմտյան հատվածի խոշոր հանգուցակետն էր։ Ըստ ավանդության այս քաղաքը հիմնադրվել է Հայաստանը Սասանյան Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև բաժանվելուց հետո, բյուզանդական մասում՝ Թեոդոս Բ կայսեր օրոք (408—450), ուստի և ստացել է Թեոդոսուպոլիս անունը։ Մովսես Խորենացու ասելով այն ժամանակ այստեղ պարզապես ամրոց է կառուցվել[20]։ Անաստաս (491—518) և Հուստինիանոս (527—566) կայսրերի օրոք ամրոցը ընդարձակվել, դարձել է բերդաքաղաք և իբրև այդպիսին քանիցս հիշատակված է Սեբեոսի մոտ՝ VI—VII դարերի պատերազմական անցքերի կապակցությամբ[21]։ Կարնո քաղաքը բյուզանդական արևելյան սահմանի ռազմական խոշոր ամրությունն էր։

VII դարի կեսերին Կարնո քաղաքը գրավում են արաբական զորքերը և դարձնում ռազմական հենակետ Բյուզանդիայի դեմ։ Միայն X դարի կեսերին բյուզանդական զորքերը գրավեցին Կարնո քաղաքը, կործանելով նրա պարիսպը։ Ստեփանոս Տարոնեցին Կարնո քաղաքի առումը դնում է 949 թ. և վերագրում է Չմշկիկ զորավարին, Հովհաննես Չմշկիկի պապին, որը «պատառեաց

16 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 172։
17 Տե՛ս նույն տեղում, էջ 196։
18 Արիստակես Լաստիվերտցի, էջ 83։
19 Տե՛ս նույն տեղում, էջ 83—84։
20 Տե՛ս Մովսես Խորենացի, էջ 338—339։
21 Տե՛ս Սեբեոս, էջ 27, 52—55, 77—81, 141—142, 152—153։

*զխանդակ քաղաքին և փլոյց զբարձրաբերձ աշտարակս նորա և էառ զքաղաքն»[22]։ Դրանից հետո քաղաքը երկար ժամանակ չվերաշինվեց, և XI դարի բյուզանդական պատմիչ Միքայել Ատտալիատեսը ասում է, որ Թեոդոսուպոլիսը թողնված էր և լքված[23]։ 1018 թ. Վասիլ Բ կայսրը Հայաստանի բնակիչների միջոցով ձեռնարկեց քաղաքի և նրա պարսպի վերաշինությանը։ «Մարդահարկ արկանէ յերկիրս, և ժողովեալ բազմութիւն մարդկան՝ սկիզբն առնէ վերստին շինելոյ զԹէոդոսուպօլիս»[24]։ Վերաշինությունից հետո Կարինը շենանում, ընդարձակվում է և դառնում ամուր ու մեծ քաղաք[25]։ Քաղաքի միջնաբերդը կառուցված էր բարձր բլրի վրա, շրջապատված քարաշեն հզոր պարիսպներով և ջրով լցվող խրամատով։ Կարնո քաղաքում զարգացած են եղել մետաղագործությունը՝ դարբնության, զինագործության, պղնձագործության և ոսկերչության ճյուղերով, գորգերի և գործվածքների արտադրությունը։ Արաբական հեղինակները վկայում են, որ «Կալիկալայում (Կարնո քաղաք) մի տեսակ գորգ են պատրաստում, որն իր անունով կոչվում է խալի»[26]։ Թերևս ժողովրդական այս ստուգաբանությունը ընդգծում է Կարնո քաղաքի գորգագործության կենտրոն լինելու հանգամանքը։*

*Մետաղագործական արհեստների զարգացմանը մեծապես նպաստում էր Կարնո գավառում և մերձակա վայրերում մշակվող պղնձի, ոսկու և արծաթի հանքերի առկայությունը։*

**Արծն**։ *Կարնո քաղաքի կողքին, նրանից փոքր-ինչ հյուսիս-արևմուտք, Տրապիզոն տանող բանուկ առևտրական ճանապարհի վրա էր Արծն մեծ քաղաքը։ Արծնը չի եղել ոչ վարչական կենտրոն, ոչ էլ ամրոց՝ ռազմական հենակետ, ուստի և XI դարից առաջ չի հիշատակված, սակայն XI դարում մեծ համբավ վայելող այդ բազմամարդ քաղաքը միանգամից չէր կարող առաջանալ։ Նա գոյացավ առևտրական ճանապարհների վրա իբրև արհեստագործության և առևտրի կենտրոն և շատ արագ աճեց, մանավանդ X դարի կեսերից մինչև XI դարի սկզբները, երբ Կարին քաղաքը ավերված, լքված էր, իսկ նրա բնակչությունը փոխադրվել էր Արծն։ Դրա վերաբերյալ ունենք XI դարի բյուզանդական պատմիչ Միքայել Ատտալիատեսի ուղղակի վկայությունը։ Նա գրում է, որ բյուզանդական կայսրը «հասավ Թեոդոսուպոլիս, որը լքված էր և դարձել էր անբնակ այն պատճառով, որ նրա մոտ էր գտնվում շատ հարմար դիրք ունեցող Արծն քաղաքը, որտեղ տեղափոխել էին իրենց բնակությունը նրա բնակիչները»։ Նույն հեղինակը հաղորդում է, որ Արծնը դարձել էր խոշոր քաղաք, «լի մեծ քանակությամբ բազմապիսի ապրանքներով, որ բերում էին Պարսկաստանը, Հնդկաստանը և մնացած Ասիան»[27]։*

*Արիստակես Լաստիվերտցին Արծնը անվանում է «մեծանիստ և շահա-*

---

22 Ստեփանոս Տարոնեցի, *էջ 179,*

23 *Տե՛ս Michaelis Attaliatae*, Historia, p. 148.

24 Արիստակես Լաստիվերտցի, *էջ 28։*

25 *Տե՛ս նույն տեղում, էջ 106, 138։*

26 *Jacut, IV,* p. *19.*

27 *Michaelis Attaliatae,* Historia, p. 148.

տան քաղաք»[28]։ Նա մեծ դրվատանքով է խոսում իր հայրենի քաղաքի մասին. «Հոյակապ և ականավոր էր բոլոր երկրների մեջ, որպես քաղաք, որ լեռան վրա է գտնվում, և ծովը և ցամաքը երկնում էին և առատորեն կրում էին դեպի սա իրենց զորությունը... Արդ, սա բարիքների առատությամբ, իրոք, առաջինն էր պսակված, ամեն ինչ այստեղ բերվում [էր]. և ասես նման էր մի նորահարս կնոջ, որը վայելուչ գեղեցկությամբ և զարդերի պայծառությամբ ցանկալի էր ամենքին»[29]։

Լաստիվերտցին հիշատակում է նաև Արծնի վաճառափողոցները, նրբափողոցները և ընդարձակ սրահները[30]։

Մատթեոս Ուռհայեցին ևս Արծնը ներկայացնում է իբրև բազմամարդ և հարուստ քաղաք. «Անթիւ բազմութեամբ լցեալ զարանց և զկանանց և անհամար չափս ոսկւոյ և արծաթոյ»[31]։

Ուռհայեցին վկայում է, որ սելջուկ թուրքերը գրավելով Արծնը՝ «սրոյ անցուցին զամենայն քաղաքն իբրև բիւրս հնգետասան»[32] (150 հազար)։ Նույնպիսի տեղեկություն է հաղորդում բյուզանդական պատմիչ Գեորգիոս Կեդրենոսը. «ասվում է, թե սպանվեց շուրջ 150 հազար մարդ...»[33]։

Եթե անգամ ընդունենք, որ այս թիվը չափազանցված է, դարձյալ հիշյալ հեղինակների վկայությունները տարակուսանք չեն թողնում, որ Արծնը, իրոք, արհեստագործության և առևտրի մեծ կենտրոն է եղել։ Լաստիվերտցու պես Ուռհայեցին էլ ասում է, որ Արծն քաղաքի հարստությունների՝ ոսկու, արծաթի և դիպակների մասին խոսելն ավելորդ է, որովհետև գրի, հաշվի տակ գցելը անհնարին է[34]։

Գեորգիոս Կեդրենոսի վկայությամբ նույնպես Արծնը «մարդաշատ և բազմահարուստ» քաղաք էր, որտեղ «բնակվում էին տեղացի վաճառականներ, ինչպես նաև ասորիների, հայերի և այլ ժողովուրդների ոչ փոքր բազմություն»[35]։

Արծնի մերձակա վայրերում հանվում էին՝ ոսկի, արծաթ և պղինձ, որոնց հիման վրա զարգացել էին մետաղագործական մի շարք արհեստներ. զարգացած էին նաև ջուլհակությունը, գորգագործությունը, կավագործությունը, ապակեգործությունը և այլ արհեստներ։

Արծնը, Բյուզանդական կայսրությանը ենթակա հայկական հողերի այդ ամենամեծ և նշանավոր քաղաքը, միաժամանակ ամբողջ Հայաստանի և Մերձավոր Արևելքի խոշոր քաղաքային կենտրոններից մեկն էր, որը կարճ կյանք ունեցավ՝ զոհ դառնալով օտարների բարբարոսական ավերածության։

**Ե ր զ ն կ ա**: Կարնո քաղաքից առևտրական մայրուղին անցնում էր

---

28 Արիստակես Լաստիվերտցի, էջ 63։
29 Նույն տեղում, էջ 74։
30 Տե՛ս նույն տեղում, էջ 78։
31 Մատթեոս Ուռհայեցի, էջ 102։
32 Նույն տեղում, էջ 103։
33 *Georgius Cedrenus*, t. II, p 157.
34 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 103։
35 *Georgius Cedrenus*, t. II, p. 157.

*դեպի Երզնկա, որը Հայաստանի՝ Բյուզանդական կայսրության ենթակա մասի մյուս խոշոր քաղաքն էր։ Այս քաղաքն առաջացավ X դարում, հին հայկական Երիզա ավանի տեղում, Եփրատի ափին, նրա վերին հոսանքի շրջանում։*

*XI դարում Երզնկան հիշատակված է իբրև հայտնի քաղաք[36]։ Նա ուներ ընդարձակ հրապարակներ, փողոցներ[37]. նրա արհեստավորները օգտագործում էին տեղում հանվող պղինձը։ Պղնձագործությունից բացի զարգացած էին և այլ արհեստներ։ Քաղաքը շրջապատված էր փարթամ այգիներով։ Առևտրական ճանապարհներով Երզնկան կապվում էր ինչպես Կարին, Արծն քաղաքների, նույնպես և Սեբաստիայի, Կեսարիայի և Սև ու Միջերկրական ծովերի նավահանգիստների հետ։*

*1045 թ. Երզնկան մեծ վնասներ կրեց երկրաշարժից, սակայն, հետագայում բարգավաճեց ու մեծ քաղաք դարձավ։*

*Վերևում բնութագրված բոլոր քաղաքները Հայաստանի միջով անցնող հյուսիսային առևտրական մայրուղու վրա ընկած նշանավոր և առավել խոշոր քաղաքներն էին։ Առևտրական այս ճանապարհի հետ կապված էին նաև ուրիշ քաղաքներ, օրինակ, Նախճավանը, Վաղարշակերտը։ Բացի այդ, Այրարատ նահանգում, Սյունիքում, Գուգարքում գտնվող քաղաքները՝ Կապանը, Եղեգիսը, Կոթը, Լոռին և այլն, նույնպես զգալի դեր էին խաղում արհեստագործության և առևտրի մեջ, թեև դրանք ավելի նեղ գավառական նշանակություն ունեցող փոքր քաղաքներ էին։*

## 2. ՀԱՐԱՎԱՅԻՆ ՄԱՅՐՈՒՂՈՒ ՎՐԱ ԳՏՆՎՈՂ ՔԱՂԱՔՆԵՐԸ

*Մի շարք խոշոր քաղաքներ էլ առաջացել էին միջազգային առևտրի՝ Հայաստանի միջով անցնող հարավային մայրուղու վրա։ Դրանցից էին Հերը, Վանը, Բերկրին, Արճեշը, Մանազկերտը, Խլաթը, Բաղեշը, Արզնը, Նփրկերտը (Մայաֆարկին)։*

*Իրանից եկող ճանապարհը, հասնելով Ատրպատականի սահմանի մոտ գտնվող Հեր (Խոյ) քաղաքին, ճյուղավորվում էր. մեկով ձգվում դեպի հարավ՝ Սալմաստ, Ուրմիա, ընդհուպ Միջագետք, իսկ մյուսով, որն ավելի բանուկ էր, դեպի Վան, Բերկրի։*

Վան: *Հնագույն այս քաղաքը IX դարից սկսած վերակենդանացավ։ Աղբյուրներում այն հայտնի է Վան, Վանտոսպ և Շամիրամի քաղաք անուններով։*

*Թովմա Արծրունին, նույնացնելով Վանտոսպը Շամիրամի քաղաքի հետ, ասում է, թե այն հռչակված էր «հոյժ փառավոր ամբողջ Վասպուրականում»[38]։*

*Քաղաքն իր բերդով, որը կանգնեցված էր լճի ափին խոյացող Վանա ժայռի վրա, վերականգնվեց Դերենիկ, մանավանդ Գագիկ Արծրունի իշխանների*

---

36 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 276։*

37 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 107։*

38 Թովմա Արծրունի, *էջ 404։*

օրոք։ Վարագա լեռից մինչև Վան ջրմուղ անցկացվեց և հանվեց նաև Վանա ժայռի գլուխը[39]։

Վանը Վասպուրականի ամենաընդարձակ քաղաքն էր, ուստի կարծեցյալ Շապուհ Բագրատունին տալիս է նրան «մայրաքաղաք» անունը[40]։

Վանը, սակայն, մեծ և ընդարձակ էր Վասպուրականի Ոստան, Հադամակերտ, Աղթամար, Կեցան և մյուս քաղաքների համեմատությամբ, իսկ Հայաստանի առավել խոշոր քաղաքներին նկատելիորեն զիջում էր։ Այն, ըստ էության, միջին մեծության քաղաք էր, որտեղ զարգացած էին գորգագործությունը, բորակի և աղի հանույթը, մետաղագործությունը, մանավանդ ոսկերչությունը, շինարարական արհեստները, ձկնորսությունը։ Քաղաքը շրջապատված էր պտղատու ընդարձակ այգիներով։



Վան քաղաքի պարիսպները

Բերկրի: Վանից առևտրական մայրուղին թեքվելով հյուսիս՝ հասնում էր Բերկրի քաղաքին, որը տեղադրված էր Վանա լճի հյուսիս-արևելյան ծոցից ոչ հեռու։ Բերկրին VIII դարում մի բերդ էր, որտեղ հաստատված էր արաբական Ութմանիկ ցեղը։ Թովմա Արծրունին՝ IX դարի կեսերին տեղի ունեցած անցքերի կապակցությամբ Բերկրին անվանում է քաղաք, ավելացնելով, թե քաղաքացիներն են Ութմանիկները[41]։

IX դարի վերջերին և X դարում Բերկրին Ութմանիկների փոքրիկ ամիրայության կենտրոնն էր և ենթակա էր Բագրատունիներին։ XI դարի առաջին կեսին Բերկրին միացվեց Բյուզանդական կայսրությանը։

39 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 406։

40 Տե՛ս Շապուհ Բագրատունի, էջ 71։

41. Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 317—320։

*Ոչ մեծ այս բերդաքաղաքը առևտրական կարևոր հանգրվան էր։*

**Արճեշ**: *Բերկրիից առևտրական մայրուղին անցնում էր Արճեշ, որը գտնվում էր նրանից փոքր-ինչ արևմուտք՝ Վանա լճի հյուսիս-արևելյան ափին։ Արճեշն իբրև բնակավայր հիշատակվում է VII դարի անցքերի կապակցությամբ։ 774—775 թթ. արաբների դեմ ծագած ապստամբության ժամանակ Արճեշը արաբների հենակետերից մեկն էր, մի ամրոց, որի առջև փռված էր ավանը։ Արճեշը քաղաք դարձավ IX դարում և իբրև այդպիսին հիշատակված է արդեն X դարի սկզբներին*[42]*։*

*Արճեշը IX դարի վերջերին և X դարի սկզբներին ենթակա էր Բագրատունի թագավորներին*[43] *և հիշատակվում է իբրև հայտնի քաղաք*[44]*։ Այն ավելի աճեց և ընդարձակվեց XII—XIII դարերում։*

**Մանազկերտ**: *Առևտրական մայրուղին Արճեշից անցնում էր լճի ափով դեպի արևմուտք, որի մի ճյուղը հյուսիս-արևմտյան ուղղությամբ գնում էր դեպի Մանազկերտ։ Դեռևս VII դարում Մանազկերտը մեծ ամրոց էր, իր ավանով, ուստի հիշատակված է որպես գյուղաքաղաք*[45]*։ VIII դարի անցքերի կապակցությամբ Մանազկերտը արդեն քաղաք է կոչված, թեև X դարի հեղինակի կողմից*[46]*։*

*IX դարի անցքերի առնչությամբ Թովմա Արծրունին Մանազկերտը անվանում է քաղաք*[47]*, այնուհետև բոլոր հեղինակներն էլ Մանազկերտը գիտեն իբրև աչքի ընկնող քաղաք։*

*IX դարի վերջերին Մանազկերտի Կայսիկ ամիրան, բավականաչափ զորեղանալով, ընդարձակել էր իր իշխանությունը։ Այդուհանդերձ նա ենթակա էր Աշոտ Ա և Բագրատունի մյուս թագավորներին։*

*970 թ. Մանազկերտը գրավեցին բյուզանդական զորքերը, սակայն շուտով այնտեղ հաստատվեց Մրվանյան դինաստիան։ X դարի վերջին Տայք-Կղարջքի Դավիթ Կուրապաղատը, գրավելով Մանազկերտը, օտարազգիներին (զտաճկաստանեայսն) հեռացրեց և քաղաքը «լցրեց հայ և վրացի բնակիչներով»*[48]*։*

*Դավիթ Կուրապաղատի մահից հետո (1000) նրա տիրույթների մեծ մասը, նաև Մանազկերտ քաղաքն իր գավառով, անցավ Բյուզանդական կայսրությանը*[49]*։*

*X դարի արաբ հեղինակ Ալ-Մուկադդասին նկարագրում է Մանազկերտը իբրև անառիկ բերդ ունեցող քաղաք, որտեղ կար շուկա*[50]*։*

*Այս քաղաքից առևտրական ճանապարհը թեքվում էր դեպի հարավ-արևմուտք և հասնում Խլաթ, իսկ մի ճյուղն էլ Մանազկերտից տանում էր դեպի*

---

42 *Տե՛ս* Շապուհ Բագրատունի, *էջ 65, 72։*

43 *Տե՛ս Constantini Porphyrogeniti*, De administrando imperio.

44 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 273։*

45 *Տե՛ս* Հովհան Մամիկոնյան, *Պատմություն Տարոնոյ, էջ 217։*

46 *Տե՛ս* Ստեփանոս Տարոնեցի, *էջ 103։*

47 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 361։*

48 Ստեփանոս Տարոնեցի, *էջ 266։*

49 *Տե՛ս* Վարդան, *էջ 93։*

50 *Տե՛ս G. Le Strange*, The Lands of the Eastern Caliphate, p. 115.

Վաղարշակերտ, որտեղից էլ թեքվելով դեպի արևմուտք, միանում էր հյուսիսային մայրուղուն։

Խլաթ: Հարավային մայրուղու վրա գտնվող հաջորդ նշանավոր քաղաքը Խլաթն էր, որը տեղադրված էր Վանա լճի հյուսիս-արևմտյան ափին։ Խլաթը իբրև քաղաք առաջին անգամ հիշատակված է 774—775 թթ. ապստամբության առթիվ[51]։ Թովմա Արծրունին Խլաթը անվանում է քաղաք, նշելով նաև քաղաքի միջնաբերդը[52]։ X դարում արաբական հեղինակները նույնպես Խլաթը քաղաք են անվանում[53]։

Դեռևս IX դարում Խլաթում հաստատվում է Կայսիկների ամիրայությունը, սակայն Բերկրիի, Արճեշի և Մանազկերտի նման Խլաթն էլ ենթակա էր Բագրատունի թագավորներին։ Կոստանդին Ծիրանածինը ուղղակի ասում է. «Իշխանաց իշխանը նստում էր Մեծ Հայքում, Կարս բերդում և տիրում էր նաև վերոհիշյալ երեք բերդերին՝ Պերկրիին, Խալիատին և Արզեսին, ինչպես և Տիվիին (Դվին), Խերտին (Հեր) և Սալամաստին»[54]։

Արաբական աղբյուրները նշում են, որ Խլաթը գտնվում էր հովտի մեջ, ուներ առատ ջուր և հրաշալի այգիներ։ Քաղաքի շուրջը հողե պատվար կար, իսկ քաղաքի միջով գետ էր անցնում[55]։ Աբու-լ-Ֆեդայի ասելով, Խլաթի տարածությունը հավասարվում էր Դամասկոսի տարածությանը[56]։

Աշխարհագետ Նասիր Խոսրովը, որը 1046 թ. այցելել է Խլաթ, ասում է. «Ախլաթ քաղաքում խոսում են երեք լեզվով՝ արաբերեն, պարսկերեն և հայերեն, իմ կարծիքով սրա համար էլ քաղաքը կոչվում է Ախլաթ (խառը)։ Առևտուրն այստեղ պղնձի դրամներով է կատարվում...»[57]։

XIII դարի արաբական հեղինակ Յակուտը, օգտվելով ավելի վաղ աղբյուրներից, ասում է, թե Խլաթում կային աղահանքերի հորեր[58]։ Խլաթը արհեստագործության և քարավանային առևտրի խոշոր կենտրոն էր։

Բաղեշ (Բիթլիս)։ Խլաթից առևտրական մայրուղին Վանա լճի արևմտյան ափով անցնելով դեպի հարավ-արևմուտք, հասնում էր Բաղեշ քաղաքին։ VII դարում Բաղեշը բերդ էր։ 850 թ. ապստամբության ժամանակ Բաղեշի տեր Իբն-Ջուրարան միացել էր հայ ապստամբներին[59]։ Նույն այդ ժամանակների անցքերի կապակցությամբ Թովմա Արծրունին Բաղեշը անվանում է «շահաստան»[60] նշանակում է, որ այն արդեն վաճառաշահ քաղաք էր դարձել։ Ալ-Մուկադդասու ասելով Բաղեշ կամ Բիթլիս քաղաքը տեղավորված էր խոր ձորում և ուներ քարե ամուր բերդ[61]։

---

51 Տե՛ս Ղևոնդ, Պատմություն, էջ 145—146։
52 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 198—199, 212—260։
53 Տե՛ս Բ. Խալաթյան, Արաբացի մատենագիրները..., էջ 74—75, 127—128, 133—134, 140։
54 Const. Porph., նշված աշխ., գլ. 44։
55 Տե՛ս СМОМПК, вып. XXXVIII, стр. 10.
56 Տե՛ս Նալբանդյան, 223։
57 Насир-и Хусрау, Сафарнамэ, стр. 38.
58 Տե՛ս Jacut, I, p. 526.
59 Տե՛ս Բ. Խալաթյանց, Արաբացի մատենագիրները..., էջ 65—75։
60 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 187։
61 Տե՛ս G. Le Strange, նշված աշխ., էջ 116։

**Արզն**: Այս քաղաքը գտնվում էր Բաղեշից փոքր-ինչ դեպի հարավ-արևմուտք։ Արզնը VII դարում կարևոր բնակավայր էր, որտեղ եպիսկոպոսական աթոռ էր հաստատված[62]։ Արզնը քաղաք է անվանված դեռևս VIII դարի անցքերի առթիվ[63]։ IX դարի կեսերին Արզնում կար արաբական իշխանություն, որը, միացած հայերի հետ, ապստամբել էր խալիֆայության դեմ։

Նասիր-Խոսրովի աշխարհագրական երկում Արզնի մասին ասվում է՝ «Գեղեցիկ և շեն քաղաք էր, հոսող ջրով և այգիներով, ընտիր ծառաստաններով և շուկաներով»[64]։ Այս ուղեգիր-ճանապարհորդը նշում է Արզնի շուկայի առատությունը, մանավանդ վաճառվող խաղողի էժանությունը։

XI դարից սկսած այս քաղաքը չզարգացավ և տեղի տվեց Նփրկերտին, Բաղեշին, մանավանդ, Խլաթին։ XIII դարի հեղինակ Յակուտը Արզնի մասին գրում է. «Նշանավոր քաղաք է Խլաթի մարզում, որն ունի ամուր բերդ և անցյալում Հայաստանի ամենածաղկյալ շրջաններից մեկն էր հանդիսանում, իսկ այժմ տեղեկանում եմ, որ հետզհետե ավերակների է վերածվում»[65]։

**Նփրկերտ (Մայաֆարկին)**: Տիգրանակերտ հին քաղաքի տեղում առաջացած միջնադարյան այս քաղաքը բյուզանդական աղբյուրներում ինչ-որ ավանդությամբ անվանված է Մարտիրոպոլիս։ Արաբական աղբյուրները նրան տալիս են Մուֆարկին կամ Մայաֆարկին անունը, իսկ հայկական աղբյուրներում Մարտիրոսաց (Նահատակների) քաղաք, Մուֆարղին անունների հետ միասին, ավելի հաճախ կոչված է Նփրկերտ։

Հովհաննես կաթողիկոսի մի վկայությամբ Մարտիրոսաց քաղաքը հնուց ի վեր մետրոպոլիտության կենտրոն էր[66]։ Այն դեռևս V դարում բյուզանդական կարևոր ռազմական հենակետ էր՝ ընդդեմ Սասանյան Իրանի։ Հուստինիանոս կայսեր մտցրած վարչական բաժանումներից հետո դարձավ չորրորդ Հայքի կենտրոնը, որտեղ դուքս էր նստում։ Այդ ժամանակ էլ կառուցվում է քաղաքի նոր պարիսպը, որն ուներ 40 ոտնաչափ բարձրություն և 12 ոտնաչափ հաստություն[67]։

Հայ և ասորի խառը բնակչություն ունեցող այս քաղաքում հաստատված եպիսկոպոսն էր ասորի Հակոբիկը, որը 726 թ. մասնակցել է հերձվածողների դեմ ուղղված Մանազկերտի ժողովին[68]։

Մայաֆարկինը հիշատակված է արաբների գրաված քաղաքների թվում[69]։ Իբն-Հաուկալը հիշատակում է Մայաֆարկինը իբրև Հարավային Հայաստանի նշանավոր քաղաքներից մեկը[70]։

Նփրկերտը եղել է արաբական Բաքր ցեղի ամիրայության կենտրոն։

---

62 Տե՛ս «Գիրք թղթոց», էջ 218։
63 Տե՛ս Ռ. Խալաթյանց, Արաբացի մատենագիրները..., էջ 74—75։
64 *Насир-и Хусрау*, Сафарнамэ, стр. 39.
65 *Iacut*, *I*, p. 205.
66 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 63։
67 Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, стр. 142, 168, 173.
68 Տե՛ս «Գիրք թղթոց», էջ 224։
69 Տե՛ս Բ. Խալաթյանց, Արաբացի մատենագիրները..., էջ 127—128։
70 Տե՛ս СМОМПК, вып. XXXVIII, стр. 94.

X դարի վերջերից Բյուզանդական կայսրությունն ուժեղացնում է ճնշումը այդ սահմանամերձ ամիրայության վրա, և դրա հետևանքով Նփրկերտի ամիրա Աբումսարը XI դարի սկզբներին հարկադրված է լինում քաղաքից հեռացնել արաբ բնակիչներին, «մինչև ոչ մնալ Տաճիկ ի Նփրկերտ, այլ հայ և ասորի բնակէր ի նմա»[71]։ Ամիրան ստիպված ճանաչում է բյուզանդական Վասիլ Բ կայսեր իշխանությունը և ենթարկվում նրան։ Բյուզանդիան, սակայն, չկարողացավ ամրացնել իր իշխանությունը Նփրկերտի, ինչպես և Խլաթի ամիրայությունների վրա։

Նփրկերտը Հայաստանի հարավի ամենամեծ և նշանավոր քաղաքն էր, արհեստային արտադրանքի աչքի ընկնող կենտրոն։ Նրա բարեկարգության և շուկաների վերաբերյալ ուշագրավ տեղեկություններ է հաղորդում աշխարհագետ Նասիր Խոսրովը, որը 1046 թ. Խլաթից 28 փարսախ (140 կմ) անցնելով հասել է Մայաֆարկին։ Նա նկարագրելով քաղաքը ասում է. «Քաղաքն ուներ մի մեծ պարիսպ, կառուցված սպիտակ քարից, յուրաքանչյուր քարը մոտ 500 ման (մոտ 5,9 տոննա) և յուրաքանչյուր հիսուն գազի վրա մի աշտարակ էր կառուցված՝ նույն սպիտակ քարից, իսկ պատերի ծայրերին ատամներ են դրված, որ կարծես վարպետը հենց այսօր է իր գործն ավարտել։ Այս քաղաքն արևմտյան կողմից մի դարպաս ունի մեծ քարե կամարով, իսկ դուռը պատրաստված է երկաթից, առանց փայտի»[72]։

Նասիր Խոսրովի նկարագրությունից երևում է, որ հին Տիգրանակերտի մեծամեծ վեմերով կառուցված պարիսպները դեռևս կանգուն էին, իսկ դա բացառված չէ, որովհետև մինչև մեր օրերը տեղում պահպանվում են ոչ միայն միջնադարյան, այլև անտիկ շրջանի պարիսպների մնացորդները։

Նփրկերտից առևտրական մայրուղին անցնում էր Ամիդ, որը գտնվում էր Հայաստանի սահմանը կազմող արևմտյան Տիգրիսի մյուս ափին։ Այստեղ միանում էին Հայաստանի և Միջագետքի վրայով եկող առևտրական ճանապարհները, ապա անցնում դեպի Եդեսիա, Սիրիա, մի ճյուղով էլ Խարբերդի վրայով դեպի Մելիտինե (Մալաթիա), Փոքր Ասիա։

Հարավային մայրուղու վրա գտնվող քաղաքները, բացի Խլաթից և Նփրկերտից ավելի թույլ զարգացած և ավելի փոքր կենտրոններ էին, որտեղ երկրագործությունը, մանավանդ այգեգործությունը շարունակում էր դեռևս զգալի դեր խաղալ քաղաքային տնտեսության մեջ։ Ընդհանրապես պիտի ասել, որ IX—XI դարերում հարավային մայրուղու քաղաքները զիջում էին Բագրատունիների թագավորության միջով անցնող հյուսիսային մայրուղու վրա ընկած քաղաքներին։

Հարավային առևտրական ուղիներից դուրս էին գտնվում Վասպուրականի, Տարոնի և Ծոփքի մի քանի գավառական նշանակություն ունեցող քաղաքներ՝ Ոստանը, Հադամակերտը, Աղթամարը, Կեցանը, Մուշը, Աշմուշատը, Բալուն։

Նկատելի է մի օրինաչափ երևույթ. բոլոր այն քաղաքները, որոնք առևտրական գլխավոր ուղիներից դուրս էին ընկած, մեծ զարգացում չունեցան և մնացին որպես գավառական միջին մեծության ու մանր քաղաքներ։ Այդպիսին

71 ՍՏԵՓԱՆՈՍ ՏԱՐՕՆԵՑԻ, էջ 267—268։

72 *Насир-и Хусрау*, Сафарнамэ, стр. 40—41.

*էին Սյունիքի, Գուգարքի, Վասպուրականի, Տարոնի և Ծոփքի քաղաքները։ Սակայն սխալ կլիներ անտեսել նրանց խաղացած դերը միջնադարյան Հայաստանի արհեստագործության և առևտրի զարգացման, ինչպես և գավառը քաղաքի հետ կապելու գործում։ Ավելին, այդ հարցում զգալի դեր էին խաղում նաև մի քանի տասնյակ գյուղաքաղաքներն ու ավանները։ Ուստի միջնադարյան Հայաստանի արհեստագործության և առևտրի քաղաքային կյանքի զարգացման և մակարդակի մասին մեր պատկերացումներն ավելի ամբողջական կլինեին, եթե խոշոր քաղաքների հետ միասին հաշվի առնվեին նաև մանր քաղաքների, գյուղաքաղաքների, ավանների առկայությունը և նրանց խաղացած դերը։ Բացի այդ, զգալի թվով հայ բնակչություն էր ապրում Աղվանքի, Միջագետքի և Փոքր Ասիայի քաղաքներում, մի հանգամանք, որը մի կողմից՝ ընդլայնում էր հայկական մշակույթի ընդգրկման շրջանակները, մյուս կողմից՝ դյուրացնում էր բուն Հայաստանի տնտեսական և մշակութային կապերը հարևան երկրների հետ։*

## 3. ՔԱՂԱՔԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

*IX—XI դարերում քաղաքը սովորաբար հանդիսանում էր քաղաքի տեր ֆեոդալի նստավայրը և պատկանում էր նրան։ Արաբական տիրապետության ժամանակ քաղաքները թեև ձևականորեն համարվում էին պետական, սակայն, փաստորեն, ենթակա էին կենտրոնական իշխանության կողմից նշանակված ոստիկաններին կամ ամիրաներին, որոնք օժտված էին վարչա-քաղաքական, ռազմական և տնտեսական իշխանությամբ քաղաքի և նրա գավառի նկատմամբ։ Նրանց ենթակա էին քաղաքի հարկահանները, որոնք կոչվում էին ամիլ և շուկայական վերահսկիչները՝ մուհթասիբները։ Քաղաքներում հաստատվել էր նաև դատարան՝ ղադիի գլխավորությամբ։*

*Արաբական տիրապետությունից ազատագրված Հայաստանում IX—XI դարերում քաղաքները սովորաբար պատկանում էին խոշոր ֆեոդալներին՝ իշխաններին, որոնք իրենց ձեռքում էին կենտրոնացրել քաղաքի և նրա գավառի ամբողջ իշխանությունը։ Միայն դատական իշխանությունն էր ենթակա հոգևորականության իրավասության, իսկ տեր-իշխանն ուներ վերահսկողության իրավունք։*

*Այս դրությունը, սակայն, փոխվում է քաղաքային կյանքի զարգացմամբ և քաղաքային դասի ձևավորմամբ։ Քաղաքային դասը, մանավանդ վերնախավը, պայքարի մեջ էր մտնում ֆեոդալ տիրոջ կամ սենյորի հետ՝ ընդդեմ նրա անբաժան տիրապետության և իշխանության ու տակավ առ տակավ ձեռք էր բերում քաղաքային վարչության մեջ մասնակցության իրավունք։ Քաղաքային վարչությունն ընդարձակվում է, ուստի նրա հետագա զարգացումը, բնականաբար, պիտի տաներ դեպի ինքնավարության առաջացումը, որը տարբեր երկրներում ունեցավ տարբեր դրսևորում՝ սկսած քաղաքի տեր ֆեոդալի իշխանության ներքո ձեռք բերված մասնակի ինքնավարությունից մինչև քաղաքային ինքնավար համայնքի ձևավորումը։*

*Ռուսական քաղաքների «վեչե»-ները և կենտրոնական ու արևմտյան Եվրոպայի քաղաքային ինքնավարությունները, ընդհուպ մինչև քաղաք-կոմու-*

*նանները հանրահայտ են, մինչդեռ արևելքի երկրների միջնադարյան քաղաքների ինքնավարության հարցը համարյա մնում է չլուսաբանված, այն ոմանց կողմից նույնիսկ բացառվում է։*

*Քաղաքային վարչության և ինքնավարության առկայությունը միջնադարյան Հայաստանում առաջինը նշեցին Ն. Մառը և Հ. Օրբելին[73]։ Ն. Մառը ամփոփելով Անիի երկար տարիների պեղումների արդյունքները, հայտնեց այն կարծիքը, որ «Անիում առաջանում էր, թերևս առաջացել էր ինքնուրույն քաղաքային կյանք, քաղաքային ավագանու գլխավորությամբ և օրենսդիր իշխանությամբ...»[74]։ Քաղաքային ինքնավարության մարմինը համարվում էր Անիի վիմագիր արձանագրությունների մեջ հաճախ հանդիպող «երիցանի»-ն, որը համեմատության մեջ էր դրվում Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ հանդիպող «ծերք քաղաքին» հասկացության հետ։*

*Այս տեսակետը արժանացավ շատերի հավանությանը, իսկ Հ. Մանանդյանը, նշելով, որ Դվինի քաղաքային ավագանին հիշատակված է IX—X դարերի արաբական աղբյուրներում, հավանական էր համարում, որ Բագրատունյաց դարաշրջանի քաղաքները մեծ մասամբ ֆեոդալների նստավայր էին, գտնվում էին ֆեոդալ տերերի-սենյորների իշխանության ներքո և ունեին սենյորիալ կարգեր։*

*Հ. Մանանդյանի կարծիքը հիմնականում ճիշտ է, որքանով այն վերաբերում է Բագրատունյաց թագավորության շրջանին (IX դարի վերջերից մինչև XI դարի 40-ական թ.) և այդ թագավորության սահմաններում գտնվող քաղաքներին։ Սակայն քաղաքային վարչության և ինքնավարության սկզբնավորումը դիտվում է հենց այդ դարաշրջանում, մասնավորապես այն քաղաքներում, որոնք չէին պատկանում ֆեոդալ տիրոջը և պետական ընդհանուր ենթակայության քաղաքներ էին։*

*Քաղաքային վարչության վերաբերյալ մեզ հասած ամենավաղ տեղեկությունները վերաբերում են Դվինին, որը IX—X դարերում մերթ պետական ընդհանուր ենթակայության, մերթ ֆեոդալ տիրոջը պատկանող քաղաքի անկայուն վիճակ էր ապրում, որը նպաստավոր էր քաղաքային վարչության առաջացման համար։*

*940-ական թվականների սկզբներին, «այր մի արաբացի ազգաւ...» Գողթնի և Նախճավանի վրայով ներխուժում է Արարատյան դաշտը, հասնում մինչև Դվին քաղաքը, հարկեր պահանջելով անգամ Արագածոտնից, որը Աբաս Բագրատունու թագավորության մեջ էր մտնում։ Աբասը օգնություն է խնդրում Գագիկ Արծրունուց, որը վրա հասնելով՝ ջախջախում է թշնամուն և անցնելով Արաքսը, կամենում է հրկիզել Դվինը՝ «մինչև ծերք քաղաքին անկեալ առ ոտս նորա խնդրեն խաղաղութիւն տալով հարկս և պատանդս»[75]։ Ինչպես երևում է, Դվինը կառավարող քաղաքային վարչությունը կազմված էր քաղաքային իշխող վերնախավի ներկայացուցիչներից։*

*Քաղաքային վարչություն էր առաջ գալիս անգամ ֆեոդալ տիրոջը պատ-*

---

73 *Տե՛ս И. Орбели*, Развалины Ани, стр. 26.

74 *Н. Я. Марр*, Ани, стр. 65.

75 Թովմա Արծրունի, էջ *490—491*։

կանող կամ սենյորիալ քաղաքներում, մի կողմից՝ քաղաքային կյանքի բարդացման և նրա կառավարումը կազմակերպելու անհրաժեշտությամբ, մյուս կողմից՝ իբրև անխուսափելի հետևանք քաղաքի իշխող խավերի տնտեսական զորության և հասարակական դիրքի աճման։ Զևավորվող քաղաքում չափազանց սրվում են շահերի բախումները՝ ոչ միայն տարբեր դասակարգերի և դասերի, այլև միևնույն դասի տարբեր խավերի և ներկայացուցիչների միջև։ Բազմադիմի և տևական այս պայքարի հետևանքով քաղաքի տեր ֆեոդալի կամ սենյորի անբաժան իշխանությունն սկսում է առաջին ճեղքերը տալ և մասամբ սահմանափակվել քաղաքային իշխող խավերից կազմվող վարչության առաջացմամբ։ Ինչպես երևում է, այդ բանը տեղի էր ունեցել նաև Անի քաղաքում դեռևս վերջին Բագրատունիների օրոք քաղաքային ավագանու խորհրդի գոյացմամբ, որն աղբյուրներում հայտնի է «աւագք քաղաքին» կամ «գլխաւորք քաղաքին» անուններով[76]։ Համենայն դեպս այդ խորհուրդը արդեն կար, երբ Բագրատունի վերջին թագավոր Գագիկ երկրորդը (1042—1045) մեկնեց Կոստանդնուպոլիս բյուզանդական կայսր Կոնստանտին Մոնոմախի հետ բանակցելու և դավադրաբար զրկվեց իր գահից։ Արիստակես Լաստիվերտցին այս առթիվ գրում է. «իսկ քաղաքացի գլխաւորքն», որոնք նստում էին Անիում, երբ տեսան, որ Գագիկը կալանքի առնվեց հույների երկրում, մեկ խորհեցին քաղաքը տալ Դավիթ Դվնեցուն, որովհետև Դավթի քույրը նրա (Գագիկի) կինն էր, մեկ էլ (կամեցան) տալ Աբխազաց թագավոր Բագարատին[77], որովհետև Բագրատունի տոհմից էր։ Անիի քաղաքային վարչությունը և ինքնավարությունը ավելի զարգացան ու ամրապնդվեցին հետագայում։

Հայաստանում քաղաքային վարչության գլուխ կանգնած էր «քաղաքապետը» կամ «ամիրա քաղաքին» կոչվող պաշտոնյան։ Վարչության կազմի մեջ մտնում էին եպիսկոպոսը, դատավորը, իսկ խառը բնակչություն ունեցող քաղաքներում նաև ղազին, ինչպես և տանուտեր-թաղապետները և ուրիշներ։

Քաղաքային վարչությունը տնօրինում էր, օրինակ այն հարցը, թե քաղաքը ում իշխանությանը պետք է ենթարկվեր կամ ում պետք է պատկաներ, ինչպես նաև բնակչությունից գանձվող հարկերի, քաղաքի ամրությունները կառուցելու և վերականգնելու, ջրամատակարարման, արտադրական և շուկայական հարաբերությունները և այլ հարցեր։

Քաղաքային վարչությունը և ինքնավարությունը նշանակալից հաջողությունների են հասնում ֆեոդալներին անմիջապես չպատկանող և նրանց նըստավայրը չհանդիսացող պետական ընդհանուր ենթակայության քաղաքներում։

Չնայած մեզ հասած կցկտուր տեղեկություններին այդ տեսակետից բնորոշ է Բյուզանդական կայսրությանը ենթակա Արծն քաղաքի օրինակը։

Հայտնի է, որ Արծնը եղել է անպարիսպ մեծ քաղաք, բավականին բազմա-

---

76 Ն. Մառի ենթադրությունը, թե քաղաքային ավագանու խորհուրդը կոչվել է «երիցանի» փաստերով չի հաստատվում. պարզված է, որ «երիցանի» կամ «իրիցանի» անվանվել է հոգևորականությունը։ Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. II, էջ 152—157։

77 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, 1963, էջ 62։

մարդ և ամեն բարիքներով լի արհեստային արտադրության և առևտրի խոշոր կենտրոն։ Բոլոր հիմքերը կան կարծելու, որ Արծնը ունեցել է քաղաքային ինքնավարություն։ Նախ՝ որևէ տեղեկություն չկա Արծնի տիրոջ կամ իշխանի, ինչպես նաև կայսեր կողմից նշանակված պաշտոնյաների մասին։ Ընդհակառակը, բյուզանդական պատմիչ Միքայել Ատտալիատեսը Արծնը անվանում է πολιτεία — պոլիտեիա[78], այսինքն ինքնավար համայնք։

Արծնի մոտ էր գտնվում Կարին կամ Արզրում քաղաքը, որը հզոր պարիսպներ ուներ և որի մեջ նստում էր բյուզանդական զորավարը (ստրատեգը) օժտված կատարյալ իշխանությամբ՝ քաղաքի և նրա գավառի վրա։ Բյուզանդական մի այլ պատմիչ՝ Գեորգիոս Կեդրենոսը պատմում է, որ Կարին (Թեոդուպոլիս) քաղաքում նստող Կեկավմենոս զորավարը և՛ սպառնաց, և՛ խնդրեց, որ արծնցիները, սելջուկների վերահաս վտանգից ազատվելու համար, փոխադրվեն Կարին և պաշտպանություն գտնեն նրա պարիսպների ներսում, սակայն նրանք «չհամաձայնվեցին ապրել պարիսպներից ներս»[79]։ Դրա պատճառը պարզ է՝ Կարին փոխադրվելով կքայքայվեր նրանց ինքնավար համայնքը և նրանք կընկնեին ռազմական, վարչական և տնտեսական իրավասություններ ունեցող ստրատեգի իշխանության ներքո։ Արծնցիները գերադասեցին պահպանել իրենց ինքնավարությունը և հերոսաբար դիմադրեցին սելջուկների հարձակմանը։ Երբ սելջուկ-թուրքերը պաշարեցին Արծնը, քաղաքի բնակիչները՝ «փակելով ճանապարհները և բարձրանալով տների տանիքները, քարերով, փայտերով ու աղեղներով դիմադրում էին հարձակվողներին. և նրանք կռվեցին ամբողջ վեց օր...»[80]։ Բյուզանդական ստրատեգը հրաժարվեց օգնություն ցույց տալ Արծնի բնակիչներին, ասելով «ոչինչ պետք չէ ձեռնարկել թագավորական ցանկությանը հակառակ...»[81]։ Ուշագրավ այս փաստը պետք է բացատրել ինքնավար քաղաքի և կայսերական իշխանության միջև եղած հակասությամբ։

Այս անցքերի մասին հետաքրքիր վկայություններ են թողել նաև Արիստակես Լաստիվերտցին և Մատթեոս Ուռհայեցին։ Վերջինս, անդրադառնալով Արծնի վրա կատարված սելջուկյան արշավանքին, գրում է. «Եւ քաղաքացիքն տեսեալ զզօրս այլազգեացն միաբան ի պատերազմ ելեալ և խմբեցաւ շուրջ զեզերօք քաղաքին սաստիկ և ահաւոր պատերազմ...»[82]։ Այս վկայություններից իմանում ենք, որ Արծնի ինքնավար համայնքը, որը բաղկացած էր շուրջ 150 հազար բնակչից, ուներ և սեփական քաղաքային զորք։ Արաբ հեղինակի հիշատակությունը, որ Արծնից տարված ավարի մեջ կար 19 հազար վահան[83], թերևս ակնարկ է Արծնի քաղաքային զորքի կամ աշխարհազորի թվի մասին։ Այսպիսով, Արծնը 1048 թ. կործանումից առաջ ներկայանում է իբրև միանգամայն ինքնավար համայնք՝ սեփական վարչությամբ և զորքով, ավելի քան մի դարով կանխելով արևմտյան և կենտրոնական Եվրոպայում առաջացած ինք-

---

78 Տե՛ս Attaliatae, Historia, p. 148.

79 Georgius Cedrenus, t. II, p. 577—578.

80 Նույն տեղում։

81 Նույն տեղում։

82 Մատթեոս Ուռհայեցի, էջ 102։

83 Տե՛ս «Из Тарих-ал-Камиль Ибн ал-Асира», стр. 116.

նավար համայնքները։ Եթե Արծնի՝ իբրև ինքնավար համայնքի մասին մեզ հասած տեղեկությունները բացառիկ են, ապա քաղաքային վարչության առկայությունը և ինքնավարության որոշ տարրերի առաջացումը IX—XI դարերում, բացի Դվինից, Անիից, հավաստվում է նաև ուրիշ քաղաքներում, իսկ XII—XIII դարերում այդ երևույթները գտնում են իրենց հետագա զարգացումը և սովորական են դառնում համարյա բոլոր քաղաքների համար[84]։

## 4. ՔԱՂԱՔՆԵՐԻ ԴԵՐՆ ՈՒ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԿՐԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

Քաղաքները, շնորհիվ նրանց մեջ զարգացած արհեստագործության բազմազան ճյուղերի և ծավալուն առևտրի, դարձել էին տնտեսական խոշոր կենտրոններ, ստանալով միաժամանակ հասարակական բարդ կառուցվածք։ Նրանք արդեն մեծ դեր էին խաղում երկրի հասարակական-տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքում։

Արհեստների և առևտրի զարգացումը պայմաններ էր ստեղծում երկրագործական և անասնապահական հումքի վերամշակման ու ավելի լայն չափերով օգտագործման համար. ընդարձակվում էր նաև երկրի ընդերքի հարստությունների օգտագործումը։ Արհեստների լայն ճյուղավորումը, որն ինքնին նշանակում էր աշխատանքի բաժանման խորացում, նպաստում էր արտադրական նորանոր միջոցների, սարքերի և գործիքների ստեղծմանը։

Այսպիսով, արհեստները, լինելով հասարակության արտադրողական ուժերի զարգացման և աշխատանքի բաժանման արգասիքը, իրենք իսկ նպաստում էին թե մեկի և թե մյուսի հետագա առաջընթացին։

Քաղաքների ձևավորումը IX դարում հանդիսացավ հասարակական տնտեսական այն գլխավոր նախադրյալներից մեկը, որոնցով պայմանավորված էր հասարակության անցումը վաղ-ֆեոդալական փուլից դեպի բարձր փուլը՝ զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը։ Առանց ֆեոդալական քաղաքի ձևավորման և հասարակական-տնտեսական դերի, անցումը զարգացած ֆեոդալիզմին տեղի ունենալ չէր կարող։

Ֆեոդալական քաղաքը ձևավորվելով չէր մնում ինքնամփոփ տնտեսական միավոր, այլ բազմազան կապեր էր ստեղծում շրջակա գավառի գյուղաշխարհի հետ։ Դրանք առաջին հերթին փոխանակային կապեր էին քաղաքի և շրջակա գյուղերի բնակչության միջև։ Ըստ որում, քաղաքի հետ հետզհետե կապվում էին ոչ միայն մանր արտադրող գյուղացիները, այլև խոշոր հողատերերը՝ աշխարհիկ ֆեոդալներն ու վանքերը, որոնք քաղաքում իրացնում էին սկզբնապես կախյալ գյուղացիներից ստացած հավելյալ արդյունքը, ապա աստիճանաբար նաև սեփական կալվածներում արտադրված մթերքների և հումքի մի մասը։ IX—XI դարերում, սակայն այս վերջին երևույթը նոր-նոր միայն սկզբնավորվում էր, և նրա ծավալն ու նշանակությունը չի կարելի գերագնահատել։ Փոխանակային հարաբերությունները գյուղի և քաղաքի միջև, իհարկե, միա-

---

[84] Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. II, էջ 157—173։

կողմանի բնույթ չէին կրում. գյուղացին վաճառելով քաղաք բերած իր մթերքն ու հումքը, միաժամանակ ձեռք էր բերում արհեստավորական արտադրանքի զանազան ապրանքներ՝ երկրագործական գործիքներ, լայն սպառման առարկաներ, որոնք ավելի որակյալ էին, բազմատեսակ ու կատարյալ, քան գյուղացին կարող էր առաջարկել գյուղական տնայնագործական արհեստը։ Գյուղի կապը քաղաքի հետ նկատելիորեն նպաստում էր ինչպես գյուղատնտեսական արտադրության, նույնպես և գյուղական բնակչության կենցաղի առաջադիմությանը։

Շրջակա գյուղերի կապը այս կամ այն քաղաքի հետ իր դրսևորումն է գտել հայ մատենագրության մեջ այն իմաստով, որ հաճախ քաղաքը պատկերացվում է իր գավառի հետ միասին։ Դվին կամ Կարս ասելով երբեմն հասկանում էին Դվինը կամ Կարսը իրենց գավառով, օրինակ՝ «Դվնո երկիրը»։

Պետք է նկատել, սակայն, որ այս երևույթն ուներ ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական պատճառներ։ IX—XI դարերում քաղաքները սովորաբար հանդիսանում էին առանձին ֆեոդալական իշխանությունների կենտրոններ։ Ներքին առևտուրը և, ընդհանրապես, տնտեսական կապերը տակավին գավառական նեղ շրջանակներ ունեին։ Տնտեսապես դեռևս իրար հետ սերտորեն կապված չէին երկրի ոչ միայն նահանգներն ու գավառները, այլև քաղաքները. ընդհանուր կամ համազգային ներքին շուկայի, երկրի տնտեսական միասնության մասին՝ զարգացման տվյալ փուլում, խոսք անգամ լինել չէր կարող։ Գավառներն իրենց կենտրոն քաղաքների հետ միասին հանդես էին գալիս ոչ միայն իբրև տնտեսական, այլև քաղաքական ինքնամփոփ միավորներ՝ ֆեոդալական առանձին իշխանություններ, որոնց տնտեսական, քաղաքական և ռազմական հզորությունը ուղիղ համեմատական էր տվյալ գավառի ընդարձակությանը, նրա կենտրոնը հանդիսացող քաղաքի մեծությանը և երկուսի զարգացման աստիճանին ու տնտեսական զորությանը։

Հայտնի է, որ քաղաքների և առևտրի զարգացումը, համազգային շուկայի առաջացումը և երկրի տնտեսական միասնությունը տնտեսական նախադրյալներ են տվյալ երկրի քաղաքական միասնության՝ միավորված պետականության առաջացման համար, իսկ IX—XI դարերում, Հայաստանի տնտեսական զարգացման տվյալ աստիճանում, քաղաքները դեռևս ավելի նպաստում էին ֆեոդալական անջատ-անջատ իշխանությունների առաջացմանը և զորեղացմանը։ IX—XI դարերի Հայաստանում ֆեոդալական իշխանությունների անջատողական ձգտումների համար ավելի հող կար, քան Բագրատունի թագավորների միասնական պետություն ստեղծելու ձգտումների համար, ուստի և երկրում, թեկուզև Բագրատունիներին ենթակա, գոյացել էին չորս հայկական թագավորություններ, անկախ իշխանություններ և արաբական ամիրայություններ։ Երկրի տնտեսական և քաղաքական միասնության առաջացումը մնում էր հետագա ժամանակներին։

Քաղաքային կյանքի զարգացումը Հայաստանում IX—XI դարերում արդեն սկսել էր առաջ բերել հասարակական-տնտեսական զգալի փոփոխություններ և առաջադիմություն։ Մեծապես խորացել էր հասարակության սոցիալական շերտավորումը, քաղաքներում գոյացել էին նոր շերտեր և խավեր։ Իրենց տնտեսական, հասարակական և իրավական վիճակով նկատելի փոփոխու-

թյուններ էին կրել վաղուց գոյություն ունեցող խավերը։ Արդեն կյանքի էր կոչվել հասարակական այն դասը՝ քաղաքացիությունը, որին վիճակված էր հետագայում խաղալու ավելի խոշոր պատմական դեր։ Քաղաքային դասը կարող էր հենարան ծառայել կենտրոնական թագավորական իշխանության համար՝ խոշոր ֆեոդալների կենտրոնախույս ուժերի դեմ պայքարելու գործում, սակայն դա էլ մնում էր հետագա ժամանակներին, քանի որ այդ երևույթի առաջին թույլ նշանները միայն երևացին Բագրատունյաց թագավորության անկման ճակատագրական տարիներին։

Քաղաքների և քաղաքային կյանքի զարգացումը խոշոր նշանակություն ունեցավ մեկ այլ բնագավառում՝ հայ ժողովրդի մշակույթի զարգացման գործում։ Առաջանում են տարրական և բարձրագույն տիպի բազմաթիվ դպրոցներ, մեծանում է գրագետ բնակչության թիվը։ Քաղաքների ծաղկման, մանավանդ քաղաքային դասի առաջացման հետևանքով, կարևոր տեղաշարժեր են նկատվում մտածողության մեջ։ Մշակույթի կրոնա-ֆեոդալական մահիճը այլևս շատ անձուկ էր, և նախկին քարացած դոգմաները IX—XI դարերում տալիս են առաջին ճեղքերը՝ երևում են հայ մշակույթի աշխարհականացման առաջին ծիլերը։ Հայ մշակույթը շուտով պիտի դրսևորվեր իբրև միջնադարյան Հայաստանի առաջադիմած կյանքի, մասնավորապես քաղաքների զարգացման արգասիք. հայ մշակույթի մեջ սկսել էր ձևավորվել քաղաքային մշակույթը։

Քաղաքների զարգացումը խոշոր նշանակություն ունեցավ բնակչության ինքնագիտակցության, ինչպես նաև կենցաղի առաջադիմության գործում։ Ինչ խոսք, քաղաքային կենցաղը, իր որոշ արատավոր կողմերով հանդերձ, ավելի առաջադիմական էր և բարեփոխում էր հնամենի նահապետական կենցաղի մի շարք հետամնաց կողմերը։

Քաղաքների և քաղաքային կյանքի զարգացումը զգալի դեր էր խաղում նաև Հայաստանի ու հարևան երկրների միջև տնտեսական-առևտրական և մշակութային կապերի ընդարձակման ասպարեզում։

Մերձավոր Արևելքի երկրների տնտեսական, առևտրական կապերի մեջ որոշակի տեղ էր գրավում նաև մշակութային արժեքների փոխանակությունը, իսկ այդ ամենին հետևում էր մշակութային կապերի հետագա ընդարձակումը։ Հայաստանը IX—XI դարերում հաղորդակից էր արաբական և բյուզանդական աշխարհի բարձր զարգացած մշակույթին, և հանդիսանում էր Մերձավոր Արևելքի առավել առաջադեմ երկրներից մեկը։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՂԵՔՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 1. ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԵՎ ԴԱՍԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

*Հայկական հասարակությունը IX—X դարերում, ինչպես նշվեց վերևում, թևակոխել էր զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանը և նրա սոցիալական կառուցվածքի մեջ առաջացել էին որոշ փոփոխություններ, սակայն դրանք դեռևս որակական բնույթ չէին կրում։ Առաջվա պես իշխող և ճնշող դասակարգը աշխարհիկ և հոգևոր ֆեոդալներն էին, իսկ ճնշվող դասակարգը՝ գյուղացիությունը, նաև քաղաքի ստորին խավերը։ Ներհակ դասակարգերից բաղկացած այդ հասարակությանը բնորոշ էր դասային կառուցվածքը։ Առանձին դասերի և սոցիալական խմբերի էին բաժանված ինչպես իշխող, նույնպես և շահագործման ենթակա դասակարգերը։*

*Իշխող դասակարգը բաղկացած էր աշխարհիկ խոշոր հողատերերի, մանր հողատերերի և հոգևորականության դասերից։*

*Հայոց թագավորը համարվում էր ամբողջ երկրի գերագույն իշխանավորը (սյուզերեն), որին ենթակա էին բոլոր իշխանները։ Ֆեոդալական հիերարխիայի վերին աստիճանի վրա կանգնած էին գահերեց և գահակալ իշխանները, որոնցից վասալական կախման մեջ էին գտնվում մյուս խոշոր հողատեր իշխանները, օրինակ, Բագրատունիների վասալներն էին Պահլավունիները, Մարզպետունիները, Վեստ Սարգսի տոհմը։*

*Խոշոր հողատերերից տնտեսական կախման մեջ էին գտնվում մանր հողատերերը, որոնք բնակվում էին խոշոր ֆեոդալների տիրույթներում և հողակտորներ էին ստանում նրանցից իրենց ծառայությունների՝ գերազանցապես զինվորական ծառայության դիմաց։ Նրանցից էին կազմված թագավորների և իշխանների զինվորական ջոկատները՝ հայկական հեծելազորը։ Մանր հողատերերը կարծես պայմանական հողատերեր էին, սակայն զինվորական ծառայությունը նրանք կատարում էին ժառանգաբար, ուստի և դարձել էին իրենց հողերի ժառանգական տերերը։*

*Խոշոր ֆեոդալներն ունեին իրենց բերդ-դղյակները, բայց նրանց մի մասը հաստատված էր նաև քաղաքներում։ Այստեղ նրանք վարում էին պետական խոշոր պաշտոններ, այլև ձեռք էին բերում հատուկթաքեր հաստատություն-*

*ներ ջրաղացներ, ձիթհաններ, հնձաններ, բաղնիքներ, հյուրանոցներ, պանդոկներ, իշխանատներ, առևտրական տներ, վարձով կամ կապալով տրվող տներ և կուղպակներ և այլն, որոնք դեպի իրենց էին ձգում շատերին։*

*Մինչև XI դարը իշխաններն էին հանդես գալիս իշխանների, հյուրատուն-պանդոկների տերերի դերում, Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, տվյալ հարցում արտահայտելով Բագրատունիների ժամանակների իրավական հարաբերությունները, քաղաքների, դղյակների հիմնադրման, աշխարհագիր կատարելու, դրամ կտրելու կողքին՝ թագավորի իրավասությունն է համարում նաև մեծ գետերի վրա կամուրջ կանգնեցնելը և «հոգետուն» (պանդոկ), «իշխանաց տուն» կառուցելը. իշխանները կարող էին այդ իրավունքը ձեռք բերել թագավորի թույլտվությամբ[1]։*

*Առանձին իշխող դաս էր հոգևորականությունը։ Դեռևս IV դարում բարձր հոգևորականության ներկայացուցիչները՝ կաթողիկոսական տունը, եպիսկոպոսները, վանքերի առաջնորդները հավասարեցված էին խոշոր ազնվականությանը, իսկ աբեղաները, քահանաները՝ մանր հողատերերին՝ ազատներին։ Վանքերը շատ խոշոր կալվածատերեր էին դարձել։ Նրանք և բարձր հոգևորականությունը՝ կալվածների ընդարձակությամբ, ինչպես և կուտակած հարստություններով, մրցում էին խոշոր ազնվականության հետ։*

*Շահագործվող հիմնական դասակարգը գյուղացիությունն էր, գեղջուկների հոծ զանգվածը, որը հնուց կրում էր նաև շինական անունը։ Ըստ հասարակության դասային կառուցվածքի գյուղացիությունը կազմում էր գեղջուկների դասը, որը երկրի նյութական բարիքների հիմնական արտադրողը լինելով հանդերձ, ստորադաս էր համարվում նույնիսկ քաղաքի ստորին խավերից։*

*IX—XI դարերում նկատելի փոփոխություններ տեղի ունեցան գյուղացիության սոցիալ-իրավական վիճակում, և նրանց ներքին սոցիալական շերտավորումը խորացավ։*

*Աշխարհիկ ֆեոդալների տիրույթի կալվածների և վանքերի անմիջական սեփականությունը կազմող հողերի վրա խոշոր տնտեսության ձևավորումը անխուսափելիորեն առաջացնում էր այդ հողերը մշակող բանվորական ուժի պահանջ։ Այդ պահանջը չէր կարելի լրիվին բավարարել ոչ փոքրաթիվ «ծառաների», ոչ սեզոնային մշակների, ոչ էլ ընդհանուր ֆեոդալական կախման ենթակա, բայց անմիջական անձնական կախումից ազատ գյուղացիների՝ ֆեոդալի օգտին կատարվող պատահական աշխատանքով։ Այսպիսով, առաջանում է գյուղացիության մի մասին հողին ամրացնելու՝ ճորտացնելու տնտեսական անհրաժեշտությունը։*

*Գյուղացիների ֆեոդալական կախման սաստկացման և նրանց մի մասի ճորտացման պրոցեսը սկսվելով IX դարում[2], շարունակվում է հետագա դարերում և ավելի խորանալով իր ձևակերպումն է ստացել Մխիթար Գոշի Դատաստանագրքում, ուր ասված է՝ մարդկային բնությունը (իմա մարդը)*

---

1 *Տե՛ս* Մխիթար Գոշ, *Դատաստանագիրք, էջ 304։*

2 Ս. Պ. Պողոսյան, *Գյուղացիների ճորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում IX—XIII դդ., էջ 129 և հտն.,* Ս. Ь. Հակոբյան, *Հայ գյուղացիության պատմություն, հատ. 2,*

*Արարչից ազատ ստեղծվեց, իսկ տերերին ծառայելը առաջացավ հողի և ջրի պետքերի համար։*

*Այնուհետև Գոշը ցանկալի է համարում, որպեսզի շինականը, թողնելով տերունի հողը, ազատ բնակվի՝ որտեղ որ կամենա։ Բայց եթե տերը չի հանդուրժում նրա փախուստը, ապա իրավասու է բռնությամբ ետ վերադարձնել նրան*[3]*։*

*Ֆեոդալական ընդհանուր կախման ենթակա, բայց անձնական ճորտական կախումից ազատ գյուղացիության հիմնական զանգվածի կողքին ճորտերի հասարակական շերտի առաջացումը նշանավորում էր գյուղացիության հիմնական շերտավորումը պատմական զարգացման տվյալ փուլում։ Գյուղացիության երրորդ շերտը կազմում էին սեփական հողակտորներ ունեցող «հայրենատէր» ազատ համայնքներում ապրող գյուղացիները*[4]*, որոնց թիվը շատ սահմանափակ էր։ Նոր իրադրության պայմաններում նրանք ևս ենթարկվեցին ֆեոդալական ընդհանուր կամ անձնական կախման, քանի որ խոշոր հողատերերը խլում էին նրանց հողերը կամ նրանց բնակավայրերն իրենց հող ու ջրով նվիրաբերում էին վանքերին, որպիսի փաստեր հայտնի են Սյունիքի X դարի սկզբի պատմությունից։*

*Բացի հասարակական իրավական այս հիմնական շերտավորությունից, խորանում էին նաև ունեցվածքային տարբերությունները գյուղացիության յուրաքանչյուր շերտի ներսում։ Կային ունևոր (թուանիկ), միջակ և աղքատ գյուղացիներ։ Աղքատ և ընչազուրկ գյուղացիության մի մասը մշակություն էր անում հողատերերի տնտեսության մեջ, մյուսները շրջելով տեղից-տեղ, պարապում էին սեզոնային մշակությամբ, երրորդները քաղաք էին փախչում՝ ստվարացնելով քաղաքային սևագործ ամբոխի շարքերը։*

*Ֆեոդալական քաղաքի ձևավորման և զարգացման հետևանքով առաջացած քաղաքային դասը («քաղաքականք» կամ «քաղաքայինք») միատարր չէր։ Նրա մեջ մտնում էին արհեստավորները, մանր ու խոշոր առևտրականները, փողատեր վաճառականները, որոնք ոչ միայն ունեին առևտրական տներ և զբաղվում էին մեծագին առևտրով՝ երկրի ներսում ու քարավանային առևտրով՝ երկրից դուրս, այլև միաժամանակ վաշխառուներ էին, ձեռք էին բերում հասութաբեր հաստատություններ քաղաքներում, հողեր, այգիներ և այլ անշարժ ունեցվածք։ Քաղաքային դասի սոցիալական շերտավորումը խորանում էր։ Աստիճանաբար գոյանում էր «մեծատունների» քաղաքային վերնախավը, որը, սակայն, ձևավորվեց XII—XIII դարերում, ուստի նրա մասին հանգամանորեն կխոսվի իր տեղում։*

---

էջ 22—26, 53, 62: *Л. О. Бабаян.* К вопросу о закрепощении крестьян в Армении домонгольского периода, Ереван, 1961, стр. 6 *և հետո։*

[3] *Տե՛ս* Մխիթար Գոշ, *Դատաստանագիրք, էջ 320։ «Ջայս պատշաճ կարծեմ դատաստան ‑զի թողեալ զաշխարհին ազատ ւ ուր և կամեսցի կալ։ Ապա թէ այժմ ոչ ներէ ոք ի տերանցն և բռնադատէ զգնացեալսն անդրէն դառնալ, զկնի մահուան հօրն ազատ են որդիք ծնեալ այլուր և ոչ անդ»* (Մխիթար Գոշ, *Դատաստանագիրք, էջ 320—321)։*

[4] *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 113,* Ներսես Շնորհալի, *Թուղթ ընդհանրական, էջ 1։*

*Քաղաքային բնակչության հիմնական զանգվածը ճնշման և շահագործման ենթակա ստորին խավն էր, որը կոչվում էր ռամիկ։ Դրանք հիմնականում արհեստավորներն էին, մանր առևտրականները, քաղաքներում բնակվող, բայց երկրագործությամբ, մասամբ և անասնապահությամբ զբաղվող բնակչությունը։ Վերջիններս մշակում էին գերազանցապես քաղաքի շուրջը գտնվող արտերը, այգիներն ու պարտեզները։ Սեփական կարիքները հոգալուց զատ իրենց արտադրած մթերքների մի մասը շուկա էին հանում։ Աղբյուրներից երևում է, որ քաղաքները շրջապատված են եղել պարտեզներով, խաղողի և մրգատու ծառերի այգիներով, քանի որ քաղաքային բնակչության աճը նպաստում էր այգիների և պարտեզների տարածությունների ընդարձակմանը։*

*Երկրագործությամբ զբաղվող քաղաքացիներից ոմանք միաժամանակ պարապում էին նաև արհեստով կամ առևտրով։ Երկրագործ բնակչության թիվը զգալի էր մանավանդ փոքր և միջին մեծության քաղաքներում, որտեղ արհեստագործության անջատումը երկրագործությունից շատ չէր խորացել։*

*Քաղաքային բնակչության կորիզը կազմում էր արհեստավորությունը, որը հիմնական արտադրողի դեր էր կատարում, մանավանդ մեծ քաղաքներում։*

*Ամբողջ միջնադարի ընթացքում քաղաքը դեպի իրեն էր ձգում գյուղական արհեստավորներին, որոնք ստվարացնում էին քաղաքային արհեստավորության շարքերը։ Արհեստավորությունն, իհարկե, միապաղաղ զանգված չէր և ենթարկված էր ունեցվածքային նկատելի շերտավորման։*

*Քաղաքային ստորին խավերին էին պատկանում նաև մանր առևտրականները, որոնք թվական գերակշռություն ունեին խոշոր առևտրականների նկատմամբ և զգալի տեղ էին բռնում քաղաքային բնակչության կազմում։ Մանր առևտրականները ջանում էին իրենց ձեռքը գցել երկրագործական, անասնապահական, ինչպես և արհեստավորական արտադրանքի մանրածախ առևտուրը։*

*Գյուղերում, ագարակներում, մանավանդ քաղաքներում կային նաև ֆեոդալական հասարակության դասային կառուցվածքից դուրս գտնվող բնակչության ամենից ավելի ճնշված և իրավազուրկ խավեր։*

*Քաղաքային տնտեսության աճն ու զարգացումը առաջ բերեցին օրավարձով աշխատող սևագործ բանվորների կարիք։ Իսկ այդ կարիքը քաղաքներում ստեղծեց սևագործների ամբոխը*[5]*։ Սևագործ բանվորների պահանջարկը զարգացող քաղաքներում հետզհետե աճում էր՝ դեպի քաղաք ձգելով գյուղի աղքատացած, տնանկ բնակչությանը։ Օրավարձով աշխատող բանվորները հայկական աղբյուրներում անվանված են «վարձկանք»։ Սրանք քաղաքներում կատարում էին ամեն տեսակի աշխատանք*[6] *շինարարության վրա, արհեստանոց-կուղպակներում, առևտրականների խանութներում, պահեստներում, զանազան արտադրական հաստատություններում, հաճախ նաև տնային տնտեսության մեջ, այգիներում ու պարտեզներում։*

---

5 *Տե՛ս К. Маркс, Ф. Энгельс,* Сочинения, том IV, стр. 42.

6 *Տե՛ս* Ս. Ե. Հակոբյան, *Վարձկանները և վարձկանությունը միջնադարյան Հայաստանում։ ՊԲՀ, 1960, № 1, էջ 70—90։* Նույնի *Հայ գյուղացիության պատմությունը, հատ. 2, էջ 193—204։* Բ. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., հատ. 2, էջ 139—143։*

Վարձկաններ եղել են նաև անտիկ աշխարհի, նույնիսկ Հին Արևելքի քաղաքներում, ուստի նրանց վերաբերող հոդված կա Մովսիսական օրենքներում, որը մեջ է բերված Մխիթար Գոշի Դատաստանագրքում, «Մի՛ զլացիր տնանկի և քո կարոտյալ եղբայրների կամ քո քաղաքները եկածների վարձը. նույն օրը հատուցիր նրանց վարձը և թող արեգակը մայր չմտնի նրա վրա, որովհետև տնանկ է և այն է նրա հույսը...»։ Գոշը սահմանում է. եթե գործի տերը նույն օրը չի վճարել վարձկանի ստանալիքը, ապա «դատաստանաւ է աւելի քան որ վարձն իցէ հատուցանել»[7]։ Թովմա Արծրունու շարունակողը նույնպես նշում է, որ վարձկանի վարձն առօրյա է[8]։

XI դարի վերջերին և XII դարի առաջին տասնամյակներում ապրող Դավիթ Ալավկա որդին, պատկերելով վարձկանների թշվառ վիճակը, ասում է, թե գործի տերը մարդկանց վտանգավոր աշխատանքի կամ վտանգավոր ճանապարհ ուղարկելու իրավունք չունի, իսկ եթե ուղարկում է և ճանապարհին փորձանք կամ մահ է պատահում, ապա նա պատասխանատու է։ Այնուհետև ասվում է, եթե գործի տերը զգուշացնում է վտանգի մասին, բայց վարձկանն իր կարիքից ստիպված հանձն է առնում, և գործի տերը կրկին զգուշացնում է և եթե այդ դեպքում մահ է պատահում, նա անմեղ է[9]։

Ուշագրավ է, որ այս օրենքը Մխիթար Գոշի Դատաստանագրքում նկատելի բարեփոխություն է կրել՝ հօգուտ վարձկանների։ Գոշը սահմանում է, որ եթե գործի կամ ճանապարհի վտանգավորության մասին շատերն են վկայում, բայց գործի տերը, այնուամենայնիվ, մարդ է ուղարկում այդ վտանգավոր տեղը և մահ է պատահում, ապա նա տուժածի արյան համար պատասխանատու է. «Թէպէտ և (տուժածը) վարձու իցէ»[10]։

XII դարի հեղինակ Սարգիս Շնորհալին, բնութագրելով վարձկանների վիճակը, ասում է. «զօրն ու ցերեկ կան և մնան յաշխատութեանն խոնջեալք, վաստակեալք և տուայտեալք, սովալլուկք և ծարաւի և առ տարակուսանս մըտացն և զայրացման սրտիցն՝ առ աստուած բողոքեն»[11]։

Վարձկանների սևագործ ամբոխը քաղաքներում չուներ որևէ կազմակերպություն, ընկերություն կամ եղբայրություն, որպիսի հանգամանքը ավելի էր ծանրացնում այս թշվառ խավի վիճակը։ Չնայած դրան, վարձկանների սևագործ ամբոխը ստվարանում էր քաղաքների տնտեսական և արտադրական կյանքի աճին համընթաց։ Ընչազրկված շինականը հարկադրված էր օրվա դառը հացը վաստակել քաղաքում՝ պատահական աշխատանքով։ Շինականը քաղաք էր փախչում, խույս տալով ֆեոդալական կեղեքման և կախման ծանրացումից, հաճախ էլ ճորտական կախումից կամ նրա վտանգից, իսկ քաղաքում նա ազատ էր անձնական, այսինքն ճորտական կախումից։

---

7 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 395։
8 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 508։
9 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 849, էջ 57ա։
10 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 421։
11 Սարգիս Շնորհալի, Մեկնութիւն եօթանց թղթոց..., էջ 151։

Հարկ է նշել, որ վարձկանների սևագործ և անկազմակերպ ամբոխի առկայությունը անխուսափելի և բնորոշ լինելով միջնադարյան քաղաքների համար, դեռևս չէր փոխում քաղաքների ֆեոդալական կերպարանքը։ Օրավարձով աշխատանքը ֆեոդալական կարգերում տեղի ունեցող պատահական բնույթի վարձու աշխատանք էր, որը կիրառվում էր արհեստագործության, առևտրի, շինարարության, սակավ նաև երկրագործության մեջ (վերջին դեպքում գերազանցապես սեզոնային «մշակների» աշխատանքի ձևով) և ենթակա էր ֆեոդալական շահագործման օրենքին, ուստի վարձկանի և վարձողի միջև վարձու աշխատանքի և կապիտալի փոխհարաբերություններ դեռևս չէին առաջանում։

Վարձկաններից քիչ էին տարբերվում մշակները։ Աղբյուրներում, թեև սակավ, բայց հանդիպում է նաև վարձկան ու մշակ սոցիալական խավերի նույնացումը։ Ինչպես երևում է, մշակ տերմինը գործածվել է ավելի լայն՝ աղքատ մարդ իմաստով, որն ուրիշների մոտ վարձվելով, վաստակել է իր ապրուստը։ Ուրեմն վարձկանն էլ կարող էր մշակ համարվել, բայց մշակ տերմինը գործածված է նաև այն աղքատների համար, որոնք վարձվում էին ոչ թե մեկ օրով, այլ պայմանավորված որոշ ժամանակամիջոցով։ Երբեմն մշակը, աղքատ լինելով հանդերձ, զուրկ չէր տուն ու տնտեսությունից և մշակություն էր անում այս կամ այն սեզոնում՝ իր ընտանիքի համար լրացուցիչ ապրուստ վաստակելու կամ ընտանիքի պարտքը մարելու համար։

Վարձկանները և մշակները սովորաբար աշխատում էին գործի տիրոջ գործիքներով, իսկ երբեմն էլ՝ իրենց գործիքներով։ Եթե գործի մեջ տիրոջ գործիքը փչանում էր, բայց ոչ դիտավորությամբ, ապա աշխատավորը նյութական պատասխանատվություն չէր կրում։ Նույն ձևով և գործի տերը նյութական պատասխանատվություն չէր կրում, եթե գործի մեջ փչանում էր վարձկանի կամ մշակի սեփական գործիքը։

Միջնադարյան գյուղերի, հատկապես քաղաքների համար բնորոշ էր նաև մուրացկանների խավի առկայությունը։ «Աղքատ», «կարոտողք», «տառապեալք», «տնանկ» անուններով սովորաբար կոչվել են բնակչության ընչազուրկ խավերը, նաև վարձկաններն ու մշակները։ Դրանց թվում կային և այնպիսինները, որոնք զուրկ էին անգամ պատահական աշխատանքով ձեռք բերվող վաստակից և հարկադրված մուրում էին օրվա հացը։ Այդպիսին էին, մանավանդ, տուն ու տեղից զուրկ տառապյալները, որոնց անպատսպար և սովյալ վիճակին Գրիգոր Նարեկացին հակադրում է ունևորների անկապուտ ճոխությունը և հացի առատությունը[12]։

Միջին դարերում վերապրուկային ձևով պահպանվում էր նաև ստրկությունը, որը, ժամանակի ոգուն համապատասխան, կրում էր գերազանցապես ժամանակավոր բնույթ՝ յոթամյա տևողությամբ։ Տնտեսության մեջ այն նկատելի դեր չէր կատարում, քանի որ միջնադարյան ստրուկները «ծառաներն» ու «աղախիններն» էին, որոնք ծառայում էին առավելապես տերերի տնային տնտեսության մեջ։ Ծառաների վիճակի մեջ ընկնում էին ամենից ավելի ռազմագերիները, նաև դառն աղքատները, պարտապանները[13]։

---

12 Տե՛ս Գրիգոր Նարեկացի, Մատեան ողբերգութեան, Վենետիկ, 1927, էջ 76։

13 Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում, հատ. II, էջ 144—151։

*Ռազմագերիների ստրկացումը անհիշելի ժամանակներից եկող երևույթ էր։ Գերիների բաշխման կարգը, որը գտնում ենք Մխիթար Գոշի Դատաստանագրքում, նույնպես հնի կրկնությունն էր։ Համաձայն այդ կարգի, եթե թագավորը իր զորքով, դրոշակով մասնակցել էր պատերազմին, ապա նրան հասնում էր գերիների կեսը, մյուս կեսն էլ պատկանում էր իշխաններին, հեծելազորին, իսկ եկեղեցուն տրվում էր տասանորդ։ Եթե թագավորը չէր մասնակցել պատերազմին, ապա գերիները բաժանվում էին իշխանների և զորքերի միջև, իսկ թագավորին տրվում էր տասանորդ, եկեղեցուն՝ գերիների հիսուներորդ մասը[14]։*

*Գերիներին կարելի էր գնել փրկավճարով, հակառակ դեպքում նրանք դառնում էին ծառա-ստրուկ և ազատվել կարող էին ծառայության յոթերորդ տարվա ընթացքում։ Դա կոչվում էր «ըստ գնո ծառայութիւն»[15]։*

*Գերիներին ծառա դարձնելու կամ ետ գնելու վերաբերյալ մի ուշագրավ տեղեկություն վերաբերում է ավելի ուշ շրջանին՝ 1161 թ։ Վրաց Գեորգի թագավորը այդ տարին գրավում է Անին, իսկ Խլաթի Շահի-Արմեն Միրանը իր 80 հազարանոց բանակով շարժվում է դեպի Անի և պաշարում քաղաքը, սակայն վրա հասնող վրաց բանակը պարտության մատնելով Շահի-Արմենի զորքերին, 7000 մարդ կոտորում և 2500 գերի է վերցնում, որոնց պատմիչը ուղղակի ծառա է անվանում, որովհետև գերի ընկնելու օրվանից նրանք ծառա էին համարվում։*

*Ինչպես երևում է, թշնամին նույնպես մեծ թվով գերիներ էր տարել, և Գեորգի թագավորը, 40 հազար դահեկան վճարելով, ետ է գնում Անիից գերված քրիստոնյա և այլազգի ծառաներին[16]։ Շահի-Արմենի վեզիրն էլ իր հերթին ուղարկում է 1000 դինար՝ ետ գնելու այնպիսի մուսուլման գերիների, որոնք ոչ ընտանիք ունեին, ոչ էլ փող[17]։*

*Գերու կամ ծառայի փրկավճարը հավասարեցված էր մարդու խեղանդամության համար սահմանված գնին, որը կազմում էր արյան գնի մեկ քառորդը։ Եթե տերը խեղել էլ ծառային՝ կուրացրել, կտրել նրա ձեռքը, ոտքը կամ թափել ատամները, ապա պարտավոր էր ազատել նրան[18]։*

*Ընդհանուր կարգ էր, որ օտար ծագում ունեցող կամ այլադավան գերիները ծառայության յոթերորդ տարում ազատվում էին, եթե հավատափոխ լինելով ընդունում էին գերեվարողի կամ տիրոջ դավանանքը։ Հակառակ դեպքում նրանք մնում էին ծառա-ստրուկ և ենթակա էին վաճառքի, նույնիսկ, եթե խեղանդամ էին դարձել։ Այդ դեպքում կարող էին վաճառվել պակաս գնով[19]։*

*Ծառա կամ աղախին դառնում էին նաև պարտքի տակ ընկած կամ դաժար աղքատության դուռը հասած մարդիկ և նրանց ընտանիքի անդամները,*

---

14 *Տե՛ս* Մխիթար Գոշ, *Դատաստանագիրք, էջ 312։*
15 *Նույն տեղում, էջ 335։*
16 *Տե՛ս* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 226—227։*
17 *Տե՛ս V. Minorsky,* Studies in Caucasian History, p. 91.
18 *Տե՛ս* Մխիթար Գոշ, *Դատաստանագիրք, էջ 343։*
19 *Տե՛ս Նույն տեղում։*

սովորաբար ղավակները։ Նրանք կամ ծառա էին դառնում պարտատիրոջը՝ պարտքի դիմաց կամ ծառայում մեկ ուրիշին, պարտքը վճարելու համար։

«Եթէ աղքատայցէ եղբայրն քո,— ասված է ձեռագրում,— և գինքն ի ծառայութիւն տացէ և դրամ առնու և գիր պարտքն վճարէ, քանզի պարտական և չքավոր (է)... Զ (6) տարի ծառայէ քեզ և է երրորդումն պարգևօք ազատես զնա, զի եղբայր քո է»[20]։ Մխիթար Գոշն էլ ասում է. «պատահի ումեք վաճառել զդուստր իւր ըստ որում և իցէ պատճառի յաղախնութիւն...»[21]։ Այսպիսով, պարտք տալը միջին դարերում ունևորների և վաշխառուների ձեռքին միջոց էր ոչ միայն ղավթելու պարտապանի հողը, այգին և այլ ունեցվածքը, այլև իբրև ծառա կամ աղախին շահագործելու պարտապանին կամ նրա զավակներին։

Հաճախ էլ ծառայության էին դատապարտվում հանցագործները, մանավանդ մարդասպանները, նույնիսկ յուրայինների հետ միասին[22]։

Ծառաներին գնել-վաճառելը, վերավաճառելը արգելված չէր։

Մխիթար Գոշի Դատաստանագրքում սահմանված է, որ եթե ծառան կնոջ հետ էր մտել ծառայության, ապա ծառայության ժամկետը լրանալիս, երկուսն էլ ազատվում էին, իսկ եթե տերը իր ծառային կին էր տվել և երեխաներ էին ծնվել, միայն ամուսինն էր ազատվում, իսկ կինն ու երեխաները մնում էին տիրոջ մոտ։ Նրանք կարող էին ազատվել փրկագնով, իսկ եթե ազատված ծառան միջոց չուներ իր կնոջն ու երեխաներին ետ գնելու և չէր էլ կամենում հեռանալ նրանցից, ապա ստիպված ինքն էլ էր մնում ծառայի վիճակում և այն էլ մշտապես։ Նման դեպքում տերը նրան տանում էր եկեղեցի և «քահանաներով, հավատարիմ վկաներով ու գրով դարձնում էր նրան ծառա հավիտյան»[23]։ Նման ծառան, եթե հետագայում միջոցներ էլ ունենար փրկավճար տալու, միևնույն է՝ իրավունք չուներ ազատվելու[24]։

Այսպիսով, հավիտենական ծառաներ էին դառնում ոչ միայն օտարազգի գերիները, երբ հրաժարվում էին դավանափոխ լինելուց և չէին ազատվում փրկավճարով, այլև նույն դավանանքի ծառաները, որոնք ամուսնացել էին ծառա վիճակում և զուրկ էին յուրայիններին ետ գնելու հնարավորություններից։ Այդուհանդերձ, հարկ է նկատել, որ մշտական ծառաների թիվը աննշան էր, և միջին դարերի համար ավելի բնորոշ էր ժամանակավոր ծառայությունը, որը նույնպես խոշոր դեր չէր խաղում տնտեսության մեջ։

Աղբյուրներից երևում է, որ ծառաների փախուստը տերերից սովորական երևույթ էր։

Կաթողիկոս Ներսես Շնորհալին, 1160-ական թվականներին գրած իր «Ընդհանրական թղթում» երկրի քաղաքների, դղյակների, գյուղերի և ագարակների բնակչությանը՝ երկնային դասերի թվին համապատասխան, բաժանում է ինը դասի. Դրանցից երեքը հոգևոր դասերն են՝ քահանայապետերը։

20 Ս. Ե. Հակոբյան, Վարձկանները և վարձկանությունը միջնադարյան Հայաստանում, էջ 77։
21 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 336։
22 Տե՛ս նույն տեղում, էջ 310—311։
23 Նույն տեղում, էջ 335։
24 Տե՛ս նույն տեղում, էջ 336։

կամ հոգևոր հայրերը, վանականները և քաղաքի ու գյուղի քահանաները, երեքը՝ ազնվականությունը կամ աշխարհիկ իշխող դասերը՝ իշխանները, զինվորները՝ հեծյալ ու հետևակ և պաշտոնյաները (գավառապետներ, տանուտերեր, գործակալներ), մնացած նրեքը կազմում էին գյուղի ու քաղաքի ոչ ազնվական դասերը՝ երկրագործները, վաճառականները, արհեստավորները։

Գյուղական հոծ բնակչությունը և քաղաքների ստորին խավերը կրում էին ֆեոդալական ճնշման ու կեղեքման լուծը։ Սակայն քաղաքացիները «ըստ պայմանի քաղաքականաց» վայելում էին որոշ արտոնություններ, որոնք գալիս էին հին դարաշրջանից։

Մենք ստույգ չգիտենք, թե ինչ արտոնություններ ունեին քաղաքացիները IX—XI դարերում, սակայն հայտնի է, որ նրանք ենթակա չէին ճորտացման։ Բացի այդ, հարկեր ու տուրքեր վճարելով պետությանը և ֆեոդալներին, մասնակցելով քաղաքի ամրությունների կառուցմանը, նրա պաշտպանության գործին, միաժամանակ ազատ էին ֆեոդալների օգտին կատարվող կոռային և այլ պարտավորություններից, ինչպես և անմիջական անձնական (ճորտական) կախումից։

## 2. ԱՇԽԱՏԱՎՈՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՇԱՀԱԳՈՐԾՄԱՆ ՁԵՎԵՐԸ

Նյութական բարիքների հիմնական արտադրողը առաջվա պես գյուղացիությունն էր, թեև զգալի դեր և նշանակություն էր ձեռք բերել քաղաքային արհեստավորների արտադրանքը, բայց և այնպես երկրի տնտեսության հիմնական ճյուղերը մնում էին երկրագործությունն ու անասնապահությունը։

Գյուղացիներից բացի, երկրագործությամբ, մասամբ և անասնապահությամբ, ինչպես նշվեց, զբաղվում էր նաև ավանների, գյուղաքաղաքների, փոքր քաղաքների բնակչության զգալի մասը, անգամ միջին և մեծ քաղաքների բնակչության մի մասը։ Այդուհանդերձ որոշիչը գյուղացու արտադրանքն էր։ Գյուղացիները բնակվում էին գյուղերում կամ շեներում և ագարակներում, հասարակական համակեցության դարերով ձևավորված կարգերով, որոնց հիմքը գյուղական համայնքն էր։ Գյուղական համայնքը ընդգրկում էր ամբողջ բնակչությունը և ուներ իր գեղջավագը[25] (գլխավոր գեղջն, հետագայում՝ ռայիս)[26], որը գյուղի մեծամեծների հետ միասին տնօրինում էր համայնքին վերաբերող հարցերը։ Գյուղի ամենակարևոր խնդիրը հողատիրության և հողօգտագործման հետ կապված հարցերն էին։ Խոշոր հողատերերը իրենց տիրույթների գյուղական համայնքներին տրամադրում էին տվյալ գյուղի սահմաններում գտնվող հողն ու ջուրը, վարելահողերը, մարգագետիններն ու արոտները, որոնց օգտագործման հարցը կարգավորում էր գյուղական համայնքը՝ վարելահողերը բաժանելով գյուղի բոլոր ընտանիքների վրա։ Հողաբաժանությունը կարող էր կրկնվել տարիներ հետո, երբ գյուղի ընտանիքների և բնակչության կազմի մեջ առաջացել էին զգալի փոփոխություններ։ Հողաբաժանության ենթակա չէին այգիները, պարտեզները, որոնք կազմում

---

25 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 415։

26 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 68։

էին տերերի անմիջական սեփականությունը։ Համայնքը տնօրինում էր նաև ջրի բաշխումն ըստ հողաքանակի։ Աղբյուրներից երևում է, որ ջրի քանակը որոշվում էր օրերով, իսկ առվի բացվածքը չափվում էր բահաբերանով։ Մարգագետին-խոտհարքները նույնպես բաժանվում էին նույն հիմունքներով, ինչ որ վարելահողը, իսկ արոտները և գյուղի սահմաններում գտնվող անտառակները, եթե ֆեոդալին չէին պատկանում, օգտագործվում էին առանց բաժանման՝ համայնական եղանակով։

Ամբողջ համայնքի հոգատարության գլխավոր առարկաներից մեկն էլ գետերից և գետակներից առուներ հանելն էր, ջրամբարներ, ամբարտակներ, գյուղի ծայրերին կամ դաշտերում անասուններին ջրելու հարմարանքներ ստեղծելը և դրանց բարեկարգ պահելը։ Հնագույն ժամանակներից մինչև XX դարի սկիզբները հասնող մի սովորությամբ ամեն տարի գարնան սկզբին ամբողջ համայնքի ջանքերով կատարվում էր առուների մաքրում (առվահան), իսկ ջուրը գետից դեպի առուները մղելու համար՝ գետի մեջ պատնեշ էին կանգնեցնում (բանդ կապել)։ Համայնական եղանակով էին կատարվում նաև գյուղի հասարակական կառուցվածքները՝ ջուրը կուտակելու կամ հեղեղատների դեմ կանգնեցվող ամբարտակները, եկեղեցիների շինությունը։ Գերեզմանատունն էլ ըստ ազգակից-արյունակից տոհմերի (ազգ) և գերդաստանների կարգավորում էր համայնքը։

Գյուղացիությունը և գյուղական համայնքները, գտնվելով ֆեոդալների տիրույթներում և օգտագործելով նրանց պատկանող հողերը, ընկած էին ֆեոդալական կախման մեջ և ենթակա էին աքսատնտեսական հարկադրանքի՝ նրանք պարտավոր էին վճարել ոչ միայն հարկեր պետությանը, այլև զանազան տուրքեր կամ հավելյալ արդյունք՝ հողատեր ֆեոդալներին։ Այս պայմաններում գյուղական համայնքի գլխավոր և ծանր պարտականություններից մեկն էլ պետությանը, ֆեոդալներին և եկեղեցուն տրվելիք հարկ ու տուրքերի բաշխումը և գանձումն էր։

Պետությունը, ֆեոդալները և եկեղեցին ըստ տվյալ գյուղի հողերի և ջրի քանակի սահմանում էին իրենց օգտին յուրաքանչյուր գյուղից գանձվելիք հարկ ու տուրքերի չափը։ Գյուղական համայնքը պարտավոր էր դրանք բաշխել գյուղի բոլոր երդերի կամ ծխերի վրա և ապահովել գանձումը, ըստ որում գոյություն ուներ համընդհանուր երաշխիքի պարտավորությունը, համաձայն որի համայնքը ընդհանուր պատասխանատվություն էր կրում գյուղից հեռացած կամ փախածների համար և պետք է նրանցից գանձվելիք հարկ ու տուրքն էլ բաժաներ ամբողջ համայնքի վրա։

Արաբական տիրապետության ժամանակաշրջանում գյուղացիների ճնշումը շատ մեծ էր և շահագործումը պետության կողմից՝ ծանր, իսկ որոշ շրջանում պայմանական հողատիրության հետևանքով կախումը հողատերերից համեմատաբար թույլ էր։ Ժառանգական խոշոր հողատիրության վերահաստատմամբ և նոր հիմունքներով ձևավորմամբ գյուղական համայնքի և ամբողջ գյուղացիության կախումը աշխարհիկ և հոգևոր հողատեր ֆեոդալներից սաստկացավ ու ծանրացավ։

Աշխատավոր բնակչությունը ենթակա էր ծանր շահագործման, որի շա-

փերն ու ձևերը տարբեր էին՝ համապատասխան գյուղական և քաղաքային աշխատավոր բնակչության տարբեր շերտերի սոցիալական վիճակին։

Շահագործման հիմնական ձևերը հարկերն ու տուրքերն էին և աշխատանքային անվճար պարտավորությունները։

Կային երեք կարգի հարկեր և տուրքեր՝ հողատեր ֆեոդալներին վճարվող՝ «աշխարհական», պետությանը վճարվող՝ «արքունական» և եկեղեցուն ու հոգևորականությանը վճարվող հարկեր ու տուրքեր։

Աշխատանքային պարտավորություններն էին կոռը՝ հողատերերի օգտին, և բեկարը, որը պետական-հասարակական բնույթ էր կրում։

Ծորտ գյուղացիությունը բնակվում էր աշխարհիկ հողատերերի և վանքերի սեփական տիրույթը կազմող բնակավայրերում՝ գյուղերում, դաստակերտ-ձեռակերտներում, ագարակներում և կոռային աշխատանք էր կատարում հողատերերի սեփական տնտեսության մեջ։ Նա ուներ իրեն հատկացված հողակտորը, նաև այգի, անասուններ և գործիքներ, բայց նրա վիճակը կախյալ գյուղացու համեմատությամբ ավելի ծանր էր։

Գյուղացիության հիմնական զանգվածը կազմող, ընդհանուր ֆեոդալական կախման ենթակա, բայց անձնական ճորտական կախումից ազատ գյուղացիությունը վճարում էր հարկեր պետությանը և եկեղեցուն, հավելյալ արդյունք՝ հողատերերին։

Ազատ համայնական գյուղացիությունը, որի թիվը, ինչպես նշվեց, աննշան էր, վճարում էր միայն պետական և եկեղեցական հարկեր ու տուրքեր և կատարում էր պետական աշխատանքային (պարհակային) պարտավորություններ[27]։

Բնական է, որ հողատերերը չէին կարող հանդուրժել նման վիճակը և տիրանալով գյուղական այդպիսի համայնքների հողերին, նրանց կախման մեջ էին գցում իրենցից կամ էլ այդ համայնքների հողերը նվիրում էին վանքերին։

Հողատերերը գյուղացիներից քամում էին հավելյալ արդյունքը, որը դրսևորվում էր աշխատավճար, արդյունավճար և դրամական ռենտայի, այսինքն, ֆեոդալների օգտին կատարվող աշխատանքի ու բնամթերքով կամ դրամով նրանց տրվող հարկերի ու տուրքերի ձևերով։

Գլխավոր հողահարկը հնգեկն էր՝ հողից ստացվող ամեն տեսակի եկամտի 1/5 մասը[28], որը վճարվում էր հողատերերին իբրև հավելյալ արդյունք։ Հնգեկը գանձվում էր ջրովի հողերից, իսկ «ոստին» կամ անջրդի հողերից գանձվում էր տասանորդ՝ բերքի 1/10 մասը[29], քանի որ հողատիրության իրավունքը իր մեջ պարփակում էր նաև իրավունքը ջրի նկատմամբ, որը անջրդի հողերի վրա չէր կարող տարածվել։

Ֆեոդալների մասնավոր տիրույթային հողերից անմիջապես հողատիրոջ օգտին վճարվող տուրքերը կոչվում էին «ջարխատ», «խալէ» կամ «խալա» և

---

27 Տե՛ս Ս. Պողոսյան, նշված աշխ., էջ 184։

28 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 314—315։

29 Տե՛ս նույն տեղում։

վճարվում էին բնամթերքով[30]։ Դրանք հողահարկի տարբեր դրսևորումներն էին։

Շարիատը գանձվում էր գյուղերից, հողերից, այգիներից, հացացանքսից, բամբակից և այլ մշակույթներից, նաև անասնակերից, մթերատու անասուններից՝ կաթնամթերքով, բերքի կամ եկամտի 1/10-րդի չափով։ Խալեն, ինչպես երևում է վիմագիր արձանագրություններից, գանձվում էր խաղողի այգիներից և գինուց։

Հողահարկի հետ էր կապված նաև անասնահարկը, որովհետև այն գանձվում էր արոտներից, մարգագետին-խոտհարքներից, որոնք հողերի հետ պատկանում էին ֆեոդալներին։ Մանր եղջերավոր անասուններից իբրև հարկ տրվում էր 1/10-րդը։ Յուրաքանչյուր կովից տրվում էր մի լիտր յուղ[31]։ Խոսրովանուշ թագուհու անունից փորագրված 971 թ. արձանագրությամբ Տեկոր գյուղի կովերից գանձվող յուղի քանակը սահմանված էր կայթ մի, որը հավասար էր 60 լիտրի (մոտ 20 կգ)։ Եթե Գոշի նշած մի կովից՝ մեկ լիտր յուղը ընդունված էր նաև Բագրատունիների ժամանակ, ապա պարզվում է, որ Տեկորը տուրք (բնագրում անվանված է շարիատ) վճարում էր 60 կովի դիմաց, որը միանգամայն հավանական է։

Եզան հարկ չպիտի լինի, որովհետև հնգեկի վրա է աշխատում, ձիու, ջորու և իշու հարկ նույնպես չպիտի լինի, որովհետև նրանցով բազում անգամ աշխատում են տերերի համար[32]։ Գոշը միաժամանակ սահմանում է, որ արոտատեղիի և խոտի հարկ չլինի։ Բայց վկայություն է պահպանվել, որ Բագրատունիների օրոք բնակչությունից գանձվել է «պաշտ խոտ» կոչվող հարկը[33]։

Գոշի Դատաստանագրքում սահմանված հարկերը և նրանց չափերը, ինչպես հնգեկը, նույնպես և անասնահարկերը, գալիս էին շատ հնուց։ Կարելի է նույնիսկ ասել, որ XII դարի վերջերի և XIII դարի առաջին քառորդի այդ նշանավոր գործիչը առանձին դեպքերում ջանացել է թեթևացնել հարկերը կամ ապօրինի համարել սովորութային իրավունքով գանձվող որոշ հարկեր։ Համեմատության համար հիշենք, որ Սմբատ թագավորը 908 թ. արտակարգ հարկադրություն կատարելիս կրկնապատկեց անասնահարկը և հրամայեց ոչ թե տասանորդ վերցնել, այլ «հնգորդել... ձիերի բոլոր երամակները, խոշոր եղջերավոր անասունների նախիրները (բնագրում «զանդեայս արջառոց») և ոչխարների հոտերը»[34]։

Ֆեոդալները գանձում էին տասանորդ եկամտի բոլոր այն աղբյուրներից, որոնք կապված էին հողի հետ, գտնվեին դրանք հողի մակերեսին, թե նրա ընդերքում, այսինքն անտառների, շինանյութի, վառելափայտի, վայրի պտուղների, ներկանյութերի, դեղաբույսերի և այլ նյութերի օգտագործման, ձուկ և

30 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 8, 13, 14, 26։ Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Բ, մաս Բ, էջ 267, հատ. Գ, էջ 174—175։ Ս. Պողոսյան, նշված աշխ., էջ 205, Ս. Հակոբյան, նշված աշխ., հատ. 1, էջ 402—408, Բ. Առաքելյան, նշված աշխ., հատ. Բ, էջ 224—227։

31 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 315։

32 Տե՛ս նույն տեղում, էջ 315—316։

33 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 22։

34 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 258։

կենդանիներ որսալու, զանազան տեսակի հանքեր մշակելու դիմաց։ Ըստ գոյություն ունեցող կարգի, ոսկու հանքերը, որտեղ էլ որ լինեին, պատկանում էին թագավորին, արծաթի հանքերը՝ թագուհուն, թեև այդ կարգը խոշոր հողատերերի պահանջով և թագավորի ու թագուհու համաձայնությամբ խախտվում էր։ Մնացած հանքերը՝ պղինձը, երկաթը, աղը, բորակը, նավթը, կուպրը, ապակին (ապակու հումքը) և այլ նյութերը պատկանում էին հողատեր իշխաններին և դրանցից օգտվողները պարտավոր էին տասանորդ վճարել[35]։

Հողի և ջրի համար տերերին ծառայելը X դարում և հետագայում արտահայտվում էր նաև աշխատավճար ռենտայի կամ կոռային ծանր աշխատանքների ձևով, որ կատարում էին ֆեոդալ հողատերերից անմիջական ճորտական կախման մեջ գտնվող գյուղացիները։

X—XI դարերի աղբյուրների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ հողատերերի տնտեսության մեջ կոռային պարտավորություն կատարում էին ագարակների և ընդհանրապես խոշոր հողատերերին անմիջապես պատկանող մասնատիրական բնակավայրերի բնակիչները։

Աղբյուրներում հիշատակվում են կոռի մի քանի տեսակներ։ Գագիկ Ա թագավորը 992 թ. վերացրել է Շիրակում՝ Անիից ոչ հեռու գտնվող և իր սեփական տիրույթը կազմող Մրեն ավանի բնակիչների կոռային մի շարք պարտավորությունները, որ նրանք պիտի կատարեին նույնպես թագավորին պատկանող Հարևան Նախճավան գյուղում։ «...այս իմ հրամանք են Գագկա Շահանշահի ազատեալ եմ զՄրենոյ զկոռն, որ ի Նախճաւանի էր զմարդոյ և զեզին...»[36]։

Անիի մայր տաճարի պատին, բյուզանդական կառավարիչ Բագրատ Վխկացու փորագրել տված արձանագրության մեջ էլ նշված են «զվեցկէ կոռ, և զսայլի» և «զկամին» կոռերը[37]։

Այսպիսով, պարզվում է, որ անձնական կախման մեջ գտնվող շինականները տերերի համար աշխատում էին անձամբ (մարդու կոռ), իրենց եզներով, վեցկե՝ թեթև գութանով, սայլով, կամով և այլ միջոցներով։ Նրանք վարում, ցանում, մշակում էին տերունի հողերը, փոխադրում, կալսում էին բերքը և կատարում այլ աշխատանքներ։ Կոռի չափի վերաբերյալ տեղեկություն գտնում ենք Մխիթար Գոշի Դատաստանագրքում. «յաւուրս շաբաթու յեօթնէ մին գործիցի իշխանին և տէրունի, այլ աւելի աշխատելն զձեռամբ անկեալն անիրաւութիւն մեծ է»[38]։ «Զձեռամբ անկեալն» այստեղ անմիջական կախման ենթակա ճորտ գյուղացին է, որը հողատիրոջ համար պետք է աշխատեր շաբաթական մեկ օր։ Իրականում այդ կարգը խախտվում էր, և ճորտ գյուղացին տիրոջ համար մի օրից ավելի էր աշխատում։

Բավականաչափ ծանր էին նաև բնակչության վրա բարդվող արքունական հարկերը, որոնց հիմնական մասը կազմում էին զինվորական հարկերն ու պարտավորությունները։

———

35 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 325—327։
36 Ալիշան, Շիրակ, էջ 138։
37 «Դիվան հայ վիմագրության», Ա, էջ 37։
38 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 315։

*Աշխատավոր բնակչությունը կատարում էր զանազան պարհակային պարտականություններ, իսկ պատերազմի ժամանակ՝ զինվորական ծառայություն՝ կազմելով աշխարհազոր[39]։ Միաժամանակ՝ բանակը պահելու և ռազմական ծախսերի համար նա վճարում էր հարկեր։*

*Զինվորական գլխավոր հարկը ջարն[40] էր, որը աղբյուրներում նշված է որպես արքունիքի օգտին գանձվող ամենածանր հարկ, հաճախ անվանված է արքունի ծանրություն և հիշատակվում է արքունի մյուս հարկերի ու պարտավորությունների հետ[41]։*

*Ջար գանձում էին Բագրատունի և մյուս թագավորները, գահերեց և գահակալ իշխանները՝ գյուղերից, հողից, ջրից, այգիներից և եկամտի բոլոր աղբյուրներից։ Ջարից ազատվում էին եկեղեցուն նվիրաբերված գյուղերը, հողերը, այգիները և եկամտի այլ աղբյուրները՝ թագավորի և իշխանների հրամանով[42], քանի որ եկեղեցին ապահարկ էր։*

*Բնակչությունից գանձվում էր մի քանի տեսակ շար՝ մեծ շար, փոքր շար, բերդեր և ամրություններ կառուցելու կամ եղածները բարեկարգ պահպանելու համար՝ բերդաշար[43]։ Աղբյուրներում հիշատակվում է նաև գունդգահ[44] կոչվող զինվորական հարկը։*

*Թագավորները և իշխանները իրենց զորագնդերի զինվորներին, որոնք մանր հողատերեր էին, վճարում էին հող և թոշակ։ Հողը վճարվում էր դրամով կամ գուցե մասամբ դրամով, իսկ թոշակը բնամթերքով։ Ըստ որում այն պետք է բնակչությունից գանձեին իրենք զինվորները, իսկ դա չէր կարող չուղեկցվել կամայականություններով։ Ներսես կաթողիկոսը հորդորում էր զինվորներին. «Ձեզ ավելին չվերցնեք, քան հրամայվածն է և ձեր թոշակով բավականացեք, ոչ էլ ձեր տերերի ինչքից գողացեք»[45]։*

*Արքունական հարկ էր նաև նեպակը կամ նեպուկը, որը հնում վնասակար ճիճուների և միջատների դեմ պայքարելու պարտադիր աշխատանքի բնույթ է կրել[46], իսկ IX դարում հիշատակված է իբրև դրամական հարկ։ 871 թ. Տաթևի վանքին տրվել է Արուքս գյուղը «իւր սահմանովն և արքունի նեպակովն, որ էր 12 դրամ»[47]։*

*Բագրատունիների արքունիքի օգտին, թերևս նրանց անմիջական սեփական տիրույթը կազմող գյուղերից և Անի քաղաքից գանձվել է նաև ինչ-որ հարկ*

---

39 *Տե՛ս* Թովմա Արծրունի, *էջ 224, 228։*

40 *Ջար հարկային տերմինը տարբեր ձևով է հասկացվել՝ ընդհանրապես հարկ, տուրք, հողահարկ և գլխահարկ, ռազմական ծախսերը հոգալու և բանակը պահելու համար վճարվող հարկ և այլն (տե՛ս* Ս. Պողոսյան, *նշված աշխ., էջ 223,* Ս. Հակոբյան, *նշված աշխ., հատ. 1, էջ 380—385,* Բ. Առաքելյան, *նշված աշխ., հատ. 2, էջ 218—224)։*

41 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 181, 292, 303։*

42 *Տե՛ս նույն տեղում, էջ 181, 291—292, 306—307, 330—331։ «Վիմական տարեգիր», էջ 5, 21։*

43 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 330։*

44 *Տե՛ս նույն տեղում։*

45 Ներսես կաթողիկոս, *Թուղթ ընդհանրական, էջ 105—106։*

46 *Տե՛ս* Ս. Հակոբյան, *նշված աշխ., հատ. 2, էջ 57—58։*

47 Ստ. Օրբելյան, *էջ 218։*

թաստակ անունով[48], իսկ երբ Անին նվաճեցին բյուզանդացիները, թաստակը գանձվեց նրանց օգտին։ Անիի բյուզանդական կառավարիչ Ահարոն մագիստրոսի արձանագրության մեջ ասված է, որ Անին վճարում էր պախտ տանց և թաստակ ութ լիտրի չափով[49]։ Պարզված է, որ խոսքը վերաբերում է բյուզանդական միավորներին, ըստ որի մեկ լիտրը հավասար էր 72 բյուզանդական ոսկեդրամի, ուրեմն կայսրությանը վճարվող 8 լիտրը կազմում էր 576 ոսկեդրամ[50]։ Պախտը վճարվում էր տների համար և հազիվ թե նա հողային ռենտա լիներ, ավելի շուտ պախտը գանձվում էր այն տներից, որոնք վարձով չէին տրվում և տիրոջը եկամուտ էին բերում։ Թաստակն էլ էր դրամով վճարվում, սակայն նրա ինչ լինելը դեռևս ստույգ պարզված չէ։



Կավե սափոր, Դվին

Հարկեր և տուրքեր գանձվում էին նաև քաղաքի արհեստավորներից և ամեն տեսակի եկամտաբեր հաստատություններից, ինչպես երևում է, 1/10-րդի չափով։ Դեռևս Սասանյանների օրոք արհեստային արտադրանքից և առևտրից

---

48 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 13, 14, 21։

49 Տե՛ս նույն տեղում, էջ 27։

50 Տե՛ս Հ. Բարթիկյան, Ահարոն Մագիստրոսի արձանագրության (1055—1056) մեջ հիշատակված հարկերի մասին, ՊԲՀ, № 4, 1959, էջ 172։

գանձվում էր բաժ կոչվող հարկը, որը արհեստավորների շահագործման հիմնական ձևն էր։ Բայց բաժը նաև առևտրական անցահարկ էր և իբրև այդպիսին քանիցս հիշատակված է X—XI դարերի վիմագիր արձանագրություններում։ Բաժ գանձվում էր ճանապարհների, կամուրջների վրա, քաղաքի դռների առջև, այս դեպքում այն կոչվում էր դռնագիր։ Աղբյուրների վկայությամբ բաժը գանձվում էր ինչպես սայլով, գրաստով, նույնպես և շալակով քաղաք տարվող մթերքներից և վաճառելիք կամ մորթվելիք անասուններից[51]։ Բաժ-անցահարկ էին նաև ապուռիշին՝ իշաբեռից գանձվող բաժ, ծուծը, մրուրը և կապճիքը[52], որոնք թերևս վաճառքի համար սայլով, գրաստով և շալակով քաղաք տարվող մթերքներից գանձվող բաժ անցահարկերի անուններն են[53]։

Զանազան տուրքեր գանձվում էին նաև քաղաքի այլևայլ պաշտոնյաների՝ քաղաքապետի, մուհթասիբի, իսկ գյուղական վայրերում նաև ձեռնավորների օգտին։

Բնակչության ուսերին ծանրացած էին նաև եկեղեցական տուրքերը, որոնցից գլխավորը պտղին էր՝ ամեն տեսակի բերքի ու եկամտի 1/10-րդ մասը, ուստի կոչվում էր նաև տասանորդ։ Այն սահմանված էր հին ժամանակներից. և կարող էր միայն մասնակի փոփոխությունների ենթարկվել։ Ըստ կանոնագրքի «Ի կալոյ և ի հնձանէ (ճզմվող խաղողի քաղցուից) և յայլոց արմտեաց տասանորդս հանցեն», մորթված անասուններից՝ աջ թևը թիակով, կաշին կամ մորթին, դմակը, սիրտը, լյարդը, երիկամները ճարպով, գլխի մի մասը, լեզուն հետը, փորոտիքը[54]։ Մովսես Կաղանկատվացու մոտ պահպանվել է պտղին վճարելու հետևյալ կանոնը՝ թուանիկը (ունևոր գյուղացին) պարտավոր է վճարել չորս գրիվ ցորեն, վեց գրիվ գարի, 16 փաս քաղցու, տառապյալը (աղքատը)՝ դրա կեսը, իսկ ում որ հող և այգի չկա, նրանից պտղի չպետք է վերցվի։ Ովքեր դրանից ավելի տան՝ բարի գործ կատարած կլինեն։ Անասուններից էլ պետք է տրվեր մի ոչխար, երեք գզաթ բուրդ, մի պանիր, ձի ունեցողներից մի հովանակ (քուռակ), խոշոր եղջերավոր անասուններից՝ մի հորթ[55]։

Գրիվը հավասար էր 10 կիլոգրամի, ուրեմն ունևոր գյուղացին պետք է պտղի տար 40 կիլոգրամ ցորեն, 60 կիլոգրամ գարի, իսկ աղքատը՝ դրա կեսը։

Բացի պտղիից, բնակչությունը եկեղեցուն վճարում էր նաև մասնակի տուրքեր և հասեր զանազան անունների տակ կամ տարբեր առիթներով։

Պտղին կամ տասանորդը եկեղեցին ու վանքերը գանձում էին իրենց թեմի մեջ մտնող բնակավայրերի բնակիչներից քահանաների միջոցով, որոնց հավաքածից տասանորդ տրվում էր վանքերին կամ եպիսկոպոսական աթոռին (եպիսկոպոսական հաս), իսկ թեմերի ստացածից տասանորդ տրվում էր մետրոպոլիտին կամ հայրապետական աթոռին։ Այն գյուղերից, որոնք պատկանում էին վանքերին կամ բարձր հոգևորականությանը, պտղիից բացի, գանձվում էին արքունիքին կամ իշխաններին տրվող հարկեր, բայց դրանք սովորաբար

---

51 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 27։
52 Տե՛ս նույն տեղում, էջ 22։
53 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, նշված աշխ., գիրք 2-րդ, էջ 213—214։
54 Տե՛ս «Կանոնգիրք հայոց», Թիֆլիզ, 1913, էջ 54։
55 Տե՛ս Մովսես Կաղանկատվացի, Պատմություն Աղվանից աշխարհի, էջ 99։

դանձվում էին վանքերի կամ բարձր հոգևորականության օգտին, քանի որ Բագրատունիների օրոք եկեղեցին հարկեր չէր վճարում։

IX—XI և մանավանդ հաջորդ դարերում եկեղեցին զգալի նվերներ ու եկամուտներ էր ստանում նաև «մեղքերի թողության» համար տրվող պատարագներից։

Բազմազան հարկերի, տուրքերի վճարման հետ միասին, աշխատավոր բնակչությունը պետության հանդեպ ուներ նաև աշխատանքային կամ պարհակային պարտավորություններ։ Դրանք բոլորովին տարբեր էին կոռից, որը հողատեր ֆեոդալի օգտին կատարվող աշխատանքը՝ աշխատավճար ռենտան էր։ Պարհակային պարտավորություններն ընդհանուր բնույթի հասարակական հարկադիր ձրի աշխատանքներն էին, որ բնակչությունը կատարում էր արքունիքի կամ իշխանությունների պահանջով[56]։ Այդ աշխատանքներին նա մասնակցում էր ոչ միայն իր բանվորական ուժով, այլև լծկան անասուններով, գրաստներով և գործիքներով։

Այդպիսի աշխատանքներ էին քաղաքների և բերդերի կառուցումը, ճանապարհների, կամուրջների, իջևանների և ամբարտակների շինարարությունը, բնական աղետների՝ հեղեղի, երկրաշարժի հետևանքների վերացումը, զորքերին սպասարկելը և այլն։ Այդ պարտավորությունները բազմանում և ծանրանում էին արտաքին վտանգի, մանավանդ պատերազմի ժամանակ, երբ հարկ էր լինում նորոգել ամրությունները և կառուցել լրացուցիչ ամրություններ, բարեկարգել ճանապարհները, սպասարկել զորքի պահանջները։

Բնակչության պարհակային պարտավորությունները բազմազան էին և բավականաչափ ծանր։ Արքունի հարկերի կողքին, իբրև նրանց հավասար արքունական ծանր պարտականություն, հիշատակված են արքունի «հարկ և բեկար»[57], «զսակ արքունի հարկին և ամենայն բեկարս արքունի»[58] (արքունի հարկերի գումարը և ամեն տեսակի արքունի բեկարները), «արքունական ծանրութիւն և բեկար»[59]։

Այդպիսի պարհակային պարտավորություն էր նաև անգարիոնը (քաղաքի պարսպի և այլ ամրությունների շինարարությունը և նորոգումը), որը հիշատակված է Անիի բյուզանդական կառավարիչ Բագրատ Վխկացու թողած արձանագրության մեջ կոռի հետ միասին[60]։ Որոշ պարհակային պարտավորություններ ամեն տարի պարբերաբար կրկնվելով, ստանում էին արքունիքին վճարվող հարկի բնույթ և կարող էին վճարվել դրամով, որպիսին էր բերդաշարը, կամ բյուզանդական տիրապետության շրջանում հիշատակված անգարիոնը։

Կոռը՝ ֆեոդալական աշխատավճար ռենտան, հողատերերին վճարվող տուրքերը՝ արդյունավճար և դրամական ռենտաները, արքունիքի հանդեպ բնակչության հարկային և պարհակային պարտավորությունները, եկեղեցուն և

---

56 Տե՛ս Ս. Հակոբյան, նշված աշխ., էջ 226, 331։

57 Տե՛ս «Կանոնագիրք հայոց», Թիֆլիս, 1913, էջ 125։ Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 212, 216։

58 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 203, 412։

59 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 178։

60 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 27։

հոգևորականությանը վճարվող տուրքերը իբրև ծանր բեռ իջել էին աշխատավոր ժողովրդի ուսերին և ճնշում ու կեղեքում էին նրան։

Բնակչության կեղեքման միջոց էին դարձել նաև վաշխառությունը, զանազան տուգանքները, կաշառակերությունը, եկեղեցական տարբեր ծեսերը և այլն։ Վաշխով տրվում էր ոչ միայն դրամը, այլև հացահատիկը։ Լաստիվերտցին ասում է, թե Արծնի բնակիչները «վաշխից և տոկոսեաց օրէնք եդան և ցորենոյ բազմապատկութիւն, որով երկիր պղծիւր»[61]։

Չնայած ճնշված վիճակին և հարկային ծանր բեռին, հիմնական արտադրողներն այժմ IX—XI դարերում, արտադրողական ուժերի ավելի բարձր մակարդակի և տնտեսական ընդհանուր վերելքի պայմաններում, ստեղծում էին շատ ավելի մեծ քանակությամբ նյութական բարիքներ, քան վաղ-ֆեոդալական դարաշրջանում։ Օտար տիրապետությունից ազատագրված Հայաստանի հարստությունները մնում էին երկրում, նպաստելով նրա շենության ու բարգավաճմանը։ Արտադրանքի ընդհանուր աճի հետեանքով մեծացել էր գանձվող հարկի ու տուրքի քանակը, սակայն մեծացել էին նաև հիմնական արտադրողների եկամուտները, նկատելիորեն բարձրացել էր նրանց նյութական բարեկեցությունը։

Այս ամենով հանդերձ, գյուղական համայնքների հողերի մի մասի զավթումը աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների կողմից, գյուղացիության կախման սաստկացումը՝ ուղեկցված նրա մի մասի ճորտացմամբ, մեծ քանակությամբ հարկ ու տուրքի վճարումը էլ ավելի էին սրել իշխող և ճնշված դասակարգերի հակամարտությունները։

61 Արիստակես Լաստիվերտցի, էջ 75։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ

# ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ

*Բագրատունյաց թագավորության պետական կարգը քիչ բան ժառանգեց նախորդ դարերից, թեև ժամանակաշրջանի մտայնությամբ համարվում էր Արշակունյաց թագավորության ժառանգորդը. այն միաժամանակ որոշ ազդեցություն էլ կրեց Արաբական խալիֆայությունից։ Բագրատունիները պահպանեցին անցյալի մի շարք պաշտոնների անունները՝ «մարզպան», «իշխանաց իշխան». բացի դրանցից, բավական հարազատ էին իրանա-արաբական միջավայրից փոխ առնված «շահնշահ» և «ոստիկան» տիտղոսները։*

## 1. ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Բագրատունյաց ժամանակաշրջանի պետական կարգը ընդհանրապես և թագավորի իրավունքները մասնավորապես ժամանակի ընթացքում կրել են որոշ փոփոխություններ, որոնք հետևանք էին երկրի կյանքում տեղի ունեցած քաղաքական վայրիվերումների։*

*Հայոց թագավորության գլուխ էր կանգնած Բագրատունի թագավորը, որի իշխանությունը սկզբնական շրջանում (Աշոտ Ա և Սմբատ Ա) գրեթե բացարձակ էր։ Նա էր տնօրինում երկրի քաղաքական ու տնտեսական կյանքը, և բոլոր իշխաններն ու եկեղեցին նրան ենթակա էին։ Աշոտ Ա-ի և Սմբատ Ա-ի օրոք Բագրատունի թագավորի գերիշխանությունը, Հայոց թագավորությունից զատ, տարածվում էր նաև Վրաց և Աղվանից երկրների մի մասի վրա։ Դա գալիս էր Աշոտ Բագրատունու իշխանաց իշխան եղած ժամանակներից, երբ գոյություն ուներ Արմինիա ոստիկանությունը։ «Բայց քանզի հաւատացեալ էր վերակացութիւն աշխարհիս Հայոց Աշոտի, իշխանաց իշխան՝ ձեռն ի գործ արկեալ նուաճել զիշխանս Հայոց, զՎրաց և զԱղուանից, որ եղև իսկ»[1], գրում է Թովմա Արծրունին։ Օրինակ, վրաց Բագրատունի իշխան Ատրներսեհին թագավոր օծեց Սմբատ Ա։*

---

1 Թովմա Արծրունի, էջ 335։

*Թագավորական իշխանության ձեւակերպումը տալիս է Գագիկ թագավորը, որը բողոքելով իշխանների դավաճանության դեմ, ասում է կայսրին. «Տէր և թագաւորն ես եմ Տանն Հայոց», Ուռհայեցի, էջ 95։*

Բագրատունի թագավորը ինքնակալ միապետ էր, անձամբ էր լուծում պետական գործերը և միայն որոշ դեպքերում էր խորհրդակցում սպարապետի, կաթողիկոսի, իշխանաց իշխանի կամ այլ մեծամեծ պաշտոնյաների հետ։ Բագրատունյաց Հայաստանում թագավորի գերագույն իրավունքը հողի նկատմամբ մասամբ պահպանված էր, և ամբողջ հողային տարածությունը ձևականորեն (իրավականորեն) համարվում էր պետական սեփականություն։ Սմբատ Ա թագավորը Նախճավանը նախ հանձնեց Արծրունյաց իշխանին, ապա, վերցնելով նրանից, պարգևեց Սյունյաց իշխանին։ Թագավորը իր ժամանակին խոստացել էր Արծրունյաց Աշոտ իշխանին տալ «քաղաքս, գաւառս, դեօղս և ագարակս»[2]։ Ապստամբ կայսիկներին ճնշելուց հետո, Սմբատ թագավորը նրանց ստիպեց վերադարձնել Երիկավ ամրոցը, որ նրանք խլել էին Բերկրիի տիրոջից[3]։

Գերագույն հողային իրավունքը մասամբ գործադրվում էր Աշոտ Ա, Սմբատ Ա և Աշոտ Բ թագավորների օրոք, իսկ հետագայում այն փաստորեն կորցրեց իր ուժը։

Սմբատ Ա-ի մահվանից հետո և, մանավանդ, Աշոտ Գ-ի ժամանակվանից Հայոց թագավորի և նրա ստորադրյալների փոխհարաբերությունները այլ բնույթ ստացան։ Թագավորն այլևս չուներ բացարձակ իրավունքներ խոշոր իշխանների նկատմամբ։ Հայաստանում գոյություն ունեցող մանր թագավորները հաճախ ձևականորեն էին ենթակա Բագրատունի թագավորին, ինչպես, օրինակ, Վասպուրականի տիրակալները։ Ավելի ենթակա էին Կարսի, Տաշիր-Ձորագետի և Սյունյաց տեղական թագավորները։ Այս մանր տիրակալների նկատմամբ թագավորի գերագույն հողային իրավունքը գործադրվում էր բացառիկ դեպքերում։ Այսպես, Գագիկ Ա հարձակվեց Տաշիր-Ձորագետի Դավիթ թագավորի վրա[4], կամենալով զրկել նրան բոլոր հողերից, բայց իրեն հպատակեցնելուց հետո գրաված հողերը կրկին վերադարձրեց նրան։ Գագիկ թագավորը պատժիչ արշավանք ձեռնարկեց նաև Սյունյաց իշխանների դեմ և բերդեր գրավեց Վայոց ձորում[5]։

Հայաստանի շահնշահին ենթարկվում էին երկրի բոլոր գավառական թագավորները, որոնք իրենց իշխանության հաստատումը նրանից էին ստանում։ Այնուամենայնիվ, Վասպուրականի, Սյունյաց, Կարսի և Տաշիր-Ձորագետի թագավորները շատ բանով ինքնուրույն էին, և սա առիթ տվեց Բագրատունի թագավորներին նոր ուղիներ որոնել՝ իրենց իշխանությունը ամրապնդելու համար։ Աշոտ Գ-ից սկսած հայ թագավորները սկսեցին ազատների (մանր ազնըվականության) միջավայրից առաջ քաշել նոր իշխանական տներ։ Աննշան դիրք ունեցող որոշ իշխանական տներ, օրինակ, Պահլավունիներն (Ապուղամրենք) ու մասամբ Ապիրատյանները, շուտով բարձր դիրքի տիրացան։ Տոհմիկ հին իշխանական տների նկատմամբ ունեցած անվստահությունը Բագրատունի

2 Թովմա Արծրունի, էջ 397։ Խ. Սամվելյան, Հին հայ իրավունքի պատմություն, հատ. 1, էջ 173։

3 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 396։

4 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 279—280։

5 Տե՛ս նույն տեղում, էջ 256։

թագավորներին մղում էր նոր ազնվականություն ստեղծելու, որը սերտորեն կապված լիներ արքունիքին, ինչպիսին իրոք եղան Պահլավունիները։

Մեզ է հասել Աշոտ Ա-ի և ընդհանրապես Բագրատունի թագավորների թագադրման նկարագրությունը[6]։ Հայոց մայրաքաղաքի մայր տաճարում թագավորական զգեստներ հագած արքան կանգնում էր խորանի առջև, որտեղ արծաթե սկուտեղի վրա դրված էր թագը և ծիրանի պատմուճանը։ Հայոց կաթողիկոսը, բռնելով նրա աջ ձեռքից որոշված սաղմոսների ու օրհներգերի հընչյունների տակ դարձնում էր նրան դեպի իշխաններն ու ժողովրդի բազմությունը, ապա կրկին դարձնելով դեպի սեղանը, արքայի ուսին էր գցում ծիրանի պատմուճանը։ Վերջապես, արքայի ճակատը մեռոնով օծելուց հետո, կաթողիկոսը թագը դնում էր նրա գլխին, հայտարարելով, որ վերականգնվել է Թորգոմի[7] տան թագավորությունը։

Անիի Բագրատունի թագավորների տարազը բավականաչափ ճոխ ու շքեղ լինելով հանդերձ, միատեսակ չէր, հայկականի կողքին նրանք օգտագործում էին թե բյուզանդականը և թե մանավանդ արևելյան-արաբականը։ Վերջինիս լավագույն օրինակն է Անիում գտնված Գագիկ Ա-ի արձանը, որտեղ Հայոց թագավորն ունի երկար պատմուճան, գլխին ապարոշ (չալմա), իսկ կծքին՝ խաչ[8]։ Նման տարազ էին հագնում նաև Բագրատունյաց Հայաստանի մյուս մանր թագավորները։ Հաղբատի քանդակում Սմբատ Բ-ի գլխին գոհարազարդ թագ կա։ Թագավորն օգտագործում էր համակ ոսկե ակնազարդ կամար[9], Հայոց թագավորները մարգարտով ընդելուզված ոսկե խույր էին տալիս նաև իրենց կարգած՝ ենթակա թագավորներին[10]։

Բագրատունի թագավորության զինանշանը արծիվն էր, ինչպես եղել էր նաև Արշակունյաց և նրան նախորդող Արտաշեսյան ժամանակաշրջաններում[11]։

Բացի «թագավոր Հայոց» տիտղոսից, որին այս շրջանում բառացիորեն համապատասխանում էր արաբերեն «Մալիք ալ-Արման» ձևը, Հայոց թագավորը կոչվում էր նաև «Թագավոր Հայոց և Վրաց», որի արաբերեն ձևը գտնում ենք արաբ պատմիչ Իբն Զաֆիրի մոտ՝ «Մալիք-Արմինիա ուա Ջուրզան»[12]։

Բյուզանդական կայսրությունը, թեև ճանաչել էր հայկական պետությունը և նրան սիրաշահելու համար բարեկամական հարաբերություններ էր սկսել, այնուամենայնիվ, Հայոց տիրակալներին թագավոր չէր կոչում։ Ըստ Հովհաննես Դրասխանակերտցու, երբ Աբբասյան խալիֆան թագ ուղարկեց Աշոտ Բագրատունուն և նրան թագավոր ճանաչեց, Բյուզանդիայի Վասիլ կայսրը բարեկամական նամակ հղեց Աշոտ Բագրատունուն, նրան կոչելով «որդի սիրելի»[13]։

---

6 Այս տեղեկությունները Ղ. Ալիշանը քաղել է մի հին ձեռագրից, որի մասին, դժբախտաբար, ոչինչ չի ասում։ «Յուշիկք հայրենեաց Հայոց», Ա, էջ 439—442։

7 Թորգոմը հայերի նախահոր՝ Հայկի հայրն էր համարվում։

8 Տե՛ս Առաքել Պատրիկ, Հայկական տարազ, Երևան, 1967, էջ 26—27 (տախտակ 18)։

9 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 244։

10 Տե՛ս նույն տեղում, էջ 254։

11 Տե՛ս Հացունի, Հայ դրոշները պատմության մեջ, էջ 33—38։

12 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, էջ 152։

13 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 78։

Կոստանդին Ծիրանածինի «Արարողութեանց մասին» գրքից երևում է, որ կայսրությունը չէր ուզում ճանաչել Բագրատունիների «թագավոր» տիտղոսը, այլ սոսկ «իշխանաց իշխան» էր կոչում նրանց, քանի որ, ըստ բյուզանդական արքունիքի մտայնության, քրիստոնյա աշխարհում թագավոր կարող էր կոչվել միայն «Հռոմեական (հոռոմների) կայսրը», թեև Մատթեոս Ուռհայեցու մոտ պահպանված նամակում Հովհաննես Չմշկիկը Աշոտ Գ-ին անվանում է «Աշոտ Շահնշահ Հայոց Մեծաց և իմ հոգևոր զավակ»։

Վարդան պատմիչը Սմբատ Բ-ին է կոչում «տիեզերակալ», թեև այդ մեծադղորդ տիտղոսը նրան չէր պատշաճում։ X—XIII դարերի մի ձեռագրի հիշատակարանից պարզվում է, որ առաջին անգամ տիեզերակալ է կոչվել Սմբատ Ա[14] («...Աբասայ թագաւորի որդւոյ Սմբատայ Տիեզերակալի...»)[15], որն իր թագավորության սկզբնական շրջանում կարողացավ ոչ միայն ամբողջ Հայկական լեռնաշխարհը հպատակեցնել, այլև որոշ հարևան երկրներ։ Ինչպես երևում է, Սմբատ Ա-ից հետո Բագրատունի թագավորների իրավասությունների սահմանները որոշ չափով կրճատվեցին։

Բագրատունի թագավորների ամենաընդունված անվանումն էր «շահնշահը» (արքայից արքա), քանի որ դա հատուկ քաղաքական բովանդակություն ուներ։ Աշոտ Բ-ն այս տիտղոսն ստացավ այն ժամանակ, երբ արդեն իր իշխանությունը բավական ամրապնդել էր։ Շահնշահ տիտղոսը մեծ չափով տարածված էր X դարի ձևականորեն խալիֆայության մաս կազմող իրանական պետությունների ներսում և հավանաբար այդ միջավայրից էր, որ նա մուտք գործեց Հայաստան, դառնալով Բագրատունի թագավորների գերիշխանության խորհրդանշանը Հայաստանի մանր տիրակալների նկատմամբ։ Հայկական վիմագիր արձանագրություններում Գագիկ Ա հաճախ է իրեն կոչում «Շահնշահ Հայոց և Վրաց»[16]։

Բագրատունիների թագավորության անկումից (1045) հետո, նրանց տոհմի փոքր թագավորները շարունակում էին այդ տիտղոսը կրել։ Մատթեոս Ուռհայեցին, խոսելով Կարսի Աբաս թագավորի և նրա որդի Գագիկի մասին, երկուսին էլ շահնշահ է կոչում[17]։ Հավանաբար Տաշիր-Ձորագետի թագավորներն էլ էին այս տիտղոսը կրում և նրանց միջոցով է, որ այն որպես անձնանուն հետագայում անցավ Զաքարյաններին։

Բագրատունի թագավորի գահը ժառանգում էր ընդհանրապես ավագ որդին, բայց հաճախ նաև եղբայրը[18], և այս սովորույթը արյունահեղությունների պատճառ էր դառնում։ Սա բնորոշ էր միջնադարյան Արևելքի այդ ժամանակաշրջանի՛ն և ավելի շեշտված ձևով արտահայտվեց Աբբասյան խալիֆաների օրոք։

Միջնադարյան Հայաստանում եկեղեցին մեծ մասնակցություն ուներ երկրի կառավարման գործում։ Բագրատունի թագավորների համար եկեղեցու նշանակությունը մեծացավ X դարի կեսերից, երբ հայոց թագավորի իշխանությունը

14 Տե՛ս Վարդան, էջ 122։

15 Գ. Յովսէփեան, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 172։

16 «Դիվան հայ վիմագրության», I, էջ 35, 48։

17 Տե՛ս Մատթէոս Ուռհայեցի, էջ 150—155։

18 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 300։

հեռավոր գավառների վրա հաճախ ձևական բնույթ էր կրում։ Եկեղեցին իր միաձույլ կազմակերպությամբ ապահովում էր Հայկական լեռնաշխարհի միասնականությունը և որպես Բագրատունի գահի հավատարիմ հենարան բարձրացնում էր նրա հեղինակությունը։ Բոլոր եպիսկոպոսական վիճակները ենթակա էին հայոց կաթողիկոսին, որն իր հերթին ճանաչում էր թագավորի գերիշխանությունը։ Բագրատունի բոլոր տիրակալները ձգտում էին օգտագործել եկեղեցու հեղինակությունը։ Առաջին Բագրատունիների օրոք, կաթողիկոսարանը դեռ Դվինում էր, սակայն այս քաղաքի անապահով վիճակը կաթողիկոսին ստիպեց հեռանալ, իսկ մեծ հավակնություններ ունեցող Գագիկ Արծրունին սիրով հյուրընկալեց նրան։ Որոշ ժամանակ հայոց կաթողիկոսները մնացին Աղթամարում, սակայն Աշոտ Գ-ի օրոք, երբ Անին դարձավ մայրաքաղաք, Անանիա Մոկացի կաթողիկոսը Անիի մերձակայքում գտնվող Արգինան վերջնականապես նստավայր դարձրեց, և այնտեղ էլ մնացին հայոց կաթողիկոսները երկար ժամանակ։

Բագրատունյաց ժամանակաշրջանում ընդհանրապես չի նկատվում Արշակունյաց ժամանակաշրջանին այնքան բնորոշ հակասությունը՝ թագավորական իշխանության և եկեղեցու միջև։ Ընդհակառակը, Բագրատունի թագավորներն ամեն կերպ ձգտում էին ուժեղացնել եկեղեցին, իսկ վերջինս իր հերթին, վայելելով Բագրատունի թագավորների հովանավորությունը, զորեղանում էր և նորանոր կալվածների տիրանում։ Հայոց թագավորի խոսքը վճռական էր կաթողիկոսական ընտրության ժամանակ, օրինակ, Ասողիկի վկայությամբ Գագիկ Ա կաթողիկոս կարգեց («կացոյց կաթողիկոս») Տեր-Սարգսին[19]։

Հայկական թագավորները և իշխանները խնամիական կապեր[20] էին հաստատում[21] միմյանց կամ բյուզանդական ու վրաց իշխանազունների հետ։ Թագավորները երբեմն այս խնամիական կապերն օգտագործում էին քաղաքական նպատակների և կամ կենտրոնախույս ձգտումներ ունեցող իշխաններին արքունիքի հետ մտերմացնելու համար։

Հայոց արքունիքն ուներ իր ընդունված կարգը։ Իշխաններն իրավունք չունեին թագավորական զգեստներ հագնել առանց արքայի թույլտվության։ Արքունիքում թագավորի ներկայությամբ նստելու կամ նրա հետ սեղան բազմելու իրավունք ուներ միայն կաթողիկոսը, իսկ իշխանները կարող էին նստել կամ թագավորի սեղանին մասնակցել միայն նրա հրամանով[22]։

## 2. ԱՐՔՈՒՆԻ ԵՎ ԱՅԼ ՊԱՇՏՈՆՆԵՐ

Իշխանաց իշխանի պաշտոնը Բագրատունյաց Հայաստանը ժառանգեց արաբական ժամանակաշրջանից, սակայն այժմ նրա բնույթը մասամբ այլ էր։ Եթե արաբական շրջանի իշխանաց իշխանը ոստիկանի փոխանորդն էր, իսկ իրականում Հայաստանի կառավարիչը, ապա Բագրատունյաց շրջանում այս կոչումն ունեցող պաշտոնյան համեմատաբար ավելի քիչ դեր ուներ երկրի կա-

19 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 258։
20 Տե՛ս Վարդան, էջ 122։
21 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 256։
22 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 304—305։

ռավարման գործում։ Իշխանաց իշխանը թեև Հայոց թագավորի ներկայացուցիչն էր համարվում և նրա փոխանորդը, սակայն պատմիչները հազիվ են հիշում նրանց, և նույնիսկ չգիտենք Բագրատունյաց ժամանակաշրջանի իշխանաց իշխանների լրիվ ցուցակը։ Առաջին Բագրատունիների օրոք այս պաշտոնը տրվում էր թագավորական տան անդամներից որևէ մեկին։ Աշոտ Ա-ի օրոք նրա որդի Սմբատն էր իշխանաց իշխանը, իսկ նրանից հետո մյուս որդին՝ Դավիթը[23]։ Մանսատվածության շրջանում այս պաշտոնը վարում էին Պահլավունիները, ինչպես Վահրամ Պահլավունին՝ Գագիկ Ա-ի օրոք։

Իշխանաց իշխանի պաշտոնը գոյություն ուներ նաև գավառական թագավորություններում, օրինակ, Աբլղարիբը՝ Վասպուրականում։ Տաշիր-Ձորագետում իշխանաց իշխան էր Մուկը[24], իսկ հետագայում՝ Պահլավունի Շապուհիկը[25]։ Սյունիքում Վասակ թագավորի եղբայր Սևադան «ազատակույտ զօրաց» իշխանաց իշխան էր[26]։ Վերջիններս ենթարկվում էին կենտրոնական իշխանությանը։

Իշխանաց իշխանի[27] նշանակումը հատուկ արարողությամբ էր կատարվում։ Նա նվեր էր ստանում արագավազ երիվարներ, գեղեցիկ զարդարված պերճապաճույճ զգեստներ, իսկ մեջքին կապում էին ակնազարդ կամար[28]։

Իշխանաց իշխանը, որի պաշտոնը հիշեցնում է Արշակունյաց ժամանակաշրջանի հազարապետին, գլխավորում էր Հայաստանի բոլոր իշխաններին։ Նրան էին ենթարկվում գավառապետ բերդապահ իշխաններն ու քաղաքապետերը և վերջիններիս օգնական շուկայի հսկիչները (մուհթասիբները)։ Նա էր կառավարում երկրի հարկերի հավաքման գործը։ Ամեն մի նահանգի իշխան ինքն էր նշանակում հարկահաններին, որոնց հավաքած գումարը հասցնում էին մայրաքաղաք՝ արքունի գանձարանը։ Իշխանաց իշխանի պաշտոնը մասամբ կրում էր նաև ռազմական բնույթ, նա պատերազմի դեպքում սպարապետի հետ միասին գլխավորում էր հայոց զորքը։

Բագրատունյաց արքունիքն ուներ իր դիվանատունը, որը սերտ հարաբերությունների մեջ էր Աբբասյան խալիֆայության, Բյուզանդական կայսրության, ինչպես նաև հարևան մանր պետությունների հետ, իսկ երկրի ներսում՝ հայ իշխանների հետ։ Հայոց թագավորությունն ուներ իր հատուկ սուրհանդակները և դեռ IX դարում Հայաստանում արդեն գոյություն ուներ նամակները կավե կլոր ամանների մեջ տանելու («ի մէջ բդիդի պահարանեալ»)[29], սովորությունը, որի մասին է վկայում Թովմա Արծրունին։ Հայոց թագավորի ուղարկած նամակները կոչվում էին՝ հրովարտակ, գիր, թուղթ, շրջաբերական թուղթ, իսկ նրա ներկայացուցիչը, որ այն տանում էր՝ դեսպան, կամ երբեմն նույնիսկ քարտուղար։ Թագավորի տված պայմանագիրը կոչվում էր «յետկար երդման»,

23 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 244։

24 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Հաղբատ, էջ 214։

25 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 24։

26 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 301։

27 Երբեմն իշխանաց իշխան էին կոչվում նաև խոշոր նահանգների գահերեց իշխանները, ինչպես օրինակ, Սյունյաց գահերեցը և այլն։ Սա արդեն նշում էր նրանց դիրքը և ոչ թե պաշտոնը։

28 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 249։

29 Թովմա Արծրունի, էջ 354։

*իսկ հաշտության պայմանագիրը՝ «ուխտ խաղաղութեանն»։ Մեզ է հասել Աշոտ Ա թագավորի արաբերեն կնիքը՝ Աշութ իբն Սինբաթ[30] գրությամբ, որը, սակայն հայտնի չէ նրա իշխանապետության շրջանի՞ց է, թե՝ թագավորության։*

*Հայկական թագավորությունը դիվանագիտական կապեր էր պահպանում Աբբասյան արքունիքի և Բյուզանդական կայսրության հետ՝ բանագնացություններով, մանավանդ, նամակագրությամբ։*

*Հովհաննես Դրասխանակերտցին իր գրքում ամբողջովին մեջ է բերում Պոլսի Նիկողայոս պատրիարքից ստացված նամակի և Կոստանդին կայսրին իր գրած նամակի պատճենները (հայերեն թարգմանությամբ), որոնք շատ հետաքրքրական են որպես Բագրատունյաց ժամանակաշրջանի դիվանագիտական հավաստի փաստաթղթեր[31]։ Այս ժամանակաշրջանին են վերաբերում նաև նույն Նիկողայոս Միստիկոս պատրիարքի երկու այլ նամակները՝ հայոց թագավորին և կաթողիկոսին, որոնց հունարեն բնագրերն են մեզ հասել[32]։*

*Բագրատունի թագավորներն իրենց հրովարտակները, հրամաններն ու կարգադրությունները քանդակել էին տալիս նաև եկեղեցիների պատերին։ Դրանք հաճախ վերաբերում էին վանքերին նվիրատվություններ անելուն կամ նրանց հարկերից ազատելուն։*

*Հայաստանի նահանգների ու գավառների կառավարման մեջ առաջնակարգ դեր ունեին փոքր թագավորությունների տիրակալները, իսկ Բագրատունյաց կենտրոնական թագավորության բուն կալվածներում գավառապետ իշխանները իրենց հաստատումը ստանում էին ուղղակի Հայոց թագավորից։*

*Առևտրի և քաղաքների զարգացման հետևանքով հանդես եկան քաղաքային նոր պաշտոններ՝ քաղաքի ամիրան (քաղաքապետ) և մանավանդ մուհթասիբը (շահապետը)։*

*Բագրատունյաց թագավորության մեջ թագադիր ասպետի պաշտոնը (որն Արշակունյաց շրջանում հենց Բագրատունիներն էին վարում), բացակայում էր երևի այն պատճառով, որ այդ ժամանակաշրջանում, ինչպես տեսանք, Հայոց կաթողիկոսն էր թագադրման ժամանակ թագը դնում նորընծա տիրակալի գլխին։*

*Հայոց թագավորները ոստիկան էին կոչում ոչ միայն իրենց կողմից նշանակված վերակացուներին, այլև իշխանության խնամակալներին։ Արծրունյաց Դերենիկ իշխանի սպանությունից հետո, Աշոտ Ա թագավորը նրա դեռատի որդիների վրա ոստիկան, այսինքն՝ խնամակալ նշանակեց ԳագիկԱպումրվանին։ Պատմիչը այդ պաշտոնը նույնիսկ առանձին բառով է բնորոշում՝ ոստիկանություն («զոստիկանութիւնն Ապումրուանայ»)[33]։*

*Բագրատունյաց թագավորության մեջ գործում էին հոգևոր և աշխարհիկ դատարաններ։ Հոգևոր դատարանները քաղաքացիական և քրեական գործերն*

---

30 *Տե՛ս В. Крачковская,* Арабское письмо на памятниках Средней Азии и Закавказья IX—XI вв., «Эпиграфика Востока», X, 1955, стр. 39—40.

31 *Տե՛ս* Հովհաննես Դրասխանակերտցի, *էջ 333—354։*

32 *Տե՛ս* Հ. Բարթիկյան, *Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսի 101-րդ և 139-րդ թղթերը, ուղղված Հովհաննես Դրասխանակերտցուն և Սմբատ Ա թագավորին, ՊԲՀ, 1966, № 4։*

33 Թովմա Արծրունի, *էջ 369։*

էին վարում՝ հենվելով Հայոց կանոնագրքի վրա, որը դեռ VIII դարում ամբողջական և պաշտոնական ձև էր ընդունել։ Աշխարհիկ դատարանների մեջ առաջին հերթին պետք է հիշել արքունի ատյանը, որը իրավասու էր դատել իշխաններին՝ քաղաքական կամ այլ հանցագործությունների համար։

## 3. ԲԱՆԱԿԸ

Հայկական բանակը Բագրատունիների օրոք բաղկացած էր հեծելազորից և հետևակազորից. Նրա զինվորների թիվը մոտավորապես հարյուր հազար էր։ Աղձնիքի տեր Ահմադ Շայբանու դեմ պատերազմի գնալիս, Սմբատ Ա թագավորի ձեռքի տակ կար հարյուր հազարանոց զորք[34]։ Անիում կատարված տոնահանդեսների ժամանակ, ըստ Մատթեոս Ուռհայեցու, հայոց թագավորի մոտ հավաքվել էր հարյուր հազար ընտիր զորք, որի մասին նա մեծ գովեստով է խոսում՝ «Եւ յայնմ աւուր լինէր հանդէս զօրաց նորա հարիւր հազարաց վառելոց ընտիր արանց ի մարտ պատերազմաց անուանեաց և քաջ կորովեաց. վասն զի որպէս զկորիւնս առիւծուց կամ որպէս զձագս արծուեաց յուզէին զօր պատերազմին»[35]։

Սակայն միշտ չէր, որ պահպանվում էր այս քանակը. լինում էին դեպքեր, երբ ավելի քիչ թվով էր հավաքվում հայկական զորքը։ Հովհան Ձմշկիկ կայսեր առաջխաղացումը դիմագրավելու համար Աշոտ Գ թագավորը 80 հազարանոց զորքով բանակ դրեց Հարք գավառում[36]։ Հետևակազորը բաղկացած էր լինում ռամիկ ժողովրդից, մեծ մասամբ շինականներից, որոնք թեթևազեն էին և միշտ կարիք ունեին հեծելազորի պաշտպանության։ Սմբատ Ա թագավորի վերոհիշյալ պատերազմի ժամանակ, երբ հեծելազորը նահանջում է, թշնամին հարձակվում է հատկապես հետևակազորի վրա և մեծ վնասներ հասցնում («մանուանդ զհետևազօր գրոհսն[37] և զգռեհիկն որք ընդ նոսա»)[38]։

Հայոց զորքն ուներ նիզակավորների, աղեղնավորների, սուսերավորների և այլ զորատեսակներ։ Սմբատ Ա-ի օրոք Արծրունիների միջև տեղի ունեցած մի կռվի առթիվ Հովհաննես Դրասխանակերտցին այսպիսի դասակարգում է տալիս կռվող բանակին. «Աղեղնաւորս, շերտաւորս, սուսերաւորս, վահանավառս կորովիս»[39]. մի այլ առիթով նա հիշում է՝ «աղեղնաւորք կորովեաց, և տիգաւորք նիզակաց»[40]։

Հայկական զորքը բաղկացած էր մարզպետական և արքունական գնդերից։ Առաջինը կազմվում էր ամբողջ Հայաստանից հավաքված գնդերից և ենթակա էր մարզպետ կամ մարզպան կոչված զորավարին։ Սմբատ Ա թագավորի ժամանակ մարզպանն էր Գուրգեն Արծրունին, իսկ Գագիկ Ա-ի օրոք հիշվում է Աշոտ մարզպանը։ Անիում կատարված տոնախմբության մասին պատմելիս,

---

34 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 381։

35 Մատթեոս Ուռհայեցի, էջ 4։

36 Տե՛ս նույն տեղում, էջ 17։

37 Բնագրում՝ գրոխսն։

38 Թովմա Արծրունի, էջ 382։

39 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 240։

40 Նույն տեղում, էջ 211։

պատմիչը վկայում է, որ «ժողով արար զօրապետն Հայոց զմարզպետական գունդն քառասուն և հինգ հազար արանց քաջաց, զատ ի յարքունական գնդէն»[41]։



Անիի զինանշան նովագի քանդակը պարսպի վրա

Հայոց զորքի հիմքն էր այրուձին՝ հեծելազորը, որն աչքի էր ընկնում իր զինավառությամբ։ Արիստակես Լաստիվերտցու մոտ այն անվանված է «սեպուհ գունդն ազատաց», որը ճոխությամբ էր օժտված[42]։ Հեծելազորն իր թվով հետևակազորի կեսն էր կազմում, այսինքն ամբողջ զորքի մեկ երրորդը։ Այսպես,

41 Մատթեոս Ուռհայեցի, էջ 3։

42 Արիստակես Լաստիվերտցի, էջ 60։

օրինակ, Հովհաննես-Սմբատ թագավորի ժամանակ, երբ նրա եղբայր Աշոտը դուրս եկավ հայոց թագավորի դեմ, վերջինս ուներ 40 հազար հետևակ և 20 հազար ձիավոր[43], որը շատ բնորոշ համեմատություն է այդ ժամանակաշրջանի համար։

Արիստակես Լաստիվերտցին, ողբալով երկրի վիճակը՝ Բագրատունյաց թագավորության անկումից հետո, հայկական բազմամարդ այրուձին իր անցյալ փառքի օրերին նմանեցնում է խտացյալ ամպի, իսկ ռազմիկների հանդերձանքը՝ գարնանային ծաղիկների գունագեղության՝ «ո՞ւր զօրացն բազմութիւն որ իբրև զամպս խտացեալ... զօրէն գարնանաբոյս ծաղկանց գունակցունակ հանդերձիւքն փայլէին»[44]։

Բագրատունի թագավորների հենարանն էր արքունական գունդը, որը թագավորական տիրույթներից հավաքված ռազմիկներից էր բաղկացած և պահվում էր մեծ մասամբ մայրաքաղաքում և արքայական ամրոցներում։

Առաջին Բագրատունիների օրոք հայկական զորքը միաձույլ էր, սակայն մասնատվածության շրջանում որոշ ինքնուրույնություն ունեցան տեղական գնդերը։ Ամեն մի իշխան կամ տեղական թագավոր ընդհանրապես ուներ իր գունդը (կամ գնդերը), հատուկ դրոշով և զինանշանով։ Վասպուրականի Արծրունյաց և այլ մանր թագավորությունների գնդերը նույնիսկ առանձին մարզպան ունեին։

X դարի վերջին Սմբատ Բագրատունի թագավորի ժամանակ հիշվում է Վասպուրականի Տիգրան մարզպանը[45], ինչպես նաև Վարաժնունյաց տեր Սահակ Մարզպանը[46]։ Տաշիր-Ձորագետում հիշվում է մարզպան Դեմետրը[47]։

Սյունյաց Սմբատ իշխանը, կամենալով ապստամբել Սմբատ Ա թագավորի դեմ, տաս հազար զորք հավաքեց[48]։ Տաշիր-Ձորագետի Դավիթ Անհողինը, Գանձակի Շադդադյանների դեմ գնալիս, հավաքել էր տաս հազար զորք, որին միացան նաև օգնական գնդեր[49]։ Կարսի (Վանանդի) Աբասն ուներ իր «Կարմրազգեստ գունդը», որը մասնակցում էր Հայոց թագավորի մղած պատերազմներին[50]։

Հայկական զորքի պատմության մեջ Բագրատունյաց ժամանակաշրջանում վարձկան ռազմիկների օգտագործումը նոր երևույթ էր։ Աշոտ Բ թագավորի ժամանակ, երբ Սյունյաց իշխանը հարձակվեց Գողթնի ամիրայության վրա, իր զորքի մեջ ուներ վարձկան գաբավոնացիք[51], որոնք դավաճանեցին և պարտության պատճառ դարձան։

---

43 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 8։

44 Արիստակես Լաստիվերտցի, էջ 98։

45 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 189—190։

46 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 42։

47 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 257։

48 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 397։

49 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 79։

50 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 252։

51 Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 385։ Ստեփանոս Օրբելյանը նրանց կոչում է սկյութացի թուրքեր, որոնք վրաններով հաստատվել էին Սյունիքում։ Ըստ երևույթին նրանք թափառական ցեղեր էին։ Տե՛ս Ս. Կանայանց, Անհայտ գավառներ, Վաղարշապատ, 1914, էջ 137—148։

Բագրատունի թագավորներից առաջինը Աշոտ Գ-ն է, որի մասին վկայություն կա, թե վարձկան զորք է ունեցել։ Նոր իշխանական տներ ստեղծելու քաղաքականությանը զուգընթաց, նա օգտագործեց նաև վարձկան զորքը, համարելով այն ավելի հավատարիմ, քան տոհմիկ սեպուհները, որոնք կենտրոնախույս ձգտումներով էին վարակված։ 953 թ. Դվին քաղաքի վրա կատարած հարձակման ժամանակ Աշոտ Ողորմածը իր 30 հազարանոց զորքի մեջ ուներ հայեր, լեզգիներ և այլ «անհավատներ»[52]։ Նույն կազմն ուներ նաև Վայոց ձորի Տեր Մոզա (արաբ. Դիր Մուսա) իշխանի զորքը[53]։ Ինչպես երևում է, հայոց թագավորները այս օտար ռազմիկներին կամ նրանց զորապետերին հողեր չէին պարգևում, ուստի նրանք չէին կարող այս միջոցով Հայաստանում հաստատվել։

Հայոց թագավորության թուլացման և անկման շրջանում հայկական զորքի թիվը փոքրացել էր։ Անիի պաշտպանության ժամանակ բյուզանդական հարձակվող զորքի դեմ հայոց սպարապետն ուներ «արք երեսուն հազար հետևակք և ձիաւորք»[54], թեև դա միայն Անիում հավաքված զորքի թիվն էր։

Հայոց զորքը մեծ մասամբ տեղավորված էր ամրոցներում և պարսպապատ քաղաքների միջնաբերդերում։ Ամբողջ Հայկական լեռնաշխարհն ուներ բերդերի մի ընդհանուր պաշտպանական համակարգ՝ Սյունյաց, Արցախի բերդերը՝ արևելքից ու հարավ-արևելքից եկող հարձակումների դեմ, Վասպուրականի, Մոկաց ու Սասունի բերդերը՝ արևելքից ու հարավից եկող սպառնալիքի դեմ, իսկ Բարձր Հայքի ու Ծոփքի բերդերը՝ արևմտյան վտանգը չեզոքացնելու համար։ Սակայն ամենակարևոր պաշտպանական համակարգը Անին շրջապատող բերդերն էին, որոնք Հայոց թագավորության սիրտն էին պաշտպանում։ Անին արևմուտքից պաշտպանում էին Կարս բերդաքաղաքը, Կապույտ բերդը (Արտագերս) և այլ ամրոցներ։ Անիի մատույցները պաշտպանում էին հարավից Մաղասբերդը, իսկ հյուսիսից՝ Տիգնիսը։ Ատրպատականի կողմից պաշտպանական գիծը ավելի խիտ էր, և հարձակումները հաճախ նույնիսկ չէին հասնում Անի։ Նախճավանը հարավում առաջին պաշտպանության կետն էր, որից հետո գալիս էին Դվինը, Սուրմարին, Երևանի բերդը, ապա Գառնին, Բջնին ու անառիկ Ամբերդը։ Այս վերջին բերդերը, իրենց թիկունքում ունենալով Արագածը և այլ լեռներ, շատ հաճախ էին կանգնեցնում թշնամու հարձակումները։

Հայկական ամբողջ զորքի հրամանատար՝ սպարապետի հեղինակությունը շատ մեծ էր. նա թագավորից հետո երկրորդ անձնավորությունն էր պետության մեջ։ Սմբատ Ա-ի օրոք սպարապետ Շապուհ Բագրատունին 903 թ. վիմագիր արձանագրության մեջ այսպես է բնորոշում իր պաշտոնը. «Ես Շապուհ Բագրատունի Հայոց սպարապետ տերանց տէր...»[55]։ Ըստ էության սպարապետության պաշտոնը (որպես թագավորից հետո երկրորդը) զուտ հայկական երևույթ էր և չկար ոչ Արաբական խալիֆայության մեջ, որտեղ պետության երկրորդ անձը վեզիրն էր, ոչ էլ Բյուզանդական կայսրությունում։

---

52 Տե՛ս *V. Minorsky*, Studies in Caucasian History, p. 5—6. Այս անվան տակ Մունաջջիմ Բաշին նկատի ունի ոչ մահմեդականներին։

53 Տե՛ս նույն տեղում։ Հավանաբար պետք է լինի տեր Մոզա։

54 Մատթեոս Ուռհայեցի, էջ 85։

55 Ղ. Ալիշան, Սիսական, էջ 60։

Առաջին Բագրատունիների օրոք բոլոր սպարապետները թագավորական ընտանիքից էին։ Աշոտ Ա-ի սպարապետն էր նրա եղբայրը՝ Աբասը, Սմբատ Ա-ի սպարապետն էր նախ նրա եղբայր Շապուհը, ապա եղբորորդին՝ Աշոտը։ Այս սովորությունը վերանում է մասնատվածության շրջանում, և սպարապետներ են հանդես գալիս տարբեր իշխանական տներից, ինչպես օրինակ, Գոռ Մարզպետունին՝ Աշոտ Գ-ի օրոք։ Վերջապես, հենց Աշոտ Գ-ի ժամանակից հանդես եկած Պահլավունիները (Ապուղամրենք) այս ասպարեզում ևս տալիս են նշանավոր դեմքեր, ինչպես Վահրամ Պահլավունին՝ Հովհաննես-Սմբատի և Գագիկ Բ-ի օրերին։

Սպարապետի պաշտոնի հետ սերտ առնչություն ուներ «Հայոց զորավարութիւնը»։ Սա մի ժամանակավոր պաշտոն էր, որը Սմբատ Ա թագավորը սիրաշահելու նպատակով տվեց Գագիկ Արծրունուն։ Նրա առջևից խաչադրոշ էր տարվում[56]։

56 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 384։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ IX—XI ԴԱՐԵՐՈՒՄ

*Ֆեոդալական հասարակության ձևավորման ու զարգացման հետևանքով աշխատավոր բնակչության կախումը ֆեոդալներից և սոցիալական կեղեքումը սաստկանում էին, իսկ նրա պայքարը կեղեքիչների դեմ ավելի ու ավելի էր սրվում։*

*VIII—IX դարերում սոցիալական շարժումները սկսվել էին Բյուզանդական կայսրության և Արաբական խալիֆայության համարյա բոլոր երկրներում։*

*Այդ շարժումներն իրենց վրա կրում էին չարի և բարու, լույսի և խավարի վերաբերյալ մանիքեյական, մազդակյան դուալիստական ուսմունքի, մանավանդ «աստծու տված» ունեցվածքային և սոցիալական հավասարության վերականգնման համար եռանդուն պայքար մղելու մազդակյան գաղափարների ազդեցությունը։ Դրանց բնորոշ էր նաև նախաքրիստոնեական և վաղ քրիստոնեական ժամանակներից եկող մեսիանականությունը՝ ազատարար փրկչի երևան գալու գաղափարը, որը նոր իրադրության մեջ, մանավանդ արաբական աշխարհում, մասամբ նոր կերպարանք էր ստացել։ Ըստ այդ գաղափարի, աստված մարմնանալու էր մարդու մեջ և երևալու էր իբրև փրկիչ (Իսայի՝ Յիսուս կամ Մահդի) և վերացնելու էր երկրի վրա հաստատված անհավասարությունն ու անարդարությունը։*

*Հարկ է նշել, սակայն, որ Իրանում, Միջին Ասիայում և այլուր վաղ ֆեոդալական շրջանում (VIII—IXդդ.) լայն ծավալ ստացած շարժումներին իր գաղափարախոսությամբ ավելի քան մոտ էր պավլիկյան շարժումը, իսկ թոնդրակյան շարժումը, նախորդ շարժումների և նրանց գաղափարախոսության մի քանի գծերը կրելով հանդերձ, ինչպես կտեսնենք, առավել արմատական բնույթ ստացավ։*

*Հայ ժողովրդի մղած համառ և երկարատև պայքարը Արաբական խալիֆայության դեմ ուներ երկակի բնույթ։ Մի կողմից՝ դա ազատագրական պայքար էր օտար տիրապետողների տնտեսական, քաղաքական և հոգևոր ճնշման դեմ, մյուս կողմից՝ սոցիալական պայքար՝ ընդդեմ ֆեոդալական կեղեքման։*

*IX դարի վերջերին և X դարի սկզբներին ժողովրդական զանգվածները մեծ հույսեր էին կապում օտար տիրապետությունից ազատագրվելու հետ, սակայն պատմական իրողությունը և հասարակության զարգացումը տանելու էին դեպի ներքին շահագործման սաստկացումը։*

Արտաքին վտանգն, իհարկե, վերացված չէր, թշնամիների հարձակումները ավելի ծանր հետևանքներ էին ունենում երկրի աշխատավոր բնակչության համար։ Ժառանգական խոշոր հողատիրության վերականգնումն ու ընդարձակումը ուղեկցվում էր գյուղական համայնքի հողերի գրավմամբ և հողատեր ֆեոդալներից գյուղացիության կախվածության սաստկացմամբ։ Այդպիսին էր ֆեոդալական հասարակության, մասնավորապես՝ հողատիրության զարգացման օրինաչափ ընթացքը, որից շինականը խուսափել չէր կարող։ Ամբողջանում և սահմանագծվում էին ֆեոդալական տների և նրանց ճյուղերի հողային տիրույթները։ Բացի այդ, ձևավորվում էր նաև ֆեոդալական կալվածքը, որի վրա խոշոր հողատերը վարում էր իր սեփական տնտեսությունը։ Վերջինս պիտի ոչ միայն մթերքներով բավարարեր ֆեոդալական տան սպառողական պահանջները, այլև հետզհետե այս կամ այն չափով կապվեր շուկայի հետ և մասամբ ներգրավվեր փոխանակային հարաբերությունների ոլորտը։ Դրանով նկատելիորեն պայմանավորված էր գյուղացիության կախման սաստկացումը և մի մասի ճորտացումը։

Գյուղացիության շահագործումը սաստկանում էր նաև վանական ընդարձակ կալվածատիրության ձևավորմամբ։

Ճիշտ է, անկախություն ձեռք բերելով, հայ ժողովուրդը ազատագրվել էր օտարի ծանր լծից և կրկնակի կեղեքումից, ինչպես նաև օտարների ազգային ու հոգևոր ճնշումից, վերացվել էր գլխահարկը, որը արաբական խալիֆայության տիրապետության օրոք գանձվում էր խալամ չդավանող բնակչությունից, սակայն հողատիրության՝ հողօգտագործման ձևերի մեջ տեղի ունեցած փոփոխությունները ուժեղացնում էին շինականի կախումը շահագործողներից։

Աշխարհիկ ֆեոդալները և բարձր հոգևորականությունը ձգտում էին որքան կարելի է մեծացնել գյուղացուց ստացվող հավելյալ արդյունքը, խոշոր հարստություն դիզել, դղյակներ ու վանքեր կառուցել, շքեղորեն զարդարել դրանք, մասնակցել օրավուր զարգացող առևտրին, պերճանքի առարկաներ ձեռք բերել՝ ճոխ ու փարթամ կյանք վարելու համար և այդ ամենը՝ հիմնական արտադրողի՝ շինականի հաշվին։

Բնական է, որ աշխատավոր բնակչությունը չէր կարող լռելյայն տանել հայրենի տերերի այդ կեղեքումը։ Ուստի և նա ոտքի էր ելնում պայքարի, զենքն ուղղելով ինչպես աշխարհիկ, այնպես էլ հոգևոր ֆեոդալների դեմ։

## 1. ԹՈՆԴՐԱԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄՆ ՈՒ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ

Դեռևս չէին մարել պավլիկյան շարժման կրակները, երբ բռնկվեց ժողովրդական մի նոր շարժման բոցը, որը մեծ ու երկարատև հրդեհ պիտի առաջացներ հայոց աշխարհում։ Դա թոնդրակյան ժողովրդական շարժումն էր, որը շուրջ երկու հարյուր տարի ցնցեց Հայաստանը։ Շարժման հիմնադիրը եղավ Սմբատ Զարեհավանցին, իսկ կենտրոնը՝ Ապահունյաց գավառի Թոնդրակ գյուղը, որի անունով և այն կոչվում է թոնդրակյան կամ թոնդրակեցիների շարժում։

Թոնդրակյան շարժումն իր գաղափարախոսությամբ, տևականությամբ, ժողովրդական լայն զանգվածների ընդգրկումով և սրությամբ միջնադարյան

Հայաստանում տեղի ունեցած սոցիալական շարժումներից ամենախոշորն էր, և հանդիսանում է հայ ժողովրդի պատմության ամենանշանավոր եղելություններից մեկը։ Այդ շարժումը վաղուց է գրավել ուսումնասիրողների ուշադրությունը, նախկինում բնութագրվելով սոսկ որպես քրիստոնեական եկեղեցու մի հերձված կամ աղանդավորություն[1], բայց գիտական մեկնաբանություն է ստացել վերջին տասնամյակների ընթացքում[2]։

Սմբատ Զարեհավանցին Ծաղկոտն գավառի Զարեհավան գյուղից էր։ Անցնելով Ապահունիք նա հաստատվեց Թոնդրակ ավանում, որտեղ հիմնադրեց թոնդրակյան կենտրոնական համայնքը և սկսեց իր գործունեությունը։ Ինչպես երևում է, նա ճանապարհորդել է Փոքր Ասիայում, եղել է Թուլայլ գավառի Տեվրիկ բնակավայրում[3], որը պավլիկյանների շարժման և այդ ժամանակներում նրանց առաջնորդ Սերգիոսի գործունեության կենտրոնն էր։ Այստեղ նա կարող էր ծանոթանալ իր ավագ ժամանակակցի և ընդհանրապես պավլիկյան ուսմունքին։ Ուշագրավ է, որ մասնավոր սեփականության վերացմամբ և հավասարության հիմունքներով համայնքների ստեղծումը, վանական կալվածատիրության մերժումը, աննահանջ ու համառ պայքարը տիրողների դեմ հավասարապես բնորոշ են ինչպես Սերգիոսին, նույնպես և Սմբատ Զարեհավանցուն։

Սմբատ Զարեհավանցին կապեր է ունեցել և ուրիշների հետ։ Գրիգոր Մագիստրոսը վկայում է, որ նա իր «չար մոլորութիւնը» սովորել է «ումեմնէ պարսկական բժշկէ և յաստեղաբաշխէ մոգէ զոր Մջուսիկդ կոչէք»[4]։

Վերադառնալով ճանապարհորդությունից, Զարեհավանցին կրկին հաստատվում է Թոնդրակում, քարոզում իր ուսմունքը, գլխավորում շարժումը։

Զարեհավանցին ունեցել է իր հետևորդները, որոնք սերնդե-սերունդ քարոզել են թոնդրակյան գաղափարները, ստեղծելով նաև իրենց գաղափարները պարունակող գրականություն, սակայն դրանցից մեզ ոչինչ չի հասել և այդ նշանավոր շարժման մասին տեղեկություններ քաղում ենք միայն նրա հակառակորդների թողած տվյալներից։

Առաջին կարևոր հարցը՝ թոնդրակյան շարժման առաջացման ժամանակի հարցն է, որի վերաբերյալ կան հակասական տեղեկություններ։ Ստեփանոս

---

1 Տե՛ս Բ. Սարգիսյան, Ուսումնասիրութիւն մանիքեա-պաւղիկեան թոնդրակեցիների աղանդին, K. Ter-Mkrtschian, Die Paulikianer im Byzantinisehen Kaiserreiche und Vorwandte ketzerische Erscheinungen in Armenien, Leipzig, 1893.

2 Տե՛ս Վ. Համազասպյան, Թոնդրակյան շարժման գաղափարականությունը (Տեղ. ԳԱ, 1949, № 3)։ Աս. Մնացականյան, Թոնդրակյան շարժման մի քանի գլխավոր հարցերի մասին (Տեղ. ԳԱ, 1954, № 3)։ Ս. Պողոսյան, Գյուղացիների ճորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում IX—XIII դարերում, Ս. Հակոբյան, Հայ գյուղացիության պատմությունը, հատ. 2։ Թոնդրակյան շարժման առավել բազմակողմանի քննությունը տե՛ս А. Г. Иоаннисян, Движение тондракидов в Армении («Вопросы истории». 1954. № 10). Աշ. Հովհաննիսյան, Սմբատ Զարեհավանցին, նրա ժամանակն ու ժամանակակիցները («Բանբեր Մատենադարանի», № 3, Երևան, 1956, էջ 7—30), նույնի, Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Ա, էջ 330—400, Ե. Տեր-Մինասյան, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968, էջ 149—189։

3 Տե՛ս Ղ. Ալիշան. Հայապատում, էջ 550։

4 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 153։

*Տարոնեցին, խոսելով նշանավոր պատմագիր Հովհաննես կաթողիկոսի աթոռակալության (897—929) մասին, գրում է՝ «Սրա օրոք երևաց Սմբատը՝ թոնդրակյաններից առաջինը, Ծաղկոտն գավառի Զարեհավան գյուղից, որ հակառակ էր քրիստոնեական բոլոր կարգերին»[5]։*

*Գրիգոր Մագիստրոսը վկայում է, որ Սմբատ Զարեհավանցին հանդես է եկել Հովհաննես կաթողիկոսի և Սմբատ Բագրատունու օրոք[6], սակայն որոշակի չէ, թե խոսքը Հովհաննես անունով կաթողիկոսներից որին է վերաբերում, իսկ Սմբատ Բագրատունին էլ թագավոր չի անվանված։ Մագիստրոսը զայրույթով ասում է, որ թոնդրակյանները երկու հարյուր տարուց ավելի է, ինչ իրենց մոլորությամբ ապականել են մեր ամբողջ երկիրը[7], որ մինչև իր օրերը տասնհինգ քահանայապետներ (կաթողիկոսներ) նզովել են թոնդրակեցիներին[8], որ 170 տարի շարունակ հայոց տասներեք կաթողիկոսներ և նույնքան էլ Աղվանքի հայրապետներ բողոքել, խոսել ու հանգիմանել, անիծել և արտաքսել են թոնդրակեցիներին, բայց ապարդյուն[9]։*

*Մխիթար Այրիվանեցին իր ժամանակագրության մեջ թոնդրակյան շարժման սկզբնավորումը դնում է 821—822 թվականների տակ[10]։*

*Քննարկելով այս տվյալները ակադ. Աշ. Հովհաննիսյանը գտնում է, որ Սմբատ Զարեհավանցին ապարեզ է իջել Հովհաննես Օվայեցի կաթողիկոսի (833—855) և Սմբատ Բագրատունի սպարապետի օրերին (822—855)[11], իսկ հալածանքները թոնդրակյան շարժման դեմ սկսվել են նույն դարի կեսերին։ Այդ ժամանակներում Ապահունիքում՝ Մանազկերտ կենտրոնով իշխում էր արաբ ամիրա Աբու-լ-Վարդը, որը մահապատժի ենթարկեց թոնդրակյանների առաջնորդ Սմբատ Զարեհավանցուն[12]։*

*Թոնդրակը, որտեղ հաստատվել էր Սմբատ Զարեհավանցին, հեռու չէր Ապահունիքի վարչական կենտրոն Մանազկերտից։ Շարժումը սկզբնապես ծավալվում էր Աբու-լ-Վարդի տիրույթներում և նրան դժվար չէր համոզվել, որ թոնդրակյանները պայքարում են ոչ միայն հայ եկեղեցու, այլև հայ և օտար իշխողների դեմ։ Նման պայմաններում միանգամայն հասկանալի է, թե ինչու հենց նույն Աբու-լ-Վարդն էլ հասցրեց առաջին ծանր հարվածը թոնդրակյան շարժմանը։*

*Կճավա վանքին հղած իր թղթում Գրիգոր Նարեկացին հաղորդում է, որ Սմբատ Զարեհավանցուն սպանել է Աբու-լ-Վարդը։ Դու քեզ Քրիստոս ես համարում, ասել է Աբու-լ-Վարդը Սմբատին, Քրիստոսը հարություն առավ երեք օրից*

---

5 Ստեփաննոս Տարոնեցի, *էջ 160։*

6 *Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 153։*

7 *Տե՛ս նույն տեղում, էջ 65։*

8 *Տե՛ս նույն տեղում, էջ 165։*

9 *Տե՛ս նույն տեղում, էջ 167։*

10 *Տե՛ս* Մխիթար Այրիվանեցի, *Պատմութիւն Հայոց, էջ 54։*

11 *Այս տեսակետը առաջին անգամ հայտնել է Մ. Չամչյանը («Պատմութիւն Հայոց», Բ, 884)։*

12 *Տե՛ս* Աշոտ Հովհաննիսյան, *Սմբատ Զարեհավանցին, նրա ժամանակը և ժամանակակիցները, ԲՄ, 1956, № 3, էջ 10—14։* Նույնի, *Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Ա, էջ 337—345։*

հետո, ես քեզ կսպանեմ և կթաղեմ, եթե երեսուն օրից հետո էլ հարություն առնես, կիմանամ, որ իրոք Քրիստոս ես։ Նարեկացին նշելով, որ Աբու-լ-Վարդը խայտառակամահ սպանեց Սմբատ Զարեհավանցուն, մեծարում է նրան՝ ասելով, թե հեթանոս (իմա՝ ոչ քրիստոնյա) ամիրան վրեժխնդիր եղավ հերձվածողից. նրան համարում է՝ «հզոր այր խնդրող վրիժաց նախատանացն Քրիստոսի...»[13] կամ «արդարև գաւազան սրտմտութեան ի ձեռին տեառն Յիսուսի»[14]։

Սմբատ Զարեհավանցու սպանության ստույգ տարեթիվը հայտնի չէ, իսկ նրան սպանող Աբու-լ-Վարդ ամիրան իշխել է IX դարի 30—40-ական թվականներից մինչև 70—80-ական թվականները[15]։

Սմբատի սպանությամբ թոնդրակյան շարժումը չվերացավ, այլ շարունակվեց նրա հետևորդների գլխավորությամբ. հետզհետե ավելի ձևավորվեց գաղափարապես ու կազմակերպչորեն և դուրս գալով Ապահունիքի սահմաններից, ծավալվեց երկրով մեկ։

Թոնդրակյանների հակառակորդները կատաղի պայքար մղելով այդ շարժման դեմ, ջանացել են ամեն կերպ վարկաբեկել նրանց, չխորշելով ոչ միայն չարախոսությունից ու հայհոյանքից, այլև զրպարտիչ հերյուրանքից։ Այդուհանդերձ նրանք անդրադարձել են թոնդրակյան շարժման և նրա գաղափարախոսության մի շարք հարցերին, հաղորդելով ուշագրավ, երբեմն և շատ կարևոր տեղեկություններ։

Եղել է նաև մի հատուկ գրվածք ուղղված թոնդրակյանների դեմ և նրանց ուսմունքի հերքմանը։

Թոնդրակյանների դեմ մաքառող հայոց կաթողիկոսներից Անանիա Մոկացին (943—965) հանձնարարել է իր ժամանակի խոշոր աստվածաբան փիլիսոփա Անանիա Նարեկացուն գրելու մի հատուկ աշխատություն՝ թոնդրակյանների ուսմունքը հերքելու և նրանց «մոլորությունները» մերկացնելու նպատակով։ Սակայն Անանիայի այդ աշխատությունը, Գրիգոր Նարեկացու խոսքերով ասած՝ «զզարմանագիծ հակաճառութիւն», «վլիագիտութեամբ զմատեանսն, որ ընդդէմ հերձուածողացն», «անիծելոց Թոնրակեանց»[16], որի մեջ հերքելու նպատակով պիտի որ շարադրված լիներ թոնդրակյանների ուսմունքը, մեզ չի հասել։ Մի շարք տեղեկություններ են հաղորդում Գրիգոր Նարեկացին, Պահլավունի իշխան Գրիգոր Մագիստրոսը, որն այդ շարժման գլխավոր հակառակորդը և զենքով ճնշողը եղավ, ինչպես և Արիստակես Լաստիվերտցի պատմիչը։

Գրիգոր Նարեկացու ասելով՝ թոնդրակեցիները «բազում ինչ աստվածային

---

13 «Գիրք թղթոց», էջ 500։

14 Նույն տեղում, էջ 498։

15 Աշոտ Հովհաննիսյանը, նրա հետևությամբ և Ե. Տեր-Մինասյանը թոնդրակյան շարժման սկզբնավորումը համարելով 820—830-ական թվականները Սմբատ Զարեհավանցու մահապատժի հավանական ժամանակը դնում են 840-ական թվականներին։ Պրոֆ. Ս. Պողոսյանը Թոնդրակյան շարժման սկիզբը համարում է IX դ. վերջերը և գտնում է, որ Մանազկերտի ամիրա Աբու-լ Վարդի իշխանությունը հասել է մինչև 9-րդ դ. վերջերը և 10-րդ դ. սկզբները։ Հետևաբար Զարեհավանցու մահապատիժը տեղի է ունեցել այս ուշ ժամանակներում։ Հատորի խմբագրությունը ավելի հիմնավորված է համարում Աշ. Հովհաննիսյանի կարծիքը։

16 «Գիրք թղթոց», էջ 498, 502։

և ամենայն ինչ առաքելական» ուրացել էին և կարգերը խափանել[17]։ Միաժամանակ, նա տասնչորս կետերով համառոտակի թվարկել է նրանց ուսմունքը։ Ըստ այդմ թոնդրակեցիները մերժում էին՝

1. Ձեռնադրությունը, այսինքն եկեղեցու աստիճանավորության ամբողջ նվիրապետությունը։

2. Հաղորդությունը, որը Սմբատ Զարեհավանցին համարում էր ոչ թե եկեղեցու խորհուրդ, այլ «հասարակաց կերակուր»։

3. Ծնունդը ջրից և հոգուց։ Հավանաբար նկատի ունի Հին կտակարանի Ծննդոց գիրքը, արարչության պատմությունը և Նոր կտակարանի Քրիստոսի ծնունդը սուրբ հոգուց և մկրտությունը ջրում[18], մինչդեռ Սմբատը իր հետևորդներին սովորեցրել է, թե այն սոսկ լվացման ջուր է։

4. Կիրակի օրվա (հնում միաշաբթի՝ շաբաթվա առաջին օրվա) խորհուրդը, երբ ասվում է, թե աստված առնեղծեց լույսը. դրա հետ կապված մերժում էին Քրիստոսի հարության լույսը։ Այլ խոսքով տերունական կիրակի օրը հավասար էին համարում սովորական օրերին։

5. Ծնրադրությունը, որպես աստծուն պաղատելու խորհրդի արտահայտություն։

6. Մկրտության ավազանը, այսինքն մկրտության խորհուրդը։

7. Անմահության հաղորդությունը, որ ինքը տերը ճաշակեց, այսինքն մերժում էին Քրիստոսի հարությունը և անմահանալը, Աստծու հետ միանալը։

8. Ամուսնության խորհուրդը։ Իբր թե թոնդրակեցիները հետևում են անխտիր պղծության կամ խառնակության՝ կանանց հետ։

9. Խաչի երկրպագությունը։

10. Քարոզում են մարդապաշտ ուրացություն, որ կռապաշտությունից էլ գարշելի և անիծյալ է։ Այստեղ ակնարկված է այն, որ թոնդրակեցիները Քրիստոսին աստված չէին համարում, այլ մարդ։

11. «Ինքնաձեռն քամահանաց քահանայութիւնն, որ սատանայի է նմանութիւն»։ Այսինքն մերժելով քահանայական ձեռնադրության և եկեղեցական նվիրապետության կարգը, իրենք իրենց միջից քահանաներ են առաջադրում։

12. Անգոսնում են եկեղեցական պսակն ու ամուսնությունը և կատարյալ սեր են համարում այն, որ մարդիկ սիրով են մերձենում միմյանց և քարոզում են, թե դա բխում է աստծուց և հաճելի է Քրիստոսին, որովհետև աստված սեր է և սիրով միավորվելն է կամենում և ոչ թե եկեղեցական պսակը։

13. Կատակերգական երգիծաբանության, այսինքն ծաղր ու ծանակի են ենթարկում երեխայրիքների զոհաբերությունը, մատաղը, որով Աբելը, Նոյը, Աբրահամը, Դավիթը, Սողոմոնը և Եղիան մեղմում էին Աստծո բարկությունը և նրան հաշտեցնում մարդկանց հետ։

14. Իրենց գարշելի աղանդի գլխավորին հանդգնելով Քրիստոս են անվանում։ Քրիստոսը կանխավ վկայեց թե հանդես կգան սուտ քրիստոսներ և

17 «Գիրք թղթոց», էջ 499։

18 Երրորդ կետի բացատրությունը իբրև մկրտության խորհուրդ տե՛ս Ե. Տեր-Մինասյան, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968, էջ 154։ Թվում է, թե այստեղ ակնարկ կա նաև Մարիամ կույսից Քրիստոսի անապական (հոգու զորությամբ) ծնունդը մերժելու վերաբերյալ։

մարգարեներ, ինչպես մարգարեն ասել է, թե անզգամը իր սրտում խորհեց, թե Քրիստոսը աստված չէ[19]։

Այս կետերը շարադրելուց հետո Գրիգոր Նարեկացին ասում է, որ դրանք մեր հորեղբայրը և վարդապետը (իմա Անանիա Նարեկացին) մեծ խորությամբ է քննել, իսկ ես «ամենևին նուազս ի յոգունց և սակաւս ի բազմաց գծագրեցի»[20]։

Այնուհետև Նարեկացին ավելացնում է, թե Սմբատը պահանջել է, որ իրեն երկրպագեն[21] որպես աստծու կամ Քրիստոսի։

Գրիգոր Մագիստրոսի տեղեկությունները մեծ մասամբ շատ ընդհանուր են և մանվածապատ, բայց և շատ կետերով լրացնում են մեր իմացությունները թոնդրակյանների գաղափարախոսության վերաբերյալ։ Նա գրում է, որ թոնդրակյանները կաթողիկե եկեղեցու բոլոր կարգերից դուրս են եղել, աստվածամարտ են և քարոզում են անաստված վարդապետություն[22]։

Մեծ զայրույթով և հայհոյությամբ խոսելով Սմբատ Զարեհավանցու մասին, Գրիգոր Մագիստրոսն ասում է, թե նա քարոզում էր «քահանայական բոլոր ներգործությունները ոչնչացնել, մանավանդ սնոտի համարել»։ Մկրտության ժամանակ յուղով (մեռոնով) օրհնելու կամ օծելու մասին ասում էր. «ոչ այլ ինչ է այդ, բայց վասն խաբելոյ ժողովրդեան», իսկ եպիսկոպոսներին ձեռնադրության ժամանակ օծելը և սրբազան յուղը (մեռոնը) թոնդրակեցիները արհամարհում և ծաղր ու ծանակի էին ենթարկում[23]։

Մերժելով նյութապես ուռճացած, փարթամացած և կեղեքող եկեղեցու գոյությունը, թոնդրակյաններն ասում էին՝ «մեք ոչ եմք նիւթապաշտք, այլ աստուածապաշտք» և առ ոչինչ էին համարում եկեղեցին, խաչը, քահանայական զգեստները, պատարագ մատուցելը և եկեղեցական բազմաթիվ խորհուրդները։

Թոնդրակյանները մերժում էին նաև զատիկն ու պահք պահելը։ Նրանց առաջնորդներից Կյուրեղը մերժելով՝ ծաղրում էր հաղորդությունը և դրա հետ կապված սին հույսը։ Գր. Մագիստրոսի վկայությամբ նա ամեն տեսակ հայհոյական բաներ էր ասում սուրբ կույս Աստվածածնի և եկեղեցական բոլոր տնօրինությունների մասին[24]։ Նրանց սահմանած օրենքները հակառակ են Սուրբ գրքի օրենքներին, և նրանք ծաղրում են Հին և Նոր կտակարանները[25]։

Մի խոսքով, ասում է Մագիստրոսը, թոնդրակյանները հասել են ոչ միայն մոլորության ափը, այլև անդունդի հատակը և դարձել սատանայի գործակիցներ[26]։

Նրանք ոչ միայն քարոզում, ոչխարի մորթի զգեցած գայլի պես հափշտակում են հավատացյալներին և ամեն տեսակ գայթակղիչ ու քաղցր խոսքերով, խաբեությամբ մեծացնում են իրենց հետևորդների բանակը, այլև գործում

---

19 Տե՛ս «Գիրք թղթոց», էջ 499—500։

20 Նույն տեղում, էջ 500—501։

21 Տե՛ս նույն տեղում։

22 Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 152—153։

23 Տե՛ս նույն տեղում, էջ 154։

24 Տե՛ս նույն տեղում, էջ 157։

25 Տե՛ս նույն տեղում, էջ 161։

26 Տե՛ս նույն տեղում, էջ 160։

*են իրենց ուսմունքի համեմատ։ Մագիստրոսը զգուշացնում է չհավատալ նրանց քաղցրագույն խոսքերին, որոնք ձեթի պես կակուղ և նետի պես խոցող են, բայց միամիտները հավատում են դրանց*[27]։

*Իրենցից չձեռնադրված կրոնավորներ առաջադրելով, կանանց բազմության հետ ապրում են շնավաններում, ասում է Գրիգոր Մագիստրոսը, և զըրպարտելով նրանց, ավելացնում է, թե խտրություն չեն դնում արանց և կանանց և ոչ էլ ընտանիքների միջև, թեև հայտնապես չեն համարձակվում անել այդ*[28]։

*Այս ամենի մեջ պարզ ակնարկ կա, որ Թոնդրակյանները հիմնել էին իրենց համայնքները, որտեղ բոլորը, նաև տղամարդիկ և կանայք հավասար էին համարվում։ Թոնդրակեցիների համայնքներն ունեցել են իրենց ավագները, որոնց տունը ժողովատեղի է եղել։ Գրիգոր Նարեկացու հայրը՝ Խոսրով Անձևացին, ակնարկելով Թոնդրակեցիներին, ասում է, թե որտեղ իրենց հարմար են համարում, այնտեղ են արարողություն կատարում, երկրպագում են ոչ թե աստծուն, այլ մարդուն, որովհետև գյուղերի ավագների մոտ են պաշտամունքի հավաքվում («առ աւագս գիւղիցն ի պաշտօն ժողովին»), ոչ թե աստծուն, այլ նրանց երկրպագելու (բնագրում՝ «պաշտօն տանել»), իբրև թե նրանք գերագույն են, քան աստվածը, աստծո տները զանց առնելով նրանց տներն են նախամեծարում*[29]։

*Թոնդրակյանների հակառակորդների այս անուղղակի տեղեկություններից երևում է, որ նրանց համայնքներում եղել է հաստատուն կարգ ու կանոն և նրանք հետևել են զուսպ կյանքի, ուստի նրանց անառակ և անբարոյական վարքի մասին Գրիգոր Մագիստրոսի ասածը պետք է նկատվի իբրև հերյուրանք։ Այլ բան է, որ նրանք մծղնեական աղանդավորների պես քարոզում էին սեր՝ կատարյալ սեր համարելով տղամարդկանց և կանանց միավորվելը սիրո հիման վրա։*

*Գրիգոր Մագիստրոսը Թոնդրակյաններին բաժանում է երեք խմբի։ Առաջին՝ նրանք, ովքեր չարի մեջ կատարելագույններն են, քարոզում են կատարյալ անհուսություն և անաստվածություն էպիկուրյանների պես։ Երկրորդ՝ նրանք, ովքեր մանիքեցիների նման ինչ որ անիծում, այն էլ գործում են։ Երրորդ՝ նրանք, ովքեր առերես իբրև թե քրիստոնեական ավանդություններին են հետևում, բայց ծածկում են իրենց աղանդավոր լինելը և ամենևին էլ քրիստոնեությունը չեն պաշտում*[30]։

*Գրիգոր Մագիստրոսը խոսում է նաև Թոնդրակյան աղանդի այլ ճյուղավորումների մասին՝ ըստ նրանց բնակության վայրի և արտահայտած այս կամ այն տեսակետների։ Թոնդրակյաններ կան, որոնք իրենց կաշեցի են անվանում «և այն էլ չարության արմատ», Խնունի (Խնուսի) Թոնդրակյանները առիթ են որոնում Քրիստոսին հայհոյելու և նրա մասին գրում են, թե թլպատված է, իսկ Թուլայլեցի կոչվածները հրաժարվում են Քրիստոսից, ասելով, թե մենք թըլ-*

---

27 *Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 155։*

28 *Տե՛ս նույն տեղում, էջ 160—161։*

29 *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 8075, էջ 159 ու Տե՛ս Աչ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք Ա, էջ 375։*

30 *Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 158—159։*

*դատված աստված չենք պաշտում, իրականում թլպատված, թե անթլպատ նրան (Քրիստոսին) աստված չեն համարում, այլ նման բաներ հորինում են քրիստոնյաներին ծաղրելու համար[31]։*

*Նրանք Թուլայլեցի կոչվել են բյուզանդական Թուլայլ գավառի անունով, որտեղ գտնվում էր պավլիկյանների նշանավոր կենտրոն Տևրիկը, որով թերևս երևան է գալիս պավլիկյանների և թոնդրակյանների շարժման հաջորդականությունը և գաղափարական կապը։*

*Մագիստրոսը թոնդրակյաններին համեմատում է մանիքեցիների և սադուկեցիների հետ, որովհետև մանիքեցիները նույնպես մերժում էին նյութականը, այն համարելով չարիք և իրենց միջից հոգևոր առաջնորդներ էին առաջադրում, իսկ սադուկեցիք չէին ընդունում մեռածների հարություն առնելը, ինչպես թոնդրակյանները՝ Քրիստոսի հարությունը։*

*Տալով թոնդրակյանների ընդհանուր բնութագիրը, Գրիգոր Մագիստրոսը նշում է, որ նրանց ուսմունքը և պայքարը ինչ-որ մի մասնավոր հարցի շուրջ չէր պտտվում, այլ ընդհանրապես հակադրվում էր իշխող քրիստոնեական գաղափարախոսությանը, իհարկե՝ նաև տիրող իրականությանը։ Ակնարկելով Հովհան Օձնեցու գրվածքները՝ պավլիկյանների և Անանիա Նարեկացու հակաճառության թուղթը՝ թոնդրակյանների դեմ, Գրիգոր Մագիստրոսը գրում է, թե նրանց ուսմունքը չարափառություն և աղտափելի հերձված է։ Մեկ կամ երկու բանում չէ, որ մեղանչում են, բայց «ի բոլոր օրինադրութիւնս իւրեանց ամենևին արտաքս են հին և նոր օրինաց»[32], այսինքն Հին և Նոր կտակարաններից։ Ապա ավելացնում է, թե ինչպես մեղուն բազմաթիվ ծաղիկներից է անընդհատ փոշետեսակներ հավաքում մեղր պատրաստելու, բժիշկը բազմազան օգտակար դեղեր է խառնում մարդկանց բուժելու համար, կամ մահացու թույնը պատրաստվում է խիստ ու չարագույն դեղերից նման իժերի թույնի, այնպես էլ դրանց հերձվածը ոչ թե մի պատճառից է, երկուսից կամ երեքից, այլ ամեն տեսակի չարափառություններից է՝ կախարդությունից, դյութությունից, հմայությունից, անհավատությունից, բոլորի չարության թույնը և հերձվածները մի տեղ հավաքելով համաձայնվեցին դիվամոլ անօրեն օրենքը (ուսմունքը) հաստատելու և կամովին իրենց աչքերը փակելով, լուսաշող ճանապարհը թողնելով հետևեցին կուրաշավիղ կորստյան ուղեգնացությանն[33]։*

*Այսպիսով, Սմբատ Զարեհավանցին ներկայանում է որպես ժամանակի տարբեր հերձվածները և նրանց ուսմունքները թոնդրակյան շարժման ուսմունքի մեջ միավորող առաջնորդ և հետևողական պայքարի կազմակերպիչ։*

*Բնորոշ է, որ Գրիգոր Նարեկացին էլ թոնդրակյաններին անվանում է՝ «բազմահերձուած ժողովոյն դաս»[34]։*

*Գրիգոր Մագիստրոսն ասում է, որ թոնդրակեցիները ավելի քան երկու հարյուր տարի ապականեցին ամբողջ մեր երկիրը և իրենց մոլորության այն-*

---

31 *Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 161։*

32 *Նույն տեղում, էջ 160։*

33 *Տե՛ս նույն տեղում։*

34 *«Գիրք թղթոց», էջ 502.*

պիսի ատրուշան կանգնեցրին, որ Քրիստոսի հոտը անհոգաբարձ եղավ հովիվներից և հովվապետերից[35]։

Թոնդրակյանների ուսմունքի վերաբերյալ Արիստակես Լաստիվերտցու տեղեկությունններն աղքատիկ են։ Թոնդրակեցիներին նա անվանում է մծղնեական աղանդի հետևորդներ, սատանայի վարդապետներ, ասելով՝ «նրանց մծղնեական գործը անպատշաճ ենք համարում շարադրել, որովհետև սաստիկ աղտեղի է և որովհետև ամեն մարդ չէ, որ պնդակազմ է լսելիքով, բազմաթիվ մեղքերի հիշատակությունը կարող է գայթակղել («ի խորշանս ձգէ») լսողին և մղել նույն գործը կատարելուն, այդ պատճառով էլ ես խույս տվեցի նրանից»։ Այնուհետև Լաստիվերտցին թռուցիկ թվարկում է մի քանի բան, որ հնարավոր է համարում հիշատակել, այն է՝ եկեղեցի և եկեղեցու կարգավորություն բնավ չեն ընդունում. ոչ մկրտության, ոչ պատարագի մեծ և սարսափելի խորհուրդը, ոչ խաչ, ոչ պահոց կարգավորություն[36]։ Այլ խոսքով, կրկին հաստատվում է, որ թոնդրակյանները մերժում էին եկեղեցու ամբողջ նվիրապետությունը, նրա խորհուրդներն ու արարողությունները և զանազան ծեսերը։

Այս ամենով հանդերձ, վկայում է Լաստիվերտցին, միամիտներին խաբելու համար, նրանք ձևացնում են, թե մեր բարեպաշտ կրոնին են հետևում և քաղցր խոսքերով մոլորեցնում են անմեղների միտքը, «քանի որ նրանց խոսքերը ճարակում են ինչպես քաղցկեղը, որովհետև ինչպես դժվարին է այդ ախտը բուժել, այնպես էլ նրանցով (նրանց գաղափարներով) բռնվածները «հազիւ կարեն կալ յակաստանի»[37] (հազիվ թե անվտանգ մնան)։

Ապա Լաստիվերտցին ավելացնում է, թե նրանց մասին իսկ պատվիրում է Քրիստոսը «զգուշ եղեք սուտ մարգարեներից, որ կգան ձեզ մոտ գառան հանդերձով, իսկ ներսից գայլեր են հափշտակող»[38]։ Արտաքին թշնամիներից զգուշանալը դյուրին է, ասում է պատմիչը, բայց սրանք համացեղ են, համալեզու, սրանց ճանաչելը, սրանցից զգուշանալը դժվար է։

Թոնդրակյաններն իրենց համարում էին արամյան տոհմից, այսինքն բուն հայկական ցեղից, նրանցից շատերն էլ, նաև նրանց հետ շփվող բնակչությունը («որք մերձ առ նոսա բնակեալ են»), ինչպես գրում է Գր. Մագիստրոսին հղած իր նամակում ասորիների կաթողիկոսը, «ամենևին ոչ խոստովանեցան գիտել ինչ զնոսա արտաքոյ օրինացն քրիստոնէից»։ Սակայն Մագիստրոսը պատասխանում է դրան, թե թոնդրակեցիները խորամանկում, խաբում են, թաքցնում են իրենց չար աղանդը և շատերին իրենց կողմն են գրավում կեղծավորաբար քաղցրախոս ու ազդու քարոզներով։

Թոնդրակյան շարժումը իր հակաեկեղեցական գաղափարներով մեծ ժողովրդականություն էր վայելում։ Այն բռնկվեց այնպիսի ուժով, որ թե հոգևորական, և թե աշխարհիկ հեղինակները նրանց մասին խոսում են վախով, զայրույթով, հայհոյությամբ և ամեն տեսակի լուտանքներ են թափում նրանց գլխին։ Գրիգոր Նարեկացին հակասացությունների իր բանաստեղծական ոճով

---

35 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 65։

36 Արիստակես Լաստիվերտցի, էջ 133։

37 Նույն տեղում, էջ 120։

38 Նույն տեղում։

նրանց անվանում է «չարք շանց, և գումարք գողաց, և գունդք գայլոց, և դասք դիւաց, և ազինք աւազակաց, բոյլք բարբարոսաց, խումբք խաչահանուաց, և ժողովք չարեաց, և արք արեանց, և երամք թունաւոր օձից, և վտառք մարդադէմ գազանաց, և կաճառք կախարդասարաս աղանդաւորաց»[39] և այլն։

Պահլավունի իշխան Գրիգոր Մագիստրոսը իր նամակներում այստեղ-այնտեղ ցանել է Նույնպիսի զայրալից լուտանքներ։ Զարեհավանցու մասին նա գրում է «չար գազանն այն արիւնռուշտն, և առնամոլին և վաւաշ շամբուշ բորբորիտն, պիղծն Սմբատ, անիծեալն...»[40]։

Թոնդրակյաններին նա անվանում է շուն և շուն և շուն ասրազգեաց (գառան մորթի հագած), գայլ, քարբի օձ, իժ, չարության վիշապ, որջացյալ գազան, պիղծ, Նեռի կարապետ, սատանայի ծառա, խորամանկ խաբեբաներ, զազրելի և քստմնելի ախտակիրներ, անաստվածության վարդապետներ, անճոռնի ճոռոմաբաններ, հրեշտակակերպ դիվազգյացներ, անպտուղ որթ, փտած փայտեր, որ այրելու են արժանի։

Թոնդրակյանների գաղափարական և քաղաքական հակառակորդների զայրույթի աստիճանը և հայհոյությունների տարափը իրականում թոնդրակյան ուսմունքի և շարժման զորեղության և հետևողականության ցուցանիշներ են։

XII դարում ևս առանձին հեղինակներ անդրադարձել են թոնդրակյան շարժմանը, կրկնելով նախորդների ասածները։ Պողոս Տարոնեցին, թոնդրակյաններին համեմատելով մանիքյան աղանդավորների հետ, ասում է, թե նրանք հավասարապես մերժում էին եկեղեցու անհրաժեշտությունը, խաչի պաշտամունքը, պատարագը, մատաղը, ասելով, թե դրանք մեռածներին ի՞նչ օգուտ, նաև Քրիստոսի զոհաբերությունը մարդկանց փրկելու համար, մեռելների հարությունը[41], իսկ Քրիստոսի մասին ասում են, թե նա լոկ մարդ էր[42]։ Ներսես Շնորհալին էլ վկայում է, որ Միջագետքում ապրող հայ քրիստոնյաների մեջ վեճ կար, ոմանք ասում էին, թե Քրիստոսի աստվածային բնությունը մարմնի հետ չարչարվել և մեռել է խաչի վրա, մյուսները՝ թե միայն մարդն է չարչարվել ու մեռել, ոմանք մատաղն ընդունելի էին համարում, մյուսներն արհամարհելի, ոմանք պնդում էին, թե դրախտի մասին ասվածը իբրև օրինակ է բերված, այլ ոչ թե ճշմարիտ իսկություն։

Ժխտելով Քրիստոսի հարությունը, հոգու անմահությունը, հանդերձյալ կյանքը, երկնային հատուցումն ու պատիժը, մատաղն ու հոգու փրկությունը և երկնային դրախտը, թոնդրակյանները հաստատում էին այն միտքը, թե մարդկային ցեղի բարօրությունն ու երջանկությունը պետք է կառուցվի երկրի վրա։ Դրա գործնական միջոցը համարում էին ինչքային և իրավական հավասարության հիման վրա համայնքների ստեղծումը. նման համայնքներ նրանք ստեղծել էին երկրի տարբեր մասերում, մանավանդ հարավային և արևմտյան գավառներում։

---

39 «Գիրք թղթոց», էջ 500։

40 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 153։

41 Տե՛ս Պօղոս Տարօնեցի, Թուղթ ընդդէմ Թէոփիլեայ Հոռոմ փիլիսոփային, Կ. Պոլիս, 1752, էջ 262 և հտն.։

42 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 5777, 294բ։

*Թոնդրակյանների շարժման գաղափարախոսությունը ազատված էր ամեն ինչ չարի և բարու հետ կապող պավլիկյանների պարզունակ դուալիզմից, ավելի արմատական էր, հետևողական. առաջադիմական, միաժամանակ ավելի գործնական և իրատես։*

*Առավել զարգացած սոցիալ-տնտեսական հարաբերությունների արգասիք լինելով և նշանավորելով ժողովրդական լայն զանգվածների ինքնագիտակցության ավելի բարձր մակարդակը, թոնդրակյան շարժումը խոր արմատներ էր ձգել և, ընդունելով դասակարգային շատ ավելի տևական ու սուր պայքարի բնույթ, իր ազդեցությունը թողեց միջնադարյան Հայաստանում տեղի ունեցած համարյա բոլոր սոցիալական շարժումների վրա։*

*IX դարի կեսերից սկսած և X դարի սկզբներին թոնդրակյան շարժումը անհանգստացրել էր ֆեոդալներին, մանավանդ բարձր հոգևորականությանը։*

## 2. ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ԱՅՐԱՐԱՏՈՒՄ ԵՎ ՍՅՈՒՆԻՔՈՒՄ X ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍՈՒՄ

*Դեռևս IX դարում ծայր առած թոնդրակյան շարժումը շարունակվում էր և զորեղանում, իր ալիքները տարածելով նորանոր գավառներում։ Այդ շարժման գաղափարական ազդեցությունը կրում էին նաև այն ընդվզումներն ու սոցիալական մարտերը, որոնք տեղի ունեցան Այրարատյան նահանգում և Սյունիքում։*

*Այրարատի և Սյունիքի սոցիալական շարժումները վաղուց են գրավել հայագետների ուշադրությունը*[43]*, որով դյուրացել է նրանց ճշգրիտ լուսաբանությունը։*

*Ապստամբական շարժումը Այրարատում ծավալվեց X դարի առաջին տասնամյակում և բավականին զորեղ թափ ստացավ։ Դրա համար Այրարատում ստեղծվել էր պարարտ հող, սոցիալական ներհակությունների ծայր աստիճան սրման հետևանքով։ Դրան ավելացել էին նաև Ատրպատականի Սաջյան ամիրաների, ինչպես և Կովկասյան լեռներից ու այլ վայրերից Հայաստան ներխու-*

43 *Սյունիքի գյուղացիական շարժումների մասին տե՛ս И. А. Джавахишвили,* Страница из истории крестьянского движения древней Армении («Известия Тбилисского университета», II, 1922—1923, стр. 247—261). *որը նույն հեղինակի մի այլ հոդվածի հետ միասին առանձին գրքույկով հրատարակվել է պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի թարգմանությամբ (տե՛ս պրոֆ.* Ի. Գ. Ջավախիշվիլի, *Նյութեր Հայաստանի սոցիալական շարժումների պատմության համար, Երևան, 1937։ Սյունիքի շարժումներին, այնուհետև, անդրադարձել է պրոֆ. Աշ. Աբրահամյանը, տե՛ս նրա հոդվածը* «Крестьянское движение в Сисакане в X веке» («Исторические записки Академии наук СССР», № 3, стр. 54—71)։ *Այրարատի և Սյունիքի սոցիալական շարժումները միասին քննության առարկա են դարձրել մի քանի հեղինակներ. տե՛ս Б. Арутюнян,* Крестьянские волнения в Сюнике в X веке («Ученые записки Ереванского государственного русского педагогического института», № 2, 1950, стр 161—182. Ս. Պ. Պողոսյան, *Գյուղացիների ճորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում IX—XIII դդ., էջ 383—411),* Աշոտ Հովհաննիսյան, *Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք 1, էջ 368—374)։* Հ. Ուրմազյան, *Սյունիքը IX—X դարերում, էջ 252—284։* Ս. Ե. Հակոբյան. *Հայ գյուղացիության պատմություն (զարգացած ֆեոդալիզմի դարաշրջան), գիրք 2, էջ 245—260։*

ժած զանազան ցեղերի ասպատակությունները, որոնց հիմնական զոհը դարձյալ անպաշտպան գյուղացին էր, աշխատավոր ժողովուրդը։ Նա չէր կարող չդժգոհել իր իշխանավորներից, որոնք անմիաբան, հաճախ էլ նկուն գտնվեցին թշնամու հանդեպ՝ անպաշտպան թողնելով երկիրը և ժողովրդին։

Յուսուֆի 909 թ. սկսած արշավանքը յոթ տարի երկարեց և շատ ծանր հետևանքներ ունեցավ։ Երկիրը քայքայվում էր, մնացածն էլ լրացրին դրսից ներխուժած այլ ցեղեր։

Հովհաննես կաթողիկոսը վշտով և հռետորական չափազանցություններով պատմում է, որ մեր երկրի դեմ ելան օտար ասպատակ ցեղեր, նրանց հետ ավազակներ և սրիկաներ, որպեսզի կողոպտեն և ավերեն շենացած գյուղերը, ավաններն ու քաղաքները։ «Մեր երկրի շատ գավառները,— ասում է պատմիչը,— ավերելով անշրդի անապատի վերածեցին, ասես մի երկիր էր դա, որի միջով մարդը չէր անցել, ոչ էլ բնակություն էր հաստատել այստեղ. այսպես, շեն վայրերը անապատ դարձրեցին։

Իրար հետ բախվելով մեծ արյունահեղություն էին կատարում, մեր երկրի երեսը դիակներով լցնում և առհասարակ կողոպտելով ավարը տանում էին»[44]։ Կոտորածի և գերեվարության հետևանքով երկիրը զրկվում էր իր զավակներից՝ հողը մշակող երկրագործներից և խոպանանում էր։ «Եվ մեր քաղաքները,— շարունակում է պատմիչը,— կործանվեցին՝ մնալով առանց բնակիչների, մեր երկրագործները նվազեցին և սուգ զգեցան»[45]։

Թագավորն ու իշխանները փոխանակ միաբան դուրս գալու օտար ասպատակողների դեմ, շարունակում էին իրենց ներքին խժդժությունները՝ տիրույթներ ընդարձակելու և մյուսների նկատմամբ իրենց գերադաս դիրքը ամրապնդելու նպատակով։ Ֆեոդալների միջև տիրույթները վերաբաժանման և ժառանգական հողատիրության ամրապնդման պրոցեսն ուղեկցվում էր նաև ֆեոդալական վերնախավի կազմում տեղի ունեցող փոփոխություններով։ Ըստ որում, թագավորներն ու խոշոր իշխանները չէին վարանում անգամ տոհմիկ, բայց ավելի թույլ ազնվականներին հեռացնել, կործանել, խլել նրանց տիրույթները, վարչական իրավունքները և պաշտոնները, նրանց փոխարեն առաջ քաշելով իրենց ենթակա ու հավատարիմ իշխանավորներին և զորավարներին[46]։

Ժողովրդական զանգվածները ճարահատյալ զենք վերցրած ելան ոչ միայն օտարների, այլև իրենց տերերի դեմ։ «Նվազունները (պակաս ուժի տեր, աղքատ, ստորին խավերը),— ասում է պատմիչը,— աշխատում էին ավելի ձեռներեց լինել, քան մեծամեծները, իսկ ծառաները... մեծ ապստամբությամբ խրոխտանալով և փքվելով, հնար էին գտնում տերերին տրեխավորելով՝ գետնի վրա ման ածել, իսկ իրենք ելնել բարձրավիզ ու ոտնահարող ձիերի վրա»[47]։

Սոցիալական ընդվզումների և բախումների հակառակորդ կաթողիկոս-

---

44 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 321—322։

45 Նույն տեղում, էջ 322։

46 Տե՛ս նույն տեղում, էջ 324։ (Պատմիչի մոտ այս հատվածը միահյուսված է Այրարատի սոցիալական շարժումների բնութագրությանը. մի քանի պատմաբաններ այն սխալ են հասկացել՝ կարծելով, թե նոր ազնվականներ (պայազատներ) և զորավարներ (ապասալարս) ջանացել են առաջադրել ապստամբները։

47 Նույն տեղում։

պատմիչը գույները խտացնելով շարունակում է. «Այլև եղբայրը եղբոր դեմ, և ազգականը ազգականի դեմ էր ընդվզել և միմյանց դեմ երևան էին բերում նախանձ, շարակնություն, գրգռություն և կատարյալ ատելություն։ Եվ այսպես համագունդ իրար հետ ընդհարվելով, իրար հակադրված կռիվ էին մղում և մշտապես սուրը ազդրի վրա կրելով՝ թշնամիներից ավելի շատ միմյանց արյունն էին հեղում։ Եվ առհասարակ քաղաքները և գյուղերը, ավանները և ագարակները, այլև իրենց տները քանդում էին իրենց ձեռքով»[48]։

Սոցիալական բախումների սրությունը նկատի ունենալով, կաթողիկոսը եզրակացնում է, թե մեզ մոտ կատարվեց Սողոմոնի մարգարեությունը, որի համաձայն այր մարդը մարդու և մարդն իր ընկերոջ դեմ պիտի դուրս գա, մանուկը՝ ծերի և անարգը՝ պատվականի հետ պիտի ընդհարվի։

Օտարների ասպատակությունները և սոցիալական ներհակությունների ավելի սրեցին ստեղծված դրությունը և պատմիչի ասելով «շինությունն ու խաղաղությունը քայքայվեց և ավերն ու ապականությունը բռնեցին նրանց տեղը»[49]։

Յոթ տարի երկարած պատերազմներն ու ապստամբական կռիվներն ուղեկցվում էին բնական արհավիրքներով։ Կարկտահարությունն ու հողմը մեծամեծ վնասներ էին հասցրել խաղողի և պտղատու այգիներին, ցանքադաշտերին, որոնց մի մասն էլ անմշակ էր մնացել։ «Տասը լուծ եզներով վարեցինք (արտը) և մի սափոր (բերք) տվեց, սերմանեցինք՝ չհնձեցինք, տնկեցինք՝ չքաղեցինք...»[50],—ասում է պատմիչը։ Եղածն էլ թշնամիներն էին խլում։ Այրարատյան երկրում ծայր է առնում սաստիկ սով։ Քաղաքներում, գյուղերում և ավաններում մարդիկ սնվում էին խոտերով և վնասակար բանջարներով։ Մի կտոր հացով կամ որևէ ուտելիքով վաճառում էին իրենց զավակներին, շատերը մեռնում էին քաղցից, մյուսները քարշ էին գալիս դիակի պես գունատված։ Սովը մարդակերության է հասցնում և, ուղեկից ունենալով համաճարակները, հնձում է հազարավոր մարդկանց։ Սովը ավելի էր գրգռել ապստամբներին և բորբոքել ատելությունը ունևորների դեմ։ Ապստամբները ոչ մի բանի առաջ կանգ չէին առնում՝ իրենց ձեռքը գցելու ֆեոդալների և ունևոր քաղաքացիների պաշարները, իսկ վերջիններս էլ կատաղի դիմադրություն էին ցույց տալիս։ Իշխող դասերի գաղափարախոս կաթողիկոսն ասում է, թե սովից ու մահտարաժամից ավելի, նրանք տուժում, խոշտանգումների և կորստի էին մատնվում խռովարարների ձեռքով։ Ապստամբները ում որ բռնում էին ամենաանողոք տանջանքների էին ենթարկում, որպեսզի մթերք գտնեն։ «Եվ այսպիսի խոր խռովություն էր պատել քաղաքներին և գիշերները լի էին մահվամբ գյուղերում և գերդաստաններում, մերկ դիակները թափված էին մնում փողոցներում և հրապարակներում և սարսափելի անարգության տեսարան էին ներկայացնում տեսնողներին, ասես թե էլ ոչ ոք չէր կարող նրանց հանձնել գերեզմանին»,— գառնացած ասում է պատմիչը։

Այրարատում բռնկված շարժումներն սկսվեցին, հավանաբար, Սմբատ

---

48 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 324։

49 Նույն տեղում., էջ 325։

50 Նույն տեղում, էջ 326։

թագավորի եղերական մահից հետո և, ընդգրկելով գյուղերն ու քաղաքները, տևեցին մինչև X դարի երկրորդ տասնամյակի վերջերը, մինչև որ թուլացան, ճնշվեցին, մասամբ էլ միահյուսվեցին օտարների դեմ մղվող ազատագրական պայքարին։

Գյուղացիական կռիվները, սակայն, որքան էլ սուր բնույթ կրեին, դարձյալ չէին կարող փոփոխել իրերի դրությունը, որովհետև ընթանում էին տարբեր գավառներում ու նահանգներում՝ անջատ-անջատ, իսկ միավորվելու հնարավորությունը պատմական այդ ժամանակաշրջանում բացառված էր։

Այդպիսին էր նաև Սյունիքում ծագած գյուղացիական ապստամբությունը, որը շատ սուր և երկարատև եղավ, սակայն այլ նահանգներից օգնություն չստացավ։ Ապստամբությունը Սյունիքում ուղղված էր Տաթևի վանքի դեմ։ Պատճառն այն էր, որ վանքը դարձել էր խոշոր հողատեր և իր տիրույթներն ընդարձակում էր շրջակա գյուղերի հաշվին։

Վերևում տեսանք, որ 906 թ. Տաթևի վանքի Կաթողիկե եկեղեցու և մյուս շենքերի շինարարության ավարտից հետո վանքին նվիրաբերվեց 15 բնակավայր, որոնց թվում, պատմիչի վկայության համաձայն, կային նաև իրենց հողերի տերը համարվող և ազատ համայնք կազմող գյուղեր։ Դրանից հետո է, որ սկսվում է մի երկարատև և սուր պայքար վանքի և նրան անցած մի քանի բնակավայրերի միջև։

Պատմիչը վկայում է. թեև այդ բոլորը նվիրաբերվեցին վանքին, սակայն Ցուրաբերդի բնակիչներին չկարողացան տեղից հանել, որ նրանց հողերին տիրանան, «զի հին հայրենի տէրք էին և բարբարոս և պիղծ մարդիկ»[51]. Վանքը չի կարողանում սեփականել նաև վանքի դիմացը գտնվող Տամալեկք գյուղը, որովհետև նրա բնակիչներն էլ «նույնպիսին էին», ինչ ցուրաբերդցիները, ինչպես և Բերդ անունով բնակավայրը՝ գետի մյուս կողմում[52]։

Թագավորի և իշխանների նվիրաբերությունների հետևանքով վանքին էր անցել բազմաթիվ բնակավայրերից վճարվող արքունական և իշխանական հարկերի ու տուրքերի գանձման իրավունքը։ Ավելին, մի քանի բնակավայրեր, մոտ լինելով վանքին, մտնում էին նրա նոր միայն գծված բուն սահմանների մեջ և կազմում նրա անմիջական սեփականությունը։ Սակայն դրանց «հին հայրենի տէր»[53] բնակիչների հողերին տիրանալ կարելի էր միայն բռնությամբ նրանց հեռացնելու եղանակով։ Հենց այդ էլ հետևողականորեն փորձում էր իրականացնել վանքը, սակայն Ցուրաբերդի, Տամալեկքի, Բերդի, Ավելադաշտի բնակիչներին բռնի տեղահան անելու փորձերը հանդիպում են գյուղացիների համառ դիմադրությանը, անգամ՝ պատասխան գործողություններին։ Պատմիչի ասելով՝ նրանցից «վտանգ ոչ սակաւ հասանէր եղբայրութեանն»[54]։

Դիմադրության հիմնական հենակետը Ցուրաբերդն էր, որի դեմ և վանքը ուղղել էր գլխավոր հարվածը։ Ի վերջո, ցուրաբերդցիների համբերության բա-

---

51 Ստ. Օրբելյան, էջ 280։
52 Տե՛ս նույն տեղում։
53 Նույն տեղում։
54 Նույն տեղում։

ժակը լցվում է, և նրանք ապստամբում են։ 915 թ. մի գիշեր նրանք հարձակվում են վանքի վրա և դատաստան տեսնում վանականների հետ։

Պատմիչն ասում է. «Եւ մի օր գալով (ցուրաբերդցիները) գիշերվա մեջ, հանկարծակի սկսեցին կողոպտել եկեղեցին, գործատները և կրոնավորների հարկաբաժինները և փնտրում էին եպիսկոպոսին, որ սպանեին, բայց չգտան, ապա ծերերից ոմանց սրի քաշեցին և մյուսներին փախուստի մատնեցին, ինչ որ գտան, իրենց հետ առան տարան (Ցուրա) բերդը։ Տարան նաև արծաթե սափորով մեռոնը և թափեցին քարից ցած»[55]։

Սյունյաց եպիսկոպոս պատմիչը խոսքեր չի խնայում պարսավելու ապստամբներին՝ «Անաստված», «ժպիրհ», «ելուզակ» անվանումներից և ցուրաբերդցիների գործողություններից դժվար չէ նկատել թոնդրակյանների գաղափարական ազդեցությունը նրանց վրա, ինչպես ճիշտ նշել են ուսումնասիրողները։

Ցուրաբերդցիների հարվածը Տաթևի վանքին այնքան ուժգին էր, որ Հովհաննես եպիսկոպոսը «չհամարձակվեց բնակվել այդ տեղում, այլ խաչն առնելով, բոլոր կրոնավորների հետ, ելավ գնաց օտար աշխարհ»[56], ուր մնաց առժամանակ, իսկ կրոնավորները ցիր ու ցան եղան[57]։

Վանքին զորավիգ է դառնում Սյունյաց Սմբատ գահերեց իշխանը, որը չէր կարող թափուր թողնել իր երկրի եպիսկոպոսական աթոռը։ Սմբատը ուրիշ ազատների հետ «բազում թախանձանօք» ետ է բերում եպիսկոպոսին և սուրբ խաչը՝ «ի մեծ հայրապետարանն Տաթև»։ Իհարկե, այդ արվում էր գյուղացիության ընդվզումը ճնշելու գնով։ Սմբատը «հալածական անելով Ցուրա քարի անիծյալ բնակիչներին,— ասում է Ստեփանոս Օրբելյանը,— ոմանց մեծամեծ պատիժների և պատուհասների է ենթարկում և առհասարակ ջնջում, հեռացնում է մեր երկրից (Սյունիքից)»։

Ցուրաբերդն իր հողերով հանձնվում է Տաթևի վանքին։ Ապստամբական կենտրոնն այնպես ավերվեց, որ բնակության հետք իսկ չմնաց. իսկ գահերեց իշխանն ու եպիսկոպոսը սահմանեցին, որ այդտեղ այլևս ոչ մի շինություն չկառուցվի և բնակություն չհաստատվի։ Նզովք էր դրվում բոլոր նրանց վրա, ովքեր կհանդգնեին խախտել այդ հրամանը։

Ջնջված դրված արդելքին և նզովքին, Ցուրաբերդը նորից շենանում է, և պայքարը վանքի ու գյուղացիության միջև շարունակվում։

Բացի Ցուրաբերդից, վանքի ոտնձգությունների դեմ պայքարում էր նաև Ավելադաշտը, որին պատմիչը «ավազականոց» է անվանում, ավելացնելով, թե «լի էր ելուզակ մարդկանցով, որոնք բազմաթիվ ոճիրներ էին գործում և շատ նեղություն էին հասցնում (վանական) եղբայրությանը ու շրջակա սահմաններին»[58]։

Եպիսկոպոսը Սյունյաց իշխանների օգնությամբ «հալածական արեց այդ մարդկանց, քանդելով ավերեց, հիմնահատակ արեց նրանց «ապստամբա-

---

55 Ստ. Օրբելյան, էջ 247։

56 Նույն տեղում, էջ 47։

57 Տե՛ս նույն տեղում, էջ 48։

58 Նույն տեղում, էջ 257։

նոցը», իսկ այդ վայրը իր սահմանով եկեղեցու սեփականությունը դարձրեց և մեծամեծ ու ահագին նզովքով արգելք դրեց, որ մեկն ու մեկը չհամարձակվի այնտեղ բնակվել կամ շինություն կառուցել»[59]։

Ապստամբների ճնշումը, նրանց շեն բնակավայրերի կործանումը, բնակիչների հալածումն ու հեռացումը, այդ վայրերը վերստին շենացնելու և բնակեցնելու արգելքը կատարվում էր սրի և խաչի դաշինքով։ Բայց երբ սուրը դժվարությամբ էր կտրում, խաչն էլ անզոր էր, օգնության էր կանչվում մի երրորդ ուժ՝ դրամի զորությունը։ Պատմիչն ասում է, թե «վանքի դիմաց կար մի ապստամբանոց վայր, որ Տամալեկք են կոչում. և շատ և մեծամեծ վիշտ ու նեղություն էին հասցրել տամալեկցիները վանքին, տեր Հովհաննեսը բազում անգամ ջանաց, բայց չկարողացավ բնակիչներին դուրս քշել և տեղը սեփականացնել...»[60]։

Օգնության է հասնում Սմբատ գահերեց իշխանի կին Սոփին, որը, ճիգ ու ջանք չխնայելով և հազար դահեկան վճարելով, հազիվ մի կերպ այդ վայրն իր ձեռքն է գցում և նվիրում վանքին[61]։

Այս դեպքերը տեղի են ունեցել 943 թ., երբ Տաթևի Կաթողիկե եկեղեցու նավակատիկից արդեն անցել էր 37 տարի, սակայն պայքարը վանքի և գյուղացիության միջև շարունակվում էր և դեռ պիտի հարատևեր մինչև հաջորդ դարի սկզբները։ Եղել են ժամանակներ, ինչպես Ստեփանոս Օրբելյանն է գրում. «Երբ որ հայրապետանոցը (Տաթևի վանքը) խանգարված էր և եկեղեցու ժառանգավորները (հոգևորականությունը) ցրված, այս վայրերը ոմանք (իմա՝ գյուղացիները) գրավեցին և վերստին շինեցին և մեծամեծ հալածանքներ հարուցեցին եկեղեցուն՝ Վասակ թագավորի, Սևադայի և նրանց մոր՝ Շահանդուխտի օրոք. և կրկին ավերեցին վանքը»[62]։

Ապստամբ գյուղացիները 1003 թ. սպանում են Տաթևի Հակոբ եպիսկոպոսին, որին հաջորդած Գրիգոր եպիսկոպոսի օրոք Սյունյաց Սմբատ թագավորը հրամայում է «բնաւին ի բաց ջնջել զտեղի բերդոյն»[63]։ XI դարի սկզբին Սյունյաց Գրիգոր եպիսկոպոսը «քակեաց զանիծաբնակ քարն Ցուրայ և բնաջինջ յատակեաց»[64]։

Սյունիքի X դարի այս անցքերը ցայտուն օրինակ են մի կողմից՝ վանական խոշոր հողատիրության կազմավորման և այդ նպատակով գյուղացիական հողերի գրավման, իսկ մյուս կողմից՝ հողօգտագործման իրավունքը ժառանգաբար պահպանելու համար գյուղացիության մղած համառ և տևական պայքարի, որը ապստամբության և զինված ընդհարումների կերպարանք ստացավ։

Այդ շարժումն ուղղված էր ֆեոդալական, տվյալ դեպքում վանական հողատիրության դեմ, ինչպես երևում է, կրելով թոնդրակյան շարժման գաղափարական ազդեցությունը, ուստի նրա դեմ միասնաբար հանդես էին գալիս և

59 Ստ. Օրբելյան, էջ 257—258։
60 Նույն տեղում, էջ 270—271։
61 Տե՛ս նույն տեղում, էջ 270։
62 Նույն տեղում, էջ 250։
63 Նույն տեղում, էջ 251։
64 Նույն տեղում, էջ 294։

հոգևորականությունը՝ հնարավոր բոլոր միջոցներով ու եղանակներով, և աշխարհիկ ֆեոդալները՝ զենքով ու զորքով։

Եկեղեցին և հոգևորականությունը ֆեոդալական հասարակության և նրա հողատեր դասակարգի տիրապետության արդարացնողը և գաղափարական հենարանն էին, ուստի հողատերերը չէին կարող հանդուրժել եկեղեցու հեղինակության և իրավունքների դեմ եղած որևէ ոտնձգություն։ Ահա թե ինչու ամենադաժան ձևով ճնշվեց Սյունիքի գյուղացիության պայքարը, որն ուղղված էր Տաթևի վանքի դեմ։

Այրարատում և Սյունիքում բռնկված գյուղացիական շարժումները Հայաստանում IX դարի երկրորդ կեսում ծայր առած և մինչև XI դարի կեսերը հարատևած գյուղացիական ծավալուն շարժման առանձին օղակներ են եղել, ուղղված աշխարհիկ և եկեղեցական խոշոր հողատիրության և ֆեոդալական ճնշման ու կեղեքման դեմ։ Այրարատում այդ շարժմանը մասնակցել է նաև քաղաքի աղքատ և ճնշված բնակչությունը։

Բնական է, որ այդ շարժումն ուղղված էր նաև օտար նվաճողների և երկիրը ասպատակողների դեմ։ Դա անդրադարձնում էր ոչ միայն օրվա, այսինքն մի կարճ ժամանակամիջոցի պատմական իրողությունը, այլ հայ ժողովրդին բաժին ընկած դարավոր ճակատագիրը։

## 3. ԹՈՆԴՐԱԿՅԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԾԱՎԱԼՈՒՄԸ X ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԵՎ XI ԴԱՐԻ ԱՌԱՋԻՆ ԿԵՍԵՐԻՆ

Թոնդրակյան գաղափարական դրոշի ներքո առաջացած սոցիալական պայքարը գնալով սրվում էր, քանի որ նրա առաջացման սոցիալ-տնտեսական պատճառները՝ գյուղական համայնքների հողերի զավթումը աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների կողմից և գյուղացիների կախումը նրանցից, ոչ միայն չէին վերացել, այլև հետզհետե խորանում էին։

Ավելի ու ավելի ձևավորվում էր ֆեոդալների և վանքերի սեփական տնտեսություն-կալվածքը, որը քաղաքների և առևտրի զարգացմանը համընթաց մասամբ ներգրավվում էր փոխանակային հարաբերությունների մեջ։ Այս ամենի հետևանքով սաստկանում էր գյուղացիության կեղեքումը և սկսվում նրանց մի մասի ճորտացումը։

Հասկանալի է, որ նման պայմաններում ոչ իշխանների սուրը, ոչ էլ եկեղեցու խաչն ու բանադրանքը չէին կարող կասեցնել թոնդրակյան շարժման ծավալումը։ Այդ շարժումը դրսևորվում էր տարբեր ձևերով ու եղանակներով, անգամ ֆեոդալական սեփականության դեմ կատարվող փոքր խմբերի պատահական հարձակումներով, որոնք իշխողների կողմից անվանվում էին ավազակություն կամ հելուզակություն։ Թոնդրակյան շարժումը տակավ առ տակավ նոր թափ ու ծավալ էր ստանում և XI դարում պետք է վերածվեր գյուղացիական ապստամբության։

IX և X դարի սկզբներին ստացած ծանր հարվածներից հետո թոնդրակյան շարժումը մի առ ժամանակ ավելի խուլ դրսևորումներ ունեցավ, մանավանդ եկեղեցին և ֆեոդալները նրա դեմ պայքարում էին անխնա դաժանությամբ։

Թոնդրակյան շարժումն ավելի արմատացած էր Հայաստանի հարավում, որտեղ նրանց համայնքները կայուն էին։

X դարի վերջերին և XI դարի սկզբներին Թոնդրակյան շարժումը, նոր, ավելի հուժկու թափ ստացավ։

Գրիգոր Նարեկացու Կճավա ուխտին գրած թղթում նշվում է, որ այդ վանքում կան Թոնդրակյան գաղափարները հովանավորողներ, անդամ հետևողներ. «լուայ թէ յանյիշելի ամենազազիր մծղնութիւն աղանդաւորութեան անիծելոց Թոնդրակեանցդ ի միջի ձերում բարեխոհիցդ յիշատակի, և հիացայ՝ զարմացայ՝ ընդ այդպիսի անյարմար երեսս բանի...»[65]։

Կճավա վանքում հաստատված Մուշեղ անունով անվանի և ակնհայտորեն ըուսամիտ գիտնականը, լինելով Թոնդրակյան շարժման գաղափարախոսներից մեկը, պաշտպանում էր այդ շարժումը և նրա մասնակիցներին։ Նկատի ունենալով եկեղեցու գործադրած հալածանքները Թոնդրակյանների դեմ, նրանց բանադատելն ու նզովելը, Մուշեղը պնդում էր, որ Թոնդրակյանները քրիստոնեական առաքելավանդ դավանանքին օտար չեն, ինչու են նրանց նզովում, ո՞ր գրքերում է սահմանված մարդկանց նզովելը,— ասում է նա։ Անանիա Նարեկացու հակաճառությունը Թոնդրակյանների դեմ նա համարում էր «զրաքանական կամ անպատեհ կամ ոչ Աստուծով խօսեցեալ»[66]։ Մուշեղը օրինական էր համարում հակառակորդի դեմ պայքարելը, Թերին լրացնելը, խավար մարդկանց համար լույս, աղ և խրատիչ լինելը[67]։

Գրիգոր Նարեկացին Մուշեղի ընդունած լույսը խավար, իսկ նրան՝ օձահար Թովիչ և անիմաստ դեղատու էր համարում։ Նարեկացին ասում էր. «Գիտությունը եթե աստծու մտով օժանդակված չէ, ապա վատ ազդեցություն կրած անընտրելի ձայն է և նենգ պատգամ, որը խափանում է խաղաղությունը»[68]։

Գրիգոր Նարեկացին արդարացնելով հալածանքները Թոնդրակյանների դեմ, ասում էր, եթե պատվիրանով պարտավոր էինք նզովել մարդկանց մասնակի Թերությունների կամ շեղումների համար, ապա «որչափ առաւել զբազմահերձուած ժողովոյն զդաս, որ կտրեալ են ի Քրիստոսէ և կապեալ միացեալ ընդ սատանայի»[69]։

XI դարի առաջին կեսում Թոնդրակյան շարժումը լայնորեն տարածվեց նաև Հայաստանի հարավ-արևմտյան գավառներում և Միջագետքում, ինչպես և Հայաստանի արևմտյան գավառներում, որոնք ենթակա էին Բյուզանդական կայսրությանը։

XI դարի սկզբին Թոնդրակյան շարժումը բորբոքվեց «ի գաւառն Հարքայ և զբազումս խռովեաց»[70]։ Այդ ժամանակ շարժման առաջնորդն էր Հարքի Հակոբոս եպիսկոպոսը։ Սա իր առաքինի և զուսպ կենցաղավարությամբ մեծ

---

65 «Գիրք Թղթոց», էջ 498։

66 Նույն տեղում։

67 Տե՛ս նույն տեղում, էջ 101։

68 Նույն տեղում, էջ 501—502։

69 Նույն տեղում։

70 Արիստակես Լաստիվերտցի, էջ 119։

համբավ էր վաստակել և իր նման քրձազգյաց, պահք պահող «բոկոտն և հեշտալի կերակուրներից զրկված» քահանաների հետ շրջում և քարոզում էր Հարք գավառում, շարժելով մարդկանց զարմանքը, և ամենքը՝ մեծ ու փոքր հնազանդվում էին նրան։ Պատմիչը պնդում է, թե նա կեղծավորություն էր անում. ասված է, թե «Սատանան էլ լուսո հրեշտակի կերպարանք է ընդունում, ի՞նչ թե նրա պաշտոնյաները (որ) Քրիստոսի առաքյալների տեսքով են հանդես գալիս»[71], որպեսզի որոմ ցանեն, կենարար ջրին մրուր խառնեն և միամիտ քրիստոնյաներին խաբելով թակարդը գցեն։ Այսպես է բնութագրում պատմիչը Հակոբոսին, անվանելով նրան «անդրանիկ որբանեակն և համաշունչ հօրն ամենայն չարեաց», որը մեծ համբավ ձեռք բերելուց հետո սկսեց քրիստոնեական հավատին նետաձիգ լինել, և նրա սլաքները կաղնու ածուխի կայծերով էին մխված, «քանզի յոյժ խօսնակ էր այրն, և ճարտարալեզուութեամբ կախարդէր զբազմաց լսելիս» և կարծում էր թե դրանով կարող է հիմնահատակ տապալել քրիստոնեական սուրբ եկեղեցին[72]։

Հակոբոսը քահանաներ է ընտրում ըստ արժանավորության, կարգադրում է նրանց տարեկան միայն երեք պատարագ մատուցանել, մերժում է Նիկիայի տիեզերական ժողովի կանոնները, որոնցով սահմանված էր՝ «Թէպէտ և յոյժ մեղաւոր իցէ (հաւատացեալը), պարտ է զխոստովանութիւնն ընդունել... հաղորդեցուցանել և պատարագաց և ամենայն քրիստոնէական կարգաց արժանեցուցանել...»[73]։

Սա սոսկ դավանաբանական հարց չէր, այլ ուներ սոցիալ-տնտեսական արմատներ։ X—XIII դարերի մատենագրական աղբյուրները և վիմագիր արձանագրությունները ցույց են տալիս, որ պատարագը, խոստովանությունը և հաղորդությունը դարձել էին բնակչության կեղեքման լայնորեն տարածված միջոց։ Ունևոր և իշխող խավերի ներկայացուցիչները ամեն տեսակ շահատակություններից հետո եկեղեցուն նվիրում էին հողեր, այգիներ, գյուղեր, ջրաղացներ, ձիթհաններ, տներ, կուղպակներ և այլ անշարժ, ինչպես և շարժական ունեցվածք, դրամ, որպեսզի իրենց համար պատարագ մատուցվի և կատարած մեղքերին թողություն տրվի։ Պատարագի և խոստովանության համար տրվող նվերները դարձել էին մեղքերի թողության միջոց, ինչպես ինդուլգենցիաները Արևմտյան Եվրոպայի երկրներում։

Իշխողները անշարժ ունեցվածքի տիրում էին խլելով այն գյուղական համայնքներից կամ ունեցվածք և հարստություններ ձեռք էին բերում սաստկացնելով իրենցից կախյալ բնակչության կեղեքումը։ Աշխատավորներն էլ պարտավոր էին նվերներ, խոստովանադրամ և հաղորդադրամ տալ եկեղեցուն։ Այսպիսով, Նիկիական ժողովի կանոնների մերժումը ստացել էր սոցիալ-տնտեսական լուրջ բովանդակություն։

Հակոբոսը մերժում էր նաև մատաղը։ Այն հեգնանքի ենթարկելու նպատակով նա ժողովրդի բազմության առջև բերել տալով մատաղացու մի անասուն,

---

71 Արիստակես Լաստիվերտցի, էջ 119։

72 Նույն տեղում, էջ 121։

73 Նույն տեղում, էջ 122։

դիմում էր նրան՝ «Այ տառապյալ չորքոտանի, ասենք, թե նա իր ժամանակին մեղքեր գործեց և մեռավ, դու ինչ մեղք ես գործել, որ նրա հետ պիտի մեռնես»։ Եվ այս բանի վրա ժողովուրդը երկու մասի բաժանվեց, ոմանք ընդունեցին այս, մյուսները՝ ոչ և կարծես ամենքը ծուփ ու տարակուսանքի մեջ էին ընկել, վկայում է պատմիչը[74]։

Հակոբոսի քարոզներին հետևում էին ոչ միայն աշխատավորական խավերը, անապատների և քարանձավների ճգնավորները, այլև խոշոր հողատերերի կողմից ճնշվող գավառական իշխանները, մանր հողատերերը, որոնք և թույլ չտվեցին, որ Հակոբոսը հանձնվի վրեժխնդիր հոգևորականության եկեղեցու գումարած ժողովի հաշվեհարդարին։

Դառնալով իրեն հավատարիմ հետևորդ մնացող Եսայի անունով մի քահանայի մատնության զոհը, Հակոբոսը «քաղցրական բանիւք» կանչվում է Սարգիս Սևանեցի կաթողիկոսի (992—1019) մոտ, որը նրան կարգալուծ է անում, ճակատին աղվեսի կերպարանքով դրոշմ խարանում և հրամայում է բանտ նետել։ Հակոբոսը փախչելով բանտից անցնում է Բյուզանդական կայսրության սահմանները, հասնում Կոստանդնուպոլիս[75], ապա վերադառնալով այնտեղից, գալիս է Ապահունյաց գավառը և շարժումը գլխավորելու համար հաստատվում Թոնդրակ ավանում, որին հոգևորական պատմիչը տալիս է սատանայի բնակարան, ատված ուրացողների ժողով և գազանների գառագիղ (որջ) անունները։ Ապա Հակոբոսն անցնում է Խլաթի գավառը՝ յուրայինների, այսինքն թոնդրակյանների ագարակները, այնտեղից Մուֆարկին (Նփրկերտ) քաղաքը, որտեղ և մեռնում է[76]։

Հայաստանի արևմտյան գավառներից թոնդրակյան շարժումը հատկապես զորեղ բռնկումներ ունեցավ Մանանաղիում։ «Թէ որպէս և ի Մանանաղոյ սահմանն բորբոքեցաւ հրդեհ մոլորութեանն» վերնագրել է իր գրքի մի գլուխը Արիստակես Լաստիվերտցին, հաղորդելով ուշագրավ մի շարք տեղեկություններ։ Նա պատմում է, որ Շիրնի կոչված բերդաքաղաքի մոտ մի ագարակում բնակվում էր Կունծիկ աբեղան, որի անունով այսօր էլ կոչվում է այդ ագարակը։ Նա թոնդրակյան շարժման առաջնորդներից մեկն էր և իրեն համարում էր աղվանեցի մի աբեղայի հետևորդ։ Կունծիկին պատմիչը անվանում է սատանայի խորհուրդների շտեմարան, և ավելացնում է՝ նրա բերնից գեհենի մշտաբորբոք հնոցի ծուխն էր դուրս գալիս, որով թունավորվեցին շատերը։ Դրանց թվում հիշատակված է Հրանույշ անունով մի կին, որը ագարակի և սահմանակից հողերի տեր էր, այսինքն մանր հողատեր ազնվական էր։ Հրանույշը դառնում է թոնդրակյան գաղափարների քարոզիչ և շատերի թվում շարժման մեջ ընդգրկում է նաև Ախնի և Կամարա քույրերին, որոնք տոհմակից էին նրան։ Սրանք ևս «վարդապետք եղեն սատանայի»,— ասում է պատմիչը,— ունեցան շատ հետևորդներ և իրենց ունեցած երկու գյուղերը դարձրեցին վիշապ օձի (իմա՝ Կունծիկի) հանգրվան։ Նրանց միացավ նաև նրանց եղբայր իշխան

74. Արիստակես Լաստիվերտցի, էջ 122—123։

75. Արիստակես Լաստիվերտցու վկայությունը, թե Կոստանդնուպոլսում Հակոբոսը փորձել է ընդունել քաղկեդոնական դավանանք, պետք է նկատվի իբրև սովորական հերյուրանք։

76. Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 124—125։

Վրվեռը։ Անիի և Կամրջա քույրերի Կաշե և Արշյուսս կոչվող ագարակներն իրենց բնակչությամբ վերածվեցին թոնդրակյան համայնքների և շարժման կենտրոնի։ Այս ագարակների եկեղեցիները լքվեցին։ Բնակիչները դադարեցին պաշտել խաչը։ Թոնդրակյանները Յուս. Լ. շարդ ու փշուր արեցին Բազմաղբյուր ավանի խաչը, որը հատուկ ծիսակատարությունների, հետևաբար մատաղի և նվիրաբերության վայր էր դարձել։



Խաչքար, 11-րդ դար

Խաչը կործանող թոնդրակյանները դյուրությամբ հայտնաբերվում են, որովհետև նույն գիշերը ձյուն էր տեղացել, և հետքերը տանում են նրանց բնակավայրը։ Գավառի առաջնորդ Սամուել եպիսկոպոսը մյուս եպիսկոպոսների, քահանաների և ամբոխի հետ գնում են թոնդրակյանների բնակավայրը, հավանաբար Կաշե, որը հրկիզում են, իսկ նրանց ղեկավարներից վեցին, «զորս վարդապետս ասէին լինել չար և պիղծ կրօնիցն», ձերբակալելով տանում են Ջերմա քաղաքագյուղը և աղվեսադրոշմ խարանում նրանց ճակատներին։

Այս դեպքերը տեղի են ունեցել Սարգիս Սևանեցի կաթողիկոսի օրոք, հավանաբար 1011 թ. գարնանը, իսկ ամռանը Բյուզանդական կայսրությունից, որի կազմում այդ ժամանակ գտնվում էր Մանանաղի գավառը, ուղարկվում է Եղիա (Էլիաս) անունով դատավորը, եղելությունը քննելու և մեղավորներին պատժելու համար։ Եկեղյաց գավառում Եղիային ընդառաջում է Վրվեռ իշխանը, ամբաստանելով Սամուել եպիսկոպոսին և բողոքելով, որ իր ունեցվածքը ավար են տարել և գյուղը հրկիզել։

Եղիան իր մոտ կանչելով Սամուել եպիսկոպոսին, կամենում է բանտ նետել, բայց սա գնացել էր հոգևորականների և աշխարհիկ մարդկանց մեծ բազմությամբ, որոնք ամբաստանում են Վրվեռին և մյուս թոնդրակյաններին և, եթե իշխան Վրվեռը մի կերպ ազատվում է պատժից, ապա նրա ընկերակից թոնդրակյաններից ում որ գտնում են՝ «մեծամեծ հարուածովք և գանիւ տանջեալ, հալածական արարին, ւռերելով զտունս նոցա»[77]։

Բարձր հոգևորականության ներկայացուցչի, ինչպիսին էր Հակոբոս եպիսկոպոսը և իշխանների ու իշխանուհիների (որքան էլ դրանք մանր հողատերեր լինեին) մասնակցությունը, այն էլ ղեկավար դերը թոնդրակյան շարժման մեջ նոր երևույթ էր, որը պետք է դիտվի իբրև հայկական հասարակության սոցիալական և քաղաքական ճգնաժամի հետևանք։ Հոգևորականության միջից առաջացած առավել լուսավոր անհատները չէին կարող հաշտվել օրավուր խորացող սոցիալական անարդարությունների և վանքերի ու եկեղեցական իշխանավորների ճոխության և ընչաքաղցության հետ, որով եկեղեցին շատ էր հեռացել վաղ քրիստոնեական համայնքների վիճակից, մասամբ և գաղափարախոսությունից։ Մանր հողատեր իշխանները հարեցին թոնդրակյան շարժմանը խոշոր հողատերերի ճնշման և իրենց անշարժ ունեցվածքը կորցնելու մշտական վտանգից։ Միաժամանակ, ինչպես առաջավոր հոգևորականներին, նույնպես և մանր հողատերերին թոնդրակյանների բանակն էր բերում Բագրատունյաց պետության քաղաքական ճգնաժամը, կապված երկրի ներսում առաջացող պառակտիչ ուժերի, Բյուզանդական կայսրության առաջխաղացման և հայկական հողերի նվաճման հետ, մանավանդ, որ թոնդրակյաններն էլ մղում էին ոչ միայն սոցիալական պայքար, այլև մաքառում էին Հայաստանի արտաքին թշնամիների դեմ, հանուն երկրի անկախության։

Նոր և վերին աստիճանի ուշագրավ երևույթ էր թոնդրակյան շարժման թափանցելը քաղաքները։

Վերևում տեսանք, որ Այրարատյան նահանգում X դարի սկզբին բռնկված ապստամբության ժամանակ քաղաքներն էլ են հարվածի ենթարկվել, բայց այնտեղ շատ ընդհանուր և բնորոշ ձևով ասված է «եւ առհասարակ զքաղաքս և զգեօղս և զաւանս և զագարակս, այլ և զտունս իւրեանց քանդէին ձեռօք իւրեանց»[78]։ Մինչդեռ XI դարում տեղի են ունեցել որոշ անցքեր, այն էլ Բագրատունյաց մայրաքաղաք Անիում, որոնց վրա կարելի է նկատել մի կողմից քաղաքական տարբեր կողմնորոշումներ ունեցող խմբերի ներքին երկպառակության և պայքարի, մյուս կողմից թոնդրակյան շարժման դրոշմը։

---

77 Արիստակես Լաստիվերտցի, էջ 132։

78 Հովհաննես Դրասխանակերտցի, Պատմութիւն, էջ 324։

Ինչպես միջնադարյան ամեն մի քաղաքում, Անիում էլ խտացած ձևով իրենց դրսևորումներն էին գտնում սոցիալական անարդարությունը և ճնշումը։ Այնտեղ կար նաև գերեվաճառության շուկա, որ. Նշան եկեղեցու առջև վաճառում էին անգամ երեխաներին[79]։ Բագրատունյաց թագավորության քաղաքական ճգնաժամի տարիներին Անին դարձել էր ներքին երկպառակությունների և բախումների կենտրոն, մանավանդ տեղական և բյուզանդական կողմնորոշում ունեցող իշխանավորների և բարձր հոգևորականության տարբեր թևերի համար։ Բյուզանդական կողմնորոշում ունեցողների պարագլուխը Պետրոս Գետադարձ կաթողիկոսն էր, որը դեռևս 1023 թ. ձևակերպել էր հայկական հողերը Բյուզանդական կայսրությանը հանձնելու կտակը և այժմ էլ ջանում էր իրագործելու այն։ Միաժամանակ նա երկրի ամենախոշոր հողատեր շահագործողներից մեկն էր, ուստի կրկնակի պատճառ և առիթ կար, որպեսզի նրա դեմ պայքարեր հակաբյուզանդական հայրենասեր հոսանքը, և քաղաքային բնակչության խռովությունը ուղղվեր նախ և առաջ նրա դեմ։

Ծագած խռովության առթիվ տեղեկություններ հաղորդում է Գրիգոր Մագիստրոսը իր նամակներում, որոնք վերնագրված են «Առ տէր Պետրոս ի ժամանակի խուժան յառնելոյ ի քաղաքին ի վերայ նորա, բան մխիթարական»[80] և «Առ ոմն սարկաւագ տեառն Պետրոսի ի ժամանակի խազմի խուժանին ի վերայ յարուցեալ»։ Երկու դեպքում էլ խոսքը վերաբերում է «խուժանի խազմին», այսինքն ամբոխի խռովությանը կամ ժողովրդական մի խլրտման ընդդեմ կաթողիկոսի։ Որ այդ խռովությունը բարձրացնող ամբոխի կազմում եղել են նաև թոնդրակյաններ, պարզ երևում է երկրորդ նամակից, որտեղ խոսվում է «մեր երկնային երանելի կրոնին» պատահած աղետի մասին, որ եղել է նրան ներհակ, չարը գրգռող և «անօրէն մանիքեցւոցն» չար «այլոց բազմաց աղանդոց» կախարդ հմայությունից և «այլոց բազմաց աղանդոց»։ Նամակում ասվում է նաև, որ նրանք կամենում էին «զվսամական սրբազնութեան լուսափայլութեան ճրագն շիջուցանել...» և հույս է հայտնվում առ Աստուած, «զի փրկեսցէ զմեզ հանդերձ մերով զարմիւ յայնպիսի դիւական և մոլեգնեալ հաղբից և խմորեալ զանգուածոյ Սադուկեցւոցն անհաւատութենէ[81]...»։

Այդ անցքերին ժամանակակից հեղինակները, և ամենից հաճախ ինքը Գրիգոր Մագիստրոսը մանիքեցի, սադուկեցի և այլ անուններով կոչել են թոնդրակյաններին։

Պետրոս կաթողիկոսի դեմ Անիում հանդես է եկել վերին աստիճանի համարձակ և հանդուգն թոնդրակյան մի գործիչ, Ներսես անունով, որը հոգևորական է եղել։ Ներսեսը մերժել է եկեղեցական դրույթները, սուրբ հոգին, Քրիստոսի աստված լինելը, սերովբեներին։ Գրիգոր Մագիստրոսի ասելով նա ծառայել է չարին, ծավալել մոլի և դժնի գործունեություն, իր լեզուն Աստծու

---

79 Անիում տեղի ունեցած սոցիալական շարժումները և թոնդրակյանների մասնակցությունը դրանց առաջին անգամ նկատել է բանասեր Աս. Մնացականյանը, տե՛ս նրա «Թոնդրակյան շարժման մի քանի գլխավոր հարցերի մասին» (ԳԱ Տեղ., 1954, № 7, էջ 63)։

80 Աս. Մնացականյան, նշված հոդվածը, էջ 65։

81 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 36։

դեմ էլ է ուղղել՝ նետելով թույնը իբրև արձան վիմի, ապա նաև աստծու փոխանորդի (իմա՝ կաթողիկոսի) և Քրիստոսի բոլոր հավատացյալների դեմ։

Գրիգոր Մագիստրոսն իրեն ժամանակակից այս թոնդրակեցու դեմ գրում է մեծագույն զայրույթով և ցասումով և հայհոյանքների ու անվանարկումների մի տարափ է թափում նրա գլխին՝ հուդա, կայեն, նեռ, ապերախտ, ուրացող, լկտի, անամոթ, վավաշ, հրաշունչ քաղ (այծ), քծնի աղվես, հափշտակող գայլ, գիշերահսկու գազան, գերեզմանակրկիտ բորենի, մոլի անզգամ, աստվածամարտ, խռովարար, հմայող և կախարդ և բազում նման բաներ, համեմատելով նրան հայտնի շատ հերձվածողների հետ։

Գրիգոր Մագիստրոսը հրճվում է, որ կաթողիկոսը շուտ է ճանաչել և պատժել Ներսեսին և խրախուսում է Քրիստոսի տեղակալին՝ այդպիսի դեպքերում վճռական լինել։ Եթե մեկը հայհոյում է ժողովրդի իշխանին, մահապատիժ պետք է կրի, ապա որքան առավել պատիժ պետք է կրի եկեղեցու պետականությանը հայհոյողը, ասում է Պահլավունի իշխանը։ Իհարկե, միամտություն կլիներ կարծել, թե կաթողիկոսը ծածկաբար Վասպուրական փախավ միայն ամբոխի ձեռքից, ավելի շուտ նա տեղի տվեց հակառակորդ հայրենասեր հոսանքին, մանավանդ վերջինիս և «ամբոխի» դիրքորոշումը բյուզանդասեր հոսանքի պարագլուխ կաթողիկոսի նկատմամբ, տվյալ դեպքում, համընկնում էր։ Փաստ է նաև, որ երբ Վասպուրականի բյուզանդական կառավարիչի միջամտությամբ կաթողիկոսը կրկին Անի վերադարձավ նրան կալանքի առնողը հենց Հովհաննես Սմբատ թագավորը եղավ։ Աչառհանդերձ թոնդրակյան շարժման ազդեցությունը Անիի անցքերի վրա ակնհայտ է։

Թոնդրակյան շարժումը XI դարի առաջին կեսում հասավ իր զարգացման և ծավալման բարձրակետին, ընդգրկելով համարյա ամբողջ Հայկական լեռնաշխարհը, անցնելով նաև Բյուզանդական կայսրության ենթակա գավառները, Միջագետք, իսկ Արևելքում նաև Հայոց Աղվանքի գավառները, ուստի նրանց դեմ պայքարի էին ելել ոչ միայն Հայաստանի թագավորներն ու եկեղեցին, այլև Աղվանքի կաթողիկոսները և բյուզանդական պետությունը։ Այն դարձել էր մի հուժկու անհաղթահարելի շարժում։ Իր սոցիալական և ազատագրական բնույթով այդ շարժումը վերին աստիճանի կենսունակ գտնվեց և հարատևելով ավելի քան երկու հարյուր տարի, ալեկոծեց երկիրը այն աստիճան, որ Գրիգոր Մագիստրոսը ստիպված էր արձանագրել, թե նրանք իրենց «մոլորության», այսինքն գաղափարախոսության ու գործունեության այնպիսի ատրուշան կանգնեցրին, որ Քրիստոսի հոտը (ժողովուրդը) անհոգաբարձ եղավ, այսինքն դուրս եկավ հոգևոր հովիվների, հովվապետների, արքաների և իշխանների հոգաբարձությունից։

Շարժումն ընդգրկել էր գյուղական բնակչության լայն զանգվածները, արմատներ էր ձգել քաղաքներում, հետևորդներ և գործիչներ ունենալով նաև հոգևորականության, անգամ բարձր հոգևորականության և մանր ու միջին հողատերերի շրջաններից։ Նման պարագաներում այն պետք է ունենար իր ճյուղավորումները կամ թևերը, որոնք իրարից տարբերվեին գաղափարախոսության և պայքարի առավել կամ նվազ հետևողականությամբ։ Եվ իրոք, Գրիգոր Մագիստրոսը թոնդրակյան շարժման մեջ տարբերում է երեք թև.

1. «Որք ի չարն կատարելագոյնք են և կարող են ընդունել զմահացու դեղն, այնոցիկ քարոզեն իբրև անյուսութեան ամենևին և անաստուածութեան իբրու զծպիկուրեանցն», այսինքն մերժում են աստծուն, հանդերձյալ կյանքը, դրախտը։

2. «Իսկ ոմանց նմանութեամբ Մանիքեցեացն զորս անիծեն, բայց զնոյն գործեն», ինչ որ մերժում են խոսքով, նույնը կատարում են գործով։

3. «Իսկ ոմանս իբրև քրիստոնեական աւանդութեամբ ուսուցանեն առ երես», բայց իրենք բոլորովին մերժում են խոստովանությունը, ինչ էլ որ ուսուցանում են քրիստոնեական կարգի ու կրոնի նկատմամբ այլանդակ մի բան է, եկեղեցի, եպիսկոպոս, քահանա չեն ճանաչում, «ասեն բանիւք, եթէ մեք յԱրամեան գնդէն եմք (այսինքն հայ ենք) և հաւատով համեմատ նոցա», բայց ոչ մի բանով համեմատ չեն, այլ հակառակ են, հարում է Գրիգոր Մագիստրոսը[82]։



Դվինի միջնաբերդը

Գրիգոր Մագիստրոսի այս կարևոր վկայությունը ցույց է տալիս, որ թոնդրակյան շարժումը միասնական չէր, ուներ երեք ուղղություն կամ թև՝ արմատական-հետևողական, որը մաքառում էր եկեղեցու դեմ և փորձում էր հասարակական կյանքը վերակառուցել ինչքային հավասարության և ժուժկալության հիման վրա կառուցվող վաղ-քրիստոնեական տիպի հա-

82 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 158—159։

*մայնքների նման, ապա շափավոր և ուղեկիցների թևերը՝ որոնք հետամուտ էին մասնակի բարեփոխությունների։ Այս հանգամանքը ավելի ցայտուն կերպով դրսևորվեց XI դարում և իր բացասական ներգործությունն ունեցավ շարժման ընթացքի վրա։ Ուշագրավ է նաև, որ երրորդ թևի հետևորդներն ավելի տարածված էին Բյուզանդական կայսրությանը ենթակա հայկական գավառներում և Միջագետքում։ Նրանք շեշտում էին իրենց հայ լինելը և հայ դավանանքին պատկանելը, որով թերևս ավելի էր երևան գալիս օտար տիրապետության դեմ մաքառելու նրանց քաղաքական հակումը։*



Սմբատաբերդի ավերակները Վայոց ձորում

*Այդքան երկարած թոնդրակյան շարժումն ունեցել է իր առաջնորդները, որոնք Սմբատ Զարեհավանցուց հետո հաջորդաբար ղեկավարել են շարժումը։ Գրիգոր Մագիստրոսը հիշատակում է նրանց հետևյալ կարգով. «զանիծեալն Սմբատ և որ զկնի նորա այսոքիկ՝ Թոդրոս, Անանէս, Արքայ, Սարգիս, Կուրեղ, Յեսու» ավելացնելով, որ սրանք աղանդը ղեկավարեցին 170 տարի։ Կյուրեղի մասին Մագիստրոսը վկայում է, որ նա բազմության ժողովում ասել է, թե քրիստոնյաների հույսը (հանդերձյալ կյանքի և դրախտի մասին) սնոտի է, մերժել է հաղորդությունը և խմորը առնելով թաթախել է գինու մեջ ու շպրտել, ասելով՝ «այդ է խաբեութիւն քրիստոնէից» և ամեն տեսակի հայհոյանքներ է արել Աստվածածնին և ամենայն «տնօրինութեան», այսինքն Քրիստոսի մարդեղության ու գործունեության և աստվածային նախախնամության վերաբերյալ։*

Կյուրեղին հաջորդած Հեսուն շարժման առավել նշանավոր առաջնորդներից էր, որը հաստատված Թոնդրակ ավանում, լայն կապեր ուներ Հայաստանի շատ վայրերի հետ, և նրան նամակներ էին գալիս «ամբողջ աշխարհից», և այդ նամակներից շատերն ընկել են Մագիստրոսի ձեռքը, երբ նա ավերում էր Թոնդրակը։ Պետք է ենթադրել, որ ստանալով նամակները Հեսուն հետևում էր սոցիալական այդ մեծ շարժման ընթացքին՝ երկրի տարբեր գավառներում և համապատասխան ցուցումներ էր տալիս ու ղեկավարում շարժումը, որը նրա օրոք (XI դարի առաջին կեսերին) ապստամբության բնույթ էր ստացել։

XI դարի կեսերին շարժման գլուխ կանգնած էր թոնդրակյան առաջնորդ Ղազարը, որի մասին Մագիստրոսը մեծ ցասումով է խոսում, անվանելով նրան «կուրացդ կույր», «մեռեալն հոգւով... ներքին կարապետ» այն բանի համար, «թէ որպիսի աղէտ տարակուսանաց հասոյց դա եկեղեցւոյ»[83]։

Ինչպես վերևում տեսանք, թոնդրակյան շարժումն ունեցել է նաև տեղական՝ գավառական ղեկավարներ։

Թոնդրակյան շարժման մասնակիցների սոցիալական կազմի մասնակի ընդլայնումը և տարբեր թևերի առկայությունը հնարավորություն էր ընձեռում, որպեսզի շարժման մեջ սողոսկեին երբեմն տարրեր, անգամ եկեղեցու կողմից ուղարկված լրտեսներ և մատնիչներ, ինչպիսին էին Հարքի թոնդրակյանների ղեկավար Հակոբոս եպիսկոպոսին մատնող Ծսային կամ թոնդրակյան նշանավոր առաջնորդ Հեսուի գործունեությունը և լայն նամակագրական կապերը մատնող Պոլիկարպոս և Նիկանոր քահանաները։

Որքան էլ լայն ծավալ ընդունած լիներ թոնդրակյան շարժումը, այն չէր կարող հանգեցնել հասարակության հեղափոխական վերափոխության, որի համար նախադրյալներ դեռևս չէին առաջացել։ Թոնդրակյանները, ինչպես միջնադարյան գյուղացիական մյուս շարժումները, հասարակության վերափոխման դրական ծրագիր չունեին և չէին էլ կարող ունենալ, իսկ թերատ հավասարության հիման վրա վաղ-քրիստոնեական տիպի համայնքների ստեղծումը, որին ձեռնարկել էին նրանք, ըստ էության, վերադարձ էր դեպի վաղեմի անցյալը և չէր համապատասխանում ոչ հասարակության զարգացման մակարդակին, ոչ էլ նրա առաջընթացին։

Այդուհանդերձ թոնդրակյան շարժումը հայ ժողովրդի պատմության ամենանշանավոր եղելություններից մեկն էր և ուներ առաջադիմական նշանակություն։ Այն արթնացրել էր ճնշված ժողովրդի ինքնագիտակցությունը և պայքարի հանել նրա լայն զանգվածներին, առաջացրել էր սոցիալական մեծ հակամարտ նրանց և իշխող դասերի միջև, իսկ դա հայ ժողովրդի հավաքականության և օտարերկրյա բռնատիրությունների հակամարտի հետ միասին, ինչպես արդարացի նկատել է ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը[84], հանդիսանում էին Հայաստանի ֆեոդալական հասարակության պատմության առաջմղիչ ներհակությունները։

Թոնդրակյան շարժումն այնքան զորեղ էր և կենսունակ, որ հայկական եկեղեցին, Բագրատունի թագավորները և երկրի մյուս իշխողները չկարողա-

83 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 157։

84 Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք 1, էջ 334։

ցան ճնշել այն, առաջացնելով այդ շարժման հակառակորդների զայրույթն ու վհատությունը միաժամանակ։ Գրիգոր Մագիստրոսը Գագիկ Բ արքային գրած նամակում մեղադրում էր նրան բացականչելով՝ «մինչև յե՞րբ ոչ հասէր ի վերայ խաբօղ սուտակապաստից և թշնամեացն Աստուծոյ»[85]։

Ֆեոդալական հասարակության զարգացումը, կենտրոնախույս ուժերի ուժեղացումը և համահայկական կենտրոնացված պետականության բացակայությունը երկրում առաջացրել էին սոցիալ-քաղաքական ճգնաժամ, որի պայմաններում տեղի ունեցող թոնդրակյան շարժումը և այն ճնշելու իշխող դասակարգի անկարողությունը XI դարի առաջին կեսում խորացրել էին հայկական հասարակության և Բագրատունյաց պետության այդ ճգնաժամը, որը Բյուզանդական կայսրության միջամտությամբ աղետալի հետևանքներ ունեցավ։

---

85 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 212։

ԳԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

# ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔ, ԴՊՐՈՑ, ԿՐԹՈՒԹՅՈՒՆ

## 1. ԴՊՐՈՑՆԵՐԻ ՏԻՊԵՐԸ, ԿՐԹԱԿԱՆ ԳՈՐԾԻ ԴՐՎԱԾՔԸ

*Արաբական տիրապետության ժամանակաշրջանում մեծապես տուժեց հայ ժողովրդի ոչ միայն նյութական, այլև հոգևոր մշակույթը՝ գիրն ու գրականությունը, գիտությունն ու արվեստը։*

*Սկսած IX դարի վերջերից դրությունը փոխվեց։ Հայկական պետականության և երկրի անկախության վերականգնումը, IX—XI դարերում տեղի ունեցող հասարակական-տնտեսական վերելքն ու առաջադիմությունը, նոր պայմաններ ստեղծեցին հայ մշակույթի՝ գիտության, գրի, գրականության և արվեստի, առաջին հերթին դպրոցի՝ կրթական գործի զարգացման համար։*

*IX—XI դարերում Հայաստանում կազմակերպվում են տարրական և բարձր տիպի դպրոցներ։ Տարրական էին հասարակական և առանձնական կամ մասնավոր բնույթի դպրոցները, իսկ բարձր տիպի՝ վարդապետարանները։*

*Հասարակական բնույթի դպրոցները պահվում էին պետության, եկեղեցու կամ հասարակական միջոցներով։ Բագրատունիների օրոք այդպիսի դպրոցներ գործում էին Անիում, Արգինայում, Վանանդում, Կարսում և այլուր։ Աշակերտներին ուսուցանում էին գրել, կարդալ, երգեցողություն և տարրական թվաբանություն։ Սովորում էին ինչպես աշխարհիկ մարդկանց, այնպես էլ հոգևորականների 12—13 տարեկան զավակները։*

*Առանձնական կամ մասնավոր բնույթի դպրոցները կազմակերպվում էին վարդապետների կողմից՝ իրենց տանը կամ առանձնարանում։ Նրանց աշակերտները կոչվում էին «ձեռնասուն մանկունք», այսինքն՝ վարդապետի ձեռքի տակ աճած ու գիտելիքներ ձեռք բերած աշակերտներ։ Այդ դպրոցները տալիս էին սոսկ «քահանայական կրթություն»։ Ավարտելով դպրոցը աշակերտը կարող էր կարդալ և հասկանալ Աստվածաշունչը, երգել շարականներ, ունենալ պատարագի և ժամասացության հետ կապված արարողությունների գործնական իմացություններ, ինչպես և թվաբանական ու տոմարագիտական տարրական գիտելիքներ։ Ուսուցումը առանձնական, ինչպես և հասարակական դպրոցներում տևել է շուրջ երեք տարի։*

*Բարձրագույն տիպի ուսումնական հաստատությունները՝ վարդապետա-*

րանները միջնադարյան հասարակական մտքի և հայ դպրության կարևոր կենտրոններ էին,

Միջնադարյան վանքերը, ինչպես այլ երկրներում, նույնպես և Հայաստանում իրենց գործունեությամբ տարաբնույթ են եղել։ Որոշ վանքեր զբաղվել են կրոնական ինքնանվիրումով ու քարոզով, նաև բարեգործությամբ, հիվանդների բուժումով, ծերերի խնամակալությամբ և այլն, մի մասն էլ գերազանցապես կրթական-մշակութային գործունեություն է ծավալել։

IX—XI դարերում դպրոցներ էին կազմակերպվել երկրի համարյա բոլոր գավառներում, որոնցից շատերը դարձան դպրության խոշոր կենտրոններ, ունեցան նշանավոր ուսուցիչներ և արժանի աշակերտներ. վերջիններս խոշոր դեր կատարեցին հայ ժողովրդի հոգեկան կերտվածքի, ինքնագիտակցության, նույնպես և հայ մատենագրության զարգացման գործում։ Ուսումնա-գիտական այդ կենտրոններում հանդես եկան հայ միջնադարի ականավոր մատենագիրները, պատմիչներն ու փիլիսոփաները, ճարտասաններն ու քերականները, երաժիշտները, իրավագետները, նկարիչ մանրանկարիչները, գրչության և արվեստի շատ մշակներ։

Տվյալ ժամանակաշրջանի ուսումնականների պատկերացմամբ՝ ուսումնագիտական աշխատանքների կազմակերպման համար անհրաժեշտ են համարվել չորս հիմնական պայմաններ. առաջին՝ «զի կամք վարդապետին լինի ուսուցանող և այն՝ առանց ագահութեան կամ փառասիրութեան. երկրորդ՝ ջերմ սեր՝ ուսանողացն. երրորդ՝ ժամանակն խաղաղութեան, չորրորդ՝ տեղիքն անապատ և անդորր»[1]։

Վարդապետարաններին հովանավորել են Բագրատունի թագավորները, իշխանները և եպիսկոպոսական աթոռները։ Առանձին վարդապետարանների հիմնադրումն ու գոյատևումը պայմանավորված է եղել առավելապես նրանց ուսուցչապետների նախաձեռնությամբ և աննկուն ջանասիրությամբ։ Միջնադարյան վարդապետարանները միևնույն մակարդակը չեն ունեցել և հավասար ճանաչում չեն գտել։ «Մեծ վարդապետի հմտությունից և վայելած հռչակից մեծապես կախումն ունէր հարկավ այն դպրոցի հռչակն ու դիրքը, որ նա ղեկավարում էր»[2]։

Վարդապետական դասընթացները[3] մեր դպրության մեջ, սկսած ամենավաղ շրջանից, մշակվել և իրացվել են ուսումնա-գիտական բարձրագույն

---

1 Մատենադարան, ձեռագիր № 573, թ. 39ա։

2 Կարապետ եպիսկ., Մահմեդական լուծը և նրա բռնութեան ներքոյ ծաղկող հայ վարդապետարանները, Էջմիածին, 1913, էջ 10։

3 Դեռևս վաղ միջնադարում գիտությունները բաժանված էին «տեսական» և «գործնական» խմբերի։ Ըստ այդ դասակարգման «տեսականի» մեջ ընդգրկվում էին բնագիտությունը («բնաբանականն»), մաթեմատիկան («ուսումնականն») և աստվածաբանությունը. ըստ որում, մաթեմատիկայի ենթաբաժիններն են համարվել թվաբանությունը, երաժշտությունը, երկրաչափությունը և աստղաբաշխությունը, այլ կերպ ասած՝ քառյակ գիտությունները. իսկ գործնականի մեջ՝ տնտեսագիտությունը, քաղաքականությունը և բարոյագիտությունը։ Ընդսմին. այս բոլոր գիտություններն էլ դիտվում են որպես առավել համապարփակ գիտության՝ իմաստասիրության ստորադաս գիտություններ։ Իսկ այդ գիտություններին նախորդող գիտակարգերը, որոնք «նախակրթականք» են կոչվում, քերականությունն ու ճարտարապետությունն են եղել։

կենտրոններում՝ հունական գրության նմանողությամբ։ Իսկ հունական դըպրության դասընթացները, որոնք հայտնի են «Յոթ ազատ արվեստներ» անվամբ, ըստ էության, կիրառվեցին նաև XII—XV դարերի եվրոպական միջնադարյան համալսարաններում։

Յոթ ազատ արվեստները իրենց հերթին ունեին երկու ստորաբաժանում՝ Եռյակ և Քառյակ գիտություններ։

Եռյակ գիտություններ էին համարվում քերականությունը, ճարտասանությունը և դիալեկտիկան (հիմնականում՝ տրամաբանությունը), իսկ Քառյակ՝ մաթեմատիկան, երկրաչափությունը, աստղաբաշխությունը և երաժշտությունը։

Միջնադարի հայ վարդապետարաններում, բացի «Յոթ ազատ արվեստներից», ուսումնական ծրագրով անցնում էին աստվածաբանություն, փիլիսոփայություն, մեկնողական արվեստ, մատենագիտություն և պատմություն։

Վարդապետական ուսումնառության կարող էին ընդունվել հիմնականում նրանք, ովքեր ձեռք էին բերել առնվազն երեք տարվա «քահանայական» կրթություն։ Դասընթացների տևողությունը սահմանված էր 7—8 տարի։ Առանձին դեպքերում այդ դասընթացները ավարտվում էին «րաբունապետական» (ուսուցչապետական) խորհրդի և հասարակության ընտրանիի առջև՝ շրջանավարտի զարգացրած թեզերի առաջադրմամբ՝ ավարտաճառերով, ապա նրան, իբրև բարձրագույն կրթության առհավատչյա, ինչպես և քարոզչության և դասատացության իրավունքի գրավական, շնորհվում էր «վարդապետական գավազան»։

Ժամանակի նշանավոր հայ վարդապետները և ուսուցչապետները ոչ միայն գիտության ու դպրության ներկայացուցիչներ էին՝ ֆեոդալական աշխարհայացքի և հայ եկեղեցու դավանանքի տեսաբաններ ու մեկնիչներ, այլև միաժամանակ հասարակական գործիչներ, մինչև անգամ դիվանագետներ, որոնց խորհրդին ու հեղինակությանը դիմում էին աշխարհիկ իշխանավորները հաճախ համահայկական հուզող հարցերի լուծման առիթներով։

Նշանավոր ուսումնա-գիտական կենտրոններ են հանդիսացել Անիի, Արգինայի, Կարսի, Կամրջաձորի, Սանահինի, Հաղբատի, Կեչառիսի, Այրիվանքի, Տաթևի, Նարեկա վանքի, Կճավա վանքի և այլ վայրերի վարդապետարանները։ Ըստ որում, նրանց մի մասը հիմնադրվելով IX—XI դարերում՝ առավել բուռն և արգասաբեր գործունեություն է ծավալում XII—XIV դարերում՝ հարատևելով նաև հետագա ժամանակաշրջանում։

## 2. ԿՐԹԱԿԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԿԵՆՏՐՈՆՆԵՐԸ

Անին՝ Բագրատունյաց թագավորության մայրաքաղաքը X—XI դարերում, ինչպես տեսանք, տնտեսական, քաղաքական ու մշակութային աննախընթաց ծաղկում էր ապրում, սակայն, տարաբախտաբար, աղբյուրներում գրեթե ոչինչ չի պահպանվել նրա ուսումնա-գիտական կենտրոնների վերաբերյալ։ Տեղեկություն չկա անգամ տվյալ ժամանակաշրջանի ամենակարկառուն դեմքի՝ հայ դպրության ուսուցչապետ Գրիգոր Մագիստրոսի Անիում կազմակերպած ճեմարանի մասին։ Հցկտուր վկայություններ ունենք միայն

Գրիգոր Մագիստրոսի ուսումնա-գիտական գործունեության վերաբերյալ ինչպես Սանահինում, Բջնիում, այնպես էլ Տարոնի ս. Կարապետ վանքում։ Իսկ դա նշանակում է, որ Գրիգոր Մագիստրոսը «հին իմաստասերների նման ունեցել է իր շարժական ճեմարանը»[4]։ Լինելով տվյալ ժամանակաշրջանի հելլենական դպրության ամենահմուտ գիտնականը, նա ոչ միայն դասախոսություններով ուսուցանում էր անտիկ մտածողության գիտական ժառանգությունը, այլև դրանց հիման վրա վերամշակում և առաջադրում էր հայ դպրության իր ժամանակի գաղափարներն ու խնդիրները։ Նա տեսականորեն հիմնավորել է «Յոթ ազատ արվեստների» ուսուցման անհրաժեշտությունն ու կարևորությունը բարձրագույն ուսումնական կենտրոններում, քառյակ, եռյակ գիտությունների ստորաբաժանումով որոշել նրանց հաջորդականության կարգը։

Գրիգոր Մագիստրոսը միջնադարի հայ դպրության բացառիկ դեմքերից է նաև այն իմաստով, որ աշխարհական լինելով հանդերձ, միաժամանակ եղել է ականավոր ուսուցչապետ, քաջահմուտ՝ ինչպես հեթանոսական ժամանակներից եկող, այնպես և քրիստոնեական գիտությունների բնագավառներում։ Մատթեոս Ուռհայեցին վկայում է, որ Մագիստրոսը Կոստանդնուպոլսի Սոֆիա տաճարում բյուզանդացի նշանավոր գիտնականների հետ բանավիճել է գիտական ամենահրատապ ու խրթին հարցերի շուրջ, իր «անպարտելի տրամաբանությամբ և «քաջակիրթ» իմացությամբ զարմացնելով ներկաներին»[5]։

Գրիգոր Մագիստրոսի մի շարք աշակերտներ դարձել են ականավոր մտավորականներ և ուսուցչապետներ Հայաստանի տարբեր վայրերում, այդ թվում և Անիում։

XII դարից Անիում գործել է մի այլ նշանավոր ուսումնա-գիտական կենտրոն, որը գլխավորել է մեծահամբավ ուսուցչապետ Հովհաննես Իմաստասերը։

Արգինայի վարդապետարանը, իբրև ուսումնա-գիտական կենտրոն, աղբյուրներում հիշատակվում է X դարից։ Անիի մերձակայքում գտնվող բարձր տիպի այս ուսումնա-գիտական կենտրոնը մեծ համբավ է վայելել։ Այստեղ ուսուցվել են աստվածաբանություն, փիլիսոփայություն, ճարտասանություն, քերականություն և մեկնողական արվեստ։ Ասողիկը հայտնում է, որ իբրև «դասասաց» գիտնականներ իրենց գործունեությունը այստեղ են ծավալել ուսուցչապետ Հովհաննեսը, որն ունեցել է «մեծ գիտութիւն Գրոց սրբոց»[6], Կարինի Հնձուց վանքի երբեմնի առաջնորդ Հովսեփ ուսուցչապետը, «առատ գիտութեամբ»[7], ուսուցչապետ «Կիրակոս... գիտնականն»[8] և «վայելչաբանն Սարգիս յաշխարհէն Աղուանից»[9]։

Մատթեոս Ուռհայեցին ևս հիացմունքով է խոսում Արգինայի վարդապետարանի մասին, իսկ նրա սաներից մեկի՝ Բագրևանդի իշխան Ատրներսեհի վերաբերյալ ասում է, որ նա եղել է «այր կորովի և յոյժ հանճարեղ».

---

4 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ Լե։
5 Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, էջ 183։
6 Ստեփանոս Տարոնեցի, էջ 185։
7 Նույն տեղում։
8 Նույն տեղում։
9 Նույն տեղում, էջ 186։

«բանիբուն իմաստասէր» և այնքան հմուտ ժամանակի աշխարհայացքային խնդիրներում, որ կարողացել է իր «հզօր գիտութեամբ» և «զարմանալի ատենախօսութեամբ» դիմակայել բյուզանդացի բոլոր իմաստուններին՝ չզիջելով նրանց[10]։

**Կարսի վարդապետարանը** գործել է միայն XI դարում։ Այստեղ ուսուցվել են «ներքին» և «արտաքին» գիտություններ՝ աստվածաբանություն, փիլիսոփայություն, ճարտասանություն, քերականություն, ինչպես և տոմարագիտություն, երաժշտություն, աստղաբաշխություն և երկրաչափություն։ Վարդապետարանի սաներից է Գագիկ արքան, որին Մատթեոս Ուռհայեցին բնութագրում է իբրև քաջահմուտ փիլիսոփա և փայլուն ճարտասան. նա հաճախ բազմել է Կոստանդնուպոլսի ս. Սոֆիայի կաճառի ամբիոնում՝ բյուզանդացի ճանաչված գիտնականների հետ համահավասար[11]։

Գրիգոր Մագիստրոսի նամակներից պարզվում է, որ օրակարգի հարց է եղել Գագիկ արքայի պալատին կից բարձրագույն տիպի ճեմարան բացելը։ Ճեմարանում գլխավոր ուսուցչապետ նշանակելու համար Գրիգոր Մագիստրոսը երաշխավորել է անվանի գիտնական Գրիգոր Հնձացուն[12]։ Վերջինս «հին և արտաքին գրոց» հմուտ փիլիսոփա և ճարտասան է եղել և ճանաչվել է իբրև տելետ՝ «գլուխ իմաստասիրաց»։

**Կամրջաձորի վարդապետարանը** վաղ ժամանակներից մեր դպրության նշանավոր դարբնոցներից մեկն էր և XI դարում դեռևս գտնվում էր իր բարձունքում։ Այստեղ առանձնապես զարգացած էր տոմարագիտությունը։ Մատթեոս Ուռհայեցին վկայում է, թե ինչպես ուսումնա-գիտական այս կենտրոնի ուսուցչապետ Սամուելը, որը այդ ժամանակ տոմարագիտական հարցերում ամենախոշոր գիտակն է ճանաչվել ամբողջ Հայաստանում, Վասիլ կայսեր կողմից հրավիրվել է Բյուզանդիա և մասնակցել Իրիոնի տոմարի քննությանը։ Ուշագրավ է, որ 1006 թ. գիտաժողովում հաղթող է դուրս գալիս Կամրջաձորի ուսուցչապետը։ Ասողիկը վկայում է, որ նա առհասարակ «բազմաշընորհ» է եղել ինչպես աստվածաբանության և աշխարհայացքային հարցերում, այնպես էլ երաժշտության մարզում[13]։

**Սանահինի ուսումնա-գիտական կենտրոնը** միջնադարյան հայ մշակույթի առավել նշանավոր դարբնոցներից է։ Ժամանակակիցներն այն բնութագրել են իբրև «մեծահռչակ» և «երկնահանգետ»՝ գերազանց բարձրության վրա կանգնած մշակութային հեղինակավոր մի հաստատություն։

Սանահինի հոգևոր կենտրոնը հարյուրամյակների բեղմնավոր գործունեություն է ծավալել։

Դասընթացները ամենայն հավանականությամբ անց են կացվել «Մագիստրոսի ճեմարան» կոչված գեղեցիկ կամարակապ շենքում, որի ներսում, պատերի տակ, պատրաստված են քարե նստարան-հարմարանքներ։ Այս ճե-

10 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 183—184։
11 Նույն տեղում, էջ 183։
12 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 97։
13 Ստեփանոս Տարոնեցի, էջ 174։

մարանը ճանաչվել է Գրիգոր Մագիստրոսի անունով, որովհետև նա այստեղ դասախոսություններ է կարդացել։

Պատմա-գրական աղբյուրների քննությունից պարզվում է, որ դեռևս իր հիմնադրման սկզբնական շրջանում, երբ Սանահինի ու Հաղբատի հոգևոր կենտրոնները, հանձին Խոսրովանուշ թագուհու, վայելում էին Բագրատունյաց թագավորության հովանավորությունը, Սանահինում և Հաղբատում համախմբված էին շուրջ 500-ական հոգևորականներ՝ ուսումնականներով միասին։



ՍԱՆԱՀԻՆԻ ԴՊՐՈՑԻ ՇԵՆՔԸ ՆԵՐՍԻՑ

Սանահինի առաջին ուսուցչապետը Հովհաննես գիտնականն է եղել։ Սրան հաջորդել է Դիոսկորոս ուսուցչապետը, որի հեղինակությունն այնքան մեծ էր, որ Բագրատունյաց Հովհաննես թագավորը, Պետրոս Գետադարձ կաթողի-

կոսին աթոռազուրկ անելուց հետո, նրա փոխարեն Դիոսկորոսին է հրավիրում Անի և նստեցնում կաթողիկոսական աթոռին։ Մատթեոս Ուռհայեցին նրան բնութագրում է իբրև «մեծ Դէոսկորոս» և «մեծ հռետոր»։ Այս ուսուցչապետի ճանաչված աշակերտներից են Հակոբոս Քարափնեցին և Անանիա Սանահնեցին, որոնք իրենց հերթին մանկավարժական գործունեություն են ծավալել նույն վարդապետարանում։

Սանահինում դասավանդվել են՝ ա) աստվածաբանություն, բ) հռետորական արվեստ՝ իր երեք ճյուղերով, գ) փիլիսոփայական գիտություններ, որոնք են (միջնադարյան դպրության ըմբռնմամբ) ընդհանուր իմաստասիրությունը գոյի և գիտակցության մասին, տրամաբանությունը՝ սեռի, տեսակի, անհատի, ենթակայի, ստորոգյալի, դատողության տեսակների մասին..., դ) քերականություն, ե) տոմարագիտություն, զ) երաժշտություն և այլն։

Քարափնեցին ևս իբրև ականավոր մտավորական, Բյուզանդիայի կայսրի կողմից հրավիրվում է Կոստանդնուպոլիս՝ բանավիճելու հույն իմաստասերների հետ. «...Եւ այս Յակոբոս էր, որ խօսեցաւ ի Կոստանդնուպօլիս՝ ընդ իմաստասէրսն Հոռոմոց ի յաւուրն Թագաւորին Տուկծին»[14]։

Կիրակոս Գանձակեցին Կիլիկիայի և Արևելյան Հայաստանի մտավոր կենտրոնները թվարկելիս, Արևելյան Հայաստանը ներկայացնում է միայն Սանահինի և Հաղբատի վարդապետարաններով ու նրանց հեղինակավոր ուսումնականներով. «Իսկ յԱրեւելս արք անուանիք և գիտնականք լուսաւորիչք եկեղեցւոյ՝ Անանիա վարդապետ ի Սանահինն, յաւուրս Դէոսկորոսի, այր մտաւոր և հանճարեղ, գիտող տոմարական արհեստի, և գրոց աստուածայնոց մեկնող...»[15]։

Սանահինի վարդապետարանը մեր դպրության մեջ իր ավանդն է թողել նաև իբրև «գրչության արվեստի» կենտրոն։ Բազմաթիվ ձեռագրեր են արտագրվել և բազմացվել Սանահինում։

Ուսումնա-գիտական այս կենտրոնի գործունեությունը շարունակվում է նաև հետագա դարերում։

Հաղբատի ուսումնա-գիտական կենտրոնը իր լուսավորական գործունեությամբ առավել նշանավոր է եղել, քան Սանահնինը։ Հաղբատի ուսումնարանն առանձնապես մեծ համբավ է վայելել XI—XIII դարերում։ Այստեղ դասախոսել են հայ միջնադարի ականավոր գիտնականներ Հովհաննես Իմաստասերը, Դավիթ Ալավկաորդին, Վարդան Արևելցին, Դավիթ Քոբայրեցին, Հովհաննես Երզնկացին (Պլուզը) և շատ ուրիշներ։

Հաղբատում ծավալվել է նաև մատենագրական, գիտական-ստեղծագործական բեղուն գործունեություն։ Հաղբատի կաճառը տվել է մի շարք կարկառուն դեմքեր, որոնք նշանակալի դեր են կատարել միջնադարի հայ դպրության ու մատենագիտության զարգացման բնագավառում։

Բնավ էլ պատահական չէ, որ Հաղբատի հոգևոր-մշակութային կենտրոնը ձեռագրական աղբյուրներում բնութագրվել է իբրև «մայրաքաղաք». «Աստուստ յանգ ելեալ կատարեցաւ տառս... ի ստոյգ և ընտիր օրինակէ զոր...

14 Մատթեոս Ուռհայեցի, էջ 227։
15 Կիրակոս Գանձակեցի, էջ 112։

*գրել... ի մայրաքաղաքն Հաղբատ...»[16] կամ՝ «Ապա ճանապարհ արարեալ գնացի ի մայրաքաղաքն մենաստանի Հաղբատ...»[17], Կաթողիկոս Պետրոս Գետադարձը գիտնականների շքախմբով Բյուզանդիայից վերադառնալիս իրեն ընկերակից է վերցնում նաև «իմաստասերներ» Մատթեոս Հաղբատեցուն և Վարդան Սանահնեցուն[18]։*

*Միջնադարի հայ դպրության ամենահարուստ ու ամենահռչակավոր գրատուն-մատենադարաններից մեկը Հաղբատինն է եղել, որից օգտվելու համար Հաղբատ էին ժամանում Գառնիից, Խաղտյաց գավառից և այլ վայրերից։ Հիշատակագիրներից մեկը 1172 թ. Հաղբատի մատենադարանը գնահատում է իբրև «ամենափարթամ գանձարան»[19]։ Այստեղ պահվում էին անգամ «թարգմանչագիր», այսինքն՝ V դարի թարգմանիչների ձեռքով գրված մատյաններ։*



Հաղբատի գրատունը՝ գրադարանի շենքը ներսից

*Հաղբատի ուսումնա-գիտական կենտրոնը հռչակված էր նաև իբրև գրչության արվեստի կենտրոն, ուր տարվել է գրչության արվեստի հատուկ դասընթաց[20]։*

*Հաղբատում եղել են առանձին պարտականությամբ ուսումնականներ,*

---

16 Լ. Խաչիկյան, *ԺԴ դարի հիշատակարաններ, էջ 34—35։*

17 Հ. Տաշյան, *Մայր ցուցակ, էջ 184։*

18 *Տե՛ս* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 105։*

19 Գարեգին Ա կաթողիկոս, *Յիշատակարանք, էջ 497—498։*

20 *Տե՛ս* Լ. Խաչիկյան, *ԺԵ դարի հիշատակարաններ, հա. Գ, էջ 280։*

որոնք կատարել են սրբագրական աշխատանք, որպեսզի արտագրվող ձեռագրերում սխալներ չսպրդեն։

Հոգևոր այս կենտրոնը շատ ավելի երկար ժամանակ է գոյատևում՝ դիմագրավելով հետագա դարերի մրրիկներին։ Բայց նրա ծաղկման առավել պայծառ ժամանակաշրջանն ընդգրկում է շուրջ երեք հարյուրամյակ՝ X դարի վերջից մինչև XIV դարի սկզբները։

**Նարեկի վարդապետարանն** ավելի հին է, քան Անիինը և նրա շրջակայքինը։ Այդ վարդապետարանի մասին արժեքավոր տեղեկություն է հաղորդում Ասողիկը. «...Այսպէս և յայսմ ժամանակիս շինեցաւ Նարեկ ի Ռշտունեաց գաւառին նոյն կարգաւորութեամբ, բազմազարդ պաշտօնապայծառ երգեցողովք և գրական գիտողօք»[21]։ Այս վկայությունից պարզվում է, որ Նարեկի ուսումնա-գիտական կենտրոնում «բազմամարդ» են եղել «պաշտօնապայծառ երգեցողներն» ու «գրական գիտողները»։

Այդ դպրոցի առաջին ուսուցչապետը համարվում է Անանիա Նարեկացին՝ «...Անանիա, փիլիսոփայն մեծ, որ և վանական Նարեկի»[22]։ Այստեղ ծաղկում են ապրել գրչության արվեստը, մանրանկարչությունը, բնագրերի քննությունը։ Անանիա Նարեկացու մոտ են իրենց կրթությունը ստացել պատմագիր Ուխտանեսը, Գրիգոր Նարեկացին և ուրիշներ։ Անանիա Նարեկացու մահից հետո երկար տարիներ այս վարդապետարանը գլխավորել է Գրիգոր Նարեկացին։

**Տաթևի վարդապետարանը**, իբրև Սյունիքի բարձրագույն ուսումնա-գիտական կենտրոն, հիմնադրվել է 895 թ.՝ Տաթևի տաճարին կից և վերջինիս հետ միաժամանակ։ Ստ. Օրբելյանը Տաթևը բնութագրում է իբրև «առաջին՝ գլուխն ամենեցունց վանօրէից և աղբիւր շնորհաբաշխութեան տանն Սիսականն...»[23]։ Որպես հոգևոր խոշոր կենտրոն, այն ունեցել է նաև գետնափոր բազմաթիվ գաղտնարաններ, որոնցից մի քանիսը ծառայել են իբրև «գրատներ»։

Տաթևի վարդապետարանն ուսումնա-գիտական իր գործունեությամբ մեծ հռչակ է ձեռք բերում X—XI դարերում. ուսուցչապետների հեղինակության ու դասավանդվող գիտությունների խորության և հպմակողմանիության շնորհիվ Տաթևի վարդապետարանը առանձին հռչակ և առաքինող հմայք, ձգողական ուժ է ունեցել համահայկական առումով։ Այն ունեցել է շուրջ 500-ի հասնող միաբանություն[24]։

Տաթևի վարդապետարանն աչքի է ընկել իր բարձրագույն կրթությամբ, ուսումնա-գիտական առարկաների խորաքնին բնույթով, երաժշտական արվեստի բացառիկ զարգացմամբ, մանրանկարչության գեղագիտական տեսության և կիրառության կատարելությամբ, գրչության արվեստի հմտությամբ. «...Լի էր ծովամատոյց փիլիսոփայիւք երաժշտական երգոց, ճոխ էր և վարժարանն վարդապետական կրթութեամբն. Նա և արհեստաւորք նկարչացն և

21 Ստեփանոս Տարոնեցի, էջ 174։
22 Նույն տեղում, էջ 178։
23 Ստ. Օրբելյան, էջ 338։
24 Տե՛ս նույն տեղում, էջ 226։

գրողաց անհամեմատաքն[25]։ «Վարդապետական կրթութիւն» ասելով միջնադարում ըմբռնում էին՝ աստվածաբանություն, փիլիսոփայություն, քերականություն, ճարտասանություն, տրամաբանություն, աստղաբաշխություն, տոմարագիտություն, երկրաչափություն, թվաբանություն և երաժշտություն։ Նրման կրթություն ապահովելու համար վանքն ուներ «անհաղթ փիլիսոփաներ, աննման երաժիշտներ և բանիբուն վարդապետներ»[26]։

Տաթևի կաճառի այս կարգի բարեմասնությունների շնորհիվ պարբերաբար այդտեղ էին գալիս ոչ միայն ուսումնականներ տարբեր վայրերից՝ փորձի և հմտության փոխանակման համար, այլև թագավորներն ու իշխանները՝ նվերներով. «Վասն որոյ յայսպիսի համբաւոյ հրաշացեալ թագաւորք և իշխանք և եպիսկոպոսունք գային ի տեսութիւն և ընծայաբերք լինէին սուրբ և երկնահանգէտ աթոռոյն»[27]։

Տաթևի ուսումնա-գիտական կենտրոնը վերընթաց իր փառքով հիշատակվում է աղբյուրներում մինչև XII դարի կեսերը։ Բայց խմայելացիները չեն հանդուրժում Տաթևի փառքը, ասում է պատմիչը, և Մովկանի հրամանատարությամբ 1117 թ. հրկիզում են ու քարուքանդ անում այն[28]։ Սակայն հետագայում Տաթևը կրկին վերաշինվում և վերածնվում է՝ արդեն համալսարանական մակարդակով։

IX—XI դարերում գործել են մի շարք ուսումնա-գիտական կենտրոններ ևս, որոնք առկայծումների տարբեր տևողություններ են ունեցել, բայց վերը նշված վարդապետարանների համեմատությամբ նվազ արտացոլում են գտել ձեռագրական աղբյուրներում։ Դրանցից են՝ Բջնիի ուսումնա-գիտական կենտրոնը, որը միջնադարում հայտնի էր «Մագիստրոսի ճեմարան» անունով, Կեչառիսի (Ծաղկաձորի) վանքը, Հոռոմոսի վարդապետարանը, Մարմաշենի դպրատունը, Վասպուրականի Նճավա վանքի, Մուշի Գլակա և Առաքելոց վարժարանները և ուրիշներ։

Ուշագրավ է այն փաստը, որ Հայոց աշխարհի վարդապետարանների ականավոր ուսուցչապետներն ու գիտունները, չնայած դավանաբանական վեճերին, մասամբ և դրանց առիթով բավականաչափ սերտ կապեր էին պահպանում Բյուզանդական կայսրության, մասնավորապես Կոստանդնուպոլսի գիտական կենտրոնների հետ և կանգնած էին իր ժամանակի գիտության և հասարակական մտածողության բարձունքների վրա, որով և պայմանավորված էր հայկական վարդապետարանների բարձր մակարդակը։

---

25 Ստ. Օրբելյան, էջ 226։

26 Նույն տեղում, էջ 312։

27 Նույն տեղում։

28 Տե՛ս նույն տեղում։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Հայ պատմագրությունը, որը փարթամորեն ծաղկել էր V—VII դարերում, արաբական տիրապետության ժամանակ անկում ապրեց։ Այնուհետև շուրջ երկու դար տևող ժամանակամիջոցում միայն մի պատմիչ է հայտնի՝ Ղևոնդ Երեցը (VIII դ.), որը պարզ, բայց և ճշմարտացի նկարագրում է արաբական տիրապետության ժամանակ Հայաստանում ստեղծված վիճակը՝ մանրամասնորեն կանգ առնելով հայ ժողովրդին բաժին ընկած կեղեքումների և դառը զրկանքների, ինչպես նաև արաբական տիրապետության դեմ հայ ժողովրդի ապստամբությունների և մղած պայքարի վրա*[1]։

*IX դարի վերջերից սկսած հայ պատմագրությունը վերելք է ապրում և նշանակալից հաջողություններ ունենում X—XI դարերում։ Այս ժամանակաշրջանի պատմագրությունը հենվում էր V—VII դարերի մատենագրության և մասնավորապես Մովսես Խորենացու ավանդույթների վրա, բայց նրա մեջ առաջ եկան նաև նոր երևույթներ։ Բագրատունիների կենտրոնական թագավորության և գավառական իշխանությունների առկայությունը պայմանավորում էր քաղաքական երկու ուղղության երևան գալը պատմագրության մեջ, որոնցից մեկը պաշտպանում էր միասնության և երկիրը մեկ պետության մեջ միավորելու առաջավոր գաղափարը, իսկ մյուսը կողմնակից էր գավառական անջատողականության։*

*IX—XI դարերի հայ պատմագրությունը ավելի է անդրադարձել երկրի ներքին կյանքը՝ նոր պայմաններում ժառանգական հողատիրության ձևավորման, տիրույթների վերաբաշխման համար մղվող պայքարը, այդ հողի վրա տեղի ունեցող ներքին ընդհարումները, երկրի տնտեսական բարգավաճումը, քաղաքների ու քաղաքային կյանքի զարգացումը, սոցիալական պայքարի սրումը՝ կապված Թոնդրակյան շարժման հետ և այլն։ Հայաստանի քաղաքական-տնտեսական, առևտրական և մշակութային լայն կապերը Բյուզանդական կայսրության և արաբական խալիֆայության երկրների հետ, ինչպես նաև կրթա-իմացական մակարդակի բարձրացումը պայմանավորում էին նաև ավելի լայն ճանաչողական բնույթի պատմական երկերի ստեղծումը։ Այս հարցում ևս հայ պատմագրությունը շարունակել է V—VII դարերի ավան-*

---

1 «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Պետերբուրգ, 1887։

ցույթը՝ անդրադառնալով իր և ժամանակակից պատմության հարցերին ոչ միայն հայկական, այլև ժամանակի հասկացողությամբ ընդհանուր պատմության մասշտաբով, տեղ հատկացնելով Կովկասի, Մերձավոր Արևելքի և Բյուզանդական կայսրության երկրների պատմության մի շարք հարցերին։

Պահպանվում և ավելի էր արմատավորվում նաև հայ պատմագրության մի գեղեցիկ ավանդույթը՝ նոր պատմագիրը հաճախ սկսում էր իր պատմությունը շարադրել այնտեղից, որտեղ ավարտվում էր իր նախորդի երկը, իսկ երբեմն էլ շարունակում նախորդի ձեռքի թողած գործը, համեստաբար չհիշատակելով նույնիսկ իր անունը։

Մասամբ հարստանում են նաև պատմագիտական աղբյուրները, որովհետև պատմագիտական կարևոր հարցերն ավելի շատ են իրենց անդրադարձումը գտնում կրոնական և աշխարհիկ բնույթի տարբեր երկերի, նամակների, գեղարվեստական ստեղծագործությունների, վիմական արձանագրությունների և այլ աղբյուրների մեջ, մի հանգամանք, որն իր հետագա զարգացումը պետք է ստանար XII—XIII դարերում։ Ուշադրության արժանի է այն փաստը, որ եկեղեցական հեղինակների կողքին երևան են գալիս նաև աշխարհիկ հեղինակներ։

Բնորոշ է, որ հայ պատմագիտության զարգացմանը նախանձախնդիր են լինում ամենից առաջ Բագրատունիները։ Ղևոնդ վարդապետի պատմությունը գրվել է «Ի հրամանէ Շապհոյ Բագրատունւոյ», իսկ IX դարի վերջերին կամ X դարի սկզբներին պատմություն գրելու ձեռնամուխ է եղել անձամբ նույնանուն մի այլ Բագրատունի իշխան։

Շապուհ Բագրատունու մասին տեղեկություններ է հաղորդում նրա կրտսեր ժամանակակից Հովհաննես կաթողիկոս Դրասխանակերտցին, որը մասամբ բացահայտում է նրա աշխատության բովանդակությունն ու բնույթը։ Շապուհ Բագրատունին պարզագույն ձևով շարադրել է ծերունիների զրույցները, վերարտադրել Սմբատ Սպարապետի, Աշոտ Բագրատունու իշխանության և թագավորության ժամանակների պատմությունը, Բուղայի գերի տարած հայ իշխանների վերադարձը, յուրաքանչյուրի հաստատվելը սեփական իշխանության մեջ, նրանց պայքարը հակառակորդների և երկիր ներխուժած թշնամիների դեմ, ֆեոդալների ներքին ընդհարումները, առանձին իշխանների գործերն ու ճակատագիրը և այլն։

Նշանավոր պատմաբան-կաթողիկոսը նկատել է տալիս, որ թեպետ Շապուհ Բագրատունին չի կարողացել իր աշխատությունը շարադրել ժամանակի քերթողական հրահանգների համաձայն, բայց ծերունիների զրույցները «գեղջուկ բանիւ բաւական քեզ տայ պատճառս տեղեկութեան»[2]։ Հովհաննես Դրասխանակերտցին վկայում է, որ Շապուհ Բագրատունին անդրադարձել է նաև այլ պատմությունների, որպիսին էր, օրինակ, Գրիգոր Դերենիկի արկածալից կյանքի և սպանության զրույցը[3]։ Վերջապես նա գրով դրոշմել է Աշոտ Ա

---

2 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 167։

3 Տե՛ս նույն տեղում, էջ 179։

թագավորի գործերն ու ընթացքը, իմաստությունն ու մրցությունները, շինարարությունն ու երկիրը խաղաղեցնելը[4]։

1921 թ. Շապուհ Բագրատունու անունով, թեև վերապահությամբ, հրատարակվեց մի պատմական բնագիր[5], որը ոճով համապատասխանում է Հովհաննես կաթողիկոսի հաղորդած տեղեկություններին, սակայն բովանդակությամբ նկատելիորեն տարբեր է, ուստի չի համարվում Շապուհ Բագրատունու բուն գործը։

Հրատարակած բնագիրը, հիրավի, իր ժամանակին ժողովրդի մեջ բերնե-բերան անցած պատմական զրույցների կցկտուր տեղեկությունների հավաքածու է, գրի առնված գեղջկական բարբառով[6]։

**Հովհաննես Դրասխանակերտցու**, ժամանակի կաթողիկոսի, եկեղեցական, կրոնական ու քաղաքական ականավոր գործչի գրչին է պատկանում «Հայոց պատմություն» նշանավոր երկը։ Պատմիչը կրթությունն ստացել է Մաշտոց Սևանեցի վարդապետի դպրոցում, որին և հաջորդեց կաթողիկոսական աթոռի վրա (897—929)։ Նա գիտակ էր V—VII դարերի հայ պատմագրությանը և հետևում էր, իր խոսքով ասած, ժամանակի «քերթողական հրահանգացն»։

Պաշտոնի բերումով նա բազմիցս խաղաղության միջնորդ է եղել իրար հետ ընդհարվող իշխանների միջև, կատարել է նաև դիվանագիտական առաքելություններ՝ Բագրատունյաց թագավորությունը օտարների ոտնձգություններից զերծ պահելու նպատակով։ Նույնիսկ ենթարկվել է կալանքի՝ Ատրպատականի Սաջյան Յուսուփ ամիրայի կողմից։ Փախչելով բանտից, նա հարկադրված է եղել դեգերելու Աղվանքում, Վրաստանում, հայկական տարբեր գավառներում, մինչև որ կրկին վերադարձել է Բագրատունիների մոտ, այնտեղից էլ անցել է Վասպուրական, որտեղ և կնքել է իր մահկանացուն 929 թ.։

Հովհաննես կաթողիկոսն իր պատմությունը գրել է խոր ծերության տարիներին։ Նա իր շարադրանքն սկսում է ջրհեղեղից և հասցնում մինչև 924 թ.։ Պատմության սկզբի մասերը նա քաղվածաբար և համառոտակի առել է նախորդ պատմիչներից. հաղորդում է նաև որոշ տեղեկություններ կաթողիկոսների գործունեության մասին։ Ավելի մանրամասն է շարադրել IX դարի կեսերից սկսվող պատմությունը, մանավանդ պատմական այն անցքերն ու եղելությունները, որոնց նա ոչ միայն ականատես, այլև մասնակից է եղել, այսինքն՝ Սմբատ թագավորի և Աշոտ Երկաթի ժամանակների պատմությունը։ Աշոտ Երկաթի և Աշոտ Շապուհյանի պայքարում նա միջնորդ լինելով հանդերձ, ավելի հակված է եղել Աշոտ Շապուհյանի կողմը (որին բաժին ընկած Դվինում գտնվում էր կաթողիկոսարանը), իսկ հետո էլ, երբ Դվինն ընկավ օտարների ձեռքը, կաթողիկոսը անցավ Վասպուրական։ Թերևս այս հանգամանքով էլ պետք է բացատրել, թե ինչու Աշոտ Երկաթի վերջին տարիների գոր-

---

4 Հովհաննես Դրասխանակերտցի, Առաջաբան, էջ Թ։

5 «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», Էջմիածին, 1921։

6 Տե՛ս Մ. Աբեղյան. Հայոց հին գրականության պատմություն, հատ. Ա, Երևան, 1944, էջ 463։

ծունեության մասին կաթողիկոս-պատմագիրը լռություն է պահպանում։ Այդուհանդերձ, Հովհաննես կաթողիկոսի երկը IX դարի վերջերի և X դարի սկզբների հայոց պատմության բազմակողմանի և հավաստի փաստական նյութերով հարուստ ամենանշանավոր գործն է։ Այն գրված է հայրենասիրական շնչով, ճոխ լեզվով, որը տեղ-տեղ հասնում է հռետորական շքեղության։ Հեղինակը գրում է ոգեշնչված, երբ խոսքը վերաբերում է օտարների դեմ մղվող պայքարի հաջողություններին, երկրի անկախության վերականգնմանը, խաղաղության հաստատմանը և բարգավաճմանը, մինչդեռ երկրին հասած ձախորդությունների պահին նա գործադրում է Մովսես Խորենացու Ողբի ոճը։

Հովհաննես կաթողիկոսը դրվատում է ազատագրական պայքարը գլխավորող և երկիրը շենացնող իշխաններին, թագավորներին, ատելությամբ է խոսում հայրենի երկիրը ասպատակողների և ավերողների մասին, խարազանում է վեհերոտ և հակառակորդի նկատմամբ երկդիմի արոշ իշխաններին։ Այդ ամենի մեջ երևան է գալիս կաթողիկոս-պատմաբանի հայրենասիրությունը։

Հովհաննես Դրասխանակերտցին հանդես է գալիս իբրև Հայաստանի միասնական պետականության գաղափարախոս, առանձին դրվատանքով է խոսում Աշոտ Ա-ի և նրա կողմից հայ պետականության վերականգնման մասին և դառնությամբ ու վշտով՝ հիշում երկիրը պառակտող իշխաններին։ Նա լավ էր հասկանում, որ ավելի զորեղ հակառակորդների հարվածներին դիմակայել Հայաստանը կարող էր միայն միասնաբար, ուստի պառակտումը դիտում էր իբրև «աղտեղագոյն աղէտք ազգապղծութեան»[7]։ Նա իշխաններից ակնկալում է «վայելչաբար ի միասին կապակցիլ հասարակ եղբայրութեամբ և իբրև զմի այր միանալ» և վշտով ավելացնում. «բայց ոչ զայս եղև տեսանել զմեզ, այլ նորին հակառակն կրեցաք»։

Խոսելով Գագիկ Արծրունու՝ Սմբատ արքայից պառակտվելու և թագ ստանալու համար Յուսուֆի մոտ գնալու մասին, պատմագիրը նկատում է, որ Յուսուֆը «ախորժաբար ընկալեալ՝ տայր նմա թագ արքունական և պատիւս և պարգևս արքունականս ի քակտումն միաբանութեան նոցա», որպեսզի Սմբատը և Գագիկը իրար հետ «դիւրադաւ լիցին» և ընդհարվեն։ Գնահատելով այդ ակտը, պատմագիրն ասում է, որ դրանով Հայաստանի համար կորստական դուռ էր բացվել, «զոր ոչ այլ ումեք՝ քան թէ Աստուծոյ գոյր կարողութիւն փակել զնա»[8]։

Իր գրքի վերջում Հովհաննես Դրասխանակերտցին, իբրև երկրի կաթողիկոս, կոչ է անում և խրատ կարդում երկրի իշխանավորներին, որ գժտությունները թողնեն և միաբանություն ու միասնություն հաստատեն։

Իբրև իշխող դասակարգի գաղափարախոս, Հովհաննես Դրասխանակերտցին խիստ բացասական վերաբերմունք ունի դասակարգային պայքարի և սոցիալական շարժումների նկատմամբ, որոնք բռնկվել էին Արարատյան նահանգում և այլուր[9]։

Կաթողիկոս-պատմաբանը իր աշխատության մեջ, բնականաբար, առիթը

7 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 189—190։

8 Նույն տեղում, էջ 264։

9 Տե՛ս նույն տեղում, էջ 324։

րաց չի թողնում պաշտպանելու հայ եկեղեցու դիրքերը՝ ընդդեմ աղանդավորական կամ դավանաբանական ամեն մի շեղման։

**Թովմա Արծրունին** ժամանակի ուսյալ, գիտուն և հեղինակավոր վարդապետներից մեկն էր։ Իր «Պատմութիւն տանն Արծրունեաց» փաստալից և արժեքավոր աշխատությունն սկսել է գրել դեռևս IX դարի 80-ական թվականներին՝ Գրիգոր Դերենիկի (մահ. 887 թ.) պատվերով, ապա շարունակել է Գագիկ Արծրունու հանձնարարությամբ, երբ վերջինս Վասպուրականի գահերեց իշխանն էր ու հայոց զորավարը։ Նա երկար ժամանակ է աշխատել իր պատմության վրա, գրելով թերևս Հովհաննես կաթողիկոսի մահից հետո էլ[10]։

Թովմա Արծրունին պատմության առաջին դպրությունն սկսում է Ադամից և հասցնում մինչև Արշակունյաց թագավորության անկումը, օգտվելով նախորդ պատմիչներից։ Ինչպես երևում է պատվիրատու Գրիգոր Դերենիկին ուղղված խոսքերից, այս դպրության գլխավոր խնդիրը եղել է Արծրունիների ազգաբանությունը Հայոց պատմության հետ զուգորդված շարադրելը. «զնախնեացն քոց զազգաբանութիւն և զորպիսութիւն, կարգաւ ածել զթիւսն ըստ ծննդոց իւրաքանչիւրոց մինչ առ մեզ զբովանդակութիւնն չափաբերել, և որ վասն անցիցն Հայոց ի Տաճկաց զպետութենէն ներգործեցաւ...»[11]։ Առասպելախառն զրույցներով ընդմիջարկված այդ դպրությունը հեղինակն ինքն անվանում է «Պատմութիւն Հայոց ըստ ազգաբանութեան Արծրունեաց սեռի»։

Երկրորդ դպրության մեջ Թռուցիկ խոսվում է մարզպանական, ապա արաբական տիրապետության ժամանակաշրջանների անցքերի մասին, մինչև 850 թ.։ Հետաքրքրական են այս դպրության վերջին հատվածները, որոնք վերաբերում են իշխանաց իշխան Բագարատի օրոք (830—840-ական թվականներ) տեղի ունեցած անցքերին, Խութ-Սասունի լեռնականների կենցաղին, նրանց ապստամբությանը արաբների դեմ և Յուսուֆ ոստիկանի սպանությանը։

Թովմա Արծրունու պատմության ամենաընդարձակ և ամենաարժեքավոր մասը երրորդ դպրությունն է, որն ընդգրկում է 850 թ. մինչև X դարի սկզբները, հասնելով մինչև Աշոտ Արծրունու մահը (905) և նրան հաջորդած Գագիկ ու Գուրգեն Արծրունիների իշխանության առաջին տարիները, երբ նրանք դեռևս զբաղված էին շինարարական գործունեությամբ։ Այս դպրությունը հեղինակը գրել է մասամբ ժամանակակիցներից լսելով և ստուգելով, մասամբ էլ անցքերին ականատես լինելով. ուստի այն հարուստ է ճշմարտացի փաստերով, հաճախ և մանրամասնություններով, երբ խոսքը վերաբերում է Վասպուրականին։ Լինելով Արծրունիների տոհմական պատմիչը, ամեն կերպ մեծարում է Արծրունի իշխաններին, ներբողում նրանց հերոսական պայքարը՝ արաբական տիրապետության դեմ, հաղորդելով մանրամասն և կարևոր տեղեկություններ։ Այսուամենայնիվ, ուշագրավ է, որ նա էլ չի ներում իշխաններից ոմանց և կրոնական որոշ գործիչների շեղումները և նրանց ներքին երկպառակությունների հետևանքով գործած չարիքները։ Հենց այս պատճառով էլ նրա պատմության արժեքը մեծ է, իբրև Վասպուրականում ժառանգա-

---

10 Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, հտ. Ա, էջ 447։

11 Թովմա Արծրունի, էջ 23։

կան հողատիրության վերականգնման և վերաբաշխման հողի վրա տեղի ունեցած ներքին անողոք և սուր պայքարի փաստալից աղբյուրի։

Իբրև գավառական տոհմական պատմիչ նա կամ արդարացնում է Արծրունիների հակադրությունը Բագրատունիների կենտրոնական թագավորությանը, կամ լռության է մատնում նման փաստերը։ Իբրև կրոնական գործիչ շատ է կառչում Հին և Նոր կտակարաններից, մեջբերումներ անում։ Լեզուն հարուստ է, բայց անհարթ, մերթ պարզ է, մերթ խճողված, խրթնաբան, շատ է ձգտում ոճով նմանվել իր նշանավոր նախորդներին, մանավանդ Եղիշեին։ Ջանում է գրել պատկերավոր, բայց երբեմն ընկնում է վերամբարձ ճոռոմաբանության մեջ։

**Անանուն (Արծրունի)** պատմիչը հավանաբար Գագիկ Արծրունու հանձնարարությամբ, շարունակել է Թովմա Արծրունու պատմությունը. համեստաբար չհայտնելով իր անունը։ Երևում է, որ նա երկար ճանապարհորդած, բանիմաց ու հմուտ պատմիչ է։ Շատ արժեքավոր են Ոստանում և Աղթամարում կատարված շինարարական աշխատանքների մանրամասն նկարագրությունները։ Որոշ կրկնություններ անելով հանդերձ, նա առաջ է տանում պատմական անցքերի շարադրանքը։ Նա նույնպես տոհմական-պալատական պատմիչ է, ծագումով թերևս Արծրունի։

Նա գովերգում է Գագիկ Արծրունուն, մանավանդ նրա շինարարական գործունեությունը։ Եթե Հովհաննես կաթողիկոսը զայրույթով է խոսում Յուսուֆի հետ Գագիկ Արծրունու կնքած դաշինքի մասին, իսկ Գագիկին հեգնորեն անվանում է «թագակերպեալ իշխան», ապա Անանուն պատմիչը մեղքը Սմբատ արքայի վրա է գցում, որը հանդգնել է հարկեր չվճարել իրենից զորեղ իշխանավոր Յուսուֆին, ամբողջովին արդարացնում է Գագիկ Արծրունուն, անվանելով նրան «հանճարեղ», «Գագիկ մեծ արքա Հայոց», շռայլելով ամեն գովեստ, ոչ միայն նրա գործերին, այլև անձնական բարեմասնություններին։ Անանուն պատմիչի գրվածքը ճառային ներբողական պատմագրության մի ցայտուն նմուշ է։

Թովմա Արծրունին և նրա շարունակողը արժեքավոր նկարագրություններ են թողել նաև ժամանակի կենցաղի, սովորությունների և զենքերի ու զինավառության վերաբերյալ։

**Մովսես Դասխուրանցին** շարունակել է Մովսես Կաղանկատվացու[12] «Աղվանից աշխարհի պատմությունը» և իր նախորդի նման տեղեկությունները քաղել է տարբեր հեղինակներից ու աղբյուրներից։ Երկու Մովսեսների գրվածքի սահմանը ստույգ որոշված չէ, բայց եթե Կաղանկատվացին VII դարի վերջի (կամ VIII դ. սկզբի) հեղինակ է, ապա, բնականաբար, Դասխուրանցուն պատկանում են պատմության այն հատվածները, որոնք ընդգրկում են հետագա, այն է՝ արաբական տիրապետության ժամանակաշրջանը, Աղվանից թագավորության վերականգնումը և պատմությունը մինչև X դարի կեսերը կամ երկրորդ կեսը։

Զատելով ի մի խմբել Արցախի, Ուտիքի, այսինքն՝ Հայոց Աղվանքի

---

12 Որոշ բանասերներ (օր. Ն. Ակինյան) երկու Մովսեսներին նույն անձնավորությունն են համարում։

պատմությանը վերաբերող փաստերը, քաղելով դրանք տարբեր աղբյուրներից նա ավելի ուշադրություն է նվիրել եկեղեցական պատմության հարցերին, «հայոց» և նրան ենթակա «աղվանից» եկեղեցիների փոխհարաբերություններին, կապակցելով դրանք պատմական անցքերի հետ և շարադրելով ժամանակագրական կարգով։ Շարադրանքը խիստ համառոտ է և ոչ փաստալից։ Այնուամենայնիվ գտնում ենք տեղեկություններ, որոնք չեն հանդիպում այլ հեղինակների մոտ։ Վերջում կցված է մի գլուխ «Անունք հայրապետացն Աղուանից, ամք և գործք նոցին» վերնագրով, որը Աղվանից կաթողիկոսների շարքը սկզբից հասցնում է մինչև 998 թ. և եթե ամբողջովին այլ հեղինակի ձեռքով չի գրված, ապա լրացված է ուրիշի կողմից։

Ինչպես Մովսես Կաղանկատվացու, այնպես էլ Մովսես Դասխուրանցու պատմության նպատակը հիմնականում հայոց Արևելից կողմանց, նաև բուն Աղվանից աշխարհի քաղաքական պատմության ստեղծումն է, որի մեջ ըստ հնարավորին ի մի են բերված Աղվանքին (լայն իմաստով), նրա իշխանական տոհմերին և եկեղեցական գործերին վերաբերող պատմական տեղեկությունները[13]։

Ուխտանես եպիսկոպոսը X դարի երկրորդ կեսերի հեղինակ է։ Անանիա Նարեկացու հանձնարարությամբ գրել է մի աշխատություն, որն իր իսկ ասելով բաղկացած է եղել երեք հատվածից. «Նախ զԹիւ Թագաւորացն և զհայրապետացն մերոց», երկրորդ՝ «Զբաժանումն Վրաց և ի Հայոց միաբանութենէ» և երրորդ՝ «Զմկրտութիւն ազգին որ ծադն կոչի», ինչպես նաև նրանց երկրի, գավառների, գլխավոր գյուղերի, քաղաքների, բերդերի և վանքերի մասին[14]։ Մեզ հասել են առաջին և երկրորդ հատվածները, իսկ երրորդը՝ մասամբ թերի։

Առաջին հատվածը կազմված է Աստվածաշնչից, Մովսես Խորենացուց, Ագաթանգեղոսից և այլ հեղինակներից քաղված «հասարակաց» ընթերցանության և ուսուցողական նպատակների հարմարեցված շատ ընդհանուր ու համառոտ տեղեկություններից։ Սկսելով Ադամից, Նոյից, Սեմից, Քամից, Հաբեթից և նրանց բաժին ընկած երկրներից, հեղինակն անցնում է հայոց առասպելական և պատմական ժամանակների արքաներին, թռուցիկ խոսելով նաև պարսից արքաների և հռոմեական կայսրերի մասին։ Դրանց հետ միահյուսվում են փրկչի երևալը, Աբգար թագավորի քրիստոնեություն ընդունելը և նման այլ տեղեկություններ։ Հատվածի վերջում շարադրված են Գրիգոր Լուսավորչի, Տրդատ թագավորի, Հռիփսիմյանց կույսերի, ինչպես և Կոստանդին կայսեր հետ կապված զրույցները։

Երկրորդ հատվածը ամբողջովին նվիրված է վրաց եկեղեցու անջատմանը հայ եկեղեցուց, որը «Գիրք Թղթոցից» կատարված քաղագրությամբ և այլ նյութերի ընդգրկմամբ ավելի ամբողջական է, թեև ձեռագրի վերջից մի քանի թերթ պակաս է[15]։

---

13 Ա. Շ. Մնացականյան, *Աղվանից աշխարհի գրականության հարցերի շուրջ*, Երևան, 1966, էջ 78, 153, 174—175, 201—207, 214—215։

14 Ուխտանես եպիսկոպոս, *Պատմութիւն Հայոց*, Վաղարշապատ, 1871, էջ 14։

15 Ուխտանեսը մեջ է բերում հայոց կաթողիկոսների ավանդատանը (դանձարանում) պահպանվող իրերի մի շատ ուշագրավ ցուցակ (տե՛ս երկրորդ հատված, էջ 66)։

Հեղինակը նշելով, թե վրաց Կյուրիոն կաթողիկոսի հարումը քաղկեդոնականությանը պատճառ դարձավ վրաց եկեղեցու անջատման, նպատակ է ունեցել պատմական անցյալի օրինակով պայքարել քաղկեդոնականության, մանավանդ հայ եկեղեցուց Աղվանքի կաթողիկոսության և Սյունյաց եպիսկոպոսության անջատման դեմ։ Հավանաբար նույն նպատակն էր հետապնդում նաև ծագերի (հայ քաղկեդոնականների) մկրտությանը վերաբերող երրորդ հատվածը։

Նման աշխատության երևան գալը X դարի երկրորդ կեսում պայմանավորված էր քաղկեդոնականության աշխուժացմամբ, հայ եկեղեցու ներսում եղած անջատողական ձգտումներով, ինչպես և թոնդրակյան շարժման ծավալմամբ։ Իր կոչումով և աշխարհայացքով կրոնական հեղինակը հանդես է եկել հայ եկեղեցու, նրա դավանանքի և միասնության պաշտպանի դերում։

**Ստեփանոս Տարոնեցին (Ասողիկ)** ստեղծագործել է X դարի վերջերին XI դարի սկզբներին. նա իր աշխատությունը գրել է Ստեփանոս կաթողիկոսի հանձնարարությամբ և անվանել է «Պատմութիւն տիեզերական»։ Այս վերնագրից էլ երևում է, որ հեղինակը հակված է եղել բավարարելու ժամանակի նոր պահանջը և ընթերցողներին ներկայացնելու ընդհանուր պատմության շարադրանք պարունակող պատմական երկ։ Եվ մասամբ դա այդպես է, իսկ հիմնական մասով Ստեփանոս Տարոնեցու աշխատությունն, իհարկե, հայոց պատմություն է։

Ստեփանոս Տարոնեցու Պատմությունը բաղկացած է երեք հանդեսից, որոնցից առաջինն ընդգրկում է հնագույն ժամանակները, հասցնելով մինչև հեթանոսական ժամանակաշրջանի վերջը՝ Հայաստանում։ Այստեղ ներկայացված են Եգիպտոսի Պտղոմեյան թագավորների, եբրայեցոց պատմությունները՝ բաբելոնյան գերության դարձից հետո, մի գլուխ նվիրված է «Ասորեստանեաց, Մարաց և Պարսից» թագավորներին, որից հետո շարադրված է «Հայոց Արշակունեաց թագաւորաց պատմութիւնը» մինչև Տրդատ Գ-ի գահակալությունը։

Այս, ինչպես և դրան հաջորդող երկրորդ հանդեսը խիստ համառոտ մի ժողկաքաղ է։ Ինքը, հեղինակը, խոսելով իր օգտագործած աղբյուրների մասին (որոնք են Հին և Նոր կտակարանները, հույն և հայ բազմաթիվ հեղինակների գործերը), ավելացնում է. «Արդ յամենեցունց ի սոցանէ, իբր ի լայնալիր մարգաց և ի հովտային յերանց՝ հաւաքեալ ծաղիկս... գեղեցկագոյն գունովքն և անուշահամ հոտովքն՝ բերեալ ընծայ մատուցանեմ...»[16], «կարճ ի կարճոյ համառօտիւ»[17]։

Երկրորդ հանդեսն սկսվում է Տրդատ թագավորի և Հայոց դարձի (քրիստոնեություն ընդունելու) պատմությունից. այնուհետև շարադրվում է հայոց թագավորների, իսկ թագավորության անկումից հետո՝ իշխանների և կաթողիկոսների համառոտ պատմությունը։

Որոշ տեղ է հատկացված նաև Սասանյան արքաների, արաբ խալիֆա-

16 Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկա. Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 7։

17 Նույն տեղում, էջ 59։

ների և բյուզանդական կայսրերի պատմությանը։ Առաջինի նման այս բաժինն էլ սոսկ քաղագրություն է նախորդ պատմիչներից, երբեմն բառացի։

Աշխատության հիմնական և շատ կարևոր մասը երրորդ հանդեսն է, որն ընդգրկում է 117 տարվա պատմություն՝ Աշոտ Բագրատունու գահակալությունից մինչև 1004 թ., երբ թագավորում էր Գագիկ Բագրատունին։ Այս բաժինն արդեն փաստալից է, քննական և ինքնուրույն։ Ինքը՝ հեղինակն այն անվանում է «Պատմութիւն ժամանակաց ինքնախօսութեան»։ Այդուհանդերձ, Աշոտ Ա, Սմբատ Ա և Աշոտ Բ Բագրատունի թագավորների ժամանակների պատմությունը շարադրված է Հովհաննես կաթողիկոսի, Շապուհ Բագրատունու պատմական երկերի հիման վրա, իսկ բուն «ինքնախօսությունը» սկսվում է Աբաս թագավորի գահակալությունից և հասնում մինչև Գագիկ Բագրատունու թագավորության 15-րդ տարին, ընդգրկելով 75 տարվա պատմություն (929—1004)։ Պատմական այս ժամանակաշրջանի համար Ստեփանոս Տարոնեցու երկը մեր հիմնական աղբյուրն է, որն աչքի է ընկնում հարուստ փաստագրությամբ, կատարված մասամբ ժամանակակցի և մասամբ ականատեսի ձեռքով, պարզ ու հստակ լեզվով և հմտորեն։ Հեղինակը ճշմարտապատում է. նրա գրվածքը սոսկ ներբողական չէ, և եթե նա գնահատում, երբեմն էլ դրվատում է արքաներին ու նրանց գործունեությունը, ապա դա՝ հատկապես երկրում հաստատված խաղաղության, շինարարության և տնտեսական ու մշակութային բարգավաճման շարժառիթով։ Բայց նա չի խուսափում նաև քննադատական խոսք ասել որոշ իշխանների ու թագավորների, ինչպես օրինակ, Սմբատ Բ Բագրատունու մասին։

Ստեփանոս Տարոնեցին իշխող դասակարգի գաղափարախոսն է, հայ առաքելական (լուսավորչական) եկեղեցու դավանանքի պաշտպանը։ Նա կողմնակից է Բագրատունյաց կենտրոնական իշխանության, հակառակորդ երկպառակությունների, մանավանդ իր ժամանակներում զորեղացող «հերձուածողացն»։ Նա ակնարկելով հավանաբար թոնդրակյաններին, կոչ է անում չմոլորվել «հեթանոսների մոլար» խոսքերով, որոնք չեն հավատում և հույս չեն դնում Քրիստոսի հարության, երկրորդ գալստյան և արդար դատաստանի վրա և պահանջում է հեռու մնալ «ի հեթանոսական անհաւատութեանցն՝ ի բազմախաբ հերձուածողացն մոլորութենէ»[18]։

Նա վշտանում է նաև Բյուզանդական կայսրության մեջ հայ դավանանքի դեմ քաղկեդոնականների մոլեռանդ հալածանքներից։ Այդ հալածանքների հետևանքով քաղկեդոնական հայերը ձգտում էին վերադառնալ Հայաստան և Բագրատունյաց թագավորության մեջ իրենց վանքերը հիմնել։

Ստեփանոս Տարոնեցու «Տիեզերական պատմության» երրորդ հանդեսում հաճախ կարևոր տեղեկություններ կան Վրաստանի, Ափխազիայի մի քանի անցքերի, Հայաստանի հարևան ամիրայությունների հարձակումների և արշավանքների, ցուցաբերված դիմադրության, Բյուզանդական կայսրության պատմությանը վերաբերող եղելությունների, որոնց թվում արաբական աշխարհի՝ Եգիպտոսի հետ ընդհարումների, Բուլղարիայի դեմ մղված կռիվների, Վարդ Սկլերոսի և Վարդ Փոկասի ապստամբությունների և այլ անցքերի վերա—

18 Ստեփանոս Տարոնեցի, էջ 156։

բերյալ։ Այս ամենով հանդերձ, Ստեփաննոս Տարոնեցու երկը մնում է հիմնականում իբրև Բագրատունյաց թագավորության դարաշրջանի փաստալից և ճշմարտապատում պատմություն։

Արիստակես Լաստիվերտցին հանդես եկավ XI դարում, Ստեփանոս Տարոնեցուց մի փոքր ուշ։ Նա ծագում էր Կարնո գավառի Լաստիվերտ գյուղից, որը գտնվում էր Արծն քաղաքի մոտ, ուստի և Արծնի մասին խոսում է իբրև հայրենի քաղաքի։ Ստանալով ժամանակի համար բարձր կրթություն և վարդապետական գավազան, նա զբաղվում է եկեղեցական գործունեությամբ, միաժամանակ հեղինակելով իր նշանավոր «Պատմությունը», որն ընդգրկում է 1000 թ. մինչև 1077 թ. ձգվող ժամանակաշրջանի իրադարձությունները։ Այսպիսով, Արիստակես Լաստիվերտցին, փաստորեն, շարունակել է Ստեփանոս Տարոնեցուն, որի «Տիեզերական պատմությունը» հասնում է մինչև 1004 թ.։

Արիստակես Լաստիվերտցին իր պատմությունն սկսել է գրել 1072 թ., խոր ծերության հասակում։

Նա ապրել է պատմական մի ժամանակաշրջանում, երբ երկրի տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքի զարգացումը Բյուզանդական կայսրության, ապա սելջուկ թուրքերի նվաճումների պատճառով տեղի էր տալիս սոցիալ-քաղաքական ճգնաժամին։ Այս ցնցումները խորը կնիք են գրել Լաստիվերտցու աշխատության վրա։

Արիստակես Լաստիվերտցու երկը անդրադառնում է հարցերի երեք հիմնական խումբ՝ նախ Բյուզանդիայի պատմությունը և հայ-բյուզանդական հարաբերությունները, որոնց նա քաջատեղյակ էր, ապա սելջուկ-թուրքերի արշավանքներն ու գործած ավերածությունները, որոնք նա ողբում է սրտի խորին կսկիծով և, ի վերջո, Թոնդրակյան աղանդավորական սոցիալական շարժումը, որի գաղափարական հակառակորդն էր։

Հարցերի առաջին խումբը ներկայացնելիս հեղինակն առավել արժեքավոր տեղեկություններ է հաղորդում Վասիլ Բ-ի օրոք տեղի ունեցած դեպքերի, Բյուզանդական կայսրության դեպի արևելք կատարած առաջխաղացման, Դավիթ Կուրապաղատի մահից հետո նրա տիրույթների գրավման և նրանց մի մասի վրա աչք ունեցող Վրաստանի հետ կայսեր ամենայն դաժանությամբ մղած պատերազմական գործողությունների մասին, որոնք ուղեկցվում էին անխնա ավերումներով և կոտորածներով։

Քանի դեռ Հայաստանում իշխում էր Գագիկ Բագրատունի թագավորը («այր հզօր և յաղթող ի պատերազմի»), խաղաղությամբ էր պահում երկիրը, որը բարգավաճում էր, առաջադիմում էին տնտեսությունը և մշակույթը։ Ըստ արժանվույն գնահատելով այս ամենը, հեղինակը դառնությամբ է արձանագրում Գագիկի մահից հետո Բագրատունյաց թագավորության թուլացման և երկիրը երկու մասի բաժանվելու, Բյուզանդական կայսրությանը կտակելու Պետրոս կաթողիկոսի ձեռքով «Հայոց կորստեան գիրը» կազմելու փաստերը։

Պատմիչն ավելի հանգիստ է արձանագրում Վասպուրականին Բյուզանդիայի տիրանալու փաստը, այն բացատրելով սոսկ որպես պարսիկներից (Թուրքական ասպատակություններից) նեղված վասպուրականցիների տիրույթների փոխանակություն՝ կայսրության ներքին գավառների հետ։ Երբ

Վասպուրականը, Արճեշը, Բերկրին զավթելուց հետո Բյուզանդական կայսրությունը հարվածներն ուղղում է Բագրատունյաց թագավորության դեմ և 1045 թ. գրավում Անի մայրաքաղաքը, պատմագիրն արդեն կորցնում է հանգիստ ոճը և ողբում Բագրատունյաց թագավորության անկումը։ Բագրատունիների աթոռի հաստատությունը խախտվեց և այլևս չվերականգնվեց, թագավորությունը գառը վաճառքի առարկա դարձավ, թագավորը պատվից զրկվեց, դարձավ գերի, կալանավոր, կաթողիկոսական աթոռը այրի նորահարսի նմանվեց, արքունական ապարանքը ավերվեց և նույնիսկ երկրի զորքերը անտերունչ ցիրուցան եղան, իշխանները հայրենի ժառանգությունը լքելով պանդխտության դիմեցին, գավառներն ավերվեցին, դարձան հույների ավարի առարկա, շեն ավանները՝ գազանների բնակության վայր… «Ո՞ր սիրտ քարեղէն, որ ոչ լքանի հառաչմամբ և բեկանի հեծեծելով», ողբաձայն բացականչում է հայրենասեր հեղինակը[19]։

Լաստիվերտցին անդրադառնում է բյուզանդական կայսրերի գործունեությանը, սկսած Վասիլ Բ-ից մինչև Ռոմանոս Դիոգինեսը և լավատեղյակ բյուզանդական պատմությանը, նկարագրում է ոչ միայն ռազմական արշավանքները, այլև կայսրության ներքին անհանգիստ վիճակը, երբեմն հաղորդելով ուշագրավ տեղեկություններ։ Բյուզանդական կայսրության պատմությունը շարադրված է առանց կրքի, հանգիստ, երբեմն բարոյախոսական միջամտություններով։

Վասիլ Բ կայսրի նկատմամբ նա ոչ միայն հանդուրժող, այլև բարյացակամ է, զանց առնելով նրա նվաճողական պատերազմները, դրվատում է նրան իբրև խաղաղություն հաստատողի, որը հոգ է տարել իր բանակը զորեղացնելու և թշնամիներից կայսրությունը պաշտպանելու համար։ Ընդհակառակը, նա արհամարհանքով է լցված դեպի Կոստանդին Մոնոմախը[20], որը եղավ Բագրատունյաց թագավորության կործանողը. հեղինակը պախարակում է նրան այն բանի համար, որ կայսրության ենթակա երկրներից հավաքած հարկերը փոխանակ երկրի պաշտպանության վրա ծախսելու, անտեղի մսխեց՝ վարելով անառակ և ցոփ կյանք։ Նա հիշում է Սողոմոնի խոսքերը, թե. «թագաւորն արդար՝ կանգնէ զաշխարհս, իսկ անօրէնն կործանէ»։

Այստեղից արդեն Լաստիվերտցին մասամբ անցնում է հարցերի երկրորդ խմբին՝ սելջուկյան արշավանքներին և Բյուզանդական կայսրության անկարողությանը՝ անհրաժեշտ հակահարված տալու նրանց։ Հարցերի այս խումբը, կարելի է ասել, գլխավորն է Լաստիվերտցու պատմության մեջ։ Մեր պատմագիրը հանգամանորեն նկարագրում է սելջուկյան արշավանքները, որոնք ալիք առ ալիք երիցս հեղեղեցին և ապականեցին երկիրը, ավերեցին, կործանեցին Հայոց նշանավոր քաղաքները՝ Արծնը, Կարսը, Անին և այլն։

Ոչ ոք այնքան ճշմարտացի և մանրամասն չի շարադրել սելջուկ թուրքերի արշավանքների, նրանց ավերածությունների պատմությունը, նրանց դեմ մղած կռիվները տեղական և բյուզանդական զորքերի կողմից, ինչպես Արիստակես Լաստիվերտցին։ Նույնպիսի մանրամասնությամբ նա նկարագրում է

19 Արիստակես Լաստիվերտցի, գլ. Ժ։

20 Նույն տեղում, էջ 37։

նաև Մանազկերտի ճակատամարտը, որն ավարտվեց բյուզանդական բանակի պարտությամբ և, որը բախտորոշ, կարելի է ասել, ճակատագրական նշանակություն ունեցավ ոչ միայն Բյուզանդական կայսրության, այլև ամբողջ Մերձավոր Արևելքի համար։

Արիստակես Լաստիվերտցու քննարկած հարցերի երրորդ խումբը վերաբերում է Թոնդրակյան շարժմանը, որին նա նվիրել է իր պատմության 22—23-րդ գլուխները։ Իբրև իշխող դասակարգի և եկեղեցու գաղափարախոս, Լաստիվերտցին ճիգ ու ջանք չի խնայում սևացնելու, վարկաբեկելու Թոնդրակյան շարժումը, խուսափելով ցույց տալ նրանց ուսմունքն ու գործերը, որպեսզի ուրիշներն էլ չգայթակղվեն[21]։ Չնայած դրան, առանց Լաստիվերտցու պատմության, մենք շատ բան չէինք իմանա ժողովրդական այդ նշանավոր շարժման, մանավանդ Բյուզանդական կայսրությանը ենթակա արևմտյան նահանգներում նրա տարածված լինելու մասին։

Արիստակես Լաստիվերտցու լեզուն հստակ գրաբարն է, բայց և կենդանի, առանց ճոռոմաբանությունների. ոճը բանաստեղծական է, իրական պատկերներով հարուստ, ուժեղ և ազդու, հաճախ հուզական։ Նա իր դարի և եկեղեցու հարազատ զավակն է. շատ հաճախ է դիմում Ս. Գրքին՝ այնտեղից մեջ բերված քաղվածքները համարեցնելով իր նկարագրած պատմական եղելություններին։ Նա ամեն ինչ բացատրում է աստվածային կամքով. իշխանությունն աստծուց է տրված, բռնությունները ու պատերազմները նույնպես, բայց իբրև պատիժ մարդկանց մեղքերի համար։ Ճիշտ է նկատել Մ. Աբեղյանը, որ Արիստակես Լաստիվերտցու պատկերացմամբ մեղավոր է ոչ թե անհատը, այլ հասարակությունը, նրա բոլոր խավերը, խախտվել է հասարակության, ազգի ներքին բարոյական ուժը, որի վրա խարսխված է այն[22]։

Արծնի կործանման առթիվ նա ասում է. «Իշխանք սորա գողակիցք եղեն գողոց, վրիժագործք և արծաթոյ ծառայք. դատաւորք սորա կաշառառուք և վասն կաշառոյ գողանային զիրաւունս»[23]։ Ով խաբում է ընկերոջը պարծենում է, թե իմաստուն է, ով հափշտակում է ուրիշի հողերը, տունն ու ունեցվածքը, ասում է, թե ես հզոր եմ, հավատքն ու եկեղեցու կարգերն էլ են խախտվել, ոչ թե ընտրությամբ, այլ արծաթով են կրոնական աստիճան և պաշտոն ձեռք բերում։ Մամոնան՝ արծաթասիրությունն է իշխում՝ աստվածասիրության փոխարեն։

Արիստակես Լաստիվերտցին հաղորդում է շատ ուշագրավ և կարևոր տեղեկություններ՝ քաղաքների ու նրանց ներքին կյանքի տարբեր կողմերի մասին։

Լաստիվերտցու պատմության մեջ զգալի տեղ է գրավում ողբը։ Նա ողբում է Բագրատունյաց թագավորության անկումը՝ երկրի ավերումը սելջուկ թուրքերի ձեռքով, նրանց անողոք սրածության զոհերին, գյուղերի, գավառների և ծաղկյալ քաղաքների ամայացումը։

---

21 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, գլ. ԻԳ։

22 Տե՛ս Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, հատ. Բ, Երևան, 1946, էջ 36—37։

23 Արիստակես Լաստիվերտցի, էջ 75։

Արիստակես Լաստիվերտցին մեծ գոհունակությամբ, հուզմունքով ու քնարական բանաստեղծականությամբ է խոսում հայրենի երկրի առաջադիմության մասին։ Եվ նույնքան մեծ է նրա վիշտը, զորեղ նրա ողբը, որքան ողբերգական ու ծանր է եղել նշանակալից զարգացման հասած երկրի անկումը։

* * *

IX—XI դարերի պատմության համար կարևոր աղբյուր են նաև «Գիրք թղթոց»-ում զետեղված մի քանի փաստաթղթերն ու գրությունները, որոնք տեղեկություններ են հաղորդում հայ-բյուզանդական հարաբերությունների, մասնավորապես դավանաբանական հարցերի վերաբերյալ, իսկ Գրիգոր Նարեկացու Կճավա վանքին գրած թուղթը[24] թոնդրակյան շարժման գաղափարախոսության արժեքավոր վավերագիր է։

Թոնդրակյան շարժման կապակցությամբ շատ կարևոր հարցեր են շոշափված նաև Գրիգոր Մագիստրոսի մի քանի թղթերում։ Նրանցից ենք իմանում այդ շարժման տարածված լինելը Անի քաղաքում։ Գրիգոր Մագիստրոսը ոչ միայն թոնդրակյան շարժման գաղափարական կատաղի հակառակորդն էր, այլև անողոք ճնշողը։

Վերջապես նշենք, որ պատմագիտական, վավերագրական արժեքավոր աղբյուրներ են IX—XI դարերի վիմագիր արձանագրությունները։ Եթե V—VII դարերից մեզ հասած արձանագրությունները գերազանցապես շինարարական բովանդակություն ունեն, ապա IX—XI դարերում նրանք հաճախ տեղեկություններ են հաղորդում հասարակական կյանքի տարբեր կողմերի, հողային և ինչքային հարաբերությունների, ջրի օգտագործման, հարկերի ու տուրքերի, արհեստների, առևտրի, դրամական շրջանառության, քաղաքների ներքին կյանքի, քաղաքային վարչության վերաբերյալ։

IX—XI դարերի հայ պատմագրության նշանակությունը դուրս է գալիս զուտ հայկական շրջանակներից, ստանալով մեծ արժեք նաև հարևան երկրների ու պետությունների պատմության ուսումնասիրության համար։ IX—XI դարերի հայ պատմագրությունը կարևոր տեղ է գրավում անցյալի հայ հասարակական մտքի պատմության և ընդհանրապես հոգևոր մշակույթի գանձարանում։

---

24 «Գիրք թղթոց», էջ 488—505։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ

*IX—XI դարերի հայ փիլիսոփայական միտքը իր բնույթով ու բովանդակությամբ էապես տարբերվում է նախորդ շրջանի փիլիսոփայությունից։ Այս շրջանում քաղաքների բուռն աճը, արհեստների և առևտրի զարգացումը, քաղաքային բնակչության հասարակական կշռի մեծացումը էական տեղաշարժեր և փոփոխություններ առաջ բերեցին գաղափարական հոսանքների և փիլիսոփայական հիմնական ուղղությունների մեջ։ Իր հետագա զարգացումն է ապրում հակաֆեոդալական աղանդավորական գաղափարախոսությունը, որը վառ արտահայտություն գտավ թոնդրակյան շարժման սոցիալական և աստվածաբանական տեսության մեջ (Սմբատ Զարեհավանցի)։ Հետզհետե ձևափոխվում և ասպարեզից դուրս է մղվում նախորդ շրջանի գլխավոր հոսանքներից մեկը՝ նորպլատոնականությունը։ Այն մի կողմից սերտաճում է քրիստոնեական միստիկայի հետ (Գրիգոր Նարեկացի), իսկ մյուս կողմից, դեռևս սակավաթիվ հետևորդներ գտնելով իշխող դասերի շրջաններում, մոտենում է ռացիոնալիզմին (Գրիգոր Մագիստրոս)։*

*Զարգացող քաղաքային տնտեսության պահանջները, արտադրողական ուժերի աճը և առհասարակ քաղաքային աշխարհիկ կյանքի վերելքը զգալի չափով ազդեցին բնական գիտությունների զարգացման վրա, որոնք առաջին գծի վրա քաշեցին բնափիլիսոփայական ուղղությունը (Հովհաննես Սարկավագ)։ Այս առաջատար ուղղությունը սկսեց աստիճանաբար ձերբազատվել կրոնա-դավանաբանական քարացած հայացքների ճնշող տիրապետությունից։*

## 1. ԻՇԽՈՂ ԻՐԱՎԱԿԱՐԳԻՆ ԸՆԴԴԻՄԱԴԻՐ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

IX—XI դարերում եկեղեցու և աշխարհիկ ֆեոդալների դեմ ծավալված թոնդրակյան շարժման գաղափարախոսության մասին առկա տվյալները խոսում են այն մասին, թե ինչ լուրջ վտանգ էր ներկայացնում այդ աղանդը իշխող դասակարգերի համար։

Ի պատասխան ուժեղացող շահագործման, թոնդրակեցիները կրոնական քողի տակ առաջ էին քաշում մարդկանց հավասարության և ազատության գաղափարը։ Քանի որ պաշտոնական եկեղեցին՝ աշխարհիկ տերերի հետ դաշ-

նակցած սրբագործում էր ֆեոդալական նվիրապետությունը և աշխատավոր ժողովրդի շահագործումը, թոնդրակեցիները հարվածն առաջին հերթին ուղղում են եկեղեցու դեմ և հակադրում իրենց գաղափարներն՝ ընդունված կրոնական ուսմունքին։ Գ. Մագիստրոսը հայտնում է, թե նրանք «բոլորովին չեն հավատում ոչ Հին, ոչ էլ Նոր կտակարաններին»[1] և «կռապաշտություն են համարում մեր պաշտամունքն այն բանի համար, որ պատվում ենք խաչն ու սրբապատկերները»[2]։ Աստծո հետ հաղորդակից լինելու համար, ըստ թոնդրակյան աղանդավորների, պետք չեն ոչ խաչ, ոչ սրբապատկերներ, ոչ էլ մարդու և բարձրյալի միջև որպես միջնորդ կանգնած եկեղեցին ու հոգևորականությունը։

Գ. Մագիստրոսը պնդում է, որ թոնդրակյանների մեջ կային կատարյալ անաստվածներ, էպիկուրյան փիլիսոփայության հետևողներ։ Սակայն, ամենայն հավանականությամբ, ավելի արժանահավատ է այն տեղեկությունը, որը հիմք է տալիս ենթադրելու, թե թոնդրակյանների մեջ կար նաև պանթեիստական հոսանք։ Այսպես, օրինակ, Սմբատ Զարեհավանցու աշակերտ Կյուրեղը պնդում էր, թե «աստված ամեն ինչի մեջ է, նա առկա է ամենուր և ամեն մի բանում»[3]։

Թոնդրակյան շարժման գաղափարախոսությունը հիմնականում ուներ քննադատական հակաեկեղեցական բնույթ։ Իր էությամբ այն դուրս չէր գալիս կրոնի շրջանակներից։ Չմոռանանք, ի վերջո, որ դա քրիստոնեական ուսմունքի իր մեկնաբանությամբ հանդես եկող մի հերետիկոսական շարժում էր։

Թոնդրակյանները, մերժելով կրոնի նյութական կողմը, խաչը, եկեղեցին և նրա խորհուրդները, ձգտում էին վերադարձնել քրիստոնեությունը իր նախնական կերպարանքին, երբ այն ստրկատիրական կարգերի դեմ ուղղված ստրուկների ու ռամիկների բողոքի արտահայտությունն էր։

Հասարակական հավասարության, մարդկային անհատի ազատության սկզբունքներն առաջ քաշող՝ պաշտոնական եկեղեցու և արտոնյալ դասերի դեմ ծառացող թոնդրակյան գաղափարները մի ցնցող երևույթ էին հայկական միջնադարի համար։

Ազատության, արտաքին և ներքին բռնակալության դեմ պայքարի գաղափարախոսությունը, կեղեքումից ազատ, արդար հասարակության վերաբերյալ ժողովրդական իղձերն ու երազանքը, տոգորված ժողովրդական իմաստությամբ, ինչպես կտեսնենք, իրենց ցայտուն դրսևորումն են գտել «Սասնա ծռեր» ժողովրդական էպոսում։

Ֆեոդալական իրականության, եկեղեցու նվիրապետության ու պաշտոնական ուսմունքի դեմ էր յուրովի ուղղված կամ առնվազն նրանց հետ գժտված միստիցիզմը։ Վերջինս, ի տարբերություն հերետիկոսական կրոնափիլիսոփայական ուսմունքների, առաջարկում էր հրաժարվել այն ամենից,

---

1 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 170։

2 Նույն տեղում, էջ 168։

3 Ղ. Ալիշան. Հայապատում, էջ 550—551։

ինչ կապված է մեղսալից երկրային կյանքի հետ, ու ամբողջովին նվիրվել հոգու փրկության գործին։

Միստիցիզմի խոշորագույն ներկայացուցիչը Հայաստանում հանդիսացավ Գրիգոր Նարեկացին (950—1003), որի «Մատյան ողբերգության» մեծարժեք երկը դրսևորում է հեղինակի ողջ աշխարհայացքը։ Նարեկացու հիմնական գաղափարը հոգեկան բոլոր ուժերի գերագույն լարումով աստծո հետ ձուլվելն է, որի համար անհրաժեշտ է «անդադրում ու հանապազ» քավել մեղքերը, հաղթել մեղսալից մարմինը և, ձուլվելով գերագույն տիրոջ հետ՝ դառնալ նրա մասնիկը։ Սակայն Նարեկացին մարդկային հոգու այդ խոյանքի ճանապարհին որպես խոչընդոտ դնում է այսկողմյան մարմնական կյանքը, որը մարդու ողբերգության պատճառն է։ Ըստ Նարեկացու, հոգու և մարմնի ձգտումները՝ այդ բնեռային հակամարտ ուժերը ողջակիզում են մարդուն։ Միայն կամքի գերբնական լարումով, մարմնականից հրաժարվելով, իր միտքն ու հույզերը երկնայինի վրա սևեռելով, մարդը կարող է փրկության հույս ունենալ իր գործած և չգործած մեղքերից։ Գերագույն աստվածային ճշմարտությանը մարդ կարող է մերձենալ ոչ թե իր տրամաբանության ձիրքը զորացնելով, այլ բարձրյալի հետ միաձուլվելով։ Այս կյանքում ողբերգական հակասություններից հոշոտված հոգին կհասնի գերագույն երջանկության առանց զգայարանների և բանականության, անմիջականորեն լուսավորվելով գերագույն աստվածային ճշմարտությամբ։

Գրիգոր Նարեկացու միստիկական գաղափարները ավելորդ էին դարձնում եկեղեցու և հոգևորականության՝ որպես մարդու և աստծո միջև կանգնած միջնորդի դերն ու նշանակությունը։ Եթե դրանք չէին կարող այստեղ փրկել մարդուն, ու նա ինքն իր մեջ պետք է տոչորվեր իրեն վիճակված գերագույն վշտից, ապա ուրեմն ամբողջ եկեղեցական նվիրապետությունը՝ իր թատերականացած բարդ ծեսերով, պաշտամունքի առարկաներով, խորհրդավորությամբ, հոգևորականների արտոնություններով ու շահախնդրությամբ լիովին կորցնում է իր արժեքը հավատացյալի համար, որովհետև վերջինս հրաժարվելով ամեն տեսակ պայմանականություններից ու շահախնդիր միջնորդներից, անմիջականորեն է խոսում իր աստծո հետ։ Այս է Գրիգոր Նարեկացու քրիստոնեական միստիկայի էությունն ու հասարակական արժեքը, թեև նա աղանդավորական չէր, ոչ էլ քրիստոնեական եկեղեցին ու կրոնը մերժող գաղափարախոս։ Նարեկացուն չէին բավարարում ոչ իշխող իրականությունը, ոչ էլ տիրապետող գաղափարախոսությունը, բայց նա պահում էր հավատքն առ աստված և փրկության հույսը՝ աստծուն միանալու միջոցով։ Եվ պատահական չէ, որ դարեր շարունակ «Նարեկը» եղել է հավատացյալ և ապագայի նկատմամբ հույսը չկորցնող հասարակ ժողովրդի ամենասիրելի և սուրբ համարվող գրքերից մեկը։

Այսպիսով, Նարեկացու միստիցիզմը քրիստոնեական վերարտադրմամբ շարունակում էր նորպլատոնականության կարևոր գաղափարներից մեկը, համաձայն որի մարդն իր հոգեկան ու մտավոր բոլոր կարողություններով պետք է ձգտեր նմանվել ու մերձենալ աստծուն, որպեսզի կարողանար ձուլվել նրա հետ։ Նորպլատոնականության այդ գաղափարը, որը բավականին հստակ դրսևորվել է Դավիթ Անհաղթի մոտ, ազդել է միջնադարի մյուս միս-

տիկական ուսմունքների վրա։ Հայաստանում Նարեկացու ժամանակ ևս նորպլատոնական փիլիսոփայությունը մոռացված չէր։ Վերելքի ուղին բռնած հայ մշակույթը և նրա սպասավորները ուսումնասիրում էին ինչպես Դավիթ Անհաղթի, այնպես և Ստեփանոս Սյունեցու կողմից VIII դարում թարգմանված Դիոնիսիոս Արեոպագացու՝ նորպլատոնական գաղափարներով հագեցված և միստիցիզմին սնունդ տվող կրոնա-փիլիսոփայական գաղափարները, որոնց խոշորագույն արտահայտիչը եղավ Գրիգոր Նարեկացին։ Բայց միստիցիզմին ծնունդ տվող էական ու որոշիչ նախադրյալները ոչ թե նրա գաղափարական նախորդներն էին, այլ ինքը իրականությունը։



Գրիգոր Նարեկացի. մանրանկար

Գրիգոր Նարեկացու ինքնամոռաց ասկետականությունը և սրտի խորքից առ աստված հղվող հեծեծանքը թոնդրակեցիների կենսասեր և իրապաշտ գաղափարների հակապատկերն էին։ Թոնդրակյան աղանդը կոչ էր անում հավասար իրավունքներ տալ հոգուն և մարմնին, չարհամարհել կյանքը և հոգալ նրա կարիքները։ Ճգնավորի ասկետականությունը և աշխատավոր մարդու իրապաշտ կենսասիրությունը բևեռային հակադրություններ էին։ Բայց հակադրությունները հաճախ խաչաձևվում են։ Այս դեպքում ևս եզրերը դիպչում էին իրար, և փաստորեն ստացվում էր նույն արդյունքը։ Երկուսն էլ ժխտում

էին կամա թե ակամա եկեղեցական միջնորդ-փրկիչների կարիքը։ Եթե Գրիգոր Նարեկացին հատուկ նամակով դատապարտեց Թոնդրակյան ուսմունքն ու շարժումը, կարծես թե իրեն այդ աղանդավորականներից սահմանազատելու և հնարավոր կասկածներից խուսափելու համար, ապա հենց այդ նամակը վկայում է, որ նման կասկածներ և դրանց հետ կապված մեղադրանքներ «Նարեկի» հեղինակի հանդեպ հնարավոր էին։

Եվ պատահական չէ, որ Գրիգոր Նարեկացու միստիկականությունը, նրա «Ողբերգության մատյանը» երևան եկան այն ժամանակ, երբ Հայաստանում ծավալվում էր Թոնդրակյան շարժումը, երբ հասարակական բոլոր շերտերը կարծես կորցրել էին իրենց հանգիստը և կայունություն ձեռք բերելու համար հարկադրված էին դիմել կտրուկ միջոցների, որպեսզի կամ արմատական վերանայումներով նոր շունչ և իմաստ հաղորդեին պաշտոնական դավանանքին, կամ էլ ռազմական ուժով և բանադրանքներով վերահաստատեին այն։

## 2. ՆՈՐՊԼԱՏՈՆԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎԵՐՋԱԼՈՒՅՍԸ ԵՎ ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ

Նույն ժամանակաշրջանի ծնունդ է նաև հայ միջնադարի փայլուն դեմքերից մեկը, **Գրիգոր Մագիստրոս Պահլավունին** (մոտ 990—1058), որը միակ աշխարհական փիլիսոփան է մեր միջնադարյան ողջ պատմության մեջ, ապրել է դասակարգային հակամարտությունների սրման շրջանում։ Իր հայացքները նա պաշտպանում էր ոչ միայն գրչով ու խոսքով, այլև զենքով։ Նրա գլխավորած ռազմական ուժերը դաժան հաշվեհարդար տեսան Թոնդրակյան շարժման մասնակիցների հետ։

Գր. Մագիստրոսի պահպանված բազմաթիվ նամակները բավականին նյութ են պարունակում նրա կրոնա-քաղաքական և փիլիսոփայական հայացքների մասին։ Բազմակողմանի կրթված, մի քանի օտար լեզուներ իմացող այդ իշխանը հիմնականում հանդես է գալիս որպես հին հունական մշակույթի և փիլիսոփայության երկրպագու։ Այդ պատճառով էլ նրա սրտին առավել մոտ է Դավիթ Անհաղթը՝ հունաբան դպրոցի ամենակարկառուն ներկայացուցիչը և Հայաստանում նորպլատոնականություն ներմուծողն ու տարածողը։ Գրիգոր Մագիստրոսի ժամանակ էլ, X—XI դարերում աշխարհիկ և հոգևոր իշխանների մեջ կային որոշ շերտեր, որոնք, ինչպես Դավիթ Անհաղթի օրոք, ձգտում էին նորպլատոնականությունը զուգորդել քրիստոնեության հետ, աշխարհիկ բնույթ կրող իդեալիստական փիլիսոփայական ուսմունքը՝ կրոնի հետ։ Սակայն նորպլատոնականությունը Հայաստանում արդեն սպառվում էր որպես առանձին հոսանք. նա ավելի շատ սկսում էր աղբյուր ծառայել նոր ուղղությունների համար, որոնք ավելի հարազատ էին արտահայտում ծաղկման շրջանը թևակոխած ավատատիրական հասարակարգի գաղափարներն ու տրամադրությունները։

Գրիգոր Մագիստրոսի նորպլատոնականությունը, պահպանելով Դավիթ Անհաղթի գաղափարների հիմնական մասը, զգալիորեն հակվում է դեպի փիլիսոփայական ռացիոնալիզմը, ինչպես և դեպի ուժեղացող բնափիլիսոփայական հոսանքը, որոնք ավելի մոտ էին և իր՝ Գրիգոր Մագիստրոսի հետա-

ղոտական հակումներին, և նրան շրջապատող աշխարհիկ պետերի և հոգևորականության գրասեր ու մտածող հատվածի համար։ Գրիգոր Մագիստրոսը ֆեոդալական հասարակության այդ ամենաբարձր ազնվական շերտի գաղափարախոսն է։ Նա Հայաստանի տարբեր վայրերում ստեղծում է գիտական օջախներ և իր հռետորական ձիրքն ի սպաս դնում հայկական միջավայրում հին հունական փիլիսոփաների, գիտնականների ու բանաստեղծների ժառանգության տարածման գործին։ Հունարենից թարգմանում է Պլատոնի մի շարք գործերը, ինչպես և Եվկլիդեսի «Տարերք երկրաչափութեան» նշանավոր երկը։ Նրա նամակներից երևում է, թե որքան հմուտ է եղել հին հունական դիցաբանության և գեղարվեստական գրականության հարցերում, աստվածաբանության մեջ և հաճախ հանդես է եկել իր հեղինակավոր խոսքով՝ դավանաբանական վեճերում։ Նրա նամակներից երբեմն հնչում է անսքող հեգնանքը թերուս հոգևորականների հասցեին, որոնք հաճախ, առանց անհրաժեշտ պատրաստության խառնվում էին փիլիսոփայական կամ աստվածաբանական հարցերին։

Որպես մտածող Գրիգոր Մագիստրոսը փայլում է, երբ հանգիստ է թողնում թոնդրակեցիներին։ Այստեղ արդեն երևան է գալիս նրա ամբողջ մտապաշարը և հայացքների աշխարհիկ, ժամանակի համար առաջավոր բնույթը։ Նրա նամակներից տեսնում ենք, թե ինչպես նախորդ դարերից ստացված նորպլատոնական ժառանգությունը, ենթարկվելով ժամանակի պահանջներին, կորցնում է իր նախկին տեսքը և սերտաճում այլ գաղափարական հոսանքների ու փիլիսոփայական ուսմունքների հետ։ Նրանով փաստորեն վերջանում է նորպլատոնական ուղղությունը Հայաստանում, իհարկե, արդեն բավական ձևափոխված և հեռացած վաղ ֆեոդալական շրջանի նորպլատոնականների հայացքներից։

Գրիգոր Մագիստրոսը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում դեպի բնական գիտությունները. ասույթներից երևում է, որ նա խոր գիտակ էր ժամանակի բնագիտության նվաճումներին։ Սակայն նա չի հարում զգայապաշտությանը՝ սենսուալիզմին, թեև զգալի տեղ է հատկացնում արտաքին աշխարհի զգայական ճանաչմանը։ Էականն ու որոշիչը, ըստ Գրիգոր Մագիստրոսի, բանական ճանաչողությունն է։ Եթե նա, հետևելով նորպլատոնականներին, աստվածային էության մասին խոսելիս, պնդում է, թե «մերձենալ աստծուն հույժ բարի է», ապա հենց նույն տեղում էլ ցույց է տալիս դրա ճանապարհը՝ «չկա մերձենալու որևէ (ավելի լավ) միջոց, քան գիտությամբ հոգին լուսավորելը»[4]։ Այսինքն՝ Գրիգոր Մագիստրոսը, ինչպես և Դավիթ Անհաղթը, բնականաբար, ընդունում է աստծո գոյության տիեզերաբանական ապացույցը՝ բնության, որպես աստծո ստեղծագործության ճանաչումով ըմբռնել նրա արարիչի էությունը։ Այդ պատճառով էլ նա մեծ նշանակություն է տալիս բնագիտությանը և մաթեմատիկային, որոնք նախապատրաստում են մարդկային միտքը բնությունից վե՛ր գտնվող գերագույն գոյի ճանաչմանը։ Պարզ է, որ այդ աստիճանում գիտական միտքն արդեն վեր է ածվում մետաֆիզիկական և աստվածաբանական խորհրդածությունների։ Սակայն էականն այն է, որ

[4] «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 97։

Գրիգոր Մագիստրոսի մոտ կարևոր նշանակություն է տրվում բուն զգայական ճանաչմանը, որն ի վերջո բնական աշխարհի բացահայտած օրենքներն ու հատկությունները տարածում է ստուծո վրա և բանականորեն հիմնավորում նրա գոյությունն ու էությունը։ Սա արդեն ռացիոնալիստական մի աստվածաբանություն է, որն, անշուշտ, տարբերվում է խնդրի կրոնական լուծումից և հնարավորություն տալիս արձանագրելու փիլիսոփայի ինքնուրույն մտածողությունը և գիտական մտքի զարգացմանը նպաստող նրա բավական խիզախ քայլը։

Հաստատելով բանական ճանաչման գերազանցությունը զգայականի հանդեպ, Գրիգոր Մագիստրոսը չի ժխտում զգայական ճանաչման դերը գոյի ըմբռնման հարցում։ Հետևելով Դավիթ Անհաղթին, նա հայտարարում է, որ «միտքը, պարզ ասած, գոյերի ըմբռնումն է»[5], և այդ ըմբռնումը կատարվում է, անշուշտ, նախ զգայարանների միջոցով։

Եթե ճանաչման պրոցեսում զգայական ընկալումը առաջին և անհրաժեշտ աստիճանն է, ապա գիտությունների համակարգում դրան համապատասխան առաջին տեղն են բռնում բնագիտությունը, ճշգրիտ գիտությունները, որոնք զբաղվում են զգայական աշխարհի, բնության իրերի և նրանց հատկությունների ճանաչմամբ։ Եվ Գրիգոր Մագիստրոսը, արդեն ըստ էության տարբերվելով իր գաղափարական նախորդ Դավիթ Անհաղթից, խորապես զբաղվում է բնական գիտություններով, աստիճանաբար թեքվելով դեպի բնագիտական ուղղությունը։ Հայտնի են Գր. Մագիստրոսի ուշագրավ դիտողություններն ու ասույթները կենսաբանության, բժշկագիտության, տիեզերագիտության, մաթեմատիկայի և այլ գիտությունների վերաբերյալ։ Նրա փիլիսոփայական հայացքներում կարևոր տեղ է գրավում տարրաբանությունը (ուսմունքը չորս տարրերի մասին), ինչպես նաև պյութագորականների ուսմունքը՝ թվերի մասին։ Այդուհանդերձ, նա ավելի բարձր է դասում ճանաչման հաջորդ՝ բանական աստիճանը, որովհետև զգայարանների հաղորդումները և նրանց վրա հիմնված կարծիքները կարող են ստուգման, «որովհետև երբեմն որևէ բանի մասին մենք խոսում ենք ոչ ճիշտ, տեսնում ենք որակը և (մեր տեսածը) չի համապատասխանում (իրի իսկական) ձևին, լսում ենք որևէ բան և այն չի հաստատվում»[6]։

Որևէ բանի մասին ստույգ գաղափար ունենալու համար բանականությունը պետք է իր տրամադրության տակ ունենա զգայական ընկալումներ և կարծիքներ, որպեսզի մենք «ստուգությամբ... տիրապես ըմբռնենք անունը, բնությունը և իրերը»։ Այս երեքի համապատասխանությունը հաստատելով միայն, «հազիվ հազ կարողանում ենք ճանաչել գոյի գոյությունը»[7]։ Ճանաչման գերագույն, բանական աստիճանում ստուգվում է իրերի և մտքի համապատասխանությունը։ Ոչ թե վերացական, փորձից առաջ և անկախ ստեղծված գաղափարներն են վերագրվում իրական աշխարհին, այլ այդ գաղափարները, իրերի անունները քննության են ենթարկվում և միայն քննության

---

5 «Գրիգոր Մագիստրոսի Թղթերը», էջ 115։
6 Նույն տեղում, էջ 71։
7 Նույն տեղում։

բռնելով կարող են համարվել ստուգապես ճանաչված գույներ։ Ով ցանկանում է գիտականորեն ստույգ ճանաչել գույը, պարտավոր է հետևել ենթակայի բնությանը, ինչպես հյուսնը՝ փայտին»[8]։

Գրիգոր Մագիստրոսի բնափիլիսոփայական հայացքներն, անշուշտ, որոշակի ազդեցություն էին գործում ժամանակակից մտավորականության վրա։ Իր լայն նամակագրական կապերով, գրաված բարձր և ազդեցիկ դիրքով և մանավանդ մանկավարժական գործունեությամբ Գր. Մագիստրոսը իշխող խավերի գրասեր շրջաններում տարածում էր իր տեսակետները, բնափիլիսոփայական հայացքները։ Դեռևս կտրված չլինելով նորպլատոնականության ուսմունքից, նա յուրովի արձագանքում էր իր ժամանակաշրջանի նոր պահանջներին։ Նրա կարևոր արժանիքներից մեկն այն է, որ հայ փիլիսոփայական մտքի զարգացման շուրջ երկուհարյուրամյա դադարից հետո, հենվելով նախորդ շրջանի թողած ժառանգության, հատկապես Դավիթ Անհաղթի և անտիկ փիլիսոփայության վրա, նա վերակենդանացրեց և առաջ մղեց աշխարհիկ փիլիսոփայական միտքը։ Նորպլատոնականությունից ռացիոնալիզմի միջով դեպի բնափիլիսոփայական ուղղությունը՝ այս էր արդյունավետ այն ուղին, որը բռնեց Գրիգոր Մագիստրոսը, և նրա շնորհիվ XI դարից սկսած հայ փիլիսոփայության մեջ աշխարհիկ, բնագիտական ուղղությունն ավելի մեծ հիմքեր ունեցավ գլխավոր հոսանքներից մեկը դառնալու։

Այսպիսով, Գրիգոր Նարեկացու և Գր. Մագիստրոսի փիլիսոփայությամբ նորպլատոնականությունը հայ իրականության մեջ հասնում է իր վերջնագծին և, վերածվելով այլ ուսմունքների, հետզհետե վերանում է որպես առանձին հոսանք։ Ճիշտ է, հետագա դարերում էլ հայ փիլիսոփաները շարունակում են օգտվել Դավիթ Անհաղթի, Պորփյուրի, Պրոկլի և այլ նորպլատոնականների թողած գրական ժառանգությունից, բայց այդ արդեն արվում էր առավելապես գիտաճանաչողական և ուսուցողական նպատակներով։

## 3. ԲՆԱՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Զարգացած ֆեոդալիզմի դարաշրջանի բնափիլիսոփայական հայացքների նախակարապետը, ճիշտ է դեռևս տարբերային ձևով, եղավ Գրիգոր Մագիստրոսը, որն իր գրվածքներով և ստեղծած կրթական կենտրոններով հող նախապատրաստեց բնափիլիսոփայական ուղղության և ապա նոմինալիստական հոսանքի հետագա զարգացման համար։ Նրա գործը մեծ թափով և ավելի լայն չափերով առաջ տարավ հռչակավոր գիտնական, բանաստեղծ և փիլիսոփա **Հովհաննես Սարկավագ Իմաստասերը** *(1045—1129)*, որը եղավ բնափիլիսոփայական ուղղության ձևավորողը հայ իրականության մեջ։

Ժամանակի խոշորագույն հայ բնագետ Հովհաննես Սարկավագն իր փիլիսոփայական հայացքները խարսխում էր բնական գիտություններից բխող տվյալների վրա։ Անշուշտ, նրա, ինչպես և մյուս միջնադարյան մտածողների վրա խոր կնիք էին թողնում աստվածաբանությունը և եկեղեցու պա-

---

8 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 111։

հանչները, Այնուամենայնիվ, նրա հայացքներում նկատվում է մի էական տեղաշարժ։

Հովհաննես Սարկավագը կասկածի չի ենթարկում աստծո գոյությունը. վերագույն էակի, «ամենակարող արարչի» լինելությունը, ըստ նրա, ապացուցվում է արարչագործությամբ, բնության առկայությամբ։ Աստծո գոյության այս տիեզերաբանական ապացույցը գոհացնում է նրան, քանի որ ազատում է սխոլաստիկ ու սին, ավելի խախուտ պատճառաբանություններից։ Ամբողջ բնությունը ստեղծված է աստծո կողմից և նրա ուժերով էլ խնամվում է, ասում է Սարկավագը, այդ ամենը մենք ճանաչում ենք և գիտենք հավատով, որը ապացույցների կարիք չունի։ Սակայն այս հարցում չէ Հովհաննես Սարկավագի հայացքների առանցքը։

Մի գիտնական, որը աստղաբաշխական և տոմարական հաշվումների հիման վրա 1085 թ. բարեփոխեց հայկական տոմարը, վերացնելով դարերի ընթացքում առաջացած հապաղումը, հատուկ աշխատություն նվիրեց թվերի տեսությանը, ուսումնասիրեց տարբեր նյութերի հատկությունները, զբաղվեց տիեզերքի կառուցվածքի և այլ համանման հարցերով, բնականաբար, իր փիլիսոփայական ընդհանրացումների մեջ չէր կարող անտեսել իր իսկ հետախուզումների արդյունքները և փորձնական գիտելիքների մեծ պաշարը։

Ըստ Հովհաննես Սարկավագի, տիեզերքը իր բոլոր պարագաներով նյութական է, և նա մշտապես, անփոփոխ պահպանում է իրեն տրված դիրքը՝ շնորհիվ երկնքի անվերջանալի շրջապտույտի[9]։ Հովհաննես Սարկավագը պաշտպանում է հին տարրաբանական ուսմունքը, հաստատելով չորս տարրերի՝ հողի, ջրի, օդի և կրակի՝ բնության ստեղծման և գոյության հիմնաքարեր լինելու գաղափարը։ Նա քննադատում է էպիկուրյան տեսությունը նյութական աշխարհի՝ աստծուն հավերժակից լինելու մասին։ Բնությունը ստեղծված է արարչի կողմից, և միայն դրանից հետո է նա ստանում մշտնջենական գոյություն՝ չորս էլեմենտների մեջ պարունակվող հակասությունների շնորհիվ։ Այդ հակասությունների մշտական պայքարը տարրերը պահում է մշտաշարժ ու անծերանալի վիճակում։ Նա առաջ է քաշում այդ կապակցությամբ շատ ուշագրավ դիալեկտիկական մի միտք, պնդելով, որ «յուրաքանչյուր իրի բնությունը բաղկացած է հակադրությունների ներդաշնակությունից, այնպես՝ ինչպես քնարի լարերը, որոնց բարձր և ցածր ձայները իրար զուգորդվելով առաջ են բերում բարեհնչունություն»[10]։ Նա խոսում է նույնիսկ տարրերի՝ մեկը մյուսի փոխակերպվելու մասին. ինչպես, օրինակ, եռացող ջրից և մարող կրակից առաջանում է օդը, կամ էլ օդը՝ թանձրանալով դառնում է հող և այլն[11]։ Սա մի հետաքրքրական միտք է, որը մոտեցնում է հեղինակին նյութի պահպանման օրինաչափության ըմբռնմանը։

Այս եզրահանգումներն, անտարակույս, կարող էին արվել փորձնական գիտությունններով զբաղվող մտածողի կողմից, հետզհետե ուղի բացելով շատ ավելի կարևոր, արդեն փիլիսոփայական ընդհանրացման համար. «Եւ այն

9 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2595, էջ 246բ։

10 Նույն տեղում, էջ 242բ։

11 Տե՛ս նույն տեղում, էջ 260բ։

դյուրահավատ մարդկանցից չեմ, որ առանց քննության հավատամ ամեն մի խոսքի և խաբվեմ, որովհետև առանց քննելու և փորձելու, չի կարելի ընդունել որևէ պնդում»[12]։

Միջնադարի փիլիսոփայության համար Հովհաննես Սարկավագի այս միտքը չափազանց արժեքավոր է։ Որպես խորհող բնագետ և խուզարկու մտքի տեր, նա հանդգնում է, կրոնական գաղափարախոսության պայմաններում, խոսել գիտելիքների փորձնական ստուգման մասին, հատկապես նշելով փորձի էական նշանակությունը մարդու կյանքում և նրա մտավոր աշխարհի ձևավորման մեջ։

Այստեղ մենք մոտենում ենք Սարկավագի կողմից ընդունված սկզբունքին, որ միջնադարյան փիլիսոփայության համար պետք է դիտել որպես մի կարևոր նշանաձող։

«Առանց փորձի կարծիքը չի կարող ճշմարիտ համարվել,— հայտարարում է Հովհաննես Սարկավագը,— և փորձն է հաստատուն և աներկբայ»[13]։ Այս կարևոր դրույթը բխում է նրա բնագիտական աշխատությունների կոնկրետ նյութից և ընդհանուր մեթոդոլոգիական սկզբունքներից։ Հովհաննես Սարկավագն իր այս միտքը արծարծում է բազմիցս։ Ահա ինչ է ասում իր մի այլ աշխատության մեջ. «Ինչ օգուտ կարող է տալ ստույգ կացությունն չարտահայտող խոսքը, չէ որ ասես թե չասես, միևնույն է, իրը անփոփոխ պահպանում է իր բնության հատկությունը»[14]։ Իսկ իր «Յաղագս 500-եակի» աշխատության մեջ նա ընդհանրացնում է տարբեր տեղերում արտահայտած մտքերը փորձի և ճշմարտության չափանիշի մասին, ոչ մի կասկած չթողնելով, որ դա խորը հետազոտությունների արդյունք է և նրա փիլիսոփայական հավատամքը։ «Վայելչախոսությունն անկարող է բացահայտել հստակ ու ակնհայտ ճշմարտությունը, ինչպես և նկարված ու ստեղծված պատկերը չի կարող վերարտադրել շարժման մեջ գտնվող կենդանի էակին, որովհետև մերձենում է առասպելապատում խոսքի և սուտ վկայության... Հարկավոր են ջանք ու տքնություն խոսքերի և իրերի համապատասխանությունը ճանաչելու համար, որովհետև ոչ թե խոսքն է հաստատում իրի ստուգությունը, այլ իրը՝ խոսքի, և սրանից ելնելով պետք է փնտրել ճշմարտություն... և այսպիսի եղանակով, ըստ մեր սովորության, մենք բազում իրեր հետազոտեցինք»[15]։

Հովհաննես Սարկավագի արծարծած գաղափարները չափազանց բնութագրական էին այն վերելքի մթնոլորտի համար, որով շնչում էին միջնադարյան Հայաստանի քաղաքները, որոնք կյանքի էին կոչել գիտության նոր ճյուղեր, մեծ հետաքրքրություն առաջ բերելով ճշգրիտ գիտելիքների նկատմամբ։ Վերջիններն էլ իրենց հերթին ազդել էին փիլիսոփայական մտքի վրա, ուժեղացնելով նրա մեջ տարրաբանական, մատերիալիստական ըմբռնումների սաղմերի զարգացումը։

---

12 Մատենադարան, ձեռագիր № 2595, էջ 260բ։
13 Ղ. Ալիշան, Ցուցիկք հայրենեաց հայոց, հատ. Բ, Վենետիկ, 1921, էջ 262։
14 «Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը», Երևան, 1956, էջ 253։
15 Նույն տեղում, էջ 238։

Հովհաննես Սարկավագի այս նոր գաղափարները, ճանաչողության պրոցեսում փորձի խաղացած դերի մասին արտահայտած մտքերը մեծ արժեք են ներկայացնում փիլիսոփայության և առհասարակ գիտության պատմության համար։ Միջնադարի պայմաններում նա առաջինն էր, որ XI դարի եզրին, իր ստեղծագործական կյանքի ծաղկման շրջանում հռչակեց այդ սկզբունքը։ Ինչպես հայտնի է, Եվրոպայում շուրջ երկու դար անց, XIII դարի երկրորդ կեսին նույն գաղափարն առաջ քաշեցականավոր անգլիացի փիլիսոփա Ռոջեր Բեկոնը (մհ. 1294)։

Հատկանշական է, որ իմացաբանական հարցերում Հովհաննես Սարկավագը հայ մտածողների շարքում եղավ առաջիններից մեկը, որը հատուկ շեշտեց արտաքին, նյութական աշխարհի առաջնությունը մտքի և ճանաչողության հանդեպ։ Նա գրում է. «խոսքն իրի նշանակիչն է, և ճիշտ չէ խոսել իրերին հակառակ, այլ միայն հետևել ճշմարտությանն»[16]։ Իսկ ճշմարտությունն այն է, որ «ոչ թե խոսքն է հաստատում իրի ստուգությունը, այլ իրը՝ խոսքի»[17]։

Հովհաննես Սարկավագի իմացաբանության մեջ մեծ տեղ է տրվում իրերի ճանաչման զգայական աստիճանին։ Դրա հիման վրա նա գալիս է այն եզրակացության, որ իրերի և նրանց նշանակող անուն-հասկացությունների փոխհարաբերության խնդիրը լուծելիս պետք է հենվել զգայարանների հաղորդումների վրա, որովհետև նրանք են անմիջական կապ հաստատում մտքի և գոյերի միջև, իսկ այդ գոյերը առաջնային են իրենց նշանակող հասկացությունների՝ տեսակների և սեռերի նկատմամբ։ Առանձին, անհատ իրերը, ըստ Հովհաննես Սարկավագի, պետք է ընդունել որպես «նախապատվություն և առավելություն ունեցող գոյացություններ, որովհետև առաջնային և առավելություն ունեցող գոյացություններ են կոչվում անհատները»[18]։ Այստեղ մենք արդեն տեսնում ենք, թե ինչպես բնագիտական ուղղության ներկայացուցչի մոտ սկսում է առկայծել նոմինալիստական ուսմունքը, այն ուսմունքը, որը հետագայում դառնալու էր միջնադարյան հայ փիլիսոփայական մտքի կարևորագույն հոսանքներից մեկը։

Հովհաննես Սարկավագի իմացաբանական և բնափիլիսոփայական հայացքներին շատ ներդաշնակ է նրա արվեստի փիլիսոփայությունը։ Լինելով աչքի ընկնող բանաստեղծ և երաժիշտ, նա իր հիմնական սկզբունքները ներածեց նաև արվեստի բնագավառ։ Նրա գեղագիտական հայացքները նույնպես նոր երևույթ էին միջնադարի համար։ «Բան իմաստութեան առ սարեկն» հայտնի իր պոեմում Հովհաննես Սարկավագը դնում է արվեստագետի և բնության առնչակցության հարցը։ Ինչպես երևում է, այդ խնդիրն ուներ էական նշանակություն այն շերտերի մտավորականության համար, որոնց գաղափարախոս էր Հովհաննես Սարկավագը։ Նա քաղաքային բնակչության միջին խավերի՝ արհեստավորների, առևտրականների ու միջին հոգևորականու-

16 «Յաղագս եղանակաց». տե՛ս «Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը», Երևան, 1956, էջ 253։

17 Նույն տեղում։

18 Մատենադարան, ձեռագիր № 2751, էջ 218ա։

թյան շրջաններում տիրող տրամադրությունների, աշխարհընկալման և իղձերի արտահայտիչն էր։ Իրենց կենցաղով և գործունեությամբ արտաքին աշխարհի ճշգրիտ ճանաչման մեջ շահագրգռված այդ խավերի մարդկանց մեջ գնալով ուժեղանում էին իրապաշտական հակումները։ Նրանց տրամադրությունները առանձին ծիլեր էին տալիս նաև քնարերգության, կերպարվեստի, երաժշտության և արվեստի այլ բնագավառներում։ Հովհաննես Սարկավագն արտահայտեց հենց այդ նույն երևույթը.

Խոհեմ և ողջախոհ, իրաւացի և քաջասիրտ.
Իսկ արուեստիւ դու երաժիշտ ամենահնար, անվարդապետ,
Ինքնաբաւ և ինքնուսումըն...[19]։

Հովհաննես Սարկավագն այստեղ շեշտում է սարյակի այն հատկությունները, որոնք նոր խավերի մեջ առավել պաշտելի էին՝ խոհեմությունը և արիությունը. իսկ արվեստով նա չի հետևում հին ուսուցիչների պահանջներին, նա ստեղծագործ է «անվարդապետ», այսինքն, ինչպես կտեսնենք ստորև, նա ինքը ուսուցիչ է հեղինակի համար և բարձր արվեստի չափանիշ։

Անգիր օրէնք ես միանձանց և կըշտամբիչ հեղգացելոց[20]։

Այնուհետև բանաստեղծը համեմատում է բնության մեջ աճած և իր արվեստով բնության մասը կազմող սարյակին՝ արվեստագետ մարդկանց հետ և նախապատվությունը տալիս համեստ, վայրի արարածին.

Ամփիոն այր Թեբացի և Արիոն Միթեմնացի,
Որփեւս Թրակացի, այս երաժիշտք են մեծագով.
Այլ նուագեալ են առ նոքօք, որք բնականամ են
պաճուճեալք,
Զի գործի այսր արուեստի նոքա չունին ի բնութենէ[21]։

Ուսումով ձեռք բերված և իր էությամբ բնական աշխարհից, նրա գույներից, կերպարներից, եղանակներից և շարժումից հեռացած արվեստը, ըստ Հովհաննես Սարկավագի, չունի այն ուժն ու հմայքը, ինչ՝ բնական, նույնիսկ անվարժ, բայց իրապաշտ երգիչը։ Նա խնդրում է, որ սարյակը սովորեցնի իրեն, բաց անի իսկական արվեստի գաղտնիքը, որովհետև այն հնարավոր չէ ձեռք բերել վարժությամբ կամ ուսումով.

Զի վարժումն և կրթութիւն ոչ ժամանէ մերձ առ բընութիւն...[22]։

Սա նոր հայացք էր միջնադարի արվեստի փիլիսոփայության մեջ։ Հովհաննես Սարկավագի կողմից առաջ քաշված սկզբունքը մի քանի դարով կանխում էր ռեալիստական արվեստի փիլիսոփայական ըմբռնումը։ Նա լուծում

19 «Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը», էջ 319։
20 Նույն տեղում, էջ 320։
21 Նույն տեղում, էջ 322։
22 Նույն տեղում, էջ 323։

էր արվեստի և իրականության գեղագիտական առնչության խնդիրը իրապաշտական (ռեալիստական) դիրքերից։ Եթե հաշվի չառնենք Հովհաննես Սարկավագի շարադրման միջնադարյան ձևը և անհրաժեշտ տուրքը («Եկ ինձ մերձ ի գովութիւն, զի արարչին փառք մեծասցին»), ապա բավականին հստակ կտեսնենք նրա հիմնական գաղափարը։ Բնությունն առաջնային է, նրան հետևելով և նմանվելով արվեստագետը կարող է հասնել կատարելության։ Գեղեցիկն այն է, ինչ բնական է, անկեղծ և առողջ. կյանքից ու բնությունից կտրված արվեստը, ինչքան էլ վարպետորեն կատարված լինեն նրա առանձին գործերը, չի կարող հասնել այդ անպաճույճ, բայց կյանքի ընդերքից բխող, բնական գեղեցկությունն իր մեջ պարունակող արվեստին։

Ինչպես տեսնում ենք, Սարկավագի արվեստի փիլիսոփայությունը լիովին համահնչուն է նրա բնափիլիսոփայական հայացքներին։ Արտաքին աշխարհի առաջնությունը հաստատող, զգայական ընկալման և փորձի նշանակությունը մինչ այդ չտեսնված համարձակությամբ շեշտած փիլիսոփան հետևողականորեն զարգացրեց այդ առաջադեմ, մատերիալիստական հակումները նաև արվեստի փիլիսոփայության բնագավառում և այստեղ ևս հանդես եկավ որպես նոր ճանապարհներ բացող ու միջնադարյան քարացած պատկերացումներին հակադրվող ազատամիտ գիտնական։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## 1. ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ IX—XI ԴԴ.

IX—XI դարերում գեղարվեստական գրականությունը, նախորդ ժամանակներում ձեռք բերած նվաճումների հիման վրա, բարձրացավ զարգացման մի նոր ու աննախընթաց մակարդակի։ Նրա գլխավոր հատկանիշներն էին աշխարհականացման ոգու ծնունդն ու խորացումը, գեղարվեստական առանձնահատկությունների մշակումն ու կիրառումը, արտաեկեղեցական պահանջներին ընդառաջ գնալը։ Իրենց ամբողջությամբ դրանք հանդիսանում էին այն ամուր հիմքն ու հենարանը, որի վրա պիտի բարձրանար հաջորդ ժամանակների նոր ու առավել աշխարհականացող հայ գրականությունը։

Շրջադարձային այս երևույթը կապված էր երկրի քաղաքական անկախության, հասարակական-տնտեսական առաջադիմության, ինչպես և մտքի ու մշակույթի բնագավառում առաջացած տեղաշարժերի հետ։

IX—XI դարերի, ողջ միջնադարի գեղարվեստական դրականության ուսումնասիրության իսկական աղբյուրները հայկական ձեռագրերն են, որոնց միայն մի մասն է հրատարակված։ Ինքնին հասկանալի է, որ գեղարվեստական գրականությունն իր դրսևորումներն ունեցել է ոչ բոլոր, այլ որոշ տիպի ձեռագրերում։ Դրանցից, առաջին հերթին, նշելի է հոգևոր երգերի Շարական կոչված ժողովածուները, որոնք սկիզբ առնելով նախորդ շրջանից, շարունակում էին հարստանալ նորանոր երգերով։ Ուշագրավ է, որ քննվող ժամանակաշրջանում Շարականի հին ու կանոնական միակ ձեռնարկից բացի, ստեղծվել է նաև մի ուրիշ տիպի պարականոն երգերի ժողովածու, որը չնայած լայն ընդունելության չի արժանացել, սակայն որպես գրական երևույթ ունի բացառիկ նշանակություն։

Գանձարան են կոչվում հաջորդ մեծածավալ և նշանակալից ժողովածուները. որոնք ամբողջապես բովանդակում են գեղարվեստական ստեղծագործություններ և որոնք հանդիսանում են հենց այս ժամանակների ծնունդը կապված Գրիգոր Նարեկացու անվան հետ։ Գանձարանները հոգևոր բանաստեղծություն-գանձերից բացի, կից կամ առանձին ենթադրում են նաև

հոգևոր տաղեր, մեղեդիներ, հորդորակներ։ Այս ժողովածուները նոր երևույթ լինելով հոգևոր պաշտոնական գրականության բնագավառում, իրենց թեմաներով և այլ արժանիքներով մի աստիճան բարձր էին շարականային երգերի մակարդակից։

Հավանաբար այս ժամանակներում ծնվեցին նաև հոգևոր Տաղարանները, որոնք մի կողմից կապվում էին Գանձարանների հետ, իսկ մյուս կողմից հակվում դեպի արտաեկեղեցական քնարերգությունը։ Նրանք յուրովի առնչություն ունեին նաև շարականային ուշ շրջանի բանաստեղծությունների հետ։ Տաղարաններն ավելի մեծ ապագա ունեին, քան Շարական և Գանձարան ժողովածուները։ Նրանք հետագայում մի թևով կապված մնացին Գանձարաններին, իսկ մյուսով դուրս եկան դեպի աշխարհիկ կյանքն ու թեմաները։

IX—XI դարերում տարածված են եղել նաև համահավաք ժողովածուներ, որոնց մեջ տեղ են գտել տարբեր հեղինակների, հին ու նոր ժամանակների ազգային և թարգմանական երկերի առանձին նմուշները, ինչպես և առանձին հեղինակների գրվածքները։

IX—XI դարերի գեղարվեստական գրականության մասին գաղափար կազմելու առումով կարևոր նշանակություն ունեն նաև գրական մյուս բնագավառների երկերը, որոնց մեջ ժամանակի պահանջով զգալի տեղ էր հատկացվում գեղարվեստական խոսքին։ Այստեղ նկատի ունենք պատմագրական, ժամանակագրական, ճառագրական, ներբողական, վարքա-վկայաբանական, նամակագրական և այլ բնույթի ստեղծագործությունները։ Չի կարելի մոռանալ նաև եկեղեցական այնպիսի ձեռնարկներում տեղ գտած համապատասխան գրականության նմուշները, ինչպիսիք են Հայսմավուրքները, Մաշտոցները, Ճաշոցները, Ժամագրքերը և այլն։

IX—XI դարերում, ինչպես ցույց են տալիս փաստերը, թարգմանական գեղարվեստական գրականության հին հուշարձանների շարքը (Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, Առակք՝ Ողոմպիանու և Եզովպոսի, Արարչագործութիւն՝ բանաստեղծ Գեորգ Պիսիդեսի և այլն) համալրվում էր նոր արժեքներով։ Պարզվում է, որ X դարում Դավիթ Կուրապաղատի հանձնարարությամբ հայերեն է թարգմանվել Պղնձե քաղաքի պատմությունը (թերևս նաև այլ գործեր)։

Ուշագրավ զարգացում է ապրել նաև ժողովրդական բանահյուսությունը։ Ճիշտ է, այն ժամանակ համապատասխան գրառումներ համարյա բնավ չեն կատարվել, սակայն, այդ դարերի բանահյուսության զարգացած վիճակը երևում է բազմաթիվ այլ փաստերից և վկայություններից։ Այդ, նաև մասամբ նախորդ ու հաջորդ դարերում էր, որ ձևավորվեց Սասնա ծռեր վեպը՝ Սասունցի Դավթի հերոսական կերպարով։ Գրիգոր Մագիստրոսի վկայությամբ այն ժամանակ Հայաստանում ժողովրդա-գուսանական երգերն ավելի բարգավաճ վիճակ էին ապրում, քան Հունաստանում։ Անվանի բանաստեղծները, օրինակ, Գրիգոր Նարեկացին, մեծապես օգտվում էին ժողովրդական ստեղծագործություններից։

Միայն հետագայում՝ XIV—XV դարերից սկսած, գրի են առնվել բանա-

հյուսական զանազան փշրանքներ, որոնց զարգացման սկիզբը IX—XI դարերում պիտի որոնել։ Այստեղ նկատի պիտի ունենալ նաև ժողովրդի մեջ հարատևող հեթանոսական պատկերացումների մնացուկների հետ կապված և քրիստոնեական կերպարանք ընդունող կախարդա-հմայական բանաձևերը, աղոթքները, այլևայլ զրույցները։

Գաղափարական բովանդակության առումով IX—XI դարերում կարծես միմյանց դեմ մրցում էին աշխարհիկ և հոգևոր թեմաներն ու համապատասխան գաղափարները։ Սակայն երկու դեպքում էլ հիմնականում նկատվում էր գեղարվեստական խոսքի, մտածողության և աշխարհայացքային ըմբռնումների զգալի առաջընթաց։ Աշխարհականացման ոգին այդ տարբեր թևերի մեջ էլ նրանց առանձնահատկություններին համապատասխան ապրում էր վերելք՝ ապահովելով ողջ գրականության նորորակ կերպարանափոխությունը։ Կարևորն ու որոշիչը հենց հոգևոր, պաշտոնական թևի ներքին փոփոխություններն էին. այլապես կյանքում և ժողովրդական բանահյուսության մեջ աշխարհիկ գաղափարները միշտ էլ քայլում էին ժամանակին համընթաց։ Հիրավի, գրականության աշխարհականացման գործում այն մեծ դերը, որ խաղաց Գրիգոր Նարեկացին, ոչ ոքի չէր վիճակված. իսկ դա տեղի ունեցավ հենց հոգևոր, պաշտոնական գրականության ներսում։

Նույնը կարելի է ասել նաև խոսքի արվեստի առումով։ Այստեղ էլ ամենամեծ դերը պատկանում է Գրիգոր Նարեկացու «Մատյան ողբերգությանը», տաղերին, ճառերին, ներբողներին, անգամ Երգ երգոցի նրա կատարած մեկնաբանությանը։ Այս եղանակով գրավոր դպրության պաշտոնական ուղին լայնանալով ու խորանալով ողջ դրականության համար բացում էր առաջընթացի զգալի հնարավորություններ։

IX—XI դարերի գրական նոր կյանքն իր առաջին ցայտուն արտահայտություններն ունեցավ Հայոց Աղվանքում, ապա Վասպուրականում, հետո Անիում և նրա շրջակայքում։ Դա ինքնին խոսում է այդ կենտրոնները հովանավորող ազգային և պետական իշխանությունների մեծ դերի մասին։

Հարկ է նկատել, որ հոգևոր մշակույթի և հատկապես գեղարվեստական դրականության գործերը ուր էլ ծնունդ առնեին, դառնում էին ազգային սեփականություն, նպաստելով գրականության ընդհանուր առաջընթացին։

IX—XI դարերի հայ գրականությունը ինչպես հայ, այնպես էլ օտար մասնագետները շատ բարձր են գնահատել։ Նրանք այդ դարերի արժեքները համեմատում են ժամանակի առաջավոր երկրների գրական արտադրանքների հետ և նկատում ոչ միայն համապատասխան ընթացք, այլև առաջնություն՝ առանձին դեպքերում, հատկապես Գրիգոր Նարեկացու երկերը գնահատելիս։ Առհասարակ այդ բոլորը, որոշ մասնագետների կարծիքով, կարելի է համարել վերածնության անդրանիկ արտահայտություններ։ Պետք է նկատել, սակայն, որ մասնագետների մի այլ խումբ, նորից շատ բարձր գնահատելով IX—XI դարերի հայ գրականությունը, առարկում է վերոհիշյալ կարծիքին, այն դիտելով որպես զարգացած ֆեոդալական կարգերի գրականություն՝ առաջացած քաղաքային կյանքի առաջադիմության հիման վրա։ Այս հարցը տակավին ուսումնասիրության ընթացքի մեջ է։

## 2. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՎԵՊ ԵՎ ԵՐԳԵՐ

«Սասնա ծռեր» էպոսը հայ ժողովրդի կիրտած և նրա ազատագրական պայքարը, իղձերն ու ձգտումները վիպականորեն անդրադարձնող մի հուշարձան է, որն իր մեջ ընդունելով բնության և հասարակության չար ուժերի դեմ պայքարի հնից եկող դարավոր ավանդական պատկերացումները, ապա հարստացնելով հետագա դարերի եղելությունների վիպականացած նստվածքներով ու շերտավորումներով, դարձավ ժողովրդական մի մեծ ու անմահ դյուցազնավեպ։

Միջնադարի ոչ մի հուշարձան այնքան վառ, ցայտուն և խորիմաստ ընդհանրացումներով չի արտահայտել հայ ժողովրդի ազատագրական պայքարի գաղափարախոսությունը, ժողովրդի բաղձանքն ու սպասումները, որքան «Սասնա ծռեր» վեպը (էպոսը)։

Վեպը բաղկացած է չորս պատումից և ճյուղից, որոնք ներկայացնում են ազատագրական պայքարի հերոսների չորս սերունդ։ Առաջին պատումի հերոսներն են Սանասարն ու Բաղդասարը, որոնք ապստամբում են Բաղդադի խալիֆի դեմ, գալիս Սասուն և հիմնադրում Սասնա անառիկ բերդը։ Ապա հետևում են Սանասարի որդի Մեծ Մհերի (որն իր ահռելի ուժով պայքարում է բնության և հասարակության չար ուժերի դեմ), Դավթի և սրա որդի Փոքր Մհերի ճյուղերը։

Վեպի առանցքը կազմում է պայքարը օտար բռնակալ տիրապետության դեմ, այդ պատճառով էլ վեպում ամենակենտրոնական տեղը բռնում և վեպի միջուկը կազմում է Դավթի ճյուղը[1]։ Վերջինս իր էպիքական կերպավորմամբ և իրականության գեղարվեստական վերարտադրությամբ մի փայլուն ընդհանրացում է՝ հարուստ ինչպես գործողությունների բուռն զարգացմամբ, նույնպես և կյանքի, կենցաղի, մարդկային իդեալների ու ներքնաշխարհի դրսևորումներով։

Դավիթը մարմնավորում է ազատագրական պայքարի ելած ժողովրդի հավաքական ուժը, կամքը, երկրում արդարություն հաստատելու ձգտումը. նրան օգնում են բնության բարի ուժերը՝ ծովն իր խորքից տված կայծակե թրով, Քուռկիկ Ջալալիով, կաթնաղբյուրը՝ կենաց և ուժի առասպելական զորությամբ, խաչ պատարագին՝ հերոսի ուժերը պահպանող և սթափեցնող հատկությամբ։

«Դավթի ուժը անսահմանությունն ու տիեզերական անհունությունը կցուցանե», նկատել է վեպի առաջին ուսումնասիրող Գ. Սրվանձտյանցը[2], այդ ուժը ուղղված է ժողովուրդներին ճնշող բռնակալության և կեղեքումների դեմ։ Դավիթն իր մարդկային, միաժամանակ գերբնական մեծ զորությամբ իշխանության ու տիրապետության չի ձգտում ոչ իր, ոչ էլ ուրիշ ժողովուրդների վրա։ Նա մերժում է բռնակալի գահն ու թագը, հարստահարողի ինչքային ու տիրակալական իրավունքն ու արտոնությունը։

Վեպում այդպիսի գահակալների և իշխանավորների թիվը մեծ է, բայց

---

1 Հ. Օրբելի, Հայկական հերոսական էպոս, էջ 7։
2 Գ. Սրվանձտյանց, Գրոց բրոց, Կ. Պոլիս, 1874, էջ 130։

բռնակալի ամենացայտուն և ամբողջական կերպարը Մսրա Մելիքն է, որին մայրական կաթի հետ միասին ներարկում են ուրիշ երկրները նվաճելու և նրանց ժողովուրդներին կեղեքելու գաղափարը։ Նա անհեթեթ հսկա է՝ անաշխատ վայելքների, քնի և ծուլության, չարի և բռնության մարմնացում։

Նա զավթել է Սասունը և քամում է երկրի գանձերն ու հարստությունները, բնակչության ունեցվածքը, գերի է տանում՝ իրեն ծառաներ դարձնելու կանանց, աղջիկների, պատանիների, իսկ երբ դիմադրության է հանդիպում, շարժում է իր անթիվ զորքը Սասունի վրա։

Սակայն Դավթի թշնամին այդ բանակը կազմող զորքերը չեն, այլ նա, ով նրանց պատերազմի է հանել։ Ուստի Դավիթը, թեժ ճակատամարտում իսկ, ականջ է դնում արաբ ծերունի խոսքերին.

Աղքատ ու խեղճ մարդ են էդոնք.
Որը իր մոր մեկուճարն է,
Որը նոր պսակված տղա,
Որը իր օջախի սյունն է,
Որը հանգած մի տան ճրագ...
Մսրա Մելիքն է զոռով բռնե, բերե...
Մսրա Մելիքն է քո դուշման
Գնա իր հետ կռիվ արա...
Դու որ էրթաս Մելիք սպանես՝
Էդ զորք քեզի աղոթք տ՛անի[3]։

Հաղթանակից հետո Դավիթը մերժում է Մսրա գահին տիրանալու առաջարկը։ Միակ ավարը, որ նա բերում է՝ դա Մելիքի կտրված ականջն է՝ սայլի վրա բարձած։ Մելիքի զորքերին էլ ազատ է արձակում, որ գնան իրենց երկիրը, իրենց տուն ու տեղը։ Ժողովուրդները թող լինեն հաշտ ու խաղաղ դրկիցներ, ամեն մեկը իր երկրի բարիքները, իր աշխատանքի պտուղները թող վայելի՝ այս է Դավթի դավանանքը, իսկ եթե մարդիկ հանդգնեն նորից պատերազմ նյութել, ապա «Թուր կեծակին» չի խնայի նրանց.

Մեկ էլ որ զենք առնեք մեր դեմ,
Թե որ դուք կռվի գաք վեր մեզ՝
Քառսուն գազ խոր հորում ընիք,
Թե ջաղացի ջոջ քարի տակ,
Տելնի ձեր դեմ Սասնա Դավիթ,
Տելնի ձեր դեմ Թուր կեծակին[4]։

Բայց Դավիթն ինքը կռվի չի գնա, եթե ուրիշները «չգան վեր մեզ»։ Ազատագրական գաղափարախոսությունը վեպում բոլորանվեր է և ավարտուն։

Ժողովուրդը, սակայն դարերի փորձով լավ է հասկացել, որ ազատագրությունը օտար լծից՝ դեռևս կատարյալ ազատագրություն չէ, քանի որ վիշապ-

3 «Սասունցի Դավիթ», Երևան, 1939, էջ 370։
4 Նույն տեղում, էջ 282։

ներք, դևերի կերպարանք ունեցող կամ պարզապես թագակիր ու առանց թագի կեղեքիչներ կան և սեփական երկրում։ Ահա թե ինչու վեպում արդարացի պայքարի բազմակողմանի և խորը գիտակցությունը միահյուսվում է սոցիալական արդարության և ազատագրության գաղափարախոսության հետ։

«Սասնա ծռեր» վեպի սոցիալական բովանդակության առանցքը՝ կեղեքումից ազատ աշխատանքի փառաբանությունն է, սեփական քրտինքի պտուղները վայելելու գաղափարը, բոլոր աշխատավորների ու ճնշվածների ընդհանուր բարօրությունը և դրանց համար որևէ ակնկալությունից զերծ անձնազոհ պայքարը, մշտապես ուղեկցված անսահման արդարացիության գաղափարով։ Գերբնական ուժը և մեծագույն սխրանքը ռազմի դաշտում, գութանի մոտ թե արստեղում ոչ մի արտոնություն կամ առանձնաշնորհում չեն բերում վեպի հերոսներին, այդ բանը նրանց մտքով չի էլ անցնում, նրանց միակ հոգսը ժողովրդի բարօրությունն է, անկախ այն բանից, թե նա ինչ լեզվով է խոսում, կամ ինչ դավանանքի է պատկանում[5]։

Մեծ Մհերը սպանում է հացի ճանապարհը փակող առյուծին, ապա Սպիտակ Դևին, որը մարդկանց զրկել էր ջրից։ Պատանի Դավիթը գառնարած է, ապա նախրորդ, նա չի կարող գերության մեջ տեսնել անգամ կենդանիներին ու գազաններին և ազատում է նրանց՝ քանդելով իր հոր որսապարիսպը։

Վայ իմ հեր ինչքան մեղք է գործե՝
Որ էս գազաններ գերի է դարձուցե.
Գնացեք ձեզի համար ապրեք...

Դիմում է նա գազաններին և հետևում, որ նրանցից նույնիսկ մեկն էլ քնած չմնա, «մեղք է»[6]։

«Սասնա ծռեր» էպոսի գաղափարական բովանդակության ամենաէական կողմերից մեկն էլ աշխատանքի փառաբանությունն է։ Դավիթը դեռևս պատանի, չի կարող անգործ մնալ և անաշխատ հաց ուտել՝ թեկուզ իր քեռի Թորոսի տանը.

Քեռի՛, զարուն է,
Հոտաղ մշակի վախտ է, ռսնչպարու վախտ է...
Ելի մեզ աշխատող դարձու,
Դատինք, աշունք բերենք մեր աշխատանք,
Ժողովենք վեր իրարու, ուտենք, ապրենք[7]։

Գութանավորների հացին ընկերանալով, Դավիթը վեց ավուր գութանի վարը մի ժամում է անում։ Եվ որքան խորիմաստ է գութանավորների ասածը, թե «աշխարհ գութանի մոտ կլիանա»[8]։

---

5 Տե՛ս Դr. Գrիգorյան, Հայ ժողովրդական հերոսական էպոսը, Երևան, 1960, էջ 221—226։

6 «Սասունցի Դավիթ», էջ 220։

7 Նույն տեղում, էջ 201։

8 Նույն տեղում, էջ 300։

Նախորդներին եղբայրացած Դավիթը ջանասիրությամբ օգնում է նրանց, պաշտպան կանգնում նրանց իրավունքներին և խստիվ պատվիրում է տերերին՝ «վայ է եկե ձեր գլխերանց, թե իմ ախպերներու հախից ճանկ մի կորեկ կտրեք»[9]։

Ներքին հարստահարողների վիպականացած և ընդհանրացված կերպար են հարամի դևերը, որոնց քարանձավներում կուտակված է ժողովրդից կողոպտված ինչքն ու հարստությունը. Դավիթը ոչնչացնում է նրանց, որպեսզի հարստությունները լցվեն Սասնա ամբարները։

IX—XI դարերում Հայաստանում բռնկված սոցիալական շարժումները երկու դար տևեցին. Թոնդրակեցիները մաքառեցին սոցիալական չարիքի դեմ, բայց ի՞նչ հաջողություն կարող էին ունենալ նրանք։ Երկրի անկախությունն էլ շուտով կողոպտվեց։ Մինչդեռ Փոքր Մհերը շարունակում էր իր նախնիների, մանավանդ հոր պայքարը և՛ օտարի, և՛ ներքին կեղեքումների դեմ։ Անգամ ուրիշ ժողովուրդներին էլ է նա ազատագրում իրենց ճնշողներից։ Բայց չարիքն ու անարդարությունն էին տիրում աշխարհում։ Թագավորներն ու իրենց ժառանգորդները պատերազմի, կողոպուտի հետամուտ՝ իրենց սեփական ժողովրդին կեղեքում են դաժանորեն, իշխանները ընչաքաղց են և դավադիր, քյոխվաները նրանց գործակից, վանահայրերը՝ ագահ և մատնիչ, աստվածն ինքը աչառու է և հարստահարողներին է հովանավորում, նա ուխտ հրեշտակ է ուղարկում, որոնք պարտության են մատնում Մհերին, վեպի այն հերոսին, որն ամենից ավելի ցայտուն է մարմնավորում պայքարը սոցիալական անարդարության դեմ։ Մհերն ուխտում է իր թրով ժայռին հարվածելով ստուգել թերևս ի՞նքն է մեղավոր. ոչ, ինքն արդար է, բայց չարիքն այնպես էր պատել աշխարհը, որ գետինն էլ «հալեվորցել էր» և չէր դիմանում Մհերի ու Քուռկիկ Ջալալիի ոտքերի տակ։ Պայքարը շարունակելն այլևս անհնարին էր և մնում էր միայն մի ելք՝ համբերել... Եվ Մհերն իր ձիու հետ միասին փակվում է ժայռի մեջ և սպասում, որ «աշխարք ավերվի, մեկ էլ շինվի».

Երբ ցորեն եղավ քանց մասուր մի,
Ու գարին եղավ քանց ընկույզ մի,
էն ժամանակ հրամանք կա, որ ելնինք էդտեղեն։

Աշխարհը հիմնովին վերափոխվելու անհնարինությունը միջին դարերում ժողովրդին հասցրել էր նրա (աշխարհի) կործանման անհրաժեշտության ըմբռնմանը, բայց աշխարհը կործանելն անհնարին էր, և հուսախաբ ժողովուրդը իր հերոսին անմահացնելով, քարանձավ է ուղարկում, հույսով, որ կգա այն օրը, երբ աշխարհը կկործանվի, որպեսզի մեկ էլ շինվի արդար հիմունքներով։ Ժողովրդական փիլիսոփայությանը բնորոշ լավատես այս ակնկալությամբ էլ ավարտվում է «Սասնա ծռեր» ժողովրդական մեծ էպոսը։

Ժողովրդական երգերը չնայած միջին դարերում գրի չէին առնվում, սակայն գրիչները տարբեր առիթներով գրանցում էին առանձին նմուշներ, որոնց մի մասը հնից գալով և կերպարանափոխվելով հանդերձ, կապվում է քննվող

9 «Սասունցի Դավիթ», էջ 209։

*ժամանակների հետ։ Այդպիսիններից է, օրինակ, «Աւետիս», կոչված երգերի մի զգալի մասը։ «Աւետիսները» հնում կապված են եղել գարնանամուտի, Նոր տարվա, բուսական աշխարհի, կյանքի վերածնության գաղափարների հետ, իսկ միջին դարերում նվիրվել են Քրիստոսի ծննդյան տոներին, ուր փառաբանվում են Քրիստոսը, Աստվածամայրը և այլ սրբեր։ Այդուհանդերձ նրանք ներծծված են ժողովրդական մտածողությամբ և բանարվեստի առանձնահատկություններով։ Միջին դարերում «աւետիսները» մշակվել են տարբեր հեղինակների կողմից, իսկ ժողովրդի մեջ հարատևել են մինչև ուշ դարերը։ «Աւետիսների» նմանությամբ է Գրիգոր Նարեկացին գրել իր գողտրիկ տաղերից մեկը, միայն թե «աւետիս» բառն օգտագործելով որպես հարակրկնություն՝ տողի սկզբում.*

*Աւետի՜ս մեծ խորհրդոյ, խորհուրդ ծածկեալ մեզ յայտնեցաւ.*
*Աւետի՜ս, լոյս հօր ծագեաց ի ծոցածին յէութենէ…*

*Միջին դարերում տարածված երգերից են նաև «Ծաղկեցաւ ծառն կենաց…» սկզբնատողով հորինված պարերգերը, որոնց անդրանիկ մշակումի փորձին հանդիպում ենք Գրիգոր Տղայի (XII դ.) մոտ։ Նյութը դարձյալ կրոնական է՝ նվիրված աստվածամոր, Քրիստոսի, մարգարեների ու առաքյալների գովքին։ Սակայն ակունքներն այստեղ էլ ժողովրդական են՝ կապված ծաղկի և պտղաբերության գաղափարի, ինչպես և հարսանեկան ծեսերի հետ։ Այս մոտիվի ուշագրավ նմուշներ են գրի առնված և միջին դարերում, և XIX—XX դարերում։ Ըստ պարային անհրաժեշտության, երգի մի տունը երգվել է մի խմբի կողմից՝ հարցումի ձևով, իսկ հաջորդ տունը՝ մյուս խմբի՝ որպես պատասխան։ Ահա մի նմուշ.*

*— Ծաղկեցաւ ծառն կենաց*
*Եւ աննման էր.*
*Լուսեղէն պտուղ եբեր՝*
*Եւ աննման էր…*
*— Ծաղկեցաւ ծառն կենաց՝*
*Աստուածածինն էր.*
*Լուսեղէն պտուղ եբեր՝*
*Իւր միածինն էր…*

*Ժողովրդի մեջ պահպանված համապատասխան երգում կրոնական դեմքերի փոխարեն երևան են գալիս հարսը, փեսան և նրանց հարազատները։*

*Ժամանակի ժողովրդական երգերի տեսակների, նրանց հարստության և ճոխության մասին անուղղակի փաստեր են պահպանվել Գրիգոր Նարեկացու, Ներսես Շնորհալու, Գրիգոր Մագիստրոսի և այլ հեղինակների մոտ։ Ըստ այդմ սիրված ու տարածված են եղել մահվան ողբերը, սիրո հայրենները և ինչպես Գրիգոր Մագիստրոսն է ասում, առհասարակ գուսանական «դայլայլիկները»*[10]։

---

10 *Քննվող երգերի մասին տե՛ս* Աս. Մնացականյան, *Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր*, Երևան, 1956։

Պատահաբար փրկված այդ նմուշները արվեստի հրաշալիքներ են, որոնց մեջ արտացոլված են հայ աշխատավորության առօրյան, իղձերն ու երազանքը։ Նրանցից մեկում, որի մշակման հետքերը նույնպես առկա են Գրիգոր Նարեկացու մոտ, փառաբանված է Մասիսը՝ աշխատանքի, սիրո և ավանդական պատկերացումների ընդհանուր հենքի վրա.

Ասիս-Մասիս լեռնէտ ի վար,
Հո՜, ուր ոսկի կայ կու կուտեն,
Սամու մագիքն կու ձգեն։
Ինչ հողեղէն եզն ի լուծին,
Իր մոմեղէն լուծն ի վզին.
Իր սամեստանն էր ոսկէ,
Սամոտ կապերն ապըրշըմէ...

Արդար ու ազնիվ աշխատանքից անբաժան են սիրահար զույգերը.

— Թուխ, ամ դու տուր հատ մի կալէդ,
Թէ չէ կառնում պագ մ՝ երեսէդ...

Հաճախ առօրեական այս պարզ ու անմիջական զրույցները կապված են լինում մի կողմից հնամենի պատկերացումների, իսկ մյուս կողմից ժամանակի բարքերի ու ըմբռնումների հետ։ Նման երգերից մեկում՝ աղջկա ու տղայի զրույցից ընթերցողի առջև անուղղակիորեն պատկերվում է նաև ժամանակի ճորտերի վաճառքի տեսարանը.

— Կըտրի՛ճ, գնէ, թէ գնել կարես,
Ճորտակ, ու չեմ ծանտրագնոչ...

Այսինքն, երիտասարդ, գնիր ինձ, եթե կարող ես գնել, ես ճորտ եմ և ոչ մեծագին։ Տղան պատասխանում է.

— Թո՛ւխ, ամ ծոցուտ գին հրամէ,
Գընեմ զքեզ, թէ գնել կարեմ...

Ժամանակին սիրված հայրեններից մեկում երևան է գալիս Անիի առօրյայից մի տխուր իրողություն.

Քո ձագն ի Անի տեսայ,
Ի Անի ու Սուրբ Նշանի.
Քո ձագտ ի ծախողին գրկին,
Կու նայէր ի դէմ գնողին.
— Սախեցէք ու մի՛ վախէք,
Վա՜յ հազար իմ կորսընօղին...

Այստեղ էլ ժամանակի նույն առօրյայի արտացոլքն է. մարդավաճառքը՝ Անիի Սուրբ Նշան վանքի հրապարակում։

## 3. ՀԱՅՈՑ ԱՐԵՎԵԼԻՑ ԿՈՂՄԱՆՔ

*Այս անվան տակ ընկալվել են պատմական Հայաստանի Գարդմանի, Ուտիքի, Արցախի, Փայտակարանի գավառները, որոնք IV կամ V դարում անջատվելով միացվեցին Աղվանքին (Փայտակարանը՝ Ատրպատականին)*[11]։

*IX դարում Ուտիք և Արցախ գավառներում նորից հրապարակ ելան հայկական իշխանական տները, դարավերջին վերականգնվեց Աղվանից (Հայոց Աղվանքի) թագավորությունը։ Ազատագրման հենց սկզբի օրերից. երկիրը մտավ նաև գրավոր դպրության զարգացման իր նոր շրջանը, տալով ուշագրավ դեմքեր նաև գեղարվեստական գրականության բնագավառում։*

Եսայի Աբու Մուսեն *IX դարի հայ ականավոր ռազմիկներից է։ Նրանից հայտնի միակ ստեղծագործությունը ծնվել է Քթիշ լեռան վրա ամրացած նրա զորաջոկատի՝ Բուղայի դեմ մղած հերոսամարտերում։ Այդ ճակատամարտում, ի պատասխան Բուղա ոստիկանի գրավոր սպառնալիքների, Եսայի Աբու Մուսեն գրեց իր «Թուղթը», որով աննկուն հերոսը, բանաստեղծական հանդուգն ու ազատատենչ խռովքով, հանդիմանեց արաբական տիրակալության ներկայացուցչին, ասելով. տիրողները պարտավոր են հոգալ նվաճողների հոգսերը, օգնել նրանց ծանր կացության մեջ և ոչ թե «աւազակաբար աւերել, և սրով և գերութեամբ աւեր դարձուցանել» նրանց երկիրը։ Իսկ եթե այդպես ես կամենում նաև դու, ապա՝*

*Դու՝ նպատակ, և աղեղն իմ՝ խոցոտիչ,*
*Դու՝ ախոյեան, և մանկունք իմ՝ յաղթանակ,*
*Դու՝ ոսոխ, և զօրք իմ՝ դաշտապարտիչք,*
*Քո՝ պատերազմ, և մեր՝ յաղթութիւն,*
*Քո՝ մարմին, և իմ՝ նիզակ,*
*Քո՝ պարանոց, և իմ՝ սուսեր...*

*Հայրենասիրական այսպիսի տողերով է սկսվում հայ դպրության նոր շրջանը։*

Համամ Արևելցին *ծնվել է հավանաբար IX դարի 20—30-ական թվականներին և ապրել մինչև դարի վերջերը։ Երևում է, որ նա ստացել է բազմակողմանի կրթություն, այդ թվում նաև ռազմական։ Օծվելով Աղվանից կամ Հայոց Արևելից կողմանց թագավոր, արոշ ժամանակից հետո նա իր տեղը զիջեց որդուն՝ Ատրներսեհին և եղբորը՝ Փիլիպեին, ինքը զբաղվելով գրական-մանկավարժական գործունեությամբ։ Պահպանված տեղեկություններից երևում է, որ նա եղել է նաև հմուտ երաժիշտ։ Նրա գրական վաստակից հայտնի են բանաստեղծություններ, աստվածաշնչային մեկնություններ, քերականության ձեռնարկ և այլ ստեղծագործություններ։ Այս բոլորի մեջ էլ իշխում է հեղինակի բանաստեղծական շունչն ու մտածելակերպը։ Նրա բանաստեղծություններից մեկը նվիրված է իր եղբոր սպանությանը՝ իր իսկ ձեռ-*

---

11 *Մանրամասնությունները տե՛ս* Ա. Շ. Մնացականյան, *Աղվանից աշխարհի գրականության հարցերի շուրջը, Երևան, 1966։*

քով, բայց Բուղա զորավարի հարկադրանքով։ Դա մի սրտամորմոք ողբ է, որի միջոցով նա աղերսում է աստծուն ներել իր ակամա հանցանքը.

Հա՛յր երկնաւոր...
Հրամանաւ Իսմայէլեան բռնաւորին
Ուրացեալ հեղուլ զարիւն եղբօրն,
Աղաչեմ ըզքեզ,
Ներեա՛ յանցանաց իմոց...

Դա ինքնին «իսմայէլեան» բռնակալության դեմ ուղղված մի բողոք էր։ Ժամանակին այդ զղջական ողբն այնքան շատ է սիրվել, որ ներմուծվել է հայոց եկեղեցու շարակնոցի մեջ։ Ըստ էության դա իր ժամանակի առաջին աշխարհիկ և իրական հերոսի մասին գրված ստեղծագործությունն էր՝ շարականների ընդհանուր շարքում։

Բանաստեղծական շնորհքը Համամ Արևելցին հմտորեն օգտագործել է իր շարադրած քերականության ձեռնարկում, որպեսզի սովորողներին օգնած լինի հայոց այբուբենն անգիր անելու և քերականական օրենքները հեշտությամբ սերտելու գործում։ Դրանցից առանձնապես ուշագրավ է «Մարդ» հասկացության մասին գրված չափածոն, ուր հնչում է ազատության գաղափարը.

Ե՛ս, բանական
Ե՛ւ սպասաւոր, և՛ ազատ...

Ուշագրավ են նաև նրա կատարած փոփոխությունները՝ եկեղեցական երաժշտության ասպարեզում, որը եկեղեցու ներքին կարգ ու կանոնին միջամտելու ուշագրավ մի փորձ է։

Անանուն շարականագիրն ապրել է հավանաբար IX—X դարերում։ Հայ մատենագրության մեջ, պաշտոնական Շարականի կողքին, կա բոլորովին տարբեր մի շարակնոց ևս, որի մեջ չկա հայտնի շարակնոցներից առնված և ոչ մի պարբերություն և ծայրից-ծայր պարականոն է։ Թե որտե՞ղ է ստեղծվել այն, հայտնի չէ. թերևս Հայոց Աղվանքի եկեղեցին է փորձել ստեղծել իր շարակնոցը։ Նրա ամենամեծ արժանիքն այն է, որ յուրովի արտացոլում է իր ժամանակի հասարակական-քաղաքական տրամադրությունները՝ կամենալով եկեղեցու կամարների տակ հնչեցնել ժողովրդի բողոքը՝ օտար տիրակալների դեմ՝ տենչալով ազատություն և խաղաղություն.

Ժողովրդեանս քում զաղաչանս ընկալ, մարդասեր տէր,
Անձինք նեղեալք և հոգիք ձանձրացեալք
Յանօրինաց՝ յարուցելոց ի վերայ մեր.
Աղաչեմք առ քեզ, Քրիստոս փրկիչ,
Լուր զձայն աղաղակի յուսացելոցս ի քեզ,
Ջերծայ զմեզ ի նեղչաց մերոց...

Մյուս տաղերում առկա «Հարաւային բռնութեանն», «որդւոցն Հագարու» և նման այլ դարձվածքները, «Թագաւորաց և իշխանաց մերոց» արտահայտությունը հավաստում են, որ խոսքն, իրոք, արաբական բռնակալության հատ-

կապես IX դարի վերջերի մասին է, երբ ունեինք թագավորներ, և երբ դեռ տեղ-տեղ նստած էին արաբ տիրակալները[12]։

Սույն շարակնոցը աչքի է ընկնում նաև այլ բարեփոխությամբ. այստեղ համարյա իսպառ բացակայում են Աստվածաշնչից փոխ առնված հատվածները, որոնցով ողողված է կանոնիկ շարակնոցի ամեն կարգ ու ենթամիավոր։

Անկախ իր տեղի և ծագման կոնկրետ մանրամասնություններից, սույն ժողովածուն խոսում է ժամանակի եկեղեցական արարողությունների մեջ փոփոխություններ և թարմ շունչ մտցնելու համդուգն փորձերի մասին։

## 4. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ

Այստեղ կազմավորված Արծրունյաց թագավորության տարիներին (908—1021) բարենպաստ պայմաններ ստեղծվեցին նաև արվեստի ու մշակույթի զարգացման համար։ Այդ ժամանակների գրավոր դպրության հուշարձաններից ուշագրավ են առանձնապես Թովմա Արծրունու, կարծեցյալ Շապուհ Բագրատունու, Խոսրով Անձևացու, Անանիա Նարեկացու և մասնավորապես Գրիգոր Նարեկացու ստեղծագործությունները։ Նարեկա վանքի մենաստանում զարգացող դպրությունը այդ ժամանակների առաջին խոշոր քայլն էր դեպի վերածնվող մատենագրությունն առհասարակ։

**Շապուհ Բագրատունուն** (IX դ.) է վերագրված մի ինքնատիպ երկ. այն ավելի շուտ իրական գործիչների կյանքին վերաբերող ժողովրդականացած մի քանի զրույցների վերարտադրություն է, գեղարվեստական արձակի ուշագրավ մի նմուշ[13], որը հազիվ թե նրա պատմագիտական երկը լինի։ Հեղինակը գիտակցաբար և վարպետորեն իրականն ու փաստագրականը ներկայացնում է գեղարվեստական հնարանքներով, կոնկրետ անձնավորություններին օժտում բնավորության խտացած գծերով և բարձրացնում գեղարվեստական կերպարի մակարդակի։ Զարգացվում են գործողություններ, հետաքրքրությունների խորացում, հոգեբանական լարված իրադրություններ։ Լեզուն, ոճը, տրամախոսությունները ավելի քան ժողովրդական ոգով են տոգորված։

Հեղինակի նպատակն է դրվատել ուրախ ժամանցը, աշխատասիրությունը, ընկերասիրությունը, հայրենասիրությունը, ազնվությունը, անշահախնդրությունը, ինչպես նաև հերոսությունը։ Նրան խորթ են ընչասիրությունը, ազգային խտրականությունը, դասային արտոնությունները։

Կարծեցյալ Շապուհ Բագրատունու սույն ստեղծագործության մեջ առանձնապես եզակի նշանակություն ունի Դերենի՝ վանական կյանքի հետ կապված զրույցը։ Այն կարծես մի գողտրիկ նովել է վերցված «Դեկամերոնից»։ Կուսակրոն Դերենը սիրում է վանահոր քրոջ դստերը և վանքի արտում, ոսպ հավաքելիս, մտերմանում է նրան, ապրում սիրո վայելքը, ուստի և վտարվում վանքից։ Ինքնատիպ է նաև Դերենի և Գորգ Ջաֆրանի մտերմության արկածային պատմությունը։

---

12 Տե՛ս Աս. Մնացականյան, *Մի հազվագյուտ ու հին երգարանի մասին*, ՊԲՀ, 1964, 3, էջ 195—204։

13 «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», Էջմիածին, 1921։

ժողովրդական լավատեսությունն ու բարի ցանկությունը Դերենին տանում են արկածային և կենսուրախ դեպքերի միջով և ի վերջո պսակում փառքով ու հաղթանակով. «Եւ կալաւ միահեծան Դէրէնն զամենայն. աշխարհն Վասպուրականի... շենացոյց, խաղաղացոյց զաշխարհն»։

Գրիգոր Նարեկացին ծնվել է 950 կամ 951 թվականին, կրթվել և դաստիարակվել է Նարեկա վանքում, որը ժամանակի գիտության ու դպրության աչքի ընկնող օջախներից մեկն էր։ Գրիգոր Նարեկացու վրա մեծ ազդեցություն են ունեցել հայրը՝ Խոսրով Անձևացին, ինչպես և Անանիա Նարեկացին։ Այդ անվանի գրագետներն ու գործիչները՝ առանձին-առանձին մեղադրվել են որպես եկեղեցական կարգերը քննադատողներ և նրա ներսում բարեփոխություններ մտցնողներ։ Ցարդ լրիվ չի պարզաբանված այս ուշագրավ երևույթը, որը մեծապես կնպաստեր ժամանակի որոշ իրադարձությունների ճիշտ ընկալմանը։ Ըստ երևույթին համապատասխան գաղափարներով էր տոգորված նաև Նարեկա վանքի ճգնակենցաղ միաբանությունը և այս միջավայրում ծնունդ առած Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեան» երկը։ Այն ավարտվել է 1003 թվականին, որից հետո, շատ չանցած, նույն թվականին էլ վաղաժամ մեռել է հեղինակը, թաղվելով Նարեկա վանքում։ Եղած գրավոր վկայությունները հիմք են տալիս ենթադրելու, որ Գրիգոր Նարեկացին հալածվել է հենց այդ երկի պատճառով։

Ողբերգության մատյանից բացի, Գրիգոր Նարեկացին գրել է նաև ճառեր, մեկնություններ, ներբողներ, գանձեր, տաղեր, մեղեդիներ[14], որոնք ամբողջությամբ կազմում են այդ դարաշրջանի մեծագույն գրական նվաճումները և՛ գաղափարական բովանդակության, և՛ արվեստի առումով։ Այդ գործերով Գրիգոր Նարեկացին վիթխարի ազդեցություն ունեցավ հաջորդ ժամանակների գրական գործիչների վրա, դառնալով նրանց ուսուցիչն ու ոգեշնչողը։ Չնայած այդ ստեղծագործություններն առանձին-առանձին էլ մեծ արժեք ունեն, սակայն Գրիգոր Նարեկացու ստեղծագործական լրիվ կերպարը նրանց ամբողջության մեջ է։

«Մատեան ողբերգութեան» երկը, հենց առաջին իսկ օրերից, արժանացավ երկու հակընդեմ վերաբերմունքի։ Որոշ հոգևոր գործիչներ ու իշխաններ կատաղի թշնամությամբ ընդունեցին այն, կամենալով դատաստան տեսնել նրա հեղինակի հետ։ Դրան հակառակ, շատ չանցած, և՛ Նարեկը, և՛ Նարեկացին այնքան սիրվեցին, որ դարձան սրբության առարկա։ Եվ եթե միջնադարը տվել է նաև սրբացված հայ գործիչների շատ անուններ, ապա Նարեկը, որպես սրբացված գիրք, մեր իրականության մեջ միակը եղավ։ Այս պարագան ինքնին վկայում է, որ հրապարակ էր ելել մի արտակարգ երկ։ Ֆ. Էնգելսը նշել է, որ միջին դարերում նոր գաղափարները հանդես էին գալիս կրոնական քողի տակ, իսկ նրանց հեղինակները համարվում էին աստվածապատգամ նոր մարգարեներ։ Այդպիսին էր նաև Գրիգոր Նարեկացին իր Մատյանով։

Հարկ չկա մանրամասն անդրադառնալու Գրիգոր Նարեկացու «Մատեան ողբերգութեան»-ի գաղափարական բովանդակությանը, քանի որ այդ արված է

---

14 Գրիգոր Նարեկացի, Մատենագրութիւնք, Վենետիկ, 1840։

դիցիխոսփայության բաժնում։ Նշենք միայն, որ Նարեկացու «Ձայն հառաչանաց...»-ը կոչ անելով հեռանալ միայն աստծուն, ոչ այլ ինչ էր, քան նշված իրականության հետ զժտվելու պահանջ, բայց դա երկրային իրականությունը նորով փոխարինելու ձգտում չէր, այլ նրանից խույս տալու և առ աստված ապավինելու պահանջ։ Ավելին, այդ պահանջի իրականացման միջոցը Նարեկացին համարում էր իր Մատյանը, առանց եկեղեցու և նրա նյութական ու հոգևոր միջամտության։

XIV—XV դարերի մտածող ու բանաստեղծ Գրիգոր Ծերենցն այսպես է բնութագրել Նարեկը.

Սա միջնորդի ոչ կարօտի,
Եւ ոչ այլոց բարեխօսի.
Սա զաստուծոյ ոտիցն ունի,
Եւ համարձակ զնա խօսի...

Այսինքն, Մատյանն անմիջական կապ է աստծու հետ, որով շրջանցվում են բոլոր միջնորդները (հոգևորական գործիչներ) և բարեխոսները (երկնային սրբեր)։ Ինքը, Գրիգոր Նարեկացին էլ Մատյանի մեջ բացեիբաց խոսում է այդ մասին, ընդգծելով, որ Հայր Աբրահամն անգամ դժոխքի բոցերում հրկիզվողին մի կաթիլ ջուր չի կարող տալ։ Թվարկելով հայրապետներին, մարգարեներին, առաքյալներին, մարտիրոսներին և այլ սրբերի, նա գրում է.

Ընդունայն է ինձ փրկութիւն առ ի նոսանէ...

Ըստ նրա, այդ բոլորը երբեմնի երկրային էակներ, մեզ նման մեղավոր մարդիկ են եղել, ուստի նրանք չեն կարող մարդկային փրկության գործում վճռական դեր կատարել.

Բարի է անկանել ի ձեռս տեառն և մի՛ ի ձեռս մարդկան...

Մարդկանց և սրբերի վրա պետք չէ հույս դնել, այլ պետք ուղղակի կապվել աստծու հետ, նա է միակ փրկիչը, ասում է Գրիգոր Նարեկացին։ Ու չնայած նա չէր ժխտում սրբերի և եկեղեցու ծառաների անհրաժեշտությունը, բայց նա ձգտում էր վերջիններիս ստանձնած դերն ու արտոնությունները, որոնք ծայրահեղ աճել և չարաշահումների տեսք էին ընդունել, մեղմացնել, նվազագույնի հասցնել։ Իսկ դա ոչ այլ ինչ էր, քան հոգևոր և աշխարհիկ մարդտիրակալների իրավունքների յուրահատուկ մերժում։

Գրիգոր Նարեկացին զանազան «միջնորդների» ու «բարեխոսների» փոխարեն ստեղծում է իր Մատյանը, որով յուրաքանչյուր հավատացյալ պիտի խոսեր «ընդ աստուծոյ»։ Իսկ որպեսզի Մատյանն ունենար պատշաճ ուժ ու հեղինակություն, նա իր հանճարի ողջ թափով հյուսում է իր «աստվածախոսությունը» և այն համարում աստծու օգնությամբ սրբացված.

Թղիցի հոգի քո խառնեալ ի սա,
Շունչ քո զօրութեան մեծիդ
Միասցի ի քո՝ ինձ շնորհեալ ստեղծաբանութիւնս...

Նա հավաստիացնում է, որ բոլոր ազգերն ու դասակարգերը. բոլոր հասակներն ու սեռերը կարող են փրկվել «ի դէմս աղօթից այսու մատենիս»։

Այսպիսով, Գրիգոր Նարեկացին ձգտում է օրինականացնել մի նոր պահանջ՝ ստեղծելով համապատասխան ձեռնարկ։ Իսկ դա ցույց է տալիս, որ համապատասխան ձեռնարկները, հատկապես Աստվածաշունչը, լրիվ չէին բավարարում նոր ժամանակների մարդուն։ Բանաստեղծն այս առումով խոսում է հատկապես Սաղմոսների մասին, ընդգծելով, որ նրանց մի մասն արդեն անօգտակար է, եթե ոչ վնասակար։ Չէ որ, ասում է նա, դրանք ստեղծված են հին մարդու համար, որը արդար էր, մինչդեռ նոր, քրիստոսածին մարդն ի ծնե մեղավոր է և չի կարող դիմել արդարների համար գրված այդ սաղմոսների օգնությանը։ Սաղմոսը, ասում է նա.

Զիս գարշեցուցեալ հանապազ խայտառակէ...
Յակընկալութենէ կենաց լքանէ...
Ի՞բր երգեցից ինձ վտանգս և արձանացուցից նախատինս։...

Այս հանդուգն քայլը, այն էլ միջնադարում, անշուշտ, պիտի պատուհասով ավարտվեր, ուստի Գրիգոր Նարեկացին շտապում է հավատացնել, որ այդ իրավունքը իրեն տրված է վերուստ, որ նա տեսել է Աստծուն, խոսել նրա հետ, ընդունել նրա կտակը և նրա հանձնարարությունն է, որ կատարում է, ապա ավելացնում է.

Առ այն, զոր տեսի աչօք եւ՛ իմովք,
Առ որ մեծ է պատասխանատուութիւնս,
Քան առ համօրէն Աւետարանին...

Այսինքն, ինքն ավելի մեծ պատասխանատվություն ու պարտավորվածություն ունի իր տեսիլքի առջև, քան ողջ ավետարանական կտակները։ Միջնադարյան մեկնիչներն էլ (Սարգիս Շնորհալի, Հակոբ Նալյան) արդարացնում են բանաստեղծին նաև այս հարցում։

Այստեղ են Նարեկի ու Գրիգոր Նարեկացու ինչպես հալածանքի, այնպես էլ սրբացման գաղափարական հիմքերը։ Դա նոր հայացք էր՝ խարսխված նորից քրիստոնեական հավատքի ու եկեղեցու վրա, բայց որոշ չափով ուղղված գործող կարգ ու կանոնի դեմ։

Այս հայացքը ենթադրում էր նոր վերաբերմունք դեպի մարդը, երկիրը, կյանքը, բնությունը, հայրենիքը, ազատությունը։ Մատյանի մեջ յուրովի արտացոլված են նաև այս երանգները, ավելի լիարժեք ու կուռ դարձնելով նրա հեղինակի ստեղծագործական կերպարը։ Այս ամբողջը գալիս էր ներսից փոփոխելու ժամանակի հոգևոր մտածողությունը, որը միջնաբերդի նման կանգնած էր գրավոր դպրության աշխարհականացման ճանապարհին։ Այստեղ է Գրիգոր Նարեկացու մեծությունը հայ և համաշխարհային մտքի զարգացման պատմության մեջ։

Իր հանդուգն ու նորաշունչ գաղափարները Գրիգոր Նարեկացին արտահայտեց բանաստեղծական շատ բարձր արվեստով, անհուն ներշնչումով, աննախադեպ վարպետությամբ։ Նրա գրչի տակից հեղեղի նման դուրս հոր-

դեցին հայոց լեզվի բոլոր հարստությունները։ Այստեղ էր, որ առաջին անգամ բացվեց հայ բանաստեղծության լեզուն՝ իր ամբողջ շքեղությամբ ու փայլատակումներով։

Գրիգոր Նարեկացին մեր գրականության պատմության մեջ առաջին անգամ իր Մատյանում հմտորեն օգտագործեց գեղարվեստական մտածողության ու արտահայտչական եղանակների համարյա բոլոր հնարավոր հարստությունները՝ սկսած տարբերային հանգավորման, կանոնավոր ոտանավորի կիրառման փորձերից՝ ընդհուպ մինչև պատկերավոր մտածողության, հազարատեսակ համեմատությունների, հակադրությունների, հարասացությունների, ծայրահեղ չափազանցումների, փոխաբերական ըմբռնումների, երևակայական թռիչքների ամենաբարդ ու ամենահմտալից միահյուսումները՝ գեղարվեստական խոսքի աներևակայելի մեծ ուժով։ Դրանք մի կողմից նրա հանճարի հզոր պոռթկումներն էին, իսկ մյուս կողմից՝ նրա որպես հավատացյալի ունեցած պատկերացումների արդյունքը, որոնց շնորհիվ նա պետք է ազդեր աստծու վրա՝ հանուն մարդկային «մեղսագործ» ցեղի փրկության։

Չնայած աստծուն է ուղղված նրա խոսքը սկզբից մինչև վերջ, բայց այնտեղ աստծուն ձոնված դրվատանքների միջից հետևողականորեն անցնում է մարդու շահերի, նրա իրավունքների պաշտպանության գաղափարը։ Բանաստեղծի բերանով առհասարակ իր ժամանակի ամենախորամիտ մարդն է խոսում իր մտատանջությունների, երազանքների և իղձերի մասին։ Նրա ներաշխարհն է, որ առաջին անգամ բացվում է գրականության մեջ՝ իր բոլոր կողմերով ու մանրամասներով, չնայած Գրիգոր Նարեկացին էլ ելքը տեսնում էր աստծու առջև ապաշխարության, առ աստված աղոթքի և աստծու հետ միավորվելու մեջ։

Մեծ է Գրիգոր Նարեկացու դերը նաև «գանձերի», «տաղերի» և «մեղեդիների» զարգացման գործում։ Ըստ երևույթին «Գանձարան» կոչված ժողովածուների հիմնադիրն էլ Գրիգոր Նարեկացին է։ Այդ ժողովածուն ծնվեց, որպեսզի Շարակնոցի հետ միասին ծառայեր եկեղեցական երգ ու երաժշտության զարգացմանը։ Գանձարանը, սակայն, ավելի մասսայական ու ժողովրդական բնույթ ուներ։ Գանձերը հիմնականում պարզ լեզվով շարադրված բանաստեղծություններ էին, որոնք օժտված էին ժամանակի ընդհանուր ցանկությունները դրսևորելու մաղթանքներով։

Գրիգոր Նարեկացուց ցարդ հայտնի է երկու տասնյակից ավելի տաղ ու մեղեդի։ Դրանք սկիզբ հանդիսացան հազարավոր նոր գանձ ու տաղերի, որոնք, իսկապես, ներսից բարեփոխեցին եկեղեցական բանաստեղծությունն ու երաժշտությունը։ Եվ եթե գանձերին վիճակված էր մնալ ծիսարաններում, ապա տաղերը դուրս եկան նաև աշխարհիկ դպրության բնագավառը, սկիզբ հանդիսանալով զանազան տաղարանների։

Գրիգոր Նարեկացու բոլոր տաղերն էլ նվիրված են հոգևոր թեմաների և մասնավորապես Քրիստոսի ու աստվածամոր գովքին։ Այս կերպարները, սակայն, բոլորովին նման չեն նախանարեկյան քնարերգության կերտած Քրիստոսին ու Մարիամին։ Անմարմին ստվերների փոխարեն, այստեղ ներկայացված են երկրայինի հմայք ունեցող ու լիարյուն կերպարներ։

Եթե Աստվածամոր տաղից մտովին հեռացնենք նրա խորագիրը, ապա կմնա մի գեղանի կնոջ անզուգական գովք.

Աչքն ծով ի ծով ծիծաղախիտ ծաւալանայր յառաւօտուն
Երկու փայլակնաձև արեգական նման,
Բերանն երկթերթի, վարդն ի շրթանց կաթէր...

Բնության ու մարդու այս Նրբին համադրությամբ բանաստեղծը ձգտում է ավելի հարազատ ու ավելի մարդասեր աստվածամայր ստեղծել։

«Աւետիս» կոչված տաղի մեջ նկարագրվում է Քրիստոսի ծնունդը, որը, սակայն, բնության վերածննդի մի չնաշխարհիկ գովք է՝ լեցուն ծաղկանց բույրով ու երփներանգությամբ, ջրերի վազքով ու շառաչով։

«Սայլն այն իջանէր...» տաղում հեղինակը կամեցել է պատկերել տապանակի տեղափոխությունը։ Սակայն այստեղ էլ հոգևոր ըմբռնումները ներկայացված են երկրայինի, մարդկայինի, բնության ու կյանքի հոգեհարազատ երանգներով։ Երկնային կառքի նախատիպը փոխարինված է սայլով, քառադեմ էակները՝ զույգ եզներով, Քրիստոսին ուղեկցում են կանաչ խոլրձանի և կորընգանի խրձերը, իսկ Հովհաննես Մկրտիչը պատկերված է ջլապինդ, ճկուն ու երիտասարդ սայլապանի տեսքով։ Առավել ուշագրավն այն է, որ աստվածային սայլը իր այդ ողջ բեռով Սինայից տեղափոխված է Հայաստան՝ Մասիս.

Ի գիլ գայր, ի գիլ, սայլիկն ի գիլ,
Ի Մասեաց յաջ կողմանէն
Սայլիկն ի գիլ գայր, ի գիլ...

Այս եղանակով մի կողմից աշխարհագրական և ազգային հանկացությունները էին ներթափանցում գրականության մեջ, իսկ մյուս կողմից՝ Քրիստոսն ու նրա հետ կապված սրբերն էին տեղայնանում, հայկականանում, մի բան, որն արվեստի ազգային բնութագրի նախապայմանն է։

«Սէր յառաւօտէ...» տաղի մեջ Գրիգոր Նարեկացին «Երգ երգոցի» բարեբար ազդեցությամբ, փառաբանում է այլաբանական սերը, սակայն՝ սովորական սիրո ջերմությամբ ու հմայքով։ Եվ եթե նա երկրային մաքուր սեր չի երգել, ապա դա այն պատճառով, որ ինքը մի ճգնակենցաղ վանական էր և անապատականների ուսուցիչ։ Մեծ մարդն ու մտածողը, սակայն, առաջինն էր, որ տվեց սիրո դրվատանքին նվիրված հետևյալ բանաձևը. «Զի՞ք յերկրի պատուականագոյն և առաւէլ, քան զսէրն առն և կնոջ»։ Ըստ նրա Ադամը դրախտից արտաքսվեց հանուն Եվայի սիրո և դա՝ գիտակցաբար, որի համաձայն երկրային կյանքն ու սերը գերադասվում էին երկնային դրախտից։ Այս մտքերը լուսավոր պատգամներ էին իր հաջորդների համար։

Նարեկացին առաջինն էր, որ օգտվելով ժողովրդական բանահյուսության գանձարանից, ստեղծեց առավել բարձրորակ երգարվեստ՝ տաղաչափության, ինչպես և այլ հնարանքների օգտագործմամբ։ Նա դարգացրեց գեղեցիկ, հնչուն և երաժշտական բառերով խոսելու բարձր ճաշակ։ Նրա հանճարով բացված լայն ճանապարհը դարձավ հայ քնարերգության զարգացման մայրուղին։

## 5. ԱՆԻ-ՇԻՐԱԿ

*Շիրակի Բագրատունյաց թագավորության շուրջ մեկդարյա խաղաղ տարիները նույնպես նոր հիմք դրին արվեստների ու մշակույթի ծաղկման համար։ Այդ հիմքն այնքան ամուր էր, որ հաջորդ անբարենպաստ ժամանակներում էլ յուրովի հարատևում և զարգանում էին անիական ավանդները։ Նկատելի է, սակայն, որ քաղաքաշինական, ճարտարապետական, ռազմագիտական, արվեստաբանական ընդհանուր նվաճումների կողքին, այստեղ անհամեմատ անբավարար եղան գրավոր դպրության արդյունքները։ Այսուամենայնիվ կան անուններ, որոնք խոսում են անիական վերընթաց գրականության մասին։ Այստեղ նկատի ունենք Վարդան Անեցուն, Գրիգոր Մագիստրոսին, Պետրոս Գետադարձին, Սամուել Անեցուն, Հովհաննես Սարկավագին, Մխիթար Անեցուն, Գեորգ Անեցուն և ուրիշներին։ Նրանց գրչի տակ զարգացման բոլորովին նոր ու ինքնատիպ ուղի մտան հնամենի ներբողյանները, աղոթքները, շարականները, պատմագրությունը, թարգմանական արվեստը, ինչպես նաև բանաստեղծություն-տաղասացությունը, աշխարհիկ նամակների ժանրը։*

Վարդան Անեցու *անունը հայտնի է լոկ նրա մի ներբողի*[15] *ակրոստիքոսից։ Նա եղել է վարդապետ, ապրել հավանաբար X—XI դարերում։ Ներբողը նվիրված է երկնային կառքի (Եզեկիել մարգարեի տեսիլք) գովքին, որին նվիրված էին նաև ուրիշ տաղեր։ Այստեղ, սակայն վաղեմի փոքրածավալ ու գողտրիկ տաղերի փոխարեն, ստեղծված է ընդարձակ, ինքնատիպ ու բավականին բարձրարվեստ բանաստեղծություն։ Վարդան Անեցին շեշտը դրել է հատկապես ավետարանների քառակերպ խորհրդանիշների (մարդ, առյուծ, եզ և արծիվ) ներբողման վրա, տալով այդ ըմբռնումներին համապատասխանող երկրային էակների գեղարվեստական հազվադեպ նկարագրություն։ Այսպես, մարդուն գովելիս նա ընդգծում է նրա հզորությունը, իմաստությունը, անտարակուսելի հանճարը, թագընկալ գլուխը, լիարժեք բանականությունը և ծով գիտելիքները։ Աշխատանքի անզուգական նկարագիր ու գովք է տրված եզանը նվիրված տողերում.*

*Որթք սաղարթազարդ և տունկք խնկաբերք*
*Ի քէն շնչաբերեալ անծախապէս բուրին,*
*Զագք գարնանաբերք և ծիծռունք վճիռնաձայնք*
*Ի ձայնէդ ըզվճիռն առեալ զգարունն յափտենից ճչէն,*
*Զոր մաճկալք և այգեգործք*
*Անկարացան առ ի կթել յերկնաթոիչ բարունակէդ...*

*Շիրակի և Այրարատի դաշտային կյանքի առօրյան է կարծես, որ այնքան կենդանի վերարտադրված է այս տողում։ Անկախ կրոնական ըմբռնումից, երկնային կառքի այս գովքը ժամանակի նոր ու կենսաթաթավ գրականության առաջին օրինակներից մեկն էր։ Վարդան Անեցին երկնային կրո-*

---

15 «Էջմիածին» ամսագիր, № 10, 1971, էջ 261—294։

նա-առասպելական էակներին մարմնավորել է երկրային, բնական տեսքով ու նյութական ծանրությամբ։

Գրիգոր Մագիստրոսը ծնվել է 990-ական թվականներին և մեռել 1058-ին։ Եղել է ժամանակին համբավ հանած Պահլավունյաց իշխանական տան զավակը։ Նա և՛ զորավար էր, և՛ իշխան, և՛ բանաստեղծ, և՛ գիտնական, և՛ փիլիսոփա, և՛ թարգմանիչ, և՛ մանկավարժ։ Գրիգոր Մագիստրոսն ավելի, քան Համամ Արևելցին փայփայում էր աշխարհիկ գրավոր դպրություն կերտելու նպատակը։ Այդ առթիվ նա արել է մեծարժեք մի դիտողություն։ Նա ասում է, որ լիարժեք դպրություն զարգացնելու համար անհրաժեշտ է, որ ունենայինք քաղաքական իշխանություն և արքունիք, հենց սկզբից, որպեսզի գրերի գյուտը չմնար սակավաթիվ կրոնավորների տնօրինության ներքո միայն կրոնական ավանդները պահելու համար[16]։ Ուստի, իր ժամանակի պայմաններից ելնելով, Գրիգոր Մագիստրոսը ոչ միայն առաջադրեց կրոնականի կողքին աշխարհիկ դպրության ստեղծման պահանջը, այլև իր գրական ժառանգությամբ, այդ ուղղության ամենախոշոր ներկայացուցիչը եղավ։ Իր մասին նա գրում է. «ընթերցեալ եմ մանկութենէ ոչ զաստուածեղէն մատեանս յաշխարհական բանաստեղծութիւնս բերել», այսինքն, սուրբ գիրքը չէ, որ մանկությունից սովորել եմ աշխարհիկ բանաստեղծության առարկա դարձնել։ Նա ոչ միայն ինքն է հետևում այդ ուղղությանը, այլև իր աշակերտներին է հաղորդում, սովորեցնում։ Եվ եթե Գրիգոր Նարեկացին ձգտում էր ներքուստ հեղաշրջել հոգևոր դպրության ընթացքը՝ դեպի աշխարհականացում, ապա Գրիգոր Մագիստրոսը փորձում էր հիմնել իսկական աշխարհիկ դպրություն։ Այս տեսակետից բացառիկ նշանակություն ունի նրա «Լուաք թէ եկն պապն պաղակ...» տողով սկսվող բանաստեղծությունը և նրան կցված նամակը՝ ուղղված իր Վահրամ որդուն։ Օտար բռնակալը մտել է Հայաստան, հասել Այրարատ՝ Մասիսի սուրբ գագաթը պղծելու, ուստի բանաստեղծը, օգտագործելով նաև Հայկի և Բելի հայրենաշունչ առասպելը, կոչ է անում ելնել նրա դեմ-

Արդ, միլարեայն դու պնդեա՝ զլայնալիճ հայրենին,
Ձերբեքթևեանն դու մխեա, յառաջ մատիր և քաղեա՛.
Այս քեզ Բէլայն հաս հանդէս և Թորգոմեանն Հայկայ...[17]

Գրիգոր Մագիստրոսին հետաքրքրել է ոչ միայն բովանդակությունը, այլև արվեստը։ Ուստի նա իր այս բանաստեղծությունը ջանացել է գրել բարձր արվեստով, ինչպես ինքն է բնութագրում՝ դյուցազնական ոգով, գեղեցիկ տաղաչափությամբ, պաղպաջուն ու հնչեղ, զեղումներով, շարժուն և կատարյալ, հստակ ու վճիտ, որպեսզի կարդացողները կարողանան «մերս փութացուցանել բանաստեղծութիւնս»։ Դա արդեն, իրոք, նոր և շրջադարձային նշանակություն ունեցող պահանջ էր։

Գրիգոր Մագիստրոսի բանաստեղծական արվեստը, սակայն, շատ էր զիջում Նարեկացու արվեստին։ Մագիստրոսը առաջին հեղինակն է, որ մոտ

---

16 Տե՛ս *Н. Адонц,* Дионисий Фракийский и армянские толкователи, Петроград, 1915, стр. 231.

17 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 234։

որոշ ծավալուն ստեղծագործություններ, օրինակ, Հազարտողյանը, գրված են նույն միապաղաղ հանգով։ Գրիգոր Մագիստրոսի մի քանի բանաստեղծությունների մեջ իշխում է խրթնաբանությունը, որ այն ժամանակ մասամբ հարգի էր։ Ինչպես ապագան ցույց տվեց, դա անհեռանկար երևույթ էր։

Մեծ արժեք ունեն Գրիգոր Մագիստրոսի նամակները. դրանք գեղարվեստական արձակի ուշագրավ նմուշներ են՝ շարադրված գեղեցիկ ու արվեստավոր խոսքով, հագեցված աշխարհիկ ըմբռնումներով. նրանց մեջ յուրովի արտացոլված է իրական կյանքը՝ իր պեսպիսություններով։

Պատմա-քաղաքական իրադրությունները, սակայն, շուտով փոխվեցին, և Մագիստրոսյան գրական ուղղությունը չապրեց իր զարգացման բնական ընթացքը։

Հովհաննես Սարկավագը ծնվել է 1045—1050-ական թվականներին՝ Փառիսոսում, Արևելյան այդ գավառի Մանչաք Գետեզեր գյուղում, սակայն ստեղծագործական կյանքի հիմնական մասն ապրել է Անիում և Հաղբատում։ Մեռել է 1129 թ., թաղվել Հաղբատի մենաստանում։ Նա այն սերնդի ներկայացուցիչներից էր, որը տեսավ սելջուկյան արշավանքի ավերածությունները, կոտորածները և արտագաղթի քարավանները։ Ուստի նրա ստեղծագործությունների մեջ իր արտացոլքն է գտել հայրենիքի ազատության և հայության վերահավաքման գաղափարը.

Գլորեցաք, կանգնեա՛ վերստին...
Տէ՛ր, տեսանես զվարատումն երամոց աղաւնեաց քոց՝
յորսորդաց չարաց,
Տեսանես զգահավիժութիւն հօտի քո՝ ի գազանաց
ջաղղակերաց,
Մի՛ անփոյթ առնէր, աղաչեմք,
Այլ հալածեա՛ զերկաքանչիւրոցն
Յանդգնութեամբ ի վերայ մեր յարձակմունս...[18]

Մեծ հայրենասերը դիմում է Վարդանանց նահատակներին, խնդրելով հայրենի ձեղունի տակ հավաքել «ցրուեալ մանկունս» հայոց։

Հովհաննես Սարկավագի ժառանգության հատուկ փայլ է տվել նրա դրամատիկական պոեմը՝ սարյակ թռչունի մասին։ Դա երևակայական մի վիճաբանություն է՝ սարյակի և բանաստեղծի (ավելի ճիշտ ժամանակի մտավորականի) միջև, որն ավարտվում է վերջինիս պարտությամբ։ Այս այլաբանական զրույցի հիմքում ընկած են բանաստեղծի մտորումներն ու նոր հայացքը։ Ըստ էության սարյակը դրսևորում է հենց իր՝ բանաստեղծի մտայնությունը՝ ընդդեմ հին ըմբռնումների։ Ինչպես ճիշտ նկատել է Մ. Աբեղյանը, այս ստեղծագործությամբ վերագնահատվում է բնությունը, որին և պիտի հետևեր արվեստը, որովհետև բնությունն է առաջնայինը։ Մրցակիցների պայքարը գնում է ոչ թե միմյանց ժխտելու, այլ միմյանց նկատմամբ առաջնու-

---

18 «Աղօթամատոյց Յովհաննու Սարկաւագի», Վենետիկ, 1854, էջ 32, 34 (տե՛ս «Սոփերք Հայկականք», ժէ)։

թյունը որոշելու ուղղությամբ։ Վանական մտածողության ներկայացուցիչը պահանջում է, որ սարյակը հեռանա, չխանգարի իրեն, իսկ վերջինս պատասխանում է. «Իմ և ձեր է այս աշխարհ... ի յարարչէն մեզ աւանդեալ...»։ Ավելին, ըստ սարյակի, եթե մեկը կարող է մեղադրվել, ապա դա՝ իր մրցակիցն է, մարդը, որովհետև նա մեղք գործեց և նրա պատճառով տուժեցին նաև իրենք՝ բնության անմեղ արարածները.

Բայց մեք, անմեղքըս վնասեցաք վասն ձերոյդ ժըպրհութեան...

Կան տողեր, որոնց մեջ բանաստեղծը ի դեմս Թռչունի, փաստորեն պաշտպանության տակ է առնում զրկվածներին, մերժվածներին և չարքաշ կյանքով ապրողներին.

Յորս աւելի մեք աշխատեմք ոչ ունելով յարկս և քաղաքս,
Ոչ համբարըս մըթերեալս ի լիութիւն հարկաւորացն,
Ոչ դեղս և ոչ բըժիշկս, որով ցաւոց ախտ դադարէ,
Ոչ կակուղ ինչ կերակրիկ մեզ ի սփոփանս դիւրութեան...
Ջըրկումն մեր՝ ի ձէնչ, և դո՞ւք ըզմէնչ ամբաստանէք.
Իրաւամբ դատեցարուք ըստ հրամանի ըստեղծողին...

Հովհաննես Սարկավագն իր գիտական և մանկավարժական գործունեությամբ ևս խոշոր երևույթ է, մեկը այն հազվադեպ մեծություններից, որ ծնել է հայ ժողովուրդը։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

## 1. ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՏԿԱՆԻՇՆԵՐԸ

*Շինարարական աշխատանքները, առավել ևս ճարտարապետությունը, ամենից ավելի և անմիջականորեն են կապված երկրի տնտեսական նպաստավոր կամ անբարենպաստ պայմանների հետ։ Եթե արաբական տիրապետության ժամանակ շինարարական աշխատանքները շուրջ երկու հարյուր տարի ընդհատվել էին և մեզ հայտնի չէ այդ միջոցին կառուցված քիչ թե շատ նշանակալից որևէ հուշարձան, ապա Բագրատունյաց թագավորության ժամանակաշրջանում հայկական ճարտարապետությունն ապրեց նոր վերելք ու ծաղկում։*

*Այդ վերելքի համար ստեղծագործական առումով խոշոր նշանակություն ունեցավ նախորդ՝ վաղ ֆեոդալական դարաշրջանի ժառանգությունը։*

*Սկսած IX դարից, կառուցվող եկեղեցիները մեծ մասամբ վերարտադրում էին Հայաստանի VI—VII դարերի եկեղեցական շենքերի հատակագծային տիպերը և ծավալա-տարածական լուծումները։ Այսպես, օրինակ, ամենատարածված եկեղեցական տիպը դառնում է «գմբեթավոր սրահ» կոչվող և նախարարական շրջանում Պտղնի ու Արուճի տաճարներով ներկայացված եկեղեցու տիպը։ Շիրակավանի, Արգինայի, Կեչառիսի, Բջնիի, Մարմաշենի, Ամբերդի և այլ եկեղեցիները պատկանում են այդ տիպին։ Աղթամարի, Անիի, Առաքելոց, Գնդեվանքի և այլ եկեղեցիները վերարտադրում են կենտրոնագմբեթ (Ավան, Հռիփսիմե) տաճարների, Անիի Գագկաշեն եկեղեցին, Զվարթնոցի Մայր տաճարը, գմբեթավոր բազիլիկների (Գայանե, Օձուն) տիպերը և այլն*[1]*,*

*Դա սոսկ ընդօրինակություն չէր։ Շարունակելով հանդերձ ավանդական ձևերը, հայ ճարտարապետներն իրենց գործերում մարմնավորեցին ոճական նոր հատկանիշներ՝ ճարտարապետական համաչափությունների, ներքին տարածությունների պլաստիկական մշակման, աշխարհիկ թեմատիկայի ար-*

---

[1] *Տե՛ս В. М. Арутюнян, С. А. Сафарян,* Памятники армянского зодчества, М., 1951, стр. 16—17.

մատավորման, կառուցվածքների տեղադրման ասպարեզում գեղատեսիլության սկզբունքի կիրառման և այլ միջոցներով։

Բագրատունյաց ժամանակաշրջանում են սկսում առաջանալ ու կազմավորվել վանքային համալիրները՝ եկեղեցական ու աշխարհիկ շենքերով, հիանալիորեն ներդաշնակված միմյանց ու բնության հետ։ IX—X դարերում կառուցված մի շարք նշանավոր վանքեր (Տաթևի, Սևանի, Հայրավանքի, Գնդեվանքի, Խծկոնքի, Հոռոմոսի կամ Ղոշավանքի, Սանահնի, Հաղբատի, Բջնիի և այլն) գեղատեսիլության սկզբունքի կիրառության, անսամբլային կառուցապատման հոյակապ օրինակներ են։

Առավել հատկանշականը ճարտարապետության աշխարհիկ ճյուղի աննախընթաց զարգացումն է՝ կապված ծավալուն քաղաքաշինության հետ։ Կառուցվում են նորատիպ աշխարհիկ շենքեր, ուր լայնորեն օգտագործվում են ժողովրդական բնակարանի շինարարության դարավոր ավանդույթները։ Նորատիպ շենքերով լրացվում են նաև վանական համալիրները՝ Գնդեվանքի, Վահանավանքի, Քարկոփի, Հոռոմոսի ժամատները[2], Սանահնի գրատունը և այլն։

Եկեղեցական շենքերի կառուցման ճարտարապետական նոր ըմբռնումները հոյակապ մարմնավորում են ստացել Մանուել ճարտարապետի կառուցած Աղթամարի տաճարում։ Արտաքին ճակատների պլաստիկական մշակումը բազմազան ու հարուստ զարդաքանդակների միջոցով արտակարգ շքեղություն է հաղորդում տաճարին։ Քանդակների մեջ Մանուելը համարձակորեն արմատավորում է ոչ միայն կրոնա-առասպելական, այլև աշխատանքային ու կենցաղային թեմաներ։

Առանձնապես բարերար էր քաղաքային միջավայրը, որտեղ աշխարհիկ ճարտարապետությունը եկեղեցականի հետ միասին կրում էր քաղաքային աշխարհիկ կյանքի ու մտածողության առաջադիմական ազդեցությունը։ Առաջատար դեր էր խաղում հատկապես Բագրատունյաց թագավորության մայրաքաղաք, երկրի վարչական, տնտեսական ու մշակութային գլխավոր կենտրոն Անին, որը օրինակ էր հանդիսանում Հայաստանի քաղաքների համար, ինչպես քաղաքաշինության, այնպես էլ ճարտարապետության ասպարեզում։ Սակայն Անիի նշված առաջատար դերը ամենևին չէր խանգարում, որպեսզի Հայաստանի առանձին նահանգներում (Սյունիք, Վասպուրական, Գուգարք և այլն) առաջանային առանձին դպրոցներ ճարտարապետությանը հաղորդելով ոճական հարուստ երանգներ ու բազմազանություն[3]։

IX—X դարերի հայկական ճարտարապետության ոճական նոր հատկանիշները գլխավորապես արտահայտվում են դեկորատիվ սկզբունքի արմատավորմամբ։ VII դարի տաճարների պատերի հոյակապ լակոնիկությանը աստիճանաբար սկսում է փոխարինել պլաստիկորեն հարստացված հարթությունը։ Եռանկյունաձև խորշերը թեև մնում են որպես նախասիրված մոտիվ,

---

[2] Տե՛ս С. Х. Мнацаканян, Архитектура армянских притворов, стр. 23—35.

[3] Տե՛ս Ս. Խ. Մնացականյան, Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, Երևան, 1960։

սակայն առանձին հուշարձաններում կորցնելով իրենց երբեմնի տեկտոնիկ նշանակությունը, հաճախ կիրառվում են որպես դեկորատիվ միջոց։ Եկեղեցական շենքերում գմբեթի թմբուկի ութանիստ ծավալային ձևից անցնում են կլոր (Տաթև, Կեչառիս, Բջնի) և բազմանիստ (Խծկոնք, Մարմաշեն, Ամբերդ) ձևերի, երկու դեպքում էլ XI դարի համար բնորոշ հովանոցաձև վեղարով։ Առանձին հուշարձաններում (Մարմաշեն, Ամբերդ, Խծկոնք և այլն) գմբեթի թմբուկների արտաքին հարթությունները կամ մակերևույթները պլաստիկական մշակման են ենթարկվում բարակ կիսասյունիկների և նրանց միացնող ճակտոնների կամ դեկորատիվ կամարների միջոցով։

Դարաշրջանի համար բնորոշ է համաչափությունների վերասլացությունը, որի շնորհիվ ճարտարապետական ողջ հորինվածքը դրսից թե ներսից դառնում է միասնական, դինամիկ ու ընդգծված հանդիսավոր։ Նշված հատկանիշներն առանձնապես ցայտուն մարմնավորում են գտել Տրդատ ճարտարապետի կողմից կառուցված Անիի մայր տաճարի ներքին ճարտարապետության մեջ։ Ստրժիգովսկու որոշ հետազոտողների[4] կարծիքով նա կիրառում է ոճական այնպիսի նորամուծություններ (փնջաձև մույթեր և որմնամույթեր, երկկենտրոն կամարներ), որոնք հետագայում բնորոշ են դառնում ռոմանական և գոթական ճարտարապետության համար։

Որոշակի փոփոխություններ են առաջանում շենքերի առանձին մասերում (դռներ, պատուհաններ և այլն), որոնք ավելի շքեղորեն են զարդարվում քանդակներով, երևան են գալիս գեղեցիկ շքամուտքեր՝ փնջաձև սյունիկներով։ Պատուհանները փոքրանում, դառնում են նեղ ու ձգված։ Գործածական են ուղղանկյուն պատուհանները՝ շքեղ և լայն երեսակալներով (Անիի մայր տաճար, Շիրակավանի և Մարմաշենի եկեղեցիներ)։ Զարդարվեստի մեջ բուսական մոտիվներն ավելի են ոճավորվում, լայն կիրառություն են ստանում երկրաչափական մոտիվները, որոնք սկսում են մանր ու նրբագեղ դառնալ։

Քարե ծածկերը (կամարներ, թաղեր, գմբեթներ) ավելի են կատարելագործվում։ Դեպի գմբեթի թմբուկը անցումը կազմավորող տրոմպները մեծ մասամբ փոխարինվում են առագաստներով, որպիսի հանգամանքը հնարավորություն է տալիս փոխանցումն իրականացնել թմբուկի անմիջապես տակը։ Որոշ շենքերում, հատկապես աշխարհիկ (Սանահնի գրատուն), արմատավորվում են նոր տիպի ծածկեր չլակամարների վրա։ Գմբեթներով, թաղերով ու կամարներով ծածկվում են առավել մեծ տարածություններ։

Դարաշրջանի շինարարական արվեստի աչքի ընկնող նվաճումներից պիտի համարել Անիի մեծաթռիչք (30,0 մ ավելի) և այլ կամուրջների կառուցումը։

Գեղատեսիլության սկզբունքի մի այլ դրսևորում պիտի համարել արվեստների (քանդակագործության, որմնանկարչության) ներդաշնակումը ճարտարապետության մեջ։ Դրա ուշագրավ օրինակներ կարելի է տեսնել Տաթևի, Աղթամարի տաճարում, Գնդեվանքի, Սանահնի և ուրիշ վանքերում, Անիի և այլ վայրերի մի շարք եկեղեցիներում։

---

[4] Տե՛ս Strzygowski, Die Baukunst der Armenier und Europa, B. I, Wien, 1918.

## 2. ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ, ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

Քաղաքները ձևավորվում և կառուցապատվում էին ֆեոդալական հասարակության պահանջմունքներից բխող քաղաքաշինական սկզբունքներին համապատասխան[5]։ Ըստ այդմ կարևորություն էր տրվում քաղաքների տեղի վարչական, տնտեսական ու ռազմական նպատակահարմարությանը, առևտրական ճանապարհների վրա նրանց գտնվելուն, տեղանքի բնական պաշտպանվածությանը, ջրամատակարարման հնարավորություններին, շինանյութի առկայությանը և այլն։

Ֆեոդալիզմի շրջանում հայկական քաղաքներն (Անին, Կարսը, Լոռեն, Վանը և այլն) ունեին հատակագծային եռամաս կազմություն՝ բաղկացած միջնաբերդից, բուն քաղաքից կամ շահաստանից ու արվարձաններից։ Առաջին երկուսը միասին, ինչպես բնականորեն, այնպես էլ պարիսպներով, պաշտպանվում էին և կազմում քաղաքի ամրացված մասը, իսկ արվարձանները սովորաբար զուրկ էին պաշտպանական ամրություններից։ Վտանգի դեպքում նրանց և շրջակա ավանների բնակչությունը պատսպարվում էր ամրացված քաղաքում։

Միջնաբերդը տեղադրվում էր դժվարամատչելի, բնականորեն անառիկ ու ողջ քաղաքի նկատմամբ իշխող դիրք ունեցող բլուրների կամ քարաժերպերի վրա։ Սովորաբար միջնաբերդում էին տեղադրվում թագավորական կամ իշխանական պալատներն՝ օժանդակ մասերով, պալատական եկեղեցին, զենքի ու մթերքի շտեմարանները, կոմունալ սպասարկման կառուցվածքներ (բաղնիք, ջրամբար և այլն)։ Միջնաբերդերն ապահովում էին գաղտնուղիով, որպեսզի տևական պաշարման դեպքում հնարավոր լիներ կապ պահպանել արտաքին աշխարհի հետ, լրացնել զենքի, մթերքի ու ջրի պաշարները, իսկ դիմադրության անհուսալիության դեպքում՝ աննկատ հեռանալ քաղաքից։

Քաղաքի ամրացված երկրորդ և հիմնական մասը՝ շահաստանը (որը միջնադարյան քաղաքի գործարար կենտրոնն էր), կառուցապատվում էր վարչական ու պաշտամունքային շենքերով, հրապարակներով, շուկաներով, առևտրական ու արհեստավորական շարքերով, հյուրատներով, բաղնիքներով ու քաղաքի վերնախավին պատկանող պալատական ու բնակելի շենքերով։

Շահաստանի տերիտորիան և նրա դերը նույնքան մեծ էր, որքան խոշոր էր քաղաքը։ Այն կառուցապատվում էր մեծ խտությամբ, ունենալով հիմնականում հատակագծային անկանոն հենք, որովհետև շինարարությունը կատարվում էր աստիճանաբար և ոչ թե միասնական մտահղացմամբ։

Արվարձանները միջնադարյան քաղաքի երրորդ բաղկացուցիչ մասն էին կազմում՝ հատկացված գլխավորապես աշխատավոր և աղքատ բնակչությանը (հողագործներ, արհեստավորներ և մանր առևտրականներ, գյուղից փոխադրված օրավարձով աշխատողներ)։ Արվարձաններում կառուցապատումն այնքան

5 Տե՛ս Վ. Մ. Հարությունյան, Միջնադարյան Հայաստանի քաղաքաշինական կուլտուրան, ՊԲՀ. 1963, № 2 (21), О. Х. Халпахчьян, Гражданское зодчество Армении, М., 1971, էջ 18—34։

*խիտ չէր, ինչպես պարիսպներով շրջապատված շահաստանում, թաղամասերը բարեկարգ չէին, տները աղքատիկ, երբեմն իբրև բնակարան օգտագործվում էին քարայրները։ Այստեղ էին կենտրոնացած քաղաքը մատակարարող բանջարանոցներն ու պարտեզները, որոնք երբեմն զգալի տարածություններ էին կազմում (Վան, Կարին, Խլաթ, Երզնկա և այլն)։*

*Միջնադարյան քաղաքի պաշտպանական կառուցվածքների բաղկացուցիչ և փոխադարձաբար իրար լրացնող մասերն էին կազմում միջնաբերդի ամրությունները, գլխավոր և երկրորդական քաղաքապարիսպները, ջրով լցվող խրամը, գետնուղիները կամ գաղտնուղիները և դեպի քաղաքը եկող ճանապարհների ուղղությամբ ստեղծված դիտաշտարակներն ու ամրոցները։*

*Մի շարք քաղաքներ (Անի, Կարս, Վան, Կարին և այլն) ունեին կրկնակի պարիսպ։ Կիսաշրջան և ուղղանկյուն բուրգերը պարիսպներին ամրություն էին հաղորդում և ունեին պաշտպանական խոշոր նշանակություն։ Բազմահարկ բուրգերի վերին հարկերը կատարում էին դիտանոցի դեր։ Բուրգերում, աշտարակներում և քաղաքապարիսպներին կից տեղավորվում էին կայազորի զորանոցները, ախոռները, շտեմարանները և այլն։*

*Քաղաքային դարպասները սովորաբար անվանվում էին այն քաղաքի անունով, դեպի ուր տանում էր տվյալ դարպասից սկսվող ճանապարհը (օրինակ՝ Դվինն ուներ Արտաշատյան դարպաս, Վանը՝ Թավրիզյան, Անին՝ Կարուց, Դվնո, Կարինը՝ Երզնկայի, Թավրիզյան, Վրաց և այլն)։ Դարպասները պատրաստվում էին ամուր տեսակի հաստ տախտակներից և մեծ բևեռների միջոցով երեսապատվում երկաթե թերթերով կամ ամրացվում էին լայն գլխարկ ունեցող խիտ դասավորված երկաթե գամերով։*

*Միջնադարյան քաղաքներն ապահովված էին մշտական ջրամատակարարմամբ։ Աղբյուրներից խմելու ջուրը քաղաք էր բերվում թրծված կավե խողովակաշարով, որը քաղաքի ներսում ճյուղավորվում էր՝ ջուրը բաշխում թաղամասերին և միջնաբերդին։ Ջրամատակարարման գծերի վրա առանձին տեղերում դրվում էին կարասներ՝ ստուգման հորերով, ջրմուղի մաքրման և նորոգումների համար։*

*Որոշ քաղաքներում (Դվին, Անի, Լոռե) հայտնաբերված են կոյուղու պարզագույն սիստեմներ։ Քաղաքներից կեղտաջրի հեռացումը կատարվում էր թրծված կավե խողովակներով դեպի կլանող հորերը (Դվին, Անի), կամ շրջակա ձորերը (Անի, Լոռե)։*

*Քաղաքի փողոցներով անցկացվում էին հոսող ջրի առուներ՝ ոռոգման և մաքրման նպատակներով։*

*Քաղաք տանող ճանապարհները, կամուրջները նույնպես համարեցվում էին քաղաքի պաշտպանության նպատակներին։ Անիի բազմաչափ կամուրջներից մեկը, օրինակ, Ախուրյանի ձորում, ուներ շարժական անցում, որը վտանգի դեպքում ետ քաշելով, կամուրջն անանցանելի էր դառնում։ Շարժական երթևեկային մասով կամուրջներ գցվում էին նաև քաղաքապարիսպների առաջ գտնվող ջրի փոսի կամ խրամի վրա։*

*Բացի պալատական և եկեղեցական շենքերից, քարակերտ նշանավոր կառուցվածքներ էին նաև հասարակական այլ շենքերը՝ բաղնիքները, հյուրանոցները, իջևանները, վաճառատները և այլն։*

ԱՆԻՆ՝ X—XI դարերի քաղաքաշինության կատարյալ օրինակ էր, որն իրավամբ համարվել է հայ ճարտարապետական արվեստի թանգարան[6]։ Այն եռանկյունաձև դարավանդը, որի վրա տեղադրված էր քաղաքը, հարավ-արևելյան կողմից եզերված է Ախուրյանի, իսկ արևմտյան կողմից՝ Ծաղկոցաձորի կիրճերով։ Ունենալով զգալի խորություն ու շատ տեղերում անմատչելի ուղղաձիգ լանջեր, դրանք լրացնում էին Անիի պաշտպանական համակարգը։ Կամսարականների նախկին ամրոցը հիմնովին վերակառուցելով, Բագրատունիները բարձունքի վրա տեղադրեցին իրենց պալատական շենքի համակառույցը՝ կից շինություններով և պաշտպանական կառուցվածքներով ստեղծեցին մայրաքաղաքի միջնաբերդը։ Այստեղ Աշոտ Ողորմածը Կարսից 961 թ. փոխադրեց իր արքունիքը։ Արդեն X դարի սկզբին սրանից հյուսիս-արևելք՝ Ախուրյանի ու Ծաղկոցաձորի միջև ընկած նեղ պարանոցի վրա, առաջացել էր այսպես կոչված Հին քաղաքը, որի ոչ մեծ տարածությունը ամրացվեց 963—964 թթ. ընթացքում՝ Աշոտ արքայի կառուցած պարիսպով։

Քաղաքի արագ աճը թելադրեց Սմբատ Բ թագավորին 989 թ. կառուցելու Անիի պաշտպանության երկրորդ և առավել հզոր գիծը՝ Սմբատյան պարիսպները, որոնք իրենց մեջ առան ավելի քան 50 հեկտար տարածություն։

Այսպիսով, արդեն X դարի վերջին քառորդում ձևավորվում է խիստ ամրացված մի քաղաք, իր միջնաբերդով և Հին ու Նոր քաղաքներով կամ շահաստանով, ինչպես և դրանց սահմաններից դուրս՝ այրերով հարուստ Ծաղկոցաձորում, Իգաձորում ու Սմբատյան պարիսպներից դեպի հյուսիս ընկած հարթավայրի վրա տարածվող արվարձաններով։

Բլրի վրա տեղադրված միջնաբերդը Ախուրյան կիրճի կողմից ու Ծաղկոցաձորից բնականորեն պաշտպանված էր 80—100 մ խորություն ունեցող գահավեժ լանջերով։ Այն զբաղեցնում էր բլրի կատարը և մասամբ նրա հարավ-արևմտյան լանջը, 3—4 հեկտար տարածությամբ։ Միջնաբերդն ուներ գաղտնուղի, որն սկսվում էր պալատի տակից։

Շահաստանը, որը բաղկացած էր Հին քաղաքից (ներքին բերդ) և Նոր քաղաքից, շատ խիտ էր կառուցապատված։ Հին քաղաքում պեղումներով բացվել են բնակելի թաղամասի մնացորդներ, որտեղ յուրաքանչյուր տուն ուներ ոչ մեծ բակ, նրա շուրջը համախմբված 3—6 բնակելի և օժանդակ սենյակներով։

Նոր քաղաքի միջով, սկսած Սմբատյան պարիսպների ավագ դռնից մինչև Աշոտյան պարիսպը, անցնում էր քաղաքի գլխավոր փողոցը՝ բուն պողոտան, որի երկու կողմերում ընկած էին պաշտամունքային շենքերը, խանութների և արհեստանոցների շարքերը, շուկայական հրապարակը և այլ կառույցներ։

Գլխավոր փողոցի հետ խաչվող երկրորդական փողոցները (որոնց մեծ մասը զանազան արհեստների անունով էին կոչվում) իրենց ճյուղավորումներով կապ էին ստեղծում կենտրոնի ու բնակելի թաղամասերի միջև։

Նոր քաղաքի պարագիծը շեշտված էր պաշտամունքային ու քաղաքա-

---

6 Տե՛ս Н. Я. Марр, Ани, Л.—М., 1934, Վ. Մ. Հարությունյան, Անի քաղաքը, Երևան. 1964, նույնը ռուսերեն։

ցիական մոնումենտալ շենքերով, որոնք իրենց տեղադրությամբ և վերասլաց ծավալներով հարստացնում էին քաղաքի համայնապատկերը։




Անի քաղաքի հատակագիծը

Արվարձանները ձգվում էին գլխավորապես հյուսիսային դարավանդի վրա և քաղաքը եզերող ձորերում, մասնավանդ Ծաղկոցաձորում։ Իշխող դասակար-

գի ներկայացուցիչներին պատկանող երկու—երեք հարկանի պալատական շենքերի առկայության դեպքում «...աշխատավոր ժողովուրդը, ինչպես ցույց են տալիս պեղումները, պատսպարվում էր աղքատիկ հյուղերում՝ կառուցված ավերակ շենքերին կից, կամ փորված քարքարոտ գետնի խորքերում»[7]։

Ախուրյանի, մանավանդ, Ծաղկոցաձորի ժայռերի մեջ փորված էին մի քանի հարյուրի հասնող քարայր-բնակարաններ։ Հանդիպում են նաև ժայռափոր տնտեսական շենքեր, խանութներ, եկեղեցիներ, դամբարաններ[8]։

Քաղաքի պաշտպանական կառուցվածքները կատարյալ էին։ Սմբատի կրկնակի պարիսպներից բացի, կային լրացուցիչ պաշտպանական հատվածներ, որոնց թվում Աղջկա բերդը և այլն։ Պարսպի առջև ձգվում էր ջրով լցվող խրամատը։ Կրկնակի պարիսպների մեջ բացված էին յոթ հիմնական դարձյալ կրկնակի դարպասներ (Ավագ դուռ, Կարուց դուռ, Դվնո դուռ և այլն)[9].



Անիի Կարսի դուռը իր աշտարակներով

Հմտորեն լուծված էին նաև քաղաքի բնակչության կոմունալ սպասարկման հարցերը։ Առինջոյ լեռան ստորոտի աղբյուրներից խմելու ջուրը կավե խողովակների 12 կիլոմետրանոց գծով բերված էր Անի, բաժանված նրա թաղամասերի միջև ու նույնիսկ ինքնահոսով բարձրացված Միջնաբերդ։ Այստեղ ջրի մշտական պաշար ունենալու համար կառուցված էր ավազան։ Պալատի բաղնիքից բացի, քաղաքում կար մի քանի հասարակական բաղնիք։

---

[7] *Н. Я. Марр,* Ани, стр. 29.
[8] Տե՛ս *Д. А. Кипшидзе,* Пещеры Ани, Ереван, 1972.
[9] Տե՛ս *И. А. Орбели,* Избранные труды. Ереван. 1963. стр. 114—116.

Փողոցներն ու հրապարակները սալահատակված էին սալաքարերով և գետաքարերով։

Այդքի ընկնելով քաղաքաշինական առումով, Անին զարդարված էր նաև բազմաթիվ պալատական և եկեղեցական կառուցվածքներով, որոնք կազմում էին X—XI դարերի հայ ճարտարապետության առավել նշանավոր և մեծ հուշարձանախումբ, իրենց թվում ունենալով նաև իսկական գլուխգործոցներ։ Բագրատունիների պալատը տեղադրված էր միջնաբերդի գագաթին և բռնում էր 4900 քմ տարածություն։ Մի երկար (50,0 քմ) միջանցքով այն բաժանվում էր երկու հիմնական թևերի՝ հյուսիսային և հարավային։ Սրանցից առաջինը, որ ուղղված էր շահաստանի կողմը, պալատի հանդիսավոր մասն էր կազմում (բաղկացած մեծ դահլիճից, «խաչաձև» դահլիճից, տարբեր սենյակներից և բաղնիքից)։ Դահլիճներն ունեցել են շքեղ որմնանկարներ։ Հարավային թևում գլխավորապես տեղավորված էին տնտեսական և օժանդակ սենյակները, ջրավազանը և այլն[10]։ Բակի արևելյան կողմում գտնվում էր պալատական եկեղեցին (թերևս կառուցված Կամսարականների օրոք)։ Բացի սրանից, Միջնաբերդում կային X—XI դարերում շինված ոչ մեծ չափերի մի քանի եկեղեցիներ ևս։ Այս ամենը շրջափակված էր ամուր պարսպով։

Կարսը կամ Կարուց քաղաքը Անիից հետո Բագրատունյաց Հայաստանի երկրորդ քաղաքն էր ու կարևոր կենտրոնը։ Որպես անմատչելի ֆեոդալական ամրոց այն հիշատակվում է IX դարից։ Աբաս թագավորի օրոք . դառնալով երկրի մայրաքաղաքը, Կարսը արագ աճեց և դարձավ խոշոր ու բարեկարգ քաղաք։

Կարսը տիպիկ քաղաք-ամրոց էր բաղկացած միջնաբերդից, շահաստանից (երկուսն էլ պաշտպանված պարիսպներով) ու արվարձաններից։ Քաղաքաշինարարները պաշտպանական նկատառումներով բարվոք են համարել քաղաքը հիմնադրել ընդարձակ սարահարթի վրա, որի բարձրությունը ծովի մակերևույթից 1848—1880 մ է և հյուսիսից, արևմուտքից ու հարավ-արևմուտքից պաշտպանվում է տարբեր բարձրության լեռնապարերով։ Սարահարթի հյուսիս-արևմտյան անկյունում մոտ 800 մ երկարությամբ ձգվում է մի բարձրադիր ժայռազանգված, որի վրա էլ ստեղծվել է Կարսի անառիկ միջնաբերդը։

Միջնաբերդի աշտարականման դղյակի տակից անցնում էր գաղտնուղին, որը կիրճի խիստ թեք լանջով հասնում էր մինչև Կարուց գետը։ Դղյակի շուրջ դասավորված էին միջնաբերդի տարբեր բնույթի շինությունները։

Շահաստանը կամ Հին քաղաքը փռված էր ժայռազանգվածի հարավային փեշին՝ մոտ 30 հեկտար տարածությամբ։ Այն բոլոր կողմերից շրջապատված էր կրկնակի պարիսպներով, ներսի պարսպի ուղղանկյուն և կիսաշրջան բուրգերը բավականաչափ խիտ էին դասավորված (10—12 մ հեռավորությամբ, մեծացնելով նրա պաշտպանական նշանակությունը)։

Կարսի այս հին մասի կարևոր հուշարձանը Առաքելոց եկեղեցին է, կա—

---

10 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր, հատ. 1, էջ 359—363։

ռուցված 930—942 թթ. Աբաս Բագրատունու օրոք։ Սրա հատակագծային ու ծավալատարածական ձևերը վերարտադրում են VII դարում կառուցված Մաստարայի և Ոսկեպարի տաճարների տիպը։ Նախորդներից մասամբ տարբերվում է իր ընդհանուր համաչափությամբ և արտաքին զույգ հարդարանքներով, որոնք կրում են ոճական նոր հոլերի կնիքը։

Արվարձաններից որպես առավել հինը, գուցե և ժամանակակիցը միջնադարյան Կարսին, համարվում է այսպես կոչված, Նոր քաղաքը։

Վանը կամ Վանտոսպը, որը V դարի 60-ական թվականներին ավերվել էր, Դերենիկ Արծրունու և Նրա որդի Գագիկի թագավորության տարիներին վերաշինվեց ու կարճատև ծաղկում ունեցավ։

Քաղաքի միջնաբերդը տեղադրված էր Վանա անառիկ ժայռի վրա, որն ուներ մոտ 1,5 հեկտար մակերես և ամբողջ պարագծով շրջապատված էր հզոր պարիսպներով (մասամբ պահպանված ուրարտացիների ժամանակներից)։ Բացի այդ, հյուսիսային կողմից (որը համեմատաբար մեղմ թեքության պատճառով մատչելի էր) ստեղծված էր պարիսպների երկրորդ գիծ։

Ամրացված քաղաքը տարածված էր ժայռազանգվածի տակ՝ հարավային կողմից։ Հյուսիսից այն բնականորեն պաշտպանված էր 80—100 մետր բարձրություն ունեցող համարյա ուղղաձիգ ժայռերով, իսկ արևելքից և արևմուտքից՝ կրկնակի պարիսպներով, որոնցով ամփոփված քաղաքը բռնում էր 60—65 հեկտար տարածություն։

Քաղաքապարիսպների մեջ բացվում էին չորս դարպասներ, որոնցից գլխավորը Թավրիզյանն էր։ Հյուսիս-արևմտյան կողմի դարպասով քաղաքը կապվում էր Վանի նավահանգիստ Ավանցի հետ, որը Միջնաբերդից մի քանի կմ հյուսիս էր։

Վանի արվարձաններն ընդարձակ տարածություններ էին զբաղեցնում քաղաքի հարավ-արևելյան մասում, հավանաբար, դեռևս միջնադարից համատարած ծածկված էին պտղատու այգիներով։

Նկարագրված քաղաքներին (Անի, Կարս, Վան) համանման կառուցվածք ունեին Հայաստանի նաև մյուս քաղաքները, որոնք հիմնադրվել և կառուցվել են քաղաքաշինության միևնույն հիմունքներով։

Քաղաքաշինության և քաղաքացիական ճարտարապետության մակարդակի տեսակետից ուշադրության արժանի են նաև նույն ժամանակաշրջանի բերդերն ու ամրոցները, որոնք օժտված են նույնպիսի կառուցողական հատկանիշներով, ինչպես միջնադարյան քաղաքները, մանավանդ նրանց միջնաբերդերը։

Ամբերդը կամ Անբերդը թերևս ամենից տիպականն է միջնադարյան Հայաստանի ամրոցներից[11]։ Այն ավելի հին ամրոցի տեղում հիմնականում կառուցվել է Անիի Բագրատունիների օրոք ու պատկանել նրանց վասալ Պահլավունիներին։ Բագրատունիների շինարարական գործունեության արդյունքն

[11] Տե՛ս Н. М. Токарский, Архитектура Армении IX—XIV вв., Ереван, 1961, стр. 40—49.

են պարիսպները, դղյակը, հավանաբար բաղնիքը, իսկ իշխան Վահրամ Պահլավունին կառուցել է Ամբերդի եկեղեցին։ Տեղադրության տեսակետից էլ Ամբերդը չափազանց տիպական է։ Բերդի հիմնադրողները, ղեկավարվելով միջնադարյան ամրոցաշինության սկզբունքներով, նրա համար ընտրել են բնականորեն խիստ պաշտպանված ու գեղատեսիլ վայր՝ Արագած լեռան հարավային լանջին գտնվող բարձրադիր ու եռանկյունաձև մի հրվանդան (մոտ 5,2 հեկտար), որը եզերված է հարավ-արևմտյան կողմից Ամբերդ, հյուսիս-արևելյան կողմից՝ Արխաշան գետակների անդնդախոր կիրճերով։

Ամրոցը բաղկացած էր երկու հիմնական մասերից՝ ամրացված պալատ-դղյակից (որը տեղադրված էր հրվանդանի հյուսիսային ամենաբարձր մասում) և բուն ամրոցից, որոնք ունեին իրենց ինքնուրույն պարիսպները՝ երկհարկանի աշտարակներով։ Բացի մուտքից, ամրոցն ուներ նաև գաղտնուղի դեպի Ամբերդի կիրճը։

Դղյակը զբաղեցրել է մոտ 700 քմ տարածություն՝ ամրոցի նկատմամբ իշխող մի բարձունքի վրա։ Շրջակա վիհերը և պարագծով կառուցված պարիսպները (15 մ բարձրությամբ և 2 մ հաստությամբ) անմատչելի էին դարձրել դղյակը, որի հարավ-արևելյան պատուհանները բացվում էին դեպի Արարատյան դաշտավայրի հոյակապ համայնապատկերը։

Դղյակը երկհարկանի շինություն էր՝ խուլ (բացառությամբ հարավ-արևելյան կողմից) և բարձր պատերով։ Առաջին հարկում գտնվում էին օժանդակ, իսկ երկրորդ հարկում, դեպի ուր տանում էին լայն ու հանդիսավոր աստիճանները, բնակելի սենյակները։ Առաջին հարկում, սանդուղքից աջ, ըստեղծված էր հատուկ ջրավազան, դղյակը ջրի պաշարով ապահովելու համար։

Ջրամատակարարման գիծը դրսից մտնում էր նախ դղյակ, ապա հոսում ամրոցի տերիտորիան, ուր դղյակից ոչ հեռու կառուցված էր ավելի մեծ տարողությամբ մի ջրավազան։ Այստեղից էր կատարվում քիչ ներքև գտնվող բաղնիքի ու ողջ ամրոցի ջրամատակարարումը։ Բաղնիքն ուներ ուղղանկյուն հատակագիծ, բաղկացած հաջորդաբար իրար կից հանդերձարանից, լողարանից ու ջեռուցարանից, ծածկված (առաջին երկուսը) երդիկավոր գմբեթներով։ Ջուրն ինքնահոսով բերվում էր օջախի վրա դրված կաթսան։ Բաղնիքի տաքացումը կատարվում էր հատակի տակից ու պատերի մեջ տեղադըրված ուղղաձիգ խողովակների միջոցով, ուր օջախից մտնում էին տաքացած օդն ու ծուխը[12]։

Ամրոցի կենտրոնական մասում տեղադրված էր եկեղեցին՝ կառուցված 1026 թ. իշխան Վահրամ Պահլավունու կողմից։ Այն գմբեթավոր սրահի տիպի եկեղեցական շենքերից է, հարթ և անպաճույճ ճակատներով ու արևելյան պատի եռանկյունաձև զույգ խորշերով։ Գմբեթի թմբուկը կրկնում է Մարմաշենի մեծ եկեղեցու թմբուկի ձևերը, բազմանիստ է, անկյունում զույգ սյունիկներով ու պսակվում է հովանոցաձև վեղարով։ Արևմտյան ճակատի վրա իր ձևերով ընդգծված է ուղղանկյուն մուտքը գեղեցիկ գծագրված պարակալով։

---

12 Տե՛ս *О. Х. Халпахчьян,* Гражданское зодчество Армении, М., 1971, стр. 211—227.

Մաղասբերդը և Տիգնիսը լրացնում էին Անիի պաշտպանական կառուցվածքների համակարգը, ապահովում մայրաքաղաքի մատույցները և քաղաք մտնող ճանապարհները։

Անիից հարավ-արևմուտք 6 կմ հեռավորությամբ կառուցված Մաղասբերդը տեղադրված էր Ախուրյանի անդնդախոր կիրճի աջ եզրին, սարահարթի ղառիթափի մոտ և բնականից անառիկ լինելով հանդերձ, ամբողջ պարագըծով (ներառյալ կիրճի կողմից) շրջապատված էր կրկնակի պարիսպներով. որոնցից արտաքինը ավելի բարձր էր, իսկ ներքինը՝ ցածր։ Բրդավոր այդ նախապարսպի և կրկնապարսպի միջև գոյություն ուներ ջրով լցվող խրամ։ Անառիկ այս ամրոցի ներսում կային տարբեր բնույթի շենքեր, այդ թվում նաև բաղնիք[13]։

Մյուս ամրոցը՝ Տիգնիսը, գտնվում է Շիրակավանից (Երազգավորս) ընդամենը 3 կմ հեռավորության վրա, Ախուրյանի աջափնյա մի բլրի գագաթին։ Թերևս նրա կառուցումը վերագրվի այն ժամանակին, երբ Բագրատունիների թագավորանիստը առժամանակ Շիրակավանն էր։



Տիգնիս ամրոցը, որ պաշտպանում էր Անիի մատույցները հյուսիս-արևելքից

Մաղասբերդի համեմատությամբ նրա տեղադրությունը պակաս նպաստավոր էր պաշտպանական տեսակետից։ Գուցե այդ հանգամանքն էլ թելադրել է նրա պատերի արտակարգ բարձրությունն ու օղակային սիստեմը.

13 Թ. Թորամանյան, Նյութեր, հ. I, էջ 311—312։

Քառանկյունի պարագծով ու սրբատաշ քարերով կառուցված կրկնակի պարիսպներն անկյուններում և կենտրոնական մասում ունեն հզոր բուրգեր։

Ամրոցի ներսում, ուղղանկյուն բակի շուրջը, երկու հարկ դասավորությամբ տեղավորված էին կայազորին սպասարկող շինությունները[14]։

Ոչ միայն Անին, Արարատյան դաշտը, այլև ամբողջ Հայաստանը և նրա առանձին նահանգները օղակված էին ամրոցների և բերդերի պաշտպանական համակարգերով։

## 3. ՍՅՈՒՆԻՔԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ

Սյունիքում շինարարական աշխատանքները զգալի ծավալ ստացան դեռևս IX դարի վերջերին X դարի սկզբներին, և Սյունյաց նահանգի ճարտարապետները բարձր գնահատականի արժանի ջանքեր գործադրեցին նոր ճարտարապետության կազմավորման ստեղծագործական որոնումների ճանապարհին[15]։

Սյունյաց ճարտարապետները IX—X դարերում, հավատարիմ մնալով նախորդ շրջանի սկզբունքներին, պահպանեցին շենքերի հիմնական տիպերը, այլև արտաքին ձևավորման VII դարին բնորոշ պարզությունն ու լակոնիկությունը։

Սակավ հանդիպում են մուտքերի ձևակերպման լայն քանդակազարդ պարակալներ (Բղենո-Նորավանք), կամ պատուհանների վերնամասերում՝ քանդակազարդ պսակներ, այն էլ հիմնականում VII դարի համար բնորոշ մոտիվներով։

Կարևոր ներդրում պետք է համարել միջնադարյան Հայաստանի ճարտարապետության մեջ գավիթների կամ ժամատների՝ կիսաշխարհիկ-կիսաեկեղեցական այդ ուրույն շենքերի առաջացումը, որոնց վաղ նմուշները սկսում էն ծնվել Սյունիքում։ Կազմավորվելով դարաշրջանի պահանջմունքներին համեմատ և ունենալով կիրառական լայն նշանակություն (եկեղեցական շենքի լրացուցիչ մաս, ժողովների և հավաքույթների տեղ, աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների դամբարան), գավիթները կամ ժամատները Սյունիքի ճարտարապետական դպրոցին պատկանող հուշարձաններում (Սևանա վանք, Գնդեվանք, Մաքենոցաց վանք, Վահանավանք, Որոտնավանք, Քարկոփ, Ցախացքարի վանք) X դարում հանդես են բերում իրենց հատակագծային, ծավալատարածական և կոնստրուկտիվ մի շարք տարբերակները։ Դա միանգամայն հասկանալի է, քանի որ կատարվում էին նոր տիպի շենքի հորինման ստեղծագործական որոնումներ[16]։

Սյունիքում կառուցվեցին բազմաթիվ վանքեր, որոնցից հարկ է անդրադառնալ առավել աչքի ընկնող հուշարձանախմբերին։

---

14 Թ. Թորամանյան, Նյութեր, հ. I, էջ 312—314։

15 Սյունիքի ճարտարապետական դպրոցի հուշարձանները հանգամանորեն ուսումնասիրված են Ստ. Մնացականյանի «Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը» աշխատության մեջ, Երևան, 1960։

16 Տե՛ս Ս. Խ. Մնացականյան, Հայկական ճարտարապետության Սյունիքի դպրոցը, էջ 160—169։

**Տաթևի վանքը** *հետարաբական շրջանի հայկական ճարտարապետության կարևորագույն հուշարձաններից մեկն է և Սյունիքի ճարտարապետական դըպրոցի առաջնեկը։ Որպես Սյունյաց եպիսկոպոսանիստ (կենտրոն) այն հիմնադրվել է VIII դարի վերջին։*

*Ինչպես համարյա բոլոր միջնադարյան վանքերը, Տաթևի վանքը նույնպես կառուցապատվել է աստիճանաբար։ Այստեղ եկեղեցական շենքեր են եղել դեռևս վաղ միջնադարից, ապա VIII և IX դարերից, որոնք խարխլվել են, իսկ հիմնական կառուցվածքները կատարվել են քիչ ավելի ուշ։*

*Վանքի առաջնորդ Հովհաննես եպիսկոպոսի նախաձեռնությամբ և Սյունյաց իշխանների օժանդակությամբ 895—906 թթ. կառուցվել է Տաթևի վանքի գլխավոր՝ Պողոս-Պետրոս եկեղեցին։ Իր հատակագծային ձևերով այն սերում է VII դարի գմբեթավոր բազիլիկներից (Օձուն, Գայանե, Մրեն)։ Ի տարբերություն սրանցից, Տաթևի վանքի գլխավոր եկեղեցում տեղադրված են միայն երկու մույթեր (արևելյան կողմից)։ Արևմտյան զույգ մույթերին փոխարինում են այս տիպի տաճարներում նոր մուծված արևմտյան ավանդատների արևելյան անկյունները։*



Տաթևի վանքը

*Ճարտարապետական տեսակետից նորամուծություն պիտի համարել գմբեթի հովանոցաձև թմբուկի հարդարումը ռելիեֆ խաչերով, գոտիներով ու եկեղեցական շենքերում առաջին անգամ հանդիպող ուղղանկյուն պատուհանների պարակալներով։*

*Վանքի մյուս եկեղեցին՝ ս. Աստվածածինը կառուցվել է XI դարի երկ-*

րորդ կեսին[17] Գրիգոր եպիսկոպոսի (1058—1117) օրոք։ Սա մի գողտրիկ երկհարկ կառուցվածք է, տեղավորված վանքի պարիսպների հյուսիսարևմտյան անկյունում բացվող դարպասի վրա։ Առաջին հարկի մի կողմում թաղածածկ դամբարան կա, իսկ նրան զուգահեռ՝ դարպասից բակ տանող թաղածածկ միջանցքն է, որի, որպես պատվանդանի վրա, բարձրանում է փոքր չափերի եկեղեցին։

Միջնադարյան հայ ճարտարապետության եզակի հուշարձան է Տաթևի ճոճվող սյունը, որն ըստ Ստեփանոս Օրբելյանի, կառուցված է եղել նախքան գլխավոր եկեղեցին՝ 895 թվականին[18]։ Սա եռաստիճան պատվանդանի վրա կանգնեցված ութանիստ, միջին մասում զույգ գլանիկներով գոտկած, վերնամասում շքեղ քիվով ավարտվող ու խաչքարով պսակված խիստ ուշագրավ մի կոթող է՝ 30 կանգուն (ավելի քան 9 մ) բարձրությամբ։ Դրված լինելով խորհրդավոր հիմքի վրա, սյունը ճոճվում է։ Վանքի բակում կան խաչքարեր, որոնք ժամանակակից են հիշատակված հուշարձաններին ու վաղագույն խաչքարերի նմուշներ են։ Տաթևի վանքի մնացած հուշարձանները՝ գլխավորապես բնակելի և կոմունալ բնույթի, կառուցվել են հետագա դարերում՝ հների տեղում։

Իր անառիկ տեղադրությամբ, ինչպես և խմբի մեջ մտնող տարբեր բընույթի հուշարձանների փոխադարձ կապով և լռենաշխարհի բնության հետ կազմած ներդաշնակությամբ, Տաթևի վանքը Սյունյաց աշխարհի անկրկնելի զարդերից է, անսամբլային կառուցապատման մի բացառիկ ուշագրավ օրինակ։ Ափսոս, որ այն խիստ վնասվել է 1931 թ. երկրաշարժի հետևանքով։

Սևանա վանքը տեղադրված է Սևանա կղզու (այժմ թերակղզի) բարձունքին։ Այդ կղզին իր անառիկության ու գեղեցկության շնորհիվ պաշտամունքի վայր է հանդիսացել անհիշելի ժամանակներից։ Այստեղ, համաձայն ավանդության, եղել է հեթանոսական մեհյան, որը 305 թ. կործանել է տվել Գրիգոր Լուսավորիչը, տեղը կանգնեցնելով նոր հավատքը խորհրդանշող փայտակերտ մի խաչ։

IX դարի վերջերին կղզու վրա հիմնադրվում է Սևանա վանքը։ Մատենագրական ու վիմագրական տվյալների համաձայն Սևանա եկեղեցիները կառուցվել են 874 թվականին վանքի առաջնորդ աստվածաբան Մաշտոցի (հետագայում կաթողիկոս) օրոք, Աշոտ Բագրատունու դուստր և Սյունյաց Վասակ իշխանի կին՝ Մարիամ իշխանուհու կողմից[19]։

Միաժամանակ կառուցված երեք եկեղեցիներից փոքրը կոչվել է Առաքելոց (հետագայում ս. Կարապետ), մեծը՝ ս. Աստվածածին, իսկ երրորդը (այժմ կիսավեր) ս. Հարություն, որոնք միաբանության պատկանող բնակելի ու կոմունալ շենքերի հետ միասին տեղադրված են կղզու հարավ-արևմտյան լանջին։ Հիշատակված եկեղեցիներից առաջին երկուսն իրենց հատակագծային ձևերով ու ծավալա-տարածական հորինվածքով վերարտադրում են վաղ միջ-

17 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 321—322։
18 Տե՛ս նույն տեղում, էջ 225։
19 Տե՛ս նույն տեղում, էջ 173—74։

*նադարում մշակված եռաբսիդ կենտրոնագմբեթ փոքր տաճարների (Ալամանի, Թալինի փոքր եկեղեցի, Աշտարակի Կարմրավոր) տիպը։ Երկու եկեղեցին էլ դրսից և ներսից խաչաձև տեսք ունեն։ Եկեղեցիները կառուցված են գլխավորապես կիսամշակ քարերով, իսկ սրբատաշ քարերը օգտագործված են միայն առավել կարևոր մասերում (կամարներ, գմբեթ, թմբուկ, բացվածքների անկյուններ և այլն)։*

*Երկու եկեղեցիների էլ արտաքին տեսքը պարզ է և անպաճույճ, առանց քանդակների և այլ հարդարանքի։ Չնայած դրան, կղզում կանգնեցված եկեղեցիները ներգործում են իրենց ծավալային ձևերով և ուրվանկարով, որոնք պարզորոշ գծագրվում են կապույտ երկնքի և լճի զմրուխտ ջրերի ֆոնի վրա։ Եկեղեցիների տեղադրությունը, նրանց բացարձակ չափերի տարբերությունը գիտակցականորեն հետապնդել է մի հիմնական նպատակ՝ հասնել ճարտարապետական կառուցվածքների և բնության ներդաշնակությանը, նրանց փոխադարձ սերտ կապին։ Գեղատեսիլության սկզբունքը, Սևանա կղզու ճարտարապետական համակառուցվածքում իր փայլուն կիրառությունն է գտել։*

*Գնդեվանքը նույն դպրոցի X դարի կարևորագույն հուշարձանախմբերից է։ Գեղեցիկ ու պատկերավոր են Սյունյաց Սոփիա իշխանուհու խոսքերը՝ վանքի հիմնադրման (936) առթիվ՝ «Անակ մատանի էր Վայոց ձորը, ես շինեցի սա և իբրև ակ դրեցի վրան»*[20]*։*

*Վանքի ս. Ստեփանոս եկեղեցին հիմնականում կրկնում է Հռիփսիմե տաճարի տիպը։ Իր կատարյալ պարզությամբ և հարդարանքի բացակայությամբ հանդերձ Գնդեվանքի եկեղեցին արտահայտիչ է ճակատների եռանկյունաձև խորշերով, լույս ու ստվերոտ հարստացող ձևերի հստակությամբ, որոնք ներդաշնակ են Արփա գետի գեղատեսիլ ձորի ընդհանուր տեսարանի հետ։*

*Նույն դարի վերջին (999) շինված ժամատունը, որ կցված է եկեղեցուն արևմտյան կողմից, որպես այդ տիպի կազմավորման ճանապարհին առաջիններից մեկը, առանձնահատուկ տեղ է գրավում միջնադարյան Հայաստանի ճարտարապետության մեջ։ Այն միանավ, երկու ավանդատներով (հյուսիսային կողմից) ու երկթեք կտուրի տակ առնված թաղածածկ մի կառուցվածք է։*

*Բուն Սյունիքում, Վայոց ձորում, Սևանա լճի ավազանում կառուցվել են բազմաթիվ վանքեր և եկեղեցիներ, որոնցից յուրաքանչյուրը մի նշանավոր ճարտարապետական հուշարձան է։ Իրենց ինքնատիպությամբ աչքի են ընկնում, մանավանդ, Բղենո-Նորավանքը կառուցված 935 թ. Տաթևից ոչ հեռու, Վահանավանքը, որը հիմնադրվել է X դարում Կապան քաղաքից ոչ հեռու և ուշագրավ իր ճարտարապետական կառուցվածքներով համալրվել XI դարում։*

## 4. ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԸ

*Հայկական ճարտարապետության Վասպուրականի դպրոցը նույնպես խարսխվելով նախարարական շրջանի հարուստ ավանդույթների վրա, երևան է բերում իր ինքնատիպ ու անկրկնելի դեմքը։*

---

20 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 261—262։*

Այս դպրոցի առավել ուշագրավ կոթողները ստեղծվել են Վանում, Ոստանում և Աղթամարում Վասպուրականի թագավորներ Դերենիկ և նրա որդի Գագիկ Արծրունիների ժամանակ (IX դարի վերջ. X դարի առաջին քառորդ)։ Դրանց մասին հանգամանորեն, որպես ականատես, պատմում է Թովմա Արծրունին, փառաբանելով իրեն ազգակից թագավորներին։ Այստեղ փայլատակեց Մանուել ճարտարապետի մեծ տաղանդը։ Պատմիչը արժանին հատուցելով որակում է նրան՝ «այր լի իմաստութեամբ և զօրաւոր ի գործս իւր»[21]։ Պատմիչի վկայությամբ Ոստանում, ծովահայաց մի բարձունքի վրա, կառուցվում է շքեղ պալատ, բազմաթիվ ու լուսավոր նկարազարդ դահլիճներով ու սենյակներով, որտեղից երևում է Վանա լճի հոյակապ համայնապատկերը[22]։

Աղթամարում, բացի ս. Խաչ տաճարից (որն այժմ միակ պահպանված հուշարձանն է), նույն պատմիչի վկայությամբ, Գագիկը կառուցել է տվել հանդիսավոր ընդունելությունների և խրախճանքների մի դահլիճ՝ 40 կանգուն երկարությամբ, նույնքան լայնությամբ ու բարձրությամբ։ Դահլիճի պատերը ծածկվել են բազմազան ու շքեղ որմնանկարներով։

Այդ ժամանակ է կառուցվել նաև բավականաչափ բարդ հիդրոտեխնիկական կառուցվածք ունեցող Աղթամարի նավահանգիստը։

Եկեղեցական շենքերի ավանդական տիպերի վերարտադրության երևույթը հատուկ է նաև Վասպուրականի ճարտարապետական դպրոցին, այն տարբերությամբ, որ այստեղ շենքերի տիպերն ավելի սահմանափակ են։ Կառուցվող եկեղեցական շենքերը պատկանում են գերազանցապես կենտրոնագմբեթ խաչաձև տիպին։

Բացի Աղթամարի տաճարից, այդպիսին են եղել Վերին Վարագավանքի մի եկեղեցին, Ներքին Վարագավանքի ս. Աստվածածինը և այլն։ Հանդիպում են նաև եռաբսիդ (Ներքին Վարագավանքի ս. Սիոն, Նարեկավանքի ս. Սանդուխտ եկեղեցիները) ու այլ տիպերի եկեղեցական շենքեր, որոնց կառուցողական արվեստը բավականին ընդհանրություն ունի Սյունիքի ճարտարապետական դպրոցի հետ (օրինակ, շարվածք անկանոն ձևի քարերից, սրբատաշ քարերի օգտագործում գերազանցապես կոնստրուկտիվ տեսակետից պատասխանատու մասերում)։

Աղթամարի ս. Խաչ տաճարը կառուցված է 915—921 թթ. Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունու օրոք։ Իր հատակագծային և ծավալա-տարածական հորինվածքով այն սերտորեն առնչվում է հայկական վաղ միջնադարյան կենտրոնագմբեթ խաչաձև տաճարների՝ Ավանի, Հռիփսիմեի տիպին, որոշ տարբերությամբ։ Գմբեթատակի բազմանիստ խորշերի դուրս շեշտվածության շնորհիվ տաճարի ծավալները մի նոր մարմնավորում են ստացել, դարձել են ավելի պլաստիկ ու արտահայտիչ, տարածականորեն հարուստ։ Դրա հետ մեկտեղ տաճարի ճարտարապետությունը, շնորհիվ նրա բոլոր պատերին տեղ գտած բազմաթիվ ու բազմաբովանդակ քանդակների, սկզբունքորեն նոր երևույթ է հայ ժողովրդի շինարարական արվեստում։

---

21 Թովմա Արծրունի, էջ 485։

22 Տե՛ս նույն տեղում, էջ 476։

*Ծոփ որմնանկարներով է զարդարված եկեղեցու ներսը։ Ենթադրվում է, որ Մանուել ճարտարապետը հեղինակն է ինչպես բարձրաքանդակների, այնպես էլ որմնանկարների։ Մանուել ճարտարապետի այս մեծագործությունը՝*



Աղթամարի տաճարը

*Աղթամարի ս. Խաչ տաճարը ճարտարապետության մեջ արվեստի հարակից միջոցները սինթեզելու մի բացառիկ ուշագրավ օրինակ է, ու այս տեսակետեցի էլ որոշակի ազդեցություն է ունեցել հայկական ճարտարապետության զարգացման տարբեր փուլերի վրա։*

Աղթամարի տաճարն իր եզակի ճարտարապետությամբ, բարձրաքանդակներով ու որմնանկարներով առանձնահատուկ տեղ է գրավում ոչ միայն հայկական, այլև համաշխարհային ճարտարապետության պատմության մեջ[23]։

## 5. ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ. ԱՆԻ–ՇԻՐԱԿԻ ԴՊՐՈՑԸ

Հյուսիսային Հայաստանում (Գուգարք, Շիրակի բարձրավանդակ, Մազազ և այլն) ճարտարապետական արվեստի զարգացումը տեղի է ունենում մի փոքր ավելի ուշ, մասամբ X դարի առաջին կեսին, իսկ ավելի մեծ չափով, նույն դարի երկրորդ և հաջորդ դարի առաջին կեսին, սակայն հենց այստեղ է, մանավանդ Անի մայրաքաղաքում, որ միջնադարյան Հայաստանի ճարտարապետությունը ապրում է իր հասունացման և բարձր ծաղկման շրջանը։

Սյունիքի և Վասպուրականի պես սկզբնական շրջանում այստեղ ևս եկեղեցական շենքերի համար հիմք են ծառայում ավանդական տիպերը, իսկ փոքր-ինչ ավելի ուշ դրանցից մեկը՝ գմբեթավոր սրահի տիպը որոշ փոխակերպությամբ առավել տարածում է ստանում և հետագա դարերում դառնում է ամենասիրվածը։

Դրա հետ մեկտեղ հետզհետե կազմավորվում են դարաշրջանի ոճական առանձնահատկությունները։ Եթե X դարի առաջին կեսի եկեղեցական շենքերը դեռ շարունակում են պահպանել արտաքին ձևերի պարզությունը և հարդարանքի միջոցների զուսպ կիրառությունը, ապա X դարի երկրորդ կեսին և հատկապես XI դարի առաջին կեսին դեկորատիվիզմը (առանց հակադրվելու ճարտարապետության առողջ սկզբունքներին), հաղթանակում է ու լայն տարածում ստանում Բագրատունյաց շրջանի ճարտարապետության մեջ։

Որոշակի ուշադրություն է դարձվում եկեղեցական և աշխարհիկ շենքերի ներքին տարածությունների կազմակերպմանը, որպիսի ձգտումը առանձին հուշարձաններում (Անիի մայր տաճար), ստանում է իր փայլուն դրսևորումը։

Շիրակավանի տաճարը Շիրակի ճարտարապետության առաջնեկն է։ Կառուցվել է Սմբատ Ա Բագրատունու թագավորության տարիներին։ Առավել հարազատորեն (քան այս ժամանակաշրջանի նույնատիպ եկեղեցիները) վերարտադրում է VI—VII դարերում ստեղծված գմբեթավոր սրահների (Պտղնի, Արուճ) տիպը, պահպանելով հատակագծի համաչափությունը, հարդարման միջոցների կիրառության սկզբունքը և այլն։ Նորամուծությունը, դեկորատիվ բնույթի եռանկյունի խորշերի առաջացումն է, իսկ պատուհանների պսակների ու պարակալների ավանդական զարդաձևերի հետ մեկտեղ երևան են գալիս նոր մանր և նրբագեղ քանդակներ։

---

23 Աղթամարի տաճարը իր պատշաճ տեղն է գտել հայ ճարտարապետության պատմության վերաբերյալ ընդհանուր աշխատություններում, իսկ 1960-ական թթ. նրա վերաբերյալ լույս են տեսել երեք ծավալուն ուսումնասիրություններ՝ *M. S. Ipširoglu*, Die Kirche von Achtamar, Berlin und Mainz. 1963. *S. Der Nersessian*, Aghtamar. Church of the Holy Cross, Harvard, 1965. *И. А. Орбели*, Памятники Армянского зодчества на острове Ахтамар. „Избранные труды", т. I, М., 1968.

**Հոռոմոսի վանքը** գտնվում է Անիի մոտ, հիմնադրվել է X դարի առաջին կեսին Աբաս Բագրատունու օրոք, Բյուզանդիայից Հայաստան ապաստանած հայ վանականների կողմից, ու բաղկացած է տարբեր ժամանակներում կառուցված երկու խմբերից։ Մի խումբը կազմում են ս. Մինաս և ս. Գևորգ եկեղեցիները, որոնցից առաջինը, դատելով իր հարդարանքի (պատուհանների պսակների) ավանդական ձևերից, վերաբերում է X դարի առաջին կեսին, իսկ երկրորդը կառուցված է Գագիկ Ա Բագրատունու օրոք։ Սրանք երկուսն էլ նույնատիպ, վերափոխված գմբեթավոր սրահներ են։ Մյուս խումբը՝ տեղադրված բարձունքի վրա, բաղկացած է ս. Հովհաննես եկեղեցուց, իր ժամատնից, հյուրատնից, մահարձաններից (Աշոտ Բագրատունի Ողորմածի), մատուռներից ու խաչքարերից[24]։

Հոռոմոսի վանքի ուշագրավ հուշարձաններից է ս. Հովհաննես եկեղեցու ժամատունը՝ կառուցված 1038 թ.։ Միջնադարյան Հայաստանի ճարտարապետության պատմության մեջ այստեղ առաջին անգամ ականատես ենք լինում ժողովրդական բնակարանի (գլխատան) ձևերի օգտագործման հիման վրա չորս սյունանի ժամատան տիպի ստեղծմանը։ Արևելքից-արևմուտք ձգված քառանկյունի հատակագծի կենտրոնում կանգնեցված չորս հաստահեղույս սյուները կամարներով միացված են իրար և ներքին բոլոր պատերին կից գտնվող առանձին կանգնած սյուներին, որոնց վրա գլխատան ծածկի սկզբունքով, սակայն փայտի փոխարեն քարակերտ կառուցվածքով, իրականացված է ժամատան ծածկը։ Սրահում առանձին հետաքրքրություն է ներկայացնում կենտրոնական չորս սյուների վերևի բազմանիստ ու բոլոր նիստերը զարդային տարբեր հորինվածքներով գեղեցիկ հարդարված մասը՝ երդիկով հանդերձ, որով, ինչպես գլխատներում, լուսավորվում է ժամատունը։

Վանքի խմբերից առանձին, Անի տանող ճանապարհի վրա (հավանական է X—XI դարերում), կանգնեցված է մի եզակի կառուցվածք՝ հաղթական կամար՝ զույգ գմբեթներով, որի պատճառով Հոռոմոսի վանքը կոչվել է նաև Ղոշավանք։

Սա կամարային բացվածքով ու վերևից հորիզոնական քիվով պսակված մի պատ է, աջ և ձախ անկյուններում մատուռանման ծավալներով։

Շիրակի և Անիի ճարտարապետության հետ սերտորեն կապված էր նաև Գուգարքի ճարտարապետությունը։ Այստեղ ևս շինարարությունը հովանավորում էին նույն Բագրատունիները, թերևս նույնն էին նաև Գուգարքի ճարտարապետության գլխավոր զարդը կազմող Սանահնի և Հաղբատի վանքերը կառուցող ճարտարապետներն ու շինարար վարպետների խմբերը։

**Սանահնի վանքի** տեղում, ըստ ավանդության, Գրիգոր Լուսավորիչը կանգնեցրել էր խաչ, որը պաշտամունքի առարկա էր վաղ քրիստոնեական շրջանից։ Վանքի հիմնադրումը տեղի է ունեցել X դարի առաջին կեսին, երբ կառուցվել է ս. Աստվածածին եկեղեցին[25], Հետագայում 966—972 թթ. Խոս-

---

24 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հ. I, էջ 298—305։

25 Կ. Ղաֆադարյան. Սանահնի վանքը և նրա արձանագրությունները, Երևան, 1957։

րովանույշ Թագուհու և նրա որդիներ Կյուրիկեի ու Սմբատ Բ-ի ժամանակ կառուցվում է վանքի երկրորդ՝ Ամենափրկիչ եկեղեցին, որն ավելի մեծ չափեր ունի և ինչպես առաջինը, պատկանում է գմբեթավոր սրահների տիպին՝ արևմտյան անկյուններում զույգ ավանդատներով։ Ամենափրկիչ եկեղեցին երևան է բերում նոր՝ դեկորատիվ ոճի հատկանիշներ։ Նրա արևելյան ճակատը մշակված է զույգ կիսասյուների վրա հենվող դեկորատիվ որմնակամարներով, և եկեղեցու բեմը լուսավորող կամարաձև պատուհանով։ Վերևում, ճակտոնի գագաթի ուղղակի տակը, ուղղանկյուն մի խորշի մեջ ամփոփված են Կյուրիկե և Սմբատ եղբայրների բարձրաքանդակները՝ եկեղեցու մակետը բռնած։ Գմբեթի թմբուկը գլանաձև է ու պսակված վեղարաձև ծածկով։ Արտաքին նույնպիսի ճարտարապետական ձևերով բնորոշ է նաև ս. Աստվածածին եկեղեցին, սակայն զուրկ արտաքին պատերը հարդարող միջոցներից։

XI դարի սկզբին միմյանց զուգահեռ տեղադրված երկու եկեղեցիների միջև ընկած միջանցքը ծածկվել է որմնամույթերի վրա հենվող ու իրենց վրա թաղ կրող կամարներով։ Այս շենքը, որ վանքի առաջին աշխարհիկ կառուցվածքն է, ենթադրաբար շինվել է որպես դպրոցի շենք ու Մագիստրոսի ճեմարան անունն է կրում։

Վանքի մյուս աշխարհիկ շենքը՝ գրատունն է, կառուցված 1063 թ. Կյուրիկյան Հրանուշ Թագուհու ժամանակ։ Այն տեղադրված է առանձին՝ երկու եկեղեցիների հյուսիս-արևելյան կողմում։ Քառակուսի հատակագծով շենք է, պսակված չորս ներքին պատերի կենտրոնում տեղադրված հաստահեղյուս որմնասյուներին հենվող կամարների վրա նստող երդիկավոր կոնաձև ծածկով։ Ներսի բոլոր պատերի մեջ ձեռագրերի համար խուլ պատուհաններ (խորշեր) են արված։ Հարավային կողմից գրատանը կից է մի սրահ-միջանցք՝ երկու կողմից կամարային բացվածքներով[25] ։

Գրատան հարավ-արևելյան անկյունը կից է ս. Գրիգոր եկեղեցուն, որի կառուցման ստույգ թվականը հայտնի չէ, սակայն վրան ունի 1061 թ. արձանագրություն։ Սա ներքուստ քառաբսիդ, արտաքուստ գլանաձև ծավալով, արտաքին չորս խորշերով ու դեկորատիվ կամարներով հարդարված մի գմբեթավոր կառուցվածք է։

Հաղբատի վանքը նույնպես հիմնադրվել է X դարի կեսերին, Սանահնի վանքից մի քանի կմ հեռավորության վրա։

Վանքի առաջին և գլխավոր եկեղեցին ս. Նշանն է, հիմնադրված Խոսրովանույշ Թագուհու կողմից 966 թ. ու ավարտված իր որդիներ Կյուրիկե Ա-ի և Սմբատ Բ-ի կողմից 991 թ., այսինքն՝ Սանահնի վանքի Ամենափրկիչ եկեղեցու շինարարությունն ավարտելուց հետո[26]։

Ս. Նշան եկեղեցին նույնատիպ է Սանահնի վանքի եկեղեցիներին։ Այն գմբեթավոր սրահ է, արևմտյան կողմից զույգ ավանդատներով, արտաքին

---

25 Տե՛ս *О. Х. Халпахчьян,* Гражданское зодчество Армении, стр. 130—134.

26 Կ. Ղաֆադարյան, *Հաղբատի ճարտարապետական կառույցները և վիմական արձանագրությունները,* Երևան, 1963։

պատերին եռանկյունաձև զույգ խորշերով։ Պատերը հարթ են ու զուրկ հարդարանքից։ Այդ հանգամանքը, ինչպես և շինանյութը (բազալտ) հաղորդում են եկեղեցուն մի վսեմ պարզություն, բնորոշ VI—VII դարերի հայկական ճարտարապետությանը։

Եկեղեցու հավասարակշռված, մոնումենտալ ու հանդիսավոր ծավալները պսակվում են լայնանիստ գմբեթի գլանաձև թմբուկով ու կոնաձև վեղարով։ Ս. Նշան եկեղեցու արևելյան պատի վերևում, ճակտոնի գագաթի տակ, մի քառանկյունի խորշի մեջ ամփոփված են Կյուրիկե և Սմբատ եղբայրների բարձրաքանդակները՝ եկեղեցու մակետով։



Հաղբատի ս. Նշան եկեղեցին

Հաղբատի վանքի գլխավոր եկեղեցուց բացի, նույն ժամանակաշրջանում (ավելի ուշ). Նրա արևմտյան կողմից ու առանձնակի, կառուցվել են ս. Գրիգոր և ս. Աստվածածին փոքրաչափ եկեղեցական շենքերը, որոնցից առաջինի կառուցման ժամանակը վկայված է 1005 թվականով։

**Անիի մայր տաճարը:** Բագրատունիների արքունական մեծատաղանդ ճարտարապետ Տրդատը, Արգինայի գմբեթավոր սրահի տիպի եկեղեցին կառուցելուց հետո, ձեռնարկեց Անիի մայր տաճարի կառուցումը, որը նրա փայլուն ստեղծագործությունն է և իր մասշտաբով ու ճարտարապետական բարձր արժանիքներով մայրաքաղաքի գլխավոր զարդն էր։ Նրա կառուցումը սկսվել է Սմբատ Բ Բագրատունի թագավորի օրոք՝ 898 թ. և ավարտվել 1001 թ. Գա-

գիկ Ա թագավորի կնոջ՝ Կատրամիդե թագուհու հովանավորությամբ[27]։ Իր հորինվածքով այն վերարտադրում է դեռևս VII դարում մշակված գմբեթավոր բազիլիկների (Գայանե, Մրեն) տիպը։ Բավականաչափ մեծ դահլիճի կենտրոնում տեղադրված են չորս հզոր փնջավոր մույթեր, գմբեթը պահող սլաքաձև (երկկենտրոն) չորս կամարներով, որոնք Տրդատ մեծանուն ճարտարապետի մուծած կարևոր նորույթներից էին։

Մայր տաճարում Տրդատ ճարտարապետը մեծ վարպետությամբ ու բացառիկ ուժով է կազմակերպել ներքին տարածությունը, ցուցաբերելով խիստ տրամաբանական ու սկզբունքորեն նոր մոտեցում։ Կենտրոնական նավի լայնության շնորհիվ նախ և առաջ նա կարողացել է հասնել վաղ միջնադարի գմբեթավոր սրահներին (Պտղնի-Արուճ) հատուկ ներքին տարածության միասնականությանը, ապա մի շարք ներդաշնակ միջոցների (փնջավոր մույթեր, սլաքաձև կամարներ, որմնանկարներ) օգտագործմամբ հաղորդել տաճարին վերասլացություն, ներքին դինամիկա։ Եկեղեցական շենքի ներքին տարածության կազմակերպման այս նոր սկզբունքը, ինչպես նշում է Ստրժիգովսկին, որդեգրվում ու լայն կիրառություն է գտնում Եվրոպայում XII—XIV դարերում տարածված գոթական ճարտարապետության մեջ։

Նույն այդ վերասլացության սկզբունքն իր արտահայտությունն է գտել Մայր տաճարի արտաքին ճարտարապետության մեջ բոլոր պատերի պլաստիկական մշակմամբ՝ բարակ սյուների վրա հենվող դեկորատիվ որմնանկարների, խորշերի, գմբեթի թմբուկի ու այն պսակող վեղարի վերասլացությամբ ու այլ միջոցներով՝ միասնական կապ ստեղծելով ներքին ու արտաքին ճարտարապետության միջև։ Նոր մոտեցման արդյունք են նաև ճակատների հարդարման այլ միջոցները՝ ուղղանկյուն կամարաձև ու կլոր պատուհանների պարակալները, իրենց նրբակերտ քանդակազարդ շքամուտքերի շեշտված ձևերով և այլն։ Իր տեղադրությամբ քաղաքի արևելյան մասում (Ախուրյանի ձորեզրից ոչ հեռու), ճարտարապետական ներքին ու արտաքին ձևերի օրգանական կապով վերասլաց կերտվածքով ու ծավալներով Անիի Մայր տաճարը առաջնակարգ նշանակություն է ստանում ոչ միայն Բագրատունյաց մայրաքաղաքի, այլև նույն ժամանակաշրջանի Հայաստանի եկեղեցական ճարտարապետության մեջ, մարմնավորելով դարաշրջանին բնորոշ հիմնական հատկանիշները։

**Ս. Գրիգոր Լուսավորիչ զվարթնոցատիպ եկեղեցին** Անիում Տրդատ ճարտարապետի նախագծով կառուցված երկրորդ եկեղեցին է։ Այն իրականացվել է 1001—1020 թթ. Գագիկ Ա թագավորի օրոք։ Կատարելով պատվիրատուի ցանկությունը, հեղինակն այս տաճարում վերարտադրել է Զվարթնոցի տիպը։ Սակայն Տրդատը չբռնեց Զվարթնոցի տաճարը նույնությամբ պատճենահանողի ուղին, այլ մուծեց իր անհատականը։ Այս տաճարին նա դարաշրջանի ճարտարապետությանը բնորոշ գծեր հաղորդեց, ինչպես ավելի վերասլաց կերտվածքով, նույնպես և հարդարանքի առանձնահատկություններով։

---

27 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հ. I, էջ 176—180, 195—208, 341—344։

Եկեղեցու պեղումների ժամանակ գտնվեց Գագիկ Ա-ի արձանը (տաճարի մակետը ձեռքին), որն էապես օգնեց այս տաճարի վերակազմությանը[28], ինչպես և հաստատեց Զվարթնոց տաճարի՝ Թ. Թորամանյանի կատարած վերակազմության իսկությունը։



Անիի զվարթնոցատիպ եկեղեցին

Առաքելոց եկեղեցին շահաստանի կենտրոնական մասի եկեղեցիներից է։ Կառուցման թիվը ստույգ հայտնի չէ, սակայն վրայի 1031 թ. արձանագրությունը վկայում է, որ Բագրատունյաց շրջանի գործ՝ է[29]։ Սրա հորինվածքը նույնպես ավանդական է, պատկանում է Հռիփսիմեի տաճարի տիպին։ Խաչաձև դասավորված չորս աբսիդների և անկյունային չորս խորանների հետ միասին ներգծված են քառանկյունի պարագծի մեջ, դրսից ունենալով զույգ եռանկյունի խորշեր բոլոր ճակատներում։ Համաձայն Թ. Թորամանյանի վերակազմության նախագծի, Առաքելոց եկեղեցին պսակված է եղել հինգ գըմ-

---

28 Թ. Թորամանյան, Նյութեր..., հ. I, էջ 277—281, *И. А. Орбели.* Избр. труды, Ереван, 1963, стр. 114—115, *К. Л. Оганесян,* Зодчий Трдат, Ереван, 1951, стр. 59—78.

29 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հատ. I, էջ 69—71, 223—228, *И. А. Орбели*, Избранные труды, стр. 117—118.

քեթներով, ընդ որում կենտրոնականը՝ ավելի խոշոր և բարձրադիր։ Այս հուշարձանը խիստ աչքիրակ վիճակում է, որպիսի հանգամանքը հնարավորություն չի ընձեռում գաղափար կազմել արտաքին ճարտարապետության վերաբերյալ։



Անի. Հովվի եկեղեցին

Փոկչի եկեղեցին կառուցված է 1036 թ. Պահլավունիների տոհմի Աբուղարիբ իշխանի կողմից ու տեղադրված է Շահաստանի արևելյան ծայրամասում[30]։ Սա, ինչպես և Ապուղամրենց եկեղեցին Անիում պատկանում են բազմաբսիդ տաճարների (Եղվարդի Զորավոր, Իրինդ) տիպին։ Արտաքուստ բազմանիստ պարագծի մեջ ներդրված են ութ կիսաշրջան աբսիդներ, որոնցից արևելյանը շեշտված է իր առավել մեծ չափերով։ Աբսիդների միջև, պատերի առջև կանգնեցված մեկական սյուները միացված են կամարներով, որոնց վրա հենվում է գմբեթի կլոր թմբուկը։

Առաջին հարկի բազմանիստ ծավալը և նրա վրա բարձրացող գմբեթի կլոր թմբուկը հարդարված են զույգ սյուների վրա հենվող որմնակամարներով, որոնք եկեղեցու արտաքին ճարտարապետությանը հաղորդում են նրբ-

---

[30] Տե՛ս И. А. Орбели, Избранные труды, стр. 127—128.

քին բարեկազմություն։ Փրկչի եկեղեցին ներքուստ սվաղված է եղել ու զար-
դարված որմնանկարներով[31]։

**Հովվի եկեղեցին** գտնվում է Անիի պարիսպներից դուրս, հյուսիսային
արվարձանում։ Համաձայն ավանդության կառուցել է մի ծեր հովիվ, որին
զատիկի օրը չի հաջողվել մտնել մայրաքաղաքի որևիցե եկեղեցի, այդ պատ-
ճառով էլ որոշել է կառուցել իր եկեղեցին։ Կառուցման ժամանակը ստույգ
հայտնի չէ. համարվում է XI դարի հուշարձան։ Սա եզակի եկեղեցական մի
շենք է՝ աստղաձև հատակագծով ու եռահարկ (Զվարթնոցի հեռավոր նմանու-
թյամբ) ծավալային հորինվածքով։ Հատակագիծն ունի բարդ գծանկար, ուր
վեցաթև աստղը ներգծված է արտաքուստ 12 եռանկյունի և 6 կիսաշրջան որմ-
նախորշերով կտրտված եզրագծի մեջ։ Երկրորդ հարկը հենվում է ներքին վեց
չլակամարների վրա, որոնք միանում են ծածկի կենտրոնում ու ամրացվում
փակող քարով[32]։

Եռահարկ լուծված ծավալը իր բաժանումներով համաչափ է ու համա-
պատասխան հատակագծային հորինվածքին և եկեղեցուն հաղորդում է քան-
դակագործական բարեկազմություն և գողտրիկ տեսք։

**Մաքսատան շենքը կամ Մանուչեի մզկիթը** տեղադրված է Աշոտյան պա-
րիսպների արևելյան վերջավորության մոտ, Ախուրյանի ձորեզրին։ Հավա-
նաբար կառուցվել է Գագիկ Ա Բագրատունու օրոք (մոտը գտնվում է արձա-
նագրություն այդ անվան հիշատակությամբ)։ Ելնելով տեղադրությունից,
Հ. Օրբելին ենթադրում է, որ շենքը մաքսատուն կամ պահակակետ է եղել և
ավելի ուշ՝ 1072 թ. հետո Շադդադյանների կողմից վերածվել է մզկիթի
և հյուսիսային անկյանը կցվել է բազմանիստ մինարեն[33]։

Հիմնական շենքը երկհարկանի է։ Վերին հարկը մի ընդարձակ սյունա-
զարդ դահլիճ է, երկու շարք, երեքական սյուներով, որոնց շնորհիվ դահլի-
ճի տարածությունը բաժանվում է երեք մասի։ Դահլիճի երկայնական ու լայ-
նական պատերին, սյուների քայլին համապատասխան կան որմնասյուներ,
որոնց վրա նստում են սյուներից ձգված կամարները։

Թեև դահլիճի հարավային պատին կան Ախուրյանի կիրճի կողմը բաց-
վող չորս պատուհաններ, սակայն դահլիճը լուսավորվում էր նաև վերևից.
ծածկի մեջ եղած երդիկների միջոցով, որպիսի հանգամանքը նույնպես ապա-
ցույց է շենքի աշխարհիկ ծագման։

**Խծկոնք կամ Խծկունքի** հուշարձանախումբը գտնվում է Անիից մոտ 40 կմ
դեպի հարավ-արևելք, Տեկոր գետակի անդնդախոր կիրճի ձախ լանջին[34]։ Հինգ
եկեղեցիներից բաղկացած ճարտարապետական այս. հոյակապ համալիրը
գեղատեսիլության սկզբունքի կիրառման մի բացառիկ հաջող օրինակ է ու-

---

31 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հ. I, էջ 277—281։

32 Տե՛ս նույն տեղում, էջ 338—340։

33 Տե՛ս И. А. Орбели, Избранные труды, стр. 107.

34 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հատ. I, էջ 310—311։

միայն Բագրատունյաց շրջանի, այլև ողջ միջնադարյան հայ ճարտարապետության մեջ։ Խմբի մեջ մտնող եկեղեցիների (բացի ս. Սարգիս եկեղեցուց) կառուցման ժամանակը հայտնի չէ։ Թ. Թորամանյանը, ելնելով ս. Կարապետ եկեղեցու հատակագծի ավանդական ձևերից, գտնում է, որ այն կառուցվել է X դարից առաջ, գուցե և ավելի շուտ։ Մնացածները, անկախ այն բանից, որ հատակագծային ու ծավալա-տարածական հորինվածքով միմյանցից տարբեր են, իրենց ճարտարապետական ընդհանուր հատկանիշներով վերաբերում են Բագրատունյաց շրջանին։



Խծկոնք, ընդհանուր տեսքը

Ս. Կարապետ եկեղեցին ուղղանկյուն հատակագծով քառախորան կառուցվածք է։ Նրա արևմտյան պատին փորագրված արձանագրության մեջ հիշատակված է Կատրանիդե թագուհու անունը և 1001 թ., բայց դա կարող է վերաբերել ավելի վաղ կառուցված այդ եկեղեցու վերանորոգմանը։

Արտաքուստ բոլորշի, ավելի շուտ բազմանիստ (20 նիստերով) ս. Սարգիս եկեղեցին, որը հուշարձանախմբի զարդն է կազմում, հատակագծում քառաբսիդ հորինվածք ունի, աբսիդների միջև տեղավորված ավանդատներով։ Համաձայն Սամուել Անեցու վկայության, այն կառուցել է տվել Վեստ Սարգիսը՝ 1027 թ.։ Եկեղեցու երկաստիճան ծավալների մշակումը որոշակի աղերս ունի Զվարթնոցի հետ ու նրա հեռավոր ազդեցությունն է կրում։ Առաջին հարկի բոլոր նիստերը հարդարված են զույգ սյուների վրա հանգչող որմնակամարներով, իսկ ավելի սլացիկ վերին հարկում, սյուների վրա, որմնակամարների փոխարեն ճակտոններ են արված։

խծկոնքի ճարտարապետական հուշարձաններից ուշագրավ և ինքնատիպ է նաև առանձնակի կանգնած ս. Ստեփանոս եկեղեցին։



Մարմաշենի Վահրամաշեն եկեղեցին

Այս հոյակապ անսամբլը, որ հայ ճարտարապետության գոհարներից էր, ցավոք ոչնչացված է այժմ։ Հինգ եկեղեցիներից տեղում մնացել է միայն ս. Սարգիս եկեղեցին, այն էլ խիստ խարխլված վիճակում։

**Մարմաշենի** ճարտարապետական համալիրը (Լենինական քաղաքից ոչ հեռու) Բագրատունյաց ժամանակաշրջանի լավագույն հուշարձաններից է։ Այն բաղկացած է տարբեր տիպերի չորս եկեղեցիներից, գավթից, մի մատուռից ու խաչարձաններից, բոլորը միասին տեղադրված Ախուրյան գետի ձախափնյա մի հարթության վրա[35]։ Վանքի գլխավոր եկեղեցու կառուցումը սկսվել է 986 թ., ավարտվել է 1029-ին՝ սպարապետ Վահրամ Պահլավունու կողմից, որի անունով եկեղեցին նաև Վահրամաշեն է կոչվում։ Սա X դարի համար արդեն կանոնիկ դարձած և իր բոլոր հատկանիշներով վերին աստիճանի կատարյալ գմբեթավոր սրահ է, հարավային արևելյան և հյուսիսային պատերին բավականաչափ խոր ընկած խորշերով։ Դարաշրջանի ճարտարապետական ոճն իր փայլուն մարմնավորումն է գտել այս հուշարձանում։ Նրա բոլոր պատերը պլաստիկորեն մշակված են զույգ որմնասյուների վրա հենվող որմնակամարներով, որոնց ռիթմն ու համաչափությունները յուրաքանչյուր ճակատի կենտրոնական մասում առավել շեշտված են։ Գմբեթի բազմանիստ թմբուկը, որ պսակվում է հովանոցաձև ծալքավոր վեղարով, մշակված է նույն սկզբունքով, ինչ պատերը։ Յուրաքանչյուր նիստի երկու անկյունները շեշտված են երեքական որմնասյուներից բաղկացած փնջերով, որոնք հիմք են ծառայում ճակտոնների հյուսքեղ քիվերի համար։ Ճարտարապետական նրբակերտ մանրամասներով և բարձր վարպետությամբ են ձևավորված եկեղեցու մուտքը և պատուհանները, որմնասյուների խարիսխներն ու խոյակները և այլ մանրամասներ։ Մարմաշենի մեծ եկեղեցին իր ճարտարապետական հարուստ ձևերի միասնությամբ և արտահայտչությամբ անվերապահորեն պիտի համարվի հասուն ու տաղանդավոր (ցավոք անանուն) ճարտարապետի փայլուն ստեղծագործություն և քննվող ժամանակաշրջանի եկեղեցական լավագույն շենքերից մեկը։

Մարմաշենի փոքր եկեղեցին կառուցված է մեծի կողքին՝ հյուսիսից ընդամենը մի քանի մետր հեռավորությամբ։ Պատկանում է նույն տիպին, ինչ մեծը և, հավանական է, կառուցված է եղել նույն ժամանակ։ Այժմ կիսավեր է։

Մարմաշենի երրորդ, չափերով ավելի փոքր եկեղեցին տեղադրված է մեծ եկեղեցու հարավային կողմում. իր ճարտարապետությամբ սա էապես տարբերվում է մնացած երկուսից։ Առանց հարդարանքի գլանաձև թմբուկով դըմբեթավոր կառուցվածք է։

1940-ական թվականներին այստեղ կատարված պեղումների շնորհիվ բացվեցին Մարմաշենի չորրորդ եկեղեցու ավերակները։ Սա արտաքուստ կլոր (ավելի ճիշտ բազմանիստ) ներքուստ քառաբսիդ ու չորս ավանդատներով մի եկեղեցի է եղել, հատակագծով նման Խծկոնքի ս. Սարգիս եկեղեցուն և հավանաբար կառուցվել է XI դարի առաջին երեսնամյակում։

**Բջնիի և Կեչառիսի** եկեղեցիները պատմական Մազազ գավառում Պահլավունիների ծավալած բեղմնավոր շինարարական գործունեության արգասիքներից են։ X դարի վերջի և XI դարի սկզբին Վասակ Պահլավունին և իր

35 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հատ. I, էջ 315—318։

որդի Գրիգոր Մագիստրոսը կառուցել են Բջնիի ամրոցը և ս. Աստվածածին եկեղեցին (1031), ինչպես և Կեչառիսի (Կեչառուքի) վանքի առաջնեկ՝ ս. Գրիգոր եկեղեցին (1033)։ Ճարտարապետական հորինվածքով երկուսն էլ պատկանում են դմբեթավոր սրահի տիպին։

Սրանց արտաքին ճարտարապետությունը պարզ է ու վսեմ։ Ճակատները զուրկ են հարդարանքի միջոցներից։ Եռանկյունաձև խորշերը ամփոփված են միայն արևելյան պատերում և ունեն կոնստրուկտիվ, միաժամանակ գեղագիտական նշանակություն՝ լույս ու ստվերով աշխուժացնում են այդ ճակատները։

Ավելի հարուստ է մշակված Կեչառիսի ս. Գրիգոր եկեղեցու հարավային մուտքը, այն իր ձևերով խիստ ընդգծվում է խուլ և անպաճույճ ճակատի վրա։

Բջնիի ս. Աստվածածին եկեղեցու գմբեթը հենվում է գլանաձև թմբուկի վրա ու պսակված է հովանոցաձև մանրածալ վեղարով։ Հավանաբար նույնպիսի վեղար է ունեցել նաև Կեչառիսի ս. Գրիգոր եկեղեցու գմբեթը, որից պահպանվել է գլանաձև թմբուկի մի մասը միայն։

Այսպիսով, շուրջ երկու դար տևող արաբական տիրապետության ծանր լուծը թոթափելուց հետո, անկախություն նվաճած ֆեոդալական Հայաստանի, ինչպես կենտրոնական (Բագրատունյաց), այնպես էլ առանձին թագավորությունների (Սյունիքի, Վասպուրականի, Գուգարքի, Կարսի) սահմաններում, երկրի տնտեսական ընդհանուր բարգավաճման հիման վրա, հայկական քաղաքաշինական արվեստն ու ճարտարապետությունը IX—XI դարերում ապրում են նոր ծաղկում և նշանակալից զարգացում։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՋՈՐՍԵՐՈՐԴ

# ԱՐՎԵՍՏ

## 1. ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Մշակութային նոր վերելքը, բնականաբար, դրսևորվեց նաև ճարտարապետության հետ անմիջականորեն զուգորդված դեկորատիվ-քարակոփ արվեստի բնագավառում, արտահայտվելով տաճարների գեղարվեստական ձևավորմամբ և հատկապես արտաքին ճակատների զարդարմամբ՝ քանդակներով։*

*VII դ. հայկական ճարտարապետությունը համեմատաբար զուսպ հարդարանք ուներ։ X—XI և հետագա դարերում ճարտարապետական հուշարձանների հարդարանքը նոր զարգացում է ապրում, հանդես են գալիս դեկորատիվ նշանակություն ունեցող նոր ձևեր։ Աճում է զարդարվեստի նշանակությունը։ Քանդակազարդ հարդարանքը դառնում է կառուցվածքի անբաժանելի մասը։ Առավել ճոխ են ձևավորվում տաճարների շքամուտքերը և այլ մանրամասները, բուսական քանդակներն ավելի են ոճավորվում, երկրաչափական ձևերը սկսում են մանրանալ և ձեռք բերել բարդ ու նուրբ գծագրություն։*

*Սակայն, քանդակագործական արվեստը չի սահմանափակվում միայն զարդապատկերային դեկորատիվ նշանակությամբ։ Ծավալվում է նաև թեմատիկ ֆիգուրալ քանդակագործությունը։ Ընդ որում, դրանք հեռանալով հնից եկող և վաղ միջնադարին բնորոշ սիմվոլիկ բնույթից և շարունակելով VI—VII դարերի կոթողների ու որոշ ճարտարապետական հուշարձանների (Մրեն, Պտղնի, Միսիան և այլն) վրա տեղ գտած պատկերագրական սովորույթները սյուժետային առումով դառնում են ավելի կոնկրետ։ Բացի այդ, եթե V—VII դարերի քանդակագործության նպատակը, հիմնականում, հայերի քրիստոնյա դառնալու փաստի հավերժացումն էր և Հայաստանում քրիստոնեական հավատքի ամրապնդումը, ապա X—XI դարերի քանդակագործության գաղափարական իմաստը, մի կողմից՝ ոգու փրկության մասին եղած կրոնա-ասկետական հասկացություններն էին, մյուս կողմից՝ օբյեկտիվ իրականության նկատմամբ ցուցաբերվող հետաքրքրությունը։ Այդ տեսակետից նշանավոր հուշարձան է Աղթամարի ս. Խաչ եկեղեցին, ուր ժամանակի համար բնորոշ գաղափարական հիմնական դրվածքը, համաձայն որի*

*օբյեկտիվ իրականության ուղղակի ընկալումը արվեստում երևակվում է ասկետիզմի ու սպիրիտուալիզմի տեսանկյունով, դրսևորվել է բարձր արվեստով*[1]։

*Հռչակավոր ճարտարապետ և քանդակագործ Մանուելը Հուշարձանի արտաքին պատերն ամբողջությամբ պատել է կրոնական, ինչպես նաև Արծրունի իշխանական տունը ներկայացնող աշխարհիկ պատկերաքանդակներով։*



Աղթամարի տաճարի քանդակներից

*Թեմատիկ բազմազանությամբ, մանավանդ աշխարհիկ բովանդակությամբ, աչքի է ընկնում տաճարի վերին մասով անցնող ու ամբողջ Հուշարձանը շրջանցող լայն զարդագոտին, որի վրա խաղողի որթին միահյուսված*

---

1 *Աղթամարի ս. Խաչ եկեղեցու քանդակների մասին տե՛ս И. А. Орбели,* Памятники армянского зодчества на острове Ахтамар, «Избранные труды», М.. 1968. S. *Der-Nersesian,* Aghtamar, Church of the Holy Cross, Harvard, 1965.

են կենդանիների, մարդկանց, որսի ու այգեկութի տեսարաններ ներկայացնող քանդակներ։ Արևելյան ճակատում այն ընդհատվում է գինու գավաթը ձեռքին ծալապատիկ նստած Գագիկ թագավորի պատկերաքանդակով։

Հին և Նոր կտակարաններից վերցրած թեմաները, մարգարեների ու առաքյալների, երբեմն կլոր շրջանակների մեջ ամփոփված սրբերի պատկերաքանդակները ամբողջապես ծածկում են տաճարի ճակատների հարթությունները։ Այստեղ պատկերված են աստվածաշնչային հերոսները՝ Դավիթ մարգարեն ու Սամսոնը, ինչպես և Աբրահամի, Հովնան ու Դանիել մարգարեների հետ կապված զրույցները։ Ռազմիկ սրբերի՝ Թեոդորոսի, Գեորգի, Սարգսի կողքին մենք տեսնում ենք 786 թ. արաբների կողմից նահատակված ու սրբերի շարքը դասված Համազասպ ու Սահակ Արծրունիների պատկերաքանդակները։ Սրանց հետ մեկտեղ քանդակված են նաև Քրիստոսը՝ գահի



Աղթամարի տաճարի զարդագոտին Արևելյան ճակատում

վրա, Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին և այլն։ Ավետարանիչների պատկերաքանդակները տեղավորված են ճակտոնների վրա։ Հյուսիսային պատին քանդակված են Ադամն ու Եվան։ Արևելյան ճակատի քանդակներում աստվածաշնչային կերպարների (Ադամ, Եղիա, Հովհաննես Մկրտիչ) շարքում ներկայացված են Գրիգոր Լուսավորիչը, Թադեոս ու Բարթուղիմեոս առաքյալները, որոնք, ըստ ավանդության, Հայաստանում տարածեցին քրիստոնեություն։ Առանձնակի նշանակություն ունի տաճարի արևմտյան ճակատի բարձրաքանդակը, ուր կենտրոնական պատուհանի երկու կողմերում պատկերված են Գագիկ Արծրունին ու Քրիստոսը՝ ամբողջ հասակով, Գագիկը արքայավայել ճոխ զգեստավորված՝ Փրկչին է մատուցում եկեղեցու մոդելը, իսկ Քրիստոսը օրհնում է նրան։ Պատուհանի տակ, երկու հրեշտակ բռնել են

շրջանակի մեջ ամփոփված հավասարաթև խաչ։ Ճակատային հարթության ծայրամասերի ազատ տարածության վրա քանդակված են երկու քերովբեներ, որոնք ամբողջացնում են խմբաքանդակի հորինվածքը։

Տաճարի ճակատային քանդակներում մասամբ կրկնվում են ոչ միայն IV—VII դարերում տարածված պատկերաքանդակների թեմաները (Իսահակի զոհաբերությունը, Դանիելի և երեք մանուկների զրույցը և այլն), այլև ոճական որոշ հնավանդ սովորույթներ։ Այդուհանդերձ տաճարի արտաքին ճակատային քանդակները, ինչպես և ներսի որմնանկարները, թե իրենց թեմատիկայով և թե ոճական առանձնահատկություններով հանդիսանում են առավելապես նոր ժամանակաշրջանի գաղափարների և ոճի արտահայտիչը։ Աղթամարի քանդակների ու որմնանկարների նշանակությունը մեծանում է նաև նրանով, որ ընդհանրապես Մերձավոր Արևելքի քրիստոնեական արվեստը այնքան էլ հարուստ չէ X դարին վերաբերող հուշարձաններով։

X դարում առանձնապես լայն տարածում են գտնում այսպես կոչված կտիտորական քանդակները, օրինակ, արդեն հիշատակված Գագիկ Ա Արծրունու քանդակը՝ եկեղեցու մոդելը ձեռքին։ VI—VII դարերի ճարտարապետական կառուցվածքների վրա նույնպես հանդիպում են իշխանների ու ազնվազարմ անձանց պատկերաքանդակներ, որոնց նպատակն է հավերժացնել որևէ բարձրաստիճան իշխանի, նրա շինարարական գործունեությունը, եկեղեցու և հավատքի հովանավոր դերը։ Մինչդեռ X—XI և հետագա դարերի կտիտորական քանդակներն առանձնապես ընդգծում են հոգու փրկության գաղափարը, որն անհատի հոգեբանության մեջ ձեռք է բերում աննախընթաց նշանակություն։ Մեծանում է սուբյեկտիվ մտածողության և սեփական բախտը հավատի միջոցով տնօրինելու ձգտումը, որի շնորհիվ էլ առաջանում է մարդուն անհատականացված գծերով ներկայացնելու պահանջը։ Ուստի միջնադարյան արվեստին բնորոշ ընդհանուր պատկերագրական տիպային լուծումների փոխարեն (պահպանելով հանդերձ պատկերվող անհատի արտաքին ձևերի սխեմատիկ ու վերացարկված պատկերման ավանդույթը), կտիտորական քանդակներում սկսում է երևալ նաև կոնկրետ անհատը՝ իր աշխարհիկ, երկրային էությամբ ու անհատականացված հատկանիշներով։ Սա իր հերթին բերում է նաև դիմանկարային մոմենտների վերարտադրման որոշ պահանջ։ Այսպես, օրինակ, պատմիչի վկայությամբ, Գագիկ Արծրունու Աղթամարի պատկերաքանդակը նրա ճշմարիտ նմանությունն է։

Կտիտորական քանդակներն առանձնապես տարածում են գտնում Բագրատունյաց շրջանում։ Մշակվում է տաճարի շինարարությունը հովանավորող բարձրաստիճան անձնավորությունների պատկերման որոշակի միակերպ հորինվածք։ Ըստ այդմ կտիտորները պատկերվում են տաճարի արևելյան ճակատին, բարձրադիր խորշի մեջ։

Այս տիպի քանդակներից առաջին հերթին պետք է նշել Սանահնի Ամենափրկիչ կոչված եկեղեցու (966) արևելյան ճակատի բարձրաքանդակը, ինչպես նաև Հաղբատի ս. Նշան եկեղեցու արևելյան ճակատի որմնախորշում ամփոփված Սմբատ և Գուրգեն Բագրատունիների խմբաքանդակները։ Հաղբատի խմբաքանդակը, ի տարբերություն Աղթամարի ու Սանահնի, ունի ծավալային ու պարզ ընդհանրացված ձևեր։ Ընդգծելով պատկերների վեհաշուք

մոնումենտալ էությունը, դրանք երևակվում են լայն մակերեսներով ու ամբողջական ռելիեֆ զանգվածով։ Իր ծավալային բնույթով հանդերձ, Հաղբատի խմբաքանդակը, ըստ էության, հանդիսանում է պատի հարթության ամբողջական մասը և դիտվում է միայն դիմացից, ուստի և ընկալվում է կառուցվածքի հետ օրգանական կապի մեջ։ Այս առումով Հաղբատի խմբաքանդակը քանդակների այս խմբում յուրահատուկ նշանակություն է ստանում և գեղարվեստական բարձր արժեք է ներկայացնում։

Ծավալային քանդակագործության հետագա զարգացման արգասիք է Գագիկ Ա Բագրատունու քանդակը (հայտնաբերվել է Ն. Մառի պեղումներից)[2], որը տեղավորված է եղել Գագիկ թագավորի կառուցած ս. Գրիգոր գվարթնոցատիպ տաճարի արևելյան ճակատին՝ ամբողջ հասակով, ձեռքին՝ եկեղեցու մոդելը։ Չնայած ձևերի ու համամասնությունների ընդհանրացված կերպավորմանը, Գագիկի քանդակում՝ ինչպես և Հաղբատի քանդակներում,



Սմբատ և Գուրգեն թագավորների քանդակը Հաղբատի ս. Նշան տաճարի ճակատին

վերացական տիպային լուծման փոխարեն, ընդգծված է կոնկրետ անձնավորություն՝ իր անհատականացված հատկանիշներով։ Գագիկ Բագրատունու քանդակը հայկական միջնադարից մեզ հայտնի առաջին ծավալային կլոր քանդակն է։ Այն, որոշ առումով նաև Հաղբատի խմբաքանդակը, նոր երևույթ էին հայկական միջնադարյան քանդակագործության մեջ և նշանավորում էին մարդկային պատկերաքանդակների զարգացման մի նոր շրջան, մանավանդ, որ Աղթամարի ու Սանահնի քանդակներն իրենց հարթաքանդակային բնույթով հիմնականում կրկնում էին պատկերաքանդակների հնավանդ հարթ ձևերը։

---

[2] Տե՛ս Н. Марр, Ани, стр. 59—60.

*X—XI դարերի հայկական միջնադարյան քանդակագործության պատմության համար ուշագրավ հուշարձան է Բղենո Նորավանքը (Գորիսի շրջան), որը Աղթամարից հետո այդ ժամանակներից մեզ հայտնի միակ շինությունն է՝ զարդարված հարուստ պատկերաքանդակներով։ Վերջիններս տարբերվում*



Բղենո Նորավանքի քանդակներից

*են Աղթամարի քանդակներից նրանով, որ ներկայացնում են միայն Քրիստոսի հետ կապված տերունական պատկերագրական շարք։ Այս հանգամանքն ինքնին ցույց է տալիս երկու կառույցների նպատակային տարբերությունը։ Եթե Աղթամարի ս. Խաչի քանդակներն ունեին ավելի ընդարձակ գաղափարական բովանդակություն, ապա Բղենո Նորավանքի քանդակները դուրս չէին գալիս կրոնական պատկերացումների շրջանակներից։ Այդուհանդերձ, Բղենո*

*Նորավանքի քանդակները մեծ աղերս ցուցաբերելով Սյունիքի մանրանկարչության և որմնանկարչության հետ (Էջմիածնի ավետարան, Տաթևի որմնանկարներ և այլն) վկայում են Սյունյաց գեղարվեստական ամբողջական դպրոցի գոյության մասին։*



Բղենո Նորավանքի քանդակներից

*IX—X դարերում հայ քանդակագործության մեջ ձևավորվեց մի նոր և նշանակալից երևույթ՝ խաչքարերի արվեստը*[3]*։ Դրանք հիմնականում պատվանդանի վրա կանգնեցվող քարե սալեր են, որոնց արևմտյան երեսին քրիստոնեության խորհրդանիշ խաչը՝ շրջապատված ճոխ զարդաքանդակնե-*

---

3 *Խաչքարերի մասին տե՛ս* Ս. Բարխուդարյան, *Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ, Երևան, 1963, էջ 121—137,* Լ. Ազարյան, *Հայկական խաչքարեր, «Էրեբունի» հրատ., 1973։*



Խաչքար, Նորադուզ 996 թ.

*րով, փոխարինելով IV—VII դարերի քառակող կոթող-խաչերին, IX դարում արդեն լայն կիրառություն ստացան և կատարելության հասան իրենց բարձր արվեստով։ Եթե IV—VII դարերի քառակող կոթողներն աչքի են ընկնում պատկերաքանդակներով, ապա խաչքարերը դարձան քարի վրա քանդակված զարդարվեստի ընդարձակ բնագավառ, տալով վերին աստիճանի բազմազան, նրբին ու հարուստ քանդակների իսկական գլուխգործոցներ։ Խաչքարերը սոսկ գերեզմանների վրա կանգնեցվող հուշարձաններ չեն եղել, այլ ունեցել են տարբեր նշանակություն՝ կոթող հուշարձան կանգնեցված այս կամ այն դեպքի և եղելության առթիվ, նշանավոր անձանց հիշատակին, երբեմն էլ նվիրված ճանապարհների, աղբյուրների, սրբավայրերի շինարարության ու ժողովրդական որևէ ավանդության։ Նրանց վրա կենտրոնական տեղը բռնում է խաչի պատկերը. այն մեծ մասամբ ուղեկցվում է քանդակազարդի բազմազան մոտիվներով, որոնք ունեն նաև խորհրդանշական իմաստ։ Այդ ամենի շնորհիվ խաչքարերը լայն տարածում գտան (նրանց թիվը հազարների է հասնում) և դարձան ժողովրդական քանդակագործական արվեստի մի ծավալուն ասպարեզ։*

## 2. ՈՐՄՆԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

*IX—XI դարերում նոր զարգացում ապրեց նաև որմնանկարչությունը[4]։ Բագրատունի և Արծրունի թագավորներն իրենց նորակառույց պալատներն ու տաճարները զարդարում են հոյակապ որմնանկարներով ու զարդապատկերներով[5]։ Զմայլանքով ու բանաստեղծորեն է նկարագրում Թովմա Արծրունին Աղթամարի պալատի և նրա որմնանկարների ճոխությունն ու գեղեցկությունը։ Այստեղ պատկերված է եղել խնջույքի պահին սպասավորներով, գուսաններով ու պարուհիներով շրջապատված Գագիկ թագավորը՝ ոսկեզօծ դահին բազմած. պալատի պատերը ծածկված են եղել նաև ռազմի, ըմբշամարտի տեսարաններով, գազանների, թռչունների և այլ պատկերներով։*

*Որմնանկարչությունը, ավելի քան քանդակագործությունը, կապված լինելով տաճարների կառուցվածքի ընձեռած հնարավորությունների հետ, բնականաբար պետք է հարմարվեր ճարտարապետական ձևերի թելադրանքին։ Հակառակ բյուզանդականի, հայկական ճարտարապետությանը բնորոշ ներքին մակերեսների պարզ ու ողորկ մշակումը համարյա բացառում էր պատը ծեփով ու ապա որմնանկարներով ծածկելու պահանջը։ Բացի այդ, հայկական տաճարը իր մտահղացման ամբողջականությամբ ու ճարտարապետական լուծումներով, մանավանդ ներքին տարածության կատարելության հասցված պարզությամբ, հարդարանքի օժանդակ միջոցների մեծ կարիք չէր զգում։ Հիմնականում դրանով է բացատրվում, որ հայկական տաճարներն ունեն համեմատաբար զուսպ զարդարանք, որը հայկական եկեղեցու պատ-*

---

[4] *Л. А. Дурново,* Краткая история древнеармянской живописи, Ереван, 1957, стр. 15—16.

[5] Տե՛ս Թովմա Արծրունի, *էջ 474—487։*

*կերամարտ լինելու հետևանքը չէ, ինչպես կարծում են որոշ ուսումնասիրողներ։ Ավելին, մոտավորապես X դարին վերաբերող հուշարձանները վկայում են, որ հայկական որմնանկարչության պահպանված նմուշները որքանով էլ փոքրաթիվ են ու հատվածական, այնուամենայնիվ իրենց որոշակի տեղն ու նշանակությունն ունեն քրիստոնեական Արևելքի միջնադարյան արվեստի պատմության մեջ։ Դրա լավագույն գրավականներն են Աղթամարի ս. Խաչ եկեղեցու և Տաթևի վանքի ըստ էության հազվագյուտ որմնանկարները։*

*Աղթամարի որմնանկարները կատարվել են այդ տաճարի կառուցման ժամանակ (915—921) և ամենայն հավանականությամբ այդ կառույցի ճարտարապետ և արտաքին ճակատների քանդակների հեղինակ Մանուելի ղեկավարությամբ։ Այդ են վկայում քանդակների ու որմնանկարների միջև եղած ոճական ընդհանրությունները ու գաղափարական այն կապը, որը միահյուսվելով տաճարի ճարտարապետական կերպարին, վերարտադրում է մի ամբողջական մտահղացում։ Հենց այս վերջին հանգամանքն էլ Աղթամարի եկեղեցին դարձնում է X դարի արվեստի ընդհանուր պատմության հազվագյուտ երևույթներից մեկը։*

*Աղթամարի տաճարը թերևս այն միակ հուշարձանն է, որի որմնանկարները համեմատաբար ամբողջական են պահպանվել և հնարավորություն են տալիս պատկերացում կազմելու ժամանակի պատկերագրության ու նրա ոճական առանձնահատկությունների մասին։*

*Ամբողջ շարքը սկսվում է գմբեթի թմբուկի արևելյան կողմից, ուր հաջորդաբար պատկերված են Ադամի ու Եվայի արարչության, նրանց մեղսագործության ու դրախտից արտաքսվելու տեսարանները։ Հավանաբար եղել են նաև Հին կտակարանից վերցված այլ դրվագներ, որոնք քայքայվել են և այժմ դժվար է վերականգնել։ Քրիստոսի կյանքի հիմնական դրվագները պատկերված են չորս խորանների ու նրանց կամարների վրա։ Գմբեթակիր որմնամույթերի վրա պահպանվել են մարգարեների և այլ սրբերի պատկերներ, ազատ մնացած տարածությունները պատած են բուսական հյուսվածքավոր զարդապատկերներով։ Եկեղեցու գմբեթի (որպես երկնակամարի) վրա պատկերված Հին կտակարանային տեսարանները խորհրդանշում են երկնային դրախտը*[6]*։*

*Աղթամարի որմնանկարների պատկերագրական համակարգը փաստորեն վերարտադրում է մեղսագործության պատճառով դրախտից զրկվելու փաստը։ Ավետարանային թեմաները և հատկապես Քրիստոսի կյանքը պատկերող շարքը պետք է արտահայտեր զոհաբերության (Քրիստոսի) միջոցով սպասվող փրկության գաղափարը։ Այսպիսով, որմնանկարները սերտորեն առնչվում են արտաքին քանդակների հետ, արտահայտելով ամեղավոր ոգու փրկության ձգտումը։ Այս առումով Աղթամարի պատկերագրական շարքը իր մանրամասներով ներկայանում է միանգամայն ինքնուրույն խմբագրությամբ։ Ավելին, այստեղ հանդիպում ենք պատկերագրական այնպիսի նորույթների, որոնք Աղթամարի որմնանկարներին հաղորդում են որոշակի ազգային բնույթ։*

---

[6] *Տե՛ս S. Der-Nersessian,* Aghtamar, p. 36—49.

Նշենք նաև, որ որմնանկարների հեղինակը չի վարանել Քրիստոսի ու Մարիամ Մագթաղինացու հանդիպման տեսարանում պատկերել նաև Գագիկ Արծրունուն։ Հարավային պատին պատկերված Քրիստոսի երկրորդ գալստյան և մեռելների հարություն առնելու տեսարանը, եթե այն հետագայում չի ավելացվել, հանդիսանում է այդ թեմայի հնագույն և եզակի պատկերագրական նմուշներից մեկը։



Խաչքար, Մեծ Մազրա 881 թ.

Որմնանկարների ընդհանրությունները արտաքին քանդակների հետ արտահայտվել են նաև կատարման ոճի ու պատկերվող տեսարանի առանձնահատկությունների տիպային մեկնաբանության մեջ։ Այդ ամենում հատկանշականը առաջին հերթին գրաֆիկական պատկերաձևն է, որտեղ որոշակի

նշանակություն է տրվում խիստ պարզեցված գծաստվերներին (սիլուետ)։ Մյուս կողմից արտաքին շարժումից զուրկ հորինվածքներն ու գործող անձանց անշարժ վիճակը, խիստ դիմահայաց դիրքն ու պլաստիկ ձևերի տարածական լուծումներից զուրկ հարթ պատկերաձևը որմնանկարներին հաղորդում են խստություն, բայց և հանդիսավոր վեհություն։ Այս պարագայում շեշտը դրվում է պատկերված անձանց ներքին, հոգեկան լարվածության վրա, որը ամբողջապես վերարտադրվում է նրանց դեմքերի ու լայն բացված աչքերի անորոշ արտահայտությամբ։



Որմնանկար Աղթամարի տաճարից

Հայկական մոնումենտալ գեղանկարչության պատմության համար նշանակալից են նաև Սյունիքի X դարի հուշարձանները։ Ստեփանոս Օրբելյանը վկայում է մի քանի եկեղեցիների նկարազարդման մասին։ Գնդեվանքի առթիվ ասվում է, որ Սյունյաց Սոփիա տիկինը նկարազարդման աշխատանք-

ները հանձնարարում է Եղիշե անունով նկարչին[7]։ Սակայն Գնդեվանքի որմնանկարներից համարյա ոչինչ չի պահպանվել։ Եկեղեցու արևելյան խորանի վրա հազիվ նշմարվում են Քրիստոսի պատկերից առանձին հետքեր միայն։

Հատուկ ուշադրության արժանի են Տաթևի վանքի, թեև վատ պահպանված, որմնանկարները։ Սրանք, Աղթամարի ս. Խաչ եկեղեցու որմնանկարների հետ մեկտեղ, միջնադարյան մոնումենտալ գեղանկարչության առավել նշանակալից ու հին հուշարձաններից են։ Ստեփանոս Օրբելյանը վկայում է, որ Հակոբ Դվնեցին 930 թ. հեռու երկրից հրավիրում է ազգով «ֆռանգ» նկարիչներ և հանձնարարում զարդարել Տաթևի վանքը տերունական պատկերներով։ Ապա հիշատակում է, որ ավագ խորանում տեղավորված էին Փրկչի «յույժ ահաւոր», դրանից ցած՝ մարգարեների, առաքյալների ու հայրապետների պատկերները։ Այս ամենն այնքան կենդանի էին պատկերված, որ թվում էր, թե դեղերով ու ներկերով չէր կատարված, տեսնողները ահաբեկ հեռանում էին («զարհուրեալք խուսափէին»)[8]։

Տաթևի որմնանկարների ոճը, իր՝ հիմնականում գրաֆիկական կատարումով ու պատկերված անձանց ընդգծված տեղական տիպային առանձնահատկություններով, մեծ ընդհանրություններ ունի Աղթամարի ս. Խաչ եկեղեցու որմնանկարների ու ժամանակի հայկական և հատկապես Սյունիքի մանրանկարչության (Էջմիածնի ավետարան) հետ։ Տաթևի որմնանկարները թերևս կատարվել են նաև տեղական վարպետների կողմից, անշուշտ, օտար («ֆռանգ») վարպետների մասնակցությամբ՝ գուցե և ղեկավարությամբ։ Անհավանական չէ նաև, որ Գնդեվանքի որմնանկարների հեղինակ Եղիշե նկարիչը նույնպես մասնակցել է այդ աշխատանքներին։

Տաթևի որմնանկարների տերունական ցիկլից այժմ նշմարվում է միայն Քրիստոսի ոտքերի գծագրությունը։ Համեմատաբար լավ են պահպանվել դրանից ցած տեղավորված մարգարեների մի քանի մեծ պատկերներ։ Հյուսիսային պատին պահպանվել է նաև Քրիստոսի ծնունդը ներկայացնող պատկերագրական բավականին ինքնատիպ հորինվածքը։ Արտակարգ հետաքրքրություն է ներկայացնում ամբողջ արևմտյան պատը ծածկող վերջին դատաստանը ներկայացնող որմնանկարը։ Այստեղ պատկերված է ոչ թե ահեղ դատաստանը, այլ Փրկչի երկրորդ հայտնության ժամանակ մեռելների հարության և վերջին դատաստանին պատրաստվելու տեսարանը։

Սակայն սրանով չի սահմանափակվում Տաթևի որմնանկարների պատմական նշանակությունը։ Նրանք թեմայի ընտրությամբ արտացոլել են նաև ժամանակաշրջանի պատմա-հասարակական իրադրություններից բխող մտածելակերպը։

IX—X դարերում ծավալված գյուղացիական ապստամբությունների բռնի ճնշումը բավական չէր ապահովելու եկեղեցու հեղինակությունը։ Ուստի հավատքի վերականգնման մյուս միջոցը հանդերձյալ կյանքի ու հոգու փրկության մասին եղած հասկացությունների ամրապնդումն էր, որն իր հեր-

---

7 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 256։

8 Տե՛ս նույն տեղում, էջ 256։

*թին առաջ էր քաշում ահեղ դատաստանի, դժոխքի և դրախտի մասին եղած պատկերացումները։ Եվ, վերջապես, այս բոլորին ավելանում էր վախը՝ կապված 1000 թ. կանխագուշակվող Քրիստոսի երկրորդ գալստյան և ահեղ դատաստանի հետ։*

*Պատկերը (որմնանկարը) պետք է ներգործեր առաջին հերթին իր հոգեբանական հագեցվածությամբ։ Եվ իզուր չէ, որ պատմիչը Տաթևի որմնանկարները անվանում է «շլացուցիչ» ու խուսափելու չափ «զարհուրելի»։*

*Աղթամարի ու Տաթևի պատկերները, չնայած նրանց մեծածավալ, ծանրաշուք բնույթին, կորցնում են իրենց նյութականությունը։ Դեմքերը ընդգծված խիստ արտահայտություն ունեն։ Տարածական միջավայրն ու ծավալային պլաստիկ ձևերը ամբողջությամբ վեր են ածվում վերացարկված հարթությունների, որտեղ գերակշռողը դառնում է գիծը և հարթ մակերեսը։ Այսասմով, անշուշտ, դրանք պահպանում են VI—VII դարերի պատկերաքանդակների սովորույթները և մերձենում X—XI դարերի հայկական մանրանկարչության որոշակի հոսանքին (Էջմիածնի Ավետարանի սկզբի մանրանկարները, 1038 թ. Ավետարանի մանրանկարները և այլն)։ Տաթևում պահպանված որմնանկարների սահմանափակ գունաշարը (դեղին, մուգ կարմիր, սև, կապույտ) ուժեղացնում է նրանց ընդհանուր ասկետական՝ ոչ իրական բնույթը։*

*X դարում որմնանկարներով զարդարված է եղել նաև Հաղբատի ս. Խաչ եկեղեցին. սկզբնական որմնանկարներն այժմ համարյա ամբողջովին կորած պետք է համարել։ Որմնանկարներով զարդարված են եղել Անիի Բագրատունյաց պալատի սյունազարդ դահլիճը, սակայն պեղումների ժամանակ հայտնաբերվել են միայն դրանց հետքերը։ Ոսկեզօծ ֆոնի և տարբեր երանգների կիրառությունը թույլ է տալիս ենթադրելու, որ պալատի որմնանկարները բավականաչափ ճոխ և շքեղ են եղել։ Նկարազարդ են եղել նաև Անիի եկեղեցիներից մասնավորապես Աբուղամրենց ս. Գրիգորը և այլ եկեղեցիներ։*

## 3. ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

*Միջնադարյան հայ գեղանկարչության մեջ մանրանկարչությունը բացառիկ տեղ է գրավում[9]։*

*Ճիշտ է IX դարի առաջին կեսի մանրանկարներից պահպանվել են միայն մագաղաթյա առանձին պատառիկներ, որոնց թվագրությունը, բնականաբար, պայմանական է, սակայն IX դարի վերջից և X դարից մեզ են հասել պատկերազարդված մի քանի ձեռագրեր, որոնք նշանավորելով հայ մշակույթի զարգացման նոր վերելքը, միևնույն ժամանակ միջնադարյան հայ արվեստի աչքի ընկնող հուշարձաններ են։*

*Համաձայն վերջին ուսումնասիրությունների՝ ճշգրիտ թվագրված հնագույն պատկերազարդված հայերեն ձեռագիրը պետք է համարել «Մլքե թա-*

---

9 Տե՛ս Լ. Ա. Դուռնովո, *Հայկական մանրանկարչություն*, Երևան, 1967։

գուհու ավետարանը», որը գրվել և պատկերազարդվել է 851 թ., իսկ հետագայում պատկանել Գագիկ Արծրունու կնոջը՝ Մլքե թագուհուն[10]։



Մանրանկար Մլքե թագուհու ավետարանից

Ձեռագրում պահպանված յոթ խորանները, համբարձման տեսարանը և չորս ավետարանիչների նկարներն աչքի են ընկնում հանդիսավոր մոնումենտալությամբ և գեղագրական ազատ պատկերաձևերով։ Հավաստելով հայկական միջնադարյան արվեստի բարձր մակարդակը, դրանք միաժամանակ դրսևորում են վերջինիս աղերսը հարևան քրիստոնյա ժողովուրդների արվես-

10 Տե՛ս Մ. Ճանաշյան, Հայկական մանրանկարչություն, Վենետիկ, 1966, էջ 22—24։

տի հետ։ «Մլքե թագուհու ավետարանի» մանրանկարները, ընդգծված ձևով վերարտադրելով պատկերվող երևույթի զգայական-արտահայտչական կողմը, առավել գեղանկարչական են, ուստի շեշտը դրված է գունային հարաբերությունների վրա։ Այս առումով նրանք առնչվում են մի կողմից «էջմիածնի ավետարանի» վերջում ավելացրած VI—VII դարերին վերագրվող մանրանկարների, մյուս կողմից՝ վաղ միջնադարյան հայկական քանդակների հետ։

Ճշգրիտ թվագրված մյուս ձեռագիրը Վանանդի շրջանում Սահակ Վանանդացու ձեռքով գրված 887 թ. «Լազարյան ավետարանն» է, որի գեղարվեստական ձևավորումը սահմանափակվում է միայն պարզ, բայց ներդաշնակ հորինվածքով և ակնհաճո երանգներով կատարված խորաններով։

Գեղագիտական այլ սկզբունքներով նկարազարդված, սակայն արվեստով «Մլքեի ավետարանին» համարժեք ստեղծագործություններ են «էջմիածնի ավետարանի» 989 թ. կատարված հանրահայտ մանրանկարները[11]։

Գրչության վայրը Սյունիքն է, հավանաբար Բղենո-Նորավանքը, գրիչը՝ Հովհաննեսը։ Որմնանկարչության (Տաթև, Գնդեվանք) ու մանրանկարչության մեզ հասած նմուշները վկայում են, որ X դարում Սյունիքում, թերևս Տաթևի գլխավորությամբ, գոյություն է ունեցել գեղանկարչության ինքնատիպ դպրոց.

Տաթևը X դարում հայ մշակույթի խոշոր կենտրոններից էր։ Ստեփանոս Օրբելյանի վկայությամբ Տաթևի վանքն ուներ «...նաև արհեստաւորք նկարչացն և գրողացն անհամեմատք»։ Բազմաթիվ ձեռագիր մատյաններ են գրվում ու պատկերազարդվում Տաթևում և Սյունիքի մյուս վանքերում. դրանց շարքին պատկանող լավագույն գործերից է նաև 989 թվականի հոյակապ ձեռագիրը։ «էջմիածնի ավետարանի» նկարների ներդաշնակ կառուցվածքը. գույների բարձրաճաշակ համադրությունը, թեմաների պարզ ու վարպետ վերարտադրությունը, և, վերջապես, ընդգծված արտահայտչականությունը, հնարավորություն են տվել ուսումնասիրողներին այդ ձեռագիրը դասելու համաշխարհային արվեստի լավագույն հուշարձանների շարքը։

Ձեռագրում պահպանված 10 խորանները, երկու էջի վրա զույգ-զույգ պատկերված ավետարանիչները, Քրիստոսը՝ գահի վրա, առաքյալների (Պողոս, Պետրոս) հետ, Աստվածածինը մանուկ Հիսուսը գրկին և Աբրահամի զոհաբերությանը վերաբերող մանրանկարները ներկայացնում են որոշակի պատկերագրական հետաքրքրություն և նշանակալից են իրենց գեղարվեստական բարձր արժանիքներով։ Գրաֆիկական ոճով կատարված այս մանրանկարներն առաջին հերթին գրավում են գույների նուրբ զուգորդությամբ, որտեղ թարմությունը չկորցրած վառ վարդագույնը, կանաչի ու շագանակագույնի մեղմ երանգները, ոսկու զուսպ օգտագործումը՝ կաթնագույն բարձրորակ մագաղաթի ֆոնի վրա, մանրանկարներին առանձնակի ներդաշնակություն և հմայք են հաղորդում։ Ոճավորված ծանրաշուք, բայց ծավալայնությունից զուրկ պատկերների անշարժ՝ դիմահայաց դիրքը մանրանկարները

---

11 Ստրժիգովսկի, էջմիածնի ավետարանը (հայերեն թարգմանությունը), Վիեննա, 1892, *S. Der Nersesian,* The date of the initiale miniatures of the Etchmiadzin Gospel, Art Bulletin, v. XV, № 4.

դարձնում են առանձնակի խստաշունչ և հանդիսավոր։ Ոճական առումով տարբերվելով «Մլքե թագուհու ավետարանի» և նույն ձեռագրի վերջից կցված մանրանկարներից, այս նկարներն անհամեմատ գրաֆիկական են։ Մարդկային ֆիգուրներին, հատկապես նրանց դեմքերին, հատուկ է պարզ ոճավորվածությունը։ Բացառելով որևէ ռեալականություն «էջմիածնի ավետարանի» վարպետը առաջնային է դարձնում դեկորատիվ գծային տարրը։

«Մլքե թագուհու ավետարանի» և «էջմիածնի ավետարանի» գեղարվեստական ձևավորումը հանդիսացավ IX—X դարերի հայկական մանրանկարչության բարձրակետը։ Դրանք, ինչպես և պահպանված մի շարք պատառիկներ ու Վենետիկի Մխիթարյանների 966 թ. ձեռագիրը վկայում են արդեն ձևակերպված գեղարվեստական ամբողջական սկզբունքների մասին, որոնք, բնականաբար, պետք է զարգացման երկար ընթացք ունենային նախորդ շրջանում։ Բացի այդ, դրանք ցույց են տալիս, որ մանրանկարչությունն իր ամբողջության մեջ հանդիսացել է հայ միջնադարյան գեղարվեստական մտածողության լավագույն դրսևորումը։ Միևնույն ժամանակ IX—X դարերի մանրանկարները ուրվագծում են հայկական մանրանկարչության հետագա ընթացքը, կանխորոշելով զարգացման հիմնական երկու՝ գեղանկարչական և գծանկարչական ուղղությունները։ Այսպես, եթե «Մլքե թագուհու ավետարանի» մանրանկարների վարպետը՝ մարդու և ընդհանրապես ռեալ իրականության նկատմամբ եղած միջնադարյան-սպիրիտուալիստական պատկերացումները վերարտադրում է առավելապես գեղանկարչական ձևերով՝ շեշտը դնելով թանձր գունային հարաբերությունների վրա, ապա «էջմիածնի ավետարանի» մանրանկարիչը բնական ձևերը վեր է ածում գծա-ստվերային ու գրաֆիկական ոճավորման։

Ավելի շատ ձեռագրեր են պահպանվել XI դարից, որոնք երևան բերելով պատկերագրական, ոճական նկատելի բազմազանություն[12], այդուհանդերձ նշանավորում են հայկական մանրանկարչությանը բնորոշ ոճական ու գեղագիտական սկզբունքների զարգացման վերը նշված երկու հիմնական ուղին։ Դրանցից մեկը՝ գծանկարչականը հանդիսանալով ժողովրդական ստեղծագործության ցայտուն դրսևորումը, մոնումենտալ պատկերաձևի մեջ ընդգծում է դեկորատիվ ու գծային տարրը՝ առաջնային դարձնելով պատկերված երևույթի զգայական-արտահայտչական կողմը։ Այս ուղղության ներկայացուցիչները հնավանդ սովորույթների նկատմամբ հանդես բերելով որոշ պահպանողականություն, հաճախ են դուրս գալիս միջնադարյան դոգմատիկ մտածողության սահմաններից։ Այս հոսանքի հնագույն նմուշներից են 1018 թ. ձեռագրի մանրանկարները։ Նկարագրված ոճական սկզբունքներն ավելի ամբողջական ու կատարյալ ձևով են դրսևորվել Մատենադարանում պահպանվող 1038 թ. ավետարանի մանրանկարներում։

Ձեռագրում պահպանվել են խորաններ, ամբողջ հասակով կանգնած ավետարանիչներ, Քրիստոսի կյանքը պատկերող տերունական պատկերներ («Հիսուսի ծնունդը և մոգերի երկրպագությունը», «Խորհրդավոր ընթրիք», «Խաչելություն», «Յուղաբեր կանայք»). Առաջին հայացքից այս ման-

12 Տե՛ս Л. А. Дурново, Краткая история древнеармянской живописи, стр. 19—25.

*րանկարների ոճը կարող է պարզունակ ու անարվեստ թվալ։ Սակայն որոշակի միտումով հեռանալով ռեալ իրականությունից, իսպառ բացառելով միջավայրը, մարդկային մարմնի և առանձին առարկաների բնական ձևերը, մանրանկարիչը նպատակ է դրել ընդգծել թեմայի գաղափարական իմաստը, դրա կրոնա-բարոյախոսական ու կրոնա-ասկետական ըմբռնումները։ Այդ նպատակին վարպետը հասել է արտահայտչական միջոցների չափազանց*



Մանրանկար, «Էջմիածնի ավետարան»-ից

*ինքնատիպ հնարանքներով։ Թեթև ու զուսպ գույներով շեշտված գծապատկերը, մանրանկարին հաղորդելով գրաֆիկական բնույթ, հորինվածքի մոնումենտալության ու ռիթմիկ կառուցվածքի հետ միասին շեշտում է պատկերի ներգործական ուժը։ Դեռ X դարից եկող գեղարվեստական այս հոսանքը («Էջմիածնի ավետարանի» սկզբի մանրանկարները) հետագա դարերում բավականին կայունություն է ցուցաբերում, լավագույն արտահայտությունը գտնելով Վանի կամ Վասպուրականի մանրանկարչական դպրոցում։*

Պետականության ամրապնդման, աշխարհիկ ու վանական խոշոր հողատիրության զարգացման վանքային խոշոր միավորումների ձևավորման, ինչպես իշխանների տիրույթը կազմող (սենիորիալ) քաղաքների առկայության պայմաններում ազնվական և հոգևորական վերնախավի առաջադրած գաղափարներն ու գեղագիտական պահանջներն այն նախադրյալներն էին, որոնց հիման վրա զարգացավ ձեռագրերի նկարազարդման գեղանկարչական ուղղությունը, որն աչքի էր ընկնում նկարի գունագեղությամբ։ Ոճական առումով այս ուղղությունը առնչվում է «Էջմիածնի ավետարանի» վերջին VI—VII դարերի թերթերի և «Մլքե թագուհու ավետարանի» մանրանկարների հետ, ավելի խորացնելով ու զարգացնելով նրանց բնորոշ գծերը։

Այդպիսին էր XI դարի երկրորդ կեսին Անիում ու նրա շրջապատի վանքերի գրչատներում ձևակերպված ինքնատիպ մանրանկարչական դպրոցը, որին հնարավոր է վերագրել մի քանի ձեռագիր։ Դրանցից նշանավորներն են 1053 թ. ավետարանը (Մատենադարան, № 3794) և հատկապես «Մուղնու ավետարանը» (Մատենադարան, № 7736)։ Այս ձեռագրերի հարդարանքում, մասնավորապես խորանների ձևավորման մեջ, զգացվում է դեկորատիվ տարրի ուժեղացում և զարդապատկերների բազմազանություն։ Մանրանկարչի երևակայությունը զարդամոտիվների բարդ կապակցությունների մեջ ստեղծում է հավասարակշռված ճոխ և ներդաշնակ հորինվածքներ, որոնք թանձր գույների և հակադիր երանգների համադրությամբ արտակարգ շքեղություն են հաղորդում ձեռագրին։ Ճոխ են զարդարված նաև տիտղոսաթերթերը։

«Մուղնու ավետարանը» հավանաբար գրվել և պատկերազարդվել է Սանդղըկավանքում։ Ձեռագրում պահպանվել են խորաններ և ավետարանիչների ու Քրիստոսի կյանքը ներկայացնող բավականին ընդարձակ պատկերագրական մի շարք։ Այս մանրանկարներին բնորոշ է մոնումենտալությունը։ Ընդհանուր կապույտ ֆոնն ու կատարողական որոշ առանձնահատկություններն ընդգծում են մանրանկարների որմնանկարային բնույթը։ Եվ եթե 1038 թ. ձեռագրի մանրանկարիչ վարպետը վերանալով իրականից, առաջնայինը դարձնում է պատկերվող երևույթի գաղափարական ու հոգեբանական կողմը, ապա «Մուղնու ավետարանի» մանրանկարչի համար կարևորը նյութի ճարտար վերարտադրությունն է։ Վարպետը մնալով պատկերագրության կանոնիկ հորինվածքի սահմաններում, ցուցաբերում է իր ծանոթությունը մասնավորապես բյուզանդական մանրանկարչությանը։ Սակայն մանրանկարների ընդհանուր ոճը, կատարման եղանակը տեղական սովորույթների պահպանման լավագույն դրսևորումներից են, որտեղ անշարժ ու իրենց ձևերի մեջ մոնումենտալ կերպարները պատկերված են որոշակի միջավայրում։ Մանրանկարների հարստության ու կատարման վարպետության առումով «Մուղնու ավետարանը» նշանավորում է ժամանակի գեղարվեստական մտածողության բարձր նվաճումները։

Հայաստանը Բագրատունյաց թագավորության շրջանում հարևան երկրների, մասնավորապես Բյուզանդիայի հետ ուներ մշակութային սերտ շփումներ։ Բացի այդ, բուն Հայաստանից դեպի արևմուտք սկսված գաղթի հետևանքով Բյուզանդական կայսրության արևելյան շրջաններում գոյացել էին

հայկական գաղութներ, որտեղ կազմակերպվում էին մշակութային կենտրոններ, գրվում ու պատկերազարդվում էին ձեռագրեր։ Այդպիսի կենտրոն է հանդիսացել Սեբաստիան, ուր XI դարի սկզբներին հաստատվել էին Վասպուրականի Արծրունիները։ Կան փաստեր, որ հայ վարպետներն աշխատել են նաև Կոստանդնուպոլսում, ձևավորել են հունական ձեռագրեր։ Այսպես,



Մանրանկար «Մուղնու» ավետարանից

909 թ. ոմն Թութայել այնտեղ արտագրում ու պատկերազարդում է այսպես կոչված «ծիրանագույն ձեռագիր»-ը (пурпурный кодекс)։ Հայ վարպետներ են աշխատել նաև Ադրիանապոլսում, Ալեքսանդրիայում և այլուր։ Այսպիսի պայմաններում բնականաբար ծնվել են բյուզանդական արվեստի հետ որոշ

առնչակցություն ունեցող հայկական մանրանկարչության նոր գործեր։ Դրանցից հնագույնը 1007 թ. ավետարանն է (Վենետիկ, ս. Ղազար), գրված Ադրիանապոլսում Կիրակոս գրչի ձեռքով՝ կայսերական պաշտոնյա Հովհան Պրոքսիմոսի համար։ Ձեռագրում պահպանվել են խորանները, Աստվածամայրը՝ Հիսուս մանկան հետ գահի վրա ու Հովհաննես ավետարանչի պատկերը, որն ավետարան է նվիրում Տիրամորը։ Ապա զույգ-զույգ կանգնած դիրքով պատկերված են ավետարանիչները։ Մանրանկարների վրա կան հունարեն մակագրություններ։ Այս ձեռագիրը, կրելով բյուզանդական արվեստի ազդեցությունը, միաժամանակ աչքի է ընկնում հայ մանրանկարչությանը հատուկ՝ ավետարանիչների ծանր ու մոնումենտալ պատկերներով, նրանց տեղադրությամբ՝ ձեռագրի սկզբում, խորանների կառուցման եղանակով և բնույթով։

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում Երուսաղեմի ս. Հակոբյանց վանքում պահպանվող «Կարսի ավետարանի» մանրանկարները։ Ձեռագիրը գրվել և պատկերազարդվել է Կարսի թագավոր Գագիկի համար, հավանաբար այն ժամանակ, երբ նա կորցնելով իր թագավորությունը, ապաստան էր գտել Բյուզանդիայում (1065—1081)։ Հարուստ պատկերազարդված այս ձեռագիրը XI դարի հայկական մանրանկարչության ամենահետաքրքիր հուշարձաններից մեկն է։ «Կարսի ավետարանի» մանրանկարները ցույց են տալիս, որ դրանց ծաղկողը լավ ծանոթ է եղել և ազատ օգտագործել է բյուզանդական մանրանկարչության բնորոշ ձևերն ու կանոնները։ Այստեղ բախվում են երկու տարբեր ոճական սկզբունքներ։ Մի կողմից XI դարի բյուզանդական մանրանկարչության նրբագեղ ոճը՝ փոքր, թեթև ֆիգուրներով, գույների նուրբ համադրությամբ, մյուս կողմից՝ արևելյան՝ հայկական ձեռագրերին բնորոշ մոնումենտալ ոճը՝ մեծադիր ֆիգուրներով ու պարզ լոկալ գույներով։ Երբեմն էլ հայկական և բյուզանդական ձևերը պարզապես ձուլվում են։

Նշված ձեռագրերին մոտ է նաև «Տրապիզոնի ավետարանը» (Վենետիկ, ս. Ղազար)։

## 4. ԿԻՐԱՌԱԿԱՆ ԱՐՎԵՍՏ

Քաղաքներում ծաղկող արհեստները պայմաններ ստեղծեցին նաև կիրառական արվեստի բազմաթիվ ու բազմազան հուշարձանների առաջացման համար։

Ինչպես տեսանք, քարգործ վարպետները քարի վրա կատարված շքեղ քանդակներով հարդարում էին շենքերի տարբեր մանրամասները, խաչքարերը, սակայն քանդակներ և փորագրություններ արվում էին նաև փայտի վրա։ Սևանի IX դարի եկեղեցու երկու խոյակները փայտի գեղագիտական փորագրության կատարյալ նմուշներ են։ Դրանք համադրում են բուսական, երկրաչափական զարդաձևերը թռչունների պատկերների հետ։ Հորինվածքի կենտրոնում քանդակված է պտղաբերող ծաղկի կամ բողբոջի կտրվածքը, որի երկու կողմերում տեղադրված է մեկական աղավնի։ Քանդակներն աչքի են ընկնում բարձր արվեստով և նրբաշխատությամբ։

Քարի փորագրության բարձրարվեստ նմուշներ են նաև մեզ հասած միջնադարյան գրակալները, որոնք, ըստ տեղեկությունների, ծագում են Անի մայրաքաղաքից։ Դրանցից մեկի վերին մասում վարպետ ձեռքով փորագրված են թռչուններ, հնատիպ խաչ, իսկ կենտրոնական մասում՝ երեք կամար և այլ զարդաձևեր։ Իրենց ոճական առանձնահատկություններով այս գրակալի քանդակները մասամբ մերձենում են Սևանի խոյակների արվեստին։



Գրակալ, Անի



Հավուց թառի «Ամենափրկիչը»

Քարի փորագրության միանգամայն ինքնատիպ գործ է Հավուց Թառի «Ամենափրկիչը»։ Դա Քրիստոսի խաչելության պատկերն է՝ ցայտուն և արտահայտիչ բարձրաքանդակներով, որի հորինվածքը որոշ չափով տարբերվում է խաչելության նույնատիպ պատկերներից և քանդակներից։ Այն ստեղծվել է ոչ ուշ, քան XI դարը։

Շինարար և քանդակագործ վարպետները IX—X դարերում իրենց կառուցած շենքերը ներսից զարդարում էին նաև ռելիեֆավոր և գիպսե փորագիր զարդերով։

Կիրառական արվեստի մեջ կարևոր տեղ են գրավել մետաղե իրերն ու առարկաները։ Մետաղների գեղարվեստական մշակման համար վարպետնե-

րը գործադրում էին տարբեր եղանակներ և հնարանքներ՝ ձուլում, կռում, կոփում, դրվագում, դրոշմազարդում, փորագրում և այլն։

Ոսկերիչներն ու արծաթագործները ոսկյա և արծաթյա թելերով հյուսածո իրեր էին պատրաստում կամ ոսկյա իրերի վրա մեծ թվով մանրիկ գնդիկներ էին փակցնում, թանկարժեք քարեր, ակնեղեն ագուցում, արծաթը ոսկեզօծում կամ սևացնելով զարդարում (սևագում). երբեմն էլ իրերը պատրաստվում էին տարբեր մետաղների համաձուլվածքից։

Ժամանակի մետաղե գեղարվեստական իրերի մեջ մի ինքնատիպ գործ է Աշոտ Երկաթին վերագրվող երկաթե խաչը։ Զույգ գնդիկներով վերջացող թևերով, ուղղահայաց թևերի փոքր-ինչ ձգվածությամբ այս խաչը բնորոշ է IX—X դարերին։ Խաչի թևերի ծայրերին և նրանց հատման կենտրոնում ագուցված են եղել թանկարժեք քարեր։ Ստորին թևի խնձորակից ներքև խաչն ունի խողովակաձև կոթառ, որի օգնությամբ այն ագուցվել է փայտյա երկար կոթի վրա և տարվել է զորքի առջևից իբրև ռազմական զինանշան՝ խաչվառ (խաչադրոշ), օտար թշնամիների դեմ մարտնչող հայ զորականներին ոգևորելու համար[13]։

Կիրառական արվեստի նշանավոր գործերից են Անիում գտնված պղնձե կամ բրոնզե կանթեղներն ու բուրվառները։ Կաղապարների մեջ ձուլված այս առարկաներն իրենց վրա ունեն բարձրադիր պատկերներ և ամբողջական այնպիսի տեսարաններ, ինչպես՝ Քրիստոսի ծնունդը, մկրտությունը, խաչելությունը, հարությունը, Քրիստոսը գահի վրա և այլն։ Տեսարաններում երբեմն ներկա են կանայք՝ ազգային զգեստներով և զինվորներ։

Ունևոր դասերի դղյակներում, պալատներում, տներում, ինչպես և վանքերում եկեղեցիներում լայնորեն օգտագործվում էին ամեն տեսակի ճրագներ, աշտանակներ և ջահեր, որոնք հաճախ ձևավորվում էին բարձր ճաշակով։

Անիում Գագիկ արքայի կառուցած տաճարի պեղումների ժամանակ գտնվել են պղնձե երկու ջահ՝ մեկը մեծ, մյուսը՝ փոքր։ Փոքր ջահը պատրաստված է պղնձե թիթեղներից և զարդարված է դրվագումով։ Ունեցել է լույսի 16 կետ։ Մեծ ջահը կախված է եղել տաճարի գմբեթից 20 մետրանոց շղթայով և ունեցել է լույսի 117 կետ։ Այս ջահի վրա համադրված են առասպելական էակների, արծիվների, ինչպես նաև ջահի շուրջը, կարծես օդում ճախրող աղավնիների բազմաթիվ պատկերներ[14]։ Ջահը վառվելիս մեծ շքեղություն էր հաղորդում տաճարին ոչ միայն իր զարդերով, այլև գունզգույն ապակուց պատրաստված 117 թասերով, որոնք ձիթաճրագների դեր էին կատարում։

Սանահնի վանքին վերաբերող ձեռագիր մատյանում (Քոթուկ) տեղեկություն է պահպանվել այդ վանքի Կաթողիկե և Աստվածածին եկեղեցիներին Տաշիր-Ձորագետի թագավոր Գուրգենի նվիրած երկու ջահերի

13 Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, հատ. I, էջ 137։

14 Տե՛ս И. А. Орбели, Каталог Анийского Музея древностей, стр. 39—40. Նույնը տե՛ս И. А. Орбели, Избранные труды, стр. 47—49.



Բրոնզե բուրվառ, Անի



Բրոնզե կանթեղ մոգերի երկրպագության և այլ պատկերներով

մասին։ Դրանցից մեկն ուներ լույսի 112 կետ և ճարեգակի պես լուսավորում էր Կաթողիկե եկեղեցին, իսկ մյուսն ուներ լույսի 40 կետ և լուսավորում էր Աստվածածին եկեղեցին՝ ճբերելով զնմանութիւն լուսնի»[15]։

Կրոնական հաստատություններին նյութական և գեղարվեստական մեծ արժեք ներկայացնող իրերի նվիրատվությունը հնից եկող սովորություն էր, որն ավելի մեծ չափերի էր հասնում, երբ երկիրն ապրում էր տնտեսական և մշակութային վերելք։ Սյունյաց Գրիգոր Սուփան իշխանը 901 թ. Մաքենացոց վանքին նվիրել է բազմազան թանկագին իրեր և այդ առթիվ ասում է. վանքը «անխնայաբար զարդարեցի պատուական սպասուք»[15]։



Պղնձե ջահ, Անի

Սյունյաց Սոփիա տիկինը 936 թ. Գնդեվանքին նվիրել է մեծածախ սպասներ, իսկ Խաչիկ կաթողիկոսը (973—992) Արգինայի վանքը զարդարել է ծիրանածաղիկ, ոսկեթել գործվածքներով, ոսկյա և արծաթյա անոթներով ու ջահերով[17]։ Բագրատունյաց Կատրանիդե թագուհին, ավարտելով Անիի մայր տաճարի շինությունը, այն ճոխացրեց ճնկարագործ անկուածոց, ար-

15 Մատենադարան, ձեռագիր № 3131, էջ 26ա—27ա։

16 «Վիմական տարեգիր», էջ 5։

17 Տե՛ս Ստեփաննոս Տարոնեցի, էջ 185։



Ոսկե մանյակ. Դվին.



Արծաթե մասնատուփ, Էջմիածին

ծաթեղէն և ոսկեղէն անօթոց և բազմապայծառ լուսատու անօթոց վայելչութեամբ, որովք ջահանայր ըստ երկնային կամարին կաթողիկէն...»[18]։

Վանքերին և եկեղեցիներին նվիրում էին նաև թանկագին քարերով ընդելուզված ոսկյա խաչեր, մասունքի տուփեր և այլ առարկաներ։ IX—XI դարերի այդպիսի մի տուփ, որի վրա դրվագված են բազմաթիվ սրբապատկերներ, պահվում է Էջմիածնի վանքի թանգարանում։ Իրենց շքեղությամբ արվեստի նշանավոր գործեր են Դվինում գտնված ոսկյա մանյակը և ապարանջանները, որոնք պատրաստված են ձուլման, թելերով հյուսելու, դրվագելու, ինչպես և մանրիկ հատիկներով զարդարելու եղանակներով։ Դրանք ցույց են տալիս, թե ինչպիսի բարձր մակարդակի էր հասել ոսկերչական արվեստը IX—XI դարերում[19]։

Կիրառական արվեստի մի հնագույն բնագավառ ևս կար, դա խեցեգործությունն էր։ Սովորական, առանց ջնարակի կամ հասարակ խեցեղեն անոթներին տրվում էր գեղեցիկ ձև, տարբեր գույն ու երանգ, արտաքին մակերեսը փայլեցվում էր։ Հաճախ անոթները զարդարում էին գծագիր, փորագիր, վերադիր զարդերով։ Նոր երևույթ էր կավանոթների դրոշմազարդումը՝ թաց կավի վրա դրոշմ դնելու եղանակով։ Տարբեր ձևերով զարդարված անոթներ շատ են գտնվել Դվինի և Անիի պեղումների ժամանակ։

IX դարից սկսած բացվեց գեղարվեստական խեցեգործության մի նոր և անհամեմատ ավելի լայն ու նշանավոր ասպարեզ։ Դա ջնարակած՝ թափանցիկ ապակենման շերտով (գլազուրով) պատած խեցեղենի արտադրությունն էր։ Խեցեգործ վարպետներն օգտագործելով երկաթի, պղնձի, մարգանեցի, կապարի, ցինկի և այլ տեսակի թթվուկներ (օքսիդներ), ինչպես նաև կոբալտ և այլ նյութեր, արտադրում էին բազմազան գույնի ու երանգների գեղարվեստական խեցեղեն։ Գունավոր զարդերը հաճախ զուգորդվում էին գծագիր, փորագիր, վերադիր և այլ հնարանքներով կատարվող զարդերի հետ։

Զարդաձևերից սիրված էին վարդյակները, բուսական և երկրաչափական զարդերը, ինչպես և մարդկանց, կենդանիների ու թռչունների պատկերները, որոնք IX—XI դարերում աչքի էին ընկնում իրենց պարզ ձևերով և գեղարվեստական արտահայտչականությամբ։ Նման բարձրարվեստ գործերի բազմաթիվ օրինակներ գտնվել են Անիում[20] և Դվինում[21]։

Հախճապակյա թասերը, բացի կաթնավուն-սպիտակ ջնարակից, ծածկվում էին նաև կապույտ, փիրուզագույն և մանուշակագույն ջնարակներով, գծազարդերով և պատկերներով։ Մեծ խնամքով և բարձր արվեստով զարդարված հախճապակյա շքեղ անոթները, որոնք նկատելիորեն փոխարինում էին ազնիվ մետաղներից պատրաստված սպասքին, գործածական էին բարձր դասերի կենցաղում և պետք է փոհացում տային նրանց գեղարվեստական ճաշակին։

Գեղարվեստական ձևավորում ունեցող իրեր և առարկաներ պատրաստ-

---

18 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 256։

19 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 172—178։

20 Տե՛ս Б. А. Шелковников, Поливная керамика из раскопок города Ани, Ереван, 1957.

21 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 182 և հետ։

վում էին նաև ապակուց[22]։ Ապակու հալվող զանգվածին՝ մետաղի թթվուկներ ավելացնելով, կարելի էր տարբեր գույնի և երանգի ապակյա գեղատեսիլ իրեր պատրաստել, որոնք երբեմն լրացուցիչ զարդարվում էին փորագրությամբ և այլ եղանակներով։ Ապակեղեն զարդերից լայն տարածում ունեին տարբեր գույնի ու երանգի ապարանջանները և ուլունքները։

Կիրառական արվեստը զարգացման ընդարձակ հող էր գտնում նաև գործվածքների և գորգերի արտադրության բնագավառում։ Թելերը տարբեր գույներով ու երանգներով ներկելով, ոսկյա և արծաթյա թելեր օգտագործելով, միջնադարյան Հայաստանի ոստայնանկ վարպետները կամ ջուլհակները հյուսում էին ամեն տեսակի երկրաչափական, բուսական զարդերով, կենդանիների և թռչունների պատկերներով գործվածքներ։



Հախճապակե թաս ծակոտկեն զարդերով. Անի

Հայաստանում արտադրվում էին դիպակ կոչվող գործվածքներ, որոնք գրականության մեջ որակված են ոսկեթել, ոսկեթեզան, ոսկեճամուկ, ոսկեհուռ, ոսկեկար, ոսկենկար, արծաթաթել, ծաղկանկար ածականներով։

Հայ, մանավանդ արաբական մատենագիրները մեծ դրվատանքով են խոսում հայկական գործվածքների և գորգերի մասին։ Հայկական աղբյուրներում գորգերը կոչվել են «բազմական», «արկանելի»։

X դարի սկզբին հայոց Սմբատ Ա թագավորը, հաշտություն կնքելով Ատրպատականի Սաջյան ամիրա Յուսուֆի հետ, նվերներ է ստանում նրանից և

22 Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, հատ. I, էջ 256 և հետ։

ինքն էլ նվիրում է «երևելի զարդս հանդերձանաց և նկարակերտ կազմուածս ձազմակմանաց կարմրութեամբ որդանց, և ըմբակս և նուագս...»[23]:

Մի այլ անգամ նույն Սմբատ Բագրատունու «արքայական թանգարաններից» և կաթողիկոսարանից նվեր են տարվում այլևայլ իրերի հետ միասին նաև «երևելի ոսկեճամուկ զգեստներ» գեղանի կանանց գործած «բազմականներ», շքեղ սփռոցներ, ծածկոցներ[24]:

Գրիգոր Մագիստրոսը գրվատում է ճախարակի նրբաքաշ թելերից քանոնի հարթությամբ ծիրանի գործվածքներ և ժանյակներ հյուսելու արվեստը, դասելով այն ոսկե խույրեր պատրաստելու արհեստի շարքը[25]:

Արաբ մատենագիրներ ալ-Իսթախրին[26], Իբն-Հաուկալը, Յակուբին մեծ գովեստներ են շռայլում հայկական գործվածքների, մասնավորապես որդան կարմրով ներկվող ծաղկազարդ գործվածքների, բազմոցների, ծածկոցների, գոտիների, մետաքսե նուրբ շղարշների մասին, որոնց նմանը Իբն-Հաուկալի ասելով, աշխարհի մի ծայրից մյուսն էլ անցնես չես գտնի[27]:

Զգեստները, ծածկոցները, բարձերի երեսները և գործվածքներից պատրաստված այլ առարկաները հաճախ զարդարվում էին ձեռագործ նախշերով ու պատկերներով:

Հայկական նրբերանգ և նկարազարդ գորգերը միջին դարերում մեծ համբավ են վայելել և արտահանվել են Արաբական խալիֆայության և Բյուզանդական կայսրության երկրները և Իրան[28]:

Կիրառական արվեստի բնագավառ էր դարձել նաև գրքերի կազմերի ձևավորումը: Ոսկյա և արծաթյա կազմերը կամ կազմերի վրա մետաղի զարդեր փակցնելը սովորական երևույթ էր: Սակայն կազմարար վարպետները մեծ հմտությամբ զարդարել են նաև գրքերի կաշվե կազմերը: Գծագրելու, ճնշումով դրոշմելու եղանակներով նրանք ստացել են հնարամիտ ու բարձրարվեստ զարդեր:

Սովորական էր նաև փորագրությունը ոսկորի վրա: Մի խոսքով, միջնադարյան Հայաստանի բնակչությունը, մանավանդ քաղաքային արհեստավորներն իրենց արտադրած իրերն ու առարկաները, գործվածքներն ու գորգերը զարդարում էին տարատեսակ պատկերներով, բուսական ու երկրաչափական զարդերով, որոնք ունեին ոչ միայն դեկորատիվ նշանակություն, այլև խոր իմաստ, դրսևորելով նրանց պատկերացումներն ու ըմբռնումները և բավականաչափ նուրբ ճաշակը:

---

23 Հովհաննես Դրասխանակերտցի, էջ 258:
24 Տե՛ս նույն տեղում, էջ 265:
25 Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 254:
26 Տե՛ս СМОМПК, вып. XXIX, стр. 19.
27 Նույն ժողովածու, պրակ 38, էջ 92:
28 Տե՛ս *В. В. Бартольд*, Историко-географический обзор Ирана. стр. 162.

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ

## 1. ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Անին գրավելուց և Բագրատունյաց կենտրոնական թագավորությունը վերացնելուց էլ առաջ, դեռևս Վասիլ Բ կայսեր իշխանության վերջում, Հայաստանի զգալի մասն արդեն գտնվում էր Բյուզանդական կայսրության տիրապետության ներքո։ Ամբողջ Արևմտյան և Հարավային Հայաստանը (նաև Տայքը) վերածվեց բյուզանդական նահանգի։ Նվաճված շրջանները Բյուզանդական կայսրությունը կառավարում էր իր զինվորական բարձրաստիճան պաշտոնյաների միջոցով, որոնք դուքս կամ կատապան էին կոչվում։ Ամենակարևոր կատապանությունը Վասպուրականն էր՝ Վասպրականիան կամ Ասպրականիան (Βασπρακανία, 'Ασπρακανία), որի կազմի մեջ էին մտնում նաև Վանա լճի հյուսիսային մասերը (Մանազկերտը, Արճեշը, Բերկրին)[1], իսկ կենտրոնն էր Վան քաղաքը։ Վասպուրականի կատապանը հայկական աղբյուրներում կոչվում է «տէր գաւառին Վասպուրականի», «գաւառակալ», «գաւառապետ», «կողմնակալ», «կողմնապահ» և այլն։

Կայսրությունը Վասպուրականին շատ մեծ նշանակություն էր տալիս և այդ էր պատճառը, որ այնտեղ որպես կառավարիչ ուղարկվում էին կայսրության նշանավոր զինվորականները։ Կայսրությունը Վասպուրականում կուտակում էր մեծաքանակ զորամասեր, բյուզանդական տիրապետությունն այնտեղ ամրապնդելու և Բագրատունյաց կենտրոնական թագավորությունը նվաճելու նպատակով[2]։

---

1 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, էջ 209։

2 Մոգլենա (Բուլղարիա) ամրոցի գրավումից հետո, բուլղար ռազմագերիներին՝ «բոլոր նրանց, ովքեր կարող էին զենք կրել», Վասիլ Բ կայսրը ուղարկեց Վասպուրական։ Տե՛ս Georgius Cedrenus, t. II, p. 462. Վասպուրականում էին կուտակվել նաև «ռուսական զորքեր» ('Ρῶς)՝ որոնք բյուզանդացիների հետ կռվում էին Բերկրիի արաբ ամիրայության դեմ։ Տե՛ս նույն տեղում, էջ 503։

Բյուզանդիան Վասպուրականին հեշտությամբ չտիրեց։ Սենեքերիմ Արծրունու Սեբաստիա տեղափոխվելով դեռևս Վասպուրականը կատարելապես նվաճված չէր։ Տեղացի հայ ազգաբնակչությունը, հայկական մանր իշխանությունները և մահմեդական ամիրայությունները դիմադրություն էին ցույց տալիս բյուզանդական նվաճողներին։ Վասպուրականի առաջին կատապան Վասիլ Արգիրոսը (1022—1023) շուտով պաշտոնանկ եղավ՝ իրեն չարդարացնելու պատճառով[3]։ Նրան հաջորդած Նիկեփոր Կոմնենոսը (1023—1026) փորձում է ամբողջ Վասպուրականը հպատակեցնել «Մ՛ համոզելով, Մ՛ բռնությամբ»[4]։ Նա դժվարին պայքար մղեց Վասպուրականի և Ապահունիքի մահմեդական ամիրայությունների դեմ, որոնք տիրում էին Մանազկերտին, Արճեշին և Բերկրիին։ «Սա,— գրում է Արիստակես Լաստիվերտցին Նիկեփոր Կոմնենոսի մասին,— մեծամեծ գործս արութեան ցուցեալ ի դուռն Պարսից, և եղև անուանի յամենայն արևելս»[5]։ Նիկեփոր Կոմնենոսին հաջողվում է նվաճել Արճեշը[6]։

Նիկեփոր Կոմնենոսը Վասիլ Բ կայսեր մահից հետո ձերբակալվում է և որպես դավադիր կուրացվում Վասիլի հաջորդ Կոստանդին կայսեր կողմից։

Նիկեփոր Կոմնենոսից հետո կայսրը Վասպուրականի կատապան է նշանակում ծագումով բուլղար Նիկոլայոս Խրիսելիոսին, որը երկար ժամանակ վատնեց կայտիկների ձեռքից Բերկրին գրավելու համար։ Ի վերջո նրան հաջողվում է ստիպել ամիրային այն զիջել կայսրությանը։

Տիրանալով Բերկրիին, կատապան Նիկոլայոսը, ամենայն հավանականությամբ, մտադիր էր շարունակել իր առաջխաղացումը և սկսել արդեն Շիրակի Բագրատունիներին պատկանող հողերի նվաճումը։ Բայց հայ ժողովուրդը մտադիր չէր առանց կռվի հանձնվելու, նա որոշեց դիմադրել Բյուզանդական կայսրության առաջխաղացմանը։

Բայց Բագրատունյաց կենտրոնական թագավորության հողերին ձեռք տալը վաղ էր։ Բյուզանդիան համոզվեց, որ դեռևս պետք է ամրանալ Վասպուրականում, քանի որ Վասպուրականը գրավելը դեռ նրան տիրել չէր նշանակում։ Բերկրիի մահմեդականները, որոնք մի փոքր առաջ պայմանների բերումով ստիպված էին իրենց տիրույթները զիջել կայսրությանը, շուտով ապստամբում են և կոտորում շուրջ վեց հազար բյուզանդական զինվորների։ Բերկրին նորից է անցնում մահմեդականների ձեռքը[7], Ռոմանոս կայսրը (1028—1034) պաշտոնանկ է անում Վասպուրականի կատապան Նիկոլայոս Խրիսելիոսին և նրա փոխարեն կատապան նշանակում Նիկետաս Պեգոնի-

---

[3] Տե՛ս Georgius Cedrenus, էջ 464։
[4] Նույն տեղում։
[5] Համմտ. Georgius Cedrenus, t. II, p. 481—482։ Արիստակես Լաստիվերտցի, էջ 40—41։
[6] Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 201։
[7] Արիստակես Լաստիվերտցի, էջ 48։

տեսին, որը բյուզանդական և ռուսական զորքերով պաշարում է Բերկրին և գրավում 1034 թ.[8]։

Ամրապնդելով իր դիրքերը Վասպուրականում և Տայքում, կայսրությունը դրանք դարձրեց հենարան՝ Անիի թագավորության դեմ և ապաստան՝ բոլոր նրանց համար, ովքեր բյուզանդասիրության պատճառով հալածվում էին Հյուսիսային Հայաստանում[9]։

Իբերիայի (Տայքի) դուքսը կամ կատապանը անվերջ ոտնձգություններ էր կատարում Բագրատունյաց պետության դեմ։ Եվ Անիի վրա հարձակվող ու Բագրատունիների պետության վերջ դնողը եղավ հենց Իբերիայի կատապան վեստ Միքայել Իասիտեսը։

Անիի գրավումից հետո Շիրակն ու Իբերիան կազմեցին մեկ կատապանություն, որի կառավարիչը սկսեց կոչվել «Հայաստանի և Իբերիայի կատապան» (Κατεπάνω Ἀρμενίας καὶ Ἰβηρίας)[10], կամ «Անիի և Իբերիայի կառավարիչ» (ὁτοῦ Ἀνίου καὶ τῆς Ἰβηρίας κατάρχων)[11] և ենթարկվում էր Արևելից զորավարին։ Կատապանության կենտրոնն էր Անի քաղաքը։

Հայաստանի առաջին կառավարիչը դարձավ Իբերիայի կատապան Միքայել Իասիտեսը, որն սկսեց կոչվել «Հայաստանի և Իբերիայի կատապան»։ Արիստակես Լաստիվերտցու տվյալներով «իշխան ոմն Ասիտ անուն, որ յառաջ կալեալ էր զտէրութիւնն արեւելից, և զնա առաքէ թագաւորն տեղակալ քաղաքին Անւոյ»[12]։

Բյուզանդական կայսրության համար Անին դարձավ այն հենակետը, որտեղից նա շարունակեց իր նվաճողական քաղաքականությունը այս անգամ դեպի Արարատյան դաշտը։ Նա կովի բռնվեց Դվինի ամիրա Աբու-լ-Ասվարի հետ, որը Գագիկ Բագրատունու դեմ մղած պայքարում իր նախկին դաշնակիցն էր։ Կայսրը, որպես Գագիկ թագավորի տիրույթների «ժառանգորդ», ամիրայից պահանջում էր Բագրատունյաց թագավորությունից խլած հողերը։ 1046 թ. Արևելից զորքերի սպարապետ Նիկոլայոսը և Անիի ու Իբերիայի կատապան Միքայել Իասիտեսը բազում զորքերով շարժվում են Դվին քաղաքի վրա, բայց չարաչար պարտության են մատնվում։ Այս մարտին մասնակցում

---

8 Տե՛ս Georgius Cedrenus, t. II, p. 502—503։ Լաստիվերտցին Բերկրիի գրավումը վերագրում է մի այլ կատապանի՝ Կավասիլասին։ Նա գրում է. «Յորոյ վերայ եկեալ Կաւասիլաս ոմն՝ որ Վասպուրականի գաւառապետն էր՝ բազում զօրու, էառ զքաղաքն և կացոյց զունդս հեծելոց պահապան քաղաքին։ Յայնժամ այլ ոմն փոխանորդեաց զիշխանութիւն նորա» (Արիստակես Լաստիվերտցի, էջ 48)։ Պատմիչի ասելով Բերկրիի գրավումը տեղի ունեցավ Միքայել Դ Պափլագոնացի կայսեր օրոք (1034—1041)։ Տե՛ս և Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 201։

9 Վասպուրականը որոշ ժամանակ ապաստան դարձավ նույնիսկ հայոց Պետրոս Գետադարձ կաթողիկոսի համար։

10 Այսպես է իրեն անվանում Հովհաննես Մոնաստիրիոտեսը 1059 թվակիր արձանագրության մեջ։ Տե՛ս *В. Н. Бенешевич*, Три анийские надписи из эпохи византийского владычества, Птрг., 1921. стр. 19. Կատակալոն Կեկավմենոսը, որին հայկական աղբյուրները անվանում են իշխան «տանն Հայոց» (Արիստակես Լաստիվերտցի, էջ 80), բյուզանդական աղբյուրներում հանդես է գալիս որպես δοῦξ Ἰβηρίας. Տե՛ս *Georgius Cedrenus*, t. II, p. 560.

11 *Georgius Cedrenus*, t. II, p. 574.

12 Արիստակես Լաստիվերտցի, էջ 63։

ևին նաև հայկական զորքերը՝ սպարապետ Վահրամ Պահլավունու գլխավորությամբ։ «Բազումք ի զօրացն Հոռոմոց անկան ի սուր և ի գերութիւն,— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— ընդ որ և մեծ սպարապետն Հայոց Վահրամ հանդերձ որդւովն իւրով Գրիգորիւ սպանաւ ի մեծ պատերազմին ի Դուին քաղաքին»[13]։

Կոստանդին Մոնոմախ կայսրը սպարապետ Նիկոլայոսին և կատապան Միքայել Իասիտեսին պաշտոնանկ է անում։ Իասիտեսի փոխարեն Անիի և Իբերիայի դուքս է նշանակվում հայազգի զորավար Կատակալոն Կեկավմենոսը (հայկական աղբյուրների Կամենասը)[14], իսկ Նիկոլայոսի փոխարեն Արևելից զորքերի հրամանատար է նշանակվում մեծ էտերիարխ սարակինոս Կոստանդինը[15]։ Նրանց վրա դրվեց Դվինի ամիրայի դեմ մղվելիք պայքարի ղեկավարությունը։

Բյուզանդական զորքերը 1047 թ. նորից են հարձակվում Աբու-լ-Ասվարի վրա և այս անգամ հասնում են որոշակի հաջողությունների։ Նրանք կարողանում են գրավել մի շարք բերդեր՝ Սուրմառին, Ամբերդը, Խորվիրապը, պաշարում են «Դվինի մոտ գտնվող» Ծիծեռնակաբերդը[16]։ Սակայն բյուզանդացիներին չի հաջողվում հարձակվել Դվինի վրա։ Բյուզանդիայում բռնկված Լևոն Թոռնիկի ապստամբության պատճառով Դվինի դեմ արշաված զորքը ետ է կանչվում Կոստանդնուպոլիս[17]։

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԸ «ՅՈՒՐԱՑՆԵԼՈՒ» ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՐԿԱՅԻՆ ՃՆՇՈՒՄԸ

Բյուզանդիան Հայաստանի նվաճած շրջաններում սկսեց գործադրել հայ տոհմիկ ազնվականությունը բուն երկրից հեռացնելու քաղաքականություն։ Շնորհելով բարձր պատվաստիճաններ և տիտղոսներ, ինչպես և լայնատարած կալվածներ կայսրության տարածքում, նա հաջողեցրեց աստիճանաբար Փոքր Ասիա և Բալկաններ տեղափոխել հայ ազնվականության մի ստվար բազմություն։ Այդ քաղաքականությունը Հայաստանում գործադրվում էր դեռևս Վասպուրականի և Շիրակի նվաճումից առաջ։ Ստեփանոս Ասողիկի վկայությամբ Վասիլ Բ իր թագավորության սկզբում «կամեցաւ յազգէն Հայոց, որ ընդ իւրով թագաւորութեամբն՝ անցուցանել ի Մակեդոնիա ընդդէմ Բուլղարացն, զի շինեսցեն զերկիրն։ Որ և տարեալ բնակեցոյց զյոլովս յաշխարհն այն»[18]։ Նման քաղաքականությունն ամենայն խստությամբ շա-

---

13 Մատթեոս Ուռհայեցի, էջ 98։ Համտ. Արիստակես Լաստիվերտցի, էջ 63։

14 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 63։

15 Այս Կոստանդինին, առանց անունը տալու, հիշատակում է Մատթեոս Ուռհայեցին. «զօրագլուխ զմեծ իշխանն Հոռոմոց որում՝ անուն ասէին Տելիարխ», Մատթեոս Ուռհայեցի, էջ 100։ Ուռհայեցին «էտերիարխ» զինվորական աստիճանը անուն է համարել։ Այդ մասին տե՛ս Հ. Բարթիկյան, Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ հանդիպող մի քանի բյուզանդական տերմինների մասին», «Լրաբեր», 1969, № 3, էջ 72 և հտ.։

16 Տե՛ս *Georgius Cedrenus*, t, II, p. 561.

17 Տե՛ս նույն տեղում։

18 Ստեփանոս Տարոնեցի, էջ 201։

րումակվեց նաև Տայքի գրավումից հետո։ Նույն կայսրը, Ասողիկի ասելով. «զամենայն բերդս և զամրոցս Տայոց նուաճեաց ընդ ձեռամբ իւրով, զհաւատարիմս կարգեալ ի նոսա, և զմնացեալ ազատսն Տայոց առեալ տարաւ ընդ ինքեան՝ բնակեցուցանել յաշխարհին Յունաց»[19]։

Այդ միջոցառումներն աղետալի էին ոչ միայն Հայաստանի համար։ Դրանով կայսրությունը թուլացնում էր իր արևելյան սահմանները՝ քոչվոր ցեղերի շուտով հանդես եկող հրոսակների առջև։ «Ելին իշխանքն ի հայրենի ժառանգութենէ իւրեանց,— ողբում է Արիստակես Լաստիվերտցին,— և եղեն պանդուխտ յօտար երկիր... աւերեցան գաւառք և գնացին յաւար տանն Յունաց։ Եղեն շինանիստ աւանք՝ բնակութիւն գազանաց, և անդաստանք նոցա՝ յարօտ երէոց։ Տունք ցանկալիք բարձրաձեղունք և մեծամեծք՝ եղեն բնակութիւնք համբարեաց և յուշկապարկաց»[20]։

Բյուզանդական կայսրությունը Հայաստանում թողնում էր միայն իրեն հավատարիմ ազնվականներին և միաժամանակ հենարան ստեղծելու համար աշխատում էր նվաճված շրջաններում մեծամեծ կալվածներ շնորհելով բնակեցնել բյուզանդական իշխանավորներին։ Դրանցից առավել նշանավոր էր Եվստաթիոս Բոյիլասը։

Բոյիլասը կապադովկացի էր։ Նա Տայքի շրջանում ստանում է բազմաթիվ գյուղեր և կալվածքներ, այդ թվում Կալմախը, Վարդան, Տանձուտը, Վժանը և ընտանյոք գալիս հաստատվում «այլ հավատք պաշտող և այլ լեզվով խոսող ժողովուրդների մեջ», որոնցից հիշատակում է միայն հայերին (հավանաբար, միաբնակ)։ Բոյիլասն ուներ բազմաթիվ ճորտեր ու ստրուկներ[21]։

Բյուզանդիայից Հայաստան գաղթած և հաստատված փոքրաթիվ բյուզանդացիները երկրի կյանքում չէին կարող որևէ էական դեր խաղալ, բայց Հայաստանից Բյուզանդիա (Փոքր Ասիա) գաղթած հայերի հոծ զանգվածները խաղացին այն կարևոր դերը, որ հայացրին բուն հայկական այն շրջանները (Փոքր Հայք), որոնք հռոմեական և բյուզանդական, ապա և արաբական երկարատև տիրապետության հետևանքով սկսել էին կորցնել իրենց ազգային դեմքն ու նկարագիրը։ Այդ գաղթեցումներով նախապայմաններ ստեղծվեցին նաև Կիլիկիայում հայ տարրի ուժեղացման համար։

Բյուզանդական զորքերի հետ միասին նվաճված Հայաստան մուտք էին գործում նաև բյուզանդական կարգերը։ Նվաճողները Հայաստանի վրա նայում էին որպես իրենց գաղութի և աշխատում էին հնարավորին չափ շատ օգուտներ քաղել այդ երկրից։ Շահագործման հիմնական միջոցը հարկային ծանր լուծն էր։ Բյուզանդական հարկահավաքները դիմում էին ամեն տեսակ ապօրինության՝ աշխատավոր բնակչությանը կեղեքելու համար։ Դեռևս 1018 թ. կայսրությունը Հայաստանի նվաճած արևմտյան շրջաններում մար-

---

19 Ստեփաննոս Տարոնեցի, էջ 278։

20 Արիստակես Լաստիվերտցի, էջ 55։

21 Մանրամասն տե՛ս Հ. Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059 թ.) որպես Հայաստանի և Վրաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուր, «Բանբեր Մատենադարանի», № 5, 1960, էջ 393 և հետո։

դահարկ է մտցնում։ Այդ առթիվ Արիստակես Լաստիվերտցին գրում է. «Իսկ ի չորեքհարիւր վաթսուն և եօթն ամի թուականիս մերոյ՝ առաքէ ինքնակալ թագաւորն զնիկոմիտացի իշխան ոմն, որ եկեալ մարդահարկ արկանէ յերկրիս»[22]։

Բյուզանդական պաշտոնյաների, հարկահավաքների ապօրինությունները առաջացնում էին աշխատավոր ժողովրդի արդարացի զայրույթը, որի հետ կայսրությունը պետք է որ հաշվի նստեր։ Դեպքերին ժամանակակից Կեկավմենոսը իր «Ստրատեգիկոն» աշխատության մեջ, որը բարի խորհուրդների մի ձեռնարկ է, առաջարկում է անհապաղ վերջ տալ բյուզանդական պաշտոնյաների ապօրինություններին՝ «հատկապես սահմանամերձ շրջաններում, ...որովհետև նման ապօրինությունները պատճառ դարձան բազում շրջանների կորստյան և թշնամու կողմն անցնելուն»[23]։ «Այսպիսի դեպքեր, —գրում է Կեկավմենոսը,— տեղի ունեցան հատկապես Կոստանդին Մոնոմախ կայսեր ժամանակ»։ Վերջինիս հրամանով Իբերիա և Միջագետք գնաց կայսեր գործակալներից մեկը՝ մարդահամար անցկացնելու և հարկեր նշանակելու համար։ Նա այնպիսի ծանր հարկեր նշանակեց, որ «այնտեղի բնակիչներն իրենց կյանքում չէին տեսել»։

Նույն գործակալի տխրահռչակ գործունեության մասին վկայում է նաև բյուզանդական մի ուրիշ պատմիչ՝ Սկիլիցեսը, հաղորդելով շատ ավելի արժեքավոր մանրամասնություններ։ Ըստ Սկիլիցեսի, Կոստանդին Մոնոմախ կայսրը, ընկնելով նյութական ծանր վիճակի մեջ, դրամ կորզելու համար «դիմեց ամեն տեսակ ապօրինի և անտեղի, հնարովի միջոցների։ Նա Լևոն Սերվլիասի միջոցով դեն ցրեց իբերական («Հայաստանի և Իբերիայի») զորքը, որ 50 հազար հոգուց էր բաղկացած և զորքի դիմաց այդ շրջաններից բազում դրամ հավաքեց։ Նա այլ բազում ստոր ու ապօրինի հարկեր հորինեց, որ ամոթ է ասել»[24]։

Տվյալ ժամանակաշրջանում Բյուզանդիայում շատ տարածված էր հարկերը կապալով տալը։ Որոշ մեծահարուստներ կամ զինվորական բարձրաստիճան գործիչներ, բանակաթեմերի զորավարներին մի գումար վճարելով, իրենց վրա էին վերցնում տվյալ շրջանի հարկերի հավաքման գործը։ Կեկավմենոսը նշում է, որ հարկերը հավաքելու գործը կապալով վերցնողը ստանում էր ոչ միայն իր ներդրած դրամագլուխը, այլև ձեռք էր բերում մեծ շահույթ, այդ իսկ պատճառով նա ատելի էր դառնում բոլորին[25]։

Բյուզանդական կայսրությունը Հայաստանից գանձում էր տարբեր հարկեր, սակայն աղբյուրներում հիշատակված են դրանցից միայն մի քանիսը։

Հյուսիսային Հայաստանում էլ հարկերը սկսեցին տալ կապալով։ Անի քաղաքը հիմնականում վճարում էր արհեստավորներից և առևտրականներից հավաքված հարկը։ Սկզբում դա ութ լիտր ոսկի էր (576 ոսկեդրամ), որ ուղ-

---

22 Արիստակես Լաստիվերտցի, էջ 28։

23 «Советы и рассказы Кекавмена», сочинение византийского полководца XI в. Подготовка текста, введение, перевод и комментарий Г. Г. Литаврина, М.. 1972, стр. 152.

24 Տե՛ս Georgius Cedrenus. t. II, p. 608.

25 Տե՛ս «Советы и рассказы Кекавмена», стр. 236:

դակիորեն վճարվում էր Բյուզանդական կայսրությանը։ Բյուզանդական տիրապետության վերջում Անիի հարկերը կապալով տրվեցին երեք բարձրաստիճան զինվորականների[26]։

Հայաստանում, ինչպես նաև Բյուզանդիայում, կապալով էին տրվում նաև ղեկավար պաշտոնները։ Այսպես, Անիի մուհթասիբը՝ հարկային և շուկայական հսկիչը, իր պաշտոնի համար Արևելից կատապանին վճարում էր երկու լիտր ոսկի (144 ոսկեդրամ), որը հետագայում դարձավ բնահարկ և հավասար էր 600 մոդ հացահատիկի։

Բացի առևտրականների և արհեստավորների վճարած հարկից, ամենայն հավանականությամբ, հայերը Բյուզանդիային վճարում էին նաև զինվորական հարկ, զինվորական ծառայությունից ազատվելու համար։ Հայտնի է, որ Արևելից կատապան Բագարատ Վխկացին համոզեց Կոստանդին Դուկաս կայսրին՝ Անիի կայազորին ռոճիկ չվճարել, որովհետև ինքն առանց կայազորի իբր թե կպաշտպաներ քաղաքը սելջուկների վերահաս վտանգից[27]։ Փաստորեն դա կայազորի ցրումն էր։ Մի այլ տեղում բյուզանդական պատմիչը գրում է, որ Բագարատը կայսրին խոստացավ Անիի զորքի կարիքները ապահովել առկա միջոցներով[28]։ Երկու դեպքում էլ հայ բնակչությունը կամ իր վրա էր վերցնում զորքի ապահովության ծախսը, կամ էլ զինվորական հարկ էր վճարում։

Քաղաքների կամ բերդերի պարիսպները կառուցելու կամ դրանք ամրացնելու համար վճարվում էր հատուկ հարկ, որը կոչվում էր անգարիոն։ Անի քաղաքի տնատերերից գանձվում էր հարկ, որը կոչվում էր «պախտ տանց»։

Այսուհանդերձ, սելջուկյան վերահաս վտանգի պայմաններում և անեցիների դիմադրության հետևանքով, Բյուզանդիան մասամբ սթափվեց։ Նա ոչ միայն սկսեց հայերին սիրաշահելու քաղաքականություն վարել, այլև մտածել երկրի պաշտպանության մասին։

Ահարոն Մագիստրոսը բավական ջանքեր թափեց Անի քաղաքի պարիսպների ամրացման համար, նա քաղաքը խմելու ջրով ապահովեց։ Ահարոն Մագիստրոսի միջնորդությամբ Թեոդորա թագուհին վերացրեց Անի քաղաքի արհեստավորների և առևտրականների վճարած ութ լիտր ոսկու հարկը։ Ահարոնը հրաժարվեց նաև Անի քաղաքի մուհթասիբի՝ իրեն վճարած երկու լիտր ոսկուց։

Հայաստանում բյուզանդական կառավարիչները հիմնականում ծագումով հույներ էին, իսկ հազվագյուտ դեպքում՝ բուլղարներ։ Միայն վերջին շրջանում, երբ սելջուկ թուրքերի վտանգը գնալով սաստկացավ, Բյուզանդիան սկսեց տեղ տալ նաև հայ գործիչներին։ Դրանցից ամենանշանավորը Գրիգոր

---

26 Տե՛ս Р. М. Бартикян, «Эникион» в Византии и столице армянских Багратидов Ани в эпоху византийского владычества, ՊԲՀ, № 2, 1968, էջ 126 և հետո։

27 Տե՛ս Michaelis Attaliotae, Historia, p. 81.

28 Տե՛ս նույն տեղում։

*Մագիստրոս Պահլավունին էր, որն իրեն անվանում է «Վասպուրականի և Տարոնոյ և Մանազկերտի, Արճեշոյ, Բերկրոյ, Միջագետաց տէր, Մոնոմախին մագիստրոս, վեստ և տուկս»[29]։*

*Վերջին շրջանում կայսրությունն օգտագործեց նաև տեղացի քաղկեդոնիկ զինվորականներին։ Նրանցից էին Բագարատ Վխկացին, որը Տայքի Բագրատունիներից էր, Գրիգոր Բակուրյանը և ուրիշներ։*

*Բյուզանդիան սկզբնական շրջանում պահպանեց հայոց զորքը, քանի որ այն պետք էր կայսրության հետագա նվաճողական քաղաքականության համար և՛ Արևելքում, և՛ Արևմուտքում։*

*Բյուզանդական կայսրությանն էր ծառայում ոչ միայն հայոց հեծելազորը, այլև հետևակը։ Դեռևս Հովհան Չմշկիկ կայսրը բուլղարների դեմ մղած պայքարում լայնորեն օգտագործում էր բյուզանդական տիրապետության տակ գտնվող հայկական շրջաններից հավաքագրված հետևակը[30]։*

*1000 թ., Դավիթ Կուրապաղատի մահից անմիջապես հետո, Վասիլ Բ կայսրը «հրամայէ զօրացն Չորրորդ Հայոց և Տարօնոյ՝ օգնական լինել նմա յոր պետս և կոչեսցէ»[31]։ Արծրունյաց, ինչպես և Բագրատունիների թագավորության անկումից հետո, այդ շրջանների հայկական զորքերը ևս պետք է ծառայեին կայսրությանը։ Դվինի ամիրայի դեմ բյուզանդացիների հետ միասին, ինչպես տեսանք, կռվում էր նաև հայոց զորքը՝ Վահրամ Պահլավունու գլխավորությամբ։*

*Սկիլիցեսի վկայությամբ Դվինի ճակատամարտին, բացի բյուզանդական զորքից, մասնակցում էր նաև իբերական (Տայքի) և «Մեծ Հայքի զորքը, որը գլխավորում էր Անեցին»[32] (հավանաբար՝ Վահրամ Պահլավունին)։*

*Հայկական և «իբերական» զորքերն ունեին իրենց սեփական հրամանատարները, որոնք ենթարկվում էին բյուզանդական Արևելյց սպարապետին* στρατηγός αὐτοχράτωρ-*ին*[33]։

*Բայց միշտ չէ, որ հայերը հլու հնազանդ ենթարկվում էին բյուզանդական զորահրամանատարներին։ Եղել են դեպքեր, երբ հայոց զորքը հանդես է եկել կայսեր դեմ, ինչպես և, նայած հանգամանքներին, անցել կայսրության հակառակորդի կողմը։*

*Ամրացնելով իր դիրքերը նվաճված Հայաստանում, կայսրությունը կամաց-կամաց սկսեց հրաժարվել հայկական զորքից, որպեսզի Հայաստանը զրկվեր սեփական զինյալ ուժերից։ Բացի այդ, Բյուզանդիայում առաջացած քաղաքական և դրամական ճգնաժամը հնարավորություն չէր տալիս գումարներ ծախսել այդ զորքի պահպանման համար։ Ընդհակառակը, կայսրությունը*

---

29 *Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 213։ Կեչառիսի մի արձանագրությունում Մագիստրոսը իրեն տալիս է «կիտանտին» տիտղոսը, որ ոչ այլ ինչ է, քան բյուզանդական* Κοιτωνίτης-*ը*։

30 *Տե՛ս նույն տեղում, էջ 184։*

31 *Նույն տեղում, էջ 276։*

32 *Georgius Cedrenus*, t. II, p. 559. Μετά τε τῆς 'Ρωμαϊκῆς χειρὸς τοῦ τε Ἰβηρικοῦ στρατοῦ καὶ τῆς ἐν τῇ Μεγάλῃ 'Αρμενίᾳ δυνάμεως, ἧς κατῆρχεν ὁ 'Ανιώτης.

33 *Georgius Cedrenus*, t. II, p. 560.

ձգտում էր լրացուցիչ միջոցներ շահել։ Նախ հայկական զորքի դրամով տընտեսում էր նրա վրա կատարվելիք ծախսերը և մյուս կողմից բանակում չծառայելու համար հայերից գանձում էր՛ զինվորական հարկ[34]։ Կոստանդին Դուկաս կայսեր օրոք (1059—1067), երբ Արևելից կատապանն էր Բագարատ Վխկացին, կայսրությունն այլևս չէր հոգում հայոց մնացած զորքի կարիքները, նրա մատակարարման և ռոճիկի բեռը դրվեց հայ բնակչության ուսերին[35]։ Դա հայկական զորքի վերացում էր նշանակում։ Եվ երբ XI դարի 40-ական թվականների վերջերին սելջուկ-թուրքերը հարձակվեցին Վասպուրականի վրա, փաստորեն դիմադրության չհանդիպեցին։ Ճիշտ է, Վասպուրականի կատապան Ստեփանոս Լիխուդեսը հավաքեց «տեղական զորք», բայց այն մարտունակ չէր, փախուստի դիմեց, և Ստեփանոսը գերի ընկավ թուրքերի ձեռքը[36]։

## 3. ԿՐՈՆԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Նոր նվաճված շրջանները, գլխավորապես Միջագետքն ու Հայաստանը իրենց դավանանքով միաբնակ էին։ Հայերի զանգվածային գաղթը դեպի արևմուտք, հենց Բյուզանդիայի ներսում ստեղծել էր միաբնակ հայերի ստվար բնակչություն ունեցող գաղութներ։ Այդ վիճակը չէր կարող չանհանգստացնել Բյուզանդիային, ուստի կայսրությունը (քաղաքական նպատակներով) առիթ չէր փախցնում միջամտելու նրանց կրոնական գործերին, հնարավոր դեպքում դիմելով նաև հալածանքների։

Դեռ 986 թ. «կանացի հովիւքն և մետրապօլիտն Սեբաստիոյ,— գրում է Ստեփանոս Ասողիկը,— սկսան նեղել զազգն Հայոց վասն հաւատոյ. և վքռնութիւն ի ձեռն առեալ՝ սկսաւ տանջել զքահանայս վասն հաւատոյ, և զգլխաւոր քահանայս Սեբաստիոյ քաղաքին երկաթեղէն կապանօք հասուցանէր ի դուռն Թագաւորին։ Եւ ի բանտի չարչարեալ զաւագն երիցանցն զԳաբրիէլ սպանին»[37]։ Նույն թվականին բյուզանդացիները «արգելին զժամաձայն Հայոց ի քաղաքէն Սեբաստիոյ»[38]։ Սեբաստիայի դեպքը, իհարկե, եզակի չէր։ Հակառակ այն բանին, որ դեռևս Հայաստանն ամբողջությամբ նվաճված չէր կայսրության կողմից, և կանգուն էր Հայոց թագավորությունը, Բյուզանդիան սկսեց իր դավանաբանական հարձակումը նաև այստեղ։ Սեբաստիայի նույն այդ տխրահռչակ մետրոպոլիտը նամակ է գրում հայոց խաչիկ Արշարունի կաթողիկոսին, քարոզելով Քաղկեդոնի ժողովի դավանանքը և առաջարկելով ընդունել այն[39]։

Հայերի բախտը բաժանում էին նաև միաբնակ ասորիները։ Ռոմանոս կայսրը (1028—1034), դեպի Կիլիկիա ճանապարհորդելիս, հանդիպում է բագ-

---

[34] Տե՛ս *Georgius Cedrenus*, t. II, p. 608. *Michael Attaliotae*, Historia, p. 44.

[35] Տե՛ս *Michael Attaliotae*, Historia, p. 81.

[36] Տե՛ս *Georgius Cedrenus*, t. II, p. 570—571.

[37] Ստեփանոս Տարոնեցի, էջ 201, 246։

[38] Նույն տեղում, էջ 202։

[39] Տե՛ս նույն տեղում։

մաթիվ միաբնակ վանականների, որոնց բռնի զինվորագրում է և դարձնում աղեղնավորներ։

Անիի գրավումից և Բագրատունյաց թագավորության անկումից հետո բյուզանդական առաջին կառավարիչ Հովհաննես Իասիտեսը համենայն դեպս բարյացակամ վերաբերմունք ցույց տվեց բյուզանդասեր Պետրոս Գետադարձ կաթողիկոսին[40], նրա ծառայությունների համար, բայց դա ժամանակավոր երևույթ էր։ Իասիտեսի հաջորդ Կատակալոն Կեկավմենոսը սկսեց խորթ աչքով նայել հայոց կաթողիկոսության վրա։ Հայոց պետականության անկումից հետո հայերին համախմբող միակ ուժը մնացել էր հայոց կաթողիկոսությունը, մի բան, որ ամենևին դուր չէր գալիս կայսրությանը։ Կատակալոն Կեկավմենոսը Անիի կաթողիկոսությունը տեղափոխեց արևմուտք՝ Բյուզանդիա։ Առաջին զոհը դարձավ հենց ինքը՝ Պետրոս Գետադարձ կաթողիկոսը։ Կոստանդին Մոնոմախը Պետրոս կաթողիկոսին կանչում է Կոստանդնուպոլիս, նրան մի քանի տարի պահում է պատվավոր աքսորում, որից հետո չի թողնում, որ նա վերադառնա Անի, «քանզի կասկածէր թողուլ ի Հայս՝ թէ երթեալ ապստամբեցուցանէ զԱնի»[41]։ Պետրոս կաթողիկոսին թույլատրվում է գնալ Սեբաստիա, Վասպուրականի թագավոր Սենեքերիմ Արծրունու ժառանգների մոտ, ուր և նա վախճանվում է։

Դրությունը չփոխվեց նաև Պետրոսի հաջորդ Խաչիկ կաթողիկոսի ժամանակ։ Բյուզանդական կայսրը նրան ևս կանչեց Կոստանդնուպոլիս, այնտեղ պահեց երեք տարի և երբ ազատ արձակեց, չթողեց վերադառնալ Անի, այլ ուղարկեց «ի սահմանս Երկրորդ Հայոց՝ ի գաւառն, որ կոչի Տարնտայ... քանզի անդ հրամայեցին նմա տեղի բնակութեան»[42]։

Կրոնական հալածանքները սաստկացան Կոստանդին Դուկաս կայսեր օրոք։ Ուռհայեցու ասելով նա ուզում էր վերացնել հայադավանությունը[43] «բառնալ և խափանել զաթոռ հայրապետութեան սրբոյն Գրիգորի ի տանէն Հայոց»[44]։ Կայսրը Սեբաստիայից Կոստանդնուպոլիս հրավիրեց Ատոմ և Ապուսահլ Արծրունիներին և ստիպեց նրանց հրաժարվել հայադավանությունից[45]։

Կայսրության սահմաններում տեղ գտած այդ քաղաքականությունն արտահայտվեց մի այլ բանում ևս։ Բյուզանդացի պատմիչ Միքայել Ատտալիատեսը, խոսելով Կոստանդին Մոնոմախ կայսեր ընչաքաղցության մասին, ցույց է տալիս, որ նա որոշեց հարկատու դարձնել եկեղեցին և վանքերը և այդ առթիվ հրամաններ ուղարկեց կայսրության բոլոր նահանգները[46]։ Արիստակես Լաստիվերտցու վկայությամբ Պետրոս Գետադարձի հաջորդ Խաչիկ կաթողիկոսին «ընդ հարկիւ կամէին արկանել... իսկ նա ոչ առնու յանձն»[47]։

---

40 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 63։

41 Արիստակես Լաստիվերտցի, էջ 82։ Հմմտ. Մատթեոս Ուռհայեցի, էջ 104։

42 Արիստակես Լաստիվերտցի, էջ 82։

43 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 160։

44 Նույն տեղում, էջ 137։

45 Տե՛ս նույն տեղում, էջ 160—161։

46 Տե՛ս *Michael Attaliotae*, Historia, p. 51.

47 Արիստակես Լաստիվերտցի, էջ 83։

Միաբնակներին հալածելու, նրանց գործունեությունը սահմանափակելու հետ միասին, Բյուզանդիան մեծ ջանքեր թափեց քաղկեդոնականության տարածման համար։ Այդ ժամանակաշրջանում էր, որ Հայաստանում սկսեցին բազմանալ քաղկեդոնիկ եպիսկոպոսությունները[48]։

Հայ ժողովուրդն ամեն կերպ աշխատում էր թոթափել Բյուզանդիայի տիրապետությունը։ Պատահական չէ, որ տվյալ ժամանակաշրջանում, երբ կենտրոնական կառավարության դեմ որևէ ապստամբություն էր բռնկվում, նրան մասնակից էին դառնում նաև հայերը։ Ինչպես տեսանք 976 թ. Վասիլ Բ կայսեր դեմ ծագած Վարդ Սկլերոսի ապստամբությանը առաջին հերթին մասնակցեցին հայերը[49]։ 987 թ. Վասիլ Բ-ի դեմ բռնկված Վարդ Փոկասի ապստամբությանը նույնպես մասնակցեցին հայերը։

Եթե սկզբնական շրջանում նվաճողների դեմ հայ ժողովրդին ոտքի էր հանում հայրենիքի կորստյան փաստը, ապա հետագայում դրան նպաստեցին բյուզանդացիների կրոնական հալածանքները, հարկերի ծանրությունն ու կեղեքումը։

Հայերը ոչ միայն միանում էին կենտրոնական կառավարության դեմ բռնկված ապստամբություններին ու խռովություններին, այլև իրենք էին ապստամբության փորձեր կատարում բյուզանդական տիրապետության դեմ։ 1051 թ. Պաղին գավառի հայ նախարարները որոշում են թոթափել կայսրության լուծը, բայց հաջողության չեն հասնում։ Կայսրը զորքեր է ուղարկում զորավար Պետրոսի գլխավորությամբ, որը ուզում է ձերբակալել ապստամբության կազմակերպիչներ՝ իշխան Հաբելի չորս որդիներին՝ Հարպիկին, Դավթին, Լևոնին, Կոստանդինին, ինչպես և այլ նախարարների, բայց վերջիններս որոշում են ամրանալ իրենց բերդերում։ Նրանց մտադրությունը հայտնի է դառնում Պետրոս զորավարին, և միայն Հարպիկն է կարողանում ամրանալ Թլմուխ գավառի մոտ գտնվող իր Արկնի ամրոցում, սակայն դավադրաբար սպանվում է։ Դրանից հետո նրա մյուս եղբայրները հանձնվում են բյուզանդական զորավարին։ Արկնի բերդը գրավվում է Պետրոսի կողմից, իսկ Հարպիկի եղբայրները տարվում են Կոստանդնուպոլիս և հանձնվում Կոստանդին Մոնոմախ կայսեր, որը երեքին էլ աքսորում է կղզիները[50]։ Նրանք աքսորավայրում են մնում մինչև Կոստանդին կայսեր մահը և միայն նրա հաջորդ Թեոդորայի օրոք ազատվում են և հնարավորություն ստանում վերադառնալ Արկնի, խոստանալով «մի ևս մեղանչելս»։ Ցանկանալով սիրաշահել այդ շրջանի հայ ազգաբնակչությանը, Թեոդորա կայսրուհին հեռացնում է Պետրոս կատապանին և նրա փոխարեն նշանակում ոմն Մելխանոսի[51]։

Բյուզանդական ներխուժման և տիրապետության դեմ ամենաեռանդուն մարտիկները թոնդրակեցիներն էին, որոնց համար բյուզանդական լուծը կրկնակի ատելի էր, թե որպես հակաժողովրդական և թե որպես օտար բռն-

---

48 Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze des Byz. Reiches, S. 70, 191.

49 Տե՛ս Ստեփանոս Տարոնեցի, էջ 191։

50 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 109—112։

51 Տե՛ս նույն տեղում, էջ 122։

նակալի լուծ։ Ահա թե ինչու Բյուզանդիան ջանում էր ամեն կերպ արմատախիլ անել այդ շարժումը հայկական նահանգներից։

Բյուզանդիան աղանդավորների դեմ պայքարելու բավական փորձ ուներ։ IX դարից սկսած նա սիստեմատիկ պայքար էր սկսել աղանդավորական շարժումների դեմ։ Այդ բանը նա իրականացնում էր աղանդավորների ֆիզիկական բնաջնջման, երկրից արտաքսելու կամ էլ կայսրության այլ շրջանները բռնի գաղթեցնելու միջոցով։ Նման քաղաքականության արդյունքն այն եղավ, որ IX դարի վերջին և X դարի սկզբին Բյուզանդական կայսրության արևելյան շրջաններում այլևս պավլիկյան օջախներ չմնացին։ Նվաճելով հայկական նորանոր շրջաններ, Բյուզանդական կայսրությունն այս անգամ հանդիպեց թոնդրակեցիներին և չհապաղեց նույն քաղաքականությունը վարել սրանց նկատմամբ։

Անիի Բագրատունյաց թագավորության վերացումից հետո երկրի սահմաններում ապրող թոնդրակեցիների հալածման գործն անցավ բյուզանդացիներին։ Շուտով նրանց ճնշումը հանձնարարվեց «Վասպուրականի և Տարօնոյ և Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրոյ, Միջագետաց» դուքս-կառավարիչ Գրիգոր Մագիստրոսին, քանի որ աղանդավորների հիմնական զանգվածն այդ շրջաններում էր ապրում։ Պատժիչ խմբերն սկսեցին ամենուրեք կատարել իրենց սև գործը։ Գրիգոր Մագիստրոսը պայքարն սկսեց Միջագետք (Մեսոպոտամիա) բանակաթեմից, որը տարածվում էր Մանանաղիից և Դարանաղիից հարավ, հարավ-արևմուտք և պավլիկյանների կենտրոն Տիվրիկից արևելք։ Նրա կազմում էին Կամախը, Վարդենիքը և այլն։ «Եւ եկեալ ի Միջագետս,— գրում է Գրիգոր Մագիստրոսը,— հանդիպեցայ մահաբեր և մրրկեալ պղտորեալ վտակաց, որ հոսէր մահացու արտաթորեալ յանիծելոյն Սմբատայ, որ ի Թոնդրկաց»։ «Հրամայեցաք տապալել զչիմունս յարկացն և հրձիգ առնել և զինքեանս հանել ի սահմանաց մերոց»[52]։

Շարունակելով իր պատժիչ արշավանքը, Գրիգոր Մագիստրոսը որոշեց արմատախիլ անել շարժումը հենց իր բնօրրանում՝ Թոնդրակ ավանում. «Խաղացի չու արարեալ,— գրում է նա,— մինչև յակն, յորում բունեալ էր իժն և քարբն և վիշապն չարութեան։ Եւ խլեալ զնոսա, տապալեցի...»[53]։

Թոնդրակյան շարժումը, հիմնականում, ճնշված էր, բայց առանձին համայնքներ դեռ գոյատևում էին։ Թոնդրակեցիների մի մասը ապաստան է գտնում Ամիդ քաղաքում և երկրից դուրս էլ շարունակում է գործել։ Գրիգոր Մագիստրոսը ստիպված է լինում դիմել նրանց, առաջարկելով չշարունակել իրենց գաղափարների քարոզումը, մանավանդ բյուզանդական տիրապետության տակ գտնվող շրջաններում։ «Բայց պատուիրեմ ձեզ,— գրում էր Գրիգոր Մագիստրոսը արտաքսված թոնդրակեցիներին,— թողլ տուք մեզ և աշխարհին մեր Միջագետաց և ամենայն, որք ընդ իշխանութեամբ Հոռոմոց տուրք թագաւորութեան. մի՛ թղթովք և մի՛ պատուիրելով զչար հերձուած ձեր ուսուցանեք կամ հաստատէք... տապալեցէք այսուհետև զանուն ձեր և զբան և

52 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 167։

53 Նույն տեղում։

«գործ»[54]։ Չբավարարվելով դրանով, Գրիգոր Մագիստրոսը դիմում է ասորոց կաթողիկոսին, խնդրելով հալածել իր իրավասության շրջաններում ապրող թոնդրակեցիներին։

Հալածանքները, բռնագաղթեցումները, հայրենի հողից կտրվելը ի վերջո իրենց դերը խաղացին։ Թոնդրակյան շարժումը ճնշվեց, նա դադարեց դասակարգային հուժկու շարժում լինելուց, Թեև հետագայում Հայաստանի տարբեր շրջաններում հանդիպում են հատ ու կենտ թոնդրակեցիներ, բայց նրանք բառիս բուն իմաստով հերձվածողներ էին և ոչ շահագործման դեմ պայքարող մարտիկներ։

Բյուզանդական կարճատև տիրապետությունը Հայաստանում հայ ժողովրդի ներքին կյանքում էական փոփոխություն չմտցրեց։ Ոչ բռնի ու «կամավոր» արտագաղթերը, ոչ տնտեսական ճնշումն ու կրոնական հալածանքները չտվեցին այն արդյունքները, որ ակնկալում էր կայսրությունը։ Հայ ժողովրդի կյանքը շարունակում էր ընթանալ նախկինի պես հայրենի հողի վրա։ Մի բան, որ այնուամենայնիվ, հաջողվեց Բյուզանդիային, դա հայոց քաղաքական և ռազմական հզորության ընկճումն էր. դա էլ վերջին հաշվով աղետալի դարձավ նաև կայսրության համար։ Բյուզանդական կայսրությունը փաստորեն վերացրեց այն պատնեշը, որ փակում էր արևելքից եկող և դեպի Բյուզանդիա շարժվող թշնամական բանակների ճանապարհը։ Երբ XI դարի առաջին տասնամյակներից սկսած Հայաստանում երևացին թուրքական հորդաները, կայսրությունն ի վիճակի չեղավ նրանց առաջն առնել, իսկ Հայաստանն էլ չունենալով անկախ պետականություն զրկված էր այդ կարողությունից։

---

54 Նույն տեղում, էջ 167—168։

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ ՍԵԼՋՈՒԿ-ԹՈՒՐՔԵՐԻ ԿՈՂՄԻՑ

## 1. ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ԱՍՊԱՏԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Քաղաքականապես և ռազմականապես թուլացած Հայաստանը կանգնած էր սելջուկ-թուրքերի ներխուժման վտանգի առջև։ XI դարում սելջուկ-թուրքերն իրենց ծավալուն աշխարհակալությամբ, որը Միջին Ասիայի, Իրանի վրայով ձգվում էր մինչև Փոքր Ասիա, ստեղծեցին պատմական մի նոր իրադրություն, որից կախված էր նաև հայ ժողովրդի բախտը։*

*Թուրքական ցեղերի նախնիները հնագույն ժամանակներից ապրել են Չինաստանից հյուսիս ընկած շրջաններում, և որպես ռազմիկ ցեղեր հաճախակի հարձակումներ են գործել Չինաստանի վրա։ Աստիճանաբար նրանք տարածվեցին դեպի արևմուտք՝ հասնելով Կասպից ծովի, նույնիսկ մինչև Դանուբի ափերը։ Այդ ցեղային միավորումը չինացիներն անվանել են «Հիոննու»։ Թուրքական ցեղերի մի մասին իրենց ենթարկելով չինացիները կոչեցին «ույղուր»՝ հպատակ։ Դեռևս V դարում առաջացավ թուրքական ցեղերի արևմտյան միավորումը, որը հայտնի է «հոներ» անունով։*

*Թուրքերը առանձին խմբերով զինվորական ծառայության էին մտնում արաբական խալիֆայության բանակում։ IX—XI դարերում Միջին Ասիայի թրքախոս ցեղերը ենթարկվեցին արաբական ազդեցությանը և ընդունեցին իսլամը։ X դարում թուրքական մի ցեղ դուրս գալով Արևմտյան Թուրքեստանից՝ հիմնեց Ղազնևյան սուլթանությունը՝ Խորասանում։ Սակայն այս թուրքերը համարյա լուծվեցին Իրանի ժողովրդի մեջ։ X դարի երկրորդ կեսին Թուրքեստանում տեղի էր ունենում մի այլ փոքրիկ շարժում, որից պիտի ծնվեր սելջուկյան թուրքերի աշխարհակալ կայսրությունը, որը և կոչվեց իր հիմնադիր Սելջուկի անունով։ Միջնադարյան աղբյուրները չնայած կցկտուր տեղեկություններ են պահպանել Սելջուկի ծագման մասին, սակայն նշում են, որ նրա նախնիները թուրքական օղուզական Քընըք ցեղի առաջնորդներն են եղել[1]։ Սելջուկի նախնիները, ապա և ինքը ծառայել են Թուրքեստանի խաքանի պալատում։ Սելջուկն իր շուրջն է համախմբել Օղուզ ցեղախմբերը.*

---

[1] *Sadruddin el-Huseyni,* Ahbar ud-devlet is-selcukiyye, Ankara. 1943, p. 11—12. *С. Г. Агаджанов,* Очерки истории огузов и туркмен Средней Азии IX—XIII вв., Ашхабад, 1969, стр. 164—166.

Ըստ սկզբնաղբյուրների սելջուկների հայրենիքը եղել է Սիր-Դարիայի միջին հոսանքը՝ Կարատաուի նախալեռնային շրջանը և Սըղնախի մարզը։ Սելջուկյան անասնապահ ցեղախմբերը ստվարանում էին Սիր-Դարիայի ստորին հոսանքում ապրող օղուզների հաշվին։ Շուտով սրվում են հարաբերությունները սելջուկյան առաջնորդների և Թուրքեստանի խաքանի միջև՝ նոր արոտավայրեր և հողեր ձեռք բերելու համար։ Խուսափելով հաշվեհարդարից, սելջուկյան առաջնորդներն ստիպված թողնում են իրենց բնակավայրերը և X դարի 60-ական թվականներին հաստատվում են Սամարղանդի, Բուխարայի, Նուրայի շրջաններում[2] և այդ ժամանակ էլ ընդունում իսլամը։

Պայքարը Թուրքեստանի խաքանի դեմ վերջացավ Ջենդի գրավումով, որը բարձրացրեց սելջուկյան առաջնորդների հեղինակությունը հարևան մահմեդական տիրակալների մոտ։

Սելջուկի որդիներ Արսլանը, Միքայելը և մյուսները XI դարի առաջին քառորդում օգնում են Սամանյաններին՝ ընդդեմ Մավերաննահրի Կարախանյան թուրքական պետության և, պարտության մատնելով վերջինիս, հաստատվում են Մավերաննահրում։

Թեև 1025 թ. Արսլանը, որը գլխավորում էր Բուխարայի Սելջուկյան խմբավորումը, պարտվում է Ղազնևյան Մահմուդի զորքերից, սակայն Սելջուկի թոռները (Միքայելի որդիներ Տուղրիլ և Չակիր բեգերը) շարունակելով պայքարը Ղազնևյանների դեմ, 1040 թ. Դանդանականի[3] ճակատամարտում պարտության են մատնում Մասուդի զորքերին, գրավում Խորասանը և Ղազնևյաններին ստիպում են ամփոփվել իրենց մեծ պետության հնդկական մասում։

Այս հաղթանակից հետո սկսվեցին սելջուկյան ծավալուն արշավանքները դեպի Իրան, Իրաք, Անդրկովկաս և Փոքր Ասիա, այդ թվում՝ Հայաստան։

Անդրկովկասի և Փոքր Ասիայի մեծագույն մասի և համարյա ամբողջ Հայաստանի նվաճումը սելջուկների կողմից տևեց ավելի քան 60 տարի։ Թուրքերի և հատկապես սելջուկյան թուրքերի այդ արշավանքներն իրենց բնույթով կարելի է բաժանել երկու խոշոր փուլի։ Առաջին փուլին (1016—1063) բնորոշ է ավարառությունն ու կողոպուտը, գերեվարությունն ու երկրի բարգավաճ քաղաքների ամայացումը։ Երկրորդ փուլում (1064—1092) թեև շարունակվում էր թուրքական ցեղերին բնորոշ ավարառությունը, սակայն այս ժամանակաշրջանին հատկանշական է արշավանքի ենթարկված երկրների վերջնական նվաճումն ու բնակեցումը՝ թուրքմեն ցեղերի կողմից[4]։

Արշավանքների առաջին շրջանում (1016—1021) ասպատակություններ կատարում էին Հայաստանի հարևան մահմեդական երկրների բանակներում ծառայող վարձկան թուրքերը։ Հարևան Իրանում ու Ատրպատականում X դարի

---

[2] El-Bondâri, Irak ve Horasan Selcuklular Tarini, Istambul, 1943 (Թարգմ. Թուրքերեն), էջ 2։

3 Քաղաք միջնադարյան Խորասանում, որի ավերակները գտնվում են այժմյան Տաջիկական ՍՍՀ-ի տարածքում։

4 XI դարի սկզբից օղուզները սկսեցին կոչվել նաև թուրքմեններ։

վերջում և XI դարի սկզբին՝ արաբական խալիֆայության կազմալուծման շրջանում առաջացած մանր և գրեթե անկախ իրանական իշխանությունների միջև եղած կռիվների ընթացքում թուրքերը, որպես վարձկան զորք, մեծ դեր էին խաղում և որոշ ազդեցություն էին ձեռք բերել այդ երկրների բանակներում։

Հայ և բյուզանդացի պատմիչների[5] հաղորդած տեղեկություններից հայտնի է, որ Իրանի և Ատրպատականի ամիրայությունների բանակներում ծառայող թուրք զինվորները հրոսակ կազմած դեռևս 1016 թ. ներխուժել էին Վասպուրականի Արծրունյաց թագավորության սահմանները։ Որ արշավողները եղել են Միջին Ասիայի տափաստանների հարազատ զավակները, այդ երևում է այն խոր տպավորությունից, որ թողել են նրանք հայերի վրա իրենց արտաքին տեսքով և պատերազմելու արտասովոր եղանակով։ Նրանք ունեին երկար մազեր կանանց նման,— ասում է Մատթեոս Ուռհայեցին։ Նրանք զինված էին աղեղներով, իսկ հայոց զորքերը չէին կարող պաշտպանվել նրանց նետերից, որովհետև չունեին համապատասխան հանդերձանք[6]։ «Նրանք չեն պատվում մեծամեծներին,— ասում է պատմիչը,— չեն խղճում երիտասարդներին ու տղաներին, ոչ էլ խնայում են որևէ մեկի մանկությունը... Նրանք ունեին արյունարբու գազանների բնություն՝ սարսափելի էին իրենց տեսքով, որովհետև նրանց դեմքերի կերպարանքը տեսնողներին զարհուրեցնում էր և ահաբեկում»[7]։

1021 թ. Նախճավանի և Դվինի վրայով մինչև Նիգ գավառն ընկած հայկական տարածքը հարձակման ենթարկվեց թուրք-օղուզների հրոսակների կողմից, որոնք ծառայում էին դայլամցիների (դեյլեմիկների) բանակում[8]։

1025—1028 թթ. Բուխարայում հաստատված սելջուկյան թուրքմենական խմբավորումը և օղուզ-թուրքմենական միացյալ ուժերը պարտություն կրելով Ղազնևյան Մահմուդ սուլթանի զորքերից, հարկադրված ճողոպրեցին Իրան և Ատրպատական։ Այս թափառական քոչվորները սկսած 1029 թ. պարբերաբար ասպատակություններ կատարեցին դեպի հարավային և հարավ-արևելյան Հայաստան ու Միջագետք։ Նրանք որոշ ժամանակ մնացին Ատրպատականի Վահսուդան իբն Մամլան ամիրայի հրամանատարության ներքո, սակայն շուտով դավաճանեցին, ուստի և ի դերև ելան Վահսուդանի հույսերը՝ նրանց օգտագործելու Բյուզանդիայի դեմ։ Այնուհետև թուրքմենները, որոնց թիվը հասնում էր 30000—40000-ի, լքելով Ատրպատականը, բաժանվեցին երկու մասի։ Մի խմբավորումն ասպատակեց Համադանը, իսկ մյուսը՝ Ռեյը։ Շարունակելով իրենց ասպատակությունները, Ուրմիայում թափառող թուրքմենները 1029 թ. ներխուժեցին «հայկական երկրները»—Հարավային Հայաս-

5 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 496—497։ Մատթեոս Ուռհայեցի, էջ 46—48։ Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 23—24։ Սկիլիցես՝ տե՛ս С. Г. Агаджанов, К. Н. Юзбашян, К истории тюркских набегов на Армению в XI в., ПС, вып. 13 (76), 1965, стр. 148.

6 Մատթեոս Ուռհայեցի, էջ 46—48։

7 Թովմա Արծրունի, էջ 496—497։

8 Տե՛ս С. Г. Агаджанов, К. Н. Юзбашян, նշված հոդվածը, էջ 150—155։

տանում, շատ մարդ սպանեցին, մեծ ավար և բազմաթիվ գերիներ վերցրեցին. ապա նորից վերադարձան Ուրմիա ու Համադան[9]։

1029—1030 թթ. թուրքմենական մի խմբավորում Թավրիզի մոտ պարտություն էր կրել Վահսուդան իբն Մամլանից[10]. վերջինիս հաջողվել էր օգտագործել օղուզների աշխարհազորը՝ իր տիրույթներն ընդարձակելու համար։ Վահսուդանի հրամանատարներից Աբդ-ալ-Յուսուֆի առաջնորդությամբ օղուզները ներխուժեցին Առան՝ Գանձակի Շադդադյանների տիրույթը և մեծ ավերածություններ գործեցին[11]։ Այնուհետև՝ 1033—1034 թթ. Ատրպատականի Վահսուդան իբն Մամլանի քրոջ որդին Ուրմիայի տիրակալ Աբուլ-Հայջա իբն Ռաբիբ ալ-Դաուլան, որը միաժամանակ իշխում էր Բերկրիում[12], թուրքմենական մի հեծելաջոկատ օգտագործեց բյուզանդական զորքերի դեմ, որոնք հայ իշխան Գանձիի հրամանատարությամբ պաշարել էին Բերկրին։ Թեև մահմեդական դաշնակից զորքերը անհաջողության մատնվեցին, սակայն թուրքմեն զորքերը վերադարձի ճանապարհին կողոպտելով անպաշտպան հայկական բնակավայրերը, հասան Ուրմիա[13]։

1037 թ., երբ սելջուկյան թուրքմենների մի մասը զբաղված էր Ատրպատականի Մարաղա քաղաքի կողոպուտով, մի ուրիշ հրոսակախումբ նորից է մտնում Հայաստան, կոտորում շատերին և մեծ ավարով վերադառնում Ուրմիա[14]։

Պետք է նշել, որ դեռևս 1031 թ. օղուզների մի այլ խմբավորում Բուղա, Գյոկ-տաշ և Յաղմուր Կըզըլ ցեղային առաջնորդների ղեկավարությամբ ապստամբում է Ղազնևյան Մասուդ (1030—1042) սուլթանի դեմ, նոր արոտավայրեր գտնելու նպատակով քոչում Իրան և 1036 թ. միանալով Պարսկական Իրաքում և Ատրպատականում թափառող թուրքմենների հետ, հիմնում են յայլաղներ և ղշլաղներ հատկապես Ատրպատականում։

Սելջուկների կողոպտիչ ռազմական գործողությունները Ատրպատականում և Առանում ստիպեցին տեղական իշխաններին ռազմական դաշինք ստեղծել նրանց դեմ. Վահսուդան իբն Մամլանը դաշինք կնքելով քուրդ Հեզբանիների հետ 1038 թ. ձմռանը մի քանի հաջող մարտեր մղելով, ստիպեց սելջուկներին հեռանալ Ատրպատականից և քոչել Ռեյի ու Իսպահանի կողմերը։ Սակայն շատ ավելի երկար մնացին Ուրմիա լճի շուրջը թափառող թուրքմենները, որոնք Դանա թուրքմեն առաջնորդի գլխավորությամբ շարունակում էին իրենց պարբերական ներխուժումները հայկական հողերը։

Սելջուկյան թուրքմենների դաժանությունը հայերի նկատմամբ անհանգստություն է առաջացնում քրդերի, վրացիների և ափխազների մոտ։ Վիրաափխազական թագավոր Բագարատը, լսելով օղուզների վայրագությունը հա-

---

9 Տե՛ս Ибн ал-Асир, стр. 111—112.

10 Տե՛ս նույն տեղում, էջ 112։

11 Տե՛ս С. Г. Агаджанов, К. Н. Юзбашян, նշված հոդվածը, էջ 156։

12 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 201։

13 Տե՛ս С. Г. Агаджанов, К. Н. Юзбашян, նշված հոդվածը, էջ 156։

14 Տե՛ս Gregory Abul Farac, Abul Faraç Tarihi, Ankara, 1945, c. I, p. 295.

յերի նկատմամբ, դադարեցրեց Տփղիսի պաշարումը և միջոցներ ձեռնարկեց, ապահովելու իր երկրի պաշտպանությունը նրանց հնարավոր հարձակումից[15]։

1042 թ. մոտ 15000 թուրքմեններ Ուրմիայից մտան Վասպուրական և սկսեցին իրենց հերթական կողոպուտը։ Ներխուժած թշնամու դեմ դուրս եկավ Թոռնավանի խուլ խաչիկ մականունով Արծրունի իշխանը, որը, չնայած իր ծերության, անհավասար մարտի բռնվեց ոսոխի դեմ։ Թուրքերի թվական առավելության պատճառով հայերը պարտվեցին, և թուրքմենները մեծ ավարով վերադարձան Ուրմիա[16]։

Թափառելով Պարսկական Իրաքում թուրքմենները 1042—1043 թթ. մըտան Դիարբեքիրի, Ջազիրայի և Մոսուլի շրջանները։ 1043 թ. Մոսուլ ներխուժող թուրքմենները, որոնք պարտություն կրելուց հետո մնացել էին 5000 հոգի, Իրաքից դեպի Ուրմիա նահանջի ճանապարհին հետապնդվելով արաբներից. մտնում են Դիարբեքիր, որտեղից ուղղվելով հայերի և հույների դեմ, կողոպտում են նրանց[17]։ Նրանց միացան նաև Դիարբեքիրի շրջանը ասպատակող թուրքմենները։ Այդ ավարառությունների առթիվ Դիարբեքիրի Մրվանյան ամիրա Նասր ալ-Դաուլայի բողոքին Տուղրիլ բեգը պատասխանում է. «Հպատակներիս քո երկիր գալը իմացա. դու մի սահմանային գոտու ամիրա ես. դրանց պետք է մթերք տաս և նրանց օգտագործես անհավատների դեմ, որովհետև նրանց հիմնական նպատակը՝ հայկական երկրները գրավելն է»։

Ատրպատական և Ուրմիա վերադարձող վերևում հիշատակված թուրքմեններն ասպատակեցին Վանա լճի հյուսիսում գտնվող հայկական քաղաքներն ու գյուղերը։ Արճեշի մոտ նրանք պարտության մատնեցին բյուզանդական կատապան Ստեփանոս Լիխուդեսին և գերի վերցրին նրան[18]։

1042—1043 թթ. Իրաքից վերադարձող օղուզների մյուս մասը ասպատակում է Արարատյան նահանգի Բջնի գավառը։ Հրազդան գետի ափին՝ Բջնիի մոտ, նրանց դեմ են դուրս գալիս Հայոց Գագիկ Բագրատունի թագավորը և Վասակ Պահլավունու որդի Գրիգոր Պահլավունին (Մագիստրոսը), որոնք պարտության մատնելով թշնամուն, ստիպում են նրան վերադառնալ Ատրպատական[19]։

Արաբ պատմիչ Իբն ալ-Ասիրը, շարադրելով 1043—1044 թթ. դեպքերը, ասում է, որ օղուզ-թուրքմենները հաճախակի ճանապարհվում էին հայերի երկիրը, կողոպտում այն և վերցնում գերիներ այնքան շատ, որ մի գեղեցիկ սարկուհի արժեր հազիվ 5 դինար, իսկ տղամարդկանց և տղաներին ոչ ոք չէր ցանկանում վերցնել՝ նույնիսկ ձրի[20]։

Այսպիսով, 1029—1045 թթ. օղուզ-թուրքմենների կողմից կատարված արշավանքներն ու ասպատակությունները էլ ավելի թուլացրին Հայաստանը,

---

15 Տե՛ս Ибн ал-Асир, стр. 11.

16 Տե՛ս Լեո, Հայոց պատմություն, հատ. II, էջ 671—672։

17 Տե՛ս Ибн ал-Асир, стр. 115.

18 Տե՛ս նույն տեղում, էջ 74։

19 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 88։

20 Տե՛ս El-Bondâri, նշված աշխատ., Ներածություն, էջ XLV, Իբն ալ-Ասիրի թուրք. թարգմանությունից։

արագացրին Բագրատունյաց թագավորության անկումը և նախապատրաստեցին ամբողջ Հայաստանի նվաճումը սելջուկյան թուրքերի կողմից։

## 2. ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ 1045—1063 ԹԹ.

Բագրատունյաց կենտրոնական թագավորության անկումից հետո, բացի Վանանդից, Արցախից, Գուգարքից, Սյունիքից, Դվինից և Նախճավանի շրջակայքից, Հայկական լեռնաշխարհի բոլոր նահանգներն ու գավառներն արդեն գտնվում էին Բյուզանդական կայսրության տիրապետության ներքո։ Սելջուկյան արշավանքների ծավալման շրջանում՝ 1045—1071 թթ. կայսրության արևելյան և հարավ-արևելյան տիրույթները, որոնք իրենց մեջ հիմնականում ընդգրկում էին Հայկական լեռնաշխարհը, բաժանված էին Միջագետքի, Տարոնի, Վասպուրականի և Անիի կատապանությունների։

Տիրանալով Հայկական լեռնաշխարհին, կայսրությունն այժմ ինքը պետք է պաշտպաներ իր նոր սահմանները՝ զանազան կողմերից Հայաստան բերված օտար վարձկան զորքերով, «որոնց համար այս երկիրը ոչ հայրենի տուն էր, ոչ էլ հարազատ բնակավայր»[21]։

Ստեղծված դրությունը այսպես են գնահատել սելջուկյան արշավանքների ժամանակակիցները. «զի զարս քաջս և զհզօրս. քակեալ հանին յարևելից Հոռոմք և կուրտ (ներքինի) զօրապետօք ջանային պահել զաշխարհն Հայոց և զամենայն տունն արևելից»[22]։

Բյուզանդական ժամանակագիրները, պատմելով 1044 թ. դեպքերի մասին, վկայում են, որ Մոնոմախ կայսրը (1042—1055) դրամական հարկ գցեց արևելյան սահմանագծի երկարությամբ ապրող մանր ապահարկ իշխանների վրա, փոխարենը «իբերներին»[23] (իբերական բանակաթեմի վրացիներին և հայերին) ազատեց կայսրության պաշտպանության համար 50000 զորք տրամադրելու պարտավորությունից։ Միաժամանակ հոգ չտարավ կայսրության սահմանները ամրացնելու և պաշտպանելու վերահաս վտանգից[24]։

Անշուշտ, 50000 զորքի (որն այնքան հայրենասիրական խանդավառությամբ պաշտպանում էր գժբախտ հայրենիքի սահմանները), վերացումը թուրքական արշավանքների և նրանց հաջորդող նվաճումների արագ հաջողության պատճառներից մեկն էր։

Ինչպես նշվեց, սելջուկյան թուրքմենների արշավանքները Հայաստանում 1028—1045 թթ. ավարառու մանր ասպատակությունների բնույթ էին կրում։ Սակայն, սկսած 1047 թ. մինչև 1063 թ. սելջուկյան զորքերի արշավանքներն ավելի ծավալվեցին. նրանք թափանցում էին Հայկական լեռնաշխարհի խորքերը, ասպատակում, ավարի մատնում ու ամայացնում էին համարյա բոլոր մեծ քաղաքներն ու բնակավայրերը։ Այժմ այդ արշավանքները մեծ

21 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. III, էջ 29։

22 Մատթեոս Ուռհայեցի, էջ 102։

23 Անիի թագավորության տարածքը մտնում էր Անիի և Իբերիայի կատապանության մեջ, որի կենտրոնը Անին էր։

24 Տե՛ս Schlumberger. L'Epopée, III, p. 553.

մասամբ կատարվում էին սելջուկյան սուլթան Տուղրիլ բեգի հրամանով, նրա անմիջական տեղակալների կամ թե հենց իր՝ սուլթանի ղեկավարությամբ. Բացի քոչվոր թուրքմեն հրոսակներից, այդ արշավանքներին մասնակցում էին նաև սելջուկյան պետական կանոնավոր զորաբանակները։

1040 թ. Դանդանականի ճակատամարտում Ղազնևյանների դեմ տարած վճռական հաղթանակից հետո հռչակվեց սելջուկյան սուլթանությունը, և Տուղրիլ բեգը դարձավ պետության ղեկավար։ Սելջուկների ուժերը համալրվում էին օղուզ-թուրքմենների գաղթերով, ընդ որում 1040-ական թվականների արշավանքները սոսկ ռազմական առաջխաղացում չէին, այլև ցեղախմբերի տեղափոխություն՝ բնակության և արոտավայրեր որոնելու նպատակով[25]։

Դեպի Իրան օղուզների գաղթեր էին տեղի ունեցել 1017—1023, 1031, 1042 և 1047 թվականներին[26]։

1042 թ. գաղթած օղուզ-թուրքմենների և Տուղրիլ բեգի հարաբերություններ վատացան այն ժամանակ, երբ սուլթանը 1042 թ. գրավեց Ռեյը, իսկ 1043-ին՝ Համադանը, որով փակվեց օղուզների ասպատակությունների ճանապարհը։ Դեպի Հայաստան և Բաղդադ տանող ճանապարհների հատման կետում ընկած Ռեյը դարձավ սուլթանության մայրաքաղաքը։ Այս բանից դժգոհ, Ռեյում գտնվող թուրքմենները հրաժարվում են ենթարկվել սուլթանին և, փախչելով Իբրահիմ Յաննալի առջևից, անցնում են Ատրպատական։ Սակայն Ատրպատականում երկար չեն մնում, անցնում են քրդական Սարայ լեռնաշղթայի վրայով, ողողում Ջազիրան և սկսում իրենց սովորական ավերումն ու կողոպուտը, ապա Վասպուրականի վրայով վերադառնում են Առան՝ ճանապարհին տալով մարդկային մեծ կորուստներ։

Քանի որ այդ ցեղախմբերը Տուղրիլ բեգի հպատակներն էին[27], դրանց ոչնչացումը դրդապատճառ դարձավ մի շարք արշավանքների, որոնք նրա հրամանով կատարվեցին 1045—1055 թթ.։ Այս շրջանում՝ դեպի Բաղդադ առաջխաղացման ժամանակ, այսինքն կենտրոնում տեղի ունեցած ռազմական գործողություններին զուգընթաց, կատարվեցին մի շարք խոշոր արշավանքներ նաև այլ ուղղություններով՝ հատկապես դեպի Հայաստան։ Երբ Իբրահիմ Յաննալը 1043—1047 թթ. զբաղված էր Համադան և Սպահան նահանգների գրավմամբ, Ջակիր բեգի որդին՝ Յակուտը նշանակվեց Ատրպատականը նվաճող զորքերի հրամանատար։

Այս տարիներին Արսլան Յաբղուլի որդի Գթլմուշը, Խազարաց (Կասպից) ծովի հարավային ափերը գրավելուց հետո, անցնում է Արաքս գետը, մտնում Հայաստանի արևելյան կողմերը, այնտեղից էլ ուղևորվում դեպի Անի, Հայաստանի հյուսիսը, Տայք և Վրաստան[28]։ Յակուտի և Գթլմուշի ռազմական գործողություններին օժանդակում էին Ուրմիա լճի ավազանում մի քանի տարի առաջ հաստատված թուրքմենները։ Վերջիններիս ցեղային

---

[25] Տե՛ս W. Barthold, Turkestan down to the Mongol Invasion t. I 135.

[26] Տե՛ս նույն տեղում, տե՛ս նաև Захар ад-Дин Нишапури, Сельджук-Наме, стр. 13.

[27] Տե՛ս Ибн ал-Асир, стр. 114.

[28] Տե՛ս Schlumberger, L'Epopée. III, p. 545—546.

առաջնորդները, ճանաչելով Տուղրիլի գերիշխանությունը, ազատ էին իրենց ավարառական գործողությունների մեջ։

Պետք է նշել, որ Խորասանից Իրանի վրայով դեպի Հայաստան ներխուժող թուրքմեն հրոսակների համար Ատրպատականը դարձել էր գլխավոր հանգրվան, թեկուզ այն պատճառով, որ գաղթող թուրքմենների անասունները սնող լեռնային հովիտները Խորասանի արոտավայրերից հասնում էին մինչև Համադան։ Բացի այդ, Ատրպատականը դարձել էր Ռումի (բյուզանդական կայսրության) դեմ զինվորական գաղութներ ստեղծելու հարմար վայր։ Հետևաբար հիմնականում Ատրպատականից և նրա վրայով էին կատարվում սելջուկյան արշավանքները։ 1045 թ. Անիի գրավումից հետո բյուզանդական զորքերի ուշադրությունը շեղելու նպատակով Տուղրիլը սելջուկյան մի բանակ ուղարկեց նրանց դեմ, իր հորեղբորորդու՝ Գթլմուշի հրամանատարությամբ։ Վերջինս, ինչպես տեսանք, արդեն անցել էր Արաքսը և ասպատակություններ էր կատարում Պարսկական Իրաքում թափառող թուրքմենների ուղեկցությամբ։ Սակայն, մինչև նրա գալը բյուզանդական զորքերը պարտվել էին Դվինի պարիսպների տակ, որից հետո Գթլմուշի բանակը շարունակեց ասպատակել այդ վայրերը[29]։

1047 թ. Տուղրիլի ազգական Հասան Խուլի[30] գլխավորությամբ սելջուկյան 20000-անոց մի բանակ մտնում է Վասպուրական, հասնում մինչև Բասենի գավառը և Վաղարշավան դաստակերտը։ Այս անցքերին ժամանակակից Արիստակես Լաստիվերտցին հետևյալն է գրում.

«Այս տարիներին (1047—1048) բացվեց երկնքի բարկության դուռը մեր աշխարհի վրա, և մեր դեմ շարժվեց Թուրքեստանից բազում զորք, որոնց ձիերն արագընթաց էին ինչպես արծիվները, իսկ սրանց սմբակները հաստատուն էին ապառաժի նման։ Նրանց աղեղները ձիգ քաշված էին և նետերը սուր էին. նրանք կտրիճի պես գոտևորված էին և նրանց կոշիկների կապերը պինդ ամրացված էին։ Գալով Վասպուրականի գավառը՝ նրանք քաղցած գայլերի նման, որոնք չեն կշտանում ուտելուց՝ հարձակվեցին քրիստոնյաների վրա։ Նրանք եկան մինչև Բասեն գավառը, մինչև մեծ դաստակերտը, որ կոչվում է Վաղարշավան և քանդեցին ու ավերեցին սրով, հրով ու գերեվարությամբ քսան և չորս գավառ»[31]։.

Վասպուրականի կատապան Ահարոն Բուլղարի և Անիի կատապան Կատակալոն Կեկավմենոսի միացյալ ուժերը Մեծ Զավ (Զաբ) գետի ափին տեղի ունեցած ճակատամարտում, թշնամուն թակարդի մեջ գցելու նպատակով, դիմեցին խորամանկության. դիտավորյալ նահանջելով, նրանք թողեցին իրենց ունեցվածքը։ Իսկ սելջուկ թուրքերը կարծելով, թե բյուզանդացիք պարտված նահանջում են, սկսեցին բաժանել ավարը. դարան մտած բյուզանդական զոր-

---

[29] Տե՛ս *Sadruddin el-Huseyni*, Ahbar ud-dovlet fs-selcukiyye.

[30] Տե՛ս *C. Cahen*, La première pénétration turque en Asie Mineure Byzantion, v. XVIII, 1968, p. 15.

[31] **Արիստակես Լաստիվերտցի**, *էջ 64—65։ Աշխարհաբար թարգմանությունները վերցված են Հ. Մանանդյանի «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հատ. III, Երևան, 1952, էջ 39։*

քերը հարձակվեցին կողոպուտով զբաղված թուրքերի վրա և կոտորեցին նրանց. Հասանը և մի շարք այլ հրամանատարներ սպանվեցին[32]։

Այս ժամանակավոր հաջողությունից օգտվելով, Բյուզանդիան կարողացավ մի շարք բերդեր գրավել Դվինի Շադդադյաններից, սակայն հենց այդ ժամանակ Կ. Պոլսում ծագած Լևոն Թոռնիկոսի ապստամբությունը կայսրությանը ստիպեց դադարեցնել ռազմական գործողությունները Դվինի դեմ և զորքերի մի մասը տեղափոխել Կ. Պոլիս։ Դվինի համառ դիմադրությունը և Լևոն Թոռնիկոսի ապստամբությունը փաստորեն վերջ տվեցին կայսրության հաջողություններին[33]։ Բյուզանդական զորքերի տեղափոխումը Կ. Պոլիս և արևելյան սահմաններում պաշտպանության թուլացումը բացեցին ճանապարհը սելջուկյան արշավող զորքերի առաջ։

Հասանի բանակի ամոթալի պարտության վրեժը լուծելու և 1047 թ. Խորասանից գաղթած թուրքմեններին կենտրոնից հեռացնելու նպատակով, Տուղրիլ-բեգը, որը զբաղված էր Տիգրիսի արևելյան կողմերը նվաճելով, 100000-անոց մի բանակ հանձնում է իր եղբորը՝ Իբրահիմ Յաննալին և Գթլմուշին, որոնց միանում են նաև Ատրպատականում համախմբված վերոհիշյալ թուրքմենները, և հրամայում է արշավել Հայաստան։ Սելջուկյան բանակները Ատրպատականից Խոյի և Սալմաստի վրայով ներխուժում են Հայաստան[34]։

«497 թ. մեր թվականության (1048—1049),— վկայում է Արիստակես Լաստիվերտցին,— որը մեր գերության երկրորդ տարին էր՝ մյուս անգամ շարժվեց ահագին ալեկոծությամբ գազանության մրուրը, բարկությամբ լիքը՝ Պարսկաստանի կողմից և եկավ լցվեց Բասենի և Կարնո ընդարձակ դաշտը։ Հեղեղատի ցայտուկները բռնեցին երկրի չորս անկյունները արևմուտքում՝ մինչև Խաղտյաց գավառը, հյուսիսում՝ մինչև Սպեր և մինչև Տայքի ու Արշարունիքի ամրությունները, իսկ հարավում՝ մինչև Տարոն և մինչև Հաշտյանքի գավառները՝ մինչև Խորձյանի անտառը»[35]։

Սելջուկյան հրոսակները բազմաթիվ ավաններ և գյուղեր ավերեցին, շատ մարդկանց կոտորեցին։ Սոսկալի ջարդ ու ավերածություն գործեցին մանավանդ Մանանաղի գավառի Սմբատաբերդ կոչվող լեռան վրա, ուր ապաստանել էր ժողովրդի մեծ բազմություն՝ իր ունեցվածքով։ Հարձակվելով սրանց վրա, թուրքերը քանդել էին ամրությունը և ներս խուժելով Սմբատաբերդ՝ սրի էին անցկացրել, գերել բոլորին[36]։

Բյուզանդական բանակը սկզբում անգործության մատնվեց, փոխանակ անմիջապես դիմագրավելու ահարկու վտանգը։ Վասպուրականի կատապան Ահարոն Բուլղարի պնդմամբ բյուզանդական բանակը քաշվեց Վանանդ գավառի մի կողմը՝ Վրաստանի սահմանի վրա և սպասեց կայսրի հրամանին ու

---

32 Տե՛ս «Повествование вардапета Аристакэса Ластивертци», М., 1968, стр. 161. *O. Turan*, Selçuklular tarihi ve Turkislam medenyeti, Ankara, 1965, p. 75.

33 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները...*, էջ 212—213։

34 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 102։

35 Արիստակես Լաստիվերտցի, էջ 67, Հ. Մանանդյան, էջ 40։

36 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 71—74։

*Նրա կողմից ուղարկվելիք ռազմական օգնությանը՝ վրաց էրիսթավ Լիպարիտի գլխավորությամբ։ Իբրահիմ Յաննալի զորքը, օգտվելով բյուզանդական բանակի անգործությունից, սկսեց հետապնդել նրան, ապա հարձակվեց հարուստ վաճառաշահ Արծն քաղաքի վրա (որը պարիսպներ չուներ) և հիմնովին կործանեց այն։*

*Արծն քաղաքի ավերման մասին մանրամասն տեղեկություն տալիս է նաև Մատթեոս Ուռհայեցին։*

*«Եվ ահա այս թվականին (ՆՂԸ՝ 1049),— պատմում է Ուռհայեցին,— անօրենների զորքերը հասան Հայոց հռչակավոր ու բազմամարդ քաղաքը, որն անվանվում է Արծն, և տեսան, որ այդ քաղաքն առանց պարսպի է, լցված է տղամարդկանց ու կանանց անթիվ բազմությամբ և ունի անհամար քանակությամբ ոսկի ու արծաթ։ Եվ քաղաքացիները տեսնելով այլազգիների զորքը՝ միահամուռ կերպով ելան պատերազմի... այլազգիները սրերով հարձակվեցին քաղաքի վրա և սաստիկ կոտորած արին ու սրի անցկացրին համասարապես ամբողջ քաղաքը՝ մոտ 150000 մարդ։ Այլ ոսկու, արծաթի ու դիպակների մասին ավելորդ է խոսել, որովհետև անկարելի է այդ գրի անցկացնել»[37]։*

*Պետք է նշել, որ այս աղետների պատճառը Բյուզանդական կայսրության քաղաքականությունն էր, որը երկիրը թողել էր անպաշտպան և զինվորական հայրենասեր հայ տարրը փոխարինել օտար վարձկան զորքերով։ Սակայն զգալով, որ առանց հայերի և վրացիների համագործակցության Կատակալոնը և Ահարոնը պիտի չկարողանան կասեցնել սելջուկյան հաղթական արշավը, բյուզանդացիները օգնության կանչեցին Գրիգոր Մագիստրոսին և վրաց Լիպարիտ իշխանին։ Ուստի, երբ վերջիններս ժամանեցին իրենց զորքերով, բյուզանդական բանակը դուրս եկավ խրամատներից։ Մեծ ընդհարումը սելջուկյան բանակի հետ տեղի ունեցավ 1048 թ. սեպտեմբերի 18-ին Բասենի մեծ դաշտում՝ Կապուտռու բերդի մոտ, որը գտնվում է Արշովիտում[38]։ Պետք է նշել, որ սելջուկների այս արշավանքի հենց սկզբից վերոհիշյալ զորավարները անմիաբան էին և անհամերաշխ։ Հատկապես հակասական էին Կատակալոնի և Ահարոնի ռազմական ծրագրերը։ Կռվի կեսին Ահարոն Բուլղարն իր զորամասերով նահանջեց, իսկ մնացյալ զորքը չարաչար պարտություն կրեց։ Սելջուկները տուն վերադարձան իրենց հետ տանելով մեծ թվով բյուզանդական պատրիկներ, վրաց Լիպարիտ իշխանին, ասվում է նաև՝ 100000 գերի և մեծաքանակ ավար[39]։*

*Պարսկական Իրաքում և հատկապես Հայաստանում ձեռք բերված մեծ քանակությամբ գերիները, անասուններն ու հարուստ ավարը ուռճացրին Թուրքմեն առաջնորդներին։ Բյուզանդական կայսրի հեա 1049 թ. սկսված հաշտության բանակցությունները վերջացել էին զինադադարի կնքմամբ[40], ուստի*

---

37 Մատթեոս Ուռհայեցի, *էջ 102—103, տե՛ս* Հ. Մանանդյան. *էջ 42։*

38 *Տե՛ս* Արիստակես Լաստիվերտցի, *էջ 80—81,* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 107։*

39 *Տե՛ս Ибн ал-Асир,* стр. 116.

40 *Տե՛ս «Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին», կազմեց Հ. Թ. Նալբանդյան. Երևան, 1965, էջ 245։*

Տուղրիլը ստիպված էր մոտավորապես չորս տարի դադարեցնել արշավանքները կայսրության դեմ, մանավանդ որ զբաղված էր թուրքմենների ապստամբության ճնշմամբ, մյուս կողմից՝ սուլթանի գլխավոր նպատակն էր գրավել Բաղդադը՝ մահմեդականների խալիֆայի նստավայրը։

Այս տարիներին Բյուզանդիան նույնպես չէր կարող ձեռնարկել ռազմական գործողություններ իր արևելյան սահմաններում, որովհետև ստիպված էր բանակների մի մասը տեղափոխել Բալկանյան թերակղզի՝ պեչենեգների ահարկու գրոհները կանգնեցնելու համար։

Բյուզանդիան ահաբեկված սելջուկյան արշավանքներից, թեև որոշ չափով մեղմացրել էր իր հարկային և վարչական քաղաքականությունը հայերի հանդեպ, սակայն դեռևս շարունակում էր իր ոտնձգությունները հայ իշխանների ինքնուրույնության դեմ։ Ուստի սելջուկյան առաջին խոշոր արշավանքներից հետո, փոխանակ հենվելու հայկական ռազմական ուժի և դիմադրողականության վրա, որոշեց վերջ տալ նաև Պաղինի գավառում Արկնի կենտրոնով պահպանվող հայկական իշխանության ինքնուրույնությանը, խոցելի դարձնելով նաև իր հարավային սահմանները թուրքական հետագա արշավանքների առաջ։

1052 թ., թեև սելջուկյան բանակները խոշոր արշավանքներ չկատարեցին Անդրկովկասս և Հայաստան, սակայն ստեղծվում էին նախադրյալներ առաջիկա ներխուժումների համար։ Թուրքմենները խոշոր ցեղախմբերով արոտավայրեր որոնելով գաղթում էին Իրան և ապա ողողում պարսկական Իրաքը։ Բնակչությունը ահաբեկված փախչում է Բաղդադի կողմերը։ Խալիֆան բողոքում է Տուղրիլ բեգին. վերջինս արգելում է նրանց շարժումը դեպի Իրաք և հրամայում է Ատրպատականի վրայով շարժվել Հայաստան։ Պետք է նշել, որ թուրքմենների շարժման ուղղության փոխվելը կապված էր նաև վրացիների կողմից 1051—1052 թթ. Տփղիսի և Գանձակի ամիրայությունների դեմ կատարած արշավանքների հետ։

Այսպես, Գթլմուշը 1053 թ. թուրքմենական մի խոշոր բանակի գլուխ անցած պաշարեց Կարսը և մեծ կոտորած կազմակերպեց այնտեղ, սակայն վերջնականապես չկարողանալով գրավել քաղաքը, և հավանաբար, վախեցած Տուղրիլ բեգի հետապնդումից, արագ նահանջեց Իրաք։ Վերադարձի ժամանակ, Դվինի ճանապարհի վրա գտնվող Սուրմարի քաղաքի հայ բնակիչները անակնկալի բերեցին Գթլմուշի նահանջող 60000-անոց բանակին։ Մի գիշեր, հյուրասիրելով այդ հրոսակներին գինիով, լուսադեմին կոտորում են, և Գթլմուշը իր փոքրաթիվ թիկնապահներով հազիվ ճողոպրում է[41]։

Վրաստանի առաջխաղացումը կանգնեցնելու և մյուս կողմից՝ Գթլմուշին հետապնդելու նպատակով, Տուղրիլ բեգը 1052—1053 թթ. երկու անգամ արշավեց Վրաստան, այն դարձնելով սելջուկյան սարսափելի ասպատակությունների թատերաբեմ։ Սակայն նկատելով, որ բյուզանդացիները կարողացել են որոշ չափով ամրացնել Վրաստանը, 1054 թ. ավար և գերիներ ձեռք բերելու, ինչպես և նոր եկած թուրքմենների ախորժակին գոհացում տալու համար, անթիվ զորքերով, փղերով, կառքերով և ռազմական սարքավորումով Ատր-

[41] Տե՛ս «Köprülü F. Anadolu Selçuclulari tarihinin yerli Kaynaklari», Belleten, XXVII, p. 459.

պատականի վրայով խուժեց Հայաստան։ Սելջուկ թուրքերը թեև մեծ հաջողությունների չհասան Կարինի և Կարսի կողմերում, այնուամենայնիվ կողոպտեցին Տարոն, Խորձյան և Անձիտ գավառները, Եկեղյաց, Տայքի, Խաղտոյաց ու այլ շրջանները, բնակչության մի մասին սրի քաշեցին, շատերին գերի տարան։ Առավել ուժեղ դիմադրեցին Կարսի հայ ռազմիկները՝ ցուցաբերելով հայրենիքի պաշտպանության անձնազոհության և նվիրվածության հերոսության օրինակներ։ Քաղաքի շուրջը մղված մարտերի ժամանակ հատկապես աչքի ընկավ Թաթուլ անունով մի իշխան, որը մահացու հարվածով վիրավորել էր Տուղրիլի ազգական սելջուկ մի երիտասարդի, բայց ինքն էլ գերի էր ընկել։ Իր մոտ կանչելով Թաթուլին Տուղրիլը ասում է. «Եթե սա (վիրավորը) ապրի, քեզ կազատեմ, իսկ եթե մեռնի, կհրամայեմ քեզ մատաղ անել նրան»։ Թաթուլը հանդուգն պատասխանում է. «Եթե հարվածն իմն է, չի ապրի»[42]։

Տուղրիլի զորքերը չկարողանալով գրավել Մանազկերտ քաղաքը, գնացին ասպատակելու մյուս գավառները։ Հարուստ ավարով վերադարձի ճանապարհին նորից պաշարեցին Մանազկերտը։ Քաղաքի բնակիչները հաջողացրին սննդամթերք բերել դրսից[43], և մեծ վճռականությամբ պաշտպանել քաղաքը։ Այս անգամ պաշարելով Մանազկերտը, Տուղրիլը հույս ուներ պատերազմական մեքենաների օգնությամբ քանդել պարիսպը կամ թե անցք փորելով ներխուժել քաղաք։ Սակայն այդ բոլոր ձեռնարկումները խափանվեցին քաղաքացիների և քաղաքի կառավարիչ Վասիլ իշխանի հերոսական ջանքերի շնորհիվ։ Քաղաքը մի ամիս պաշարելուց հետո սելջուկները համոզվեցին, որ այն գրավել չեն կարող և հեռացան Պարսկաստան։ Սակայն նրանք Մանազկերտում կրած անհաջողության վրեժը հանեցին հայկական մյուս քաղաքներից և ավաններից։ Նահանջի ճանապարհին ավերեցին Արծկեն, Բերկրին և այլ բնակավայրեր, սրի անցկացնելով բնակիչներին։

Արիստակես Լաստիվերտցին հռետորական ոճով այսպես է նկարագրում սելջուկ թուրքերի այս ավերածությունները։

«Իսկ այն ժամանակվա չարագործությունները, որ նրանք մեր աշխարհին հասցրին ո՞վ էր կարող գրի առնել կամ ո՞ւմ միտքը ի վիճակի է այդ հաշվի անցկացնել. որովհետև բոլոր այս երկրները լիքն էին դիակներով, թե շեն և թե անշեն վայրերը, ճանապարհները և անապատ տեղերը, քարանձավները և առապարները, խիտ անտառները և ժայռոտ տեղերը։ Եվ բոլոր մարդաբնակ տեղերում նրանք հրդեհեցին և ոչնչացրին տներն ու եկեղեցիները. այս հրդեհի բոցն ավելի էր, քան Բաբելոնի հնոցինը։ Եվ այսպիսի ձեռնարկությամբ նրանք կործանեցին մեր երկիրը, ո՛չ թե մեկ անգամ, այլ երեք անգամ՝ մեկ մեկու ետևից վերադառնալով, մինչև որ մեր երկրում ամեն տեղ հատան բնակիչները և դադարեց անասունների բառաչը»[44]։

Սելջուկ թուրքերի կատարած վերջին ավերածություններն է՛լ ավելի ուժեղացրին հայ ժողովրդի զանգվածային արտագաղթը դեպի Բյուզանդիայի

---

42 Արիստակես Լաստիվերտցի, էջ 88։

43 Տե՛ս նույն տեղում, էջ 90—94։

44 Նույն տեղում, էջ 85, Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 48։

կենտրոնական և հարավ-արևմտյան նահանգները, մանավանդ դեպի Կապադովկիա և Կիլիկիա։ Մանազկերտի մոտ կրած անհաջողությունից հետո, Տուղրիլ-բեգը ստիպված էր հանգիստ թողնել Հայաստանը։ Կռիվներ էր վարում գլխավորապես Միջագետքում և Պարսկաստանի հարավային կողմերում, հիմնականում զբաղված էր կայսրության իսլամական թիկունքի ամրապնդմամբ։

Դեռևս 1054 թ. Տուղրիլին հաջողվել էր վերջնականապես հպատակեցնել Գանձակի և Դվինի Աբու-լ-Ասվար ամիրային, ինչպես և Ատրպատականի տարբեր շրջանների տերերին[45]։

1058 թ. Տուղրիլը Բաղդադի խալիֆայից ստացավ սուլթանի կոչում, և դրանով պաշտոնապես հիմք դրվեց սելջուկյան աշխարհակալ պետության։

Նախորդ արշավանքների ժամանակ ավերածություններից զերծ մնացած Մրվանյանների ամիրայությունը Դիարբեքիրում, որը համագործակցել էր Եգիպտոսի խալիֆային օժանդակող արաբ ամիրաներին, հպատակություն հայտնեց Տուղրիլին։

1056 թ. Ատրպատականի և Առանի սելջուկյան բանակների հրամանատար, Տուղրիլ բեգի եղբորորդի Յակութը և թուրքմեն ամիրաներից Սաբուկը մի շարք ասպատակություններ կատարեցին Հայաստանի սահմանամերձ շրջաններում։ Ապարդյուն էին անցնում այդ արշավանքները կանգնեցնելու համար բյուզանդական կայսրի կողմից սահմանային ուժերի գլխավոր հրամանատար նշանակված Նիկեփոր Վրիեննոսի պաշտպանական ուշացրած ձեռնարկումները։ 1057—1058 թթ. Յակութի խմբերին է միանում նաև Իբրահիմ Յաննալին օժանդակող և Տուղրիլ սուլթանի դեմ ապստամբած թուրքմենների մի մասը, որոնք կրկին պաշարում են Կարսը։ Չկարողանալով գրավել բերդը, նրանք անցնում են Անի։ Բախվելով Անիի ամրակուռ պարիսպներին, հրոսակախմբերը մտնում են Բասենի հովիտը, ավերածության ենթարկում մի շարք բնակավայրեր և գյուղեր։ Մեծապես տուժում է Օկոմի քաղաքը, որտեղ սելջուկները կոտորում են 30000 բնակիչ և ավերակի վերածում այն[46]։

Թուրքմենները տեսնելով, որ երկիրը անպաշտպան է, սկսում են հաճախակի ասպատակել Հայաստանի տարբեր գավառները։ Այսպես, նույն՝ 1057 թ. նրանք մտնում են Մանանաղի գավառը, որտեղ բաժանվում են երկու մասի։ Մի մասը խուժում է Հաշտյանք գավառը, կողոպտում և կոտորում Երիզա ավանի բնակիչներին, ապա անցնելով Կարնո գավառը, պաշարում է Բլուր ավանը և կոտորում 7000 բնակիչների, որոնք ապաստան էին գտել այնտեղ[47]։ Իսկ մյուս մասը ասպատակում է Անձիտ և Խորձյան գավառները[48]։

1058 թ. սելջուկները Աբու Դինար ամիրայի գլխավորությամբ ձեռնարկեցին մի նոր արշավանք՝ հարուստ և փարթամ Մելիտինե քաղաքի վրա։ Այս

---

45 Տե՛ս *Ибн ал-Асир*, стр. 117.

46 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 102։

47 Տե՛ս նույն տեղում, էջ 108, Մ. Չամչյան, հատ. II, էջ 963, 964։

48 Տե՛ս Մ. Չամչյան, հատ. II, էջ 965։

*անգամ էլ սելջուկյան բանակը բաժանվեց երկու մասի։ Մի մասն անցնելով Ճորոխի հովտով, գրավեց Կոլոնիա[49] քաղաքը, մյուս մասը՝ մոտ 3000 հոգի, Աբու Դինարի հրամանատարությամբ, հարձակվեց Մելիտինեի վրա, գրավեց այն, տասն օր շարունակ կողոպտեց ու կոտորեց բնակիչներին, ապա անցավ Անձիտ գավառը։ Սակայն սելջուկների այս արշավանքը վերջացավ նրանց լիակատար պարտությամբ։ Երբ նրանք ավարով ու գերիներով՝ Արածանիի հովտով վերադառնում էին Իրան, Տարոնի սահմաններում՝ ս. Կարապետ վանքի մոտ նրանց ճանապարհը կտրեցին քաջ սասունցիները, որոնց գլխավորում էր Մամիկոնյան Թոռնիկ իշխանը։ Անակնկալի եկած սելջուկները կորցրեցին ամբողջ ավարը և ցրտահար եղան։ Կենդանի մնացածները մազապուրծ փախան[50]։*

*Իբրահիմ Յաննալի ապստամբությանը մասնակցած թուրքմեն ցեղախմբերի ընչաքաղց ախորժակին հագուրդ տալու և ապստամբ տարրերին կենտրոնից հեռացնելու նպատակով, Տուղրիլ սուլթանի հրամանով 1060 թ. մի շարք արշավանքներ են կազմակերպվում դեպի Հայաստանի արևմտյան և հարավային շրջանները և սահմանամերձ բյուզանդական հարուստ քաղաքները։ Պետք է նշել, որ այս արշավանքներին դյուրություն էին ընձեռում ոչ միայն բյուզանդական կայսրությունում անընդմեջ բռնկվող գահակալական կռիվներն ու կենտրոնախույս ուժերի երկպառակությունները, այլև հայերի նկատմամբ Բյուզանդիայի վարած անհեռատես քաղաքականությունը։*

*1059 թ. Կեկավմենոսը բյուզանդական զորքերով վերադառնում է Կ. Պոլիս Կոստանդին Դուկասին կայսերական գահին հաստատելու համար, անպաշտպան թողնելով արևելյան նահանգները։ Հայ և օտար ժամանակագիրները դառնությամբ են արձանագրում Բյուզանդիայի բռնած անտարբեր դիրքը սելջուկների կողմից Հայաստանի շեն վայրերի ավերման նկատմամբ։ 1059—1060 թթ. սելջուկների կողմից կատարված չարագործությունների առթիվ Սմբատ Սպարապետը մեղադրում է բյուզանդացիներին. «Եւ այս լինէր յանտիրութենէ, և ի չարաբարոյացն Յունաց. զի հանին զերկիրն Հայոց ի տերութենէ Հայոց, և զքաջ զօրականսն Հայոց սպանին խաբմամբ»[51]։ Ապա ավելացնում է, որ այս սարսափելի օրերին անպաշտպան թողնելով Հայաստանը նրանք փախչում էին Կ. Պոլիս։*

*Միքայել Ասորին դառնությամբ նշում է, որ բյուզանդական կայսրերը ոչ միայն ասորիների, այլև հայերի նկատմամբ վարելով թշնամական քաղաքականություն, հրամայում էին վառել եկեղեցիների ու վանքերի գրքերը[52]։ Բյուզանդացիների վարած անհեռատես քաղաքականության և սելջուկների հաճախակի ավարառու արշավանքների համար բյուզանդացի պատմիչները ևս մեղադրում են կայսրերին։*

*1060 թ. Խորասանի Սալարի («Խորասանի Սալարը» տիտղոս է) գլխավորությամբ մի հրոսակախումբ արշավեց Եդեսիայի վրա։ Նոր կայսր Կոս-*

---

49 *Կոլոնիա կամ Կողոնիա՝ քաղաք Առաջին Հայքում։*

50 *Տե՛ս* Մատթեոս Ուռհայեցի, *էջ 130,* Սամուել Անեցի, *էջ 111։* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, էջ 54—55,* Մ. Չամչյան, *հատ. II, էջ 966—967։*

51 Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, էջ 56։*

52 *Տե՛ս Michel le Syrien*, ch. III, p. 166.

տանդին Դուկասը Անտիոքի դուքս Խաչատուր Անեցու օժանդակությամբ ձախողեց Եդեսիայի պաշարումը։ Այնուհետև նույն թվականին սելջուկյան մի այլ բանակ՝ Սատախ, Կապպար (Ծապպար) և Տուղրիլ բեգի մեծ դիվանի այլ ամիրաների գլխավորությամբ արշավեց Վասպուրականի Սենեքերիմ թագավորի որդիների՝ Ատոմի և Աբուսահլի տիրույթ Սեբաստիա քաղաքի վրա։ Վերջիններս փախան և ապաստանեցին խավատանեք անառիկ բերդում։ Սելջուկները հեշտությամբ գրավեցին անպարիսպ Սեբաստիան և կողոպտեցին Սենեքերիմ թագավորի գանձարանը, գերեվարեցին շատ կանանց ու երեխաների։ Թեև Կ. Պոլսից ժամանած օժանդակ զորքերը հայ զորավար Բանկուրասի գլխավորությամբ հետապնդեցին Ատրպատական վերադարձող սելջուկներին, սակայն ճանապարհին պարտություն կրեցին[53]։

Մինչ Բյուզանդիան, սթափվելով անընդհատ կրկնվող արշավանքներից, կսկսեր վերակառուցել Հայաստանում գտնվող ավերված բերդերն ու քաղաքների պարիսպները, 1062 թ. Տուղրիլի հրամանով, վերոհիշյալ Սալար Խորասանի գլխավորությամբ, Ճեմճեմ և Իսուլու ամիրաների ընկերակցությամբ, սելջուկյան թուրքմենական մի բանակ ներխուժում է Դիարբեքիրի սահմանում գտնվող Չորրորդ Հայքի՝ Պաղինի և Հայոց Միջագետքի Թլմուխի հայաբնակ շրջանները։ Թուրքերին միացավ նաև Մրվանյան Նիզամ ալ-Դաուլա Նասր ամիրան։ Ձեռք բերված գերիները վաճառվում էին Դիարբեքիրի և Ամիդի շուկաներում։ Կայսր Դուկասի ուղարկած բյուզանդական բանակը, Ֆրանկոպուլ (Հերվե) անունով նորմանդացի զորավարի գլխավորությամբ, որին միացավ նաև Եդեսիայի Տավտանոս զորավարն իր զորքով, հետապնդելով Ատրպատական վերադարձող սելջուկներին, պաշարում է Ամիդը։ Թեև Մրվանյան ամիրային հաջողվում է կաշառել Ֆրանկոպուլին և վերացնել քաղաքի պաշարումը, սակայն վերջինս 1063 թ., Կարին վերադառնալու ճանապարհին պարտության է մատնում Ճեմճեմ և Իսուլու ամիրաների հրոսակախմբերին[54]։

Այսպիսով, թեև Տուղրիլ բեգի ժամանակ՝ 1025—1063 թթ. կատարվող սելջուկյան արշավանքները չհանգեցրին Հայաստանի նվաճմանը, սակայն ամայացնելով Հայաստանը և թուլացնելով Բյուզանդիայի արևելյան սահմանների պաշտպանական գծերը, հող նախապատրաստեցին ոչ միայն ամբողջ Հայաստանի, այլև Բյուզանդական կայսրության Փոքր Ասիայի արևմտյան նահանգների նվաճման համար։

## 3. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԵՐՋՆԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄԸ XI ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

Տուղրիլ բեգի մահից հետո սուլթան դարձավ նրա եղբայր Չակիր բեգի որդի Ալփասլանը (1063—1072), որը պարտության մատնեց ապստամբ տարրերին, նրանց գլխավորներից Գթլմուշին, մաքրեց կայսրության արևելյան շրջանները խռովարարներից և Իրանի ամբողջ տարածքում իր տիրակա-

53 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 134—135, Մ. Չամչյան, էջ 973—975։

54 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 138, 144։ Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 57—58։

լությունը հաստատեց։ Այնուհետև նա ձեռնարկեց մի շարք արշավանքներ դեպի Հայաստանի հյուսիսային և կենտրոնական շրջանները, որոնք նախորդ հարձակումների ժամանակ համեմատաբար զերծ էին մնացել ավերումներից։ Այս արշավանքները նվաճողական բնույթ էին կրում և գրավված երկրներում ստեղծվում էին սելջուկյան վարչա-քաղաքական միավորումներ՝ ամիրայություններ։

Ալփասլանի առաջին արշավանքը դեպի Անդրկովկաս նպատակ ուներ Մերձավոր Արևելքում ապահովել իր թիկունքը՝ Եգիպտոսի Ֆաթիմյանների և Բյուզանդիայի դեմ ձեռնարկվելիք հետագա խոշոր արշավանքների նախօրեին։

Ալփասլանը մեծ բանակով փետրվարին Հյուսիսային Իրանի Ռեյ քաղաքից եկավ Վասպուրականի սահմանակից Մարանդ քաղաքը։ Այստեղ նրա շուրջը համախմբվեցին Ատրպատականի և Շիրվանի ամիրաները, որոնց հետ Ալփասլանը անցավ Արաքս գետը և մտավ Նախճավան[55]։ Նա իր որդու՝ Մելիքշահի և մեծ վեզիր Նիզամ ալ-Մուլքի առաջնորդությամբ մի մեծ զորաբանակ Նախճավանի վրայով ուղարկեց Հայաստանի կենտրոնական շրջանները նվաճելու, իսկ ինքը ուղղվեց դեպի Վրաստան[56]։

Մելիքշահի գլխավորած զորաբանակը գրավում է Սուրմառի բերդը[57] Ծակատք գավառում, որը այժմյան Սուրմալին է։ Ապա թուրքական զորաբանակը պաշարում է Մարմաշենը և համառ կռիվներից հետո, ներխուժելով բերդաքաղաքը, ոչ միայն հրդեհում ու քանդում է շինությունները, այլև սրի է քաշում բնակիչներին[58]։ Այնուհետև Ալփասլանի բանակը շարժվում է դեպի հյուսիս և միանում Մելիքշահի այստեղ գործող բանակին։ Հյուսիսային Հայաստանը և Վրաստանը ենթարկված էին ահավոր վտանգի։ Սելջուկյան միացյալ բանակը գրավեց Ջավախք գավառի Ախալքալաք և մի շարք այլ բերդեր[59]։

Ուռհայեցին նույնպես վկայում է, որ 1064 թ. Ալփասլանը Աղվանքը սրի ու գերության մատնելուց հետո, անցել էր Վրաստան, գրավել Ախալքալաքը և անողորմ կերպով կոտորել ու գերել նրա բնակչությանը[60]։ Բյուզանդական կայսրությունը ոչ մի օգնություն ցույց չտվեց իրեն դաշնակից Վրաստանին, ինչպես նաև Տաշիր-Ձորագետի թագավորությանը։

Ալփասլանի հարձակումներից ահաբեկված, Վրաստանի Բագրատ Դ և Տաշիր-Ձորագետի Կյուրիկե թագավորները հպատակվեցին նրան, որպեսզի փրկեին իրենց երկրները վաշկատունների բարբարոսություններից։

Ինչպես վկայում են հայ և օտար աղբյուրները, Ալփասլանը խաղաղության դաշն է կնքում Կյուրիկեի հետ և վերջինիս դուստրը կնության է ուզում իր վեզիր Նիզամ ալ-Մուլքին[61]։ Այսպիսով, հպատակվելով Ալփասլանին, Կյուրիկեն վերադառնում է իր Լոռե մայրաքաղաքը։

---

55 „Ahbâr üd-devlet is-selçukiyye", p. 24.

56 Տե՛ս *Ибн ал-Асир*, стр. 118.

57 Տե՛ս նույն տեղում։

58 Տե՛ս նույն տեղում, էջ 119։

59 Տե՛ս *M. Brosset*, Histoire de la Géorgie, t. I, p. 327.

60 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 146։

61 Տե՛ս նույն տեղում, էջ 145, 146, Վարդան, էջ 136։

Ախալքալաքի առումից հետո, 1064 թ. ամռան վերջերին Ալփասլանը իր զորքերով պաշարեց Անի քաղաքը։ Թեև սելջուկյան թուրքերը այնքան էլ վարժ չէին պաշարողական բարդ գործողություններին, այնուամենայնիվ նրանք կարողացան գրավել քաղաքը, գլխավորապես այն պատճառով, որ Բյուզանդիան չուներ այստեղ բավարար թվով պահապան զորք և այս օրհասական կռվի ժամանակ էլ օգնական ուժեր չուղարկեց իր արևելյան սահմանի ամենանշանավոր քաղաքը փրկելու համար։ Փարթամ ու հարուստ Անին ընկավ և ենթարկվեց ավերածության ու անխնա կողոպուտի[62]։

Անիի գրավման մասին (1064 թ. օգոստոսի 16-ին)[63] ընդարձակ տեղեկություններ են հաղորդում ոչ միայն հայկական, այլ նաև բյուզանդական, արաբական և պարսկական աղբյուրները։

Առանձնապես կարևոր և արժանահավատ են համարվում Իբն ալ-Ասիրի և Սադր-ադ-Դին ալ-Հուսայնիի վկայությունները։

«Սրանից հետո,— գրում է Սադր-ադ-Դին ալ-Հուսայնին,— սուլթանը առանց ժամանակ կորցնելու քայլեց Անիի վրա։ Այս քաղաքի պարիսպները շատ ամուր էին և սարերի վրա բերդեր կային։ Այս քաղաքը Ռումի քաղաքներից ամենքից շատ ամրացված քաղաքներից էր։ Բոլոր գանձերը և հարստությունները այս բերդերի մեջ էին գտնվում։ Քաղաքի բնակիչները սուլթանին և զինվորներին վաճառականների տեղ դրեցին, որովհետև մինչ այդ թշնամու զինվորներ չէին տեսել։ Սուլթանը իր վրանը խփեց արտերի մեջ։ Սրա վրա, քաղաքից, ցանված արտերի ջրամատակարարումը հսկող մի քանի հեծյալ պաշտոնյաներ դուրս եկան և ցանկացան սուլթանի զինվորներին արտերից դուրս քշել։ Այս տեսնելով սուլթանի զինվորներից մի խումբ անմիջապես հարձակվեց սրանց վրա։ Հոռոմները (հույները) տեսնելով զինված մարդկանց, ահ ու սարսափի մեջ ընկած փախան և մտան քաղաք։ Քաղաքում հույների մեջ խառնաշփոթություն առաջացավ։ Սուլթանի ուժը տեսնելով բարձրացան իրենց քաղաքի պարիսպների մեջ տեղադրված աշտարակների վրա, փայտով ու քարով փակեցին այն անցքերը, որոնք տանում էին դեպի քաղաք և այնուհետև փակեցին դեպի բերդերը տանող ճանապարհները։ Սուլթանը հրամայեց այրել փայտերը և քանդել քարե պատնեշները, սրա վրա հույները ներքնաբերդից դուրս գալով ընդունեցին ջիզիա վճարել սուլթանին։ Սուլթանը սրանց վրա վերակացու նշանակեց Խորասանի ամիրին և Շեմշուլ-Խադիմին։ Սրանք (հույները) ստորացած զգալով, այդ հաշտությունից հրաժարվեցին և նորից սկսեցին կռվել։ Սուլթանը պարսպի տակ մի բլուր շինելու համար, հրամայեց տոպրակների մեջ լցնել հարդ և հող, ու իրար վրա դարսելով բլրի տեսք տվեց։ Սրա վրա բարձրացան պարսատիկավորները և նավթոտ քուրձ նետողները։ Իսկ ուրիշները՝ երկաթյա գործիքներով ցցեր էին մխում պարսպի մեջ։ Հույները իրենց քաղաքի ամենագեղեցիկ կանանց և մանչերին ընտրելով, ուղարկեցին սուլթանի առաջ, որպեսզի վերջինս հմայվի նրանց գեղեցկությամբ, Սուլթանը հրամայեց բոլորին գերի վերցնել։ Սուլթանը և

62 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. III, էջ 59։

63 Տե՛ս Սամվել Անեցի, էջ 112։

զինվորները նույնիսկ ժամանակ չէին վատնում՝ ուտելու և հանգստանալու վրա։ Սուլթանը հրամայեց շինել փայտե մի աշտարակ և այն ծածկել տվեց քացախի մեջ թաթախված թաղիքով, որպեսզի չայրվի, սրանից հետո այս աշտարակի (որը շարժական էր) վրայից սկսեցին կռվել և արգելակել հույների մոտենալը պարսպին։ Վերջապես մահմեդականներին հաջողվեց ամուր մասերը քանդել և մտնել քաղաք։ Այնուհետև, քաղաքի բնակիչներին ոտնակոխ արեցին իրենց ձիերի սմբակների տակ»։ «Եվ կոտորեցին անթիվ քանակությամբ բնակչություն, այնքան շատ, որ մահմեդականներից շատերը չկարողացան ներս խուժել քաղաք սպանվածների բազմության պատճառով։ Եվ նրանք գերի վերցրին գրեթե նույնքան, ինչքան որ սպանել էին»[64]։

Մատթեոս Ուռհայեցին պատմում է, որ Ալփասլանը, չկարողանալով ներխուժել քաղաք, արդեն հուսահատվել էր և սկսել էր ետ նահանջել, սակայն Անիի իշխանավորները՝ Բագրատը և Գրիգոր Բակուրյանը հենց նույն այդ ժամանակ թողին ժողովրդին անպաշտպան և ետ քաշվեցին միջնաբերդ։ Մահմեդականներն իմանալով այդ և տեսնելով, որ ժողովուրդը խուճապի է մատնվել, ետ դարձան ու գրավեցին քաղաքը, որ առանց պահապանների էր[65]։

Ալփասլանի այս արշավանքի ժամանակ դեռևս շարունակում էր իր գոյությունը պահպանել Կարսի Բագրատունյաց թագավորությունը՝ Աբբասյան Գագիկի իշխանության ներքո։ Ալփասլանը պատվիրակություն է ուղարկում Գագիկի մոտ և նրան կոչում հնազանդության։ Վերջինս պատվիրակներին դիմավորում է սգավոր՝ սև հագուստ հագած և նստած սև բարձի վրա՝ ասելով նրանց, թե ինքը սգում է Տուղրիլ բեգի մահը։ Լսելով այս Ալփասլանը բանակով գալիս է Կարս։ Գագիկը նրան ընդունում է պատվով։ Այնուհետև հնազանդություն հայտնելով սուլթանին, ազատում է Կարսը թուրքական վայրագ ավերածություններից։ Սակայն 1065 թ., վախենալով թուրքերի հետագա հարձակումներից, Գագիկը իր թագավորությունը հանձնեց Բյուզանդիայի Դուկաս կայսրին (1059—1067), փոխարենը ստանալով Կիլիկյան Տավրոսում Ծամընդավ, Կեսարիա և Խավատանեք քաղաք-ամրոցները[66]։ Գրիգոր Բակուրյանը բյուզանդական կայսրի համար կատարած ծառայությունների դիմաց նշանակվեց Կարսի կառավարիչ (1065—1074)։

Ալփասլանը իր 100000 բանակով ու 50000 գերիներով վերադարձավ Ռեյ։ 1064 թ. մեծ հաջողություններից հետո Ալփասլանը, որը կատարելապես ապահովել էր իր թիկունքը, կարող էր համարձակ կերպով դարձնել իր հաղթական սուրը Փոքր Ասիայի դեմ։

Մինչ այդ թուրքմենները մի շարք արշավանքներ ձեռնարկեցին։

1065—1067 թթ. թուրքմենները յուրաքանչյուր տարին մի՛ քանի անգամ ասպատակություններ էին կատարում դեպի Հայկական լեռնաշխարհի և Փոքր Ասիայի խորքերը։ Այսպես, 1065—1066 թթ. Խորասանի Սալարը թեև կարողացավ գրավել և ավարառության մատնել Ուռհայի (Եդեսիայի) շրջակայքը, սակայն Ուռհայի բյուզանդական կայազորից ծանր պարտություն կրեց

64 „Ahbarüd-devlet"..., p. 27—28.

65 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 148։

66 Տե՛ս նույն տեղում, էջ 151, Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 60։

և, երբ Դիարբեքիրի վրայով նահանջում էր Իրան, թակարդի մեջ ընկավ ու սպանվեց Մրվանյան Նիզամ ալ-Դաուլա Նասրի կողմից[67]։

1066—1067 թթ. թուրքմեն այս հրոսակները՝ Աֆշին ամիրայի գլխավորությամբ մեծ արշավանք սկսեցին Փոքր Ասիայի հարավային մասում, Անտիոքում ու Կիլիկիայում, որի ընթացքում նրանք մեծ քանակությամբ գերիներ և ավար ձեռք բերեցին[68]։ Նույն տարիներին այլ ասպատակողներ շարունակում էին ավերել Մալաթիայի և Կեսարիայի շրջանները[69]։

Պետք է նշել, որ թեև այս արշավանքները կատարում էին սուլթանի տեղակալները կամ երկրորդական նշանակություն ունեցող հրամանատարներ, սակայն դրանք ձեռնարկվում էին սելջուկյան կենտրոնական իշխանության գիտությամբ և փաստորեն նախապատրաստում ու հարթում էին ռազմուղին՝ Ալփասլանի հետագա խոշոր արշավանքի համար։

Բյուզանդիան զգալով մոտալուտ ահարկու վտանգը, թեև ուշացած, սկսեց միջոցներ ձեռնարկել դիմագրավելու այն։ 1068 թ. Բյուզանդիայում գահ բարձրացած նշանավոր զինվորական Ռոմանոս Դիոգենեսը (1068—1071) որոշեց մեծ ուժերով դիմադրել սելջուկներին և վերջ դնել նրանց ստեպ-ստեպ կրկնվող հարձակումներին, որոնց ենթարկվում էին ոչ միայն Կապադովկիան, այլև Պոնտոսը։ 1068 թ. հույներին հաջողվեց ետ մղել սելջուկյան զորամասերը, որոնք ավերում ու կողոպտում էին Պոնտոսի շրջակայքը։ Նույն թվականին կայսրը ետ քշեց սելջուկ-թուրքմեններին Եփրատ գետի ափերից և համարձակորեն առաջ շարժվեց՝ նպատակ ունենալով գրավել Խլաթը։

Սակայն այդ ժամանակ Կապադովկիայում պարտություն էր կրել Փիլարտոս զորավարը և թուրքական զորախմբերը հասել էին մինչև Իկոնիա, ուր անպատիժ ավերում ու կողոպտում էին հույն զորքի թիկունքը։ Ռոմանոս Դիոգենես կայսրը ստիպված եղավ ետ նահանջել և Իտալիայում ծագած բարդությունների պատճառով 1070 թ. վերադարձավ Կոստանդնուպոլիս։

Այդ ժամանակ Ալփասլանը հարվածն ուղղել էր Վրաստանի դեմ։ Քարթլիս Ցխովրեբան վկայում է, որ Ալփասլանը կրկին ռազմի էր ելել Ափխազիայի և Վրաստանի թագավորի դեմ, և որ սուլթանին հարկադրմամբ միացել էին Տաշիր-Ձորագետի Կյուրիկե թագավորը. Տփղիսի ամիրան և Կախեթի Աղսարթան թագավորը, որոնք 1068 թ. դեկտեմբեր ամսին իրենց ուժերով մտել էին Վրաստան։ Սուլթանը վեց շաբաթվա ընթացքում գրավեց շատ բնակավայրեր ու բերդեր, թուրք զորքերը հասան մինչև Սև ծովի մերձերքը։ Խստաշունչ ձմեռն Ալփասլանին ստիպեց ձմեռել Կարսում, որը, շատ հավանական է, սուլթանը գրավել էր այս արշավանքի ժամանակ[70]։

Նույն այս պատերազմին է վերաբերում նաև ժամանակակից վրացական աղբյուր՝ «Մատեան Քարթլայ»-ի հետևյալ վկայությունը. «Իսկ սուլթանը երեք տարուց հետո նորից եկավ վրացիների վրա և երկիրը լցրեց արյունով։

67 *Տե՛ս Ibn al-Azrak,* Tarih Mayyafarikin, Cairo, 1959, p. 183—184.

68 *Տե՛ս* **Մատթեոս Ուռհայեցի**, *էջ 158,* **Սմբատ Սպարապետ**, *Տարեգիրք, էջ 67—69։*

69 *Տե՛ս* „Attaliatae Historia", p. 94. *Georgius Cedrenus*, t. II, p. 661.

70 *Տե՛ս Tiran O., նշված աշխ., էջ 113։*

Եվ նա առավ Տփղիսը և տվեց Գանձակի ամիրա Փադլունին։ Եվ Աղսարթանը, Կախեթի թագավոր Գագիկի որդին, եկավ նրա մոտ և շրջում էր նրա հետ միասին մինչև որ սուլթանը հեռացավ»[71]։

1070 թ., երբ Ռոմանոս Դ Դիոգենեսը Արևելքից վերադարձել էր Կոստանդնուպոլիս, Ալփասլանը մեծ ուժերով շարժվեց դեպի Փոքր Ասիա։ Հայաստանի հարավային ճանապարհով, Արածանիի հովիտներով, նա դիմեց Բյուզանդական կայսրության հարավ-արևելյան կողմերը։

Մանազկերտ քաղաքը, ուր պարտություն էր կրել իր հորեղբայր Տուղրիլ բեգը, Ալփասլանը առանց դժվարության նվաճեց և քաղաքացիներից վրեժխնդիր եղավ իր հորեղբոր անհաջողության համար։ Նրա հզոր ու ահարկու հարվածների տակ մեկը մյուսի ետևից ընկնում էին Բյուզանդիայի իշխանության տակ գտնվող Հայաստանի բերդերն ու քաղաքները։ Կայսրությունը կանգնած էր ահավոր վտանգի առջև։

Ռոմանոս Դիոգենես կայսրը ժողովեց շատ մեծ զորք և ինքն անձամբ եկավ Արևելք՝ Ալփասլանի դեմ։ Սկզբում հաջողությունը կայսեր կողմն էր, և նա կարողացավ ետ նվաճել Մանազկերտ քաղաքը։ Սակայն հենց այստեղ բորբոքվեց մի ճակատամարտ, որն իր հետևանքներով համաշխարհային պատմության առավել բախտորոշ անցքերից մեկը եղավ։ Այս կռվում պարզ երևաց բյուզանդական զորական ուժի քայքայված վիճակը և կարգապահության ու հավատարմության բացակայությունը։ Շտապ հավաքված ու մեծ մասամբ վարձկան զինվորներից կազմված այս զորքը ահռելի էր միայն իր թվով, բայց ոչ մարտունակությամբ։ Զորավարների մեջ կային Ռոմանոս Դիոգենեսին անձնապես ոխերիմ թշնամիներ։ Կռվի հենց առաջին օրը տեղի ունեցան դավադրության և մատնության դեպքեր, որոնք զգալիորեն թուլացրին բյուզանդական բանակի ոգևորությունը։

Կռվի երկրորդ օրը մարտի դաշտը դավաճանաբար լքեց Անդրոնիկոս Դուկաս իշխանը, որին հետևեցին նաև ուրիշ զորապետներ իրենց զորագնդերով։ Համաշխարհային պատմական նշանակություն ունեցող այս վճռական ճակատամարտը վերջացավ հույն զորքերի սոսկալի պարտությամբ. կայսրը գերի ընկավ Ալփասլանի ձեռքը[72]։

«1071 թ. Մանազկերտի պարտության ճակատագրական սարսափելի օրը,— ասում է պրոֆ. Հ. Գելցերը,— Բյուզանդական մեծ պետության մահվան օրն էր։ Թեև նրա հետևանքներն իրենց բոլոր ահավորությամբ անմիջապես զգալի չեղան, սակայն Փոքր Ասիայի արևելյան մասերը, Հայաստանը և Կապադովկիան, որոնք այնքան կայսրեր և զորապետներ էին տվել և կազմում էին պետության իսկական ուժը՝ ընդմիշտ կորած էին կայսրության համար և թափառական թուրքը հաստատեց հին հռոմեական փառահեղության ավերակների վրա իր վրանը»[73]։

---

71 Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 64։ «Քարթլիս ցխովրեբայի» կամ Վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը լույս ընծայեց Իլիա Աբուլաձեն, Թբիլիսի, 1953, էջ 280։

72 Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 65։

73 Տե՛ս նույն տեղում։ Հ. Գելցեր, Համառոտութիւն Բիւզանդական կայսրերի պատմութեան, էջ 304։

*Ալփասլանը գերված կայսեր հետ մեղմ վարվեց. Ռոմանոս Դ-ի հետ նա կնքեց խաղաղության դաշն, նրան ազատ արձակելով, պահանջեց թուրք գերիների վերադարձ և դրամական որոշ հատուցում։*

*Սակայն Ռոմանոսի ոխերիմ հակառակորդների աջակցությամբ Կոստանդնուպոլսում նոր կայսր էր հռչակվել Միքայել Է Դուկասը (Պարապինակեսը, 1071—1078), և Ռոմանոսը ստիպված եղավ անձնատուր լինել նույն Անդրոնիկոս Դուկասին, որի դավաճանությանն էին վերագրում Մանազկերտի պարտությունը։ Ռոմանոս Դիոգենեսին եղմնազանցաբար կուրացրին, իսկ Ալփասլանի հետ կնքված դաշինքը չընդունվեց։*

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԵԼԻՔՇԱՀԻ ԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ՕՐՈՔ

*Մանազկերտի ճակատամարտից անմիջապես հետո թուրքերը ներխուժեցին նաև Փոքր Ասիայի կենտրոնական և արևմտյան նահանգները։ Նրանց առաջխաղացմանը մեծապես նպաստում էին Բյուզանդիայի ներքին գահակալական կռիվները և հույն ու օտար զորավարների երկպառակությունները։*

*Այդ վայրերի նվաճմանը ձեռնարկեց Գթլմուշի որդի Սուլայմանը։ Վերջինս օգտվելով Մելիքշահի (1072—1092) սուլթանության առաջին տարիների (1072—1074) Իրանում տեղի ունեցած գահակալական կռիվների ժամանակ ստեղծված նպաստավոր պայմաններից (երբ Փոքր Ասիայի նվաճմամբ զբաղված մի շարք ամիրաներ կանչվել էին կենտրոն), իր շուրջը համախմբեց Հյուսիսային Սիրիայում թափառող թուրքմեններին և մեծ հաջողությամբ շարունակեց Փոքր Ասիայի նվաճումը։*

*1073 թ. նա Կեսարիայի մոտ ծանր պարտության մատնեց բյուզանդական զորավար Իսահակ Կոմնենին։ Սրան փոխարինեց Կեսար Դուկասը, որը միանալով Փոքր Ասիայում նորմանական զորքերի հրամանատար ապստամբ Ուրսելի հետ և ձգտելով գահակալության, զենքն ուղղեց ոչ թե սելջուկների, այլ իր հարազատ եղբորորդու Միքայել Դուկասի դեմ։ Հուսահատված կայսրը ստիպված էր դիմել սելջուկների օգնությանը և նրանց հետ դաշն կնքել։ Սուլայմանի աջակցությամբ նա ճնշեց Կեսար Դուկասի և Ուրսելի ապստամբությունը և դաշինքի համաձայն Սուլայմանի իշխանությունը ճանաչեց գրեթե ամբողջ Փոքր Ասիայի վրա (1075)։*

*Շարունակելով իր նվաճումները դեպի հարավ, Սուլայմանը 1083 թ. գրավեց Ադանա, Տարսոն, Մսիս և Անազարբա քաղաքները, դրանով թուլացնելով Փիլարտոս Վարաժնունու իշխանությունը։ 1084 թ. գրավեց Անտիոքը, բայց 1086 թ. Հալեպի պաշարման ժամանակ սպանվեց։ 1086 թ. Սիրիայում իշխանության գրավման համար տեղի ունեցող կռիվներին վերջ տալու համար, Մելիքշահը մեծ բանակով եկավ Սիրիա և գրավեց Հալեպը։ Նրան ուղեկցող ամիրաներից Բուզանը գրավեց Ուռհան (1087), որը մինչ այդ մնացել էր անառիկ։*

*Բյուզանդիայի կենտրոնական և արևմտյան նահանգների նվաճման ժա-*

ժանակ սելջուկները շարունակում էին ամրապնդել իրենց դիրքերը Անդրկովկասում՝ Վրաստանում, Հայաստանում և Շիրվանում։

Մելիքշահի գահակալության ժամանակ Անդրկովկասյան իշխանությունների մեծագույն մասը գտնվում էր սելջուկյան սուլթանության գերիշխանության ներքո։ Բայց, ըստ երևույթին, Ափխազիան, Վրաստանը Բագրատ Դ-ի թագավորության վերջին տարիներին և նրա որդու՝ Գեորգի Բ-ի թագավորության ժամանակ (1072—1089), որը «Մատեան Քարթլայ»-ում անվանված է «Գեորգի կիւրապաղատ», նորից հարել էին Բյուզանդիային և հրաժարվել էին ենթարկվել սելջուկյան սուլթանների գերիշխանությանը։

Դեռևս Ալփասլանի սուլթանության վերջին տարիներին Բագրատ Դ-ը, ինչպես վկայում է հիշյալ վրացական աղբյուրը, հարձակվեց Տփղիսի վրա որն Ալփասլանը տվել էր Փատլուն (Ֆադլուն) ամիրային։ Գանձակի ամիրան այս կռվում պարտություն կրելով Լիպարիտի որդի Իվանեից, գերի ընկավ և ազատ արձակվելով, Ափխազաց ու վրաց թագավորին զիջեց Տփղիսը, Գագա բերդը և Քավազին (կամ Գավարզին ամրոցը), որոնք գտնվում էին այժմյան Ղազախի գավառում՝ Աղստև գետի արևմտյան կողմում[1]։

Բագրատի փոխարեն Վրաստանի թագավոր դարձած Գեորգի Բ-ի ժամանակ տեղի ունեցան որոշ փոփոխություններ։ Գագա բերդը ապստամբեց թագավորի դեմ։ Այս ապստամբությունը ճնշող Լիպարիտի որդի Իվանեն բերդը վաճառեց Գանձակի ամիրա Փատլունին։ Սակայն շուտով լուրջ իրադարձություններ տեղի ունեցան։ Մելիքշահը մեծ արշավանք ձեռնարկեց Գեորգի թագավորի դեմ։ Մելիշահն իր այս արշավանքի ժամանակ մի շարք բերդեր գրավելուց և բազմաթիվ գերիներ վերցնելուց հետո գրաված շրջանների, այդ թվում և Գանձակի, ամիրա է նշանակում Սրահանգ Սևթեքինին (1075)։ Վերջինիս ժամանակ թուրքմենական ցեղախմբերը տեղավորվում են Առանի հովիտներում, սարերում, գավառներում և բերդերում։ Այսուամենայնիվ այս ամիրայի ժամանակ դեպի Վրաստան սելջուկների ձեռնարկած երկու արշավանքներն էլ վերջանում են պարտությամբ։ Ընդ որում, Գեորգի Բ-ը առաջին անգամ պարտության մատնելով Սրահանգին, վերագրավում է Կարսն ու Վանանդը և բազմաթիվ այլ բերդեր՝ Ափխազիայում, Կղարջքում, Շավշեթում, Ջավախքում և Արտահանում[2]։

Բայց սելջուկյան պետությունը չէր կարող հանդուրժել Վրաստանի զորեղացումը։ Ուստի վերոհիշյալ դեպքերը Մելիքշահին ստիպում են նորից վերադառնալ Անդրկովկաս (1075)։ Մելիքշահը Արաքսի վրայով մտնում է Վրաստան, կողոպուտի է ենթարկում Սոմխիթը, պարտության է մատնում Իվանեին և նրան գերի վերցնելով, գրաված վայրերը նորից հանձնում է Սրահանգին։ Վերջինս երկրորդ անգամ հարձակվելով Վրաստանի վրա, կրկին պարտվում է Գեորգի Բ-ի կողմից, որից հետո Ուղթիքը, Կարինը, Կարսը և այլ բերդեր ու քաղաքներ ենթարկվում են Վրաստանին, կազմելով առանձին վարչական միավոր՝ դքսություն։

---

1 «Քարթլիս ցխովրեբայի» կամ Վրաց պատմության հին հայերեն թարգմանությունը, էջ 231։

2 Նույն տեղում, էջ 232։

Մելիքշահը 1080 թ. մի մեծ բանակ է ուղարկում Ահմադ ամիրայի հրամանատարությամբ, որը գալով Վրաստան և պարտության մատնելով վրացական զորքերին, անցնում է քիչ առաջ կազմված դքսության սահմանները, պաշարում և գրավում է Կարսն ու վերջնականապես ենթարկում իրեն։ Ապա հաջորդաբար գրավում է Կարինը, Ուղթիքը և այլ բերդեր։ Այդ դքսության տարածքի վրա նույն թվականին հիմնադրվում է Սալդուխյան ամիրայությունը՝ Կարին (Էրզրում) կենտրոնով։

Եթե սելջուկները մինչ այդ հանդուրժում էին մի շարք մահմեդական ու թուրք ամիրայությունների առկայությունը Հայաստանում, Առանում և Միջագետքում, որոնք դեռևս 1040—1050 թթ. կախման մեջ էին սուլթանությունից և օգնում էին վերջինիս ռազմական ձեռնարկումներին, ապա 1070-ական թվականներից մեկ առ մեկ վերջ է տրվում դրանց գոյությանը։ Այսպես. 1075 թ.՝ Մելիքշահի Անդրկովկաս կատարած առաջին արշավանքից հետո. վերջ տրվեց Գանձակի Շադդադյանների ամիրայությանը։

Սելջուկյան նվաճումներից չփրկվեց նաև Մրվանյան ամիրայությունը Դիարբեքիրում, չնայած նրա տիրակալը հպատակություն էր հայտնել Մանազկերտի ճակատամարտում (1071) վճռական հաղթանակ տարած Ալփասլանին։ Շուրջ մեկ տարի տևած ռազմական գործողություններից հետո սելջուկյան բանակները 1085 թ. գրավեցին Դիարբեքիրը։ Մրվանյան վերջին ամիրա Մանսուրի մահից հետո (1095—1096) Մրվանյանների մյուս տիրույթներն էլ անցան սելջուկյան ամիրաների ձեռքը[3]։

Այնուհետև սուլթան Մելիքշահը 1087 թ. Բուզան ամիրայի գլխավորությամբ մի մեծ բանակ ուղարկեց Փատլունյանների դեմ, որը պաշարեց և գրավեց Գանձակ քաղաքը և ամիրա Փատլունին գերի վերցնելով, վերջ տվեց ամիրայությանը։ Թուրքերը այնուհետև վերագրավեցին Տփղիսն ու Շամշուլդեն։ Չկարողանալով դիմադրել թուրքերի այս արշավանքներին, Գեորգի Բ թագավորը հուսահատ գնում է Մելիքշահի մոտ և հայտնում իր հպատակությունը։

1090 թ. Մելիքշահի մոտ գնաց նաև հայ հոգևորականներից ու ազնվականներից կազմված մի պատգամավորություն՝ Բարսեղ կաթողիկոսի հետ, խնդրեց հայ եկեղեցին ազատել ծանր հարկերից և աջակցություն ցույց տալ կաթողիկոսական աթոռի միացմանը[4]։

Մելիքշահը Բարսեղ կաթողիկոսին ընդունեց պատվով և ընդառաջելով պատգամավորության խնդրանքին, ազատեց հայ եկեղեցին ծանր հարկերից. կաթողիկոսին տալով հատուկ հրովարտակներ և ապահարկության գիր[5]։

Միևնույն ժամանակ Մելիքշահը իր հորեղբորորդու՝ Կութբ ադ-Դին Իսմայիլ իբն-Յակուտ ամիրային նշանակեց Առանի, Ատրպատականի և Հայաստանի ընդհանուր կուսակալ՝ մելիք տիտղոսով, որը իրեն կենտրոնավայր էր ընտրել Գանձակ քաղաքը։ Վարդան վարդապետը վկայում է, որ նա հարկերից «ազատեց վանքերը և բոլոր եկեղեցականները»[6]։

3 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Արաբական ամիրայությունները..., էջ 206։

4 Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 70, Մատթեոս Ուռհայեցի, էջ 240։

5 Տե՛ս նույն տեղում։

6 Մատթեոս Ուռհայեցի, էջ 240, Վարդան, գլ. ԿԲ, էջ 143։

*Մելիքշահի ժամանակ Հայաստանի և Փոքր Ասիայի մեծագույն մասը ավերված էր։ Թեև սելջուկյան թուրքերի անվերջ հարձակումներից սոսկալի չափերով տուժել էին նաև Պարսկաստանն ու հարևան երկրները, սակայն ավերածությունն անհամեմատ ավելի դաժան էր եղել Անդրկովկասի և Փոքր Ասիայի մի շարք երկրներում։*

*Սելջուկյան հսկայածավալ նոր պետությունը, որի մեջ մտնող երկրները մեծ մասամբ ավերված ու կողոպտված էին, այդ վիճակում, բնական է, չէր կարող պահպանել իր գոյությունը։ Ուստի Մելիքշահը, ելնելով պետության շահերից, հնարավորություն տվեց նվաճված երկրների ժողովուրդներին մասամբ վերականգնելու իրենց քայքայված երկրներն ու տնտեսությունը։*

*Որոշ չափով վերաշինվեցին ավերված գյուղերն ու քաղաքները, կարգի բերվեցին հաղորդակցության ճանապարհները, թեթևացվեցին առևտուրն արգելակող ծանր մաքսերը, կառուցվեցին քարավանատներ ու կամուրջներ*[7]*։*

*Բնական է, որ հայկական աղբյուրները, մանավանդ հարկերից ազատված հայ եկեղեցու գործիչները, դրական գնահատական են տալիս Մելիքշահի գահակալության ժամանակներին։*

*Մելիքշահի կառավարության մեջ խոշոր դեր էին խաղում պարսկական-արաբական երկրների վերնախավի ներկայացուցիչները։*

*Ինչպես հայտնի է, Մելիքշահի կառավարության լիազոր վարիչն էր նշանավոր ու եռանդուն պետական գործիչ, պարսիկ Հասան իբն-Ալին, Խորասանի Թուս քաղաքից, որի մականունն էր Նիզամ ալ-Մուլք (տերության կարգավորիչ)։ Սելջուկյան մեծ պետության ղեկը գտնվում էր այս նշանավոր վեզիրի և նրա նշանակած բարձր պաշտոնյաների ձեռքին։*

*Եվ հենց մասամբ այս մեծ վեզիրին պետք է վերագրել Մելիքշահի ներքին քաղաքականության նման ընթացքը։ Նիզամ ալ-Մուլքի գրչին է պատկանում հռչակավոր «Կառավարման ձեռնարկ» (Սիասեթ-նամե) երկը։*

*Այս խաղաղ շրջանը, սակայն, կարճ տևեց։ 1092 թ. հոկտեմբերին իսմայիլական աղանդավորների ուղարկած ֆիդայու ձեռքով սպանվեց Նիզամ ալ-Մուլքը, իսկ մի ամիս հետո մեռավ և Մելիքշահ սուլթանը։*

*Սելջուկյան երկու պետական գործիչների՝ մեծ վեզիր Նիզամ ալ-Մուլքի և սուլթան Մելիքշահի մահով վերջանում է սելջուկյան աշխարհակալության վերելքի ու հզորության ժամանակաշրջանը։ Դրան հաջորդեց սելջուկյան հսկայածավալ տերության կազմալուծման և տրոհման ժամանակաշրջանը։ Դա հետևանք էր ոչ այնքան այս երկու նշանավոր գործիչների ասպարեզից դուրս գալուն, որքան սելջուկյան պետական կարգի ռազմա-ֆեոդալական բնույթի։ Ըստ որում 1092—1157 թթ. ժամանակամիջոցը եղավ սելջուկյան տերության ճգնաժամի ու տրոհման, իսկ 1157—1194 թթ.՝ նրա քայքայման ու անկման ժամանակաշրջանը։*

*Սելջուկյան տերության տրոհումը սկսվել էր դեռևս 1086 թ.՝ Փոքր Ասիայի արևմտյան մասում Գթլմուշի որդի Սուլայմանի կողմից սուլթանության ստեղծմամբ (հետագայում Իկոնիայի սելջուկյան սուլթանություն), երբ իրա-*

---

[7] Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 67։

կանում անկախ էր և ձևականորեն էր ճանաչում մեծ սուլթանի իշխանությունը։

Մելիքշահի մահից հետո նրա որդիների, եղբայրների ու սելջուկյան տան մյուս անդամների միջև սկսված գահակալական արյունահեղ երկպառակություններից ու կռիվներից հաղթանակած դուրս եկավ Մելիքշահի տասնչորսամյա որդի Բարկիարուքը (1093—1104)։ Այդ պայքարում զոհ դարձան և քաղաքական թատերաբեմից հեռացան Ատրպատականի, Առանի և Հայաստանի[8] կուսակալ, Գանձակի ամիրայության մելիք (Մելիքշահի հորեղբորորդի) Իսմայիլը և Ասորիքում իրեն անկախ հռչակած, գահի հավակնորդ Մելիքշահի եղբայր Տուտուշը։ Վերջինիս որդիների միջև սկսված գահակալական կռիվները թուլացրին սելջուկյան տիրապետությունը Պաղեստինում և Ասորիքում։

Բարկիարուքի եղբայր Մուհամմադ Տափարը, որը Ատրպատականի, Առանի և Հայաստանի կուսակալ էր նշանակված, երկու անգամ անհաջող փորձ կատարեց (1099 և 1101) գրավելու սուլթանական գահը։ Բաղդադի խալիֆայի միջնորդությամբ երկու եղբայրների միջև կնքված պայմանագրի համաձայն Բարկիարուքը մնաց սուլթան, իսկ Մուհամմադ Տափարը Գանձակի մելիք հորջորջմամբ դարձավ տիրակալ Ատրպատականի, Առանի, Հայաստանի, Նփրկերտի (Դիարբեքիրի) և Ջազիրայի էյալեթներին[9]։ Սակայն նորից խախտելով կայացած համաձայնությունը, Մուհամմադ Տափարը վերջին անգամ (1103—1104) փորձ կատարեց խլել գահը իր եղբորից։ Մուհամմադը փախչելով Բարկիարուքի բանակների առջևից, 1103 թվականին իր շուրջն էր համախմբում Հայաստանի սելջուկյան ամիրայությունների ուժերը և պատրաստվում էր արշավել Բարկիարուքի դեմ։ Վերջինս, նկատի ունենալով սուլթանության տնտեսական և քաղաքական վիճակը և դեռևս 1096—1099 թթ. Արևելքում հաստատված խաչակիրների կողմից սպառնացող վերահաս վտանգը, առաջարկեց հաշտություն։ 1104 թ. կնքված պայմանագրով Ատրպատականը, Առանը, ամբողջ Հայաստանը և մինչև Ասորիք ընկած տարածքը անցնում էր Մուհամմադ Տափարի իշխանության տակ։

Մուհամմադ Տափարը խաչակիրների դեմ պայքարելու համար կարողացավ իր շուրջը համախմբել Խլաթի Շահ Արմեն և Դիարբեքիրի Արտուխյան ամիրաներին։ Խլաթի Շահ Արմեն ամիրայի վերահաս մահվան (1113) և սելջուկյան բանակում սկսված երկպառակությունների հետևանքով, խաչակիրներին հաջողվեց որոշ հաղթանակներ տանել սելջուկյան ամիրաների դեմ։

Օգտվելով սելջուկյան աշխարհակալության քաղաքական ճգնաժամից, Վրաստանը, Դավիթ Շինարար թագավորի (1089—1124) գլխավորությամբ, նույնպես դգալի հաջողություններ ունեցավ սելջուկների դեմ մղվող պայքարում։

Վրացական բանակները 1110 թ. հասան Գանձակի դռներին։ Քիչ ջանքեր չպահանջվեցին Մուհամմադ Տափարից կանգնեցնելու վրացական զորքի-

---

8 Ատրպատականը, Առանը և Հայաստանը միասին կազմում էին մի էյալեթ, որի կենտրոնը Գանձակն էր և կուսակալը կրում էր մելիք տիտղոսը։

9 Տե՛ս *Ibn al-Cauzi*, Al-Muntazam, Haydarabad, 1358, IX, 131, *Ibn al-Athir*, Tarikh, al Qahira X, 1302, 115։

րի արշավը[10]։ Թեև Մուհամմադ Տափարին հաջողվեց որոշ ժամանակ կայունացնել երկրի քաղաքական վիճակը, սակայն այդ հարաբերական կայունացումն ընդհատվեց նրա մահով (1118)։

Սելջուկյան տերությունը վերջնականապես բաժանվեց երեք սուլթանության։ Առաջինի կենտրոնն էր Խորասանը, որի միակ տիրակալ սուլթան Սինջարը[11] (1119—1157) ձևականորեն հանդես էր գալիս իբրև աշխարհակալության մեջ մտնող մյուս սուլթանների, մելիքների և ամիրաների՝ գերիշխողը։ Երկրորդը՝ Պարսկական Իրաքում ստեղծված սուլթանությունն էր, որի տիրակալը հորջորջվում էր «մեծ սուլթան», որից ձևականորեն կախման մեջ էին գտնվում վերոհիշյալ նահանգների մելիքներն ու ամիրաները։ Երրորդը Իկոնիայի սուլթանությունն էր, որը անվանապես ենթարկվում էր Իրաքի սելջուկներին, բայց իրականում անկախ էր։

Հայաստանի և առհասարակ Անդրկովկասի պատմությունը գրանից հետո կապվում է Իրաքի և Իկոնիայի սուլթանությունների հետ։

XI դարի երկրորդ կեսին և XII դարի սկզբներին Մերձավոր Արևելքի պատմական իրադրության մեջ տեղի էին ունեցել խոշոր փոփոխություններ. վերափոխվել էր նրա քաղաքական քարտեզը։ Այստեղ հաստատված սելջուկյան հսկայածավալ տերությունը շուտով սկսեց տրոհվել բազմաթիվ մեծ ու փոքր իշխանությունների և ամիրայությունների։ Պատմության թատերաբեմից վերացել կամ խիստ թուլացել էին երբեմնի համաշխարհային հզոր տերությունները՝ Արաբական խալիֆայությունը վերջնականապես քայքայվել էր, և խալիֆան մնում էր իբրև մահմեդական աշխարհի հոգևոր իշխան, Բյուզանդական կայսրությունը խիստ թուլացած՝ դիմում էր դեպի մայրամուտ։ Տեղական մանր թագավորությունների և իշխանությունների մի մասը վերացել էր, մյուսները թուլացել էին, առաջացել էին առանձին նոր իշխանություններ Եգիպտոսում, Կիլիկիայում և այլուր։ 1096—1099 թթ. Մերձավոր Արևելք էին ներխուժել եվրոպական խաչակիրները, որոնք հաստատեցին իրենց իշխանությունները Արևելքում։

Սելջուկները խիստ վերաձևել էին նաև Հայաստանի քաղաքական քարտեզը՝ երկիրը բաժան-բաժան էր եղել սելջուկներին ենթակա տեղական մի քանի մանր իշխանությունների և ավելի մեծ թվով նոր առաջացած սելջուկթուրքական ամիրայությունների միջև։ Վրացական թագավորությունը թեև սելջուկներին ենթակա վիճակում, պահպանվում էր և շուտով պիտի դառնար նրանց մրցակիցը։ Ատրպատականում և Շիրվանում առաջացել էին սելջուկյան բավական զորեղ և մանր իշխանություններ։ Մասնատվածության քաոսը, ուղեկցված մշտական հակամարտություններով և պատերազմական ընդհարումներով, տիրում էր ամենուրեք։

---

[10] Տե՛ս Sadruddin al-Hüseyni, նշված աշխ., էջ 81։

[11] Ուշագրավ է, որ օղուզ-թուրքմեն ցեղերի ջանքերով ստեղծված սելջուկյան աշխարհակալությունը 1153—1157 թթ. կործանվեց նույն ցեղերի հարվածների տակ։ Տե՛ս Sadruddin l-Hüseyni, p. 95, El-Bondâri, p. 280—281.

## 2. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՎԱՐՉԱԿԱԶՄՈՒՄ

*Սելջուկյան տիրապետությունը վերջնականապես հաստատվեց Մերձավոր Արևելքի երկրներում, այդ թվում և Հայաստանում՝ Մելիքշահի իշխանության ժամանակ (1072—1092)։ Սելջուկյան նորակազմ աշխարհակալությունը տարածվում էր արևելքից-արևմուտք՝ Չինաստանի և Աֆղանստանի սահմաններից մինչև Միջերկրական ծով, իսկ հյուսիսից-հարավ՝ Սև ծովից ու Կովկասից մինչև Եմեն և Հնդկական օվկիանոս։ Աշխարհակալության մայրաքաղաքը Սպահանն էր։*

*Պետության գլուխ կանգնած էր սուլթանը։ Թեև Մելիքշահի ժամանակ սուլթանը երկիրը ղեկավարում էր միանձնյա իշխանությամբ, սակայն պետությունը նրա և իշխող դինաստիայի մյուս անդամների համատեղ տիրույթն էր համարվում և թուրք-օղուզական ազնվական բեգերը, քոչվոր ֆեոդալական նվիրապետական օրենքների համաձայն, երկրի ղեկավարման գործում ունեին մի շարք իրավունքներ։*

*Սելջուկյան լայնածավալ աշխարհակալության տարածքում ստեղծվեցին մի շարք վարչատնտեսական միավորումներ՝ էյալեթներ (նահանգներ)։ Վերջինները գլխավորում էին ամիդները*[12] *(փոխարքաներ), մելիքները և ամիրաները։ Էյալեթների կառավարիչներ էին նշանակում մեծ մասամբ սուլթանի ընտանիքի անդամներին կամ աչքի ընկած օղուզ թուրք բեգերին կամ այդ նահանգը նվաճող, սուլթանին հավատարիմ ամիրաներին։*

*Նվաճված Հայաստանը՝ նաև Ատրպատականը և Առանը*[13] *մտնում էին մի խոշոր էյալեթի կազմի մեջ, որն իբրև իքթա հանձնված էր սուլթանական ընտանիքի անդամներից մեկին՝ Մելիքշահի հորեղբայր Յակուտի որդի՝ Գանձակի մելիք Կութբ ադ-Դին Իսմայիլին (1085—1093)։ Իսմայիլին նախորդել էր Սրահանգ Սևթեգին ամիրան (1076—1085), որը մի շարք ամիրաների աջակցությամբ վերջնականապես նվաճել էր Առանը և Հայաստանը։ Հայաստանի և հարևան երկրամասերի մի քանի գավառներն ու քաղաքներն էլ որպես իկթա հանձնված էին նվաճմանը մասնակցած ամիրաներին։ Վերջիններս այդ շրջանների բանակների հրամանատարներն էին։ Քաղաքների ներքին կարգ ու կանոնին հսկող պաշտոնյաները կոչվում էին շահնա կամ մուհթասիբ։ Սրանք էին հսկում առևտրական գործարքների ճիշտ կատարման և չափերի ու կշիռների ճիշտ օգտագործման վրա, գանձում էին հարկերը առևտրից, հասութաբեր հաստատություններից, հսկում էին հանրային բարոյականության վրա և, որն ամենահետաքրքրականն է, հետևում էին, որպեսզի քրիստոնյա և հրեա հպատակները (զիմմիները) կրեն մահմեդականներից զատող տարազ և նշաններ, արգելում էին հասարակական վայրերում գինի խմելը և գիտական ու կրոնական հավաքույթներում տղամարդկանց հետ կանանց խառը նստելը*[14]*։ Արվարձաններն ու գյուղերը հանձնվում էին ռեյիսնե-*

---

[12] *Տե՛ս* «Сиасет-наме» (книга о правлении), стр. 332, прим. 280.

[13] *Տե՛ս Ibn Bibi*, p. 41. 253, *El-Bondari*, p. 42, 76, 145.

[14] *Տե՛ս O. Turan*, Turkiye Selçuklulari hakkinde resmi vesikalar, *էջ 35—37։ Տե՛ս* նաև Ս. Տեր-Ղևոնդյան, *նշված աշխ., էջ 251—252։*

րին, իսկ բերդերն ու ամրոցները և սրանց ենթակա արվարձանները՝ քուտուվալներին, որոնք ենթարկվում էին տվյալ շրջանի սուբաշիներին[15], զինվորական հրամանատարներին։

Ամիրներն ու ամիրաները իրենց՝ որպես իկթա հանձնված նահանգներից ստացված եկամուտներից որոշակի մի գումար ուղարկում էին պետության գանձարանը։ Թեև Հայաստանի նահանգների քաղաքական ու ռազմական իշխանությունը գտնվում էր սելջուկյան իշխող տարրի ձեռքում, սակայն մի շարք գավառների ու քաղաքների վարչատնտեսական կառավարումը թողնված էր հայ ազնվականության ներկայացուցիչներին, հատկապես նախկին իշխաններին։ Վերջիններս ինքնավար լինելով հանդերձ, որպես սուլթանի և ամիրաների վասալներ, գավառների հարկերի մի մասը որպես խարաջ ուղարկում էին իրենց սյուզերեններին։ Մելիքշահի ժամանակ այդպիսի վիճակում էին Սասունի Թոռնիկյան և Վասպուրականի Խեդենեկյան իշխանությունները, Սյունյաց և Տաշիր-Ձորագետի թագավորությունները։

Ամիրները, մելիքներն ու ամիրաները ենթարկվում էին սուլթանի մեծ դիվանին և նշանակվում էին սուլթանի կամ մեծ դիվանի տնօրեն՝ մեծ վեզիրի, կամ սահիբ դիվանի կողմից[16]։ Մեծ դիվանի անդամներն իրենց հերթին հանդիսանում էին փոքր դիվանների նազիրներ կամ սահիբներ։

Մելիքշահի մահից հետո, սելջուկյան միասնական աշխարհակալության քայքայման և տրոհման ժամանակաշրջանում (XI դարի վերջից XII դարի վերջ) Հայաստանի տարածքի վրա կազմակերպվեցին մի շարք սելջուկ-թուրքական ամիրայություններ։ Վերջիններս թեև ձևականորեն պահպանում էին իրենց կախումը սելջուկյան սուլթանությունից, սակայն իրականում անկախ էին և՛ տնտեսապես, և՛ քաղաքականապես։ Նրանց ենթակայությունը, ավելի ճիշտ դաշնակցային կապը արտահայտվում էր հատկապես այն ժամանակ, երբ կարիք էր զգացվում ընդհանուր միասնական ռազմական ճակատ կազմել քրիստոնյա խաչակիրների և հզորացող Վրաստանի դեմ։

Հայաստանի տարածքի վրա կազմավորված սելջուկյան և քրդական ամիրայությունները ենթարկվում էին Գանձակի ամիրային՝ մելիքին։ Դեռևս Մելիքշահի մահից հետո Ատրպատականից, Առանից ու Հայաստանից կազմված էյալեթի մելիք Իսմայիլը շարունակում էր մնալ իր պաշտոնում, 1093 թ.՝ նրա մահից հետո, մելիք նշանակվեց Մուհամմադ Տափարը (1094—1105)։ Վերջինիս սուլթան դառնալուց հետո աղբյուրները հիշատակում են Մուհամմադ Տափարի որդի Մելիքին[17] (1118—1131)։

Հետզհետե պայմանական հողատիրության բնույթ կրող իկթայական իրավունքը փոխվեց ժառանգական հողատիրական իրավունքի, որի հետևանքով ամիրայություններն ավելի ինքնուրույն դարձան։

---

15 Տե՛ս նույն տեղում, էջ 41—42։ El-Bondâri, նշված աշխ., էջ 3—4։

16 Տե՛ս Sadruddin el-Hüseyni, նշված աշխ., էջ 23։

17 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 348—350։ Ибн ал-Асир, стр. 123: Մելիքից հետո այլևս չեն հիշատակվում Ատրպատականից, Առանից և Հայաստանից կազմված էյալեթի մելիք՝ կուսակալներ։ Հավանական է էյալեթը դադարել է գոյություն ունենալուց։ Այնուհետև ամիրայությունները դարձել էին հիմնական վարչա-կառավարման առանձին միավորներ։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ XII ԴԱՐՈՒՄ

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍԵԼՋՈՒԿ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՔԱՅՔԱՅՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

*Սելջուկյան տիրապետությունը թեև կարճատև եղավ, սակայն քաղաքականապես կերպարանափոխեց Հայաստանը։ Բագրատունյաց թագավորության անկումից հետո երկրում մնացել էին քաղաքական ոչ մեծ միավորներ՝ Տաշիր-Ձորագետի ու Սյունյաց թագավորությունները, Արցախի, Վասպուրականի ու Սասունի իշխանությունները, ինչպես նաև Մոկաց ու Դեգիքի մանր իշխանությունները, որոնք Հայոց թագավորության բեկորներն էին, սակայն դրանցից ոչ մեկը ի վիճակի չէր հայկական հողերը վերամիավորելու և երկրի անկախությունը վերականգնելու գործն իր ձեռքը վերցնելու։ Հայ ժողովրդի պատմական բախտի համար ամենավտանգավորն այն էր, որ Մեծ Հայքում հաստատվել էին օտար տարրեր, իրենց իշխանությամբ։ Շիրակում Անի կենտրոնով դեռևս 1072 թ. հաստատվել էր Շադդադյան ամիրայությունը։ XII դարի առաջին կեսում Մեծ Հայքի միջնաշխարհում և շրջակայքի նահանգներում հաստատվեցին սելջուկյան մի քանի ամիրայություններ՝ Շահ Արմեն Սուքմանյանները՝ Խլաթում, Արտուխյանները՝ Աղձնիքում, Դանիշմանյանները՝ Փոքր Հայքում, նաև Երզնկայի, Կարնո ու Կարսի մանր ամիրայությունները։ Նրանք գործակցած Հայաստանի հարևանությամբ առաջացած Ատրպատականի Ելտկուզյան և այլ ամիրայությունների հետ, ամեն կերպ պայքարում էին հայկական իշխանությունների դեմ և թուլացնում նրանց։*

*Բագրատունյաց թագավորության անկման ժամանակ հայկական որոշ գավառների ու քաղաքների տիրացած Մրվանյաններն ու Շադդադյանները XI դարի վերջին և XII դարի առաջին կեսում կորցրին իրենց բոլոր տիրույթները։ Մրվանյանների[1] տիրույթները տարածվում էին Աղձնիքում և Խլաթի շուրջը։ Մրվանյանները նախ ենթակա էին Բյուզանդիային, ապա՝ սելջուկներին։ Սակայն նրանք երկար չմնացին Աղձնիքում ու Խլաթում, քանի որ սելջուկյան զորքերը հանգիստ չէին տալիս նրանց։ Մրվանյաններից վերջի-*

---

[1] *Amedroz*. The Marwanid dynasty at Mayafariqin, Journ. of the Royal Asiatic Society. 1903, p. 124—126.

նը՝ Մանսուրը (1090—1096) զրկվեց իր տիրույթներից և նրա մահվանից հետո սելջուկները տիրացան նրանց կալվածներին։ Սակայն Մրվանյանների մնացորդները որպես մանր ամիրաներ մնացին Աղձնիքում։

Մրվանյանների տիրույթներն անցան Խլաթում հաստատված Սուքմանյան Շահ Արմեններին (1100—1207) և Աղձնիքի Արտուխյաններին (1101—1231)։

Արտուխյան տան հիմնադիրն էր Սուքմանը, Արտուխի որդին։ 1101 թ. Սուքմանը գրավեց Հիսն Կեֆը, իսկ հետո նաև Մարդինը, Հիսն Կեֆի Արտուխյանները իշխում էին նաև Նփրկերտում ու Ամիդում։ XII դարի վերջերին քուրդ Այյուբյանների ուժեղացման ժամանակ սելջուկ Արտուխյանները կուլ գնացին նրանց, թեև ալ-Մալիք ալ-Սալիհը հպատակություն էր հայտնել Եգիպտոսի սուլթան Սալահ ալ-Դինին։

Փոքր Հայքում հանդես եկան Դանիշմանյանները (1097—1165), որոնց ձեռքում էին Սեբաստիան, Կեսարիան և Մելիտինեն։ Ենթադրվում է, որ այս ամիրայական տան հիմնադիր Տիլու Դանիշմանդը[2] մահմեդականություն ընդունած Ռատ (Հրահատ) Լիպարիտյանն էր[3]։ Փոքր Հայքը և Կապադովկիան հայ ազգաբնակչությամբ էին լցվել դեռ բյուզանդական տիրապետության շրջանում, մանավանդ սելջուկյան արշավանքներից հետո։ Դանիշմանյանները գրավեցին այս բոլոր կալվածները և ստեղծեցին մի ուժեղ ամիրայություն, որն սպառնում էր նույնիսկ Իկոնիայի սելջուկ սուլթանությանը։

Դանիշմանյաններն ընդհարվեցին խաչակիրների հետ և Մելիտինեի մոտ մեծ ջարդ տվեցին, սակայն նրանց գլխավոր թշնամին Իկոնիայի (Ռումի) սուլթաններն էին, որոնք, ի վերջո, տիրացան նրանց բոլոր կալվածներին։ Փոքր Հայքին տիրելուց հետո, Ռումի սելջուկները առաջ խաղացին Մեծ Հայքում և գրավեցին Երզնկան ու Կարինը։

Մեծ Հայքին սահմանակից սելջուկ ամիրայություններից ամենազորեղը Ատրպատականի Ելտկուզյանների (Իլդիգիզյաններ) իշխանությունն էր։ Սելջուկյան արշավանքներից հետո իրար հաջորդող թուրքական տարրերը թեև ենթարկվեցին իրանական ազդեցությանը, սակայն աստիճանաբար թուրքացրին Ատրպատականը։

1136 թ. Ատրպատականի աթաբեկ դարձավ Շամս ադ-Դին Ելտկուզը (Իլդիգիզ), որը 1148 թ., ետ մղելով Միջագետքի սելջուկյանների զորքերը, դարձավ անկախ տիրակալ։ Ելտկուզյանների (1148—1225) մայրաքաղաքը սկզբում Եկբատանն (Համադան) էր, իսկ հետո Դավրեժը (Թավրիզ)։ Բացի Ատրպատականից, Ելտկուզյաններին էր ենթարկվում նաև Ուտիքը՝ Պարտավ, Բայլական և Գանձակ քաղաքներով։

Ելտկուզյանները խլել էին Նախճավանը և հաստատվել այնտեղ, իսկ Սյունիքն ու Արցախը, ինչպես նաև Դվինը, նույնիսկ Անին, ենթարկվում էին նրանց հաճախակի ասպատակություններին։ Ելտկուզյանները, ի վնաս հայ

---

2 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, Պատմութիւն հայ Կեսարիոյ, Ա, Գահիրէ, 1937, էջ 481—487։

3 Տե՛ս Ս. Երեմյան, Լիպարիտ զորավարի հաջորդները և Դանիշմանյան տոհմի ծագման խնդիրը, «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1947, № 8, էջ 65—79, Տե՛ս В. С. Гарбузова։ Сказание о Мелике Данышманде, М., 1959, стр. 108—109, 117—119.

իշխանական տների, հովանավորում էին Հայաստանում հաստատված ամիրայություններից՝ Շադդադյաններին և Շահ Արմեն Սուքմանյաններին։

Սելջուկյան արշավանքներից սկսած դարերի ընթացքում զգալիորեն փոխվեց Առաջավոր Ասիայի ցեղային կազմը՝ Արևելքի հին ժողովուրդների՝ հույների, հայերի, պարսիկների, ասորիների և ուրիշների հաշվին։

Միջագետքն ու Սիրիան (Ասորիքը) կորցնելով իրենց հինավուրց ազգային լեզուն արդեն արաբացել էին, Ատրպատականում իրանական տարրը, և բուն Աղվանքում ու Շիրվանում արդեն տարրալուծված աղվանները աստիճանաբար համաձուլվեցին թուրքալեզու տարրի հետ, իսկ արևելյան Փոքր Ասիան քայլ առ քայլ ենթարկվեց թուրքացման, թեև հույների և հայերի համայնքները այստեղ մշտապես պահպանեցին իրենց գոյությունը։

Հասարակական-տնտեսական և մշակութային զարգացման ցածր մակարդակի վրա գտնվող սելջուկ թուրքերի ներխուժումը Մեծ Հայք և դրացի երկրներ, խորապես բացասական հետևանքներ ունեցավ։ Հայաստանում պահպանվող մանր թագավորություններն ու իշխանությունները, որոնք բյուզանդական կարճատև տիրապետության ընթացքում թուլացել էին, սելջուկյան արշավանքներից հետո աստիճանաբար քայքայվեցին։

Մեծ Հայքի հիմնական, մանավանդ կենտրոնական տարածքում հաստատվել էին սելջուկյան իշխաններ, իսկ երկրի ծայրամասերում պահպանված հայկական իշխանությունները բաժանված էին երկու անջատ խմբի։ Դրանցից առաջինը համախմբված էր գլխավորապես Գուգարքի, Սյունիքի և Արցախի լեռնային շրջաններում, իսկ երկրորդը՝ Վասպուրականի, Մոկաց և Սասունի (Հայկական Տավրոս) լեռնային գավառներում։ Այս իշխանությունները, սակայն, հայկական միացյալ անկախ պետականության վերականգնման հնարավորությունը չունեին։

## 2. ՏԱՇԻՐ-ՁՈՐԱԳԵՏԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

Բագրատունյաց կենտրոնական թագավորության անկումից հետո Կյուրիկյան թագավորությունը միառժամանակ շարունակում էր զորեղանալ։ Դեռևս Դավթի օրոք նրա տերիտորիան ընդարձակվեց նաև արևելյան ուղղությամբ։ Թագավորությանը միացվեց հարևան Ուտիքի սահմանամերձ շրջանը։ Աղբյուրների քննությունը ցույց է տալիս, որ Դավթի, մասամբ գուցե նաև Կյուրիկեի ժամանակ, Ուտիքի Տավուշ և Գարդման գավառներում Կյուրիկյաններին պատկանել են Տավուշ, Մածնաբերդ, Երգեվանք, Նոր-Բերդ, Խալինճքար և Տերունական բերդերը։

Բագրատունյաց տեղական բոլոր իշխանություններից ավելի Կյուրիկյաններն էին մոտ Հայոց շահնշահերին. նրանք իրենց համարում էին Բագրատունյաց իշխանության շարունակողները, իրենց էին վերապահում կարևոր իրադարձություններին միջամտելու իրավասությունը։ Լոռվա Բագրատունիներն էին, որ Անիի անկումից հետո ստանձնեցին դրամ կտրելու իրավունքը, դրանով ընդգծելով Գուգարաց տան ավագությունը։ Այս ժամանակաշրջանում Լոռվա Բագրատունիների հետ էին կապված Հայաստանի պետականության

վերականգնման թեև թույլ հույսերը[4]։ Կյուրիկեի (1050—մոտ 1090) իշխանության սկզբում Բյուզանդիան արդեն սահմանակից էր Գուգարքին։ Այլ պարագաներում նման հարևանությունը սպառնալիք կարող էր ստեղծել Լոռվա թագավորությանը։ Ստեղծված իրադրության մեջ Կյուրիկեն որոշ հույսեր էր կապում Բյուզանդական կայսրության հետ, իսկ վերջինս փորձում էր դեռևս պահպանված հայկական իշխանությունները օգտագործել սելջուկների դեմ։

Կյուրիկեի փոխհարաբերությունը Բյուզանդիայի հետ իր դրսևորումն է գտել նաև Կյուրիկեի կտրած դրամի վրա, որը կրում է «Տէր օգնէ Կորիկե կորապաղատին» մակագրությունը[5]։ Կյուրիկեն սպասածին հակառակ ներկայացված է ոչ թե «թագավոր» այլ բյուզանդական «կորապաղատ» տիտղոսով[6]։ Կայսրության սահմաններից դուրս կուրապաղատ, մագիստրոս, պատրիկ և նման տիտղոսներ կրում էին կայսրությունից քաղաքականապես կախված տեղական գահակալները։ Ինչպես երևում է նման վիճակում էր գտնվում նաև Տաշիր-Ձորագետի թագավորությունը Կյուրիկեի իշխանության առաջին մեկուկես տասնամյակների ընթացքում։

Բայց 1064 թ. Կյուրիկեն ճանաչել էր սելջուկ սուլթանի գերիշխանությունը և այժմ Ալփասլանը օգտագործում էր նրան Անդրկովկասում բյուզանդական ազդեցության դեմ պայքարելու համար։

XI դ. կեսերից սկսվում է Լոռվա թագավորության տարածքի նվազումը։ 1065 թ. Ալփասլանը կնության խնդրեց Կյուրիկեի դստերը, բայց մերժում ստանալով պարտադրեց վրաց թագավոր Բագրատ Դ-ին համոզելու Կյուրիկեին։ Բագրատը վերջինիս բանակցությունների համար իր մոտ կանչեց[7]։ Կյուրիկեն որոշ համառությունից հետո ստիպված եղավ ոչ միայն համաձայնվել իր դստեր ամուսնությանը, այլև Բագրատին զիջել Շամշուլդեն, որից հետո թագավորության կենտրոնը տեղափոխվեց Լոռե[8]։

XI դարի 70-ական թվականների կեսերից Գանձակի սելջուկ ամիրաները աստիճանաբար գրավում են Կյուրիկյանների բերդերը (Գագ, Գավարզին, Տավուշ)։ Թագավորության անվտանգությունն ապահովելու համար Կյուրիկեն ստիպված է լինում ճանապարհվել Խորասան և տեսակցել Մելիքշահի հետ (մոտ 1088 թ.)։ Այցը դրական հետևանքներ է ունենում։ Վարդան պատմագիրը վկայում է, որ Կյուրիկեն ետ «դարձավ պատվով»[9], սակայն Մելիքշահի մա-

---

4 Տե՛ս *Е. Пахомов,* О монете Корике куропалата, Известия Кавказского историко-археологического института, т. III, Тифлис, 1925, стр. 44.

5 Տե՛ս նույն տեղում, նաև Ղ. Մովսեսյան, *Լոռիի Կյուրիկյան թագավորների պատմությունը,* Վիեննա, 1923, էջ 89։

6 *Е. Пахомов,* նշված աշխ., էջ 44։

7 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 145։ Սամուել Անեցի, էջ 112։ «Վրաց աղբյուրները...», հատ. Ա, էջ 207։ Ջուանշեր, *Համառօտ պատմութիւն Վրաց,* էջ 113։

8 Այդ ժամանակվանից Լոռվա բերդը վերածվում է բերդաքաղաքի։ Այնուհետև Լոռիով էր անցնում Հայաստանից Վրաստան տանող առևտրական ճանապարհը, նպաստելով քաղաքի աճին։ Գիտնականների կարծիքով Լոռին ունեցել է 8—10 հազար բնակչություն։ Հմմտ. Բ. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ.,* հատ. 1, էջ 126։

9 Տե՛ս «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի», էջ 106։

հից հետո Գանձակի ամիրայությունը շարունակում էր մնալ Լոռվա թագավորության ամենավտանգավոր ախոյանը։

XI դ. 90-ական թվականներին Կյուրիկեն աղբյուրներում այլևս չի հիշատակվում։ Վերջին անգամ նրա անունը հանդիպում է Հաղբատի 1089 թ. արձանագրության մեջ։ Կարելի է ենթադրել, որ դրանից հետո Կյուրիկեն երկար չի ապրել, և 90-ական թվականների սկզբից Լոռիում արդեն իշխում էին նրա հաջորդները՝ Դավիթն ու Աբասը։

Կյուրիկեի մահից հետո սելջուկ-թուրքերի գերիշխանությանը ենթակա Գուգարքի կամ Տաշիր-Ձորագետի թագավորությունը խիստ թուլացել էր։ 1105 թ. թագավորության մայրաքաղաք Լոռեն և նշանավոր վանքեր Սանահինն ու Հաղբատը կողոպտվում են ամն Ղզիլ ամիրայի կողմից[10]։ Ընդամենը հինգ տարի անց հարձակումը Սանահնի վրա կրկնվում է[11]։ Ժամանակակից հիշատակարաններից մեկը վկայում է, որ սելջուկների ներխուժումները դառնում են անընդհատ, թագավորությունն օրըստօրե թուլանում է, ժամանակի ընթացքում օտարները տիրում են Տաշիրին (Լոռվա թագավորությանը), իսկ Դավիթն ու Աբասը «մերժվում են» իրենց հայրենիքից[12]։ Հիշատակարանն անթվական է, սակայն Ստ. Օրբելյանը և Մխիթար Այրիվանեցին Դավթի և Աբասի հեռանալը Լոռեից զետեղում են 1110—1113 թվականների միջև[13]։ Դա արդեն թագավորության վերջնական անկումն էր։

Այսպիսով, XII դարի սկզբին ընկնում է Բագրատունիների վերջին պետական միավորումը՝ Լոռվա թագավորությունը։

Թագավորության անկումից հետո Կյուրիկյաններին հաջողվեց կալվածքներ ձեռք բերել Տավուշ գավառում[14]։ Դավիթը հաստատվում է Մածնաբերդում, իսկ Աբասը՝ Տավուշում[15]։ Վարդանը վկայում է, որ եղբայրները նոր տեղում «կային տառապանօք»։

Դավթի մասին համարյա ոչինչ հայտնի չէ, իսկ Աբասի վերաբերյալ պահպանվել է մի տեղեկություն 1139 թ. Աղվանից կաթողիկոսի ընտրության օժանդակելու կապակցությամբ։ 1145 թ. Աբասը կորցրեց Տավուշը, բերդը գրավեց Գանձակի Չոլի ամիրան, իսկ ինքը տեղափոխվեց եղբոր մոտ[16]։

1145 թ. Դավիթն ու Աբասը մահանում են և Դավթին հաջորդում է որդին՝ Կյուրիկեն (1145—1170), որը մի պահ պապական տիրույթը ետ ստանալու սին հույս ունեցավ, որին և զոհ գնաց։

---

10 Տե՛ս Վարդան, էջ 113, Կիրակոս Գանձակեցի, էջ 106, Մխ. Այրիվանեցի, էջ 61 և այլն։

11 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 3031, «Քոթուկ», էջ 52—55։

12 Տե՛ս «Քոթուկ», էջ 136։

13 Տե՛ս Ստ. Օրբելյան, Ժամանակագրութիւն, էջ 16, Մխ. Այրիվանեցի, էջ 61։

14 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 151—152։

15 Տե՛ս Վարդան, էջ 106։

16 Տե՛ս Մխիթար Գոշ, Կաթողիկոսք եւ դէպք..., «Հայապատում», էջ 386։ Կիրակոս Գանձակեցի, էջ 152։

Կյուրիկեի որդիներից մեկը՝ տասներկուամյա Աբասը (1170—1176) հաջորդեց հորը և յոթ տարի անց վախճանվեց, իսկ մյուսը՝ Վասակը հիմնեց մի փոքր իշխանություն Նոր-Բերդում[17]։

Կյուրիկեի դուստրերից իր շինարարական գործունեությամբ աչքի է ընկել Մարիամը, որը կառուցել է Քոբայրի վանքի գլխավոր եկեղեցին, Կյուրիկյան տոհմական տապանատունը՝ Հաղբատում[18]։

### 3. ՍՅՈՒՆՅԱՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԳՈՅԱՄԱՐՏԸ

Ի տարբերություն Հայաստանի մյուս նահանգների, Սյունիքը (նրա հետ նաև Արցախը) համեմատաբար զերծ մնաց սելջուկ-թուրքերի արշավանքներից։ Դրան նպաստում էր ոչ միայն այս նահանգների անառիկ դիրքը, այլև Սյունյաց հայկական թագավորության գոյությունը։ Այսուհանդերձ, Սյունիքը ի վիճակի չէր դիմագրավելու հակառակորդի գերազանց ուժերին, ուստի, երբ թուրք-սելջուկները երրորդ անգամ արշավեցին Հայաստան, Սյունյաց Գրիգոր թագավորը ճանաչեց նրանց գերիշխանությունը։ 1064 թ. սելջուկյան արշավանքի ժամանակ Սյունիքը ասպատակության ենթարկվեց ոչ թե Ալփասլանի, այլ նրա որդի Մելիքշահի զորաբանակի կողմից, որի հետ էր վերջինիս վեզիր Նիզամ ալ-Մուլքը[19]։ Հաշտությունը սելջուկների հետ ձեռք բերվեց բավականին ծանր գնով։ Սյունյաց թագավորության սահմանամերձ մի շարք գավառներ խլվեցին իրենց բնիկ իշխողներից և տրվեցին շրջակա մահմեդական իշխանավորներին։

Գրիգոր թագավորի օրոք այլ խոշոր անցքեր տեղի չեն ունեցել։ Հայտնի է, որ 1062 թ. Գեորգ և Հովհաննես կրոնավորները կառուցում են Բղենո Նորավանքի երկրորդ համալիրը[20], որը մինչև այժմ էլ կանգուն է[21]։ Սյունյաց Գրիգոր թագավորը ժառանգներ չուներ, ուստի, թագավորության նշանավոր իշխանների հետ խորհրդակցելուց հետո, նա Սյունիք է բերում իր կնոջ եղբորը՝ Սենեքերիմին և դարձնում իր ժառանգը[22]։

Սենեքերիմի գահ բարձրանալով հաստատվեց փաստորեն նոր հարստություն. Նրա առաջին ներկայացուցչի (1084—1094) իշխանության սկզբնական տարիներին Սյունյաց թագավորությունը վայելում էր կատարյալ խաղաղություն։ Սենեքերիմը, որին Ստ. Օրբելյանը համարում է «յոյժ գեղեցիկ տեսլեամբ և առոյգ հասակաւ՝ հանճարեղ և իմաստուն»[23] ցուցաբերում է դիվա-

---

17 Նոր-Բերդի Կյուրիկյանների վերջին ներկայացուցիչ կրտսեր Վասակը արձանագրություններում հիշատակվում է XIII դ. 30-ական թթ., հմմտ. Կ. Ղաֆադարյան, Պատմահնագիտական դիտողություններ Նոր-Բերդի Կյուրիկյանների իշխանության մասին։ Արմֆանի «Տեղեկագիր», հաս. գիտությունների, 1940, № 4—5, էջ 167—171։ Դրանցից հետո նոր-բերդցիները ասպարեզից անհետանում են։

18 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Հաղբատ, էջ 157։

19 Տե՛ս Ибн ал-Асир, էջ 118։

20 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 246, «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 45։

21 Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 42։

22 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 318—319։

23 Տե՛ս նույն տեղում, էջ 318։

նագիտական լուրջ ընդունակություններ։ Նրան հաջողվում է շնորհների արժանանալ սելջուկյան արքունիքում՝ Մելիքշահի (1072—1092) կողմից։ Ապա նա կարողանում է վերականգնել Սյունյաց թագավորության նախկին սահմանները[24], ինչպես Մելիքշահի օգնությամբ, այնպես էլ զենքի ուժով։ Այսպես, Հասան իշխանը Փատլուն ամիրայից ազատագրում է Կովսականը[25]։

Սենեքերիմի իշխանության տարիներին Սյունիքը խաղաղ պայմաններում տնտեսապես բարգավաճում է, ծավալվում են շինարարական աշխատանքներ։ 1087 թ. Սյունյաց Գրիգոր եպիսկոպոսը կառուցում է Տաթևի Աստվածածին եկեղեցու կամարները և մի շարք այլ շինություններ[26]։ Հատկապես մեծ աշխատանքներ են ծավալվում Վահանավանքում։ Սյունյաց Շահանդուխտ թագուհին իր քույր Կատայի հետ միասին, դեռևս Գրիգոր թագավորի օրոք, սկսում է կառուցել Վահանավանքի ս. Աստվածածին եկեղեցին, որի շինությունն ավարտվում է 1086 թ.[27]։

Այդ տարիներին վերստին փարթամանում է Տաթևի եպիսկոպոսապետությունը։ Նվիրատվությունների, գնումների, երբեմն էլ բռնագրավումների միջոցով վանքը զգալիորեն մեծացնում է իր կալվածները և ետ վերադարձնում երբեմնի խլվածները։

Մելիքշահի օրոք Սյունյաց թագավորության կախվածությունը սելջուկյան պետությունից համարյա թե անվանական բնույթ էր կրում, որովհետև ներքին գործերում նա կատարելապես ինքնուրույն էր։ Կախվածության միակ արտահայտությունը հարկատվությունն էր։

Այս վիճակը, սակայն, երկար չտևեց, քանի որ, ինչպես տեսանք, Մելիքշահի մահից հետո խաղաղությունը Առաջավոր Ասիայում նորից խախտվեց։

Այսուհանդերձ, օգտվելով Սելջուկյան աշխարհակալ պետության թուլացումից, ապա և տրոհումից, Սյունյաց թագավորությունը, Լոռու թագավորության և Սասունի ու Տարոնի իշխանության օրինակով, վերականգնեց իր անկախությունը։ Այդ թոհ ու բոհի ժամանակ նրան հաջողվեց զգալիորեն ընդարձակել իր սահմանները, որը խիստ գրգռեց նրա մահմեդական հարևաններին։ Շադդադյանները, որ դեռևս 1075 թ. (ըստ հայկական սկզբնաղբյուրների՝ 1088 թ.)[28] կորցրել էին Գանձակն իր շրջակայքով[29] և իշխում էին միայն Այրարատի որոշ մասերում ու Շիրակում, այլևս նախկին հզորությունը չունեին։ Ամենամեծ վտանգը թագավորությանը սպառնում էր Գանձակում և Ատրպատականում հաստատված սելջուկյան կուսակալությունը, որը հետագայում վերածվեց առանձին ամիրայության։ Վերականգնելով հանդերձ իր անկախությունը, Սյունյաց թագավորությունը մնաց իբրև գավառական փոքր իշխանություն՝ կանգնած արտաքին վտանգների առջև։ XI դարի վեր-

---

24 Տե՛ս նույն տեղում, էջ 319։

25 Տե՛ս նույն տեղում, էջ 326։

26 Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 28, Ստ. Օրբելյան, էջ 321—322։

27 Տե՛ս Ստ. Օրբելյան. էջ 241։

28 Տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյան, Մունաջջիմ Բաշին Դվինի և Գանձակի Շադդադյանների մասին, տե՛ս «Բանբեր Մատենադարանի», 1962, № 6, էջ 477—486։

29 Տե՛ս Վարդան, էջ 106. «Ի հինգհարիւր երեսունևեօթն թուին Պուզան ամիրան հրամանաւ Մելիքշահի, առ զԳանձակ ի Փատլնեացն, որ Շատատիքն կոչէին»։

չին թագավորությունը զբաղեցնում էր ողջ Սյունիքի նահանգի տարածքի 1/3-ից մի փոքր ավելին՝ շուրջ 5,5 հազար քառ. կմ[30], ուներ 43 բերդ, որոնցից նշանավոր էին 12-ը, 48 վանք, 1008 գյուղ[31] և մի քաղաք, որը թագավորության մայրաքաղաք Կապանն էր։ Ամենապարզ հաշվարկներից երևում է, որ XII դարի սկզբին թագավորությունն ուներ շուրջ 200000 բնակիչ, որը բնավ էլ քիչ չէր Կապանի թագավորության փոքր տարածքի համար։

Ինչպես հաղորդում է սյունյաց պատմիչը, Մելիքշահի մահից հետո քաղաքական մթնոլորտը Հայաստանի արևելյան մասում խիստ շիկացավ։ 1094 թ. Գանձակի սելջուկյան կուսակալությունը, կամենալով վերջ տալ Սյունյաց թագավորության անկախությանը, արշավանք է կազմակերպում դեպի Սյունիք, որին մասնակցում էին Շադդադյանների զորաբանակները։ Թշնամի զորքերը պաշարում են Կապանը, բայց սյունեցիների հերոսական պաշտպանության շնորհիվ, նրանք ըստ էության հաջողության չեն հասնում։ Հանդիպելով համառ դիմադրության, հակառակորդը դիմում է նենգ միջոցի։ Գրիգոր Ապիրատյան իշխանի միջնորդությամբ Սենեքերիմ թագավորը հրավիրվում է բանակցությունների, որի ժամանակ էլ սպանվում է։ Չնայած դրան, սելջուկյան արշավանքը հաջողություն չունեցավ։

Սենեքերիմին հաջորդեց նրա Գրիգոր որդին, որն իշխեց բավական երկար՝ 1094 թ. մինչև 1166թ.։ Սրա թագավորության առաջին տարիներին երկիրը կառավարում էր Սենեքերիմի քույրը՝ Շահանդուխտ թագուհին։ 1094 թ. անհաջող արշավանքից հետո սելջուկները մինչև XII դարի սկիզբը այլևս չէին անհանգստացնում Սյունյաց թագավորությանը և առավելապես զբաղված էին Արցախի լեռնային անառիկ շրջանները գրավելով։ Մոտավորապես այդ ժամանակներում է, որ նեղվելով սելջուկներից, Ուտիքից Սյունիք է փախչում Աղվանից կաթողիկոս Տեր Ստեփանոսը, որը հաստատվում է Վահանավանքում[32]։

Դեռևս XII դարի սկզբից Գանձակի կուսակալության ճնշումը Սյունյաց թագավորության վրա գնալով ուժեղանում էր։ Դա բացատրվում է ոչ միայն նրանով, որ Արցախի հայկական իշխանությունները մասամբ արդեն թուլացել էին կամ ենթարկվել սելջուկներին, այլև այն բանով, որ օրավուր հզորացող Վրաստանից երկյուղելով, սելջուկները կամենում էին վերջ տալ Հայաստանի հյուսիս-արևելքում պահպանված քրիստոնեական այդ վերջին թագավորությանը։ Գտնվելով սելջուկյան օղակման մեջ, Սյունյաց թագավորությունը ստիպված եղավ շուրջ յոթ տասնամյակ համառ պայքար մղել թշնամու դեմ և ընկավ այդ անհավասար կռվում։

Ստեփանոս Օրբելյանը հայտնում է, որ 1103 թ. թուրքերը Չորթմանի առաջնորդությամբ գրավում են, կողոպտում և ավերում Սյունյաց թագավորության Կապան մայրաքաղաքը[33]։

---

30 Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 117։

31 Ստ. Օրբելյանի որոշ ձեռագրերում և հրատարակություններում գյուղերի քանակը ցույց է տրված նաև 1000 կամ 1400, իսկ Ղ. Ալիշանի օգտագործած վենետիկյան ձեռագրերից մեկում՝ 2000 («Սիսական», էջ 274)։

32 Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», պրակ II, էջ 139։

33 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 333—334։

*Կապանի անկումը խիստ մեծ հարված էր բազում թշնամիներով շրջապատված Սյունյաց փոքրիկ թագավորության համար։ Արդեն 1104 թ. թշնամու ձեռքն ընկավ Որոտն ամրոցը, որը հանդիսանում էր թագավորության հյուսիսային դարպասը, ապա մեկ տարի անց գրավվեց Բղենը[34]։ Բղենի կռիվների ժամանակ գերվեց Խոսրովիկ իշխանը, իսկ հայ բնակչությունը զանգվածաբար սրի քաշվեց։ Նշանավոր բերդերից թագավորությանը մնացին Բաղաբերդը, Գեղին, Կաքավաբերդը, Շլորուտը, Կարճևանը, Մեղրին և Գրհամը[35]։ Այս բոլորի հետևանքով զգալիորեն կրճատվեց թագավորության տարածքը, սահմանափակվելով Զորք կամ Կապան, Արևիք գավառներով, Ծղուկք, Բաղք և Կովսական գավառների որոշ մասերով։*

*1105 թ. արշավանքից հետո շուրջ երկու տասնամյակ խաղաղություն տիրեց Սյունիքում, որովհետև սելջուկներն ավելի շատ զբաղված էին Վրաց թագավորության դեմ պատերազմելով։ Օգտվելով Վրաստանի հաջողություններից, Սյունյաց թագավորությունը ջանքեր գործադրեց բարելավել իր վիճակը, սակայն, երբ 1126 թ. վրացական թագավորությունը որոշ անհաջողություններ ունեցավ, սելջուկները նույն թվականին կրկին փորձեցին վերջ տալ Սյունյաց թագավորությանը։ 1126 թ. Հարոն ամիրան ավերեց Կապան և Արևիք գավառները՝ գրավելով Կաքավաբերդն ու Բաղակու քարը։ Սրանցից վերջինը ամրացված վանք էր, որտեղ ժամանակի ընթացքում կուտակվել էին մեծ հարստություններ ու մեծ թվով ձեռագրեր, որոնք բերվել էին այստեղ երկրի մյուս գավառներից և ընկան թշնամու ձեռքը[36]։ Այդ արշավանքից հետո Կաքավաբերդը և Բաղակու քարը, որը գտնվում էր Բաղաբերդի մոտակայքում, կրկին միացվում են Սյունյաց թագավորությանը։*

*Արշավանքները դեպի Սյունիք ավելի վտանգավոր դարձան XII դարի կեսին, երբ Գանձակի կուսակալությանը տիրացավ Ատրպատականի Ելտկուզյան կամ Փահլավանյան տոհմը։ 1151—1152 թթ. Ելտկուզի զորքերը գրավեցին Շլորուտ բերդը, իսկ 1157 թ.՝ Մեղրին[37]։ Սյունյաց Գրիգոր թագավորը, որ արու ժառանգներ չուներ, իր դստերը՝ Կատային ամուսնացնում է Խաչենի Հասան Գեռաքարեցի իշխանի հետ և նրան դարձնում թագաժառանգ[38]։ Սակայն նման փորձերով Սյունյաց թագավորությունը փրկել այլևս անհնարին էր, որովհետև սելջուկյան վտանգին դիմակայելու ուժեր չկային։ Վրացական զորքերի առաջխաղացումը դեպի Անի և Շիրակ, Դվին և Այրարատ 1161—1162 թթ. խիստ անհանգստացրեց սելջուկներին, որովհետև վրացիները լրջորեն սպառնում էին ներխուժել Սյունիք և ձեռք բերել կարևոր դաշնակից՝ հանձին Սյունյաց թագավորության։ Ուստի, վրացիներին պարտության մատնելուց հետո, Ելտկուզ աթաբեկի զորքերը կրկին շարժվեցին Սյունիք։ 1166—1169 թթ. նրանք գրավեցին թագավորության նշանավոր բերդերից Գրհամը, Գեղին և Կաքավաբերդը[39]։ 1170 թ. սելջուկները պաշարեցին թագավորության*

---

34 *Տե՛ս նույն տեղում, էջ 334։*
35 *Տե՛ս նույն տեղում, էջ 335։*
36 *Տե՛ս նույն տեղում։*
37 *Տե՛ս նույն տեղում։*
38 *Տե՛ս նույն տեղում, էջ 336—337։*
39 *Տե՛ս Վարդան, էջ 128։*

վերջին հենակետը՝ Բաղաբերդը, որտեղ գտնվում էր Հասան թագավորը։ Որոշ ժամանակ անց Բաղաբերդի վիճակը դարձավ օրհասական։ Հասան Գեռաքարեցին բերդապահներ կարգելուց հետո, իր ընտանիքի հետ գիշերով հեռանում է Խաչեն՝ դեպի իր հայրենական կալվածը։ Դրանից շատ չանցած սելջուկները խաբեությամբ տիրացան բերդին և մեծ կոտորած կազմակերպեցին։ Թագավորության ամենաանառիկ ամրոցում երկար ժամանակ պահվում էին թագավորության, ինչպես նաև բազմաթիվ վանքերից բերված հարստություններ և մեծարժեք իրեր։ Այստեղ կուտակվել էին մեծ թվով սրբություններ, եկեղեցական թանկարժեք սպասներ, մասնավորապես Տաթևի եպիսկոպոսական աթոռի մասունքները, ոսկե և արծաթե գոհարազարդ իրերը և շուրջ 10000-ի հասնող ձեռագրեր[40]։ Ինչպես Ստ. Օրբելյանն է գրում «Ամենայն առ հասարակ դերի վարեցան, եւ ցան և ցիր եղեն ընդ երեսս աշխարհի»[41]։ Բաղաբերդը կողոպտվեց և ենթարկվեց ահավոր ավերածության, ոչնչացվեց նաև թագավորության մշակույթի արգասիք վերոհիշյալ ձեռագրերի մեծագույն մասը։

Բաղաբերդի անկումից հետո թագավորության մյուս բերդերն արդեն հարկադրված էին ենթարկվելու Ելտկուզ աթաբեկին և շատ իշխաններ ու ազատներ հեռացան Կապանից[42]։ Ստ. Օրբելյանն ինքն իրեն հակասելով, գրում է, թե Սյունյաց թագավորությունը գոյատևեց 120 տարով ավելի, քան հայ Բագրատունիների թագավորությունը[43], այսինքն մինչև 1165 թ., որն անտարակույս ճիշտ չէ։ Իրականում Սյունյաց թագավորությունը գոյություն ունեցավ շուրջ 183 տարի և պատմության թատերաբեմից անհետացավ 1170 թ.։

Սյունյաց թագավորության անկումից հետո մնաց Արցախի (Խաչենի) իշխանությունը, որն իր գոյությունը պահպանեց մինչև Հյուսիսային Հայաստանը կազատագրվեր սելջուկյան տիրապետությունից։

## 4. ԱՆԻՆ ՇԱԴԴԱԴՅԱՆՆԵՐԻ ՏԻՐՈՒՅԹ

Շադդադյանները դեռևս 1022 թ. հաստատվել էին Դվինում։

1064 թ. Անիի վրա Ալփասլանի ձեռնարկած արշավանքին մասնակցում էր նաև Շադդադյան Աբու-լ-Ասվարը, որը դեռևս 1048 թ. դարձել էր Գանձակի ամիրա. Դվինը հանձնելով իր տեղակալներին։ Ալփասլանին ցույց տված ռազմական օժանդակության փոխարեն նա ձեռք բերեց նոր գավառներ Այրարատում։

Շիրակում Շադդադյանները հաստատվեցին Ալփասլանի կողմից Անին գրավելուց հետո։

Մունաջջիմ Բաշին վկայում է, որ 1065 թ. հունիս ամսին Դվինի Շադդադյան ամիրա Աբու-լ-Ասվարը զորքով դիմեց Անի և այնտեղ տեղավորեց իր մերձավորներին։ Համաձայն այս վկայության, Ալփասլանը Հյուսիսային Հայաստանում նվաճած հողերը հանձնում է Աբու-լ-Ասվարին։

40 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 335—337։

41 Տե՛ս նույն տեղում, էջ 236։

42 Տե՛ս նույն տեղում, էջ 336—337։

43 Տե՛ս Ստ. Օրբելյան. Ողբ ի ս. Կաթուղիկէն, էջ 38։

Աբու-լ-Ասվարի մահվանից հետո (1067) Գանձակի Շադդադյան ամիրա Փադլունը (1067—1073), թանկարժեք ընծաներ տալով սելջուկ սուլթանին, ստացավ Անին և հանձնեց իր փոքր եղբորը՝ Մանուչեին։

Տիրանալով Հայաստանի մայրաքաղաքին, Մանուչեն իրեն շրջապատեց հայ իշխանական տների մնացորդներով, մանավանդ որ ինքն էլ մոր կողմից հայ էր։ Այս շրջանում Պահլավունի իշխաններից ոմանք, առաջին հերթին Ապիրատյան Գրիգոր իշխանը նորից հաստատվեցին իրենց տիրույթներում։

Նույն այս ժամանակներում մեծ կարևորություն էր ստացել հայոց կաթողիկոսության և նրա աթոռի տեղի հարցը։

Պետրոս Գետադարձի Սեբաստիա աքսորվելուց հետո հայ եկեղեցու պետը կտրվեց երկրի կենտրոնից, իսկ 1066 թ. ընտրված Գրիգոր Բ Վկայասերը իր նստավայրը տեղափոխեց Գագիկ Աբասյանի մոտ՝ Ծամնդավ։ Եկեղեցական գործերը վարելու համար նա իր ազգականներից մեկին՝ Բարսեղ Պահլավունուն ձեռնադրեց Շիրակի եպիսկոպոս և նշանակեց կաթողիկոսական փոխանորդ[44]։ Երկրի քաղաքական միասնության խախտվածությանը հետևեց նաև եկեղեցու անմիասնությունը։ 1076 թ. Փիլարտոս իշխանը Մարաշի մոտ գտնվող Հոնի քաղաքում հիմնեց նոր կաթողիկոսություն[45]։ Այս պարագաներում անհրաժեշտ էր վերականգնել հայոց կաթողիկոսությունը բուն Հայաստանում, որին և ձեռնամուխ եղան երկրի իշխանները՝ Կյուրիկեի գլխավորությամբ։ Գրիգոր Ապիրատյանի եղբայր Բարսեղ Պահլավունին Վկայասերի համաձայնությամբ և Կյուրիկեի աջակցությամբ 1081 թ. Հաղբատում օծվեց կաթողիկոս[46]։

Կաթողիկոսական աթոռը հաստատվեց Անիում, քանի որ Անին պահպանում էր հայոց մայրաքաղաքի հուշը և այնտեղ բավականաչափ զորեղ էին Պահլավունիները[47]։

Ալփասլանի արշավանքներից սաստիկ ավերված Անիում Մանուչեն ձեռնարկեց վերականգնման որոշ աշխատանքներ։ Նա մասնավորապես վերականգնեց և նոր մասերով լրացրեց քաղաքի պարիսպը։ Մանուչեն ենթակա էր սելջուկ սուլթան Մելիքշահին։

Անիի և ամբողջ Շիրակի բնակչությունը առաջվա պես հայկական էր, միայն իշխանությունն էր անցել Շադդադյանների ձեռքը, որոնց ռազմական հենարանը Գրիգոր Ապիրատյանի հայկական զորամասերն էին։ Երբ XI դարի իննսունական թվականներին Արտուխյան Իլղազին (Էլղազի) ասպատակելով

---

44 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 211, նաև Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, Կ. Պոլիս, 1912, էջ 1289։

45 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 253։

46 Տե՛ս նույն տեղում, էջ 221։

47 Տասնմեկերորդ դարի երկրորդ կեսում Պահլավունիները երկու ճյուղի բաժանվեցին։ Ապիրատ Պահլավունու որդի Ապլղահարի սերունդը հաստատվեց Կիլիկիայի կողմերում (Ծովք և այլն) և երկար ժամանակ իր ձեռքում պահեց Հայոց կաթողիկոսական աթոռը Հռոմկլայում։ Ապիրատի մյուս որդու՝ Վասակի սերունդը մնաց Հայաստանում և ժառանգաբար տվեց աղդեցիկ զորավարներ և Շիրակի ու Անիի իշխաններ, ինչպես, օրինակ, վերոհիշյալ Գրիգորը, Ապուղամրը, Վահրամը և ուրիշներ։ Պատմական աղբյուրներում Անիի Ապիրատյան Պահլավունիները հիշվում են ընդհուպ մինչև XIV դարի սկիզբը։

Հայաստանը հասավ մինչև Անի, նրան արժանի հակահարված տվեց Ապիրատյան իշխանը, որը զոհվեց սելջուկ նվաճողների դեմ կռվի ժամանակ։



Անիի մաքսատունը կամ հյուրատունը վերածված մզկիթի (Մանուչեի մզկիթ)

1105 թ. Շադդադյանների տիրույթները ասպատակեց Արզնի Ղզըլ ամիրան[48], որն սպանեց Մանուչեի եղբորը՝ Աբու Նասրին և գրավեց Դվինը։ Ի վիճակի չլինելով առանձին կռվել Ղզըլ ամիրայի դեմ, Մանուչեն գնաց սել-

48 Տե՛ս V. Minorsky, Studies, p. 82—8 .

ջուկյան սուլթան Ղիյաս ալ-դին Մուհամմադի մոտ (1105—1118) և օգնական զորք ստանալով, հաղթեց Ղզըլ ամիրային ու նրան սպանեց։

Մանուչեի որդին՝ Աբու-լ-Ասվարը (մոտավորապես 1118—1124), որն արդեն իշխում էր Անիում ու Դվինում, թշնամական վերաբերմունք ցուցաբերեց հայերի նկատմամբ[49]։

Անիի հայ մեծամեծները և բնակչությունը ապստամբեցին Աբու-լ-Ասվարի դեմ, հրավիրեցին վրաց Դավիթ Շինարարին (1089—1125) և քաղաքը առանց կռվի նրան հանձնեցին[50]։ Անիի մայր տաճարի խաչը, որը Աբու-լ-Ասվարը հանել էր, նորից դրվեց իր տեղը, իսկ Աբու-լ-Ասվարն իր ութ որդիների հետ աքսորվեց Ափխազիա։ Անիում կառավարիչ նշանակվեցին Աբուլեթ Օրբելին և նրա որդի Իվանեն։

Աբու-լ-Ասվարի որդիներից մեկը՝ Փատլունը (Ֆադլոն), որը գտնվում էր Խորասանում, սելջուկյան սուլթան Սինջարից օգնական զորք վերցնելով, եկավ ու պաշարեց Անին։ Փատլունը Անիի ավագանուն (ասացյալ քաղաքին)[51] խոստումներ արեց, և Աբուլեթ Օրբելին 1126 թ. ստիպված եղավ քաղաքը հանձնել ու հեռանալ։

Շադդադյանների դիրքերը խիստ թուլացան, երբ 1130 թ. Արզնի ամիրայական տնից Խուրթը (Կուրտ) գրավեց Դվինը։ Կռվում վիրավորված Փատլուն ամիրան (1126—1130), շուտով սպանվեց դավադիրների ձեռքով[52]։

Տեսնելով Դվինի անտերունչ վիճակը, Աբուլեթ Օրբելու որդի Լիպարիտը 1131-ին հարձակվեց Գառնիի վրա, բայց Խուրթը նրան հաղթեց։

Ըստ արաբ պատմիչ Ֆարիկիի[53] հիջրի 549 (1154) թվականին Շադդադը կնության է ուզում Կարնո ամիրա Իզզ ալ-դին Սալդուխի աղջկան, սակայն մերժում ստանալով, խորամանկորեն հրավիրում է նրան Անի իբրև թե վրացիների դեմ կռվելու նպատակով։ Միաժամանակ նա օգնական զորք է խնդրում Գեորգի Գ-ից և նրա միջոցով հաղթում Կարնո ամիրային։

Անին սկսել էր մասամբ վերականգնվել, և նրա ազատատենչ ու անհնազանդ հայ բնակչությունը ձգտում էր թոթափել օտարի ծանր տիրապետությունը։ Նույն պատմիչի վկայությամբ, մի տարի հետո (1155) Անիի հայերն ապստամբվեցին և դուրս քշելով Շադդադին, ամիրա դարձրին նրա եղբորը՝ Փատլունին։

Երբ 1161 թ. հայերը նորից ապստամբեցին Անիում և քաղաքը հանձնեցին Գեորգի Գ-ին, Անիի վրա հարձակվեցին մահմեդական ամիրաները, բայց պարտություն կրեցին և հեռացան։

1162 թ. Գեորգի Գ գրավեց նաև Դվինը։ Սակայն նորից միջամտեց Ատրպատականի Ելտկուզ ամիրան, նվաճեց Դվինը և այնտեղ կառավարիչ նշանակեց Ալի Շիրին[54]։

48 Տե՛ս V. Minorsky, Studies, p. 82—83.

49 Տե՛ս Վարդան, էջ 119—120։

50 Տե՛ս Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, էջ 238։

51 Տե՛ս Վարդան, էջ 120։

52 Տե՛ս նույն տեղում, էջ 122։

53 Տե՛ս V. Minorsky, Studies..., p. 86—87.

54 Տե՛ս Վարդան, էջ 127, 133։

Ելտկուզ ամիրան հասավ մինչև Անի, 30 օր պաշարեց քաղաքը, մեծ վնասներ հասցրեց, սակայն չկարողացավ գրավել այն և ետ քաշվեց։ Անիում ամիրա դարձավ Շադդադյան Շահնշահը, որը իր նախորդի՝ Փադլունի եղբայրն էր։

Իվանէ Օրբելու գլխավորությամբ 1174 թ. Անին գրավեցին վրաց զորքերը։ Ատրպատականի Ելտկուզ ամիրան նոր հարձակում ձեռնարկեց, բայց ջախջախիչ պարտություն կրեց ու նահանջեց։ Սակայն Անին էլ երկար չմնաց վրաց իշխանության ներքո։ Որոշ ժամանակից Շադդադյանները կրկին վերադարձան Անի։ Այդ մասին է վկայում Անիի 1198/99 թվականի պարսկերեն արձանագրությունը, որտեղ հիշվում է Շադդադյան Քեյ սուլթանը[55]։ Շադդադյանները փորձեցին իրենց հենարան ստեղծելու միտումով մեծացնել Շիրակի մահմեդական բնակչության թիվը, թուրքեր բնակեցնելով Շիրակի սահմաններում։ Ի պատասխան դրան 1186 թ. զինված անեցիք հարձակվեցին և հիմնահատակ ավերեցին Ծառաքարը, որտեղ հավաքվել էին այլ ամիրայությունների հողերից եկած հանցագործ տարրերը։ Անիի և Շիրակի ազատագրումը դարձել էր կենաց և մահու հարց։

## 5. ԽԵԴԵՆԵԿՅԱՆ ԱՐԾՐՈՒՆԻՆԵՐԸ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՈՒՄ

Վասպուրականի թագավորության անկումից և Սենեքերիմ Արծրունու գաղթից հետո Վասպուրականում իշխեցին Արծրունիների երկրորդական ճյուղերը։ Վանա լճից արևելք և հարավ ընկած գավառներում իշխանությունն իր ձեռքը վերցրեց Խեդենեկ Արծրունին, որի վարչական հիմնական կենտրոններն էին Ամյուկ անառիկ ամրոցը և Աղթամար կղզին։ Վասպուրականի հյուսիսում՝ Այրարատի Կոգովիտ և Ծաղկոտն գավառներում իշխում էր Ալուզի[56] տոհմը՝ նստավայր ունենալով Անգղը (Անգեղատուն) Ծաղկոտն գավառում։ Թոռնավան գավառում իշխում էր Խաչիկ իշխանը, որը նույնպես Արծրունի էր։

Արծրունյաց պատմիչը Խեդենեկին անվանում է մեծ իշխան և վերակացու «տանն Վասպուրականի»[57]։ Նրան հաջորդեցին որդին՝ Թոռնիկը, ապա թոռը՝ Թադեոսը, որը հաջողությամբ ետ մղեց թշնամիների բոլոր հարձակումները Վասպուրականի գավառներից։

Խեդենեկյան Արծրունիների իշխանությունը Վասպուրականում ենթակա էր սելջուկյաններին, սակայն վերջիններիս թուլացումից հետո Վասպուրականը անկախություն ձեռք բերեց։ Թոռնիկի որդի Աբդլմսեհը, որը կուրապաղատ տիտղոսն էր կրում, իր ազդեցությունը մյուս գավառների վրա տարա-

---

55 Տե՛ս Л. Гюзальян, Персидская надпись Кей Султана Шеддади в Ани. Академику Н. Я. Марру, М.—Л., 1935, стр. 629—641.

56 Հ. Ն. Ակինյանի կարծիքով այս Ալուզը ոչ թե Արծրունի է, այլ Ահարոն Բուլգարի եղբայր Ալուսեանն է, որ Բյուզանդիայի կողմից Կարնո քաղաքի սորատեգ էր նշանակված (մինչև 1040)։ Նա սերում էր Կոմսաձագերի տոհմից, որոնք գաղթել էին Հայաստանի Դերջան գավառից մեկ դար առաջ։ Տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1955, էջ 115—136։

57 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 504։

ծելու նպատակով, ամուսնացավ Ծաղկոտնի և Կոգովիտի տեր Ալուզի թոռ Մարիամի հետ։ Այնուհետև՝ օգտվելով այն հանգամանքից, որ Գրիգորիս Գ (Փոքր Վկայասեր) Պահլավունին Կիլիկիայում կաթողիկոս էր օծվել 15 տարեկան հասակում, Աբլղարեհն իր որդում՝ Դավիթ[58] եպիսկոպոսին 1113 թ. կաթողիկոս օծել տվեց Աղթամարում։ Այսպիսով, ծնունդ առավ Աղթամարի կաթողիկոսական աթոռը, որը պահպանեց իր գոյությունը մինչև XIX դարը։ Սակայն Աղթամարի աթոռի իրավասությունը չընդունվեց ոչ Մեծ Հայքում, ոչ էլ Կիլիկիայում։ Դավիթը նույնիսկ նզովվեց Սև լեռան ժողովի կողմից։ Աղթամարի կաթողիկոսարանին ենթակա էին միայն Վանա լճի շրջակա գավառները։

Աբլղարեհը մեռավ 1121 թ. և հաջորդեց որդին՝ Ստեփանոս Ալուզը[59]։ Սրա օրոք հարևան ամիրայությունները մեծ նեղություն պատճառեցին Վասպուրականին, որի իշխանը, պատմիչի արտահայտությամբ, միայնակ և անօգնական էր Հայաստան աշխարհում։

Տագնապալի էր Վասպուրականի դրությունը նաև Ալուզի որդու Խեդենեկ Բ-ի[60] օրոք (XII դարի վերջ և XIII դարի սկիզբը)։ Վասպուրականի գավառների շինականները, թշնամիների ասպատակություններից խույս տալով, ապաստանում էին ամրոցներում։ Խեդենեկը արու զավակ չունենալով, իր դուստրը՝ Մարիամին ամուսնացրեց Արծրունյաց տոհմից Սեֆեդին Արքայունի հետ, որին կտակեց Աղթամար կղզին։ Թուլացած Սեֆեդինյանները կծկված Աղթամարում մինչև XVI դարը ժառանգաբար իրենց ձեռքում պահեցին Աղթամարի կաթողիկոսական աթոռը և շրջակա որոշ գավառներ՝ Վասպուրականում։

Արծրունիների մի ուրիշ ճյուղ X դարի սկզբներին հաստատվել էր Մոկք նահանգում, որը մինչ այդ Բագրատունիների մի ճյուղի՝ Մուշեղի և նրա հաջորդների տիրույթն էր[61]։

XII դարում Մոկաց Արծրունի իշխանները մասամբ ենթակա էին Ամյուկի խեդենեկյան Արծրունիներին։ Դարի առաջին կեսում հիշվում է «մեծ իշխանն Մոկաց Հմայեակ»[62], որը խնամիացել էր Սասունի Թոռնիկյաններին։

## 6. ՍԱՍՈՒՆԻ ԹՈՌՆԻԿՅԱՆՆԵՐԸ

Տարոնի Բագրատունիների անկումից հետո Սասունը չենթարկվեց Բյուզանդական կայսրությանը և մնաց որպես անկախ իշխանություն։ Սելջուկյան արշավանքների ժամանակ Սասունի իշխանները հաջող պայքար մղեցին սելջուկների և հարևան Մրվանյանների ոտնձգությունների դեմ։

---

58 Տե՛ս Ն. Ակինեան, Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ, Վիեննա, 1920, էջ 7—13։ Մ. Օրմանյան. Ազգապատում, Ա, 1851—1854։

59 Տե՛ս Թովմա Արծրունի, էջ 510։

60 Տե՛ս նույն տեղում, էջ 514—516։

61 Տե՛ս J. Markwart, Südarmenien, S. 495--5.0.

62 Նույն տեղում, էջ 519։

Տասնմեկերորդ դարի կեսերին Սասունի իշխանն էր Մուշեղի որդի Թոռնիկը։ Այդ ժամանակ ամբողջ հարավային Հայաստանը և վերին Միջագետքը գտնվում էին Գրիգոր Մագիստրոս Պահլավունու «դքսության» սահմաններում։ Թոռնիկը Գրիգոր Մագիստրոսի փեսան էր և նրա թղթերի մեջ հիշվում է որպես Մամիկոնյան[63]։ Այս և նման փաստերի հիման վրա Սասունի Թոռնիկյաններին համարել են Տայքի Մամիկոնյանների հետնորդներ[64]։

Սելջուկներն իրենց արշավանքի ժամանակ Սասունում հանդիպեցին ուժեղ դիմադրության։ Մատթեոս Ուռհայեցու վկայությամբ, հայկական ՇԵ (1056) թվականին սելջուկները կանգ առան Տավրոսյան լեռների ստորոտում՝ Սասուն անառիկ ամրոցից ոչ հեռու։ Պատմիչը վիպական ձևով (որն ի դեպ շատ է հիշեցնում Սասնա ծռերի վիպական պատկերները) նկարագրում է բախումը երկու ուժերի միջև, որը վերջանում է Սասունի լիակատար հաղթանակով[65]։

Ըստ Ուռհայեցու, Սասունի տիրոջը (արաբ. սահիբ ալ-Սանասինա)[66] Սասունից բացի ենթակա էին նաև Ճապաղջուրն ու Աշմուշատը[37]։ Սասունի իշխանությունը բավականին զորեղ էր և ընդգրկում էր Արածանիի ամբողջ միջին հովիտը։ Նրա սահմանները հարավում հասնում էին Նփրկերտի մերձակայքը, իսկ հյուսիսում՝ Արևելյան Եփրատի (Արածանիի) ափերը։ Արաբական աղբյուրները Սասունի իշխանին նույնիսկ կոչում էին «Սասունի թագավոր» (մալիք ալ-Սանասինա»)[68]։

Բյուզանդական տիրապետության շրջանում Սասունի իշխանությունը իրականում ինքնուրույն էր, իսկ Մանազկերտի ճակատամարտից (1071) հետո չենթարկվեց սելջուկյան պետությանը։ Մանազկերտում Բյուզանդիայի պարտությունից անմիջապես հետո Սասունի Թոռնիկ իշխանը բախվեց Կոմմագենում իշխող հայազգի Փիլարտոս Վարաժնունու հետ[69]։ Վերջինս նախ փորձեց սպառնալիքով Թոռնիկին ենթարկել իրեն, բայց երբ Սասունի իշխանը տեղի չտվեց, Փիլարտոսն ստիպեց Գրիգոր Մագիստրոսի որդուն՝ Գրիգորիս Բ կաթողիկոսին, որի կաթողիկոսական աթոռը նրա հողերում էր՝ գնալ Թոռնիկի մոտ և համոզել նրան ենթարկվել Փիլարտոսին։

Երբ այս միջոցն էլ ապարդյուն անցավ, Փիլարտոս Վարաժնունին հարձակվեց Սասունի վրա[70]։ Մատթեոս Ուռհայեցին գրում է, թե Թոռնիկի հավաքած զորքը բաղկացած էր հիսուն հազար հետևակ զինվորներից և վեց հազար ձիավորներից, որն ըստ երևույթին մի քիչ չափազանցված է։ Հանձիթ գավառի Ալեյուա դաշտում Սասունի հայոց զորքը հանդիպեց Փիլարտոսի

63 Տե՛ս «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 214։

64 Տե՛ս J. Markwart, Südarmenien, s. 517—530.

65 Տե՛ս Մատթէոս Ուռհայեցի, էջ 130—131։

66 Տե՛ս Tarikh al-Fariqi, Cairo, 1959, էջ 168։

67 Տե՛ս Մատթէոս Ուռհայեցի, էջ 207—208։

68 Տե՛ս Fariqi, էջ 78, 121։

69 Տե՛ս Մատթէոս Ուռհայեցի, էջ 206—208։

70 Տե՛ս Պետոյան, Սասունի Թոռնիկյանների իշխանությունը, «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1955, № 2, 85—86։ Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի ազբերաց սահմանները. Վիեննա, 1896, էջ 41—43։

զորքին և նրա դաշնակից ֆրանկ կոմսի զորամասին (Ֆռանգաց կոմսն Ռըմբաղատ)։ Փիլարտոսը գլխովին պարտություն կրեց և փախավ Խարբերդ։



Մշո ս. Կարապետ եկեղեցին

1075 թ. Սասունի իշխանի դեմ դավադրություն կազմակերպեցին Փիլարտոս Վարաժնունին ու Աղձնիքի Մրվանյան ամիրան և, օգտագործելով մի սելջուկ ամիրայի[71], սպանեցին նրան։

Թոռնիկին հաջորդեց որդին՝ Չորտվանելը, որը դեռ անչափահաս էր։ Սրա օրոք քայքայվեց Սասունի թշնամի Մրվանյանների իշխանությունը Աղձնիքում։ 1096 թ. նրանց վերջին ամիրա Մանսուրը կորցրեց իր բոլոր տիրույթները, որոնց տիրացան հարևան իշխանությունները։ Ըստ արաբ պատմիչ

---

71 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 209։

Ֆարիկիի վկայության, Սասունի իշխանը տիրացավ երեսուն գյուղի՝ շրջակա ընկուզենու անտառներով[72]։

Սելջուկների տիրապետության վերացումից հետո (XII դարի առաջին կեսում) Սասունի իշխանն էր Զորտվանելի որդի Վիգենը, որի օրոք Սասունի իշխանությունը կրկին ուժեղացավ։ Վիգեն իշխանն ամուսնացել էր Մոկաց Արծրունի Հմայակ իշխանի դստեր՝ Մելիքսեթի հետ, որը ժամանակակից մի հիշատակարանում կոչված է Թագուհի։ Նույն հիշատակարանը Վիգենին կոչում է պատվելիսիմոս («ի տէրութեան Սասնոյ Վիգենոյ մեծի պատուելէսիմոսի»)[73]։

Հիշատակարանում նշվում է, որ Սասունի իշխանությունը ասպատակությունների ենթարկվեց հարևանների կողմից, որոնք կամ Խլաթի Սուքմանյաններն էին կամ էլ Աղձնիքի Արտուխյանները։ Վարդան պատմիչը վիպական ձևով պատմում է Սուքման (Միրան) ամիրայի մի ձախորդ հարձակման մասին։ Սուքմանը եկավ Սասուն, սակայն Վիգենը պաշարեց նրան, գերի վերցրեց և ապա ազատ արձակեց «ուխտիւ և երդմամբ սիրոյ»[74]։ Հիշատակարանում նշված այն փաստը, որ թշնամիները համարձակություն չունենալով բացեիբաց կռվի դուրս գալու, գաղտագողի մտան Սասուն և գերեցին ու փախան, հավանաբար վերաբերում է սելջուկյան կամ այլ հրոսակախմբերին։

Վիգենի որդի Զորտվանելը ամուսնացել էր Պահլավունի Վասիլի դստեր՝ Վանենիի հետ։ Զորտվանելը մահացավ իր հոր կենդանության ժամանակ՝ 1165 թ. և թաղվեց Վիգեն իշխանի կառուցած Վանդիր Իննխորանյան վանքում։ Նույն դարում է կառուցվել նաև ս. Առաքելոց վանքը[75]։

Վիգենի օրոք Սոփքի Դեգիք գավառում դեռ կանգուն էր մոտավորապես երկու դար առաջ հիմնադրված Կամենասի (Կեկավմենոս) տան իշխանությունը, որը հյուսիս-արևմուտքից գրեթե սահմանակից էր Տարոնի իշխանությանը։ Դեղիքի (Սավուկ կամ Սոկ ամրոցի) իշխան Կատակալոնի որդի Գրիգորի որդի Շահանշահը բարեկամական կապեր հաստատելու նպատակով ամուսնացավ Վիգենի դուստր Կատայի հետ[76]։

Վիգեն իշխանը մեռավ 1176 թվականին։

Սասունը դեռևս զորեղ էր նաև Վիգենի որդի Շահանշահի օրոք։ Սա 1184-ին փորձեց իրեն ենթարկել Հռոմկլան, որի կաթողիկոսը՝ Գրիգոր Տղան իր մորեղբայրն էր։ Սակայն կաթողիկոսը օգնական զորագնդով կարողացավ ետ մղել նրան Հռոմկլայից[77]։

Ըստ Վարդան պատմիչի, Խլաթի ամիրա Բեկ Թեմուրը (1183/84—1193) Սասունի կողմերում բախվեց Շահանշահի հետ և գերի ընկավ։ Սասունի իշխանը նրանից առավ Թարձյան բերդը և խաղաղության երդում վերցնելով ար-

---

72 Տե՛ս Fariqi, p. 284.
73 Թորոս աղբար. Բ, էջ 309։
74 Վարդան. 124։
75 Տե՛ս Հ. Ոսկյան, Տարոն-Տուրուբերանի վանքերը. էջ 28—31։
76 Տե՛ս Թորոս աղբար, Բ, էջ 312—313։
77 Michel le Syrien, III, p. 395—396.

ձակեց[78]։ Սակայն շուտով Բեկ Թեմուրը դրժեց իր խոստումը և ապստակեց Սասունը։ Վարդան պատմիչը վկայում է, որ Բեկ Թեմուրը ամբողջ Սասունը խլեց Շահանշահի ձեռքից («զամենայն Սասունք եհան ի նմանէ»), իսկ ըստ Սմբատ սպարապետի[79] ՈԿԷ (1118) թվականին Սասունի Ջորտվանելի որդիները անցան Կիլիկիա, որտեղ և մահացավ Շահանշահը։

Շահանշահի գաղթելով Սասունի հայկական իշխանությունը[80] թուլացավ և սեղմվեց Սասունի լեռնային շրջաններում։ Դժբախտաբար դրանից հետո Սասունի իշխանության մեջ կատարված քաղաքական անցքերը մեզ հայտնի չեն։

Սասունը Թոռնիկյանների օրոք XII դ. առաջին կեսում Մեծ Հայքի ամենաուժեղ և կայուն հայկական իշխանությունն էր։ Նրա տնտեսական զարգացման համար որոշ նշանակություն ուներ Մուշ քաղաքը, որպես առևտրական ճանապարհների հանգույց։

Սասունի տիրակալները, որոնք համարվում էին մեծ իշխաններ, իրենց շուրջն էին համախմբել Հարավային Հայաստանի մանր իշխանությունները (Մոկք, Դեգիք, Խորձյան), կազմելով մի լուրջ դաշնակցություն, որը նույնիսկ հավակնություններ ուներ իրեն ենթարկելու Հռոմկլայի կաթողիկոսարանը։

XII դարի վերջում Խլաթի Սուքմանյան Շահարմենների և այլոց դեմ երկարատև պայքարից թուլացած Սասունի իշխանությունը վերածվեց մի փոքրիկ լեռնային ինքնամփոփ իշխանության, որի հասարակական կառուցվածքը (նահապետական) վիպական ձևով գտնում ենք Սասնա ծռերի մեջ։

## 7. ՇԱՀ ԱՐՄԵՆՆԵՐԻ ԱՄԻՐԱՅՈՒԹՅՈՒՆԸ ԽԼԱԹՈՒՄ

Սելջուկյան պետության քայքայման շրջանում Հարավային Հայաստանում գոյացած ամենախոշոր պետական կազմավորումը գրավում էր Վանա լճից հյուսիս ընկած երկրամասերը՝ կենտրոն ունենալով Խլաթ քաղաքը։ Այստեղի սելջուկ տիրակալները կրում էին Շահ Արմեն (Հայոց թագավոր) տիտղոսը, որովհետև նրանց տիրույթների հիմնական բնակիչները հայեր էին։ Շահ Արմենների ամիրայության հիմնադիրն էր Սուքման ալ-Կութբին[81], որը Խլաթում գտնվող իր կողմնակիցների աջակցությամբ 1100 թ. դյուրությամբ գրավեց քաղաքը, վտարելով Մրվանյաններին։

Նրա մահվանից հետո իշխեց որդին՝ Իբրահիմը (1112/3—1127), որի օրոք այս ամիրայական տան իշխանության սահմաններն ընդարձակվեցին՝ ընդգրկելով, բացի Խլաթից, նաև Մանազկերտը, Արճեշը և այլ քաղաքներ՝ իրենց գավառներով։

Իբրահիմի մահվանից հետո Խլաթում ծայր առավ խառնաշփոթություն և երկար պայքարից հետո 1133—1134 թվականին իշխանությանը տիրացավ Սուքմանը։

78 Տե՛ս Վարդան, էջ 133։
79 Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 201։
80 Տե՛ս Տոմաշեկ, Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, էջ 47—57։
81 Տե՛ս *Abu-l-Fida*, II, 223.

Սուքման Բ-ին հայկական աղբյուրներում կոչում են Շահ Միրան, որը գուցե Շահ Արման բառի աղավաղումն է։ Սրա իշխանության տարիներին (1133/4—1183/4) Խլաթի ամիրայությունը բարգավաճեց։ Պատմիչի արտահայտությամբ նա «էր տէր բազում քաղաքաց և գաւառաց Խլաթայ, Արճիշոյ, Մշոյ, Տօղատափայ և Մանծկերտու»[82]։ Սուքմանը բարեկամացել էր Կարնո ամիրա Սալդուխին, ամուսնանալով նրա քրոջ հետ։

Սակայն Վրաստանի հզորացումը, հայ-վրացական գործակցությունը և հայկական հողերի սկսված ազատագրումը անհանգստացնում էր Խլաթի և Կարնո ամիրաներին, որոնք Ատրպատականի Ըլտկուզյանների հետ դաշնակցած ամեն կերպ ջանացին կասեցնել նրանց առաջխաղացումը։ Սակայն թե Սալդուխը, թե Սուքմանը պարտություն կրեցին։

Շահ Արմեն Սուքմանը հավակնություններ ուներ նաև Հյուսիսային Հայաստանի նկատմամբ։ Նա հասել էր նույնիսկ մինչև այժմյան Կաղզվանի կողմերը։ 1160 թ. վրացական զորքերը Ուղթիքի (Օլթիի) մոտ պարտության մատնեցին Շահ Արմենի ուղարկած զորքերին[83]։

Հետևյալ տարին, երբ Գեորգի Գ Շադդադյաններից գրավեց Անին, վերջիններիս օգնության հասան Շահ Արմենի զորքերը[84]։ Ըստ Սամուել Անեցու, Խլաթի ամիրան ուղարկել էր 80 հազարանոց զորք, որը ծանր պարտություն կրեց՝ տալով 7 հազար զոհ։ Ընդհարումը տեղի ունեցավ Անիի մոտ՝ օգոստոս ամսին։ Շահ Արմենի զորքից մեծ թվով երևելիներ, որպես ատրուկ, ծախվեցին, բացի դրանից, հսկայական քանակությամբ ավար մնաց։

Սուքմանի հաջորդ Բեկ Թեմուրի իշխանության վերջին օրերին Այյուբյան սուլթան Սալահ ալ-Դինը, Աղձնիքի Արտուխյաններին հպատակեցնելուց հետո, նպատակ ուներ նվաճել նաև Խլաթը, սակայն շուտով մահացավ։ Բեկ Թեմուրն էլ 1193-ին սպանվեց[85] Սուքման Բ-ի ստրուկ Ակ Սունկուր Հազարդինարի ստրանքներով։ Սա բանտարկել տվեց Բեկ Թեմուրի կնոջն ու որդուն Մշո Արզաս ամրոցում և դարձավ Խլաթի ամիրա (1193—1198/1199)։

Ներքին երկպառակությունները թուլացրին Խլաթի ամիրայությունը։ Շատ կարճ իշխեց հայազգի մամլուք Կուտլուղը, որը սպանվեց։ Խլաթի մեծամեծները Մուշից բերեցին Բեկ Թեմուրի որդի Մուհամմադին (Մանսուր) և դարձրին ամիրա։ Սակայն սրա օրոք Խլաթի ամիրայությունն էլ ավելի թուլացավ, մանավանդ որ նրան հանգիստ չէին տալիս Ռումի սելջուկները և հայ-վրացական զորքերը։ 1205/1206 թթ. Խլաթի մամլուքներից Բալբանը իր կողմնակիցների հետ հարձակվեց Մանսուրի վրա, բանտարկեց նրան ու սպանեց։

Սակայն Բալբանը հազիվ մեկ տարի մնաց իշխանության գլուխ։ Շուտով հարձակվեցին Ռումի (Իկոնիայի) սելջուկները, որոնք ոչնչացրել էին Սեբաստիայի Դանիշմանյաններին և ավելի ուշ՝ նաև Երզնկայի ու Կարնո քա-

---

82 Մատթեոս Ուռհայեցի. էջ 425։ Վարդան. էջ 123։

83 Տե՛ս Վարդան, էջ 161—162, Մատթեոս Ուռհայեցի. էջ 425։

84 *Fariqi*, (History of Damascus, 1908), էջ 361, Սամուել Անեցի. էջ 137։

85 *Abu-l-Faradj Ibn al-Ibri*, Tarikh, Beyrouth, 1890, էջ 382—383, 389։ Հ. Դ. Թուրշյան, Շահ-ի-Արմեններ. ՊԲՀ, 1964, 4, էջ 119։

դաքի ամիրայությունները։ 1207/1208 թթ. Խլաթի վրա հարձակվեց Ռումի Կլիճ Արսլան սուլթանի որդի Տուղրիլ Շահը[86], Բայց Խլաթի ու Մանազկերտի բնակիչները վտարեցին նրան։ Այս դրությունից օգտվեցին Այյուբյանները և տիրացան Խլաթի ամիրայությանը։

XII դարի վերջում Մեծ Հայքում նկատվում է քաղաքական ուժերի որոշ համախմբում։ Մոտավորապես մեկ դար տևող լիակատար մասնատվածությունը վերջապես տեղի տվեց։ Սակայն այս նոր գոյավիճակը դրական արդյունք տվեց միայն Հյուսիսային Հայաստանում, որտեղ Զաքարյանները սերտորեն համագործակցում էին զորեղացած Վրաստանի հետ, սելջուկյան ամիրայությունների դեմ մղվող պայքարում։

Այլ էր դրությունը Հարավային Հայաստանում։ Հայկական երկու ուժեղ իշխանությունները՝ Սասունը և Վասպուրականը, ժամանակի ընթացքում թուլացել էին և վերածվել լեռնային ինքնամփոփ իշխանությունների. նրանք արդեն ենթակա էին հարևան զորեղ իշխանություններին։

Սելջուկյան պետության քայքայումից հետո Մերձավոր Արևելքում ըստեղծված խայտաբղետ պատկերը XII դարի վերջում փոխվեց, երբ տիրապետող դիրք գրավեցին Եգիպտոսի Այյուբյանները, որոնք խաչակիրներին հաղթելուց հետո, իրենց տիրապետությունը տարածեցին մինչև Հարավային Հայաստան։ Իսկ Փոքր Ասիայում XIII դարի սկզբին լուրջ վտանգ էին ներկայացնում Իկոնիայի սուլթանները, որոնք իրենց տիրապետությունը հասցրել էին մինչև Հայաստանի արևմտյան գավառները։

Այյուբյանները նախ իրենց ենթարկեցին Աղձնիքի և Հիսն Կեֆի Արտուխյաններին, որոնց որոշ ժամանակ հետո վտարեցին այդ հողերից։

1207—1208 թթ. Այյուբյան Ադիլի որդին Աուհադը Նփրկերտից առաջացավ դեպի հյուսիս և գրավեց Մուշ քաղաքը։ Խլաթի և Մանազկերտի մեծամեծները ստիպված ենթարկվեցին Մելիք Աուհադին, որը և տիրացավ Շահ Արմենների հողերին[87]։

Մելիք Աուհադը մյուս Այյուբյան ամիրաների նման ենթակա էր Եգիպտոսի սուլթան Մելիք Ադիլին[88] (1183—1218)։ Այսպիսով, Հյուսիսային Հայաստանը անմիջականորեն հարևան դարձավ Այյուբյանների լայնածավալ պետությանը։

Այյուբյանները Սուքմանյաններից ժառանգեցին ոչ միայն նրանց հայկական հողերը, այլև Շահ Արմեն («Թագավոր Հայոց») տիտղոսը։ Ի դեպ, նման տիտղոս կրում էին նաև Մեծ Հայքի այլ մասերում իշխող ամիրաները։ Արտուխյան ալ-Մալիք ալ-Սալիհ Մահմուդը Ամիդի 1208/09 թ. արձանագրության մեջ իրեն անվանում է «Դիարբեքիրի, Ռումի և Հայոց սուլթան»[89]։ Նույնիսկ Ռումի սելջուկ սուլթան Քեյ Խոսրով Բ մի արձանագրության մեջ իրեն կոչում է «Ռումի, Հայոց, Դիարբեքիրի և Ասորիքի սուլթան»[90], հավա-

86 Տե՛ս Abu-l-Fida, էջ 114։

87 Abu-l-Fida, էջ 114, էջ 398։

88 *Мухамад ал-Хамави*, ат-Тарих ал Мансури, л. 112б—113а.

89 *Max van Berchem*, Arabischen Inschriften aus Armenien und Diarbekir, Berlin, 1907, S. 147—148.

90 *Гордлевский*, Государство Сельджуков Малой Азии, М.—Л., 1941, стр. 34.

նաբար նկատի ունենալով ոչ միայն իր տիրապետությունը Մեծ Հայքի արևմըտյան կողմերում, այլև հավակնությունները Կիլիկիայի նկատմամբ։

Աուհադի եղբայր Մելիք Աշրաֆի տիրույթներն ընդգրկում էին ոչ միայն Խլաթի ամիրայությունը, այլև Վերին Միջագետքի շատ մասեր, ուստի նա 1220/1221 թթ. Խլաթի և Նփրկերտի վրա կառավարիչ նշանակեց իր մյուս եղբորը՝ ալ-Մուզաֆֆար Ղազիին։ Վերջինս Դամասկոսի Այյուբյանների դրդումով ապստամբվեց Մելիք Աշրաֆի դեմ։ Սա պաշարեց (1223—1224) Խլաթը[91] և ստիպեց եղբորը հանձնվել, որից հետո նրա ձեռքում թողեց միայն Նփրկերտը։ Մելիք Աշրաֆը Ամիդում թողած մի արձանագրության մեջ իրեն կոչում է «Շահ Արմեն»[92]։

## 8. ՍԱԼԴՈՒԽՅԱՆՆԵՐԸ ԿԱՐԻՆՈՒՄ

Դեռևս 1080 թ. Անդրկովկասի չնվաճված վայրերը գրավելու նպատակով Մելիքշահը մի մեծ բանակ էր ուղարկել՝ Ահմադ ամիրայի հրամանատարության ներքո։ Վերջինս պարտության մատնելով վրացական զորքերին, անցել էր հյուսիսի Կարինի դքսության սահմանները, գրավել Կարսը, Կարինը, Ուղթիքը և այլ բերդեր։ Դրանով վերջ դրվեց այդ դքսությանը, որի տարածքի վրա առաջացավ Սալդուխյան ամիրայությունը՝ Կարին կենտրոնով։

Թեև գրավոր աղբյուրները լռում են այդ ամիրայության հիմնադիր՝ Աբու-լ-Կասիմի մասին, սակայն Կարինի մոտ գտնվող Մժնկերտ բերդի քարերից մեկի վրա վերջին ժամանակներս հայտնաբերված արաբերեն արձանագրությունը[93] (որը թողել է սալդուխյան վերջին ամիրաներից Աբու Մանսուր Բասաթը՝ 1230 թ.) ցույց է տալիս, որ Կարինում իշխել են թվով հինգ ամիրաներ։ Աբու-լ-Կասիմի (1105) գործունեության մասին ոչ մի գրավոր տեղեկություն չի հասել մեզ։ Վերջինիս որդու Իմադ ադ-Դին Ալիի (1105—1145) ժամանակ, 1121—1124 թթ. Ուղթիքը և Ճորոխի երկայնքով ձգված շրջանը վերագրավվում և ենթարկվում է Վրաստանին։

Իմադ ադ-Դին Ալիին հաջորդում է նրա որդին՝ մելիք Սալդուխը (1145—1174) Իզզ ադ-Դին մականունով։ Սա բարեկամացել էր Խլաթի Շահ Արմեն Շահմիրանի (Սուքման Բ) հետ, վերջինին կնության տալով իր քրոջը[94]։ Նրա ժամանակ բավական ընդարձակ և զորեղ էր Կարնո ամիրայությունը[95]։

Ժամանակագիրները տարբեր ձևով են պատմում Սալդուխ ամիրայի՝ Վրաստան կատարած 1154 թ. արշավանքի մասին։ Այսպես, 1154 թ. Անիի Շադդադյան ամիրան կնության է ուզում Սալդուխի աղջկան։ Վերջինս մեր-

---

91 Abu-l-Fida, III, էջ 139—140։

92 Տե՛ս M. van Berchem, Arabischen Inschriften aus Armenien, S. 138.

93 Տե՛ս Y. H. Konyali, Erzurum tarihi, Ankara, p. 25—26.

94 Տե՛ս Վարդան, էջ 124, Ибн-ал-Асир, Тарих ал-камиль, стр. 126.

95 Մինչդեռ Արտուխյան ամիրաներից Նաջմ ադ-Դին իլ Ղազին էր, որ սելջուկյան սուլթան Մահմուդի հրամանով 1121 թ. կռվում էր ղփչաղներից բաղկացած զորքերի դեմ և 1121 թ. վերջինների կողմից պարտության էր մատնվել։ Տե՛ս K. Sucheim, Il-Gazi, YA III, p. 955—956

*ժում է նրա առաջարկը։ Շադդադյան ամիրան վրեժխնդիր է լինում՝ խորամանկությամբ կոտորելով նրա զորքը[96]։*

*Ըստ Իբն ալ-Ասիրի 1153—1154 թթ. վրացիների, հայերի և Կարնո ամիրա Սալդուխի միջև տեղի է ունեցել մեծ պատերազմ։ Այդ պատերազմում Սալդուխը պարտություն է կրել և գերի բռնվել, սակայն փրկավճարով ազատվել և վերադարձել է Կարին[97]։ Նրա ազատման համար Նփրկերտի Արտուխյան և Խլաթի Շահ Արմեն Սուքմանյան ամիրաները սպառնացել են ռազմական միջամտությամբ։ Գերությունից ազատված Սալդուխ ամիրան 100 հազար դինար փրկագին է վճարում իր հետ գերի ընկած մահմեդական ռազմագերիներին ազատելու համար։*

*Այնուհետև Կարնո Սալդուխ ամիրան, Խլաթի Շահ Արմեն Միրանը, Նփրկերտի և Ամիդի Արտուխյան ամիրաները, Գանձակի և Նախճավանի ամիրա Ելտկուզ աթաբեկի գլխավորությամբ, ոչ միայն ամեն ջանք գործ դրին և աշխատեցին կասեցնել վրաց բանակի առաջխաղացումը, այլև որպես մրցակիցներ, փորձեցին իրենց իշխանությունը տարածել Վրաստանի կողմերում։*

*1161 թ. հունիսին, երբ երկրորդ անգամ վրաց զորքը գրավեց Անին, Շահ Արմեն Միրանը՝ իր շուրջը համախմբելով Կարնո տիրակալ Սալդուխի, Արզնի տիրակալ Դլմաչյան Դովլեթ Շահի, Կարսի ամիրա Քարիմ ադ-Դինի, Սուրմարուի Իբրահիմ ամիրայի զորքերը, արշավեց Անի՝ Շադդադյանների իշխանությունը վերականգնելու համար։ Գեորգի Գ Կարնո ամիրա Սալդուխին հիշեցնելով 1154 թ. կնքված պայմանագիրը և միաժամանակ սպառնալով քանդել Կարինը, ապահովեց Կարնո ամիրայի չեզոքությունը[98]։ Անիի մոտ օգոստոսին տեղի ունեցած ճակատամարտում Շահ Արմեն Միրանը սոսկալի պարտություն կրեց[99]։*

*Այնուհետև Կարնո ամիրա Սալդուխը չի հիշատակվում այն ամիրաների շարքում, որոնք համախմբելով Ելտկուզ աթաբեկի շուրջը, կռվում էին Անիի գրավման համար 1163 թ. ճակատամարտում։ Հավանական է, որ XII դ. վերջում Կարնո ամիրայությունը թուլացել էր և այդ պատճառով էլ չի հիշատակվում սելջուկյան ամիրաների շարքում։*

*Զորեղացած Վրաստանը սպառնում էր Կարնո և Խլաթի ամիրայություններին։ Դեռևս Ղզըլ Արսլան Նասր ադ-Դինի օրոք, հասնում են մինչև Կարին։ Քաղաքի մատույցներում տեղի է ունենում երկու ընդհարում։ Ըստ երևույթին այս ժամանակ է, որ Կարնո ամիրան ընդունում է Վրաստանի գերիշխանությունը և վերջինիս վճարում որոշ հարկ[100]։*

*Ավելի ուշ Կարինը մնաց Իկոնիայի սուլթանության կազմում մինչև մոնղոլների արշավանքը։*

---

96 *V. Minorsky*, Studies..., p. 86—87.

97 *Ибн-ал-Асир*, стр. 125.

98 „Ibn al-Qalanisi Tarikh", 361—362:

99 *Տե՛ս* Սամուել Անեցի, *էջ 137*։ Մատթեոս Ուռհայեցի, *էջ 426*։ Վարդան, *էջ 127*։ *Ибн-ал-Асир*, стр. 125—126.

100 *Տե՛ս* Մելիքսեթ-Բեկ, *Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Բ, էջ 35 և 44*։ Կիրակոս Գանձակեցի, *էջ 163*։

* * *

1080 թ. Անդրկովկաս արշավող սելջուկ ամիրաների շարքում հիշատակված Աբու-լ-Յակուբ ամիրան գրավում է Կարսը։ Այնուհետև Կարսի ամիրան հիշատակվում է 1125 թ. Անին վերստին գրավող ամիրաների շարքում։ Կարնո և Խլաթի ամիրաներից առանձին հիշատակվող Կարսի և Սուրմարիի ամիրաները, շատ հավանական է, Սելջուկյան Սուքմանյան և Դիլմաչյան տոհմերից էին։

Դեռևս XII դ. երկրորդ կեսին աղբյուրները շարունակում են առանձին հիշատակել Կարսի և Սուրմարիի ամիրայությունները։

1161 թ. Անիի մոտ կրած պարտությունից հետո Շահ Արմեն Միրանը, մազապուրծ ազատվելով գերությունից, Արզնի Ֆախր ադ-Դին (Դովլաթշահ) ամիրայի հետ միասին փախչում և ապաստանում է Կարսի ամիրայի մոտ։ Այնուհետև 1163 թ. Գեորգի Գ-ի՝ Անիի մոտ կրած պարտությունից հետո Կարսը միացվում է Շահ Արմենների ամիրայությանը։ Այդ էր պատճառը, որ Կարսի ամիրան Կարնո ամիրայից անջատ մասնակցում էր Էլտկուզ աթաբեկի և Շահ Արմեն Միրանի գլխավորած 1163 թ. արշավանքին[101]։

1175 թ. Էլտկուզ աթաբեկը մի շարք ամիրաների մասնակցությամբ արշավում է Անի և նույն թվականին գրավում այն։ Շատ հավանական է, որ այս կռիվների ժամանակ է գերի ընկնում Անիի Բարսեղ եպիսկոպոսի եղբայր Ապիրատ Պահլավունին և բանտարկվում այս կռիվներին մասնակցած Կարսի ամիրայի բերդում։ «Նույն այս ժամանակները (1174—1177),— ասում է Վարդան վարդապետը,— դուրս եկավ Կարսի բանտից մեծ իշխան Ապիրատը և եկավ Անի[102]...»։

XIII դ. սկզբին Կարսի ամիրայությունը վերացավ։

Սելջուկները քայլ առ քայլ ոչնչացրին հայկական տեղական իշխանությունները և երկիրը բաժանեցին շուրջ տասը ամիրայությունների միջև։ Հայաստանի քաղաքական միասնությունը վերացված էր։

---

101 *Sadruddin el-Huseyni*, նշված աշխ., էջ 111—114։

102 Տե՛ս Վարդան, էջ 130։

ԳԼՈՒԽ ՔՍԱՆԻՆՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՑԻԱԼ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XI—XII ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ ԵՎ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԻ ՄԵՋ

Սելջուկ-թուրքերի արշավանքները մեծ վնաս հասցրին Հայաստանի քաղաքային կյանքին և տնտեսությանը։ Հայաստանի քաղաքների մեծ մասը ավերվելով և կողոպտվելով, բավական երկար ժամանակ նկատելիորեն կորցրին արհեստագործական և առևտրական կենտրոնի նշանակությունը, ինչպես և միջազգային տարանցիկ առևտրի մեջ խաղացած դերը։ Մելիքշահի օրոք (1072—1092) Հայաստանը օգտվեց կարճատև խաղաղությունից, սակայն չհասցրեց ապաքինվել սելջուկյան արշավանքների ժամանակ ստացած ծանր հարվածներից։ Ծվեն-ծվեն եղած, սելջուկ տիրակալների գահակալական կռիվների, ինչպես և սելջուկյան ամիրայությունների ու Վրաստանի միջև ընդհարումների թատերաբեմ դարձած երկիրը նկատելիորեն զրկված էր տնտեսական առաջընթացի հնարավորությունից։

Բացի դրանից, խաչակրաց արշավանքների և Հարավային Ռուսաստանի երկրների դեմ ղփչախ թուրքերի ավերիչ ասպատակությունների հետևանքով, միջազգային տարանցիկ առևտուրը կատարվում էր Առաջավոր Ասիայի հարավային երկրների՝ Սիրիայի (Ասորիք), Պաղեստինի և Եգիպտոսի վրայով։

Ճիշտ է, XI—XII դարերի ընթացքում Հայաստանի տնտեսական, սոցիալական և մշակութային կյանքը չընթացավ բացարձակ լճացման կամ հետադիմության հունով, և դա տեղի ունեցավ հայ ժողովրդի դարերով կուտակած փորձի շինարար ճիգերի ու ջանասիրության շնորհիվ։

Ավերված քաղաքներից մի քանիսը Մելիքշահի օրոք, ապա XII դարի երկրորդ կեսում, հառնեցին մոխիրների միջից, նույնիսկ կազմավորվեցին 2—3 նոր քաղաքներ։ Անիի և Դվինի հետ միաժամանակ կարևոր նշանակություն ստացան Խլաթը, Նփրկերտը, Մանազկերտը, Կարինն ու Երզնկան, Նախճավանը։ Թեև որոշ փոփոխությունների ենթարկվեց քաղաքների բնակչության ազգային կազմը, բայց ոչ նրանց սոցիալական դերը։ Օղուզ թուրքմեն

ցեղերը գերազանցապես վարում էին քոչվորական կենցաղ. «...Թուրքերն իրենց վրաններով աշնանը Հայքով (Սոմխիթով) էին անցնում՝ կանգ առնելու Գաջենքում (Գաչիանում) ու Կուր գետի եզերքին՝ Տփղիսից մինչ Պարտավ (Բարդավ)՝ և Իորի ափին և ձմեռային արոտատեղ (ծառայող) բոլոր այս սքանչելի տեղերում... իսկ գարնանը սկսում են (կրկին) վեր բարձրանալ դեպի Հայոց (Սոմխիթի) և Արարատյան լեռները, ուր ամռան պահին նրանք գըտնում էին հանդիստ և ուրախություն՝ խոտով և դաշտավայրով, սքանչելի աղբյուրներով և ծաղկապաճույճ տեղերով...»[1]։

Այսուհանդերձ, տիրապետողների կենցաղը չփոխեց հպատակների ապրելակերպը։ Նվաճողներն իրենց խաշնարածային տնտեսությունը չկարողացան փաթաթել նվաճված ժողովուրդների վզին։ Սակայն հին ավանդներ ունեցող երկրագործության զարգացմանը խոչընդոտում էին քոչվոր-անասնապահ ցեղերի անընդհատ տեղաշարժերը։ Անասունները ոտնատակ էին տալիս և ոչնչացնում հայ գյուղացու մշակած արտերն ու այգիները։ Երկրի տնտեսական զարգացմանը խանգարում էին հատկապես սելջուկների ծանր հարկապահանջությունը, ինչպես և հայ շինականների ու արհեստավորների արտագաղթը։

XI դարի երկրորդ կեսին սելջուկ թուրքերը Հայաստանի արևմտյան և հարավային մասերում մտցրեցին ռազմա-ֆեոդալական հողատիրության այն ձևերը, որոնք առկա էին սելջուկյան պետության մեջ։ Օղուզ թուրքմենական իրավունքի համաձայն, հողը և սելջուկյան աշխարհակալության սահմաններում ապրող ժողովուրդները, ամբողջությամբ վերցրած, սուլթանի և նրա ընտանիքի անդամների սեփականությունն էին համարվում[2]։

Սուլթանի և նրա ընտանիքի անդամների անմիջական եկամուտները ապահովվում էին խաս անունը կրող հողաբաժիններից։ Խաս հողերի վրա բընակվող և այդ հողը որպես հացահատիկային ցանքատարածություններ, այգի, պարտեզ և արոտավայր օգտագործող գյուղացուց գանձվում էր հողային հարկ (խարաջ), որը մտնում էր պետական գանձարանի «իհտիյատ խազինեյի» կոչվող հատուկ բաժանմունքը[3]։

Սելջուկյան ռազմա-ֆեոդալական պետության մեջ հողատիրության հիմնական ձևը հանդիսանում էին զինվորական անձնակազմին՝ զինվորական ու պետական ծառայության դիմաց պարգևված զինվորական բաժնեկալվածքները, որոնք կոչվում էին իկթա։ Ինչպես հայտնի է, իկթան նախքան սելջուկները կիրառվում էր մահմեդական երկրներում՝ Արաբական խալիֆայությունում, Սամանյան, Ղարախանյան և Բուվեյհան պետություններում[4]։

Հողի տիրակալման իկթայական ձևը ժառանգելով վերոհիշյալ պետություններից, հատկապես Ղարախանյաններից, սելջուկները սկսեցին այն

---

1 Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, էջ 217։

2 Տե՛ս «Сиасет-намэ», главы V, XXXII.

3 Տե՛ս նույն տեղում։ Տե՛ս նաև I. Kafesoglu, Sultan Meliksah..., p. 163.

4 Տե՛ս С. Т. Еремян, Опыт периодизации историй Армении эпохи феодализма, «Вопросы истории», 1951, № 7, стр. 62.

*կիրառել իրենց աշխարհակալության մեջ, այդ թվում և Հայաստանում[5]։ Այդ հողերը ամբողջությամբ վերցրած հանդիսանում էին նվաճված հողեր, որոնց նախկին տերերը մեծ մասամբ ոչնչացված, գաղթեցված կամ հողազրկված էին։*

*Հողատիրության մյուս ձևը կրոնական հաստատություններին իբրև տիրույթ տրվող հողերն էին, որոնք կոչվում էին վակֆ (վակուֆ)։ Պետք է նկատել սակայն, որ մահմեդական կրոնական հաստատությունների վակֆային հողատիրությունը Հայաստանում առանձին ծավալ չստացավ։*

*Մինչև Մելիքշահի ժամանակաշրջանը՝ դեռևս Տուղրիլ բեկի (1040—1063) և Ալփասլանի (1063—1072) ժամանակ, սելջուկյան աշխարհակալության մեջ հիմնականում կիրառվում էր իկթա հողատիրության այն կատեգորիան, երբ էյալեթի կառավարումն ու եկամուտների գանձումը հանձնվում էր այդ երկրամասերը նվաճող վասալ ամիրայի տնօրինությանը[6]։ Վերջինս իկթայի չափի ու մեծության համեմատ պետության գանձարանն էր մուծում նախօրոք նշանակված որոշակի չափի հարկ։*

*Իկթադարական խոշոր հողատիրությունը պահպանվեց սելջուկյան աշխարհակալության մեջ մինչև XI դարի կեսերը, սակայն Մելիքշահի ժամանակ անհրաժեշտություն զգացվեց էապես փոփոխելու այն։ Այս փոփոխությունը հետևանք էր սելջուկյան բանակների կազմակերպման ձևի և արշավանքներից ստացված ավարի ու նվաճված երկրներից գանձվող եկամուտների բաշխման սիստեմի։ Մինչ այդ զինվորները չէին ապահովված մշտական եկամուտով։ Ֆեոդալականացող ազնվականական վերնախավը, վեզիր Նիզամ ալ-Մուլքի գլխավորությամբ, հասկանում էր, որ օղուզ թուրքմենական անկանոն աշխարհազորերը չէին կարող հանդիսանալ ամուր հենարան ծավալուն նվաճողական քաղաքականության իրականացման ու նվաճված երկրների հարատև ու հաստատուն տիրակալման։ Այդ պատճառով սելջուկ-թուրք ցեղային աշխարհազորի փոխարեն ստեղծվեց մշտական, ֆեոդալական կանոնավոր բանակ, և զինվորները ծառայության դիմաց, ռոճիկի փոխարեն ըստանում էին իկթա զինվորական բաժնեկալվածքներ (պարգև, բենեֆիցիաներ)՝ դրանց վրա ապրող բնակչությունից իրենց օգտին հարկեր (հողային ռենտա) և տուրքեր գանձելու իրավունքով[7]։*

*Նիզամ ալ-Մուլքի բարենորոգումների մյուս առանձնահատկությունն այն էր, որ նա, վախենալով խոշոր իկթադարների (իկթա ստացողների) զորեղացումից և անջատողական նկրտումներից, միաժամանակ նպատակ ունենալով նրանց կախման մեջ դնել կենտրոնական կառավարման մարմնից՝ մեծ դիվանից, սահմանեց, որ իկթադարներին բաժնեկալվածքներ պարգևվեն և եկամուտներ տրվեն պետության տարբեր նահանգներից։ «Նիզամ ալ-Մուլ-*

---

5 *Տե՛ս* Ս. Հակոբյան, *Հայ գյուղացիության պատմություն, հատ. II, էջ 40։* Ս. Պ. Պողոսյան. *Գյուղացիների ճորտացումը և գյուղացիական շարժումները Հայաստանում IX—XIII դդ., էջ 264, 265,* Լ. Հ. Բաբայան, *Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմությունը, XIII—XIV դդ., էջ 418։*

6 *Տե՛ս С. Г. Агаджанов,* Очерки истории огузов и туркмен средней Азии IX—XIII зв., стр. 221.

7 *Տե՛ս* «Сиасет-намэ», стр. 34, 106.

քը,— գրում է Սադր ադ-Դին Հուսեյնին,— յուրաքանչյուր ռազմիկի համար նշանակում է իկթա 1000 դինարի չափով, որի կեսը հաճախ նա ստանում էր Սամարղանդի, իսկ մյուս կեսը՝ Ռումի (իմա Հայաստան և Փոքր Ասիայի բյուզանդական մյուս նահանգները) երկրի եկամուտներից»[8]։

XI—XII դարերում գոյություն են ունեցել իկթայի մի շարք տեսակներ։ Իրենց չափի համեմատ այդ հողային տիրույթները բաժանվել են խոշոր, միջին և մանր իկթաների։ Նրանց մեջ ամենից ավելի տարածված էին զինվորական բաժնեկալվածք—ռազմական ավատ-իկթաները, որոնք կոչվում էին իկթախաշամ։ Մելիքշահի ժամանակ տիրապետող ձևը պայմանական իկթաներն էին։ Կային ցմահ տիրակալության հանձնված և ժառանգական խոշոր իկթաներ։ Վերջիններս տրվում էին սուլթանական տան անդամներին, պետության առավել աչքի ընկնող գործիչներին, սուլթանին առավել հավատարիմ և աչքի ընկնող մամլուք հրամանատարներին։ Հասարակ զինվորների ձեռքին էին գտնվում փոքր չափի մնայուն ժառանգական իկթաները[9]։ Նվիրաբերվող հողերի տիրապետման ժառանգական իկթայական բնույթ ստանալը՝ կապված վասալական զինվորական և պետական ծառայության հետ, որ տեղի ունեցավ սելջուկների օրոք, մի նոր կարևոր փուլ էր հողատիրության իկթայական ձևերի զարգացման մեջ[10]։ Իկթադար զինվորները կոչվում էին սիփահիներ[11]։ Զինվորական բաժնեկալվածքը, որն այս դեպքում կոչվում էր իկթա թիմար, սիփահիին տրվելով զինվորական ծառայության դիմաց, փոխանցվում էր սիփահիի արու որդուն[12]։

Սիփահիները՝ հեծյալ զինվորները, կազմում էին սուլթանի խաս բանակը, որի մշտական քանակը 46000 էր[13]։ Ամիրայություններում նրանց թիվը հասնում էր 12000-ի[14]։

Մելիքշահի հաջորդների ժամանակ գնալով ավելի ու ավելի էր տարածվում իկթաների հողատիրական ժառանգական իրավունքը[15]։ Սիփահիի մեռնելու դեպքում իկթա թիմարն անցնում էր նրա որդուն։ Եթե որդին փոքր էր, մինչև նրա չափահաս դառնալը, իկթան երաշխավորվում էր իկթադարի կնոջ կամ որևէ հեղինակավոր սիփահիի կողմից[16]։

Այսպիսով, XII դարում ժառանգական իկթադարությունը գնալով վերածում էր լիակատար ժառանգական և օտարելի հողատիրության՝ մուլքադարության[17], որը, սակայն, սելջուկյան սուլթանության և ամիրայությունների

---

8 Տե՛ս Sadruddin el-Huseyni, նշված աշխ., էջ 46։ El-Bondari, նշված աշխ., էջ 58։

9 Տե՛ս Cahen C., Évolution de l'iqta du IX a XIII siecle. Annales Economies-Societés—Civilisations, t. VIII, № 1. Paris, 1953, p. 48.

10 Տե՛ս И. П. Петрушевский, Земледелие и аграрные отношения в Иране XIII—XIV вв., стр. 259.

11 Տե՛ս «Сиасет-намэ» гл. 22. Սիփահի պարսկերեն նշանակում է զինվոր։

12 Տե՛ս I. H. Uzuncarsili, Medhal, p. 123.

13 Տե՛ս Ravendi, նշված աշխ., էջ 131։

14 Տե՛ս I. Kafesoǧlu, Meliksah devrindé Buyuk selcuklu imperatorlugu, p. 159.

15 Տե՛ս И. П. Петрушевский, Земледелие, стр. 257—259.

16 Տե՛ս I. H. Uzuncarsili, Medhal p. 62.

17 Տե՛ս С. Г. Агаджанов, նշված աշխ., էջ 224—225։

կործանումից հետո սահմանափակվեց։ Այնուհետև Հյուսիսային Հայաստանում վերականգնվեց ու զարգացավ հողատիրության «հայրենիք» կոչվող բուն հայկական ձևը։

Այլ կերպ ընթացավ հողատիրության ժառանգական ձևի հետագա զարգացումը Իկոնիայի սուլթանությանը միացված՝ Մեծ Հայքի մի մասի և Փոքր Հայքի տարածքում։ Այս վայրերում հողատիրության անհատական սեփականատիրական-մուլքատիրական ձևին փոխարինեց գերազանցապես հողատիրության պետական մուլքատիրության (միրի արազիե) ձևը[18] ։

Հայաստանը նվաճելուց հետո սելջուկները հայ ֆեոդալներին զրկեցին իրենց տիրույթներից։ Այդ մասին են վկայում հայ և օտար բազմաթիվ մատենագիրներ։ Այսպես, Լաստիվերտցին, դառը վշտով նկարագրելով հայկական նահանգների ու գավառների՝ Կարինի, Բասենի, Սպերի, Խաղտյաց, Տարոնի և Հաշտյանց, բազմաթիվ բերդերի ու ամրոցների գրավումը սելջուկ-թուրքական հորդաների կողմից[19], ավելացնում է, որ այս ասպատակությունների հետևանքով «ելին իշխանքն ի ճայրենի ժառանգութենէ իւրեանց, և եղեն պանդուխտ յօտար երկիր… ելեալ ի տանէ, օտարացեալ ի ծանօթից հեռացեալ յընտանեաց… գերի և կալանաւոր ամենայն ազգաց»[20]։

Սելջուկ-թուրքերը բռնագրավել էին նաև Սյունիքի և այլ նահանգների ու գավառների հայ իշխանների կալված հայրենիքները։ «Ի՛ւ յայնմ ժամանակի էր բարձրացեալ և զօրացեալ տէրութիւնն Տաճկաց (իմա սելջուկ-թուրքերի),— գրել է Ստ. Օրբելյանը,— և ամենայն աշխարհ ի ներքոյ հարկի նոցա նուաճեալ կայր. վասն որոյ և յոլով գաւառս շորթեալ հանին ի Սիսական աշխարհէս ի ձեռաց բնիկ տէրանցն…»[21]։

Հայ իշխաններից բռնագրավված հողերի մի մասը հանձնվում էր սելջուկ ցեղերին որպես արոտավայր, իսկ մյուս մասը՝ սելջուկ զինվորականներին և պաշտոնյաներին որպես իկթա։

Իկթադարական հողատիրությունը նպաստեց, որպեսզի սելջուկ-թուրքերը նստեն իրենց հատկացված հողերի վրա և հաստատվեն նվաճված երկրներում։ Այսպես, օրինակ, երբ 1076 թ. սելջուկյան ամիրա Սաթեքենը նվաճեց Քարթլին «թուրքերը տեղավորվեցին Առանի երկրների բերդերում, բնակավայրերում և հովիտներում»[22]։

Օղուզ թուրքական ցեղերը XI դարի վերջերին՝ Մրվանյանների իշխանության անկումից հետո, բնակվեցին Վանա լճի ավազանի հովիտներում[23]։

Սելջուկ-թուրքերը մի պահ նեղը գցեցին նաև հայ հոգևոր ֆեոդալներին. «…դառն էր ժամանակս ի վերայ մեր յամենայն դիմաց… զքակտումն և զխափանումն ժամատեղեաց մտածեաց (սատանայ), թէ ցրուեցէք ամենեքեան

---

18 Տե՛ս O. Turan, I. A. Ikta, VI, p. 956—959.

19 Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, էջ 67։

20 Նույն տեղում, էջ 68։

21 Ստ. Օրբելյան, էջ 319։

22 Sadruddin el Hüseyni, Նշված աշխ., էջ 16։

23 Տե՛ս Ibn-ul-Esir, Tarih, X, p. 47, 49—53:

ինձ հրէց չէ պիտոյ, կամ տուք զհարկն կամ գնացէք։ Վանօրայքս ամեն աւերեցաւ և չկայ տեղի գնալոյ. ի՞նչ առնեմք»[24]։

Այս վիճակը, սակայն, երկար չի շարունակվում։ Մելիքշահը 1090 թ. ընդունում է Բարսեղ կաթողիկոսի գլխավորած պատվիրակությանը և սիրաշահելու նպատակով ընդառաջում նրա խնդրանքին։ Հայ եկեղեցուն ազատում են ծանր հարկերից, և կաթողիկոսին տրվում են հատուկ հրովարտակներ ու ազատության (ապահարկության) գիր[25]։

Եկեղեցու նկատմամբ համարյա նույն քաղաքականությունն էին վարում նաև Մելիքշահի հաջորդները[26]։ Այսպես, «Անուանք նախարարաց» կոչվող ձեռագիր մի տեղեկագրից իմանում ենք, որ այդ ժամանակվա Հայաստանի կառավարողը «եբարձ հարկն եկեղեցեաց»[27]։

Հայ եկեղեցուն սիրաշահելու քաղաքականություն էին վարում նաև Ելտկուզ աթաբեկն ու Շահարմենները[28]։

Այս, թեև ժամանակավոր, արտոնությունների պայմաններում հայ հոգևոր ֆեոդալների հարստությունները շարունակում էին աճել։ Գրիգոր Տղա կաթողիկոսը (1173—1193) այնքան էր հարստացել ու փարթամացել, որ Սմբատ Սպարապետը նրան համեմատում է արքաների հետ, գրելով թե «զկեանս իւր արքայակերպ վարէր, մեծամեծ տրիւք և առատ պարգևօք»[29]։ Հայ եկեղեցական ու վանքապատկան հողերը սովորաբար մտնում էին սելջուկյան տիրապետության ժամանակ տարածված հողատիրության այն ձևի մեջ, որը հայտնի էր վակֆ (վակիֆ արազի) անունով[30]։

Պետք է նշել նաև, որ Մելիքշահի և հատկապես սրա հաջորդների օրոք հայ իշխանների մի մասը նույնպես զանազան ճանապարհներով դարձյալ վերականգնում է հողատիրության իր իրավունքը, որը խախտվել էր սելջուկյան արշավանքների առաջին շրջանում։ Սասունի, Տարոնի Թոռնիկյանների, Վասպուրականի Խեդենեկյան Արծրունիների և Կյուրիկյան ու Սյունիքի թագավորների տիրույթները շարունակում էին մնալ հայ իշխանների ձեռքին։ Վերջիններս, որպես ինքնավար իշխանություններ, տարեկան հարկ էին վճարում սելջուկյան սուլթանին կամ իկթադար մելիքներին։

Մելիք Իսմայիլ Իբն-Յակութի (1085—1093) մասին խոսելիս Ուռհայեցին ասում է, որ «ամենայն ոք տիրեալ էր հայրենեաց իւրոց յաւուրս նորա...»[31]։

Տիրելով Անիին Մանուչեն Անի-Շիրակ է կանչում Պահլավունի Գրիգոր և մյուս իշխաններին ու վերականգնում նրանց իրավունքները իրենց կալված-

---

24 Սամուել Անեցի, էջ 110։

25 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 240։ Սամուել Անեցի, էջ 117։

26 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 247։

27 Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ..., գիրք առաջին, էջ 307։

28 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 342։ Վարդան, էջ 163։

29 Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 191։

30 Տե՛ս *I. H. Uzuncarsili,* Osmanli devleti teskilatina medhal, Istambul, 1941, p. 124—125.

31 Մատթեոս Ուռհայեցի, էջ 270։

ների վրա[32], որի փոխարեն նրանք իրենց ազատանիով պետք է կռվեին Շադդադյան բանակում[33]։

Իկթա-բաժնեկալվածքներ են ստանում նաև հայ, հույն և վրացի իշխանները, որոնք ծառայում էին Շահ Արմենների և Իկոնիայի սուլթանության տիրույթներում[34]։ XII դարի երկրորդ կեսին Շադդադյանները սկսեցին հալածել հայ իշխաններին և զրկել նրանց հողատիրական իրավունքից, այն բանի համար, որ վերջիններս պայքարում էին ամիրայությունների դեմ՝ Հայաստանը ազատագրելու համար[35]։

## 2. ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՎԻՃԱԿՈՒՄ

Մինչև սելջուկյան նվաճումները հայ գյուղացիության հիմնական մասը, ինչպես տեսանք, գտնվում էր ընդհանուր ֆեոդալական կախման մեջ, իսկ մի փոքր մասը՝ անձնական կամ ճորտական կախման։ Սելջուկ-թուրքական նվաճումների ու տիրապետության ժամանակաշրջանում գյուղացիության ճորտացման ընթացքը կասեցվել էր, և իշխում էին նվաճողների հողատիրության «խաս», «դիվանի», «իկթա», «մուլք», «վակֆ» ձևերը, որտեղ աշխատող, հիմնական արտադրող գյուղացիությունը բաժանված էր երկու շերտի։ Դրանք աղբյուրներում հիշվում են «դեհկան» (մանր հողատեր ազատ գյուղացիներ, որոնք միավորված էին գյուղական համայնքներում) և «մուզարիներ» (վարձակալ հողագործներ՝ ֆեոդալներից կախվածության մեջ գտնվող գյուղացիներ)։ Հայ գյուղացիներն ընդհանուր անունով կոչվում էին «ռայաթ»[36]։

Աղբյուրներում ի հակադրություն գյուղացիության մյուս շերտերի, հողազուրկ գյուղացիները հիշատակվում են «ֆուկարա» (աղքատներ) տերմինով։

Հողատիրության առանձին ձև էր կազմում գյուղական տերիտորիալ համայնական հողատիրությունը։

Ինչպես ասվեց վերևում, սուլթանը համարվում էր հողի և նրա վրա ապրող ժողովրդի («ջումաաթի», «ռայաթի») սեփականատեր։ Սիասեթ-Նամեն և մատենագրական այլ աղբյուրները ցույց են տալիս, որ հողատիրության բոլոր կարգի հողերում ապրող գյուղացիները հողին տիրում էին հողօգտագործման իրավունքով և դրա դիմաց պարտավոր էին բոլոր տեսակի սեփականատերերին վճարել հողային ռենտա՝ բնամթերքով և դրամով։

Մանր հողատեր գյուղացիները և համայնքի ազատ հողատեր գյուղացիները թեև հողի վրա նստած էին հողօգտագործման իրավունքով, սակայն նրանց հողատիրական իրավունքը անվանապես պայմանական լինելով, իրա-

---

32 Տե՛ս Վարդան, էջ 138։

33 Տե՛ս նույն տեղում, էջ 145։

34 Տե՛ս Գ. Ալիշան, Հայապատում, էջ 389, 390, տե՛ս նաև С. Т. Еремян, Юрий Боголюбский в армянских и грузинских источниках, стр. 399. I. H. Uzuncarsili, Medhal, էջ 124—127։ Վարդան, էջ 123։

35 Տե՛ս Վարդան, էջ 156, Սամուել Անեցի, էջ 125—128։

36 Տե՛ս В. Гордлевский, նշված աշխ., էջ 94։ Լ. Բաբայան, նշված աշխ., էջ 399։

կանում ժառանգական էր, և հողատիրոջ մեռնելու դեպքում հողն անցնում էր մեռնողի որդուն[37]։

Քանի որ իկթա հողատիրությունը տիրապետող ձև էր հանդիսանում, հետևաբար իկթաների վրա ապրող և աշխատող բնակչությունը կազմում էր այդ ժամանակաշրջանի գյուղացիության մեծամասնությունը։ Սիասեթ-նամեում ասված է, որ իկթադարը իկթայի վրա ապրող գյուղացիներից սահմանված հարկերն ու տուրքերը ստանալուց հետո, այլևս որևէ պահանջ և իրավունք չունի արտադրողի նկատմամբ՝ ոչ նրա անձի, ոչ նրա ընտանիքի անդամների՝ կնոջ և երեխաների, ոչ ունեցվածքի և ոչ էլ նրա հողաբաժնի նկատմամբ։ Գյուղացին տեղաշարժման ազատություն է ունեցել մի տիրույթից՝ մյուսը[38]։

XI դարի երկրորդ կեսին, քանի դեռ սելջուկների մոտ գերիշխում էր «քոչվորական» ֆեոդալիզմը և պետական հարկադրական օրգանները զարգացած չէին, Հայաստանի քաղաքական ստրկացումը համազոր չէր զանգվածների ծառայագրման։ Ընդհակառակը, ինչպես տեսանք Սիասեթ-նամեի վերոհիշյալ ձևակերպումից, հպատակները նկատելիորեն ազատ էին անձնական կախումից։

Հետևաբար ճորտացման պրոցեսը, որը մասամբ սկսվել էր Բագրատունիների ժամանակ, այժմ կասեցվել էր։ Դա չի կարող դիտվել առաջադիմական երևույթ, որովհետև չէր բխում զարգացած արտադրության մակարդակից, այլ սելջուկների մոտ տիրող նախնական արտադրաեղանակի արդյունք էր։ Սելջուկների մոտ գերիշխող արտադրաեղանակը չէր պահանջում գյուղացու ամրացումը հողին։ Իկթադարները բավարարվում էին սահմանված հարկերի և տուրքերի գանձումով և շահագրգռված չէին երկրագործության արտադրության ընդարձակմամբ[39]։

Գյուղացիության ճորտացման[40] ընթացքի կասեցումը չբերեց երկրի տնտեսական կյանքի առաջխաղացում, ընդհակառակը, ուղեկցված ծանր հարկ ու տուրքերի գանձումով բացասաբար ազդեց երկրի տնտեսական զարգացման վրա, նույն այդ պատճառով էլ գյուղատնտեսության հետագա զարգացմանը չօգնեցին նաև Նիզամ-ալ-Մուլքի ռեֆորմները։

Սակայն գյուղացիների անձնական ազատությունը XII դարում գնալով վերանում է և դարավերջին Հայաստանի ամիրայություններում գյուղացու աղքատացումն ու անձնական կախումը ֆեոդալից, նրա ամրացումը հողին և ապա ճորտացումը խորանում էին։ Գյուղացիների աղքատացմանը, բացի ֆեոդալական հողատիրության զարգացումից և որոշ չափով սելջուկ-թուրք ֆեոդալների նստակյաց կյանք վարելու փաստից, նպաստում էին նաև Մելիքշահից հետո նրա հաջորդների ժամանակ ամիրայությունների միջև ծայր առած հակամարտությունները և գահակալական կռիվները։ Թուրքմեն թափառաշրջիկ անասնապահ ցեղերի տեղաշարժերը, միջցեղային ու միջֆեո-

---

[37] Տե՛ս I. H. Uzuncarsili, Medhal, p. 62—63, 127.

[38] Տե՛ս Сиасет-намэ, стр. 34.

[39] Տե՛ս И. П. Петрушевский, Очерки, стр. 66.

[40] Տե՛ս Ս. Պ. Պողոսյան, նշված աշխ., էջ 269։

*ֆեոդալական ընդհարումներն ու ասպատակությունները, ավարառումներն ու գերեվարումները հայ գյուղացու և նրա ունեցվածքի համար ստեղծում էին անապահով վիճակ։ Գրիգոր Դ Տղա կաթողիկոսը (1173—1193) Գրիգոր Տուտեորդուն ուղղած իր նամակում ասում է, որ Արարատյան երկրում, ինչպես նաև Կարնո և Տարոնի կողմերում, հայերը դեգերում են ծանր կացության մեջ. «նեղեալ և զղվեալ են ի հարկապահանջ բռնակալացն և կարօտին միայն ուտելոյ հացի»*[41]*։ Նույնը վկայում է Գրիգոր Տղան Եկեղյաց գավառի եկեղեցականների մասին, տրտնջալով, թե ճշմարիտ ուսումը վերացել է այդտեղ՝ աղքատության և անօրենների բռնության հետևանքով*[42]*։*

*XII դարի ընթացքում գյուղացիների և ֆեոդալների փոխհարաբերությունները ժառանգական և մուլքատիրական հողերի վրա վերածվում էին անձնական կապանքների*[43]*։ Հողին գյուղացու ամրացման պահանջ առաջանում էր նաև այն պատճառով, որ սելջուկ-թուրք ֆեոդալների մի մասը անցել էր նստակեցության և սկսել զբաղվել գյուղատնտեսությամբ, զավթելով դաշտավայրերի լավագույն հողերը։*

*Հայ և օտար մատենագրական աղբյուրներում բազմաթիվ վկայություններ են պահպանվել այն մասին, որ սելջուկյան ասպատակությունների և արշավանքների ժամանակ սելջուկ սուլթաններն ու ամիրաները ձեռք բերված հարուստ ավարից զատ իրենց հետ Հայաստանից տանում էին նաև հազարավոր հայ գերիներ։ Դրանց մի մասը վաճառվում էր Փոքր Ասիայի և Իրանի շուկաներում*[44]*, մի մասը բաժանվում էր սուլթանի, ամիրաների և քոչվոր ազնվականների միջև և որպես ստրուկ կամ աղախին ծառայում նրանց պալատներում։ Թեև XI—XII դարերում արտադրության հիմնական աղբյուրը գյուղացու աշխատանքն էր, սակայն այս շրջանում ստրուկներին աշխատեցնում էին ոչ միայն տնային տնտեսության մեջ*[45]*, այլև՝ հանքերում, ճանապարհաշինության, ռազմական ու պետական այլ շինություններում*[43]*։*

*Հայ գերի ստրուկների (ղուլամների) մի մասին էլ զինվորագրում էին սուլթանի և ամիրաների «ղուլամանի սարայ» ռազմական ջոկատներում։ Աղբյուրները հիշատակում են 7000 հայ ստրուկներից բաղկացած սուլթանական մի մեծ ջոկատի մասին։ Այդ ջոկատը հայ հրամանատարների գլխավորությամբ մասնակցել է Մելիքշահի դեմ սուլթանի եղբոր՝ Թեքիշի բանակի բարձրացրած խռովությանը*[47]*։*

---

41 Գրիգոր Տղա, *Նամականի, Վենետիկ, 1865, էջ 88։*

42 *Տե՛ս նույն տեղում, էջ 230։*

43 *Շարիաթի սկզբունքների վրա հիմնված մահմեդական օրենքները մերժում են մահմեդականի անձնական կախվածությունը տիրոջից։ Հետևաբար գյուղացիների սոցիալ-տնտեսական կյանքի իրավական վիճակը, եթե հակասում էր շարիաթի սկզբունքներին, մահմեդական իրավունքներին, չէր կարող իր իրավաբանական ձևակերպումը ստանալ օրենսդրական և կրոնական գրքերում։ Այդ մասին տե՛ս* Լ. Բաբայան, *Հայաստանի ֆեոդալիզմի դարաշրջանի պատմության ուսումնասիրությունը սովետահայ պատմագրության մեջ, էջ 315։*

44 *Ստրկավաճառման շուկաներ գոյություն ունեին Սեբաստիայում, Խլաթում։ Տե՛ս* *O. Turan*, Selcuklular Tarihi, p. 270.

45 *Տե՛ս Вл. Гордлевский*, стр. 91.

46 *Տե՛ս O. Turan*, Selcuklular Tarihi, p. 275.

47 *Տե՛ս El-Bondari*, p. *70—71։*

Սելջուկյան սուլթաններին մեծ եկամուտ էր բերում նաև գերեվարված հայ, հույն և վրացի իշխանների ազատման համար ստացվող փրկավճարը։ Սակայն Հայաստանում սելջուկ ամիրա-ֆեոդալների հարստության, եկամուտների գլխավոր աղբյուրը մնում էին հայ գյուղացուց ստացվող ծանր հարկերն ու տուրքերը։

Պետական ռազմական հսկայական ծախսերը հիմնականում ապահովվում էին խոշոր, միջին և մանր իկթադարների կողմից՝ ռայաթի հողօգտագործման իրավունքի դիմաց գանձվող, շարիաթի վրա հիմնված բնատուրքային և դրամական ռենտաների ձևերով։ Այդ հարկերն ու տուրքերն օրինականացված էին Նիզամ ալ-Մուլքի Սիասեթ-նամեում և յուրաքանչյուր իկթադարին սուլթանի կողմից տրված իկթայական արտոնագիր-հրովարտակներով։ Սակայն իկթադարները իրականում գյուղացուց վերցնում էին նշված հարկերից ավելին։ Սուլթանի հրովարտակներից մեկում ուղղակի ասված է, որ «եթե որևէ մեկը (իկթադարը) կընդարձակի իր իրավունքները առանց մեր հրովարտակի, կվերցնի ավելին, քան այն, ինչ մենք թույլատրել ենք, թող նա (կուսակալը) վերաքննագրավի»[48]։

Անկասկած, հայ գյուղացին վճարում էր նաև եկեղեցական հարկերն ու տուրքերը։

Բացի վերոհիշյալ հարկերից և տուրքերից, որպես ոչ մահմեդական ռայաթ, հայ բնակչությունը սելջուկ մահմեդական իշխողներին վճարում էր նաև խարաջ կամ ջիզյա՝ գլխահարկ։

Մելիքշահի և նրա հաջորդների ժամանակ մելիքությունների և ամիրայությունների մեծ ու փոքր դիվաններում «նշանակված էին հատուկ քարտուղարներ, որոնք վարում էին քրիստոնյաներից գլխահարկի գանձման գործը»[49]։ Այդ քարտուղարները հաշվետու էին դիվանապետին[50]։

Խարաջը և ջիզյան գանձում էին միայն ոսկե դրամով[51]։ Հողահարկն ու գլխահարկը այնքան մեծ եկամուտներ էին ապահովում, որ սելջուկ իշխողներին ձեռնտու չէր կորցնել հայ աշխատասեր հպատակներին։ Այսուհանդերձ, վերջիններս հաճախ նեղվելով ծանր հարկապահանջությունից, գաղթում էին երկրից դուրս, մանավանդ դեպի Կիլիկիա, որի պատճառով երկրի բնակչությունը նոսրանում էր, և սելջուկները զրկվում էին եկամուտներից։ Եկամուտներ ձեռք բերելու ձգտումը համակել էր Իկոնիայի սուլթաններին, Դանիշմանյան և Արտուխյան ամիրաներին։ XII դարում սուլթաններն ու ամիրաները Հայաստանի նվաճած զանազան շրջաններից հայ գյուղացիներին զանգվածաբար (10000-ից մինչև 70000 մարդ) տեղափոխել են Անկարա, Ակշեհիր, Խլաթ և այլ քաղաքների շրջակայքը։ Օրինակ՝ Ղիյաս ադ-Դին Քեյ Խոսրովը 1196 թ. Հայաստանի գրավված շրջաններից 70000 հայերի տեղափոխում է Ակշեհիրի շրջանը։ Այստեղ հայ գաղթականներին բաժանելով 5000-ական խմբերի, նրանց տալիս է գյուղեր, տներ, վարուցանքի գործիք-

48 *С. Г. Агаджанов*, стр. 224.
49 *Вл. Гордлевский*, стр. 138.
50 *Տե՛ս I. H. Uzunçarsili.* Medhal, S. 131.
51 *Տե՛ս Вл. Гордлевский*, стр. 145.

ներ և սերմացու։ Այն հարցին, թե ինչու են նրանք գաղթեցնում հայերին դեպի իրենց տիրույթները, Արտուխյան Կարա Ասլանը պատասխանում է. «Մենք գաղթեցրած այս մարդկանց չենք ստրկացնելու։ Նրանց տեղավորելու ենք գյուղերում։ Նրանք ագարակներում կաշխատեն մեզ համար, այսինքն ստեղծված նյութական բարիքներով մեզ հարկեր կվճարեն»[52]։

Գյուղացիներից զատ, ամիրաները հարկադրում էին նաև քաղաքային բնակչությանը։ Մի վկայությունից պարզվում է, որ նրանք տարեկան գանձել են՝ նպարավաճառներից հարյուր, մսավաճառներից հիսուն, բանջարավաճառներից հարյուր, կերպասավաճառներից հինգհարյուր դինար[53]։

Թե ինչ մեծ եկամուտներ էին բերում աշխատավորներից գանձված հարկերն ու տուրքերը, այդ երևում է հետևյալ տվյալներից։ Մելիքշահի ժամանակ, իկթադարների ստացած եկամուտներից զատ, պետական կենտրոնական գանձարանը մուծված գումարը ըստ Համդալլահ Ղազվինու, տարեկան հասնում էր 210 միլիոն ոսկի դինարի[54]։ Իկոնիայի սուլթանությունը XII դարի վերջին Հայաստանի գրավված շրջաններից տարեկան ստանում էր 10 միլիոն դինար հասույթ, իսկ միայն Խլաթի շրջանից (Արմինիա վիլայեթ)՝ երկու միլիոն դինար[55]։ Աղբյուրներում տեղեկություններ կան բազմաթիվ ամիրաների թողած ժառանգության մասին։ Դրանցից շատերն իրենց գանձարաններում, այլ թանկարժեք իրերից բացի, ունեցել են 100 հազարից մինչև մեկ միլիոն ոսկի դինար դրամ։ Երզնկայի Մենգուչեքյան ամիրան իր աղջկան որպես օժիտ տվել է հարյուր հազար ոսկի դինար[55]։

Կողոպուտը, գերեվարությունն ու ծանր հարկապահանջությունը հայ ժողովրդի համար ստեղծում էին տնտեսական, քաղաքական ու անձնական ծանր կացություն և անապահովություն։ Հայ ժողովուրդը պայքարի ելավ սելջուկյան ամիրայությունների դեմ։ XII դարի երկրորդ կեսին այդ պայքարում հայ ժողովրդին մեծագույն օժանդակություն և աջակցություն ցույց տվեցին Վրաստանը և վրացական բանակում գտնվող հայկական գնդերը։

---

53 *O. Turan*. Les souverians Seldjoukides et leurs sujets non musulmans, Studia Islamica, I, p. S8—91.

53 Տե՛ս *Ravendi*, նշված աշխ., էջ 32։

54 Տե՛ս *Hamdullah Kazwini*, Nuzhat ul-Kulub, p. 28.

55 Տե՛ս նույն տեղում, էջ 109, 117, 120։

56 Տե՛ս *O. Turan*, Selçuklular tarihi, p. 250—271.

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ

# ՀԱՅ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

*Հայ ժողովրդի պատմության քննարկվող ժամանակաշրջանի հատուկ երևույթներից է բռնի և «կամավոր» գաղթականությունը։*

*Քանի դեռ գոյություն ուներ Մեծ Հայքի հզոր թագավորությունը (Արտաշեսյանց և Արշակունյաց ժամանակաշրջաններում), հայը իր լեռնաշխարհից շատ հազվադեպ էր հեռանում։ Հայոց թագավորության անկումը սկիզբ դրեց մասնակի գաղթականության դեպի Արևմուտք՝ Բյուզանդիա։ Գաղթում էր հայ ռազմիկ տարրը, զինվորագրվելով բյուզանդական զորքում։ Այս տխուր երևույթը ակներևորեն շեշտվեց արաբական տիրապետության ծանր ժամանակաշրջանում, մանավանդ VIII դարում։ Աբբասյան խալիֆաների հալածանքները սկիզբ դրեցին հայ ռազմիկ տարրի զանգվածային աղետալի արտագաղթին դեպի Բյուզանդիա։ Երկրի տնտեսական քայքայումը ժողովրդին հուսահատության էր հասցնում։ Օտար տիրապետության պատճառած աղետներից, գերեվարությունից ու կողոպուտից խույս տալով, նախարարները հազարավոր աշխատավորների հետ հեռանում էին երկրից։ Ղևոնդ պատմիչը վկայում է, որ VIII դարի 80-ական թթ. Շապուհ Ամատունու և նրա որդի Համամի հետ 12 հազար հայեր գաղթեցին Բյուզանդիային ենթակա Պոնտական հողերը։*

*Հայերի արտագաղթի պատճառներն էին հայ պետականության անկումը, օտարի լուծը, նվաճողների կեղեքումները, հարկապահանջությունը, տնտեսության քայքայումը, ինչպես նաև կրոնական և այլ հալածանքները։*

*Հայկական անկախ պետականության վերականգնումը և տնտեսական բարգավաճումը բնականաբար պիտի կանգնեցնեին արտագաղթի հոսանքը, ինչպես դա իրոք տեղի ունեցավ Բագրատունյաց թագավորության ժամանակ։ Սակայն հենց որ թուլացավ Հայոց թագավորությունը, նորից սկսեց աղետալի գաղթը։ Բյուզանդական նենգ քաղաքականությունը, որի նպատակն էր հայ ռազմիկ տարրով լցնել Փոքր Ասիայի որոշ մասերը, մեծ հարված հասցրեց Հայաստանին։ Զանգվածային էր Բյուզանդիայի կողմից նվաճված Վասպուրականի ազգաբնակչության արտագաղթը Փոքր Ասիա։*

*Բագրատունյաց թագավորության անկումից հետո, երբ արդեն երկար ժամանակով Մեծ Հայքում համահայկական պետության վերականգնումը անհնար դարձավ, արտագաղթի հոսանքը այլևս երբեք կանգ չառավ։ Սել-*

ջուկների, մոնղոլների և այլ վայրագ նվաճողների իրար հաջորդող արշավանքների ու տիրապետության հետևանքով, արտագաղթը Հայաստանից զանգվածային և ծայրահեղ չափեր ընդունեց։

Հայերին դեպի արտագաղթ դրդող պատճառներից մեկն էլ օտար տարրի հաստատումն էր Հայաստանում։ Մինչև արաբական տիրապետության շրջանը ոչ մի օտար նվաճող իր ետևից գաղթականություն չէր թողել Հայաստանում։ Առաջին անգամ VIII դարում արաբական ցեղերը հաստատվեցին հայկական հողի վրա, և տեղի հայ բնակիչները հարկադրված եղան բռնելու արտագաղթի ուղին։ Հատկապես սելջուկյան արշավանքներից հետո Հայաստանում հաստատվեցին նոր տարրեր՝ սելջուկ-թուրքեր, քրդեր, որոնց թիվը մոնղոլական արշավանքներից հետո ավելի մեծացավ։ Հայ բնակչությունը աստիճանաբար նվազում, նոսրանում էր հայրենի հողի վրա, իսկ դուրս գալով երկրից նա թեև երկար դիմադրում էր ու գոյատևում, այդուհանդերձ աստիճանաբար քայքայվելով օտարանում էր և ձուլվում, իսկ հայրենի երկիրը մնում էր անպաշտպան։

Հայերը արտագաղթեցին Միջագետք, Ասորիք, Պարսկաստան, Սև ծովի ափերը և այլուր։ Սակայն առաջին զանգվածային գաղթը ուղղվեց դեպի Փոքր Ասիա։

Հայերը տեղավորվեցին Փոքր Ասիայի տարբեր մասերում և, իհարկե, առաջին հերթին Կապադովկիայի սահմաններում։ Բյուզանդիայի կողմից կատարված գաղթեցումները (Արծրունիներին՝ Սեբաստիա, Հայոց Գագիկ Բ թագավորին ու մերձավորներին՝ Պիզու, Կարսի Գագիկ թագավորին և յուրայիններին՝ Ծամնդավ) հայ ռազմիկ տարրի մի մեծ հոսանք տարան դեպի Փոքր Հայք և Կապադովկիա։ Մանազկերտի ճակատամարտից հետո դեպի արևմուտք ձգվեցին նորանոր հայ գաղթականություններ, որոնք փախչում էին սելջուկ նվաճողներից։ XII դարում հայերի թիվը Փոքր Ասիայի այս կողմերում այնքան ստվարացավ, որ նախկինում գոյություն ունեցող երկու եկեղեցական թեմից (Սեբաստիա, Լարիսա) բացի, արդեն հիշվում են նաև նորանոր եպիսկոպոսական աթոռներ՝ Ջմշկածագ, Մալաթիա, Նեոկեսարիա և Կեսարիա[1]։ Այդ դարում, երբ Փոքր Հայքը և Կապադովկիան գտնվում էին Դանիշմանյանների և ապա Ռումի (Իկոնիայի) սուլթանների ձեռքում, հայերը բնակչության մեջ մեծ թիվ էին կազմում, մանավանդ քաղաքներում, ուր կարևոր դեր էին խաղում արհեստների և առևտրի ասպարեզում։

Փոքր Ասիայում հաստատված հայ գաղթականությունը մեծ մասամբ կենտրոնացավ Կիլիկիայում, ուր, ինչպես կտեսնենք, ստեղծվեց Հայկական անկախ ու ծաղկուն պետականություն։

XI—XII դարերում հայ զանգվածների թիվը ստվարացավ նաև Պոնտոսում։ Արդեն 1022 թ., երբ հայոց Պետրոս Գետադարձ կաթողիկոսն այցելեց Տրապիզոն հայերն ունեին աղոթատեղի։ Ըստ մատենագրական այլ տվյալների, Ալփասլանի արշավանքներից հետո Պոնտոս են գաղթում հայկական քաղաքների բնակիչներ, ինչպես նաև վանականներ, որոնք մենաստաններ են հաստատում։ XI դարի վերջում Տրապիզոնի դուքս է նշանակվում Գրիգոր

---

1 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, Պատմություն հայ գաղթականության, Բ, էջ 511—512։

Տարոնացին, իսկ վերջինիս ապստամբությունից հետո՝ Հովհաննես Տարոնացին։ Հայերը առավել ևս խտացան Տրապիզոնում մոնղոլական արշավանքներից հետո, իսկ 1342 թ. Տրապիզոնում կար հայ եպիսկոպոս։

XI—XIII դարերում հայերը դաղթեցին նաև Փոքր Ասիայի արևմտյան կողմերը և Կոստանդնուպոլիս։

Կոստանդնուպոլսի հայ գաղութը XI դ. այնքան բազմամարդ էր, որ պատմական դեպքերի առնչությամբ հատկապես հիշվում է նրա գոյությունը։ Այսպես, 1024 թ. քաղաքում ծագած ապստամբության ժամանակ արտաքսվեցին օտարները՝ հրեաներ, մահմեդականներ և հայեր[2]։

XII դարում Կոստանդնուպոլսում և Փոքր Ասիայի այլ կողմերում ապրող հայերի դեմ կրոնական հալածանք սկսվեց։ Բյուզանդիայի պաշտոնական եկեղեցին ստիպում էր հայերին ընդունել քաղկեդոնականությունը, որի պատճառով Գրիգոր Ապիրատ կաթողիկոսը Կոստանդնուպոլիս ուղարկեց Ներսես Լամբրոնացուն, որպեսզի կայսրը չնեղի հայերին։ Այսուհանդերձ հալածանքները շարունակվեցին, հայերի թիվը աստիճանաբար պակասեց, են թադրըրվում է, որ մի մասն էլ ստիպված քաղկեդոնականության հարեց։ Ընդհանրապես, միշտ էլ հայեր եղել են Կոստանդնուպոլսում։ Սկսած V—VII դարերից մինչև Բյուզանդիայի անկումը հայերը բյուզանդական կայսրության ռազմաքաղաքական, նաև մշակութային կյանքում խաղացել են նկատելի դեր[3]։

## 1. ՄԻՋԱԳԵՏՔԻ ԵՎ ԱՍՈՐԻՔԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹԱՎԱՅՐԵՐԸ

Միջագետքում և Ասորիքում (Սիրիա) հայ բնակչության առանձին խըմբեր հաստատվել էին դեռևս հին ժամանակներում։ Դեպի այդ երկրները հայերի գաղթը զանգվածային բնույթ է ստանում միջին դարերում։

Արաբական զորքերը, մանավանդ Յուսուֆի և Բուղայի արշավանքների ժամանակ զգալի թվով հայեր գերի տարան Միջագետք և Ասորիք։

XII դարի ասորի հեղինակ Դիոնիսիոս Բարսալիբին պատմելով՝ երբ Հովհաննես Օձնեցի կաթողիկոսը և ասորիների Աթանասիոս պատրիարքը դավանական միաբանություն հաստատեցին Մանազկերտում (726), հայերը «ըսկըսեցին աստիճանաբար Ասորիք իջնել»։ Եվ որովհետև նրանք՝ «քահանա կամ եպիսկոպոս չունենալով» հետևում էին տեղական քաղկեդոնականներին կամ հուլիանական աղանդավորներին, Հովհաննես կաթողիկոսը Ասորիք է ուղարկում երեք եպիսկոպոս՝ նրանց հովվելու համար։ Աթանասիոս պատրիարքը հայերին տրամադրում է մի վանք, որտեղ «ընդունվեցին հայ և ասորի աշակերտներ, որոնք երկու (ժողովուրդների) լեզուներն էլ սովորեցին և (ասորի) եկեղեցականների գործերը թարգմանեցին հայերեն»։ Բարսալիբին գանգատվում է, որ հայերը Օձնեցու մահից հետո «հրաժարվեցին իրենց հանձնառություններից և գործեցին անարդարություններ», գրավելով ասորական գյուղեր, վանքեր և եկեղեցիներ[4]։ Ուշագրավ է նաև Բարսալիբիի հետևյալ հա-

---

2 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, նշված աշխ., Բ, էջ 513։

3 Տե՛ս նույն տեղում, էջ 530։

4 Տե՛ս A. Mingana, „The work of Dionysius Barsalibi against the Armenians", Woodbrook Studies. vol. IV., Cambridge, 1931, p. 55.

զորդումը. «Այստեղացիների (հայերի) լեզուն չի նմանվում Հայաստանի հայերի լեզվին. սրանց լեզուն նման է ասորերենին»[5]։ Դա նշանակում է, որ դարեր շարունակ հայրենի բնաշխարհից հեռու ապրող հայերը պահպանել էին մայրենի լեզուն, թեև այն աղավաղվել էր ասորական փոխառություններով։

Միխայել Ասորին հաղորդում է, որ X դարում, երբ Բյուզանդիան արաբներից գրավեց Կապադովկիայի, Փոքր Հայքի և Ասորիքի քաղաքները «Մեծ Հայքից քշեցին բերեցին ժողովրդական մեծ բազմություններ, որոնցից շատերը հաստատվեցին այս կողմերը և բազմացան...»[5]։ Երբ սկսվեցին սելջուկյան արշավանքները, Վասպուրականի Սենեքերիմ Արծրունի թագավորի հետ Սեբաստիա և նրա գավառները գաղթողների թիվը ոմանք, հավանաբար չափազանցելով, հաշվում են 400 հազար։ Մատթեոս Ուռհայեցին հաղորդում է, որ XI դարի վերջերին հայերը «հազարք առ հազարս եւ բիւրք առ բիւրս» դիմում էին «յՈւռհա եւ յամենայն սահմանսն նորա։ Եւ յԱնտիոք և յամենայն աշխարհն Կիլիկեայ և մինչև ի Տարսոն և յամենայն աշխարհն Մարաշայ, ի Տլուք և յամենայն սահմանս աշխարհացս այսոցիկ»[7]։

X—XI դարերում Միջագետքում և Հյուսիսային Ասորիքում (հին Կոմագեն թագավորության երկրում՝ Կիլիկիայից արևելք, Տավրոսից հարավ, Եփրատից արևմուտք և հյուսիս-արևմուտք, «Եփրատացիք» կոչված աշխարհում կամ ինչպես Ներսես Շնորհալին է անվանում «Միջերկրայքում») առաջացան բազմաթիվ հայ իշխանություններ։ Դրան նպաստում էր այն, որ բյուզանդական կայսրերը արաբներից գրավված վայրերում հայ իշխաններից նշանակում էին սահմանապահներ՝ «ակրիտներ»), նրանց տալով սեփականատիրության ժառանգական իրավունք։

Միջագետքում և Ասորիքում ընդարձակ տիրույթներ ունեին Պահլավունիները։ 1045 թ., երբ Գրիգոր Պահլավունին հայրենի Բջնին հանձնեց հույներին, փոխարենն ստացավ «զպատիւ մագիստրոսութեան, եւ զտեղիս բնակութեան ի սահմանս Միջագետաց գիւղս և քաղաքս, գրով եւ ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչև յաւիտեան»[8], իսկ 1046 թ. կարգվեց Միջագետքի, հետագայում և Վասպուրականի, Բերկրիի, Արճեշի, Մանազկերտի, Տարոնի կառավարիչ՝ դուքս («կիտօն եւ դուկ») կամ բդեշխի կոչումով։ Տարբեր ժամանակներում Պահլավունիները (Գրիգոր, Ապլղարիպ, Վասակ, Վասիլ, Շահան, Լիկոս և ուրիշներ) իշխել են Ծովքում կամ Ծովում, Բիրում կամ Բիրեջիկում, Թլպաշարում, Կարկառում և այլ վայրերում։

Միջագետքում և Ասորիքում տիրույթներ ունեին նաև Հայաստանից գաղթած ուրիշ բազմաթիվ իշխաններ, ինչպես և բյուզանդական բանակի հայազգի զորականները։ Դրանցից խոշորագույններն էին Փիլարտոս Վարաժնունին և Գող Վասիլը։ Մանազկերտի ճակատամարտից (1071) հետո, որտեղ բյուզանդացիները ծանր պարտություն կրեցին, Փիլարտոսն իրեն ենթարկեց Անտիոքի, Մարաշի և մի շարք այլ վայրերի հայ իշխանությունները, և ծավա-

5 Նույն տեղում։

6 „Chronique de Michel le Syrien". vol. III, p. 198.

7 Մատթեոս Ուռհայեցի, էջ 217—218։

8 Արիստակես Լաստիվերտցի, էջ 61։

լում իշխանություն ստեղծեց, որը սակայն երկար կյանք չունեցավ։ Նույնը կարելի է ասել Գող Վասիլի իշխանության մասին՝ Ծսու կենտրոնով, որը նույնպես ընկավ թշնամական ուժերի հարվածների տակ։

Բյուզանդական կայսրերը մի կողմից օգնում էին հայ իշխաններին՝ հաստատվելու Կիլիկիայում և Կապադովկիայում որպեսզի փակեն սելջուկների ճանապարհը, մյուս կողմից դավ ու խարդավանք էին նյութում խանգարելու համար նրանց միասնությունը։ Նույնը կարելի է ասել նաև խաչակիրների մասին, որոնք իբր թե գալիս էին «յօգնութիւն քրիստոնէից»։ Կիլիկիայում, Ասորիքում և Միջագետքում հայերը սրտաբաց ընդունեցին նրանց և ամեն կերպ օգնեցին։ Իսկ երբ նրանք մի փոքր ամրացան, սկսեցին նեղել հայերին, հայ իշխանների ձեռքից խլեցին բերդերը, ոչնչացրին նրանց իշխանությունը։ Ասորիքի և Միջագետքի հայկական իշխանությունների վրա էին արշավում նաև սելջուկ-թուրքերը արևելքից, Իկոնիայի սուլթանությունը (1074—1294) կամ Ռումի սելջուկները՝ հյուսիս-արևմուտքից, Եգիպտոսի իշխողները՝ հարավ-արևմուտքից։ Իրենց տիրույթները պահելու համար հայ իշխանները ստիպված էին հաճախ կռվել թե բյուզանդացիների, թե խաչակիրների և թե սելջուկների դեմ։ XII դարի կեսերից հայ իշխանությունները կործանվեցին, սակայն հոծ հայություն մնաց Ուռհայում, Անտիոքում, Մարաշում, Սամոսատում, Թլպաշարում, Բիրեջիկում և այլ քաղաքներում, ինչպես և դրանց հարևան գյուղական վայրերում։

Ուռհա կամ Եդեսիա քաղաքում հնագույն ժամանակներից ասորիների հետ միասին ապրում էին մեծ թվով հայեր։

944 թ. բյուզանդացիները գրավեցին Ուռհան, սակայն չկարողացան երկար պահել։ XI դարի սկզբներին նրանք վերստին տիրացան Ուռհային և այնուհետև այն կառավարեցին մեծ մասամբ հայազգի զորականների միջոցով։ Ուռհայի կառավարչի պաշտոնում հիշատակվում են Աբուկապը, նրա որդի Վասիլը, Սմբատը և ուրիշ հայ իշխաններ։ 1083 թ. օգտվելով Բյուզանդիայի թուլացումից, Փիլարտոսը գրավեց Ուռհան և կառավարիչ նշանակեց Թորոս կուրապաղատին։ 1096 թ. խաչակիրները դավադրությամբ սպանեցին Թորոսին, տիրացան քաղաքին և Սամոսատի, Սիուչի, Թլպաշարի հետ միասին ստեղծեցին Ուռհայի կամ Եդեսիայի լատին կոմսությունը։ Կա տեղեկություն այն մասին, որ Ուռհայի հայերը, համաձայնության գալով Արտուխյանների հետ, փորձել են ապստամբություն բարձրացնել խաչակիրների կեղեքիչ լծի դեմ, սակայն հնարավորություն չեն ունեցել։ 1144 թ. Հալեպի Զանգի ամիրան գրավում և ավերում է Ուռհան, սոսկալի կոտորածի, կողոպուտի և գերության մատնում բնակչությանը։ Ներսես Շնորհալին «Ողբ Եդեսիոյ» նշանավոր քերթվածում նկարագրելով Ուռհայի աղետը, այն համեմատում է 1064 թ. սելջուկների կողմից Անիի գրավման և ավերման հետ։

Ուռհայում եղել է եպիսկոպոսական աթոռ, հետևաբար գաղութը օժտված էր վարչա-եկեղեցական կազմակերպությամբ։

1081 թ. Գրիգոր Վկայասեր կաթողիկոսը Ուռհայի հայ քահանաներին և ժողովրդին հատուկ թուղթ է ուղարկում՝ կապված «ծռազատկի» հետ[9]։ 1103 թ.

9 Տե՛ս Յ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանի Մխիթարեանց ի Վիեննա, 1895, էջ 658։

Բարսեղ Անեցի կաթողիկոսը, «ամենայն պաշտոնէիւք իւրովք և ազատօք, եպիսկոպոսօք և քահանայիւք», այցելության է գնացել Ուռհայի հայությանը[10]։ Ուռհայի լատին կոմս Բոդվինը «մեծարեաց զնա մեծաւ պատուով՝ որպէս վայել է հայրապետի, և գիւղս և տուրս պարգևէր նմա»[11]։ Կա տեղեկություն այն մասին, որ 1144 թ. Ուռհայի հայոց եպիսկոպոսը գերի է տարվել Հալեպ և վաճառվել, 1179 թ. Ուռհայի Ստեփանոս եպիսկոպոսը մասնակցել է Հռոմկլայում գումարված եկեղեցական ժողովին։

Հայերի դարավոր գաղթավայր էր նաև Սամոսատը, որը Ուռհայի նման ուշագրավ դեր է խաղացել հայ մշակույթի զարգացման գործում[12]։ 958 թ. բյուզանդացիները արաբներից գրավեցին Սամոսատը և այնտեղ վերաբնակեցրին զգալի թվով հայ և հույն գաղթականներ։ Երբ սելջուկները մըտան Սամոսատ, հույները հեռացան, իսկ հայ իշխաններն ընդունելով նրանց տիրապետությունը, պահպանեցին իրենց իշխանությունը։ Միխայել Ասորին Սամոսատի հայ իշխաններից հիշատակում է Կոստանդինին, Դավթուկին և Սմբատի որդի Քրիստափորին, որոնք տիրում էին նաև հարևան Մար Բարսումայի վրա։ XI դարում Սամոսատը Բյուզանդիայի արևելյան հարամանատարության կայանն էր։ Պետրոս Գետադարձ կաթողիկոսը այնտեղ գնաց՝ Անին հույներին հանձնելու համար։ 1098 թ. խաչակիրները խաբեությամբ հայերից կորզեցին Սամոսատը և ենթարկեցին Եդեսիայի լատին կոմսությանը։ Սամոսատը բազմիցս իրար ձեռքից խլել են բյուզանդացիները, սելջուկները և խաչակիրները ապա այն ընկավ Այյուբյանների տիրապետության ներքո։ Սամոսատում հայերը միշտ էլ կազմել են բնակչության ճնշող մեծամասնությունը։ Ըստ արաբ աշխարհագիր Յակուտ ալ-Համավիի XIII դարի սկզբներին Սամոսատի բնակիչները հայեր էին[13]։

Թլպաշար հինավուրց քաղաքը կառուցված էր Այնթապից ոչ հեռու, Սաջուր գետի վրա։ XI դարում Վասակ և Լիկոս Պահլավունիները սելջուկներից դրավելով հաստատվեցին այնտեղ։ 1090 թ. խաչակիրները նրանցից խլեցին Թլպաշարը, իսկ հետագայում ենթարկեցին Եդեսիայի լատին կոմսությանը։ Ջոսլին դը Կուրդնեի տան իշխանները բնակություն հաստատեցին բերդաքաղաքում և գոհանում էին միայն Թլպաշարի ասորի, հայ և մահմեդական երկրագործ բնակչությունից հարկ վերցնելով[14]։ 1151 թ. Զանգի ամիրան գրավեց Թլպաշարը, երկարատև կռիվներից թուլացած բերդականները «երդումն հաստատութեան առեալ ետուն կամօք իւրեանց զբերդն Թլպաշարայ»[15]։ Հետագայում Թլպաշարը կռվախնձոր է դառնում Ասորիքի և Եգիպտոսի Այյուբյանների միջև, սակայն հայկական գաղութը պահպանում է իր գոյությունը։

---

10 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 294։

11 Տե՛ս նույն տեղում։

12 Սամոսատում էր, որ Մաշտոցն իր ստեղծած նշանագրերը Հռոփանոս հույն գեղագրի օգնությամբ մասամբ հարդարեց և իր երկու աշակերտների հետ միասին ձեռնարկեց Աստվածաշնչի փորձնական թարգմանությանը։

13 «Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին», էջ 43, 79։

14 Տե՛ս *E. Reg*, Les colonies Franques de Syrie aux XII et XIII s. Paris, 1883, p. 301.

15 Մատթեոս Ուռհայեցի, էջ 399։

Բիր կամ Բիրեջիկ քաղաքը գտնվում էր Ուռհայի և Թլպաշարի միջև՝ Եփրատ գետի արևելյան ափին։ Վասակ Պահլավունու որդիներ Աբլղարիբ և Լիկոս իշխանները, սելջուկներից խլելով Բիրը, «շինեցին իւրեանց բնակարան, վասնզի էին քաջք եւ անուանիք պատերազմողք, ունէին իւրեանց զօրականս արս հազար»[15]. 1117 թ. խաչակիրները մեկ տարվա պաշարումից հետո, տեղահան անելով հայ իշխաններին, տիրացան Բիրին։ 1144 թվականին Զանգի ամիրան գրավեց քաղաքը, որն այնուհետև ընկավ մեկ Արտուխյանների, մեկ՝ բյուզանդացիների, իսկ վերջում՝ Այյուբյանների ձեռքը։

Միջագետքի հայաբնակ վայրերից էր նաև Թլկուրան ավանը, որը տեղագրված էր Ուռհայից հարավ։ Ներսես Շնորհալին իր եղբայր Գրիգոր կաթողիկոսի (1113—1166) հրամանով ընդհանրական թուղթ է գրել Թլկուրանի հայ իշխան Առյուծին («ի խնդրոյ ուրումն աստուածասիրի Առիւծ կոչեցեալ իշխանի Թլկուրան աւանի»)՝ Ասորոց Միջագետքի մի քանի գավառների քահանաների միջև ծագած դավանական վեճերի վերաբերյալ[17]։ Հետագայում էլ՝ մինչև XV դարի կեսերը, Թլկուրանը հայաշատ և հայտնի բնակավայր է եղել և տվել է բանաստեղծներ։

Մեծ թվով հայեր բնակվում էին նաև Միջագետքի այլ քաղաքներում՝ Խառանում, Սևերեկում, Սրուճում, Ռակկայում, Ռաս ալ-Այնում, Ամիդում, Հիսն Քեյֆում, Նիսիբինում կամ Մծբինում, Մոսուլում, մանավանդ Մարդինում, որտեղ հիշատակվում են ս. Աստվածածին, ս. Յովհաննես եկեղեցիները և Հայոց եպիսկոպոսը[18]։

Ասորիքում հայկական խոշոր գաղթավայրերից էր Անտիոք քաղաքը, որտեղ, ըստ արևելագետ Լորանի, հայկական գաղութ է եղել դեռևս Սելևկյան տիրապետության ժամանակներից[19]։ X դարում Անտիոքում և շրջակա վայրերում հայությունն այնքան էր բազմացել, որ Խաչիկ կաթողիկոսը (973—992) այդ քաղաքում հաստատել է եպիսկոպոսական աթոռ, որը և շարունակել է իր գոյությունը ընդհուպ մինչև XIII դարի կեսերը։ Անտիոքի հայոց եպիսկոպոս են հիշատակվում Կիպրիանոսը (1103), Գրիգորիսը (1179), Հովսեփը (1199), Միքայելը (1223—1231)։ XI դարում Անտիոքի բնակչության ճնշող մեծամասնություն կազմում էին հույները և հայերը։ Անտիոքը կառավարում էին Բյուզանդիայից նշանակված ինչպես հույն, այնպես էլ հայ կառավարիչներ, օրինակ, Աբաս իշխանը (1059—1060), Վեստ Խաչատուր Անեցին (1068—1071), Վասակ Պահլավունին (1071—1078) և ուրիշներ։ Բյուզանդական կայսրերը և հույն հոգևորականությունը թշնամանք էին բորբոքում հայերի դեմ, օգտագործելով կրոնա-դավանական վեճերը, որոնք հաճախ հանգում էին հայ-հունական զինված ընդհարումների. Նրանց նպա-

---

16 Մատթեոս Ուռհայեցի, էջ 337։

17 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, Պատմություն հայ գաղթականության, հատ. 2, Կահիրե, 1955, էջ 440։

18 Տե՛ս Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, Վենետիկ, 1014, հատ. Ա, էջ 186։

19 Տե՛ս J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquete arabe jusqu'en 886, Paris, 1919, p. 301.

տակն էր Բյուզանդական կայսրության սահմաններում առաջացած հայկական իշխանությունների վերացումը։ Վասակ Պահլավունու սպանությունից հետո, «ազատագունդքն Վասակայ կոչեցին զՓիլարտոս և տան զԱնտիոք ի ձեռս նորա»[20]։ Փիլարտոսը, առանց կռվի, գրավելով քաղաքը, հռչակվեց «դուքս Անտիոքի»։ XII—XIII դարերում Անտիոքը կռվախնձոր է եղել Բյուզանդիայի, խաչակիրների, թուրքական էմիրների և Կիլիկիայի հայկական պետության միջև։

Հայկական գաղութներ կային նաև Անտիոքի հարևան վայրերում, ծնշող մեծամասնությամբ հայաբնակ էին Սելևկիան (Սվեդիա), Կասիոսը (Քեսապ), Շուղրը և դրանց շրջակա գյուղերը։ Գաղութի հետքեր կան Ալեքսանդրետում և Պայասում։ 1099 թ. Ալեքսանդրետում հիշատակվում է հայոց ս. Հովհաննես Ավետարանիչ եկեղեցին[21], իսկ Պայասում՝ ս. Աստվածածնի եկեղեցին[22]։ XIII դարից հայկական աշխույժ գաղութ եղել է նաև Պայասից ոչ հեռու գտնվող Լաժազզոյի նավահանգստում[23]։

XI դարում համարյա ամբողջովին հայաբնակ էր Մարաշ կամ Գերմանիկե հնօրյա քաղաքը, որտեղ Փիլարտոսը հաստատել էր իր ընդարձակ իշխանության կենտրոնը։ Փիլարտոսի մահից հետո Մարաշը անցել է բյուզանդացիներին, որոնք այն կառավարում էին հայ իշխանների միջոցով։ 1104 թ. խաչակիրները, տեղահան անելով իշխան Թաթուլին, Մարաշը գրավել և կցել են Եդեսիայի լատինական կոմսությանը[24]։ 1149—1266 թթ. Մարաշում փոքր ընդմիջումներով տիրել են սելջուկները, իսկ 1266—1298 թթ. Կիլիկիայի հայ թագավորները։

Հայ իշխանների ավատներն էին՝ Քեսունը, Ռապանը, Անդրիունին, Տլուքը, Կարկառը, Ծովքը և այլ վայրեր։ Ծովք կամ Ծով կոչված բերդը, որի տերն էր Ապիրատ Պահլավունին, գտնվում էր Անտիոքի երկրում, Մարաշից դեպի արևելք։ Գող Վասիլի մահից հետո 1116 թ. Գրիգոր Պահլավունի կաթողիկոսն իր աթոռը Քեսունից տեղափոխեց Ծովք բերդը, որտեղ և մնաց մինչև 1150 թ.։ Մինչ օրս էլ, թեև աղավաղումներով, պահպանված հայկական ծագումով տեղանունները խոսում են այն մասին, որ հայություն է եղել նաև այդ իշխանության հարևան գյուղական վայրերում[25]։

Հայկական գաղութներ կային նաև հարավային Ասորիքի մի շարք քաղաքներում։ Կա հիշատակություն այն մասին, որ 1179 թ. Հռոմկլայում գումարված եկեղեցական ժողովին մասնակցել են Լաոդիկեի կամ Լաաթաքիայի և «Ապամեա Ասորւոց» կամ Հոմսի հայոց առաջնորդները՝ Սարգիս և Կոս-

---

20 Մատթեոս Ուռհայեցի, էջ 213։

21 Տե՛ս Գարեգին Ա կաթողիկոս, *Յիշատակարանք ձեռագրաց*, հատ. 1, էջ 263։

22 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, *Պատմություն հայ գաղթականության*, հատ. 2, էջ 450—451։

23 *W. Held*, Histoire du Commerce du Levant au moyen age, vol. II, Leipzig, 1886, p. 80.

24 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 272։

25 Մարաշից ոչ հեռու հայանուն գյուղեր են Էնկուզեկը (Ընկուզեկ լեռ կամ Ընկուզուտ վանք), Գերթեզը (Բերտոս), Ֆենկը (Վանք) և այլն։ Տլուքի մերձակայքում՝ Կերճիկինը (Կարճկան), Մազմախորը (Բազմախոռ), Պետերքենտը (Պետրոսի գյուղ) և այլն։

տանդին եպիսկոպոսները։ Նկարագրելով Հոմսի գրավումը (1298), Աբու-լ-Ֆիդա արաբ պատմիչը հաղորդում է, որ «բերդում ապաստանել էին բազմաթիվ հայեր» իրենց «երեխաների ու կանանց» հետ[26]։ Ըստ XIII դարի լատին հեղինակ Բըրշարդուսի Տրիպոլի նավահանգստի բնակչությունը կազմում էին լատինները, հույները, հայերը, մարոնականները (մարոնիներ), նեստորականները, հրեաները և թուրքերը[27]։ Պտղոմեում կամ Ակրայում նույնպես բընակվում էին հայեր և կար հայկական հյուրատուն։ XIII դարի կեսերին՝ Երուսաղեմի գրավումից հետո, երբ Ակրան դարձել էր քրիստոնեական ուժերի գլխավոր կենտրոն, զգալի չափով մեծացել էր այդ քաղաքի հայկական գաղութը, կազմակերպվել էր որպես ուրույն համայնք և ուներ իր իշխանը[28]։

Միջագետքի և Ասորիքի հայկական գաղութների տնտեսության հիմքը կազմում էր երկրագործությունը, Մատենագրական աղբյուրներում կան բազմաթիվ վկայություններ այդ գաղութներում այգեգործության և պտղաբուծության զարգացման բարձր աստիճանի մասին։ Բավականին զարգացած են եղել շերամապահությունը, ինչպես և երկրագործական մթերքների վերամըշակումը, առանձնապես գինեգործությունն ու ձիթահանությունը։

Միջագետքի և Ասորիքի քաղաքների հայ բնակչության մեծ մասը զբաղվում էր արհեստներով և առևտրով։ Աղբյուրներում հիշատակվում են՝ հյուսն, դարբին, կտավագործ, կարող (դերձակ), պղնձագործ, երկաթագործ, արծաթագործ, ոսկերիչ, խաղախորդ (կաշեգործ), մորթեգործ, բրուտ, կոշկակար և այլ արհեստավորներ։ XIII դարի եվրոպացի ճանապարհորդ Մարկո Պոլոն հիշատակում է Մարդին քաղաքի շրջակայքում մեծ քանակությամբ մշակվող բամբակի մասին, որից պատրաստում էին բեհեզներ և ուրիշ գործվածքներ[29]։ Արաբական աղբյուրներում վկայություն կա գորգագործության մեջ օգտագործվող տարբեր մանվածքներ Միջագեքից Հայաստան բերելու մասին[30]։ Լաժազզոյում հայերը պատրաստում էին մետաքսյա և բրդյա բարձրորակ գործվածքներ, որոնց պահանջարկը Եվրոպայում այնքան մեծ էր, որ վենետիկցիները հայերից սովորելով, ձեռնարկեցին տեղում դրանց արտադրությանը[31]։ Միջագետքի տարբեր քաղաքներում առավել զարգացած էին մետաղագործական արհեստները՝ տեղական հանքերից ստացվող երկաթի, պղնձի և կապարի հումքի հիման վրա[32]։

Հայերը առավել ուշագրավ դեր էին կատարում առևտրի ասպարեզում։

Արևելքի և Արևմուտքի առևտրական փոխադարձ կապերի հանգուցային կետեր էին Միջագետքի և Ասորիքի քաղաքները։ Չինաստանից, Հնդկաստանից և Միջին Ասիայից դեպի Արևմուտք գնացող քարավանների գլխավոր հանգրվաններից էր Մոսուլ քաղաքը։ Այստեղից ճանապարհը բաժանվում էր

---

26 «Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին», էջ 240—241։

27 Տե՛ս W. Heid, Histoire du Commerce du Levant. vol. I. p. 170.

28 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, Վենետիկ, 1885, էջ 482։

29 Հովհ. Հակոբյան, Ուղեգրություններ. հ. Ա, էջ 58։

30 Տե՛ս Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., հատ. I, էջ 292։

31 Տե՛ս W. Heid, Histoire du Commerce du Levant, vol. II, p. 82—83.

32 Տե՛ս Բ. Առաքելյան, նշված աշխ., հատ. 1, էջ 107։

երկուսի, առաջինը Մծբինից անցնելով գնում էր դեպի Փոքր Ասիայի խորքերը, մյուսը՝ Ամիդի, Սամոսատի, Ուռհայի և Խառանի վրայով՝ Ռակկա։ Ռակկայից դուրս էր գալիս երկու ճանապարհ, մեկը՝ դեպի Հալեպ, մյուսը՝ Հոմս։ Հալեպից քարավանները Միջերկրական էին հասնում Հալեպ—Լաոդիկե և Հալեպ—Անտիոք, իսկ Հոմսից՝ Հոմս—Տարտուս և Հոմս—Տրիպոլի ճանապարհներով։ Անտիոքը ծովի հետ կապված էր Օրոնտեսի գետաբերանում կառուցված Սեն-Սիմոն (Սելևկիա կամ Սվեդիա) նավահանգստի միջոցով։ Բացի այդ, Միջագետքը և Ասորիքը մի քանի ճանապարհներով կապված էին Հայաստանի հետ։ Դրանցից գլխավորը Հայաստանի միջով անցնող միջազգային տարանցիկ առևտրի հարավային ուղեգիծն էր, որը Մարանդից գնում էր Հեր—Բերկրի—Արճեշ—Խլաթ—Բաղեշ—Արզն—Նփրկերտ։ Այստեղից մի ճանապարհ գնում էր դեպի Ամիդ—Խառան—Բաղդատ, մյուսը՝ դեպի Ամիդ—Եդեսիա—Անտիոք, երրորդը՝ դեպի Մելիտինե—Կեսարիա և այլ քաղաքներ։ Վերոհիշյալ ճանապարհների համարյա բոլոր հանգրվաններում, ինչպես նշվեց, առկա էին հայկական բազմամարդ գաղութներ, որոնք աշխուժորեն մասնակցում էին ներքին և արտաքին առևտրին։

IX դարի վերջերից Միջագետքում և Ասորիքում քարավանային առևտուրը գնալով ավելի լայն ծավալ ընդունեց, իսկ XII—XIII դարերում՝ խաչակրաց արշավանքների ժամանակաշրջանում, այնպիսի վերելք ապրեց, որի մասին առաջներում «երազելն անգամ անհնարին էր»[33]։ Եթե խաչակիրները Ասորիքի և փյունիկյան ծովեզրի քաղաքներում ծավալում էին առևտրական լայն գործունեություն, ապա Միջագետքում և հյուսիսային Ասորիքում նրանք հիմնականում տարված էին իրենց գրաված քաղաքների, բերդերի և դղյակների պաշտպանության համար մղվող կռիվներով։ Վ. Հեյդը իրավացիորեն նշել է. «Նրանք ոչ ժամանակ, ոչ էլ ճաշակ ունեին առևտրով զբաղվելու. ոչ մի տեղ չենք տեսնում նաև այն, որ վենետիկցիները, ջենովացիները և պիզացիները բախտ փորձած լինեն Եփրատի ափերին։ Ճնշող մեծամասնությամբ միայն քրիստոնյա ասորիներից և հայերից բաղկացած նախկին բնակչությունն էր զբաղվում առևտրով»[34]։

Միջագետքի և Ասորիքի քաղաքները բավական ընդարձակ և աշխույժ առևտրական կապեր էին պահպանում Հայաստանի հետ։ Հայաստանից այստեղ ներմուծվում էին աղ, բորակ, տառեխ ձուկ, մկնդեղ, պղնձի օքսիդ, հատուկ կավից պատրաստված ջրի կժեր, ձիեր, ջորիներ և այլն։

Հայերը զգալի դեր էին խաղում Անտիոք—Սվեդիա, Տարտուս, Լաոդիկե և Տրիպոլի նավահանգիստներում կատարվող միջազգային տարանցիկ առևտրի և ապրանքային փոխանակության մեջ։ Տրիպոլիի խանութներն ու պահեստները «լցված էին թանկարժեք ապրանքներով», և նրա բնակչությունը, որի կազմում կարևոր տեղ էին գրավում հայերը, «աշխույժ կերպով զբաղվում էին առևտրով և արհեստագործությամբ»[35]։

---

33 Տե՛ս W. *Held*, Histoire du Commerce du Levant, vol. I, p. 167.

34 Նույն տեղում, էջ 168։

35 Նույն տեղում, էջ 170։

Տրիպոլիի, Լաոդիկեի և Անտիոքի գրավումից հետո միջազգային տարանցիկ առևտրի կենտրոնը տեղափոխվեց հյուսիս՝ Պայաս և Լաժազզո նավահանգիստները։

1269 և 1271 թթ. լինելով Լաժազզոյում, Մարկո Պոլոն տեսել էր «համեմունքների, մետաքսեղենի, ոսկյա թելերով բանված կերպասների և ուրիշ ապրանքների բոլոր հնարավոր տեսակները, որոնք բերվում էին Ասիայի խորքերից»[36]։ Ջենովայի, Վենետիկի և մյուս երկրների առևտրականներն այնտեղ արևմտյան ապրանքները փոխանակում էին արևելյան ապրանքների հետ։ Վ. Հեյդը բերում է միջնադարյան մի վավերագիր (1276), ուր խոսվում է ջենովացիների կողմից Կոռիկոսի նավահանգստում «մեծագին ապրանքներով բարձված» մի նավի բռնագրավման վերաբերյալ։ Այդ ապրանքատերերի թվում եղել են բազմաթիվ հայ առևտրականներ Լաժազզոյից[37]։

Հայկական գաղութները հաստատված էին գերազանցապես քաղաքներում, որոնք, ինչպես Հայաստանում, ունեին իրենց վարչությունը՝ ավագների կամ ծերերի գլխավորությամբ։ X դարից ավագների կամ ծերերի խորհուրդներ կային Մերձավոր Արևելքի շատ քաղաքներում։ Ուռհայեցին նշում է, որ Սիդոնի (Սայդայի) բնակիչները ուղարկում են «զծերս քաղաքին իւրեանց» Զմշկիկ կայսեր հետ բանակցություններ վարելու՝ քաղաքի հանձնման, նրա բախտի և հարկերի վճարման մասին[38]։ Ուռհայեցու մի ուրիշ տեղեկությունից իմանում ենք, որ Ուռհայի և, հավանաբար, Միջագետքի ու Ասորիքի մյուս քաղաքների բնակիչները վայելում էին ինքնավարական որոշ իրավունքներ։ 1083 թ., երբ Ուռհայի տեր Վասիլ իշխանը մեռնում է, ժողովուրդը հավաքվում է մայր տաճարում և որոշում, թե ում պետք է հանձնել քաղաքը։ Նա գրում է. «Եւ արարին ժողով ամենայն քաղաքն ի սուրբ Սոփի և տան զքաղաքն Ուռհա ի ձեռն Սմբատայ...»[39]։

Միջագետքի և Ասորիքի հայկական գաղութներն էին թափանցել բուն Հայաստանում առաջացած սոցիալական շարժումները։ Եթե պավլիկյանների վերաբերյալ մեզ հասած տեղեկությունները կցկտուր են և աղոտ, ապա հայտնի է, որ XI դարում, երբ թոնդրակյան շարժումը զենքի ուժով ճնշվեց, մեծ թվով թոնդրակյաններ անցան Միջագետք, և այստեղ նրանց ազդեցությամբ սկսվեցին որոշ խմորումներ։

Միջագետքի և Ասորիքի քաղաքներն ու վանքերը, ինչպես նշել է Մ. Աբեղյանը, եղել են «մի նոր վայր» հայ մշակույթի զարգացման համար։ Օրինակ, Մատթեոս Ուռհայեցին իր ժամանակագրությունը գրել է Ուռհայում, Քեսունի կամ Շուղրի Կարմիր վանքում գործել է վարդապետարան, որտեղ ուսանել են Գրիգոր և Ներսես Պահլավունիները, Սարգիս, Իգնատիոս, Բարսեղ Շնորհալիները և ուրիշներ։ Կարմիր վանքի խոշորագույն դեմքերից էր Ներսես Շնորհալին։

Միջագետքում և Ասորիքում գործել են գրչության մի քանի օջախներ, ուր գրված և ծաղկազարդված ձեռագրերից մեզ հասել են միայն սակավաթիվ

---

36 Նույն տեղում, հատ. II, էջ 74—75։

37 Տե՛ս նույն տեղում, էջ 79—80։

38 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 24։

39 Նույն տեղում, էջ 223։

նմուշներ։ Գրչության արվեստը առանձնապես բարձր զարգացման է հասել Ուռհայում[40]։ Միջագետքում է ծնվել Վարդան Այգեկցի առակագիրը։

Միջագետքի և Ասորիքի միջավայրում լայն չափերի էր հասել հայերի հետաքրքրությունը դեպի արաբական մշակույթն ու գրականությունը։ Նույնիսկ ասորական և հունական գրականության մի շարք գործեր հայերեն են թարգմանվել արաբական փոխադրությունից։ 1295—1298 թթ. Անատոլ Պերեթացու «Գիրք վաստակոցը» հայերեն է թարգմանվել Սիս քաղաքում իբն ալ-Համավու (XI դ.) փոխադրությունից։ Արաբական գեղարվեստական գրականությունից թարգմանվել են «Պղնձէ քաղաք» վիպակը և մի շարք ուրիշ զրույցներ լայն օգտագործման համար։

Զգալի թվով հայեր կային նաև Երուսաղեմում, ուր դեռ վաղ միջնադարում նրանք ունեին բազմաթիվ վանքեր։ Անաստաս վարդապետի ցուցակում հիշատակվում են 70 վանքեր, և դրանք կառուցող հայ իշխաններն ու նախարարական տոհմերը[41]։ Երուսաղեմի հայերն ունեցել են իրենց եպիսկոպոսը[42]։

Երուսաղեմի հայկական գաղութը վերելք ապրեց լատինական թագավորության ժամանակաշրջանում (1099—1187)։ Լատինական արքունիքում կային բազմաթիվ հայ իշխաններ (մի քանիսը անգամ բարձրացել են թագավորական գահին)[43], իսկ բանակում ծառայում էին զգալի թվով հայ զորականներ[44]։ Երուսաղեմում հայերը հաստատված էին առանձին թաղերում, որոնցից մեկը հարատևել է մինչև 1222 թվականը[45]։

1187 թ., երբ Սալահ ալ-Դինը մտավ Երուսաղեմ[46], այնտեղ կար հազար տուն հայ բնակչություն և հինգ հարյուր հայ հոգևորական[47]։

Հայկական գաղութներ կային նաև Բեթղեհեմում[48] և Պաղեստինի մի քանի այլ քաղաքներում։

1307 թ. Սսում կայացած եկեղեցական ժողովը կաթոլիկ եկեղեցու հետ միանալու որոշում ընդունեց։ Երուսաղեմի հայոց աթոռը, որը մինչ այդ ենթակա էր Սսի կաթողիկոսներին, բողոքեց այդ որոշման դեմ[47] և, Եգիպտոսի մամլուք սուլթանից հրովարտակ ստանալով իրեն հռչակեց ինքնուրույն պատրիարքություն[48]։

---

40 Տե՛ս Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք, հատ. Ա, էջ 377—378։

41 Տե՛ս «Վասն Վանօրէից որ ի ս. Յերուսաղէմ», Վենետիկ, 1896, էջ 5—9։

42 Տե՛ս «Յաջորդատեսս պատրիարքացն Երուսաղէմի», աշխ., Բարսեղ վարդ. Յովսեփեան, Կ. Պոլիս, 1872։

43 Տե՛ս F. Macler, Les Arméniens en Syrie et en Palestine, Marseille, 1919, p. 11—12.

44 Տե՛ս J. de Vitry, The History of Jerusalem, p. 79.

45 Երուսաղեմի հայկական այդ թաղամասը կոչվել է «Ruga Armenorum»: Տե՛ս Ղ. Ալիշան. Սիսուական, էջ 482։

46 Տե՛ս Աստուածատուր եպս. Տ. Հովհաննեսեանց, Ժամանակագրական պատմութիւն ս. Երուսաղէմի, Երուսաղեմ, 1890, հատ. Ա, էջ 200—201։

47 Երուսաղեմի 21 հայ եպիսկոպոսների անուններ են մեզ հասել VII—XIII դարերից։ Սակայն Սսի աթոռի հետ նրա ունեցած կապի խզումից (1311) հետո նրանք արդեն պաշտոնապես դառնում են պատրիարքներ։

48 Տե՛ս A. K. Sanjian, The Armenian Communities in Syria, p. 11.

## 2. ՀԱՅԵՐԸ ԵԳԻՊՏՈՍՈՒՄ

Փոքր թվով հայեր, մասնավորապես բյուզանդական բանակում ծառայող հայ զինվորներ, Եգիպտոսում եղել են բավական հին ժամանակներից։ Արաբական խալիֆայության մի շարք երկրներում ևս հայեր կային, բայց ամենից ավելի մեծ թվով հայեր կենտրոնացան Եգիպտոսում Ֆաթիմյանների տիրապետության ժամանակաշրջանում (969—1171)։

Ֆաթիմյանների արքունիքը խայտաբղետ էր թե ազգային, թե կրոնական տեսակետից։ Բազմաթիվ ասորիներ, քրդեր, հայեր, հրեաներ, թուրքեր, բերբերներ և ուրիշներ դարձան վեզիրներ կամ զորահրամանատարներ։ XI դարի երկրորդ կեսում, երբ Ֆաթիմյան խալիֆաների իշխանությունը թուլացավ, սկսվեց մի նոր շրջան՝ «մեծ վեզիրների դարը», որը նշանավոր դարձավ շնորհիվ հայ վեզիրների գործունեության։

Դրանցից առաջինը Բադր ալ-Գամալին[49] (Ջամալի) էր, որին ծախել էին որպես ստրուկ։ Դառնալով Դամասկոսի կառավարիչ և ապա՝ Աքքայի (Պաղեստինի) վերակացու, Բադրը Սիրիայի (Ասորիքի) հայերից կազմված իր գնդերով 1073 թ. մտավ Կահիրե, դարձավ վեզիր և զորահրամանատար Ֆաթիմյան Եգիպտոսում։

Իր վեզիրության 22 տարիների ընթացքում նա անողոք պայքար մղեց բոլոր կենտրոնախույս ուժերի դեմ։ Բադրը միաժամանակ բարեկարգիչ և շինարար էր։ Վեզիրության հենց առաջին տարում նա Եգիպտոսի բոլոր գյուղացիներին ազատեց երեք տարվա հարկերից։ Արաբ պատմիչ Մակրիզին վկայում է, որ Կահիրեի պարիսպները և նրա խոշոր դռներից շատերը կառուցվել են Բադրի ջանքերով, իսկ դրանց ճարտարապետները Եդեսիայից բերված հայեր էին։

Բադրի հենարանը հայ ռազմիկ գնդերն էին։ Արաբական աղբյուրները վկայում են, որ հայերը ֆաթիմյան զորքի մեջ կարևոր դիրք ունեին։ Հայկական հեծյալ և հետևակ գնդերը տեղավորված էին Կահիրեի առանձին թաղամասերում, որտեղ, նրանք ապրում էին իրենց ընտանիքներով։

Այդ ժամանակաշրջանում Եգիպտոսի հայերը բավական շատացել էին և նրանց ու տեղացի ղպտիների (եգիպտացի քրիստոնյա) միջև վեճեր էին ծագել։ Բադրի հրամանով Ալեքսանդրիայի Կյուրեղ պատրիարքը ժողով գումարեց, որին ներկա էր հայոց Գրիգոր արքեպիսկոպոսը. ծագած տարաձայնությունները կարգավորվեցին[50]։

Բադրի մահվանից հետո նրա տոհմը ժառանգաբար իշխեց Եգիպտոսում, վարելով վեզիրի պաշտոնը։

Բադրին հաջորդեց որդին՝ Աֆդալ Շահնշահը[51], որը դեռ հոր կենդանության ժամանակ վեզիրի պաշտոն էր վարում։ Նա դարձավ Եգիպտոսի իսկական իշխողը և իր կամքով խալիֆայական գահին նստեցրեց Մուստալի և

---

49 Տե՛ս Գ. Մըսըրլյան, Ականավոր հայեր Եգիպտոսի մէջ, Գահիրե, 1947, էջ 23—36։
50 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, ԱՄՀ Եգիպտոսի նահանգը և հայերը, Գահիրե, 1960, էջ 21—28։
51 Տե՛ս Մըսըրլյան, նշված աշխ., էջ 37—55։

Ամիր խալիֆաներին։ 1121 թ. Աֆդալի դավադրաբար սպանվելուց հետո նրան փոխարինեցին որդին Ահմադը, ապա որդեգիրը՝ Յանիս ալ-Արմանին, որոնց վեզիրությունը կարճատև եղավ։

Եգիպտոսի բոլոր հայ վեզիրների մեջ հատուկ տեղ ունի Վահրամ Պահլավունին, որը հավատարիմ մնաց իր ազգային ծագմանը և իր ժողովրդի քրիստոնեական կրոնին։ Երբ 1082 թ. Գրիգոր Բ կաթողիկոսը (Գրիգոր Մագիստրոսի Վահրամ որդին) գնաց Եգիպտոս, իր հետ տարավ Ապլղահապի[52] որդի Գրիգորիսին, որին ձեռնադրեց Եգիպտոսի հայոց եպիսկոպոս։ Շուտով Եգիպտոս եկան Ապլղահապի մյուս երկու որդիները՝ Վահրամն ու Վասակը, ինչպես նաև չորրորդ որդի Ապիրատի որդիներ՝ Վասիլն ու Զորավարը։

Վահրամ Պահլավունին (Բահրամ ալ-Արմանի)[53] ծնվել էր Կիլիկիայի Թլբաշար քաղաքում, որը Պահլավունիների տիրույթն էր։ Հավանաբար Եգիպտոս է գաղթել դեռ նախքան Բադրի մահը և մտել պետական ծառայության։ Նրա մասին արաբ պատմիչներն առաջին անգամ հիշում են Հաֆիզի խալիֆայության (1130—1149) հենց սկզբում, երբ նա դելտայի Ղարբիա նահանգի կառավարիչն էր։

Օգտվելով Եգիպտոսում տիրող խառնակ դրությունից, Վահրամը 1135-ին իր հայկական զորամասի գլուխն անցած շարժվեց դեպի Կահիրե և ստիպեց Հաֆիզին ընդունել իր վեզիրությունը[54]։ Պահլավունի իշխանն իրեն շրջապատեց հայերով և քաջալերեց գաղթը Եգիպտոս, որի հետևանքով Եգիպտոսի հայերի թիվը հասավ 30 հազարի։ Կահիրեում գոյացավ մի հայկական զորամաս, որի ծախսերը Ֆաթիմյաններն էին հոգում։ Վահրամի եղբայր Վասակը կառավարիչ նշանակվեց Վերին Եգիպտոսի նահանգներից մեկում։ Ընդհանրապես պաշտոնավոր հայերի թիվը երկու հազարի հասավ։ Հայերը կառուցեցին եկեղեցիներ ու վանքեր։ Ըստ արաբ պատմիչի վկայության, Վահրամը քսան հազարանոց հայկական զորաբանակ ուներ իր տրամադրության տակ։

Պետության բարձրագույն պաշտոնը ձեռք բերելուց հետո վարչագետ Վահրամ Պահլավունին, որ ըստ արաբ պատմիչների կրում էր «Տաջ ալ-Դաուլա» (պետության թագ) պատվանունը, լծվեց երկրում կարգ ու կանոն հաստատելու գործին։ Նա Կիլիկիայից բերել տվեց իր ազգականներին ու բարեկամներին և կարևոր պաշտոնների նշանակեց։ Վարչական և զինվորական մեծ պաշտոններ ստացան Վահրամի եղբորորդիները՝ Վասիլ և Շահան Պահլավունիները։ Այսպիսով Վահրամի օրոք Ֆաթիմյան պետության մեջ պաշտոնների տիրացած հայերի թիվը երկու հազարի հասավ։ Սակայն արքունիքում և այլ պետական շրջանակներում այս միջոցառումները դիտվեցին որպես ոտնձգություն և բարդությունների առիթ տվեցին։

---

52 Գրիգոր Ապիրատի որդի Ապլղահապը ամուսնացել էր Գրիգոր Մագիստրոսի դստեր հետ և հաստատվել Ծովք ամրոցում։ Տե՛ս Ն. Ակինյան, Ներսէս Լամբրոնացի, Վիեննա, 1956, էջ 380—385։

53 Տե՛ս *M. Canard*, Bahram, Enc. de l'Islam, 1960, t. I, p. 968—969.

54 Տե՛ս Մքարյան, Ակնառու հայեր Եգիպտոսի մեջ, էջ 81—84։

Եգիպտոսի Հաֆիզ խալիֆան Սիկիլիայի թագավորին գրած իր մի նամակում[56] ակնարկում է, որ Վահրամի կողմից հայկական զորագնդերի հրավիրումը Կիլիկիայից, նշան է ինչ-որ «անպատկառ և սատանայական խորհրդի»։ Ինչպես պարզվում է, խալիֆան և նրա շրջապատը հայ ռազմիկ տարրի ուժեղացման մեջ Ֆաթիմյան պետության համար մեծ վտանգ էին տեսնում, մանավանդ, որ Եգիպտոսի Ֆաթիմյաններն արդեն նեղվում էին Երուսաղեմի խաչակրաց թագավորության հարևանությունից։

Հաֆիզ խալիֆայի համաձայնությամբ 1137 թ. Ղարբիյա նահանգի նոր կառավարիչ Ռիդվան իբն Վալաշխին 30 հազար զորք հավաքեց և արշավեց դեպի Կահիրե. Վահրամ Պահլավունին դիմադրեց նրան հայկական և ֆաթիմյան (պետական) զորքով, բայց պետական զորքերը վերջինիս հակառակորդի կողմն անցան, և Վահրամը պարտվեց։ Նա իր մերձավորների հետ տեղափոխվեց Կիլիկիա՝ ցանկանալով բոլոր հայերին իր հետ տանել, բայց խալիֆան թույլ չտվեց։

Վեզիր դարձած Վալախշին կատաղի հալածանք սկսեց հայերի դեմ։ Գրգռված խաժամուժ ամբոխը, հարձակվեց հայկական թաղամասի վրա և մեծ կողոպուտ ու կոտորած արեց։ Վասակ Պահլավունին սպանվեց, և բոլոր հայերը հանվեցին պաշտոններից։

Հաֆիզ խալիֆայի հրավերով Վահրամը ապահովության թուղթ ստանալուց հետո[55] վերադարձավ Եգիպտոս և իր հետ վերցնելով հայկական մի զինված ջոկատ, քաշվեց Վերին Եգիպտոսի Ճերմակ վանքը[57]։

Շուտով Հաֆիզ խալիֆան բախվեց նաև իր նոր վեզիր Վալախշիի հետ. որից ազատվելու համար 1140 թ. պալատ հրավիրեց Վահրամ Պահլավունուն։ Վալաշխին փախավ, և Վահրամը անպաշտոն կերպով դարձավ վեզիր, բայց նույն տարում էլ վախճանվեց։

Վահրամի մահվանից հետո, թեև դարձյալ եղան հայկական ծագումով վեզիրներ, սակայն Եգիպտոսի հայ գաղութը այլևս չբարգավաճեց։

Եգիպտոսի վերջին հայ վեզիրները Ռուզզիքների ընտանիքից էին[58]։ Թալաի իբն Ռուզզիքը եկել էր Միջագետքի կողմերից և, որոշ ժամանակ զինվորական ասպարեզում ծառայելուց հետո, դարձել էր նահանգապետ Վերին Եգիպտոսում։ 1154 թ., երբ վեզիր Աբբասի մասնակցությամբ Զաֆիր խալիֆան սպանվեց, խալիֆայի կանայք օգնության կանչեցին Թալաիին, որը մտավ Կահիրե, վտարեց վեզիրին և ինքը խլեց այդ պաշտոնը։ Նա յոթ տարի միահեծան իշխեց Եգիպտոսում, որովհետև Ադիդ խալիֆան դեռ մանուկ էր։ Սակայն, 1161 թ. Ադիդը դավադրություն կազմակերպեց Թալաիի դեմ և սպանել տվեց նրան։ Թալաի իբն Ռուզզիքը ոչ միայն ձեռնահաս վեզիր էր, այլև բանաստեղծ։ Նրա պալատում շատ հաճախ հավաքվում էին բանաստեղծներ՝ այլևայլ հարցերի շուրջը վիճաբանելու։ Բանաստեղծները նրան ներբող-

55 Տե՛ս M. Canard, Un vizir chretien a l'epoque fatimide, l'arménien Bahram, Ann. de l'Inst. d'Et., Or., Alger, XII (1954), p. 84—113.

56 Տե՛ս Մըսրլյան, Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ 75—80։

57 Տե՛ս Ա. Գարտաշյան, Նյութեր Եգիպտոսի հայոց պատմության համար, Ա, Կահիրե, 1943, էջ 7—9։

58 Տե՛ս Մըսրլյան, Ականավոր հայեր Եգիպտոսի մեջ, էջ 86—98։

ներ են նվիրել, և նա ինքն էլ ունեցել է երկու հատոր բանաստեղծություններ, որոնցից մի քանիսը պահպանվել են պատմիչ Իբն Խալլիքանի մոտ։

Նրան անմիջապես հաջորդեց որդին՝ Ռուզզիքը, որը դարձավ Ադիդ խալիֆայի վեզիրը։ Իր հոր կենդանության օրոք նա դատավորի և զորքերի գլխավոր հրամանատարի պաշտոններն էր վարել։ 1163-ին զոհ գնաց իր ձեռքով պաշտոնանկ արված մի նահանգապետի կազմակերպած խռովության։

Սա Եգիպտոսի վերջին հայ վեզիրն էր Ֆաթիմյանների օրոք[59], որոնց իշխանությունը վերջացավ 1171 թ., որից հետո Եգիպտոսում իրենց իշխանությունը հաստատեցին Այյուբյանները (1171—1250)։

Այյուբյան սուլթաններից առաջինը՝ Սալահ ալ-Դինը, պաշտոնապես ընդունեց սուննիզմը և նախապատրաստվելով խաչակիրների դեմ պայքարի, վերակառուցեց զորքը։ Նա ցրեց տեղացի արաբներից, հայերից և սևամորթներից բաղկացած զորքը և նոր բանակ կազմեց, որի մեջ ընդգրկեց քրդերին ու թուրքերին։ Այսպիսով, հայկական զորամասը, որը կազմակերպվել էր դեռ Բադր ալ-Գամալիի օրոք, մոտավորապես մեկ դար գոյություն ունենալուց հետո, ցրվեց։

Այյուբյանների օրոք Եգիպտոսում եղան մի քանի հայ պաշտոնյաներ դրանցից էին նշանավոր ճարտարապետ Կարակուշը և ծովակալ Լուլու ալ-Հաջիբը։

Մամլուքյան ժամանակաշրջանում (1250—1517) հայերի թիվը դարձյալ քիչ չէր Եգիպտոսում, սակայն նրանք մեծամասնությամբ մահմեդականացած հայեր էին։ Նրանց մեջ կային մեծ թվով մամլուք ստրուկներ, որոնք ծառայում էին բանակում։ Եղել է նույնիսկ հայկական ծագմամբ մի վեզիր՝ Աբու-լ-Ֆարաջ, որը պաշտոնավարել է սուլթան Բարկուկի օրոք (1382—1389)։ Նրանցից հետո հայտնի դարձան որդին՝ Թաջ ալ-Դինը և ուրիշներ[60]։ Բուրջի (չերքեզ) մամլուքների տիրապետության ժամանակաշրջանում (1382—1517) հայ մամլուքների թիվը որոշ չափով մեծացավ, բայց սրանք արդեն բոլորովին կտրել էին կապը հայության հետ։

Եգիպտոսում գործող այս բոլոր բարձրաստիճան հայերը և մանավանդ վեզիրները կարևոր դեր կատարեցին հատկապես Ֆաթիմյան պետության քաղաքական կյանքում։ Այս բանը վկայում են թե միջնադարյան արաբ պատմիչները (Իբն ալ-Ասիր, Մակրիզի և այլն) թե նոր շրջանի հայ ու եվրոպացի պատմաբանները (ոմանք այս շրջանը կոչում են «Հայկական»)[61], ըստ որոնց հայ վեզիրների օրոք Եգիպտոսը տնտեսական բարգավաճման ու ծաղկման շրջան ապրեց։

Եգիպտոսի հայ գաղթավայրում մշակութային կյանքի որոշ աշխուժացում տեղի ունեցավ XI—XII դարերում։ Կառուցվեցին հայկական եկեղեցիներ ու վանքեր, որոնց թիվը Ֆաթիմյան շրջանում (969—1171) հասել էր 35-ի։ Եգիպտոսի հայ համայնքն ուներ իր թեմական առաջնորդները։ Եգիպ-

---

59 Տե՛ս M. Canard, Notes sur les arméniens en Egypte â l'epoque fatimide. Ann. de l'Inst, d'Et., Or., Alger, XIII (1955) p. 143—157.

60 Տե՛ս Ա. Ալպոյաճյան, ԱՄՀ Եգիպտոսի նահանգը և հայերը, էջ 36—39։

61 Ա. Ալպոյաճյան, ԱՄՀ Եգիպտոսի նահանգը և հայերը, էջ 40։

տոսում կառուցված հայկական հուշարձանների մեջ ուշագրավ է Ասիութ նահանգի (Վերին Եգիպտոս) Սոհագ քաղաքի մոտերքում գտնվող Ճերմակ վանքը (հետագայում վերածվել է ղպտական վանքի՝ ս. Շնուդայի անվան)։ Այս հայկական վանքը պետք է կառուցված լիներ Բադր ալ-Ջամալիի օրոք։ Տաճարի ներսում կան հայկական գրեր և արձանագրություններ, որտեղ հիշվում է «Թեոդորոս գրիչ և նկարիչ»[62]։ Վանքում իր կյանքի որոշ մասն է անցկացրել Վահրամ Պահլավունին։

Եգիպտոսի բնիկ քրիստոնյա բնակչության՝ ղպտիների մշակութային կյանքում հայերի մասնակցության վկայությունն է արաբալեզու հայազգի պատմիչ Աբուսահլի[63] գործունեությունը։ Նա գրել է Եգիպտոսի եկեղեցիների ու վանքերի 1170—1208 թթ. պատմությունը՝ տեղեկություններ տալով թե՛ հայերի, թե՛ ղպտիների եկեղեցական ու մշակութային կյանքի մասին։

---

62 Ա. Գարագաշյան, Նյութեր Եգիպտոսի հայոց պատմության մասին, էջ 8։

63 «Պատմութիւն եկեղեցեաց և վանօրէից Եգիպտոսի», Վենետիկ, 1933։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

# ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ ՍԵԼՋՈՒԿՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԻՑ

## 1. ՊԱՅՔԱՐ ՀՅՈՒՍԻՍ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Սելջուկյան լայնածավալ պետության մանր իշխանությունների տրոհումից հետո Անդրկովկասում և Հայաստանում ստեղծված սելջուկ-թուրքական ամիրայությունների և օրըստօրե զորեղացող Վրաստանի միջև մղվող համառ պայքարը, որն սկսվել էր XII դարի առաջին տասնամյակից և ընդմիջումներով շարունակվել ավելի քան մեկ հարյուրամյակ, վճռվեց հօգուտ Վրաստանի։ Վրաստանը, որը համեմատաբար զերծ էր մնացել սելջուկ-թուրքական արշավանքներից և XIII դարի սկզբներին Անդրկովկասում ամենազորեղ պետությունն էր դարձել, ապրում էր ֆեոդալական հասարակության ծաղկման շրջանը։*

*Երկրի հարավ-արևելյան շրջանները մաքրելով սելջուկյան նվաճողներից ու վերականգնելով վրացական պետության քաղաքական անկախությունը, Դավիթ Շինարար Բագրատունի թագավորը (1089—1125) սկսեց ընդարձակել իր պետության սահմաններն ի հաշիվ մահմեդական իշխանությունների և հոգ տարավ ապահովելու վրացական պետության հարավային ու հարավ-արևելյան սահմանների անվտանգությունը։*

*Հայաստանի և Անդրկովկասի տարբեր շրջաններում առաջացած սելջուկ-թուրքական ամիրայությունների միջև անընդհատ տեղի ունեցող կռիվները, ծանր հարկերն ու կամայականությունները բնակչության համար ստեղծել էին անտանելի վիճակ։ Այդ ամենի հետևանքով տեղական բնակչության մեջ ըսկըսվել էին ազատագրական խմորումներ նվաճողների դեմ, իսկ վրաց Բագրատունիների հաջողությունները սելջուկյան իշխանությունների դեմ մղվող պայքարում հույսեր էին ներշնչում հայերին և մղում էին համագործակցության նրանց հետ։ Եթե IX—X դարերում Հայաստանն էր միավորում Անդրկովկասի ժողովուրդների ուժերը և գլխավորում նրանց պայքարը օտարների տիրապետության և ոտնձգությունների դեմ, ապա այժմ այդ դերն անցել էր Վրաստանին, որը և գլխավորում էր պայքարը սելջուկ-թուրքական տիրապե-*

*տության դեմ։ Վրաստանի հզորացումը և Անդրկովկասի ժողովուրդների համագործակցությունը հաղթանակի երաշխիք էր այդ պայքարում։*

*Հայ իշխանական տների շատ ներկայացուցիչներ, որոնք այս կամ այն չափով պահպանել էին իրենց գոյությունը, հատկապես Հայաստանի հյուսիսային շրջաններում, դիմում են վրաց Բագրատունիների հովանավորությանը։ Նրանց մի մասը՝ քաղաքական ու տնտեսական դիրքերը պահպանելու և հարևան ամիրայությունների ոտնձգություններից իրենց տիրույթները պաշտպանելու, մյուսները՝ կորցրածը վերականգնելու, ոմանք էլ նոր դիրք ձեռք բերելու նպատակով հարեցին վրացական բանակին։ «...Եվ սա (Դավիթը),— գրում է Մատթեոս Ուռհայեցին,— երևեցաւ ընդոսնող և սիրող ազգին Հայոց։ Առ սա ժողովեցան մնացեալ զօրքն Հայոց»[1]։ Այդ ճանապարհով սկսեցին կազմավորվել հայկական զինվորական միավորներ, որոնց թիվը հետզհետե աճում էր։*

*Վրաստանի հզորացումը և հայերի գործակցությունը նրա հետ պատմական մեծ նշանակություն և խորհուրդ ուներ։ Հայերին այն անհրաժեշտ էր Վրաստանի օգնությամբ սելջուկյան լուծը թոթափելու համար, իսկ վրացիներին՝ վրաց-սելջուկյան մրցակցության մեջ հավատարիմ դաշնակից ունենալու և գերակշռությունն ապահովելու... համար։ Դավիթ թագավորը լավ էր հասկանում այդ հանգամանքը, ուստի հայերի նկատմամբ վարում էր բարեկամական քաղաքականություն։*

*Հայ գաղթականների համար հատկացվել էին հատուկ բնակավայրեր։ «...և սա (իմա՝ Դավիթը) շինեաց քաղաք Հայոց յաշխարհն Վրաց և հաստատեաց եկեղեցիս և վանորայս բազումս, և անուանեաց զանուն քաղաքին Գօռա [Գորի], և ունէր մեծաւ ուրախութեամբ և ցնծութեամբ զամենայն ազգն Հայոց»[2]։*

*Հայոց և վրաց եկեղեցիների դավանաբանական տարբերությունն իսկ չխանգարեց Դավիթ արքային որոշ աջակցություն ցույց տալու նաև հայ եկեղեցուն. «Դավիթ ինքնակալ բարեպաշտ և հաղթող արքայի ժամանակ,— գրված է Հաղբատի ս. Նշան տաճարի մուտքի արձանագրության մեջ (1121),— որ տիրեց գավառների և ազգերի... եղավ խնամող Հաղբատի և Սանահնի... վերաբերվելով քաղցր և բարեսէր աստվածապաշտությամբ... Հաղբատը ավերածությունից ազատեց, գրով և վճռով ընծայեց սուրբ եկեղեցիներին այգիներ... գյուղեր... և ամենայն հողով և վիճակով բոլոր կալվածները վերահաստատեց»[3]։*

*XII դարի առաջին քառորդում հայ-վրացական զինական համագործակցությունը առաջին հաղթանակները բերեց. 1110 թ. ազատագրվեց Շամշուլդեն և Սոմխեթի բերդերի մեծ մասը։ 1118 թ. Դավիթը գրավեց քիչ առաջ սելջուկների տիրապետության տակ անցած Կյուրիկյանների Լոռե քաղաքաբերդն ու Ագարակը և ապա՝ Կյուրիկյան թագավորության բոլոր գավառները։*

*«Մինչ այս ժամանակ,— վկայում է XII դարի վրաց Անանուն պատմիչը,—*

---

1 Մատթեոս Ուռհայեցի, էջ 356։

2 *Նույն տեղում, էջ 356։*

3 *«Վիմական տարեգիր», էջ 28։*

Տփղիս քաղաքը, Ռուսթավը, Հայքը (Սոմխիթն) և ամբողջ Սամշվիլդեն ու Ագարակները Թուրքերի ձեռքին էին... Թուրքերն՝ իմանալով Սամշվիլդեի առումը... Հայքի (Սոմխիթի) բազում բերդերը թողին և գիշերով փախան...»[4]։ Պայքարը Վրաստանի և սելջուկների միջև ավելի սրվեց։

Լոռին գրավելուց հետո Դավիթ Շինարարը, ինչպես վկայում է վրաց ժամանակագիրը. «...սկսեց արշավանքներ կատարել Պարսկաստանի, Շարվանի և Մեծ Հայքի (Սոմխիթի) վրա... հարձակվեց սուլթանի վրա և զորքով լցրեց ամբողջ երկիրը, լեռներից սկսած մինչև Կուր և Գագից սկսած մինչև Բերդուջ... (Ապա սուլթանը) հրամայեց թուրքմենությանը, ուր էլ որ լինի, ժողովել հեծելազորք՝ Դամասկից և Հալեպից սկսած մինչև վեր. և սրանց հետ Գանձակի աթաբեկին՝ իր ուժերով և Հայքի (Սոմխիթի) բոլոր ամիրաներին...»։

Պետք էր թշնամուն կանխել, և Դավիթ թագավորը 1123 թ. ամայիսին վերցրեց Հայքի (Սոմխիթի) բերդերը...»[5] ։

1123 թ. վրացական բանակը ազատագրեց Շամախի քաղաքը, Գուգարքի արևելյան և Ուտիքի արևմտյան շրջանները, Գագա դաշտից դեպի արևելք, և գրավեց Գագը, Քավազինը, Կայենը, Կայծոնը, Տերունականը, Նոր բերդը, Տավուշը, Մահկանաբերդը, Մանասգոմը, Խալինճաքարը և ուրիշ բերդեր ու ամրոցներ[6]։

Այդ հաղթանակները մեծ ոգևորություն առաջ բերեցին և ազատագրական հույսեր ներշնչեցին Վրաստանին սահմանակից հայկական հողերում։ Հայկական նահանգներում, մանավանդ Շիրակում և Անի մեծ քաղաքում Շադդադյանները, զգալով իրենց անկայուն վիճակը, մի կողմից սաստկացնում էին տնտեսական և բարոյական ճնշումը հայերի նկատմամբ, մյուս կողմից՝ կամենում էին Անին և Շիրակը միավորել Կարսի սելջուկ ամիրայությանը։ Այդ իմանալով անեցիները ապստամբեցին և դիմեցին Վրաստանի օգնությանը։ Վարդան պատմիչը գրում է, որ այդ ժամանակ զորացել էր վրաց Դավիթ թագավորը, որը արաբներից ազատագրել էր Տփղիսը, իսկ Անիի տեր Մանուչեն մեռել էր, և նրան հաջորդած Աբուլսուար ամիրան, որը «անարի և կնամարդի» մեկն էր, կամեցավ վաճառել Անին Կարսի ամիրային՝ վաթսուն հազար դինարով. ապա Խլաթից բերել տալով մի մեծ մահիկ, դրեց Անիի կաթողիկեի գմբեթի վրա։ Այդ առիթով քրիստոնյաները զայրացան, ասում է պատմիչը, և կանչեցին Դավթին ու Անի քաղաքը նրան հանձնեցին[7]։

Անանուն պատմիչն էլ վկայում է՝ 1123 թ. օգոստոսի 20-ին Դավիթ թագավորին ներկայանալով «...Անեցի ավագների (դիվանա)դպիրները հայտնեցին քաղաքն ու բերդերը նրան (Դավիթին) տալու մասին։ Եվ նա շտապ կերպով հրավիրագրեր ուղարկեց բոլորին, և երրորդ օրը նրա (Դավթի) առաջ կանգնած էր վաթսուն հազար հեծյալ, ուղևորվեց և երրորդ օրը հեշտությամբ գրավեց Անի քաղաքն ու նրա բերդերը և Անվո գյուղերն ու գավառները...»[8]։

---

4 «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», հատ. Ա, էջ 216։
5 Նույն տեղում, էջ 217—218։
6 Տե՛ս նույն տեղում, էջ 218։
7 Տե՛ս Վարդան, էջ 119։
8 «Վրաց աղբյուրները...», հատ. Ա, էջ 216։

Այս դյուրին և անարյուն հաղթանակը պայմանավորված էր նրանով, որ վրաց բանակը դեռ քաղաք չհասած անեցիներն ապստամբում են, ձերբակալում Աբուլսուարին (Աբու-լ-Ասվար) և քաղաքի դարպասները բացում օգնության եկող բանակի առաջ։

«Անի քաղաքի և Շիրակի գավառի տարակույսի մեջ ընկած ու տառապած բնակիչները,— վկայում է Սամուել Անեցին,— մտածեցին ելք գտնել փորձից և նրանք ձեռնտու լինելով Վրաց Դավիթ թագավորին՝ նենգեցին... Աբուլսուարին... Նրանք բանալով քաղաքի դռները՝ թագավորին ներս թողին, և այդ ժամանակ, երբ սա ներս էր մտնում՝ և ոչ մի մարդ չսպանվեց»[9]։

Դավիթ Շինարարի մահից հետո, 1126 թ. Աբուլսուարի որդի Փադլունը (Ֆադլոն), օգնություն ստանալով շրջակա ամիրայություններից, մեծ ուժերով պաշարեց Անին։ Քաղաքացիները տոկունությամբ և հերոսաբար մարտնչում են թշնամու դեմ։ Պաշտպանական մարտերին մասնակցում են նաև կանայք, ցուցաբերելով խիզախություն և հերոսություն։ Ականատես պատմիչ Սամուել Անեցու վկայությամբ Այծեմնիկ անունով մի հայ աղջիկ «առնացի ստացեալ սիրտ»՝ քարերով հալածում էր պարիսպը բարձրացող թշնամու զինվորներին, «առ ոչինչ համարելով նետերից ստացած վերքերը»։ Նա զոհվեց քաղաքի պարիսպների վրա՝ հերոսուհու անուն թողնելով հետագա սերունդներին։ Երկարատև պաշարման պատճառով քաղաքում սով է սկսում։

Դավիթ Շինարարին հաջորդած Դեմետրե Ա թագավորը (1125—1155/56) հաշվի առնելով պաշարվածների ծանր վիճակը, ստիպված 1126 թ. Անին զիջեց Փադլունին, պայմանով, որ վերջինս ընդունի Վրաստանի գերիշխանությունը և վրեժխնդիր չլինի անեցիներից։

Սակայն Փադլունը շուտով դրժեց խոստումը և դաժան հաշվեհարդար տեսավ քաղաքացիների հետ[10]։

Հայերի պայքարը և եռանդուն աջակցությունը Վրաստանին, բնականաբար, ստեղծում են խիստ լարված կացություն մահմեդական ամիրայությունների իշխանության տակ գտնվող հայկական շրջաններում[11]։

Դեմետրե Ա-ի ժամանակ կռիվները շարունակվեցին գլխավորապես Գանձակի ամիրայության դեմ։ 1128 թ. վրացական բանակը ազատագրեց Դմանիսը[12] և Խունանը[13]։ Վերջինս հայոց հին Հունարակերտ քաղաքն էր, որ գտնվում էր Կուր գետի վրա Ձորոփորի հարավակողմում[14]։ Սակայն ավելի հարավում նախաձեռնությունը գտնվում էր սելջուկ ամիրաների ձեռքում։

Գանձակի ամիրայության տիրակալներն ամեն կերպ ձգտում էին ընդարձակել իրենց իշխանության սահմանները։ Նրանք պարբերաբար հարձակումներ էին գործում Արցախի և Սյունիքի վրա։

---

9 Սամուել Անեցի, էջ 125—126։

10 Տե՛ս նույն տեղում, էջ 127։

11 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Գ, էջ 97։

12 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 129։

13 Տե՛ս Վարդան. էջ 120։

14 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Գ, էջ 98։

1142 թ. Խուհտուղտի ամիրան Գարդման գավառում՝ Ջարեք բերդի մոտ[15] կրակի մատնեց և ավերեց «Կաթողիկոսի քար» և «Կարապետանց քար» ամրությունները[16]։

1143—1144 թթ. Ջավլի (Ջոլի) ամիրան գրավեց Խաչենի ամրոցները, քանդեց եկեղեցիները, վանքերը, բնակչության մի մասին սրի քաշեց, գերեվարեց։ 1145 թ. պաշարեց Տավուշ բերդը, որի մեջ ամրացել էր Կյուրիկե Ա-ի Արաս Ա որդին։ 40 օր պաշարելուց հետո նա գրավեց բերդը և թույլ տվեց Արասին յուրայինների հետ հեռանալ։ Վերջինս ապաստանեց Մածնաբերդում[17]։

Արցախի և Սյունիքի վրա հարձակումներն ավելի սուր բնույթ ստացան, հատկապես Գանձակի և Նախճավանի Ելտկուզ աթաբեկի տիրապետության տարիներին (1148—1172)։

Մեկը մյուսի հետևից գրավելով Սյունյաց (Կապանի) թագավորության գավառները, Ելտկուզը վերացրեց հայկական այդ վերջին թագավորությունը[18]։

Հայաստանը միայն հյուսիսից էր սահմանակից բարեկամ Վրաց պետությանը, իսկ մնացած բոլոր կողմերից շրջապատված էր թշնամաբար տրամադրված ամիրայություններով, որոնցից մի քանիսը զավթել և տիրապետում էին հայոց աշխարհի մեծ մասին։ Թշնամու զորաջոկատները ոչ միայն ավերում, կողոպտում էին հայկական բնակավայրերը, ամրությունները, այլև հաճախ բնաջնջում կամ գերեվարում էին տեղական բնակչությանը, ավերում և ոչնչացնում նրանց նյութական և հոգևոր մշակույթի հարստությունները։

XII դարի կեսերին Վրաստանի ամենավտանգավոր ախոյանն էր Ելտկուզյան կամ Փահլավանյան ամիրայությունը։

Ելտկուզյանների նախաձեռնությամբ սելջուկյան ամիրայությունների ռազմական ուժերը համատեղ հարձակման անցան Վրաստանի դեմ, նպատակ ունենալով կասեցնել նրա առաջխաղացումը և հայկական հողերի ազատագրումը։

XII դարի 60—70-ական թթ. հայերի և վրացիների համատեղ պայքարն ընդհանուր թշնամու դեմ ավելի մեծ ծավալ ու թափ ստացավ։ 1161 թ. երկրորդ անգամ ազատագրվեց Անին և Շիրակ գավառը[19]։ Անիի կառավարիչ նշանակվեց իշխան Իվանե Օրբելին, իսկ օգնական՝ Զաքարյան Սարգիս իշխանը[20]։

Գեորգի Գ թագավորը (1155/6—1184) Շիրակ-Անիում թշնամու կողմից վերցրած քրիստոնյա և այլազգի գերիներին ետ գնելու նպատակով որպես փրկագին նվիրել էր 40000 դահեկան, նրա աջակցությամբ Կարսի բանտից ազատվել և Անի էր վերադարձել Բարսեղ եպիսկոպոսի եղբայր Պահլավունի մեծ իշխանը[21]։

---

15 Տե՛ս Մակար եպ. Բարխուդարյանց, Պատմութիւն Աղուանից, էջ 186։
16 Տե՛ս Դ. Ալիշան, Հայապատում, էջ 386։
17 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 152։
18 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 335—336։
19 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 137, «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 8, 43։
20 Տե՛ս նույն տեղում, էջ 8։
21 Տե՛ս Վարդան, էջ 130։

Անիի առումից մոտ երկու ամիս անց Շադդադյաններին օգնության հասած Շահ Արմեն Միրան ամիրան, որն իր շուրջն էր համախմբել նաև հարևվան ամիրայությունների օգնական զորքերը, Անիի մոտ 1161 թ. օգոստոս ամսին տեղի ունեցած մեծ ճակատամարտում ծանր պարտություն կրեց[22]։

Անին և նրա շրջակայքը նոր աղետներից ապահովելու համար անհրաժեշտ էր կոտրել Անիի թիկունքում գտնվող Դվինի ամիրայության զորությունը։ Այդ նպատակով վրաց բանակը 1162 թ. օգոստոսին անցավ հարձակման Դվինի վրա և գրավեց այն, դիմադրող զորքի մի մասը կոտորվեց, մյուսները գերեվարվեցին։

1162 թ. վերջերին Ելտկուզ աթաբեկը մեծ բանակով շարժվեց դեպի Արարատյան դաշտը, ետ գրավեց Դվինը և պաշարեց Անին։ Քաղաքի պաշարումը տևեց մեկ ամիս։ Չկարողանալով ընկճել քաղաքացիների հերոսական դիմադրությունը, թշնամին վերացրեց պաշարումը և շարժվեց դեպի հյուսիս։ Գագա դաշտում հարձակվեց վրաց բանակի վրա և հանկարծակիի բերելով նրան, ծանր պարտության մատնեց[23]։

Այս արշավանքի ընթացքում Ելտկուզի զորքերը Դվինի վրեժը լուծեցին հայ բնակչությունից։ Գրավելով Արագածոտն գավառի ու Շիրակի Թալին, Աշնակ և Մրեն ավաններն ու գյուղաքաղաքները՝ Մրենի ամրոցում հրկիզեցին չորս հազար, իսկ Աշնակում՝ հինգ հազար մարդ[24]։ Վրաց բանակի, որի կազմում կային և հայկական ջոկատներ, և Ատրպատականի ուժերի միջև պատերազմական գործողությունները տևեցին մի քանի տարի։ Գեորգի Գ ըստիպված էր 1165 թ. Անին և Շիրակը նորից զիջել Շադդադյաններին[25]։

XII դարի 70—80-ական թվականներին վրացական պետության զորեղացման և հայկական հողերի ազատագրման համար նպաստավոր պայմաններ էին ստեղծվել։

1174 թ. Անին և Շիրակը երրորդ անգամ ազատագրվեցին։ Անիի կառավարիչ նորից նշանակվեց Իվանե Օրբելին և նրա օգնական՝ Սարգիս Զաքարյանը։

1177—1178 թթ. Վրաստանում Գեորգի Գ թագավորի դեմ ներքին մեծ խռովություն կազմակերպվեց ամիրսպասալար Իվանե Օրբելու գլխավորությամբ։

Դավիթ Ե-ի մահից հետո գահի օրինավոր ժառանգն էր նրա որդի Դեմետրեն, սակայն վերջինիս անչափահասության պատճառով գահը ժառանգել էր նրա հորեղբայր Գեորգին։ Իվանե Օրբելին, որի փեսան էր չափահաս դարձած Դեմետրին, վրաց ազնվականության վերնախավի ներկայացուցիչների հետ միասին դավադրություն կազմակերպեց Գեորգիի դեմ, փորձելով գահ բարձրացնել Դեմետրեին։ Գահաժառանգի իրավունքների պաշտպանությունը իրականում, մի պատրվակ էր դավադիրների համար։ Դավադրության

---

22 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 137։

23 Նույն տեղում, էջ 137—138։

24 Նույն տեղում, էջ 138, Վարդան, էջ 127։

25 «Վիմական տարեգիր», էջ 31, «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 10, Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Գ, էջ 113։

*բուն պատճառը իշխանության կենտրոնացման Գեորգիի վարած քաղաքականությունն էր, թագավորական իշխանության զորեղացումը, որին հակադրվեցին վրաց մի շարք իշխաններ և հայ իշխաններից ոմանք[26]։ Իվանե Օրբելուն միացել էին Վրաստանի խոշոր ֆեոդալներից շատերը, հայերից Սարգիս Զաքարյանը և Գրիգոր Ապիրատյանը։*

*Դավադիրներն ամրացել էին Սոմխիթի լեռներում (հիմնականում Գուգարքում)։ Գեորգին բանակով շարժվում է նրանց դեմ։ Թագավորական բանակից պարտություն կրելով, Դեմետրեն, Իվանեն և նրանց համախոհները դիմում են փախուստի ու ապաստանում Լոռիի բերդում։ Գեորգին գրավում է բոլոր ամրոցներն ու բերդերը։ Այդ միջոցին Սարգիս Զաքարյանը, Գրիգոր Ապիրատյանը և խռովության մասնակիցների մեծագույն մասն անցնում է Գեորգիի կողմը և գործոն մասնակցություն ունենում դավադրության ճնշմանը։ Նրանցից Սարգիսը, որն իր Զաքարիա որդու և Զաքարիա եղբորորդու հետ առաջինն էր հեռացել դավադիրներից ու օգնել թագավորին, շատ է մեծարվում վերջինիս կողմից, ավելի ամրապնդելով իր տոհմի դիրքը, դառնում ժամանակի խոշորագույն իշխանական տան հիմնադիրը։*

*Ըստ աղբյուրների, Զաքարյանների տոհմի նախահայրերը հարավային Հայաստանից էին։ XI դարում եկել էին Զորագետ և Կյուրիկյան Բագրատունիներից իբրև բնակության վայր ստացել Խոժորնին։ Խնամիանալով իշխանական տոհմերի, այդ թվում, հավանաբար, և Բագրատունիների հետ, նրանք հետզհետե զորեղացել էին և, շնորհիվ իրենց քաջության ու խիզախության, Տաշիրում և Վրաստանում ձեռք էին բերել բացառիկ դիրք և հեղինակություն։*

*Գեորգի Գ դաժան հաշվեհարդար տեսավ դավադիրների հետ, ոչնչացրեց Օրբելիների ողջ տոհմը, փրկվեց միայն Իվանեի եղբայր Քարթլիի իշխան Լիպարիտը իր երկու որդիների հետ, որոնց Դեմետրեն ուղարկել էր Պարսկաստան՝ օգնություն խնդրելու նպատակով։ Այս Լիպարիտը և նրա ժառանգներն էին, որ հետագայում Զաքարյանների միջնորդությամբ Թամար թագուհուց ներում են ստանում, գործոն մասնակցություն են ունենում Հայաստանի արևելյան նահանգների ազատագրմանը, Քարթլիի իրենց կալվածների փոխարեն Թամարից ու Զաքարյաններից իբրև ժառանգական տիրույթ ստանալով Սյունիքը՝ հիմք են դնում Օրբելյանների հզոր իշխանությանը։*

## 2. ՀԱՅ-ՎՐԱՑԱԿԱՆ ԶԻՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՀՈՂԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՈՒՄԸ

*1184 թ. մահացավ Գեորգի Գ և նրան հաջորդեց դուստրը՝ Թամարը։ Թամար թագուհու օրոք (1184—1213) վրաց Բագրատունիների թագավորությունն ապրեց իր ծաղկման և հզորացման ամենանշանավոր ժամանակաշրջանը։ Թամար թագուհու գահակալության հենց սկզբից վերսկսվեցին պատերազմական գործողությունները Վրաստանի և հարևան ամիրայությունների միջև։*

---

26 *Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 31, «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 10, Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հատ. Գ, էջ 118։*

*Հայաստանի ազատագրման գործը XII դարի 90-ական թվականներին նոր թափ ստացավ և նրանում վճռական դեր կատարեցին Զաքարյան իշխանական տնից հատկապես Սարգսի՝ Զաքարե և Իվանե որդիները։*

*Մինչև Թամարի գահակալումը վրաց արքունիքում բարձր պաշտոններ գրավում էին ղփչաղ ազնվականության ներկայացուցիչները, որոնք և մի առժամանակ հանդիսանում էին գահակալների վստահելի հենարանները։ Թամարի ժամանակ դրությունը փոխվեց հայ իշխանների օգտին։*

*Սելջուկներից ազատագրված հայկական շրջաններում վրաց գահակալները կառավարիչներ էին նշանակում բանակում աչքի ընկած հայ իշխաններին, զորավարների, դրանով ապահովում էին այդ շրջանների կախումն իրենցից և մյուս կողմից ավելի շահագրգռում հայ իշխող դասակարգի վերնախավին, խթանում նրա գործոն մասնակցությունը ռազմական գործողություններին։ Այս ճանապարհով Մահկանաբերդի Արծրունիները և հատկապես Զորագետի Զաքարյան տան ներկայացուցիչները Գեորգի Գ-ի և մանավանդ Թամար թագուհու գահակալության տարիներին աչքի ընկան արքունիքում, աստիճանաբար ձեռք բերեցին բարձր պաշտոններ, երկրի քաղաքական կյանքում կարևոր դեր խաղացին և գլխավորեցին Հայաստանի ազատագրման գործը։*

*1185 թ. իշխան Սարգիս Զաքարյանը նշանակվեց վրաց բանակի ամիրսպասալար։ Մինչ այդ նա և նրա որդիներ Զաքարեն ու Իվանեն վարում էին վրացական բանակի կազմում գտնվող հայկական զինված ուժերի սպարապետի պաշտոնը և հանդիսանում էին վրաց ամիրսպասալարի օգնականները*[27]*։ Սարգիսը իբրև ժառանգական սեփականություն ստացավ Լոռին, որը ավանդաբար տրվում էր ամիրսպասալարներին։*

*«(Ապա Թամար թագուհին),— վկայում է վրաց ժամանակագիրը,— ամիրսպասալար նշանակեց Սարգիս Մխարգրձելիին, որը բարեծնունդ էր և արշավանքների ու քաջագործության մեջ սնված, և շնորհեց նրան Լոռին՝ ի իշխանություն և ի տիրապետություն Սոմխիթի. և շնորհատվություն արավ նրա որդի Զաքարիային ևս, և այս Զաքարիա և Հովհանն (Իվանեն) Մխարգրձելիի որդիք հավատարիմ էին թագավորներին և փորձված արշավանքների մեջ, մարդիկ անվանի, թեև կրոնով հայեր (սոմեխներ) էին»*[28]*։*

*Սարգիս Զաքարյանն աչքի էր ընկել որպես խիզախ պատերազմող և հմուտ զորավար, որի համար ժամանակակիցները նրան տվել էին «Մեծ» անունը և կոչել Մխարգրձելի՝ լայնաթիկունք։*

*Օգտվելով արքունիքում ունեցած մեծ հեղինակությունից և ազդեցությունից, Սարգիսը 1185-ին կարողացել էր համոզել Թամարին վերականգնել նախկին պաշտոններում իր կին Սահակադուխտի եղբայր Մահկանաբերդի և Հաղպատի իշխան Ամիր-Քուրդ Արծրունուն։ Ամիր-Քուրդը, որ Քարթլիի և Տփղիսի էրիսթավների էրիսթավն էր և ամիրաների ամիրը, միաժամանակ վարել է մեչուրչլեթ-ուխուցեսի՝ արքունի գանձապետի (ֆինանսների գերատեսչության պետի) պաշտոնը։ Օրբելիների դավադրության ճնշումից հետո Գեոր-*

---

27 Տե՛ս Գ. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք..., էջ 8։

28 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 11։

վի Գ նրան նույնպես պաշտոնազրկել էր։ Վերջինս ստիպված ապաստանել էր Էրզրումի ամիրայի մոտ։

Տփղիսի ամիրայության և դրա հետ կապված արքունի գանձապետի տեղակալի՝ Նացվալի-մեչուրչլեթ-ուխուցե-սիսայի պաշտոնը հանդիսացել է Մահկանաբերդի Արծրունիների ժառանգական արտոնությունը։ Մինչև Օրբելիների դավադրությունը Ամիր-Քուրդը, որը կրել էր Աբուլ-Հասան անունը, պետական աչքի ընկնող գործիչ էր, արքունի գանձապետի տեղակալի պաշտոնից առաջ էր քաշվել և նշանակվել գանձապետ։ Նրա որդին՝ Հասանը Կղարջքի էրիսթավն էր և վրացիների մոտ հայտնի էր Գուզան Տաոսկորելի անունով։ Ամիր-Քուրդը մեծ կապեր ուներ առևտրա-վաշխառուական շրջանների, ինչպես և Էրզրումի սելջուկյան ամիրայության հետ[29]։

Քաղաքական կյանքում Ամիր-Քուրդի դիրքի վերականգնումը էլ ավելի ուժեղացրեց Սարգիս Զաքարյանի և նրա որդիների ազդեցությունը արքունիքում։

Ամիր-Քուրդը և Սարգիսը գլխավորում էին առևտրա-վաշխառուական վերնախավի հետ սերտորեն կապված ազնվականության թևը[30]։

Ամիր-Քուրդը 1186—1191 թթ. միաժամանակ պետական խորհրդի (Դարբազի) անդամ էր, արքունիքում վայելում էր մեծ հեղինակություն։ Նա շատ մոտ էր Թամարի ռուս ամուսնուն՝ Յուրի իշխանին, որին վրացիները Գեորգի էին կոչում։ Ամիր-Քուրդը կարողացել էր բավական ընդլայնել իր տիրույթները, նրան էին տվել Տփղիսից հարավ-արևելք ընկած հողերը Ռուսթավի քաղաքով և Արագվի գետի ձախափնյա շրջանը՝ Ժինվանի քաղաքով։ Նրա Բարսեղ (Բասիլի) եղբայրը վարել է Քարթլիի արքեպիսկոպոսի պաշտոնը[31]։

Հետագայում Յուրիի ապստամբությունը ճնշելուց հետո, Ամիր-Քուրդը նորից պաշտոնազրկվում է, հեռանում է Մահկանաբերդ, որտեղ և մեռնում է։

1187 թ. Սարգսի մահից հետո ամիրսպասալարի պաշտոնը հանձնվեց Գամրեկել Թորելուն, իսկ 1192 թ. այդ պաշտոնը ստանձնեց Սարգսի ավագ որդի Զաքարեն. նա միաժամանակ վարում էր արքունի առաջին վեզիրի՝ մանդատուրթ-ուխուցեսի պաշտոնը, իսկ կրտսեր եղբայրը՝ Իվանեն, նշանակվեց մսախուրթ-ուխուցեսի՝ արքունի վեզիր։ Հետագայում՝ Զաքարեի մահից հետո (1212), աթաբեկի՝ խնամակալի նոր պաշտոնը հանձնվեց Իվանեին. իսկ մսախուրթ-ուխուցեսի պաշտոնը՝ նրա հորեղբոր տղա Զաքարեին։

Կիրակոս Գանձակեցին խոսելով Զաքարյան եղբայրների մասին, ասում է. «սրանք քաջ մարդիկ էին ու հզոր էին իշխանությամբ և արժանացել էին պատիվների վրաց թագուհու կողմից»[32]։

---

29 *С. Еремян,* Юрий Боголюбский в армянских и грузинских истoчниках. *Տե՛ս «Երևանի պետհամալսարանի գիտական աշխատությունները», հատ. XIII, 1946, էջ 398—399։*

30 *Տե՛ս նույն տեղում, էջ 400։*

31 *Տե՛ս նույն տեղում, էջ 404։*

32 Կիրակոս Գանձակեցի, *էջ 162։*

«Բերեցին Մխարգրձել[33] Սարգիս ամիրսպասալարի երկու որդոց,— վկայում է վրաց ժամանակագիրը,— Զաքարիա և Հովհաննին (Իվանեին), որոնք



Սարգիս Զաքարյանի հիշատակին կանգնեցված խաչքարը, Սանահին

33 Վրացիները Զաքարյաններին Մխարգրձել են կոչել սկսած Սարգիս Մեծից, Նրա լայնաթիկունք և աջ երկայնաբազուկ լինելու համար։

շատ փորձված էին պատերազմներում և ազգովին հավատարիմ՝ թագավորներին։ Այս պատճառով սրանք հույժ սիրված էին Թամարի նախնիների (պապերի և հայրերի) կողմից։ Թամարն էլ սրանց հանդեպ ուշադիր եղավ... շընորհեց (Թամարն) Զաքարիային՝ ամիրսպասալարություն, և կրտսեր (եղբորը) Հովհաննին (Իվանեին)՝ գործակալություն (մսախուրթ-ուխուցեսութա)։ Սրանք արժանի մարդիկ էին...»[34]։

«...(Երբ) վախճանվեց Գամրեկել ամիրսպասալարը... ապա ամիրսպասալարությունը շնորհվեց Մխարգրձել Զաքարիային՝ Սարգիս ամիրսպասալարի որդուն, որը նստած էր հայոց (սոմխների) թագավորի տեղում (և) Լոռեի տերն էր, որին կցեցին նաև Ռուսթավ քաղաքը, (քանի որ) նա քաջ էր՝ արժանի սպասալարությանը...»[35]։

Զաքարյանների նկատմամբ վրաց գահակալի այս առատաձեռնությունը պայմանավորված էր նրա դեմ այդ ժամանակ բռնկված ապստամբության ճնշման գործում առաջինների ցուցաբերած ակտիվ գործունեությամբ ու հավատարմությամբ։ Ապստամբությունը գլխավորել էր Թամարի նախկին ռուս ամուսին Գեորգին (Յուրին), որն իր շուրջն էր համախմբել մի խումբ վրացի և հայ իշխաններ, նպատակ ունենալով գրավել Ջավախքը, Թմոգվին, Ախալքալաքը, Թրիալեթը և Սոմխիթը, սակայն հաջողություն չունեցավ։

Վրաց կենտրոնական թագավորությունն ավելի էր ամրապնդվել և պայքարը սելջուկյան ամիրայությունների դեմ ավելի լայն ծավալ ու վճռական բնույթ էր ստանում։ Սկսվում է պատերազմական գործողությունների մի ամբողջ շարան Զաքարյանների գլխավորությամբ, որը բերեց ռազմական նշանակալից հաղթանակներ, ազատագրվեց Հայաստանի զգալի մասը։ Ծավալված ռազմական խոշոր գործողությունների շնորհիվ Վրաստանի գերիշխանությունն արագությամբ տարածվեց մինչև Ատրպատականի հյուսիսային նահանգները։

1196 թվականին Զաքարե ամիրսպասալարը և Իվանեն, ջախջախելով Գանձակի ամիրայության ռազմական ուժերը, Արագածոտն գավառում նվաճեցին «Անառիկ դղեակն Անբերդ»։ Այրարատ նահանգում դա նրանց առաջին հաջողություններից մեկն էր։ Այդ մասին մատնանշված է նաև Իվանեի՝ Հաղարծնի վանքի արձանագրության մեջ։

Այդ հաջողություններից զայրացած Ատրպատականի ու Գանձակի աթաբեկ Աբու-Բաքրը անթիվ զորքով պատերազմի պատրաստվեց Վրաստանի դեմ, սակայն վճռական ճակատամարտում, որը տեղի ունեցավ Շամքորի և Գանձակի միջև, ծանր պարտություն կրեց։ Վրացական և հայկական զորքերը Զաքարեի և Իվանեի գլխավորությամբ գրավեցին Շամքորն ու Գանձակը։ Այդ հաղթանակը դյուրացրեց Արցախի, Սյունիքի, Շիրակի և Արարատյան դաշտի ազատագրումը։

---

34 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 34։

35 Նույն տեղում, հատ. Բ, էջ 13—14։ Բնագրի հին վրացերեն მოყმე բառը, որ նշանակում է «քաջ, կտրիճ», այստեղ նոր վրացերենով թարգմանված է «հպատակ»։

Այլևս անհետաձգելի հարց էր դարձել Անի մեծ և նշանավոր քաղաքի ազատագրումը։ Հայկական և վրացական զորքերը մտան Արագածոտն գավառը և գրավեցին Անիի մատույցները։ Շադդադյանները, չդիմանալով գերակշիռ ուժերի հարձակմանը, տեղի տվեցին։



Խաչքար կանգնեցված Ամբերդի ազատագրման առթիվ

1199 թ. Անին վերջնականապես ազատագրվեց և շնորհվեց Զաքարե ամիրսպասալարին իբրև սեփական տիրույթ։

Անիի ազատագրման և Զաքարյաններին անցնելու մասին խոսելով վրաց անանուն պատմիչը նշում է, որ Թամար թագուհին ազատագրված քաղաքներն ու բերդերը անմիջապես իրեն չէր ենթարկում, այլ տալիս էր իր զորավարներին։ Նա ասում է. «Եվ նրանց [Զաքարյաններին] էր տալիս [Թամարն]

*Անին, ինչպես վկայում է հայոց (սոմխների) թագավորների մեծ ու հռչակավոր անունը, որը պարսից շահնշահությունից (շանշեոբա) էր վերցրած»[36]։*

*1201 թ. ազատագրվեց Բջնին, իսկ 1203 թ.՝ Դվինը, որոնք տրվեցին իբրև սեփականություն Իվանեին։*

*Նկարագրելով դեպի Դվին կատարած արշավանքներից մեկը, վրաց ժամանակագիրը նշում է. «Այնուհետև երկայնաբազուկ Սարգսի և Վահրամի խիզախ կտրիճները՝ ...ավագները Զաքարիան և (մյուս) Զաքարիան... Իվանեն ու Սարգիսը արշավեցին Դվինի երկիրը։ Այդ հաղթողներին և ավարով վերադարձողներին հասան Դվինի և Սուրմարուի զորքերը. տեղի ունեցավ առյուծավայել ճակատամարտ, մինչև որ (վերջինները) դիմեցին փախուստի։ Հաղթողները մեծ ավարով ու փառքով ներկայացան թագավորներին, որոնք ողորմածությամբ շնորհի արժանացրին նրանց»[37]։*

*«(Եվ) նորից,— շարունակում է նույն ժամանակագիրը,— գնացին Լոռիից Սարգսի որդիք՝ երկու եղբայրներ՝ Զաքարիա ամիրսպասալարն ու Հովնան (Իվանե) գործակալն (մսախուրթ-ուխուցեսն)՝ ավերելու Արաքսի (Ռախսի) եզերքը. և այնտեղ էր, որ քարավանները հսկելու և կողոպտելու եկել էին դվինեցիք, բջնեցիք և ամբերդցիք, որոնց հետ նրանք կես ճանապարհին հանդիպեցին և կռվի կպան իրար հետ. և մեծ պատերազմն ու քաջարի պայքարը գովելի էր (և վրաց զորքն) ամեն ինչով լի և անվնաս վերադարձավ...»[38]։*

*Ազատագրելով Շիրակ-Անին, Դվինը և Արարատյան դաշտավայրը, վրացհայկական զորքերը ընդհուպ մոտեցել էին Կարսին և վտանգ էին սպառնում նաև Կարնո ու Խլաթի ամիրայություններին։ 1203 թ. Դվինը ազատագրելուց հետո նրանք արշավանքներ ձեռնարկեցին հարևան այդ ամիրայությունների դեմ։*

*Սելջուկյան ամիրայություններից այդ ժամանակ ամենահզորը Իկոնիա-Ռումի սուլթանությունն էր, որը Սուլեյման Բ Շահ սուլթան Ռուքն ադ-Դինի օրոք (1196—1204/5) իր մեջ ընդգրկում էր Փոքր Ասիայի մեծագույն մասը, Սեբաստիայի Դանիշմանների երկիրը, Պոնտոսը, նաև պատմական Հայաստանի Եկեղյաց, Դարանաղյաց գավառները և Ծոփքը՝ մինչև Կարնո և Եդեսիայի շրջանը։*

*Գանձակի ամիրայության թուլացումը, որն արդյունք էր ներքին երկպառակությունների, խիստ նպաստավոր եղավ Զաքարյանների Վահրամյան ճյուղի զորեղացման համար[39]։ Զաքարեի և Իվանեի հորեղբայր Վահրամը և նրա որդիները կալվածներ ունեին Զորոփոր կամ Կայեն գավառում (այժմ Ղազախ)։ Հետագայում Թամար թագուհու ռուս ամուսնու՝ Գեորգիի ապստամբության ժամանակ Կայեն գավառը, ինչպես և «ամբողջ Սոմխիթը՝ Քուրդվաճառի ձորից» դեպի արևելք, միացել էին ապստամբներին, բացի Զաքարյան Վահրամի Զաքարե որդուց։ Սա հավատարիմ էր մնացել թագուհուն, դրա համար էլ Թամար թագուհուց իբրև պարգև ստացավ Գագը և բազում այլ*

---

36 *«Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 84։*

37 „ქართლის ცხოვრება", ტ. II, ტბ. 1959, გვ. 39, *տե՛ս նաև* კ. კეკელიძე, ეტიუდები, თბილისი, 1973, გვ. 195.

38 *Նույն տեղում, էջ 14։*

39 *Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն, հատ. Գ, էջ 132։*

բերդեր ու ավաններ[40]։ Ավելի ուշ Զաքարյանների այս ճյուղի իշխանությունը, որը Վրաստանի սահմանապահ զորեղ իշխանություններից մեկն էր, նոր գավառներ ստացավ նաև Ուտիքի և Արցախի նահանգներում։

Զաքարյան Վահրամի՝ Զաքարե և Սարգիս որդիները գործոն մասնակցություն են ունեցել Զաքարե ամիրսպասալարի և Իվանեի ծավալած ռազմական գործողություններին ու ազատագրել շատ գավառներ։ «Սրանից հետո,— վկայում է վրաց ժամանակագիրը,— (վրացիք) արշավեցին... Արաքսի (Ռախսի) եզերքը մինչ Մասիս... և Վարդան Դադյանը (Դադիանը), ...ու չորեքյան Մխարգրձելիներն ու այլ մեծամեծներն ու ազնվականները (ազնաուրները) մեծ նեղություններով պատերազմ ունեցան. ապա՝ փախստի ենթարկելով (թուրքմեններին), հաղթող և ուրախությամբ լի վերադարձան այնտեղից»[41]։

«Առան և նրանք,— ասում է Կիրակոս Գանձակեցին,— շատ գավառներ պարսիկներից (իմա սելջուկներից), նաև ամուր բերդեր՝ Գարդմանը, Քարհերձը, Երգեվանքը, Տավուշը, Կածարեթը, Տերունականը և Գագը, ու նաև Շամքոր քաղաքը նեղ դրության մեջ դրին, որը հետո առավ նրա (Զաքարիայի) որդի Վահրամը...»[42]։

1204 թ. Իկոնիա-Ռումի սելջուկյան Ռուքն ադ-Դին սուլթանը պատերազմ սկսեց Վրաստանի դեմ, նպատակ ունենալով կասեցնել նրա հարձակումները մահմեդական իշխանությունների վրա։ Վճռական ճակատամարտը տեղի ունեցավ 1204—1205 թթ., Բասենի դաշտում։ Չնայած սուլթանական զորքերի գերակշռությանը, վրաց-հայկական միացյալ ուժերը պարտության մատնեցին թշնամուն[43], ազատագրեցին Բարձր Հայքի արևելյան շրջանները՝ մինչև Բասենի դաշտը, սակայն ազատագրած այդ շրջանները նրանք չկարողացան պահել և ստիպված ետ քաշվեցին։

Բասենի ճակատամարտի մասին կարևոր տեղեկություն է տալիս 1204/5 թ. Մշո Առաքելոց վանքի Ճառընտրի հիշատակարանը։

«Եվ (Տոնականի կամ Ճառընտիրի) գրության ավարտման ժամանակ (1204/5 թվին), Սեբաստիայի սուլթանը, հավաքելով անհուն բազմություն և նմանելով՝ ամբարիշտ Հուլիանոսին՝ փքվելով լեռան չափ հասավ Թեոդոպոլիս և այնտեղից սպառնում էր անցնել Հայոց և Վրաց աշխարհը։ Եվ նա բոլորովին մոռացել էր աստծուն և, հույսը դնելով իր նանրության վրա՝ ուզում էր ավարի առնել ամբողջ այդ աշխարհը։ Սակայն աստծու օգնությամբ եկան հասան վրաց զորքերը և մեծն Զաքարեն իր հարազատի Իվանեի և այլ աստվածասեր իշխանների, նախարարների և մեծաթիվ խառնիճաղանջ բազմության հետ։ Նրանք հարձակվեցին առանց անօրեն զորքերի վրա և նրանց անխնա կոտորեցին, ոմանց ձերբակալեցին և ոմանք փախուստի դիմեցին, իսկ սուլթանն անվնաս մնաց։ Իսկ ավարի քանակը ո՞վ կարող է գի-

---

40 Տե՛ս «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 13։ Վահրամի մյուս որդին՝ Սարգիսը Թամարից ստացել էր Ջավախքում հողեր Թմոգվի (Թմկաբերդ) ամրոցով։ Զաքարյանների այդ ճյուղը կրել է Թմոգվելի ազգանունը և վաղ ժամանակներից վրացացել է։

41 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 12—13։

42 Կիրակոս Գանձակեցի, էջ 163։

43 Տե՛ս «Վրաց աղբյուրները», հատ. Բ, էջ 20—21, 35, 43։

*տենալ՝ ոսկու, արծաթի, մետաքսի և ուղտերի, ձիերի ու ջորիների երամակներին»*[44]։

*Այս մեծ կռվից ու ծանր պարտությունից դեռ առաջ վրացական պետության գերիշխանությունն ընդունել էին Կարնո և Երզնկայի ամիրաները, որոնք, ինչպես վկայում են վրացական աղբյուրները, Թամար թագուհուն որոշ հարկ էին վճարում*[45]։

*Ապահովելով վրացական պետության սահմանները Գանձակի ամիրայության և Ռումի սուլթանության հարձակումներից, վրացական արքունիքը ուշադրությունը կենտրոնացրեց Մանազկերտ-Խլաթի ամիրայության վրա, որը թե Գեորգիի և թե նրա նախորդների ժամանակ արշավանքներ էր կազմակերպել Վրաց պետության դեմ։ Բացի այդ, Զաքարեն և Իվանեն հավանաբար նպատակ էին դրել ազատագրել նաև պատմական Հայաստանի հարավային շրջանները*[46]։

*1204/5 թվականին վրաց բանակը, որի մեջ զգալի ուժ էին հայկական զորաջոկատները, շարժվեց Խլաթի ամիրայության վրա, հասավ մինչև Մանազկերտ և Արճեշ*[47]։

*Հետևյալ տարին (1205/6) վրաց-հայկական զորքերը նորից արշավեցին Խլաթի ամիրայության դեմ, սակայն այս անգամ ծանր պարտություն կրեցին։*

*1206/7 թ. վրաց-հայկական միացյալ զորքերը Զաքարե ամիրսպասալարի հրամանատարությամբ պաշարեցին ու գրավեցին Խլաթի ամիրայությանը ենթակա Կարս քաղաքը*[48]։

*XIII դարի վրաց Անանուն հեղինակը վկայում է, որ Մխարգրձելիները, Կարսից բացի, այդ կողմերում գրավել էին Կարնիփորի, Վանանդի և Արաքսի ափին գտնվող բերդերը*[49]։

*Այս ամենից անհանգստացած Արդաբիլի սուլթանը 1208 թ. ապրիլին հանկարծակի հարձակվեց Անիի վրա, մեծ կոտորած և ավերածություն գործեց այնտեղ, գերեվարելով զգալի թվով բնակիչներ։ Միայն եկեղեցիներում սպանվում է 12000 մարդ։ Զաքարեն և Իվանեն, որոնք այդ ժամանակ գտնըվում էին Վրաստանում, իմանալով Անիի աղետի մասին պատասխան արշավանք են ձեռնարկում։ Գրավելով Արդաբիլը, Զաքարյանները վրեժ լուծեցին սուլթանից, մզկիթների մեջ սպանեցին 12000 մարդ և, գերելով սուլթանին իր ընտանիքով ու վերցնելով մեծ ավար, ետ վերադարձան։*

*«Եվ նրա (իմա վրաց գահակալի) ամբողջ թագավորությունը լցվեց անթիվ հարստությամբ, որ բերեցին Զաքարիան և Հովհանը (Իվանեն), և որի պատճառով մեծապես շնորհապարտ թագավորը նրանց շնորհեց շատ բերդեր և քաղաքներ ու երկրներ։ Եվ այսպես՝ աստծուն փառաբանող, ուրախու-*

---

44 Ղ. Ալիշան, *Հայապատում*, էջ 448։

45 Տե՛ս «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 31, 44։

46 Տե՛ս Հ. Մանանդյան, Քննական տեսություն...», հատ. Գ, էջ 141։

47 Տե՛ս *Ибн ал-Асир*, стр. 85.

48 Տե՛ս «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 20,36, 43։

49 Տե՛ս նույն տեղում, էջ 43։

թյամբ լի ապրում էին նրանք (Մխարգրձելիները), որոնք շրջակայքում գըտնըվողներից ստանում էին հարկեր (խարաջա) և անհամար ընծաներ...»[50]։

Ռազմական մրցակցությունը սելջուկյան իշխանությունների հետ խոշոր նշանակություն ուներ և լուծվում էր հօգուտ հզորացած վրացական թագավորության, թեև անհաջողություններ էլ լինում էին։

1208—1209 թթ. հայ-վրացական զորքերը ազատագրեցին Բագրևանդի շրջանը, Տուրուբերան նահանգի հյուսիսային գավառները, Մանազկերտ և Արճեշ քաղաքները և պաշարեցին Խլաթը, սակայն հաջողություն չունենալով, ետ վերադարձան[51]։ Հաջորդ տարին նոր արշավանք կազմակերպվեց Մանազկերտ-Խլաթի ամիրայության դեմ, որը նույնպես անհաջողությամբ վերջացավ։ Իվանեն անզգուշության պատճառով գերի ընկավ, Զաքարեն ստիպված վերացրեց Խլաթի պաշարումը, բանակցություններ վարեց Այյուբյանների հետ և 30 տարի ժամանակով խաղաղության դաշն կնքեց, նրանց զիջեց մի քանի ամրություններ և Իվանեի դուստր Թամթային կնության տվեց Խլաթի տիրակալ Մելիք Աուհադին[52]։ Այս դաշնագրից հետո Այյուբյանների հետ հաստատվեցին բարեկամական հարաբերություններ։

Խլաթի դաշնագրից հետո, երբ վրացական պետության թիկունքը հարավից և արևմուտքից ապահոված էր, 1210/11 թ. բանակը մի նոր մեծ արշավանք սկսեց Ատրպատականի դեմ. Նախճավանի ու Ջուղայի վրայով զորքերը շարժվեցին դեպի Մարանդ, Թավրիզ, Ղազվին։ Հաղթական արշավանքից վերադառնալիս ամիրսպասալար Զաքարեն հիվանդացավ և 1212 թ. մահացավ, թաղվեց Սանահնի վանքում, ուր գտնվում է նաև նրա հոր՝ Սարգիս մեծի գերեզմանը։ Զաքարեի մահից հետո գրեթե դադարեցին Վրաստանի պատերազմները շրջակա ամիրայությունների դեմ։ Դրանից հետո Իվանեն ազատագրեց միայն Ջարեքը՝ իր շրջակայքով և օգնեց Զաքարյան Վահրամ Գագեցուն դրավելու Շամքորը, իսկ 1219 թ.՝ նաև Որոտնը։

25-ամյա համառ մարտերի ընթացքում վրաց-հայկական զինված ուժերին հաջողվեց վերացնել Անի-Շիրակում և Դվինում հաստատված Շադդադյան և Կարսի սելջուկ-թուրքական ամիրայությունները, զգալիորեն թուլացնել ու խարխլել Գանձակի, Խլաթի Շահ-Արմենների, Դանիշմանների և Արտուխյան ամիրայությունների ռազմա-քաղաքական դիրքերը։

Այսպիսով, վրաց-սելջուկյան ռազմա-քաղաքական մրցակցության մեջ հաջողությունը հիմնականում Վրաստանի կողմն էր, որին մեծապես գործակցում էր Հյուսիսային Հայաստանը՝ Զաքարյանների գլխավորությամբ։ Այդ միասնությունը խոշոր նշանակություն ունեցավ ինչպես Վրաստանի, նույնպես և Հայաստանի համար։

Զաքարյանների գլխավորած ազատագրական հաղթական պատերազմների և նրանց տիրույթների մասին կարևոր տեղեկություններ են պահպանված Կիրակոս Գանձակեցու, Ստեփանոս Օրբելյանի երկերում, վրաց ժամանակագրություններում և վիմագիր արձանագրություններում։

---

50 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 23։
51 Տե՛ս Ибн ал-Асир, стр. 134.
52 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 165—166։

Հաղարծնի վանքի արձանագրության մեջ կարդում ենք. «Ամենակալ աստծու կամքով՝ այս մեր հիշատակագիրն է և մշտնջենավոր արձանը՝ Սարգիս մեծի որդիների, Բագրատունիների ազգից, Իվանեի և Զաքարեի։ Երբ աստծու նախախնամությունն իջավ արարածներիս վրա և հնարավորություն տվեց տիրելու մեր նախնիքների սեփական ժառանգությանը՝ նա մեր ձեռքը տվեց առաջ անառիկ Անբերդ դղյակը և թագավորանիստ Անի քաղաքը, և ապա Բջնի բերդը, Մարանդը մինչև Գավազանք դեպի Թավրիզ, Կարնո քաղաքը մինչև Խլաթ, Շաքին և Շիրվանը, Պարտավը մինչև Բելուկան և այլ բազում տեղեր, իրենց սահմանով...»[53]։



Զաքարե և Իվանե եղբայրների բարձրաքանդակը Հառիճում իրենց կառուցած եկեղեցու արևելյան ճակատին

«Սրանք (Զաքարեն ու Իվանեն),— գրում է Գանձակեցին,— քաջությամբ վարեցին շատ պատերազմներ և հայերի բազմաթիվ երկրներ, որ պարսիկների ու տաճիկների ձեռքին էին՝ առան նրանցից և սեփականացրին,— այն է՝ գավառները, որ գտնվում էին Գեղարքունի ծովի շուրջը, Տաշիրը, և Այրարատը, Բջնի քաղաքը և Դվինը, և Անբերդը, և Անի քաղաքը, և Կարսը, և Վայոց ձորը, և Սյունյաց աշխարհն ու այն բերդերը, քաղաքներն ու գավառները, որ գտնվում էին նրա շուրջը։ Նրանք հարկատու դարձրին և Կարնո քա-

53 Ս. Ջալալյան. Ճանապարհորդություն, Ա, էջ 131։ Տե՛ս նաև Հ. Մանանդյան. Քննական տեսություն. հ. Գ, էջ 143։

ղաքի սուլթանին. ավերեցին նաև Պարսկաստանի և Ատրպատականի բազմաթիվ գավառները. նրանք ընդարձակեցին իրենց սահմանները բոլոր կողմերից»[54]։

«Սրանք (Զաքարեն և Իվանեն),— վկայում է Օրբելյանը,— մեծ շանքով պարսիկների (իմա սելջուկների) ձեռից առան Հայոց երկրները։ Նրանք գրավեցին Առանից մինչև Ներքին Բասենը և Բարկուշատից մինչև Մժնկերտը։ Նրանք առան Կարսը, Վաղարշակերտը, Կաղզվանը, Սուրբ Մարին, Անին, Անբերդը, Բջնին և Գառնին, Դվին մայրաքաղաքը, Գարդմանը, Գանձակը, Ջաբեքը, Հերթը, Շամքորը, Շաքին, Պարտավը, Ջարաբերդը։ Նրանք առան 660 թ. (1211/2) Սյունիքը, Որոտնը, Բորոտանը, Բղենը, Բարկուշատը։ Եվ թեև այլևայլ թվականներին էին առնվել, սակայն ընդհանրապես սրանք առան և իրենց որդիները. և ազատեցին այս երկրները տաճկական դառն ծառայությունից»[55]։

Հայկական ազատագրված հողերն անցան Զաքարյաններին. բացառություն կազմեց Կարս քաղաքը։

---

54 Կիրակոս Գանձակեցի, էջ 163։
55 Ստ. Օրբելյան, էջ 391—392։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԶԱՔԱՐՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՆՈՐ ՏՆԵՐԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

## 1. ԶԱՔԱՐՅԱՆ ԵՐԵՔ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ

*Քսանհինգամյա ռազմական գործողությունների շնորհիվ ազատագրված էին պատմական Հայաստանի հյուսիսային, արևելյան, մասամբ և կենտրոնական նահանգները՝ Շիրակը, Արարատյան դաշտավայրը, Գուգարքը, Ուտիքը, Սյունիքը և Արցախը։*

*Զաքարյանները վրաց Բագրատունիներից ստանալով Հայաստանի ազատագրված նահանգները՝ մի մասը որպես սեփականություն, մի մասը՝ ի տիրապետություն, ստեղծեցին երեք առանձին իշխանություններ։*

*Ամիրսպասալար Զաքարեի իշխանությունը տարածվում էր իրենց ժառանգական կալվածքի՝ Լոռու մի մասի, Անի-Շիրակի Բագրատունյաց նախկին թագավորության, և այլ գավառների վրա՝ մինչև Բասեն կամ Մժնկերտ։ Իշխանության կենտրոնն էր Անին։ Զաքարյան տոհմի այս ճյուղը սկսած Զաքարեից իրեն վերագրել է Բագրատունյաց «շահնշահ» տիտղոսը, ելնելով այն բանից, որ Բագրատունյաց հողերի նկատմամբ ունեցել է քաղաքական և սեփականատիրական իրավունք, այլ խոսքով ժառանգորդն է դարձել նաև այդ տարածքի նախկին սեփականատերերի ավանդական տիտղոսի։*

*Իվանե աթաբեկի իշխանությունը տարածվում էր Լոռու մի մասի, Այրարատյան նահանգի արևելյան մի քանի շրջանների, Սևանա լճի շուրջը գտնվող գավառների, գլխավորապես Գեղարքունիքի, Սոդքի, Վայոց ձորի, հյուսիսարևելյան Սյունիքի ու մի քանի այլ շրջանների վրա։ Կենտրոնն էր Դվին քաղաքը, իսկ հետագայում՝ Բջնին։*

*Զաքարյան երրորդ իշխանությունը, համեմատաբար փոքր, պատկանում էր Զաքարեի և Իվանեի հորեղբայր Վահրամի Զաքարե որդուն, տարածվում էր Տավուշում, Փառիսոսում և Գարդմանում, Կենտրոնն էր Գագը։ Վահրամի մյուս որդին՝ Սարգիսը, իր Շալվա և Իվանե որդիներով իշխանություն էր հաստատել Ջավախքում։ Զաքարյան այս ճյուղը իշխանության հիմնադրի անունով կոչվել է նաև Վահրամյան։*

*Այս երեք իշխանությունների միջև փոխհարաբերությունները պայմանավորված էին տոհմի ավագ և ազդեցիկ ներկայացուցչի իրավական և փաստա-*

կան գերագասությամբ։ Ավագը Զաքարեն էր և քանի դեռ նա ողջ էր և վրաց արքունիքում գրավում էր ամիրսպասալարի պաշտոնը, նրա իշխանությունն էլ Հայաստանում մյուսների նկատմամբ համարվում էր գերագաս։ Զաքարեի մահից հետո, տոհմի ավագի իրավասությամբ և աթաբեկության բարձր պաշտոնին համապատասխան գերագասությունն անցավ Իվանեին։

Ազատագրված հողերում վերականգնվեց հայկական վարչական իշխանությունը և քաղաքական կյանքը։ Ստեղծվեց Հայկական ինքնավար ֆեոդալական իշխանապետություն, Զաքարյան տան գլխավորությամբ։ Այն բավականաչափ ընդարձակ էր, բարգավաճում էր տնտեսապես և հայ-վրացական զինական դաշնակցության շնորհիվ զերծ էր արտաքին վտանգներից։

Զաքարյան իշխանությունները ճանաչում էին վրաց Բագրատունի թագավորների գերագասությունը, այդուհանդերձ ժամանակակիցները Զաքարյաններին տրված հողերը չեն համարել Վրաց պետությանը կցված շրջաններ, այլ դիտել են որպես Զաքարյանների ֆեոդալական տիրույթ և ինքնուրույն իշխանություն։ Միայն Կարսի առթիվ ասվում է՝ «Այս մի քաղաքն ու բերդը (Թամարը) վերապահեց իրեն այն բոլորից, որ գրավել էր Զորագետից մինչև Արաքս, Գագից մինչև Գանձակ և Ջավախքից մինչև Սպեր»[1]։ Ըստ ժամանակագրի, Կարսի բնակիչները խնդրում են Թամար թագուհուց, որ «ոչ ոքի չհանձնի Կարսը... ինչպես Անին... և Դվինը, այլ իր թագավորությանը կցի...»[2]։ Եվ Կարսը դառնում է ընդհանուր պետական ենթակայության քաղաք, վրաց գահակալի կողմից նշանակված կառավարիչով և քաղաքային վարչությամբ։ Հովհան Ախալցխացին Կարս եկավ սոսկ որպես կառավարիչ, այն դեպքում, երբ Զաքարյաններին տրվածը դիտվել է որպես ժառանգական ֆեոդալական տիրույթ։

Արձանագրություններից և մատենագրական աղբյուրներից չի երևում, որ վրաց պետությունը Զաքարյանների ֆեոդալական իշխանությունից գանձել է հարկեր, քանի որ Զաքարյանները վրաց Բագրատունիների հանդեպ ունեցել են հիմնականում զինվորական ծառայության պարտականություն։

Այս տեսակետից ուշագրավ են վրաց աղբյուրներում պահպանված վկայությունները։ Ասվում է, որ Թամարը «...շնորհեց Սարգսի որդի Հովհաննին (Իվանեին) առաջնության և գործակալի (մսախուրթ-ուխուցեսի) պաշտոնը և ի պատիվ՝ Կայենն ու Կայծոնը, Գեղարքունիքով (Գելաքունիով) և այլ բազում հարկատու քաղաքներով, բերդերով ու երկրներով»[3]։ Նշանակում է, թե արքունիքին վճարվող հարկերի գանձման իրավունքն էլ տիրույթների հետ միասին շնորհվեց Զաքարյան իշխաններին։

Քարթլիս-ցխովրեբայի ուշագրավ մի վկայությունից երևում է, որ վրաց Բագրատունիներին հարկատու են եղել միայն մահմեդական ամիրայությունները։

«Երբեմն,— վկայում է վրաց Անանուն պատմիչը,— [Թամարն ու Դավիթը] անցնում էին (հայնկույս Լիխի) և վարում այնտեղի գործերը...։ Ապա անց-

---

1 Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները..., հատ. Բ, էջ 36։

2 Նույն տեղում, էջ 15։

3 Նույն տեղում, էջ 13—14։

նում էին Քարթլի, Հայք (Սոմխիթ), և կանգ առնում Դվինում, ուր նրանց մոտ գալիս էին հարկեր (խարաջա) [տալու] գանձակեցիք և վերին քաղաքացիները։ Գարնանը բարձրանում էին Հայք (Սոմխիթ), ստանալով հարկեր (խարաջա) Նախիջևանցուց և ապա գնում Կողա (Կոլա)՝ Արտահանի (Արտանի) գլուխը, ստանալով և այնտեղից հարկ (խարաջա), նաև Կարնո քաղաքից, Երզընկայից (Եզինկայից) և այլ շրջակա քաղաքներից»[4]։ Այս հարկատու գավառներն այդ ժամանակ գտնվում էին օտարների տիրապետության ներքո։

Դրությունն այլ էր Հայաստանի հարավային և արևմտյան նահանգներում։ Այստեղ նույնպես հայ-վրացական զինական գործակցությունը և խոշոր հաղթանակները օտարի լուծը թոթափելու մեծ հույս և ոգևորություն էին առաջացրել հայ բնակչության մեջ։ XII դարի 80-ական թվականների վերջին Սասունում Մամիկոնյան նախարարական տան շառավիղներից մեկը՝ Զորավանեյան-Մամիկոնյան (Թոռնիկյան) իշխան Վիգենի թոռը՝ Շահնշահ իշխանը, նպատակ ունենալով վերականգնել իր տոհմի նախկին անկախությունը, Շահ Արմեն Միրանի մահից հետո, ապստամբել էր Միրանին հաջորդած Շահ Արմեն Բեկթամուրի դեմ, գերի էր վերցրել նրան ու նրանից առել էր Թառձյան բերդը, որը գտնվում էր Սասունի և Տարոնի սահմանագլխին։ Վերջինս խոստացել էր ճանաչել Մամիկոնյան (Թոռնիկյան) իշխանի անկախությունը և ազատվել էր գերությունից, սակայն շուտով նենգ բռնակալը դրժել էր տված ուխտը և ճնշել ապստամբությունը. «... վերցրել էր նրանից ինչպես այդ բերդը, նույնպես և ամբողջ Սասունը, և հարկեր դրել եկեղեցիների ու վանքերի վրա»[5]։

Ճիշտ է, ազատագրական պայքարը Հայաստանի հարավում հաջողություն չունեցավ, սակայն վրաց ղորեղ տերության և Զաքարյան իշխանությունների գոյությունը նկատելիորեն զսպում էր Հայաստանում տեղծված մահմեդական ամիրայություններին և մեղմում օտար իշխողների վերաբերմունքը դեպի հարկատու բնակչությունը։

Հայաստանի ազատագրված նահանգներում ստեղծված Զաքարյանների իշխանապետությունը փաստորեն օժտված էր ներքին ինքնավարությամբ. աղբյուրներում այդ իշխանությունը հաճախ կոչվում է «թագավորութիւն»։ Զաքարյանների տոհմի մի քանի ներկայացուցիչներ՝ Զաքարեն, Իվանեն, Զաքարեի որդի՝ Շահնշահը, Իվանեի որդի Ավագը՝ հիշվում են «թագավոր», «արքա», «շահնշահ», «արքայազն», «կեսար» տիտղոսներով։

1198 թ. Հոռոմոսի վանքի «հայր Մխիթարի» արձանագրության, ինչպես և նույն թվականի Տայլարի արձանագրության մեջ ասված է, որ Մեծ Հայոց «բոլոր երկրի» տերությունը գտնվել է Զաքարեի և Իվանեի իշխանության տակ[6]։ Ոմն Սմբատի որդի Խլաթի 1206 թ. Հաղարծնում թողած արձանագրության մեջ նրանց իշխանապետությունն անվանված է «աշխարհակալ տէրու-

4 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 21։
5 Վարդան, էջ 133։
6 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 39, 42։

թյուն»[7]։ Անիի Առաքելոց եկեղեցու մի արձանագրության մեջ Զաքարեն և Իվանեն անվանված են «Թագաւորք Հայոց»[8]։

Իվանե Աթաբեկի կինը՝ Խոշաքը, իրեն անվանում է «Հայոց թագուհի» կամ «Վերափիշխող տանս Վրաց և Հայոց և նովին թագուհի»[9]։

Հայ իշխանավորների այս տիտղոսավորումները զուրկ չէին որոշակի իրավական հիմքից, որը բխում էր վրացական պետության կառուցվածքից և խոշոր իշխանությունների իրավասություններից։ Զաքարյան իշխանությունը հանդիսանում էր վրացական պետության յոթ «թագավորություններից» մեկը՝ «Սոմխիթի» թագավորությունը, քանի որ վրաց Բագրատունիները իրենց վասալ խոշոր ֆեոդալական իշխանությունները դիտում էին որպես «թագավորություններ»։ Այդ շեշտվել է հատկապես այն բանից հետո, երբ վրաց Բագրատունիները իրենց վերագրեցին «արքայից արքա» տիտղոսը։ Վրացական պետությունը, այսպիսով, իրենից ներկայացնում էր յոթ «թագավորություններից» դաշնակցային հիմունքներով կազմված մի ծավալուն քաղաքական միավորում։ Բացի այդ, Զաքարյաններն իրենց համարում էին Հայաստանի Բագրատունի թագավորների ժառանգորդներ։ Զաքարյան իշխաններին ու նրանց իշխանությանը տրված վերոհիշյալ տիտղոսները նրանց վարած ինքնուրույն քաղաքականությունը և հայ Բագրատունիների թագավորական տան ժառանգորդների դերում հանդես գալը, իհարկե, պատահական երևույթներ չէին։ Դրանք արդյունք էին քաղաքական այն իրադրության, որ ստեղծվել էր Անդրկովկասում XII դարի վերջին տասնամյակներում և XIII դարի սկզբներին։ Քաղաքական նպաստավոր պայմաններում հայկական պետականության վերականգնման՝ Զաքարյանների ակնկալությունները դրա որոշակի դրսևորումներն էին։ «Բոլոր պայմաններում պիտի կարծել, որ XII դարի վերջերում և մինչև մոնղոլական արշավանքների սկզբները Զաքարյանների զինական և քաղաքական, վարչական հաջողությունները հայ ֆեոդալական միջավայրում աճեցրել էին հայ քաղաքական ինքնորոշման զորեղ տրամադրություններ...»[10]։

Հայաստանի ազատագրված նահանգներում միասնական անկախ պետություն ստեղծելու համար անհրաժեշտ պայմաններ դեռևս չէին հասունացել։ Զաքարյանների իշխանապետությունը հարավից և արևմուտքից շրջապատված էր Այյուբյանների և Իկոնիա-Ռումի սելջուկ-թուրքական բավական զորեղ պետություններով, որոնք ամեն ջանք գործադրում էին վերականգնելու իրենց տիրապետությունը Հայաստանում։

Նման պայմաններում հայերի գործակցությունը վրացիների հետ մեծ խորհուրդ և նշանակություն ուներ, իսկ պառակտումը կարող էր կործանարար լինել։ Այդ լավ էին հասկանում երկուստեք, ուստի շարունակում էին պահպանել բարեկամական սերտ կապեր և զինական և քաղաքական համագործակցություն։

---

7 Տե՛ս նույն տեղում, էջ 47։

8 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 41։

9 Նույն տեղում, էջ 71, 74։

10 Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք առաջին, էջ 160։

Վրաց Անանուն պատմիչը գրում է. «Ապա թագավորի մոտ եկան Մխարգրձել Զաքարիա ամիրսպասալարն և Հովհան (Իվանե) գործակալը (մսախուրթուխուցն), և Վահրամ (Վարամ) Գագեցին, և զեկուցին. «...Այժմ հրամայեցեք Վրաստանի զորքին, որպեսզի պատրաստ լինի արշավելու Խորասան (Խվարասան)...»։ Եվ բոլորը՝ լսելով Մխարգրձելների կոչն արշավանքի ելնելու մասին՝ հավանեցին այս, և որոշեցին արշավել... (Թագավորն) օրհնեց դրոշակն ու արշավազորքը, և ուղարկեց Պարսկաստան։ Տվեց դրոշակը Զաքարիա ամիրսպասալարին, և նրանք (զորքերը) գնացին Պարսկաստան»[11]։

Այդ տեսակետից հետաքրքրական է Իվանեի աթաբեկության պաշտոն ստանալու մասին վրաց պատմիչի («Թագակիրների պատմականն ու գովասանքը» երկի հեղինակի) հետևյալ վկայությունը. «Ապա (թագավորը) կանչեց Զաքարիայի եղբայր Հովհան (Իվանե) գործակալին (մսախուրթուխուցեսին), և կամեցավ շնորհել նրան նրա եղբոր պատիվն ու տվեց նրան ամիրսպասալարությունը։ Իսկ Հովհանը (Իվանեն), զարմանալով այս առթիվ՝ ասաց թագավորին. «Այն պատիվը, որ դու ինձ շնորհեցիր, շատ և շատ մեծ է. բայց ես արժանի չեմ իմ եղբոր անունով կոչվել և չեմ ուզում ամաչել՝ գրավելով նրա տեղը, ուստի և շնորհիր ինձ աթաբակությունը, քանի որ Վրաստանում դուք՝ թագավորներդ՝ տակավին սահմանած չունիք աթաբակություն։ Սրանով դու կզորացնես քո շնորհն առ ինձ, քանի որ կարժանացնես բարձրագույն նոր պատվի և աթաբակություն կշնորհես ինձ, ինչպես ընդունված է սուլթանների մոտ, քանի որ սուլթանների օրենքով աթաբակը թագավորների և սուլթանների հայր և դաստիարակ է համարվում և այդ պատճառով էլ կոչվում է «աթաբակ»։ Սրանով կզորացնես քո շնորհը նախ և առաջ առ ինձ»։ Լսելով այս՝ թագավորը շնորհեց նրան աթաբեկություն, որը մինչ այդ Վրաստանի արքունիքում (թագավորների առաջ) ոչ ոքի չէր տրվել, և գործակալություն (մսախուրթխուցեսոբա) շնորհեց (թագավորը) Զաքարիա Գագեցու որդի Վահրամին (Վարամին), որը պատվական մարդ էր և արշավանքներում հաղթող։ Եվ այսպես նրանք միշտ Թամար թագուհու (թագավորի) մոտ էին»[12]։

Իվանեն լավ էր հասկանում, որ նոր պայմաններում քաղաքական առավել «բարձրագույն պատիվն ու դիրքը» կարող էր ապահովել նրան աթաբեկության պաշտոնը։

XIV դարի վրաց Անանուն «Ժամանակագրության» հեղինակը նշում է, որ «...աթաբակությունը բոլոր իշխաններից (էրիսթավներից) առավել գերազանց էր և նա արքունիքի վազիրն (վեզիրն) էր...»[13]։

Վրաց գիտնական Ս. Կակաբաձեն իր մի հոդվածում ընդգծում է Իվանե աթաբեկի խաղացած դերը վրաց արքունիքում[14]։

Հայ և վրաց աղբյուրների վկայությամբ XIII դարի առաջին տասնամյակում դավանաբանական վեճերն ու ընդհարումները բավական սուր բնույթ

11 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 23, տե՛ս և էջ 23։

12 Նույն տեղում, էջ 24։

13 Նույն տեղում, էջ 50։

14 Տե՛ս «Кавказское слово», 1916, № 99.

էին ստացել վրաց ու հայ հոգևորականության, անգամ Զաքարյանների ու հայ եկեղեցու միջև։ Իվանե աթաբեկն ընդունել էր քաղկեդոնականություն և հետևում էր վրաց դավանանքին, իսկ Զաքարե ամիրսպասալարը հավատարիմ էր մնացել հայ եկեղեցու դավանանքին, սակայն, իբրև պետական քաղաքական խոշոր գործիչ, լավ էր հասկանում հայ-վրացական զինակցության մեծ նշանակությունը, ուստի ձգտում էր հայ եկեղեցու ծեսերի մեջ մտցնել այնպիսի փոփոխություններ, որոնք մեղմացնեին երկու հարևան ժողովուրդների քրիստոնյա եկեղեցիների միջև եղած հակասությունները։ Նա հատկապես պնդում էր բանակում պատարագի համար շարժական սեղան ունենալու վրա, որը պատարագելու դյուրություն էր առաջացնում։ Հայ հոգևորականության մեծագույն մասը, սկզբում նաև ժամանակի ամենահեղինակավոր վարդապետ Զաքարե ամիրսպասալարի խոստովանահայր Մխիթար Գոշը, որն ըստ Գանձակեցու «մեծ համարձակութիւն ունի առ Զաքարէ», դեմ էր նրա նորամուծություններին։ Վեճին միջամտում են կաթողիկոսը և այդ ժամանակ Կիլիկիայում իշխող Լևոն Ա թագավորը։ Զաքարեն 1204/5 թ. Լոռիում հատուկ ժողով է հրավիրում։ Նրան մասնակցում են ժամանակի անվանի հայ հոգևորականները, որոնք և մերժում են ամիրսպասալարի պահանջը։ Վերջինս փորձում է բռնի ուժով իրականացնել իր նորամուծությունը։ Գոշը[15] հատուկ նամակով դիմում է Զաքարյան եղբայրներին, խորհուրդ տալով առանց բռնությունների լուծել դավանաբանական վեճը հայերի և վրացիների միջև։

Զաքարեն Անիում երկրորդ ժողովն է հրավիրում, օրինականացնելու համար իր պահանջները։ Նկատի ունենալով իր դժվարին վիճակը, Գոշը հրաժարվում է մասնակցելու ժողովին, սակայն ժողովի հրավիրվածները պնդում են, որ Գոշը անպայման մասնակցի և խնդրում են նրան չմերժել իրենց պահանջը։ Գոշը գալիս է Անի, սակայն Զաքարեն նրան թույլ չի տալիս մասնակցելու ժողովին և իշխանության ուժով անցկացնում է իր պահանջը։

Գոշը մի կողմից կշտամբում է ամիրսպասալարին ասելով՝ «Իշխանաբար ոչ էր պարտ առնել զայսպիսի իրս», մյուս կողմից ըստ էության կողմնակից լինելով Զաքարեին, դիմում է ժողովին նշելով. «Դուք հոգաք վասն ազգիս, զի մի՛ այդպիսի սովորութեամբ խառնիցին ընդ վիրս, և ես հոգամ վասն զօրավարիս, զի մի լիցի սա վրացի [իմա՝ հունադավան] իբրև եղբայր իւր»[16]։

Վեճը հարթված էր, հայ-վրացական համագործակցությունը տալիս էր իր դրական պտուղները։

## 2. ԶԱՔԱՐՅԱՆՆԵՐԻՆ ԵՆԹԱԿԱ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՏՆԵՐԸ

Զաքարյան իշխանություններում և նրանց հովանավորության ներքո ձևավորվեց ֆեոդալական իշխանությունների նոր հիերարխիա՝ գերադասության և վասալական կախվածության համապատասխան աստիճանավորմամբ։ Վերակենդանացան և երկրի քաղաքական կյանքում սկսեցին կարևոր դեր

15 Տե՛ս «Արարատ» ամսագիր, 1900, էջ 497 և 1901, էջ 126—127։

16 Կարապետ Եպիսկոպոս, Նիւթեր հայ մելիքութեան մասին, պրակ Բ. Էջմիածին, 1914, էջ 24։

խաղալ ոչ միայն ֆեոդալական նախկին տներից մի քանիսը, որոնք մանր իշխանությունների ձևով պահպանել էին իրենց գոյությունը սելջուկ-թուրքական տիրապետության ժամանակաշրջանում (Բագրատունիներ, Պահլավունիներ, Արծրունիներ, Մամիկոնյաններ և ուրիշներ), այլև առաջ եկան ֆեոդալական նոր տներ։ Սկզբնական շրջանում վրաց գահակալները, այնուհետև Զաքարեն և Իվանեն ժառանգական իրավունքով ազատագրված շրջանների կողմնակալ-կառավարիչներ էին նշանակում պատերազմական գործողություններում իրենց ծառայություններով ու սխրագործություններով աչքի ընկած զորավարներին և այս ճանապարհով ստեղծում ֆեոդալական նոր տըներ։ «...Կացուցանեն Թագաւորն Լաշայ և Աթաբէկն Իվանէ զԼիպարիտ կողմնակալ այսմ աշխարհի»,—գրում է Սյունյաց պատմիչը,— որովհետև «...նա եղև առաջնորդ առման Սիւնեաց և այլ բերդերոյն»։ «Նմանապէս և զմիւս իշխանն...,— շարունակում է պատմիչը,— զՎասակ Խաչենեցի... կացուցանեն կողմնակալ ի Վայոց ձոր գաւառիս»[17]։

Հին և նոր ֆեոդալական տներն ըստ իրենց տիրույթների տեղադրման մտնում էին Զաքարյան ֆեոդալական տան երեք ճյուղավորումների իշխանությունների մեջ և ենթարկվում էին նրանց։

Զաքարե ամիրսպասալարի տանը ենթարկվում էին Վաչուտյանները, Պահլավունիները, Արծրունիների և Մամիկոնյանների մնացորդները և մի քանի ուրիշ իշխանական տներ, Իվանեի տանը՝ Օրբելյանները, Խաղբակյանները, Դոփյանները և ուրիշներ։

Ամիրսպասալար Զաքարեին ենթակա ֆեոդալական իշխանություններից ամենամեծը և ամենաազդեցիկը Վաչուտյանների իշխանական տունն էր Արագածոտն գավառում։ Տոհմի հիմնադիրը՝ Վաչուտյան Սարգսի որդի Վաչեն, երկրի ազատագրման ժամանակ բավական մեծ ծառայություններ էր մատուցել Զաքարյանների բանակում, որպես նրանց ամենավստահելի ու քաջարի զորավարներից մեկը, ի հատուցումն այդ բոլորի, որպես սեփականություն այդ գավառում ստանում է ընդարձակ տիրույթներ և ամբողջ գավառի վերակացու-կողմնակալի պաշտոնը, միաժամանակ և իշխանաց իշխան տիտղոսը. «Ես Վաչէ իշխանաց-իշխան... սիրեցեալ ի սոցանէ (Զաքարեից և Իվանեից) մեծաւ պատուով վասն հաւատարիմ ծառայութեան իմո կոչեցայ ի գործ վերակացութեան գաւառիս»[18]։

Վաչեին, ինչպես գրում է Զաքարիա սարկավագը «...սիրեց Զաքարիան և սա դառավ նրա տան հավատարիմ մարդը։ Եվ անխարդախ ծառայության համար Զաքարիան նրան կարգեց իշխանաց իշխան և նրան մեծացրեց ու տվեց ամբողջ Արագածոտնի, Շիրակի, Նիգի, Անբերդի իշխանությունը, ու նրա բոլոր սահմանային շրջանների իշխանությունը, մինչև Երասխաձոր»[19]։

Վաչեն Զաքարյան իշխանության սյուներից մեկն էր։

Զաքարեի իշխանության սահմաններում ոչ պակաս դեր էին խաղում բավական ազդեցիկ դիրք գրավող Պահլավունիները, որոնց ֆեոդալական տի-

---

17 Ստ. Օրբելյան, էջ 397։

18 Կ. Ղաֆադարյան, *Հովհաննավանքը և նրա արձանագրությունները*, էջ 82։

19 «Զաքարիա սարկաւագի պատմագրութիւն», հաա. 3, էջ 12։

րույթները նախկին ծավալը չունեին և տարածվում էին Մարմաշենի, Բագնայրի, Լմբատի (այժմ Արթիկի մոտ) և այլ շրջաններում։ Հաճախ այս տոհմի ներկայացուցիչների ձեռքում են գտնվել Անիի ամիրայի (տվյալ դեպքում քաղաքապետի) պաշտոնը, ինչպես նաև ավանդական կարգով, ժառանգական իրավունքներով Անիի և Շիրակի եպիսկոպոսության պաշտոնը։ Այս տոհմից էին եպիսկոպոսներ՝ Ապիրատի որդի Սարգիսը, Ապուղամրի որդի Գրիգորը, Ամիր երկաթի որդի Բարսեղը և ուրիշներ, որոնք Անիի ամիրայի (քաղաքապետի) և այլ բարձր պաշտոնյաների հետ միասին կառավարում էին քաղաքը[20]։ Աշխարհիկ Պահլավունիներից էր իշխանաց իշխան Վահրամի թոռ և Ապուղամրի որդի Ղարիբ մագիստրոսը, որը 1225 թ. Մարմաշենի եկեղեցու մեծ արձանագրության մեջ անվանվում է «քաջ և արի զորական»[21]։

Իվանե աթաբեկի իշխանության սահմաններում ամենահզոր և ազդեցիկ ֆեոդալական տունը Սյունյաց Օրբելյաններն էին։ Այս մեծ իշխանության հիմնադիրը, ինչպես ասվել է, Լիպարիտն էր՝ վրաց երբեմնի հզոր Օրբելիների իշխանական տոհմից։ Վրաց թագավորի հրամանով Լիպարիտը Իվանե աթաբեկից ստանում է ընդարձակ կալվածներ «փոխան հայրենեաց» Վայոց ձորի արևելյան շրջաններում և Կոտայքում. «Ի դրանէն Բարկուշատայ մինչև Կոտայք» նստավայր ընտրելով Արփա ավանը և Եղեգիսը։ Լիպարիտն այստեղ ամուսնանում է իշխանաց-իշխան Բուբակի դստեր՝ Ասփայի հետ, մերվում Սյունիքի ազնվականներին և դառնում Սյունյաց հայ Օրբելյանների ֆեոդալական տան հիմնադիրը։

«Թագավորի հրամանով,—վկայում է Ստեփանոս Օրբելյանը,—(Իվանեն) տվեց Լիպարիտին «անանցական գրով» Նրա հայրենյաց փոխարեն՝ Հրաշկաբերդն իր սահմաններով և Վայոց ձորում այլ բազմաթիվ գյուղեր, Կոտայքում՝ Էլառը և ուրիշ շատ գյուղեր, Գեղարքունիքում՝ Համասրին և ուրիշ շատ գյուղեր և Կայենում՝ Աղստևն իր կերովը։ Եվ որովհետև սա էր Սյունիքի և այլ բերդերի առման առաջնորդը, ուստի և նա սրան տվեց նաև Սյունիքը, Որոտն ու Բարկուշատը և այլ բերդեր»[22]։

Իվանեի խոշոր վասալներից էր նշված իշխանաց-իշխան Բուբակը։ Նա Զաքարյանների աչքի ընկնող զորավարներից էր, ընդարձակ կալվածներ ուներ Գեղարքունիքում և Վայոց ձորում, հանդիսացել է Զաքարյանների արքունիքի «...հրամանատար ի վերայ ամենայն իշխանութեանց իւրոց, և աւագ հէջպաց»[23], «գլուխ իշխեցող և հրամանատար ամենայն իշխեցողաց և գլխաւորաց տան թագաւորութեան տեառն իւրոյ»[24]։ Հովհաննավանքի 1211 թ. արձանագրության մեջ գրված է. «...Մեծ սպարապետ Բուբայ տէր երկրիս»[25]։ 1223 թ. Նորավանքի արձանագրության մեջ, խոսելով Աղբերիս գյուղը Նորա-

20 Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 152։
21 «Վիմական տարեգիր», էջ 70—71։
22 Ստ. Օրբելյան, էջ 397։
23 Նույն տեղում, էջ 353։
24 Գ. Հովսեփյան, Խաղբակյանք. էջ 14։
25 «Վիմական տարեգիր», էջ 51։

վանքին ընծայելու մասին, Բուբակը նշում է, որ այդ գյուղը «իմ բազկաւս առեալ էի յայլազգեաց և իմ արեամբս թափեալ»[26]։

Բուբակը եղել է Զաքարյան արքունիքի մսախուրթ-ուխուցեսը, այլ խոսքով, վարել է այնպիսի պաշտոն, որպիսին սկզբնական շրջանում ունեցել է Իվանեն վրացական արքունիքում։

Իվանեի խոշոր վասալական ֆեոդալական տներից էր Վայոց ձորում և Հարևան շրջաններում XIII դարի սկզբին հաստատված Խաղբակյան մեծ իշխանությունը։ Խաղբակյանները ծագումով խաչենցիներ էին։ Սրանց իշխանության աթոռանիստ կենտրոնը XII դարում եղել է Հավապտուկը՝ Խոխանաբերդ ամրոցի դեմ Խաչենագետի վրա[27]։ Մխիթար Այրիվանեցու վկայությամբ, Վասակ Խաղբակյանը իր երեք որդիներով «…եկեալ ի Խաչենոյ, բազում արիութիւնս ցուցին»[28]։

XIII դարի առաջին տասնամյակում Վասակ Խաղբակյանը գործակցել էր Վայոց ձորի և Հարևան շրջանների գրավմանը։ Վասակը նշանավոր զորավար էր, Վայոց ձորի, Բջնիի ու Դվինի ազատագրման եռանդուն մասնակից։ Գեորգի Լաշա թագավորի և Իվանեի կողմից կուսակալ է նշանակվել Վայոց ձորում[29]։ Խաղբակյանների տիրույթները տարածվում էին Վայոց ձորի արևմըտյան մասում, Շահապունիքի, Վարաժնունիքի, Կոտայքի շրջանում, մի մասն էլ՝ Այրարատի նահանգում։ Վասակին է վերագրված նաև Եղեգյաց ձորի ամրոցների և Հրաշքաբերդի գրավումը։ Խաղբակյանների իշխանության կենտրոններն էին Սրկղունքը (ներկայումս Վերնաշեն) և Բոլորաբերդը։ Վասակին 1223 թ. փոխարինել է Պռոշ որդին, որն այդ թվականից մինչև 1284 թ. վարել է Զաքարյանների բանակի սպարապետի պաշտոնը, արի ու հմուտ զորավար է եղել, պետական ու ռազմական ականավոր գործիչ։ Պռոշի անունով իշխանական այդ տունը հետագայում կոչվել է Պռոշյան։ Այս Պռոշի և նրա որդու պատվերով և միջոցներով են շինվել Այրիվանքի (Գեղարդի) վիմափոր կառուցվածքները։

Վայոց ձորում, բացի Օրբելյաններից, Խաղբակյաններից և Բուբակից, կալվածներ ունեին Շահունեցիք և Մահևանեանք։ Վերջիններս Բաղաց կամ Կապանի իշխանական տոհմի մնացորդներն էին։

Շահունեաց տոմը իշխում էր Վայոց ձորի արևելյան կողմում՝ Հերհերում և նրա շրջակայքում, իսկ Մահևանեանք՝ ձորի արևմտյան կողմում, կենտրոն ունենալով Նրբույն բերդը—հին Վարդենիքը[30]։

Վայոց ձորի և Գառնիի միջև, Վեդի գետակի ակունքներում ընկած էին Մամիկոնյանների շառավիղների կալվածները։

Զաքարեն և Իվանեն չորս քույր ունեին՝ Վանենի, Դոփի, Խորիշահ և Նրջիս։ Վանենին ամուսնացել էր Մածնաբերդի Կյուրիկե Բ-ի որդի Աբաս Բ-ի

26 «Վիմական տարեգիր», էջ 51, 67։
27 Տե՛ս Գ. Հովսեփյան, Խաղբակյանք, էջ 29։
28 Մխիթար Այրիվանեցի. էջ 65։
29 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 397։
30 Տե՛ս Հ. Մանանդյան, հտ. Գ, էջ 155։

հետ։ XII դարի վերջին նա կառուցել տվեց Սանահնի նշանավոր կամուրջը Ձորագետի վրա՝ ի հիշատակ իր վախճանված ամուսնու[31]։

Դոփին ամուսնացել էր Հայոց Արևելյան կողմանց նախկին նախարարական թագավորական տոհմի շառավիղներից մեկի՝ Արցախի Հասան իշխանի հետ։ Դոփի անունով էլ իշխանական այդ տունը պատմության մեջ հայտնի է Դոփյան։ Նա որպես օժիտ ստացել էր Գեղարքունիքի մեծ մասը՝ Սևանա լճի ամբողջ հարավկողմը։ Ֆեոդալական այդ տան կալվածները տարածվում էին Թարթառ գետի վերին հովտում և նրան կից Սոթք գավառում։ Դոփյանների իշխանանիստ կենտրոնը հիմնականում եղել է Ծար գյուղաքաղաքը։

Խորիշահը ամուսնացել էր Խաչենի տեր Վախթանգի հետ, որի կալվածներն ընդգրկել են Խաչենի հարավային մասը։ Սրանց որդին էր Հասան Ջալալ Դոլան։ Այս Հասանի անունով էլ նրանց շառավիղները սկսեցին հետագա դարերում կոչվել Հասան-Ջալալյաններ։ Սրանց իշխանության կենտրոնն էր Հավապտուկը, Խոխանաբերդ ամրոցի հյուսիսային կողմում։ Վախթանգյանների տոհմը ցեղակից էր Վայոց ձորի Խաղբակյան-Պռոշյանների տոհմին[32]։

Դոփյանների և Վախթանգյանների տիրույթների մեջտեղում, Հաթերքի շրջանում իշխում էր Վախթանգ իշխանը, Կյուրիկե Բ-ի դստեր՝ Մամքանի որդին։ Իշխանական այդ տան կենտրոնն էր Հաթերքը։ Վախթանգի երկու որդիները մանուկ հասակում մահանում են, և Վախթանգի մահից հետո 1214 թ. նրա տիրույթը Իվանեն տալիս է Դոփյաններին[33]։

Խաչենը և նրա զինվորական ուժեղ ազնվականությունը խոշոր և խիստ կարևոր դեր են կատարել Զաքարյանների տիրապետության ժամանակաշրջանում։ Խաչենի իշխանական տոհմերը ոչ միայն իրենց ձեռքում ունեին Խաղբակյան, Դոփյան և Վախթանգյան մեծ իշխանությունները, այլև Իվանե աթաբեկի մոտ բարձր պաշտոնյաներ կամ գործակալներ էին, հեջուբ կամ կառավարիչ և նրա որդու խնամակալներ[34]։

Հայաստանի հյուսիսային շրջաններում վերակենդանացում ապրող իշխանական տների մնացորդներից էին Համազասպյան-Մամիկոնյանների մի ճյուղը Դսեղում, Արծրունյաց Ամիր-Քրդի տոհմը Մահկանաբերդում, Ուքանյանները և Սևադյանները Ձորագետում, Կյուրիկյան Բագրատունիների թագավորական տան շառավիղները Մածնաբերդում։

## 3. ԶԱՔԱՐՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԱՐՉԱԿԱՐԳԸ

Զաքարյան ֆեոդալական իշխանության մեջ սոցիալ-քաղաքական հարաբերությունները նույնպես կառուցված էին ֆեոդալական հիերարխիայի ըսկզբունքով։ Այդ հիերարխիայի գլուխ կանգնած Զաքարեն և Իվանեն վրաց արքունիքի պաշտոնյաներն էին և «Սավազիրոյի» (թագավորից, վեց վեզիրներից և երկու օգնականից կազմված պետական խորհուրդ) անդամներ։ Հայկա-

31 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Սանահնի վանքը և նրա արձանագրությունները, էջ 185։
32 Տե՛ս Գ. Հովսեփյան, Խաղբակյանք..., էջ 28—34։
33 Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 158։
34 Տե՛ս նույն տեղում, էջ 159։

կան հին և նոր իշխանական տները Զաքարյանների վասալներն էին։ Վերջիններս իրենց տիրույթներում նույնպես լիակատար տեր ու տնօրեն էին և ունեին իրենց վասալները՝ ի դեմս մանր իշխանական տների և մանր հողատեր ազատների։

Զաքարյանների տիրապետության շրջանում վասալական կախումը սովորաբար արտահայտվել է ծառա և ծառայություն տերմիններով, իսկ ֆեոդալական հիերարխիայի տարբեր աստիճաններում գտնվող ֆեոդալների՝ իրար նկատմամբ ունեցած վասալական կախվածությունը իմաստավորել են «պատրոն», «պարոն», «պարոնտեր» տերմինները։ Որոշ չափով պահպանվել էին նաև «տէր», «իշխան», «տերանց-տէր» հասկացությունները։ Վերջիններս առանձին գավառներում որոշակի պայմաններում շարունակել են օգտագործվել նաև իրենց նախկին իմաստով՝ գահակալ-տիրակալ ժառանգական տիրապետության իմաստով։

Ֆեոդալական հիերարխիայի բոլոր աստիճանների վրա կանգնած վասալների համար պարտադիր էր պատրոնի կամ տիրոջ ձեռնարկած ռազմական գործողություններին իրենց զինական ուժերով մասնակցելը։ Յուրաքանչյուր ֆեոդալ-հրամանատար պարտավոր էր վեց ամիս կամ մեկ տարի ժամանակով իր մարդկանց ապահովել անհրաժեշտ զինամթերքով և պարենով։

Բացի վերոհիշյալ պարտականությունից, վասալային կախումը, ինչպես միշտ, այս շրջանում էլ արտահայտվում էր հարկատվությամբ։

Հիշատակված պարտականություններից բացի, բոլոր իշխանները պարտավոր էին պատերազմական ավարից բաժին տալ իրենց պարոնին և եկեղեցուն, կատարել զանազան (օրինակ, կամուրջների, ճանապարհների, ջրանցքների, եկեղեցիների, վանքերի) շինարարական աշխատանքներ։

Զաքարյան տոհմի երեք ճյուղերի իշխանություններում խոշոր վասալները վարում էին զանազան պաշտոններ՝ գործակալ, կողմնակալ, սպարապետ, հեջուբ, ամիրա և այլն, իսկ իրենց տիրույթներում համարվում էին տանուտեր, գահերեց իշխաններ, իսկ ոմանք կրում էին «իշխանաց-իշխան» տիտղոսը։ Սրանց տիրապետությունները աղբյուրներում հաճախ հիշվում են «իշխանութիւն», «տիրապետութիւն», «տէրութիւն» բառերով։

Զաքարյանների ֆեոդալական իշխանություններն ունեցել են իրենց պետական-վարչական պաշտոնեության ցանցը, իշխանական արքունիքը, որն աղբյուրներում հիշվում է «տուն»[35] բառով և դատական ատյանը՝ «դիվան»[36]։ Արքունիքի բարձրաստիճան պաշտոնը համարվել է արքունիքի վեզիրը՝ մսախուրթ-ուխուցեսը[37], և, ինչպես նշվեց, այդ պաշտոնը առաջինը վարել է իշխանաց-իշխան, սպարապետ Բուբակը, իսկ հետո իշխան Խորասը։ «Իշխանն պատրոն, Խոռաս որդի ամիր Սարգսին, որ էր եղբայր մօր Կեսառուաց հայոց և վրաց և Ափխազաց բարեպաշտին և աստուծով զօրացելոցն մեծին Զաքարէին և Իւանէին... հաւատարիմ ծառայութեանն իւրոյ ընկալեալ զհատուցումս մեծաւ պատուով պատուեցաւ ըստ Վրացն բարբառոյ մսախուրթու-

35 Մատենադարան, ձեռ. № 1519, թերթ 295ա, 295բ։

36 Ստ. Օրբելյան, էջ 354։

37 Գ. Հովսեփյան, Խաղբակյանք..., էջ 14։

խուցէս, որ ըստ մերումս թարգմանի գլուխ իշխեցող, և հրամանատար ամենայն իշխեցողաց և գլխաւորաց տան թագաւորութեան տեառն իւրոյ»[38]։

Կարևորագույն հարցերի քննարկման համար «դիվանում» հրավիրվում էր յուրահատուկ պետական բարձրագույն խորհուրդ, որին մասնակցում էին աշխարհիկ և հոգևոր բարձրաստիճան դիրք գրավող մարդիկ և պետական պաշտոնեության ներկայացուցիչները[39]։

Զաքարե ամիրսպասալարի մահից հետո մի առ ժամանակ մեծանում է Դվինի՝ Իվանեի իշխանանիստ քաղաքի վարչական կենտրոնի դերը, իսկ Անին շարունակում է մնալ Զաքարե ամիրսպասալարի ժառանգների իշխանանիստ քաղաքը։

Արքունի բարձրաստիճան պաշտոններից էր և սպարապետությունը։ Սկզբնական շրջանում այն գտնվում էր Զաքարյան տան ներկայացուցիչների ձեռքում։ Հետագայում, երբ Զաքարեն և Իվանեն վրացական արքունիքում ձեռք են բերում պետական պաշտոններ, սպարապետությունը հանձնվում է Խաղբակյան Վասակ իշխանին, իսկ 1223 թ. նրա Պռոշ որդուն, որն այն վարել է շուրջ 60 տարի։

Հայկական զինված ուժերը վրացական բանակի հետ գործակցելիս ունեին իրենց սպարապետը։ Սրա անհրաժեշտությունը բխում էր նաև այն բանից, որ վրաց-հայկական ուժերը միշտ չէ, որ միասին էին հանդես գալիս։ Որոշ դեպքերում հայկական բանակը առանձին էր գործում։ Այն դեպքում, երբ ամբողջ վրաց բանակն էր գործում, իր կազմում ունենալով հայկական զորագնդերը, պատմիչները նշում են «Թամարի զորքը» կամ «վրացիք» կամ «վրաց միացյալ ուժերը», իսկ այն դեպքում, երբ հայկական ուժերն են գործել, հաճախ շեշտվում է «Մխարգրձելիներր գնացին», «Մխարգրձելիները հաղթեցին» և այլն[41]։

Զաքարյան տան երեք ավագ ներկայացուցիչների իշխանությունները և կողմնակալ ֆեոդալական տներն ունեին իրենց սեփական զորքը, դրոշը, պատերազմական փողը[41]։

Պետական-վարչական ու զինվորական բարձրաստիճան պաշտոն էր նաև կողմնակալ-կուսակալ վերակացուների պաշտոնը։ Կողմնակալ-կուսակալները իրենց վստահված տիրույթներում հանդես էին գալիս որպես կենտրոնական իշխանության քաղաքական-վարչական ներկայացուցիչներ՝ օժտված վարչական-դատական-ֆինանսական ֆունկցիաներով, միաժամանակ և լիակատար ինքնավարությամբ։

Աղբյուրների վկայությամբ Զաքարյանների իշխանության սահմաններում երեք հիմնական կողմնակալություններ էին ստեղծվել. Սյունիքում՝ Օրբելյանները, Այրարատում՝ Վաչուտյանները և Վայոց ձորում՝ Խաղբակյան-Պռոշյանները։ Նրանք Զաքարյանների արքունիքի գործակալներն էին։ Տարսայիճ Օրբելյանի մահարձանի վրա գրված է. «...այս է հանգիստ արքայաշուք կողմնակալին, հզօր և մեծ գործակալին և քաջապահ մենամարտին...»[42]։

38 Մատենադարան, ձեռ. № 1519, թերթ 295ա և 295բ։

39 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 255—356։

40 «Վրաց աղբյուրները...», հատ. Բ, էջ 12, 14, 22 և այլ էջերում։

41 Տե՛ս Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 92, Մխիթար Այրիվանեցի, էջ 65։

42 «Վիմական տարեգիր», էջ 131։

Պետական-վարչական բարձրաստիճան պաշտոններից էր և «ամիրայություն»։ Այդ պաշտոնի իրավասությունը և դերը արտահայտվել են քաղաքային և գավառային ներքին կյանքի, առևտրականների և արհեստավորության նկատմամբ վերահսկողությամբ, հարկադրման և հարկահանման գործի կարգավորմամբ, զորահավաքի, ինչպես և քաղաքի պաշտպանության դեպքում բնակչության ուժերի կազմակերպմամբ։ Ամիրաներն իրենց այդ ֆունկցիաներն իրականացրել են քաղաքային խորհուրդների կամ վարչությունների միջոցով։

Բարձրաստիճան պաշտոնյաներ էին նաև «հեջուբ»-ները[43]։ Սրանք Զաքարյան երեք ճյուղավորումների իշխանություններում և մյուս խոշոր ֆեոդալների տիրույթներում կատարում էին մսախուրթ-ուխուցեսի ֆունկցիաները։ Վիմական արձանագրություններից մեկում գրված է «Ես, Գրիգոր, հեջուբ ամիրսպասալար Աւագին որդի Սմբատայ որդւոյ մեծին Վախթանգայ, կողմնապետաց աշխարհին Արցախոյ, առեալ աթաբեգէ Իւանէիս եւ իւրեան ազգի առաջնորդ կացոյց...»[44]։ Հեջուբի պաշտոնը համազոր էր իշխանական արքունիքի վերակացուի՝ սենեկապետի պաշտոնին[45]։

Քաղաքներում ձևավորվել էր քաղաքային վարչությունը քաղաքապետի՝ ամիրայի գլխավորությամբ, իսկ նրա կազմի մեջ մտնում էին եպիսկոպոսը, դատավորը, քաղաքի ավագները, նրանց թվում և քաղաքի թաղապետները, որոնք կոչվում էին «տանուտերք»։

Գյուղական շրջաններում վարչական ու հարկահավաքման գործը վարել են «ձեռնավոր»-ները։ Ոստիկանական ստորին պաշտոնյաներն անվանվել են «էվան»-ներ, իսկ բնամթերքով հավաքված հարկերի մթերապետը անվանվել է «մուճուր»։

Մեծ գյուղերն ու ավաններն ունեցել են իրենց գյուղապետները, որոնք կոչվել են ռայիսներ։ Այսպես, 1210 թ. Բագնայրի արձանագրության մեջ հիշատակված է Օշական գյուղի ռայիսը՝ «Պարսիմո որդի Հասանայ», 1224 թ. Բագարանի արձանագրության մեջ՝ Բագարանի ռայիս Վարդը։ Նորադուսի 1211 թ. արձանագրության մեջ Մխիթար Փեճարենց Դավթի որդին հաղորդում է, որ ինքը Նորադուս մեծահռչակ գյուղի առաջնորդ է կարգվել մեծն Իվանեի հրամանով[46]։

## 4. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Զաքարյանների օրոք իշխող դասակարգի վերնախավին պատկանում էին «բնակավոր» ժառանգական իշխանական տոհմերը՝ Զաքարյանների կողմից առաջ քաշված կողմնակալ-կուսակալ իշխանական տները։ Սրանք կրում էին «մեծ իշխան», «տանուտեր», «գահերեց իշխան», «իշխանաց-իշխան», «մեծ պարոն», «պարոնաց պարոն», «պատրոնաց պատրոն» և այլ տիտղոսները։ Ֆեոդալական դասի միջին խավին պատկանում էին Զաքարյանների վասալ-

43 Տե՛ս Դ. Հովսեփյան, Խաղբակյանք..., էջ 21։

44 «Վիմական տարեգիր», էջ 43։

45 Տե՛ս Խ. Սամվելյան, Հայ հին իրավունքի պատմություն, հատ. I, էջ 241—242, Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 171։

46 «Վիմական տարեգիր», էջ 50, տե՛ս նաև էջ 52, 68։

ների վասալները, որոնք կոչվում էին «իշխան», «պարոն», «պատրոն» և այլն։ Ինչպես վերին, այնպես և միջին խավի ներկայացուցիչների զգալի մասը պաշտոնավարում էր Զաքարյանների արքունիքում և բանակում։ Բարձր պաշտոնեության և առևտրա-վաշխառուական խավի այն ներկայացուցիչները, որոնք հողային զգալի տիրույթներ և հասութաբեր հաստատություններ ձեռք բերելով ֆեոդալականանում էին, ըստ իրենց տիրույթների չափի և կարողության տեղ էին գրավում խոշոր կամ միջին հողատերերի շարքում։

Զաքարյանների տիրապետության շրջանում ազատագրված Հայաստանը տնտեսական և մշակութային նշանակալից վերելք ապրեց, առաջադիմեց երկրագործությունը, բարձր զարգացման հասան արհեստները, առևտուրը, քաղաքային կյանքը։ Ընդարձակվեց ապրանքային արտադրանքը, զգալիորեն զարգացավ առևտրա-վաշխառուական կապիտալը, որը աշխատավոր բնակչության կեղեքման գործում ետ չէր մնում ֆեոդալներից։

Աշխարհիկ և հոգևոր խոշոր տնտեսությունների վերականգնումը, նորերի առաջացումն ու զարգացումը և նրանց մասամբ ներգրավումը ապրանքա-փոխանակային հարաբերությունների մեջ, նորից առաջացնում էր հողին ամրացված և ֆեոդալների կալվածները մշակող ճորտ գյուղացիության անհրաժեշտությունը։ Ուստի գյուղացիության հողազրկման և ճորտացման պրոցեսը վերսկսվեց ու խորացավ, մանավանդ Հայաստանի հյուսիսային և արևելյան նահանգներում։

XII դարի վերջին տասնամյակներից Զաքարյանների տիրապետության տակ անցած Հայաստանի շրջաններում ֆեոդալական հողատիրության և հողօգտագործման նախկին ձևերն ու հարաբերությունները ոչ միայն վերականգնվեցին, այլև ավելի ամրապնդվեցին ու խորացան։

XI—XII դարերից «հայրենիք» տերմինը որոշ զարգացում է ապրում։ Այն իր սոցիալ-տնտեսական և իրավական բովանդակությամբ, ժամանակի հասկացությամբ, համապատասխանում էր մահմեդական երկրներում գոյություն ունեցող սեփականատիրական հողատիրության «մուլք» հասկացությանը։ Արաբական տիրապետությունից ժառանգություն մնացած այդ տերմինը նշանակում էր ոչ միայն հողատիրության նշված կատեգորիան, այլև, ընդհանրապես, սեփականություն կազմող անշարժ ունեցվածք, լիներ դա կալվածք, այգի, արտ, տուն, ձիթհան, ջրաղաց, քարավանատուն և այլն։ Հայկական միջավայրում նույնպիսի լայն իմաստ ունեցել է «հայրենիք» տերմինը։ Ստեփանոս Օրբելյանի մոտ «հայրենիք» է և՛ հողը, և՛ գյուղն ու նահանգը, օրինակ, Էլիկում Օրբելյանի համար[47], և՛ բերդն ու ագարակը[48], ինչպես և տունը, ջրաղացը, բաղնիքը, կրպակը, մարագը, ձիթհանքը և այլն։

Այդ դարերից սկսած հողատիրության «հայրնիք» հասկացության իմաստըն են արտահայտել նաև «ժառանգություն», «բաժին», «հայրենաբաժին» բառերը։ Ստ. Օրբելյանի մոտ հաճախ ենք հանդիպում՝ «...անխախտ հայրե-

47 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 431։

48 Տե՛ս նույն տեղում, էջ 366։

նիք էր և ժառանգութիւն», «նաև բազում պարգևս և ժառանգութիւնս ընծայեցին...», «...իմ. հալալ հայրենաբաժին»[49] և նման արտահայտությունները։

Աղբյուրների վկայությամբ նշված ժամանակաշրջանում «հայրենիք» էր համարվում նաև «դրամագին» կամ «գանձագին» կալվածքը, գյուղը, ջրաղացը և այլ անշարժ ունեցվածքը, որը ժառանգաբար անցնում էր սերնդե-սերունդ։ Հիմնվելով մատենագրական և վիմական աղբյուրների վկայությունների վրա, կարելի է ենթադրել, որ «գանձագին», «դրամագին» հայրենիքի նոր տիրոջը անցնում էին նախկին հողատիրոջ բոլոր իրավասությունները, այսինքն՝ նա կարող էր այդ հողի վրա սեփական տնտեսություն վարել կամ էլ սահմանված չափով հավելյալ արդյունք ստանալ։

«Հայրենիք» էին համարվում նաև «արեամբ թափեալ» և «բազկաւ առեալ», այսինքն՝ ռազմական ուժով նվաճված հողերը։ «Թրով առածն ու ոսկւով գնածն միապէս հայրենիք են» կամ «...և ահա այս կրկին հաստատութիւն եղև հայրենեաց նոցա. զի առաջինն թրով առած էր... և երկրորդ՝ թրքայատուր...»[50]։

Զաքարյան ֆեոդալական իշխանության առաջացման շրջանում հողատիրության «պարգևականք» ձևը, շնորհիվ քաղաքական նոր իրադրությունների, բավական լայն չափեր ընդունեց երկրի հյուսիսային, կենտրոնական և արևելյան նահանգներում։ Զաքարյան տոհմի երեք ճյուղերը այդ եղանակով տիրացան ամբողջ հյուսիս-արևելյան Հայաստանին։ Զաքարյաններն ընդարձակ տիրույթներ էին նվիրում իրենց վասալներին, իսկ վերջիններս կալվածներ էին տալիս իրենց ազատներին՝ զինվորական ծառայության դիմաց։ Հիմնականում ահա այդ կալվածներն էին համարվում «պարգևականք»։

Շնորհիվ այն բանի, որ ժառանգական հողատիրությունը Հայաստանում դարերի պատմություն ուներ, իսկ պայմանական հողատիրությունն էլ շատ շուտով վերածվում էր ժառանգականի, «հայրենիք» և պայմանական հողերի միջև եղած տարբերությունը զարգացած ֆեոդալիզմի այս դարաշրջանում աստիճանաբար ջնջվում էր։

Իրավամբ, XII դարի վերջերից սկսած աղբյուրներում «հայրենիք» բառը գործ է ածվում մի դեպքում ժառանգական ու ոչ պայմանական սեփականատիրական հողատիրության, մյուս դեպքում պայմանական հողատիրության իմաստով։

Այս շրջանում վանքերի խոշոր տնտեսություններն ապրում էին իրենց զարգացման ու ծաղկման շրջանը։ Հզոր բազմաթիվ կենտրոններ հողային հսկայական տարածությունների տեր էին։ Ակնառու է Տաթևի վանքի տնտեսական հզորացումը. XII դարի վերջին վանքն ուներ 50 սեփական գյուղ, ավան, ագարակ, նաև՝ ռազմական առուներ, ձկնորսարաններ, անտառահոտեր, մարգագետիններ, խոտհարքներ, ջրաղացներ, գործատներ, գոմեր, կալեր և զանազան այլ անշարժ ունեցվածք։ Խոշոր հողատերեր էին նաև Վայոց ձորի Նորավանքը, Հաղբատը, Նոր-Գետիկը, Հաղարծինը, Գեղարդա վանքերը, Հովհանավանքը, Գանձասարը և շատ այլ վանքեր։ Վանքերը գյուղատնտեսա-

49 Ստ. Օրբելյան, էջ 321, 412, 491, 494։

50 Նույն տեղում, էջ 411։

թյունից, անասնապահությունից և տնտեսական այլ զբաղմունքներից բացի, ինչպես վկայում են աղբյուրները, զբաղվել են նաև առևտրա-վաշխառուական գործարքներով։

XII—XIII դարերում երկրի հյուսիսային, կենտրոնական և արևելյան նահանգներում համայնքների մի մասն արդեն ճորտացված էր, մի մասը գտնվում էր ֆեոդալական կախվածության մեջ։ Նախկին իմաստով ազատ, իրենց հողերի տեր ու տնօրեն գյուղական համայնքները քիչ էին և իրենց գոյությունը պահպանում էին լոկ որպես անցյալի մնացուկ։ Այդ տեսակետից դրությունը բարվոք չէր, մանավանդ երկրի հարավային ու արևմտյան շրջաններում։

* * *

Այս ժամանակաշրջանում երկրագործությունը և անասնապահությունը ավելի զարգացան և առաջադիմեցին, նպաստելով երկրի նոր, աչքի ընկնող տնտեսական վերելքին։ Ավելի ընդարձակվեց տեխնիկական կուլտուրաների մշակումը և շերամապահությունը։ Մեծացավ գյուղատնտեսական մրթերքների վերամշակումը և ապրանքայնացումը։

Գյուղատնտեսական արտադրանքի մեջ բավական մեծացել էր այգեգործության և խաղողագործության տեսակարար կշիռը։ Այդ մասին են խոսում վիմական արձանագրություններում և Ստեփանոս Օրբելյանի մոտ շատ հաճախ հանդիպող այգիների առուծախի, նվիրատվությունների, նրանցից վերցվող հարկերի մասին եղած հիշատակությունները։

Այն հանգամանքը, որ դատաստանագրքերում առանձին հոդվածներ են նվիրվել այգեգործության և խաղողագործության պահպանմանն ու զարգացմանը[51], նույնպես ցույց է տալիս, թե տնտեսության մեջ ինչպիսի կշիռ են ունեցել այդ ճյուղերը։

Այգեգործության մակարդակի և այգեմշակման եղանակների մասին բավական տեղեկություններ են պահպանվել Ներսես Շնորհալու և որոշ չափով Հովհաննես Երզնկացու մոտ։

Գինեգործությունը երկրի տնտեսության մեջ նույնպես ունեցել է որոշակի տեսակարար կշիռ և հանդիսացել է հարկադրման օբյեկտներից մեկը։ Վիմական արձանագրություններում պահպանված հարկերի տեսակների մեջ հիշված է և «գինոյ խալէն»։

XII դ. վերջերին և XIII դ. առաջին երրորդում տնտեսական վերելք տեղի էր ունենում ոչ միայն Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում, այլև Մերձավոր Արևելքի համարյա բոլոր երկրներում։ Այս երևույթը նկատելի էր նաև Հայաստանի հարավային և արևմտյան նահանգներում։

XIII դարի առաջին քառորդի պարսկերեն աշխարհագրական անանուն երկում նշվում է, որ կրկին շենացել էին Էրզրումի, Երզնկայի, Մանազկերտի, Բիթլիսի նահանգները, որոնք առատ են բարիքներով[52]։

51 Տե՛ս Մխիթար Գոշ, 49, 79 և 121 հոդվածները, Սմբատ սպարապետ, ՄԱ հոդվածը։

52 «Ученые записки Института востоковедения», 1954, т. VII.

* * *

Անասնապահության զարգացման բարձր մակարդակի մասին է խոսում այն փաստը, որ ինչպես անասունները, հատկապես ոչխարները, ձիերը, ջորիները, այնպես էլ անասնապահական որոշ մթերքներ հանդիսացել են արտահանման առարկա։ Այդ մասին որոշակի վկայություններ են պահպանել արաբական աղբյուրները։ XIII դարի պարսիկ Անանուն հեղինակը Սուրմարիից արտահանվող ապրանքների շարքում հիշատակում է հիանալի արագընթաց ձիեր, իսկ Կարսից՝ ոչխարներ[53]։

Աղբյուրների առանձին վկայություններից պարզվում է, որ հայ շինականն այժմ համեմատաբար ավելի լայն չափերով էր կիրառում պարարտացումը, մոլախոտերի հեռացումը, սերմի ընտրությունը (սելեկցիան), պտղատու ծառերի պատվաստումը, այգիների վնասատուների ոչնչացումը, անգամ քուժումը։

Ինչպես նախորդ շրջաններում, այնպես էլ այս ժամանակաշրջանում երկրում գյուղատնտեսության զարգացման ամենակարևոր նախապայմանը ոռոգումն էր, հատկապես դաշտային շրջաններում։

XII դարի երկրորդ կեսին և XIII դարի առաջին քառորդում ոչ միայն վերականգնվեց ոռոգման հին ցանցը, այլև անցկացվեցին նոր ջրանցքներ, առուներ, կառուցվեցին նոր ջրամբարներ։ Դժբախտաբար XII—XIII դարերի աղբյուրները շատ քիչ տեղեկություններ են պահպանել ոռոգման վիճակի և նրա հետ կապված շինարարական աշխատանքների մասին։ Եղածներն էլ հիմնականում վերաբերում են վանքապատկան տնտեսություններին, վանքերին նվիրաբերվող կամ վաճառվող ոռոգելի ջրի աղբյուրներին։

---

53 Տե՛ս նույն տեղում։

### ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՔԱՂԱՔՆԵՐԻ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ XII—XIII ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. ԱՊՐԱՆՔԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Սելջուկյան արշավանքների ժամանակ քաղաքները ծանր հարվածներ ստացան՝ ենթարկվելով կողոպուտի և ավերածության, իսկ հռչակավոր Արծն քաղաքը հիմնահատակ ավերվեց և հրկիզվեց։ Քաղաքային աշխարհազորի քաջարի պաշտպանները մինչև վերջին շունչը կռվեցին, տալով մեծամեծ զոհեր, մյուսները գերի քշվեցին, իսկ բնակչության մնացած մասը փոխադրվեց այն ժամանակ դեռևս բյուզանդացիների ձեռքում գտնվող Կարնո քաղաքը։

Անին, Դվինը, Կարսը, Մանազկերտը, Նփրկերտը և մյուս քաղաքները մեծապես տուժել էին և երկար ժամանակ նախապայմաններ չկային, որպեսզի բուժեն իրենց վերքերը։ Անիի պեղումները ցույց են տալիս, որ քաղաքների վերականգնումը և քաղաքային կյանքի նոր վերելքը սկսվեց սելջուկյան արշավանքներից շուրջ հարյուր տարի անց՝ XII դարի կեսերին։ Միայն այդ ժամանակներից են սկսում Անիի ավերված շենքերի փլատակները հարթել և նորերը կառուցել։ Այդքան երկար ընդմիջումը բացատրվում է ֆեոդալական հասարակությանը բնորոշ դանդաղ զարգացմամբ և այն բանով, որ սելջուկները, թեև չկարողացան իրենց քոչվորական տնտեսաձևը փաթաթել նվաճված ժողովուրդների վզին, սակայն երկար ժամանակ էր հարկավոր, մինչև նրանք յուրացնեին նվաճված երկրների առոգելի երկրագործական և քաղաքային արհեստագործական արտադրության վրա հենվող տնտեսություն վարելը։

XII դարի կեսերից սկսվում է քաղաքների նոր վերելքը, որը պայմանավորված էր ողջ Մերձավոր Արևելքում տեղի ունեցող ապրանքային արտադրության և առևտրի բավականաչափ արագ զարգացմամբ։

Դրա գլխավոր նախադրյալը աշխատանքի հասարակական բաժանման խորացումն էր, արհեստների ավելի ու ավելի մեծ չափերով քաղաքներում կենտրոնանալը, գյուղից քաղաքի անջատման խորացումը և նրանց միջև ապրանքափոխանակության անընդհատ աճը, ինչպես և միջազգային առևտրին սեփական արտադրանքով Հայաստանի մասնակցության ընդարձակումը։

Երկրագործական և անասնապահական ապրանքների շատ տեսակներ՝ հացահատիկները, ընդեղենները, խաղողն ու գինին, մրգերը, բամբակը, մե-

տաքսը, անասունները, բուրդը, կաշին, մորթին և այլն ավելի մեծ չափերով դառնում էին առ ու ծախի առարկա։ Դրանց մի մասը բավարարում էր քաղաքային բնակչության սպառողական պահանջները, իսկ մյուս մասը դառնում էր հումք՝ սպասարկելու քաղաքային արհեստագործության հարաճուն պահանջարկը։ Ներքին և արտաքին առևտրի զարգացման շնորհիվ կախյալ գյուղացիությունից բնատուրքի ձևով ֆեոդալների ստացած հավելյալ արտադրանքի մի մասը, մանավանդ այդ ժամանակ ընդարձակվող ֆեոդալական կալվածն իր արտադրանքով, հետզհետե ներգրավվում էին առևտրի մեջ։ Այս ամենով հանդերձ գյուղատնտեսական արտադրանքի մի փոքր մասն էր ապրանք դառնում։ Ֆեոդալական հասարակության մեջ ապրանքային արտադրության զարգացումը տեղի էր ունենում գերազանցապես երկրագործությունից անջատված և քաղաքներում կենտրոնացած արհեստային արտադրության աճի շնորհիվ, որն իր բնույթով մանր ապրանքային արտադրություն էր։



Ճրագներ նախճապակուց. Դվին

Արհեստավորներն իրենց պատրաստած զանազան իրերով սպասարկում էին հասարակության տարբեր խավերի սպառողական և այլ պահանջները՝ թե քաղաքում, և թե գյուղում։ Նրանց արտադրանքի շատ տեսակներ էլ անում էին հանել տարբեր երկրների շուկաներում։

Ավելի ու ավելի էր խորանում աշխատանքի բաժանումը իր իսկ արհեստագործության մեջ։ Մայր արհեստների տրոհումով առաջանում էին արհեստի նորանոր ճյուղեր, կատարելագործվում էին աշխատանքի գործիքները, արտադրության կազմակերպումը։

IX—X դարերում արհեստավորների արտադրանքի մեջ դեռևս զգալի տեղ էին գրավում սպառողների անմիջական պատվերով պատրաստվող իրերն ու առարկաները, որոնք ունեին անհատական արտադրության սահմանափակ բնույթ, մինչդեռ շուկայի համար կատարվող արտագրությունը կրում էր փոքր ի շատե մասսայական բնույթ, ուստի պահանջվում էր ոչ միայն արհեստավորների հմտություն, այլև արտադրողականության բարձրացում, աշխատանքի

գործիքների և արտադրության մեջ կիրառվող հնարանքների ու ձևերի կատարելագործում։ Այդ պարզ երևում է հնագիտական նյութերի, մանավանդ Դվինում և Անիում հայտնաբերված զանազան իրերի և առարկաների պատրաստման եղանակների ու ձևերի կրած փոփոխություններից։

Մետաղագործության մեջ, օրինակ, համարյա վերանում է մոմե մոդելի օգնությամբ իրեր ձուլելու եղանակը, քանի որ մի իր պատրաստելուց հետո, պետք էր կաղապարը ջարդել՝ իրը միջից հանելու համար։ Դրան հակառակ լայնորեն օգտագործվում են այնպիսի կաղապարներ, որոնցից ամեն մեկով կարելի էր ձուլել մեծ քանակությամբ իրեր։ Միևնույն կաղապարի մեջ ձուլված իրերը, սակայն, չափերով, ձևերով և զարդերով իրար միանգամայն նման էին լինում։ Այս միօրինակությունից խուսափելու համար մետաղե իրերը ենթարկվում էին լրացուցիչ մշակման և զարդարման։ Հորինվեց նաև մի նոր եղանակ՝ ձուլման ժամանակ հիմնական կաղապարին կցում էին լրացուցիչ փոքրիկ կաղապարներ, որոնց օգնությամբ ձուլվող իրի վրա առաջացնում էին տարբեր զարդեր և պատկերներ[1]։



Մկրատներ, Դվին

Ավելի լայն գործադրություն ստացան մասսայական արտադրության այնպիսի ձևերը, ինչպիսիք էին մետաղներ կռելը, դրվագելը և դրոշմելը։

Բավականաչափ զարգացավ տարբեր մետաղներից զանազան գույնի համաձուլվածքներ ստանալը, արծաթե և պղնձե իրերի ոսկեզօծումը։ Առաջին անգամ սկսեցին կիրառել արծաթե իրերի սևադումը, այսինքն՝ պատրաստի իրերի վրա սև գույնի զարդեր անելը։

---

[1] См. сборник «Памятники эпохи Руставели», Л., 1938, стр. 284—287.

Գործվածքների արտադրության մեջ IX—X դարերում բնորոշ ոսկեհուռ, ծաղկազարդ դիպակների արտադրության փոխարեն, որը խիստ դժվարին էր և կրում էր սահմանափակ բնույթ, անցնում են գործվածքները դրոշմազարդելու (դաջազարդելու) դյուրին եղանակին, որը թույլ էր տալիս օգտագործել



Ձեռագրի էջ բոլորագիր գրչությամբ

նկարիչ-քանդակագործների շնորհքը, պատրաստել պարզից մինչև բարձրարվեստ զարդարելով փայտյա քանդակազարդ դրոշմներ (դաջեր), որոնց օգնությամբ կարելի էր ստանալ տարբեր ձևի ու գույնի, նաև բազմագույն զարդերով գործվածքներ՝ համաձայն շուկայի պահանջի[2]։

---

2 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում XI—XIII դարերում*, գիրք 2, էջ 14։

Բոլորակ և գլանաձև կնիքների օգնությամբ դրոշմազարդումը կիրառվեց կավագործության մեջ։ Իսկ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար կավագործի դուրգի անիվը սկսեցին պտտեցնել փոկի օգնությամբ։ Ջնարակած խեցեղենը զարդարելու նպատակով լայնորեն օգտագործվեցին արագորեն և անփույթ կատարվող, խճողված, բայց ճոխ զարդերը, ինչպես և անոթների, դեռևս թաց կավի վրա փակցվող վերադիր զարդերը։

Ապակեղեն անոթները պատրաստելիս քանդակազարդ կաղապարի մեջ փչելու եղանակով բարձրարվեստ անոթներ պատրաստելը, որը բնորոշ էր անտիկ դարաշրջանին, համարյա վերացավ, իսկ պատրաստի անոթները փորագրելու կամ պտտվող անվակի օգնությամբ տաշելով զարդարելու եղանակը տեղի տվեց միևնույն կամ տարբեր գույնի ապակու զանգվածով վերադիր զարդեր անելու պարզ եղանակին։

Փոփոխվեց անգամ գրչության և գրքեր պատրաստելու եղանակը։ V—X դարերում պատվերով փոքր քանակությամբ գրքեր պատրաստելիս օգտագործվում էր մեսրոպյան շատ խոշորատառ երկաթագիրը, ուստի մի գիրք արտագրելը պահանջում էր ահագին աշխատանքային ժամանակ, մեծ քանակությամբ մագաղաթ, ներկ ու թանաք, մինչդեռ ավելի մեծ քանակությամբ, մանավանդ վաճառքի համար գրքերի արտադրությունը զարկ տվեց մանր բոլորագրին, որից ծագում են այսօրվա մեր տպագրական տառաձևերը։ Գրքերի կաշվե կազմերը բարդ գծագրությամբ զարդարելու փոխարեն, սկսեցին օգտագործել իրենց ծայրին որևէ փոքրիկ զարդ կրող մետաղե ձողիկներ, որոնց մի քանիսի համադրությամբ գեղեցիկ դրոշմազարդում էին գրքերի կաշվե կազմերը, երբեմն էլ կազմերի վրա փակցնում էին խաչելության մետաղե պատկերներ, զարդարում թիթեղներ կամ կլոր գլխով արծաթե գամեր (կոստղեր)։ Ոսկյա և արծաթյա շքեղ կազմեր պատրաստվում էին առավելապես անհատական պատվերով։

Աշխատանքի գործիքների կատարելագործմանը, նոր գործիքների, ինչպես և առարկաների ձևավորման-զարդարման նոր եղանակների առաջացմանը մեծապես նպաստում էր աշխատանքի բաժանումը՝ արհեստագործության մեջ նորանոր մասնագիտական կամ քույր ճյուղերի երևան գալը։

## 2. ԱՐՀԵՍՏԱՎՈՐԱԿԱՆ ԵՂԲԱՅՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՀԱՄՔԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ)

Միջնադարյան քաղաքը չի կարելի պատկերացնել առանց արհեստավորական եղբայրությունների (համքարությունների), քանի որ դրանք ֆեոդալական քաղաքի արտադրական և հասարակական հարաբերությունների անխուսափելի արգասիքն էին և աշխատանքի բաժանման բնորոշ ձևը արհեստագործության մեջ։

Համքարությունների գոյությունը միջնադարյան Հայաստանում ենթադրել են դեռևս Գ. Հախվերդովը[3] և Ս. Եղիազարովը[4], որոնք զբաղվել են ուշ ժա-

---

[3] *Г. Ахвердов,* Тифлисские амкары, Тифлис, 1883.
[4] *С. А. Егиазаров.* Городские цехи, Казань, 1891.

մանակների համքարությունների ուսումնասիրությամբ։ Ն. Մառը նույնպես նշել է համքարությունների գոյությունը միջնադարյան հայկական քաղաքներում[5], իսկ Հ. Մանանդյանը ենթադրել է, որ համքարություններ եղել են Բագրատունիների օրոք, գուցե և ավելի վաղ[6]։ Հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ արհեստագործական եղբայրությունները Հայաստանում գոյություն են ունեցել թերևս X դարում[7], սակայն անմիջական տեղեկություններ նրանց մասին չկան և այդ պակասը մասամբ միայն լրացնում են XII—XIII դարերի տարբեր աղբյուրների մի շարք վկայությունները։

Միջնադարյան արհեստավորը ենթակա էր ֆեոդալական շահագործման։ Պահանջարկը արհեստավորական արտադրանքի նկատմամբ այնքան էլ մեծ չէր, հետևաբար սպառման շուկան բավականաչափ նեղ էր, ուստի գյուղերից քաղաք փոխադրվող արհեստավորների մրցակցությունը ոչ միայն անցանկալի, այլև անհանդուրժելի էր քաղաքի արհեստավորների համար, որոնց միակ սեփականությունը և ապրուստի միջոցը նրանց արհեստանոցն էր, աշխատանքի փոքրաթիվ գործիքներով և արհեստով զբաղվելու հմտությամբ հանդերձ։ Այս պայմաններում արհեստավորները պետք է միավորվեին ֆեոդալական ճնշման դեմ, իրենց մասնավոր մանր սեփականության հիման վրա կազմակերպեին այս կամ այն տեսակի ապրանքների արտադրանքն ու վաճառքը։ Այս հիմունքներով առաջացած համքարությունները քաղաքներում զբաղեցնում էին որոշակի փողոց կամ շարք, սահմանափակելով եղբայրության մեջ չմիավորված արհեստավորների մուտքը տվյալ համքարության մեջ և նրա զբաղեցրած շարքում։ Համքարությունները կազմակերպում էին փոխադարձ օգնություն, ըստ հնարավորին լայն հիմունքներով, որը խոշոր նշանակություն ուներ արհեստավորների կյանքում և կենցաղում։

Արհեստավորների եղբայրությունները կամ համքարությունները կազմավորվում էին ըստ արհեստային որոշակի ճյուղի, սահմանում էին աշխատանքի տեսակը, որակը, մոտավոր արժեքը և արհեստավորներին պաշտպանում էին մրցակցությունից՝ թե համքարության ներսում և թե դրսում։

Համքարությունների առաջացումը Արևելքում տեղի ունեցավ ավելի վաղ, քան արևմուտքում։ Արաբական աղբյուրներից հայտնի է, որ համքարությունները «սինֆ» անվան տակ գոյություն ունեին դեռևս IX դարում[8]։

Բյուզանդական կայսր Լևոն Իմաստասերի էդիկտում (հրովարտակում) և «Եպարքոսի գրքում» X դարի սկզբներին հիշատակված են առևտրականների

---

5 Տե՛ս *Н. Я. Марр,* Кавказский культурный мир и Армения. СПб.. 1915. стр. 16—17.

6 Տե՛ս *Я. Н. Манандян,* О торговле и городах .. *էջ 165։* Հ. Մանանդյան, *Հայաստանի քաղաքները X—XI դարերում, էջ 27։*

7 Տե՛ս Վ. Աբրահամյան, *Արհեստները և համքարական կազմակերպությունները Հայաստանում IX—XI դդ., էջ 121—136։* Նույնի, *Արհեստները Հայաստանում IV—VIII դդ., էջ 231—251,* Բ. Ն. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դդ., գիրք 2, էջ 174—200։*

8 Տե՛ս „Enzyklopaedie des Islam", Berlin, 1924, „Sinf", S. 468—469. *A. Kremer,* Kulturgeschichte des Orients, B. II, S. 187—188.

և արհեստավորների 22 միություններ կամ ընկերություններ, որոնք ենթակա էին քաղաքային իշխանությունների հսկողությանը[9]։

X դարում համքարություններ էին կազմավորվել Իրանում, Միջին Ասիայում[10]։ Իսկ Արևմտյան Եվրոպայում, Ռուսաստանում համքարությունները երևան են եկել XI—XII դարերում[11]։

Հայաստանի քաղաքները IX—X դարերում իրենց զարգացման մակարդակով ետ չէին մնում արաբական խալիֆայության և բյուզանդական երկրների քաղաքներից ու խոշոր դեր էին խաղում թե երկրի ներքին կյանքում, թե միջազգային տարանցիկ առևտրի մեջ։ Ուստի արհեստակցական եղբայրությունների առաջացման բոլոր նախադրյալները կային նաև Հայաստանում։

Ճարտարապետական խոշոր կառույցների վրա պահպանված վարպետների նշաններից մեզ հայտնի է, որ Հայաստանում գոյություն են ունեցել շինարար վարպետների խմբեր դեռևս VI—VII դարերում, որոնք, արտել կազմած, շինարարական աշխատանքներ էին կատարում տարբեր վայրերում։ Շինարար հույն և հայ վարպետների մի մեծ խումբ Իբն ալ-Ասիրի վկայությամբ 925 թ. այցելել է Մալաթիա[12]։

Կարևոր է արաբական աղբյուրներում պահպանած այն վկայությունը, որ դեռևս IX—X դարերի սկզբներին ստեղծվել էին նաև քրիստոնյա արհեստավորների միություններ, որոնց թույլատրված էր պատրաստել և վաճառել իրեր՝ թանկարժեք մետաղներից, և դեղորայք[13]։

Արհեստավորական եղբայրությունների քաղաքներում զբաղեցրած առանձին փողոցները կամ շարքերը միաժամանակ շուկայի դեր էին կատարում, քանի որ բացի կիրակնօրյա շուկայական օրերից, մնացած օրերի արտադրանքը նույն շարքում էլ վաճառում էր արտադրող արհեստավորը։ Նման փողոցներ կամ շարքեր եղել են Հայաստանի շատ քաղաքներում, սակայն մեզ հասած տեղեկությունները վերաբերում են Անիին և կրում են պատահական բնույթ։

XIII դարի արձանագրությունների մեջ հիշատակված են Անիի Դարբնոց փողոցը, որը գտնվել է ս. Գրիգոր եկեղեցու մոտ[14], Սարաչ փողոցը[15] (թամբագործների փողոց), Կոշկակարոցը[16], Բազզնոցը[17], որը գործվածքների արտադրության և վաճառքի փողոցը կամ շարքն էր, Նալպնդնոցը[18], Փոկարա-

9 Տե՛ս *М. В. Левченко,* История Византии, М.—Л., 1940, стр. 148. «Сборник документов по социально-экономической истории Византии», М., 1951, стр. 198—205.

10 Տե՛ս *А. Якубовский,* Феодальное общество Средней Азии и его торговые связи с Восточной Европой в X—XV вв., стр. 5.

11 Տե՛ս *Г. Белов,* Городской строй и городская жизнь средневековой Германии, М., 1912. *Б. А. Рыбаков,* Ремесло древней Руси, М., 1948, стр. 740.

12 Տե՛ս «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», էջ 143։

13 Տե՛ս „Enzyklopaedie des Islam", „Sinf". S. 468.

14 Տե՛ս Ալիշան, Շիրակ, էջ 25։

15 Տե՛ս նույն տեղում, էջ 118—119, 123։

16 Տե՛ս նույն տեղում, էջ 25։

17 Տե՛ս նույն տեղում, էջ 117։

18 Տե՛ս նույն տեղում, էջ 119։

րոցը (թերևս փալան կարողների կամ համետագործների փողոց), Կատանոցը[20] (թերևս գորգագործների կամ թաղիքագործների փողոց)։ 1343 թ. մի արձանագրության մեջ էլ հիշատակված է Գտակկարոցը, որը գտնվել է քաղաքի խանաբարներից մեկի դիմաց[21]։

Իհարկե, արհեստավորական փողոցների կամ շարքերի թիվը այս պատահաբար հիշատակված ութից շատ ավելին է եղել։

Խիստ ուշագրավ է, որ արհեստավորական բոլոր փողոցներում կամ շարքերում հիշատակվում են նրանց համար բնորոշ կուղպակ-արհեստանոցներ։ Արհեստավորական տվյալ շարքի կուղպակները գտնվում էին համքարության մեջ միավորված արհեստավորների ձեռքում։

Համքարությունները ունեին իրենց կանոնները, արաբական «սինֆ»-երի կանոնները կոչվել են դաստուր (կանոնագրություն)։ Այդ ժամանակների հայկական համքարությունների կանոններ մեզ չեն հասել, սակայն հետագայում համքարությունների օրինակով կազմվեցին արհեստների հետ կապված քաղաքային երիտասարդ աշխատավորների, կրոնական միություններ, որոնք հայերի մեջ կոչվում էին եղբայրություն, իսկ արաբների, թուրքերի մոտ կրում էին ալ-Ախիաթ ալ-Ֆիթյան անունը (ախի՝ եղբայր, ֆատա, ֆիտյան՝ տղաներ, տղերք)։ Դրանք համքարություններ չէին, այլ կրոնական միություններ, բայց արտադրական հիմունքներից զուրկ չէին։

Մեզ են հասել Երզնկայի եղբայրության 1280 թ. կանոնները («Սահմանքը»), որոնք իրենց բնույթով, նույնիսկ շատ կետերով, համընկնում են XVII—XIX դարերից մեզ հայտնի հայկական համքարությունների կանոնների հետ։ Կարելի է չտարակուսել, որ կրոնական բնույթ ունեցող այդ երիտասարդների եղբայրության «սահմանքը» ծագում է արհեստավորական եղբայրությունների կամ համքարությունների կանոնադրություններից։

Եղբայրության հիմնական նպատակն էր բոլոր եղբայրների համագործակցությունը, որպեսզի կարելի լիներ հաղթահարել սատանայական մեղասեր տերերին և չար մարդկանց, ինչպես քաջամարտիկ զինվորները դյուրությամբ են հաղթում թշնամուն[22]։

«Սահմանքի» առաջին բաժինը վերաբերում է եղբայրության երիտասարդ՝ տղայահասակ մանկանց կենցաղավարությանը և ութ կետով սահմանվում է, որ նրանք առաքինի, ժուժկալ կյանք վարեն մինչև ամուսնությունը, անխախտ պահպանեն ընտանեկան բարոյական նորմերը ամուսնությունից հետո, պատվեն իրենց ծնողներին, հնազանդվեն նրանց, խնամք տանեն ծերերի նկատմամբ, կիրակի օրերը չաշխատեն, այլ եկեղեցի գնան և մեղքերը խոստովանեն։

Ավելի կարևոր է «Սահմանքի» երկրորդ բաժինը, որն ամբողջովին կառուցված է եղբայրության անդամների փոխադարձ օգնության հիմունքներով՝ իշխանությունից պաշտպանվելու, տնտեսության և կենցաղի բնագավառնե-

---

19 Տե՛ս Ալիշան, Շիրակ, էջ 123։

20 Տե՛ս նույն տեղում, էջ 72։

21 Տե՛ս նույն տեղում, էջ 63։

22 Տե՛ս Մատենադարան, ձեռ. № 2329, թերթ 288ա, 290ա, նաև՝ Լ. Խաչիկյան, Երզնկայում 1280 թ. կազմակերպված եղբայրությունը, ԳԱ «Տեղեկագիր», 1951, № 12։

րում։ Այստեղ ասվում է, թե աշխարհը ծով է, իսկ մարդիկ ալեկոծվում են նրա մեջ՝ հանդիպելով պես-պես փորձությունների, ուստի եղբայրները պետք է օգնեն իրար։

Շատ կարևոր է առաջին կետը, որով սահմանվում է. «Եթէ ոք յեղբայրութինէս ի փորձութիւն մարդկան անգանիցի և ի բռնաւորաց նեղիցի, ղամենայն եղբայրքն ջան եդեալ՝ հանիցեն զնա ի հասանել վշտացն...»։

Նույն ձևով պետք է օգնել, փրկել մեղքերի փորձության ենթարկվածին։

Աղքատության և չքավորության մեջ ընկածին մյուս եղբայրները պետք է օգնեն. «ըստ կարողութեան և ըստ ուժոյ»։ Հիվանդ եղբորը պետք է օգնել այցելությամբ, դեղերով և բժիշկներով։ Մեռած եղբորը բոլորը պետք է պատվով թաղեն, և եղբայրության ամեն անդամ մի պատարագ պետք է անել տա մեռածի հիշատակին[23]։

Ուշագրավ է, որ երկրորդ բաժնի բոլոր կետերը լրիվին և համարյա նույնությամբ պահպանվել են XVII—XVIII դարերի համքարական կանոնադրությունների մեջ, ուստի կարելի է ենթադրել, որ վերջիններս ընդօրինակված են XII—XIII դարերի արհեստավորական եղբայրությունների կանոնադրություններից։

«Սահմանքի» երրորդ բաժնում նախատեսվում է, թե ինչպես պետք է եղբայրության անդամները իմաստությամբ ընթանան հասարակական կենցաղում, աշխարհի և բազում ազգերի մեջ «ի շինութիւնն տեսողաց և ի փառս անուանս Քրիստոսի»։

Արհեստավորական եղբայրությունները կամ համքարությունները ունեին իրենց խորհուրդը, որի գլուխ կանգնած էր վարպետաց ավագը։ Եղբայրության անդամներ էին վարպետները, իսկ վարպետացուները, որոնք կոչվում էին գործավոր, և աշակերտները եղբայրության անդամ համարվում էին վարպետ դառնալուց հետո։ Այնուամենայնիվ եղբայրությունները կարգավորում էին նաև վարպետների և աշակերտների, վարպետացուների և վարպետների փոխհարաբերությունները։ Օրինակ, սահմանված էր աշակերտ ընդունելու տարիքը և տևողությունը[24], աշակերտներին սովորեցնում էին ձրի, բայց աշակերտը պարտավոր էր կատարել զանազան աշխատանքներ վարպետի արհեստանոցում կամ տանը։ Նրան կերակրում ու հագցնում էր վարպետը։

Ձրի սովորեցնելու կարգը ընդհանուր և պարտադիր էր, որովհետև վարպետը և ուսուցիչը համարվում էին շնորհապարտ իրենց վարպետին կամ ուսուցչին։ Աշակերտների ծնողների նվիրատվությունները ցանկալի էին[25]։

Վարպետացուները կամ գործավորները շարունակում էին աշխատել վարպետների մոտ և վարձ ստանալ, ուստի սահմանված էր նրանց աշխատանքային օրվա տևողությունը։ Մի առակում պատմվում է, թե Հռոմկլայի շուկայում ետինք էր. «զի ետի ժամն էր. և մանկայխելք երիտասարդն բանս դատարկ ասէին և ծիծաղէին. և էր անդ փերթկար (հին կոշիկ կամ զգեստ կար-

---

23 Տե՛ս Մատենադարան ձեռագիր № 2329, թերթ 292ա, 393ա։

24 Տե՛ս Մատենադարան, ձեռ. № 1314, թերթ 15բ։

25 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 233—234։

կատող) մի սոֆի. և ասէին ցնա և ստիպէին զի ծիծաղեսցի և կանկալ արասցէ հետ իւրեանց»[26]։

«Ցետինքին» կամ բանթողից, այսինքն՝ աշխատանքից հետո հավաքված և կատակներով ժամանակ անցկացնող երիտասարդները, իհարկե, վարպետացուներն էին, և սա նրանց վերաբերող մի բնորոշ կենցաղային պատկեր է։

Սահմանված ժամկետը լրանալուն պես, վարպետացուն, եղբայրության բոլոր անդամների մասնակցությամբ, մեծ հանդիսավորությամբ, օրհնանքով, որ կոչվում էր «դասելոցի», դասվում էր վարպետների շարքը, ապա հանդիսությունը ավարտվում էր ընդհանուր ճաշկերույթով, որ կոչվում էր «դաստուրի հաց», այսինքն՝ ըստ դաստուրի կամ կանոնադրության տրվող ճաշկերույթ։

Վարպետացուն, մինչև վարպետների շարքը դասվելը, միջոցներ էր կուտակում առանձին արհեստանոց բացելու համար, այդ բանում նրան օգնում էին վարպետը և ամբողջ եղբայրությունը, իսկ եթե հնարավոր չէր լինում առանձին արհեստանոց բաց անել, ապա նորընծա վարպետը աշխատում էր իր վարպետի արհեստանոցում, որն, իհարկե, իր մեջ կրում էր անհավասարության և շահագործման երևույթներ։

Եղբայրություններն օգնում էին նորընծա վարպետներին տվյալ շարքում կուղպակ ունենալու կամ վարձելու գործում։ Նրանք հսկում էին արտադրության կազմակերպման և արտադրանքի որակի վրա։

Վարպետներն արտադրում էին գերազանցապես շուկայի համար, բայց երբեմն էլ աշխատում էին անհատական պատվերով՝ հատուածով, այսինքն՝ պատվիրատուի տված նյութից հատված՝ մաս ստանալով կամ վարձով։ Եթե նրանց պատրաստած արտադրանքն անհաջող էր, ապա պատվիրատուի պահանջով պարտավոր էին փոխել, բարելավել, անգամ փչացրած նյութի գինն էին հատուցում, կամ նրանց վարձն էր պակասեցվում։

Եթե արհեստավորը գողանում կամ յուրացնում էր պատվիրատուի նյութը, դատարանով կարող էին ստիպել վճարելու[27], իսկ եթե պատվիրատուի նյութը գողացել կամ ասպատակության ժամանակ հափշտակել էին արհեստավորի ունեցվածքի հետ միասին, ապա վարպետը նյութական պատասխանատվություն չէր կրում[28]։

Եղբայրության անդամ վարպետը պարտավոր էր բարձր որակի արտադրանք տալ, բարձր պահել եղբայրության և սեփական համբավը։ Խոտան արտադրանք տվողին զգուշացնում էին, իսկ եթե շարունակեր խոտան տալ, կարող էր զրկվել վարպետի կոչումից։

«Արուեստաւոր չկարելով գործել զարուեստն, զրկեալ գտանի յայնմ կոչմանէ»,— գրում է XIV դարի սկզբի հեղինակ Բարսեղ Մաշկևորը։

Եղբայրության ներքին գործերը տնօրինում էր խորհուրդը՝ վարպետաց գլխի ղեկավարությամբ, նա միաժամանակ պաշտպանում էր եղբայրության

---

26 Տե՛ս Վարդան Այգեկցի, Առակների ժողովածու, հատ. Բ, էջ 172։

27 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 436—437։

28 Տե՛ս «Մեկնութիւն սրբոյ աւետարանին, որ ըստ Մարկոսի արարեալ երանելւոյն Բարսղի շնորհալի վարդապետի», Կ. Պոլիս, 1826։ Մատենադարան, ձեռագիր № 4314, թերթ, 221ա։

շահերը ֆեոդալների և այլ բռնավորների շահատակություններից. քաղաքներում առաջացել էր նաև միջհամքարային խորհուրդ, որը կոչվում էր «ատեան ծերոց»։ Այս խորհուրդը լուծում էր միջհամքարային վեճերը, կարգավորում. արհեստավորական արտադրության շարքերի, վաճառքի և այլ հարցեր, պաշտպանում էր արհեստավորության շահերը համաքաղաքային մասշտաբով, հավանաբար որոշ դեր էր խաղում նաև. քաղաքային վարչության մեջ։



Ապակե սրվակ ներսում ամրացված փոքր սրվակով

«Ծերոց ատեան»-ի հիշատակությանը հանդիպում ենք Մխիթար Գոշի մի առակում, որտեղ ասված է.

«Ղղնձագործը և երկաթագործը խնամիանալիս՝ ամեն մեկը իր արհեստն էր գովաբանում. և երբ նրանց միջև հակառակություն ծագեց, նույնիսկ ծերոց ատյան գնացին («յատեան ևս երթային ծերոց»)։ Եվ նրանք մեծարգո համարեցին երկաթագործին, ասելով, թե ամենքին օգտակարը պատվական է»[29]։

Արհեստավորական եղբայրությունները խոշոր դեր էին խաղում քաղաքների արտադրական և հասարակական կյանքում, մանավանդ արհեստագործության մեջ, որը միջնադարյան արդյունաբերությունն էր։ Հետաքրքրական է նշել, որ աստիճանաբար խորանում էր ունեցվածքային անհավասարությունը և սոցիալական շերտավորումը արհեստավորների, նաև համքարություններում ընդգրկված վարպետների մեջ։ Արդեն առաջացել էին ունևոր արհեստավորներ, որոնք կարող էին շահագործել ոչ միայն ավելի մեծ թվով աշակերտների, վարպետացուների և վարձկանների, այլև արհեստանոց չունեցող նորընծա վարպետի աշխատանքը։ Այս երևույթները հղի էին սոցիալ-տնտեսական հեռու գնացող հետևանքներով և կարող էին համքարության այսօրվա «հավասար» եղբայրներից ոմանց վաղը դարձնել շահագործողներ, մյուսներին շահագործվողներ, մի բան, որն իր հետագա ընթացքով ընդունակ էր ճանապարհ բացել շահագործական նոր տիպի հարաբերությունների առջև։ Սակայն, դատելով մեզ հասած տվյալներից, կարող ենք ասել, որ XII—XIII դարերում բանը դրան չհասավ, իսկ XIV դարից ընկըրած տեղի ունեցավ մի քանի դար տևող տնտեսական քայքայում և հետադիմություն։

29 Մխիթար Գոշ, Առակներ, Երևան, 1941, էջ 122։

*Արհեստների և ապրանքային արտադրության աճը քաղաքներում խոշոր նշանակություն ունեցավ նաև արհեստավորների հասարակական տնտեսական դերի և նշանակության բարձրացման համար։*



**Դրոշմազարդ գործվածք, ձեռ. 6303**

*Քաղաքների ստորին խավերը և նրանց հիմնական ու կազմակերպված կորիզը կազմող արհեստավորության դերը նշանակալից էր նաև քաղաքների պաշտպանության գործում։*

*Արհեստավորները կառուցում կամ ամրացնում էին քաղաքի պարիսպները, արտադրում էին երկրի և տվյալ քաղաքի պաշտպանության համար անհրաժեշտ զենք ու հանդերձանք, զորքի հետ միասին պաշտպանում քաղաքը օտարների հարձակումներից և ասպատակություններից՝ կազմելով քաղաքային աշխարհազորի հիմնական մասը։*

*Ինքնավար քաղաքները, ինչպես տեսանք Արծնի օրինակով, ունեին իրենց սեփական զորքը, որը կազմվում էր գերազանցապես արհեստավորներից։*

*Արհեստավորությունը քաղաքներում ըստ ամենայնի դարձել էր հասարակական կարևոր գործոն, ուստի և աճում էր նրա ինքնագիտակցությունը, որն իր դրսևորումներն է ունեցել գրականության, մանավանդ ժողովրդական առակների մեջ և նրանց կերտած հուշարձանների վրա։ Եթե IV—X դարերից մեզ հայտնի են միայն մի քանի ճարտարապետների և քանդակագործների անուններ, որոնք էլ հանճարեղ ճարտարապետներ Մանուելից ու Տրդատից բացի, հիմնականում հոգևորականներ էին, ապա X դարից հետո, մանավանդ XII—XIII դարերից հայտնի են հարյուրավոր ճարտարապետներ, քանդակագործներ և տարբեր արհեստի վարպետներ, որոնք թողել են իրենց անունները իրենց ստեղծագործությունների վրա*[30]*։ Արհեստավորների և քաղաքային աշ-*

---

30 *Տե՛ս* Ս. Բարխուդարյան, *Միջնադարյան հայ ճարտարապետներ և քարգործ վարպետներ,* Բ. Առաքելյան, *Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, հատ. Բ, էջ 200—205։*

խատավոր բնակչության այլ ներկայացուցիչների անուններ են հանդիպում նաև ձեռագիր պատվիրողների, ստացողների կամ ձեռագրերը «գերությունից» վերադարձնելու համար «ըստ չափո կարեաց» միջոցներ տրամադրողների շարքում։

Արհեստագործի ինքնագիտակցության մի օրինակ է Մխիթար Գոշի առակը չուլհակի մասին, որը որդուն քաջալերելով, իրենց համեմատում է թագավորի հետ, ասելով, թե «մենք էլ մեր արհեստի մեջ ենք թագավոր»[31]։

Արհեստի և արհեստագործության դերն ու նշանակությունը ճանաչում էր գտել հասարակության մեջ։

## 3. ՔԱՂԱՔՆԵՐԻ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԸ

Եթե IX—XI դարերը ֆեոդալական քաղաքի առաջացման, ձևավորման ու զարգացման շրջան էին, ապա XII—XIII դարերը դարձան նրանց հետագա վերելքի աճման և ծաղկման դարեր։ Այդ է պատճառը, որ XII—XIII դարերում նոր առաջացած քաղաքների թիվը խիստ սահմանափակ էր։ Դատելով սկզբնաղբյուրներից, այս ժամանակներում են ձևավորվել Երևանը և մի երկու մանր քաղաքներ՝ Կեչրորը՝ Այրարատյան նահանգի Գաբեղյանք գավառում (Կաղզվանի շրջան), Խիզանը, Սղերդը՝ Վասպուրականում, նույնքան էլ գյուղաքաղաքներ, մինչդեռ IX—XI դարերում առաջացած քաղաքների թիվը Հայաստանի բոլոր նահանգներում անցնում էր 40-ից, իսկ գյուղաքաղաքներինը՝ 20-ից։

Դա բնական է, քանի որ զարգանում էին արդեն գոյություն ունեցող քաղաքները, հասնելով ավելի բարձր մակարդակի, ինչպես արտադրական-տնտեսական առումով, նույնպես և նրանց սոցիալական կառուցվածքի մեջ առաջացած փոփոխություններով, քաղաքային կյանք ու կենցաղով, աշխարհիկ գաղափարախոսությամբ ու մշակույթով։

Մինչ այդ գոյություն ունեցող բոլոր քաղաքները (բացի կործանված Արծնից), XII դարի կեսերից սկսած ավելի արագ աճեցին և առաջադիմեցին։ Քաղաքներում բազմացան արհեստները, առաջ եկան արհեստավորական եղբայրությունների նոր շարքեր, ընդարձակվեցին շուկաները, առևտուրը, բազմապատկվեց արտադրական և այլ հաստատությունների՝ ջրաղացների, ձիթհանների, ներկատների, պանդոկների, խանապարների, հյուրատների, գինետների թիվը։

Քաղաքներ կային երկրի բոլոր նահանգներում՝ մանավանդ Հյուսիսային Հայաստանում, Զաքարյանների տիրույթներում և Շահի Արմենների ամիրայության մեջ, ինչպես և Հայաստանի արևելյան մասում։ Առաջվա պես առավել զարգացած և նշանավոր քաղաքները գտնվում էին միջազգային քարավանային առևտրի՝ Հայաստանի միջով անցնող հյուսիսային և հարավային մայրուղիների վրա։

Հյուսիսային մայրուղու վրա գտնվում էին Նախճավանը, Դվինը, Երևանը, Անին, Կարսը, Կաբինը, Երզնկան, իսկ հարավայինի վրա՝ Հերը, Սալմաստը, Վանը, Ոստանը, Արճեշը, Մանազկերտը, Խլաթը, Բաղեշը, Նփրկերտը։

31 Մխիթար Գոշ, Առակներ, էջ 120—121։

*Հյուսիսային Հայաստանում նոր առաջացած Երևանը միջին մեծության, Կեչրորը փոքր քաղաքներ էին։ Սյունիքում, Տաշիր-Ձորագետում, Այրարատում առևտրական գլխավոր ճանապարհներից դուրս գտնվող քաղաքները համեմատաբար թույլ չափերով էին զարգացել և մնում էին գավառական քաղաքներ։ Դրանց կողքին առաջացել էին մի քանի նոր գյուղաքաղաքներ՝ Անգեղակոթը՝ Սյունիքում, Աշտարակը և Կարբին՝ Այրարատյան նահանգում, Մժընկերտը՝ Բասենում, սակայն քաղաքների նոր վերելքը և զարգացման մակարդակը որոշում էին խոշոր քաղաքները, ուստի ստորև համառոտակի կբնութագրվեն այն տեղեկությունները, որոնք վերաբերում են XII—XIII դարերի մեծ քաղաքներին։*

*Անին վերստին աճել սկսեց դեռևս Շադդադյանների տիրապետության վերջին շրջանում և ծաղկման հասավ Զաքարյանների օրոք։ Քաղաքում կային բազմաթիվ արհեստավորական շարքեր, արտադրական և առևտրական հաստատություններ։*



**Անիի ս. Առաքելոց եկեղեցու գավիթը**

*Պեղումները, որոնց շնորհիվ հայտնաբերվել են այս քաղաքի պատկերը և կյանքը բնորոշող մեծ թվով հուշարձաններ և հսկայական քանակությամբ հնագիտական նյութեր*[32]*, վիմագիր արձանագրություններ, ցույց տվեցին, որ պարսպի ներսում շենքերը շատ խիտ էին, օգտագործված էր ամեն մի մետր տարածությունը։ Ավելին, քանի որ Անիի «բիւր բիւրոց» բնակչությունը պա-*

---

32 Տե՛ս *Н. Я. Марр*, Ани, Л., 1934, երկրորդ հրատարակությունը՝ Երևան, 1939, *И. А. Орбели*, Избранные труды, Ереван, 1963.

րըսպի ներսում տեղավորվել չէր կարող, աճող քաղաքի շուրջ առաջացել էին արվարձաններ, զգալի թվով բնակիչներ ապրում էին քաղաքը եզերող ձորերի քարայրներում, որոնց մեծ մասը հարմարեցված էր բնակության համար[33]. քարայրներում կար շուրջ 30 եկեղեցի։

Ուսումնասիրելով Անիի արվարձանները, Թորոս Թորամանյանը պարզել է, որ պարսպից դուրս՝ հյուսիսային ուղղությամբ քաղաքը ձգվում էր մեկ ու կես կիլոմետր, արևելքից, փոքր-ինչ ընդհատումներով, հասնում էր մինչև Հոռոմոսի վանքը, արևմուտքից՝ մինչև Անի կոչվող գյուղի սահմանները[34]։ Ախուրյանի հանդիպակաց ափին գտնվում էր քաղաքի արվարձաններից մեկը, որը քաղաքի հետ կապված էր մեկ քարե կամարակապ և երկու փայտե կամուրջներով։ Այս ժամանակներում, ըստ ավանդության, Անին ուներ 10 հազար տուն և շուրջ հարյուր հազար բնակիչ։

Անիի հետ սերտորեն կապված էին նրա մերձակայքի բազմաթիվ գյուղաքաղաքները, ավանները, գյուղերը և ագարակները։ Այն ժամանակ Անին և մերձակայքի բնակավայրերը շրջապատված էին պարտեզներով և ընդարձակ մրգատու այգիներով։ Անին արհեստագործության, երկրագործական արտադրանքի վերամշակման և առևտրի խոշոր կենտրոն էր։ Իզուր չէ, որ վրաց Անանուն հեղինակը Անին կոչում է «մեծ քաղաք»[35], իսկ հայկական աղբյուրները՝ «մեծ մայրաքաղաք»[36], «քաղաքամայր»[37]։

Անին ձեռք էր բերել բարգավաճ ու բարեկեցիկ քաղաքի համբավ, որի բնակչությունն աչքի էր ընկնում ազատաբարո կենցաղով, աշխարհիկ բարքերով՝ հակված դեպի թատերական խաղերը, երգն ու պարը, հանդեսները, երաժշտությունն ու արվեստը։

Քաղաքի վերնախավը սիրում էր շքեղությունը, արծաթն ու ոսկին, ցոփ ու զեխ կյանքը։

Իր զարգացած արհեստագործության բազմաթիվ ճյուղերով, արտադրական մի շարք հաստատություններով, առատ շուկաներով, քարակերտ շքեղ շենքերով, ավանդական չափազանցությամբ նշվող հազար ու մեկ եկեղեցիներով, զգալի չափով գրագետ արվեստասեր բնակչությամբ Անին ապրում էր ծաղկուն քաղաքային կյանքի եռուզեռով և պատահական չէ, որ հայոց ոստաններից և ոչ մեկը այնքան մեծ թվով հուշարձաններ չի պահպանել մեզ և այնքան խորը հուշեր չի թողել, որքան հին հայոց վերջին մայրաքաղաքը՝ Անին։

Դվինը սելջուկների տիրապետության օրոք նույնպես գտնվում էր Շադդադյանների ձեռքին, պահպանվում էր իբրև մեծ քաղաք։ Վրաց Գեորգի թագավորը քանիցս փորձեց գրավել այն «Հռչակավոր և մեծ» քաղաքը, ինչպես անվանված է Դվինը վրաց Անանուն ժամանակագրության մեջ, բայց հաջո-

---

33 Տե՛ս Д. А. Кипшидзе, Пещеры Ани, Ереван, 1972.

34 Տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր հայ ճարտարապետության, հատ. Ա, Երևան, 1942, էջ 327—328։

35 Տե՛ս Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները..., հատ. Բ, էջ 8։

36 Տե՛ս Ալիշան, Շիրակ, էջ 31—32։ Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 748։

37 Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 237։

ղություն չունեցավ։ Դվինը ազատագրվեց միայն 1203 թ., որից հետո աննախընթաց ծաղկման հասավ։ Հնագիտական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այս շրջանում, Դվինի պարիսպները ձգվում էին մի քանի կիլոմետր դեպի հարավ և հարավ-արևմուտք, առաջացել էին պարսպով շրջափակված առանձին թաղամասեր։ Քաղաքը փռվել և իր արվարձանների հետ միասին բռնում էր այժմ գոյություն ունեցող հինգ գյուղերի և նրանց դաշտերի ընդարձակ տարածությունները։ Քաղաքում զարգացել էին մի շարք արհեստներ, մանավանդ մետաղագործությունը, կավագործությունը, գործվածքների արտադրությունը և այլ արհեստներ։

Պեղումներով հայտնաբերվել են Դվինի թաղամասերը, մի քանի արհեստանոցներ, կավե անոթների արտադրության հետ կապված ուշագրավ հարմարանքներ, մեծ քանակությամբ արտադրական խոտան։ Քաղաքն ունեցել է ջրմուղի զարգացած ցանց, որի բազմաթիվ ճյուղավորությունները և նրանց վրա գտնվող մաքրման հարմարանք-կարասները նույնպես բացվել են։

Դվինում կատարվող պեղումներով հայտնաբերված հնագիտական նյութերը կարող են մի ամբողջ թանգարան կազմել. ուշագրավ է, որ դրանց, ինչպես և Դվինում գտնված դրամների մեծ մասը պատկանում է XII—XIII դարերին[38]։ Դվինը մի քաղաք էր, որը XI—XIII դարերում ուներ բնակչության խառը կազմ։ Մեծ գերակշռություն ունեցող հայերի կողքին, Իբն ալ-Ասիրի վկայությամբ, այստեղ ապրում էր տաս հազար ոչ քրիստոնյա բնակչություն, որի զգալի մասը, ինչպես նկատել է Կ. Ղաֆադարյանը, կազմում էր զինվորական տարրը[39]։

Երևանը IX—XI դարերում գյուղաքաղաք էր, ավելի հայտնի իր այգիներով, քան արհեստային արտադրությամբ և առևտրով։

Իբրև միջնադարյան քաղաք, Երևանը ձևավորվեց XII դարի վերջերին և XIII դարի սկզբներին։ Այդ երևում է Այրիվանքի, Հավուց թառի, մանավանդ Կեչառիսի վիմագիր արձանագրություններից։ Դրանցից մի քանիսը վերաբերում են ունևոր երևանցիների արած նվիրատվություններին, ըստ որում, հիշատակվում են նվիրաբերված գանձագին այգիներ և այլ ունեցվածք, ինչպես և կանխիկ դրամ։ Անիի և նրա մերձակայքի արձանագրություններից հայտնի է դառնում, որ նման նվերներ անում էին քաղաքի ունևոր և փողատեր բնակիչները։ Ավելի ուշագրավ են Կեչառիսի XIII դարի սկզբի արձանագրությունները, որոնց մեջ հիշատակվում են Երևանի պատրոնը, տանուտերները և պարոնները, տվյալ դեպքում՝ քաղաքապետը, թաղապետները և քաղաքի վարչական, հարկային ու ֆինանսական գործերը տնօրինող պաշտոնյաները։

Երևանը XII—XIII դարերում միջին մեծության քաղաք էր։

Կարս քաղաքը ավելի նշանավոր էր։ 1053—1054 թթ. կողոպտվելուց հետո, 1064 թ. կրկին կանգնած էր սելջուկյան վտանգի առջև։

1173 թ. Ներսես Կլայեցի (Շնորհալի) կաթողիկոսը Կարսի և շրջակայքի իր հոտին հղած ուղերձում Կարսն անվանում է անմատոյց դղյակ և հոյա-

38 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, Երևան, 1952։

39 Տե՛ս նույն տեղում, էջ 263։

կապ քաղաք», իսկ նրա բնակիչների թվում, հայ իշխաններից, հոգևորականներից բացի, հիշատակում է նաև «արգասու վաճառականներին» և «ձեռնահմուտ» արվեստագետներին (արհեստավորներին)[40]։ Դա նշանակում է, որ նրանք մեծ թիվ էին կազմում և խոշոր դեր էին խաղում քաղաքում։

Կարսը սելջուկյան տիրապետությունից 1206—1207 թթ. ազատագրվելուց հետո արագորեն աճեց և ծաղկում ապրեց։

Կարինը, գտնվելով Հայաստանի միջով անցնող հյուսիսային մայրուղու վրա, նկատելի զարգացման հասավ։

Սելջուկների ձեռքով Արծն քաղաքի կործանումից հետո նրա բնակիչների փրկված մասը փոխադրվեց Կարին քաղաքը, որին արաբները տվեցին Արզան ար-Ռում անունը (Ռումի, այսինքն՝ հունական Արզան), այստեղից էլ Արզրում, Էրզրում անվանումը։ Յակուտը իր աշխարհագրական բառարանում Արզան ար-Ռում բառի տակ գրում է. «Քաղաք Հայաստանում, որի բնակիչները նույնպես հայեր են և նա այժմ ավելի ծաղկյալ է, քան նախորդը (Արզանը). ունի անկախ սուլթան, որն իր գահը այստեղ է հաստատել և նրա սեփականությունն են ընդարձակ գավառներ[41]։

XIII դարի սկզբներին՝ Կարսը ժամանակավորապես Վրաստանին միացվելուց հետո, Արզրումի ամիրայությունը ճանաչեց վրաց գերիշխանությունը։ Քաղաքների ընդհանուր վերելքի հետ աճեց նաև այս քաղաքը։ 1204 թ. մի վարքագրության մեջ Կարին քաղաքը անվանված է «մեծ և հռչակավոր»[42], իսկ 1230 թվականի մի ձեռագիր հիշատակարանում՝ «հռչակավոր և հռչակավոր»[43]։ Կարինը արհեստագործության և առևտրի խոշոր կենտրոն էր, հռչակված մանավանդ իր մետաղագործությամբ և գորգագործությամբ։

Երզնկան սելջուկների գրավման ժամանակ կատարված ավերածություններից հետո բուժել էր իր վերքերը, մանավանդ Մելիք շահի մահվանից և սելջուկյան միասնական տերության կազմալուծումից հետո, այստեղ ևս առաջացել էր ինքնուրույն ամիրայություն։ Երզնկան խոշոր և հարուստ քաղաք դարձավ XII դարի կեսերին, դրան նպաստեցին միջազգային տարանցիկ առևտրի մայրուղու վրա գտնվելը և նրա մերձակայքում պղնձահանքերի առկայությունը, որոնք մշակվում էին և հումք մատակարարում պղնձագործներին։ Այստեղ պատրաստվում էին պղնձե զանազան իրեր, մանավանդ ջահեր, աշտանակներ, որոնք արտահանվում էին։ Մեծ համբավ ունեին նաև Երզնկայի կերպասները։

Երզնկայում 1165—1176 թթ. մեծ երկրաշարժ էր տեղի ունեցել, բայց քաղաքը վերականգնվել և բարգավաճել էր։ Յակուտը 1220—1230-ական թվականների համար ասում է, որ Երզնկան (Արզանջան) «Շատ հաճելի և համբավավոր, ճոխ ու բազմամարդ քաղաքներից մեկն է... բնակչությունը մեծ մասամբ բաղկացած է հայերից, կան նաև մուսուլմաններ, որոնք քաղաքի երևելիներն են կազմում»[44]։

---

40 Տե՛ս Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 303։

41 Յակուտ, գիրք 1-ին, էջ 206։

42 «Հայոց նոր վկաները», էջ 75։

43 Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք, էջ 869։

44 Յակուտ. գիրք 1-ին, էջ 205։

1254 թ. Երզնկայում ավելի ահեղ երկրաշարժ եղավ, որի հետևանքով զոհվեց քաղաքի համարյա ամբողջ բնակչությունը, ըստ աղբյուրների՝ 56 հազար մարդ[45]։ Վիլյամ Ռուբրուքն իր ուղեգրությունների մեջ նշում է, որ Արզանկան կոչված քաղաքում «տասը հազար անունով հայտնի մարդիկ կորած էին, ի բացառյալ աղքատներից, որոնց մասին արձանագրություն չկա»[46]։ Անգամ չափազանցված համարելով այս տեղեկությունները, կարելի է պնդել, որ Երզնկան XIII դարում շուրջ 50 հազար բնակչություն ուներ։

Բարգավաճել էին նաև Հայաստանի հարավով անցնող առևտրական մայրուղու վրա գտնվող քաղաքները, որոնցից առավել խոշորներն էին Խլաթը, Նփրկերտը կամ Մայաֆարկինը, Մանազկերտը, Արճեշը։

Խլաթը XII—XIII դարերում դարձել էր Հայաստանի հարավի առավել խոշորագույն քաղաքը, առաջ անցնելով անգամ Նփրկերտ-Մայաֆարկինից։

Շահ Արմեններին ենթակա ընդարձակ նահանգների եկամուտները երկրից դուրս չէին գնում և այդ հանգամանքը նպաստում էր պետության և նրա քաղաքների, մանավանդ Խլաթի բարգավաճմանը։ 1154 թ. մի ձեռագրի հիշատակարանում Խլաթն անվանված է մայրաքաղաք[47]։ 1204 թ. մի այլ ձեռագրի հիշատակարանում այն անվանված է «հռչակավոր», «մեծահռչակ», «մեծ քաղաք»[48]։ Կիրակոս Գանձակեցին ասում է, թե Խլաթը անվանում են «հոյակապ քաղաք Բզնունեաց»[49]։

Խլաթը հայտնի էր իր առատ ջրերով, այգիներով, զարգացած արհեստներով և առևտրական նշանակությամբ։ Յակուտը Խլաթի մասին գրում է. «Ամուր և հռչակավոր քաղաք է, օժտված ամեն տեսակ բարիքով, ընդարձակ է ու պտղատու...

Ներքին Հայաստանի քաղաքն է։ Ունի բազմաթիվ պտուղներ և պատվական ու առատ ջրեր, իսկ նրա ձմեռային ցուրտը, առած է դարձել։ Ունի մի լիճ, որի նմանը աշխարհում չկա, այստեղ ապրում է տառեխ կոչված ձուկը, որն արտահանվում է ուրիշ երկրներ»[50]։ Յակուտը վկայում է, որ քաղաքի բնակիչներն զբաղվում են նաև աղի հանույթով[51]։

Մանազկերտը այդ ժամանակներում Շահ Արմենների երկրորդ խոշոր քաղաքն էր։ Այն աճեց, մանավանդ, XII դարի երկրորդ կեսում և XIII դարի առաջին տասնամյակներում, դառնալով նշանավոր քաղաք։ Յակուտի աշխարհագրական բառարանում ասված է, որ Մանազկերտը հռչակավոր քաղաք է, Հայաստանի մասն է համարվում, բնակչությունը բաղկացած է հայերից և հույներից[52] (հույների առկայությունը բացատրվում է նրանով, որ Մանազկերտը արդեն գրավել էին բյուզանդացիները)։ Յակուտը և Մուստա-

45 Տե՛ս Դարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք, էջ 207։

46 Հովհ. Հախնազարյան, Աղբյուրներ Հայաստանի և Անդրկովկասի պատմության, Ուղեգրություններ, հատ. Ա, էջ 24։

47 Տե՛ս Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք, էջ 365։

48 Նույն տեղում, էջ 712—717։

49 Կիրակոս Գանձակեցի, էջ 164։

50 Յակուտ, գիրք 2-րդ, էջ 457։

51 Տե՛ս Յակուտ, գիրք 1-ին, էջ 526։

52 Տե՛ս Յակուտ, գիրք 4-րդ, էջ 748, 648։

վին հատկապես խոսում են քաղաքի ամուր միջնաբերդի մասին և գովում նրա օդն ու պարարտ հողերը։

Յակուտը, խոսելով Ապահունիքի մասին, որի կենտրոնն էր Մանազկերտը, ասում է, թե այստեղ կային ընդարձակ աղահանքեր, մագնիսի (մագնիսացած երկաթի) և պղնձի հանքեր։ Ուրեմն, կարելի է ենթադրել, որ Մանազկերտում զարգացած էին մետաղագործության տարբեր ճյուղերը։ Քաղաքում կային ձիթհաններ և մեծ թվով կուղպակ-արհեստանոցներ։

Արճեշ քաղաքը գրավել էր Տուղրիլ սուլթանը, կոտրելով նրա բնակչության ութ օր տևող համառ դիմադրությունը։ Նա քաղաքացիներից խլեց ոսկի, արծաթ, ձիեր և ջորիներ[53]։

Արճեշը նույնպես մտնում էր Շահ Արմենների տիրույթների մեջ։ Գտնվելով Վանա լճի հյուսիս-արևելյան ափին, ունենալով հարուստ ձկնորսարաններ, լավ հող ու ջուր և լինելով հարավային առևտրական մայրուղու կարևորագույն հանգույցներից մեկը, Արճեշը XII—XIII դարերում դարձավ բազմամարդ մեծ քաղաք, աչքի ընկնելով արհեստագործությամբ, շուկաներով և հարուստ առևտրականներով։

Կիրակոս Գանձակեցին պատմում է Արճիշեցի մեծատուն Աղբայրկա որդի ոմն Աստուր կրոնավորի մասին, ասելով, թե սա հորից ժառանգել էր մեծամեծ հարստություններ՝ ոսկի, արծաթ, շարժական և անշարժ ունեցվածք, այդ թվում և բազմաթիվ կուղպակներ, որոնք նա վարձով էր տալիս[54]։

Արճեշի եկեղեցիներից մեկի վրա XIII դ. երկրորդ կեսին փորագրված մի արձանագրությունից իմանում ենք, որ Քաջբերունյաց գավառի և նրա կենտրոն Արճեշի տերն էր մեծահարուստ ոմն պարոն Սահմադինը, որը քաղաքի մյուս մեծահարուստների հետ միասին եկեղեցիներ է կառուցել և վերանորոգել, նվիրելով նրանց գյուղեր, արտեր, այգիներ, խոտհարքներ, նաև տներ, կուղպակներ[55]։

Յակուտը Արճեշի մասին ասում է, թե հին քաղաք է Մեծ Հայքում՝ Խլաթի մոտ, նրա բնակիչները մեծ մասամբ հայեր են[56]։ Մարկո Պոլոն 1270-ական թվականներին Հայաստանում իր այցելած խոշոր քաղաքներից Երզնկայի և Արզրումի հետ միասին հիշատակում է Արզիզին (Արճեշը)[57]։

Շահ Արմենների պետության մեջ կային և այլ քաղաքներ. Բերկրին, Մուշը, Տողատափը և այլն։ Վարդան պատմիչի ասելով այնտեղ կար 12 քաղաք։

Մի քանի քաղաքներ էլ կային Հայաստանի հարավ-արևմտյան մասում կազմավորված Արտուխյան (Օրթոկյան) և այլ ամիրայությունների սահմաններում։ Դրանցից էին Բաղեշը (Բիթլիս), Արզնը, Բալուն, Խարբերդը, սակայն ամենից ավելի նշանավոր էր Նփրկերտը կամ Մայաֆարկինը։

---

53 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի. էջ 118։

54 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 183—184։

55 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 133—134։

56 Տե՛ս Յակուտ, գիրք 1-ին, էջ 196։

57 Տե՛ս Հովճ. Հակոբյան, Ուղեգրություններ, էջ 48։

Նփրկերտը սելջուկյան արշավանքներից քիչ հետո ընկավ Արտուխյանների ձեռքը և դարձավ նրանց ամիրայության կենտրոնը։ 1174 թ. Սալահ ադ-Դինը գրավեց այն և հանձնեց Մելիք Ադիլին (Էդիլ), այսպիսով քաղաքին տիրացան «Էդիլեանք» կամ Այյուբյանները, որոնց իշխանությունը տևեց մինչև 1260 թ.։

Գտնվելով Հայաստանի հարավով անցնող առևտրական մայրուղու վրա, Նփրկերտը միաժամանակ ճանապարհների հանգույց էր, այստեղից առևտրական քարավաններն անցնում էին Ասորիք, Կապադովկիա և այլուր։

Յակուտի վկայությունների համաձայն նշանավոր այս քաղաքն ուներ ընդարձակ պարիսպ, ութը դուռ, հիմնական պարսպից բացի նաև նախապարիսպ։ Նփրկերտում, բացի հայ, արաբ և ասորի բնակչությունից, առանձին թաղամասում ապրում էին նաև հրեաները։ Քաղաքի մեծ եկեղեցին՝ Պողոս և Պետրոս առաքյալների անունով, գտնվում էր հրեաների թաղում, նրանց տաճարի մոտ[53]։

Նփրկերտից ոչ հեռու Արղնի հայտնի բնակավայրում կային մետաղի օգտագործվող հանքեր, որոնց շնորհիվ քաղաքում զարգացած էին մետաղագործության հետ կապված, ինչպես և շինարարական ու զանազան այլ արհեստներ։ Նփրկերտը XII—XIII դարերում Հայաստանի հարավի երկրորդ խոշոր քաղաքն էր Խլաթից հետո։

Խլաթից Նփրկերտ տանող մայրուղու վրա գտնվող քաղաքներից էր Բաղեշը։ XII—XIII դարերում Բաղեշը նույնպես զգալի զարգացման հասավ։ Յակուտը գովում է Բաղեշի այգիներն ու մրգաստանները, ապրանքների էժանությունը, մանավանդ անգերազանցելի խնձորը, որն արտահանվում էր տարբեր երկրներ։ Իսկ մյուս քաղաքը՝ Արզնը, սելջուկների գործած ավերից հետո, քիչ թե շատ նշանակալից զարգացում չունեցավ։

Արածանիի ստորին հոսանքի շրջանում գտնվող Խարբերդը միջին մեծության քաղաք էր, որը նույնպես չբարգավաճեց։

XII—XIII դարերում մեծ թվով հայ բնակչություն կար նաև Միջագետքի, Կապադովկիայի և Փոքր Ասիայի քաղաքներում։ Մասնավորապես հոծ էր հայ բնակչության թիվը Ամիդում, Ուռհայում (որտեղ միաժամանակ հաստատվել էր հայկական կաթողիկոսական աթոռ), Մելիտինեում, Սեբաստիայում, Կոնիայում, Կեսարիայում և շատ ուրիշ քաղաքներում։ Այս քաղաքներում հայերի մեծ մասը զբաղված էր արհեստներով, շինարարությամբ, առևտրով, այգի և պարտեզ մշակելով, ինչպես և գիր ու գրչությամբ, մշակույթով։

Հայ նշանավոր ճարտարապետների անունները արաբական տառերով փորագրված են, օրինակ, Կոնիայում, նրանց կառուցած մեդրեսեի և մզկիթի պատերին։

Ակադեմիկոս Վլ. Գորդլևսկին իրավացի նշում է, որ Փոքր Ասիայի սելջուկյան պետության քաղաքներում բնակվում էին առավելապես հույներ և հայեր։ Վերջիններիս ձեռքին էր գտնվում մետաղների մշակումը, պղնձե իրե-

---

53 Տե՛ս Յակուտ, գիրք 3-րդ, էջ 760։

րի պատրաստումը։ Ռումի սելջուկյան պետության սահմաններում «ընդհանրապես տեղական արդյունաբերության մեջ մեծ դեր էին խաղում հայերը»[59]։ Շինարարության և արվեստի մասին խոսելիս, նա գրում է. «Ադրբեջանից, Վրաստանից և Հայաստանից դուրս եկած արհեստավորները ողողեցին Փոքր Ասիան և նպաստեցին գեղարվեստական արդյունաբերության և ճարտարապետության ծաղկմանը»[60]։

---

59 *Вл. Гордлевский*, Государство сельджуков Малой Азии, стр. 103։
60 Նույն տեղում, էջ 103։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ՓՈԽԱՆԱԿԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ՔԱՂԱՔԱՅԻՆ ՎԵՐՆԱԽԱՎԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

## 1. ԴՐԱՄԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ

*XII դարի երկրորդ կեսին և XIII դարում ներքին և արտաքին առևտուրը նախկինից ավելի մեծ ծավալ ստացավ։ Երկրի ներսում առ ու ծախի առարկա էր դարձել ամեն տեսակի շարժական և անշարժ ունեցվածքը։ Հայաստանը ավելի մեծ չափերով էր մասնակցում միջազգային առևտրին։ Այս ամենը առաջացրել էր նաև ոսկուց, արծաթից և պղնձից կտրված դրամների բավականաչափ մեծ պահանջ։ XII դարի սկզբից, սակայն, դրամական շրջանառության մեջ ստեղծվեց մի նոր իրադրություն, որը բնորոշվում է արծաթի ճգնաժամով։ Արծաթը վերացել էր ասպարեզից, ուստի ներքին շուկայում առևտուրը կատարվում էր պղնձե դրամներով, իսկ արտաքին գործարքներում՝ առավելապես բյուզանդական և սելջուկյան ծագում ունեցող ոսկե դրամներով։ Արծաթի անհայտացումը, որի պատճառները պարզաբանված չեն, ծայր էր առել XI դարում Արևելյան Իրանում, իսկ XII դարում արդեն բացահայտ էր Հայաստանում և նրան մերձավոր երկրներում, որտեղ ոչ միայն արծաթե դրամներ չէին կտրվում, այլև արծաթե առարկաներ և զարդեր չեն հանդիպում,*

*Հայաստանում XII դարում շրջանառության մեջ են եղել Ելտկուզյանների (Իլդիգիզյանների) կտրած պղնձե դրամները։*

*XII—XIII դարերում ապրանքային արտադրության, արհեստների ու առևտրի զարգացումը պահանջում էր դրամների զանգվածային թողարկում։ Ելտկուզյաններն այժմ դրամներ ավելի շատ էին կտրում, միաժամանակ օգտագործում էին բյուզանդական պղնձե դրամները, դրանց վրա խփելով իրենց կնիքը։*

*Հայաստանի հարավային և արևմտյան մարզերում առևտուրը XII դ. կատարվում էր տեղական ամիրայությունների՝ Դանիշմանյանների, Մենգուջակյանների, Սալդուխյանների, Շահարմենների, Արտուխյանների, Զենգյանների և Այյուբյանների պղնձե դրամներով։ Սեբաստիա, Մալաթիա, Երզնկա և այլ քաղաքներում, որոնց բնակիչները հիմնականում քրիստոնյաներ էին,*

*թուրքմենական ծագման Դանիշմանյանները թողարկում էին պղնձե դրամներ՝ Քրիստոսի, երբեմն նաև Աստվածամոր պատկերով։ Սալդուխյանները, որոնք հաստատվել էին Կարնո մեջ, պղնձե դրամներ էին թողարկում. ս. Գեվորգի կամ աշխարհիկ բնույթի պատկերներով ու արաբերեն արձանագրություններով։ Պղնձե դրամների վրա երբեմն արաբերենով գրված է արծաթ դրամի անունը՝ դիրհեմ։ Սելջուկյան նմանօրինակ պղնձե դիրհեմները շրջանառության մեջ էին Նփրկերտ, Կարին, Խլաթ, Արճեշ, Բերկրի, Մանազկերտ, Երզնկա քաղաքներում և սրանց մերձավոր շուկաներում։*




**Դրամներ Գառնիում գտնված գանձից**

*Հայաստանի հյուսիս-արևելյան կողմերում շրջանառության մեջ են եղել զորեղացած Վրաստանի կտրած դրամները՝ XII դարի վերջերին Գեորգի Գ (1156—1184) թագավորի պղնձե դրամները, իսկ XIII դարի սկզբից առավել լայն տարածում են գտնում Թամար թագուհու և նրա երկրորդ ամուսնու՝ Դավիթ Սոսլանի, ինչպես և Թամարին հաջորդող Գեորգի Լաշայի (1213—1222) և վերջապես Ռուսուդան թագուհու (1222—1245) պղնձե դրամները։*

*XIII դարի 30-ական թվականներից սկսվում է դրամային շրջանառության նոր փուլը, որը բնորոշ է մոնղոլական արծաթ դրամների լայն տարածմամբ։*

*Մոնղոլական տիրապետության վաղ շրջանում միջազգային առևտուրը*

Հայաստան է բերում նաև Փոքր Ասիայի, սելջուկյան սուլթանների արծաթ դրամները՝ թողարկված Կեսարիայում, Իկոնիայում և Սվասում։

Աբաղա խանի (1265—1281) իշխանության տարիներին հայկական քաղաքներում թողարկվել են պղնձե դրամներ՝ մի կողմում հայերեն և արաբերեն, իսկ մյուս կողմում ույգուրերեն մակագրություններով։ Այդ դրամների վրա պատկերված է հավասարաթև խաչ, որի անկյուններում դրոշմված են հայերեն կրճատ գրեր՝ ՏՐ/ԱԾ/ ՅՍ/ՔՍ (Տէր Աստուած Յիսուս Քրիստոս) և դրանց զուգահեռաբար՝ արաբերեն «Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբո Աստուծոյ միակի»։

Թղթե դրամները, բնականաբար, երկար կյանք չունեցան։ Արդեն Ղազան Մահմուդ խանի ժամանակ (1295—1304) հատուկ ռեֆորմով մշակվեց դրամակշռային միասնական սիստեմ և պաշտոնապես արգելվեց այդ սիստեմից տարբեր այլ կարգի դրամների թողարկումը։ Սահմանվեց դրամների նոր տիպ, որը թողարկվում էր Ղազան խան Մահմուդի անունից։ Հիմնական դրամային միավորը հանդիսանում էր արծաթ դիրհեմը՝ 2,445 գրամ միջին քաշով։ «Ղազանի» կոչվող նոր տիպի դրամները թողարկվում էին նաև Հայաստանի մի շարք քաղաքներում, իսկ Անիում թողարկում էին պղնձե դրամներ՝ Քրիստոսի պատկերով։

## 2. ՓՈԽԱՆԱԿԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՎԱՃԱՌՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Ապրանքային արտադրությունը, ներքին և արտաքին առևտուրը, դրամական շրջանառությունը XII—XIII դարերում հասան մինչ այդ աննախընթաց մակարդակի և առաջ բերեցին նոր երևույթներ։

Առևտուրն ընդարձակվելով ընդգրկեց տնտեսության և կյանքի տարբեր բնագավառներ։ Առևտրի առարկա դարձան ոչ միայն գյուղատնտեսական արտադրանքի մի մասը և արհեստավորական արտադրանքի գերակշռող մասը, այլև հողը, ջուրը, այգիներն ու ծառաստանները, ամբողջ գյուղեր, ավաններ, անգամ քաղաքներ, արտադրական հաստատություններ՝ ձիթհաններ, ջրաղացներ, ներկատներ, արհեստանոցներ, արտադրական և առևտրական նպատակներով օգտագործվող տներ, շենքեր, հյուրանոց-պանդոկներ, իջևանխանապարներ և ամեն տեսակի ունեցվածք։

Այսպիսով, ձեռքից-ձեռք էր անցնում ոչ միայն շարժական, այլև անշարժ ունեցվածքը, ներառյալ տոհմիկ իշխանների հողային ժառանգական սեփականությունը։

Մեծացել էր դրամի գերը, աճել դրամական շրջանառությունը, և եթե IX—XI դարերում մեծամեծ գումարներով հողեր, գյուղեր և այլ անշարժ ունեցվածք վաճառողների դերում հանդես էին գալիս աշխարհիկ ֆեոդալները, իսկ գնողները դարձյալ ֆեոդալները և վանքերն էին, ապա XI դարից սկսած դրությունը նկատելիորեն փոխվում է՝ վաճառողների գերում հանդես են գալիս գերազանցապես ֆեոդալները, իսկ գնորդների դերում զգալի տեղ են գրավում խոշոր վաճառականներն ու վաշխառուները, մանր հողատերերի

շարքերից դուրս եկած վարչական, դատական, հարկային, զինվորական պաշտոնյաները և ուրիշներ։

XI—XIII դարերի մատենագրական աղբյուրներում և վիմագրական արձանագրություններում հարյուրավոր վկայություններ են պահպանվել հողերի, գյուղերի և անշարժ ունեցվածքի այլ տեսակների առք ու վաճառքի վերաբերյալ։

Դրամի դերի մեծացմանն ու դրամական շրջանառության ընդարձակմանը զուգընթաց հարկերի և տուրքերի մի զգալի մասը գանձվում էր դրամով. իսկ վանքերին ու եկեղեցիներին նվիրված գյուղերի, այգիների, անշարժ ու շարժական ունեցվածքի մեծագույն մասի վերաբերյալ նշվում է, որ նվիրաբերողները դրանք «Գանձագին են արել», այսինքն՝ գնել են գանձով՝ դրամով։

Անիի և նրա մերձակայքի գյուղաքաղաքների, ինչպես նաև Երևան, Բջնի քաղաքների բնակիչների՝ զանազան վանքերին ու եկեղեցիներին արած նվերների մեջ սովորական են դառնում նաև դրամական նվերները։ Եկեղեցին ու հոգևորականությունը նույնչափ հետամուտ էին դրամ և դրամական եկամուտներ ձեռք բերելուն, որքան և աշխարհիկ ֆեոդալները, ուստի նրանք ոչ միայն մասնակցում էին զարգացող առևտրին և քաղաքներում կատարվող առևտրական գործարքներին, որտեղ պահում էին նաև իրենց խանութ-կուղպակները, այլև դրամով էին գանձում եկեղեցական հասերի զգալի մասը։ Շնորհալու խոսքերով ասած՝ անգամ պահանջում էին «գինս արծաթոյ... վասն մկրտութեան կամ մահուան հաղորդ տալոյ»[1]։ Քիչ ավելի ուշ Կոստանդին Ա կաթողիկոսը ստիպված էր նշել, որ եկեղեցականները դրամով են կատարում կնունքը, պսակը, հոգևորականների ձեռնադրությունը, անգամ խոստովանությունն ու հաղորդությունը, և սահմանում էր, որ այլևս այդ բանը չանեն[2]։

Փողով կարելի էր ձեռք բերել ոչ միայն հող, կալվածք, հարստություն. այլև վարչական, հարկային, դատական, անգամ եկեղեցական բարձր պաշտոններ։ Եկեղեցական պաշտոնների վաճառքը հայտնի էր «սիմոնականություն» անունով։ Ներսես Շնորհալին և Կոստանդին կաթողիկոսը ստիպված էին արգելք դնել դրամով եկեղեցական պաշտոններ վաճառելու վրա[3], բայց ապարդյուն։

Տարածված երևույթ էր նաև պաշտոնյաների, մանավանդ դատավորների կաշառակերությունը, ըստ որում, կաշառքը սովորաբար վերցնում էին դրամով։

Դրամ և հարստություն դիզելու սովորական միջոց էր դարձել վաշխառությունը, որը նախորդ դարերի համեմատությամբ շատ ավելի լայն չափերով էր կատարվում, իր հետևանքներով էլ նոր որակ էր ձեռք բերել։ Վաշխառուներն այժմ ոչ միայն աճեցնում էին իրենց դրամը, գանձ կուտակում, այլև ձեռք էին բերում հողեր, ամեն տեսակի անշարժ և շարժական ունեցվածք։

1 Ներսես Շնորհալի, *Թուղթ ընդհանրական*, էջ 81։

2 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 304, 305, 308*։

3 *Տե՛ս* Ներսես Շնորհալի, *Թուղթ ընդհանրական, էջ 51—66*։ Կիրակոս Գանձակեցի, *էջ 303—304*։

Եկեղեցին դեռևս վաղ քրիստոնեական ժամանակներից ավանդաբար հակառակ էր վաշխառությանը, համարելով այն սատանայական խաբեություն։

Շնորհալին, դիմելով քաղաքացիներին, ասում էր. «մի՛ տայք զարծաթ ձեր ի վարձու... այնոցիկ, որք նեղին ի բռնութենէ իշխողաց և ուտէք վաղքատութեան վաստակս նոցա ի շահս վաշխիցն...»[4]։ Այս քարոզը, սակայն, ավելի շատ վաշխառության տարածված լինելու մասին է վկայում։ Արիստակես Լաստիվերտցին ընդգծված կերպով նշել է վաշխառության և նման չարաշահությունների մասին՝ սելջուկների ձեռքով Արծնի և Անիի ավերման առթիվ. «Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, և ի քրտանց տնանկաց փարթամանան, և ի վաշխից, և յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն...»[5]։

Վաշխառության սովորական ձևը դրամը վաշխով (շահույթով, տոկոսով) տալն էր, սակայն նույն եղանակով պարտքով կամ փոխ էին տալիս նաև հացահատիկը և այլ մթերքներ։ Արծնում կատարվող անիրավությունները թվելով, Լաստիվերտցին շարունակում է. «վաշխից և տոկոսեաց օրէնք եդան, և ցորենոյ բազմապատկութիւն, որով երկիր պղծի...»[6]։

Մշակվել և կիրառվում էին դրամ փոխ տալու հատուկ կանոններ, որոնց համաձայն վաշխառուն կամ առհասարակ դրամ կամ այլ բան փոխ տվողը, երբ և որտեղ կամենար, կարող էր ետ ստանալ փոխ տվածը, որքան ժամանակը երկար էր, այնքան փոխ տվածի շահը կավելանար։ Վերջապես, փոխ տվողներն իրավասու էին պահանջել կամ երաշխավորներ, կամ փողի դիմաց պետք է գրավ դրվեին հողեր, այգիներ, տներ և այլն, կամ էլ «գիր ղաւալայ», այսինքն կապալագիր կամ պարտամուրհակ պետք է կազմվեր գործարքի մասին։

Վաշխի տոկոսը կայուն չէր և ամբողջ միջնադարի ընթացքում աճում էր։ Ներսես Շնորհալին, խոսելով վաշխառուների (սեղանավորների) մասին, որոնք աճեցնում են արծաթը «տոկոսեօք», ասում է, թե հոգևորականներն էլ պետք է աճեցնեն իրենց տրված աստվածային շնորհքը «ըստ կատարեալ թուոյ տան քանքարաց»[7]։ Թերևս սա ակնարկ է վաշխի տաս տոկոս լինելու մասին՝ XII դարում, սակայն հաճախ ավելի բարձր տոկոս են պահանջել, մանավանդ երաշտի և սովի տարիներին։ Անգամ եղել են դեպքեր, երբ ամսական տաս տոկոս են պահանջել։ Հակոբ Կլայեցի կաթողիկոսն ասում է. Ով 1000 դեկան է վաշխով տվել, ժողովում է ամիսը 100, 100-ը՝ 10 է ժողովում։ Սոսկալի է լսել նրանց անունը, «զի ամսապահանջողք անուանին...»[8]։

Վարդան Այգեկցու մի քարոզից պարզ երևում է, որ փոխ տված դրամի դիմաց երբեմն էժան գներով ցորեն և գինի էին վերցնում շուկայում ավելի թանկ գներով վաճառելու համար և որ ավելի ծանր հետևանքներ էր ունե-

4 Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 107։

5 Արիստակես Լաստիվերտցի, էջ 136։

6 Նույն տեղում, էջ 75

7 Մատենադարան, ձեռագիր № 8030, թերթ 217ա-բ։

8 Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 8։

նում, երբ պարտապանների հայրենիքը՝ հողերը, այգիները և այլ անշարժ ունեցվածքն էին գրավ վերցնում և պահում։

Մխիթար Գոշը մեջ է բերում հին քրիստոնեական օրենքը, որով փոխատուն վաշխ չպետք է վերցներ և դատաստանով կարող էր միայն իր փոխ տվածը ետ ստանալ, սակայն լավ իմանալով, որ դա անհարիր է իր ժամանակներին, սահմանում է, որ վաշխ չվերցվի գոնե գրավ դրվածից[9]։





Ներքին Ջրափի կարավանատան հատակագիծը և երկայնական կտրվածքը, Անիի դիմաց, Ախուրյանի ձախ ափին

*Փոխ տվածի կամ պարտքի դիմաց գրավ դրված ինչքը կոչվում էր «գրավկնած», որը կարելի էր կապալով կամ վարձակալությամբ տալ կամ նվիրել եկեղեցուն ժամանակավոր օգտագործման համար, մինչև փոխ վերցնողը կամ պարտապանը կվճարեր իր պարտքը։ Անեցի մեծահարուստ Տիգրան Հոնենցը 1215 թ. կառուցած եկեղեցուն իր նվիրատվությունը թվարկելուց հետո, ավելացնում է. «և այլ քաղում գրավկնած էր, զոր ոչ արձանագրեցի, վանացս էի տվել ու թէ տէրքն թափեն ոսկին վանացս զոր ուրիշ իմ անդարձագրին իմ գրել»[10], այսինքն, եթե ինչքի տերերը կամենան դրավ դրվածը ետ վերցնել, պարտք վերցրած ոսկին պետք է վանքին տան։ 1269 թ. մի այլ արձանագրությունից իմանում ենք, որ անեցի ոմն Հազարբեկը գրավկնել է Դվնա դռան մոտ գտնվող ինչ-որ ակ (ձիթհանի կամ ջրաղացի) 700 արծաթ*

9 Տե՛ս Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 358։

10 «Դիվան հայ վիմագրության», հատ. I, էջ 63։

դրամով, ինքն էլ վրան ծախսել է 800 արծաթ դրամ, ապա այդ ակը օգտագործման համար նվիրել է Հոռոմոսի վանքին[11]։ Գրավկնողը մինչև պարտքի մարումը ժամանակավորապես օգտագործում էր իր մոտ գրավ դրված ունեցվածքը և այդ էր պատճառը, որ վաշխ կամ տոկոս չէր վերցվում այն պարտքից, որի դիմաց ունեցվածք էր գրավ դրված։

Հնից եկող, բայց այս ժամանակաշրջանում լայն չափեր ընդունած երևույթ էր նաև վարձակալությունը կամ կապալառությունը։

Քաղաքային տնտեսության և դրամական շրջանառության զարգացմանը զուգընթաց սկսեցին վարձակալությամբ տալ նաև հանքերը, ձկնորսարանները, ջրաղացներն ու ձիթհանները, արտադրական հաստատությունները, տները, կուղպակները և այլն։ Դա հնարավորություն էր ընձեռում դրամատերերին օգտագործելու իրենց, ժամանակավորապես նաև ուրիշներին պատկանող արտադրամիջոցներն ու այլ ունեցվածքը։ Մխիթար Գոշի Դատաստանագրքից իմանում ենք, որ կապալով տրված ջրաղացի կամ նման հաստատության տերը բացի կապալավարձից բաժին չէր ստանում նրա եկամտից կամ շահույթից, ինչպես և չէր մասնակցում առաջացած վնասը մարելուն։ Իսկ կապալառուն ոչ միայն օգտագործում և եկամուտ էր ստանում այդ հաստատությունից, այլև կարող էր այն ընդլայնել, լրացնել նրա սարքավորումը (օրինակ ջրաղացի քարը, նավը) և այդ դեպքում նա իր ավելացրածի տերն էր։ Այս եղանակով նա կարող էր տեր դառնալ հասութաբեր հաստատության մի մասին և փողով ձեռք բերել նաև մյուս մասը։

## 3. ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԱՅԻՆ ՎԵՐՆԱԽԱՎԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ

Ամեն տեսակի շարժական, մանավանդ անշարժ ունեցվածքի առքն ու վաճառքը, վարձակալությունը (կապալառություն), վաշխառությունը՝ ուղեկցված պարտքի դիմաց ուրիշի անշարժ ունեցվածքը գրավկնելու երևույթով, նախադրյալներ էին ստեղծել, որպեսզի քաղաքի խոշոր առևտրականները, վաշխառուները և այլ կարգի փողատերերը ձեռք բերեին հողեր, գյուղեր, այգիներ, ձիթհաններ, ջրաղացներ, հասութաբեր այլ հաստատություններ և տեր դառնային ոչ միայն դրամի, այլև անշարժ ունեցվածքի և մեծամեծ հարստությունների։

Տնտեսական բնույթի այս երևույթն ունեցավ նաև հասարակական լուրջ հետևանքներ։ Եթե մինչև XII դարը միայն առանձին վաճառականներ և վաշխառուներ էին փողով անշարժ ունեցվածք ձեռք բերում, ապա XII—XIII դարերում այդպիսիների թիվը այնքան ստվարացավ, որ նախորդ ժամանակների հատ ու կենտ մեծատուների փոխարեն այժմ կազմավորվեց քաղաքային բնակչության մի ամբողջ վերնախավ՝ «մեծատունք» անունով։

Սելջուկների տիրապետության առաջին շրջանում, երբ քաղաքները ծանր հարվածներից դեռևս ուշքի չէին եկել, վաճառականներն ու մեծատուները

11 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 112։

դեռևս խոշոր դեր չէին կատարում, ուստի և նրանց մասին հիշատակությունները մինչև XII դարի կեսերը հատ ու կենտ են[12]։

XII դարի վերջին հիշատակված է արդեն 10—13 մեծատան անուն, իսկ XIII դարից պահպանվել են շուրջ հարյուր մեծատունների անուններ և բազմաթիվ վկայություններ, որոնք լավ են բնութագրում քաղաքային այդ վերնախավին։

XIII դարի առաջին կեսի խոշորագույն դրամատեր և վաշխառու մեծատունը Տիգրան Հոնենցն էր։ Սա ազնվական ծագում չուներ, և ինչպես երևում է վիմական արձանագրություններից, Անի քաղաքում վարում էր տնտեսական կարգի պաշտոն, թերևս Զաքարյանների հարկային վերակացուն էր՝ նրանց պատկանող քաղաքում։ Իր պաշտոնի, մանավանդ, առևտրի և վաշխառության միջոցով նա կուտակել էր հսկայական հարստություններ և գանձագին անելով կամ գրավկնելով ձեռք էր բերել մեծ թվով կալվածներ, գյուղեր, ջրաղացներ, ձիթհաններ, փնդուկ-խանապարներ, տներ, ամբողջ թաղամասեր Անիում և այլ անշարժ ունեցվածք։

1215 թ. Տիգրան Հոնենցը կառուցել է տալիս Անիի գեղեցկագույն տաճարներից մեկը (որը մինչև օրս էլ կանգուն է), նրա պատին թողնելով շատ ընդարձակ մի արձանագրություն, որը լավագույն կերպով է բնութագրում այս մեծատան կերպարը, նրա անթիվ հարստությունները և սրանց աղբյուրները։ Նա հիշատակում է իր տերերի՝ Զաքարիայի և սրա որդի Շահնշահի անունները, բայց իրեն անվանում է. «...Տիգրան ծառայ Աստուծոյ, որդի Սմբատօրենց Սուլեմա, յազգէն Հոնենց»։ Նա ասում է, որ տեղը իր հալալ գանձով գնել է հայրենատերերից, պարսպել շուրջանակի, շինել ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին, որը հարդարելու համար նվիրել է բազմաթիվ իրեր՝ պատկերներով, նախշերով, ակնեղենով, մարգարիտներով զարդարված ոսկե և արծաթե փրկական նշաններ, խաչեր, ոսկի և արծաթ կանթեղներ, սուրբ առաքյալների, նահատակների նշխարներ և ամեն տեսակի սպասք՝ ոսկուց և արծաթից բազում այլ զարդեր։ Նա կառուցել է տվել ամեն տեսակ բնակարաններ հոգևորականության համար, որոնց ինքն էր կարգել վանքում, ապա թվարկում է վանքին տված իր մեծամեծ նվերները՝ կալվածներ. «զոր գնել էի գանձով և վճռմամբ հայրենէտիրաց և զոր ես ի հիմնէ շինել էի»—Գոռոխոնեց գյուղի կեսը, Քարհատի 5 դանկը (այսինքն՝ 5/6 մասը), Մշակունեց կեսը, Կաղզունց կեսը, Ցամաքծովն ամբողջովին, Խուզած Մահմունդը՝ Կարսի երկրում, Ցնդո 2/6 մասը, Խաչորիկի հողերը, քաղաքի միջի փնդուկը, հայրենի բաղնիքը, հրապարակի աղբյուրը, խանապարը կուղպակներով, կամարակապ փնդակն ու մարագը՝ բաղնիքի հետ միասին, տեր Սարգսի ախոռն ու մարագը, որ գնեցի, կալը և երկու ակ ձիթհան, ախոռներ, մարագներ, վանքի առջևի և լանջի պարտեզները՝ մինչև Գլիձորի դուռը, մինչև գետն ու գետեզերքը, Դվնա դռան մոտ գնած պարտեզը, երկու ակ ջրաղացը, ձկնորսական մի թարփ, մյուս թարփից շաբաթական երկու օր, Գլիձորի ջրաղացը, թարփը՝ շաբաթական երկու օր, գետի կեսը՝ Բեշքենակապից մինչև կամուրջը, որ իմ գնածն էր, պապենց խանապարի 4/6 մասը և մոտի կուղպակը, Հատեցոնց

---

12 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 8, 22. 41։

զուկակի (փողոցի) վրա գտնվող բոլոր տները, քաղաքի մոտ գնած բազմաթիվ հողեր, մի այգի Երևանում, մի այգի Օշականում, մի այգի Կոշում, մի այգի Արուճում, մի այգի Մրենում, մի այգի Ծմակում։ «Այս ամենը, որ գնել էի և այլ բազում գրավկնած էր, զոր ոչ արձանագրեցի, տվել էի վանքին»[13]։

Տիգրան Հոնենցը վանքին նվիրել է նաև իր շինած, նորոգած և ընծաներով փարթամեցրած Բեխենց վանքը[14]։

Կարելի է պատկերացնել, թե որպիսի հարստությունների տեր պիտի լիներ անեցի այս մեծահարուստ վաշխառուն, որպեսզի այդքան մեծամեծ նվերներ տար իր կառուցած վանքին։

Շատ խոշոր հարստությունների տեր էր մեծատուն Ումեկը՝ «Անլր մեծատուն վաճառական»։ Սա մանազկերտցի էր, Ճար անունով մեկի որդին, ծավալել էր առևտրա-վաշխառուական լայն գործունեություն Կարինում։ XIII դարի կեսերին տեղափոխվում է Տփղիս, մեծ գումարով (40 հազար դուկատ) Զաքարյաններից գնում է Գետիկը։ 1283 թ. նրա որդի Ճարը Նոր Գետիկի վանքին նվիրում է 4000 դուկատով գնած Հովս գյուղը, նշելով, որ այդ դառը ժամանակներում «հայրենիքը էժան էր և ոսկին թանկ»[15]։

Ումեկի վաճառական ընկերակիցն էր կարնեցի պարոն Հովհաննեսը, որի որդին՝ Ստեփանոսը Արևելք տեղափոխվելով 1252 թ. 40 հազար արծաթ դրամով գնում է Խորակերտը՝ իր գյուղերով, այգիներով, և հիմնիվեր նորոգում է վանքը[16]։

Տիգրան Հոնենցի և Ումեկի նման խոշոր հարստություններ ձեռք բերած մեծատուն էր անեցի Ավետենց Սահմադինը։ Նա քաղաքի հարկային վերակացուներից էր։ 1261 թ. Զաքարյան Շահնշահի որդի Արտաշիրից գնել էր Նախկինում թագավորապատկան Մրեն գյուղաքաղաքը, որտեղ կառուցած իր պալատի վրա, որը գտնվում էր Արքայություն կոչվող պարտեզի մեջ, ծախսել էր 40 հազար դուկատ, ապա գնել էր Մրենի շրջակայքի այգիները «ամէն մէկ իւր տիրոջէն»[17]։

Այս Սահմադինը իր նման մեկ այլ անեցի կապալառու վաշխառուի և մոնղոլների մոտ պաշտոնյա՝ սահիբ-դիվան Շամս ադ-Դին Ջուվեյնու հետ 1263 թ. փողով գնում է Անի քաղաքը Զաքարյաններից և դառնում նրա տերը[18]։ Երևանի եկեղեցիներից մեկի վրա 1264 թ. փորագրված արձանագրությունից իմանում ենք, որ Ավետենց Սահմադինը տիրացել էր նաև Երևան քաղաքին։ «զԵրևան գնեցի հողով ու ջրով և իրատամբ այս արարի հայրենիքս»[19],— ասում է նա, այսինքն, փողով գնածի վրա ձեռք է բերել ժառանգական տիրակալի իրավունք։

---

13 «Դիվան հայ վիմագրության», պրակ I, էջ 63։

14 Տե՛ս նույն տեղում, էջ 68։

15 Գ. Հովսեփյան, Նյութեր և ուսումնասիրություններ, Ա, էջ 12։

16 Տե՛ս Ալիշան, Շիրակ, էջ 25։

17 Н. Я. Марр, Ани, էջ 79։

18 Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», էջ 24։

19 Կ. Ղաֆադարյան, Երևանի Կաթողիկե և Նորահայտ հուշարձանի արձանագրությունները («Տեղեկագիր» պատմության և գրականության ինստիտուտի), էջ 165։ Ս. Բարխուդար–

*Մրենից և Երևանից բացի, Սահմադինի տիրույթն էին դարձել նաև Օշականը և Արշառունը։ Այդ երևում է 1273, 1286 և 1288 թթ. նրա թողած արձանագրություններից։ Դրանցից առաջինում ասված է, որ նա թողել է (վերացրել է) Արշառունի, Մրենի և Օշականի այգիների տուրքը, որը խալա էր կոչվում*[20]*։ Երկրորդում ասված է, որ Սահմադինի հրամանով Ստեփանոս ձեռնավորը (Օշականում Սահմադինի նշանակած կառավարիչը) և Վահրամ Քեթոբարը վերացրել են Օշականի քահանաների վճարելիք այգու, բամբակի և ժամհարի հարկերը*[21]*։*



**Անիի իշխանական պալատի խճանկազարդ մուտքը**
**(վերակազմությունը Թ. Թորամանյանի)**

*1288 թ. Սահմադինը վերացրել է Օշականի հացի և դարմանի (անասնակերի) շարիատը, որը հողատիրոջը վճարվող տուրք էր*[22]*։*

*Այսպիսով, վիմագիր արձանագրություններից պարզվում է, որ Սահմադինը դրամական մեծամեծ հարստությունների շնորհիվ ձեռք էր բերել ընդարձակ տիրույթներ։ Սահմադինի ով լինելը երևում է իր իսկ թողած արձանագրություններից։ Նա տոհմիկ ծագում չունի, հոր անունն էր Ավետիք, որը քիչ թե շատ աչքի ընկնող քաղաքացի պիտի լիներ, որպեսզի տոհմն էլ նրա անունով կոչվեր։ Ինքը՝ Սահմադինը պարոն պատվանունն է կրել. հայտնի է*

յան, *Մի քանի դիտողություններ Երևանի Կաթողիկե եկեղեցու արձանագրությունների վերաբերյալ։ ԳԱ «Տեղեկագիր», 1947, № 5, էջ 74—77։*

20 *Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 116։*

21 *Տե՛ս նույն տեղում, էջ 129։*

22 *Նույն տեղում, էջ 130։*

նաև, որ նրա թոռ Բեսութան նույնպես պարոն էր և 1295 թ. վերացրել է իր տիրույթ Օշականի և նրա վանքերի հարկերից մեկը[23]։

Սահմադինի կարգի կամ նրանից փոքր-ինչ պակաս կարողություն ունեցող մեծատուններ էին Ուքան Քարիմադինը և Պապքան Ֆահրադինը, որոնք նույնպես Անիի հարկային տեսուչներ էին։ Ինչպես Սահմադինը, այնպես էլ մահմեդական անուններով այս քրիստոնյա մեծատունները մեծ գանձեր, տըներ, հյուրանոցներ ունեին Անիում և իրենց միջոցներով գնել ու հիմնովին վերաշինել էին Անիից երկու կիլոմետր հյուսիս-արևելք գտնվող Կարմիր վանքը, որը նշանավոր ճարտարապետական հուշարձան է, կանգնեցրել են Անիի եկեղեցիներից մեկի զանգակատունը և նվերներ տվել Հոռոմոսի վանքին։ Այս պարոնների անունով պահպանվել են նաև այլ նվիրատվական արձանագրություններ, որոնք վկայում են նրանց մեծահարուստ լինելը[24]։

Տիգրան Հոնենցի, Ումեկի և Ավետենց Սահմադինի պես մեծահարուստների թիվը փոքր էր, ավելի շատ էին միջին կարողության տեր մեծատունները, որ երևում է վանքերին և եկեղեցիներին արած նրանց նվերների չափից, որ հիշատակված է բազմաթիվ արձանագրություններում։

Մատենագրական աղբյուրներում մեծատուններն անվանված են «գանձիւք հղփացեալ»[25], շատ հարուստ, անչափ ակն ու գոհարի տեր մարդիկ[26], կամ «նոքա որ կաշառքն առին ու շատ վաշխ ու մեծ տոկոսնին»[27], ովքեր փարթամ են ինչքով, ակով, արծաթով և ամեն բարիքներով նաև ճորտ ու ծառաներով, աղախիններով[28]. նա չար կեղեքիչ է հպարտ, պերճ ու փառավոր, շրջում է քաղաքում, հափշտակում է ուրիշի ունեցվածքը, զրկում, կեղեքում, նեղում, տառապեցնում է ուրիշներին[29]։

Միջնադարյան առակագրության մեջ ևս մեծատունը ներկայացված է բավականաչափ ցայտուն բնութագրությամբ՝ «Մեծատուն մի խիստ փարթամ... Ունէր շատ ոսկի և արծաթ և շատ գեղորայք և ագարակ և շատ մլքեր, ջաղացնի և այլ շատ մլքեր»[30]։ Աղբյուրներից պարզ երևում է, որ քաղաքային մեծատունների վերնախավի մարդիկ իշխանական կամ մեծատոհմ ազնվական ծագում չունեին, այլ անուն և համբավ էին ձեռք բերում շնորհիվ իրենց մեծամեծ հարստությունների։ Դրանք վաճառականներ էին, փողատեր վաշխառուներ, կապալառուներ, հարկահաններ կամ հարկային վերակացուներ, զինվորական, դատական, վարչական պաշտոնյաներ, իշխանների և այլոց տիրույթներում կառավարիչներ (սենեկապետներ կամ վերակացուներ), հեջուբներ, ձեռնավորներ, ռայիսներ, թաղապետներ (տանուտեր) և այլն։ Դրանց մի մա-

---

23 «Վիմական տարեգիր», էջ 137։

24 Տե՛ս «Դիվան հայ վիմագրության», հատ. I, էջ 24, 65։

25 «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 156։

26 Տե՛ս Ֆրիկ, Բանաստեղծություններ, էջ 177։

27 Նույն տեղում, էջ 129։

28 Տե՛ս նույն տեղում, էջ 400, տե՛ս նաև Սարգիս Շնորհալի. Մեկնութիւն եօթանց թղթոց կաթողիկոսաց, Կ. Պոլիս, 1826։

29 Տե՛ս Գրիգոր Տաթևացի, Գիրք քարոզութեան, որ կոչի Ձմեռան հատոր, Կ. Պոլիս, 1741։ էջ 339—400։

30 Վարդան Այգեկցի, Առակների ժողովածու, էջ 1913։

ալ կարող էր առաջանալ և մանր ազնվականության շարքերից, մանավանդ զինվորականները, քաղաքում ոստիկանական և նման այլ պաշտոն վարողները խոշոր հողատիրական հեջուբների ու ձեռնավորների մի մասը, սակայն, մեծ մասը բարձրանում էր առևտրականների, վաշխառուների, կապալառուների, ինչպես և հարկային-ֆինանսական և այլ պաշտոնեության շարքերից։ Քաղաքային տնտեսության աճին համընթաց մտնելով առևտրա-վաշխառուական գործունեության շրջանակները, նրանք քայլ առ քայլ ընդարձակում էին իրենց այդ գործունեությունը և կուտակում մեծամեծ հարստություններ, անշարժ ունեցվածք։

Այս նորելուկ հարուստների խավի ներկայացուցիչները տոհմական ծագում չունենալով, չէին կարող ունենալ տոհմական անուն կամ ազգանուն և, եթե ավելի վաղ դարերում բարձր ազնվականության դասին չպատկանողները կարող էին կոչվել սեփական անվամբ և ծննդավայրի կամ բնակության վայրի անունով, ինչպես Մովսես Խորենացի, Ղազար Փարպեցի, Անանիա Շիրակացի, Հովհան Մայրավանեցի և այլն, ապա այժմ քաղաքային բնակչության դերը և ինքնագիտակցությունն աճել էին, քաղաքացին, մանավանդ մեծատունը չէր կարող առանց ազգանվան մնալ։ Բայց նրանց համար բնորոշ է դառնում ազգանվան կազմելը հոր կամ պապի անունով, պաշտոնի, զբաղմունքի տեսակով կամ ըստ անձնական հատկանիշների՝ Սուկատի որդի Կուզեր, Վահրամ որդի Մխիթարի, Ավետեաց-Ջեչկանց, Թորոսենք, Տիգրան որդի Սմբատօրենց, Սուլիմա յազգէ Հոնենց, Ավետենց Սահմադին, Գրիգոր Խուցես կամ Խուզիկ, Ուքան, Վահրամ Հեջուբ, Սաքթենք և այլն։

Տոհմիկ ծագում չունեցողները չէին կարող Ամատունի կամ Բագրատունի խոշոր ազնվական տոհմանունների ձևով ազգանուններ կազմել։ Միայն XIV դարից սկսած հանդիպում են հասարակ մարդկանց «եան» կամ «եանց» վերջավորությամբ ազգանուններ, օրինակ «Հոգևորեանց» կամ «Յովհաննեսեանց» ազգանունը։

Բարձրանալով կարողության և փառքի սանդուղքով, մեծատունները ֆեոդալական դասային հասարակության մեջ տեղ գրավեցին իշխաններից և բարձր հոգևորականությունից հետո։ Մի հեղինակի ասելով «Մեծատունք կայն կամին, որ ամենեցուն հաղթեն և քան զամենեսեան երևիել լինել»[31], բայց տոհմիկ ազնվականության գաղափարախոս հեղինակը ավելացնում է, որ այդ բանը նրանց չի հաջողվի։

Այս ամենը, իհարկե, խոսում են միջնադարյան Հայաստանի հասարակական-տնտեսական, քաղաքական կյանքի նշանակալից առաջադիմության, քաղաքի սոցիալական կազմում առաջացած փոփոխությունների մասին։

Հարկ է նկատել, որ այս հարցերի վերաբերյալ արտահայտվել են տարբեր կարծիքներ ու տեսակետներ։

Ն. Մառի կարծիքով առաջացած փոփոխությունները ստացել են նոր որակ և հեղաշրջող նշանակություն։ Ուստի նա արեց այն եզրակացությունը, թե «...ամեն ինչ հակում է դեպի այն բանը, որպեսզի հաստատվի, որ Անին

31 Մատենադարան, ձեռագիր № 8029, թերթ 157ա։

հենց այն հնոցն էր, որի մեջ հայկական ֆեոդալիզմը դեռևս հայրենիքում վերափոխվեց հայկական բուրժուական աշխարհի...»[32]։



13–րդ դարի մանրանկար, աջից՝ Բեկի խաթունը Սամույրե մուշտակով

Հետագա ուսումնասիրողներից Վ. Չալոյանը գտնում է, թե արտադրական հարաբերությունների զարգացումը Հայաստանի հասուն ֆեոդալիզմի շրջանում՝ X—XIII դարերում այնքան է առաջադիմում, որ տեղի է ունենում մի կողմից՝ արտադրողների անջատում արտադրության միջոցներից, մյուս կողմից հսկայական հարստությունների կուտակում առևտրա-վաշխառուական փոքրամասնության ձեռքը, որ «երևան է գալիս այսպես կոչված կապիտալի նախասկզբնական կուտակումը», զարգացած ֆեոդալիզմի ընդերքում հասունանում են բարձր հասարակարգի (ֆորմացիայի) անցման նախադր-

[32] *Н. Я. Марр*, Ани, стр. 66.

յալները, բայց այդ անցումը Հայաստանում տեղի չունեցավ արտաքին հանգամանքների՝ թուրք-թաթարական արշավանքների հետևանքով[33]։

Կապիտալի նախասկզբնական կուտակումն, իհարկե, տեղի է ունեցել զարգացած ֆեոդալական հասարակության ընդերքում, սակայն այն կապիտալիստական հարաբերություններ ստեղծող պրոցես էր, հավելյալ արժեքի արտադրության պրոցես՝ ունեզրկված արտադրողների շահագործման եղանակով։

«Փողն ու ապրանքը,— գրում է Կարլ Մարքսը, ինչպես արտադրության միջոցներն ու կենսամիջոցները, ինքնին, ամենևին էլ կապիտալ չեն։ Նրանք պետք է կապիտալի փոխարկվեն։ Բայց այդ փոխակերպությունը հնարավոր է միայն որոշ պայմաններում, որոնք հանգում են հետևյալին. երկու շատ տարբեր հակադիր տեսակի ապրանքատերեր պետք է իրար հանդիպեն և շփման մեջ մտնեն—մի կողմից՝ փողի, արտադրության միջոցների և կենսամիջոցների սեփականատերը, որը կարիք ունի աշխատուժ գնելու իր յուրացրած արժեքի գումարը ավելացնելու համար, մյուս կողմից ազատ բանվորները, իրենց սեփական աշխատուժը ծախողները և հետևապես աշխատանք վաճառողները»[34]։

Նշելով, որ վերջիններս ունեզրկվելով ազատ են և զուրկ մանավանդ իրենց արտադրական միջոցներից, Կարլ Մարքսը շարունակում է.

«Այսպիսով, կապիտալիստական հարաբերություններ ստեղծող պրոցեսը ուրիշ բան չի կարող լինել, բայց եթե բանվորին իր աշխատանքի պայմանների սեփականությունից անջատելու պրոցես,—մի պրոցես, որը մի կողմից հասարակական արտադրության միջոցները և կենսամիջոցները դարձնում է կապիտալ, մյուս կողմից՝ անմիջական արտադրողներին դարձնում է վարձու բանվորներ։ Հետևաբար, այսպես կոչված նախասկզբնական կուտակումը ոչ այլ ինչ է, եթե ոչ արտադրողին արտադրության միջոցներից անջատելու պատմական պրոցես»[35]։

Մեծատունների դրամով ձեռք բերված հողերը, գյուղերն ու քաղաքները, ջրաղացները, ձիթհանները և նման այլ ձեռնարկները եկամուտ էին բերում իրենց նոր տերերին, ճիշտ նույն ձևով, ինչպես և նախկին ֆեոդալ տերերին։

Այգիներ, գյուղեր, քաղաքներ և այլ անշարժ ունեցվածք գնողները տեր էին դառնում այդ տիրույթներից ֆեոդալներին վճարվող հարկ ու տուրքին. կամ հավելյալ արդյունքին։ «...Արծաթագին անդաստան և այգեստան և բուրաստան մի լիցի ընդ հարկաւ հնգեկի, նմանապէս և ջրաղաց և տուն և խանութ...»[36]։ Տիրույթներից, գյուղերից, քաղաքներից, այգիներից, ջրաղաց և այլ շահութաբեր հաստատություններից ստացվող եկամուտն ըստ տիրող սովորության համարվում էր 6 դանկ, այսինքն՝ 6 մաս։ Տերը կարող էր իրեն պատկանող գյուղը, այգին կամ ջրաղացը ուրիշներին վաճառել կամ նվիրա-

---

33 Տե՛ս В. К. Чалоян, История армянской философии, էջ 176։

34 Կարլ Մարքս, Կապիտալ, հ. 1, Երևան, 1954, էջ 747։

35 Նույն տեղում։

36 Մխիթար Գոշ, Դատաստանագիրք, էջ 314։

բերել ամբողջովին՝ 6 դանկը լրիվ, կամ մաս-մաս, ըստ վիմագիր արձանագրությունների կես դանկից սկսած մինչև հինգ դանկը, այսինքն՝ 1/12 մասից մինչև 5/6 մասը։ Նոր տերը տասնորդ էր ստանում ձեռք բերած համապատասխան բաժնից։

Կարելի էր ենթադրել, թե ձեռք բերելով հողային տիրույթներ, մեծատուններր կազմակերպում էին գյուղատնտեսական մթերքների արտադրություն շուկայի համար, օգտագործելով վարձու բանվորական ուժ, բայց մեզ հասած բոլոր տեղեկությունները ցույց են տալիս, որ սեփական տնտեսությունները տարածված երևույթ չէին։ Բացի այդ, դրանք սովորաբար այգիներ էին, պարտեզներ, սակավ դեպքում գուցե և հացացանքսեր, որոնց մշակումը և բերքահավաքը կատարում էին կախյալ գյուղացիները, տվյալ տիրոջ ծառաներն ու աղախինները, ճորտերը, թեև դրանց թիվը մեծ չէր, սեզոնային մշակները, տիրոջ կամ իրենց սեփական գործիքներով։

Հնից եկող մի սովորությամբ նախալեռնային, մանավանդ լեռնային շրջանների երկրագործ բնակիչները, մինչև իրենց հացացանքսերի բերքահավաքը սկսելը ժամանակավորապես իջնում էին հարթավայրերը՝ այստեղ ավելի շուտ հասունացած հացահատիկների բերքահավաքին մասնակցելու։ Այդ եղանակով նրանք վաստակում էին լրացուցիչ եկամուտ՝ բնամթերքով կամ դրամով։ Դրանք գերազանցապես հնձվորներ էին, համարվում էին սեզոնային մշակներ և սովորաբար աշխատում էին իրենց գործիքներով։ Հնամենի այդ սովորությունը պահպանվել է դարեր շարունակ։ Քաղաքային հասութաբեր հաստատություններում և արհեստանոցներում, օրավարձով աշխատում էին նաև սևագործները, որոնց առկայությունը, սակայն, բնորոշ է ոչ միայն ֆեոդալական, այլև ստրկատիրական քաղաքի համար, իսկ նրանց աշխատանքը կրում էր պատահական բնույթ։

Փաստական նյութերով բազմիցս հավաստված այս իրողությունների մեջ կապիտալիստական արտադրական հարաբերություններ ծնող կամ սաղմնավորվող երևույթներ դեռևս չեն նկատվում։

Աշխատանքի կոոպերացումը, ինչպես գյուղատնտեսության, նույնպես և արդյունագործության մեջ, շինարարական աշխատանքներում կիրառվել է մինչկապիտալիստական բոլոր հասարակություններում։ Այլ բան էր կապիտալիստական հարաբերությունների սաղմնավորման շրջանին բնորոշ պարզ կոոպերացիան, երբ դրամական և արտադրական միջոցների տերը հանդես էր գալիս իբրև աշխատանք տվող և համախմբելով գյուղատնտեսական բանվորներին, կամ որոշակի բնագավառի արհեստավորներին, կազմակերպում էր մշտական արտադրություն՝ շուկայի, շահույթի, այսինքն իր կապիտալն աճեցնելու նպատակով։ Մեզ հայտնի չեն փաստեր, որ առևտրական կապիտալի ներկայացուցիչները Հայաստանում XII—XIV դարերում հանդես եկած լինեին նման դերով։

Այսպիսով, մեծատունները կալվածք և անշարժ ունեցվածք ձեռք բերելով, ֆեոդալական շահագործման ձևերի տիրապետության պայմաններում, իրենք էլ վերածվում էին ֆեոդալ շահագործողների։

Քաղաքային վերնախավի, պաշտոնեության ֆեոդալականացումը զարգացման տվյալ փուլում օրինաչափ և անխուսափելի երևույթ էր, որը տեղի է

ունեցել շատ երկրներում, թե արևմուտքում և թե արևելքում։ Այդուհանդերձ չի կարելի հավասարման նշան դնել նրանց և տոհմիկ ֆեոդալների միջև ոչ միայն այն պատճառով, որ ֆեոդալականանում էր քաղաքային վերնախավի միայն մի մասը (առավել խոշոր հարուստները), այլև զարգացման պատմական հեռանկարի տեսակետից, քանի որ մեծատունները հասարակական հենց այն առավել ձեռներեց շերտն էին կազմում, որ զարգացման հաջորդ փուլում կարող էր աստիճանաբար փոխվել կապիտալիստ արտադրողների և ծնունդ տալ հասարակական նոր հարաբերությունների։

Քաղաքային վերնախավի ձեռքում կենտրոնացած դրամական և արտադրական խոշոր միջոցները որոշ պայմանների առկայության դեպքում ընդունակ էին առաջացնելու վարձու աշխատանքի և կապիտալի փոխհարաբերություններ։ Այսպիսով, առևտրական կապիտալի առկայությունը և զարգացումը մինչև մի որոշ բարձր աստիճանի հանդիսանում է կապիտալիստական արտադրաեղանակի առաջացման պատմական նախադրյալ[37]։

Հայաստանի քաղաքները, առևտուրը և քաղաքային կյանքը մեծ առաջադիմություն էին ունեցել։ Նրանց զարգացումը հասել էր այնպիսի մակարդակի, որ նրա առաջընթացը կարող էր շուտով հանգեցնել հին ֆեոդալական հասարակության ընդերքում արտադրական նոր հարաբերությունների սաղմնավորմանը։ Սակայն այդ տեղի չունեցավ, որովհետև զարգացումն ընդհատվեց մոնղոլական ներխուժման և տիրապետության հետևանքով առաջացած սոցիալ-տնտեսական նոր իրադրությամբ։

---

37 Տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հատ. III, մաս 1-ին, Երևան, 1947, էջ 312։

ԲԱԺԻՆ Զ



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՈՆՂՈԼ-ԹԱԹԱՐԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

## ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄԸ

## 1. ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ, ՆՐԱ ԱՇԽԱՐՀԱԿԱԼԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

*XIII դարի սկզբին պատմության թատերաբեմում Ասիայի և Արևելյան Եվրոպայի ժողովուրդների կյանքում բախտորոշ դեր սկսեցին խաղալ Կենտրոնական Ասիայի խորքերից դուրս եկած բազմաթիվ քոչվորական ցեղեր, որոնք պատմությանը հայտնի են մոնղոլներ ընդհանուր անվամբ։*

*Քոչվորական այդ ցեղերը պատմական չափազանց կարճ ժամանակամիջոցում ոչ միայն միավորվեցին և ստեղծեցին հզոր պետություն, այլև իրենց տիրապետությունը հաստատեցին հսկայական տարածությունների վրա, ըսկըսած Խաղաղ օվկիանոսից մինչև Սև և Միջերկրական ծովերի ափերը։*

*Մինչև XIII դարի սկզբները այդ ռազմիկ ցեղերը հարևան երկրներում հայտնի էին նրանցից ամենազորեղի՝ թաթարների անունով[1]։ Աշխարհակալ պետություն ստեղծելուց հետո, երբ անհրաժեշտ եղավ այդ բոլոր ցեղերին տալ ընդհանուր անուն, հանդես եկավ մոնղոլ անունը, չինական «Մեն-գու» ձևից[2]։*

*XI—XIII դարերում Իրտիշ գետի վերին հոսանքներից մինչև Ամուր գետի ակունքները և Մեծ Հինգան լեռնաշղթան տարածված մոնղոլական բազմաթիվ ցեղեր խոսում էին մի ընդհանուր լեզվի տարբեր բարբառներով։ Այդ լեզուն հետագայում կոչվեց մոնղոլերեն։*

*Մոնղոլները իրենց գիրը XII դարի վերջին վերցրել էին Արևելյան Թուրքեստանում (Սինցզյան) ապրող ույղուրներից։ Նրանց հիմնական մասի դավանանքը շամանիզմն էր, գլխավոր աստվածը՝ «հավիտենական կապույտ երկինքը»։ Զարգացման համեմատաբար բարձր մակարդակի վրա կանգնած նայմանների մի մասը ույղուրներից վերցրել էր բուդդայական կրոնը և քրիստոնեության նեստորական ուսմունքը։*

*Մոնղոլական ցեղերի ու տոհմերի միջև արոտավայրերի, անասնահոտերի, ստրուկների ու ռազմական այլ ավարի հափշտակման համար պայքարը*

---

1 *Պլանո Կարպինին հաղորդում է, որ «նրանք իրենք իրենց անվանակոչել են թաթարներ, ինչ-որ գետի անունով, որ հոսում է իրենց երկրի միջով և կոչվում է Թաթար»։ Տե՛ս* «Путешествия в Восточные страны Плано Карпини и Рубрука», стр. 37.

2 «История Ирана с древнейших времен до конца XVIII века», стр. 175.

սովորական երևույթ էր։ Այդ պայքարը շատ ավելի ուժեղ թափով դրսևորվեց XII դարի վերջին և XIII դարի սկզբներին, երբ մոնղոլական տափաստանում սկսել էր կազմավորվել դասակարգային վաղ ֆեոդալական հասարակությունը։ Տոհմատիրական-նահապետական հասարակարգի շատ հատկանիշները պահպանող այդ նոր հասարակության մեջ արդեն ստեղծվում էին նոր՝ ֆեոդալական հարաբերություններ։

XIII դարի սկզբին մոնղոլական ցեղային միավորումների միջև պայքարն ավարտվում է ֆեոդալականացած քոչվորական ազնվականության տարացեղային խմբավորման հաղթանակով, տափաստանային ցեղերի առաջնորդ Տեմուչինի գլխավորությամբ։ Կարճ ժամանակում նա կարողացավ ստեղծել մոնղոլական միասնական մեծ պետություն։ 1206 թ. Օնոն գետի ափին ցեղային առաջնորդների մեծ ժողովում — ղուռուլթայում 50-ամյա Տեմուչինը հայտարարվեց ամբողջ Մոնղոլիայի խաքան[3]—մեծ խան և նրան տրվեց Չինգիզ (ուժեղ, հզոր) խան պատվավոր տիտղոսը[4]։

Բոլոր ցեղերը և ժողովուրդները, որոնք մտնում էին մոնղոլական նորաստեղծ կայսրության կազմի մեջ, դառնում էին Չինգիզ խանի և նրա տոհմի ժառանգական ավատառուները։ Նստակյաց բնակչություն ունեցող բոլոր նվաճված երկրները, որպես բաժնեկալվածներ տրվել էին արքայորդիներին։ Սկզբնական շրջանում նրանք ենթարկվում էին խաքանին, որն այդ երկրները կառավարում էր նշանակված կուսակալների (դարուղաչիների, բասղաղների) միջոցով։ Արքայորդիներն օգտվում էին հարկ ու տուրքերից և օժտված էին միայն զինվորական իշխանությամբ։ Սակայն շատ շուտով, կենտրոնախույս ուժերի առաջացման և ուժեղացման հետևանքով, արքայորդիները դարձան կիսանկախ, իսկ ավելի ուշ՝ անկախ իշխողներ և ստեղծեցին ինքնուրույն պետություններ։

Մոնղոլական հասարակության տնտեսական հիմքը կազմում էր քոչվորական ֆեոդալական տնտեսաձևը։ Խաներն ու արքայորդիներն իրենց ձեռքում էին պահում քոչվորական բնատնտեսության բոլոր արտադրամիջոցները՝ մեծաքանակ անասնահոտերը և արոտավայրերը, իրենց տրամադրության տակ ունեին անմիջական արտադրողների՝ շարքային քոչվորների, խառաչուների հսկայական մասսա։ Խառաչուն համարվում էր ճորտ (ալբատու-արատ) և կցված էր իր ժառանգական տիրոջը, կապը տիրոջ — ռազմա-քոչվորական ազնվապետի և ճորտի — արատի միջև անքակտելի էր։ Արատը, առաջին հերթին պատկանում էր տիրոջը, նա նրա ճորտ ավատառուն էր[5]։

* * *

Մոնղոլական աշխարհակալ նվաճումների և հաղթանակների գործում վճռական դերը պատկանում էր բանակին ու նրա ռազմական-կազմակերպչա-

---

3 Խաքան, մոնղոլները և թուրքերը անվանել են չինական կայսրերին։

4 Տե՛ս *Рашид ад-Дин*, Сборник летописей, т. I, кн. вторая, М.—Л., 1952, стр. 150.

5 Ճորտ հասկացությունն այստեղ արտահայտում է անձնական ավատառուական կախվածությունը տիրոջից՝ ցեղային առաջնորդից, որը միաժամանակ և ռազմական միավորի — ցեղի ռազմական առաջնորդն էր, այս երևույթը ռազմա-քոչվորական հասարակության բնորոշ կողմերից մեկն էր։

կան կառուցվածքին։ Բանակի կառուցվածքի ընդհանուր սիստեմից զգալիորեն կախված էր եղել նվաճված երկրների բախտն ու հասարակական-անտեսական կյանքը։

Մոնղոլական բանակը վերջնականապես ձևավորվեց 1206 թ.։ Չինգիզ խանը ամբողջ մոնղոլ վաչկատուն բնակչությունը ըստ ցեղերի բաժանեց տասնհազարյակների (թումանների), հազարյակների (մինգանների), հարյուրյակների (յաուների) և տասնյակների (աարանների)։ Համապատասխանաբար նշանակվեցին բյուրապետներ, հազարապետներ, հարյուրապետներ և տասնապետներ, որոնց պաշտոնները և կոչումները փոխանցվում էին ժառանգաբար։ Յուրաքանչյուր քոչվոր տոհմ կազմում էր մեկ զինվորական միավոր՝ հազարյակ, հարյուրյակ և այլն։

XIII դարի սկզբին այդ բանակը հասնում էր մոտ հարյուր հազարի (1206 թ. կազմվել էր 9 թուման և խանական տասնհազարանոց թիկնազորը)։

Ցեղերի զինվորական առաջնորդները՝ նոյինները և նոքարները, իրենց ծառայության համար ստանում էին հողաբաժին (խուբի)—ուլուս (բաժնեկալվածք)՝ որոշ թվով աուլներով (լեռնաբնակների գյուղեր), որոնցից հավաքում էին հազարյակներ, հարյուրյակներ, տասնյակներ։

Խանական թիկնազորը, որը կազմավորվում էր քոչվոր ազնվականների որդիներից, իրենից ներկայացնում էր նաև պետության ռազմավարչական պաշտոնեության պատրաստման մի տեսակ դարբնոց։ Նրանցից էին նշանակվում բանակի բարձրաստիճան հրամանատարներ և նվաճված երկրներում՝ վարչական-պետական պաշտոնյաներ։

Մոնղոլական պետության հիմնական օրենքը «Մեծ Յասան» էր, որը աղբյուրներում վերագրվում է Չինգիզ խանին։ «Յասան» կրում էր ինչպես ընդհանուր քաղաքացիական, նույնպես և կրոնական բնույթ։

Չինգիզ խանի նվաճողական քաղաքականությունը, որ նա սկսեց իրականացնել XIII դարի առաջին տասնամյակներից, որոշվում էր մոնղոլական ֆեոդալականացող ազնվականության շահերով։

Աշխարհակալ նվաճումներն սկսվեցին 1209 թ.։ Սկզբում Չինգիզ խանը գրավեց Չինաստանի մի զգալի մասը (վերջնականապես նվաճվեց նրա հաջորդների ժամանակ), 1217—1218 թթ.՝ Կաշկարը և Արևելյան Թուրքեստանը, 1219—1221 թթ.՝ Խորեզմի պետությունը և Իրանի զգալի մասը։ Զարգացած երկրների գրավումը մոնղոլների տրամադրության տակ դրեց հսկայական նյութական հնարավորություններ և, որ կարևորն է, ժամանակի ամենաառաջավոր ռազմական տեխնիկան։ Մոնղոլական բանակները համալրվեցին չինական բաքանաձիգներով, զինափործներով, պարիսպներ ու ամրություններ քանդող տեխնիկական հարմարանքներ կառուցող վարպետներով։

Սովորաբար մոնղոլները հիմնավորապես էին նախապատրաստվում արշավանքների։ Ռազմական գործողություններին նախորդում էր թշնամու ուժերի հետախուզությունը, որը նախապես կատարվում էր հիմնականում մոնղոլների մոտ ծառայության մտած մահմեդական առևտրականների միջոցով ու օգնությամբ։

Նվաճելով Միջին Ասիան և Իրանի մի մասը, մոնղոլները միաժամանակ նախապատրաստում էին իրենց առաջխաղացումը դեպի արևմուտք։

## 2. ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՏԱԽՈՒԶԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔԸ ԴԵՊԻ ԱՆԴՐԿՈՎԿԱՍ

1220 թ. աշնանը Սամարղանդի պաշարման օրերին Չինգիզ խանն իր բանակից առանձնացրեց 20.000-անոց մի զորամաս Ջեբե նոյինի և Սուբադայ բահատուրի գլխավորությամբ՝ Խորեզմի շահ Ալա ադ-Դին Մուհամմադին հետապնդելու, Իրանն ու Անդրկովկասը հետախուզելու և այդ երկրների նվաճումը նախապատրաստելու նպատակով։

Մոնղոլական այդ զորամիավորումը Իրանի հյուսիսային շրջաններով և Ատրպատականի վրայով մոտենում է Արաքսին, ապա անցնում է գետը և Նախճավանի (Նախիջևանի) արևմտյան կողմով բարձրանում է հյուսիս, հասնելով մինչև Աղստևի շրջանը։ Այստեղ՝ 1220 թ. դեկտեմբերի սկզբներին նա հանդիպում է վրաց-հայկական 10-հազարանոց զորախմբին։ Ճակատամարտում, թվական գերակշռություն ունեցող թշնամու հարվածներին չդիմանալով և մեծ կորուստներ տալով, վրաց-հայկական ուժերը նահանջում են։

Ճակատամարտից հետո տեսնելով, որ Վրաստանի սահմաններում դժվարանցանելի ճանապարհներով խորանալը կարող է վտանգավոր լինել, մոնղոլները ետ են դառնում և բանակատեղ ընտրում Ուտիքի՝ ռազմավարության համար բավական նպաստավոր վայրում՝ Բեղամեջի շրջանում։

Կրած պարտությունն ստիպում է հայ և վրաց իշխաններին դաշնակիցներ փնտրել ընդհանուր թշնամու դեմ միացյալ ուժերով հանդես գալու համար։ Նրանք, ինչպես վկայում է պատմիչը. «...ուղարկեցին Ուզբեկի՝ Ատրպատականի տիրակալի մոտ խնդրելու նրանից հաշտություն և համաձայնություն՝ միասին թաթարների դեմ կռվելու համար»[6]։ Նման առաջարկությամբ հայ և վրաց իշխանները դիմում են և Խլաթի կառավարիչ Մելիք Աշրաֆին։ Ստանալով ընդհանուր համաձայնություն և չկարծելով, որ մոնղոլները ձմեռը կսկսեն իրենց դեմ արշավանք, դաշնակիցները որոշում են ռազմական գործողությունները սկսել գարնանը։

Մոնղոլ զորավարներն ստանալով ստույգ տեղեկություններ դաշնակիցների ռազմական նախապատրաստությունների մասին, 1221 թ. հունվարի սկզբներին ներխուժում են վրացական թագավորության սահմանները։ Նրանց միացել ու առաջնորդում էր Ատրպատականի աթաբեկ Ուզբեկի քոչվոր-ավնվական վասալներից մեկը՝ Ակուշ անունով, որը հեռացել էր իր տիրոջից, մեծ թվով զորք հավաքագրել թուրքերից ու քրդերից և իր ծառայությունն առաջարկել մոնղոլ զորավարներին։

Վրաց բանակը, որի կազմում էին և հայկական զորամասերը, Գեորգի Լաշայի և Իվանե աթաբեկի գլխավորությամբ շարժվում են թշնամու դեմ։ Ճակատամարտը տեղի է ունենում Կոտման (հավանաբար այժմյան Թոուզ) գետի մոտ։ Մոնղոլ զորավարները սկզբում պատերազմի դաշտ են նետում Ակուշի գլխավորած զորամասերը։ Վրաց-հայկական զորքերը ճակատամարտի հենց սկզբում նախաձեռնությունը վերցնում են իրենց ձեռքը, հերոսաբար

6 Տե՛ս Архив Тизенгаузена, ЛОИНА АН СССР, фонд 52, опись 1, ед. кр. 14—16, л. 1—3.

մարտնչում են ու թշնամուն պատճառում զգալի կորուստներ։ Զգալով Ակուջի մոտալուտ պարտությունը մոնղոլ զորավարները պատերազմի դաշտ են նետում թարմ ուժեր։ Վրաց-հայկական զորքերը երկար չկարողացան շարունակել ճակատամարտը նոր ուժերի դեմ։ Նրանք բավական հոգնել էին և տվել զգալի զոհեր, ուստի և ստիպված նահանջի դիմեցին։ Թշնամին կրնկակոխ հետապնդում է նրանց, և Գեորգի Լաշան ու Իվանեն փոքրաթիվ մարդկանցով հազիվ կարողանում են հեռանալ պատերազմի դաշտից։ Միայն Վահրամ Գագեցին իր զորամասով, որ գործում էր աջ թևում, չիմանալով թագավորական բանակի պարտության մասին, շարունակում է հերոսաբար մարտնչել, հետապնդել խուճապի մատնված թշնամու ուժերին մինչև Գարդման։ Կոտմանի ճակատամարտը առաջին կազմակերպված լուրջ դիմադրությունն էր, որին հանդիպեցին մոնղոլները իրենց անցած ամբողջ ճանապարհին։

Կոտմանի մոտ տեղի ունեցած ճակատամարտից հետո, ասպատակելով Հայաստանի հյուսիսային և Վրաստանի հարավ-արևելյան շրջանները, մոնղոլական ջոկատը վերադառնում է Ուտիք և 1221 թ. գարնան սկզբին նորից շարժվում Թավրիզի վրա։ Ճանապարհին ոչնչացնում է ցանքսերը, հափշտակում անասունները, հալածելով խաղաղ բնակչությանը։ 1221 թ. գարնան և ամռան ամիսներին ավերածության է մատնում Մարաղա, Համադան, Նախճավան, Արդաբիլ, Սարաբ քաղաքներն ու նրանց շրջանները։ Նշված քաղաքների բնակչությունը համառ դիմադրություն է ցույց տալիս թշնամուն։

1221 թ. սեպտեմբերի վերջին մոնղոլական զորամասը պաշարում է Ուտիքի այդ ժամանակի ամենախոշոր ու հարուստ առևտրա-արհեստագործական քաղաք Բայլականը։ Մոնղոլները պատգամավոր են ուղարկում քաղաքի իշխանավորների մոտ և առաջարկում հանձնվել։ Եվ չնայած թշնամու պահանջն անմիջապես կատարելու նրանց պատրաստակամությանը, արհեստավորներն ու ստորին խավերը սպանում են պատգամավորներին և իշխաններին ստիպում հրաժարվել քաղաքը հանձնելու մտադրությունից։ Դրանից հետո մեկ ամսից ավելի քաղաքը հերոսաբար պաշտպանվում է, միայն հոկտեմբերի վերջին թշնամուն հաջողվում է գրոհով գրավել այն, հիմնահատակ ավերել ու ոչնչացնել փախչել չհասցրած բնակիչներին։

Բայլականը ավերելուց հետո մոնղոլները շարժվում են դեպի Գանձակ, սակայն իմանալով քաղաքի դիմադրության համար լավ նախապատրաստության մասին, մեծ գումար են վերցնում ու հեռանում։ Գանձակից հետո նրանք երկրորդ անգամ ներխուժում են վրացական թագավորության սահմանները, որտեղ նրանց և վրաց-հայկական ուժերի միջև Խունանի դաշտում 1222 թ. ձմռանը համառ մարտեր են տեղի ունենում։

Կիրակոս Գանձակեցին և Ռաշիդ ադ-Դինը վկայում են[7], որ ճակատամարտի սկզբում Ջեբե նոյինը 5000 մարդկանցով դարան էր մտել, իսկ Սուբադայը առաջ էր նետվել, և երբ վրաց-հայկական ուժերը սկսել են հարձակումը, նրա զորքը կեղծ փախուստի է դիմել։ Վրացիներն ու հայերը հետապնդել են թշնամուն, քայքայելով իրենց մարտական դասավորությունը.

---

7 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 203, *Рашид-ад-дин*, Сборник летописей, т. I, кн. вторая, стр. 228—229.

այդ ժամանակ դարանակալած զորքը թիկունքից, իսկ մյուսները ճակատից օղակում են վրաց-հայկական զորագնդերին ու պարտության մատնում։ Վրաց-հայկական ուժերը, սակայն չեն հուսալքվում և նախապատրաստվում են թըշնամուն հակահարված տալու։ Մոնղոլներն այդ զգալով, խուսափում են երկրորդ անգամ ճակատամարտ տալուց, փորձում են Վրաստանով անցնել Կովկասյան լեռնաշղթան, բայց այստեղ նրանք հանդիպում են ոչ մեծ թվով ցըկատների համառ դիմադրությանը, որոնք գրավել էին բոլոր լեռնանցքներն ու կիրճերը, լեռնային ճանապարհները։ Վրաստանում չունենալով որոշակի հաջողություն, մոնղոլները թեքվում են դեպի արևելք, մտնում Շիրվան և պաշարում Շամքոր քաղաքը, սակայն չեն կարողանում հեշտությամբ գրավել այն, քանի որ քաղաքի բնակիչները հերոսական դիմադրություն են ցուցաբերում։ Եռօրյա համառ մարտերից հետո թշնամին կոտրում է պաշտպանների անձնազոհ դիմադրությունը և գրավելով քաղաքը, ավերում է այն ու սրի քաշում բնակչությանը։ Այնուհետև մոնղոլական զորքը շարժվում է դեպի հյուսիս և Շիրվանի նեղ կիրճերով անցնում Հյուսիսային Կովկաս։

Մոնղոլների այդ արշավանքի կապակցությամբ Գանձակեցին գրում է. «Գալով Աղվանից աշխարհը, անցնելով Հայոց և Վրաց երկրները, ինչ որ ճանապարհին գտնում էին՝ ամեն ինչ սրի էին անցկացնում թէ մարդ, թէ անասուն, մինչև իսկ շներին... Եվ նրանք կոտորեցին սրի անցկացնելով։ Այսպիսով, նրանք շատերին անհոգ գտնելով՝ կոտորեցին և բազմաթիվ տեղեր ավերեցին»[8]։

Մոնղոլական զորքի հեռանալուց հետո Անդրկովկասում դրությունը չի խաղաղվում։ 1222 թ. մոնղոլների հարվածներից փրկվելով Դերբենդի վրայով Անդրկովկաս է ներխուժում ղփչաղների բավական մեծ զանգված։ Վրաստանում տեղավորվելու նրանց փորձերը անհաջողության մատնվելուց հետո, նրանք բանակցում են Գանձակի ամիրա Կուշկարայի հետ և վերջինս նրանց բնակության տեղ է հատկացնում Գանձակի մերձակա շրջաններում։

Ղփչաղները, օգտվելով Անդրկովկասի ֆեոդալական ուժերի ներքին հակամարտություններից, բավական մեծ վնասներ են պատճառում Վրաստանի, Շիրվանի և Առանի մի շարք շրջանների բնակչությանը։ Այդ շրջանները դառնում են նրանց ասպատակությունների, կողոպուտի ու ավարառության ասպարեզ։ Թերագնահատելով ղփչաղների ուժերը, Իվանե աթաբեկը վրացական բանակի ուժերով Գանձակի մոտ հարձակվում է նրանց վրա, սակայն պարտություն է կրում։ 1223 թ. միայն վրացական, հայկական և Շիրվանի ու Առանի միացյալ ուժերին հաջողվում է վճռական հարված հասցնել ղփչաղներին, որոնց մեծ մասին կոտորում են, իսկ կենդանի մնացածներին վաճառում ստրկության։

## 3. ՋԱԼԱԼ ԱԴ-ԴԻՆԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ

1225 թ., մոնղոլական ուժերից հալածված Խորեզմի շահ Ալա ադ-Դին Մուհամմադի որդին՝ Ջալալ ադ-Դինը, նպատակ ունենալով վերականգնել

---

8 Կիրակոս Գանձակեցի, էջ 201—202։

*խորեզմյան պետության վաղեմի գիրքերը, որոշում է ամրանալ Իրանի հյուսիս-արևմտյան մասում և Անդրկովկասում, կամենալով դրանք դարձնել հենակետ իր հետագա գործողությունների համար։*

*Կարճ ժամանակում նվաճելով Իրանի հյուսիսային շրջաններն ու Ատրպատականը, նա արշավանքներ է սկսում դեպի Վրաստան և Հայաստան։ Իրանի, Ատրպատականի և հայ-վրացական ֆեոդալական ուժերի ձգտումները՝ ընդհանուր թշնամու դեմ դաշինք ստեղծելու և միացյալ ուժերով հանդես գալու նպատակով, չի իրականանում։ Դրան խանգարում են մի կողմից՝ Ջալալ ադ-Դինի բանակների ռազմական արագ տեղաշարժերը, մյուս կողմից էլ՝ այդ երկրների ֆեոդալ իշխողների միջև գոյություն ունեցող ներքին հակամարտությունները։*



**Դռոշմազարդ կարաս, Անի**

*Ջալալ ադ-Դինի զորքերը ոչնչով չէին զիջում իրենց նախորդ հորդաների ավերիչ գործունեությանը։ «...և յոր տեղ հասանէր աւերէր, գերփէր, սպականէր՝ ոչ խնայելով ի մարդ կամ յանասուն»*[9]։

---

9 Ստ. Օրբելյան, էջ 399։

1225 թ. սեպտեմբերին Ջալալ ադ-Դինը 60 հազարանոց բանակով մըտնում է Արարատյան դաշտավայր, գրավում Դվին քաղաքը, որը խիստ ավերում է, ապա շարժվում դեպի Կոտայքի շրջանը, ուր և հանդիպում է Իվանե աթաբեկի գլխավորած վրաց-հայկական ուժերին։ Գառնի ամրոցի մոտ 1225 թ. սեպտեմբերի կեսերին տեղի է ունենում ճակատամարտ, ուր վրացհայկական զորքի առաջապահ զորամասը հերոսաբար կռվում է թշնամու դեմ, մինչդեռ հիմնական զորքը առաջացած խուճապի պատճառով փախուստի է դիմում, սակայն ընկնելով հակառակորդի հարվածի տակ մեծ կորուստներ է տալիս ու ծանր պարտություն կրում։



Առյուծի քանդակ, Անի

Գառնիի մոտ հաղթանակ տանելուց հետո Ջալալ ադ-Դինն սկսում է իր ասպատակությունները Հայաստանում ու Վրաստանում. «...խորազմցիները մեր երկիրը անտերունչ գտնելով,— վկայում է պատմիչը,— անխնա կոտորեցին և գերեցին և հրդեհեցին քաղաքների, գյուղերի ու վանքերի բոլոր շինությունները ու տները, նաև այրեցին մեր ամբողջ վաստակը և կտրատեցին այգիներն ու ծառերը, որի պատճառով սաստիկ սով տիրեց ամենուրեք»[10]։

Ջալալ ադ-Դինը գրավում է Գանձակը, Լոռին, Տփղիսը, որը դարձնում է Անդրկովկասյան նվաճված երկրների կառավարչի՝ Շերեֆ ալ-Մուլքի նըստավայրը։ Այնուհետև Ջալալ ադ-Դինը պաշարում է Անին (որտեղ գտնվում էր Իվանե աթաբեկը), Կարսը, սակայն չկարողանալով գրավել, անցնում է հարավ։ 1226 թ. աշնանը պաշարում է Խլաթն ու Մանազկերտը, ուր նույնպես հաջողություն չի ունենում։ 1227 թ. մարտին վրաց-հայկական ուժերը հարձակվում են Տփղիսի վրա, գրավում այն, ոչնչացնում տեղի կայազորը և հե-

10 Նույն տեղում, էջ 400։

ռանում։ Նույն օրերին Իվանե աթաբեկի զորավարներից Պռոշ իշխանը մըտնում է Դվին և նույնպես ոչնչացնում տեղի խորեզմյան կայազորն ու հեռանում։

1229 թ. մոնղոլական զորքերը արևելքից կրկին ներխուժում են Իրան։ Ջալալ ադ-Դինը Ռեյի և Իսպահանի շրջաններում մի շարք հաջող ընդհարումներ է ունենում նրանց հետ, և փոխանակ շարունակելու դիմադրությունը, վերադառնում է Անդրկովկաս և ձեռնարկում նոր արշավանքներ։

1228—1229 թթ. նա ասպատակում և ավերածության է ենթարկում Հայաստանի հարավային և արևմտյան շրջանները, ոչնչացնում և գերեվարում է բնակչությանը, այնուհետև պաշարում է Խլաթը, սակայն քաղաքի բնակչությունը հերոսաբար դիմադրում է՝ զգալի կորուստներ պատճառելով նրան։ Խլաթի պաշարումը տևում է մեկ և կես տարի։ Միայն 1230 թ. ապրիլին Ջալալ ադ-Դինը գրավում է քաղաքը, կոտորում բնակիչների մի մասին, իսկ մյուսներին քշում է վաճառքի։

Իր գործունեության վերջին շրջանում Ջալալ ադ-Դինը այլևս ոչ մի հաջողություն չունեցավ։ Նրա դեմ միավորվել էին քաղաքների ու գյուղերի բընակչությունը, ինչպես և մի շարք երկրների տիրակալներ։ Ընդհանուր թշնամու դեմ պայքարի անհրաժեշտությունը որոշ երկրների ֆեոդալական ուժերին ստիպեց հաղթահարել ներքին հակամարտությունները, կրոնական տարբեր դավանանքի հետ կապված անհաշտությունները և ստեղծել ուժեղ դաշինք։ Նրա մեջ մտան Խլաթի տիրակալ Մելիք Աշրաֆը և Իկոնիայի սելջուկյան սուլթան Քեյ-Կուբադը, որի բանակին միացել էին Կիլիկիայի հայկական թագավորության և խաչակիրների զորամասերը։ Դաշնակից ուժերը 1230 թ. ամռանը Երզնկայի շրջանում չարաչար պարտության մատնեցին Ջալալ ադ-Դինին։

Չկարողանալով դիմադրել մոնղոլական առաջացող զորամասերին, Ջալալ ադ-Դինը իր թիկունքն ապահովելու նպատակով 1231 թ. շտապ հաշտություն է կնքում Մելիք-Աշրաֆի և Քեյ-Կուբադի հետ, փորձում է Ավագ Զաքարյանի միջոցով հաշտություն և դաշինք կնքել նաև Վրաստանի հետ։ Սակայն նրա զորքը շարունակում էր արհավիրքներ գործել, մոնղոլական վտանգն էլ դեռևս անմիջական չէր, ուստի Վրաստանը կտրականապես մերժում է նրա առաջարկը։ Մոնղոլները կրնկակոխ հետապնդում են Ջալալ ադ-Դինին, ստիպված նա նահանջում է արևմուտք, սկզբում Խլաթի շրջանը, ապա Ամիդ, ուր վերջնականապես ջախջախվում է ու դիմում փախուստի։ 1231—32 թթ. ձըմռանը Ամիդի լեռներում էլ սպանվում է։

Ջալալ ադ-Դինի յոթնամյա արշավանքները չափազանց ծանր հետևանքներ ունեցան Հայաստանի և հայ ժողովրդի համար։ Զգալի չափով քայքայվեցին երկրի արտադրողական ուժերը, ասպատակությունների ու ավերածության ենթարկվեցին քաղաքներն ու գյուղերը, տնանկ տրվեցին գյուղատնտեսական մշակույթները։ Երկրում սկսեց թագավորել սովն ու համաճարակը, ժողովուրդը թողնված էր բախտի քմահաճույքին։ Քաղաքներում, հատկապես Անիում, Կարսում, Մանազկերտում, Խլաթում, ստորին խավերը հերոսական դիմադրություն էին ցույց տալիս նոր նվաճողներին, իսկ ֆեոդալները, ինչպես մոնղոլական հետախույզ զորքի արշավանքի ժամանակ, իրենց ռազմական ուժերով ամրացել էին ամուր բերդերում ու ամրոցներում։

## 4. ՄՈՆՂՈԼՆԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԱՐՇԱՎԱՆՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՎ ԵՐԿՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

Ջալալ ադ-Դինին վերջնականապես ջախջախելու նպատակով Իրան մուտք գործած մոնղոլական զորքերն իրենց անցած ճանապարհին ասպատակել էին Հայաստանի հարավային և արևմտյան մի շարք շրջաններ՝ մինչև Ամիդ, ավերածության էին մատնել հատկապես Արճեշն ու Բերկրին, սրի անցկացրել բնակիչներից շատերին։

Ասպարեզից հեռացնելով խորեզմյան պետության վերջին շառավիղին, նրանք վերադառնում են Ատրպատական և 1231—1232 թթ., գրավելով մի շարք քաղաքներ, շարժվում դեպի հյուսիս։ 1232 թ. նրանք գրավում և բարբարոսաբար ավերում են Գանձակ քաղաքը, ապա հեռանում Իրանի խորքերը։

* * *

1227 թ. Չինգիզ խանի մահից հետո նրան հաջորդեց կրտսեր որդին՝ Հոքաթա (Ուգեդեյ) խաքանը։ 1235 թ. մոնղոլական զուռուլթայը որոշում ընդունեց նոր արշավանքներ սկսել, նպատակ ունենալով մոնղոլական տիրապետությունը տարածել նաև Ռուսաստանի, Արևելյան Եվրոպայի և Անդրկովկասի դեռևս չնվաճված երկրների վրա։ 1236 թ. ռազմական գործողություններ են ծավալվում մի կողմից դեպի Ռուսաստան՝ Բաթուի գլխավորությամբ, մյուս կողմից դեպի Անդրկովկաս՝ Չարմաղանի գլխավորությամբ։

Մոնղոլների այս արշավանքի նախօրյակին անդրկովկասյան երկրների վիճակը բավականին ծանր էր։ 1220—1232 թթ. ընթացքում՝ մոնղոլական հետախույզ զորամասի, ղփչաղների և ապա Ջալալ ադ-Դինի արշավանքներն ու ասպատակությունները թուլացրել էին երկրի դիմադրողական ուժերը։ 12 տարի երկարած պատերազմների և ասպատակությունների հետևանքով երկրի խոշոր քաղաքների ու մի շարք շրջանների բնակչության զգալի մասը ոչնչացվել ու գերեվարվել էր, սովը և համաճարակը մարդկային մեծ կորուստներ էին պատճառել, խիստ թուլացել էին ֆեոդալական ռազմական ուժերը, աշխուժացել կենտրոնախույս ձգտումները և այդ ամենի հետևանքով վրացական պետությունը խիստ թուլացել էր։ Գեորգի Լաշայի և Իվանե աթաբեկի մահից հետո, Վրաստանը կորցրել էր իր զորությունը և այլևս ի վիճակի չէր դիմադրելու օտար նվաճողներին։

Վրաստանում և Հայաստանում միասնական կազմակերպված դիմադրողական ուժերի բացակայությունը հնարավորություն ընձեռեց Չարմաղանին՝ միանգամից փոքր ջոկատներով հարձակվելու և կարճ ժամանակամիջոցում գրավելու Անդրկովկասի ռազմական և տնտեսական նշանակություն ունեցող բոլոր կարևորագույն քաղաքներն ու շրջանները։

Ներխուժելով Անդրկովկաս, Չարմաղանը 1236 թ. շարժվում է դեպի Առան, բանակ դնում Մուղանի դաշտում, որը դառնում է մոնղոլական ուժերի հավաքատեղին։ Այստեղից նրանք սկսում են իրենց հարձակումները Անդրկովկասի երկրների վրա։

Պատմիչը վկայում է. «Վիճակով բաժանեցին Հայոց, Վրաց և Աղվանից ամբողջ երկիրը՝ ամեն մի գլխավորի, ըստ մեծության և փոքրության, քաղաքներ ու գավառներ, աշխարհներ ու բերդեր, որպեսզի նրանք առնեին, քանդեին և ավերեին։ Եվ գնացին յուրաքանչյուրն իր բաժնի մասը իրենց կանանցով ու երեխաներով և իրենց բանակի մարդկանց բազմությամբ, ունեցվածքով...»[11]։

Հայաստանը նվաճելու նպատակով Չարմաղանը մի քանի ջոկատ ուղարկեց երկրի տարբեր շրջանները։

1236 թ. ամռանը, հարձակման անցնելով տարբեր ուղղություններով, մոնղոլները նվաճում են ընդարձակ տարածություններ։

Մարտավարության այս եղանակը հետապնդում էր երկու նպատակ։ Նախ՝ երկրի տարբեր մասերում միաժամանակ ծավալելով ռազմական գործողություններ, նրանք ցլատում էին տեղական զինված ուժերը, զրկում նրանց միավորվելու հնարավորությունից և, որ կարևորն է, դյուրին հաղթանակների հասնելով, նրանք պահպանում էին իրենց մարդկային ուժերը վերջնական հաղթանակի համար։ Տեղական ուժերը զրկվելով միահամուռ դիմադրության հնարավորությունից ցիր ու ցան էին լինում և սեփական տիրույթները փրկելու հույսով ամրանում էին իրենց բերդերում։

«...Քանի որ մեկը չկար, որ նրանց ընդդիմանար կամ պատերազմեր նրանց դեմ։ Դրա համար էլ բոլոր կողմերից աներկյուղ էին, որովհետև փախուստի դիմեց Վրաց թագուհին, որի անունը Ռուսուդան էր, և այսպիսով կարողացավ ազատվել։ Այսպես և բոլոր իշխաններն իրենց անձը փրկեցին նրանցից»[12]։

Մոնղոլական բանակը հիմնականում կազմված էր հեծելազորից։ Հետևակը նրանք հավաքում էին նվաճված ժողովուրդներից, աշխարհազորի ձևով և նետում ռազմի առաջին հարվածի տակ։ Ռազմավարության այդ նենգ ձևը նրանք կիրառում էին ամենուրեք։

Գրիգոր Ակներցին նկարագրելով մոնղոլական պատերազմները Իկոնիայի սուլթանության դեմ, գրում է. «...բայց հաղթության պատճառը հայոց և վրաց իշխաններն էին, որ առաջին գծում էին և ուժեղ բախվելով հարձակվում էին թշնամու վրա և ապա նրանից հետո շարժվում էին թաթարները նետով և աղեղով»[13]։

Մոլար նոյինը, նախքան Մուղանից դուրս գալը, մոնղոլների մի խումբ է ուղարկում Շամքոր։ Սրանք գալիս են ու գրավում քաղաքի դարպասները և արգելում ելք ու մուտքը։ Տեսնելով այդ գրավմունը, քաղաքացիները օգնություն են խնդրում Վահրամ Գագեցուց և նրա որդուց՝ Աղբուղայից, որոնց իշխանության տակ էր գտնվում քաղաքը։ Ծակայն Վահրամ Գագեցին ոչ միայն ինքը չի օգնում, այլև Աղբուղային թույլ չի տալիս որևէ օգնություն կազմակերպել։ Վահրամը ապաստան է գտնում Քոլթայիսիում։ Շուտով իր բանակով քաղաքին է մոտենում Մոլար նոյինը և պաշարում այն։ Շամքորի բը-

---

11 Կիրակոս Գանձակեցի, էջ 237—238։

12 Նույն տեղում, էջ 254։

13 Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), էջ 13—14։

*նակչությունն ինքը ձեռնարկելով անհրաժեշտ միջոցառումներ, համառ ու հերոսական դիմադրություն է ցույց տալիս թշնամուն։ Մոնղոլները, զգալի կորուստների գնով, գործի են դնում իրենց պաշարողական բոլոր միջոցներն ու մարտավարական հնարները և դրանից հետո միայն գրոհելով, կարողանում են գրավել քաղաքը։*

*Շամքորից հետ Մոլար նոյինը գրավում է Վահրամի իշխանության տակ գտնվող մի շարք բերդեր ու ամրոցներ՝ Սագամը, Տերունականը, Երգեվանքը, Գագը, Տավուշը, Կածարեթը, Քավազինը, Աղսարթանի որդի Կյուրիկեի աթոռանիստ Մածնաբերդը և Կյուրիկյան «արքայազն» Վասակին պատկանող Նոր Բերդը[14]։*

*Տավուշ բերդի հարավակողմում մոնղոլները գերեվարում են Վանական վարդապետին իր աշակերտների հետ, որոնց թվում և Կիրակոս Գանձակեցուն։ Վանականը կարողանում է փրկավճարով ազատվել, իսկ Գանձակեցին իր կյանքն ազատում է փախուստի միջոցով։*

*Ղատաղա նոյինը, առանց լուրջ դիմադրության, գրավում է Գարդմանը, Չարեքը, Գետաբեկը, Վարդանաշատը և նրանց հարևան շրջանները։*

*Չաղատա նոյինը, տեղեկանալով Լոռե քաղաքի ամրության և, որ գլխավորն է, հարստության մասին, վերցնում է մի ընտիր զորամաս, հարձակողական ու պաշարողական մեքենաներ և գալիս պաշարում է Լոռեն։ Քաղաքի իշխան Շահնշահ Զաքարյանը իր ընտանիքով փախչում է Վրաստան և ապաստան է գտնում Աջարիայի շրջանում, իսկ քաղաքի պաշտպանությունը հանձնում իր աներոջ ընտանիքին։ «Իսկ նրանք քանի որ կնաբարո մարդիկ էին ըզբաղված ուտելով, խմելով և հարբեցողությամբ, հույսները դրել էին պարիսպների ամրության վրա»[15],— գրում է Գանձակեցին։ Եվ այսպես, պաշտպանական որևէ միջոցառում չի ձեռնարկվում, իսկ մոնղոլները կործանում են պարիսպները, գրավում քաղաքը և սրի քաշում խուճապահար փախչող բնակիչներից շատերին։ Չեն փրկվում նաև Շահնշահի ազգականներն ու մերձավորները։ Մոնղոլները գտնում և կողոպտում են նաև «զգանձս իշխանին Շահընշահի», որ դրկել և կողոպտել էր իր հպատակներին և այնտեղ կաուցել ամրագույն գանձատուն[16]։*

*Գրավելով Լոռու ամբողջ շրջանը, մոնղոլները շարժվում են առաջ, նվաճում Դմանիս, Շամշուլդե քաղաքները և ապա՝ Տփղիսը։*

*Նույն ժամանակաշրջանում Դուղատա նոյինը պաշարում է Կայեն բերդը, ուր ամրացել էր Ավագ Զաքարյանը և գավառի բնակչության մի մասը։ Մոնղոլ զորավարը պատվիրակ է ուղարկում և Ավագին առաջարկում է հպատակություն հայտնել։ Ավագը թշնամու սիրտը շահելու հույսով իր դստերն է ուղարկում նրա մոտ՝ մեծ նվերներով։ Սակայն մոնղոլներն ավելի են աշխուժացնում պաշարողական գործողությունները։ Այս տեսնելով, Զաքարյան իշխանն իր հեծուբ Գրիգոր Տղային ուղարկում է Չարմաղանի մոտ։ Վերջինս, որ այդ ժամանակ գտնվում էր Սևանի ափին, սիրով ընդունում է Ավագի՝*

---

14 Տե՛ս Վարդան, էջ 45։

15 Կիրակոս Գանձակեցի, էջ 253։

16 Նույն տեղում։

հպատակվելու մասին առաջարկը և հրամայում է Դուղատա նոյինին ու մյուս զորավարներին՝ դադարեցնել ռազմական գործողությունները, իսկ Ավագին ուղարկել իր մոտ։ Ավագը ներկայանում է մոնղոլական գլխավոր զորահրամանատարին և ընդունվում պատիվներով։

Չարմաղանի և Ավագի միջև բանակցությունները վերջանում են նրանով, որ Ավագը հպատակություն է հայտնում նվաճողներին, պարտավորվում է հարկ վճարել, իր զինված ուժերով մասնակցել մոնղոլների ռազմական գործողություններին և բավարարել մոնղոլական երթևեկող պաշտոնեության պահանջները, իսկ Չարմաղանը հրամայում է նրա բոլոր քաղաքներն ու բերդերը վերադարձնել իրեն, դադարեցնել ռազմական գործողությունները, ազատ արձակել բոլոր գերիներին։ Դրանից հետո նա Ավագին վերցնում է իր հետ և շարժվում Անիի վրա։

Ավագի նկատմամբ ցուցաբերած նման վերաբերմունքն ուներ իր պատճառները։ Չարմաղանին քաջ հայտնի էր Ավագի գրաված դիրքը վրացական արքունիքում և հայ ֆեոդալական իշխանություններում։ Նրան անհրաժեշտ էր առաջին հերթին սիրաշահել Ավագին, գրավել իր կողմը և ապա նրա միջոցով հպատակեցնել մյուս հայ իշխաններին ու ազդել վրաց թագուհու վրա՝ հպատակվելու մոնղոլներին։

Հետագայում Չարմաղանը Ավագին ուղարկում է մեծ խաքանի մոտ։ Վերջինս նույնպես համաձայնվում է վերադարձնել նրա բոլոր տիրույթները, միաժամանակ Չարմաղանին հանձնարարում է «...նովաւ նուաճել զամենայն ապստամբսն, որ և եղև իսկ»,— ասում է պատմիչը[17]։

Այս ճանապարհով Ավագ Զաքարյանը ոչ միայն կարողացավ պահպանել իր տիրույթները, այլև հայ իշխանների նկատմամբ գերադաս դիրքը։ Կախման մեջ ընկնելով նվաճողներից, նա նրանց կողմից դիտվում էր որպես մոնղոլական բանակում ծառայության մտած հայ-վրացական ֆեոդալական զորախմբի գլխավոր հրամանատար։

1236 թ. ամռան ամիսներին ավարտվեց նաև Խաչենի ու Սյունիքի գրավումը։

Ջուղբուղա զորավարը ներխուժելով Վերին Խաչեն, կողոպուտի ու ավերածության է ենթարկում անպաշտպան շրջանները, գրավում Հավքախաղաց անմատչելի բերդը (Վերին Խաչենում՝ Թարթառ գետի աջ կողմում), անողոք սրի քաշում բերդում պատսպարված բնակչությանը, մի մասին էլ գահավեժ անում։

Դրանից հետո Ջուղբուղան շարժվում է դեպի Ներքին Խաչեն, մտնում է Հասան Ջալալի ֆեոդալական իշխանության սահմանները։ Վերջինս ամրացել էր Գանձասարի վանքի դիմաց գտնվող Խոխանաբերդում և բավական ուժեղ դիմադրություն էր ցույց տալիս թշնամուն։ Ընդհանրապես նկատենք, որ Ներքին Խաչենի բնակչությունը հերոսական պայքարի վառ օրինակներ է ցուցաբերում։ Մոնղոլները երկար ժամանակ չեն կարողանում գրավել անառիկ Խոխանաբերդը։ Տեսնելով, որ մարտերով անհնար է գրավել այն, Ջուղբուղան հաշտություն է առաջարկում։ Հասան Ջալալը և տեղական իշխանները,

---

17 Կիրակոս Գանձակեցի, էջ 263։

որոնք երկարատև պաշարման պատճառով կտրված էին արտաքին աշխարհից, ստիպված են լինում հպատակություն հայտնել մոնղոլներին։ Այսուհանդերձ, խոխանաբերդը գրավելուց հետո էլ ամբողջ Խաչենի նվաճումը բավական դանդաղ ընթացավ, որովհետև ժողովուրդը համառորեն դիմադրում էր։

Մոնղոլ զորավարներից Ասլան նոյինին բաժին էր ընկել Սյունիքը, որի իշխան Էլիկում Օրբելյանը, մյուս հայ ֆեոդալների նման, ամրանում է Վայոց ձորի Հրաշքաբերդ ամրոցում (Նորավանքի մոտ)։ Չնայած այստեղ առանձին շրջաններում բնակչության դիմադրության փորձերին, Էլիկում Օրբելյանն ընդունում է Ասլան նոյինի առաջարկը, մեծ ընծաներով ներկայանում է Ասլանին և իր հպատակությունը հայտնում։

Այն հանգամանքը, որ Օրբելյան իշխանի անձնատուր լինելուց հետո էլ մոնղոլ զորավարը պիտի «հնազանդէր զամենայն» և թրով գրավեր արդեն հպատակություն հայտնած իշխանի տիրույթները, խոսում է այն մասին, որ ժողովրդի, թերևս և առանձին իշխանների կողմից, դիմադրություն է ցույց տրվել։

Նվաճելով երկրի հյուսիս-արևելյան շրջանները, մոնղոլները Չարմաղանի գլխավորությամբ շարժվում են դեպի կենտրոնական գավառները և 1236 թ. ամռանը մոտենում Անի քաղաքին։

Չարմաղանի պատվիրակները ներկայանում են քաղաքի ավագանուն և առաջարկում հանձնել քաղաքը։ Ավագանին տատանվում է, քանի որ հակված էր ընդունելու առաջարկը, մինչդեռ բնակչությունը՝ արհեստավորությունն ու ստորին խավերը, դիմում են վճռական միջոցի։ Նրանք սպանում են պատվիրակներին՝ արտահայտելով իրենց բուռն զայրույթը քաղաքի իշխանավորների ու օտար նվաճողների դեմ, քաղաքի պաշտպանությունը վերցնում են իրենց ձեռքը և հերոսաբար դիմադրում թշնամուն։ Պարիսպների տակ մոնղոլները կուտակում են մեծ քանակությամբ զորք և պաշարողական մեքենաներ։ Նրանց հաջողվում է կործանել պարսպի մի հատվածը և խուժել քաղաք։ Խաբեությամբ քաղաքի բնակչությանը պարիսպներից դուրս բերելով, սկսում են մի ահավոր կոտորած, որից քչերն են ազատվում, իսկ երեխաները, կանայք ու արհեստավորները գերեվարվում են։

Անիի գրավումից հետո Չարմաղանը իր բանակով մտնում է Կարս քաղաքը, որը Անիի կոտորածից սարսափահար կամովին հանձնվել էր մոնղոլներին։ Սակայն Կարսի բնակչությանն էլ սպասում էր նույն դժբախտ ճակատագիրը։ Կարսից հետո Չարմաղանի զորավարներից Ղարա Բահատուրը հարձակվում է Սուրբ Մարիի (Սուրմարիի) վրա, գրավում այն, մատնում կողոպուտի ու ավերածության։

Այսպիսով, 1236 թ. ընթացքում Չարմաղանի գլխավորած մոնղոլական բանակը, Հայաստանում և նրա հարևան երկրներում չհանդիպելով կազմակերպված ընդհանուր լուրջ դիմադրության, նվաճում է Շիրվանը, Զաքարյան ֆեոդալական իշխանություններին ենթակա բոլոր նահանգները և Վրաստանի հարավ-արևելյան շրջանները։

## 5. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՐԱՎ-ԱՐԵՎՄՏՅԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՆՎԱՃՈՒՄԸ

*Որոշ դադարից հետո՝ 1242 թ. մոնղոլները վերսկսում են իրենց նվաճողական արշավանքները, նպատակ ունենալով գրավել ոչ միայն Արևմտյան Հայաստանը, այլև իրենց տիրապետությունը տարածել Իկոնիայի սելջուկյան պետության վրա։ Այս արշավանքը՝ համրացած Չարմաղանի փոխարեն, ղեկավարում էր Նրա Բաչու զորավարը։*

*1242 թ. գարնան սկզբին մոնղոլական զորագնդերը Բաչուի գլխավորությամբ շարժվում են դեպի Կարնո շրջանը և պաշարում Կարինը։ Մոնղոլական զորավարը պաշարվածներից պահանջում է անձնատուր լինել, սակայն քաղաքի պաշտպանները, ըստ Կիրակոս Գանձակեցու «...չկամեցան ենթարկվել, այլ անարգանքով խտ դարձրին պատգամավորներին, և իրենք բարձրանալով պարսպի վրա՝ նախատեցին նրանց»*[18]*։*

*Պաշարումը տևեց մոտ երկու ամիս։ Թշնամին, որի առաջավոր գծում նետվում էին հպատակություն հայտնած հայ-վրացական ֆեոդալական զորամիավորումները, զգալի կորուստներ տալով, գրոհով գրավում է քաղաքը։ Քաջաբար պաշտպանվող հայ և մահմեդական բնակչության մեծ մասը սրի է քաշվում, մի մասն էլ գերեվարվում է։*

*1243 թ. ձմեռը Մուղանում անցկացնելուց հետո, գարնան սկզբին Բաչուի բանակը արշավում է Իկոնիայի սելջուկյան պետության վրա։ Ղիաս ադ-Դին Քայ Խոսրով սուլթանը, որը մեծ ուժ էր կենտրոնացրել թշնամուն հակահարված տալու համար, զորքով շարժվում է ընդառաջ։ Երկու բանակները հանդիպում են Չմանկատուկ գյուղաքաղաքի մոտ (Երզնկայից 15—20 կիլոմետր դեպի արևելք)։ Ճակատամարտը բավական սուր բնույթ է կրում։ Սուլթանական ուժերը սկզբում որոշ հաջողություն են ունենում, սակայն Ղիաս ադ-Դինը տեսնելով, որ իր բանակում երկպառակություն է առաջացել և առանձին զորապետներ կամենում են անցնել մոնղոլների կողմը, փախուստի է դիմում։*

*Չմանկատուկի ճակատամարտը ճակատագրական նշանակություն ունեցավ Իկոնիայի սելջուկյան սուլթանության և Փոքր Ասիայի համար։*

*Հետապնդելով թուրքերին, մոնղոլները գրավում են մի քանի հարուստ քաղաքներ, այդ թվում՝ Երզնկան, Կեսարիան, Սեբաստիան, Տիվրիկը։ Ավարի ու կոտորածի ենթարկվեցին մանավանդ Երզնկան ու Կեսարիան, որոնց բնակիչները հերոսական դիմադրություն էին ցույց տվել հակառակորդին։*

*Իկոնիայի սելջուկյան պետության պարտությունից և Փոքր Ասիայի արևելյան շրջանները նվաճելուց հետո մոնղոլները դուրս են գալիս Կիլիկիայի հայկական թագավորության սահմանները, լուրջ վտանգ սպառնում նրան։ Սակայն մոնղոլները նույնպես բավականաչափ ուժասպառ էին եղել և դաշնակիցներ էին որոնում։ Այդ էր պատճառը, որ 1243 թ. Կիլիկիայի Հեթում թագավորի և Բաչուի միջև տեղի ունեցած բանակցությունները ավարտվեցին պայմանագրի կնքմամբ, հետագայում՝ 1253 թ. ևս մի պայմանագիր կնքվեց Մանգու խանի հետ։*

---

18 Կիրակոս Գանձակեցի, էջ *279*։

Կիլիկյան հայկական պետության հետ հաշտության և բարեկամության պայմանագիր կնքելուց հետո, Բաչուն ձեռնարկեց իր երկրորդ արշավանքը։ 1245 թ. գարնանը նրա բանակը, որի կազմում էին անդրկովկասյան նվաճված երկրների զինված ուժերը, Հայաստանի հարավային շրջաններով անցավ և մտավ Միջագետքի ու Ասորիքի սահմանները։ Ճանապարհին նրանք գրավեցին Խլաթի ամիրայությունը՝ Խլաթ կենտրոնով, վերջ դնելով Այյուբյանների տիրապետությանը Հարավային Հայաստանում։

Այնուհետև շարժվելով դեպի հարավ-արևմուտք, Բաչուն գրավեց Ամիդը, Ուռհան (Եդեսիան), Մծբինը և հասավ Դամասկոս։ Սակայն Եգիպտոսի մամլուքների դեմ ձեռնարկված այս արշավանքն սպասած արդյունքները չտվեց։ Դրանով, փաստորեն, ավարտվեց Հայաստանի հարավային և արևմտյան շրջանների նվաճումը։ Այս վայրերում, ճիշտ է, մոնղոլները լուրջ դիմադրության չհանդիպեցին, սակայն հարավի տաք կլիմայական պայմանները նրանց բանակին բազմապատիկ վնաս պատճառեցին և ստիպեցին 1245 թ. ետ վերադառնալ Մուղան։

Մարդկային պատմությանը մինչև մոնղոլները շատ ու շատ նվաճողներ են հայտնի, սակայն, ինչպես աղբյուրներն են վկայում, ոչ մի նվաճող ամենուրեք այնպիսի ահ ու սարսափ չի տարածել և այդպիսի արագությամբ չի հաստատել իր տիրապետությունը հսկայական տարածությունների վրա, ինչպես մոնղոլները։ Բնականաբար հարց է առաջանում, թե որն էր դրա պատճառը։

Այդ հարցի պատասխանը պետք է որոնել մի կողմից՝ նվաճված երկրներում մինչ այդ տիրող իրադրության, նրանց ֆեոդալական մասնատվածության և թուլության մեջ, մյուս կողմից՝ մոնղոլ նվաճողների քոչվորական ռազմա-ֆեոդալական կարգերի, քոչվոր ռազմատենչ ազնվականության ու նրանց ձգտումները մարմնավորող Չինգիզ խանի և նրա մերձավոր հաջորդների վարած քաղաքականության մեջ։

Նվաճված երկրների դիմադրության ընդունակ բնակչության զանգվածային ոչնչացմամբ ու գերեվարությամբ Չինգիզ խանը նպատակ ուներ ոչ միայն ահաբեկել նվաճված ժողովուրդներին, այլև զրկել նրանց դիմադրական ուժից, կանխել ապստամբություններն ու ազատագրական շարժումները։ Եսասեր մորթապաշտ ֆեոդալական վերնախավին հակառակ, մոնղոլներին ամենուրեք համառ դիմադրություն էր ցույց տալիս քաղաքային բնակչությունը և մոնղոլները, որոնց վարած տնտեսաձևը հակադիր էր քաղաքային կյանքին, առիթը չէին բաց թողնում բարբարոսական դաժանությամբ վարվելու քաղաքների ու նրանց բնակչության հետ։ Գրավելով քաղաքը, նրանք առաջին հերթին քաղաքից դուրս էին քշում բնակիչներին, որպեսզի հեշտ լիներ կողոպուտը, իսկ ինչը հնարավոր չէր վերցնել՝ ավերում կամ հրկիզում էին։ Կողոպուտից հետո զբաղվում էին քաղաքացիներով, որոնք հաճախ 7—10 օր մնում էին դաշտում։ Զինվորներին անխտիր ոչնչացնում էին, արհեստավորների մեծ մասին որպես գերի-ստրուկներ բաժանում էին ազնվականների միջև, երիտասարդությանը վերցնում էին աշխարհազորային ջոկատներում՝ պաշարողական աշխատանքներ, գումակային ծառայություն և այլ ծանր աշ-

*խոստանքներ կատարելու, ինչպես նաև վտանգավոր տեղերում իրենց զորքի առջևից քշելու համար։*

*«Անկասկած է,— գրում է Համդալլահ Ղազվինին,— որ եթե հազար տարվա ընթացքում որևէ այլ աղետ չլինի, մոնղոլական արշավանքների ու տիրապետության հետևանքները ուղղել հնարավոր չէ և աշխարհն իր նախկին գրությանը չի վերադառնա, որպիսին նա եղել է մինչև այդ դեպքերը»*[19]։

*Կիրակոս Գանձակեցին մոնղոլական արշավանքների առիթով գրում է. «Ամբողջ երկիրը լցվեց դիակներով, կարծես թե խավարով էր պատած ամբողջ աշխարհը, մարդիկ գիշերն ավելի էին սիրում, քան ցերեկը և երկիրը դատարկվեց իր բնակիչներից...»*[20]։

---

19 *Տե՛ս* «Материалы по истории туркмен и Туркмении», т. I, М.—Л., 1939, стр. 474.

20 Կիրակոս Գանձակեցի, *էջ 240*։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ (ԿՈՒՍԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՇՐՋԱՆ)

## 1. ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՍԻՍՏԵՄԸ

*Չինգիզ խանը նվաճված բոլոր երկրները բաժանել էր իր չորս որդիների միջև*[1]*։ Նախնական բաժանման համաձայն ավագ որդու՝ Ջուչիի ուլուսի մեջ պետք է մտնեին բոլոր այն երկրները, որոնք ընկած էին Իրտիշ գետից, Արալյան ծովից և Ամու-Դարիայից արևմուտք։*

*Հետագայում, սակայն, այդ երկրները չմիացվեցին Ջուչիի ուլուսին, այլ այնտեղ ստեղծվեցին մոնղոլական կենտրոնական պետության կուսակալություններ։ Արևելյան Վրաստանը, Հայաստանը, Առանը, Շիրվանը և Ատրպատականը կազմեցին մեկ կուսակալություն։*

*Կուսակալությունը բաժանված է եղել հինգ վարչա-տնտեսական երկրային միավորների՝ վիլայեթների. 1. Արևելյան Վրաստանը և Զաքարյան ֆեոդալական իշխանությունը, որը Հայաստանից ընդգրկում էր Այրարատը, Սյունիքը, Արցախը, Գուգարքը, 2. Մեծ Հայքը՝ Հայաստանի հարավ-արևմտյան նահանգները, 3. Շիրվանը, 4. Առանը և Մուղանը, 5. Ատրպատականը*[2]*։*

*Վիլայեթները կազմված էին ռազմա-վարչական երկրային միավորներից — թումաններից։ Թուման էր կոչվում այն վարչական միավոր-նահանգը, որը տալիս էր 10 հազար զինվոր։ Ընդհանրապես մոնղոլական ուլուս պետությունները իրենց կենտրոնական և նահանգային իշխանությունը կառուցում էին՝ զուգորդելով մոնղոլական սովորույթները և նվաճված երկրների վարչական կառուցվածքը։*

---

1 *Տե՛ս* Գրիգոր Ակներցի, *էջ 10—11։ Նվաճումներից հետո Ջարմաղանը Մուղանի դաշտում հատուկ ժողով է հրավիրում և նշված երկրները բաժանում իր 110 զինվորական հրամանատարների՝ նոյինների միջև։*

*Դրանցից 12-ին բաժին էր ընկել Հյուսիսային Հայաստանը, 13-ին՝ Աղվանքն ու Արևելյան Վրաստանը, իսկ մնացած զորավարներին՝ Շիրվանը, Ատրպատականը և Հայաստանի հարավային ու արևմտյան շրջանները։*

2 *Տե՛ս* «Очерки истории СССР», ч. II, М., 1953, стр. 687, примеч. 1։

Վրաստանը և Զաքարյան ֆեոդալական իշխանությունը, որոնց մոնղոլ նվաճողները տվել էին «Գյուրջիստանի վիլայեթ» անունը, սկզբում բաժանվեց ութ թումանի։ Նրանցից հինգը վրացական նահանգներ էին, երեքը՝ հայկական, Անիի Զաքարյանների տիրույթները՝ Կարսի ինքնավար շրջանով, Ավագյանների տիրույթները, Սյունիքով և Արցախով (Լեռնային Ղարաբաղ) և Վահրամյանների իշխանությունը։ Նշված թումանները գլխավորում էին Զաքարյան ֆեոդալական տան ներկայացուցիչները (Շահնշահը, Ավագը և Վահրամ Գագեցին), որոնք նվաճողների կողմից դիտվում էին որպես մոնղոլական պետության ավատառուներ։ Զաքարյան իշխանները՝ թումանների կառավարիչները, «Գյուրջիստանի վիլայեթի» կազմում երկակի կախման մեջ էին գտնըվում, նրանք ավատառու էին Վրաստանի թագավորի նկատմամբ, միաժամանակ հանդիսանում էին մոնղոլական խաքանի ավատառուները ի դեմս նրա կուսակալի։

Ինչպես ասվեց, Հայաստանի հարավային և արևմտյան նահանգները կազմեցին մեկ վիլայեթ, որն այդ ժամանակ կրում էր «Մեծ Հայք» (Մեծ Հայաստան) անունը։ Վիլայեթի այն նահանգները, որոնք հարուստ էին արոտավայրերով և դարձան նվաճողների ամառանոցների ու ձմեռանոցների վայրեր, որպես բաժնեկալվածներ տրվեցին մոնղոլ ավագանուն, իսկ տեղական իշխողների մի զգալի մասը ոչնչացվեց։ Մյուս նահանգների հողային տարածությունների մի մասն անցավ դիվանին և արքայական տան անդամներին, որպես պետական արքունական և «ինջու»-ական տիրույթ։ Մի քանի նահանգներ էլ, հատկապես նախալեռնային և լեռնային, որտեղ քուրդ և սելջուկ իշխողները հպատակություն էին հայտնել մոնղոլներին, թողնվեցին նրանց տնօրինության տակ։

«Մեծ Հայք» վիլայեթի կազմում մտնող հայկական նախկին ֆեոդալական իշխանություններից բեկորներ էին պահպանվել Տավրոսյան անառիկ լեռնաշղթայի առանձին հատվածներում, Սասունում՝ Մամիկոնյանների Թոռնիկյան ճյուղը, Մոկքում և Ռշտունիքում (Վասպուրականում)՝ Արծրունիների ճյուղերը (Խեդենեկյաններ) և այլն։

Հայկական այս ինքնամփոփ փոքր իշխանությունները, ճանաչելով մոնղոլների գերիշխանությունը, պահպանեցին իրենց ինքնուրույնությունը, իրենց հոգևոր կենտրոններով հանդերձ։ Մի կողմից օտար տիրապետության դեմ հայ լեռնականների հերոսական մաքառումները և առանձին գավառների աշխարհագրական նպաստավոր դիրքը, մյուս կողմից էլ հայ եկեղեցու նկատմամբ նվաճողների հանդուրժողական քաղաքականությունը և նրան շնորհվող արտոնությունները, որոնց հովանու տակ հաճախ թաքցվում էին հայ աշխարհիկ ֆեոդալների հողային տիրույթները, երկարաձգեցին հայկական ֆեոդալական իշխանությունների բեկորների երբեմն գոյությունը ևս մի քանի հարյուրամյակ։ Վասպուրականի անառիկ Ամյուկ ամրոցը՝ Արծրունյաց Խեդենեկյան ճյուղի կենտրոնն էր, իսկ Աղթամար կղզին՝ Սեֆեդինյան։

Դեռևս 1113 թ. Աբդլմսեհ Արծրունու կողմից հիմնադրված Աղթամարի կաթողիկոսությունը, որին ժառանգաբար տիրում էին Սեֆեդին Արծրունու տոհմի ներկայացուցիչները, ընդարձակ կալվածներ ուներ Վանա լճի շրջակա գավառներում։ Իրենց ներքին ինքնավարությունը պահպանեցին նաև Երզնկա

ու մի քանի այլ քաղաքներ։ Սկզբնական շրջանում իր ինքնավարությունը պահպանեց Խլաթի ամիրայությունը, որը նվաճողները հանձնել էին հայազգի Թամթա իշխանուհուն (Իվանե աթաբեկի դուստրը)։ Թամթայից հետո այնտեղ իշխում են տեղական մահմեդական ազնվականության ներկայացուցիչները։ «Մեծ Հայք» վիլայեթի կառավարչի նստավայրն էր Կարին (Էրզրում) քաղաքը։

XIII դարի 40-ական թվականների վերջերին նվաճված երկրներում ստեղծվեց նոր պաշտոն՝ ռազմաքաղաքացիական իշխանությունը և հարկահանման գործը դրվեց բասղաղների վրա, որոնք նույնպես նշանակվում էին ռազմա-քոչվորական ավագանուց։

Անդրկովկասում՝ բասղաղ Արղունի հանդես գալուց հետո, Բաչուն, որը փոխարինել էր Չարմաղանին, արդեն դիտվում էր որպես մոնղոլական զինված ուժերի գլխավոր հրամանատար և կուսակալության սահմաններում զինվորական գերագույն իշխան։ Նա այլևս չէր զբաղվում կուսակալության վարչական-քաղաքացիական, հարկային գործերով։ «Քանզի ընդ այն ժամանակս էր զօրագլուխ նետողացն, որպէս թագաւոր ի վերայ ամենեցուն Բաչու նոյինն...»[3]։ Իսկ Արղունն էր «...հրամանատար ամենեցուն և իշխեցող արքունի հարկացն և դիւանին...»[4]։ Բասղաղը, զինվորական-քաղաքացիական ու ֆինանսական-տնտեսական գործերի վրա ընդհանուր հսկողությունից բացի, պարտավոր էր կատարել բնակչության հաշվառում, ապահովել զինակոչը, կարգավորել փոստային հաղորդակցությունը և արքունիք փոխադրել գանձված հարկերը։

Դեռևս նվաճումների շրջանում, որևէ քաղաք գրավելով, մոնղոլներն այնտեղ քոչվոր ազնվականներից նշանակում էին քաղաքապետ՝ «շահնա»։

Կուսակալության կենտրոնը Թավրիզի մոտ գտնվող Գանձակ (հնագույն Գազակա) քաղաքն էր։

Երկրի տնտեսական-ֆինանսական և քաղաքական կյանքի կառավարման ասպարեզում կարևոր տեղ էին գրավում դիվանները, հատկապես պետական. կամ ինչպես աղբյուրներում է հիշվում՝ «մեծ դիւանն արքունի»[5]։

Մոնղոլ իշխողները ձգտում էին կրոնը և հոգևորականությանը օգտագործել իրենց լայնածավալ կայսրության տարբեր դավանանքի ժողովուրդներին հնազանդ պահելու համար։ Մոնղոլներն ամենուրեք աշխատում էին ապահովել տեղական ֆեոդալական վերնախավի և հատկապես հոգևորականության օժանդակությունը, որքանով սրանց ձեռքում էին գտնվում տեղական հարկատու բնակչության տրամադրությունների վրա ազդելու և ուղղություն տալու հնարավորությունները։ Դրանով պետք է բացատրել եկեղեցու և հոգևորականության արտոնյալ վիճակը մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում։

---

3 Ստ. Օրբելյան, էջ 405—406։

4 Կիրակոս Գանձակեցի, էջ 312, 371։

5 Ստ. Օրբելյան, էջ 419։

## 2. ՏԵՂԱԿԱՆ ՖԵՈԴԱԼՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ ՄՈՆՂՈԼՆԵՐԻ ՎԱՐԱԾ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Ավարտելով նվաճումները, մոնղոլներն իրենց տիրապետության տակ ընկած երկրներում կառավարման ձևերը հիմնականում թողեցին նախկինը։ Մինչև 1254 թ. աշխարհագիրը, զբաղված լինելով կողոպուտով, ավերածություններով ու կոտորածներով, նրանք քիչ էին միջամտում այդ երկրների ներքին կառավարման գործերին։

Տեղական իշխողների կողքին Չարմաղանի կողմից նշանակված մոնղոլ գործակալները, սկզբում օժտված էին գերազանցապես զինվորական իշխանությամբ։

Տեղական ֆեոդալներին իրենցից կախվածության մեջ պահելու նպատակով մոնղոլները նրանց նշանակում էին զանազան ռազմա-վարչական պաշտոնների, ամուսնացնում մոնղոլ կանանց հետ, սիրաշահում թանկարժեք նվերներով և այլն։

«Վրաց ժամանակագրության» հեղինակը վկայում է, որ «...թաթարները նրանց (իշխաններին) բյուրապետ նշանակեցին, որին դումենապետ էին կոչում։ Իշխաններ ընտրեցին նրանցից. առաջինը Եգարսլան Բակուրցիխելուն... նրան հանձնեցին Հերքի, Կախքի, Կամբեչիանի զորքը, Թփղիսից վերև՝ մինչև Շամախու սարը։ Շանշեին հանձնեցին իր ու Ավագի կալվածները, Վահրամ Գագեցուն՝ ողջ Սոմխիթը, Գրիգոր Սուրմելիին՝ Քարթլին, Թորել-Գամրեկելիին՝ ...Ջավախքը, Սամցխեն և վերև՝ մինչ Կարնո քաղաք, իսկ Ցոտնե Դադիանիին ու Ռաճայի էրիսթավին՝ ողջ այնկողմյան թագավորությունը։

Այսպես կարգեցին թաթարները և բաժանեցին Վրաստանը...»[6]։

Ավագի՝ որը արու զավակ չուներ, կալվածները Շահնշահին էին հանձնել ժամանակավորապես, քանի որ, ըստ «Վրաց ժամանակագրության» հեղինակի վկայության, Ավագը շուրջ հինգ տարի բացակայել է հայրենիքից, եղել է նախ Բաթու խանի, իսկ հետո Մանգու խանի մոտ՝ Ոսկե Հորդայում և Կարակորումում[7]։

Առանձին նահանգներում ու գավառներում, որտեղ ոչնչացրել էին տեղական իշխողներին, և այն շրջաններում, որոնք հանդիսանում էին մոնղոլների ձմեռանոցներն ու ամառանոցները, կառավարիչները նշանակվում էին մոնղոլական վերնախավից։ Նրանք այդպես վարվեցին, ինչպես ասվեց «Մեծ Հայքի» վիլայեթի գավառների մեծ մասում[8]։

Կուսակալության ժամանակաշրջանում հայ ֆեոդալական տիրույթներում առանձնապես լուրջ փոփոխություններ տեղի չունեցան։ Զաքարյանների ֆեոդալական իշխանությունը դարձավ մոնղոլների ավատառու երկիր՝ Արևելյան

---

6 «Վրաց ժամանակագրություն», էջ 88։

7 Տե՛ս նույն տեղում, էջ 97։

8 Ելնելով թուրք ճանապարհորդ Էվլիա Չելեբիի և Արաբ-Շահ Ահմադի տված տեղեկություններից, կարելի է ենթադրել, որ Հայաստանի հարավային և արևմտյան նահանգներում 56 գավառ է եղել։ Տե՛ս «Seyasetname», Istanbul, 1887, «Պատմութիւն Լէնկ-Թիմուրայ», Երուսաղեմ, 1873։

*Վրաստանի թագավորության կազմում և պահպանեց իր ներքին ինքնավարությունը՝ սկզբում երեք, հետո հինգ ռազմա-վարչական միավորների—թումանների սահմաններում։ Զաքարյանները շարունակում էին իրենց ձեռքում պահել վրացական արքունիքի բարձրաստիճան պաշտոնները և հայկական ֆեոդալական տների նկատմամբ ունեցած գերադասությունը։ Ավագը հոր՝ Իվանեի մահից հետո, 1227 թ. ժառանգել էր ինչպես աթաբեկությունը, այնպես և Զաքարյան ֆեոդալական տան ավագության դիրքը։ Զաքարեի որդի Շահնշահը վարում էր ամիրսպասալարի, իսկ Վահրամ Գագեցին՝ մսախուրթ-ուխուցեսի պաշտոնները։ Երկրի քաղաքական կյանքին, հատկապես մոնղոլների կողմից ձեռնարկվող ռազմական գործողություններին ակտիվ մասնակցություն էին ցուցաբերում նաև Զաքարյան ֆեոդալական տան կրտսեր սերնդի ներկայացուցիչները՝ Շահնշահի Զաքարիա և Վահրամի՝ Աղբուղա որդիները։*

*Զաքարյանների երեք ճյուղերի ներկայացուցիչները՝ թումանների կառավարիչները, որպես նվաճողների ավատառուներ, կատարում էին ավատառուական բոլոր պարտականությունները։ Այն է՝ իրենց ռազմական ուժերով մասնակցում էին մոնղոլների կողմից ձեռնարկվող ռազմական գործողություններին, վճարում էին պահանջվող հարկերը, ապահովում էին մոնղոլական երթևեկող պաշտոնեությանը փոխադրական միջոցներով ու կենսամթերքներով և այլն։ «Եւ ապա սկսան հարկապահանջութեամբ և երթևեկութեամբ և զինուորութեամբ նեղել զնոսա...» (տեղական իշխողներին), վկայում է ժամանակակից պատմիչը*[9]*։*

*Հայկական ֆեոդալական մյուս տները՝ Պռոշյանները, Դոփյանները, Վաչուտյանները, Պահլավունիները, Արծրունիները, սկզբնական շրջանում նաև Օրբելյաններն ու Ջալալյանները, Զաքարյանների ավատառուներն էին և նրանց նկատմամբ էին կատարում իրենց պարտավորությունները՝ հարկատվություն, զորք տալ, շինարարական աշխատանքներին մասնակցություն և այլն։ Նրանցից շատերը Զաքարյանների մոտ վարում էին բարձրաստիճան վարչական պաշտոններ։ Զաքարեի և Իվանեի մորեղբոր՝ ամիր Սարգսի Խոյրասս որդին, Բուբակ իշխանաց իշխանի մահից հետո, վարում էր Զաքարյանների արքունիքի գործակալի՝ մսախուրթ-ուխուցեսի պաշտոնը։ XIII դարի սկզբում ստեղծված երեք իշխանություններում կառավարչի պաշտոններ են վարել՝ Սյունիքում՝ Էլիկում Օրբելյանը, Այրարատում՝ Վաչեի որդի Քուրդ Վաչուտյանը, որի իշխանանիստ գյուղում՝ Վարդենիսում, կանգ էր առել Կիլիկիայի Հեթում թագավորը՝ Մանգու խանի մոտ գնալիս, և որի մասին պատմիչն ասում է. «Հաճոյ եղեալ այլազգի զօրացն նեստողաց...»*[10]*, Վայոց ձորում՝ Պռոշ Խաղբակյանը։ Վերջինիս խաղացած դերով և գերիշխող դիրքով պետք է բացատրել այն հանգամանքը, որ XIII դարի 40—50-ական թվականներից Խաղբակյանների ֆեոդալական տունը սկսեց նրա անունով անվանվել Պռոշյան։ Պռոշը 20-ական թվականներից լինելով կառավարիչ, միաժամանակ վա-*

---

9 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 263, տե՛ս և էջ 269,* Գրիգոր Ակներցի, *էջ 8, 10, 11, 16։*

10 Զաքարիա Սարկավագ, *էջ 18,* Կ. Ղաֆադարյան, *Հովհաննավանքը և նրա արձանագրությունները, էջ 103։*

*րում էր Զաքարյանների զինական ուժերի սպարապետի պաշտոնը՝ մինչև իր կյանքի վերջը (1284)։*

*Պռոշը, որպես հայկական զինված ուժերի սպարապետ, եռանդուն մասնակցություն է ունեցել Ջալալ ադ-Դինի դեմ մղված մարտերին՝ վրաց-հայկական բանակում, ապա Հայաստանի հարավ-արևմտյան շրջանների գրավմանը՝ Բաչուի արշավանքների ժամանակ։ Դոփյաններից «Տղա» մականունը կրող Գրիգոր իշխանը վարում էր Ավագի տան հեջուբի պաշտոնը։ Բաչուի նըվաճումների ժամանակ նա եղել է հայկական զորաջոկատի հրամանատար։ Պահլավունիների ձեռքում էր գտնվում Անի քաղաքի կառավարչի՝ ամիրայի պաշտոնը։ Ավագյանների և իր տիրույթների անձեռնմխելիությունն ապահովելու նպատակով Հասան Ջալալի հետ Գրիգոր Տղան մեկնել է Բաթու խանի մոտ՝ նրա հովանավորությունը ստանալու համար։*

*Տեղական խոշոր ֆեոդալներին պաշտոններ տալու և սիրաշահելու քաղաքականությունը չլատում էր տեղական իշխանների ուժերը և նրանց ընդվըզումները՝ ուղղված մոնղոլների դեմ։*

*Ավագը մինչև 40-ական թվականների կեսերը Չարմաղանի կողմից դիտվում էր որպես վրացական արքունիքի ներկայացուցիչ և Հայաստանի փաստական տիրակալը, ուստի և մոնղոլները ամեն կերպ ջանում էին նրան դարձնել իրենց հենարանը և «նովաւ նվաճել զամենայն աշխարհս»։*

*1240-ական թվականների սկզբին Ավագը ստանձնում է Բաչուի հանձնարարությունը և խաքանի ներկայացուցիչ Տոնղուս Աղա անունով մի ազնվականի հետ, հատուկ առաքելությամբ, գնում է մոնղոլներից խուսափած և Սվանեթի անառիկ վայրերում ապաստանած վրաց Ռուսուդան թագուհու մոտ՝ վերջինիս հպատակության բերելու առաջարկով։ Պատվիրակությունը կատարում է իր առաքելությունը, վրաց թագուհին ստիպված է լինում ճանաչել մոնղոլական գերիշխանությունը։ 1246 թ. Գույուկ խաքանը Արևելյան Վրաստանի գահի վրա է հաստատում Գեորգի Լաշայի Դավիթ որդուն, որը միաժամանակ ճանաչվում է «Գյուրջիստանի վիլայեթի» մելիք՝ հաքիմ։ Իսկ Արևմըտյան Վրաստանում, որը շնորհիվ իր աշխարհագրական դիրքի, համեմատաբար զերծ էր մնացել ասպատակություններից, բայց ճանաչել էր մոնղոլների գերիշխանությունը և պարտավորվել էր հարկեր վճարել, գահը հանձնում է Ռուսուդանի որդուն՝ Դավթին, որին մեծարելով կոչեցին Նարին-արքունի դեմք-սեփիս պիրի[11]։*

*1246 թ. արևմտյան երկրներից կայսրությանը հասանելիք հարկերը հավաքելու նպատակով Գույուկ խաքանը Արղունի գլխավորությամբ մեծ հանձնախումբ ուղարկեց Իրան։ 1247 թ. Արղունը նշանակվեց Իրանի և նրա սահմանակից երկրների բասղաղը։ Հարկահավաքը Իրանում 1247 թ. ավարտելուց հետո, հարկահանններն անցնում են Անդրկովկաս, իսկ 1248 թ. ընդգրկում նաև Հայաստանը։*

*1236—1237 թթ. Ռուսաստանում, իսկ 1247—48 թթ. Իրանում և Անդըրկովկասում անցկացված այս հարկահանությունը ցույց է տալիս, որ ավարառության ու կողոպուտի ծարավի քոչվոր ազնվականությունը նվաճված*

---

11 Տե՛ս «Վրաց ժամանակագրություն», էջ 79։

երկրները դիտում էր որպես իր սեփականությունը և հարկադրման ու հարկահանման գործը դարձրել էր կամայականությունների, բռնությունների ու չարաշահումների գլխավոր միջոց։

Մինչև 1254 թ. ընդհանուր աշխարհագիրը, մոնղոլները նվաճված երկրներում գանձել են անշարժ և շարժական ունեցվածքի 1/10—1/30 մասը։ Դա ոչ թե եկամուտից, այլ ամեն ինչից գանձվող հարկ էր։ Ծանր էր, մանավանդ, ամեն անձից 60 արծաթ դրամի չափով գանձվող գլխահարկը։ Հարկահանությունը՝ ուղեկցված կամայականություններով, աղետալի բնույթ էր ստանում։

«...Ամեն ժամ գալիս էին և հարկեր պահանջելով նեղացնում էին վրաց և հայոց իշխաններին, ոմանցից պահանջում էին ոսկի կտավ, ոմանցից բազե թռչուն, ոմանցից լավ շուն և ձի...»[12]

«...և այսպես էլ ավերեցին արևելից աշխարհը, տրովհետև մի փոքր գյուղը 50 կամ 30 մարդ էին հաշվում, 15 տարեկանից վերը մինչև 60 տարեկանը գրանցում էին և հաշվառման վերցրած ամեն մի գլխից 60 սպիտակ էին առնում...»[13]։

«Եվ բոլորից պահանջում էին խստագույն հարկեր ավելի քան մարդը կարող էր տալ, սկսեցին աղքատացնել և նեղել անհնարին չարչարանքներով և տանջանքներով և մամլակներով։ Եվ թաքնվողին բռնում և սպանում էին, և ով չէր կարող հարկը վճարել նրանց երեխաներին էին վերցնում պարտքի դիմաց...»[14]։

Մոնղոլների վարած դաժան կեղեքման, բռնությունների և ահաբեկման քաղաքականությունը շուտով առաջ բերեց խորը ատելություն նվաճված երկրներում։ Իրենց նախկին քաղաքական և տնտեսական դիրքերը վերականգնելու նպատակով վրաց և հայ ֆեոդալները համախմբվում են վրաց Դավիթ թագավորի շուրջը հավանաբար 1248 թ. և որոշում են ապստամբել։

Հայերի ու վրացիների ապստամբության նախապատրաստման մասին վկայում է նաև Պլանո Կարպինին, նա գրում է. «Նրանք մտադիր են ապստամբել, ինչպես մենք նրանցից իմացանք»[15]։

Կիրակոս Գանձակեցին, Գրիգոր Ակներցին և XIV դ. վրաց Անանուն պատմիչը գրեթե նույն ձևով են նկարագրում այդ դեպքերը[16]։ Ըստ նրանց Դավիթ թագավորը զորաժողով է հրավիրում, ճաշկերույթի ժամանակ իշխանները հաշվում են իրենց ուժերը և որոշում հանկարծակի հարձակվել թշնամու վրա, ոչնչացնել նրան և հայրենիքն ազատել։ Իշխանների այս որոշմանը հակառակ էր Ավագը, իսկ քաղաքում գտնվող մոնղոլական զորքը 1249 թ. իմանալով նախապատրաստվող ապստամբության մասին, հայտնում է իր զո-

---

12 Գրիգոր Ակներցի, էջ 20։

13 Նույն տեղում, էջ 22։

14 Կիրակոս Գանձակեցի, էջ 362։ Գրիգոր Ակներցի, էջ 20—21, «Վրաց ժամանակագրություն», էջ 93—95։

15 *Языков Д.*, Собрание путешествий к татарам и другим восточным народам в XIII—XIV и XV столетиях, СПб, 1825, стр. 191.

16 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 319—320։

րավարներին, որոնք անմիջապես պատժիչ զորամասեր են ուղարկում ապըստամբ իշխանների տիրույթները, ձերբակալում են բոլորին և սաստիկ ավերածության մատնում նրանց գավառները, կոտորում բնակչությանը։

Կիրակոս Գանձակեցին գրում է, որ մոնղոլական զորքի ավագանին Հանկարծակի որոշում է կոտորել հայերին ու վրացիներին, պատճառաբանելով, թե Վրաց թագավորն իր բոլոր իշխաններով զորաժողով է արել ու որոշել կոտորել մոնղոլներին։ Պատմիչը նշում է, որ իսկապես Տփղիսում Դավիթ թագավորի մոտ զորաժողովի են հավաքվել վրաց և հայ իշխանները և երբ գինուց մի քիչ տաքացել են, նրանցից մի քանիսն ասել են «ինչո՞ւ ենք մենք սրանց (մոնղոլներին) ծառայում, տեսնելով զորքի այսքան բազմություն, եկեք հանկարծակի հարձակվենք նրանց վրա, կոտորենք, ջնջենք նրանց»[17]։

Գրիգոր Ակներցին էլ վկայում է, որ Վրաց թագավորի մոտ մեծ ճաշկերույթի և ուրախության ժամանակ իշխանները հաշվում են վրաց և հայոց զորքերի թիվը և գտնում են, որ իրենք կարող են մոնղոլների զորքին հաղթել, դրանից հետո իրենց վրա գլխավորներ են նշանակում։ Սակայն նրանցից մեկը մատնում է մոնղոլներին, թե վրաց թագավորն իր իշխաններով որոշել են կռվել ձեր դեմ[18]։

«Վրաց ժամանակագրությունից», սակայն, երևում է, որ Ավագի ջանքերն իզուր էին անցել, վրաց և հայ իշխանները դիմել են գործնական քայլերի։ «Այս խառնաշփոթությունների մեջ էր (երկիրը), երբ Կոխտայի ծայրը (Կոխտասթավի) հավաքվեցին Վրաստանի այսկողմյան և այնկողմյան իշխանները, Եգարսլանը, Ցոտնե Դադիանին, Վահրամ Գագեցին, Ղվարղվարեն, Շոթա Կուպարը, Թորղան, հեր-կախեցիք, քարթլեցիք, Թորելի Գամրեկելը, Սարգիս Թմոգվեցին, մեսխերն ու տայեցիք»։ Հավաքվածները որոշում են միավորվել և կռվել թաթարների դեմ, պատերազմել։ Հավաքատեղի են ընտրում Քարթլին, որից հետո ցրվում են կռվին նախապատրաստվելու նպատակով[19]։

Այնուհետև նույն հեղինակը հաղորդում է, թե, երբ մոնղոլներն իմացան վրացիների ի մի գումարվելու մասին, նրանց երկու զորավարները՝ Բիչոն (Բաչուն) և Անգուրգը եկան Կոխտայի ծայրը, հանդիպեցին վրաց ավագանուն և քանի որ վերջիններիս զորքը ցրվել էր, նրանք ի վիճակի չէին դիմադրել մոնղոլներին։ Բիչուն և Անգուրգը ավագանուն կալանավորում են ու տանում Անիի երկիրը՝ Շիրակավան կոչվող վայրը։ Չարմաղանի հարցին, թե ի՞նչ է նշանակում ձեր ի մի գումարվելը, եթե ըմբոստացում չեք պատրաստում, իշխանները պատասխանում են, թե «ոչ ի ըմբոստացում գումարվեցինք, այլ որպեսզի ձեր գործը կարգավորենք և հարկ նշանակենք ձեզ վճարելու»։ Չարմաղանը չի հավատում և հրամայում է մերկացնել բոլորին, թևերը կապել, շոգին հրապարակում մերկ նստեցնել և ամեն օր հարցաքննել, իմանալ

17 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 319—320։
18 Տե՛ս Գրիգոր Ակներցի, էջ 20—21։
19 Տե՛ս «Վրաց ժամանակագրություն», էջ 93։

նրանց գումարման իսկական նպատակը, և եթե չխոստովանեն, բոլորին մահապատժի ենթարկել[20]։

Կիրակոս Գանձակեցին այս առթիվ գրում է, թե մոնղոլական պատժիչ զորամասերը տեղ հասնելով, ցանկացան բոլորին կոտորել, բայց մոնղոլ զորավարներից մեկը՝ Չաղատայը, որ մտերիմ էր Ավագին, կանխում է կոտորածը։ Տեղում գտնվող վրաց և հայ իշխաններին ձերբակալում են, իսկ բացականերին շտապ կանչում են իրենց մոտ։

Ավագ Զաքարյանի մայրը ներկայանում է մոնղոլ զորավարներին և երաշխավորում է իր որդու անմեղությունը, Ավագն էլ է ներկայանում ու բազմաթիվ վկայություններով ապացուցում, որ այդ ծրագրին մասնակից չէ։ Վրաց Դավիթ թագավորը և հայ ու վրաց իշխանները երեք օր ձեռքերն ու ոտքերը բարակ չվանով կապած մնում են հրապարակում, նրանց ծաղրում ու անարգում են[21]։ Ըստ Գանձակեցու, կալանավորվածները Ավագի միջնորդությամբ (իսկ ըստ «Վրաց ժամանակագրության» հեղինակի՝ Ցոտնե Դադիանու միջնորդությամբ) մեծ փրկագին տալով ազատվում ու վերադառնում են իրենց տեղերը[22]։

Կիրակոս Գանձակեցին և Վարդան Արևելցին վկայում են նաև, որ ապըստամբության ղեկավարներին ազատ արձակելուց հետո, մոնղոլները հարձակվում են Վրաց կողմերի բազում գավառների վրա, շատերին կոտորում են ու գերեվարում, անթիվ տղամարդկանց, կանանց և մանուկներին գետերում խեղդում[23]։

Վարդանը նշում է, որ «...Անթիւս կոտորեցին և գերեցին գեօղս և ագարակս և գործեցին խայտառականս ի կանայս 'ի Հայս, և աւելի յաշխարհն Վրաց»[24]։

* * *

XIII դարի 50-ական թվականներից Հայաստանում Զաքարյանների ավատառու ֆեոդալական մի քանի տիրույթներում աշխուժացան ֆեոդալական կենտրոնախույս ձգտումները։ Այդ ձգտումների ակտիվ դրսևորմանը նպաստեց օտար տիրապետության առկայությունը, որի վարած ներքին քաղաքականությունը, ինչպես կտեսնենք, հենց այդ նպատակն էր հետապնդում։ Ներքին Խաչենի տեր Հասան Ջալալը, օգտագործելով իր մտերմական հարաբերությունները Ոսկե Հորդայի Բաթու խանի և նրա որդի Սարթախի հետ, կարողացավ իր տիրույթը միաժամանակ հանել Վրաստանի և Զաքարյանների գերիշխանությունից, անջատվել Ավագյանների թումանից, ստեղծել անկախ թուման և անմիջապես ենթարկվել խաքանին։ Սա այն ժամանակաշրջանն էր,

---

20 Տե՛ս «Վրաց ժամանակագրություն», էջ 93։
21 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 320։
22 Տե՛ս «Վրաց ժամանակագրություն», էջ 94—95։
23 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 320—321։
24 Վարդան, էջ 148։

*երբ նա իրեն հայտարարել է «...բնակաւոր ինքնակալ բարձր և մեծ Արցախական աշխարհի եւ ի յօգնասահման նահանգի թագաւոր...»[25]։*

*1250-ական թվականների սկզբին բավականաչափ հզորացավ նաև Սյունյաց Օրբելյանների ֆեոդալական տունը։ Էլիկում Օրբելյանի մահից հետո իշխանությունն անցել էր նրա եղբորը՝ Սմբատին։ Վերջինս Օրբելյանների տիրույթները փրկելու և Ավագի, իսկ նրա մահից հետո (1250) նրա կնոջ՝ Գոնցայի հետապնդումներից ազատվելու նպատակով, մեկնում է Կարակորում, Մանգու խանին տանելով որպես նվեր թանկարժեք մի գոհար[26]։*

*Մանգու խանը նրան և նրա տիրույթները դասում է մեծ խանին անմիջապես ենթակա «ինջու»-ների շարքը, հանում է Վրաստանի և Զաքարյանների գերիշխանությունից, դարձնում ինքնուրույն թուման։*

*Սմբատը, ստանալով Մանգու խանի հովանավորությունը, վերադառնում է հայրենիք, ներկայանում Բաչուին, նրանից ռազմական օգնություն ստանում, գրավում Որոտանը՝ մինչև Բորոտն և Բղեն, Եղեգիսը, Վայոց Ձորը, Փողահանսը, Ուրծը, Վեդին՝ իր ձորով մինչև Երևան ու Կոտայք և Գեղարքունիքի զգալի մասը։*

*Տիրանալով Սյունյաց Օրբելյանների նախկին կալվածներին, Սմբատը, ամենայն հավանականությամբ, հետապնդել է հեռուն գնացող քաղաքական նպատակներ։ Ավագի մահից հետո նա ձգտում էր Հայաստանի քաղաքական կյանքում թելադրողի դերում հանդես գալ, գրավել Ավագի դիրքն ու ազդեցությունը, չեզոքացնել Զաքարյանների առանց այն էլ թուլացած դիրքն ու հեղինակությունը։ Ավելին՝ ասպարեզից հեռացնել նրանց ներկայացուցիչներին։*

*Իր նպատակին հասնելու համար Սյունյաց իշխանը մեծապես օգտագործել է Մանգու խանի հետ ունեցած իր կապերը։*

*Հասան Ջալալին և Սմբատ Օրբելյանին այս շրջանում արքայական տիտղոսներ վերագրելը[27] թերևս հենց նրանց ներքին ինքնավարության և վրացական թագավորության կազմից արդեն դուրս եկած լինելու հանգամանքով է բացատրվում։*

*XIII դարի հիսուն-վաթսունական թվականներին, վրաց թագավորության և հատկապես Զաքարյան ֆեոդալական իշխանության քաղաքական կյանքում հանդես են գալիս նոր գործիչներ, որոնք որոշակի դեր են խաղում «Գյուրջիստանի վիլայեթի» գործերում։ Դրանցից են Սադուն Արծրունին՝ Մահկանաբերդի տերը, և սահիբ դիվան Շամս-ադ-դին Մուհամմեդ Ջուվեյնին՝ նշանավոր պատմաբանի եղբայրը, ինչպես նաև նորահայտ մեծահարուստներ Մանազկերտցի Ումեկը և նրա որդին՝ Ճարը, Սեբաստացի Ուքան Քարիմադին և Պապքան Վախրադին՝ վաճառական եղբայրները, Ավետիքի որդի Սենոփ Սահմադինը։*

---

25 *«Վիմական տարեգիր», էջ 8, տե՛ս և 96, 122, И. Орбели,* Һ'Асан Джалал, князь Хаченский, стр. 430.

26 *Տե՛ս* Ստ. Օրբելյան, *էջ 405—411։*

27 *Տե՛ս* Գ. *Հովսեփյան, Յիշատակարանք ձեռագրաց, հտ. Ա, էջ 959, «Վիմական տարեգիր», էջ 81, 122, 134։*

*Սմբատ Օրբելյանի քաղաքական ձգտումների իրականացման ճանապարհին լուրջ ախոյանի դերում հանդես եկավ Սադուն Արծրունին։ Սա ճարպկորեն շահեց մի կողմից՝ վրաց Ուլու Դավիթ թագավորի կնոջ՝ Գոնցայի, և մյուս կողմից՝ պարսիկ սահիբ դիվան Ջուվեյնու աջակցությունը և երկրում գերիշխող դիրք գրավելու մրցակցության մեջ հաղթող դուրս եկավ։*

*Ավագի մահից հետո Գոնցան ամուսնացել էր վրաց Դավիթ թագավորի հետ։ Ավագից ունեցած խոշաք անունով դեռահաս աղջկան նա հանձնել էր Սմբատ Օրբելյանի խնամակալությանը, որպես իր ավատառուի։ Սմբատը, օգտագործելով այդ, աշխատեց զավթել Ավագի տիրույթները։ Տեղեկանալով այդ մասին, Սմբատի՝ Կարակորում գնալուց հետո, Գոնցան Սադուն Արծրունուն է նշանակում խոշաքի խնամակալ։ Խնամակալի դերում փոխարինելով Սմբատին՝ նա փորձում է վրաց թագուհու վստահությունն օգտագործել Սյունյաց «արքային» կործանելու, Հայաստանում և Անդրկովկասում նրա օրինակով իր դիրքը բարձրացնելու համար[28], սակայն այդ նրան միայն մասամբ է հաջողվում։*

*Ինչպես Սմբատը, այնպես էլ Սադունը իրենց նպատակին հասնելու համար ոչնչի առաջ կանգ չէին առնում, մի բան, որ ցանկալի էր մոնղոլ նվաճողներին, քանի որ նվաճված երկրներում նրանց վարած քաղաքականությունը հենց այդ էր հետապնդում։ Որպեսզի խափանեին դիմադրությունը, մոնղոլները մասնատում, մանրացնում էին տեղական իշխանությունները և թշնամություն էին սերմանում իշխողների միջև։ Նվաճողների նման քաղաքականության վառ օրինակներ են Վրաստանում երկու թագավորներ նշանակելը (Ռուսուդանի՝ Նարին Դավիթ և Գեորգի Լաշայի՝ Ուլու Դավիթ որդիները), Հասան Ջալալի համար արտոնյալ դիրք ստեղծելը, Օրբելյան ֆեոդալական տան հովանավորումը, Սադունի և Սմբատի մրցակցության ամբողջ ընթացքում վարած երկդիմի քաղաքականությունը և շատ այլ օրինակներ[29]։*

* * *

*Հարկային ծանր քաղաքականությունը, հարկահանման դաժան ձևերն ու մեթոդները, քոչվոր ազնվականության ու պաշտոնեության անկաշկանդ կամայականություններն ու բռնությունները 40-ական թվականների վերջերից պատճառ դարձան նվաճված գրեթե բոլոր երկրներում ժողովուրդների ապստամբական շարժումներին։ Անհնազանդության առաջին այդ դրսևորումները ստիպեցին նվաճողների կառավարող շրջաններին մասամբ սահմանափակել կամայականությունները, զորքերի ու ազնվականության սանձարձակությունները։*

---

28 *Տե՛ս* Աշ. Հովհաննիսյան, *Դրվագներ..., գիրք 1, էջ 213։*

29 Կ. *Մարքսը խոսելով Ռուսաստանում մոնղոլների վարած քաղաքականության մասին, գրել է. «Գրգռել իրար դեմ ռուս իշխաններին, պահպանել անմիաբանություն նրանց մեջ, հավասարակշռել նրանց ուժերը և թույլ չտալ նրանցից որևէ մեկին ուժեղանալ—այս բոլորը թաթարների ավանդական քաղաքականությունն է եղել» C. Marx,* Secret Diplomatic History of the Eighteneth Century, London, 1899, p. 38.

*Մանգուն, ստանձնելով խաքանի պարտականությունները, ամբողջ կայսրության մասշտաբով անցկացրեց մարդկանց, անասունների, շարժական և անշարժ ունեցվածքի հաշվառում-աշխարհագիր։ 1252—1257 թթ. իրականացված այդ միջոցառումը նպատակ ուներ կարգավորել հարկահանությունը, ամրապնդել գրաված երկրների տնտեսական նվաճումը և ավելի հաստատուն հիմքերի վրա դնել բանակն ու զինվորական ծառայությունը։*

*Ընդհանուր աշխարհագիրն անց է կացվել ամենուր՝ Չինաստանում՝ 1252, Իրանում՝ 1253, Անդրկովկասում՝ 1254, Ռուսաստանում՝ 1257 թվականներին։*

*Վրաց Անանուն «Ժամանակագրության» մեջ ասված է, որ աշխարհագիրը գլխավորող Արղուն բասղաղը «Երբ Վրաստան հասավ, Դավթի թագավորության բոլոր բնակիչները մեծ պատուհասի մատնվեցին։ Սկսեցին հաշվառել մարդկանցից մինչև անասունները, արտից մինչև տունկ, այգի ու բանջարանոց։ Հող ունեցող ինը գեղջուկից մի զինվոր գնացող էին սահմանում։ (Ուստի) Դավթի թագավորությունից թաթարների հետ գնացող ինը դուման զինվորական հաշվարկվեց, որ է ինը բյուր։ (Յուրաքանչյուր) գյուղից նվեր սահմանեցին, հազարապետին՝ մի գառ ու մի դրահկան, բյուրապետին՝ մի ոչխար ու երկու դրահկան, ձիավարձը՝ օրական երեք թեթրի (սպիտակ)»[30]։*

*Վրաց թագավորության և Հյուսիս-արևելյան Հայաստանի բնակչության ընդհանուր թիվը XIII դարի կեսերին եղել է 4—5 միլիոն[31]։ Եվ քանի որ յուրաքանչյուր ինը գյուղացիական տնտեսությունից վերցնում էին մի զինվոր, ապա Հյուսիսային Հայաստանում, որը պարտավոր էր տալ 30.000 հեծյալ, կար շուրջ 270.000 տնտեսություն[32]։*

*Աշխարհագիրը նպատակ է ունեցել նաև ուժեղացնել տեղական ֆեոդալների կախվածությունը քոչվոր ազնվականներից, թուլացնել նրանց տնտեսական հզորությունը։ Այն փաստորեն ավելի ուժեղացրեց նվաճված երկրներում բնակչության զանգվածային արտագաղթը, քաղաքների ու գյուղական շրջանների ամայացման պրոցեսը։*

*Խոսելով Արղունի օգնական հարկահան Բուղայի կամայականությունների մասին, պատմիչը նշում է. «...մտնում էր ավագանու տները և, ինչ որ իրեն դուր էր գալիս՝ առնում էր անխնա, և ոչ ոք չէր համարձակվում մի խոսք ասել նրան...»[33]։*

*Աշխարհագիրը ծանր հետևանքներ ունեցավ և դրդապատճառ դարձավ, որպեսզի Անդրկովկասում 50-ական թվականների վերջերին նորից ծայր առնեին ընդվզումները և ապստամբությունները։*

---

30 *«Վրաց ժամանակագրություն», էջ 107—108։*

31 *Նույն տեղում, էջ 251։*

32 *Տե՛ս С. Еремян*, Очерки истории СССР, II, стр. 682. *Միջին դարերում ընտանիքներն ավելի բազմանդամ էին, կային նաև մեծ գերդաստաններ, որոնք չէին բաժանվում, ուստի մի ընտանիքում միջին թվով հաշվելով 6—7 շունչ, Հյուսիսային Հայաստանում կամ Զաքարյանների տիրույթների սահմաններում հայ բնակչության թիվը կկազմի շուրջ 1,6—1,9 միլիոն, իսկ ամբողջ Հայաստանում՝ 3,5—4 միլիոն (չհաշված Կիլիկիայի հայությունը)։*

33 Կիրակոս Գանձակեցի, *էջ 313։*

## 3. ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ՊԱՅՔԱՐԻ ԴՐՍԵՎՈՐՈՒՄՆԵՐԸ XIII ԴԱՐԻ 50-ԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՍԿԶԲԻՆ։ ԴԱՎԻԹ ԾԱՐԵՑՈՒ ՇԱՐԺՈՒՄԸ

XIII դարի 30—40-ական թվականների ավերն ու կողոպուտը և օտար ու տեղական իշխողների դաժան կեղեքումն առաջացրել էին հայ աշխատավոր ժողովրդի խոր դժգոհությունը և սրել դասակարգային պայքարը։ Այդ պայքարը դրսևորվեց 1250 թ. Սևանի շրջանի Ծար գյուղի ջրաղացպան Դավիթ Ծարեցու գլխավորած շարժումով։ Այս շարժման մասին վկայող միակ հեղինակը Կիրակոս Գանձակեցին է, որի տեղեկությունները, սակայն, միակողմանի են և միտումնավոր։ Ըստ նրա Դավիթը «...սկսաւ քարոզել, թէ՝ Քրիստոս երևեցաւ ինձ և ասաց, թէ «դարձո զաշխարհս և բժշկութիւնս կատարեա»։ Եվ Դավիթը իր, հետևորդների օգնությամբ ձիթհանի գերանից մի խաչ է պատրաստում, կանգնեցնում եկեղեցու բակում, որտեղ և բժշկի դերում հանդես գալով սկսում է իր գործունեությունը։ Բժշկության պատրվակով նա շատ շուտով իր շուրջն է համախմբում «ամենայն ախտացեալք և ցաւագնեալք»։ Սկսված շարժումն արտաքնապես կրել է կրոնական քող, որը հատկանշական էր միջին դարերում, սակայն անկասկած այն հիմնականում ունեցել է դասակարգային բնույթ, ուղղված հողատերերի, ինչպես և օտար նվաճողների դեմ։ Կարծես թե կրկին արթնանում էին թոնդրակեցիների գաղափարները։ Ծարեցու շարժումը արագությամբ արձագանք է գտնում ժողովրդական խավերի մեջ, համախմբում նրանց։ Պատմիչը հաղորդում է, որ Դավթի մոտ հավաքվում են բոլոր գավառներից՝ տղամարդիկ, կանայք, պատանիներ, անգամ քահանաներ և ազատներ։ Նա առանց վարձի բուժում էր հիվանդներին և բոլորին իր կողմը գրավում, իսկ ովքեր փորձում էին խանգարել, որ նրա մոտ չգնան, հայհոյում և բամբասում էին[34]։

Այն հանգամանքը, որ ժամանակի նշանավոր հոգևոր գործիչները հալածանք են սկսում Դավթի դեմ, խոսում է եկեղեցու և իշխողների համար շարժման վտանգավորության և ապա ծավալման մասին։

Թոնդրակյան շարժման ուրվականը անհանգստացնում էր հայ իշխող աշխարհիկ և հոգևոր ֆեոդալներին։ Նկատելիորեն խախտվել էր հայ եկեղեցու հեղինակությունը, հավատացյալները խուսափում են «ի եկեղեցւոյ, ի խաչէ, ի յաւետարանէ, ի քահանայից յաղօթից և պահոց»[35], ժխտում են աստծո գոյությունը, ասելով՝ «ոչ գոյ աստուած»[36] և այլն։ Նման պայմաններում Դավիթ Ծարեցու գլխավորած շարժումն էլ վտանգավոր էր համարվում։

Վարկաբեկելով շարժման մասնակիցներին, Կիրակոս Գանձակեցին ասում է, երբ Դադի վանքի Գրիգորես եպիսկոպոսը և Վարդան վարդապետը բազում քահանաներով գալիս են Ծար գյուղը և ուզում են խաչը քանդել, ոտքի է ելնում «...ամբողջ ամբոխը բրիչներով և սրերով, կամենում էին սպանել նրանց»[37]։

---

34 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 322—326։

35 Մատենադարան, Ձեռագիր № 3239, թերթ 136ա։

36 Նույն տեղում։

37 Կիրակոս Գանձակեցի, էջ 327։

ժողովրդական ցասման այս պոռթկումը հազիվ թե կարելի լիներ բացատրել սոսկ կրոնական մոլորությամբ։ Նրա դրդապատճառները սոցիալական բնույթ են ունեցել, ուստի կարճ ժամանակամիջոցում շարժման մասնակիցների թիվը մեծապես աճել է։ Պատմիչի վկայությունից երևում է, որ շարժումը տեղական նեղ շրջանակներից դուրս է եկել և ընդգրկել «շամենայն գաւառս»։

Նրան մասնակցել են նաև կանայք, հոգևորականության ստորին ներկայացուցիչները, մանր հողատերերից և ազնվականներից ոմանք։ Մանր հողատերերի՝ ազատների մասնակցությունը նույնպես ուներ իր պատճառները։ Աղբյուրներում բազմաթիվ հիշատակություններ կան այն մասին, որ այս ժամանակաշրջանում շատ հողեր էին վաճառվում մոնղոլական ծանր հարկերի պատճառով։ Ստեղծված այս իրադրության զոհ գնացին մանր հողատերերից շատերը, անգամ միջին կարողության ֆեոդալներ, որոնց հողերն ու անշարժ ունեցվածքը անցան մոնղոլական պաշտոնեության, վանքերի և առևտրավաշխառուական վերնախավի՝ մեծատունների ձեռքը։

Տեղական և օտար իշխողների հետապնդումներից ու հալածանքներից խուսափելու նպատակով գյուղացիական այս շարժումն ստացել էր տարբերային պայքարի բնույթ. ուստի շատ երկար չտևեց ու ճնշվեց աշխարհիկ և հոգևոր տերերի կողմից։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՈՒԼԱՎՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՆԵՐՔՈ

## 1. ՀՈՒԼԱՎՈՒ ԽԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԻԼԽԱՆՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՒՄԸ։ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ ՄՈՆՂՈԼՆԵՐԻ ԴԵՄ

1256 թ. մեծ բանակով Իրան ժամանած Հուլավու խանը (Մանգու խանի եղբայրը) վերջնականապես հնազանդեցրեց տեղական հնագույն ֆեոդալներին և նույն թվականին, փաստորեն, հիմք դրեց Հուլավյան մոնղոլա-իրանական պետությանը, որը և պատմության մեջ մտավ «իլխանություն» անունով (իլխան—ժողովրդի տեր)։ Նորաստեղծ պետության հիմնադիրը գահակալեց 1256—1265 թթ.։ Պետության կենտրոնը դարձավ Ատրպատականը, մայրաքաղաքն էր սկզբում Մարաղան, իսկ հետո՝ Թավրիզը։

Հիմնադրելով մոնղոլական ինքնուրույն անկախ ուլուս — պետություն, Հուլավուն 1258 թ. կարճ ժամանակում կարողացավ նվաճել և պատմության թատերաբեմից ջնջել Մերձավոր Արևելքում շուրջ 700 տարի իշխող Բաղդադի խալիֆայությունը, ըստ որում, նա օգտագործեց նաև հայ-վրացական զինված ուժերը՝ ամիրսպասալար Շահնշահի որդի Զաքարեի և սպարապետ Պռոշ իշխանաց-իշխանի գլխավորությամբ։

Բաղդադը գրավելուց և կործանելուց հետո, մոնղոլները մոտ երկու տարի պաշարում են Մուֆարղին (Նփրկերտ) քաղաքը, որի բնակչությունը հերոսական դիմադրություն է ցուցաբերում։ Պռոշ իշխանի գլխավորած հայ-վրացական ուժերը մոնղոլները նետում էին կռվի առաջին գիծը։ Մուֆարղինը գրավելուց հետո նվաճում են Սասունը[1] և նրա շրջակա մի շարք գավառներ։ Հուլավուն գրաված շրջանները տալիս է Սադուն Արծրունուն, սակայն այդ չի խանգարում, որ մոնղոլները ներխուժեն քաղաքը, սրի անցկացնեն սովից հյուծված բնակչությանը, ավերածության մատնեն ու հեռանան։

Հուլավուի ընդարձակ իլխանության կազմում էին ողջ Իրանը, Ատրպատականը, Արևելյան Վրաստանը, Հայաստանը, Ռումը, Քուրդիստանը, Իրաքը։

Բացի նշված երկրներից, Հուլավյաններից կախյալ պետություններ էին Արևմտյան Վրաստանը, Տրապիզոնը և Կիլիկյան հայկական պետությունը։

---

[1] Տե՛ս Рашид ад-Дин, Сборник летописей, т. III, стр. 49.

Հուլավյանների ժամանակ «Գյուրջիստանի վիլայեթում» ինչպես վարչա-տնտեսական ու ֆինանսական, այնպես և դատական-դատաքննչական սիստեմն անփոփոխ մնաց, այնտեղ տեղական իշխաններն էին տնօրինում այդ գործերը։ «Մեծ Հայքի» վիլայեթում սկզբնական շրջանում նույնպես տեղական իշխողների տնօրինության տակ էին գտնվում այդ հաստատությունները, սակայն աստիճանաբար՝ մոնղոլների մահմեդականության ընդունման զուգընթաց, սելջուկյան ամիրայությունների պայմաններում շատ թե քիչ պահպանված հայկական տարրի ինքնուրույնությունը տեղի տվեց և համարյա անհետ վերացավ։

Իլխանության ստեղծումից հետո Արղունը շարունակում էր վարել «Գյուրջիստանի վիլայեթի» բասղաղի պաշտոնը։ Հայկական հինգ թումաններում որպես կառավարիչներ հանդես են գալիս Զաքարեն՝ Անի-Շիրակում, Գոնցան՝ Ավագյանների տիրույթներում, Վահրամի որդի Աղբուղան՝ Վահրամյանների իշխանությունում, Սմբատ Օրբելյանը՝ Սյունիքում, Հասան Ջալալը՝ Ներքին Խաչենում։ 50-ական թվականների վերջերին այս թումաններում գերիշխող դիրք էին գրավում Սահիբ-դիվան Ջուվեյնին, Սմբատ Օրբելյանը և Ավագյանների տան փաստական կառավարիչ Սադուն Արծրունին։ Իր խիզախությամբ և ռազմական հմտությամբ Հուլավուի բանակում ազդեցիկ դեմք էր հայկական զորքի սպարապետ Պռոշը։ Հուլավուի հովանավորությունը վայելում էին նաև հայ խոշոր առևտրականներն ու վաշխառուները՝ «մեծատունները» Ումեկը, Շնորհավորը, Սահմադինը և ուրիշներ, որոնց նա ծառայեցնում էր իր նպատակներին։ Իլխանության հիմնադիրը շատ էր հավանել այժմյան Բազավանի և Դիադինի հարավկողմում գտնվող Դարոյնքի (Դառան) դաշտը, այնտեղ հսկայական կառուցումներ էր կատարել և դարձրել իր ամառանոցային աթոռանիստ վայրը։ Այնտեղ ծավալված շինարարության կառավարիչ էր նշանակված Սմբատ Օրբելյանը։ Հուլավուի կողմից ձեռնարկված ինչպես այդ, այնպես և մյուս շինարարական աշխատանքները չափազանց ծանր էին նստում նվաճված ժողովուրդների վրա. «...և նա հարկադրեց իր բոլոր հպատակներին, որ նրանք ամեն կողմից բերեն մեծ քանակությամբ փայտ՝ տների, շենքերի ու քաղաքի ապարանքների կառուցման համար... Եվ մարդիկ ու անասունները տառապում էին խիստ ու դաժան վերակացուներից... և անխնա չարչարվելով մեռնում էին մարդիկ և անասունները»,— գրում է պատմիչը[2]։

Հայաստանի վիճակը Հուլավուի տիրապետության շրջանում ավելի ծանրացավ։ 1254 թ. աշխարհագիրը դրան հետևած ծանր հարկերը և փոքրասիական երկրների նվաճման համար մղվող պատերազմները չափազանց ծանր հետևանքներ ունեցան երկրի տնտեսական կյանքի վրա։

* * *

Մոնղոլական ծանր հարկային լուծը և Արղունի ու նրա պաշտոնեության կամայականություններն ու բռնությունները, որոնք շատ ավելի սաստկացել

2 Կիրակոս Գանձակեցի, էջ 396—397։

էին աշխարհագրից հետո, անտանելի էին դարձել։ Այդ տեսակետից ուշագրավ է ֆրանսիացի ճանապարհորդ Ռուբրուքի վկայությունը։ Նա 1255 թ. եղել է Անիում և զրույց է ունեցել Զաքարեի հետ։

«...Եկանք Շահնշահի երկիրը,— գրում է Ռուբրուքը,— երբեմնի ամենազորավոր վրաց[3] իշխանի, բայց հիմա հարկատու թաթարներին, որոնք կործանում են իր բոլոր ամրոցները»։ Ապա Ռուբրուքը պատմում է, որ Շահնշահն իրեն մի անգամ ճաշի է հրավիրում և այդտեղ նա հանդիպում է Զաքարեին, վերջինս նրան հարցնում է՝ «Եթե ձեզ մոտ գամ՝ դուք կպահե՞ք ինձ»։ Ռուբրուքը ասում է՝ Զաքարեն այդ հարցը տվեց «...որովհետև նա այնքան ծանր էր զգում թաթարների տիրապետությունը, որ թեև նա ամեն բան առատորեն ունի, սակայն նախընտրում է թափառել օտար երկրներ, քան կրել նրանց տիրապետությունը»[4]։

Նույնպիսի վիճակ էր և Վրաստանում, ուստի վրացի և հայ իշխանների մի մեծ խումբ Դավիթ թագավորի գլխավորությամբ ապստամբում է օտար տիրողների դեմ։ Արղուն խանը վճռական միջոցներ է ձեռնարկում ապստամբների դեմ և այդ տեսնելով Դավիթ թագավորը մի շարք իշխանների հետ միասին անցնում է Ափխազիա։

Կիրակոս Գանձակեցին այս ապստամբության մասին գրում է, թե վրաց Դավիթ թագավորը՝ Լաշայի որդին, որ հնազանդվել էր մոնղոլներին, ծանր հարկապահանջությունից նեղվեց, ձանձրացավ, անհնարին ծանրությամբ նեղում էին նրան, բոլոր իշխաններին և ամբողջ երկիրը։ Դավիթը թողնում է Տփղիսը, աթոռը և ունեցվածքը, հեռանում է Ափխազիայի խորքերը — Սվանեթի ամրությունները։ Նրա հետ էին և գավառների այլ մեծամեծ իշխաններ, որոնք նեղված և տառապած էին, ծախել և գրավ էին դրել իրենց քաղաքներն ու գավառները, բայց չէին կարողացել հագեցնել ագահներին, որոնք նման էին չար տզրուկների։ Այնուհետև ասվում է, որ Արղունը բազում զորք է գումարում ու գնում է փախուստի դիմած Դավթի հետևից նրան բռնելու նպատակով։ Եվ չկարողանալով հասնել նրան, վրաց շատ գավառների բնակիչների կոտորեց ու գերեց անխնա։ Բայց հանկարծակի, ասում է պատմիչը, նրա վրա հարձակվեց վրացական հեծելազորային մի գունդ 400 հոգուց բաղկացած, մեծ քաջություն ցույց տվեց, Արղունի զորքերից շատերին կոտորեց «իբրև հուր ընդ եղէգն ընթացեալ» և անվնաս վերադարձավ։ Դրանից հետո Արղունը վախից այլևս համարձակ չգործեց, այլ գնաց Հուլավուի մոտ, չարություն նյութեց, կալանավորեց Գոնցա թագուհուն, նրա խոշաք դստերը, Շահնշահին, Հասան Ջալալին և շատ ուրիշ իշխանների, հարկերը չտալու պատրվակով։ Կալանավորվածները բազում գանձ տալու միջոցով հազիվ կարողանում են մահից փրկվել[5]։

«Վրաց ժամանակագրության» հեղինակը ավելի հանգամանորեն է կանգառնում այս ապստամբության վրա։ Նա հաղորդում է, որ Հուլավուն Դավթին

---

3 Նկատի ունի այն, որ Զաքարյանները այդ ժամանակ ընդունել էին քաղկեդոնականությունը։

4 Հ. Հակոբյան. Ուղեգրություններ, հատ. Ա, էջ 19—20։

5 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 389—390։

իր բանակով կանչում է իր հետ՝ Եգիպտոս արշավելու նպատակով։ Սակայն թագավորն ու նրա տիրույթները նեղվել էր Արղունի հաշվեգրումից, մանավանդ նրա պաշտոնյա ոմն պարսիկ Խոջա Ազիզի կամայականություններից, որը հարկերն ավելի էր պահանջում, քան հաստատված էր Արղունի կողմից։ Դավիթը սկզբում տատանվում է գնալ Եգիպտոս, թե ապստամբել խանի դեմ։ Հասնելով Ջավախք, նա որոշում է ըմբոստանալ։ Հավաքում է իր համախոհներին ու ասում. «ովքեր կամենում են, թող թողնեն տիրույթը ու գան ինձ հետ, իսկ եթե չեն կամենում՝ թող գնան Մսերք՝ խանին ծառայության, որպեսզի պաշտպանվի (ապահովվի) նրա կալվածը [խանի կողմից]։ Կամոք առ մեկը կողմնորոշվեք, իսկ ես Խոջա Ազիզի բռնությունների պատճառով... այլևս չեմ ուզում ծառայել թաթարներին, ուստի չեմ հանդուրժի այսպիսի ստորացում»[6]։

Այնուհետև նշում է, որ թագավորության ավագանիներից ոմանք պաշտպանեցին (վճիռը), ոմանք՝ ոչ, այնուամենայնիվ թագավորը որոշում է ապստամբել ու անցնում է Սամցխե։

Արղունը 2000 զորքով շարժվում է նրա դեմ։ Անցնում է Գանձակն ու Սոմխիթը, հասնում Տփղիս, ապա գնում Սամցխե։ Դավիթը կարողանում է ութ հազար զինվոր հավաքագրել, Սարգիս Ջաղելուն նշանակում է հրամանատար ու ուղարկում Արղունի դեմ կռվելու։ Սարգիսը 1500 ընտիր ու փորձված մարտիկներ՝ նախահարձակներ է ուղարկում, որոնք և Գորիի Շինդարում քաջաբար հարձակվեցին թշնամու վրա, պարտության մատնեցին և մեծ հաջողությամբ վերադարձան, իրենց հետ բերելով բազում անվանի թաթարների, իբրև գերի։ Սակայն հետո, հիմնական ուժերի բախման ժամանակ տեղի է ունենում սաստիկ ճակատամարտ, ուր Դավթի զորքը պարտվում և փախուստի է դիմում։ Վերջապես Դավիթը անցնում է Արևմտյան Վրաստան՝ Դավիթ Նարինի մոտ[7]։

Ըստ «Վրաց ժամանակագրության», Ուլու Դավթի՝ մոնղոլներին նորից հպատակություն հայտնելուց հետո, հավանաբար 1261 թ. Հուլավուի դեմ ապստամբել է Զաքարիա ամիրսպասալարը՝ Շահնշահի որդին, որին հայրը զիջել էր իր իշխանությունը 1249 թ. ապստամբությունից հետո՝ Արղունի հալածանքներից ազատվելու նպատակով։

Այս ընթացքում, գրում է ժամանակագիրը, Հուլավու խանի դեմ ապստամբեց Շահնշահի որդի Զաքարիա ամիրսպասալարը, որը ամենայն առաքինությամբ օժտված ու նշանավոր մարդ էր, և փախավ Նարին Դավթի մոտ՝ Քութաիս (Քութայիսի)՝ պատճառաբանելով. «Որովհետև Բերքայի զորքի գալն եմ լսել ինձ վրա»։ Իսկ Դավիթ թագավորը սիրով ընդունեց, մնաց որոշ ժամանակ։ Հետո խանը երդմամբ տարավ և սպանեց[8]։ Զաքարիայի սպանության բուն պատճառը տալիս է Գանձակեցին։ Նա գրում է, որ Զաքարեին, որը արքունի բանակում էր, մեղադրել են իր աներոջ՝ ապստամբ Ուխտյաց իշխան Սարգսի մոտ գաղտնի այցելելու, ապստամբների հետ կապ ունենալու

6 «Վրաց ժամանակագրություն», էջ 111։
7 Տե՛ս նույն տեղում, էջ 111—116։
8 Տե՛ս նույն տեղում, էջ 122—123։

մեջ[9]։ Արղունը իմանալով այդ մասին, հայտնում է Հուլավուին, վերջինս հրամայում է Զաքարեին կապանքներով բերել իր մոտ, նա էլ այլ շինծու մեղադրանքներ է վերագրում և հրամայում է սպանել, «անդամ անդամ յօշել, և արկանել շանց»[10]։ Գանձակեցին էլ վկայում է, որ Շահնշահը չտանելով որդու կորուստը, վշտից վախճանվում է։

Ապստամբությունը ճնշելուց հետո Արղունը դաժան հաշվեհարդար է տեսնում ապստամբ հայ-վրաց իշխանների հետ։ Նրա զոհերն են դառնում վրաց թագուհի Գոնցան, Հասան Ջալալը, Զաքարեն և շատ ուրիշներ։ Անիի Զաքարյանների իշխանությունը ժառանգում է Զաքարեի եղբայրը՝ Իվանեն, որը, սակայն, երկար չի իշխում։ 1263 թ.՝ նրա մահից հետո, իշխանությունն անցնում է նրա Շահնշահ որդուն։ Հասան Ջալալին հաջորդում է որդին՝ Աթաբեկը։

Իլխանության ստեղծումից հետո, տեղական ֆեոդալ իշխողների նկատմամբ տարվող քաղաքականությունն ավելի ու ավելի է սաստկանում։

Անդրկովկասյան ժողովուրդների համար ոչ պակաս ծանր հետևանքներ ունեցան նաև 1262 թ. Հուլավյանների և Ոսկե Հորդայի, հետագայում և Ջաղաթայյանների միջև սկսված և որոշ ընդհատումներով մոտ մեկ դար երկարած պատերազմները։ Անդրկովկասը, այդ թվում և Հայաստանի հյուսիսարևելյան շրջանները, վերածվել էին ռազմական ընդհարումների թատերաբեմի։

• • •

1265 թ.՝ Հուլավուի մահից հետո իլխանության կառավարումը անցնում է որդուն՝ Աբաղա խանին (1265—1282)։ Նրա մասին հայկական աղբյուրները ընդհանրապես դրական են խոսում։

Աբաղա խանի տիրապետության վերջին շրջանում իլխանության ներսում քոչվորական ազնվականության կառավարող շրջաններում ֆեոդալական հակամարտությունները չափազանց սրվեցին և սկսեցին բացահայտ պայքարի բնույթ ստանալ։

1268 թ. Աբաղա խանի դեմ ապստամբում է արքայորդի Թագուդարը՝ Ջաղատայի թոռը, որի բաժնեկալվածքն էր կազմում «Գյուրջիստանի վիլայեթի» մի մասը, այդ թվում և Գեղարքունիքը։ Թագուդարի և նրա համախոհների ապստամբության ճնշման գործում ակտիվ մասնակցություն են ունենում վրաց-հայկական ֆեոդալական ուժերը, որոնք Շիրամուն բաողաղի զորամասերի հետ ջախջախում են Վրաստանի խորքերը ապավինած ապստամբներին։

Հայ-վրացական ֆեոդալների երկրորդ ապստամբությունից հետո, երկրի քաղաքական կյանքում Զաքարյանների ֆեոդալական տան գերիշխող դիրքը բավականին խախտվել էր։ Թուլացել էր նաև նրանց տնտեսական հզորությունը։ Շահնշահ Բ ի վիճակի չլինելով վճարել իլխանության պարտ-

9 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 393։
10 Նույն տեղում։

*քերը, 1263 թ. Անին վաճառել էր սահիբ դիվան Ջուվեյնուն և հայ մեծատուններին, որոնք քաղաքի հարկային կապալառուներն էին։*

*Գերիշխող դիրք ձեռք բերեց Սադուն իշխանը, որի մասին պատմիչը գրում է՝ «...Սադուն Մանկաբերդցին ուժեղացավ առավել քան ժամանակակից բոլոր այլ իշխանավորները, քանի որ նրան Աբաղա-ղ՚անը սիրաշահեց, և նա խնամակալ դարձավ Վրաստանի գործերին...»[11]։*

*Սադունի՝ վրաց արքունիքում խաղացած դերով պետք է բացատրել այն, որ Ռաշիդ ադ-Դինը նրան համարում է վրաց թագավորի որդի. «...Աբաղան... Վրաստանի (կառավարումը տվեց) Դավթին և նրա Սադուն որդուն...»[12]։*

*Վրաց թագուհու՝ Գոնցայի միջոցով Սմբատ Օրբելյանին ասպարեզից հեռացնելու անհաջող փորձից հետո, Սադուն Արծրունին 1269 թ. իր խնամակալության տակ գտնվող, արդեն չափահաս դարձած Խոշաքին ամուսնացնում է իր մտերիմ սահիբ Ջուվեյնու հետ, «...որ ունէր ի բուին զամենայն աշխարհս-տէրութեան Ապաղայ ղանին...»[13]։ Թեև ամուսնացած օտարի հետ, Խոշաքը պահպանում էր իր տիրակալական իրավունքները Զաքարյան Ավագի տոհմի բոլոր տիրույթների նկատմամբ, որով Սմբատ Օրբելյանը զրկվում է դրանք ձեռք բերելու հնարավորությունից։*

*Զաքարյանների Ավագյան ճյուղի տան ավագությունը ժառանգելուց և Ջուվեյնու հետ ամուսնանալուց հետո, Խոշաքը երկրի քաղաքական կյանքում գերիշխող դիրք է գրավում։ Այդ երևում է Ջագավանի ժողովի հրավիրման առթիվ պահպանված տեղեկություններից։ Եկեղեցու խարխլված դիրքը վերականգնելու և օրըստօրե խորացող աղանդավորական շարժումների դեմ պայքար կազմակերպելու նպատակով հայ հոգևոր և աշխարհիկ ֆեոդալները 1270 թ. Ջագավանում գումարում են հատուկ ժողով։ Այդ ժողովը հրավիրվում է «կամօք և հրամանաւ պարոն Խոշաքին և իշխանաց... մեծին Պռոշայ և Սադոնին և Սմբատայ»[14]։ Ինչպես տեսնում ենք, ժամանակի հայ աչքի ընկնող քաղաքական գործիչների շարքում առաջինը նշված է պարոն Խոշաքը։*

*Եթե սկզբում մոնղոլներին ձեռնտու էր Ավագ Զաքարյանի գերիշխող դիրքը տեղական ֆեոդալներին հպատակեցնելու գործում, ապա հետագայում այդ արդեն անհրաժեշտ չէր, և նրանք ուժերի հավասարակշռությունը պահպանելու նպատակով առաջ քաշեցին Հասան Ջալալին։ Սակայն կյանքը ցույց տվեց, որ վերջինս այնքան էլ վստահելի հենարան չէր, ուստի նրանք առաջնությունը տվեցին Սմբատ Օրբելյանին։ Որոշ ժամանակ անցնելուց հետո, երբ արդեն Զաքարյաններն իրենց տեղը զիջել էին Օրբելյաններին, անհրաժեշտ եղավ ուժերի հավասարակշռության համար ասպարեզ հանել մեկ ուրիշին՝ Սադուն Արծրունուն։ Այս քաղաքականությունը մոնղոլ նվաճողները շարունակեցին մինչև իլխանության անկումը, իսկ հետո այն ժառանգեցին նրանց հաջորդները։*

---

[11] *«Վրաց աղբյուրները», հատ. Բ, էջ 60։*

[12] *Рашид ад-Дин,* Сборник летописей, т. III, стр. 67.

[13] Ստ. Օրբելյան, *էջ 418։*

[14] *«Կանոնագիրք Հայոց», խմբեց Արսէն Ղլտճեան, Թիֆլիզ, 1913, էջ 180։*

Սմբատ Օրբելյանը 1273 թ., քսան տարի իշխելուց հետո, մահանում է։ Նրան հաջորդում է եղբայրը՝ Տարսայիճը, որը պատմիչի վկայությամբ «...վարէր զիշխանութիւնն իւր բարձր և շքեղ փառօք»[15]։ Աբաղա խանի մղած պատերազմներում ցուցաբերած խիզախության համար Տարսայիճը սիրալիր ընդունելություն է գտնում արքունիքում և մեծ հեղինակություն վայելում նվաճողների ղեկավար շրջաններում։

Աբաղա խանի տիրապետության տարիներին երկրի քաղաքական կյանքում աչքի ընկնող դեմքերից էր Դոփյաններից՝ Գրիգոր Տղայի որդին՝ Հասան Բ։ Այդ ժամանակ Վաչուտյանների ֆեոդալական իշխանության ավագությունը ժառանգել էր Քուրդ իշխանի Վաչե որդին։ Ներքին Խաչենում, Աթաբեկի մահից հետո (1282) Վախթանգյանների տան իշխանությունն անցնում է նրա ժառանգներին։

Աբաղայի իլխանության տարիներին շարունակվում էր պատերազմը Ոսկե Հորդայի դեմ։ Միաժամանակ պատերազմական գործողություններ ծավալվեցին Արևելքում՝ Չաղաթայանների ուլուսի դեմ։ Երկու ուղղություններում գործող մոնղոլական բանակներում իրենց խիզախությամբ աչքի էին ընկել հայ-վրացական ռազմական միավորումները։

Ոգևորվելով և մեծ հույսեր կապելով Եգիպտոսի հետ, Փոքր Ասիայի արևելյան շրջանների թուրքական ցեղերը սկսել էին հաճախակի ըմբոստանալ իլխանության դեմ։ Նրանց այդ ըմբոստացումների զոհերն էին դառնում հայերը։

Եգիպտոսի դեմ Աբաղայի ձեռնարկած ռազմական գործողությունները 1281 թ. հաջողություն չունեցան։ Հայ-վրացական ուժերը այստեղ նույնպես սկզբում բավական ազդու գործողություններ ծավալեցին եգիպտական զորքերի դեմ, սակայն մոնղոլական հիմնական ուժերի թույլ դիմադրության պատճառով հաղթանակ տարավ հակառակորդը, մարդկային մեծ կորուստներ պատճառելով մոնղոլական և հայ-վրացական զորքերին։

1282 թ.՝ Աբաղայի մահից հետո, նրան հաջորդում է Թագուդար անունով եղբայրը (1282—1284), որը, հենվելով իր շուրջը համախմբված քոչվոր ազնվականների մի խմբի վրա, կարողացավ խարդախ ճանապարհով տիրանալ գահին։ Իլխաններից առաջինն էր նա, որ ընդունեց մահմեդականություն և կոչվեց Ահմադ։ Ահմադի իշխած տարիներին քրիստոնեության նկատմամբ հալածանքները ուժեղացան, այդ պատճառով էլ ժամանակակից հայկական աղբյուրները բացասաբար են արտահայտվում նրա մասին և նրա տիրապետության շրջանը մռայլ գույներով պատկերում։

1284 թ. իրեն գահի օրինավոր ժառանգորդ համարող Արղունը՝ Աբաղայի որդին, կարողանում է արյունահեղ մարտերից հետո գահընկեց անել իր հորեղբայր Ահմադին, մահապատժի ենթարկել նրան ու նրա կողմնակիցներին, այդ թվում և սահիբ դիվան Ջուվեյնուն, և տիրանալ գահին։

Սահիբ դիվանը մահապատժից առաջ Անիի Շահնշահյան թոռանը կըտակում է խոշաքից ծնված Զաքարե որդուն, ապա Արղունից խնդրում է թույլ տալ, որ խոշաքը, մյուս որդին՝ Աթաբեկը, և դուստր Խուանդզեն վերադառ-

15 Ստ. Օրբելյան, էջ 423։

նան հայրենիք՝ Ավագյանների թումանը։ Արղունը մերժում է այդ խնդրանքը, քանի որ նպատակ ուներ նրա ամբողջ ընտանիքը ոչնչացնել։ Մինչ այդ Աթաբեկը մահանում է, իսկ Զաքարեն փախչում է Ափխազիա։ Խոշաքը վերադառնում է հայրենիք և 1284 կամ 1285 թվականին ամուսնանում է վրաց Դեմետրե Բ թագավորի հետ։ XII դարի 90-ական թվականներին խուանդզեին կնության է առնում Զաքարյան Շահնշահ Բ և ունենում Զաքարե անունով որդի։ Սահիբ դիվանի մահապատժից հետո Դեմետրե թագավորը ճանաչում է Զաքարյան տան ժառանգների իրավասությունը Անիի նկատմամբ։ Ավագյանների տիրույթներում շարունակում է իշխել Խոշաքը։

Իր հակառակորդների դեմ մղած պայքարում Արղուն խանը հիմնականում հենվեց տեղական, այդ թվում և վրաց-հայկական ֆեոդալական ուժերի վրա՝ Դեմետրե թագավորի և Տարսայիճ Օրբելյանի գլխավորությամբ։ Նա «Դյուրջիստանի վիլայեթի» բասղաղ նշանակեց Աչային։

Հաղթանակից հետո Արղունը ճանաչում է Դեմետրեի իրավունքները նրա հոր տիրույթների վրա։ Վերադարձին, Շարուրում վրաց թագավորին մեծամեծ նվերներով ընդառաջ է գնում Տարսայիճ Օրբելյանը։ Ի հատուցումն վերջինիս ծառայությունների, Դեմետրեն նրան նշանակում է աթաբեկ ու ամիրսպասալար, քանի որ Սադուն Արծրունին նույն՝ 1284 թ. մահացել էր։ Հոր մահից հետո Խութլու-Բուղան ժառանգում է Արծրունիների ֆեոդալական տան ավագությունը և Արղունի տիրապետության շրջանում դառնում քաղաքական ազդեցիկ դեմքերից մեկը։ 1290 թ.՝ աթաբեկ և ամիրսպասալար Տարսայիճ Օրբելյանի մահից հետո, վրաց Վախթանգ թագավորը Խութլու-Բուղային է նշանակում այդ պաշտոններում։

1284 թ. 61 տարի իշխելուց հետո մահացել էր նաև սպարապետ Պռոշ իշխանաց-իշխանը։ Խաղբակյան-Պռոշյան ֆեոդալական իշխանությունը ժառանգում են նրա որդիները՝ Պապաքը՝ ավագ իշխանության իրավունքով և Ամիր Հասան Առաջինը։

Ամիր Հասան Ա հայ-վրացական զորքերի հետ գործուն մասնակցություն է ունեցել մոնղոլների, ինչպես ներքին հակամարտությունների պայքարին, այնպես և արտաքին պատերազմներին։ Հոր կենդանության վերջին տասնամյակներում՝ նրա ծերության պատճառով, Ամիր Հասանն է փոխարինել նրան, որպես հայոց միավորումների սպարապետ։ Նա «Ի բազում պատերազմունս» քաջի անուն էր ժառանգել Հուլավուի ու Աբաղայի պալատում, նվերների ու պատվի արժանացել։

Պռոշյան ֆեոդալական տան այս ներկայացուցչի ինքնուրույնության և գրաված դիրքով պետք է բացատրել և այն, որ ժամանակակիցները նրան վերագրել են «արքա» տիտղոսը։

Արղուն խանը ձգտեց քրիստոնեությունը ավելի գործարար ձևով օգտագործել իր արտաքին դիվանագիտական բանակցություններում, քրիստոնյա Եվրոպայի և Հռոմի պապի հետ լեզու գտնելու՝ ընդհանուր թշնամու՝ Եգիպտոսի մամլուքների դեմ համատեղ պայքարելու գործում։ 1288 թ. Արղունը Նիկողայոս Դ պապի մոտ որպես դեսպաններ ուղարկեց նեստորական դավանանքին պատկանող ույղուր մի վանականի և քաղկեդոնիկ Սահմադինին՝ Հայ նորատիպ ֆեոդալների ժամանակի աչքի ընկնող ներկայացուցչին։

Քրիստոնեության նկատմամբ Արղունի քաղաքականությունը, մանավանդ Հռոմի պապի հետ սկսած նրա բանակցությունները, ժամանակի հայ միջավայրում առաջ էին բերել որոշ ազատագրական պատրանքներ[16]։

1289 թ. Արղունի դեմ դավադրություն կազմակերպեց գլխավոր ամիր Բուղան։ Դավադրությունը հայտնի դարձավ իլխանին, և նա դաժանորեն հաշվեհարդար տեսավ Բուղայի և նրա համախոհների հետ։ Արյունահեղ այդ դեպքերը տեղի էին ունեցել Մուղանում, որի ընթացքում բավական տուժել էր բնակչությունը և զոհվել էին տեղական մի շարք ֆեոդալներ, այդ թվում դավադրությանը մասնակից լինելու պատրվակով վրաց Դեմետրե թագավորը, որի դուստրը կնության էր տրված Բուղային։

Արղունին 1291 թ. հաջորդեց եղբայրը՝ Քեյղաթուն, որն իշխեց մինչև 1295 թ. ապրիլ ամիսը։ Արղունի հակառակորդ ֆեոդալական խմբավորումը՝ ասպարեզից հեռացնելով գահակալին, միաժամանակ դաժան հաշվեհարդար է տեսնում նրա համախոհների հետ։ Այդ զոհերից էր և Խութլու-Բուղան, որը դժգոհ լինելով Դեմետրեին հաջորդած Վախթանգ թագավորի գործունեությունից, մի խումբ իշխանների հետ գահընկեց էր արել վերջինիս և գահը հանձնել Դեմետրեի Դավիթ որդուն։ Վրացական գահի շուրջը ծավալված այս պայքարը, փաստորեն, ուղղված էր մոնղոլ իշխողների դեմ, որը և դարձավ Խութլու-Բուղայի մահապատժի պատճառը՝ 1293 թ.։ Սակայն սկսված շարժումը չի դադարում, այն շարունակվում է նաև Ղազան խանի օրոք։

Քեյղաթու խանը ոչ մի կրոնի չէր հետևում։ Պետության կառավարման գործում բավական անզոր էր, որն, իհարկե, ձեռնտու էր քոչվոր ազնվականության վերնախավին։ Նրա տիրապետության շրջանում պետական պաշտոնեության կողմից չարաշահումներն ու կամայականությունները չտեսնված չափերի հասան։ Պետության գանձարանը դատարկվել էր, իլխանությունն ապրում էր տնտեսական ու քաղաքական անկում։ Ապաշնորհ խանը պետության եղած միջոցներն էլ, ինչպես ասում են, առատորեն քամուն էր տալիս, նվիրատվությունների միջոցով սիրաշահում շրջապատը։

Քեյղաթուի անունը կապված է ավելի շատ նրա ձեռնարկած տխրահռչակ դրամական ռեֆորմի հետ։ 1294 թ. ստեղծված դրամական ճգնաժամից դուրս գալու նպատակով շրջանառության մեջ դրվեց Ռաշիդ ադ-Դինի խոսքերով ասած՝ «չարաբաստիկ թղթադրամը», որը, սակայն, հանդիպելով ժողովրդի սուր դիմադրությանը, կարճ ժամանակից հետո հանվեց գործածությունից[17]։

1295 թ. Քեյղաթու խանը նույնպես զոհ գնաց քոչվոր ազնվականության կառավարող շրջանների քաղաքական խաղերին։ Գահը ժառանգեց նրա հորեղբոր՝ Տեգայի որդին, Հուլավուի թոռ Բայդուն, որն իշխեց ընդամենը վեց ամիս։ Նրա դեմ հանդես եկավ Արղուն խանի որդին՝ Ղազանը, իբրև գահի օրինավոր ժառանգ։

---

16 Տե՛ս Ֆրիկ, Բանաստեղծություններ, էջ 209—219։ «ԺԴ դարի Հիշատակարաններ», էջ 24։ Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք Ա, էջ 251—252։

17 Տե՛ս *Рашид ад-Дин*, т. III, стр. 128, 136.

## 2. ՂԱԶԱՆ ԽԱՆԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿԸ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ

Նոր հավակնորդը լուրջ դիմադրության չհանդիպելով, դաժան հաշվեհարդար տեսավ հակառակորդների հետ և իր ձեռքը վերցրեց իլխանության ղեկը։ Ղազան խանի օրոք (1295—1304) մոնղոլական պետության մեջ լուրջ տեղաշարժեր կատարվեցին։

Նրա տիրապետության առաջին տարիներին գլխավոր ամիրի պաշտոնը գրավում էր Արղուն բասղաղի որդին՝ Նովրուզը, որը գահակալական պայքարում խանին ցույց տված օգնության համար վայելում էր բացառիկ արտոնություններ և փաստորեն օժտված էր անսահմանափակ իշխանությամբ։ Օգտվելով իր այդ դիրքից, Նովրուզը դաժան հալածանքներ սկսեց Անդրկովկասի ժողովուրդների, հատկապես քրիստոնյաների նկատմամբ։

Նովրուզի հալածանքները առիթ ծառայեցին վրաց-հայկական ֆեոդալական ուժերի 90-ական թվականների սկզբին սկսված ապստամբության խորացմանը։ Ղազան խանի «իշխանությունը չճանաչող» վրաց-հայ ֆեոդալներին ճնշելու նպատակով Ղազան խանը Խութլուշահին հատուկ զորամասով ուղարկում է Վրաստան՝ այնտեղ գործերը կարգավորելու։ Վերջինս ավերածության է մատնում Հայաստանի հյուսիսային և Վրաստանի արևելյան մի շարք շրջաններ և մեծ դժվարությամբ հաշտություն կնքելով Դավիթ թագավորի հետ, վերադառնում է[18]։

Ռաշիդ ադ-Դինը որոշակի նշում է, որ վրացիները (նկատի ունի նաև հայ իշխաններին) չեն ճանաչում Ղազան խանի իշխանությունը[19]։

Խութլուշահի ասպատակությունների մասին Վրաց ժամանակագիրը գրում է. «...Ղազան (ղ՚աեն)ն անթիվ զորքով ուղարկեց Խուտլուշա(հ) զորապետին (որն) եկավ Սոմխիթ... (թաթարներն) ավերեցին Սոմխիթը, Քարթլին, Թիանեթը, Երծոն...»[20]։

Ստեփանոս Օրբելյանը, խոսելով Նախճավանում հայերի դեմ սկսված կրոնական հալածանքի մասին, ասում է, որ վրաց զորքից վախենալով, մեծ գլխավորները (մոնղոլների) չթողեցին քանդել եկեղեցին[21]։

Շատ շուտով Նովրուզը գահին տիրելու հույսով Խորասանում դավադրություն է կազմակերպում Ղազանի դեմ, որը, սակայն, ժամանակին կանխվում է, իսկ նրա տոհմը ամբողջովին ոչնչացվում։ Նովրուզի դավադրության ճնշման գործում ակտիվ մասնակցություն են ունեցել հայկական և վրացական ուժերը, աչքի են ընկել հատկապես Լիպարիտ Օրբելյանը և Ջաչի Պռոշյանը[22]։

---

18 Տե՛ս *Рашид ад-Дин*, т. III, стр. 171. Ստ. Օրբելյան, էջ 372—375, «Մանր ժամանակագրություններ», հատ. Ա. էջ 50։

19 Տե՛ս *Рашид ад-Дин*, т. III, стр. 271.

20 «Վրաց աղբյուրները», հատ. Բ, էջ 61։

21 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 473։

22 Տե՛ս նույն տեղում, էջ 475։

Հայ-վրացական ֆեոդալական զինվորական միավորումները՝ աթաբեկ և ամիրսպասալար Շահնշահ Բ Զաքարյանի հրամանատարությամբ մասնակցություն են ունեցել նաև Ասորիքում մոնղոլների մղած պատերազմներում՝ 1300—1303 թթ., ուր նրանք բավականին զոհեր տվեցին։ Այսուհանդերձ, չնայած ժամանակավոր հաջողություններին, մոնղոլական բանակների առաջխաղացումը դեպի հարավ-արևմուտք՝ ընդդեմ մոնղոլների հզոր թշնամու, եգիպտական մամլուքների, ապարդյուն անցավ Ղազան խանի օրոք։ Ինչպես մոնղոլ իշխողների, այնպես էլ կիլիկյան հայ ֆեոդալների հույսերը՝ Եգիպտոսի դեմ քրիստոնյա Արևմուտքի և Հռոմի պապի օգնությունն ստանալու հօդս ցնդեցին։

Ներքին ու արտաքին թշնամիներից ապահովելով իր պետության անվըտանգությունը, Ղազան խանը ձեռնամուխ եղավ երկիրը տնտեսական ու քաղաքական ճգնաժամից դուրս բերելու միջոցառումներին։

Այդ միջոցառումների մշակման ու իրականացման գործում նախաձեռնող ու ղեկավար դեր է խաղացել 1298 թվականից սահիբ դիվանի և առաջին վեզիրի պաշտոնը վարող պատմաբան Ռաշիդ ադ-Դինը։

Նվաճված Իրանում և Անդրկովկասում մոնղոլների ավելի քան 60 տարի վարած տնտեսական կործանարար քաղաքականությունը այդ երկրներին հասցրեց քայքայման և անկման եզրին։ Ծանր և անտանելի այդ վիճակը իր ցայտուն դրսևորումն է գտել Ռաշիդ ադ-Դինի մոտ պահպանված՝ Ղազան խանի թվով 40 հրովարտակ-միջոցառումներում։

Բարենորոգչական այդ հրովարտակները վերաբերում են քաղաքական և տնտեսական կյանքի հիմնական, այն է՝ հողային, ֆինանսական, հարկային, վարչական և ռազմական բնագավառներին։

Պետությունը ստեղծված վիճակից դուրս բերելու միջոցը Ղազան խանը տեսնում էր տեղական ֆեոդալական ուժերի համախմբման, նրանց հետ մերձեցման մեջ, քոչվոր ազնվականության կենտրոնախույս ուժերի սանձահարման, նրանց կամայականությունների սահմանափակման, կենտրոնական պետությունից ֆեոդալների կախվածության ուժեղացման մեջ։

Քաղաքականության այս փոփոխումով թերևս պետք է բացատրել նաև Անիի Շահնշահյանների քաղաքական կյանքի վերակենդանացումը[23]։ Տեղական ուժերի համախմբման և պետության հպատակների մեծամասնությունը կազմող մահմեդական ժողովուրդներին սիրաշահելու նպատակով, Ղազանը ընդունել էր մահմեդականությունը և այն հայտարարել պետական կրոն։

Դրանից հետո նա ուժեղ հալածանքներ սկսեց քրիստոնեության և մյուս կրոնների դեմ, վերականգնեց ոչ-մահմեդական ժողովուրդներից գանձվող «ջիզիա» գլխահարկը։ Սակայն շուտով, հաշվի առնելով հայ և վրաց ֆեոդալների բողոքները, որոնց ռազմական ուժերը նրան անհրաժեշտ էին՝ արևմուտքում մղվող պատերազմական գործողություններում, դադարեցրեց «ջիզիայի» գանձումն ու հալածանքները և քրիստոնեության նկատմամբ վարեց հանդուրժողական քաղաքականություն։ Հայկական աղբյուրներում Ղազանի մասին

---

23 Տե՛ս «Վիմական տարեգիր», էջ 15։ Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք 1, էջ 249։

հակասական գնահատականները պետք է բացատրել քրիստոնեության նկատմամբ նրա վարած քաղաքականության փոփոխությամբ։

Ղազան խանը, հաշվի առնելով, որ պետության գանձարանի սնանկացման հիմնական պատճառներից մեկը պաշտոնեության և կապալառուների դիշատիչ կողոպուտն է ու անձնական կարիքների համար հսկայական գումարների ծախսումները, հատուկ հրամանով հաստատեց նահանգներից գանձվող հարկերի միասնական և կայուն չափեր, պարտավորեցրեց ամենուր հարկացուցակները փակցնել աչքի ընկնող տեղում։ Խիստ արգելեց բնակչությունից պահանջել հարկացուցակներում սահմանված հարկադրումներից ավելին։ Սահմանափակեց սուրհանդակների զանգվածային բնույթ ստացած առաքումը, թույլատրեց սուրհանդակներ առաքել միայն պետական կարևոր գործերով։ Նա վերացրեց օթևանության պարհակը, վերացրեց հարկերի գանձման կապալային սիստեմը և արգելեց այդ նպատակով հատկացագրեր-բարաթներ տալը։ Սահմանափակեց արքունիքի, խանական տան անդամների, բանակի, ամիրաների պահպանման համար ծախսվող գումարները և վերացրեց նրանց օգտին բնակչությունից գանձվող բազմաթիվ ապօրինի տուրքերը։ Կանոնավորեց պետական գանձարանի գործերը։ Գանձարան մտնող ամբողջ դրամը և արժեքները խնամքով գրանցվում էին հատուկ մատյաններում, կնքվում ու պահպանվում էին վստահված մարդկանց կողմից։ Գանձարանից գումարներ բաց էր թողնվում խանի գրավոր կարգադրության հիման վրա։

Մոնղոլական զինվորականության կողմից հողերի ձեռք բերման ընդհանուր ձգտումը Ղազան խանին ստիպեց 1303 թ. անցկացնել հողային ռեֆորմ։ Բոլոր զինվորներին բաժնեկալվածքի (իկթա) իրավունքով հողաբաժին տրվեց։ Հայաստանի հարավային և արևմտյան հարուստ արոտավայրեր ունեցող շրջաններում, որտեղ մոնղոլ զինվորականությունը շարունակում էր վարել քոչվորական տնտեսություն, իկթա տրված հողերը կազմեցին հսկայական տարածություններ։ Իկթաների մասին իր այդ հրովարտակով Ղազան խանը միաժամանակ հաստատեց գյուղացիների ամրացումը հողին և արգելեց գրանցված վայրերից նրանց ազատ տեղաշարժի իրավունքը։ Սահմանեց փախուստի դիմած գյուղացիներին փնտրելու և բռնի ուժով ետ վերադարձնելու 30-ամյա ժամկետ։

Արհեստավորության և ստորին խավերի վիճակը թեթևացնելու նպատակով, մի շարք քաղաքներում ամբողջապես, իսկ մյուսներում կիսով չափ, վերացրեց «տամղա» հարկի գանձումը։ Մեծ չափերի հասած վաշխառությունը սահմանափակելու նպատակով, հատուկ հրամանով արգելեց վաշխառուական դրամափոխտվությունը և պարտապաններին ազատեց վերցրած գումարներն ու նրանց տոկոսները վճարելուց։ Սահմանեց դրամական և չափ ու կշռի միասնական միավորներ։ Ստրուկ արհեստավորների աշխատանքը արդյունավետ դարձնելու նպատակով, նրանց կենտրոնացրեց պետական արհեստանոցներում և սահմանեց ռոճիկ։

Ղազանի, ինչպես նշված, այնպես էլ մի շարք այլ միջոցառումների իրականացման շնորհիվ պետության գանձարանի եկամուտներն աճեցին մոտ 25 տոկոսով։

Ղազանին անմիջապես հաջորդող իլխանները, չնայած ձեռնարկել են գրեթե միևնույն նպատակները հետապնդող միջոցառումներ, սակայն իկթային՝ հողատիրության ընդլայնման ուղղությամբ անցկացված միջոցառումներից բացի, Ղազանի մյուս բոլոր բարենորոգությունները չափազանց վաղանցիկ արդյունք են տվել։ Մոնղոլական պետության եկամուտները կրկին նվազում են։ Համդալլահ Ղազվինին նշում է, որ իր ժամանակ (XIV դարի առաջին տասնամյակներ) հավաքված հարկային գումարները չէին կազմում սելջուկների օրոք գանձված գումարների 20 տոկոսն անգամ։ Այդ են ցույց տալիս և հետևյալ պերճախոս թվերը։ Վրաստանը՝ ներառյալ և Հյուսիսային Հայաստանը, սելջուկների ժամանակ վճարում էր 500 թուման, Մեծ Հայքը՝ 200 թուման, մոնղոլների ժամանակ առաջինը վճարում էր 120, երկրորդը՝ 39 թուման։ Մոնղոլական քոչվոր ազնվականության և պաշտոնեության մեջ արմատացած սանձարձակ կամայականություններն ու չարաշահումները, Ղազան խանից հետո կենտրոնական իշխանության թուլացման, կենտրոնախույս ուժերի նոր ու ավելի ցայտուն դրսևորման, ամենուրեք և հատկապես Հայաստանում տեղական իշխանական տների քայքայման պայմաններում, ավելի դաժան ձևեր ընդունեցին և ավելի զանգվածային բնույթ ստացան։

Հայկական աղբյուրների վկայությունները ցույց են տալիս, որ Ղազան խանի բարենորոգումների իրականացումը, ինչպես այլ վայրերում և ավելի ևս Հայաստանում, չկասեցրեց երկրի տնտեսական կյանքի անկման ընթացքը։ Ընդհակառակը, XIV դարի սկզբից այն ավելի արագացավ և խորացավ։

Երկրի հյուսիսային, կենտրոնական և արևելյան շրջաններում այդ բարենորոգումները գրեթե արձագանք չգտան, այդ մասին են վկայում Անիի արձանագրությունները, իսկ հարավային և արևմտյան նահանգներում՝ կապված իկթային հողատիրության ընդհանուր տարածման հետ, ուժեղացավ գյուղացիության շահագործումը, որը հիմնականում ընդունեց ճորտական կախվածության ձև։

Մոնղոլա-իրանական պետության համար ստեղծված աղետալի, ճգնաժամային պայմաններում, Ղազան խանի ձեռնարկած միջոցառումները միայն և միայն մասնակի բարեփոխումներ էին երկրի կառավարման արմատացած արատավոր ձևերի մեջ։ Հասկանալի է, որ դրանք ի վիճակի չէին կանխելու դեպի կործանում գնացող պետության անկումը։

Զինվորական իկթա հողատիրության զարգացումը երկրում հանգեցրեց ֆեոդալական մասնատվածության հաղթանակին։

1304 թ. Ղազանի մահից հետո նրան հաջորդեց եղբայրը՝ Օլջեյթուն, որը մահմեդականություն ընդունելուց հետո կոչվեց սուլթան Մուհամմադ Խուդաբանդա։ Օլջեյթուի տիրապետության շրջանում, հայկական ֆեոդալներից երկրի քաղաքական կյանքում աչքի ընկնող դեր էին կատարում Շահնշահ Բ Զաքարյանը, Գրիգոր Դոփյանը և ուրիշներ։

Օլջեյթուն կենտրոնական իշխանության ուժեղ դիրքը պահպանելու ուղղությամբ հիմնականում շարունակեց Ղազանի քաղաքականությունը։ Նա ըսկզբնական շրջանում քրիստոնեության նկատմամբ ցուցաբերեց հանդուրժողական քաղաքականություն, սակայն որոշ ժամանակ անցնելուց հետո վե-

րաքերմունքը բոլորովին փոխեց և սկսեց անլուր հալածանքներ[24]։ 1307 թ. վերականգնեց քրիստոնյաներից վերցվող ջիզիա հարկը և պահանջեց մահմեդականությունը բռնի տարածել նրանց մեջ[25]։ Ատելությամբ լցված դեպի խանը, հայերը նրա Խուդաբանդա (աստծո ծառա) անունը դարձրել էին «Խարբանդա, որ թարգմանի իշու ծառայ»[26]։ Սկսված հալածանքները չափազանց ծանր դրություն ստեղծեցին ժողովրդական զանգվածների համար՝ «...ոմանց ի մորթն կարեցին վասն աղքատութեան...»[27], իսկ շատերը «խիստ և անհնարին հարկապահանջության պատճառով վաճառում էին մեր աշխարհի տղաներին և աղջիկներին, և բազում գյուղեր և վանքեր ավեր ու անապահով էին...»[28]։

«Համարողքն ի Վայուձորս եկին, և մինչև ի յամսական տղայն համարէին»[29]։ Ջիզիա-խարաջ հարկը գանձում էին 10-ից մինչև 30—40 սպիտակ (արծաթ) դրամի չափով՝ ըստ ունեցվածքի[30]։ Բացի նշված հարկից, խանի կարգադրությամբ բոլոր քրիստոնյաներն իրենց ուսի կամ մեջքի վրա պետք է ունենային սև կամ կապույտ նշան։

Նոր հնարավորություններ էին բացվել մոնղոլական պաշտոնեության չարաշահումների, բռնությունների և կամայականությունների համար։

1316 թ. Օլջեյթու խանին փոխարինեց որդին՝ 12-ամյա Աբու-Սաիդը։ Աբու-Սաիդի տիրապետության հենց առաջին տարիներից երկրի ներսում նորից աշխուժացան ֆեոդալական կենտրոնախույս ուժերը, և ավելի հաճախակի բնույթ ստացան նրանց ելույթները։

Անդրկովկասում 1319 թ. Աբու-Սաիդի դեմ ապստամբություն բարձրացրեց Ղուռումշին, որի ժամանակ մեծ չափով ավերվեց գլխավորապես Գեղարքունիքը։ 1320 թ. սկզբին ապստամբում է Գյուրջիստանի բասղաղ Արքինոը, որը փոխարինել էր Աչային։ Նրա դավադրությունը նույնպես ճնշվում է։ Այս ապստամբության ժամանակ բավականին տուժում են Արևելյան Վրաստանը և Հայաստանի հյուսիսային շրջանները։

Բավական բարդացել էր իլխանության վիճակը նաև արտաքին հարձակումների հետևանքով։ Եգիպտոսը, Ջաղաթայանները, Ոսկե Հորդան վերսկսել էին պատերազմական գործողությունները։

* * *

Մոնղոլ նվաճողների վարած քաղաքականության հետևանքով XIV դարի սկզբից հայկական ֆեոդալական իշխանությունների դերը երկրի քաղաքական, տնտեսական կյանքում զգալի չափով թուլացել էր։ Նրանք սկսել էին

24 Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 37, 47, 48, 51, 113, 138—139։

25 Տե՛ս «Հայոց նորվկաները», էջ 121—122, 129—131, 137—145, Սամուել Անեցի (շարուն.), էջ 165, «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 47։

26 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 46, 92։

27 Սամուել Անեցի (շարունակ.), էջ 165։

28 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 66, 215—216։

29 Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 526։

30 Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 104։

քայքայվել և իրենց տեղը աստիճանաբար զիջել օտար քոչվոր ազնվականությանը։

Ուլջեյու խանի հովանավորությամբ Գեորգի Պայծառ թագավորը 1314 թ. միավորել էր ամբողջ Վրաստանը, իսկ Զաքարեն (Խոշաքի որդին) նշանակված էր Ավագյանների Թումանի (Հյուսիսային Հայաստանի) կառավարիչ։ Վերջինիս մահից հետո՝ հավանաբար 30-ական թվականների սկզբին, Ավագյանների տիրույթներն անցնում են Անիի Շահնշահյանների ձեռքը։

1319 թ. Անին տուժել էր երկրաշարժից. Շահնշահ Բ քաղաքի վիճակը թեթևացնելու նպատակով դիմում է Աբու Սաիդ խանին, իսկ վերջինս հավանաբար նույն՝ 1319 թ.՝ այն դարձնում է «խաս-ինջու»[31]։

Երկրաշարժից բացի, Անի քաղաքը ավելի քան տուժել էր նվաճողների հարկային ծանր քաղաքականության և բնակչության զանգվածային արտագաղթի հետևանքով։ Երկիրը սկսում է ամայանալ, որն իր հետ բերում էր ավերածություններ։ «Խաս ինջու» դառնալուց հետո Անիի վիճակը չի փոխվում, քաղաքի քայքայումը շարունակում է ավելի խորանալ։ 1320 թ.՝ Շահնշահ Բ-ի մահից հետո նրա որդու՝ Զաքարեի անչափահասության պատճառով Անիի Զաքարյանների տիրույթներում պարոնություն է անում Խուանդզեն։ Սա և իր բաժրար Ծիլենցը ստիպված են լինում մնացած բնակչությանը ազատել մի շարք հարկերից, սակայն այդ էլ չի օգնում։ Դրանից հետո Աբու Սաիդը հարկադրված է լինում հատուկ հրովարտակով Անի քաղաքի և «Գյուրջիստանի վիլայեթի» բնակիչներին ազատել մի քանի հարկերից։

Վիմական արձանագրություններից ենթադրվում է, որ Զաքարյան Շահընշահ Բ-ի որդին մահացել է երիտասարդ հասակում, որից հետո Զաքարյան տան ավագությունը 30-ական թվականներին անցել է վերջինիս հորեղբորը՝ Վահրամին։ 40-ական թվականներին այն անցնում է Շահնշահ Բ-ի թոռանը, Խուանդզեի որդի Զաքարիայի Շահնշահ Գ որդուն, որը Մելիք Աշրաֆի ասպատակությունների ժամանակ հազիվ կարողանում է Անիից փախչել Բջնի։ Վերջինիս մահից հետո՝ 1358 թ. ժառանգորդի դերում հանդես է գալիս նրա որդին՝ Զաղան։

Զաղան Զաքարյան ֆեոդալական ազդեցիկ տան վերջին շառավիղն էր, որից հետո, ըստ երևույթին, նրանք բոլորովին նսեմանում և կորցնում են իրենց քաղաքական նշանակությունը։ Զաքարյան ֆեոդալական տան վերջին ժառանգորդները Անի-Շիրակյան թատերաբեմից անհետացան XIV դարի 60-ական թվականներին։

XIV դարի առաջին հիսնամյակում իրենց քաղաքական և տնտեսական գերիշխող դերը շատ թե քիչ պահպանել էին նաև Օրբելյան ու Վաչուտյան ֆեոդալական տների ներկայացուցիչները։ 1290 թ., Տարսայիճ Օրբելյանի մահից հետո, նրան փոխարինում է Էլիկումը։ Վերջինիս մահից հետո, 1300 թ. իշխանությունն անցնում է նրա ավագ որդուն՝ Բուրթելին։ Աղբյուրներում սրան վերագրված «իշխանաց իշխան», «կոմս», «կողմնակալ»[32], տիտղոսները ցույց են տալիս Օրբելյան ֆեոդալական տան այս ներկայա-

31 Տե՛ս Ղ. Ալիշան, Տեղագիր հայոց, էջ 30։

32 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 166, 261, 377, 406։

*ցուցել խաղացած դերը հայ-վրացական քաղաքական կյանքում։ Նա կապված էր շատ թելերով վրացական արքունիքի հետ։ Լինելով ամիրսպասալար, միաժամանակ հանդիսացել է Սյունյաց թումանի կառավարիչը— կողմնակալը, ինչպես և իր նախորդները։*

*Բուրթելին հաջորդել է նրա որդին՝ Բեշքենը, իսկ նրան՝ Ջեսարը։ Նրանից հետո Օրբելյանների իշխանական տունը շարունակում է գոյություն ունենալ այս Ջեսարի ժառանգների միջոցով։ Օրբելյանների ֆեոդալական տան վերջին շառավիղների մասին XIV դ. 90-ական թվականներից հետո տեղեկություններ այլևս գրեթե չեն հանդիպում։*



Սելիմի կարավանատունը

*Վաչուտյանների ֆեոդալական տան ավագությունը XIV դարի սկզբներից մինչև 40-ական թվականները գտնվում էր իշխանաց-իշխան Քուրդ Ամբերդցու ձեռքում։ Ըստ աղբյուրների, Քուրդը քաջ և խիզախ անձնավորություն էր, իշխանության արքունիքում ուներ մեծ հեղինակություն[33], նրա «...անվան և քաջության շնորհիվ մեր գավառը և վանքերը անշարժ և անվնաս մնացին այս մեղապարտ և դառն ցասումներից...»[34], վկայում է ժամանակագիրը։ Քուրդին հաջորդել է որդին՝ Թեոդորոսը «Ջըրքին» մականվամբ։ 60-ական թըվականներից ֆեոդալական այս տան մասին նույնպես ոչ մի տեղեկություն չի պահպանվել։ Հավանական է, որ Վաչուտյանների իշխանությունը Ջըքինով էլ ավարտվել է։*

33 *«ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 270—271։*

34 *Նույն տեղում։*

Գրեթե նույն ճակատագրին են արժանանում նաև հայ իշխանական մյուս տները։ Գրիգոր Դոփյանի մահից հետո, հավանաբար XIV դարի երկրորդ տասնամյակում, իշխանությունն անցնում է նրա Վահրամ որդուն, ապա վերջինիս Սարգիս եղբայրին և հետո Սարգսի՝ Հասան որդուն։ Հասանից հետո Դոփյանների տոհմը՝ երեք ճյուղավորումով գլխավորում են Հասանի երեք որդիները՝ Շահանշեն (Ուլուբեկանց պապը), Աղբուղեն (Այդինեցվոց պապը) և Ջհանշեն (Ջհանշենցվոց պապը)։ Դարի վերջում Դոփյանների վերջին սերընդից իշխան Վիգենը Ջղավնա (Վրաստան) անապատի շրջակայքում կրոնավոր է դառնում Վրթանես անունով[35]։

XIV դարի սկզբից Պռոշյանների ֆեոդալական տան ավագությունը գտնվում էր Ամիր Հասանի որդու՝ Էաչիի (1299—1317) ձեռքում, նրան հաջորդել էր որդին՝ Ամիր Հասան Բ (1318—1348/51)։ Այս Հասանի տիրապետության շրջանում է ծաղկում Գլաձորի «Արևելյան հայոց համալսարանը»։ Դարի 50-ական թվականներից Պռոշյանների ֆեոդալական տունը նույնպես քայքայվում է և իր տեղը զիջում եկվոր իշխողներին։

Աբու Սաիդի մահից (1335) հետո, որը ժառանգ չուներ, իլխանության գահը փաստորեն դարձել էր ֆեոդալական խմբավորումների ձեռքին խաղալիք։ Բավական է ասել, որ 1335 թ. մինչև 1344 թ. փոխվել են ավելի քան 8 իլխան։ Քոչվոր ֆեոդալական խմբավորումները գահը իրենց առաջադրած թեկնածուին հանձնելու համար կատաղի պայքար էին մղում։ Մոտ 9 տարվա արյունահեղ ու նվաճված երկրների համար կործանարար ժամանակաշրջանը ավարտվեց իլխանության անկումով։ Առաջացան մի շարք ինքնուրույն պետություններ, որոնց մեջ առավել զորեղ էին Չոբանյանների ֆեոդալական իշխանությունը Ատրպատականում (մինչև դարի 60-ական թթ.) և Ջելայիրյանների իշխանությունը Արաբական Իրաքում՝ Բաղդադ կենտրոնով (մինչև 1410 թ.)։

Իլխանության հոգեվարքի ու անկման այս ժամանակաշրջանը բավական դիպուկ ձևով իր արտացոլումն է գտել հայ ժամանակակիցների թողած հիշատակարաններում. «Գրվեց հայոց 1338 թ., այն ժամանակ, երբ ոչ խան կար և ոչ սուլթան, և երկիրը նման էր երերացող նավի...»[36]։ Կամ՝ «վերացված է թագավորությունը, քանի որ իշխանները խառնվարարներ և տատանվողներ են, միմյանց վրա աղմկողներ»[37]։

---

35 Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 304—306, 311։
36 Նույն տեղում, էջ 306, տե՛ս և էջ 304—305, 311։
37 Նույն տեղում, էջ 324։ Տե՛ս և էջ 405, 418։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՄՈՆՂՈԼՆԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

## 1. ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ

*Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում հայկական ավատառուական իշխանություններում տեղական ֆեոդալական հողային սեփականության գոյություն ունեցող ձևերը՝ հայրենիք, պարգևականք, եկեղեցական և համայնական, հիմնականում պահպանվեցին։ Նվաճողները նրանց հաշվին առանձին շրջաններում արմատավորեցին հողատիրության նոր ձևեր, որոնք, սակայն, այդ իշխանություններում ընդհանուր բնույթ չստացան, ինչպես դա մասամբ արվեց երկրի հարավային և արևմտյան նահանգներում, որտեղ դեռ XI դարի վերջերից հայկական ֆեոդալական հողատիրության ձևերը իրենց տեղը նկատելիորեն զիջել էին սելջուկ-թուրքական նվաճողների հողատիրության դիվանի, ինջու, իկթա, մուլք, վակֆ ձևերին։*

* * *

*Մինչև Ղազան խանը մոնղոլական հողատիրության առաջին հիմնական ձևը դիվանի կամ աղբյուրներում շատ հաճախ հիշված արազի-ի-դիվանի պետական-արքունական հողատիրությունն էր։ Հուլավյանների պետության հիմնադրումից հետո դիվանի հողերի ֆոնդը բավական ընդարձակվեց ի հաշիվ տեղական մուլք, հայրենիք և համայնական հողատիրության։*

*Սկզբնական շրջանում Հայաստանի հարավային և արևմտյան նահանգների զգալի տարածությունները նույնպես անցան արքունի դիվանին։ Հետագայում դիվանին պատկանող հողային տարածությունները, հատկապես Աբաղա խանին հաջորդող իլխանների ժամանակ, կրճատվեցին և դրանց հաշվին՝ նվիրատվությունների, գնման և այլ ճանապարհներով աճեց մասնավոր հողատիրությունը—մուլքադարությունը։*

*Դիվանի հողերից ստացվող հարկերը հիմնականում կապալով էին տրվում։ Ժամանակակից բոլոր աղբյուրները նշում են, որ հարկահանման կապալային սիստեմը չափազանց լայն տարածում էր ստացել մոնղոլական պատմաշրջանում և որ դա խիստ ծանր էր անդրադառնում աշխատավոր գյուղացիության, հատկապես դիվանի տիրույթների բնակչության վրա։*

Գրեթե բոլոր աղբյուրները շեշտում են նշված տիրույթների տնտեսական անկման, գյուղացիության քայքայման, բնակավայրերի աստիճանաբար լքման հանգամանքները, որոնք և հանդիսացան XIII դարի 90-ական թվականներին սկսված տնտեսական-ֆինանսական ճգնաժամի հիմնական պատճառները։

Եթե մասնավոր հողատերերը՝ ֆեոդալ-կալվածատերերը, շահագրգռված էին գյուղացիներից վերցվող ֆեոդալական ռենտայի կայունացման մեջ (քանի որ գյուղացին էր նրա եկամուտների հիմնական աղբյուրը և պարզ է, որ նրանք չէին ցանկանա ընդմիշտ կորցնել նրան), ապա կապալառուին այդ չէր հետաքրքրում։ Նա մտածում էր միայն պետական դիվանին (գանձարանին) իր վճարած հարկաչափից ավելին, անգամ կրկնակին ձեռք բերելու մասին։

Դիվանի և ինջու հողային ֆոնդերը իլխանների համար քոչվոր ազնվականության և տեղական պաշտոնեության առատ պարգևատրումների պահեստաֆոնդ էին հանդիսանում։

Ծառայություններով աչքի ընկած առանձին մարդկանց կամ արքայական տան որևէ անդամի գոյությունը պահպանելու և նրանց «կերակրման» համար իլխանները դիվանի կամ ինջու հողերից ամբողջ շրջաններ, անգամ նահանգներ էին հատկացնում։ Նման նահանգների ու շրջանների թիվը զգալի էր հատկապես «Մեծ Հայք» վիլայեթում։

Այս նահանգներում կամ շրջաններում նոր տիրակալներն իրենց օգտին լրացուցիչ հարկեր ու տուրքեր էին սահմանում տեղի բնակչության վրա։

Ինչպես ամենուրեք, այնպես էլ հողատիրության այս ձևին պատկանող տիրույթներում հարկ-ռենտան բավական մեծ էր։ Այն կլանում էր գյուղացու եկամտի հիմնական բաժինը՝ տարվա բերքի երկու-երրորդը։ Գյուղացին բացի հարկ-ռենտայից, տալիս էր և այլ հարկեր ու տուրքեր։

* * *

Մոնղոլական «inza» բառը իրանա-թուրքական միջավայրում ստացել էր «ինջու» ձևը, որը նշանակում էր անձնական կալված։ Ինջու հասկացության երկու ձև է հայտնի. ինջու և ինջու-ի խաս։ Ինջու էին կոչվում թագավորական տան անդամներին պատկանող կալվածները, իսկ ինջու-ի խաս՝ այն հողերը, որոնք գտնվում էին խանի անձնական տիրապետության տակ։

Ինջու հասկացությունն ընդհանրապես արտահայտել է արտոնված հողային ֆոնդ, իրավունք կամ օբյեկտ։

Ինջուն մասնակի առումով, որպես թագավորի կամ նրա տան անդամներին պատկանող կալված, համապատասխանում էր ոստան հասկացությանը, որը հայտնի էր դեռևս վաղ ֆեոդալական Հայաստանում։

Ինջուական հողատիրությունը ստեղծվեց մի քանի ճանապարհներով։ Ինջու դարձվեցին տեղական ֆեոդալական իշխանությունների կառավարող տների սեփականությունը կազմող հողային տարածությունների մի մասը և տեղական ֆեոդալներից բռնագրաված կալվածները։

Ինջուն հողային տիրույթ կամ սեփականություն էր, որն անցնում էր ժառանգաբար, սերնդից-սերունդ, ենթակա էր օտարման, նվիրման և վաճառքի։

Իլխանները կամ նրանց տան անդամները ինջու տիրույթները տալիս էին քոչվոր ազնվականության ներկայացուցիչներին՝ ի տնօրինություն և ի տիրապետություն։

Հայաստանի պայմաններում ինջուական հողատիրության առկայության մասին տեղեկություններ են պահպանել Ստեփանոս Օրբելյանը՝ Սյունիքի, Մահմուդ Աքսարին՝ Սիվասի (Սեբաստիա), Ռաշիդ ադ-Դինը՝ Մայաֆարկինի, Մալաթիայի և մի քանի այլ շրջանների, իսկ հայերեն վիմագիր արձանագրությունը՝ Անիի մասին։ Աղբյուրների անուղղակի վկայություններից կարելի է ենթադրել, որ Կարս և Երզնկա քաղաքներն իրենց շրջաններով նույնպես ինջու արտոնյալ հողատիրության ձևին են պատկանել։

Ինջու էին կոչվում նաև պետական անձինք։

Ստեփանոս Օրբելյանի մոտ Սմբատ Օրբելյանի կապակցությամբ «ինջուն» արտահայտված է «ենչու», «տէրունի» բառերով, ընդ որում վերջին բառը «ինջուի» իմաստի (տերունական-խանական) սպառիչ բացատրությունն է հանդիսանում։

«Ինջու» տիրույթներն ազատ էին պետությանը տրվող հարկերից, սակայն այդ հարկերը վեր էին ածվում ռենտայի և գանձվում էին «ինջուի» տիրոջ օգտին։ Արտոնությունը միայն տիրոջ համար էր և ոչ «ինջու» տիրույթներում նստած բնակչության համար։

«Ինջու» տիրույթներից գանձվող հարկերը նույնպես տրվում էին կապալով շատ հաճախ այն մարդկանց, որոնք այն ստացել էին ի տիրապետություն կամ ի տնօրինություն կամ էլ տեղական պաշտոնեության և առևտրա-վաշխառուական կապիտալի այն ներկայացուցիչներին, որոնք ոչ ոքի չէին զիջում իրենց չարաշահումներով և կեղեքումներով։

Մալաթիա քաղաքը որպես «ինջու» Աբաղա խանը տվել էր ոմն Իզ ադ-Դին Այբակի՝ կառավարելու, իսկ նրա ու նրա 10 հազարանոց բանակի կերակրման համար տարեկան սահմանել էր հինգ հազար դինար։ Այբակը գալով Մալաթիա, բնակչությունից մահակներով կորզում է 30 հազար դիրհեմ ու փախչում[1]։

«Ինջուն» որպես արտոնված հողատիրություն իմաստավորող հասկացություն, ավելի որոշակի վերաբերել է հիմնականում տեղական ֆեոդալական դասակարգի ներկայացուցիչների տիրույթներին։ Տեղական ֆեոդալները ձգտում էին իրենց նահանգները, գավառներն ու շրջանները զերծ պահել մոնղոլական քոչվոր ազնվականության ու պաշտոնեության շահատակություններից, մանավանդ հարկահանների կամայականություններից ու այլ մեքենայություններից, որոնք բազմազան ձևեր էին ընդունել, մեծ չարիք էին դարձել ու քայքայում էին երկրի տնտեսությունը։ Մյուս կողմից՝ նրանք քաղաքական նկատառումներով իրենց բախտը կապում էին մոնղոլական կայսրության արքունիքի հետ, կոմենդացիոն[2] կարգով մտնում էին իլխանի կամ նրա

[1] Рашид ад-Дин, т. III, стр. 47.

[2] Վասալային կախման պայմանավորվածություն։

տան անդամների հովանավորության ներքո, դառնում նրանց անմիջական ավատառուները, նրանց «ինջուն» և դրանով իսկ ապահովում իրենց տիրապետությունը։

Կոմենդացիոն ճանապարհով «ինջու» դարձողները նույնպես հարկատվությունից ազատ չէին, պետությանը տրվող հարկերը նրանք տալիս էին իրենց հովանավորողին։ Ինչպես նշվեց, Սյունիքն էլ, շնորհիվ Սմբատ Օրբելյանի ջանքերի, այս կարգի «ինջու» էր դարձել։

Սյունիքի «ինջու» դառնալու հանգամանքը նրան համեմատաբար զերծ էր պահել հարկահանության կապալային կարգից և այլ կամայականություններից, ուստի Սյունիքի տնտեսական վիճակը մյուս նահանգների համեմատությամբ ավելի բարվոք էր։ Այդ էր պատճառը, որ Հայաստանի տարբեր շրջաններից Սյունիք էր գալիս զգալի թվով բնակչություն։ Սյունիքի գյուղացին հարկ ու տուրքը վճարում էր տեղի ֆեոդալներին։ Սրանք էլ համապատասխան չափով վճարում էին իրենց անմիջական հովանավորին։ Այս կարգը գյուղացիներին ազատում էր մոնղոլական տերության մեջ իշխող ամեն տեսակի շահատակություններից ու կամայականություններից, էլչիների երթևեկից և հափշտակություններից, ուստի ինջուական տիրույթում աշխատավորության վիճակը համեմատաբար ավելի տանելի էր։

Պետք է ենթադրել, որ կոմենդացիոն կարգով էր Շահնշահ Բ ձեռք բերել Աբու-Սաիդի հովանավորությունը Անի քաղաքի նկատմամբ և այն դարձրել վերջինիս «խաս-ինջուն»։

Հայտնի չէ, թե ինչպիսի արտոնություններ էին ստանում «ինջու» քաղաքի բնակիչները, սակայն միշտ չէ, որ նրանք ազատվում էին պետական բոլոր տեսակի հարկերից, ինչպես, օրինակ, Անին։ Համենայն դեպս, Անի քաղաքի «ինջու» դառնալը չփրկեց նրան քայքայումից ու ավերումից, հատկապես հարկերի ծանրության պատճառով։ Այդ է ցույց տալիս Անիի Մանուչեի մզկիթի պատին պարսկերեն լեզվով արձանագրված Աբու-Սաիդ իլխանի հրովարտակը[3]։ Այնտեղ ասված է. «...Թող ոչ ոք չհամարձակի որևէ բան պակասեցնել կամ ավելացնել. Թող բացի տամղայից և արդարացի մաքսից ուրիշ ոչինչ չառնեն. և Թող ոչ ոքից խալանի, նեմերիի և Թարխի պատրվակով ոչինչ չպահանջեն. Նրա համար, որ սրանից առաջ Անի քաղաքում և Վրաստանի այլ շրջաններում խալանի, նեմերիի անիրավացի հատկացումների ու Թարխի պատրվակով ապօրինի տուրքեր էին առնում և բռնություն էին անում ու գործ դնում. և երկիրը սկսեց ամայանալ, հասարակ ժողովուրդը ցիր ու ցան եղավ և քաղաքի շրջանի տանուտերերը Թողին խալանի ու դրանագրի պատճառով իրենց անշարժ ու շարժական գույքն ու ընտանիքը և հեռացան...»[4]։

---

[3] Տե՛ս В. В. Бартольд, Персидская надпись на стене анийской мечети Мануче, СПб., 1911. Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 317—318։

[4] Տե՛ս Հ. Մանանդյան, հատ. Գ, էջ 318։

* * *

Զաքարյանների և հատկապես մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանում Հայաստանի ֆեոդալական հասարակության զարգացման բնորոշ կողմը պատրոնատի՝ հովանավորության սիստեմի մասսայական բնույթ ստանալն էր։ Ֆեոդալական հարաբերությունների այդ սիստեմը համընկնում էր նվաճող մոնղոլական քոչվոր ազնվականության շահերին և ապահովում էր նրանց տիրապետությունը։ Նրա զարգացումն իր հիերարխիկ կառուցվածքով թուլացնում էր կենտրոնական իշխանությունը և նպաստում ֆեոդալների մանավոր իշխանության ուժեղացմանը, սաստկացնելով գյուղացիության արտատնտեսական ճնշումը՝ կախվածությունը հողատերերից։

Տեղական ֆեոդալական իշխանությունները տնտեսապես թուլացնելու նպատակով մոնղոլ նվաճողների վարած քաղաքականությունը, իշխող դասակարգի ներկայացուցիչներին ստիպում էր հնարավոր բոլոր ուղիներով փրկել իրենց ունեցվածքը։ Այդ ուղիներից մեկը մասսայական բնույթ ստացած հողային այն նվիրատվություններն էին, որոնք այս շրջանում կատարվում էին հօգուտ արտոնություններ վայելող, հարկատվությունից ազատված եկեղեցիների ու վանքերի, հանգամանք, որը նշված պատմաշրջանում հանդիսացավ հայ եկեղեցու տնտեսական հզորացման աղբյուրներից մեկը։ Մյուս միջոցը հովանավորության պատրոնատի սիստեմն էր։ Սակայն մոնղոլ իշխողների հարկերն ու տուրքերը և ամեն կարգի շահատակությունները այնքան էին ծանրացել, որ տեղական ֆեոդալները հարկադրված էին վաճառել իրենց հողերը, իսկ հողի գինն այնքան էր ընկել, որ ժամանակակիցներն ասում էին. «...Հայրենիքն աժան էր ու ոսկին թանկ...»[5]։

* * *

Իկթադարական հողատիրությունը լայն տարածում ստացավ հատկապես XIV դարի սկզբին՝ Ղազան խանի տիրապետության օրոք։ Զինվորական ավատային պայմանական հողատիրության այս ձևը սովորաբար անցնում էր հորից որդուն և սերնդից-սերունդ։ Բայց եթե «իկթա»-ի տիրոջ մահից հետո նրա ընտանիքում զինվորական ծառայության գծով համապատասխան փոխարինող չէր լինում, ապա այն տրվում էր ուրիշին։

«Իկթա» հողատիրությունը «Մեծ Հայք» վիլայեթում ամենատարածված ձևերից մեկն է եղել։ Հողատիրության իկթադարական սիստեմը մոնղոլական շրջանում դուրս է գալիս զինվորական նեղ սահմանափակ արտոնության շրջանակներից և ստանում է ավելի լայն բնույթ։

Իրենց զինվորական ծառայության դիմաց խանից հողային տարածություններ ստանալով, որպես «իկթա» ամիրները՝ բանակի միավորումների հրամանատարները, հաստատված կարգի հիման վրա, հողերը բաժանում էին ինչպես քոչվոր ազնվականությանը, այնպես և շարքային զինվորներին։

---

5 «Վիմական տարեգիր», էջ 76։

Իկթադարը ոչ միայն հողաբաժին էր ստանում, այլև օգտվում էր ջրից, ոռոգման առուներից, արոտավայրերից և տվյալ տեղամասի բնակչությունից գանձում էր հավելյալ արդյունք[6]։

Մինչև XIV դարի 50-ական թվականները արգելված էր «իկթա»-ներն օտարել, վաճառել կամ նվիրել։ Իկթադարի պարտականությունն էր՝ ստացած հողաբաժնի դիմաց տարեկան պարտադիր կարգով պետությանը հանձնել 50 թավրիզյան ման հացահատիկ[7]։

Իկթադարը այդ 50 ման հացահատիկից բացի, պետական գանձարանին ուրիշ ոչ մի հարկ չէր տալիս։

Գյուղացիության վիճակը թե իկթային, թե պետական և թե արքունական տան պատկանող տիրույթներում նույնն էր։

Իկթային հողատիրության ձևի պայմաններում հիմնական արտադրողների՝ գյուղացիության իրավական վիճակը բավականին ծանր էր, և գյուղացին ենթակա էր ավատառուների կամայականություններին։ Ղազան խանի մի հրովարտակում ասված է, թե զինվորականներին արգելվում է ռայաթներին հարկադրել կատարելու այնպիսի աշխատանքներ, որոնք չեն մտնում նրանց պարտականությունների մեջ։

Հաճախ ավատառուները «իկթային» հողերում չէին ապրում, այլ շարունակում էին քոչել իրենց ցեղերի հետ՝ «իկթային» գյուղերից, շրջաններից ստանալով իրենց հասանելիք եկամուտները։ Նման պայմաններում իկթադարը իր տիրույթներում արտադրողական ուժերը զարգացնելու մտահոգություն չուներ։

XIV դարի 50-ական թվականներին «իկթային» հողատիրության զարգացումը հանգեցրել էր իկթադարի իրավունքների ընդլայնմանը։

Իկթադարը տվյալ տիրույթի լիիրավ տիրակալ է դառնում գանձահասույթային և վարչական արտոնությունների (իմունիտետային) իրավունքով։ Իկթադարը պայմանական հողատիրոջից աստիճանաբար վեր է ածվում ժառանգական հողատեր ֆեոդալի, ունենալով հող և նրան ամրացված աշխատող ձեռք՝ գյուղացի, ռայաթ։ Այդ էր պատճառը, որ XIV դարի կեսերից հողային սեփականության «իկթային» ձևը փոխարինվեց «Սոյուրղալ» հողային սեփականությամբ, որը համդիսացավ «իկթային» հողատիրության ամենազարգացած ձևը։

* * *

Հայաստանի հարավային և արևմտյան նահանգներում տեղական նախկին ֆեոդալների մի մասը, մոնղոլական քոչվոր ազնվականության, առևտրավաշխառուական կապիտալի և պետական պաշտոնեության ներկայացուցիչներն ունեցել են ընդարձակ տարածություններ՝ մուլքադարական սեփականատիրական իրավունքով։ Ինչպես մուլքադարական, այնպես էլ վակֆային հողատիրության ձևերը Հայաստանում առաջացել էին ավելի վաղ, իսկ այժմ ավելի ընդարձակվեցին։

---

6 Տե՛ս Рашид ад-Дин, т. III, стр. 282.

7 Տե՛ս նույն տեղում, էջ 284, 50 մանը հավասար է 147 կգ։

Նշված նահանգներում զարգացավ նաև «վակֆային» հողատիրությունը, որը աճում էր մահմեդական զանգվածների բնակեցմանը զուգընթաց։ Վակֆային և մուլքադարական հողերի վրա ապրող գյուղացիության սոցիալ-իրավական և տնտեսական վիճակը՝ մյուս կարգի հողերի վրա բնակվող գյուղացիների հետ համեմատած, ավելի տանելի էր։ Ֆեոդալական ռենտան ճշգրտապես ապահովելու և աճեցնելու ձգտումը սեփականատիրոջն ստիպում էր հոգ տանել իր տիրույթի բարեկեցության համար, հնարավորության սահմաններում հպատակներին զերծ պահել պետական պաշտոնեության հալածանքներից, ուժեղացնելով իր իսկ տնտեսական և արտատնտեսական ճնշումն ու շահագործումը։

## 2. ՀԱՐԿԵՐՆ ՈՒ ՀԱՐԿԱՀԱՆՄԱՆ ՁԵՎԵՐԸ

Մոնղոլական խաներին, խանորդիներին, նրանց կանանց, արքունիքների հոգևորականությանը, ամբողջ պաշտոնեությանը, բանակին՝ «հեքիաթային այդ բոլոր արարածներին»[8] պահելու համար անհրաժեշտ էին նյութական հսկայական միջոցներ, որը նրանք քամում էին նվաճված երկրներից ու ժողովուրդներից՝ հարկերի, տուրքերի ձևով և այլ եղանակներով։

Մոնղոլները Հայաստանում, ինչպես և ամենուր կիրառել են ետընթաց հարկադրման սկզբունքը, այսինքն, երբ հարկերը մեծ մասամբ ընկնում են նվազ եկամուտների վրա։ Հարկադրման միավորը Իրանում և Անդրկովկասում անհատն էր, գլուխը, մինչդեռ Ռուսաստանում՝ Չինաստանի օրինակով՝ ծուխն էր, ընտանիքը։ Հարկման չափը ընդհանուր է եղել արական սեռի 11—60 տարեկան բոլոր բնակիչների համար[9]։ Հարկման օբյեկտները, որպես հարկադրման առանձին բնագավառներ, ձևավորվեցին աշխարհագրի ժամանակ միայն։ Մինչ այդ, ինչպես արդեն ասվել է, գանձվում էր շարժական ու անշարժ գույքի և նրանցից ստացվող եկամուտների 1/10 մասը, իսկ հաճախ ավելին։

Բացի 1254 թ. ընդհանուր աշխարհագրից, Հայաստանում մասնակի աշխարհագիր-մարդահամար է անցկացվել նաև 1275[10] և 1314[11] թվականներին։

Մինչև Ղազան խանի վերափոխումները, նվաճված երկրներում չկար միասնական հարկադրման չափ, ինչպես և միասնական չափ ու կշիռ։ Պետության տարբեր շրջաններում չափ ու կշռի տարբեր միավորների գործադրությունը լայն ասպարեզ էր բացում մոնղոլական պաշտոնեության կամայականությունների ու չարաշահումների համար։

---

[8] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. V (перв. изд.), стр. 215. Մարկո Պոլոն վկայում է, թե մեծ խանի ամեն մի կինը (իսկ նրանց թիվը բավական շատ էր) իր պալատում պահում էր 10 հազար մարդ (տե՛ս նշվ. աշխ., էջ 116)։ Ռուբրուքը ասում է. Բաթուն ուներ 26 կին, նրանցից յուրաքանչյուրի հարստությունը տեղափոխելու համար անհրաժեշտ էր 200 սայլ (տե՛ս նշվ. աշխ., էջ 22)։

[9] Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 362։

[10] Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. 1, էջ 44, Մխ. Այրիվանեցի, էջ 68։

[11] Տե՛ս «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 104։

*Գանձվում էին ինչպես ուղղակի, այնպես էլ անուղղակի բազմաթիվ հարկեր։ Որպես ուղղակի հարկեր մոնղոլները գանձում էին հողահարկ, գլխահարկ, գույքային հարկ, անասնահարկ և այլն։*

*Գանձվող անուղղակի հարկերը մի քանի անգամ գերազանցել են ուղղակի հարկերին։ Մոտավոր հաշիվներով, մոնղոլ նվաճողները Հայաստանից գանձել են 15—16 անուն հարկ և տուրք։*

*Հարկման են ենթարկվել մարդիկ, անասունները, հողը, այգին, ջրաղացները, ձովերը, լճերը, հանքերը, արհեստային արտադրանքը, առ ու ծախքի համված ամեն տեսակի շարժական ու անշարժ ունեցվածքը*[12]*։*

*Հայաստանի այն նահանգներում, որտեղ գոյատևել էին հայկական ֆեոդալական իշխանություններ, պահպանվել էին և իշխաններին ու եկեղեցուն տրվող տեղական հարկերն ու տուրքերը (հնգեկ, շարիատ, չար, խալա, եկեղեցական՝ տասանորդը, հասը, ինչպես և կոռն ու բեկարը)։*

*Մյուս նահանգներում, որոնք մինչ նվաճումները գտնվում էին սելջուկթուրքական ամիրայությունների տիրապետության տակ, և նվաճումներից հետո անցել էին դիվանի կամ մոնղոլ քոչվոր ազնվականության տնօրինության ներքո, գործածության մեջ էին մտել հիմնականում մոնղոլական հարկային տերմինները՝ իրենց հիմքում ունենալով սելջուկյան-իրանական տարրը։*

*Իլխանության ստեղծումից հետո՝ մինչև Ղազան խանը, նվաճողների հարկային քաղաքականության մեջ փոփոխություններ համարյա տեղի չունեցան։*

* * *

Հողային հարկ: *Գրեթե բոլոր մասնագետները մոնղոլական շրջանի հողային հարկը համարում են «խարաջը», որը հիմնականում ճիշտ է, սակայն, ըստ հայկական աղբյուրների, Զաքարյան ֆեոդալական իշխանության սահմաններում հողային հարկն այդ անունով հայտնի չէ։ «Խարաջին» այստեղ փոխարինել են սկզբում «մալը» և որոշ ժամանակ հետո «խալան» կամ «ղալան» կոչվող հարկը։*

*«Մալը» հետագայում փոխակերպության է ենթարկվում, ստանալով ավելի լայն իմաստ և ընկալվում որպես գույքային հարկ։ «Խալան» մոնղոլական նվաճումների և նրանցից անմիջապես հետո ընկած ժամանակաշրջանում հայկական աղբյուրներում գործ է ածվել նվաճված ժողովուրդների աշխարհազորային պարտավորության իմաստով։ Հետագայում, երբ արտաքին նվաճումները հիմնականում դադարել էին, այդ պարտավորությունը որոշ երկրներում փոխարինվեց հատուկ հարկով։ «Մեծ Հայքում» այն երևան էր եկել «բեդել» անվամբ։ Ավատատիրական տիրույթներում, որտեղ պահպանվել էին տեղական իշխանությունները, որոնց ռազմական ուժերը, հատկապես հեծելազորային միավորումները անհրաժեշտ էին նվաճողներին՝ իրենց արտաքին և ներքին թշնամիների դեմ, այդ պարտավորությունը արտահայտվեց «հեծել», ապա և «խալան» բառերով։*

12 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 362—363, Մաղաքիա Աբեղա, էջ 10, 20։

*Ռենտա-հարկի չափը հողամասերից և այգիներից երբեմն շատ մեծ է եղել՝ հասնելով 60—70 տոկոսի*[13]։ *Այն գանձվում էր և մթերքով և դրամով։*

*Հողային հարկի հետ կապված էր նաև ջրի համար գանձվող հարկը, որը կոչվում էր «ավգան»։*

Գլխահարկ: *Հայաստանում գանձվող գլխահարկը կոչվել է «ղփչուր»։*

*«Ղփչուրը» վերաբերել է և՛ մարդկանց, և՛ անասուններին ու գանձվել է ըստ գլխաթվի։ Մի աղբյուրում ասված է չլված հարկ էին պահանջում «ճշտիւ և անխնայապէս ըստ գլխոյ արանց և անասնոց...»*[14]։

*Գլխահարկ գանձվել է արական սեռի 11—60 տարեկան բնակիչներից։ Այդ հարկից ազատված են եղել կանայք և եկեղեցականները*[15]։

*Գլխահարկի չափը անորոշ և փոփոխական է եղել, որը կառավարիչների և նրանց պաշտոնեության համար բացել է չարաշահումների լայն հնարավորություններ և դրա հետևանքով «ղփչուրը» բնակչության համար ամենածանր հարկն էր և տնտեսական քայքայման հիմնական պատճառը։ Ռաշիդ ադ-Դինը վկայում է, որ տեղերում կառավարիչները զանազան պատրվակներով տարեկան 10—30 անգամ «ղփչուր» էին գանձում բնակչությունից*[16]։ *Այն գանձվում էր հիմնականում դրամով։*

*«Ղփչուրը» արտահայտել է և անասնահարկի իմաստ։ Անասուններից վերցվել է 100/1 հաշվով*[17]։

*Վիմական արձանագրությունների առանձին տեղեկություններից երևում է, որ Հայաստանի պայմաններում անասնահարկը գանձվել է տարբերակված ձևով—ըստ անասունների տեսակների, օրինակ, ասվում է. «...Թողի զեզինն հազրն, ղկովին համբրելէն, զոչխարին աղլհակն...»*[18]։

*Քրիստոնյա հպատակները, ինչպես ասվել է, վճարում էին և դավանանքի հարկ, որը կոչվել է սկզբում «խարաջ», իսկ հետագայում՝ «ջիզիա»։*

*Մոնղոլները նվաճված ժողովուրդներից՝ բանակի պահպանման համար գանձել են հատուկ հարկ, որ կոչվել է «թաղար»։*

*«Թաղարի» գանձման չափը կայուն ու որոշակի չի եղել և այդ հարկը նույնպես չարաշահումների ու կողոպուտի միջոց է ծառայել։ Բացի այն, որ պատերազմների ժամանակ «թաղարի» չափը հաճախ եռապատկվում, քառապատկվում էր, տվյալ երկրամասի բնակչությունը, որտեղ գտնվում էր բանակը, պարտավոր էր նաև ապահովել նրա պահանջները։ Թաղարը հիմնականում բնահարկ էր։ Կիրակոս Գանձակեցին հաղորդում է. «Հրաման տվեց Հուլավուն պահանջելու նաև հարկը, որ թաղար էին անվանում. յուրաքանչյուր գլխից, որ մտցված էր արքունի գրի մեջ՝ պահանջում էին 100 լիտր ցորեն, հիսուն լիտր գինի, երկու լիտր բրինձ ու ծնծատ, երեք տոպրակ, երկու չվան, մի սպիտակ, մի նետ, մի նալ ու բացի դրանից նաև այլ կաշառքներ. և քսան*

---

13 *Տե՛ս Рашид ад-Дин,* т. III, стр. 281.

14 *«Ժամանակագրութիւն Միխայէլի Ասորւոյ» (Յաւելուած), էջ 617—618։* Վարդան, *էջ 195։* Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), *էջ 22։*

15 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 363։*

16 *Տե՛ս Рашид ад-Дин,* т. III, стр. 283.

17 *Տե՛ս նույն տեղում, էջ 281—283։*

18 Ղ. Ալիշան, *Շիրակ, էջ 11, 62—63։ «Վիմական տարեգիր», էջ 160, 226, 247, 250։*

անասունից՝ մի անասուն ու 20 սպիտակ, ով ոչինչ չուներ՝ պահանջվածի փոխարեն տղաներին ու աղջիկներին էին վերցնում։ Եվ այսպես նեղվեց ու տառապեց ամբողջ երկիրը»[19]։

**Եամական (յամական) պարտավորություն:** *Մոնղոլական փոստային կայանների (եամ-յամ) երթևեկող պաշտոնեության, որոնք ընդհանուր անունով կոչվում էին էլչիներ, և սուրհանդակների հանդեպ նվաճված ժողովուրդներն ունեին որոշակի պարտավորություններ։ Այդ պարտավորությունները հայկական միջավայրում կոչվել էին «տղղու»[20]։*

*Մոնղոլական երթևեկող պաշտոնյաներին՝ էլչիներին, տրվում էին հատուկ փայիզաներ (թաթարական պատվանշան-թագավորական հրամանագիր-արտոնագիր, որը գրվում էր ոսկուց, արծաթից, երկաթից կամ փայտից պատրաստված թղաչափ տախտակի վրա)։ Այս փայիզաներով նրանց իրավունք էր տրվում ամբողջ ճանապարհորդության ընթացքում իրենց և իրենց շքախմբի համար բնակչությունից պահանջել ուտելիք, գիշերելու ամեն տեսակի հարմարություններ, փոխադրական միջոցներ և, ընդհանրապես, ինչ որ նրանք անհրաժեշտ կհամարեին։ Պատահական չէ, որ ժամանակակիցը գրում է. «...սկսան հարկապահանջութեամբ և երթևեկութեամբ... նեղել զնոսա»[21] (հայ իշխաններին)։*

*«Տզղուն» իր մեջ պարունակել է մի շարք հարկային պարտավորություններ, որոնք Իրանում, Ատրպատականում և «Մեծ Հայքում» կրել են տարբեր անուններ, իսկ իրենց գոյությունը պահպանած հայկական ֆեոդալական իշխանություններում և Կիլիկյան հայկական թագավորությունում նրանք արտահայտվել են միայն «տզղու» հասկացությամբ։ «Տզղուն» իր մեջ միավորել է «ուլուֆե»[22], «ալաֆե»[23], «ուլաղ»[24]; «նուզլ»—«նուզուլ»[25], «յամ»[26] և «սուսուն»[27] հարկային հասկացությունները։*

*Մոնղոլական տիրապետության շրջանում քաղաքներում գանձվող բոլոր տեսակի հարկերը հավաքական անունով կոչվել են «տամղա»։ «Տամղան» սկզբնական շրջանում փոխարինել է տեղական «բաժին», հետագայում ավելի լայն իմաստ է ստացել՝ ընդհանուր քաղաքային հարկի, առևտրական, արդյունագործական և արհեստագործական ձեռնարկություններից գանձվող հարկի իմաստ, իսկ «բաժը» գործ է ածվել լոկ միայն տեղական առևտրական մաքսի իմաստով և գանձվել է քաղաքների տեր հանդիսացող տեղական ֆեո-*

---

19 Կիրակոս Գանձակեցի, *էջ 374—375։ Ըստ Հ. Մանանդյանի 100 լիտրը = 40 կգ-ի, 50 լիտրը՝ այժմյան 20 լիտրի, 2 լիտր բրինձը՝ 2 ֆունտի. տե՛ս «Քննական տեսություն», հատ. Գ, էջ 277։*

20 *Տե՛ս* Մաղաքիա Աբեղա, *էջ 10, 24։*

21 Կիրակոս Գանձակեցի, *էջ 263։*

22 *Սննդամթերք։*

23 *Անասնակեր։*

24 *Ուլաղ — փոստային ձիեր, որոնք որպես հարկային պարտավորություն բնակչությունը տալիս էր երթևեկող պաշտոնեությանը։*

25 *Նուզ — նուզուլ — օթևան, պաշտոնյաներին օթևանով ապահովելու պարտավորությունը։*

26 *Փոստային կայան։*

27 *Օրապահիկ, բաժին, կեր, դեսպանների խմիչքի (կաթ) հարկ։*

դալների օգտին։ Ինչպես «բաժը», այնպես և «տամղան» անուղղակի հարկեր էին։ «Տամղա» գանձողները կոչվել են «տամղաչիներ», «բաժ» գանձողները՝ «բաժրարներ»։

Աղբյուրներից հայտնի են տարբեր անուններ կրող այլ հարկեր ևս, որոնք գանձվել են թե գյուղի և թե քաղաքի բնակիչներից։ Անիում պահպանված արձանագրություններից երբեմն հիշատակվում է «դռնագիր»։ Այն գանձվում էր քաղաքի դռների մոտ, հիմնականում քաղաքի շրջակա բնակավայրերից քաղաք բերվող մթերքներից։ Կարելի է ենթադրել, որ այն «բաժի» մի կոնկրետ ձևն է եղել։ «Բաժը» ունեցել է մի շարք կոնկրետ արտահայտություններ՝ «ապուռիշի» (իշաբեռ մթերքից գանձվող հարկ), «մրուր» և «ծուծ» (անցահարկ), «կապիճք» (շալակով փոխադրված բեռից վերցվող հարկ) և այլն։

Մոնղոլական դարաշրջանում քաղաքների և գյուղերի պաշտոնյանները շահնաները, ամիրաները, մութհասիբները, ձեռնավորներն իրենց օգտին նույնպես գանձում էին հատուկ տուրք։ Սրանք դարձյալ անուղղակի հարկեր էին, որոնց չափը հայտնի չէ։ Մուհթասիբներին տրվող հարկի մասին մեկ վկայություն է պահպանվել միայն, ըստ որի հավաքված յուրաքանչյուր 1000 հարկային գումարից գանձվում էր 20 դինարի չափով[28]։

Անուղղակի հարկերից էր նաև «նեմերին»։ Այն արտակարգ տուրք էր, որ գանձվում էր հատկապես բանակի պահպանման համար։

Հարկադրական կարգ էր սահմանված, որ քաղաքացիներն ու գյուղացիները պետք է ձմռանը կամ գարնանը պարտադիր կարգով գնեին պահեստներում կուտակված և փչացող մթերքները, մասնավորապես հացահատիկը՝ շուկայականից ավելի թանկ գներով, իսկ կալին՝ շուկայականից ավելի ցածր գներով պետությանը և տեղական ֆեոդալներին վաճառեին հացահատիկ կամ այլ մթերքներ։ Դա հարկի ձև էր ստացել և կոչվում էր «թարհ»։

Ջրաղացից և նման հասութաբեր հաստատություններից տուրքը գանձվում էր ամիս առ ամիս և կոչվում էր «մահկանէ»։

* * *

Մոնղոլական պատմաշրջանի հայկական աղբյուրներում հանդիպում են նաև հարկ նշանակող մի քանի այլ բառեր, որոնց իմաստը պարզել առայժմ հնարավոր չէ։ Այդպիսի տերմինների շարքին են պատկանում Անիի անթվական արձանագրության մեջ հիշված «ախսրթամար», Բջնիի անթվական արձանագրության մեջ «սայլի սպիտակ», Օշականի՝ 1295 թ. արձանագրության մեջ՝ «ղեսարա», Քանաքեռի 1266 թ. արձանագրության մեջ՝ «դահիակ»[29] հարկանունները։

---

28 Տե՛ս *И. П. Петрушевский*, Земледелие и аграрные отношения в Иране XIII—XIV вв., стр. 39.

29 Ի. Պ. Պետրուշևսկին նշում է, որ «դահիակը» արաբական «ուշր» բառի պարսկական համապատասխան բառն է, որ նշանակում է «տասանորդ», նույն «խարաջ» հողահարկն է, միայն փոքր չափով և այն Իրանում գանձվել է մոնղոլներից շատ առաջ։ Տե՛ս հեղինակի նշվ. աշխ., էջ 377—378։

ԳԼՈՒԽ ԵՐԵՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՆԿՈՒՄԸ

## 1. ՔՈՉՎՈՐԱԿԱՆ ՖԵՈԴԱԼԱԿԱՆ ՏՆՏԵՍԱՁԵՎԻ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ։ ԱՇԽԱՏԱՎՈՐ ԺՈՂՈՎՐԴԻ ՎԻՃԱԿԸ

*Մոնղոլական քոչվորական ֆեոդալական տնտեսաձևի տիրապետությունը ճակատագրական նշանակություն է ունեցել Առաջավոր Ասիայի երկրների, այդ թվում և Հայաստանի տնտեսական ու քաղաքական կյանքի համար, խիստ բացասաբար ազդելով նրանց պատմական զարգացման ընթացքի վրա։*

*Երկրագործական զարգացած ու հին կուլտուրա ունեցող Հայաստանը մոնղոլական նվաճումների նախօրյակին ապրում էր ֆեոդալական հարաբերությունների ծաղկման փուլը. ստեղծված բարենպաստ պայմաններում երկրի տնտեսությունը բազմակողմանիորեն զարգանում ու վերելք էր ապրում։ Քոչվորական ֆեոդալական տնտեսաձևի տիրապետության բացասական ազդեցությունն ու հետևանքները Հայաստանի պայմաններում ավելի խիստ ու ցցուն էին, քանի որ այստեղ զարգացած ֆեոդալական հարաբերությունների փոխարեն նվաճողները արմատավորեցին կիսատոհմատիրական-կիսաֆեոդալական նախնական հարաբերություններ։*

*«...Նվաճող ժողովուրդը նվաճվածների վրա փաթաթում է արտադրության այն եղանակը, որ հատուկ է իրեն...»[1],— գրել է Կ. Մարքսը։*

*Իրենց արտադրաեղանակին համապատասխան, մոնղոլները Միջին և Առաջավոր Ասիայի, այդ թվում և Հայաստանի զգալի մասը վերածեցին արոտավայրերի, հազարամյակների պատմություն ունեցող երկրագործական զարգացած երկրների դաշտավայրերը գրեթե անմարդաբնակ դարձան—ամայացան։*

*«Մոնղոլները,— գրում է Կ. Մարքսը,— վարվում էին իրենց արտադրության եղանակի համապատասխան, երբ ամայացնում էին Ռուսաստանը. անասնապահության գլխավոր պայմանն են մեծ անմարդաբնակ տարածությունները»[2]։*

---

1 Կ. Մարքս, *Քաղաքատնտեսության քննադատության շուրջը*, Երևան, 1948, էջ 251։
2 Նույն տեղում, էջ 251—252։

Եթե նստակյաց ժողովուրդների ֆեոդալական դասակարգի եկամուտների աղբյուրը՝ ֆեոդալական ռենտան, ապահովում էր զարգացած հողագործությունը, ապա քոչվորական տնտեսաձևում նրա հիմքը անասնապահությունն էր և հող-արոտավայրը։

Մոնղոլա-իրանական պետության մեջ նվաճողների վարած սոցիալ-տնտեսական քաղաքականության ելակետը հիմնականում քոչվորական ֆեոդալական հարաբերություններն էին՝ հենված քոչվորական տնտեսաձևի վրա։

Նվաճելով Հայաստանը, նրանք այն բաժանեցին զինվորական առաջնորդների՝ ռազմա-քոչվորական ազնվականության միջև։ Ցեղային-ռազմական միավորները, իրենց մեծաքանակ անասնահոտերի գոյությունը պահպանելու համար, զինվորական ծառայության դիմաց ստացած մշակվող ընդարձակ տարածություններն անմիջապես վեր էին ածում արոտավայրերի։ Արագածի լանջերը, Կարինի, Վանի, Բերկրիի, Բիթլիսի և մի շարք այլ նահանգների բարձրադիր վայրերը մոնղոլ նվաճողների ամառանոցներն (յայլաղներն) էին, իսկ Վասպուրականի, Խարբերդի, մանավանդ Արարատյան դաշտավայրերը վերածվեցին ձմեռային արոտավայրերի և այստեղի ծաղկյալ այգեստաններն ու արգավանդ դաշտերը ամայացան։

Լայնածավալ հողային տարածությունները քոչվոր ազնվականությանն անհրաժեշտ էին, իհարկե, ոչ միայն անասնապահական խոշոր տնտեսություններն ընդարձակ արոտներով ապահովելու, ամառային և ձմեռային արոտավայրեր ունենալու համար, այլև այնտեղ բնակվող նստակյաց ժողովուրդներից բազմաթիվ ու բազմատեսակ հարկեր ու տուրքեր էին գանձում։

Նվաճումներից հետո մոնղոլները զավթեցին տեղական ֆեոդալ իշխողների հողային տարածությունների զգալի մասը։ Սկզբում նրանք պահպանեցին իրենց ծառայության մեջ գտնվող խոշոր իշխանների հողային տիրույթները, սակայն հետագայում, ոչ միայն հայ աշխատավորության, այլև իշխանների հողազրկումը ընդհանուր բնույթ ստացավ և գրեթե իր ավարտին հասավ XIV դարում։

Նստակյաց տեղական ժողովուրդների հողերի հափշտակումը տեղի էր ունենում ոչ միայն քոչվորական ազնվականության, այլև շարքային զինվորների կողմից։ Ռաշիդ ադ-Դինը նշում է, որ XIII դարի վերջերին և XIV դ. սկզբներին շարքային քոչվոր զինվորները մեծ ձգտում ունեին հողամշակմամբ զբաղվելու, ուստի այդ ժամանակաշրջանում հողերի բռնի զավթումը ընդհանուր երևույթ էր դարձել[3]։

Մոնղոլ նվաճողների ագրարային քաղաքականությունից XIII դարում օգտվեցին նաև տեղական ֆեոդալներից ոմանք, որոնք կարողացել էին անմիջապես թափանցել նվաճողների հարկային և վարչական շրջանակները։ Նրանք կարճ ժամանակում տեր դարձան խոշոր նյութական միջոցների և ընդարձակ հողային տարածությունների։ Բավական տիպական են այդ տեսակետից ծագումով պարսիկ սահիբ դիվանի Ջուվեյնիին, որի կալվածներից տարեկան մուտքը կազմում էր 360 թուման (2700000 ռուբլի), օրական եկամու-

---

[3] Տե՛ս *Рашид ад-Дин*, т. III, стр. 281—282, 309.

րը՝ 1 թուման (7,500 ռուբլի)։ Ռաշիդ ադ-Դինին պատկանող հողային տարածությունները նույնպես շատ ընդարձակ էին և կազմում էին 12,770 ֆադդան (մեկ ֆադդանը հավասար է 8—12 հեկտարի)։ Ըստ աղբյուրների Հայաստանի մի քանի շրջանները նույնպես կազմել են նշված սահիբների սեփականությունը։

Նվաճողների ագրարային և հարկային քաղաքականությունից նկատելիորեն օգտվեցին նաև Հայաստանի այդ ժամանակի առևտրա-վաշխառուական կապիտալի խոշոր ներկայացուցիչները, որոնք իրենց շահույթների հաշվին գնման ճանապարհով ձեռք էին բերում ընդարձակ հողային տարածություններ և այլ անշարժ ունեցվածք։

Հայկական միջավայրում այս իմաստով բնորոշ են Սահմադինը, Ումեկը, Շնորհավորը և ուրիշներ։

Ինչպես նշվեց, Սահմադինը փողի և Հուլավուի հովանավորության միջոցով տեր էր դարձել Մրենին, Երևանին, Օշականին և շատ ուրիշ վայրերի։ Սահիբ դիվան Ջուվեյնին, Ումեկը, Սահմադինը և ուրիշներ ժամանակի կրեսոսներն էին Հայաստանում և Իրանում։ Չնայած նշանակալից այն դերին, որ նրանց տնտեսության մեջ կատարում էր փողն ու շրջանառությունը, սակայն նրանց հարստության կայուն երաշխիքը հողն էր[4]։

Հայաստանի հարավային և արևմտյան առանձին շրջաններ մոնղոլ նվաճողները հարմարեցրել էին իրենց արտադրաեղանակին, հողամշակումը ամբողջապես իր տեղը զիջել էր խոշոր չափերի հասնող անասնապահական տնտեսություններին, այգիներն ու ցանքատարածությունները վեր էին ածվել արոտավայրերի։ Մոնղոլական և թուրքմենական քոչվորական զանգվածները բնակություն էին հաստատել Երզնկայի (Երզնջանի), Բաբերդի (Բայբուրդի) և Սըվազի (Սեբաստիայի) միջև ընկած տարածություններում, Վանի, Դիարբեքիրի շրջաններում և շարունակում էին զբաղվել անասնապահությամբ։ Ալադաղը և նրա շրջակայքը հանդիսանում էին իլխանների ամառանոցավայրը և արքունի կալվածքը։ Հայաստանի որոշ շրջաններ վեր էին ածվել մոնղոլական բանակատեղիների։

Արքայորդի Թագուդարի բաժնեկալվածն էր «Գյուրջիստանի վիլայեթի» մի մասը, այդ թվում և Գեղարքունիքը։

Քոչվորական ֆեոդալական տնտեսաձևի գերիշխման պայմաններում հողամշակման գործը չէր շահագրգռում ոչ քոչվոր ազնվականությանը՝ հողի տիրոջը և ոչ էլ հիմնական արտադրողին՝ գյուղացուն, քանի որ վերջինիս մնում էր իր արտադրածի փոքր մասը։

Քոչվոր ազնվականության համար անասնահոտերի քանակի ավելացման ամենահիմնական աղբյուրը կողոպտիչ պատերազմներն էին, նվաճված ժողովուրդների անասունների հափշտակումը, որոնք ամենակործանարար հետևանքներ ունեցան նստակյաց ժողովուրդների տնտեսական կյանքի վրա։ Իրենց արշավանքների և տիրապետության շրջանում մոնղոլների կողմից Հայաստանում անասունների զանգվածային հափշտակումների, ամեն

4 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք առաջին, էջ 217։ Բ. Ն. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, գիրք 2, էջ 136։

կարգի ապօրինությունների և բռնությունների, ինչպես և հողագործությանը հասցրած վնասների մասին առատ տեղեկություններ են պահպանել հայկական աղբյուրները։

Խոսելով Հայաստանի հարավ-արևմտյան շրջաններում Բաչուի ծավալած ռազմական գործողությունների մասին, պատմիչը նշում է. «Ապա սկսեցին ասպատակ սփռել զանազան կողմերը, ավար վերցնել և քանդել բազում գավառներ և հավաքել ոսկի և արծաթ, և մեծագին հանդերձանք, և ուղտեր, ձիեր, ջորիներ, և անթիվ անասուններ»[5]։

Անասունների մասսայական ավարառությունն ու հափշտակումները արշավանքների շրջանում չսահմանափակվեցին, այլ շարունակվեցին և հետագայում՝ մոնղոլների տիրապետության ամբողջ ժամանակաշրջանում ու սիստեմատիկ բնույթ կրեցին[6]։

Զրկվելով հիմնական քաշող ուժից, մարդիկ իրենց գոյությունը պահպանելու համար ստիպված էին դիմել նախնական միջոցներին. բահն ու բրիչը փոխարինեցին արորին ու գութանին։ Եթե դրան ավելացնենք մոնղոլների բացասական վերաբերմունքը հողամշակման նկատմամբ, ապա պարզ կլինի նվաճված երկրների վիճակը։

Գյուղացիության գերակշռող մասը, հասկանալի է, ի վիճակի չէր քաշող ուժ ձեռք բերել (զույգ եզի արժեքը կազմել է 120—150 դինար), սերմ և անհրաժեշտ գյուղատնտեսական գործիքներ ունենալ։ Հողազրկման ուժեղ ընթացքը մի կողմից, և դաշտային աշխատանքների համար անհրաժեշտ միջոցներից զուրկ լինելը՝ մյուս կողմից, խթանում էին վարձկանության սիստեմի լայն տարածմանը։

Նստակյաց հողագործական բնակչության համար կործանարար հետևանքներ էին ունենում նվաճողների՝ հաճախակի վարած պատերազմները, մանավանդ, երբ դրանք տեղի էին ունենում ամառային ամիսներին, գյուղատնտեսական աշխատանքների ամենաեռուն շրջանում։ Ջարմաղանի հորդաների ասպատակություններից հետո հայ ժողովրդի համար ստեղծված անտանելի ծանր վիճակը Կիրակոս Գանձակեցին հետևյալ ձևով է պատկերում. «...քանի որ ժամանակն ամառային էր, երբ ասպատակեցին նրանք մեր երկիրը, ցանքսը դեռևս հնձված չէր կամ շտեմարանները փոխադրված, և նրանք գալով ուղտերով և անասուններով, կերան և ոտնատակ տվեցին ամեն ինչ... մարդիկ, որ փրկվել էին սրից, մեռկ էին և առանց ուտելիքի, և իրենց կարիքները բավարարում էին ընկած և կոխոտած հասկերից... որովհետև չունեին եզներ, որ հողը մշակեին և ոչ սերմեր, որ ցանեին»[7]։ Պակաս վնաս չէին պատճառում և զինվորական միավորումների հաճախակի տեղաշարժերը, որոնք ուր էլ որ գնում էին, շարժվում էին իրենց ընտանիքներով, ամբողջ ունեցվածքով, մեծաքանակ անասնահոտերով, քոչվորական ողջ տնտեսությամբ։

---

5 Կիրակոս Գանձակեցի, էջ 283, տե՛ս և 241, 263—264։

6 Տե՛ս Մաղաքիա Աբեղա, էջ 49. «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 124։

7 Կիրակոս Գանձակեցի, էջ 261—262։

Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամանակ տեղաշարժվողները ոտնատակ էին տալիս ամեն ինչ, գյուղացիները զրկվում էին բերքը հավաքելու հնարավորությունից։

Համդալլահ Ղազվինին վկայում է, որ իր ժամանակին չէին գանձում պետությանը հասանելիք հարկագումարների կեսն անգամ, քանի որ ժողովուրդը չէր կարողանում հավաքել իր բերքը, պատճառը՝ ներքին անկարգություններն էին և զինվորական ջոկատների հաճախակի ասպատակությունները[8]։

Հայ ժողովրդի տնտեսական կյանքի համար նկատելիորեն ավերիչ հետևանքներ էր ունենում նաև մոնղոլ նվաճողների կազմակերպած և բավական մեծ չափերով անցկացվող որսորդությունը։ Երկուսից-երեք ամիս տևող, հսկայական տարածություններ ընդգրկող որսորդական գործողությունները փաստորեն ռազմական գործի ուսուցման, ռազմախաղերի ու ուժերի ստուգատեսին էին ծառայում։ Նման գործողությունները մոնղոլները հիմնականում ձեռնարկում էին աշնան վերջերին, երբ հողագործական շրջաններում անց էր կացվում աշնանացանը։

Որսին մասնակցած բանակի միավորումները ոտնատակ էին տալիս ցանած կամ ցանքին նախապատրաստած տարածությունները։ Իսկ որսին մասնակցող բանակի միավորումները որսի ամբողջ ժամանակաշրջանում սնվում էին ի հաշիվ տվյալ շրջանի բնակչության։ Որսորդության համար առանձնացված շրջանները վեր էին ածվում բանակի ձիերի արոտավայրերի։

Երկրի գյուղատնտեսությանը ծանր հարված էր հասցնում զարգացած ոռոգման ցանցի ավերումը, որի հետևանքով շատ շրջաններ ամայացան։ Մոնղոլները ավերեցին դարերի ընթացքում հսկայական ջանքերով ստեղծված ոռոգման սիստեմները Մանչուրիայից, Միջին Ասիայից սկսած մինչև Արաքսի, Տիգրիսի և Եփրատի ափերը։

Հաճախակի ասպատակությունները, ոռոգման սիստեմի անկումը մեծ վնաս հասցրին ոչ միայն դաշտավարությանը, այլև զարգացած այգեգործությանը և հատկապես խաղողագործությանը։

## 2. ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԱՆԿՈՒՄԸ

Հայաստանի, ինչպես և մյուս բոլոր նվաճված երկրների քայքայման ու անկման գլխավոր պատճառներից մեկն էլ, եթե ոչ ամենագլխավորը, հիմնական արտադրող ուժի թվի խիստ նվազումն էր. ժամանակակից հայկական բոլոր աղբյուրներն անխտիր նշում են մարդկային այն հսկայական կորուստների մասին, որոնք պատճառել էին մոնղոլ նվաճողները արշավանքների ու նվաճումների և հետագայում ամբողջ տիրապետության ժամանակաշրջանում։

«Այնտեղ կարելի էր տեսնել, թե ինչպես սրերը անխնա կոտորում էին տղամարդկանց և կանանց, երիտասարդներին և մանուկներին, ծերերին և պառավներին... Լցվեց երկիրը մեռելների դիակներով, և ոչ ոք չկար, որ թա-

8 Տե՛ս *В. Бартольд,* Персидская надпись, стр. 19—20.

ղեր նրանց»[9]։ «Այնքան ժողովուրդ, որքան նրանք (իմա՝ Չինգիզ խանը և նրա տոհմը) կոտորեցին,— գրում է Ռաշիդ ադ-Դինը,— ոչ ոք չի կոտորել»[10], «Ընդհանրապես եթե համեմատություն կատարվի, ապա կպարզվի, որ տիրույթների միայն մեկ տասներորդն է ծաղկյալ վիճակում, իսկ բոլոր մնացածները ամայության են մատնված»[11]։

Բնակչության գերեվարումը, սորկացումն ու սորկավաճառությունը բավական զանգվածային բնույթ էին ստացել և նույնպես ծանր հարված էին հասցնում երկրի արտադրողական ուժերին։ Ստրկական աշխատանքի շահագործման ընդարձակումը, հատկապես արհեստագործության բնագավառում և արհեստավորության գերեվարումը չափազանց ծանր էր անդրադառնում երկրի քաղաքների կյանքի և ներքին շուկայի վրա։ Ռաշիդ ադ-Դինը վկայում է, որ քայքայված և կիսաքայքայված քաղաքներում տասը տնից հինգը լքված, անբնակ էին, որ Եփրատի երկու կողմերում բազմաթիվ քաղաքներ քայքայված ու լքված էին[12]։ «...զաշխարհս մեր անապատացեալ, զքաղաքս բնակութիմ լեալ գազանաց»[13],— գրում է ժամանակակիցը։

Շատ քաղաքներ (Մուշ, Անի, Բաբերդ, Բերկրի, Խարբերդ) ավերակների, իսկ մնացածը գյուղերի էին վերածվել։ Նվաճված երկրներում մոնղոլների վարած քաղաքականությունը ոչ միայն հնարավորություն չտվեց վերականգնել ավերվածը, այլև ավերածություններից շատ թե քիչ զերծ մնացած շրջաններն էլ տնտեսական անկում ապրեցին։

Ելնելով պահպանված առանձին տեղեկություններից, հնարավոր է որոշ պատկերացում ստանալ, թե Հայաստանի գյուղական շրջանները ինչ չափով են տուժել մոնղոլների արշավանքներից ու տիրապետությունից։ Մինչև սելջուկների արշավանքը Սյունիքի գյուղերի քանակը կազմել է 1008[14], իսկ XIII դարի վերջում այդ թիվը կրճատվել է 331-ով, մնացել է 677 գյուղ[15]։

Ըստ Սամուել Անեցու, նախկին Արծրունյաց թագավորության բնակավայրերը կազմել են «ԴՌ (4000) գիւղ, Ը (8) քաղաք»[16] ըստ Մատթեոս Ուռհայեցու՝ ԴՌՆ (4400)[17], իսկ XIII դարի վերջին և XIV դարի սկզբին՝ ժամանակակիցներն անխտիր այդ երկրամասի առանձին շրջանների մասին խիստ ցավով են խոսում, որպես ամայացված տարածությունների, գազանների բընակավայրերի[18]։

Երկրի արտադրողական ուժերին զգալի հարված էին հասցնում նաև իլխանության և հարևան երկրների՝ Ոսկե Հորդայի, Եգիպտոսի և Չաղաթա-

---

9 Կիրակոս Գանձակեցի, էջ 239—240։

10 *Рашид ад-Дин*, т. III, стр. 308.

11 Նույն տեղում, էջ 309։

12 Տե՛ս նույն տեղում, էջ 308, 309։

13 Գ. Հովսեփյան, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 992։

14 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 334։

15 Տե՛ս նույն տեղում, էջ 509—523։

16 Սամուել Անեցի, էջ 104։

17 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 48—49։

18 Տե՛ս նույն տեղում, տե՛ս նաև «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 390։

յանների միջև տեղի ունեցող մոտ հարյուր տարի տևող, անընդհատ պատերազմները։

Հայ իշխանների ռազմական միավորումները, որոնք իրենց ավատատուական պարտավորությունների համաձայն, պարտադիր կարգով մասնակցում էին մոնղոլական բանակի արտաքին արշավանքներին, կլանում էին երկրի հիմնական արտադրողների ամենաաշխատունակ ուժերը, նրանք հանվում էին երկրից, քշվում հեռավոր վայրեր, որտեղ և արյունահեղ մարտերում նրանց մեծ մասը զոհվում էր։ Եգիպտոսի և առանձին դեպքերում Ոսկե Հորդայի դեմ մղվող մարտերում պատերազմի թատերաբեմ էին դառնում Հայաստանի արևմտյան ու հյուսիսային շրջանները։

Մղվող պատերազմները պահանջում էին հսկայական միջոցներ։ Այդ միջոցները ձեռք էին բերվում աշխատավոր ժողովրդի անլուր շահագործման ու կեղեքման ճանապարհով։ Պատերազմները ժողովրդին բերում էին նորանոր ավերածություններ, կոտորածներ, գերեվարում, ամայացում։

Երկրի ամբողջ տնտեսությանը և արտադրողական ուժերին պակաս վնաս չէին հասցնում նաև արշավանքների ու ասպատակությունների, ինչպես և տնտեսական անկման և ծայր աստիճան աղքատացման հետևանքով հաճախակի առաջացող սովն ու համաճարակը։

1329 թ. հիշատակարաններից մեկում ասված է. «Ով կարող է պատմել, մենք չենք կարող պատմել, աղետն ու ողբումը, լացն ու ժանտախտը, սովն ու գերությունը, և ավերածությունը և այլ տեսակ տեսակ պատիժները, որ հասան... Տարոն աշխարհին, քաղաքին, և երկրին, և շրջակա բոլոր գավառներին...»[19]։

Այս ամենի հետևանքով ծայր էր առել բնակչության զանգվածային արտագաղթը դեպի հարևան և հեռավոր երկրներ, մասնավորապես դեպի Ղրիմ։ Երկրի բնակչությունը խիստ նոսրանում էր։

## 3. ՔԱՂԱՔԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ԱՆԿՈՒՄԸ

Ելնելով մոնղոլական դարաշրջանում Մերձավոր Արևելքում առևտրական կապիտալի ուժեղացման և միջազգային տարանցիկ առևտրի որոշ աշխուժացման փաստերից, թվում է, թե նվաճված երկրներում, այդ թվում և Հայաստանում, քաղաքների, առևտրի և արհեստների զարգացումը պետք է որ ունենար այլ պատկեր, քան գյուղատնտեսությունը։ Սակայն իրականում քայքայվում և ամայանում էին նաև քաղաքները։

Արշավանքների ու ասպատակությունների հետևանքով ավերված քաղաքները ոչ միայն չվերաշինվեցին, այլև խլպառ անհետացան նրանց վերականգնման նախադրյալները։ Բնակչության զգալի մասը ոչնչացվել էր կամ գաղթել, արհեստավորության մեծ մասը գերեվարվել։ Դա չափազանց ծանր էր անդրադառնում երկրի քաղաքների կյանքի և ներքին շուկայի վրա։ Արհեստագործությունը խիստ անկում էր ապրում։ Նվաճողներն ամենուրեք

19 «ԺԴ դարի հիշատակարաններ», էջ 215—216։

զավթել էին հանքերն ու հանածոները, երկրի արհեստավորներին զրկելով հումքի աղբյուրներից, հանքագործներին ու արհեստավորներից շատերին անձնական կախման մեջ էին դրել[20]։

Զենքի և զինվորական հանդերձանքի արտադրության պետական գործատներում ստրուկ արհեստավորների արտադրանքը չափազանց ցածր էր, նրանց վրա կարգված վերակացուների ու հսկիչների ծախսերը, նրանց չարաշահումները մեծ միջոցներ էին կլանում և պետական արհեստանոցները չէին արտադրում նախատեսված արտադրանքի անգամ մեկ քառորդը։ Ծանր էր նաև ազատ արհեստավորների դրությունը։ Նրանք դժվարությամբ էին հայթայթում պահանջվող հումքը, զրկվել էին ունեցվածքային անվտանգությունից, ենթարկվելով անլուր կամայականությունների ու բռնությունների։ Արհեստավորի աշխատանքը չէր ապահովում նրա ապրուստը, մանավանդ արհեստի հետագա գործադրությունը։ Ստեղծված անտանելի պայմաններում քայքայվեց նաև արհեստավորությունը[21]։

Մոնղոլա-իրանական պետությունը և քոչվոր ազնվականության վերնախավը նվաճումներից հետո փորձեց օգուտ քաղել Արևելքի և Արևմուտքի միջև կատարվող տարանցիկ առևտրից։ Պետական գանձարանի եկամուտների ապահովման և հարկահանման գործի կարգավորման շահերից ելնելով, իլխանության կառավարող շրջանները հովանավորում էին միջազգային առևտուրը և խոշոր առևտրա-վաշխառուական կապիտալի ներկայացուցիչներին։ Հայաստանի պայմաններում այդ հովանավորությունը վայելում էին Սահմադինը, Ումեկը, Շնորհավորը, Մկրտիչը և ուրիշներ։

Միջազգային տարանցիկ առևտուրը և առևտրա-վաշխառուական կապիտալը, սակայն, գրեթե չէին նպաստում նվաճված երկրներում ժողովրդական տնտեսության ընդհանուր զարգացմանը, ներքին շուկայի, ապրանքաշրջանառության և դրամաշրջանառության ընդլայնմանը։ Երկրի արտադրողական ուժերի, արհեստների, քաղաքների անկման պայմաններում առևտուրն ու դրամական շրջանառությունը նույնպես անկում ապրեցին։

Մոնղոլական պետությունը առևտրի վրա նույնպես դրել էր ծանր հարկեր, որը արգելակում էր երկրի ներսում առևտրի ծավալմանը։ Արտաքին առևտրի զարգացման համար խոշոր նշանակություն ունեին առևտրական քարավանային ճանապարհները։ XIV դարի կեսերից առևտրական ճանապարհների ուղղությունների մեջ խոշոր փոփոխություն տեղի ունեցավ։ Առևտրական քարավանային մեծ ճանապարհը, որ անցնում էր Հայաստանի հյուսիսային և կենտրոնական շրջաններով, տեղափոխվում է հարավ։ Անին, Կարսը իրենց տեղը զիջում են Թավրիզին և Սուլթանիային։ Արարատյան դաշտի ճանապարհներն անբանուկ են դառնում։ «...Դատարկեսցին ճանապարհք բազմագնացք առ ի չգոյ մարդկան...»[22]։ Քարավանային մեծ ճանապարհների փոփոխության գլխավոր պատճառը XIII դարի երկրորդ կեսից Հուլավյանների և Ոսկե Հորդայի պետությունների միջև սկսված պայքարն էր։ Արտաքին

---

20 Տե՛ս Բ. Ն. Առաքելյան, Քաղաքները և արհեստները..., հատ. 2, էջ 273։

21 Տե՛ս Նույն տեղում։

22 «Մանր ժամանակագրություններ», հատ. Ա, էջ 26։

պատերազմները, բացի երկրին հասցրած ընդհանուր ավերածություններից, կոտորածներից և գերեվարությունից, խոշոր հարված էին հասցնում քաղաքային կյանքին, առևտրի և արհեստների զարգացմանը։

Առևտրական ճանապարհների փոփոխությունը Հայաստանի զանազան շրջանների տնտեսական կյանքում տարբեր ձևով արտահայտվեց։

Հարավային շրջանների քաղաքներում՝ Խլաթ, Նփրկերտ, Արճեշ և այլն, որոշ չափով սկսել էին աշխուժանալ առևտուրն ու արհեստները, իսկ հյուսիսային ու կենտրոնական շրջաններում՝ քաղաքներն սկսում են քայքայվել ու անկում ապրել, ավանների և գյուղերի վերածվել։ Ներքին ու արտաքին շուկաները ամայանում էին, չափազանց ծանր վիճակ ստեղծելով նաև քաղաքային բնակչության համար, ամենուրեք իշխում էր սովն ու թանկությունը։ Ապրանքային արտադրությունը խիստ կրճատվել էր և բնատնտեսությունը, որ մինչ այդ տեղի էր տալիս, կրկին համապարփակ բնույթ էր ստանում։

Պատահական չէ, որ մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանի աղբյուրները Հայաստանից արտահանվող ապրանքների մասին ոչինչ չեն հիշատակում, և դա այն դեպքում, երբ նախամոնղոլական շրջանի մասին հարուստ նյութեր են պարունակում։

## 4. ՄՈՆՂՈԼՆԵՐԻ ՀԱՐԿԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿՈՐԾԱՆԱՐԱՐ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ

Մոնղոլական ազնվականության օրեցօր աճող պահանջները և քայքայված գյուղից մեծ եկամուտներ ստանալու անհնարինությունը նրանց ստիպեցին իրենց տնտեսական վիճակի կարգավորման միջոց դարձնել վաշխը և կապալը։ Կենտրոնական իշխանությունը ընդհանուր կարգ դարձրեց հարկերը կապալով տալը, որը կոչվում էր «մուկաթիա», և այդ կարգը լայն կիրառություն ստացավ։ Հարկերը փողատեր վաշխառուներին կապալով էին տալիս ինչպես կենտրոնական իշխանությունը, նույնպես և տեղական իշխողները։ Հարկահավաքման ժամանակ կապալառուները շրջում էին մոնղոլական զինված ուժերի ուղեկցությամբ. իրենց «աշխատանքի» ընթացքում նրանք կողկողակի, եռակի շահագրգռվածություն էին ցուցաբերում։ Հարկերը վճարելու համար հարկատուները հաճախ մեծ տոկոսով փող էին վերցնում վաշխառուներից։ Այսպիսով, վաշխառությունը և կապալային հարկահանությունը նոր չարաշահումների լայն ասպարեզ բացեցին նվաճողների առջև։ Ընդհանուր երևույթ էր դարձել գանձարանի և խանական տան անդամների կողմից պարտքերի դիմաց վաշխառուներին, առևտրականներին մուրհակներ և արտոնագրեր տալը, որով վերջիններս իրավունք էին ստանում պարտքի գանձումները կատարել անմիջապես հարկատու բնակչությունից։

Նման արտոնագրերով հարստություն ձեռք բերելու ծարավը երկրում առաջ բերեց փաստաթղթերի չտեսնված չափերի հասնող կեղծումներ։ Պատմիչը վկայում է, թե այնքան պարտամուրհակ և մուտքի անդորրագիր էր տրվել, որ եթե աշխարհի բոլոր երկրների ամբողջ ոսկին ու արծաթը հավաք-

վեր ու դեռ դրան էլ ավելացվեր այն, ինչ թաքնված էր հանքերում, այդ ժամանակ էլ դարձյալ այն չէր համապատասխանի նրանց քանակին[23]։

Մոնղոլները նվաճված ժողովուրդներից կորզում էին ոչ միայն հավելյալ արդյունքը, այլև հափշտակում էին անհրաժեշտ արդյունքի զգալի մասը, որով անհնարին էր դառնում նույն ծավալի՝ պարզ վերարտադրությունը, ինչպես հիմնական արտադրող ուժի վերարտադրությունը։

Նվաճված երկրների քայքայման պատճառները, այսպիսով, եղել են ոչ միայն բազմաթիվ ու բազմատեսակ հարկերը, այլև դրանց գանձման ձևերը և առհասարակ ամեն տեսակի երաշխիքի բացակայությունը, օրինակ, բնակչության կողմից վճարված գումարները նույն այդ վճարողներից երկրորդ, երրորդ անգամ կարող էին գանձվել։ Ժողովրդից վերցնում էին անխտիր ամեն ինչ։ Չքավորներից, որոնք չէին կարողանում վճարել հարկը, վերցնում էին երեխաներին, կանանց կամ իրեն՝ գյուղացուն և հաճախ վաճառում ստրկության։ «Եւ որ ոչ կարէր հատուցանել զսակն, զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն...»[24], «Եւ այլք վաճառէին զորդայս իւրեանց, և ինքեանք փախուցեալք յայլևայլ տեղիս...»[25]։

Տեղերում հավաքած գումարների 2/6-րդը ծախսվում էր, 4/6-րդ մասը մնում էր իրենց՝ կառավարիչներին—հաքիմներին, ռայաթներից հափշտակված միջոցներից պետական գանձարան ոչինչ չէր ուղարկվում։

Չարաշահումների ու քայքայման հետևանքով նահանգների բնակչության մեծ մասը հեռացել էր, քաղաքներն ու գյուղերը դատարկվել էին։ «Տերերը նեղվեցին իրենց գավառի ավերածությունից և դառն և ծայրահեղ աղքատությունից։ Նրանք եկան բնակվեցին մեզ մոտ, իրենց խիստ կարիքների պատճառով, նրանք պարտական էին այլազգիներին, որոնք ցանկանում էին գերի տանել նրանց, ու նեղվում էին դառը և սաստիկ աղքատությունից»[26],— գրում է Սյունյաց պատմիչը Ներքին Խաչենի իշխանների մասին։ Հայաստանի և հայ ժողովրդի պատմական ճակատագրի համար աղետալի հետևանքներ ունեցավ բնակչության զանգվածային արտագաղթը դեպի այլ երկրներ. «...և էր աշխարհ յամենայն ի տառապանս և ի հարկապահանջութիւն. և ի սպառ նուազեալ էր ազգս Հայոց»,— գրում է ժամանակակիցը[27]։

Քաղաքներում և գյուղերում մնացածները՝ հարկահանների, էլչիների, սուրհանդակների հալածանքներից ու կողոպուտից խուսափելու համար, շարում էին տների մուտքերը, տանիքներում կամ ներքնահարկերում գաղտնի մուտքեր էին թողնում, պահակներ էին կանգնեցնում, որ մոնղոլների երևալուն պես փակվեին, թաքնվեին։ Սակայն այդ բոլորը չէին օգնում։ Հարկահանները մտնելով քաղաքները, տեղում գտնում էին գաղտնի մուտքերը և թաքստոցներից դուրս բերում մարդկանց, կողոպտում նրանց ինչքը[28]։

---

23 Տե՛ս *Рашид ад-Дин*, III, էջ 288։

24 Կիրակոս Գանձակեցի, էջ 362, Ֆրիկ, *Բանաստեղծություններ*, էջ 45—46, 233—234, 236, Վարդան Այգեկցի, *Առակներ*, էջ 107—108։

25 *«ԺԴ դարի հիշատակարաններ»*, էջ 101—102։

26 Ստ. Օրբելյան, էջ 488։

27 *«ԺԴ դարի հիշատակարաններ»*, էջ 101—102. հմմտ. էջ 325։

28 Տե՛ս *Рашид ад-Дин*, III, стр. 247—256, 263—268.

Հարկահավաքումը նմանվում էր փոքր մասշտաբի ռազմական գործողության։ 1318 թ. հիշատակարաններից մեկում ասված է, որ իրենց շրջանում հարկահաններին ուղեկցում էր 1300 հոգուց բաղկացած զինված ջոկատ։

Հարկահաններն առանձնապես չէին շտապում հարկահավաքումը ավարտել, շրջաններում մնում էին ամբողջ վեց ամիս։ Այդ ժամանակաշրջանում իրենք և իրենց ուղեկցող ջոկատները՝ թվով 200—300 հոգի և ավելի, կերակրվում էին տեղի բնակչության հաշվին։

* * *

Նվաճված ժողովուրդների համար ոչ պակաս շարիք էր երթևեկող պաշտոնեության—էլչիների՝ սուրհանդակների նկատմամբ ունեցած պարտավորությունը—«տզղու» հարկը։ Էլչիների պատճառած վնասների ու տանջանքների մասին մանրամասն տեղեկություններ է տալիս Ռաշիդ ադ-Դինը։ Նկարագրելով էլչիների՝ սուրհանդակների մասսայական առաքումները, նա նշում է, որ ճանապարհներին սուրհանդակներն ավելի շատ էին, քան քարավաններն ու բոլոր ճանապարհորդողները միասին վերցրած։ Նրանք գյուղերում ինչ գտնում՝ ուժով վերցնում էին, իրենց հասանելիք սննդամթերքի և անասունների դիմաց վերցնում էին տասնապատիկ—քսանապատիկ և ավելին։ Պատմիչը նշում է նաև, որ նրանք բնակչության հետ վարվում էին գազանաբար, սպանում, կախում և ստրկության էին վաճառում մարդկանց, այդ պատճառով բոլորն ատելությամբ էին լցված նրանց հանդեպ։ Սովորական սուրհանդակներին ուղեկցում էին երկու—երեք հարյուր հեծյալ, իսկ անվանիներին՝ հինգհարյուրից—հազար հեծյալ։

Ռաշիդ ադ-Դինը շեշտում է, որ մի քանի նահանգներում սուրհանդակների, հարկահանների ու նրանց ուղեկցողների թիվն այնքան շատ էր, որ յուրաքանչյուր ռայաթի ընկնում էր երկու հոգի[29]։ Հաճախ, երբ լսում էին որևէ էլչիի գալու մասին, ամբողջ գյուղեր էին դատարկվում։

Երթևեկող պաշտոնեությունը նկատի ունի Գրիգոր Ակներցին, երբ գրում է. «...և արևելյան երկրից այլ թշնամի չկար բացի թաթարներից, որոնք մշտապես գալիս էին հարկերով նեղացնում էին վրաց և հայոց իշխաններին, ոմանցից պահանջում էին ոսկի կտավ, ոմանցից բազե թռչուն, ոմանցից լավ շուն և ձի, և այդպես նրանց նեղացնում էին բացի մալից, թաղարից և խալանից»[30]։

Կիրակոս Գանձակեցին վկայում է. «Եւ բաղում տառապանս հասուցանէին ամենայն աշխարհաց հարկապահանջութեամբ և յափշտակութեամբ, ուտելով և ըմպելով անյագաբար...»[31]։

Տնտեսության հիմնական ճյուղերի քայքայումն ու անկումը սաստկացավ կապալային ծանր հարկահանության, ամեն սահման անցած կամայականությունների, ապօրինությունների և շահատակությունների մանավանդ

29 Տե՛ս *Рашид ад-Дин*, т. III, стр. 263—268, 247—256.

30 Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), էջ *20*։

31 Կիրակոս Գանձակեցի, էջ *374*։

*ռենտայի (արդյունավճար ռենտայի) գանձման հետևանքով։ Խոսելով ռենտայի մասին Կ. Մարքսը գրել է, թե. «Այս վերջինս կարող է մի այնպիսի ծավալ ստանալ, որ լրջորեն սպառնում է աշխատանքի պայմանների, բուն իսկ արտադրության միջոցների վերարտադրությանը, ավելի կամ թե պակաս չափով անհնարին է դարձնում արտադրության ընդլայնումը և անմիջապես արտադրողներին հարկադրում է բավականանալու կենսամիջոցների ֆիզիկական մինիմումով»*[32]*։ Հիրավի՝ մոնղոլական տիրապետության ենթակա երկրների տնտեսական քայքայումը ծայր աստիճան խորացավ և XIV դարում գահավեժ անկման բնույթ ստացավ, կործանման տանելով նաև մոնղոլական լայնածավալ պետությունը։*

*Այսպիսին է եղել, ինչպես մոնղոլ նվաճողների արշավանքի, նվաճումների ու տիրապետության, այնպես էլ դրանց հետևանքով առաջացած՝ Հայաստանի համար ամենածանր ու ամենաողբալի ժամանակաշրջանի, հայ ժողովրդի տնտեսական ու քաղաքական դառն վիճակի պատմությունը։ Կ. Մարքսը՝ խոսելով այդ լծի՝ Ռուսաստանին պատճառած հետևանքների մասին, գրել է. «Թաթարական լուծը տևեց... ավելի քան երկու դար և որ այդ մի լուծ էր, որը ոչ միայն ճնշում, այլև պղծում ու հալումաշ էր անում ժողովրդի իսկ ոգին, որը նրան ենթակա էր։ Մոնղոլական թաթարները հաստատեցին սիստեմատիկ ահաբեկման վարչակարգ (ռեժիմ), որի միջոցներն էին կողոպուտները և մասսայական կոտորածները»*[33]*։*

* * *

*Հայ ժողովրդի, նրա աշխատավոր գյուղացիության և քաղաքային ստորին խավերի ծանր ու դառը վիճակը հիմնականում մոնղոլ նվաճողների կեղեքման հետևանքը լինելով, ավելի ծանրանում էր նաև ներքին իշխողների շահագործմամբ։*

*Հայ խոշոր հողատերերի մի մասը իր դիրքը, տիրույթները և ունեցվածքը, եթե ոչ ամբողջությամբ, ապա մասամբ փրկելու հույսով զինվորական և վարչա-ֆինանսական ծառայության մտավ մոնղոլների մոտ ու գործակցեց նրանց հետ, մյուսները մոնղոլների պահանջած հարկերն ու տուրքերը վճարելու և իրենց էլ բաժին հանելու համար կորզում էին իրենցից կախյալ գյուղացիներից ու քաղաքային աշխատավոր բնակչությունից արտադրանքի մեծ մասը՝ սաստկացնելով նրանց շահագործումը։*

*Հայ եկեղեցին և բարձր հոգևորականությունն ավելի մտահոգված էին պահպանելու իրենց դիրքը, տիրույթները, մանավանդ ջանում էին ձեռք բերել ապահարկություն, որ և նրանց հաջողվեց։*

*Մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանի սոցիալական անհավասարությունը ամենապատկերավոր ու համոզիչ ձևով տվել է միջնադարյան մեծանուն տաղերգու Ֆրիկն իր «Գանգատ» բանաստեղծության մեջ.*

---

32 Կ. Մարքս, *Կապիտալ, հ. երրորդ, երկրորդ մաս, Երևան, 1949, էջ 335։*

33 *K. Marx*, Secret Diplomatic History of Eighteenth Century, p. 78–80.

Մէկին հազար դեկան ոսկի,
Մէկին ոչ փող մի պղնձի...
Մէկին հազար գառնով մաքի,
Մէկին ոչ մեկ չորքոտանի...
Մէկն ի գըրկանացն հարըստի,
Մէկն յիւրայնոցն աղքատացի[34]։

Մոնղոլական տիրապետության ժամանակ Հայաստանի տնտեսական կյանքը խոր անկում ապրեց, որի հետևանքով երկրում թագավորեցին սովն ու համաճարակը։ Բնակչությունը չտեսնելով հույսի շող համընդհանուր թըշվառությունից փրկվելու և չգտնելով ուրիշ ելք, բռնեց զանգվածային արտագաղթի ճանապարհը. երկիրը, մանավանդ նրա քաղաքները, Անին, Կարսը, Դվինը գյուղերի վերածվեցին, բերրի ու մարդաշատ դաշտերը (դրանց թվում Արարատյան մեծ դաշտավայրը) ամայացան՝ դառնալով քոչվոր անասնապահների ձմեռային արոտավայրեր։ Հայոց երկիրը հետզհետե թափանցում էր օտար քոչվոր տարրը, խախտելով նրա ազգային ամբողջականությունը։

Զարգացած ֆեոդալական հարաբերություններն իրենց տեղը զիջեցին ավելի նախնական և պարզունակ ֆեոդալական հարաբերություններին։ Մոնղոլներին հետևեցին այլ քոչվոր տարրեր, և Հայաստանի տնտեսական, քաղաքական և մշակութային անկումը դարեր տևեց։

---

34 Ֆրիկ, Բանաստեղծություններ, էջ 236։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆԵՐՈՐԴ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆՈՒՄԸ ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ

## 1. ԿԻԼԻԿԻԱՅԻ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՆԱՇԽԱՐՀԸ

*Կիլիկիան Առաջավոր Ասիայի երկրներից է։ Խիլակկու ձևով այս երկրի անունը առաջին անգամ հիշատակվում է Ասորեստանի թագավոր Սալմանասար Գ-ի արձանագրության մեջ, որը մ. թ. ա. 834 թ. նվաճել է Կիլիկիան։ Այնուհետև Կիլիկիան հաղորդակից դարձավ հունա-հռոմեական քաղաքակրթությանը, ապա Բյուզանդական կայսրության կազմի մեջ մտավ։ Հնագույն ժամանակներից Կիլիկիայում եղել է հայ ազգաբնակչություն, որի մասին վկայում են օտար մատենագիրները։*

*XI դարում Կիլիկիայում կազմվեց հայկական մի պետություն, որը միջնադարյան Եվրոպայի պատմագիրներն անվանել են Փոքր Հայք, իսկ երբեմն էլ Արմենիա։*

*Հայկական աղբյուրներում Կիլիկիայի հայկական պետությունն անվանվում է «աշխարհ», «Կիլիկիան աշխարհ» կամ «հայոց աշխարհ»։ Սիս մայրաքաղաքի անունով Կիլիկիան անվանվել է նաև «Սիսուան»։ Ղևոնդ Ալիշանը Կիլիկիայի պատմությանն ու աշխարհագրությանը նվիրված իր աշխատությունը վերնագրել է «Սիսուան» (Սսո երկիր)։*

*Կիլիկյան հայկական պետության տարածքը բաղկացած էր բուն Կիլիկիայից ու նրան սահմանամերձ մի շարք մարզերից։*

*Աշխարհագրական տեսակետից Կիլիկիան բաժանվում է մի քանի մասերի։ Երկրի արևմուտքում է քարքարոտ կազմություն ունեցող մանր բլուրների շրջանը— այսպես կոչված Քարոտ Կիլիկիան* (Cilicia Tracheia)*։ Կիլիկիայի արևելյան մասը կազմում է արգավանդ դաշտ. երկրի այդ շրջանն ստացել է Դաշտային Կիլիկիա* (Cilicia Pedias) *անունը։ Երկրի հյուսիս-արևելյան մասը ծածկված է լեռնային զանգվածներով, որոնք կազմում են բարձրադիր մի լեռնաշխարհ. այն կոչվում է Լեռնային Կիլիկիա կամ Ղևոնդ Ալիշանի արտահայտությամբ՝ Գահ Կիլիկիոյ։*

*Կիլիկիայի լեռների առանձին գագաթները հասնում են 3500 մետր բարձրության։ Երկրի հարավ-արևելքում տարածված Ամանոսյան լեռնաշղթան որպես բնական սահման Կիլիկիան բաժանում է Ասորիքից։ Այստեղ լեռնագագաթների բարձրությունը երբեմն հասնում է 1800—2000 մետրի։ Ամանոսյան*

լեռնանցքներն ունեցել են խոշոր ռազմա-ստրատեգիական նշանակություն։ Երկրի արևմուտքում, հյուսիսում և արևելքում տարածված Կիլիկյան Տավրոսի, Անտիտավրոսի և Ամանոսի լեռնաշղթաներն ու այդտեղ կառուցված բազմաթիվ ամրոցները հանդիսացել են պաշտպանական ամուր գոտիներ՝ արտաքին թշնամիների դեմ։

Երեք կողմերից լեռնաշղթաներով շրջապատված Կիլիկիան հարավից ողողում են Միջերկրական ծովի ջրերը։ Կիլիկյան հայկական թագավորությունն ուներ 500 կիլոմետր երկարությամբ ծովափ և մի քանի նավահանգիստներ, որոնք խոշոր դեր էին կատարում երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում։

Լեռնային Կիլիկիայում, չնայած ամառվա տոթին, ձմեռը խստաշունչ է, գարունն սկսվում է ապրիլ ամսից։ Դաշտային Կիլիկիան իր մեղմ կլիմայով ամենաարգավանդ երկրներից մեկն է։ Լեռներից դեպի Դաշտային Կիլիկիա հոսող գետերն իրենց հետ բերում են մեծ քանակությամբ տիղմ, ապահովելով հողերի մշտական բերրիությունը։

Կիլիկիայի մեծ գետերն են Պիռամոսը (Ջիհուն), Սարոսը (Սիհուն), Կյուդնոսը (Տարսուս), Կալիկադնոսը կամ Սելևկիան։ Բոլոր այս գետերը սկիզբ են առնում Տավրոսից կամ Անտիտավրոսից ու թափվում Միջերկրական ծով։ Բացի նշված գետերից, Կիլիկիայում կան բազմաթիվ գետակներ, որոնք նույնպես թափվում են Միջերկրական ծովը։

Բազմազան է Կիլիկիայի բուսական ու կենդանական աշխարհը, հարուստ՝ նրա ընդերքը։ Կիլիկիայի լեռնային մասերը ծածկված են ընդարձակ արոտավայրերով, փշատերև ու սաղարթավոր ծառերի անտառներով, որոնք նպաստավոր պայմաններ են ստեղծել անասնապահության ու փայտամշակության զարգացման համար։ Դաշտային Կիլիկիայում մշակում էին բամբակ, բրինձ, ցորեն, գարի և յուղատու բույսեր։ Արտադրվող բամբակն ու ցորենը, բացի ներքին կարիքները բավարարելուց, արտահանվել են ուրիշ երկրներ։

Կիլիկիայում զարգացած են եղել այգեգործությունն ու պտղաբուծությունը։ Այստեղ մշակել են նաև մերձարևադարձային կուլտուրաներ՝ նարինջ, ձիթապտուղ, շաքարեղեգն։

Լեռնային Կիլիկիայում մեծ չափերով զարգացած էր անասնապահությունը։ Ամենից շատ պահում էին մանր եղջերավոր անասուններ՝ նուրբ բուրդ ունեցող ոչխար և այծ։ Հռչակված էին կիլիկյան ընտիր ձիերը։ Աղբյուրների վկայությամբ Կիլիկիայից արտահանվում էին ձիեր, ջորիներ, մանր և խոշոր եղջերավոր անասուններ, բուրդ[1]։

Լեռնային Կիլիկիան հարուստ է զանազան հանքատեսակներով, որոնցից օգտագործվել են հատկապես երկաթի, կապարի, արծաթի, ծծմբի, աղի հանածոները։ Կիլիկիայում կան նաև բազմաթիվ բուժիչ հանքային ջրեր։

Կիլիկիայի բնակչությունը միջին դարերում բաղկացած էր հայերից, ասորիներից, հույներից, ինչպես նաև հրեաներից, արաբներից։

Կիլիկյան հայկական պետության ծաղկման ժամանակաշրջանում՝ XIII դարում, նրա տարածությունը կազմում էր 40.000 քառ. կմ, իսկ բնակչու-

---

[1] Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 8—10։

*թյան թիվը անցնում էր մեկ միլիոնից։ Խոշոր քաղաքներն էին Սիսը, Տարսոնը, Ադանան, Անազարբան, Մամեստիան (Մոպսուեստիա), Այասը և Կոռիկոսը։ Վերջին երկուսը նաև նավահանգիստներ էին։*

*Կիլիկիայի լեռնային մասերում գտնվում էին ավելի քան 100 ամրոցներ, որոնց կառուցումը մեծ մասամբ կապված է եղել Կիլիկիայի հայկական պետության ծագման, զարգացման ու պաշտպանության հետ։ Ամենագլխավոր բերդ-ամրոցներն էին Վահկան, Լամբրոնը, Կուկլակը և Կապանը։*

*Ամենահնագույն ժամանակներից Կիլիկիան սերտորեն առնչվել է Հին Արևելքի հետ։ Հետագայում ենթարկվել է Ալեքսանդր Մակեդոնացուն, ապա՝ Սելևկյաններին։ Երկար ժամանակ գտնվել է Հռոմի, ապա Բյուզանդական կայսրության տիրապետության ներքո։*

*VII դարի երկրորդ կեսին արաբները գրավեցին Դաշտային Կիլիկիան և մինչև X դարը պահեցին իրենց ձեռքում։*

*963—965 թթ. բյուզանդացիները արաբներից ետ գրավեցին Անազարբան, Ադանան, Մամեստիան ու Տարսոնը։*

*X դարի երկրորդ կեսին, խորտակելով Եփրատ գետի ու Տավրոսի երկարությամբ ձգված արաբների պաշտպանական գիծը, Բյուզանդիան մեկը մյուսի ետևից նվաճեց Հյուսիսային Միջագետքը, Անտիոքը, Կիլիկիան, որը դարձավ Բյուզանդական կայսրության մի մարզը։*

## 2. ՀԱՅԵՐԻ ԱՐՏԱԳԱՂԹԸ ԿԱՊԱԴՈՎԿԻԱ, ՄԻՋԱԳԵՏՔ, ԱՍՈՐԻՔ ԵՎ ԿԻԼԻԿԻԱ։ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՅՍ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ XI ԴԱՐՈՒՄ ԵՎ XII ԴԱՐԻ ՍԿԶԲԻՆ

*Վերևում նշվեց, որ Բյուզանդիայի վարած հատուկ քաղաքականության հետևանքով հայ բնակչությունը գաղթեցվում էր դեպի կայսրությանը ենթակա երկրները՝ Փոքր Ասիա, Ասորիք, նաև Կիլիկիա և այլուր։ Այդ քաղաքականությունն ուներ մի քանի շարժառիթներ։ Ամենից առաջ Բյուզանդիան ձըգտում էր հայ ֆեոդալներին առհասարակ չեզոքացնել և հայերի ռազմական դիմադրական ուժը կոտրել։ Այնուհետև՝ հայերին պատվար կանգնեցնել արաբների դեմ և նրանց զինվորական ուժն օգտագործել Արևելքում՝ արաբների, իսկ Արևմուտքում՝ կայսրությանը սպառնացող թշնամիների դեմ, Բյուզանդիայի արևմտյան մարզերը տնտեսապես զարգացնել, վերջապես Բյուզանդիան կամենում էր իրականացնել հայերի դավանափոխության և հույների հետ ձուլելու դարավոր ավանդական երազանքը։*

*Հայաստանի ռազմական ուժերը ջլատելու, նրանց տեղահանելու և կայսրության խորքերը բնակեցնելու ծրագիրն ավելի դյուրին կենսագործվեց Տայքը, Վասպուրականը, Բագրատունյաց թագավորությունը կայսրությանը միացնելուց հետո։*

*Վասպուրականի հայ բնակչության արտագաղթի մասին Միքայել Ասորին գրում է. «Վասիլ կայսրը հայերից զավթեց Սեննեքերիի (Սեննեքերիմ) թա-*

գավորի երկիրը և փոխարենը՝ նրան տվեց Կապադովկիական Սեբաստիան։ Այստեղ նրանք (հայերը) բազմացան ու տարածվեցին ամբողջ Կապադովկիայում, Կիլիկիայում և Ասորիքում»[2]։ Հայտնի է, որ դեռևս 1044 թ., նախքան Բագրատունյաց թագավորության անկումը, Գրիգոր Պահլավունին բյուզանդացիներին հանձնելով Բջնին և իր հայրենի կալվածքը, դրանց դիմաց բյուզանդացիներից որպես տիրույթ ստացավ Միջագետքի մի շարք քաղաքներն ու բնակավայրերը[3]։ 1058 թ. Գրիգոր Մագիստրոսին հաջորդեց նրա որդի Վահրամ Պահլավունին, իսկ մյուս որդին՝ Վասակը դարձավ Անտիոքի դուքս (1071—1078)։

Տուղրիլ-բեկի և ապա սուլթան Ալփասլանի գլխավորությամբ կազմակերպված սելջուկների ավերիչ արշավանքները, երկրի կողոպուտն ու խաղաղ բնակչության կոտորածը պատճառ դարձան հայերի նորանոր արտագաղթերի։ 1065 թ. Կարսի Գագիկ թագավորը, թուրքերի երկյուղից իր թագավորությունը զիջեց Բյուզանդիայի Կոստանդին Դուկաս կայսրին, նրանից ստանալով Ծամնդավ բերդաքաղաքը[4] Կիլիկյան Տավրոսում և շտապեց փոխադրվել այնտեղ՝ իշխանների ու բնակչության մի մասի հետ։

1073 թ. սելջուկների ճնշման տակ հայ իշխան Օշինը Գանձակի շրջանում թողեց հայրենի տիրույթ Մայրեացջուրը և իր զորաջոկատով տեղափոխվեց Կիլիկիա[5]։

Արծրունիների և Բագրատունիների Կապադովկիա տեղափոխվելու հետեվանքով, այստեղ առաջացան հայկական ընդարձակ իշխանություններ՝ զգալի թիվ կազմող հայ բնակչությամբ։ Նոր բնակավայրերում Բագրատունիներն ու Արծրունիներն օգնում էին միմյանց՝ Բյուզանդիայի ոտնձգությունների դեմ։

XI դարի 40-ական թվականներին Կիլիկիայում առաջացան մի քանի հայկական իշխանություններ։ Աբլղարիբ Արծրունին, որը Սենեքերիմ Արծրունու հետ Մեծ Հայքից տեղափոխվել էր Սեբաստիա, 1042 թ. Կոստանդին Մոնոմախը կայսրից ստանձնեց Տարսոնի, Մամեստիայի, Ադանայի, Պապեռոնի և Լամբրոնի, այսինքն, Կիլիկիայի մի զգալի մասի կառավարումը[6]։ Աբլղարիբի դուստրերից մեկը ամուսնացավ Գանձակից Կիլիկիա տեղափոխված իշխան Օշինի հետ՝ իր աներոջից ստանալով Լամբրոնի ամրոցն ու նրա շրջակայքի գյուղերը, որոնք մինչև XII դարի վերջը հանդիսացան Օշինյանների ժառանգական տիրույթը։

Բյուզանդական ռազմական ծառայության մեջ էին նաև Հայկազուն իշխանները և Ասկուռասի բերդապետ իշխաններ Նատալինյանները, որոնք որպես սահմանապահ ուժեր պաշտպանում էին Կիլիկիան հարևան մահմեդական ամիրայությունների ներխուժումներից[7]։

---

[2] „Chronique de Michel le Syrien", t. II, p. 271.
[3] Տե՛ս Արիստակես Լաստիվերցի, էջ 62։
[4] Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 151։
[5] Տե՛ս Սամուել Անեցի, էջ 117։
[6] Տե՛ս „Documents arméniens", t. I, p. 2.
[7] Տե՛ս Սամուել Անեցի, էջ 216։

Այդ իշխաններից Փիլարտոս Վարաժնունին փորձ արեց իր գերիշխանությանը ենթարկել Կիլիկիան, Միջագետքի ու Ասորիքի մի շարք գավառներ, ուր կային հայերի հոծ զանգվածներ և Մեծ Հայքից տեղափոխված մի շարք հայ իշխանների գլխավորությամբ ստեղծված հայկական իշխանություններ։

Փիլարտոս Վարաժնունին Վասպուրականից էր։ Ստանալով կայսրից մեծ դոմեստիկոսի տիտղոս, ծառայում էր բյուզանդական բանակում[8]։ Բյուզանդացիների Մանազկերտում կրած պարտությունից հետո Փիլարտոս Վարաժնունին ստեղծեց ընդարձակածավալ մի իշխանություն, որը տարածվում էր Մեծ Հայքից մինչև Անտիոք և Կիլիկիա՝ Մարաշ կենտրոնով։ Հենվելով հայերից կազմված զինվորական ուժի վրա, նա կարողացավ ժամանակավորապես կանգնեցնել սելջուկների առաջխաղացումը դեպի իր իշխանության սահմանները։ Բյուզանդիան ստիպված եղավ ճանաչել Փիլարտոս Վարաժնունու կատարած նվաճումներն ու նրան տվեց սևաստոս տիտղոս՝ հույսով, որ նա կճանաչի կայսրության գերիշխանությունը, մանավանդ, որ ընդունել էր քաղկեդոնականություն։

Փիլարտոս Վարաժնունին, մինչև Կիլիկիայում Ռուբինյանների հաստատվելը, նվաճեց երկրի մեծ մասը, այդ թվում նաև Տարսոնը, ուր մինչև 1080 թ. իշխում էր Աբլղարիբ Արծրունին։ Սակայն Փիլարտոսի հաջողությունները կարճատև եղան։ Սելջուկները Կոստանդնուպոլիսը նվաճելու անհաջող փորձից հետո իրենց ուշադրությունը սևեռեցին միջազգային առևտրի համար խոշոր նշանակություն ունեցող Ասորիքի միջերկրածովային ափերի վրա և բանակները շարժեցին դեպի Անտիոք ու Կիլիկիա։

1086 թ. Փիլարտոսը մեկնեց սելջուկյան սուլթան Մելիք-շահի մոտ հնազանդություն հայտնելու՝ տանելով ոսկի, արծաթ, ցեղական ձիեր ու թանկարժեք զգեստներ[9]։ Իր իշխանությունը կորցնելու ահից նա նույնիսկ մահմեդականություն ընդունեց, սակայն ոչինչ չօգնեց գործին, հուսահատված՝ նա նորից քրիստոնյա դարձավ, քաշվեց մի վանք մինչև իր մահը[10]։

Այսպիսով, սելջուկների գերակշռող զինվորական ուժի հարվածներից խորտակվեց Փիլարտոս Վարաժնունու շուտափույթ ստեղծած հայկական մեծ իշխանությունը, սակայն հայկական անկախ միավորված իշխանություն ստեղծելու փորձն ու նրա սկզբնական հաջողությունները վկայում են այն մասին, թե որքան ստվարացել էր հայ բնակչությունը Փոքր Ասիայի հարավային մասերում, Վերին Միջագետքում ու Ասորիքում։ Դրանով է բացատրվում այն, որ հայկական իշխանություն ստեղծելու Փիլարտոսի փորձը կրկնվեց նաև հետագայում։ Նրա իշխանության վերացումից հետո էլ, XI դարի վերջին և XII դարի սկզբին այստեղ շարունակեցին իրենց գոյությունը պահպանել հայկական մի քանի փոքր իշխանություններ, որոնք վերացվեցին խաչակիրների կողմից։ Դրանցից մեկը Եդեսիայի (Ուռհա) իշխանությունն էր, որը խարդախությամբ զավթեցին Բոլդուինի գլխավորած խաչակիր ասպետները։

---

8 Տե՛ս „Documents arméniens", I, p. 2.
9 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 239։
10 Տե՛ս „Documents arméniens", t. I, p. 76.

XI դարի 80-ական թվականների կեսերից Միջագետքի հյուսիս-արևմըտյան մասում (Կիլիկիայի արևելյան կողմերում) առաջացավ Գող Վասիլի ֆեոդալական իշխանությունը, Քեսուն կենտրոնով։ Գող Վասիլի իշխանության մեջ էր մտնում նաև բուն Կիլիկիայի մի մասը։ Վասիլը եղել էր Փիլարտոսի վասալը և նրա անունից իշխել Քեսունին ու Ռաբանին։ Հետագայում Փիլարտոսից Վասիլին է անցնում նաև Մարաշը[11]։

Գող Վասիլը մեծ հեղինակություն էր վայելում հայ ազնվականության շրջանում։ Հենվելով հայկական զորքի վրա, նա 1107 և հետագա տարիներին ընդարձակեց իր իշխանության սահմանները։ Նրա իշխանությունը իր գոյությունը պահպանեց մինչև XII դարի վերջը։ Գող Վասիլի, ինչպես նաև մյուս հայ իշխանությունները խոչընդոտում էին սելջուկ-թուրքերի ներխուժումը Ասորիքի որոշ շրջաններ և Կիլիկիա, դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծելով Կիլիկիայի հայերին միավորվելու և իրենց սեփական իշխանությունը հիմնելու համար։ Գող Վասիլը համագործակցում էր նաև խաչակիրների հետ։

1112 թ., երբ մահացավ Գող Վասիլը, իշխանությունը ժառանգեց որդեգիրը, որը Կամսարական նախարարական տոհմից էր։ Նրա օրոք հայկական այս իշխանությունն արժանացավ Եդեսիայի իշխանության ճակատագրին։ Բոլդուինը զենքի ու խարդախության միջոցով կարողացավ քաղաքական ասպարեզից վերացնել հայկական այս իշխանությունը։ Բոլդուինի չարագործությունների մասին ցասումով է գրում Մատթեոս Ուռհայեցին։ «Նա (Բոլդուինը) և այլ բազում և գեղեցիկ իշխանների բանտում և չարչարանքներով ու կապանքներով սպանեց և շատերի աչքերը կուրացրեց, ձեռքերը կտրեց... Նրանց բազում անիրավությունները կամենում էի գրել, բայց չհամարձակվեցի, քանզի նրանց իշխանության տակ էինք»[12]։

Նույն բախտին արժանացավ նաև Գող Վասիլի եղբայր Բագրատը, որը իր եղբոր օգնությամբ տիրում էր Հալեպից հյուսիս գտնվող Կուրիս բերդաքաղաքին։ Թեև Բագրատը 1111 թ. ռազմական օժանդակություն էր ցույց տվել խաչակիր իշխաններին սելջուկ թուրքերի դեմ նրանց մղած կռիվներում, Եդեսիայի կոմս Բոլդուին դը Բուրգը գրավեց Կուրիս բերդը և վերջ տվեց Բագրատի իշխանությանը[13]։ Բոլդուինը զավթեց նաև Կոստանդին հայ իշխանի Կարկառ ամրացված քաղաքը, բանտարկեց Կոստանդինին Սամոսատի բերդում, որտեղ և նա մահացավ[14]։

Նույն բախտին արժանացավ նաև Եփրատի վրա գտնվող Փիր ամրոցի բերդատեր Անտիոքի դուքս Վասակ Պահլավունու որդի Աբլղարիբ Պահլավունու իշխանությունը։ Բոլդուինը 1117 թ. գրավեց Փիր ամրոցը։ Աբլղարիբ Պահլավունին յուրայիններով փախեց Կիլիկիա՝ Թորոս Ա իշխանի տիրույթը[15]։

---

11 Տե՛ս „Documents arméniens", t. I, p. 76.
12 Մատթեոս Ուռհայեցի, էջ 339։
13 Տե՛ս նույն տեղում, էջ 338։
14 Տե՛ս նույն տեղում։
15 Տե՛ս նույն տեղում։

## 3. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ՊԱՅՔԱՐԸ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Մեծ Հայքից դուրս գոյացած հայկական իշխանություններից բոլոր փորձություններին դիմագրավեց միայն Կիլիկիայի Ռուբինյան իշխանությունը, որը կարողացավ իր գոյությունը պահպանել՝ երկարատև ու ծանր պայքար մղելով բյուզանդացիների, սելջուկների և խաչակիրների դեմ։*

*Հայ պատմիչները (Սամուել Անեցի, Կիրակոս Գանձակեցի և ուրիշներ) հակասական տեղեկություններ են հաղորդում Ռուբինյանների ծագման մասին, նրանց վերագրելով՝ Բագրատունի կամ Արծրունի ծագում։ Դա, իհարկե, բխում էր Ռուբինյաններին արքայական ծագում վերագրելու մտումից։ Հավանականն այն է, որ Ռուբինյան իշխանության հիմնադիր Ռուբենը եղել է Գագիկ Բ-ի թիկնապահ իշխաններից[16], թերևս Կիլիկիայի հյուսիսային լեռնաշխարհում՝ Բարձրբերդում հաստատված ազգականներից մեկը։ Ըստ երևույթին, Ռուբեն իշխանը միանգամայն անկախ է եղել Փիլարտոսից ու նրա հետ ոչ մի առնչություն չի ունեցել։ Հենվելով Կիլիկիայի լեռնային շրջաններում բնակություն հաստատած հայերի վրա, Ռուբենը 1080 թ. ապստամբում է բյուզանդացիների դեմ ու ամրանում Կոլիմոզոլ կամ Կոռոմոզոլ կոչված բերդում, որը գտնվում էր Կառոմսոս գետի (Սարոս գետի աջ վտակի) ափին[17]։ Կարճ ժամանակում հայերին հաջողվում է ազատագրել Լեռնային Կիլիկիան ու բյուզանդացիներին վտարել այդ վայրերից[18]։ Այսպիսով, Ռուբեն իշխանը (1080—1095) հիմք դրեց հայկական իշխանությանը Կիլիկիայում։ Այդ իշխանությունը Ռուբենի անունով էլ պատմության մեջ կոչվեց Ռուբինյանց իշխանություն (1080—1198), ապա դարձավ Ռուբինյանց թագավորություն։*

*Ռուբեն իշխանին հաջորդեց որդին՝ Կոստանդին Ա (1095—1100)[19], որի ժամանակ հայկական իշխանությունը Կիլիկիայում ավելի ամրապնդվեց։ 1098 թ. Կոստանդինը գրավեց Լեռնային Կիլիկիայի կարևորագույն հենակետերից մեկը՝ Վահկա բերդը, որը և նրա իշխանության կենտրոնատեղին դարձավ։ Կոստանդինն ավելի ընդարձակեց իր իշխանության սահմանները՝ ոչ միայն ի հաշիվ սելջուկների, այլև բյուզանդացիների[20]։*

*Այս միջոցին էր, որ Արևելքում երևացին եվրոպական խաչակիրները քրիստոնեական սուրբ վայրերը ազատագրելու պատրվակով, իրականում Արևելքը նվաճելու և կողոպտելու նպատակով։ Խաչակիրները քանիցս կրկնեցին իրենց արշավանքները, ստեղծեցին իրենց իշխանությունները և շուրջ երկու հարյուր տարի (1096—1270) գոյատևեցին Մերձավոր Արևելքում։*

*Սելջուկներից պարտված Բյուզանդիան Պաղեստինի քրիստոնեական սրբավայրերը մահմեդականների (սելջուկների) լծից ազատագրելու պատրվակով օգնություն խնդրեց արևմուտքից, և սկիզբ առավ արշավանքների (թվով ութ) մի ամբողջ շարք։*

---

16 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Պատմութիւն*, 1856, էջ 77։

17 Տե՛ս Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի*, էջ 58, 60։

18 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 117։

19 Տե՛ս նույն տեղում։

20 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Պատմութիւն*, 1856, էջ 74։

Զինված ուժերը հիմնականում տրամադրում էին Ֆրանսիան և Գերմանիան (Հռոմեական սրբազան կայսրությունը), վճռական դեր խաղացին նաև իտալական քաղաքներ Վենետիկն ու Ջենովան։ Ռազմիկներն իրենց թիկնոցների վրա կրում էին խաչի նշան, որի համար և նրանք կոչվում էին խաչակիրներ։

Խաչակիրների առաջին արշավանքին մասնակցող բանակները, որոնք հիմնականում բաղկացած էին Ֆրանսիայից հավաքված ռազմիկներից (մոտ 100 հազար), երեք տարի տևող արշավանքի (1096—1099) ընթացքում մեծ մասամբ կոտորվեցին։ Այդուհանդերձ նրանք հասան Փոքր Ասիա և հաղթեցին Իկոնիայի սուլթանի զորքերին։

1097 թ. Կիլիկիա ներխուժեցին խաչակիրների երկու ջոկատներ։ Վահկա բերդի և Լամբրոնի իշխաններ Կոստանդինն ու Օշինը, ինչպես և մի քանի այլ իշխաններ սկսեցին համագործակցել խաչակիրներին՝ այլադավաններից փրկելու սուրբ Երուսաղեմը և ազատելու սուրբ աստվածընկալ գերեզմանը[21]։ Հայերը դեռ չէին կռահում խաչակիրների իսկական նպատակներն ու չէին նշմարում գալիքի մռայլ հեռապատկերները, ուստի և օգնում էին խաչակիրներին ամեն ինչով։ Առհասարակ տևական արշավանքից հոգնած խաչակիրների հաջողությունը մասամբ բացատրելի է հայերի ցույց տված օգնությամբ։ Այդ առթիվ Արևմուտքի ժամանակագիր Ռոբերտ վանականը գրում է. «Գալով հայոց աշխարհը, ֆրանկները կարճ ժամանակամիջոցում նրանց (իմա՝ հայերի) օգնությամբ տիրեցին Մամեստիային, Ադանային և բազմաթիվ այլ ամրոցների»[22]։

Կիլիկիայից անցնելով խաչակիրները մտան Ասորիք։ 1098 թ. գրավեցին Եդեսիան (Ուռհա) և այնտեղ հիմնեցին առաջին լատինական իշխանությունը՝ Արևելքում։ Շուտով Անտիոքում հիմնվեց խաչակրաց երկրորդ իշխանությունը։ Վերջապես, 1099 թ. խաչակիրները մտան Պաղեստին, որտեղ հիմնվեց Երուսաղեմի թագավորությունը։ 1109 թ. գրավելով Տրիպոլին, խաչակիրները հիմնեցին իրենց չորրորդ իշխանությունը։ Այսպիսով, գոյացան չորս քաղաքական միավորներ՝ Եդեսիայի կոմսությունը, Անտիոքի իշխանությունը, Տրիպոլիի կոմսությունը և Երուսաղեմի թագավորությունը։ Առաջին երեքը թեև անկախ պետություններ էին, սակայն ձևականորեն ընդունում էին Երուսաղեմի թագավորության գերիշխանությունը։

Խաչակիր իշխանությունները սահմանակից լինելով Կիլիկիայի հայկական պետությանը, մեծ ազդեցություն ունեցան նրա ճակատագրի վրա։

Խաչակրաց առաջին արշավանքի հետևանքով սելջուկները ստիպված Բյուզանդիային հանձնեցին Նիկիան, իսկ Դորիլեայում կրած պարտությունից հետո՝ թողեցին նաև Փոքր Ասիայի հյուսիս-արևմտյան մարզերը։ Դրանից որոշ չափով գոտեպնդված բյուզանդական կայսր Ալեքսիոս Ա (1081—1118) պատերազմական գործողություններ ձեռնարկեց Կիլիկիան ու Ասորիքը նորից իր գերիշխանությանը ենթարկելու։ Ամբողջ XII դարում Բյուզանդիան

---

21 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 254։

22 „Hist. Occid", III, p. 768.

համառորեն ձգտում էր նվաճել Կիլիկիան, որն իր հերթին նույնպիսի համառությամբ դիմադրում էր Բյուզանդիայի ոտնձգություններին։

Հավանաբար, 1100 թ. կամ մեկ տարի առաջ Բյուզանդիան վերականգնեց իր տիրապետությունը Դաշտային Կիլիկիայում։

1104 թ. խաչակիրների միացյալ ուժերը Խառանում (Միջագետք) սարսափելի պարտություն կրեցին Հալեպի ամիրա Ռըդվանից։ Բյուզանդիան շտապեց օգտագործել խաչակիրների այս պարտությունը և նույն թվականին վերականգնեց իր իշխանությունը Մամեստիայի, Ադանայի և Տարսոնի վրա։ 1108 թ. խաչակիր Տանկրեդը, օգտագործելով Դուրացոյում Բյուզանդիայի ֆրանկ-խաչակիրներից կրած պարտությունը, նորից գրավեց Դաշտային Կիլիկիան։

Շուտով խաչակիրներն ստիպված եղան Բյուզանդիայի հետ կնքած հաշտության պայմանագրով հրաժարվել Դաշտային Կիլիկիայից ու Հյուսիսային Ասորիքից։ Տանկրեդը որպես Անտիոքի դուքս ճանաչելու էր Բյուզանդիայի գերիշխանությունը։ Նման պայմաններում Կոստանդինի որդիներ Թորոսին (1100—1129) և Լևոնին (1129—1137) վիճակված էր պայքարել Բյուզանդիայի դեմ Դաշտային Կիլիկիան ազատագրելու համար։

Թորոս Ա շարունակեց հոր քաղաքականությունը։ Նա 1104 թ. իր իշխանությանը միացրեց Սիս և Անազարբա քաղաքները և այսպիսով էլ ավելի ընդարձակեց Ռուբինյան իշխանությունը։ Միքայել Ասորին Թորոսին անվանում է ամբողջ Կիլիկիայի իշխան[23]։ Նա վարել է Բյուզանդիայից միանգամայն անկախ քաղաքականություն։ Դա երևում է թեկուզ այն բանից, թե ինչպես Թորոսը վրեժ լուծեց հույն Մանդալե եղբայրներից։ Սրանք 1079 թվականին ավազակաբար բռնել էին հայոց Գագիկ Բ թագավորին ու սպանել։ 1111 թվականին Թորոսը հարձակվում է Մանդալե եղբայրների վրա, ջարդում նրանց զինվորական ուժը, գերի վերցնում հույն եղբայրներին և սպանում։

Թորոսի ժամանակ Կիլիկիան հաճախակի ենթարկվում էր փոքրասիական սելջուկների արշավանքներին։ 1107 թվականին սելջուկ-թուրքերը Տավրոսյան կիրճերով ներխուժեցին Կիլիկիա, կողոպտեցին երկիրն ու Մարաշի վրայով առաջ շարժվեցին դեպի Արևելք՝ Գող Վասիլի երկիրը։ Թորոսը Վասիլի հետ դաշնակցած Բերգուսի մոտ տեղի ունեցած ճակատամարտում գլխովին ջախջախեց թշնամուն ու ետ շպրտեց երկրից[24]։ Մի քանի տարի անց սելջուկները նորից ներխուժեցին Կիլիկիա ու բավարարվեցին միայն Անազարբայի շրջանի կողոպուտով[25]։

XII դարի 30-ական թվականներին Կիլիկիայի հայկական իշխանության ամենավտանգավոր թշնամիներն էին Անտիոքի խաչակիրները, ուր Բոհեմունդ Բ-ի մահից հետո իշխանությունն անցել էր Ռայմոնդ Պուատիեի ձեռքը, որն իր նախորդների նման փորձեց նվաճել Դաշտային Կիլիկիան։

---

23 Տե՛ս „Chronique de Michel le Syrien", t. III, p. 227.

24 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 306։

25 Տե՛ս նույն տեղում, էջ 316։

1136 թ. Ռայմոնդը՝ անկարող զենքի ուժով ընկճելու հայոց եռանդուն ու քաջակորով իշխան Լևոնին, դիմեց խորամանկության։ Հրավիրելով Լևոնին Անտիոք, գերեց նրան ու ազատ արձակեց 60.000 դահեկան փրկավճար, ինչպես նաև Մամեստիա, Ադանա և Սարվանդիքար քաղաքները ստանալուց հետո[26]։ Ազատվելով գերությունից Լևոնը ետ խլեց Կիլիկիայից խաբեությամբ վերցրված հիշյալ քաղաքները։ Այստեղից էլ կարելի է եզրակացնել, թե Կիլիկիան Հայաստանի ու Անտիոքի դքսության միջև ընթացող պայքարը հիմնականում Դաշտային Կիլիկիայի և ոչ թե սոսկ սահմանագլխին գտնվող մի քանի ամրոցների տիրապետման համար էր, ինչպես կարծում է Ժակ դը Մորգանը[27]։

Բյուզանդական Հովհան Կոմնենոս կայսեր (1118—1143) սպառնալիքը ստիպեց Կիլիկիային և Անտիոքի դքսությանը հաշտություն կնքել և դաշնակցել բյուզանդացիների դեմ։

1137 թ. Հովհան Կոմնենոս կայսրը Փոքր Ասիայի Մելիքղազի Դանիշմանյան իշխանի դեմ կազմակերպած մի շարք հաջող արշավանքներից հետո, ձեռնարկեց իր մեծ արշավանքը դեպի Կիլիկիա ու Ասորիք։

Գրավելով Տարսոնը, Ադանան, Անազարբան, կայսրը մտադիր էր շարժվել Վահկա բերդի վրա, սակայն նախ շարժվեց դեպի Անտիոք։ Լատին դուքսը ստիպված եղավ հաշտություն խնդրել կայսրից ու ճանաչել Բյուզանդիայի գերիշխանությունը։ Դրանից հետո կայսրը արշավեց դեպի Կիլիկիա, նպատակ ունենալով նվաճել նրա լեռնային մասը և վերացնել Հայկական իշխանությունը։ Հովհան Կոմնենոսի այս արշավանքն ամենայն մանրամասնությամբ նկարագրել է բյուզանդական տարեգիր Նիկիտաս Խոնիատը։ Տիրելով Ադանային ու Տարսոնին, կայսրը «շքավարարվեց այդքանով և շարունակեց պատերազմը ամբողջ Հայաստանը (իմա՝ Կիլիկիան) նվաճելու նպատակով»[28]։ Հույներին հերոսական դիմադրություն ցույց տվեցին հատկապես Անազարբայի և Վահկա բերդի պաշտպանները։ Ըստ Խոնիատի «Անազարբան պաշտպանում էին լավ զինված ու քաջակորով մարդիկ»[29]։

Վահկացիների ցույց տված դիմադրության մասին Խոնիատը գրում է. «Նրանք ոչ միայն ներում չխնդրեցին, այլև չհամաձայնվեցին հաշտության և ոչ մի պայմանագրի... մարտնչելուց բոլորովին չվախեցան»[30]։ Սակայն, ի վերջո հայերն ստիպված էին տեղի տալ թշնամու գերազանց ուժերի առաջ։

Ռուբինյան իշխանությունը Կիլիկիայում 1137 թ. մի քանի տարով դադարեց գոյություն ունենալուց, սակայն շուտով՝ 1145 թ. նորից վերականգնվեց, շնորհիվ այն հանգամանքի, որ Կիլիկիայում հայերը կազմում էին բնակչության բացարձակ մեծամասնությունը և ամրացված Կիլիկյան Տավրոսի անտառապատ լեռներում ու կիրճերում, զենքը ձեռքին չէին դադարում պայքարել թշնամու դեմ։ 1137 թ. Հովհան կայսեր ունեցած հաջողությունը հեռու էր

---

26 Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 80։
27 Տե՛ս J. de Morgan, Histoire du peuple arménien, p. 171.
28 Nicitas Choniata, Historia, Bon, 1835, p. 29.
29 Նույն տեղում։
30 Նույն տեղում, էջ 34։

կատարյալ լինելուց։ Նա չկարողացավ իրականացնել Ասորիքի ու Միջագետքի գրավումը, ուստի կայսրը 1142 թ. կազմակերպեց նոր արշավանք դեպի Արևելք։ Անտիոքի դքսից նա պահանջեց անձնատուր լինել։ Մերժում ստանալով պաշարեց Անտիոքը, սակայն թողնելով պաշարումը հաջորդ տարվան, մեկնեց Կիլիկիա, ուր և մահացավ որսորդության ժամանակ (1143)[31]։

Հովհան կայսրին հաջորդեց որդին՝ Մանուելը՝ (1143—1180), որն, ի տարբերություն հոր, իր հիմնական ուշադրությունը սևեռեց եվրոպական ճակատին։ Այդ ժամանակ սրվեցին հակամարտությունները խաչակիրների և Կիլիկիայի միջև։ 1143 թ. Անտիոքի խաչակիրները նորից հարձակվեցին Կիլիկիայի վրա և գրավեցին որոշ վայրեր։

1142 թ. Կոստանդնուպոլսում գերության մեջ մահացել էր Լևոն Ռուբինյանը, իսկ նրա որդի Թորոսը, փախուստի դիմելով, կարողացել էր վերադառնալ Կիլիկիա։ Իր շուրջը համախմբելով հայ բնակչությանը, Թորոսը ոչ միայն Կիլիկիայի սահմաններից դուրս է վտարում բյուզանդացիներին ու սելջուկ թուրքերին, այլև ընդարձակում է երկրի սահմանները[32] և վերականգնում Ռուբինյան իշխանությունը Կիլիկիայում։ Թորոսի հաջողությունը պայմանավորված էր նաև արտաքին քաղաքական երկու նպաստավոր հանգամանքներով։ Նախ՝ Անտիոքի խաչակիրները պարտություն էին կրել Հալեպի ամիրա Նուր ադ-Դինից, ապա՝ Եդեսիան ընկել էր թշնամու ձեռքը, իսկ Բյուզանդիան զբաղված էր Արևմուտքում՝ պատերազմական գործողություններով։

Զգալով Արևելքում տեղի ունեցած քաղաքական փոփոխությունների ծանր հետևանքները կայսրության համար, Բյուզանդիան այնտեղ ուղարկեց մի մեծ բանակ՝ Անդրոնիկոս Կոմնենոսի գլխավորությամբ։

Պատերազմը Թորոսի դեմ խիստ անհաջող ընթացք ունեցավ Բյուզանդիայի համար։ Այդ մասին Նիկիտաս Խոնիատի մոտ կարդում ենք. «Գալով Կիլիկիա ու թշնամանալով Թորոսին, նա (իմա՝ Անդրոնիկոսը) հաճախակի մարտի բռնվեց նրա հետ և բացի անհաջող պատերազմից, ոչ մի փառքի արժանի գործ չկատարեց... և նրանից (իմա՝ Թորոսից) խայտառակ պարտություն կրեց»[33]։ Հիրավի, 1152 թ. Մամեստիայի մոտերքում տեղի ունեցած վճռական ճակատամարտում բյուզանդական բանակը գլխովին ջախջախվեց։ Ինքը՝ Անդրոնիկոսը հազիվ փախավ Անտիոք[34]։ Թորոսը գերեց բյուզանդացիների հետ համագործակցած Լամբրոնի իշխան Օշինին։ Համաձայն Հեթում պատմիչի, Օշինը պարտավորվեց Թորոսին վճարել 40000 բյուզանդական ոսկի փրկագին, սակայն վճարեց միայն կեսը, իսկ մյուս կեսը հաշվեց որպես օժիտ Թորոսի աղջկան, որի հետ ամուսնացավ նրա որդի Հեթումը։ Խնամիական կապերը, սակայն, չվերացրին թշնամությունը այս երկու հայ իշխանությունների միջև։ Հետագայում էլ Օշինը շարունակեց օգնել Բյուզանդիային՝ Թորոսի դեմ մղված պայքարում։ Թորոսն ստիպված եղավ պաշարել Լամբրոնը։ Գրիգոր Պահլավունի կաթողիկոսի եղբայր Ներսես Շնորհալու միջնոր-

---

[31] Տե՛ս Nicitas Choniata, p. 53.

[32] Տե՛ս Մ. Անեցի, էջ 131։

[33] Nicitas Choniata, p. 180.

[34] Տե՛ս նույն տեղում։ Մատթեոս Ուռհայեցի, էջ 401։

դությամբ երկու կողմերն իրար հետ կապվեցին «անքակտելի բարեկամությեամբ», սակայն, ըստ երևույթին, այդ հաշտեցումը առերես էր միայն։

Անզոր լինելով տվյալ պահին նոր բանակ ուղարկել Կիլիկիա, Բյուզանդիան Իկոնիայի սուլթան Մաքսուդին հրահրեց ընդդեմ Կիլիկիայի։ Մաքսուդը շլացած Մանուել կայսրի ուղարկած ոսկիներով, մեծ բանակով շարժվեց դեպի Կիլիկիա։ Թորոսը նրան դիմավորեց սահմանի վրա։ Սելջուկյան սուլթանը պահանջեց Թորոսից ենթարկվել Բյուզանդիային, սակայն Հայոց իշխանը դիվանագիտորեն պատասխանեց, որ ինքը գերադասում է սելջուկ-թուրքերի ավագությունը։ Բավարարված իր ինքնասիրությունը շոյող այս պատասխանից, Մաքսուդը ետ քաշեց բանակը[35]։ Թորոսն, իհարկե, սոսկ վտանգը հեռացնելու համար էր տվել այդ խոստումը, որը երբեք էլ չպիտի կատարեր։

Սուլթան Մաքսուդը Մանուել կայսրի դրդմամբ 1155 թ. կրկին հարձակվեց Ռուբինյանների վրա, սակայն անհաջողության մատնվեց։ 3000-անոց սելջուկյան մի ջոկատ Ասորվոց դռների (Պորտելլայի) վրայով փորձեց մտնել Անտիոքի դքսության սահմանները, բայց պարտություն կրեց հայ և լատին զորքերից, որոնց գլուխ կանգնած էր Թորոսի եղբայր Ստեփանեն։ Կրելով մեծ կորուստներ սելջուկ-թուրքերը ստիպված եղան նահանջել Կիլիկիայից։

Այնուհետև Մանուել կայսրը փորձեց հայերի դեմ հանել Անտիոքի իշխան Ռեյնալդ Շատիլիոնին։ Դրա համար առիթ ծառայեցին հայերի և Անտիոքի խաչակիրների միջև ծագած սահմանային վեճերը մի քանի բերդերի շուրջը, որոնք գրավվել էին հայերի կողմից։ Ռեյնալդը Թորոսից պահանջեց ազատել Գաստոն կոչված սահմանային ամրոցը։ Անտիոքի խաչակիրների և Կիլիկիայի հայերի միջև տեղի ունեցան զինված ընդհարումներ փոփոխակի հաջողությամբ[36]։ Երկու կողմերն էլ մեծ կորուստներ կրեցին։ Ի վերջո Թորոսը Անտիոքի դքսությանը զիջեց սահմանամերձ մի քանի բերդեր ու Ռեյնալդի հետ հաշտություն կնքեց։ Այս հաշտությունը ձեռնտու չէր Բյուզանդիային, որի արտաքին քաղաքականության նպատակն էր թուլացնել և՛ Անտիոքի դքսությունը, և՛ Կիլիկիան՝ երկուսին էլ հեշտությամբ կուլ տալու համար։ Հասկանալով այդ, Թորոսն ու Ռեյնալդը չբավարարվեցին միայն հաշտություն կնքելով, այլ 1156 թ. համատեղ հարձակում գործեցին Բյուզանդիայի տիրապետության ներքո գտնվող Կիպրոս կղզու վրա և մեծ ավար ձեռք բերեցին։

Անշուշտ, Բյուզանդիան չէր հաշտվում Կիլիկիան կորցնելու փաստի հետ։ Պարտություն կրելով Իտալիայում՝ կայսրությունն իր ամբողջ ուշադրությունը նորից դարձրեց Արևելքի վրա։

1158 թ. մի մեծ բանակի գլուխ անցած, ինքը՝ Մանուել կայսրը շարժվեց Կիլիկիայի ու Անտիոքի դքսության վրա[37]։

---

35 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 402—403։

36 Տե՛ս „Documents arméniens", t. I, p. 172.

37 Տե՛ս *Joannes Cinnamus*. Epitome rerum ad Joanne et Alexio Comnenis gestarum, p. 178.

Թորոսին մոլորության մեջ գցելու նպատակով, կայսրն իր բանակը առերևույթ շարժեց սելջուկների դեմ։ Թորոսը կռահելով կայսեր խորամանկությունը, քաշվեց լեռները։ Դաշտային Կիլիկիայի քաղաքների գրավումից հետո Մանուելը ներխուժեց Ասորիք[38]։ Ռեյնալդնստիպված եղավ հաշտություն խնդրել բյուզանդական կայսրից, ճանաչելով նրան իբրև գահերեց ու պարտավորվեց օգնական զորք տրամադրել[39]։ Մանուելը հաշտվեց նաև Թորոսի հետ։ Բյուզանդիայի այս մեղմ վերաբերմունքը բացատրվում է հզորացած Ռումի սելջուկներից կայսրության ունեցած երկյուղով։ Սելջուկները հավասարաչափ սպառնում էին և՛ Կիլիկիային, և՛ Անտիոքի խաչակիրներին, և՛ Բյուզանդիային։ Մյուս կողմից՝ կայսրությունը չէր հրաժարվել Ասորիքն ու Հյուսիսային Միջագետքը նվաճելու վաղեմի մտադրությունից։ Ուստի նա ձգտում էր ամեն կերպ չեզոքացնել Կիլիկիայի հայերին ու Անտիոքի խաչակիրներին։ Ստեղծվեց երեք պետությունների դաշինք՝ ուղղված Ասորիքի տիրակալ Նուր ադ-Դինի դեմ։ Խախուտ հիմքեր ունեցող այդ դաշինքը չտվեց դրական արդյունքներ։ Շուտով Մանուել կայսրը, իմանալով Կոստանդնուպոլսում ծայր առած խռովության մասին, շտապեց հաշտություն կնքել նաև Նուր ադ-Դինի հետ ու մեկնեց մայրաքաղաք։ Կայսեր մեկնումից հետո՝ Նուր ադ-Դինը նախ սկսեց սպառնալ Դաշտային Կիլիկիայի բյուզանդական կառավարչին, Անտիոքի դքսությանը և Ռուբինյանների իշխանությանը, իսկ այնուհետև գործի դրեց ռազմական ուժը։

1164 թ. Խարիմի մոտ տեղի ունեցած ճակատամարտում Դաշտային Կիլիկիայի բյուզանդական կառավարիչ Կալոմանը, Անտիոքի իշխան Բոհեմունդը և Տրիպոլիի կոմս Ռայմոնդը պարտություն կրեցին Նուր ադ-Դինից ու ճակատամարտի մասնակից Թորոսին հաջողվեց խույս տալ վտանգից։

Այդ հաղթանակից հետո Նուր ադ-Դինը սկսեց նեղել Անտիոքն ու սպառնալ Կիլիկիային։ Զբաղված լինելով Արևմուտքի գործերով (պայքար հունգարական գահի համար) Բյուզանդիան ոչ մի վճռական միջոցառում չկարողացավ ձեռնարկել Նուր ադ-Դինի դեմ։ Այսուամենայնիվ, մինչև XII դարի 80-ական թվականների սկիզբը Դաշտային Կիլիկիան շարունակեց մնալ Բյուզանդիայի գերիշխանության տակ։ Դաշտային Կիլիկիան ազատագրելու նպատակով Թորոսը Բյուզանդիայի դեմ եռանդուն պայքար սկսեց։ Այդ պայքարում նրան մեծապես աջակցեցին նրա Ստեփանե ու Մլեհ եղբայրները։ Այդ պայքարն ի վերջո պսակվելու էր հաջողությամբ։

Թորոս Բ-ին հաջորդեց իր փոքրահասակ որդի Ռուբենը (1169—1170), որի խնամակալն էր Թովմա Պայլը։ Սակայն մի տարի անց գահին տիրացավ Ռուբենի հորեղբայր Մլեհը։ Ռուբենն իր խնամակալի հետ ուղարկվեց Անտիոք, այնտեղից Հռոմկլա, ուր և մեռավ։

Դեռևս Թորոսի կենդանության ժամանակ Մլեհը ձգտում էր իշխանության։ Ասում են, որ նա մինչև իսկ կամեցել է սպանել իր եղբորն ու այդ պատճառով արտաքսվել երկրի սահմաններից։ Ընդհանրապես Մլեհը յուրահատուկ

---

38 Տե՛ս *Joannes Cinnamus*, Epitome rerum ad Joanne et Alexio Comnenis gestarum, p 180.

39 Տե՛ս նույն տեղում, էջ 186։

դեմք է Կիլիկիայի հայկական իշխանության պատմության մեջ։ Նա զինվորական ծառայության էր մտել Հալեպի սուլթան Նուր ադ-Դինի մոտ, որից ստացել էր Գուրա քաղաքն իր շրջակայքով։ Իմանալով եղբոր մահը, Մլեհը Նուր ադ-Դինի հեծյալների գլուխ անցած մտավ Կիլիկիա և խլեց իշխանությունը[40]։

Ըստ երևույթին, Մլեհն այն քաղաքական գործիչն էր, որը հասկացավ, թե խաչակիրների «բարեկամությունը» մեկուսացնում է Ռուբինյանների պետությունը՝ թշնամանքի վիհ փորում նրա և հարևան պետությունների միջև։ Մլեհի գլխավոր նպատակն էր Հայկական Կիլիկիայի բացարձակ անկախության ձեռք բերումը։ 1173 թ. Մլեհը բյուզանդացիներից ազատագրեց Դաշտային Կիլիկիայի մեծ մասը։ Նա հաջող մարտեր մղեց Երուսաղեմի խաչակիրների թագավոր Ամորիի և Անտիոքի դուքս Բոհեմունդի դեմ[41], Մլեհը Կիլիկիայում տաճարական ասպետների ամբողջ ունեցվածքը «յարքունիս» գրավեց (պետականացրեց)։

Մլեհը երկրի մայրաքաղաքը դարձրեց Սիսը (1173 թ.)՝ Հին Փլավիոպոլիսը, որն այդ օրվանից մինչև 1375 թ. մնաց որպես Կիլիկիայի հայկական պետության վարչա-քաղաքական կենտրոն։

Մլեհը անհաջող պայքար մղեց Լամբրոնի Հեթումյանների դեմ, նպատակ ունենալով վերջ դնել այդ բյուզանդասեր հայ իշխանությանը, «քանզի վաղուց հետէ Ռուբինեանք (Ռուբինյանները) և Հեթմոնք (Հեթումյանները) մախային ընդ միմեանս»[42]։

1175 թ. վերջին կամ 1176 թ. սկզբին իշխաններն ու բարձր հոգևորականությունը, դժգոհ Հալեպի սուլթանի հետ Մլեհի համագործակցության քաղաքականությունից, դավադրություն կազմակերպեցին ու Սիս քաղաքում սպանեցին նրան։ Ըստ Սմբատ տարեգրի Մլեհին սպանեցին վատ վարքի համար. «Յետ Ե (5) ամի տէրութեան... իշխանքն Մլեհին խորհեցան խորհուրդս անօրէնութեան և միաբանեալ սպանին զնա ի (մայրա)քաղաքն Սիս, յաղագս անհանգիստ բարուց իւրոց»[43]։

Մլեհի մահից հետո իշխանությունն անցավ նրա եղբորորդի Ռուբենին (1175—1187)։

Վերցնելով իշխանությունը Ռուբեն Գ-ը մահապատժի ենթարկեց իր հորեղբոր սպանության գլխավոր մեղավորներին, որոնք կարծում էին, թե պարզև կստանան իրենց չարագործության համար[44]։ Այս փաստը ևս խոսում է հօգուտ այն բանի, որ Մլեհը որպես ողջախոհ քաղաքական գործիչ, որոշ շրջանակներում համակրանք է վայելել։

1176 թ. բյուզանդացիները Մերսիկեֆալում փոքրասիական սելջուկներից ծանր պարտություն կրեցին և ընդմիշտ հրաժարվեցին Ասորիքը, Կիլիկիան ու Հյուսիսային Միջագետքը նվաճելու ձգտումից։

---

40 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 88։

41 Տե՛ս „Hist. Orient.", t. I, p. 588.

42 Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 89։

43 Նույն տեղում, էջ 191—192։

44 Տե՛ս Միքայել Ասորի, Ժամանակագրություն, էջ 491։

Օգտվելով բարենպաստ հանգամանքից, Ռուբեն Գ-ն ազատագրեց բյուզանդացիների ձեռքում մնացած Ադանան ու Տարսոնը։

Դաշտային Կիլիկիայից բյուզանդացիներին վտարելուց հետո, Ռուբեն Գ փորձեց իրեն ենթարկել Լամբրոնի Հեթումյաններին, սակայն ապարդյուն։ Սմբատի ասելով Ռուբեն Գ երեք տարի համառորեն պաշարեց Բերդը, սակայն «ոչ կարաց առնուլ»[45]։ Դաշինք կնքելով Անտիոքի դուքսի հետ, Լամբրոնի իշխանը դրդեց նրան հարձակվել Ռուբեն Գ-ի վրա։ Հույս չունենալով զենքի ուժով հայերից խլել Դաշտային Կիլիկիան, Անտիոքի դուքս Բոհեմունդը դիմեց խորամանկության։ 1185 թ. նա Ռուբեն Գ-ին հրավիրեց Անտիոք՝ բարեկամորեն, բայց բանտարկեց նրան[46], որից հետո Բոհեմունդը ներխուժեց Կիլիկիա, սակայն հանդիպեց Ռուբենի եղբոր՝ պարոն Լևոնի գլխավորած հայկական զորքի ուժեղ դիմադրությանն ու ստիպված եղավ ետ նահանջել։ Խաչակիրներին գիջելով Ադանան ու վճարելով մեծ փրկագին (30.000 դինար), Ռուբեն Գ ազատվեց գերությունից։ Իշխանության գլուխ անցած Լևոն Բ (1187—1219) շուտով Կիլիկիային վերադարձրեց Ադանան։ Այժմ արդեն Սելևկիայից մինչև Ալեքսանդրետ ձգված Միջերկրականի ափը գտնվում էր հայերի ձեռքին։ Այսպիսով, Դաշտային Կիլիկիայում գերիշխանություն ձեռք բերելու համար Կիլիկիայի և խաչակիրների միջև պայքարը լուծվեց հօգուտ հայերի։ Լևոն Բ 1203 թ. վերջապես իր գերիշխանությանը ենթարկեց նաև Լամբրոնի Հեթումյաններին, և նրա իշխանության սահմանները արևմուտքում հասան մինչև Ատալիա նավահանգիստը, իսկ արևելքում՝ Եփրատ գետը։

Այսպիսով, կիլիկյան հայերի երկարատև պայքարը բյուզանդացիների, սելջուկների ու խաչակիրների դեմ վերջացավ փայլուն հաղթանակով։ Կիլիկիայում Ռուբինյան իշխանության հաստատումից մինչև 1182 թ. հայկական պետականության գլխավոր թշնամին մնում էր Բյուզանդիան, որը ձգտում էր ոչ միայն իր ձեռքում պահել Դաշտային Կիլիկիան, այլև վերանվաճել Լեռնային Կիլիկիան ու ոչնչացնել հայկական իշխանությունն ընդհանրապես։ Այժմ Բյուզանդիան հարկադրված էր հաշտվել կատարված փաստի հետ։

Կիլիկիան իր անկախությունը նվաճեց ու պահպանեց նաև Փոքր Ասիայի սելջուկների դեմ մղած մահու ու կենաց պայքարում։

Կիլիկյան հայկական պետականությունն առաջացավ նախքան խաչակիրների երևալը։ Այնուամենայնիվ խաչակիրների՝ արևելքում հանդես գալը մասամբ նպաստեց Կիլիկիայի իշխանության սահմանների ընդարձակման գործին։ Հաճախ խաչակիրների հետ դաշնակցած հայերը պաշտպանողական պատերազմներ էին մղում բյուզանդացիների ու սելջուկների դեմ, իսկ դա, բնականաբար, տալիս էր դրական հետևանքներ, թեև խաչակիրների Կիլիկիային հասցրած վնասն առհասարակ մեծ եղավ։

Ռուբինյանների հաջողության գլխավոր պայմաններից մեկն էլ այն էր, որ պատմա-քաղաքական բարդ իրադրության մեջ նրանք շատ խելացիորեն օգտագործում էին հարևան թշնամի պետությունների միջև գոյություն ունե-

---

45 Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 91,

46 Տե՛ս նույն տեղում։

ցող հակասությունները և ամրապնդում Կիլիկյան հայկական իշխանության դիրքերը։ Այդուհանդերձ Կիլիկյան հայկական իշխանության ռազմա-քաղաքական հաջողության գլխավոր ու վճռական պատճառն այն էր, որ XI—XII դարերում հայերը կազմում էին Կիլիկիայի բնակչության մեծամասնությունը և իրենց ձեռքն էին վերցրել երկրի, ինչպես տնտեսական, նույնպես և քաղաքական կյանքի ղեկը։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ ԵՎ ՆՐԱ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՐԵՎԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԵՏ

## 1. ԼԵՎՈՆ Բ-Ի ՀՌՉԱԿՈՒՄԸ «ՀԱՅՈՑ ԹԱԳԱՎՈՐ»

Լևոն Բ-ի իշխանության տարիներին Կիլիկիայի արտաքին քաղաքական հարաբերությունները բավականաչափ բարդ էին։ Մերձավոր Արևելքում տեղի էին ունեցել քաղաքական խոշոր իրադարձություններ ու փոփոխություններ։ Սալահ ալ-Դինը ճնշում էր խաչակիրներին։ Իննոկենտիոս Գ-ի օրոք (1198—1216) աշխուժացել էր պապական դիվանագիտությունը արևելքում, տեղի էին ունեցել երրորդ, չորրորդ, հինգերորդ խաչակրաց արշավանքները (թեկուզ դրանք էական փոփոխություն չմտցրին Արևելքի ու Արևմուտքի ուժերի փոխհարաբերությունների մեջ), Անգելոսների (1185—1204) հարստության ժամանակ թուլացել էր Բյուզանդական կայսրությունը (հատկապես 1204 թ. խաչակիրների կողմից Կոստանդնուպոլսի գրավումից հետո), հայկական և վրացական զորքերի հարվածների ներքո թուլացել էր փոքր-ասիական սելջուկյան պետությունների երբեմնի ռազմական հզորությունը։

Միջազգային կյանքում տեղի ունեցած այս փոփոխություններն ընդհանուր առմամբ նպաստավոր էին Կիլիկիայի համար, և Լևոն Բ հմտորեն օգտագործեց դրանք իր արտաքին քաղաքականության մեջ։ Գործ ունենալով Սալահ ալ-Դինի, Ֆրեդերիկոս Շիկամորուսի, Իննոկենտիոս Գ-ի և Փոքր Ասիայի սելջուկների հետ, նա դրսևորեց դիվանագիտական արտակարգ ընդունակություններ։

Լևոն Բ Կիլիկիայում սկսեց իշխել դեռևս 1185 թ. իր եղբայր Ռուբենի գերության ժամանակ։ Ազատվելուց հետո Ռուբենը հօգուտ իր եղբոր հրաժարվեց իշխանությունից, քաշվեց վանք, ուր և 1187 թ. մահացավ։

Նույն թվականին Կիլիկիայի հյուսիս-արևմտյան կողմից ներխուժեցին վաչկատուն թուրքմենները, որոնք, ըստ երևույթին ալպյան մարգագետինների համար, ընդհարվելով քրդերի հետ ու հալածվելով նրանցից, մուտք էին գործել Կիլիկիա[1]։ Լևոնը կարողացավ ետ մղել թուրքմեն վաչկատուններին։

Լևոն Բ-ի իշխանության ժամանակ Կիլիկիային վտանգ էր սպառնում Եգիպտոսի Այյուբյան սուլթան Սալահ ալ-Դինի կողմից, որն իր իշխանու-

---

[1] *Michel le Syrien*, III, p. 401—403.

թյամն էր ենթարկել Եգիպտոսը, Արաբիան, Դամասկոսի և Հալեպի ամիրայությունները, իսկ 1187 թ. հաղթելով խաչակիրներին, գերել էր Երուսաղեմի թագավոր Գվիդոն Լուսինյանին և նվաճել Երուսաղեմը։

Թուրքմեններից հազիվ ազատված Կիլիկիան ասպատակեցին Սալահ ալ-Դինի զինվորները։ Ամանոսյան լեռներից Կիլիկիա ներխուժեց Սալահ ալ-Դինի զորքը ամիր Ռոստոմի առաջնորդությամբ։ Այդ մասին Սմբատի մոտ կարդում ենք. «Ժողովեաց անթիւ Թուրքման և եմուտ յաշխարհն Կիլիկեցւոց և խրոխտայր բառնալ զանուն քրիստոնէից»[2]։ Լևոնն իր բանակով հարձակվում է հակառակորդի «անհամար բազմութեան» վրա և հաջողացնում է առաջին իսկ հարվածից բառնալ ի միջո «զգլխաւորն նոցա զՌոստոմն», իսկ զորքը փախուստի է դիմում ու դուրս վտարվում երկրի սահմաններից։ Այս անհաջողությունից մի տարի անց խաչակրաց երրորդ արշավանքի հետևանքով Սալահ ալ-Դինը հնարավորություն չունեցավ պատժիչ ջոկատներ ուղարկել Կիլիկիա։

Գլխավորելով երրորդ խաչակրաց արշավանքը[3], Ֆրեդերիկոս Շիկամորուսը հեռավոր նպատակներ էր հետամտում։ Նա ձգտում էր ոչ միայն Սալահ ալ-Դինից վերանվաճել Երուսաղեմը, այլև իր իշխանությանը ենթարկել Մերձավոր Արևելքի երկրները, ինչպես նաև Բալկանյան թերակղզին։ Սակայն այս արշավանքի միակ շոշափելի արդյունքն էր Կիպրոսի նվաճումը, որը տրվեց գահազուրկ Գվիդոն Լուսինյանին։

Որոշ ուսումնասիրողներ կարծում են, որ իբր Լևոն Բ բարեկամական հարաբերություններ է ստեղծել Ֆրեդերիկոս Շիկամորուսի հետ։ Իրականում նա դիվանագիտորեն օգտագործել է խաչակրաց նոր արշավանքը՝ հանուն Կիլիկիայի քաղաքական շահերի։

Հայտնի է, թե ինչպիսի զրկանքներ էին կրում գերմանացի խաչակիրները Փոքր Ասիայում պարենի պակասության հետևանքով։ Վարդան պատմիչը հայտնում է, թե գերմանացի ասպետները Իկոնիա հասան խիստ քաղցած և ուժասպառ[4]։ Դուրս գալով Իկոնիայից, Ֆրեդերիկոս Շիկամորուսը երիցս դիմեց Լևոն Բ-ին՝ օգնելու իրեն պարենամթերքով, միանալու արշավանքին, խոստանալով նրան թագ շնորհել։ Լևոն Բ բանակցություններ սկսեց Ֆրեդերիկոս Շիկամորուսի հետ. հայոց դեսպանները Ֆրեդերիկոսի մոտ եկան 1190 թ. հուլիսի 8-ին, սակայն երկու օր անց կայսրը խեղդվեց Սելևկիա գետում։ Աղբյուրների հաղորդած տեղեկություններից երևում է, որ Լևոն Բ վերին աստիճանի զգույշ վերաբերմունք է ցուցաբերել Ֆրեդերիկոս Շիկամորուսի արևելյան արշավանքին։

Խաչակրաց երրորդ արշավանքը ժամանակավորապես սպառնալիքի տակ դրեց Սալահ ալ-Դինի տիրույթները Ասորիքում և Պաղեստինում, սակայն այդ արշավանքի անհաջողությունը նորից ամրապնդեց նրա դիրքերը Մերձավոր Արևելքում։ Խաչակիրները մնացին միայն ծովեզրյա շրջաններում։

---

2 Սմբատ սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 200։

3 Այս արշավանքի մյուս ղեկավարներն էին Ֆրանսիայի Ֆիլիպ Ավգուստ և Անգլիայի Ռիչարդ Առյուծասիրտ թագավորները։

4 Տե՛ս Վարդան, էջ 178։

1193 թ. Այյուբյան սուլթանը Լևոն Բ-ի մոտ ուղարկեց հատուկ դեսպանություն, պահանջելով իր իշխանությանը հանձնել ոչ միայն հարևան պետություններից Կիլիկիային միակցված երկրամասերը, այլև՝ բուն Կիլիկիան։ Լևոնը կտրականապես մերժեց հանդուգն այդ պահանջը, արժանապատվությամբ պատասխանելով Սալահ ալ-Դինի դեսպանին. «Ասա ցուլտանն թէ երկիր ոչ ունիմ տալ քեզ, բայց եթէ գայցես յերկրիս իմում, տաց քեզ յերկսայրից ըմպելիս, որպէս հաւատակցին քո Ըըստոմիս»[5]։ «Իսկ ի սոյն ամի (ՈԽԲ=1193),— գրում է Սմբատը,— առաքեաց Սալահատին սուլտանն առ Լեւոն՝ տալ զերկիրն Կիւլիկիոյ ի նա, և ինքն (Լևոն) գնացէ ողջ անձամբ»։ Սա ճակատագրական մի վերջնագիր էր, որտեղ դրվում էր Կիլիկիայի գոյության հարցն առհասարակ։ Ստանալով նման պատասխան, Սալահ ալ-Դինը իր զորքը շարժում է Կիլիկիայի վրա և հասնում մինչև Սև գետը, սակայն արշավանքի ընթացքում նա մահանում է (1193 թ. մարտի 4), իսկ բանակը ետ է վերադառնում[6]։

Սալահ ալ-Դինի մահից հետո Այյուբյանների պետությունը սասանվեց՝ երկրում ծայր առած գահակալական երկպառակություններից։ Թուլացած եգիպտական այս պետությունը այլևս լրջորեն չէր սպառնում Կիլիկիային։

Այժմ Դաշտային Կիլիկիայում գերիշխանություն ձեռք բերելու համար նորից սուր պայքար վերսկսվեց կիլիկյան հայերի և Անտիոքի դքսության միջև։

1193 թ. Անտիոքի դուքս Բոհեմունդ Գ (1163—1201) դավադրաբար Անտիոք հրավիրեց Լևոն Բ-ին։ Սակայն Ռուբինյան իշխանը նախօրոք իմանալով Բոհեմունդի նենգության մասին հանդիպեց նրան սահմանագլխում գտնվող Գաստոն ամրոցում։ Լևոն Բ ինքը գերեց Բոհեմունդ Գ-ին (1194 թ.)։ Անտիոքի դուքսը ստիպված իր համար ստորացուցիչ պայմանագիր կնքեց Լևոն Բ-ի հետ, ըստ որի հրաժարվում էր Գաստոնից, մինչև Այաս ձգված Դաշտային Կիլիկիայի հարավային մասերի նկատմամբ ունեցած հավակնություններից, Կիլիկիային էին վերադարձվում Ռուբեն Գ-ի գերության ժամանակ խաչակիրների կողմից զավթված սահմանամերձ մի շարք վայրեր, այդ թվում և Դրունք Ասորվոցը (Պորտելլան)։ Բացի այդ, համաձայն պայմանագրի, Բոհեմունդի որդի Ռայմոնդը ամուսնանալու էր Լևոն Բ-ի եղբոր աղջիկ Ալիսի հետ։ Այդ ամուսնությունից ծնված Ռայմոնդ-Ռուբենը հետագայում Լևոնի կողմից հայտարարվեց գահաժառանգ։ Այս քայլով Լևոն Բ փորձում էր իր իշխանությանը ենթարկել նաև Անտիոքը։

Լևոն Բ սահմանամերձ մի շարք շրջաններ նվաճեց նաև Իկոնիայի սելջուկյան սուլթանությունից։

Այսպիսով, իր իշխանության առաջին շրջանում (1187—1198) նա ընդարձակեց պետության սահմանները։ Արտաքին թշնամիների դեմ տարած հաղթանակների և Կիլիկիայի հայկական իշխանության սահմանների ընդարձակման հետևանքով խիստ բարձրացավ Լևոն Բ-ի միջազգային հեղինակությունը։ Բնակչության աճը, երկրի տնտեսական կյանքի բարգավաճումը, քա-

---

5 Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 204։

6 Տե՛ս նույն տեղում։

ղաքների ու արտաքին առևտրի զարգացումը խիստ նպաստեցին Կիլիկիայի ծաղկմանը։ Կիլիկիան դարձավ Միջերկրական ծովի արևելյան ափի ամենազորեղ իշխանություններից մեկը. Ստեղծվեցին բոլոր նախադրյալները Կիլիկիայի հայկական իշխանությունը թագավորություն հռչակելու համար։

Լևոն Բ-ին շտապեց թագ ուղարկելու համաձայնություն հայտնել բյուզանդական Ալեքսիոս կայսրը (1195—1203)։ Կոստանդնուպոլիս ուղարկվեց հատուկ պատվիրակություն՝ Ներսես Լամբրոնացու գլխավորությամբ, իմանալու Բյուզանդիայից արքայական տիտղոս ստանալու պաշտոնական պայմաններն ու հանգամանքները, քանի որ դրա հետ էր կապված Կիլիկյան հայկական թագավորության և հայ եկեղեցու անկախության հարցը։ Ներսես Լամբրոնացին բյուզանդական կայսրի կողմից ընդունվում է մեծ շուքով[7]։ Հայոց իշխանին առաջարկվում է թագ ստանալ Բյուզանդիայից և ոչ թե Հռոմեական Սրբազան կայսրությունից, որի հետ թագ ստանալու վերաբերյալ բանակցությունները սկսվել էին ավելի վաղ։ Կայսրը Լևոնին խորհուրդ էր տալիս կրել ոչ թե հռոմեական, այլ բյուզանդական թագը, քանի որ Կիլիկիան ավելի մոտ էր Բյուզանդիային[8]։ Բանակցությունների ընթացքում դրսևորվում են հայ և հույն եկեղեցիների միջև գոյություն ունեցող դավանաբանական դարավոր վեճերը։ Հույն հոգևորականությունը անհաշտ դիրք է գրավում և հայոց եկեղեցուց պահանջում է ընդունել հունական դավանանքի մի շարք կարևոր դրույթներ։ Հայոց պատվիրակությունը մերժում է հույն հոգևորականության պահանջը և, այսպիսով Բյուզանդիայի ու Կիլիկյան հայկական պետության քաղաքական մերձեցումը ձախողվում է։

1196 թ. Լևոն Բ Հռոմի պապ Կելեստինոս Գ-ի մոտ ուղարկեց մի պատվիրակություն, որի խնդիրն էր պապի միջնորդությամբ թագ ստանալ Հռոմեական Սրբազան Կայսրությունից[9]։ Կելեստինոս պապը՝ շահագրգռված Արևելքում կաթոլիկ եկեղեցու դերի և ազդեցության ուժեղացմամբ, ուրախությամբ ընդառաջեց Լևոն Բ-ին։

Պապի ուղարկած պատվիրակությունը թագ հանձնելու պայմանների մասին բանակցություններ սկսեց Լևոն Բ-ի հետ։ Պատվիրակությունը պապի անունից Լևոն Բ-ից պահանջեց ընդունել կաթոլիկ եկեղեցու դավանանքի մի շարք կետերը և այդ մասին տալ պարտավորագիր[10]։ Սա հռոմեական կաթոլիկ եկեղեցու կողմից կիլիկեցիներին ներկայացվող պահանջների սկիզբն էր։ Հետագայում եվրոպացի կաթոլիկները ավելի հեռուն գնացին՝ կիլիկեցիներից պահանջելով «կաթոլիկացում» ոչ միայն դավանությամբ, այլև լեզվով (լատինացում)։

Լևոն Բ կաթողիկոսին և եպիսկոպոսներին ժողովի հրավիրեց քննելու կաթոլիկ եկեղեցու առաջարկները։ Ժողովն առերես ընդունեց Հռոմի Կելեստինոս Գ պապի ներկայացուցիչ՝ Մայնցի արքեպիսկոպոս Կոնրադի առաջադրած մի շարք պայմանները։

---

7 Տե՛ս Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց, էջ 335։
8 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 150։
9 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 474։
10 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 142։

Լևոն Բ-ի թագադրության հանդիսավոր արարողությունները տեղի ունեցան 1198 թ., Տարսոնում։ Հանդեսին ներկա էին աշխարհիկ ու հոգևոր բազմաթիվ իշխաններ, ընծաներով եկած հարևան պետությունների դեսպաններ[11], ինչպես նաև Բաղդադի խալիֆի ներկայացուցիչը[12]։ Այս բոլորը վկայում են Լևոն Բ-ի հեղինակության բարձրացման և նրա թագավորության միջազգային ճանաչում գտնելու մասին։

Լևոն Բ-ի թագավորությունը ժամանակակիցների կողմից դիտվել է որպես հայկական թագավորության վերականգնում, որպես մեծ իրադարձություն հայոց պատմության մեջ։ Այդ մասին Սմբատը գրում է. «647 (1198) թվականի հունվարի 6-ին, Հայտնության օրը, Հռոմի եկեղեցու և գերմանական կայսեր հովանավորությամբ օծեցին Լևոնին հայոց թագավոր։ Հայերը ուրախացան, որովհետև նրանք, հանձին հայոց թագավոր Լևոնի, տեսնում էին իրենց վերջերս կործանված թագավորության վերականգնումը»[13]։

## 2. ԼԵՎՈՆ Բ-Ի ՆԵՐՔԻՆ ԵՎ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Կիլիկյան հայկական պետությունը մինչև իր գոյության վերջը միանգամայն ինքնուրույն քաղաքականություն վարեց Հռոմեական Սրբազան կայսրության և Բյուզանդիայի նկատմամբ։ Չնայած գործադրած բոլոր ջանքերին, Հռոմին երբեք էլ չհաջողվեց Կիլիկիայում ունենալ քիչ թե շատ ուժեղ հենարան։ Այդ մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ 1201 թ. մարտին, Ջենովայի հետ կնքած առևտրական պայմանագրերում Լևոն Բ իրեն հորջորջում է «Աստծո ողորմածությամբ Հայոց թագավոր՝ Լևոն»[14], ինչպես և դրամների վրա գրում էր «Ողորմութեամբն Աստուծոյ Հայոց թագաւոր»։

Կիլիկիայի հարևանությամբ հաստատվել էին «Տաճարական» և «Հյուրընկալ» ասպետները, որոնց նկատմամբ Լևոն Բ բարյացակամ վերաբերմունք ցուցաբերեց ու երկրի սահմանամերձ շրջաններում նրանց ավատներ տրամադրեց։ Այդ քայլը պետք է բացատրել Լևոնի ողջախոհ քաղաքականությամբ և ոչ թե ասպետների ազդեցությամբ։ Դրանով Լևոն Բ աշխատում էր ապահովել երկրի պաշտպանությունը արտաքին վտանգից։

Սակայն, որքան էլ ողջախոհ լիներ Լևոն Բ դեպի խաչակիրներն ունեցած իր վերաբերմունքով. այնուամենայնիվ, թե ինքը և թե իրեն շրջապատող հայ աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալները զերծ չէին այն պատրանքից, որ «տիրոջ գերեզմանի» ազատագրման և արևելյան քրիստոնյաների փրկության համար են սուր վերցրել ու խաչ բարձրացրել Արևմուտքի խաչակիր ասպետները[15]։ Մի կողմից այս հանգամանքը, մյուս կողմից էլ Եվրոպայի ու խաչակիրների հետ քաղաքական և առևտրական հարաբերությունների հաստատումը,

---

11 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 208։

12 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 150։

13 Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 208։

14 *V. Langlois*, Le trésor des chartes d'Arménie, p. 105, 114, 122.

15 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, *Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության*, հատ. Ա, էջ 61։

արաբների ու սելջուկների դեմ մղված պատերազմներում նրանց հետ համագործակցելը, խաչակիրների իշխանությունների՝ Անտիոքի դքսության, Երուսաղեմի ու Կիպրոսի թագավորությունների հետ խնամիական կապերի հաստատումը Կիլիկիայի հայ աշխարհիկ ու հոգևոր ֆեոդալների մի մասի մոտ առաջացրեցին լատինասերների հոսանք, որը կողմնակից էր կաթոլիկ եկեղեցու հետ մերձենալուն։

Հաշվի առնելով քաղաքական իրավիճակը, հայոց թագավորը բարյացակամ էր ինչպես լատինասերների, այնպես էլ նրանց հակառակորդների նկատմամբ։

Լևոն Բ-ի Հռոմից միանգամայն անկախ քաղաքականությունը դրսևորվեց նաև Անտիոքի դքսության գահի շուրջ առաջացած քաղաքական վեճում։ Երբ Բոհեմունդ Դ Տաճարական խաչակիրների օգնությամբ Ռուբեն-Ռայմոնդի ձեռքից խլեց Անտիոքի դքսությունը, Լևոն թագավորը 1203 թ. բռնագրավեց Կիլիկիայում տաճարականներին հատկացված ավատական տիրույթներն ու նրանց վտարեց երկրից։ Չնայած Իննոկենտիոս Գ պապի եռանդուն միջամտությանը Լևոն Բ անհողդողդ մնաց մինչև Ռուբեն-Ռայմոնդի դարձը Անտիոք[16]։

Խաչակրաց երրորդ արշավանքից հետո Լևոն Բ ձգտում էր թուլացած Անտիոքն իրեն ենթարկել. Կիլիկիայի թագավորության ու Անտիոքի դքսության միջև սկսվեց երկարատև պայքար։ Այդ պայքարում հայոց թագավորին օգնում էին Հյուրընկալ ասպետները[17]։

Ի վերջո, 1216 թ., Անտիոքի ֆեոդալներից մեկի՝ Ամորիի օգնությամբ Լևոն Բ-ին հաջողվեց գրավել Անտիոքը և իշխանությունը հանձնել իր թոռ Ռուբեն-Ռայմոնդին, որը հայոց թագաժառանգ էր հռչակված։

Սակայն 1219 թ. Անտիոքի մի խումբ իշխանավորներ՝ Գիլլոմ դե-Ֆարբելի գլխավորությամբ դավադրություն կազմակերպեցին Ռուբեն-Ռայմոնդի դեմ, որը ստիպված եղավ փախչել Անտիոքից։ Այն ժամանակ Լևոն Բ փոխեց որոշումը և իր մանկահասակ աղջկան՝ Զաբելին նշանակեց Կիլիկիայի թագաժառանգ։ Զաբելի մայրը Կիպրոսի Ամորի Լուսինյան թագավորի աղջիկն էր։

Անտիոքի դքսությունը Կիլիկիային միացնելու պայքարով տարված, Լևոն Բ աչքաթող էր արել փոքր ասիական սելջուկների վտանգը։ Դեռևս 1206 թ. Բոհեմունդ Բ-ի դրդումով, Հալեպի ամիրաների հետ դաշնակցած սելջուկները ներխուժեցին Կիլիկիա, սակայն պարտություն կրեցին։

1216 թ., երբ Լևոն Բ դարձյալ զբաղված էր Անտիոքի գործերով, սելջուկները նորից ներխուժեցին Կիլիկիա. այս անգամ վտանգը մեծ էր։ 1216 թ. հունվարի 25-ին սելջուկները պաշարեցին ռազմական առումով խոշոր նշանակություն ունեցող սահմանամերձ Կապան ամրոցը։ Ճիշտ է, սելջուկներին չհաջողվեց գրավել այն, սակայն ամրոցի պարիսպներից դուրս տեղի ունեցած ահեղ մարտերում հայկական զորքը պարտություն կրեց և Լամբրոնի

---

[16] *Տե՛ս F. Tournebize,* Histoire politique et religieuse de l'Arménie, p. 188.

[17] *Տե՛ս R. Grousset,* Histoire des croisades et du royaume franc de Jérusalem, հ. III, p. 74.

Հեթում իշխանի որդի Կոստանդին Գունդստաբլն ու մի շարք այլ իշխաններ գերի ընկան սելջուկների ձեռքը։ Պարտության գլխավոր պատճառն այն էր, որ հայոց թագավորին ընդդիմադիր իշխաններից ոմանք լքեցին ռազմի դաշտը։ Այդպես վարվեց, օրինակ, պարոն Ադանը[18]։ Հայկական զորքի պարտության մասին Միքայել Ասորու ժամանակագրության շարունակողը հաղորդում է. «Դա տեղի ունեցավ թագավորի ծերության ու հիվանդության պատճառով, բացի այդ՝ իշխանները հավատարիմ չէին նրան»[19]։

Լևոն Բ ստիպված էր ընդունել սելջուկյան սուլթան Քեյ Քավուսի առաջադրած ծանր պայմանները։ Նախ՝ որպես փրկագին սուլթանին զիջեց Լուլուա և Լօղատի բերդերը ազատելով կալանավոր իշխաններին, երկրորդ՝ պարտավորվեց տարեկան որոշ տուրք տալ սելջուկներին և, բացի այդ, ամեն տարի սուլթանին տրամադրել 300 զինվոր։

Ժամանակակիցները բարձր գնահատական են տվել Լևոն Բ-ի ներքին ու արտաքին քաղաքականությանը, ընդգծելով նրա անձնական քաջությունը և պետական գործչի հեռատեսությունը։

Այսպիսով, թագավորության հռչակումը և անկախության ամրապնդումը, երկրի միավորումը և մասնատվածության վերացումը իրենց հերթին պայմաններ էին ստեղծում Կիլիկիայի տնտեսական կյանքի հետագա զարգացմանն ու վերելքին։ Կիլիկիայի առաջին թագավոր Լևոն Բ Մեծագործի քաղաքական, վարչական և տնտեսական բարեփոխությունները[20] պայմանավորված էին մի կողմից՝ նախորդ շրջանում Կիլիկիայում տեղի ունեցած տնտեսական վերելքով և մյուս կողմից՝ Ռուբինյան իշխանության ռազմա-քաղաքական հաջողություններով։ Այդ բարեփոխություններն իրենց հերթին էլ ավելի ամրապնդեցին երկրի անկախությունն ու պաշտպանությունը և նպաստեցին տնտեսական կյանքի հետագա զարգացմանը։

Լևոն Բ-ի առաջին ձեռնարկումներից էր Կիլիկիայում դեռևս ինքնանկախ մնացած առանձին ֆեոդալական տների հնազանդեցումը, այդ թվում Բյուզանդիային կողմնակից, անջատողական ձգտումներ ունեցող Լամբրոնի իշխանության ենթարկումն ու միացումը կենտրոնական պետությանը[21]։

Այնուհետև, մտածելով երկրի սահմանների ամրացման մասին, Կիլիկիայի սահմանամերձ շրջանները նա հանձնեց առավել խոշոր չորս իշխանների[22] հյուրընկալների և տաճարականների ասպետական հոգևոր օրդեններին[23] հսկողությանը։ Սմբատի վկայությամբ «Այսպիսի խոհեմ իշխանօք և քաջ զօրօք և առատ պարգևօք և ընդարձակ սեղանով զամենն յօժար կազմէր ի կռիւ. ուր և դիպէր քաջապէս վարէր զթշնամիսն և չդադարէր ի գերելոյ և յափշտակելոյ զազգն յանօրինաց»[24]։

---

18 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, Փարիզ, 1859։

19 Միքայել Ասորի, էջ 513։

20 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, «Լևոն Մեծագործ Ա թագաւոր Սիսուանայ» բաժինը, էջ 435—485։

21 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, 1961, էջ 286։

22 Տե՛ս V. Langlois, Le trésor, p. 126.

23 Տե՛ս Նույն տեղում, էջ 114—123։

24 Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, Փարիզ, 1859, էջ 113։

Լևոն Բ ձեռնամուխ եղավ նաև երկրի վարչական մարմինների վերակառուցման և նորերի ստեղծման գործին։ Նա մեծ ուշադրություն դարձրեց երկրի տնտեսական կյանքի՝ հատկապես առևտրի զարգացման վրա։ Կարգի բերվեցին նավահանգիստները, կամուրջները, առևտրական ու ռազմական ճանապարհները, կառուցվեցին իջևաններ, պանդոկներ և շուկաներ։ Այնուհետև ստեղծվեց առևտրական նավատորմիղ[25], կտրվեցին ոսկե, արծաթե դրամներ[26]։

Լևոն Բ աչքաթող չարեց նաև երկրի մշակութային կյանքի բնագավառը։ Նա հրամայեց թե հին և թե իր օրոք կառուցված նոր վանքերին կից հիմնադրել դպրոցներ և նյութապես ապահովել։ Գիտության և արվեստի մարդկանց հրավիրեց արքունիք և պայմաններ ստեղծեց նրանց գործունեության համար։ Մի հիշատակարանում ասված է, որ Լևոն Բ-ի օրոք «Կիլիկեցվոց աշխարհը լցվեց իմաստությամբ և բազմացան մատենագրությամբ զբաղվողները՝ կեսը գրչության, մյուսները զարդանկարչության գծով»։

Լևոն Բ Մեծագործը վախճանվեց 1219 թ. մայիսի 2-ին, իր հետնորդներին թողնելով բարգավաճ և վերելք ապրող մի զորեղ պետություն։

---

25 Տե՛ս Ա. Տիրացյան, Կիլիկյան Հայկական պետության սեփական նավատորմիղ ունենալու հարցի շուրջը, «Էջմիածին», 1957, Զ, էջ 43—49։

26 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 377—378։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԶՈՐԵՂԱՑՈՒՄԸ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ XIII ԴԱՐՈՒՄ

## 1. ՀԵԹՈՒՄՅԱՆՆԵՐԻ ՀԱՍՏԱՏՎԵԼԸ ԿԻԼԻԿՅԱՆ ԳԱՀԻ ՎՐԱ

*Լևոն Բ, ինչպես նշվեց, թեկուզ և թագաժառանգ էր նշանակել իր դուստր Զաբելին, սակայն նրա մահից հետո գահակալության հարցը բարդություններ առաջ կանգնեցրեց արքունիքին։ Զաբելը անչափահաս էր, ուստի և հոր կամքով նրա խնամակալներ էին նշանակված Լամբրոնի տեր Կոստանդինը և Գաստոնի տեր Ադանը։ Լևոն Բ խնամակալ Ադանին հանձնարարել էր իր դստերն ամուսնացնել Հունգարիայի թագավորի որդու հետ*[1]*։ Սակայն այդ ամուսնությունը տեղի չունեցավ, ինչպես Սմբատ սպարապետն է գրում. «զի Ունգռաց թագաւորին որդին ոչ եկն յորժամ լուաւ զմահ թագաւորին Լևոնի»*[2]*։*

*Շուտով շարքից դուրս եկավ նաև Ադան պայլը, ժամանակագրի վկայությամբ. «որոյ նենգել Ադնին ըստ բնական ատելութեանն Յունաց ընդ ազգիս Հայոց, քանզի Հոռոմ էր ազգաւ, խորհէր ի միտս յինքն առնուլ զիշխանութիւնն, վասն որոյ... սպանաւ ի Հաշիշեացն սակաւ ժամանակս ինչ կալեալ զպայլութիւնն»*[3]*։*

*Այսպիսով, Կոստանդին պայլը մնաց Զաբելի միակ խնամակալն ու երկրի փաստական կառավարիչը։ Շուտով թագի հավակնորդների շուրջ հավաքված խմբավորումների միջև պայքար սկսվեց իշխանության համար։ Գահակալական երկպառակություններն ու կռիվները մոտավորապես վեց տարի տևեցին, որով ժամանակավորապես թուլացավ երկրի քաղաքական վիճակը և վատթարացավ նրա միջազգային դրությունը։*

*Իշխանության համար մղվող պայքարից աշխատում էին օգտվել երկրի ներսում և երկրից դուրս գտնվող օտար (հույն և լատին) թագավորներն ու իշխանները։ Այսպես, 1220 թ. Տարսոնի և Մսիսի հույն և հայ իշխանները, Կոռիկոսի Վահրամ իշխանի գլխավորությամբ, խռովություն են բարձրացնում Կոստանդին պայլի գլխավորած կենտրոնական իշխանության դեմ և 5000 զորքով գրավում են Տարսոնն ու մի շարք այլ քաղաքներ։ Կոստանդին պայլը 300*

---

1 *Տե՛ս* Միքայել Ասորի, *էջ 505։*

2 Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 225։*

3 Միքայել Ասորի, *էջ 505։ Տե՛ս նաև՝* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 223։*

*քաջերով կանգնեցնում է խռովարար զորքերի առաջխաղացումը։ Ադանայի և Մսիսի միջև ընկած ճանապարհին հանդիպելով նրանց, ստիպում է նահանջել Տարսոն, ուր և տեղի է ունենում վճռական ճակատամարտ։ Այս ճակատամարտում հաղթում են Կոստանդինի քաջերը, հակառակորդին ստիպում են փախչել, մի մասին էլ գերի են վերցնում[4]։*

*Թագի հավակնորդներից էր Լևոն Բ-ի ավագ դուստր Ռիթայի ամուսինը՝ Երուսաղեմի թագավորը, որն ուզում էր իր որդուն դնել Կիլիկիայի թագավորական գահին։ 1220 թ. Ռիթայի և իր որդու մահով դադարում է այդ պայքարը։*

*Թագի ավելի ուժեղ և խորամանկ հավակնորդն էր Անտիոքի իշխան Ռուբեն-Ռայմոնդը։ Դեռևս Լևոն Բ նրան վաղուց զրկել էր թագաժառանգությունից՝ դավաճանության պատճառով։ Սակայն Ռուբեն-Ռայմոնդը, մի կողմից՝ օգտվելով Լևոն Բ-ի մահից հետո Կիլիկիայում ստեղծված քաղաքական խառնաշփոթ դրությունից, մյուս կողմից՝ Անտիոքում պարտություն կրելով Տրիպոլիի իշխան Բոհեմունդից և ապավինելով Կոռիկոսի իշխան Վահրամ Մարաջախտի, ինչպես և այլ իշխանների օգնությանը, փախչում է Կիլիկիա և գրավելով Տարսոն քաղաքը, պատրաստվում է գրավել իշխանությունը։ Սակայն Կոստանդին պայլը, համախմբելով իր շուրջը հայրենասեր իշխաններին, պարտության է մատնում նրան և գերի վերցնելով ապստամբներին՝ բանտարկում է Տարսոնի բերդում, որտեղ և նրանք մեռնում են[5]։*

*Կոստանդին պայլը չկարողանալով անմիջապես օգտվել Ռուբեն-Ռայմոնդի և մյուս իշխանների դեմ տարած հաղթանակից և, վախենալով դեռևս ուժեղ կենտրոնախույս ֆեոդալական տների դիմադրությունից, խուսափեց իշխանության գլուխ դնել իր որդի Հեթումին։*

*Այնուամենայնիվ վերոհիշյալ դեպքերը արքունիքին ստիպեցին արագացնել թագաժառանգ Զաբելի ամուսնությունը, այսինքն՝ գահակալության հարցի լուծումը։ 1222 թ. այդ հարցը լուծելու համար Կոստանդին պայլը խորհրդակցություն հրավիրեց իշխանական տների ներկայացուցիչների, բարձր հոգևորականների մասնակցությամբ։ Դիմելով ներկաներին Կոստանդինը ասում է. «Պարոններ, դուք գիտեք, թե ինչ վիճակում է գտնվում մեր աշխարհը... Մեր թագավորի դուստրը ամուսնության տարիքին հասավ։ Դուք ինքներդ քննարկման ենթարկեք և որոշեք, թե ում հետ պետք է ամուսնացնել նրան, որպեսզի ունենանք պարոն (թագավոր), որովհետև ես ցանկանում եմ անդորրություն իմ տոհմի և որդիների համար»[6]։*

*Խորհրդաժողովը, որը տևեց մի քանի օր, որոշեց Զաբելին ամուսնացնել Անտիոքի իշխան Բոհեմունդի որդի Ֆիլիպի հետ, պատճառաբանելով, որ նա «մեզ հարևան է, և լավ կարող է օգնել մեզ կարիքի դեպքում»[7]։*

---

4 Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 228—224։*

5 Միքայել Ասորի, *էջ 515—516։ Տե՛ս նաև «Վահրամ Ռաբունի պատմութիւն Ռուբենեանց», Փարիզ, 1859, էջ 217—218։*

6 Սմբատ Սպարապետ, *Պատմութիւն, 1856, Մոսկվա, էջ 111։*

7 Միքայել Ասորի, *էջ 505,* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 225,* Կիրակոս Գանձակեցի, *էջ 188, 189։*




Քարտեզի հեղինակ՝ Մ Հ. Ճեվահիրճյան.
Խմբագրությամբ Ս Տ. Երեմյանի

Մասշտաբ
կմ 15 0 15 30 45 60 կմ

Ինչպես վերևում նշվեց, Կոստանդին պայլը ցանկանում էր Զաբելին ամուսնացնել իր որդու՝ Հեթումի հետ, սակայն գերադասելով երկրի քաղաքական միասնությունը և անդորրությունը, նա ենթարկվեց ժողովի որոշմանը։ Կոստանդինն ու հայ ֆեոդալական ավագանին Ֆիլիպի առաջ դրեցին որոշ պայմաններ, որ նա հետևեր հայկական սովորություններին, պահպաներ և հավատարիմ մնար հայ եկեղեցու ծիսակատարություններին ու կարգին, որպեսզի յուրաքանչյուրը (առաջին հերթին պարոնը) պահեր իր իրավունքը[8]։

Ֆիլիպը 16 տարեկան էր երբ ամուսնացավ Զաբելի հետ, հետևաբար երկրի քաղաքական իշխանության ղեկը դեռևս մնում էր Կոստանդին պայլի ձեռքում։

Սակայն շուտով, օգտագործելով իր թագավորական իրավունքները, Ֆիլիպը դրժեց վերոհիշյալ պայմանները և աշխատեց մեկուսացնել Կոստանդինին ու մյուս հայ իշխաններին։ Սմբատ Սպարապետը և Կիրակոս Գանձակեցին հաղորդում են, որ Ֆիլիպը իր հոր խորհրդով Անտիոք ուղարկեց «զթագն Լևոնի արքայի և զպաղատն արքունական, զոր յերևելի աւուրս կանգնէր, և այլ գանձս ոսկւոյ և արծաթոյ»[9]։

Կոստանդին պայլը, կատարելով հայ ֆեոդալական ավագանու պահանջները, իշխանությունից հեռացրեց ուխտադրուժ Ֆիլիպին։ Այդ մասին Սմբատ Սպարապետը հաղորդում է. «Երբ նա (Ֆիլիպը) մեծացավ և դարձավ 20 տարեկան, իր հոր (Անտիոքի իշխան Բոհեմունդի) խորհրդով որոշեց պետական պաշտոններից հեռացնել բոլոր հայ իշխաններին և փոխարինել նրանց յուրայիններով (իմա՝ ֆրանկներով), այնպես որ իշխանները չկարողանալով հանդուրժել այդ, ձերբակալեցին նրան, գահից զրկեցին ու բանտարկեցին Թիլ ամրոցում, որտեղ և մահացավ»[10]։ Իշխանական խորհուրդը երկրի կառավարիչ նշանակեց Կոստանդինին. «Պայլ դրին զպարոն Կոստանդին»[11]։

Այսպիսով, օգտագործելով հայ իշխանների դժգոհությունը Ֆիլիպի վարած հայատյաց և լատինասեր քաղաքականությունից, Կոստանդինը իշխանների օգնությամբ կատարեց պետական հեղաշրջում։ Նա այս անգամ ստանձնեց ոչ միայն Զաբելի, այլև ամբողջ թագավորության խնամակալությունը և դարձավ երկրի փաստական կառավարիչը՝ 1224—1226 թթ.։ Սակայն թագավորական գահը դարձյալ թափուր մնաց։ 1226 թ. Կոստանդինը նորից առաջ քաշեց գահի համար թեկնածու ընտրելու հարցը։ Այս անգամ կաթողիկոսի և հայ «մեծամեծ» ֆեոդալների համաձայնությամբ որոշվեց Զաբելին ամուսնացնել Կոստանդին պայլի որդի Հեթումի հետ և միաժամանակ նրան ճանաչել Կիլիկիայի թագավոր[12]։ Զաբել թագուհին սկզբում չհամաձայնվեց ամուսնանալ Հեթումի հետ։ Կիրակոս Գանձակեցու վկայությամբ՝ «Թագու-

---

8 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 225։

9 Կիրակոս Գանձակեցի, էջ 189։ Տե՛ս նաև Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 225։

10 Սմբատ Սպարապետ. *Պատմութիւն*, 1856, էջ 111։ Տե՛ս նաև՝ Միխայել Ասորի, էջ 517—518, Կիրակոս Գանձակեցի, էջ 189։

11 Սմբատ Սպարապետ, *Պատմութիւն*, էջ 111։

12 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, էջ 225, Միխայել Ասորի, էջ 506։ Սմբատ Սպարապետ, *Պատմութիւն*, 1856, էջ 112, Կիրակոս Գանձակեցի, էջ 189։

հին ու հաւանէր լինել կին մանկանն»[13] (Հեթումը պատանի էր)։ Այդ պատճառով ապստամբեց և, մորը տեսնելու պատրվակով (մայրը Կիպրոսի խաչակիրներից էր), «չոգաւ ի Սելևկիա առ ֆռանկսն»[14] Հյուրընկալների օրդենի Պարգևական ամրոցը։ Հայ իշխանները խիստ զայրացած Զաբելի արարքից և խաչակիրների վերաբերմունքից, պատեհ առիթ գտան պատժելու Հյուրընկալների օրդենին։ Կոստանդինի գլխավորությամբ հայկական բանակը պաշարեց Սելևկիան։ Հյուրընկալները չդիմադրեցին, հանձնեցին բերդը և թագուհուն[15]։ Այնուհետև Զաբելը համաձայնվեց ամուսնանալ Հեթումի հետ։

Սրանով Կոստանդին պայլը և մյուս հայ իշխանները, որոնք կողմնակից էին կենտրոնացված ուժեղ պետության, հաղթանակ տարան կենտրոնախույս ուժերի, այդ թվում խաչակիրների և լատին հոգևորականության դեմ։ Հեթումը դարձավ Հայոց թագավոր[16]։

Այսպիսով, 1226 թ. ոչ միայն իշխանության գլուխ անցավ Հեթումյանների հարստությունը, այլև միաժամանակ թուլացավ խաչակիրների և լատին տարրերի քաղաքական ազդեցությունը Կիլիկիայում։ Երկրում վերականգնվեց կարգ ու կանոնը, ստեղծվիցին կենտրոնացված միապետական կարգեր։ Սրանով վերջացավ Հեթումյանների և Ռուբինյանների երկարատև պայքարը իշխանության համար, քանի որ Հեթումի և Զաբելի ամուսնությամբ այդ իշխանական տները միավորվեցին։

Երկրում իշխանությունն ամրապնդելու համար՝ պետական բարձր պաշտոններն ու գործակալությունները կենտրոնացվեցին Հեթումյան տոհմի ներկայացուցիչների ձեռքում[17]։ Հեթումի հայրը նշանակվեց թագավորահայր և ավագ պարոն։ Խոշոր գործակալություններ հանձնվեցին նաև թագավորի եղբայրներին։ Սպարապետությունը տրվեց Հեթում Ա-ի ավագ եղբորը՝ Սմբատին։ Լևոնը նշանակվեց մարաջախտ՝ բանակի հրամանատար սպառազինման և մատակարարման գծով. միաժամանակ նրան հանձնվեց իշխանաց-իշխանի կամ պարոնաց-պարոնի բարձր պաշտոնը։ Օշինը նշանակվեց պայլ։ Թագավորի եղբայրներից Բարսեղը նշանակվեց Դրազարկի վանքի վանահայր և Սսի արքեպիսկոպոս, որը միաժամանակ հանդիսանում էր Սսի արքեպիսկոպոսական աթյանի նախագահը։ Դա մի ազդեցիկ պաշտոն էր ոչ միայն երկրի եկեղեցական գործերի կառավարման մեջ, այլև քաղաքական ասպարեզում։

Լամբրոն անառիկ ամրոց-կալվածքը վերադարձվեց Հեթումյանների ազգական (Հեթում Ա թագավորի մորեղբայր) Կոստանդին իշխանին՝ նրան արքունիքի հետ կապելու նպատակով։ Միաժամանակ շնորհվեց թագադրի պաշտոնը[18]։ Նույնպիսի քաղաքականությամ վարեց Հեթում Ա նաև Կոռիկոսի

---

13 Կիրակոս Դանձակեցի, էջ 189։

14 Նույն տեղում։

15 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 112։ Նույնի, Տարեգիրք, 1956, էջ 226։ Տե՛ս նաև՝ Կիրակոս Գանձակեցի, էջ 189։

16 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 190։

17 Տե՛ս Նույն տեղում։

18 Տե՛ս Նույն տեղում, էջ 287։

նախկին տիրոջ՝ Վահրամ մարաջախտի որդիների նկատմամբ, նրանց վերադարձնելով իրենց հոր սեփական ամրոցը։

Այսպիսով, հաղթահարվեց լատին. և լատինասեր տարրերի աշխուժացումը պետության մեջ և վերջ տրվեց իշխանական տների երկպառակություններին։ Սկսվեց համեմատաբար երկարատև խաղաղության մի շրջան, որը մի կողմից նպաստավոր պայմաններ ստեղծեց երկրի տնտեսական ու մշակութային վերելքի համար և մյուս կողմից՝ հնարավոր դարձրեց վարելու կայուն արտաքին քաղաքականություն։

Ներքին և արտաքին այդ անդորրը սակայն երկար չտևեց, Միջին և Մերձավոր Արևելքում տեղի ունեցած միջազգային բնույթի խոշոր իրադարձությունների հետևանքով։

## 2. ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿԻԼԻԿԻԱՆ

Հեթում Ա-ի թագավորության սկզբներին (XIII դարի 20—30-ական թթ.) էր, որ մոնղոլ-թաթարական վաչկատուն ցեղերը Կենտրոնական Ասիայի խորքերից խոշոր զանգվածներով ներխուժեցին Միջին և Մերձավոր Արևելք։ Գրավելով Պարսկաստանն ու Անդրկովկասը, ապա պարտության մատնելով Փոքր Ասիայի սելջուկներին, դարի կեսերին նրանք սկսեցին սպառնալ Կիլիկիայի հայկական պետության գոյությանը։ Նպատակ ունենալով գրավել Սիրիայի (Ասորիք)[19] և Պաղեստինի ռազմական ու առևտրական խոշոր նշանակություն ունեցող նավահանգիստները, մոնղոլները հետագայում ընդհարվեցին Եգիպտոսի մամլուքների սուլթանության հետ։ Այս ժամանակ Կիլիկյան հայկական թագավորության գոյությանն սպառնում էին նաև՝ Եգիպտոսի մամլուքները և Իկոնիայի սուլթանությունը, մանավանդ խաչակրաց VII և VIII արշավանքների անհաջողությունից հետո։

Մոնղոլների առաջին արշավանքը դեպի Անդրկովկաս՝ ազդեցություն չունեցավ Փոքր Ասիայի և Մերձավոր Արևելքի քաղաքական իրադարձությունների վրա, սակայն վիճակը շուտով փոխվեց։ 1243 թ. Էրզրումի և Երզնկայի միջև գտնվող Քյոսեդաղի և «Ջմանկատուկ քաղաքագյուղի» մոտ մոնղոլների և իկոնյան սելջուկների միջև տեղի ունեցած ճակատամարտի նախօրեին, Կիլիկյան հայկական պետության քաղաքագետների առաջ ծառացել էր մի դժվարին հարց։ Կամ նրանք պետք է օգնեին սելջուկներին և դրանով իրենց վրա վերցնեին մոնղոլների հաջորդ հարվածը, կամ թե, հրաժարվելով սելջուկներին օգնելուց, պիտի շահեին մոնղոլների բարեկամությունը և դրանով զերծ մնային մոնղոլական ահարկու վտանգից։ Կիլիկյան հայ դիվանագետները նախընտրեցին երկրորդ ուղին, թեև դրանով անմիջապես թշնամանում էին Իկոնյան սուլթանության, իսկ հետագայում՝ Եգիպտոսի հետ։

Ջմանկատուկի ճակատամարտի նախօրեին Հեթում Ա օգնության հրավեր ստացավ Իկոնիայի սուլթան Քեյ-Խոսրովից։ Այդ օգնությունը ենթա-

---

19 Այսուհետև՝ Սիրիա։

տամբ Կոստանդինին զրկեց իր կալվածքներից։ Կոստանդինը ներում խնդրեց Հեթում Ա-ից, որի փոխարեն խոստացավ իր որդուն թագավորի մոտ ծառայության տալ, միայն թե ինքը վերստին ստանար իր բերդ-կալվածքը[31]։ Մերժում ստանալով Կոստանդին Լամբրոնացին գնաց Իկոնիա և սուլթանի զորքի գլուխ անցնելով մտավ Կիլիկիա։ Օգտվելով այն հանգամանքից, որ արքունի զորքը ցրված էր, ավերեց բազմաթիվ ավաններ և ագարակներ։ Սպանեց և կոտորեց շատերին, կողոպտեց երկիրը, քրիստոնյաներից (հայերից) շատերին գերի վերցրեց, և այսպիսով շատ չարիքներ գործեց վրեժխնդրությամբ[32]։

Տեսնելով այդ ավերածությունները, Հեթում Ա հավաքում է իր զորքերը, հարձակվում թշնամու վրա, մեծ մասին կոտորում, իսկ մնացածին ապստամբ Կոստանդինի հետ վանում է Իկոնիա[33]։

Հաջորդ տարում (1246) սելջուկյան 26000-անոց մի բանակ ներխուժում է Կիլիկիա և պաշարում Տարսոնը։ Մոնղոլները պահանջում են վերացնել քաղաքի պաշարումը և ետ քաշվել Կիլիկիայից։ Սելջուկները մերժում են մոնղոլների առաջարկը, սակայն, լսելով Քեյ Խոսրովի մահվան մասին, նրանք թողնում են Կիլիկյան հողը, իրենց ձեռքին պահելով միայն Պրական ամրոցը[34], որը երկու տարի հետո վերագրավում են հայկական զորքերը[35]։ 1249 թ. Կիլիկիան մի շարք ռազմական հաղթանակներ է տանում Իկոնյան սուլթանության դեմ։

Այս կռիվների ժամանակ մոնղոլները չկարողացան դաշնակցի իրենց զինվորական պարտականությունները կատարել Կիլիկիայի նկատմամբ։ Անհաջողության մատնվեցին նաև դիվանագիտական ձեռնարկումները, որ խոստացել էին Սմբատ Սպարապետի ուղևորության ժամանակ։ Այնուամենայնիվ. Կիլիկյան հայկական պետության պայքարը սելջուկների դեմ XIII դարի 40—50-ական թվականներին, հաջողությամբ պսակվեց, իսկ Հեթումյանների ախոյան Կոստանդին Լամբրոնացին սպանվեց սեփական ամրոցում։

Սելջուկների և ապստամբ Կոստանդինի պարտությունը ժամանակավորապես ամրապնդեց Կիլիկյան հայկական պետության ներքին և միջազգային դրությունը։

XIII դարի 50-ական թվականներին քաղաքական, դիվանագիտական և ռազմական ավելի սերտ կապեր հաստատվեցին Կիլիկյան հայկական թագավորության և մոնղոլների միջև։

Գրավելով Առաջավոր Ասիայի մեծ մասը և թուլացնելով սելջուկների տիրապետությունը Փոքր Ասիայում, մոնղոլները ոչ միայն իրենց ենթարկեցին նվաճված երկրների ֆեոդալներին, այլև դիվանագիտական ջանք չխնայեցին չնվաճված երկրների թագավորներին ու իշխաններին իրենց կողմը գրավելու համար։ Կարևոր խնդիր համարելով գրավել Բաղդադի խալիֆայությունը և

31 Տե՛ս նույն տեղում, էջ 287—288։ Տե՛ս նաև Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 113։

32 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի. էջ 285։

33 Տե՛ս նույն տեղում։

34 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 227—228։

35 Տե՛ս նույն տեղում։

Սիրիան, նրանք առաջին հերթին ավելի սերտ ռազմական կապեր հաստատեցին Կիլիկիայի հայկական թագավորության հետ։ Բացի այդ, նրանք դիվանագիտական որոշ միջոցառումների դիմեցին՝ Հռոմի Պապին և Արևմտյան Եվրոպայի երկրներին մասնակից դարձնելու իրենց ծրագրած խոշոր արշավանքներին։

Ինչպես վերևում նշվեց, Սմբատ Սպարապետի Կարակորում կատարած ուղևորության ժամանակ երկու կողմերը պայմանավորվեցին Հեթում Ա-ի Մոնղոլիա կատարելիք այցելության մասին։

Հեթում Ա-ի այցը, սակայն, ձգձգվում էր ոչ միայն այն պատճառով, որ Իկոնիայի սուլթանը հարձակում էր գործում Կիլիկիայի վրա, այլև այն պատճառով, որ 50-ական թվականների սկզբներին Կարակորումում պայքար էր գնում իշխանության համար։ Ուշացման պատճառ դարձավ նաև Զաբել թագուհու մահը 1252 թ.։

Կարակորումում իշխանության համար մղվող պայքարը վերջացավ Մանգու խանի հաղթանակով։ 1253—1254 թթ. հայոց թագավորը, Բաթու խանի միջոցով, հրավեր ստացավ այցելելու մոնղոլական պետության մայրաքաղաք Կարակորում։ Հեթում Ա 1254 թ. գարնանը մեկնեց Մանգու խանի մոտ[36]։

Նա իր ուղևորությունը կատարեց Հայաստանի վրայով։ Այստեղ տեսակցեց մի շարք նշանավոր հայ իշխանների, ծանոթացավ Հայաստանի տնտեսական և քաղաքական դրությանը, ապա անցավ Ոսկե Հորդա և այնտեղից ուղևորվեց Կարակորում։ Հեթում Ա-ի այցելության նպատակի և Հայաստանում տիրող դրության մասին Գրիգոր Ակներցին գրում է. «Իսկ... Հեթում թագավորը, երբ լսեց այն ամենի (չարիքների) մասին, որ կատարվել էր մոնղոլների կողմից արևելյան աշխարհում (իմա՝ բուն Հայաստանում), հոգ տանելով իր սեփական երկրի մասին, որպեսզի նույնը չկատարվի, առատ գանձերով և նվերներով գնաց Մանգու խանի մոտ»[37]։

Անշուշտ, Հեթում Ա-ի այցելության նպատակներն ավելի մեծ էին, քան նշված են վերևում։ Այդ երևում է ոչ միայն կնքված պայմանագրի բովանդակությունից, այլև հայ-մոնղոլական հարաբերությունների հետագա ընթացքից։ Այդ պայմանները կարելի է ամփոփել հետևյալ մի քանի կետերի մեջ.

Առաջին.— Պայմանավորվող կողմերը պարտավորվում են օգնել միմյանց պատերազմի ժամանակ։ Ընդ որում, Կիլիկիայի հայերը ռազմականապես օգնելու էին մոնղոլներին՝ Միջագետքը, Սիրիան ու Պաղեստինը գրավելու գործում, իսկ մոնղոլներն էլ պարտավորվում էին պաշտպանելու Կիլիկյան հայկական թագավորությունը՝ Իկոնիայի, Եգիպտոսի և Կիլիկիան շրջապատող մյուս մահմեդական պետությունների հարձակումներից[38]։

Երկրորդ.— «Խաղաղութիւն և բարեկամութիւն մշտնջենաւոր հաստատեսցի ի մէջ նոցա»[39]։

---

36 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 364—365, Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 229—230։

37 Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), էջ 22։

38 Տե՛ս „Recueil des Historiens des croisades. Documents arméniens", t. II, p. 161—165; Այսուհետև՝ „Documents arméniens".

39 Հեթում Պատմիչ, էջ 43։

*Երրորդ.— Առանց Կիլիկիայի թագավորության համաձայնության և պահանջի, մոնղոլական զորքն ու պաշտոնյաները չպետք է մտնեին Կիլիկիայի սահմանները*[40]։



Կիլիկյան ճամփորդական ջրաման արծաթից և ծովային խեցուց, գտնված Ազովի ծովի ափին

*Չորրորդ.— Այն հողերն ու քաղաքները, բերդերն ու ամրոցները, որոնք նախկինում պատկանում էին հայկական թագավորությանը, բայց զավթվել էին ուրիշների կողմից, իսկ հետո էլ անցել մոնղոլներին, պետք է վերադարձվեին հայկական թագավորությանը։*

Կիրակոս Գանձակեցին ամփոփելով Հեթում Ա-ի և Մանգու խանի բանակցությունների արդյունքները, գրում է. «Նվերներ ստանալով նրանից

---

40 *Տե՛ս В. Рубрук,* Путешествие в восточное страны, перев. Маленна, стр. 115.

(իմա Մանգու խանից) ըստ արժանվույն մեծարվեց (իմա Հեթում թագավորը) նրանից և հիսուն օր մնալով այնտեղ, Մանգու խանից ստացավ հրովարտակ, որ ոչ ոք իրավունք չուներ նեղություն տալ նրան և իր երկրին։ Նա (խանը) տվեց ազատության գիր (իմա հարկերից ազատեց) բոլոր վայրերի (հայկական) եկեղեցիները[41]։

Մեր պատմագրության մեջ այդ պայմանագրի և նրա բնույթի մասին տարբեր կարծիքներ են արտահայտվել։ Դատելով պայմանագրի էությունից և Կիլիկյան թագավորության XIII դարի երկրորդ կեսի արտաքին քաղաքականության մեջ բռնած դիրքից կարելի է եզրակացնել, որ Կիլիկիան այդ պայմանագրով մտնում էր մոնղոլական պետության ազդեցության ոլորտը, պահպանելով իր ինքնուրույնությունը՝ ներքին և արտաքին կյանքում[42]։ Անշուշտ, պետք է ընդգծել, որ Կիլիկիայի հայկական թագավորությունը չի մտել մոնղոլական պետության կազմի մեջ և մնացել է ինքնուրույն պետություն։

Այդ դաշինքով միաժամանակ Կիլիկիայի առևտրականների համար հնարավորություն էր ստեղծվում մուտք գործել մոնղոլական լայնածավալ պետության խորքերը։

Առհարկի հպատակություն հայտնելով մոնղոլներին և մոնղոլների պահանջով ուղևորվելով Կարակորում, այնուհանդերձ Հեթումը մասամբ չէր խախտում Կիլիկիայի ավանդական արևմտյան կողմնորոշումը[43]։ Հետևելով Լևոն Բ-ին, 1236 թ. նա Հարուն բերդաքաղաքը հատկացրեց Տևտոնյան օրդենին՝ խոստում առնելով՝ «պահպանել և պաշտպանել» իր թագավորության սահմանները[44]։

Նույնչափ խոսուն են նաև Հեթումի և Հռոմի միջև եղած գրագրությունները՝ ինչպես Կարակորում ուղևորվելուց առաջ, նույնպես և դրանից հետո[45]։ Տակավին 1248 թ., երբ Եգիպտոսի վրա հարձակվելու համար Լուդովիկոս «սուրբ» թագավորը ժամանել էր Կիպրոս, նրան ներկայացան Հեթում Ա-ի պատվիրակները և մահմեդական Սիրիան խորտակելու պատրաստվող մոնղոլ խանի դեսպանները[46]։ Ինչպես վկայում են ֆրանսիական ժամանակագիրները, Հեթումի պատվիրակները եկել էին մեծագին նվերներով և բերել իրենց թագավորի պատրաստակամությունը՝ խաչակիր արքայի դիտավորությունների իրականացման համար տրամադրելու Կիլիկիայի ամբողջ թագավորությունն[47]։

---

41 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 367։

42 Տե՛ս Աշ. Գալստյան, Մոնղոլական շրջանի հայ դիվանագիտության պատմությունից, Լենինական, 1945, էջ 52—58, Г. Микаелян, История Киликийского армянского государства, стр. 316, Լ. Բաբայան, Հայաստանի սոցիալ-տնտեսական..., էջ 211—212։

43 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ..., գիրք Ա, էջ 172—173։

44 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 207։

45 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ..., գիրք Ա, էջ 173 (տե՛ս գրագրությունների բնօրոք ցուցակը), Langlois V., Essai..., p. 26.

46 Հմմտ. „Архив Маркса и Энгельса", V, стр. 213 և հետ., տե՛ս նաև Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ..., գիրք Ա, էջ 173։

47 Տե՛ս Langlois V., Essai..., p. 60.

Ծակատագրական եղան Կիլիկիայի համար մանավանդ մոնղոլների և մամլուքների այն պատերազմները, որոնց անմիջական կովախնձորը հանդիսանում էին Միջագետքն ու Սիրիան։

Ինչպես նշվեց վերևում, 1235—1244 թթ. մոնղոլները նվաճեցին Իրանն ու Անդրկովկասը և ջախջախեցին սելջուկների ռազմական հզորությունը Փոքր Ասիայում։ Սակայն շարունակում էր հարատևել Բաղդադի խալիֆայությունը, իսկ Սիրիան գտնվում էր Եգիպտոսի մամլուքների հովանավորության տակ։ Թեև 1252 թ. մոնղոլական մի ջոկատ ավարառության նպատակով ասպատակեց Դիարբեքիրի և Մայաֆարկինի շրջանները և մոտեցավ Բաղդադին. սակայն փորձ չկատարեց գրավել այն։ Մանգու խանի գահակալումից հետո, նրա եղբայր Հուլավուն նշանակվեց մոնղոլական խանության արևմտյան տիրույթների խան։ Սրան զուգադիպեց Հեթում Ա-ի վերադարձը Կարակորումից, և Հեթումը եկավ Թալաս այցելելու Հուլավուին[48]։

Այնուհետև Հեթումը Հայաստանում հանդիպում է մոնղոլ զորավար Բաչուին, որն ասպատակում էր Իկոնյան սուլթանության տիրույթները։ Հեթումն իր զորքերով օգնում էր Բաչուին և մասնակցում մոնղոլական արշավանքներին, դրա համար էլ Բաչուն «Թուղթ գոհութեան և գովութեան գրեալ վասն նորա առ Հուլաւուն»[49]։

Մանգու խանը Հուլավուի առաջ խնդիր էր դրել վերջ տալ Բաղդադի խալիֆայությանը և գրավել Սիրիան, որոնք այնքան կարևոր ռազմական, տնտեսական և առևտրական նշանակություն ունեին մոնղոլական լայնածավալ պետության համար։

Ըստ հայ-մոնղոլական պայմանագրի, Հուլավուի արշավանքներին պետք է գործուն մասնակցություն ցուցաբերեր նաև Կիլիկիայի թագավորը, սակայն, ինչպես աղբյուրներն են վկայում, Հեթում Ա չի մասնակցել 1258 թ. Բաղդադի գրավման համար Հուլավուի ձեռնարկած արշավանքին, գուցե այն պատճառով, որ այդ ժամանակ Հեթում Ա զբաղված էր Իկոնյան սելջուկների և Կարամանլի թուրքմենների՝ Կիլիկիա կատարած կողոպտչական ասպատակությունների սանձահարմամբ[50]։

1258 թ.՝ Բաղդադի գրավումից հետո, Հուլավուն ձեռնարկում է Միջագետքի մյուս քաղաքների գրավմանը[51]։

Հեթում Ա-ի մասնակցությունը մոնղոլների պատերազմական գործողություններին սկսվում է 1259 թ., երբ Հուլավուն ձեռնարկում է Սիրիայի նվաճումը։ Հետաքրքիրն այն է, որ ինչպես աղբյուրներն են նշում, Հեթումի մասնակցությունն ապահովելու նախաձեռնողները լինում են մոնղոլները։ «Հուլավուն մի տարի հանգստանալուց հետո պատվիրակություն ուղարկեց հայոց թագավորի մոտ, որ ինքը զորքով գա Ուռհայի Միջագետքի թագավորությունը, որովհետև ծրագրում էր արշավել Սուրբ երկիր։ Այն ժամանակ Հեթում արքան տասներկու հազար հեծելազորով և քառասուն հազար հետևակով

48 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 368։
49 Նույն տեղում, էջ 376։
50 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 230—232, 234—235։
51 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 377—384։

ճանապարհվում գալիս է Հուլավուի մոտ և ասում է նրան. «Տե՛ր, Հալեբի սուլթանը գերիշխում է Ասորիքի և ապա Երուսաղեմի թագավորության վրա. ուստի պետք է նախ գրավել գլխավոր քաղաք Հալեբը, և այն ժամանակ կդառնանք ամբողջ Ասորիքի տերը»[52]։

Հուլավուն համաձայնություն է տալիս ռազմական արշավանքի Հեթումի առաջարկած ծրագրին և իր զորավարներին հրամայում է նախ գրավել Հալեպ քաղաքը։ Հալեպի գրավման և հետագա ռազմական գործողություններին մասնակցում էր Հեթումն իր զորքերով։ Աղբյուրները վկայում են, որ Հեթումի հետ էր նաև Կոստանդին կաթողիկոսը[53]։

Հալեպի նվաճումից հետո հայ-մոնղոլական զորքերը գրավում են Դամասկոսը[54]։ Սակայն Հուլավուին չհաջողվեց ավարտել ամբողջ Սիրիայի և Պաղեստինի նվաճումը։ Ստանալով իր եղբոր՝ Մանգու խանի մահվան լուրը, նա շտապում է Կարակորում, Սիրիայում թողնելով Քիթբուղա զորավարին։ Թավրիզում իմանալով որ Խուբիլայը ընտրվել է մեծ խան, Հուլավուն որոշում է վերադառնալ Սիրիա՝ անձամբ ղեկավարելու պատերազմական գործողությունները։ Սակայն մինչև նրա վերադարձը՝ 1260 թ. Քիթբուղայի զորքերը պարտություն են կրում եգիպտական սուլթանից։ Ճակատամարտում մոնղոլների հետ միասին մարդկային մեծ կորուստներ են տալիս հայ և վրաց զորական միավորումները[55]։

Թեև Հեթում Ա չէր մասնակցում մոնղոլական բանակների վերջին արշավանքներին, սակայն, կատարելով հայ-մոնղոլական դաշնագրի պայմանները, սննդամթերքներով, հագուստով ու ձիերով օգնում էր Հուլավուի բանակի վերասպառազինմանը։ Անշուշտ, Հուլավուն ծրագրում էր վերսկսել սիրիական արշավանքը, սակայն դրան խանգարեց 1262 թ. Ոսկե Հորդայի դեմ սկսված պատերազմը։

Սիրիայի գրավմանը որոշակիորեն խանգարեց Եգիպտոսի սուլթանությունը, որն այդ ժամանակ հասել էր քաղաքական և տնտեսական հզորության բարձրակետին։

Հեթում Ա 1256—1262 թթ. ընթացքում մի քանի հաջող արշավանքներ ձեռնարկեց Իկոնյան սելջուկների և թուրքմեն կարամանցիների դեմ, որոնց շնորհիվ վերջնականապես վերագրավեց Հերակլեա և Մանիոն սահմանային ամրոցները[56] և վերացրեց 1220 թ. ստորացուցիչ պայմանագրի վերջին հետքերը։

Մոնղոլների սիրիական անհաջող արշավանքից հետո, Կիլիկիային սպառնացող գլխավոր ուժը Եգիպտոսն էր։

Օրպեսզի Կիլիկիային ավելի ներգրավեին Եգիպտոսի դեմ պատերազմի մեջ, մոնղոլները որոշում են Իկոնյան սուլթանության հարաբերությունները բարելավել Հեթում Ա-ի հետ։ Այդ նպատակով 1263 թ. Հեթումին կանչում են

---

52 Հեթում Պատմիչ, էջ 47։

53 Տե՛ս Վարդան, էջ 198։

54 Տե՛ս Նույն տեղում, էջ 199։

55 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 388—389, Վարդան, էջ 199։

56 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 230—235։

*Իրան և նրան խորհուրդ տալիս հաշտության պայմանագիր կնքել սուլթանի հետ։ Հերակլեայում կնքվում է հաշտության պայմանագիր՝ այստեղ ժամանած Հեթում Ա-ի և Իկոնիայի սուլթան՝ Ռուքն ադ-Դինի միջև[57]։*

*Այս շրջանից սկսած էլ ավելի է ուժեղանում մոնղոլների քաղաքական ազդեցությունը Կիլիկիայի արտաքին քաղաքականության հետագա ընթացքի վրա։ Ուստի, դրանից հետո, Կիլիկիան էլ ավելի գործուն մասնակցություն է ցուցաբերում մոնղոլների ռազմաքաղաքական ձեռնարկումներին։*

*Մոնղոլներն առավելապես շահագրգռված էին Կիլիկիայի նման մասնակցության մեջ, որովհետև 1262 թ. նրանք 15 տարի շարունակ ստիպված էին ռազմական գործողություններ ծավալել Ոսկե Հորդայի դեմ, ընդ որում, նրանց ուշադրության կենտրոնը Սիրիայից տեղափոխվել էր Ատրպատական։ Այդ ժամանակից սկսած սերտ հարաբերություններ են հաստատվում Ոսկե Հորդայի և Եգիպտոսի միջև, որի նպատակն էր հյուսիսից և հարավից համաձայնեցված ռազմական գործողություններ սկսել մոնղոլական իլխանության դեմ։ Այս պայմաններում Կիլիկիայի հայկական թագավորությունը մոնղոլների համար դարձավ գլխավոր պատնեշը Եգիպտոսի դեմ։*

## 3. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՊԱՅՔԱՐԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՍՈՒԼԹԱՆՈՒԹՅԱՆ ԴԵՄ

*Կիլիկիայի հայկական թագավորության ժամանակավոր հզորացումը նրա զինակցությունը մոնղոլների և Անտիոքի դքսության հետ, անհանգստություն էր առաջացնում Եգիպտոսում։ Կիլիկիայի և Եգիպտոսի հարաբերությունները էլ ավելի սրվեցին, երբ Հուլավուին հաջորդող Աբաղա խանը, երկար ժամանակ չկարողացավ արշավել Եգիպտոս՝ Ոսկե Հորդայի դեմ շարունակվող պատերազմի պատճառով։*

*Այսպիսով, եթե Առաջավոր Ասիայում մինչև Բաղդադի գրավումը, ռազմական և քաղաքական գերազանցությունը մոնղոլների կողմն էր, իսկ Կիլիկիայի արտաքին քաղաքականության դիրքավորումը ելնում էր ուժերի իրական վիճակի հաշվառումից, ապա 1262 թ. հետո այդ քաղաքականությունը հենվում էր խարխուլ պատվանդանի վրա։ Այդ թվականից մինչև հաջորդ դարի սկիզբները մամլուքների և մոնղոլների բախումներն ավարտվում էին վերջիններիս պարտությամբ։ Եվ քանի որ Հեթումն ու իր հաջորդներն այդ ամբողջ ժամանակամիջոցում հանդես էին գալիս որպես մոնղոլների զինակիցներ, մամլուքները մեծ վնասներ էին հասցնում նաև Կիլիկիային՝ պատճառ դառնալով երկրի ավերմանն ու նրա ռազմա-քաղաքական տկարացմանը։ Սակայն մոնղոլների նկատմամբ Կիլիկիայի հանդես բերած հավատարմությունը պայմանավորված էր գլխավորապես այն իրողությամբ, որ մամլուք և սելջուկթուրք սուլթաններն այդ ժամանակ Կիլիկիայի նկատմամբ վարում էին թշնամական քաղաքականություն։*

*Նրանք հետամուտ էին ոչնչացնելու ոչ միայն խաչակիրների վերջին հենակետը, այլև վերացնելու Մերձավոր Արևելքի և Փոքր Ասիայի քրիստոնյա*

---

57 *D'Ohsson*, Histoire des Mongols, t. III, Amsterdam, 1834, p. 393.

*պետությունները, Բյուզանդական կայսրությունն ու Կիլիկիայի հայկական պետությունը։ Կիլիկիային ոչինչ չէր մնում անելու, քան շարունակելու զինակցությունը մոնղոլների հետ, բացի այդ, օգնություն հայցելու Հռոմից ու արևմտաեվրոպական երկրներից, դրա դիմաց նրանց տալով առևտրական նոր արտոնագրեր։*

*Կիլիկիայի սահմանակից Անտիոքի խաչակիր դքսությունը նույնպես վասալական կախման մեջ էր մոնղոլներից։ Թեև Կիլիկիայի և Անտիոքի իշխանության միջև շարունակվում էին դարասկզբից եկող հակասությունները, սակայն XIII դարի 60-ական թվականներին սելջուկների և մամլուքների վերահաս վտանգի պատճառով, ինչպես և մոնղոլների ու Հռոմի ճնշման տակ, Հեթումը բարեկամական-ազգակցական կապեր հաստատեց Անտիոքի և Կիպրոսի հետ։*

*Հեթում Ա ռազմական օգնություն ցույց տվեց Անտիոքին, երբ վերջինս մոնղոլների 1262 թ. Սիրիայում կրած պարտությունից հետո, հարձակման ենթարկվեց մամլուքների կողմից։ Իրենց հերթին խաչակիրներն օգնեցին Հեթումին, երբ սելջուկները պաշարեցին Տարսոնը*[58]*։*

*Բաղդադի խալիֆայության անկումից հետո, էլ ավելի մեծացավ Կիլիկիայի և Սիրիայի խաչակիրներին պատկանող ամրոց-նավահանգիստների դերն ու նշանակությունը՝ ոչ միայն Արևելքի և Արևմուտքի ռազմաքաղաքական կապերի, այլև նրանց միջև կատարվող միջազգային առևտրի առումով։*

*Արևելքի խաչակիր իշխանությունների գոյատևումը մշտական սպառնալիք էր հանդիսանում Եգիպտոսի սուլթանության սիրիական և պաղեստինյան տիրույթներին։ Եգիպտոսի տիրակալները Կիլիկիան և խաչակիր իշխանությունները դիտում էին որպես Արևմտյան Եվրոպայի ու Հռոմի քաղաքական և ռազմական գործիք, գործակիցներ, որոնք առիթ են տալիս խաչակրաց նոր արշավանքներ կազմակերպելու։ Իրականում, խաչակիր իշխանությունները խաչակրաց առաջին արշավանքների հետևանքով ստեղծված խորթ պետություններ էին, որոնց հիմնական նպատակն էր շարունակել Արևմուտքի կողոպտիչ քաղաքականությունը Մերձավոր Արևելքում։ Նրանց գոյատևման մեջ շահագրգռված էր նաև հեթանոս Մոնղոլական կայսրությունը, որքանով իր թշնամիների թշնամիներն էին և կարող էին միջնորդ լինել՝ կապ հաստատելու համար քրիստոնյա Արևմուտքի հետ։ Անշուշտ, նրանց շարքը չի կարելի դասել Կիլիկյան հայկական պետությունը, որը հանդես էր եկել Միջերկրականի ափին տնտեսական, քաղաքական և մշակութային դրական դերով և որտեղ ապաստան էին գտել սելջուկների ու մոնղոլների ասպատակություններից մազապուրծ հայ ժողովրդի զանգվածները։*

*Խաչակիր պետությունների վերացումը Եգիպտոսի համար ուներ ոչ միայն տնտեսական, այլև ռազմա-քաղաքական նշանակություն։ Բայց նրանց վերացմամբ հարվածն ուղղվելու էր նաև Կիլիկիայի հայկական պետության դեմ։*

*Այսպիսով, Եգիպտոսը սպասում էր հարմար առիթի, որպեսզի հաշվեհարդար տեսներ, առաջին հերթին, Սիրիայի խաչակիր իշխանությունների*

---

58 **Տե՛ս Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, 1856, էջ 114։**

հետ։ 1263 թ., երբ Հուլավուն զբաղված էր Ոսկե Հորդայի դեմ մղվող պատերազմով, սուլթան Բեյբարսն սկսեց իր արշավանքներով նեղել Սիրիայի խաչակիրներին։ Նախ նա հարձակվեց Անտիոքի վրա։ Աքքայի, Տիրոսի և Սիդոնի խաչակիր քաղաք-պետությունները, Կիպրոսի թագավորությունը և Կիլիկիան չկարողացան միանալ և համատեղ գործողություններ սկսել մամլուքների դեմ։ Իսկ մոնղոլները, ինչպես տեսանք, բավականացան միայն նրանով, որ Հեթումին Իրան կանչեցին, հարկադրեցին հաշտություն կնքել սելջուկների հետ, և միաժամանակ խորհուրդ տվեցին՝ ռազմական գործողություններ սկսել ընդդեմ Եգիպտոսի։

1263 թ. Հեթում Ա մոնղոլական 700 զինվորների և Անտիոքի 150 ասպետների օգնությամբ մտավ Սիրիա։ Դաշնակից զորքերը հասան մինչև Հարիմի դաշտը։ Բայց նրանց ուժերը փոքր էին, ուստի մեծ կորուստներ տալով ստիպված եղան նահանջել։ 1264 թ. Հեթումը կրկնեց իր արշավանքը Հալեպի վրա[59], որը նույնպես վերջացավ անհաջողությամբ։

Թեև Հեթումի վերջին արշավանքները հիմնականում պատասխան գործողություններ էին Հալեպի ամիրայի 1263 թ. Այնթապի ուղղությամբ կատարած արշավանքի, սակայն Եգիպտոսն այն դիտեց որպես խաչակիր իշխանություններին օգնելու միջոցառում։

Օգտվելով մոնղոլական խանությունների (ուլուսների) ներքին երկպառակությունից, Եգիպտոսը որոշեց հաշվեհարդար տեսնել Կիլիկիայի հետ և պատժել նրան՝ մոնղոլներին սիրիական արշավանքների ժամանակ ցույց տված ռազմական օգնության համար։ Եգիպտոսը չէր կարողանում հաշտվել հատկապես այն բանի հետ, որ մոնղոլների սիրիական արշավանքի ընթացքում Կիլիկիան մոնղոլների համաձայնությամբ իր հողերին էր միացրել մի շարք սահմանային ամրոցներ, բերդեր և քաղաքներ, այդ թվում՝ Մարաշը, Այնթապը, Բեհեսնին և Կապադովկիայի հարավային շրջանները[60]։

Բեյբարսը օգտագործելով իր համար բարենպաստ իրադրությունը, 1266 թ. որոշեց հարձակվել Կիլիկիայի վրա։ Պատերազմական գործողություններն ըսկըսելուց առաջ նա Կիլիկիայի թագավորությանն առաջարկեց Եգիպտոսին վերադարձնել Սիրիայի և Կիլիկիայի սահմանագլխին գտնվող մի քանի բերդերը, ինչպես նաև պահանջեց վերացնել Կիլիկիայից Եգիպտոս հաց արտահանելու արգելքը[61]։

Այս առթիվ Վարդան վարդապետը գրում է. «Նույն թվականի (1266) աշնանը... Եգիպտոսի սուլթան Փնդուխտարը (իմա Բեյբարս) պահանջեց այն բերդերը, որոնք գրավել էր Հեթումը Թաթարի օգնությամբ։ Երբ Հեթումը Թաթարից վախենալու պատճառով մերժեց սուլթանի պահանջը, վերջինս բազմաթիվ զորք հավաքեց և այն հանձնելով զորավար Սմլմոթին ուղարկեց նրան Կիլիկիա»[62]։

Դեպքերին ականատես Սմբատ Սպարապետը, ուղղակի նշելով Կիլիկիայի և Եգիպտոսի միջև ստեղծված հարաբերությունները և նրանց միջև տեղի ունե-

---

59 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 242—243։

60 Տե՛ս „Documents arméniens", t. II, p. 171. Տե՛ս նաև Վարդան, էջ 213։

61 Տե՛ս *Abulfaradj sive Bar Hebraei*, Chronicon Syriacum, p. 568.

62 Տե՛ս Արաբական աղբյուրները..., էջ 271։

ցած պատերազմի պատճառները, գրում է. «Թեև սուլթանը խաղաղություն էր կամենում, բայց արքայից (իմա Հեթումից) պահանջում էր իրեն հանձնել ամ-



Խաչելություն, մանրանկար Սմբատ Գունդստաբլի պատվիրած ձեռագրից

րոցները և մի շարք այլ վայրեր, որոնք սահմանակից էին իր երկրին։ Սակայն թագավորը չէր կատարում նրա պահանջները երկու պատճառով։ Առաջինը՝ Թաթարի երկյուղից, որպեսզի վերջիններս չասեն, թե թագավորը Եգիպտոսի սուլթանի կողմն է։ Սուլթանի երկրորդ պահանջը թեև վերաբերում էր սահմանամերձ մի փոքր վայրի, արքան մերժեց, պատճառաբանելով, որ երկար տարիներե ի վեր այն գտնվում էր իր տիրապետության տակ...»*։

* Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 245—246։

Վերոհիշյալ տողերում արտացոլված են Կիլիկյան հայկական պետության ողբերգության պատճառներից մեկը՝ նրա արտաքին քաղաքականության կախվածությունը մոնղոլներից։ Հեթումն այլ ընտրություն չուներ։ Նա մերժեց Բեյբարսի պահանջները, քանի որ ենթակա էր մոնղոլներին և վախենում էր նրանց վրեժխնդրությունից[63]։

Օգտագործելով առիթը Բեյբարսը 1266 թ. օգոստոսին հարձակվեց Կիլիկիայի վրա։ Հեթում Ա հայկական բանակը բաժանեց երեք մասի[64]։ Մի մասը վերցրեց ինքը և մեկնեց մոնղոլ-թաթարների մոտ օգնություն խնդրելու[65]։ Երկրորդ մասը պաշտպանելու էր «Դուռն» կոչվող կիրճերը, երրորդ մասը Հեթումի Լևոն և Թորոս որդիների գլխավորությամբ ամրացել էր Սև լեռների կիրճերում՝ արգելակելու հակառակորդի բանակի մուտքը Կիլիկիա։

Եգիպտական բանակը շտապեց հայերի հետ մարտի բռնվել ավելի շուտ, քան նրանք կկարողանային մոնղոլներից օգնություն ստանալ։ Ճակատամարտը տեղի ունեցավ Սև լեռների մոտ՝ Մառի կոչված վայրում, օգոստոսի 23-ին[66]։ Մոնղոլներն օգնության չհասան և հայկական բանակը պարտություն կրելով նահանջեց։ Եգիպտական զորքերը խուժեցին Կիլիկիա, գրավեցին Սիս մայրաքաղաքը և այլ քաղաքներ, որոնք կողոպտեցին և հրկիզեցին։

Այս դեպքերի առթիվ արաբ պատմագիր Մակրիզին հաղորդում է, որ հայերը մեծ զոհեր և գերիներ տվեցին (սպանվածների թվում էր Հեթումի որդի Թորոսը, իսկ մյուս որդին՝ Լևոնը գերի էր ընկել)։ Այնուհետև Մակրիզին ավելացնում է. «Մահմեդական բանակը հետապնդեց փախստականներին, ջարդելով և գերելով բոլոր նրանց, ում բռնում էր և ամեն կողմ հրդեհ էր տարածում։ Նա գրավեց մի շատ զորեղ ամրոց, որը պատկանում էր Տաճարականներին։ Տղամարդիկ բոլորն էլ խողխողվեցին, գերի առնված կանայք բաժանվեցին զինվորների մեջ։ Միջնաբերդը բոցերի ճարակ դարձրին իր պարունակած բոլոր գանձերով։ Հաղթողները մտան Սիս քաղաքը, հիմնահատակ քանդեցին այն։ Այդ գավառում զորքը մնաց մի քանի օր, ամենուրեք տարածելով նախճիր և հրդեհ, և վերցնելով բազմաթիվ գերիներ։ Այնուհետև Ուգան (Իգան) էմիրը ուղղվեց դեպի Ռումի երկիրը և Կալավուն էմիրը դեպի Մասիսա, Ադանա, Այաս և Տարսոն։ Երկուսն էլ ջարդեցին բնակիչներին, գերիներ վերցրին, մեծ թվով բերդեր ավերեցին և ամեն ինչ հրդեհի մատնեցին։ Համաթի իշխանը մնացել էր Սիս, երկու էմիրներն էլ գնացին նրան միանալու իրենց հետ բերելով մեծ ավար այն աստիճան, որ մի եզ տրվում էր երկու դիրհեմի փոխարեն և գնող չկար»[67]։

---

63 Տե՛ս Abulfaradj, Chronicon Syriacum, p. 568.

64 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 246։

65 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 236։

66 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 246—247։

67 «Արաբական աղբյուրները», էջ 236, 272։

1266 թ. ժամկանակների արշավանքի՝ Մառիի ճակատամարտի և այս անցքերի մասին կարևոր տվյալներ են հաղորդում նաև հայ աղբյուրները։

Սմբատ Սպարապետը իր թողած չափածո հիշատակարանում ասում է.

Սկիզբն էր ի չար ժամանակի,
Երբ Մարցին եկն ի Մառի

Վարդան վարդապետը Սսի կողոպուտի մասին գրում է, որ եգիպտական զորավարը հանկարծակի մտավ Կիլիկեցիների երկիրը։ Գրավեց և կողոպտեց Սիս մայրաքաղաքը, այրեց շատ եկեղեցիներ, և գետնափոր տներից մեկում գտավ բազմաթիվ ամաններ, որոնցից մեկում ասում են, որ գտնվում էր 600000 կարմիր (ոսկեդրամ)[68]։ Այնուհետև ավելացնում է, որ նրանք Կիլիկիայից իրենց հետ տարան 40000 գերի։

Կիլիկյան բանակի պարտությունը Մառիի ճակատամարտում իր պատճառներն ուներ։ Դրանցից առաջինը և գլխավորը, անշուշտ, եգիպտական բանակի քանակական զգալի գերակշռությունն էր։ Նրա հարվածող ուժը հասնում էր 30000-ի, մինչդեռ Հեթումի ուղարկած զորքի թիվը 15000-ից[69] չէր անցնում։ Պակաս նշանակություն չուներ նաև իրար հակադրվող պետությունների տնտեսական հզորությունը և բանակների ռազմատեխնիկական հագեցվածությունը։ Մամլուքներն ունեին լավ զինված և մասնագիտացված զորքեր, որոնք մշտապես տարված էին հարստությամ և գերիներ ձեռք բերելու մարմաջով։ Մյուս կողմից՝ նկատելիորեն թուլացել էր հայկական բանակի կռովն ու մարտական ոգին երկրի ներսում սրված հակասություններից։ Մասնավորապես սուր էին կենտրոնական իշխանության և կենտրոնախույս ուժերի՝ խոշոր հողատեր իշխանների միջև եղած հակասությունները։ Գրիգոր Ակներցին գրում է, որ Հեթում Ա մերժեց սուլթան Բեյբարսի պահանջները, հույս դնելով իր իշխանների միասնության վրա[70], մինչդեռ Հեթումի 50 մեծ իշխաններից միայն 12-ը թշնամու դեմ հանեցին իրենց զորքերը, որոնցից շատերն էլ առանց կռվելու լքեցին մարտի դաշտը և փախան[71], ավելի մտահոգված լինելով իրենց բերդերի և տիրույթների ապահովությամբ[72]։

Գրիգոր Ակներցին իշխաններին անվանում է «երկմիտ», «նախանձոտ», «աննգաբարո» և նշում է, որ Հեթումի որդի Թորոսի զոհվելու պատճառն էլ նրանք եղան։

Հետաքրքիր է, որ Վահրամ Ռաբունին 1271 թ., Լևոն Գ-ի թագավորության հանդեսին արտասանած ճառում մեջ, անդրադառնալով իշխանների կենտրոնախույս տրամադրություններին, նորապսակ թագավորին հորդորում է չանսալ նենգ իշխանների բանսարկություններին։ Ապա, նկատի ունենալով մամլուքների մշտական սպառնալիքներն ու վտանգը, նա իշխաններին կոչ է

---

'Ի,եսպան զԹորոս թագւորորդի
Եւ այլք բազումք ի նոյն զկնի
'Ի այրեց ըզՍիս և զՄսիս
Եւ զինչ որ չէն կայր ի միջի.
Եւ զԼևոն աւագ որդի
Հեթմոյ Հայոց մեծ արքայի
Տարաւ ծառայ 'եդ ի բանդի
Ի քաղաքին Եգիպտոսի...

(Ալիշան, Սիսուան, էջ 72)։

68 Տե՛ս Վարդան, էջ 213։

69 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 236, 272։

70 Տե՛ս Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), էջ 39։

71 Տե՛ս *Makritzi*, p. 34, Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, էջ 247։

72 Տե՛ս Գրիգոր Ակներցի, էջ 39—42։

անում հոգ տանել երկրի պաշտպանական ուժերի ամրապնդմանը, ենթարկվել թագավորին, մշտապես զբաղվել զինավարժությամբ և վերջ տալ հարբեցողությանը[73]։

Ուշագրավ են Մարկո Պոլոյի ճանապարհորդական նոթերի հետևյալ տողերը. «Հին ժամանակ այս երկրի ազնվականները (իմա՝ Կիլիկիայի իշխանները) նշանավոր էին իրենց քաջությամբ և զինվորական գործերով, բայց հիմա ողորմելի են և վատոգի, ամենևին քաջասրտություն չունեն, լավ խմողներ են միայն»[74]։

Հայկական բանակը, որը մինչ այդ թշնամիներից հաջողությամբ մաքրել էր երկիրը, 1268 թ. պարտությունից հետո երկար ժամանակ չկարողացավ ոտքի կանգնել։ Այդ պարտության հետևանքները առավել ճակատագրական եղան խաչակիր իշխանությունների համար։ «Հայկական բանակների պարտությունը 1266 թվականին,— գրում է ֆրանսիացի պատմաբան Ռ. Գրուսեն,— որոնք հանդիսանում էին ֆրանկների միակ իրական պահապանը, հյուսիսային Սիրիայում՝ ֆրանկ տիրապետության անկման նախերգանքը դարձավ»[75]։

1268 թ. եգիպտական զորքերը գրավեցին Անտիոքը և վերջ դրեցին խաչակիրների իշխանությանը[76]։

Անտիոքի գրավումից հետո Հեթում Ա բանակցություններ սկսեց Եգիպտոսի սուլթանության հետ՝ հաշտություն կնքելու նպատակով։ Եգիպտոսը այդ հաշտության և գերված արքայազն Լևոնին ազատ արձակելու համար պահանջում էր, որ իրեն հանձնեին սահմանամերձ մի քանի բերդերը՝ Բեհեսնին, Դարպսակը, Մարզբանը, Դարանը, Շիհել Հադիդը։ Միաժամանակ պահանջում էր, որ ազատ արձակվեր ու Եգիպտոս վերադարձվեր մոնղոլների կողմից գերված եգիպտական զորավար՝ Սոնկուր ալ-Աշկարին։ «Ապա,— ասում է արաբ պատմիչ Աբու-լ-Ֆիդան,— Սսի տերը ներկայացավ Աբաղային, թաթարներին և նրանցից խնդրեց Սոնկուր ալ-Աշկարին։ Նա էլ հանձնեց նրան և Սոնկուր ալ-Աշկարը վերադարձավ ալ-Մալիք ալ-Զահիրի (իմա՝ Բեյբարսի) ծառայությանը և Դարպսակը, ինչպես և մյուս վայրերը, որոնք հիշեցինք, հանձնվեցին, բացի Բեհեսնիից։ Ալ-Մալիք ալ-Զահիրն էլ ազատ արձակեց Սսի տեր Հեթումի որդուն՝ Լևոնին ու վերադարձրեց իր հողերը»[77]։ Այսպիսով, 1268 թ. հուլիսին հաշտություն կնքվեց Կիլիկիայի և Եգիպտոսի միջև։

Շատ չանցած, 1269 թ. Հեթումը կրկին գնաց Աբաղա խանի մոտ, որ ժամանել էր Բաղդադ և նրա համաձայնությամբ որոշեց հրաժարվել գահից՝ այն հանձնելով Լևոն որդուն։ Ապա վերադառնալով հրավիրեց իշխաններին և Տարսոնում նրանց ներկայությամբ գահը հանձնեց Լևոնին։ Այդպես էլ Հեթումը ավարտեց իր քաղաքական կյանքը, մտավ վանք որպես «եղբայր Մակար» և մահացավ 1270 թվականին[78]։

---

73 Տե՛ս Վահրամ Րաբունի, Բան ի Յայտնութեան տեառն և օծումն Լևոն Գ արքայի, էջ 42։

74 Մարկո Պոլոն 1271 թ. Այասի վրայով Մոնղոլիա գնալիս, անցնում է Կիլիկիայով։ *Marko Polo*, Traduit. par Charignon, P. 1924, ch. 19, p. 33.

75 *Grousset*, R. Histoire des croisades et du royaume franc de Jerusalèm, p. 634—635.

76 Տե՛ս նույն տեղում։

77 «Արաբական աղբյուրները...», էջ 237։

78 Տե՛ս Գրիգոր Ակներցի, էջ 48—49։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿՅԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## 1. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ ԵՎ ՀՈՂԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ

*Կիլիկիայի հայկական պետության սոցիալ-տնտեսական հարաբերությունները շատ ավելի բարդ ձևեր ընդունեցին, քան բուն Հայաստանում, թերևս այն պատճառով, որ նրանք իրենց վրա կրում էին հայկական, արևմտաեվրոպական և բյուզանդական ֆեոդալական հարաբերությունների ու սովորույթների ուժեղ կնիքը։ Սակայն այստեղ ևս հասարակությունը բաժանվում էր հիմնականում երկու գլխավոր դասակարգերի՝ ազատների և անազատների։ Ազատները, թագավորի գլխավորությամբ կազմում էին ֆեոդալների դասակարգը։ Վերջիններն իրենց ձեռքում էին պահում ֆեոդալական սեփականության և արտադրության հիմնական միջոց հողը, որը նրանք օգտագործում էին աշխատավոր գյուղացիությանը շահագործելու միջոցով։*

*Ֆեոդալական շահագործող դասակարգը կազմող ազատներն իրենց հերթին բաժանված էին զանազան դասերի՝ աշխարհիկ և հոգևոր, խոշոր, միջին և մանր հողատերերի։ Ընդ որում, ֆեոդալական հիերարխիայի ճնշման ամբողջ ծանրությունն ընկած էր աշխատավոր ժողովրդի ուսերին։*

*Անազատները նույնպես բաժանված էին տարբեր խավերի՝ գյուղացիության և քաղաքային բնակչության։ Սմբատ Սպարապետը, Կիլիկյան հայկական պետության XIII դարի հասարակության տարբեր խավերի մասին գրում է. «Կու հրամայէ ուրենքս, որ մարդկային ազգս շատ ազգեր են, և են որ ազատք են և հեծելորք, և են որ չեն, և յայլ ազգ՝ գործերն, որ գործ այնենն»*[1]*։*

*Ֆեոդալական խոշոր հողատիրությունը Բյուզանդական կայսրության ենթակա Կիլիկիայում զգալի չափեր էր ընդունել դեռևս X—XI դարերում, նախքան հայ ֆեոդալների ու հայ բնակչության զանգվածային ներգաղթը։ Դրանից հետո, ֆեոդալական նախկին տերերի փոխարեն ձևավորվեց հայկական խոշոր ֆեոդալական հողատիրությունը։ Վերջինս ստեղծվել է տարբեր ուղիներով։ Հիմնականում այն կազմավորվել է Կիլիկիայում Ռուբինյան*

---

1 *Смбат Спарапет*, Судебник, стр. 148.

և մյուս հայ իշխանների հաստատումով և այստեղի հողերը «հայրենիք» (ալլոդ) դարձնելու միջոցով։ Հայ ֆեոդալների կալվածքները առաջացել են նաև Բյուզանդիայի կողմից հայ իշխաններին բռնի տեղափոխելու և Կիլիկիայում բնակեցնելու միջոցով։ Բյուզանդիան Կիլիկիայի սահմանամերձ շրջաններում հայ իշխաններին հանձնում էր գավառներ, ամրոցներ, բերդեր՝ իրենց շրջակայքով, որի դիմաց հայ ֆեոդալները ծառայում էին Բյուզանդական կայսրությանը՝ կատարելով վարչական և, հատկապես, զինվորական վասալական պարտականություններ։

Նվաճման միջոցով հողային սեփականատեր դառնալը թեև նոր չէր հայկական ֆեոդալական հողատիրության մեջ, սակայն այդ երևույթը կրել էր որոշ փոփոխություն։ Այսպես, ըստ Երուսաղեմի ասիզների «նվաճված հողերը նվաճողը կարող էր նվիրել կամ օտարել ում որ ցանկանար, անկախ ստացողի կամ ժառանգորդի անդրանիկ կամ կրտսեր լինելուց»[2]։

Կիլիկիայում X—XI դարերում մեծ չափեր ընդունած ֆեոդալական խոշոր հողատիրության հիման վրա XII դարում շարունակվում էին զարգանալ ալլոդական, ֆեոդական և պարգևական հողատիրության ձևերը։ Վերջիններս կրելով արևմտաեվրոպական ֆեոդալական հողատիրության ձևերի, ինչպես նաև հողատիրական օրենքների որոշ ազդեցությունը, վերջին հաշվով պահպանում էին հայկական՝ «հայրենիք» և «պարգևականք» հողատիրության ձևերը։ Հետագայում՝ XIII դարում էլ ավելի է ուժեղանում ֆրանկ հողատիրական իրավունքի ազդեցությունը, որի հետևանքով վերանում են պարգևական և ժառանգական (օտարելի) հողատիրության միջև եղած տարբերությունները և սրանք հիմնականում միաձուլվելով ստանում են պայմանական-պարգևական հողատիրության ձև։ XII—XIII դարերում ֆեոդալական խոշոր հողատիրությունը աճում է նաև ապստամբ վասալների, ինչպես և գյուղացիների՝ մանր հողատերերի հողերն ու կալվածները բռնագրավելու հաշվին։ Այս վերջին հանգամանքը սրում էր Կիլիկիայի ֆեոդալական հասարակության ներքին կյանքի հակասություններն ու հակամարտությունները։

Լևոն Բ-ի օրով ֆեոդալական խոշոր հողատիրությունը ավելի զարգացավ, առաջացնելով նոր ձևեր։ Դեռևս XII դարում հայ ֆեոդալները Կիլիկիայում ունեին ընդարձակ տարածություններ։ Լևոն Բ ճանաչեց նրանց հողատիրության իրավունքները և իր հերթին շնորհեց նոր տիրույթներ, պայմանով, որ ֆեոդալները ռազմական օգնություն ցույց տային իրեն։ Այդ նվիրատվությունները նա կատարում էր արքունական հողային ֆոնդից։ Արքունի տիրույթների մեջ մտնում էին բերդեր՝ իրենց շրջակա գավառներով և գյուղերով։ Նրա մեջ էին մտնում նաև Կիլիկիայի խոշոր քաղաքներն ու նավահանգիստները, վանքերն ու եկեղեցիները։ Թագավորի հողասեփականատիրական իրավունքը տարածվում էր նաև երկրի ընդերքի՝ հանքերի, ձկնորսարանների, անտառների, մարգագետինների և լեռների վրա։ Սակայն թագավորի իշխանությունը չէր հիմնվում հողային գերագույն սեփականատիրական իրավունքի վրա, այլ կրում էր սոսկ իրավական բնույթ։ Բարձրագույն իշխողի նրա իրավունքը ոչ միայն հողի և ջրի, այլև մարդկանց անձի վրա որոշակի բռ-

---

[2] *Beugnot* (*M. Lecomte*), Assises de Jérusalem, ch. 47.

վանդակություն չի ստեղծել, եղել է լոկ ընդհանուր հասկացություն՝ կրելով ձևական բնույթ։ Բացի արքունական, հայրենիք, ժառանգական հողատիրությունից, գոյություն ուներ նաև իշխանական և վանքապատկան հողատիրություն։ Այդպիսի հողերի տերերն անվանվել են հայրենատեր-բերդատերեր, իսկ նրանց կալվածները՝ հայրենիք։ Խոշոր հայրենատերերի թիվը XII դարի վերջին հասնում էր 45-ի, իսկ XIII—XIV դարերում գնալով պակասում է՝ նրանց տիրույթների խոշորացման հետևանքով։ Առավել խոշոր հողատերերը, որոնք տիրում էին տասից ավելի բերդերի, կոչվում էին «աշխարհատիրարք»[3]։

XIII—XIV դարերում քաղաքների, քաղաքային կյանքի, ներքին ու արտաքին առևտրի և վաշխառության զարգացման ու ծաղկման հետևանքով առևտրականներից ու վաշխառուներից առաջացել էր «մեծատունների» խավը։ Սրանք, ինչպես բուն Հայաստանում, ոսկուց և առևտրական կապիտալից բացի իրենց ձեռքում էին կենտրոնացնում նաև հողային մեծ տիրույթներ, գնումների միջոցով։ Մյուս հայրենատեր բերդատերերի նման, սրանց տերերը կոչվում էին պարոններ, թեև չունեին ոչ ամրոցներ, ոչ բերդեր և ոչ էլ զինվորական ու քաղաքական իշխանություն։

XIII—XIV դարերում մեծ ու փոքր հայրենատեր և ոչ-հայրենատեր բերդատերերի թիվը հասնում էր 70—80-ի։ Սրանք իրենց հերթին, ըստ հողատիրության ձևերի, բաժանվում էին երեք խմբի։

1. Մեծ իշխաններ՝ հողի լիակատար սեփականատիրական իրավունքով իրենց ենթակա ոչ-հայրենատեր, բերդատեր վասալ իշխաններով։

2. Իշխաններ՝ հայրենատեր-բերդատերեր՝ թագավորի վասալներ։ Սակայն թագավորը նրանց նկատմամբ ուներ հողի գերագույն սեփականատիրական իրավունք։

3. Թագավորի և մեծ իշխաններին ենթակա ոչ-հայրենատեր-բերդատերեր, այդ թվում հոգևոր ասպետական օրդենները։

Բացի խոշոր կալվածատերերից, երկրում առաջացավ մանր հողատերերի՝ հեծյալների մի նոր դաս, որը հիմնականում կատարում էր զինվորական ծառայություն։

Կիլիկիայում XII—XIV դարերում աշխարհիկ խոշոր հողատիրության կողքին զարգանում էր նաև եկեղեցական հողատիրությունը, որն իր որոշ առանձնահատկություններով հանդերձ, նման էր աշխարհիկ հայրենական-ժառանգական և պարգևական հողատիրության ձևերին։ Բայց եկեղեցական հողերը, ինչպես բուն Հայաստանում, օտարելի չէին, չէր կարելի դրանք նվիրել կամ վաճառել ուրիշին։ Եկեղեցական հողատիրությունը իր ընդարձակման և զարգացման թափով մրցում էր աշխարհիկ ֆեոդալական հողատիրության հետ։ Սրա շնորհիվ էլ մեծանում էր հոգևորականության դերն ու նշանակությունը՝ Կիլիկիայի ներքին և արտաքին քաղաքական հարցերի լուծման բնագավառում։

Ընդարձակ հողային տարածություններ էին ստացել նաև արևմտաեվրոպական ասպետական երեք օրդենները՝ Հյուրընկալները, Տաճարականները և Տևտոնական օրդենները։

---

[3] Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 222։

Ասպետական օրդենները որոշ ժամանակ վասալական կապերի մեջ մըտնելով Կիլիկիայի հայկական պետության հետ, հողային նվիրատվությունների միջոցով Կիլիկիայի հայ թագավորներից Կիլիկիայի սահմանամերձ շըրջաններում ստացել էին ընդարձակ կալվածներ «պարգևականք» (benefice) և «ֆեոդ»-ական (fief) հողատիրության պայմաններով։ Վերջիններս շատ կողմերով նման էին արևմտաեվրոպական ֆեոդալական հողատիրության ձևերին։ Օրդենական հողատիրությունը հայկական զարգացած ֆեոդալիզմի շրջանում մի նոր երևույթ էր, որը կրել է նաև հայկական ֆեոդալական հողատիրության մեջ գործող օրենքների կնիքը։

Հավատարիմ իրենց ուխտադրուժ քաղաքականության, օրդենները հակասության մեջ էին մտնում իրենց իսկ հովանավորող սենյորների՝ հայ թագավորների հետ։ Վերջիններս, քաջ գիտակցելով օրդենական հողատիրության ամրապնդման վտանգը, դիմում են վճռական միջոցների։ XIII դարի վերջում օրդեններն արտաքսվում են Կիլիկիայից և դադարում երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում որևէ դեր կատարելուց։

## 2. ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԻՐԱՎԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XII—XIV ԴԱՐԵՐՈՒՄ

Կիլիկիայի գյուղացիությունը կազմված էր հայերից, մասամբ հույներից, ասորիներից և այլ ազգությունններից։

Յուրաքանչյուր գյուղ կազմում էր մի համայնք, որի գործերը տնօրինում էր համայնքի ժողովը, իսկ սրա ղեկավարները կոչվում էին «գլուխ», այսինքն՝ ավագներ։ Վերջիններս կարգավորում էին գյուղական համայնքի ծխերի միջև կատարվող հողաբաժանությունը, ջրի օգտագործումը, հարկերի և տուրքերի գանձումը և այլն։ Գյուղական համայնքի անդամ գյուղացիների մի մասը ենթակա էր քայքայման՝ հողազրկման և ունեզրկման[4]։

Կիլիկիայում գյուղացիությունը միատարր չէր, բաժանված էր տարբեր շերտերի, որը պայմանավորված էր գյուղացիների տնտեսական վիճակով և ֆեոդալներից նրանց ունեցած կախվածության առանձնահատկություններով։ Սկզբնաղբյուրները ցույց են տալիս, որ Կիլիկիայի գյուղացիությունը բաժանված էր հետևյալ խավերի.

1. Մանր հողատեր սեփականատեր ազատ գյուղացիներ կամ գյուղական համայնքի անդամ ոչ կախյալ գյուղացիներ։ Սրանք իրենց սոցիալ-տնտեսական դրությամբ տարբերվում էին գյուղացիության մյուս խավերից՝ դեռևս պահպանում էին հողաբաժինների նկատմամբ իրենց ունեցած սեփականատիրական իրավունքը, որը ժառանգական էր[5]։

Ազատ կամ համայնական գյուղացիները հարկեր և տուրքեր էին վճարում միայն արքունիքին։

---

4 Տե՛ս *Смбат Спарапет*, Судебник, стр. 108—115, 170, 192, 193:

5 Տե՛ս նույն տեղում, էջ 129, 288։

*2. Դարպասային (թագավորական դոմենի) այսինքն՝ արքունի կամ պետական գյուղացիներ[6], որոնք իրավական տեսակետից անձնապես ազատ էին, համեմատած կախյալ և ճորտ-գյուղացիների հետ։ Դարպասային գյուղացիները ամրացված չէին հողին և կարող էին ազատորեն տեղափոխվել մի կալվածքից մյուսը։ Եթե կալվածքը օտարվում էր արքունիքի կողմից, նրանք պարտավոր էին հնգեկի, այսինքն՝ բերքի մեկ հինգերորդի կեսը վճարել արքունիքին, իսկ մյուս կեսը՝ նոր տիրոջը։ Անշուշտ, սրանով չէին սահմանափակվում նրանց պարտավորությունները։ Նրանք վճարում էին նաև նույն տուրքերը և կատարում նույն պարտավորությունները, ինչ կախյալ գյուղացիները։*

*3. Գյուղացիության երրորդ խավին էին պատկանում կախյալ գյուղացիները, որոնք աղբյուրներում անվանվում են «հարկատուք», «հարկատուք շինականք» և «հնազանդք»։ Սրանք հարկատու էին իրենց իշխաններին՝ ֆեոդալներին, ունեին նաև իրենց «հայրենիք» հողակտորը, որից նրանց զրկելու իրավունք չունեին իշխանները։ Հետևաբար, սրանք ևս չէին ամրացած հողին և անձնապես ազատ էին, բայց գտնվում էին ֆեոդալական ընդհանուր կախման մեջ և հարկատու էին իրենց իշխանին ու պետությանը։ Հարկի չափը սահմանում էր թագավորը, հավաքում էին գավառների իշխանները։*

*Ֆեոդալական հողատիրության հետագա զարգացման և ֆեոդալական հարաբերությունների խորացման պայմաններում հարկատու և կախյալ գյուղացիության այս խավը ենթակա էր ճորտացման։ Քաղաքների և առևտրի զարգացման պայմաններում խոշոր հողատերերը սկսեցին զբաղվել գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ և արտահանմամբ։ Նրանց այլևս չէր բավարարում կախյալ գյուղացիության հարկատվությունը։ Վերջիններիս անձնական կախումը՝ ամրացումը հողին, և հողատիրոջ համար անվարձահատույց պարտադիր աշխատանքը դառնում էր անխուսափելի։*

*4. Ամենաճնշված և իրավազուրկ խավը կազմում էին ճորտ գյուղացիները՝ պառիկոսները։ Դեռևս XII դարում կախյալ գյուղացիների մի մասը սկսել էր ճորտացվել, զրկվել ազատ տեղաշարժման իրավունքից և հարկադրաբար աշխատել ֆեոդալի համար։*

*Որ պառիկոս գյուղացիները ճորտացված և ամրացված էին հողին, կարող էին օտարվել հողի հետ միասին, այդ ցույց են տալիս հողային նվիրատվությունները, որոնք կատարվում էին Կիլիկիայի իշխանների և թագավորների կողմից՝ վանքերի, աշխարհիկ ֆեոդալների և հոգևոր ասպետական օրդենների օգտին։*

*Աներկբայելի է, որ հողային նվիրատվություններով օտարվող գյուղերը և ագարակները բնակեցված էին գյուղական աշխատավորներով։ Պառիկոսների մի մասին անվանում էին դարպասային ճորտեր։ Վերջիններս սեփական տնտեսություն չունեին, ապրում էին ֆեոդալի դղյակում և աշխատում էին ֆեոդալի տնտեսության մեջ։*

*Ճորտ գյուղացու կախվածությունը կրել է անձնական, այսինքն՝ արտատնտեսական բնույթ։*

---

[6] Տե՛ս *V. Langlois*, Le trésor..., p. 143.

Արտադրության համար անհրաժեշտ որոշ միջոցները՝ անասունները, հողակտորը, աշխատանքային գործիքները, փոխադրական միջոցները, այգիները, որոնք մնում էին գյուղացիների ձեռքին, ապահովում էին հիմնական արտադրողների գոյությունը, ինչպես և ֆեոդալների կողմից յուրացվող հավելյալ արդյունքի արտադրությունը։ Սմբատի Դատաստանագրքի 149-րդ հոդվածը ցույց է տալիս, որ գյուղացի պառիկոսը ամրացված է եղել հողին և առանց ֆեոդալի թույլտվության իրավունք չի ունեցել տեղափոխվել մի այլ կալված՝ այլ ֆեոդալի մոտ։ Այստեղ ասված է. «Օրենքը հրամայում է, որ եթե պառիկոսը (ճորտը) փախչի իր պարոնի մոտից, պարոնը իրավունք ունի իր մոտ վերադարձնել պառիկոսին, վերջինի ողջ կյանքի ընթացքում։ Իսկ եթե նա մեռնի դրսում (պարոնի կալվածքից դուրս), ապա նրա երեխաներին պարոնը չի կարող բռնի վերադարձնել, բացի միայն այն դեպքից, եթե նրանք իրենց սեփական ցանկությամբ ներկայանան պարոնին»[7]։

Կիլիկիայում կային նաև ոչ մեծ թվով ստրուկներ, որոնց առաջացման աղբյուրներից գլխավորը եղել է պատերազմը և գերեվարությունը։ Այդ ճանապարհով ձեռք բերված գերի-ստրուկները վաճառվելիս են եղել հատուկ շուկաներում, որոնցից գլխավորը Այաս նավահանգիստն էր։ Գերեվաճառությունից ստացված եկամուտը բաշխվել է հաղթող բանակի զինվորների միջև։ Այասի առևտրական ակտերում հիշատակություններ կան օտար վաճառականների կողմից կատարված ստրուկների առևտրի մասին։ Կիլիկիայի թագավորները օտար վաճառականներին տրված առևտրական շնորհագրերում արգելում էին քրիստոնյա ստրուկներին վերավաճառել մահմեդական ֆեոդալներին[8]։

Ստրկության մյուս աղբյուրը ստրուկից ծնված երեխաների, ինչպես և տնտեսական ծանր կարիքից և աղքատության պատճառով ծնողների կողմից վաճառված երեխաների ստրկացումն էր։

Ինչպես բուն Հայաստանում, նույնպես և Կիլիկիայում ստրկությունը կրում էր ժամանակավոր երևույթ։ Ստրուկը ծառայելով վեց տարի, յոթերորդ տարվա մեջ ազատվում էր։

## 3. ԱՇԽԱՏԱՎՈՐ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՂԵՔՈՒՄԸ. ՀԱՐԿԵՐ, ՏՈՒՐՔԵՐ

Աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների կողմից Կիլիկիայի աշխատավորության շահագործումը տեղի էր ունենում բազմազան ձևերով և միջոցներով։

Ինչպես բոլոր ֆեոդալական հասարակություններում, այնպես էլ Կիլիկիայում ֆեոդալական դասակարգի կողմից աշխատավոր գյուղացու շահագործումը տեղի էր ունենում ֆեոդալական հասարակության արտադրական

---

7 Սմբատ Սպարապետ, Դատաստանագիրք, էջ 134։

8 Տե՛ս „Documents arméniens", t. II, p. 749.

եղանակին բնորոշ հողային ռենտայի երեք ձևերով՝ աշխատավճար ռենտա, արդյունավճար ռենտա և դրամական ռենտա։

Բացի ռենտայից, Կիլիկիայի գյուղացիությունը աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների օգտին կատարում էր զանազան պարտավորություններ, անում նվիրատվություններ, վճարում արտակարգ տուրքեր և տուգանքներ։

Աշխատավճար ռենտան օրինականացված էր Դատաստանագրքով. «Եւ ի շաբաթն աւր մի պարոնին բանի. և այլ աւելի ոչ բնաւ»[9]։ Այսպիսով, XIII դարում կախյալ գյուղացին պարտավոր էր շաբաթական մի օր աշխատել հողատիրոջ համար։ Բացի այդ, գյուղացին պարտավոր էր իր գրաստներով տարվա 12 տոների առթիվ ծառայել ֆեոդալին և յուրաքանչյուր տարի երկու անգամ աղ ու հաց տանել իշխանի բերդը՝ կալվածքը։

Աշխատավճար ռենտային զուգընթաց «հարկատու շինականներից» և «հնազանդյալներից» ռենտան գանձվել է նաև արդյունքով կամ մթերքներով։ Գյուղացիները գավառապետ պարոններին հարկ են վճարել ջրարբի և անջրդի հողերից, այգիներից, դաշտերից, անասուններից և այլն։ Սմբատի Դատաստանագրքի առաջին հոդվածում ասված է. «Հարկերը գավառներից, որ սահմանված է օրենքով, հավաքում են պարոնները և ոչ ոք իրավունք չունի այն ավելացնել առանց թագավորի գիտության... հարկերի ճիշտ չափը, Աստծո հարկատուին տված բոլոր եկամուտների մեկ հինգերորդն է»[10]։ Բացի հողային հարկից, գյուղացիները հարկ էին վճարում նաև անասունների, արոտավայրերի համար։ «Եզի համար այլ հարկեր չպետք է գանձվեն, որովհետև նրա համար գանձվել է հնգեկ։ Պարոնին տալ մի լիտր յուղ կովի համար և նրանցից այլ ապօրինի հարկեր չվերցնել։ Տասը ոչխարից (կամ այծից) որպես հարկ գանձել մի գառ կամ մի ուլ»[11]։ Գրաստները՝ ջորին, ձին և էշը չէին հարկադրվում։

Ինչպես բուն Հայաստանում, նույնպես և Կիլիկիայում ֆեոդալի տիրույթներում գտնվող հավաքվող կամ հանածո ամեն տեսակ օգտակար նյութերից, անգամ վայրի պտուղներից, արոտներից, խոտհարքից, անտառի փայտից, ձկնորսությունից և այլն օգտվելու դեպքում բնակչությունը պարտավոր էր տասանորդ վճարել[12]։

Վերը նշվածներից զատ, գոյություն են ունեցել նաև հարկեր, որոնք կրել են լատինական անուններ։ Դրանք հիշատակված են մեզ հասած առևտրական և քաղաքացիական շնորհագրերում, որոնք թագավորների կողմից տրվել են օտար վաճառականներին և Կիլիկիայի քաղաքներում ու նավահանգիստներում ապրող նրանց հայրենակիցներին։ Սենյորների կամ ·հողատեր պարոնների օգտին գանձվող լատինական տերմիններով նշված հարկերից են.

1. Contrarietas (կոնտրարիետաս)՝ աշխատավճար ռենտա։

---

9 *Смбат Спарапет,* Судебник, стр. 13.

10 Նույն տեղում։

11 Նույն տեղում։

12 Տե՛ս նույն տեղում, էջ 16։

2. Servitium (սերվիտիում)՝ ֆեոդալական պարտավորություն, որը վճարում էր սենյորին ենթակա բնակչությունը։ Այն որոշ դեպքերում հանդես է եկել որպես ռազմական հարկ[13]։

3. Ռազմական հարկ էր նաև շնորհագրերում նշված occassia (օկասիա) հարկը[14], որը յուրաքանչյուր ստորադրյալ տալիս էր սինյորին՝ պատերազմի ժամանակ կամ այլ արտակարգ դեպքերում։

4. Dati, tribitum (դատի, տրիբիտում) և այլ հարկեր, որոնք վճարվում էին խաղողի այգիներից, պարտեզներից և մշակվող հողերից, իսկ vectigal (վեկտիգալ)-ը գլխահարկ էր, որ վճարում էին ոչ քրիստոնյա հպատակները թագավորին և իշխաններին[15]։

Բացի վերոհիշյալ հարկերից, աշխատավորները վճարել են նաև բազմաթիվ տուգանքներ, որոնց մի մասը՝ պարոնի դարպասին, իսկ մի մասը՝ գանձարանին։

Նյութական բարիքներ արտադրողները հարկեր և տուրքեր էին վճարում նաև եկեղեցուն ու վանքերին, որոնք հիմնականում սահմանված են Սսի եկեղեցական ժողովի կանոններով և Սմբատի Դատաստանագրքով։

Բացի օրենքով սահմանված տասանորդից հոգևորականները, վանքերն ու եկեղեցիները ժողովրդից ստանում էին այսպես կոչված նվերներ ու ընծաներ։ Սրանք միջնադարում արդեն պարտադիր հարկերի և տուրքերի բնույթ էին ստացել և արտահայտվում էին «հաս և իրավունք» տերմինով։ Այդպիսի բնույթ են կրում կնքադրամը[16], թաղման համար գանձված դրամը[17] և մատաղացուի մի մասը[18]։ Ուխտագնացության և տոների առթիվ բնակչությունը պարտավոր էր վանքերին և եկեղեցիներին նվերներ տալ[19]։

Գյուղացիությունը կրում էր նաև պարհակային պարտավորություններ, կատարում հասարակական հարկադիր և ձրի աշխատանք։ Գյուղի և քաղաքի աշխատավորներն իրենց սեփական աշխատանքով, աշխատամիջոցներով և քաշող ուժով, կատարում էին քաղաքների, բերդերի, ամրոց-պալատների, կամուրջների, ճանապարհների շինարարություն[20], անցկացնում ջրանցքներ, առուներ կամ մաքրում դրանք։

* * *

Կիլիկիայի աշխատավոր բնակչությունը անտրտունջ և հլու-հնազանդ չէր տանում իշխող դասակարգի ճնշումն ու կեղեքումը։ Նա պայքարում էր աշխարհիկ և հոգևոր տերերի շահագործման դեմ։ Այդ պայքարը և սոցիալական բողոքը իր արտացոլումն է գտել Կիլիկիայի հայկական պետության շրջանին վերաբերող հայ մատենագրության, գեղարվեստական գրականության և քարոզների մեջ։

---

13 Տե՛ս Langlois V., Le trésor., p. 106, 111.

14 Langlois V., Essai., p. 49.

15 Տե՛ս նույն տեղում։

16 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 46—47., Կիրակոս Գանձակեցի, էջ 304։

17 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 46—47.

18 Տե՛ս նույն տեղում, էջ 43—44։

19 Տե՛ս նույն տեղում, էջ 39—44։

20 Տե՛ս նույն տեղում, էջ 74։

Կիլիկիայի ֆեոդալական հասարակությունում թեև չեն բռնկվել գյուղացիական խոշոր շարժումներ, ինչպիսիք էին պավլիկյան կամ թոնդրակյան շարժումները, սակայն դա չի նշանակում, թե չեն եղել աշխատավորական հուզումներ և պայքար կեղեքման ու կեղեքիչների դեմ։

Կիլիկիայում իրենց արտահայտությունն են գտել դասակարգային պայքարի ձևերից մի քանիսը, ինչպիսիք են՝ անհատական ընդդիմադրությունը, ճորտերի փախուստը, ինչպես նաև կրոնական ու դավանաբանական վեճերի շղարշի տակ հանդես եկած աղանդավորությունն ու հերետիկոսությունը։

Պայքարի պասիվ արտահայտություններից գլխավորը եղել է ծառաների և ճորտերի անհատական փախուստը։

Ընդդիմադրության ձևերից անհատական փախուստի տարածված լինելու մասին է վկայում նաև Սմբատի Դատաստանագրքի «Վասն որ պառիկոսն փախչի յիր պարոնէն»[21] հոդվածը։

Կան հոդվածներ, որոնք խիստ պատիժներ են նախատեսում այն շինականների նկատմամբ, որոնք դիտավորյալ կամ գիտակցաբար նյութական վնասներ են պատճառում իրենց տերերին[22]։

Սմբատը թագավորի և պարոնների դեմ կատարած հանցանքի կամ ապստամբության մասին, գրում է. «Եթե որևէ մեկը թագավորի կամ իշխանի հասցեին անարժան կամ անվայել խոսք ասի և կամ ապստամբի նրանց դեմ, պետք է հետևել, որ նրան դատի եկեղեցին, իսկ եթե նա չքավի իր մեղքը, եթե նա եկեղեցական է, զրկում են նրան պաշտոնից և արտաքսում՝ երկրից։ Իսկ եթե նա աշխարհական է, տուգանում են նրան բանադրելով և աքսորում։ Իսկ եթե մեղքը ծանր է, բռնագրավում են նրա ունեցվածքը»[23]։ Թագավորի և իշխանների դեմ ամեն մի անհատական ընդդիմություն և ոտնձգություն դիտվում էր որպես ապստամբություն, որպես ծանր զանցանք և նույնիսկ արժանանում էր մահապատժի[24]։

Թագավորական կենտրոնական իշխանությունից զատ Դատաստանագիրքը իրավունք է տալիս նաև յուրաքանչյուր գավառապետ պարոնի՝ պատժելու իր պարոնության սահմաններում ապրող ըմբոստ բնակիչներին[25], իսկ ամեն մի ֆեոդալ կարող էր պատժել իր ճորտին, ծեծել և զնդանել, չէր կարող միայն մահապատժի ենթարկել[26]։

Պարոնների բերդերը և ամրոցները հանդիսացել են ոչ միայն երկիրը արտաքին թշնամիներից պաշտպանելու, այլև ներքին ըմբոստությունները ճնշելու, աշխատավորներին հնազանդ պահելու միջոց։

«Անտիոքի Ասիզներին» ԺԵ գլխում այս առթիվ ասված է, թե «...որտեղ որ գժտություն և խռովություն լինի...» և լուրը հասնի պարոնի կամ գավառապետի գործակալներին, վերջիններս անմիջապես դղյակից կամ ամրոցից

---

21 *Смбат Спарапет*, Судебник, стр. 134.

22 Տե՛ս նույն տեղում, էջ 118, 119, 159։

23 Նույն տեղում, էջ 25։

24 Տե՛ս նույն տեղում, էջ 11, 82։

25 Նույն տեղում, էջ 118, 135, 189, 159։

26 Տե՛ս նույն տեղում, էջ 82—83։

ուղարկում են «մի ջոկատ հեծելազոր, որոնք կգնան խառնակության վայրը»[27] և տեղում հարթեն գործը, այսինքն՝ ճնշեն։ Ինչպես տեսնում ենք, պարոնի ձիավորները կատարել են նաև ոստիկանական հանձնարարություններ։

Անհատական ընդդիմադրության պասիվ ձևերից է եղել աղանդավորությունը և հերետիկոսությունը։ Աղբյուրները կցկտուր և անորոշ տեղեկություններ են հաղորդում այդ մասին։ Հայտնի են Ներսես Շնորհալու ակնարկները իր «Թղթերում» աղանդավորության և հերետիկոսության մասին[28]։ Սմբատի Դատաստանագրքում մի քանի հոդված կա նրանց վերաբերյալ[29]։ Հոդվածներից մեկում նա խոսում է հերետիկոսներին երկրորդ անգամ մկրտելու պայմանների մասին[30]։ Մի ուրիշում՝ վարդապետների վրա պատասխանատվություն է դնում, որպեսզի նրանք հավատացյալներին ուսուցանեն հեռու մնալ «ի չարագործութենէ և հերձուածողացն»[31].

Մեզ հասած տեղեկությունները, որքան էլ կցկտուր լինեն, վկայում են, որ Կիլիկիայում սոցիալական բողոքը՝ աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների կեղեքման դեմ դրսևորվում էր տարբեր ձևերով ու եղանակներով, իսկ տերերը դաժանորեն ճնշում էին աշխատավորների ամեն մի դիմադրություն։

## 4. ՔԱՂԱՔՆԵՐԸ ԵՎ ՔԱՂԱՔԱՅԻՆ ԿՅԱՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Քաղաքային կյանքը արևելքում, հատկապես Միջերկրական ծովի ափերին ունեցել է վաղեմի անցյալ։ Սակայն Կիլիկիայի միջնադարյան քաղաքները նշանակալից զարգացման հասան այստեղ հաստատված հայկական պետության ժամանակաշրջանում։ Դրան նպաստում էր մի կողմից՝ Հայկական կենտրոնացված պետության ստեղծումը, մյուս կողմից՝ արհեստագործության, առևտրի ու մշակույթի զարգացումը։ Կիլիկիայի քաղաքային կյանքին, քաղաքների աճմանն ու զարգացմանը նպաստում էր նաև Հայաստանի ծաղկած ու զարգացած քաղաքների՝ Անիի, Կարսի, Վանի, Կարինի, Արծնի, Նախճավանի և մյուս քաղաքների արհեստավորների զանգվածային գաղթը դեպի Կիլիկիա։

Հին ժամանակներից Կիլիկիայում հայտնի քաղաքներ էին Տարսոնը, Ադանան, Մամեստիան, Անարզաբան, Սելևկիան և Սիսը, նավահանգիստներ՝ Այասն ու Կոռիկոսը։

Կիլիկիայի քաղաքներում ու նավահանգիստներում էր կենտրոնացված Կիլիկիայի մեկ միլիոն բնակչության համարյա կեսը[32]։

Աղբյուրները ցույց են տալիս, որ քաղաքներն ու նավահանգիստները մտել են արքունի տան տիրույթների մեջ և անմիջականորեն ենթարկվել արքունիքին։

---

27 „Assises d'Antioche". p. 38—39.

28 Տե՛ս Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, էջ 26, նույնի, Նամականի, Վենետիկ, 1838, էջ 333, 366։

29 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 59—60, 74.

30 Տե՛ս նույն տեղում, էջ 22։

31 Նույն տեղում, էջ 39։

32 Տե՛ս „Histoire de Chypre de Mas-Latrie", t. II, p. 682—690.

Թագավորական քաղաքները գլխավորել են թագավորի ներկայացուցիչները՝ կապիտանները։ Վերջիններս, հատկապես նավահանգստային քաղաքներում, ունեցել են քաղաքական, վարչական և ոստիկանական կառավարման իրավասություններ։

Քաղաքներում թագավորի կողմից էին նշանակվում ձեռներեցները[33], մուխթասիպները[34] և դուկերը[35]։ Սրանք հսկում էին քաղաքների շուկաներում չափի և կշռի կարգավորմանը, գանձում էին հարկերն ու մաքսերը՝ կապալն ու բաժը՝ կամուրջների ու քաղաքների գլխավոր մուտքերում։ Թագավորական քաղաքներում վարչական պարտականություններ էին կատարում նաև թագավորի կողմից նշանակված «երեսփոխականները»[36], որոնք նույն իրավասություններն ունեին ինչ պարոններն ու գավառապետները։ Քաղաքներում թաղամասերի կառավարման համար նշանակվում էին «տանուտերեր»[37]։ Վերջիններիս հեղինակությունը բարձրանում է հատկապես XIV դարում, երբ մեծանում է արհեստավորների և առևտրականների դերն ու նշանակությունը՝ Կիլիկիայի քաղաքային ու հասարակական կյանքում։



Կիլիկիայի Սիս մայրաքաղաքը միջնադարում

Հայկական թագավորության շրջանում (XII—XIV դարերում) Սիսը դարձավ երկրի քաղաքական, վարչական, արհեստագործության, առևտրի և կուլտուրայի զարգացման խոշոր կենտրոններից մեկը։ Սիսը 1292—1441 թթ.

33 Տե՛ս Ներսես Լամբրոնացի, Թուղթ առ Լևոն, էջ 211։

34 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 126.

35 Տե՛ս նույն տեղում, էջ 127։

36 Տե՛ս նույն տեղում։

37 Տե՛ս Հովհաննես Դարդել, Ժամանակագրություն, էջ 69։

*եղել է ամենայն Հայոց կաթողիկոսի, իսկ 1441—1927 թթ. Մեծի տանն Կիլիկիո կաթողիկոսի նստավայրը։*

*Թագավորության մայրաքաղաք Սիսը, բնականաբար, մյուսներից ավելի արագ է բարգավաճել։ XII դարի վերջին քառորդի հեղինակ Ներսես Լամբրոնացին Սիսը կոչում է «իշխանանիստ լցեալ իշխանօք և ժողովրդօք»*[38]*։ Սակայն նա գանգատվում է նրա անշքության համար։ Երկու տասնամյակ հետո Կիլիկիա այցելած ավստրիական դքսի դեսպան Վիլլեբրանդ Օլդենբուրգցին, սքանչանալով Սիս քաղաքի գեղեցիկ շենքերով և զբոսարաններով, բառեր չի խնայում գովելու այն*[39]*։*

*Սսում էր գտնվում արքունի դարպասը (պալատը)՝ արքունի գանձարանը*[40]*։ Հիշատակված են Սսի միջնաբերդի բանտը, դրամատունը (տարապխանան, փողերանոց), իշխանանց տունը, գրադարանը կամ մատենադարանը, Սսի վարժարան-համալսարանը՝ դպրատունը։ Սսում էին կենտրոնացված օտար երկրների դիվանագիտական ներկայացուցիչները, Վենետիկի, Ջենովայի, իտալական մյուս քաղաքների և Ֆրանսիայի պայլերն ու կոնսուլները, պապի լեգատներն ու հոգևորական ասպետական օրդենների կոմանդորները, հույն, ասորի, լատին և մյուս համայնքների հոգևոր առաջնորդների ներկայացուցիչները*[41]*։*

*Կիլիկիայի ամենախոշոր վաճառաշահ ու հարուստ քաղաքը Տարսոնն էր, որը գտնվում էր Կյուդնոսի գետաբերանում՝ Միջերկրական ծովի ափին։ Կյուդնոսը միջին դարերում նավարկելի էր, ընդ որում նավերը բարձրանում էին մինչև քաղաքը, որը ավելի էր բարձրացնում քաղաքի առևտրական և ռազմական նշանակությունը*[42]*։ Տարսոնը XI—XII դարերում՝ բյուզանդական տիրապետության շրջանում, եղել է իշխանանիստ քաղաք։ Այն վերջնականապես անցավ Կիլիկիայի Ռուբինյան իշխանությանը, երբ Ռուբեն Բ իշխանը «Մեծ և երևելի» քաղաքը փողով գնեց Անտիոքի իշխանից։ 1190 թ. մի ձեռագրում Տարսոնը անվանված է «գեղեցկագոյն և հոյակապ քաղաքս»*[43]*։ Տարսոնը Կիլիկիայի երկրորդ մայրաքաղաքն էր։ Այստեղ էին կատարվում թագադրության ծիսակատարությունները։ Տարսոնն ունեցել է բազմազգ բնակչություն։ Բացի հայերից, քաղաքում բնակություն էին հաստատել հույներ, ասորիներ, հրեաներ և իտալացիներ*[44]*։ Այստեղ էր հաստատված Վատիկանի պապի ներկայացուցիչ լատին եպիսկոպոսը*[45]*։*

*Կիլիկիայի բազմամարդ և բարգավաճ, տնտեսական ու քաղաքական նշանակություն ունեցող քաղաքներից էին Ադանան և Մամեստիան։*

---

38 Ն. Լամբրոնացի, *Խորհրդածութիւն ի կարգս եկեղեցւոյ*, „Documents Arméniens", t. I, p. 559.

39 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան*, *էջ 204։*

40 *Տե՛ս* Վարդան, *էջ 162—163։*

41 *Տե՛ս Langlois V.*, Essai., p. 73, 82–83.

42 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան, էջ 262։*

43 *Տե՛ս նույն տեղում, էջ 269—270։*

44 *Տե՛ս նույն տեղում, էջ 270։*

45 *Տե՛ս նույն տեղում։*

Արհեստագործության և առևտրի զարգացման ու ծավալման տեսակետից ավելի մեծ դեր է խաղացել Այաս նավահանգիստը։ Այստեղ բնակություն էին հաստատել ոչ միայն տեղական արհեստավորներն ու առևտրականները, այլև Արևելքից ու Արևմուտքից եկած բազմաթիվ մարդիկ, որոնք զբաղվում էին Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի միջև կատարվող տարանցիկ առևտրով. Այասը խոշոր նշանակություն է ստանում Սիրիայի խաչակիր ֆրանկ պետությունների անկման շրջանում (XIII դարի երկրորդ կեսին) և որպես այդպիսին առաջին անգամ հիշատակվում է 1261 թ. ու դրանից հետո ընկած ժամանակաշրջանում[46]։



Այաս նավահանգստի պարիսպները

Թե ինչքան մեծ է եղել Այասում կատարվող առևտուրը, երևում է վենետիկցի վաճառականների Այասում կատարած առևտրական գործառնություններից։ Այասում նստող վենետիկյան պայլը, որն իր հպատակների առևտրական գործառնություններից գանձում էր ընդամենը կես տոկոս մաքս, մեկ ու կես տարվա ընթացքում ստացել է 7200 ֆրանկ եկամուտ։ Այսպիսով, միայն վենետիկցիների կողմից կատարված առևտրի շրջանառության գումարը հասնում էր մեկուկես միլիոն ֆրանկի[47], որի 2—4 տոկոսն էլ, որպես մաքս, մտնում էր Սսի արքունական գանձարանը։ Սկսած 1323 թ. մինչև 1337 թ. (մինչև Այասի վերջնական գրավումը Եգիպտոսի կողմից) Եգիպտոսը Այասի

46 Տե՛ս Ղ. Ալիշան, *Հայ-Վենետ*, էջ 51։

47 Տե՛ս Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 863—871։

բաժտնից ստանում էր մեկ միլիոն երկու հարյուր հազար դրամ հարկ, որը կազմում էր Այասի բաժտան եկամուտի մի մասը[48]։

Քաղաքային բնակչությունը՝ արհեստավորներն ու առևտրականները, ավելի արտոնյալ վիճակ են ունեցել, ավելի բարձր դասվել, քան գյուղացիները։ Նրանց թույլ էր տրվում զբաղվել ներքին և արտաքին առևտրով, շարժվել տեղից տեղ և մասնակցել եկեղեցական ու կրոնական հարցերի լուծմանը[49]։ Սսի և այլ մեծ քաղաքների առևտրական-վաշխառուական կապիտալի ներկայացուցիչները մասնակցել են պետության առաջ ծառացած քաղաքական հարցերի լուծմանը[50]։

Քաղաքային բնակչության ստորին խավերը սկզբնաղբյուրներում հիշատակվում են «ռամիկ» տերմինով, որի տակ հասկացվել են քաղաքի արհեստավորներն ու մանր առևտրականները, սևագործներն ու օրավարձով աշխատողները։ Մեծատունների քաղաքային վերնախավը կիլիկյան քաղաքներում ևս հզորացել և փարթամացել էր։ Նրանց միջից ոմն Կոստանդին՝ որդի պարոն Հեթումի, դառնում է Կոստանդին Ն թագավոր։ Հովհաննես Դարդելի վկայությամբ՝ «ոչ թէ ընտրեցին զնա առ ազնուականութեան, այլ առ փարթամութեան, զի էր ծագումն նորա ի ճորտից անտի Կիպրոսի»[51], այսինքն՝ Կիպրոսի զինվորներից էր։

Այդ նոր հասարակական շերտի ներկայացուցիչները, պետության կործանումից քառորդ դար հետո, վախենալով թուրքական և եգիպտական ֆեոդալների նոր վայրագություններից և վերահաս ֆիզիկական ոչնչացումից, 1402 և 1404 թթ. զանգվածաբար թողեցին Կիլիկիայի գեղատեսիլ ափերը, վերցրին գաղթականության ցուպը և մեկնեցին հեռավոր երկրներ՝ դեպի Իտալիա, «ֆրանգստան»[52], որտեղ սակայն հետագա դարերում վերջնականապես ձուլվեցին այդ երկրների բնակչության հետ։

XII—XIII դարերում արհեստագործությունը հիմնականում անջատվել էր գյուղատնտեսությունից և մեծ մասամբ կենտրոնացվել քաղաքներում։ Արհեստը դարձել էր արհեստավորի ապրուստի հիմնական միջոցը։

Կիլիկիայի բնական հարստություններն ու գյուղատնտեսական արտադրանքը մի կողմից, ներքին շուկան ու արտաքին առևտրական ընդարձակ կապերը մյուս կողմից՝ խթանում էին երկրի արհեստագործության բազմաթիվ ճյուղերի զարգացմանը։

Ինչպես Կիլիկիայի ազգաբնակչության, այնպես էլ արհեստավորների գերազանց մասը կազմում էին հայերը, որոնք Կիլիկիայի լավագույն արհեստավորներն էին։ Նրանք զբաղվում էին մետաղամշակությամբ, ատաղձագործությամբ, մանածագործությամբ, կարպետագործությամբ, խեցեգործությամբ, ապակեգործությամբ և այլ արհեստներով։ Առանձնապես հռչակված

48 Տե՛ս Langlois V., Le trèsor..., p. 232.

49 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 29.

50 Տե՛ս Հովհաննես Դարդել, Ժամանակագրութիւն, էջ 69։

51 Նույն տեղում, էջ 59։

52 Տե՛ս Նույն տեղում։

էին հայկական «ցփսի» կոչվող գործվածքը և կարպետները։ Հայերեն կարպետ բառը նույնիսկ մուտք է գործել եվրոպական մի քանի լեզուների մեջ[53]։

Գյուղերից հեռանալով քաղաքներում էին հաստատվում ոչ միայն արհեստավորները, այդ թվում բուն Հայաստանից «գաղթողները»[54], այլև ամեն տեսակի սև աշխատանք կատարելու պատրաստ սևագործ վարձկանների բավականաչափ ստվար մի խավ։ Քաղաքների սևագործների բազմությունը օրվա իր ապրուստը վաստակում էր գերազանցորեն օրավարձով կատարվող զանազան պատահական աշխատանքներից։

Սմբատ Սպարապետի Դատաստանագրքում հիշատակված են մի քանի տեսակ վարձու աշխատողներ՝ մշակներ[55], վարձվորներ կամ հոռքվորներ, որոնց մի մասը աշխատում էր տիրոջ գործիքներով[56], իսկ մի մասը՝ իր սեփական գործիքներով։

## 5. ԱՌԵՎՏՈՒՐԸ

Կիլիկիայի տնտեսական բարգավաճումը՝ գյուղատնտեսության ու արհեստագործության զարգացումը, խոշոր քաղաքների առկայությունը, երկրի աշխարհագրական դիրքը՝ ծովային ու ցամաքային ճանապարհներով այլ երկրների հետ հաստատված կապերը նպաստում էին ինչպես ներքին, այնպես էլ տարանցիկ առևտրի զարգացմանը։

Ներքին առևտրին նպաստում էր մանավանդ քաղաքի անջատումը գյուղից և փոխանակության զարգացումը նրանց միջև։ Գյուղացին գնում էր քաղաք՝ վաճառելու իր գյուղատնտեսական ապրանքը և դրա դիմաց ձեռք բերելու անհրաժեշտ արհեստագործական արտադրանք՝ գործիքներ, գործվածքներ և այլ իրեր։

Ներքին և արտաքին առևտրի զարգացմանը նպաստում էր կենտրոնացված պետության առկայությունը։ Դեռևս Լևոն Բ-ի ժամանակ (1198—1219), ինչպես ասվել է, մեծ ուշադրություն դարձվեց երկրի տնտեսական կյանքի, հատկապես առևտրի զարգացման վրա։ Կարգի բերվեցին նավահանգիստները, կամուրջները, առևտրական ու ռազմական ճանապարհները, կառուցվեց առևտրական նավատորմիղ, հատվեցին ոսկյա և արծաթյա դրամներ։ Կիլիկիայի հայոց թագավորների կտրած «թագավորական» կոչվող արծաթե դրամները լայն տարածում էին գտել նաև Կիլիկիայի սահմաններից դուրս՝ Իտալիայում և միջերկրածովյան ափերին գտնվող երկրներում[57]։ Լևոն Բ ու նրա հաջորդները կտրեցին նաև «դահեկան» կոչվող ոսկե դրամներ, բայց սահմանափակ քանակությամբ։

Արտաքին առևտուրը Կիլիկիայում ավելի խոշոր ծավալ էր ստացել։ Կիլիկիան ծովային և ցամաքային ուղիներով կապված էր Ջենովայի, Վենետի-

53 Տե՛ս Langlois V., Le trèsor..., p. 154—158.

54 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 190։

55 Տե՛ս Смбат Спарапет, Судебник, стр. 17.

56 Տե՛ս նույն տեղում, էջ 148։

57 Г. Микаелян, История Киликийского армянского государства, стр. 398.

կի, Ֆրանսիայի, Իսպանիայի, Ղրիմի, Մերձավոր Արևելքի ու Առաջավոր Ասիայի երկրների հետ։

Ներքին, արտաքին ու տարանցիկ առևտրի զարգացմանը նպաստելու նպատակով, սկսած 1201 թ. առևտրական պայմանագրեր կնքվեցին մի քանի երկրների վաճառականների հետ։ Այդ մասին են վկայում այն առևտրական արտոնագրերն ու շնորհագրերը, որոնք Կիլիկիայի թագավորների կողմից տրվել են վերոհիշյալ երկրների վաճառականներին՝ 1201, 1215, 1245, 1261, 1288, 1314, 1321, 1335 և այլ թվականներին[58]։

Վերոհիշյալ երկրների վաճառականները առևտրական շնորհագրերով իրավունք էին ձեռք բերում Կիլիկիայի քաղաքներում ունենալու իրենց թաղամասերը. դատարանները, եկեղեցիները, ինչպես և երկրի ներսում զբաղվելու արհեստագործությամբ ու առևտրով։

Կիլիկյան պետությունը հոգ էր տանում, որպեսզի ապահով լինեին ցամաքային և ծովային ճանապարհները, մասնավորապես հոգում էր Այաս և Կոռիկոս այցելող օտարերկրյա նավերի և քարավանների անվտանգության ու ապահովության համար։ Հարևան Սեբաստիան առևտրական-ցամաքային ուղիների խաչավորման գլխավոր կենտրոններից էր։ Այստեղ առևտրականներ էին գալիս Ղրիմից, Անդրկովկասից, Իրանից, Միջագետքից, Չինաստանից ու Հնդկաստանից, ինչպես նաև Կիլիկիայից, Սիրիայից, Արաբիայից ու Եգիպտոսից։

Սիրիայից դեպի Սինոպ տանող ճանապարհը, որը սերտորեն կապված էր Սուղակի և Ղրիմի այլ նավահանգիստների հետ, անցնում էր Կիլիկիայի վրայով։ Փոքր Ասիայի, Ղրիմի, Սիրիայի քաղաքներում և նավահանգիստներում զգալի քանակությամբ հայ բնակչություն էր հաստատվել՝ մեծ մասամբ արհեստավորներ ու վաճառականներ։ XIII դարում հայերը կարևոր դեր էին կատարում Ղրիմի առևտրում և գործարքներ ունեին նաև Կիլիկիայի հետ։

Կիլիկիայի մերձսևծովյան տափաստանների հետ ունեցած առևտրական հարաբերությունների մասին վկայում են Դնեստրի գետաբերանում՝ Akկերմանի մոտ գտնված Կիլիկիայի հայոց թագավորների դրամները[59]։

Ռուսաստանի մուշտակը, որի պահանջը շատ մեծ էր Եվրոպայի ու Մերձավոր Արևելքի շուկաներում, բերվում էր Սուղակ-Սինոպ-Կեսարիա-Այաս ճանապարհով[60]։

Մոնղոլների կողմից Բաղդադի գրավումով (1258) փոխվեց Առաջավոր Ասիայի քարավանային մայրուղիների ուղղությունը։ Մեծ նշանակություն ձեռք բերեց Առաջավոր ասիական նոր տարանցիկ ուղին՝ Այաս—Թավրիզ։ Ուստի խիստ բարձրացավ Կիլիկիայի տարանցիկ ուղիների և Կիլիկյան հայկական պետության դերը՝ XIII—XIV դարերի միջազգային առևտրում։ Մեծացավ նաև Այասից Թավրիզ տանող ճանապարհի վրա գտնվող Մեծ Հայքի

---

[58] *Տե՛ս* *Langlois V.*, Le trésor...; (*տե՛ս առևտրական շնորհագրերը*)։

[59] *Տե՛ս* *G. Bratianou*, Recherches sur le commerce Genois de la mer Noire, p. 161.

[60] *Տե՛ս* *Rey*, Les colonies franques de Syrie au XII-ème siècle, Paris, 1883, p. 208.

*քաղաքների դերը*[61]*։ Այասը դարձել էր Մերձավոր Արևելքի առևտրի ծովային դարպասը։*



**Կիլիկյան արծաթե թաս, գտնված Մերձուրալյան շրջանում**



**Կիլիկյան թասի հատակին արված պատկերները**

*Առևտրական քարավանները Կիլիկիայից զանազան երկրներ էին արտահանում բամբակ, հացահատիկ, անտառանյութ, անասուններ, չոր միրգ, ձի-*

---

61 *Տե՛ս G. Bratianou.* Actes des notaires Génois de Péra et de Caffa de la fin du XIII ème Siècle (1281–1290), Paris, 1936, p. 22.

թապտուղ, համեմունքներ և հանքային նյութեր։ Կիլիկիա էին ներմուծվում մի շարք ապրանքներ, ինչպիսիք են մետաքսեղեն, զարդեղեն, զենք, օճառ և այլն։

Արտոնություն ստացած օտար առևտրականների մեծ մասը ապրանքների համար վճարում էր մաքս մեկ տոկոսի չափով, մինչդեռ ոչ արտոնյալ պայմաններով սահմանված էր չորս տոկոս։ Ներմուծվող և արտահանվող ապրանքներից ստացվող մաքսը վճարվում էր նավահանգիստներում և լեռնանցքերում հիմնված մաքսային վարչության տներում, որոնք աղբյուրներում կոչվում են բաժտուն։ Առևտրական արտոնագրերում և շնորհագրերում, Սմբատի Դատաստանագրքում նշված են բազմաթիվ այդպիսի հարկերի և մաքսերի տեսակներ։

Առևտրից գանձվող մաքսերն ու հարկերն էին.

1. Ոսկե, արծաթե իրերի և թանկագին քարերի վաճառքից ստացվող հարկեր։

2. Սանսարյան—միջնորդության հարկը, որ գանձվում էր Կիլիկիայի շուկաներում, տոնավաճառներում և խանութներում վաճառվող ապրանքներից։

3. Պասաժում — անցահարկը և տուրքը, որ գանձվում էր կիրճերի, լեռնանցքերի, կամուրջների և գետերի վրայով կատարվող առևտրից,

4. Անգորաժում հարկը՝ նավահանգիստներում խարսխվող նավերից։

5. Տաքուլաժում կոչվող հարկը, որ գանձվում էր շուկայում վաճառքի սեղան ունենալու համար։

6. Տրանզիտուզ կոչվող հարկը, որ գանձվում էր ֆեոդալ հողատիրոջ կամ թագավորի կողմից նրանց տերիտորիայի վրայով փոխադրվող ապրանքների համար։

7. Էգսակցիո հարկը, որ գանձվում էր օտար պանդոկապետներից և գինեվաճառներից։

Բնական է, որ Կիլիկյան արքունի գանձարանը մեծ եկամուտներ էր ըստանում արտաքին և տարանցիկ առևտրից, որն իր հերթին նպաստում էր Կիլիկիայի տնտեսական զարգացմանը։

## 6. ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ ԿՏՐՎԱԾ ԴՐԱՄՆԵՐԸ

Ներքին և արտաքին առևտրին զարկ տալու համար կիլիկյան իշխանավորները և թագավորները կտրեցին իրենց դրամները[62], որոնք գերազանցապես

62 Կիլիկյան Հայաստանը իր գոյության ողջ ընթացքում լայն կապերի մեջ լինելով Միջերկրականի արևելյան ու արևմտյան շուկաների հետ, ապրանքափոխանակության պահանջով թողարկել է մեծ քանակությամբ դրամներ։ Դրանց մի չնչին մասը, ավելի քան 13,000 դրամ, առանձին ժողովածուներով, պահվում է Վիեննայի ու Վենետիկի Մխիթարյան թանգարաններում, Հայաստանի պատմության պետական թանգարանում (Երևան), ՍՍՀՄ ժողովուրդների պատմության թանգարանում (Մոսկվա), Պետական Էրմիտաժում (Լենինգրադ), Թուրքիայի հնագիտական թանգարանում (Ստամբուլ), Ֆրանսիայի ազգային մատենադարանում (Փարիզ), Ամերիկյան դրամագիտական ընկերությունում (Նյու-Յորք) և շատ այլ պետական ու անհատական ժողովածուներում։

հայերեն գրերով արծաթե ու պղնձե դրամներ էին։ Դրամների թողարկումը Կիլիկիայում սկսվել էր դեռևս Ռուբինյանների իշխանության շրջանում։ Հատ ու կենտ նմուշներով պահպանվել են Թորոս Ա-ի (1099—1129), Թորոս Բ-ի (1145—1169) և առավելապես Ռուբինյան վերջին իշխան Լևոնի (1187—1198) պղնձե դրամները, որոնցով կատարվել է առևտուրը երկրի ներսում։ Իշխանների անուններից բացի դրանց վրա դրոշմված է նաև խաչի նշանը։

Թագավորության շրջանում դրամներ են թողարկվել մշտապես։ Լևոն Բ 1198 թ. թագավոր հռչակվելով անմիջապես կարգավորեց երկրի դրամական տնտեսությունը և թողարկեց արծաթե ու պղնձե, իսկ առանձին դեպքերում նաև ոսկե դրամներ։ Լևոն Բ-ի առատորեն թողարկած արծաթե ու պղնձե դրամները շրջանառության մեջ են եղել ողջ XIII դարի ընթացքում։ Այս դրամներն իրենց ձևավորմամբ օրինակ հանդիսացան Կիլիկիայում թողարկվող հետագա դրամների համար։ Լևոն Բ-ի կտրած ոսկե դրամները գերազանցապես շքադրամ էին 4,8 գրամ նվազագույն և 7 գրամ առավելագույն քաշով։ Շրջանառության մեջ հիմնական դրամային միավորը արծաթե դրամն էր, որը թողարկվում էր զանգվածաբար։


Լևոն թագավորի ոսկե դրամը

Դրամների մի երեսին դրոշմվում էր հայոց թագավորի պատկերը, շուրջը գրված՝ Լեւոն թագաւոր Հայոց, մյուս երեսին՝ մեկ կամ, ավելի հաճախ, երկու առյուծ՝ խաչի նշանով[63]։

Թողարկվել են նաև պղնձե խոշոր դրամներ, որոնց մի երեսին պատկերված է թագավորի առյուծանման գլուխը, շրջապատված Լեւոն թագաւոր Հայոց գրությամբ։ Պղնձե այդ դրամների հակառակ կողմերին պատկերված է խաչ, շուրջը գրված՝ Շինեալ ի քաղաքս ի Սիս: Լևոն Բ-ի օրոք դրամները թողարկվում էին տարբեր կշռաչափի, որոնք հայտնի էին տարբեր անուններով։ 5,1 գրամ միջին քաշով արծաթե դրամները կոչվում էին երկդրամյաններ, դրանց կես կշիռը ունեցող (մոտ 2,9 գրամ) արծաթ դրամային միավորները՝ կես երկդրամյաններ, իսկ 1,30 քաշով արծաթե դրամները՝ կեսդրամյաններ։

Պղնձե խոշոր դրամը կոչվում էր «դանգ» և թողարկվում էր մոտ 7,40 գրամ միջին քաշով։ Հեթում-Զաբելի (1226—1270) համատեղ թագավորության տարիներին թողարկվեցին արծաթե դրամներ՝ 2,84 գրամ միջին քաշով, որոնց մի կողմի վրա դրոշմված էր Հեթումի և Զաբելի պատկերները. կանգնած և խաչը միասին բռնած, մյուս կողմին՝ խաչակիր առյուծը, շուրջը արձանագրված՝ Հեթում թագաւոր Հայոց: Այդ ժամանակներում թողարկվեցին նաև երկլեզվյան հայերեն ու արաբերեն արձանագրություններով արծաթե դրամներ։ Դրանք շրջանառության մեջ մտան 1236—1245 թթ.՝ Հե-

---

63 Լևոն Բ կտրել է նաև արծաթե շքադրամ իր օծման առթիվ՝ Քրիստոսի առջև իր ծնրադիր պատկերով մի երեսին և երկու առյուծների ու խաչի պատկերով մյուս երեսին։

թում Ա-ի և Իկոնիայի սելջուկյան սուլթաններ Քեյ-Կուբադի ու Քեյ-Խոսրովի անուններով, որի առթիվ նախապես հատուկ համաձայնություն էր կայացել։ Ներքին շուկայի համար 7,20 գրամանոց պղնձե «դանգ»-երից բացի, թողարկվեցին նաև 4,60 գրամ քաշով պղնձե դրամներ, որոնք կոչվում էին «քարտեզ»։ Դրանց վրա թագավորը պատկերվում էր հեծյալ կամ գահին նստած։

Հեթումին հաջորդած Լևոն Գ-ի օրոք (1270—1289) շրջանառության մեջ մտան այսպես կոչված «նոր դրամներ»՝ արծաթից, 2,60 գրամ քաշով և թագավորի, որպես հեծյալի պատկերով։ Հեթում Բ-ի (1285—1305) թագավորության տարիներից արծաթ դրամներ չեն պահպանվել։ Հայտնի են սակավաթիվ և թեթև քաշի (մոտ մեկ գրամ) փոքրիկ (15 միլիմետր տրամագծով) բիլոնե դրամներ։ Դրանց վրա պատկերված են թագավորը՝ հանդիպահայաց դեմքով և խաչի նշան. արձանագրությունը՝ Հեթում թագաւոր ամենայն Հայոց: Ըստ որում, առաջին երկու բառերը նշված են միապետի դիմաքանդակի շուրջը։

Հեթում Բ-ի պղնձյա դրամները նույնպես թողարկվում էին թագավորի հանդիպահայաց դիմաքանդակով, սակայն եղել են նաև պղնձե դրամներ, որոնց վրա Հեթում Բ երբեմն պատկերված է արևելյան ձևով՝ ծալապատիկ նստած, մի ձեռքը կրծքին, մյուսով՝ գավազանը բռնած։ Սմբատի խիստ կարճատև թագավորության տարիներին (1296—1298) թողարկվում էին արծաթե դրամներ, որոնք գրեթե նույնությամբ կրկնում էին Ռուբինյանների հզորության ժամանակները հիշեցնող Լևոն Բ-ի արծաթե երկառյուծ դրամների պատկերատիպը։ Դրանով նա հավանաբար կամենում էր շեշտել, որ ինքը Ռուբինյանների հաջորդն է, և ոչ Հեթումյանների, որոնց գահը բռնագրավել էր։

Սմբատին հաջորդած Կոստանդին Ա, որի թագավորությունը մեկ տարի չտևեց, դրվագել տվեց ոչ միայն արծաթե ու պղնձե, այլև ոսկե դրամներ։ Չնայած շատ քիչ դրամներ են պահպանվել Կոստանդինից, բայց պատկերագրական առումով դրանք ուրույն տեղ են գրավում հայկական դրամների շարքում։

Կոստանդին Ա-ի ոսկե դրամները ունեցել են 3,50 գրամ քաշ՝ մի կողմի վրա պատկերված ձիավոր թագավորը, աջ ձեռքին սուր բռնած, իսկ հակառակ կողմի կենտրոնում Սսի անառիկ ամրոցը՝ մեկ կամ երեք աշտարակներով։ Ոսկե դրամի վրա նշված արձանագրությունը՝ «Սսոյ բերդն է թագաւոր», կա միայն Կոստանդին Ա-ի դրամների վրա։ Արծաթ դրամների վրա հայոց թագավորը պատկերված է ուղիղ կանգնած՝ աջ ձեռքին սուր, ձախին՝ խաչ, շուրջը գրված՝ «Կարողութիւն Այս է թագւոր»: Այդ արծաթ դրամների վրա՝ մյուս կողմից թագավորը ներկայացված է ձիավորի տեսքով, աջ ձեռքին նորից սուր բռնած, իսկ շուրջը արձանագրված. «Կոստանդիանոս թագաւոր Հայոց»: Պղնձե դրամները՝ «քարտեզները» ունեցել են 2,40 գրամ միջին քաշ և խաչի նշան։

XIV դարի սկզբից փոխվում է դրամա-կշռային սիստեմը։ Դրամային տնտեսության սնանկացումը բացահայտ է դառնում։ Լևոն Դ (1301—1307)

*թագավորի տարիներից Կիլիկիայում թողարկվում են նոր դրամային միավորներ՝ նոր անուններով։ Դրանք հայկական թագավորության անկման շրջանի դրամներն են։*



Լևոն թագավորի կնիքը

*Հիմնական դրամային միավորը «թագվորին» կոչվող արծաթե դրամն էր՝ 2,30 գրամ միջին քաշով և արծաթի ցածր տոկոսով։*

*Պղնձե դրամների շարքում XIV դարի սկզբից հանդես է գալիս «փող» կոչված միավորը։*

*Ներքին շուկայի համար նախատեսված այդ «փող» պղնձե դրամները սկզբում դրվագվում էին համեմատաբար խոշոր տրամագծային չափերով (5,7—2,4 գրամ քաշով), որոնք հետագայում շատ փոքրացան (1,2—0,65 գրամ քաշով) ու բոլորովին չքացան։*

*XIV դարում դրամների վրա դրոշմվող պատկերները և մակագրությունները դառնում են միատիպ (կանոնիկ), անարվեստ։ Բացի Սսից դրամներ կտրվել են Տարսոնում։*

*Դրամական տնտեսության սնանկությունը դարձել էր բացահայտ։ Բիլոնե փոքրիկ դրամները 0,70 գրամ քաշով Կիլիկյան Հայաստանի վերջին դրամները եղան։ Հետագայում՝ 1393—1489 թթ. Կիպրոսի թագավոր-թագուհիները թողարկեցին լատինատառ դրամներ, որոնց վրա դրոշմում էին իրենց տիտղոսները՝ իբրև Հայաստանի թագավորներ, սակայն, սրանք հայ ազգային դրամների հետ կապ չունեին։*



Հեթում թագավորի դրամը

*Այսպիսով, Կիլիկիայի հայկական պետությունն իր ծագման ու զարգացման ողջ ընթացքում հայերեն գրերով դրամներ է թողարկել, որոնք լայն տարածում են ունեցել։ Դրանք հայտնաբերվել են առանձին օրինակներով և ամբողջական գանձերի ձևով, ըստ որում ոչ միայն բուն Կիլիկիայում, այլև նրա սահմաններից դուրս, որովհետև սպասարկել են ոչ միայն ներքին, այլև արտաքին շուկաների պահանջները։*

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿԻԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԸ

## 1. ՌՈՒԲԻՆՅԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՎԱՐՉԱ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ

*Կիլիկիայի հայկական պետությունը, իր երեքհարյուրամյա գոյության ընթացքում, հիմնականում անցել է երկու շրջան. առաջինը իշխանական կամ Ռուբինյան իշխանության շրջանն է, որն սկսվում է 1080 թ. և վերջանում է 1198 թ., երկրորդը՝ թագավորական շրջան, որն սկսվում է 1198 թ. և վերջանում է 1375 թ. Կիլիկիայի հայկական պետության կործանմամբ։*

*Այս երկու շրջանները հասարակական-տնտեսական, ինչպես նաև վարչա-քաղաքական կառուցվածքով սերտորեն կապված են իրար հետ։ Ընդ որում, երկրորդ շրջանը հանդիսանում է առաջինի բնական և տրամաբանական շարունակությունը, զարգացման ավելի բարձր աստիճանում։*

*Ռուբինյանների իշխանության գլուխ կանգնած էր իշխանաց իշխանը, որը երկրի կամ իր տիրապետության տակ գտնվող գավառների և փոքր այլ իշխանությունների միակ սյուզերենն էր հանդիսանում, վայելում էր գերագույն իրավասություններ և պատիվ։ Նրա ծառայության տակ էին բազմաթիվ մեծ ու փոքր իշխաններ, որոնք նրանից ստանում էին պարգևներ՝ հողեր, կալվածներ և դրանց դիմաց պարտավորվում էին վասալական պարտականություններ կատարել՝ հատկապես զինվորական ծառայություն և այլ պաշտոններ վարել։*

*Իշխանաց իշխանը նստում էր իշխանանիստ բերդ-քաղաքում՝ Վահկա բերդում, իսկ հետագայում՝ Սսում, որտեղ և պահվում էր իշխանության պետական արխիվը։*

*Իշխանաց իշխանին էին ենթարկվում գավառապետներն ու պարոն-իշխանները՝ ֆեոդալ վասալները, որոնք իշխանաց իշխանի մոտ ծառայում էին որպես գործակալներ։ Այդ շրջանից հայտնի են սպարապետության[1] և պայլության գործակալությունները[2]։*

*Իշխանաց իշխանը պահում էր մշտական զորք, որի կորիզը հանդիսանում էր ազատներից կազմված հեծելազորը («Հայոց հեծյալը»[3]) և ռամիկներից*

1 **Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 200։**

2 **Տե՛ս Սամուել Անեցի, էջ 218։**

3 **Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, 1956, էջ 177—179,**

կազմված հետևակը։ Հայ իշխանները Կիլիկիա և Փոքր Ասիայի բյուզանդական նահանգներն էին գաղթել ազատներից կազմված զորքերով և ռամիկ հետևակով[4]։ Իշխաններն իրենց զորքերը դնում էին իշխանաց իշխանի տրամադրության տակ, երբ վերջինս կռվում էր արտաքին թշնամիների դեմ։ Զինվորներն ստանում էին թոշակ կամ ռոճիկ (որը կոչվում էր հռոգ[5]), նրանք բաժին էին ստանում նաև ռազմական ավարից և ռազմական գերիների փրկագնից ստացվող եկամուտներից։

Իշխանաց իշխանի ընդհանուր եկամուտները կազմվում էին բնակչությունից գանձվող հարկերից, առևտրական մաքսերից ու հարկերից և ռազմական ավարից ստացվող բաժնից։

Իշխանաց իշխանին ենթակա էր և նրա նախագահությամբ գործող վերին ատյանը, որի նիստերը գումարվում էին իշխանանիստ քաղաքում։

Այսպիսով, իշխանաց իշխանը հանդիսանում էր ամբողջ երկրի իշխանների սյուզերենը, առանց թագավորական թագի։

Ռուբինյան իշխանության կազմավորման շրջանում մուտք են գործում արևմտա-եվրոպական և բյուզանդական ֆեոդալիզմի պետական-քաղաքական կարգերին հատուկ մի շարք անուններ, տիտղոսներ։ Այսպես, խաչակիր ֆրանկ իշխանները Ռուբեն Ա-ի որդի Կոստանդինի (1095—1100) իշխանությունը կոչում էին կոմսություն, իսկ Կոստանդինին անվանում էին մարքիզ[6]։ Կոմս տիտղոսը հետագայում՝ թագավորության շրջանում ևս շարունակվեց օգտագործվել։

Բյուզանդական ազդեցության տակ իշխանաց իշխանները կրում էին սևաստոս, պան սևաստոս և պրոտևաստոս տիտղոսները, որոնք հատկապես տրվում էին Բյուզանդական կայսրության վասալ Լամբրոնյան-Հեթումյան իշխանաց իշխաններին և իշխաններին։ Վերջիններիս իշխանությունները կոչվում էին սեբաստոսություն[7]։

Իշխանական շրջանի քաղաքական-պետական կառուցվածքի մասին վերևում բերված փաստերն ու տեղեկությունները, թեև սահմանափակ, բայց բավական են ցույց տալու, որ նույնիսկ իշխանական ժամանակաշրջանում Կիլիկիայում ձևավորվել և բավականաչափ բարձր զարգացման էին հասել պետական կառավարման կարգերը։

## 2. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԸ

Կիլիկիայի հայկական թագավորությունը կենտրոնացված և բավականաչափ զորեղ մի պետություն էր։ Անշուշտ, այս վիճակը նոր պայմաններ էր

---

4 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 49, 305, Սամուել Անեցի, էջ 58, 116—117, Սմբատ Սպարապետ, Պատմություն, էջ 24, 27—58։

5 Տե՛ս «Թուղթ ընդհանրական», էջ 100, Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 484։

6 Տե՛ս Ս. Անեցի, էջ 214, «Արարատ», 1870, էջ 355, Գ. Հովսեփյանց, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 265—266։

7 Տե՛ս Գ. Հովսեփյանց, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 544։

ստեղծում՝ Կիլիկիայի ֆեոդալական հասարակության և պետական կարգի հետագա զարգացման համար։

Կիլիկիայի քաղաքական-պետական կարգերում հիմնականում շարունակվում էին նախորդ շրջանի բնորոշ գծերը. պետական կարգը հանդիսանում էր բուն Հայաստանի ֆեոդալական պետական կառուցվածքի առավել զարգացած բարձր աստիճանը։ Փաստորեն, Կիլիկիայի թագավորության պետական կարգի վրա ազդող բյուզանդական և արևմտաեվրոպական ֆեոդալական կարգերի ազդեցությունը հիմնականում եղել է ձևական, օրինակ, արքունիքի պաշտոնյաների անվանումը, որոշ գործակալությունների հորջորջումը։ Դա բնական էր, քանի որ Կիլիկիայի հայկական թագավորությունը գտնվում էր Արևելքի և Արևմուտքի՝ Եվրոպայի և Ասիայի մայր ցամաքների սահմանագլխին, կազմավորվել էր բյուզանդական նախկին նահանգների հողերի վրա և սերտ շփման մեջ էր արևմտա-եվրոպական ֆեոդալական կարգերի ազդեցության ներքո կազմավորվող խաչակիր ֆրանկ իշխանությունների հետ։

Երկրի ամբողջ իշխանությունը ֆեոդալական դասակարգի ձեռքում էր, որն այն իրականացնում էր արքունիքի միջոցով։ Արքունիքի գլուխ կանգնած թագավորը մարմնավորում էր երկրի գերագույն իշխանությունը։ Նա էր պատերազմ հայտարարում, հաշտություն կամ դաշինք կնքում, լուծում երկրի ներքին կյանքին վերաբերող կարևորագույն հարցերը, հրապարակում օրենքներ և վճիռներ, դրամ կտրում, քաղաքներ և ամրոցներ հիմնադրում։ Նա իշխում էր «ինքնակալությամբ»[8]։

Ըստ Սմբատի Դատաստանագրքի, թագավորից հետո ֆեոդալական սանդուխքի հաջորդ աստիճանի վրա կանգնած էին խոշոր հողատերերը, որոնք թագավորի և իշխանաց-իշխանի վասալներն էին, երկրորդ աստիճանի վրա՝ թագավորի, իշխանաց-իշխանի և մյուս պարոն-իշխանների ասպետները։

Թեև Կիլիկիայի պետական կարգն իր էությամբ վերջին հաշվով հայկական էր, արևելյան կերպավորմամբ, սակայն, ի տարբերություն բուն Հայաստանի Արշակունյաց կամ Բագրատունիների թագավորական արքունիքի, այստեղ արևմտաեվրոպական և Սիրիայի ֆրանկ պետությունների օրինակով, որպես երկրի կառավարման գլխավոր մարմին, արքունիքում կազմվել էր բարձրագույն կամ վերին արքունի ատյան (Curiae regis)[9], թեև դա խորհրդատու մարմին էր[10]։

Լևոն Բ-ի կողմից 1201 թ. ջենովացիներին շնորհված առևտրական արտոնագրում ասվում է, որ այդ շնորհագիրը[11] տրված է «կուրիայի համաձայնությամբ» (assensi curiae)[12]։ Հետաքրքիր է, որ ավելի ուշ շրջանի փաստաթղթերում այն բացակայում է, և թագավորն ինքն է շնորհում արտոնագրեր «իր անձնական կամոք» (moto proprio)[13]։

---

8 Տե՛ս «Ներսեսի Լամբրոնացւոյ ատենաբանութիւն, և թուղթք և ճառք», էջ 235։

9 Langlois V., Le trésor, p. 45.

10 Տե՛ս Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, էջ 59։

11 V. Langlois, Le trésor, p. 106.

12 Տե՛ս նույն տեղում։

13 Տե՛ս նույն տեղում։

*XIII դարի վերջում արքունական կուրիան հայկական աղբյուրներում անվանվում է արքունական «դիվան»[14], սակայն այն տարբերությամբ, որ այս շրջանում տվյալ ատյանը մեծ նշանակություն չի ունեցել։ Այդ երևում է այն բանից, որ հրովարտակների մեծ մասում չի հիշատակված, թե թագավորը այն շնորհել է կուրիայի կամ դիվանի համաձայնությամբ։*

*Վերին կամ արքունի ատյանն իր զարգացման հետագա շրջանում դառնում է թագավորական խորհուրդ, որին կից ստեղծվում է մի դատարան, որը կոչվում է Վերին կամ Մեծ դարպաս։*



Կիլիկյան դրամ

*Հետագայում, XIV դարում, արքունական դիվանը դադարում է գործադիր օրգանի որևէ դեր կատարելուց, ընդհակառակը, ուժեղանում է «թագավորական խորհրդի» դերը։*

*Այդ խորհրդի ուժը վճռական ու զգալի է դառնում հատկապես 1342 թ., երբ թագավորները մեկը մյուսին հաջորդում են ոչ թե նախկինում գոյություն ունեցող ժառանգական «հայրենական իրավունքով»[15], այլ ընտրվում էին թագավորական կամ իշխանական խորհրդի կողմից։*

---

14 *Տե՛ս Langlois*, Le trésor, p. 234.

15 *Տե՛ս* Վահրամ Ռաբունի, *Բան ի յայտնութեան տեառն և յօծումն Լևոն Գ արքայի, էջ 1—20։*

## 3. ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Արքունիքի կազմի մեջ մտնում էին կենտրոնական պետական կառավարման օրգանները՝ գործակալությունները։ Վերջիններս գլխավորում էին Կիլիկիայի անվանի և առավել խոշոր ֆեոդալական տների ներկայացուցիչները։ Այդ պարտականությունները, որոնք ֆեոդալները կատարում էին թագավորի՝ արքունիքի նկատմամբ, կոչվում էին «ծառայութիւն», «հնազանդութիւն»[16] և «գործ» կամ «գործակալութիւն»։

«Ծառայութիւն» արտահայտվում էր թագավորի նկատմամբ նրա վասալների կատարած մի շարք վարչական և զինվորական պարտականություններով։

Կիլիկիայի թագավորին ծառայող ֆեոդալները կոչվում էին լիճ-ճորտք[17], ասպիճանաւորք, իսկ վասալական պարտականությունները սյուզերենի հանդեպ կոչվում էր լճություն[18]։

Նույն հիմունքներով էին կարգավորվում նաև խոշոր ֆեոդալների և նրանցից կախում ունեցող վասալ հողատերերի փոխհարաբերությունները։

Քանի որ գործակալության պարտականության հիմքում ընկած էր ֆեոդալական հողատիրության իրավունքը, այդ պաշտոնը հաճախ կրում էր ժառանգական բնույթ։ Այս կարգը, որը գոյություն ուներ դեռևս Արշակունյաց և Բագրատունյաց Հայաստանում, որոշ չափով պահվում էր նաև Կիլիկիայում։ Սակայն, սկսած թագավորության հիմնադրման ժամանակաշրջանից՝ հաճախ խախտվում էր։ Ինչպես վկայում են աղբյուրները, գործակալներ և ասպիճանավորներ էին նշանակվում առավել խոշոր ֆեոդալները։

Կարևորագույն գործակալությունների թիվը Կիլիկիայում տասն էր, իսկ ընդհանրապես արքունիքում ծառայող ասպիճանավորների և այլ պաշտոնյաների թիվը հասնում էր մոտավորապես 25-ի։

Կիլիկիայի հայկական թագավորության գործակալությունների մեծ մասը նման էր Արշակունյաց և Բագրատունյաց ժամանակների գործակալություններին, չնայած նրանց միջև եղել են նաև որոշ, մանավանդ ձևական բնույթի տարբերություններ։

**Թագադիր գործակալություն:** Արքունիքում վերականգնվեց Արշակունիներից հայտնի թագադիր գործակալի պաշտոնը։ Կոստանդին թագավորահայրը այդ պաշտոնը հանձնեց Լամբրոնի Կոստանդին իշխանին, կամենալով նրան «թիկունս օգնականութեան իւր առնել»[19]։

Թագադիր գործակալը թագադրության հանդեսների ժամանակ թագավորի գլխին թագ էր դնում և կապում էր արքայական նշանը։ Իբրև պալատական հանդեսների արարողապետ, հսկում էր արքունիքում սահմանված կարգի պահպանմանը։ Նա հետևում էր, որպեսզի իշխանները թագավորին ներկայանան պատշաճ ձևով և զբաղեցնեն իրենց ասպիճանին համապատասխան հատկացված տեղերը[20]։

---

16 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 13—15.

17 *Տե՛ս նույն տեղում, էջ 82։*

18 *Տե՛ս* „Assises d'Antioche", p. 8—9.

19 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 287։*

20 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան, էջ 475։*

**Սպարապետություն:** *Սպարապետության գործակալությունը գլխավորում էր սպարապետը*[21]*, որը աղբյուրներում հիշատակվում է նաև գունդստաբլ՝ արևմտաեվրոպական տերմինով*[22]*։ Այս գործակալությունը կազմավորված էր հայկական վաղեմի ավանդույթների հիման վրա, իսկ իր արևմտաեվրոպական անվանմամբ* (comes stabuli) *նման էր V դարի Հայաստանում օգտագործված շահ-ախոռապետ տերմինին*[23]*։*

*Ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ Կիլիկիայում սպարապետը պատերազմի ժամանակ պետական կամ արքունական բանակի գլխավոր հրամանատարն էր։ Նա գլխավորում էր իշխանների զորքերը, որոնք համախմբված ձևով հանդես էին գալիս թշնամու դեմ։*

*Գլխավոր հրամանատարները Կիլիկիայում ունեին մեծ կշիռ և բարձր հեղինակություն։ Այդ գործակալությունը հաճախ հանձնվում էր արքունական տան անդամներին, որոնք միևնույն ժամանակ ավագ պարոններ և խոշոր հողատերեր էին և, որ կարևորն է, մի շարք ամրոցների և բերդերի, հատկապես սահմանային բերդերի բերդատերեր։*

*Կիլիկիայում սպարապետությունը չի եղել որևէ իշխանական տոհմի ժառանգական պաշտոն։ Սպարապետ նշանակվել են առավել ընդունակ խոշոր զորավարները, որոնք պայքարում էին կենտրոնական իշխանության ուժեղացման համար։ Սպարապետության գործակալությունից բացի, Սմբատ Սպարապետը հիշատակում է նաև զինվորական մի այլ հրամանատարի՝ «սպասալարի» մասին*[24]*։ Կիլիկիայի պետական բանակում սպասալար էր անվանվում հեծելազորի հրամանատարը, իսկ սպարապետը կամ գունդստաբլը գլխավորում էր ամբողջ բանակը։*

*Երկրի ռազմական ուժերի կամ բանակի սպասարկման համար, արքունիքում գործում էր նաև մատակարարման գործակալությունը։ Վերջինիս խնդիրն էր սպառազինություն և պարեն մատակարարել բանակին։ Գլխավոր մատակարարը անվանվում էր՝ մարաջախտ*[25] *կամ «մարաջախտ թագաւորութեան Հայոց»*[26]*։ Նա գունդստաբլի անմիջական տեղակալն էր։*

*Արևմտյան Եվրոպայի թագավորական պալատի կապիտանի նման՝ արքունիքում գոյություն ուներ «արքունի կուրիայի կապիտան», որը մարաջախտի օգնականն էր։*

**Խնամակալության կամ պայլության՝ գործակալություն:** *Այս պաշտոնը գոյություն ուներ, ինչպես նշվեց, դեռևս XII դարի առաջին կեսում՝ իշխանական շրջանում։ Գործակալը կոչվում էր պայլ։ Այս տերմինը և ինքը՝ գործակալությունը ծագումով արևմտաեվրոպական էին, իսկ անվանումը լատինական* (bajulus, baljus)*։ Թագավորից բացի, պայլ նշանակում էր նաև իշխանական խորհուրդը կամ վերին ատյանը։*

---

21 *Տե՛ս* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 235—238։*

22 *Տե՛ս* Ներսես Լամբրոնացի, *Թուղթ առ Լևոն,* Սամուել Անեցի, *էջ 158,* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 200։*

23 Եղիշե, *Վարդանանց պատերազմը, էջ 74։*

24 *Տե՛ս* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, 1956, էջ 234։*

25 *Տե՛ս* Սամուել Անեցի *(շարունակող), էջ 209—210։*

26 Հովհաննես Դարդել, *Ժամանակագրութիւն, էջ 115։*

Կիլիկիայում պայլը հանդիսանում էր թագավորի առաջին խորհրդականը, որը թագավորի բացակայության դեպքում փոխարինում էր նրան։ Թագավորական պայլը (baillis royaux) թագավորին ներկայացնում էր Արևմտյան Եվրոպայի երկրներում և լատինական Արևելքում։

Պայլությունը հիմնականում խնամակալական գործակալություն էր, որը հատուկ նշանակություն էր ստանում թագավորի կամ թագաժառանգի անչափահասության ժամանակ։

Պայլության գործակալության դերն ու նշանակությունը հատկապես մեծանում էր, երբ թագավորական գահը թափուր էր մնում և երկրում ծավալվում էին ֆեոդալական երկպառակություններ։ Այդ ժամանակ պայլը գլխավորում էր բանակը՝ հայոց հեծյալը և հնազանդեցնում էր կենտրոնախույս տրամադրություններ ունեցող կամ պառակտված իշխաններին[27]։

Պայլը թագավորի երիտասարդության շրջանում կոչվել է «թագավորահայր». այսպես էր կոչվում Հեթում Ա-ի հայրը՝ Կոստանդին Հեթումյանը[28]։

Պայլությունը, որպես գործակալություն, գոյություն է ունեցել մինչև թագավորության անկումը։ XIV դարում՝ Լևոն Ե-ի անչափահասության ժամանակ պայլության գլուխ են կանգնում նույնիսկ երեք կամ չորս «մեծազոյն և փառաւոր իշխանքն»[29]։

**Ջանցլեր կամ արքունական քարտուղարություն:** Արքունի քարտուղարության գլխավոր գործակալը կոչվել է թագավորական ջանցլեր կամ կանցլեր[30]։ Այդ պաշտոնը վարողը կոչվել է նաև ատենադպիր։ Ինչպես հայտնի է, ատենադպիր տիտղոսն ու պաշտոնը գոյություն ուներ նաև հին Հայաստանում։ Սակայն ֆրանկ պետություններում և կիլիկյան թագավորությունում գործող ջանցլերի պաշտոնը նույն բովանդակությունը չուներ, թեև որոշ կողմերով նման էր բուն Հայաստանի ատենադպրին՝ արքունի քարտուղարությանը։

Ջանցլերի կամ «մեծաց ջանցլերի» պաշտոնի մշտական կրողը Սսի արքեպիսկոպոսն էր[31]։ Արքեպիսկոպոսի, հետևաբար և ջանցլերի պաշտոնը ժառանգական չէր։

Սսում էր գտնվում արքունի «կանցելարիան», հետևաբար և նրա արխիվը (դիվանատունը)։ Վերջինս այրվեց 1266 թ. մամլուքների հերթական արշավանքի ժամանակ[32] և վերջնականապես ոչնչացվեց 1375 թ.՝ թագավորության կործանման ժամանակ։

Հաճախ ընդունված կարգը խախտելով կանցլերի պաշտոնում նշանակում էին ոչ թե Սսի արքեպիսկոպոսին, այլ լեզուներ իմացող և առավել կարող հոգևորականների։ Վերջիններիս լավագույն ներկայացուցիչն է Վահրամ Ռաբունի վարդապետը, որը թեև չի եղել Սսի արքեպիսկոպոս, սակայն մոտավորապես 30 տարի վարել է ատենադպիրի պարտականությունները։

---

27 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 223—226։

28 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 271։

29 Լ. Խաչիկյան, *14-րդ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ*, էջ 193—194։

30 *Langlois V.*, Le trésor..., p. 107, 110, 143.

31 «Բազմավեպ», 1847, էջ 92։

32 Տե՛ս Վարդան, էջ 162։

*Հասկանալի է, որ արքունի քարտուղարության արխիվ վարելը բավականին բարդ գործ էր։ Այդ երևում է մեզ հասած 375 փաստաթղթերից, որոնց թվում կան արքունի հրովարտակներ, շնորհագրեր, հողային նվիրատվություններ, բազմաթիվ ակտեր ու դիվանագիտական նամակագրություններ, որոնք պահպանվել են Եվրոպայի զանազան քաղաքների՝ Փարիզի, Ջենովայի, Վենետիկի, Միլանի, Մարսելի, Բեռլինի, Մադրիդի, Մալթայի և այլ վայրերի պետական արխիվներում*[32]։

*Վերոհիշյալ փաստաթղթերի մեծ մասը լատիներեն և ֆրանսերեն է, իսկ մի քանիսը՝ հայերեն։ Արքունի քարտուղարության մեջ օգտագործվող հիմնական լեզուն եղել է կիլիկյան միջին հայերենը։ Դա երևում է նաև այն բանից, որ վերոհիշյալ լատիներեն փաստաթղթերին զուգահեռ գտնվել են նաև նրանց հայերեն բնագրերը։ Պետական քարտուղարությունում աշխատելիս են եղել արքունի թարգմաններ* (dragomani curiae)*։ Բացի այդ, եղել են թագավորական կամ արքունական մեծ թվով քարտուղարներ և գրասենյակի ծառայողներ* (scriptoris regis)[33]*։ Երկրի ներսում գործերը վարվում էին հայերեն լեզվով, իսկ օտար պետությունների հետ՝ ֆրանսերենով և լատիներենով*[34]։

*Մեծաց ջանցլերը կոչվում էր նաև լեգատ* (legatis)*, որը նշանակում է «կապ հաստատող» նվիրակ, պատվիրակ, քանի որ վերջինս ոչ միայն գլխավորում էր արքունի քարտուղարության բոլոր գործերը, այլև հաճախ բանակցություններ էր վարում օտար պետությունների ներկայացուցիչների հետ*[35]։

*Թագավորական կամ արքունական քարտուղարությունից բացի, ջանցլերներ ունեին նաև օտար պետությունների դիվանագիտական ներկայացուցիչները՝ հյուպատոսները, և Կիլիկիայում բնակություն հաստատած օտար համայնքների պայլերը*[36]*։ Ջանցլերներ ունեին նաև հոգևոր օրդենները, որոնք ենթարկվում էին Կիլիկիայում գործող օրդենների հրամանատարին կամ բերդատիրոջը։*

Սեղանապետության *գործակալը կոչվում էր սինեշալ կամ սենեջալ, հիշատակվում է նաև սենեսկալ*[37]*, «սենեսկալ հայոց»*[38] *և այլ ձևերով։ Սա արքունիքում բավականին ազդեցություն ուներ, իբրև արքայական պալատի կառավարիչ, արքունիքի եկամուտներն ու ծախսերը տնօրինող և հսկող պաշտոնյա։ Նրա պաշտոնը համապատասխանում էր արևմտաեվրոպական երկրների թագավորական պալատների գործակալությունը ղեկավարող մեծ դոմեստիկի (*grand domestique*) պաշտոնին*[39]*։ Այս գործակալությունը հանձնվում էր առավել խոշոր ֆեոդալներից մեկին, որը մոտ էր կանգնած*

---

32 *Տե՛ս Langlois V.*. Essai..., p. 6—7.

33 *Տե՛ս նույն տեղում, էջ 11—12։*

34 *Տե՛ս նույն տեղում։*

35 *Տե՛ս Longlois V.*, Le trésor..., p. 107—110.

36 *Տե՛ս Langlois V.*, Essai..., p. 11.

37 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 70.

38 *Տե՛ս նույն տեղում, էջ 222։*

39 *Տե՛ս* „Guillaume de Tyr", t. II, p. 5.

*թագավորական տանը և այդ պատճառով էլ աղբյուրներում անվանվում է «հավատարիմն տան արքունի»[40]։*

*Սենեսալը կամ սենեսկալը նույնպես ուներ իր հատուկ տեղն արքունիքում՝ մյուս գործակալների կամ աստիճանավորների շարքում. նա կրում էր հատուկ նշան[41]։*

*Սենեսկալին է ենթարկվել մի այլ բարձրաստիճան պաշտոնյա՝ ջամբրլայն կամ մեծաց ջանբրլայնք՝ արքունի հանդերձապետը կամ սենեկապետը։ Վերջինս ոչ միայն պահում էր թագավորական զգեստները, այլև կազմակերպում էր պալատական հանդեսներ[42]։*

*Սենեսկալին էին ենթարկվում նաև արքունիքում ծառայող մյուս աստիճանավորները՝ մանր ազնվականության ներկայացուցիչները, ասպետները։ Դրանցից հայտնի է արքունական պոդլերը՝[43] թագավորի սեղանապետը կամ մատռվակը (գինեպետը)։*

**Մաքսապետություն:** *Առավել կարևոր և խոշոր գործակալություն էր երկրի ֆինանսները ղեկավարող պրոքսիմոսի գործակալությունը[44]։*

*Ներքին, արտաքին ու տարանցիկ առևտրի զարգացմանը զուգընթաց Կիլիկիայի քաղաքներն ու նավահանգիստներն էին գալիս բազմաթիվ առևտրական քարավաններ՝ Ասիայի մայր ցամաքի խորքերից և առևտրական նավեր արևմուտքից։ Ինչպես նավահանգիստներում, այնպես էլ լեռնանցքներում հաստատված էին մաքսատներ և բաժատներ։ XIII դարում զգալի չափով զարգանում է ներքին առևտուրն ու արհեստագործությունը, որոնցից նույնպես հավաքվում էին մեծ չափով տուրքեր։ Վերոհիշյալ բոլոր մաքսային ու տուրքային գործառնությունները կարգավորելու համար ստեղծված էր երկրի հարկային-ֆինանսական գործակալություն հանդիսացող մաքսապետությունը։ Այս գործակալությանը ենթարկվում էին մաքսատների պաշտոնյաները, հարկահավաքները, նաև ներքին շուկաների վերակացուները։*

*Մաքսերից ստացվող եկամուտը այն գլխավոր աղբյուրներից մեկն էր, որոնցով պահվում էր պետությունը և ապահովվում էին ռազմական ծախսերը։*

*Առևտրական շնորհագրերում և հրովարտակներում օտար վաճառականներին և օրդեններին շնորհված արտոնությունների կատարումն ու հսկումը հանձնարարվում էր պրոքսիմոսին[45]։ Պրոքսիմոսն էր գլխավորում ոչ միայն ներքին և արտաքին առևտրի ընդհանուր գործառնությունների կարգավորումը, այլև դրանց մեջ ընդգրկված հայ և օտար առևտրականներից գանձվող մաքսերի, հարկերի և տուրքերի սահմանումն ու գանձումը։*

*Կիլիկիայի հայկական թագավորությունն ուներ իր սեփական առևտրական նավատորմիղը և մի շարք հարմար նավահանգիստներ։ Այասից ու Կոռիկոսից հետո կարևոր նավահանգիստներ էին Կիպրիումը, Ջաֆրան (այժմ*

---

40 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան, էջ 470։*

41 *Տե՛ս նույն տեղում, էջ 475։*

42 *Տե՛ս նույն տեղում։*

43 *Տե՛ս E. Dulaurier*, Recherches sur la chronologie Armenienne, p. 189.

44 *Տե՛ս Longlois V.*, Le trésor..., p. 154—157.

45 *E. Dulaurier*, Recherches, p. 190.

Մերսին), Մալոն (հին Մալուսը), Կանամելլան (այժմ Փայաս), Ալեքսանդրետի նավահանգիստը և Բոնելին։

Կիլիկիայի թագավորներին և պրոքսիմոսին այդ նավահանգիստներում ներկայացնում էր մի պաշտոնյա, որը կոչվում էր «բաժտան կապիտան»[46]։ Նա էր օտար երկրների առևտրականների հետ կապ հաստատում, պայմանագրեր կնքում, ակտեր կազմում և պրոքսիմոսի կողմից բանակցություններ վարում առևտրականների ներկայացուցիչների՝ պայլերի և հյուպատոսների հետ։ Այս պաշտոնյան ուղղակի ենթարկվում էր պրոքսիմոսին, որը հաճախ աղբյուրներում հիշատակվում է որպես մինապան[47]։ Վերջինիս վրա էր դըրված նաև նավահանգիստների ընդհանուր հսկողությունը։

* * *

Բացի վերոհիշյալ մեծ գործակալություններից, միջնադարյան Եվրոպայի և Բյուզանդական կայսրության արքունիքների նման Կիլիկիայում գոյություն են ունեցել փոքր պաշտոններ, որոնք հանձնված են եղել կրտսեր պարոններին՝ միջին և մանր հողատերերի ներկայացուցիչներ՝ ասպետներին։

Պալատական զանազան պաշտոնների մասին է խոսում Սմբատը իր Դատաստանագրքի «Վասն ատոիճանաւորաց թագաւորական պաղատին» հոդվածում, որտեղ մեկ առ մեկ թվարկում է պալատական ինը աստիճանավորների կատարած պարտականությունները։ Ըստ վերոհիշյալ հոդվածի, այդ պաշտոնները թվով հիմնականում 14-ն են՝ տիարք (թագակիրք), վեստիտորայն (թագադիր արքայի), կանդիտորայն (տերունական խաչը թագավորի առաջից տանողները), պրուքսատորայն (թագավորի դագաղը տանողներ), էսկուպիտորայն (թագավորի վահանակիրներ), ստրատորոսքն (թագավորի ձին թամբողները), սքաւարքն (թագավորական դրոշակակիր ասպետներ), տիկանեաւն (աղեղնավորներ) և պահնորդներ (պալատի շուրջ՝ պարիսպները պահպանողներ)[48]։

Արքունիքում և իշխանների դղյակներում կարևոր պաշտոն էր նաև ավագ շավուշը՝ սուրհանդակապետը, որը հիշատակվում է թագավորի օծման տոնահանդեսների ժամանակ սեղան նստող մյուս գործակալների շարքում[49]։

Կիլիկիայի հայկական թագավորությունը XIII—XIV դարերում ապրում էր միջազգային բարդ իրադրության պայմաններում, որոնցից ելք որոնելու հույսով կիլիկյան արքունիքը հաճախ պատվիրակներ՝ դեսպաններ էր ուղարկում դեպի այդ երկրները։ Դեսպանները մեծավ մասամբ եղել են բարձր հոգևորականության ներկայացուցիչներ, իսկ երբեմն՝ աշխարհիկ խոշոր և մանր ազնվականներ։

Կիլիկյան արքունիքում և ընդհանրապես պետական-քաղաքական կյանքում մեծ դեր էին կատարում «Տիկնաց տիկինները»՝ թագուհիները։

Տիկնաց տիկնոջ փոխհարաբերությունները մյուս տիկինների և իշխանուհիների հետ եղել են այնպիսին, ինչպիսին էին հարաբերությունները ֆեո-

46 Տե՛ս նույն տեղում։

47 Տե՛ս „Documents arméniens", t. I, Introduction XCI.

48 Տե՛ս *Смбат Спарапет,* Судебник, стр. 68—70.

49 Տե՛ս Պ. Ալիշան, *Սիսուան*, էջ 475։

դալական հիերարխիայի գագաթում կանգնած թագավորի և վասալ իշխանների միջև։

**Վարչական բաժանում և գավառական իշխանություններ։** Կիլիկիայի հայկական թագավորության վարչական բաժանման մասին որոշակի տեղեկություններ համարյա չեն պահպանվել, հայտնի չէ նաև, թե քաղաքները ինչպիսի իրավասություն են ունեցել։ Այսուամենայնիվ սկզբնաղբյուրներից պարզվում է, որ վարչական տեսակետից Կիլիկիան բաժանված է եղել գավառների, երկրների, պարոնությունների[50], որոնց թիվը հասնում էր 45-ի։ Առավել խոշոր միավորները, որոնց մեջ մտնում էին մի քանի գավառներ, կոչվել են կոմսություն[51] և աշխարհ[52]։ Վերոհիշյալ միավորների կառավարողները անվանվել են պարոն, իշխան, մեծ իշխան, կոմս և գավառապետ։ Ամբողջ Կիլիկիայի բնակիչները համարվել են թագավորի հպատակներ (subjis)[53]։ Թագավորը, թեև մասնակցել է երկրի ներքին կառավարմանը, հարկերի ու տուրքերի կարգավորմանը[54], սակայն հիմնականում գավառապետներն ու իշխաններն են վարել իրենց ենթակա շրջանների վարչական, տնտեսական, ռազմական և դատական գործերը։ Եթե նկատի չունենանք այն հանգամանքը, որ թագավորության թուլացման շրջանում իշխանները թագավորից անկախ կապ են հաստատել Արևմտյան Եվրոպայի և պապականության դիվանագիտական ու քաղաքական շրջանների հետ, ապա ի տարբերություն Երուսաղեմի թագավորության սենյորների, նրանք իրավունք չեն ունեցել առանց թագավորի գիտության պատերազմ հայտարարել, պայմանագիր կնքել, դրամ կտրել, գավառների և գյուղատնտեսական հարկերի քանակը ավելացնել կամ իրենց հպատակներին մահապատժի ենթարկել։

## 4. ԴԱՏԱՐԱՆՆԵՐԸ

Հայ և օտար մատենագրական և իրավական հուշարձանները ցույց են տալիս, որ XII—XIII դարերում Կիլիկիայում, բացի եկեղեցական կանոնական և հռոմեա-բյուզանդական օրենքներից և, որ գլխավորն է. Սմբատ Սպարապետի Դատաստանագրքից, գործել են նաև խաչակիր ֆրանկ իշխանություններում կիրառվող օրենսդրությունները՝ Երուսաղեմի[55] և Անտիոքի ասիզները։ Վերջիններս անհրաժեշտ են եղել կարգավորելու Կիլիկիայում զարգացած ֆեոդալական հասարակության սոցիալ-տնտեսական և դասակարգային հարաբերությունները, սենյորի և վասալի փոխհարաբերությունները և ֆեոդալական հողատիրության հարցերը։

Սմբատ Սպարապետի Դատաստանագիրքը հանդիսանում էր օրենքների այն հիմնական ժողովածուն, որով կարգավորվում էին Կիլիկիայի ֆեոդա-

---

50 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 15, 16, 97, 116, 126, 127, 172.
51 *Տե՛ս* „Documents arméniens“, t. I, p. 667.
52 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 22.
53 *Տե՛ս Langlois V.*, Le trésor..., p. 152.
54 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 8,127—128.
55 *Տե՛ս* „Assises de Jerusalem“, cl. 149.

լական հասարակության ներքին կյանքին վերաբերող բոլոր հարցերը։ Այն կոչված էր եղել նաև ամրապնդելու վերոհիշյալ կարգերի միապետական հիմքերը։

Անշուշտ, երկրում տնտեսական, քաղաքական և վարչական ռեֆորմներ անցկացնող Լևոն Բ-ի տեսադաշտից չէր վրիպել նաև դատարանների ստեղծումը։ Հենց նրա ժամանակ և հետագա շրջանում սկսեցին գործել մի քանի տիպի ատյաններ, որոնք կազմում էին Կիլիկիայի կենտրոնական պետական ու տեղական կառավարման մարմինների հիմնական օղակները։

Այդ ատյանները հետևյալներն էին.

1. **Արքունի դատարան՝** Վերին կամ Մեծ դարպաս (արքունի դիվան կամ Regalis curial)[56]:

Աղբյուրներից երևում է, որ Վերին կամ Մեծ դարպասի նախագահն էր թագավորը, իսկ նրա բացակայության դեպքում՝ իշխանաց իշխանը[57]։

Սմբատի Դատաստանագրքում նշված են Վերին կամ Մեծ դարպասի իրավասությունները, որոնց մեջ մտնում էին թագաժառանգին հաստատելը, արքունական տիրույթների ժառանգության հարցերի կարգավորումը, գործակալությունների գործունեության վերահսկողությունը, առանց թագավորի թույլտվության բերդեր կամ քաղաք կառուցող իշխաններին դատելը, հարկերի սահմանումը, ավարի բաշխման առթիվ առաջացած վեճերի կարգավորումը և այլ հարցեր։

Բացի այդ, արքունի ատյանի՝ Վերին կամ Մեծ դարպասի իրավասության էին վերապահված թագավորի հպատակի և օտարականի միջև առաջացած վեճերը, եթե դրանք չէին հարթվում Սսի արքեպիսկոպոսական ատյանում։

Արքունական ատյանն էր քննում նաև քրեական բոլոր հանցագործությունները, որոնք առնչվում էին օտարահպատակի հետ։ Պատասխանատվությունից խուսափող օտարահպատակի հանցագործության համար պատասխանատու էր Կիլիկիայում ապրող օտարահպատակի համայնքը[58]։

Վերին ատյանը կամ Մեծ դարպասը հաստատված էր Սիս մայրաքաղաքում։ Սակայն, օտարի և հայի միջև ծագած վեճերը քննվում էին Այասում, որտեղ և իր նիստերն էր գումարում արքունի ատյանի մասնաճյուղը՝ թագավորական պայլի նախագահությամբ[59]։

**Սսի արքեպիսկոպոսական ատյանը** իր նշանակությամբ երկրորդ տեղն էր գրավում։ Աղբյուրներում այն կոչվում է curiae Sisenses[60]։ Այստեղ հիմնականում քննվում էին հոգևորականներին վերաբերող հարցերը, ինչպես և քրիստոնյա ու այլադավան անձանց միջև ծագած վեճերն ու հանցագործությունները։ Այս ատյանը նախագահում էր Սսի արքեպիսկոպոսը։ Սակայն

---

56 Տե՛ս *Langlois V.*, Le trésor..., p. 106, 110, 145, 154.

57 Տե՛ս *Смбат Спарапет*, Судебник, стр. 81—82.

58 Տե՛ս „Documents arméniens", t. I, p. CVII.

59 Տե՛ս *Mas Latrie*, Histoire de l'île de Chypre sous la règne des Princes de la Maison de Lusignan, t. II, p. 78.

60 Տե՛ս *Langlois V.*, Essai., t. II, p. 78.

XIII դարի կեսերից, Լևոն Գ-ի օրոք (1271—1289), երբ արտաքին և ներքին առևտուրը ավելի զարգացավ և Կիլիկիայի դերը Մերձավոր Արևելքի միջազգային առևտրի ասպարեզում մեծացավ, Սսի արքեպիսկոպոսական ատյանին կից ստեղծվեց թագավորական պալատի ատյանը՝ «Curia ducalis et bailie», 



Լևոն թագավորը դատավոր, մանրանկար

որը գլխավորում էր գունդստաբլ-դուկը «conestabulus ducha»[61], իսկ Այասում՝ Այասի կապիտանը։ Այս ատյաններում քննվում էին օտար վաճառականների և հայերի միջև ծագած վեճերը։ Արքունի պալատի գլխավորած ատյանի մասնաճյուղերը հաստատված էին քաղաքներում և կոչվում էին բուրջեսներ։ Այստեղ քննում էին տեղական բնակիչների, հատկապես առևտրականների միջև ծագած վեճերը և քրեական հանցագործությունները։ Այս դատարանները նման էին ֆրանկ պետություններում գործող «բուրջես»-ներին, որոնց գլուխ կանգնած էին թագավորի կողմից նշանակված օրենսդիրները՝ թագավորի պայլը կամ գերկոմսը[62]։

---

[61] Տե՛ս *Mas Latrie*, Histoire de l'île de Chypre t. II, p. 78, t. III, p. 677.

[62] Տե՛ս *Langlois V.*, Essai., p. 48.

*Բուրջեսներում կամ պայլի ատյանում որպես օրենքներ օգտագործում էին Անտիոքի ասսիզների երկրորդ բաժինը, որն ընդգրկում է ընտանեկան, ժառանգական, ֆինանսական և, հատկապես, ներքին ու արտաքին առևտրի հետ կապված հարցեր*[63]*։ XIII դարի երկրորդ կեսին Անտիոքի ասսիզներին զուգահեռ օգտագործում էին նաև Սմբատ Սպարապետի Դատաստանագրքի համապատասխան բաժինները*[64]*։*

*Ստորին կամ բուրջես դատարանների ստեղծման անհրաժեշտությունը պայմանավորված էր Կիլիկիայի քաղաքների, քաղաքային կյանքի՝ ներքին և արտաքին առևտրի, արհեստների և տնտեսության զարգացմամբ։ Այս ատյանները նման էին Երուսաղեմի թագավորության մեջ գործող* Cour de la fonde *(ինչքային-գույքային դատարաններին) և նավահանգիստներում գործող* Cour de la chaîne *դատարաններին, որոնց գլխավորում էր պայլը կամ նավահանգստի կապիտանը։ Սրանք հիմնականում նոր զարգացող քաղաքային առևտրական «բուրգերության» դատարաններն էին, որոնք թեև ենթարկվում էին տվյալ քաղաքի, շրջանի սենյորին կամ թագավորին, բայց վերջին հաշվով անկախ էին սենյորական վերին ատյանից։*

**Սենյորական, պարոնական կամ գավառական դատարաններ (դարսյսս)**։ *Կիլիկիան բաժանված էր շրջանների՝ գավառների կամ պարոնությունների։ Յուրաքանչյուր շրջան ուներ իր կառավարիչը՝ գավառապետը կամ պարոնը։ Վերջինս տվյալ շրջանի հողատեր ֆեոդալն էր և որպես այդպիսին, հանդիսանում էր թագավորի վասալը. նրա նկատմամբ կատարում էր վարչական, տնտեսական ու ռազմական պարտականություններ՝ տնօրինելով իրեն հանձնված շրջանի գործերը, այդ թվում և դատական գործը*[65]*, հատկապես սենյորի և վասալի, ինչպես նաև շրջանի բնակչության տարբեր խավերի միջև ծագած վեճերը*[66]*։*

*Անտիոքի ասսիզները հնարավորություն են ընձեռում վերականգնելու սենյորական դարպասի կառուցվածքը։ Ըստ այդ օրենսգրքի դարպասի ատենապետները անվանվել են դիվանբաշի (դատավոր), երդված մարդիկ, այսինքն՝ երդվյալներ կամ ատենակալներ։ Վերջիններս կոչվել են դիվընձիք։ Դատարանի գլխավոր պաշտոնակատար անձնավորությունը՝ հավանաբար դատախազը, կոչվել է տուկ, նրա քարտուղարը՝ նոտար տուկին, իսկ դատարանի սուրհանդակը՝ չավուշ, որը միևնույն ժամանակ հանդիսացել է պարոնի կամ շրջանի պայլի սուրհանդակը*[67]*։ Դատարաններում կողմերի իրավունքները պաշտպանելու համար գործում էին իրավաբաններ սնդեկնոս (սինդիկոս)*[68]*։*

*Բացի սենյորական դարպասներից, շինականներին դատելու իրավունք են ունեցել նաև ֆեոդալական հիերարխիայի ամենացածր աստիճանում կանգնած ազատները՝ ձիավորները։*

---

[63] ***Տե՛ս*** „Assises d'Antioche", ch. II.

[64] ***Տե՛ս*** ***Смбат Спарапет,*** Судебник, стр. 119—128, 135—173.

[65] ***Տե՛ս*** ***Langlois V.***, Essai, p. 48.

[66] ***Տե՛ս*** ***Смбат Спарапет,*** Судебник, стр. 81—83.

[67] ***Տե՛ս*** „Assises d'Antioche", p. 38, 39.

[68] ***Տե՛ս «Հանդես ամսօրեայ», 1898, էջ 247, 1954, էջ 78։***

**Հոգևոր, եկեղեցական, թեմական ատյաններ:** *Կիլիկիայի իշխանության շրջանում դեռևս շարունակում էին գործել եկեղեցական, թեմական, այսինքն՝ հոգևոր ֆեոդալներին ենթարկվող ատյանները։ Աշխարհիկ ֆեոդալների նըման, հենվելով իրենց ֆեոդալական հողատիրության իրավունքի վրա, հոգևոր ֆեոդալները դատ էին տեսնում և օրենքներ սահմանում իրենց տիրույթների ներսում՝ բնակչության տարբեր խավերի՝ գյուղացիների, ռամիկների, եկեղեցու դեմ ընդվզող աղանդավորների և հերձվածողների նկատմամբ*[69]*։*

*Սսի եկեղեցական ժողովի կանոնական որոշումները, որոնք թեև մշակվել էին ամբողջ Հայաստանի և Կիլիկիայի հայկական թագավորության եկեղեցական թեմական ատյանների համար, գործադրվեցին հատկապես Կիլիկիայում, որտեղ ուժեղ էր թագավորական իշխանությունը։*

*Եկեղեցական ատյաններում հիմնականում քննվում էին բնակչության կենցաղին վերաբերող գործերը կապված ամուսնության, ապահարզանի, թաղման, ամուսնական հավատարմության խախտման և այլնի հետ*[70]*, ինչպես և հոգևորականության ժառանգության*[71]*, հոգևոր ֆեոդալի օգտին գանձվող տասանորդի և այլ հարկերը մուծելու կարգը խախտողների գործերը*[72]*, ցածր հոգևորականների կատարած հանցագործությունները*[73]*, ակամա հանցագործությունները՝ սպանությունները և այլ հարցեր։*

*Հոգևոր հիերարխիայի բարձր աստիճանում կանգնած հայրապետը՝ կաթողիկոսն ուներ բավականին մեծ լիազորություն, ընդ որում նա գլխավորում էր հանցագործ թագավորին դատող գերագույն ատյանի նիստերը։ Ըստ Սմբատի Դատաստանագրքի՝ նա «օրինադրակից է թագաւորին և Աստուծոյ»*[74]*։*

* * *

*Բացի վերոհիշյալ դատարաններից ու ատյաններից, առանձին պայմանագրերով օտար առևտրականներին և արհեստավորներին թույլատրվում էր ունենալ իրենց դատարանները։ Կիլիկիայի արքունի հրովարտակներից իմանում ենք, որ ջենովացիներն ու վենետիկցիները, որոնք բնակություն էին հաստատել Սսում, Տարսոնում, Մամեստիայում և Այասում, ունեին իրենց հյուպատոսները։ Միևնույն ժամանակ թագավորի հատուկ արտոնագրերով թույլ էր տրված ունենալ իրենց դատարանները, որոնք կոչվում էին կուրիաներ* (curiae), *պայլական կամ կոնսուլական դատարաններ*[75]*։ Վերջինները քննում էին տվյալ գաղութի բնակիչների միջև ծագած վեճերը և նրանց կողմից կատարված հանցագործությունները։ Դատարան ունենալու իրավունքի դիմաց նրանք պարտավոր էին հավատարիմ մնալ թագավորին՝ պաշտպանելով վերջինիս շահերն իրենց ամբողջ կարողությամբ*[76]*։*

---

69 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 82.

70 *Տե՛ս նույն տեղում, էջ 20—21, 25—28։*

71 *Տե՛ս նույն տեղում, էջ 74։*

72 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 309—310։*

73 *Տե՛ս Смбат Спарапет,* Судебник, стр. 31, 33, 83.

74 *Տե՛ս նույն տեղում, էջ 81—82։*

75 *Տե՛ս Langlois V.*, Essai, p. 48—49.

76 *Տե՛ս նույն տեղում, էջ 48։*

*Դատարաններ ունենալու և դատ անելու* (omnejus per terram) *իրավունք ստացավ նաև Կիլիկիայում հաստատված կիլիկյան թագավորի վասալ՝ Հյուրընկալների օրդենը իրեն ենթակա ամբողջ տերիտորիայում*[77]։

*Սեփական դատարան ունենալու իրավունք էր շնորհված նաև Ջենովայի ու Վենետիկի վաճառականներին, իսկ մյուս երկրների քաղաքացի վաճառականներն ու հպատակներն իրենց հարցերը քննելու համար պետք է դիմեին արքունի ատյանին*[78]։

* * *

*Արքունի հրովարտակներն ու արտոնագրերը հետաքրքիր տեղեկություններ են հաղորդում Կիլիկիայում գործող միջազգային իրավունքի նորմերի մասին։ Այդ օրենքներից են՝ 1) օտար քաղաքացիների ունեցվածքի ժառանգման հարցը կարգավորող օրենքը, որը միջնադարյան Եվրոպայում հայտնի է* «droit d'aubaine» *օտարականի ժառանգություն անվամբ և 2) նավաբեկության օրենքը* «droit de bris»։ *Առաջինը վերաբերում էր միջնադարյան Եվրոպայի և Ասիայի բոլոր երկրներում գործող այն սովորության, որով մեռնող օտարահպատակի ունեցվածքը ժառանգում կամ յուրացնում էր տվյալ երկրի տիրակալը։ Այդ օրենքը առաջին անգամ վերացվում է Կիլիկիայում՝ Ջենովայի և Վենետիկի հպատակների նկատմամբ, ընդ որում Կիլիկիայի թագավորը առևտրական շնորհագրերում պաշտոնապես հրաժարվում է օգտվել այդ օրենքից*[79]։ *Սակայն, այդ օրենքը մնում էր ուժի մեջ մյուս օտարահպատակների նկատմամբ։ Հետագայում՝ 1285 թ., այդ առանձնաշնորհումը ստացան նաև Եգիպտոսի սուլթանական հպատակները*[80]։

*Ըստ նավաբեկության օրենքի նավաբեկության ենթարկված նավերի ապրանքները, որոնց ծովի ալիքները նետում էին մերձավոր ծովափը, այսինքն՝ օտար պետության տերիտորիան, գրավվում էին տվյալ ծովափի վրա տիրակալություն կատարող թագավորի կողմից։ Երուսաղեմի ասիզները խափանել էին այդ օրենքը*[81]։ *Կիլիկիայի Լևոն Բ թագավորը նույնպես հրաժարվում է այդ իրավունքից, հատկապես Ջենովայի և վենետիկյան նավերի նկատմամբ, սակայն այդ արտոնությունը չէր տարածվում մյուս երկրների նավերի վրա*[82]։

*Կիլիկիայի հայկական պետության օրենքներով, օտարահպատակի կողմից կատարված որևէ հանցանքի համար պատասխանատու էր ամբողջ համայնքը, որին պատկանում էր հանցագործ օտարականը։ Օրենքը խիստ էր հատկապես այն համայնքի նկատմամբ, որի անդամը զբաղվում էր մաքսանենգությամբ*[83]։

---

[77] *Տե՛ս նույն տեղում։*
[78] *Տե՛ս* „Documents arméniens", t. I, p. 759—760.
[79] *Տե՛ս Langlois V.*, Le trésor, p. 106—112, 158, *Langlois V.*, Essai..., p. 52.
[80] *Տե՛ս Langois V.*, Essai..., p. 52, „Documents arm.", p. 762.
[81] *Տե՛ս* „Assises de Jérusalem", t. II, p. 47.
[82] *Տե՛ս Langlois V.*, Essai..., p. 52.
[83] *Տե՛ս Langlois V.*, Le trésor..., p. 107; *Langlois V.*, Essai..., p. 52.

Կիլիկիայում գործում էին նաև միջազգային իրավունքի այլ նորմեր։ Հայտնի է այն օրենքը, որով թագավորը օտարներին թույլ էր տալիս զբաղվելու ստրկավաճառությամբ՝ թե երկրի ներսում և թե երկրից դուրս[84]։

Վիլլեբրանդ Օլդենբուրգցին հաղորդում է նաև մի այլ օրենքի մասին, որի համաձայն օտարները իրավունք չեն ունեցել ազատ շրջագայելու Կիլիկիայի ներսում, ժամանելու նավահանգիստները, կամ թողնելու երկրի սահմանները՝ առանց թագավորի թույլտվության[85], որը ձևակերպվում էր հատուկ արտոնագրով[86]։

Կիլիկիայում գործելիս են եղել նաև միջազգային իրավունքին վերաբերող այլ օրենքներ, որոնք մեզ չեն հասել այն պարզ պատճառով, որ կիլիկյան արքունիքի արխիվը այրվել ու ոչնչացվել է երկիր ներխուժող թշնամիների կողմից։

Սակայն այն ամենը, ինչ մեզ հայտնի է Կիլիկիայի հայկական պետության մեջ գործող դատարանների, օրենքների և միջազգային իրավական նորմերի վերաբերյալ, ցույց է տալիս, որ Կիլիկիան այդ ժամանակաշրջանում եղել է ֆեոդալական կազմակերպված մի պետություն, իր պետական բարդ կառուցվածքով, ներքին ու արտաքին փոխհարաբերությունների և օրինականությունների կուռ համակարգով։

## 5. ԲԱՆԱԿԸ

Կիլիկիայի հայկական պետությունը շրջապատված էր թշնամի պետությունների օղակով և միշտ գտնվում էր արտաքին ներխուժման սպառնալիքի ներքո, ուստի նրա ապահովության խիստ անհրաժեշտ գործոններից մեկը կանոնավոր, զորեղ բանակ ստեղծելն էր։

Դեռևս Ռուբինյան առաջին իշխանների ժամանակ Կիլիկիայում կազմակերպվել էր բանակ՝ բաղկացած մի քանի տասնյակ հազար զինվորներից։ Զինվորների քանակը աճում էր հատկապես պատերազմների տարիներին, հաճախ անցնելով 60 հազարից։ Պատերազմի ժամանակ բանակի կազմում գերակշռություն էր ստանում հետևակը, սակայն բանակում հիմնականը հեծելազորն էր։ Հեծելազորը պահպանելով բուն Հայաստանի «Հայոց հեծյալի» այրուձիու ավանդույթներն ու սովորույթները, միաժամանակ ենթարկվում է արևմտաեվրոպական ազդեցությանը, նրա կազմում ծառայողները կոչվում էին ձիավորներ (chevaliers)[87] և շատ կողմերով նման էին ասպետներին։ Հայոց հեծելազորը բաղկացած էր ազատներից, մանր հողատերերից և այլ ազնվականներից, որի մեջ, հատկապես պատերազմների ժամանակ, մտնում էին թագավորի վասալների՝ հայ իշխանների՝ կողմնապահների և սահմանապահների, հոգևոր ասպետական օրդենների զորքերը։ Պատերազմի ժամանակ

[84] Տե՛ս *Langlois V.*, Le trésor..., p. 154—157.
[85] Տե՛ս *Langlois V.*, Essai..., p. 51—52.
[86] Տե՛ս *Langlois V.*, Le trésor, p. 106—107, 109—112.
[87] *Смбат Спарапет*, Судебник, стр. 82. Սմբատ սպարապետ, *Դատաստանագիրք*, էջ 232։

կազմակերպվում էր «աշխարհաժողով՝ ռամիկ քաղաքաց և գեղջկաց»[88], որոնք կազմում էին բանակի հետևակը։ Բանակի առանձին միավորումներ ունեցել են «աղեղնավորներ, շարխողներ, սակրավորներ»[89], նաև հատուկ անձնակազմ, այդ թվում՝ զինվորական բժիշկներ[90], բեռնակիրներ[91] և բանակին մատակարարող գումակի անձնակազմ։

Մշտական բանակ պահելու համար, թագավորը և սենյորները մանր հողատերերից սկսեցին գանձել ռազմական հարկ կամ զինվորական պարտույթ («servitum»)[92], որը նման էր արևմտաեվրոպական escuage-ին կամ ecutage-ին։ Բացի զինվորական ծառայությունից, ձիավորները կատարել են վասալական մի շարք պարտավորություններ և գործակալական պաշտոններ։

Ձիավորները խաղաղ պայմաններում ապրել են իրենց կալվածներում, պարապել երկրագործությամբ, շահագործելով կախյալ և ճորտ գյուղացիներին։

Կիլիկիայի հեծյալ զինվորները հանդերձավորվում էին խաչակիրների նման։ Նրանք գլխին կրում էին սաղավարտ, հագնում զրահ, իսկ զրահի վրայից՝ բրդյա պատմուճան առջևից խաչի նշանով։ Բանակը զինված էր ժամանակի սովորական զենքերով։

Հայոց հեծյալի կազմում հատուկ տեղ ու դեր ունեին ձիավորի կոչում ստացած մարդիկ։ Այդ կոչումը շնորհվում էր ոչ միայն մանր հողատերերին՝ ազատներին[93], այլև թագավորի և բերդատեր իշխանների որդիներին[94]։ Ձիավորի կոչում ստանալու համար զինվորականը պետք է հրապարակորեն քննություն տար ձիավարժությունից, նիզակի գործածությունից, նետաձգությունից ու զինվորականի համար անհրաժեշտ այլ վարժություններից ու գիտելիքներից։ Կոչման շնորհումը տեղի էր ունենում հանդիսավոր արարողություններով և մաղթանքներով[95]։

Կիլիկիայում հայկական ասպետական օրդենների կազմակերպման անհրաժեշտություն չէր զգացվում, քանի որ Կիլիկիայի հայ ձիավորները չէին հետապնդում ուրիշ երկրներ նվաճելու նպատակ։ Նրա հիմնական նպատակն էր պաշտպանել Կիլիկիայի հայկական պետությունն ու նրա սահմանները, ապահովել թուրք-սելջուկյան և մոնղոլական արշավանքներից ու բարբարոսություններից մազապուրծ հայ զանգվածների կյանքն ու ունեցվածքը։

---

88 Ակինեան Ն., *Գահլաւունեաց և Լամբրոնի Հեթումեանց ազգագրութիւն*, «Հանդէս ամսօրեայ», 1954, № 1, էջ 68։

89 Տե՛ս „Documents armeniens", t. II, p. 661.

90 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 243։

91 Տե՛ս նույն տեղում, էջ 289։

92 Տե՛ս *Langlois V.*, Le trésor..., p. 107.

93 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956. էջ 231, 245։

94 Տե՛ս Հովհաննես Դարդել, *Ժամանակագրություն*, էջ 115, Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, էջ 244, Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 405։

95 Տե՛ս Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 476բ, 483—484։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՆԵՐՔԻՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ XIII ԴԱՐԻ ՎԵՐՋԵՐԻՆ ԵՎ XIV ԴԱՐԻ ՍԿԶԲԻՆ

## 1. ԿԻԼԻԿԻԱՆ ԾԱՆՐ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Կիլիկիայի հայկական թագավորության քաղաքական դրությունը XIII դարի 70—80-ական թվականներին պայմանավորված էր այն փոփոխություններով, որ կատարվեցին Մերձավոր Արևելքի միջազգային դրության մեջ։ Մոնղոլների ահ ու սարսափ տարածող ուժը աստիճանաբար թուլանում էր։ Իլխանների պետության հյուսիսային և արևելյան սահմանագծերի վրա՝ թշնամի ուլուսների, հատկապես Ոսկե Հորդայի մշտական արշավանքներից նեղված, Իրանում իշխող մոնղոլներն ի վիճակի չէին մեծ ուժեր կենտրոնացնել Սիրիայում և Եգիպտոսում հզորացող մամլուքներին վճռական հարված հասցնելու համար։ Իր հերթին սուր բախում կար մահմեդականների և խաչակիրների միջև, որովհետև կողմերից ոչ մեկը չէր զիջում համաշխարհային առևտրի կարևոր հանգույց հանդիսացող Մերձավոր (Լևանտի) Արևելքի երկրների հարցում։ Այս իրադրության մեջ, ինչպես ասվեց, մեծանում էր մոնղոլների դաշնակից Կիլիկիայի դերը մոնղոլների և եգիպտական սուլթանության միջև՝ Սիրիայի համար մղվող պայքարում։*

*Կիլիկիայի ռազմաստրատեգիական և տնտեսական նշանակությունն էլ ավելի մեծացավ, երբ Եգիպտոսը սպառնաց գրավել խաչակրաց պետությունների վերջին հանգրվանները։ Այս հանգամանքը Հռոմի պապին և արևմտաեվրոպական պետություններին դրդում էր նոր փորձեր կատարել խաչակրաց արշավանք կազմակերպելու համար։ Հասկանալի է, որ նրանց ծրագրերի իրականացման մեջ մեծ տեղ էր հատկացված կիլիկյան հայկական պետությանը։ Վերջինս դառնալու էր ռազմական գործողությունների հենակետն ու զորավիգը։*

*Իկոնյան սուլթանությունը մոնղոլներից ստացած հարվածներից այլևս ուշքի չեկավ ու գնալով թուլացավ։*

*Այսպիսի պայմաններում հետզհետե էլ ավելի էր ուժեղանում Եգիպտոսի մամլուքյան սուլթանությունը, դառնալով Մերձավոր Արևելքի ամենաազդեցիկ ուժերից մեկը։*

Քաղաքական այս իրադրության մեջ, Կիլիկիայի զինակցական և բարեկամական դիրքորոշումը դեպի մոնղոլներն ու Արևմտյան Եվրոպան՝ ավելի էր վատթարացնում նրա հարաբերությունը Եգիպտոսի հետ։ Վերջինս շարունակում էր իր ավարառու ու ավերիչ արշավանքները Կիլիկիայի վրա։

Անտիոքի խաչակիր դքսության վերացումից հետո Լևոն Գ-ի (1271—1289) գահակալության առաջին տարվան զուգադիպող խաչակրաց VIII արշավանքն անհաջողության մատնվեց, որով ավելի սրվեցին Կիլիկիայի և Եգիպտոսի հարաբերությունները։

Ստեղծվել էր վերին աստիճանի բարդ իրադրություն։ Հարաբերությունների բարելավումը Եգիպտոսի հետ համարյա անհնարին էր, քանի որ «սուլթանն Եգիպտոսի... մեքենայէր զկործանումն թագաւորութեանն»[1] (իմա՝ կիլիկյան թագավորության), դաշինքը մոնղոլների հետ ոչինչ չէր խոստանում և զուրկ էլ չէր վտանգից. չէր վերացվել նաև թուրք-սելջուկյան վտանգը։ Այս պայմաններում Կիլիկիան հարկադրված էր շարունակել կողմնորոշվելու դեպի Արևմուտք։

1274 թ. Լևոն Գ ռազմական օգնության նոր պահանջ ներկայացրեց Լիոնում տեղի ունեցող եկեղեցական ժողովին, որտեղ քննարկվում էին հունական և հռոմեական եկեղեցիների Ունիայի (միության) և նոր խաչակրաց արշավանքներ կազմակերպելու հարցերը։ Նույնպիսի դիմումներով հանդես էր գալիս նաև Աբաղա խանը, խոստանալով իր հերթին օգնել խաչակրաց արշավանքներին։ Նման դիմումներ Լևոն Գ-ի կողմից կրկնվեցին 1278, 1279 և 1282 թվականներին[2]։

Խաչակրաց արշավանքների շուրջ ստեղծված աղմուկի հետևանքն այն եղավ, որ Կիլիկիայի և Եգիպտոսի հարաբերություններն էլ ավելի սրվեցին։ Եգիպտոսը Կիլիկիայի բանագնացների ուղևորությունը Եվրոպա դիտեց որպես 1268 թ. հաշտության պայմանագրի խախտում և սկսեց հարձակումներ գործել Կիլիկիայի վրա։

Շարադրվածից դժվար չէ եզրակացնել, որ Կիլիկիան մեկուսացված էր։ Այլ էր Եգիպտոսի սուլթանության դրությունը։ Նա Արևելքում ուներ դաշնակիցներ։ Առաջավոր Ասիայի մահմեդական ժողովուրդները պաշտպանում էին Եգիպտոսի սուլթանությանը, որքանով, հանձինս Բեյբարսի, տեսնում էին խալիֆայության ժառանգորդին՝ համայն մահմեդականության պաշտպանին։

Անբարենպաստ էր նաև կիլիկյան հայկական պետության ներքին դրությունը։ Ուժեղացել էին խոշոր հողատեր իշխանների կենտրոնախույս ձգտումները։

Լևոն Գ-ի թագադրության առիթով 1271 թ. ներում շնորհվեց բանտարկյալներին և «... բազումք ի կապանաց բանտից ազատեցան»[3]։ Բանտարկյալների ազատման դեմ հանդես եկան խոշոր ֆեոդալները, սակայն նրանց ընդվզումը ճնշվեց։ Մոլևոնի բերդատեր Լևոնը և նրա դաշնակից Աբլղարիբ իշ-

---

1 Հեթում Պատմիչ, էջ 54։

2 Տե՛ս Մ. Օրմանյան. *Ազգապատում*, մաս Ա, էջ 1684—1686։

3 Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 270։

խանը պատժվեցին[4], շատերի բերդերն էլ «յարքունիս» գրավվեցին։ Ինչպես երևում է Գրիգոր Ակներցու մի վկայությունից, այդ իշխանների շարքերում կային նաև օտարներ՝ հույներ և ֆրանկներ։ Վերջիններս մտադրվել էին զավթել իշխանությունը և վերացնել հայերի տիրապետությունը Կիլիկիայում[5]։

Օգտվելով երկրի ներքին և արտաքին քաղաքական բարդ դրությունից, Եգիպտոսի մամլուքները 1275 թ. հանկարծակի ներխուժեցին Կիլիկիա, ասպատակեցին երկիրը, ավարի մատնեցին Մսիս քաղաքը, հասան մինչև Կոռիկոս նավահանգիստը, այնուհետև անցան հյուսիս և պաշարեցին Սիսը։ Լևոն Գ, չվստահելով իր վասալների ռազմական օգնությանը, չկարողացավ կազմակերպված դիմադրել դարանակալ թշնամուն և բավարարվեց բերդում ամրանալով։ Մամլուքները չկարողացան գրավել Սսի բերդը։ Սրտապնդված, հայերը կասեցրին մամլուքների հետագա առաջխաղացումը և դուրս վռնդեցին նրանց[6]։

1276 թ. մամլուքների և թուրքմենների միացյալ զորքերը փորձեցին Մարաշի վրայով ներխուժել Կիլիկիա։ Հայերը, Սմբատ Սպարապետի հրամանատարությամբ, թեև պարտության մատնեցին զավթիչներին և դուրս քշեցին նրանց թագավորության սահմաններից, սակայն Սմբատ Սպարապետն ընկավ այդ ճակատամարտում՝ թշնամուն հետապնդելիս[7]։

Մամլուքների 1275—1276 թթ. արշավանքի նպատակն էր գրավել Կիլիկիան, ճանապարհ բացել և դյուրացնել Իկոնիայի սուլթանության նվաճումը։ Չկարողանալով գրավել Կիլիկիան, 1277 թ. նրանք Ասորիքի վրայով՝ Ալբըստանով ներխուժում են Փոքր Ասիա և գրավում Կեսարիան։ Զգտելով գրավել Փոքր Ասիան, մամլուքները նպատակ ունեին մեկուսացնել Կիլիկիան և նրան զրկել մոնղոլների օգնությունից։ Թեև Իկոնիայի սուլթանությունը պաշտպանող մոնղոլական և օժանդակ վրաց-հայկական զորքերը պարտվեցին[8], սակայն Բեյբարսը, չստանալով սելջուկների օժանդակությունը, ստիպված եղավ նահանջել Սիրիա[9]։

Աբաղա խանը չօգտվեց մամլուքների 1277 թ. պարտությունից և չկարողացավ հարձակվել Սիրիայի վրա, քանի որ նրան խանգարում էին Ոսկե Հորդայի և Ջաղաթայի Ուլուսի հարձակումները՝ հյուսիսից և արևելքից։ Կիլիկիան, փաստորեն, զրկվում էր մոնղոլների զինական օգնությունից։

## 2. ՊԱՅՔԱՐԻ ՀԵՏԱԳԱ ՍՐՈՒՄԸ ԵԳԻՊՏԱԿԱՆ ՄԱՄԼՈՒՔՆԵՐԻ ԴԵՄ

Եգիպտոսի մամլուքները համոզվելով, որ առանց Կիլիկիայի գրավման հնարավոր չէ նվաճել Փոքր Ասիան, 1278—1279 թթ. ասպատակեցին Կիլի-

---

4 Ղ. Ալիշան, *Սիսուան*. էջ 142։

5 Տե՛ս Գրիգոր Ակներցի (Մաղաքիա Աբեղա), էջ 52—53։

6 Տե՛ս *Makrizi*, Histoire des sultans Mamelouks..., t. I, p. 123.

7 Տե՛ս Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, 1956, *Յառաջաբան*, էջ է—ը։

8 *Рашид-ад-Дин*, Сборник летописей, III, 88.

9 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 288։

կիայի սահմանամերձ շրջանները և 1279 թ. պաշարեցին Հռոմկլան[10]։ Հայերն այս անգամ էլ կարողացան հեռացնել թշնամուն։ 1279 թ. Կահիրեում տեղի ունեցած հեղաշրջումով իշխանության գլուխ անցավ Կալաունը (1270—1290)։ Եգիպտոսը ժամանակավորապես դադարեցրեց արշավանքները դեպի Կիլիկիա և Փոքր Ասիա։ Կալաունի դեմ ապստամբեց Դամասկոսի ամիրան։ Վերջինս ցանկանում էր Սիրիայում հիմնել անկախ իշխանություն։ Այդ նպատակով էլ նա դիմեց Աբաղա խանին, հորդորելով նրան՝ օգտվելու Եգիպտոսում տիրող քաղաքական դրությունից և արշավանք սկսելու դեպի Սիրիա[11]։

1280 թ. Դամասկոսի ամիրան ստիպված էր հպատակություն հայտնել Կալաունին։ Վերջինս, շարունակելով Բեյբարսի քաղաքականությունը և իմանալով Աբաղա խանի՝ դեպի Սիրիա ձեռնարկվելիք արշավանքի մասին, սերտ կապեր հաստատեց Ոսկե Հորդայի հետ։

1280 թ. մոնղոլական զորքերը Աբաղա խանի եղբոր՝ Մանգու Թիմուր խանի գլխավորությամբ ներխուժեցին Սիրիա և արագ կերպով գրավեցին Այնթապ, Դարպսակ և Բաղրաս քաղաքներն ու ամրոցները[12]։ Իբրև մոնղոլների դաշնակից, հայերը միացան մյուս վասալների հետ և 25000 զորքով՝ Լևոն Գ-ի հրամանատարությամբ արշավեցին Սիրիա ու անարգել մտան Հոմս քաղաքը։ Օգնություն ստանալով Դամասկոսի ամիրա Սոնկուրից, Կալաունի զորքերը Հավրանի բաց դաշտում ճակատամարտ տվեցին մոնղոլական միացյալ ուժերի դեմ։ Լևոն Գ և մոնղոլական զորքերը աջից ու ձախից հարվածելով թշնամուն, հասնում են որոշ հաջողությունների։ Սակայն կենտրոնի թևը, որին գլխավորում էր Մանգու Թիմուրը, անհայտ պատճառներով, լքում է ռազմադաշտը և դիմում փախուստի։ Նրան հետևում են մյուս թևերը, և Կալաունը հաղթանակ է տանում[13]։

Աբաղա խանին հաջորդող Թակուդարը, որը մահմեդականների օգնությամբ անցավ իշխանության գլուխ՝ Ահմադ անվան տակ (1282—1289), հրաժարվեց Սիրիան գրավելու մտադրությունից։ Դրանով Կիլիկիան ժամանակավորապես կորցրեց մոնղոլների պաշտպանությունն ու օգնությունը։ Կալաունը, օգտվելով առիթից, դրդեց թուրքմեններին ներխուժել Կիլիկիա։ Վերջիններս այրեցին Այասը, սակայն վերադառնալիս, ջարդվեցին հայկական զորքերի կողմից[14]։

Նույն թվերին Հալեպի ամիրան Կալաունի հրամանով ներխուժեց Կիլիկիա։ Թեև մամլուքները անհաջողության մատնվեցին, սակայն Լևոն Գ համոզվելով, որ առանց մոնղոլների օգնության հնարավոր չէ սեփական ուժերով պաշտպանել երկիրը, ստիպված եղավ 1285 թ. ծանր գնով հաշտության պայմանագիր կնքել Եգիպտոսի հետ՝ 10 տարի, 10 ամիս, 10 օր ժամանակով։

Հաշտության պայմանագրով Կիլիկիան պարտավորվում էր Եգիպտոսին վճարել տարեկան 500000 թագավորական, 25 նժույգ, 25 ջորի և այլն։ Այ-

---

10 Տե՛ս Makrizi, նշված աշխատ., էջ 124։
11 Տե՛ս D'Ohsson, Histoire des Mongols, t. I—IV, Amsterdam, 1821, t. III, p. 524.
12 „Documents arméniens", t. II, p. 182.
13 D'Ohsson, նշված աշխատ., հատ. III, էջ 525։
14 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 264։

*նույնպես, երկու կողմերը պայմանավորվում են կատարել գերիների փոխանակություն, թույլատրել առևտրական ազատ երթևեկություն երկու պետությունների հողերում*[15]*։*

*Անշուշտ, Կիլիկիայի համար հաշտության այս պայմանները ծանր էին, սակայն առավել ծանր էր երկրի տնտեսական դրությունը, որը պետք է բարելավել։ Ստեղծված հարաբերական դադարն ու խաղաղությունը հնարավորություն ընձեռեցին բուժելու երկարատև պատերազմներից առաջացած վերքերը։ Արտաքին և տարանցիկ առևտրից ստացված եկամուտները մեծապես նպաստեցին երկրի արագ վերականգնմանը։ Միջոցներ ձեռք առնվեցին վերաշինելու պատերազմներից տուժած Սիսը, Տարսոնը և հատկապես Այաս նավահանգիստը։ Աղբյուրները վկայում են, որ միայն Այասի վրայով Արևելքի և Արևմուտքի միջև կատարվող տարանցիկ առևտրից ստացված եկամուտը գերազանցում էր հաշտության պայմանագրով Եգիպտոսին վճարվելիք գումարը*[16]*։ Նորոգվեցին Վենետիկի, Ջենովայի, մյուս պետությունների և առևտրական ընկերությունների հետ նախկինում կնքված առևտրական պայմանագրերը։*

*Երկրի ներսում զարկ տրվեց վանքերի և դպրոցների շինարարությանը։ Այս շրջանում մեծ հռչակ ստացավ Դրազարկի վանքը, որտեղ զարգացավ մանրանկարչությունն ու երաժշտությունը։ Հատուկ ուշադրություն դարձվեց ձեռագրերի ընդօրինակմանը։ Այսպիսով, մասամբ բուժվեց մոնղոլական և մամլուքյան արշավանքների ժամանակ հայկական մշակութային գանձերին հասցված վնասը։ Սակայն ստեղծված հարաբերական անդորրը խզվեց Լևոն Գ-ի մահից (1289) հետո, երբ նորից փոփոխություններ կատարվեցին Մերձավոր Արևելքի միջազգային դրության մեջ։*

*Եգիպտական սուլթանությունը, օգտվելով մոնղոլական խանության թուլությունից և Արևմտյան Եվրոպայում ստեղծված միջազգային բարդ իրադրությունից, իմանալով մոնղոլների ու կիլիկյան հայկական պետության Արևմուտքում ձեռնարկած դիվանագիտական միջոցառումները և վախենալով վերջինների միջև ծրագրվող ռազմական դաշինքից, 1289—1291 թթ. մեկը մյուսի ետևից գրավեց Մերձավոր Արևելքում հոգևվարքի մեջ գտնվող խաչակիր իշխանությունները՝ Տրիպոլին, Տիրոսը, Սիդոնը, Բեյրութը։ 1291 թ. խաչակիրների վերջին ամրոց Ակրայի գրավումով վերջ տրվեց նրանց տիրապետությանը Սիրիայում։*

*Այսպիսով, ապահով զգալով թիկունքից և անմիջապես սահմանակից դառնալով կիլիկյան հայկական պետությանը, Եգիպտոսը խախտեց 1285 թ. կնքված հաշտության պայմանագիրը՝ վերսկսեց փոքրածավալ արշավանքները Կիլիկիայի սահմանամերձ ամրոցների և քաղաքների վրա՝ ավարի ու գերության մատնեց բնակիչներին*[17]*։*

*Լևոն Գ-ի որդին ու հաջորդը Հեթում Բ-ը (1289—1305), զորք ուղարկեց Ամանոսյան լեռները պաշտպանելու։ Միաժամանակ նա դիմեց մոնղոլներին,*

---

[15] *Տե՛ս Langlois V.,* Le trésor des chartes d'Arménie, p. 224—226.

[16] *Տե՛ս* „Documents arm.", t. I. *նույնի մեջ՝* „Dulaurier E., Introduction, p. XCVIII *և շարունակությունը։*

17 *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 1781։*

խնդրելով ռազմական օգնություն։ Վերջիններս զլացան օգնել, որովհետև Արղուն խանին հաջորդող Քեյղաթուն զբաղված էր իր իշխանության ամրացմամբ։



Մանրանկար՝ Քրիստոսի իջեցումը խաչից և թաղումը։ Վերագրվում է Թորոս Ռոսլինին

Հեթում Բ նույն նպատակով պատգամավորներ ուղարկեց նաև Եվրոպա։ 1292 թ. սկզբներին Նիկողայոս Դ պապի բարեխոսական հատուկ նամակները՝ ուղղված Ֆրանսիայի թագավոր Ֆիլիպ Գեղեցիկին և Անգլիայի թագավոր Եդվարդին, մնացին անհետևանք[18]։ Նույն տարում պապը մեկ այլ նամակով

[18] Տե՛ս Baronius, Annales ecclesiastici, t. XXIII, p. 118.

հորդորում է Հյուրընկալներին և Տաճարականներին պատկանող Նավատորմի ծովակալին և բոլոր «Հավատարիմ քրիստոնյաներին»՝ օգնության ձեռք մեկնել Հայոց թագավորին[19]։

Այս ամենը, սակայն, ապարդյուն անցավ, իսկ եգիպտական մամլուքները արշավանքի էին պատրաստվում։ Նրանք խուժեցին Կիլիկիա և 1292 թ. հունիսի 28-ին, միամսյա պաշարումից հետո, գրավեցին Հռոմկլա կաթողիկոսանիստ[20] ամրոցը՝ գերելով կաթողիկոսին և ամրոց-քաղաքի բնակիչներին[21]։ Մոնղոլական զորքերը, որոնք ուղարկվել էին Հռոմկլայի պաշտպաններին օգնելու, չկարողացան խանգարել մամլուքներին[22]։

Հռոմկլայի անկումը մեծագույն աղետ է համարվել ժամանակակիցների կողմից։ Հայ պատմիչները խորը կսկիծով են ավանդում այս դեպքերը[23]։

Գրավելով Հռոմկլան, մամլուքները զարգացրին իրենց առաջխաղացումը դեպի Կիլիկիայի սահմանները՝ դեպի Բեհեսնի։ Մնալով անօգնական՝ չստանալով մոնղոլների և Եվրոպայի օգնությունը, Հեթում Բ ստիպված եղավ Եգիպտոսին զիջել Մարաշ, Թիլ-Համտուն և Բեհեսնի ամրոցներն ու քաղաքները[24]։

1294 թվականին Հեթում Բ հրաժարվեց գահից, մտավ Դրազարկի վանքը, իր եղբորը՝ Թորոսին (1294—1295) հանձնելով թագավորական գահը։

1295 թ. Թորոսը նույնպես մտավ վանք։ Թորոսի և հայ իշխանների համաձայնությամբ իշխանությունը նորից իր ձեռքը վերցրեց Հեթում Բ[25]։

Թեև Թորոսի և նրա հաջորդների ժամանակ Կիլիկիան մի քանի տարով զերծ մնաց եգիպտական ավերիչ արշավանքներից, սակայն երկրի տնտեսական և ներքին քաղաքական դրությունն էլ ավելի վատթարացավ 1296—1299 թթ.՝ Հեթում Բ-ի եղբայրների միջև տեղի ունեցած գահակալական կռիվների և երկպառակությունների պատճառով։

Նույնպիսի վիճակ էր տիրում նաև մոնղոլական իլխանության և Եգիպտոսի սուլթանության սահմաններում։ Այդ պատճառով երկուսն էլ չկարողացան նոր արշավանքներ ձեռնարկել։

Եգիպտոսի սուլթան Մելիք Աշրաֆը, երկրում տիրող սովը և համաճարակը դիտելով որպես նախախնամության պատիժ, ըստ պատմիչների վկայության, իր կամքով Կիլիկիային վերադարձրեց վերոհիշյալ ամրոցներն ու քաղաքները։

Վերադառնալով իշխանության գլուխ Հեթում Բ որոշեց վերականգնել հայ-մոնղոլական դինակցությունը՝ մամլուքների դեմ։ Այդ պատճառով նա

---

19 Տե՛ս *Langlois V.*, Essai, p 30.

20 Դրանից հետո նոր կաթողիկոսը ստիպված եղավ փոխադրվել Սիս, որը 1292—1441 թթ. դարձավ կաթողիկոսանիստ քաղաք։ 1441 թ., Ամենայն Հայոց հայրապետական աթոռը Էջմիածին փոխադրվելուց հետո, Սիսը շարունակեց մնալ Մեծի տանն Կիլիկիո կաթողիկոսության աթոռանիստ և մնաց այդպիսին մինչև 1921 թ., որտեղից փոխադրվեց Անթիլիաս (Լիբանան)։

21 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 239, 378, Չամչյան, հատ. II, էջ 383—384,

22 Տե՛ս *Рашид-ад-Дин*, Сборник летописей, т. III, стр. 133. Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 500—502։

23 Տե՛ս Սամուել Անեցի (շարունակող), էջ 153։

24 Տե՛ս *Makrizi*, Նշված աշխ., հ. II, էջ 147 –148։

25 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2037, էջ 127ա։

ուղևորվեց Իրան՝ Մարաղա, բայց ժամանեց այնպիսի անպատեհ պահի, երբ Բայդու խանի դեմ ապստամբել էր Ղազան խանը, ուստի նա ստիպված եղավ սպասել երկու ամիս, մինչև որ Ղազան խանն անցավ իշխանության գլուխ[26]։

Կիլիկիայի հետ դաշինքը պահելու և նրա միջոցով արևմուտքի հետ բանակցությունները վարելու միտումով խանը դրական խոստումներ տվեց Հեթում Բ-ին, որը վերադարձավ Սիս։ Այստեղ նա դտավ բյուզանդական կայսր Անդրոնիկոս Բ-ի խնամախոս պատվիրակներին, որոնք իր բացակայության ժամանակ եկել էին խնդրելու իր քրոջ՝ Ռիթայի ձեռքը, Անդրոնիկոսի որդի Միքայելի համար[27]։

Հեթում Բ, թագապահ նշանակելով Սմբատ եղբորը, Թորոս եղբոր հետ 1296 թ. մեկնեց Կոստանդնուպոլիս, ներկա գտնվելու քրոջ ամուսնության հանդեսին։ Շատ հավանական է, որ խնամիական-ազգակցական այս կապերի հաստատմամբ ուրվագծվում էր հայ-բյուզանդական զինակցություն՝ ընդդեմ մամլուքների։

Թագավորի եղբայր Սմբատը, օգտվելով իր եղբայրների բացակայությունից, պաշտպանություն գտնելով դժգոհ եղբայրներից և իր կողմում ունենալով Գրիգոր կաթողիկոսին, իրեն հռչակեց թագավոր ու Սսում հանդիսավորությամբ օծվեց արքա Հայոց[28]։

Վերադառնալով Կիլիկիա և տեսնելով իր եղբոր արարքը, Հեթումն ուղևորվեց Կիպրոս՝ օգնություն խնդրելու համար։ Չհասնելով դրական արդյունքի, նա նորից մեկնում է Կոստանդնուպոլիս և Անդրոնիկոս Բ կայսրից ստանալով որոշ քանակությամբ ոսկի, ուղևորվում է Ղազան խանի մոտ։ Սակայն Սմբատը կանխել էր նրան։ Իշխանությունը զավթելուց հետո նա թանկարժեք նվերներով արդեն այցելել էր Ղազան խանին, ստացել վերջինիս համաձայնությունը և նույնիսկ ամուսնացել էր Ղազան խանի ընտանիքից սերվող մի իշխանուհու հետ։ Կիլիկիա վերադառնալիս, Սմբատն իր եղբայրներ Հեթումին և Թորոսին հանդիպում է Կեսարիայում, խուսափում ձերբակալում և բանտարկում է Բարձրբերդում։ Երկմիտ և նենգ իշխանների խորհրդով Սմբատն սպանել է տալիս Թորոսին, իսկ Հեթում Բ-ին՝ կուրացնում[29]։

Եգիպտական սուլթանությունը, իրազեկ Կիլիկիայում տիրող քաղաքական վիճակին, որոշում է օգտագործել պատեհ առիթը նոր արշավանք սկսելու Կիլիկիայի վրա։

1298 թ. եգիպտական զորքերը պաշարում են Համուս (Նաչիմա) ամրոցը[30]։ Սմբատը նույն տարում օգնություն է խնդրում պապից։ Ի պատասխան Կիլիկիայի թագավորի դիմումի, 1298 թ. Բոնիֆացիոս Ը պապը թղթեր հղեց

26 Տե՛ս Ստ. Օրբելյան, էջ 374։

27 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2037, թերթ 127ա։

28 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մաս 1, էջ 1155։

29 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 154, տե՛ս նաև «Արաբական աղբյուրները...», էջ 241։ «Սըմբատը հավաքել էր իր կուսակիցներին, ձերբակալել էր Հեթումին և մի աչքը փորելով կուրացրել, բայց մյուս աչքը պահեց անեղծ»։

30 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 240 և 280։

Ֆրանսիայի և Անգլիայի թագավորներին՝ օգնություն խնդրելով «Հայաստանի թագավորի» համար[31]։

Այն ժամանակ, երբ Սմբատը, Հռոմի պապը, Արևմտյան Եվրոպայի թագավորները զբաղված էին ապարդյուն նամակագրությամբ, Հեթում Բ-ի երրորդ եղբայր Կոստանդինը, իր շուրջը համախմբելով Սմբատի անողոքությունից և ամբարտավանությունից դժգոհ հայ իշխաններին, որոշում է վերջ տալ Սմբատի տիրակալությանը։ Այդ դեպքերի մասին արաբ ժամանակագիր Աբու-լ-Ֆիդան հաղորդում է. «Հայերը նեղվեցին այս բանից, մանավանդ որ մուսուլմանները պաշարել էին Համուսը, գրավումներ էին կատարել և շատ հայերի սպանել, ինչ-որ վերագրվեց Սմբատի հոռի ընթացքին ու մուսուլմանների հանդեպ հայտնաբերած անկարողությանը։ Հայերը համաձայնություն կայացրին իրենց մեջ՝ նրա փոխարեն գահի վրա գնելու նրա Լևոն եղբոր որդի Դանդինին (իմա՝ Հեթում Բ-ի երրորդ եղբայր Կոստանդինին) և ձերբակալելու Սմբատին»[32]։

Սսի մոտ տեղի ունեցած եղբայրասպան ճակատամարտում Կոստանդինի կողմնակիցները հաղթանակ տարան։ Սմբատը ձերբակալվեց և բանտ նետվեց[33]։

1298 թ. գարնանը, եգիպտական սուլթան Լաչինի (Մալիք ալ-Մանսուր) և Կիլիկիային հարևան մի շարք ամիրայությունների զորքերը, միավորվելով Ջայհան գետի մոտ, խուժեցին Սսի երկիրը։ «Նրանք,— ասում է արաբ հեղինակը,— ավերեցին ու կողոպտեցին երկրի այն մասը։ Հետո վերադարձան և Բաղրասի կիրճից անցնելով մտան Անտիոքի դաշտը»[34]։

1298 թ. հունիսին եգիպտական զորքերը երկրորդ անգամ ներխուժում են Կիլիկիա ու, թեև մեծ դժվարություններով, գրավում են Համուս բերդը[35]։

Եգիպտական մի այլ ջոկատ ուղղվեց դեպի Այաս, սակայն կիլիկյան զորքերը կարողացան ետ մղել այդ հարձակումը։ Եգիպտական զորքերը՝ կարողացան գրավել Թիլ Համդունը[36]։

Կոստանդին Բ, հաղորդում է արաբ հեղինակը, «Սսում գտնվող դրնդերն ուղարկեց Համուսի և ուրիշ վայրերի վրա։ Ապա սուլթանը, որը իրեն այդ երկրների մահմեդականների ներկայացուցիչն է համարում, պահանջեց, որ Ջայհան գետը սահման կազմի մուսուլմանների և հայերի միջև. և գետի հարավակողմը գտնվող բերդն ու քաղաքներն իրեն հանձնվեն»։ Ինչ էր կարող անել Կիլիկիան միայնակ կանգնած շատ ավելի զորեղ թշնամիների հանդեպ։ Հարկադրված էր տեղի տալ։ Եվ արաբ հեղինակը շարունակում է. «Կոստանդինը համաձայնվեց այդ առաջարկին և մուսուլմաններին հանձնեց բոլոր այն քաղաքները, որոնք գտնվում են Ջայհան գետից դեպի հարավ. սրան-

---

31 Տե՛ս Langlois V., Essai, p. 30.

32 «Արաբական աղբյուրները...», էջ 242։

33 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2037, էջ 127ա։

34 «Արաբական աղբյուրները...», էջ 240, տե՛ս նաև Սամուել Անեցի (շարունակող), էջ 153—154։

35 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 240։

36 Տե՛ս D'Ohsson, Histoire des Mongols, t. IV, p. 14.

ցից են Համուսը, Թիլ Համդունը, Կվայրանը, Նողայրը, Հաջար Շաղլանը, Սարվանդիքարը, Մարաշը, բոլորն էլ անմատչելի բերդեր»[37]։

1299 թ. հայ իշխանների խնդրանքով և օգնությամբ Հեթում Բ երրորդ անգամ անցավ իշխանության գլուխ[38]։ Նա իր Կոստանդին և Սմբատ եղբայրներին ուղարկեց Կոստանդնուպոլիս։

Հեթում Բ-ի երրորդ գահակալումը զուգադիպեց Ղազան խանի ձեռնարկած սիրիական խոշոր արշավանքին։ Երկար նախապատրաստվելուց հետո և հույս դնելով Սիրիայի բնակչության օժանդակության վրա 1299 թ. հոկտեմբեր-դեկտեմբեր ամիսներին Ղազան խանն սկսեց իր սիրիական առաջին արշավանքը։ Դեկտեմբերին պաշարեց Հալեպը, սակայն չկարողանալով գրավել այն, շրջանցեց և գրավեց Համա քաղաքը։ Այնուհետև Հոմս (Եմեսսա) քաղաքի մոտ ջախջախեց եգիպտական զորքերը և գրավեց այն[39]։

Կիլիկյան հայկական պետությունը, որպես մոնղոլների զինակից, գործուն մասնակցություն ունեցավ այդ արշավանքներին։ Հեթում Պատմիչի վկայությամբ, Ղազան խանը, նախքան սիրիական արշավանքներն սկսելը, հայոց և վրաց թագավորներին, ինչպես նաև Արևելյան երկրների քրիստոնյա իշխաններին հրամայեց զորքերով ներկայանալ իրեն[40]։ «Հայոց հեծյալը» Հեթում Բ-ի հրամանատարությամբ մասնակցեց վերոհիշյալ կռիվներին։ Եմեսայի մոտ, մամլուքներին ջախջախելուց հետո, նրանք, Ղազան խանի զորքերի հետ միասին, գրավեցին Դամասկոսը[41]։

Սակայն, լսելով իր թոռ Ուգեդեյ-Գայդա խանի ապստամբության մասին, Ղազան խանը վերադարձավ Իրան։

Ղազան խանի ձեռնարկած սիրիական առաջին արշավանքի հետևանքով 1299 թ. Կիլիկիային վերադարձվեցին մի տարի առաջ Եգիպտոսի կողմից գրավված սահմանային ամրոցներն ու բերդերը[42]։

Ղազան խանի ձեռնարկած սիրիական երկրորդ արշավանքը 1300 թ. աշնանն անհաջողության մատնվեց։ Մոնղոլները ստիպված եղան նահանջել Եփրատի այն կողմը[43]։

1301—1303 թթ., մինչև մոնղոլների երրորդ արշավանքը, եգիպտական մամլուքները որոշեցին նորից հարձակվել Կիլիկիայի վրա։ Պատճառաբանելով, որ Կիլիկիան մերժել էր 1285 թ. հայ-եգիպտական պայմանագրով նախատեսված տարեկան հարկը վճարել և, միաժամանակ, խախտելով պայմանագրի քաղաքական ու ռազմական պարտավորությունները, անցել էր Ղազան խանի կողմը, մամլուքները մի քանի անգամ ներխուժեցին Կիլիկիայի սահմանամերձ շրջանները։ 1303 թ. գրավեցին Թիլ Համդունը, սակայն նույն

37 «Արաբական աղբյուրները...», էջ 242։

38 Տե՛ս նույն տեղում, էջ 244, 280։

39 Տե՛ս *Рашид-ад-Дин*, III, 182—183.

40 Տե՛ս „Documents arméniens", t. II, p. 194.

41 Տե՛ս նույն տեղում։

42 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 242—244։

43 Տե՛ս *Рашид-ад-Дин*, том III, стр. 187.

*տարում հայ-մոնղոլական միացյալ ուժերը Այասի մոտ պարտության մատնեցին մամլուքներին և նրանց ստիպեցին նահանջել[44]։*

*Սիրիական երկու արշավանքները մոնղոլներին համոզեցին, որ առանց եվրոպական երկրների ռազմական օժանդակության դժվար է ջախջախել Եգիպտոսը և գրավել Սիրիան։*

*Պատրաստվելով սիրիական երրորդ արշավանքին, մոնղոլներն ու հայերը նորից դիմեցին Եվրոպային, սակայն ապարդյուն։ Անգլիայի թագավոր Եդվարդ Ա-ի՝ մոնղոլներին ուղարկած պատասխանից երևում է խաչակրաց նոր արշավանք կազմակերպելու դժվարությունների անհաղթահարելիությունը։ Այսպես, Եվրոպայի մի շարք երկրների միջև պատերազմ էր ծագել, նոր արշավանք ձեռնարկելու համար նյութական միջոցները պակասում էին, Եվրոպան տնտեսապես առաջադիմել էր, և բնակչությունը խաղաղ աշխատանքը գերադասում էր արկածախնդիր արշավանքից և այլն։ Այս պարագաներում զենքի ու զորքի փոխարեն Արևելք էին ուղարկվում Հռոմի պապի խոստումնառատ թղթերը։*

*Կիլիկյան հայկական պետությանը մնում էր դարձյալ ապավինել մոնղոլական իլխանությանը, որպես միակ իրական դաշնակցի։*

*1303 թ. մոնղոլական 50000-անոց բանակը հայ-վրացական և կիլիկյան բանակների օժանդակությամբ սկսում է իր երրորդ արշավանքը դեպի Սիրիա։ Միացյալ բանակները հասնում են Դամասկոս, սակայն քաղաքի դարպասների առաջ պարտություն են կրում։ Ապա, զգալով անասնակերի, սննդամթերքի, հանդերձանքի և ռազմամթերքի պակաս, նահանջում են[45], հույս ունենալով վերսկսել արշավանքը։ Ղազան խանը, սակայն, այլևս չկարողացավ շարունակել պատերազմը, քանի որ ստիպված եղավ վերադառնալ Իրան՝ ճնշելու Գայդա խանի երկրորդ ապստամբությունը[46]։*

*Այս բոլորից, անշուշտ, առաջին հերթին տուժում էր Կիլիկիան, դառնալով քավության նոխազ մոնղոլների աշխարհակալ նկրտումներին։ Վերահաս վտանգից պաշտպանվելու համար Հեթում Բ մեկնեց Իրան՝ Ղազան խանից օգնություն խնդրելու։ Խանը նրան տվեց միայն 1000 ձիավոր և դրամական օժանդակություն, թագավորության սահմանները պաշտպանելու համար, մինչև որ Ղազան խանին հաջողվեր վերադառնալ Սիրիա[47]։ Ղազան խանը Հեթում Բ-ին տալիս է նաև բազմաթիվ նվերներ, պարգևագրեր և նույնիսկ «ազատութիւնս և հարկապահանջութիւնս ևս յիւր երկրէն յամենայն ամի», խոստանալով իր իսկ ձեռքով հանել նրա վրեժը «ի տաճկաստանեացն»։ Այս խոստումը կիրագործվեր, թե չէ, չգիտենք, բայց 1305 թ. Ղազան խանը մեռավ, իսկ Կիլիկիային օգնելու մասին այլևս ոչ ոք չէր մտածում, թեև Կիլիկիան այն երկիրն էր, որի վրայով տեղի էր ունենում մոնղոլական իլխանության առևտուրը Արևմուտքի հետ[48]։*

---

44 *Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 244—245, 281—282։*

45 *Տե՛ս* „Documents arméniens", t. II, p. 199.

46 *Տե՛ս նույն տեղում, էջ 199։*

47 *Տե՛ս նույն տեղում, էջ 204։*

48 *Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք Ա, էջ 177։*

Սակայն հայ-մոնղոլական վերանորոգված դաշինքը պայթելու էր ոչ այնքան Ղազան խանի մահվան, որքան մոնղոլական իլխանության ներսում ծայր առած տնտեսական-քաղաքական ճգնաժամի, գահակալական երկպառակությունների պատճառով, որոնք ի վերջո հանգելու էին մոնղոլական պետության տնտեսական անկմանը, ապա և քաղաքական տրոհմանն ու փլուզմանը։

Այդ բոլորն ունեցան այն հետևանքը, որ Կիլիկիան նվաճելու եգիպտական սուլթանի ախորժակը նորից գրգռվեց։ 1303—1305 թթ. եգիպտական բանակները նորանոր ավերիչ հարձակումներով հրի ու սրի մատնեցին Կիլիկիան։ 1305 թ. ամռանը իրենց հերթական արշավանքի ժամանակ մամլուքները խոշոր պարտություն կրեցին Կիլիկիայում և ստիպված եղան հաշտություն կնքել[49]։ Նույն թվականին Հեթում Բ վերջին անգամ հրաժարվեց գահից, վանականի զգեստ հագավ և, քանի որ ժառանգ չուներ, արքայական գահը հանձնեց Թորոս եղբոր որդի Լևոն Դ-ին[50], իսկ իրեն վերապահեց թագավորահոր տիտղոսը։ Այնուհետև, որպես վանական, Հեթումը ծեծում էր Ս. Պետրոսի փոխանորդի «սրբազան դուռը»՝ գործուն մասնակցություն ցուցաբերելով ոչ միայն պետական, այլև եկեղեցական գործերում։

Լևոն Դ-ի (1305—1307) պատվիրակները Նեապոլի վրայով ուղևորվեցին Հռոմ ու Փարիզ։ Կլեմենտ Ե պապը, խոստանալով օգնություն, պահանջեց, որ հայկական եկեղեցին ընդունի կաթոլիկ եկեղեցու ծիսակատարություններն ու դավանաբանական սկզբունքները, այսինքն՝ ենթարկվի իրեն։ Այդ առթիվ 1307 թ. Սսում հրավիրվեց եկեղեցական ժողով, որտեղ քննարկվեց կաթոլիկ և հայ եկեղեցիների միության՝ Ունիայի հարցը։ Լատինասերների ճնշման տակ ժողովականներն ընդունեցին պապի առաջարկը։ Սակայն այդ որոշումը չկատարվեց և չէր էլ կարող կատարվել, որովհետև հայ ժողովրդական զանգվածները և հոգևորականության մեծ մասը, հատկապես բուն Հայաստանի հոգևորականությունը, առանձին հույսեր չէին կապում Պապի խոստումների հետ և դեմ էին այդ որոշման իրագործմանը[51]։

Սսի եկեղեցական որոշումներն ունեցան այն հետևանքը, որ երկրում առաջացան իրարամերժ խմբավորումներ՝ ունիթոռներ և հակաունիթոռներ, որով և ավելի խախտվեց երկրի քաղաքական միասնությունը։ Սսի եկեղեցական ժողովի գլխավոր հետևանքներից մեկն էլ եղավ այն, որ էլ ավելի սրվեցին Կիլիկիայի հարաբերությունները շրջապատող մահմեդական պետությունների հետ։ Վերջիններս այդ որոշումը դիտում էին որպես խաչակիրներին նորից Արևելք բերելու փորձ։

Ներքին և արտաքին քաղաքական իրավիճակից շտապեց օգտվել Կիլիկիայում որպես օգնական ուժ գտնվող մոնղոլական ջոկատի հրամանատար Փիլարղուն։ Դատելով հայ և օտար աղբյուրների տվյալներից, Փիլարղուն ցանկանում էր իր հսկողության տակ վերցնել Կիլիկիայի արտաքին քաղաքա-

---

49 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 245, տե՛ս նաև D'Ohsson, Histoire des Mongols, t. IV, p. 532.

50 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 244։

51 Տե՛ս նույն տեղում։

կանությունը և ստիպել վերջինին հրաժարվել Եգիպտոսին հարկ վճարելուց[52]։ Նրա նպատակն էր ավելացնել Կիլիկիայի կողմից մոնղոլներին տրվող հարկերը, բացի դրանից նա «կամէր զԿիլիկիայ յինքն յափշտակել»[53]։

Փիլարղուն, որն արդեն մահմեդականություն էր ընդունել, քաջալերվելով երկրում տիրող դրությունից, Սսի ժողովից ութ ամիս հետո՝ 1307 թ. նոյեմբերի 18-ին ձեռնարկում է մի ուխտադրուժ դավադրություն։ Հյուրասիրության պատրվակով իր մոտ՝ Անազարբա քաղաքն է հրավիրում Լևոն Դ թագավորին, Հեթում թագավորահորը և 40 ականավոր իշխանների, այդ թվում Օշին սպարապետին, Հեթումի եղբորորդի պարոն Թորոսին և կազմակերպում է նրանց սպանությունը[54]։

Փիլարղուն և նրա ջոկատը ամրանում են Անազարբայի բերդում, իսկ թագավորի հորեղբայր Օշինը, հայկական զորքերի գլուխ անցած, հարձակվում է նրանց վրա և դուրս քշում Կիլիկիայից[55]։

Փիլարղուի կատարած ոճիրի դեմ բողոքելու համար մոնղոլական իլխան Օլջեյթուի (իմա՝ Խարբանդա խան) մոտ է գնում Հեթում Բ-ի մյուս եղբայր Ալինախը[56]։ Սակայն հայ-մոնղոլական հարաբերությունները նախկին ուժն ու նշանակությունը չունեին և Օլջեյթուն արդարացրեց Փիլարղուին, թեև մոնղոլական խանի գործակալները քիչ հետո սպանեցին նրան[57]։

Հայ-մոնղոլական գինակցությունը անփառունակ վախճան ունեցավ։

---

52 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մաս Ա, էջ 1812—1813։

53 Սամուել Անեցի (շարունակող), էջ 156։

54 Տե՛ս նույն տեղում, էջ 155—156, Սմբատ Սպարապետ (շարունակող), էջ 119, «Մանր ժամանակագրություններ», էջ 88—89, «Արաբական աղբյուրները...», էջ 245—246։

55 Տե՛ս Սամուել Անեցի (շարունակող), էջ 156։

56 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 246։

57 Տե՛ս նույն տեղում, տե՛ս նաև էջ 282—284։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ

# ԿԻԼԻԿՅԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԳՈՅԱՄԱՐՏԸ XIV ԴԱՐՈՒՄ ԵՎ ԱՆԿՈՒՄԸ

## 1. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ 1307—1361 ԹՎԱԿԱՆՆԵՐԻՆ

*Փիլարղուին Կիլիկիայից հեռացնելուց հետո Օշինը օծվեց Հայոց թագավոր (1308—1320)[1]։*

*Փիլարղուի գավադրությունը Կիլիկիան զավթելու արկածախնդրական մի փորձ էր, քանի որ կործանման դուռը հասած մոնղոլական պետությունը նման խնդիր չէր կարող առաջադրել։ Բայց այն արտահայտում էր ոչ միայն հայ-մոնղոլական դաշինքի քայքայումը, այլև կիլիկյան հայկական պետության ճգնաժամային վիճակը։ Ուստի Կիլիկիայի գոյությանը սպառնացող գլխավոր վտանգը XIV դարում շարունակում էր մնալ եգիպտական սուլթանության նվաճողական քաղաքականությունը։*

*1305 թ. կնքված հայ-եգիպտական հաշտության պայմանագիրը, չնայած փոքր խախտումներին, պահպանվեց մինչև 1320 թ.։ Ընդ որում, Կիլիկիան այդ թվականներին շարունակում էր ամենամյա հարկ վճարել եգիպտական սուլթանությանը[2]։*

*Եգիպտոսի և մոնղոլների միջև կնքված 1303 թ. պայմանագիրն անկայուն էր և խախտվեց։ 1312 թ. Օլջեյթու խանը փորձեց արշավանք ձեռնարկել եգիպտական սուլթանության դեմ, բայց այն վերջացավ անհաջողությամբ[3]։*

*Կիլիկյան հայկական թագավորությունը չմասնակցեց մոնղոլական այդ արշավանքին։ Դժվար չէ կռահել, որ հայ-մոնղոլական հարաբերությունները 1307 թ. արյունոտ դեպքից հետո, արդեն սառել էին։*

*1314 թ. մոնղոլական մի ջոկատ ավարառության նպատակով արշավանք կատարեց Կիլիկիայի վրա, թեև հայ-մոնղոլական դաշինքը պաշտոնապես խզված չէր։ Աբու Սայիդ խանի ժամանակ (1316—1335) հայ-մոնղոլական ղինակցությունը իրագործելու ուղղությամբ գործնական ոչ մի քայլ չարվեց։*

*Այսպիսով, XIII դարի երկրորդ կեսին ստեղծված հայ-մոնղոլական դաշինքը XIV դարի առաջին կեսին աստիճանաբար լուծվեց։ Մամլուք և սել-*

---

1 Սամուել Անեցի *(շարունակող)*, էջ 156։

2 *«Արաբական աղբյուրները...»*, էջ 246։

3 *D'Ohsson*, Histoire des Mongols, t. IV, p. 555.

ջուկ սուլթանները նրա նկատմամբ վարում էին բացահայտ թշնամական քաղաքականություն։

Եգիպտոսի և մյուս մահմեդական երկրների հետ տնտեսական ու քաղաքական հարաբերությունների բարելավմանը չէին ձգտում նաև Կիլիկիայի բնակչության առևտրական խավերը, որոնք ավելի քան շահագրգռված էին եվրոպական պետությունների հետ առևտրական հարաբերությունների զարգացմամբ։

Արևմտաեվրոպական կողմնորոշմանը ձգտում էին հատկապես Կիլիկիայում բնակություն հաստատած լատինական տարրերը, բարձրաստիճան որոշ հոգևորականներ և արքունիքի առանձին հեղինակավոր ծառայողներ։ Վերջիններս հարում էին այսպես կոչված ունիթոռական հոսանքին, այսինքն, համաձայն էին, որ հայ եկեղեցին ենթարկվեր Հռոմի պապին, մանավանդ Ավինիոն փոխադրված և Ֆրանսիայի թագավորների խաղալիք դարձած Հռոմի պապերը չէին զլանում զինական օգնության սին խոստումներ տալ։ Այնուհանդերձ, Կիլիկիայի բնակչության մեծ մասը՝ հոգևորականությունը (մանավանդ նրա ստորին շերտերը), խոշոր հողատերերի զգալի մասը, աշխատավորական զանգվածները դեմ էին ունիային և կազմում էին հակաունիթոռական հոսանքը։ Պայքարն ստանում էր վերին աստիճանի սուր բնույթ։

1308 թ. Ադանայում կազմակերպված բողոքի ցույցերին նշանակություն չտալով, թագավորը և կաթողիկոսը շարունակում են իրենց ընթացքը։

1309 թ. Ադանայում տեղի է ունենում նոր ժողով, որի նպատակն էր ժողովրդին ստիպել ընդունելու 1307 թ. Սսի եկեղեցական ժողովի որոշումները[4]։ Բողոքը և ընդվզումը կրկնվում է ավելի ուժգնությամբ՝ Սիս մայրաքաղաքում 1309 թ.։ Այդ մասին Սամուել Անեցու պատմության շարունակողն ասում է. «ՉԾԸ (1309) թվին մայրաքաղաքում հավաքվեց աբեղաների, կրոնավորների և սարկավագների բազմություն... այլև վարդապետներ և եպիսկոպոսներ և ժողովրդի արանց և կանանց՝ բազմություն որպեսզի հանձն չառնեն սուրբ (հաղորդության) մեջ ջուր լցնել և այլ նորաձև օրենքներ։ Օշին թագավորը կաթողիկոսի և իշխանների համաձայնությամբ բռնել տվեց նրանց և վարդապետներին բանտարկեց բերդում»[5]։ Ինչպես երևում է, թագավորը դիմում է բռնության խիստ միջոցների. «...սպանեց տղամարդկանցից և կանանցից շատերին, ինչպես նաև սակավ թվով կրոնավորների, իսկ աբեղաներին գցեց նավ և աքսորեց Կիպրոս կղզին և շատերը այնտեղ մեռան»[6]։

Սսի և Ադանայի եկեղեցական ժողովների որոշումներին դիմադրում էին նաև բուն Հայաստանի հոգևորականներն ու Երուսաղեմի Սարգիս եպիսկոպոսը։ Վերջինս 1311 թ. անջատվեց կիլիկյան կաթողիկոսությունից և դրանով հիմք դրվեց Երուսաղեմի հայկական պատրիարքությանը[7]։

Պապականությունը ոչ մի արժեք չտալով այդ ցույցերին ու բողոքներին, 1316 թ. Օշինից պահանջեց հրավիրել նոր ժողով, որը տեղի ունեցավ լատի-

---

4 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մաս Ա, էջ 1813—1814։

5 Սամուել Անեցի, էջ 156։

6 Նույն տեղում։

7 Տե՛ս Հ. Տեր-Ղազարյան, Հայկական Կիլիկիա, Տեղագրություն, Անթիլիաս, 1966, էջ 286։

նասեր Կոստանդին կաթողիկոսի նախաձեռնությամբ Ադանայում՝ 18 եպիսկոպոսների, 7 վարդապետների և 10 աշխարհիկ իշխանների մասնակցությամբ։ Թեև ժողովը հաստատեց Սսի 1307 թ. եկեղեցական ժողովի որոշումները[8], սակայն ժողովի մասնակիցները թվով և լիազորություններով ըստ էության իրավասու չէին ներկայացնելու ամբողջ հայ ժողովուրդը։ Այդ ժողովին չէին մասնակցում ոչ միայն բուն Հայաստանի գավառների, այլև Կիլիկիայի ու հարևան հայաշատ երկրների աշխարհիկ ու հոգևոր ներկայացուցիչները։ Այս իսկ պատճառով ընդունված որոշումները մնացին թղթի վրա։ Ավելին, դրանց դեմ նորից բռնկվեցին ժողովրդական ցույցեր ու բողոքներ, թեև դաժանորեն ճնշվեցին Օշինի կողմից[9]։

Մ. Չամչյանը գրում է. «Թէ ոչ ոք յառաջնորդաց իշխեաց այնուհետև պահել իւրք զկանոնս Սսոյ. այլ միայն նոքա, որ էին ի կաթողիկոսարանի և յարքունիսն»[10]։ Հետագայում էլ, XIV դարի ընթացքում, մինչև թագավորության անկումը Հռոմին հպատակություն հայտնող եկեղեցաժողովները և դրանց ծիսական նորամուծությունները առաջ էին բերում բողոքներ ու խռովություններ[11]։

Անշուշտ, եկեղեցական ժողովների գումարմամբ Կիլիկիայի ղեկավարները հետամուտ էին պապերին հավատացնելու, որ նրանք կողմնակից են ունիային, և դրանով հույս ունեին ապահովել Եվրոպայի տնտեսական, քաղաքական ու ռազմական օժանդակությունը։ 1317 թ. Օշինը նամակներով նոր պատվիրակություններ է ուղարկում Ավինյոն և Փարիզ՝ պապի ու Ֆրանսիայի թագավորի մոտ[12]։

Պապը 1318 թ. Կիլիկիայի արքունիքից պահանջում է ի կատար ածել եկեղեցական ժողովի որոշումները, առաջարկելով նույնիսկ, դպրոցներում մտցնել լատիներեն լեզուն[13]։

Այսպիսով, իրական օգնության փոխարեն, պապի լատինականացման և ֆրանկացման պահանջներն էլ ավելի էին սրում Կիլիկիայի քաղաքական խմբավորումների հարաբերությունները՝ խարխլելով երկրի քաղաքաքաղաքական միասնությունը և, բացի այդ, գրգռում էին հարևան մահմեդական պետություններին՝ նոր արշավանքներ ձեռնարկելու Կիլիկիայի դեմ։

Սկսած 1318 թ. Եգիպտոսի մամլուքները և Իկոնիայի Կարամանցի թուրքմեններն սկսեցին համաձայնեցրած արշավանքներ Կիլիկիայի վրա։

Վերջիններս նույն տարում ասպատակեցին Տարսոնի շրջակայքը։ Օշին թագավորը նրանց դեմ ուղարկեց Կոռիկոսի Օշին պայլին։ Պոմպեոլուս կամուրջի մոտ տեղի ունեցած ճակատամարտում հայերը հաղթանակ տարան և թշնամուն դուրս շպրտեցին Կիլիկիայից[14]։

---

8 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն I, էջ 1819։

9 Տե՛ս Չամչյան, հատ. III, էջ 314։

10 Նույն տեղում, էջ 313։

11 Տե՛ս Աշ. Հովհաննիսյան, Դրվագներ, գիրք Ա, էջ 180։

12 Տե՛ս Baronius, Annales eccles, t. XXIV, p. 73.

13 Տե՛ս նույն տեղում։

14 Տե՛ս Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, էջ 120։

1320 թ., Օշինի մահից հետո, իշխանության գլուխ է անցնում որդին՝ Լևոն Հինգերորդը (1320—1342)։ Վերջինիս անչափահասության պատճառով երկիրը ղեկավարվում է խնամակալների միջոցով։ Լևոն Ե-ի իշխանության առաջին տարում նորից բռնկվում են ֆեոդալական երկպառակությունները։ Լևոնի հինգ խնամակալներից առանձնապես նշանավոր էր Կոռիկոսի իշխան Օշինը։ Վերջինս Լևոն Ե-ին ամուսնացրեց իր դստեր հետ, իսկ ինքը ամուսնացավ մայր թագուհու հետ։ Ավելին, նա իր եղբորը՝ Կոստանդինին նշանակեց սպարապետ և այսպիսով սկսեց վարել պետության գործերը։ Դժգոհելով այս ամենից, իշխանները վեճեր ծավալեցին։ Վերջիններիս պաշտպանում էր Օշին թագավորի կնոջ քույրը՝ Տիրոսի իշխան Ամորի Լուսինյանի այրին՝ Իզաբելլան, որն իր չորս որդիների հետ գտնվում էր Կիլիկիայում, իսկ հինգերորդ որդին՝ Գվիդոնը, գտնվում էր Բյուզանդիայում։ Օշին պայլը, տեղեկանալով նրանց մտադրությունների մասին, խիստ պատժեց դավադիրներին։ Իզաբելլան և իր երկու որդիները մահացան բանտում, իսկ մյուս երկու որդիները՝ Ջիվանը և Բոհեմունդը փախան Հռոդոս՝ ս. Հովհաննեսի օրդենի կոմանդորի մոտ։ Նրանց հորեղբայրը՝ Կիպրոսի թագավոր Հենրի Լուսինյանը, քիչ էր մնում պատերազմ սկսեր Օշինի դեմ, եթե վեճին չմիջամտեր Հովհան ԻԲ պապը[15]։

Լևոն Ե-ի իշխանության ժամանակ էական փոփոխություններ տեղի ունեցան Մերձավոր Արևելքում և Արևմտյան Եվրոպայում։ Մոնղոլական պետությունն իր հոգեվարքն էր ապրում և շուտով կործանվեց, իսկ Եվրոպայում Ֆրանսիայի և Անգլիայի միջև սկսվել էր հարյուրամյա պատերազմը (1337—1453)։ Կիլիկյան հայկական թագավորությունը մնաց մեն-մենակ իսլամական թշնամի պետությունների օղակում, առանց դաշնակցի և օգնականի։

Կիլիկյան քաղաքագետները այս անգամ էլ չկարողացան ճիշտ գնահատել ստեղծված միջազգային դրությունը և շարունակեցին իրենց նախկին քաղաքականությունը, որով Կիլիկիայի և եգիպտական մամլուքների հարաբերություններն ավելի սրվեցին։

Մամլուքները տեղեկանալով Կիլիկիայի ներքին և արտաքին վիճակին, 1320 թ. սկսած պարբերաբար արշավանքներ ձեռնարկեցին դեպի Կիլիկիա։

1320 թ. Սիրիայի մահմեդական զորքերը ասպատակելով երկիրը, հասան մինչև Սիս մայրաքաղաքը[16]։ 1321 թ. եգիպտական սուլթանության խրախուսանքով Կիլիկիայի վրա հարձակվեցին թաթար Թեմուրտաշը և թուրք Ամիր Օմարը։ Նրանք 30000 զորքով հյուսիսից և արևելքից մտան Կիլիկիա, ասպատակեցին մի շարք գավառներ, հասան մինչև Մամեստիա և Ադանա։ Թեմուրտաշի ասպատակող զորքերը մոտ մեկ ամիս կողոպտեցին երկիրը, ապա վերադարձան[17]։ Այս արշավանքի ժամանակ Լևոն թագավորը և ոսոխի սպանդից խույս տված հայերն ապաստանեցին Այաս նավահանգստի բերդում։

---

15 Տե՛ս Tournebize F., Histoire politique et religieuse de l'Arménie, Paris, 1900, p. 232.

16 Տե՛ս «Արաբական աղբյուրներ...», էջ 246—247։

17 Տե՛ս նույն տեղում, էջ 247, Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 530, Սմբատ Սպարապետ, Պատմութիւն, էջ 121, Սամուէլ Անեցի, էջ 158, Չամչյան, հատ. III, էջ 319։

Ի պատասխան Կիլիկիայի խաղաղասիրական առաջարկին, Եգիպտոսը պահանջեց այն բերդերն ու քաղաքները, որոնք միացվել էին Կիլիկիային Ղազան խանի արշավանքների ժամանակ։ Մերժում ստանալով, մամլուքները Թեմուրտաշի հետ միասին ներխուժեցին Կիլիկիա և, 17 օր շարունակ ասպատակելով երկրի գյուղերն ու քաղաքները, մեծ ավարով վերադարձան Դամասկոս[18]։

1322 թ., տեղեկանալով խաչակրաց նոր արշավանք նախապատրաստելու ակնկալությամբ Լևոն Ե-ի Եվրոպայում կատարած դիվանագիտական ձեռնարկումներին, Եգիպտոսի սուլթան Նասիրը համաձայնության եկավ Թեմուրտաշի հետ՝ համատեղ ռազմական գործողություններ սկսելու ընդդեմ Կիլիկիայի հայկական թագավորության[19]։ Այս անգամ ռազմական գործողությունների գլխավոր նպատակն էր գրավել Այասը։ Վերջինիս ռազմական և առևտրական նշանակությունը խիստ բարձրացել էր Մերձավոր Արևելքի խաչակիր նավահանգստային քաղաք-պետությունների անկումից հետո։ Այասը փաստորեն մրցում էր Եգիպտոսի Ալեքսանդրիա նավահանգստի հետ։ Այն Կիլիկիայի պետության համար եկամտի մեծ աղբյուր էր, որովհետև քրիստոնյա վաճառականները, փոխանակ եգիպտական նավահանգիստների միջոցով կատարելու իրենց տարանցիկ առևտուրը, քաղաքական նկատառումներով և մանավանդ մաքսային տուրքերի թեթևության պատճառով, նախընտրում էին Այասը, որտեղ նրանք գտնում էին նաև արևելյան բազմատեսակ ապրանքներ։

Որքան Արևմտյան Եվրոպայի երկրների վաճառաշահ քաղաքների առևտուրը աշխուժանում էր Այասի հետ, այնքան էլ Եգիպտոսի սուլթանների թշնամությունն էր սաստկանում, որովհետև հայկական նավահանգստի մրցակցությունը վնասում էր Ալեքսանդրիա և Դամիետ նավահանգիստների առևտրական գործունեությանը։ Բացի այդ գրավելով Այասը, սուլթանը մեծ եկամուտներ ձեռք կբերեր։ Այսպիսով, սուլթանների արշավանքների նպատակը Այասի նկատմամբ ավելի շատ տնտեսական և շահադիտական էր[20]։

Այասից ստացված եկամուտներով Կիլիկիան կարողանում էր ոչ միայն վճարել հայ-եգիպտական նախորդ հաշտության պայմանագրերից բխող տարեկան հարկը, այլև վերազինել բանակը։

Ահա թե ինչու 1322 թ. սուլթան Նասիրը իր գլխավոր հարվածն ուղղեց դեպի Այաս, նպատակ ունենալով վերջնականապես գրավել այն։

Հայ և օտար աղբյուրներն առատ տեղեկություններ են հաղորդում Այասի վրա կատարված արշավանքների մասին։

Ներսես Պալիենցը այսպես է նկարագրում Թեմուրտաշի և սուլթան Նասիրի կազմակերպած 1322 թ. արշավանքը Այասի վրա. «ապրիլի 20-ին սուլթանի զորքը՝ 40 հազար հեծյալ և անչափ հետևակ եկավ երկիրը Հայոց, և գալով Եգեիո քաղաքը, որն Այասն է... 23 ապրիլին առավ նավահանգստի բերդը, քանզի ծովը ցամաքել էր, ներս քաշվել և արաբները ծովի կողմից հարձակվեցին... և գերեցին անթիվ մարդ և անբավ ավար տարան. ապա նստեցին

---

18 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 247։
19 Տե՛ս D'Ohsson, t. IV, p. 661.
20 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 289։

պաշարելով ներսի բերդը, բաբան դրին և ամեն ինչ քանդեցին։ Քաղաքից դուներ և այլ իրեր բերելով կամուրջ սարքեցին բերդի պարսպի առջև և նետահարում էին պաշտպաններին։ Գիշերը կրակ գցեցին բերդը և իրենք քաշվեցին դեպի ծովը։ Այսպես կորավ Այասը իր երկու բերդերով ընկնելով արաբների ձեռքը»[21]։

Այասի գրավման այս նկարագրությունը հաստատում են նաև Սամուել Անեցու ժամանակագրության և Սմբատ Սպարապետի տարեգրության շարահարողները[22]։

Հայկական բանակը անպատրաստ գտնվեց այդ հարձակումների հանդեպ։ Մանկահասակ թագավորը, Օշին պայլը և սրա եղբայր Կոստանդին սպարապետը իրենց զորքերով քաշվեցին լեռները և ամրացան բերդերում։ Երկիրը մնաց անպաշտպան։ Թշնամիների գործած բռնությունների ու ավերածությունների դեմ ծառացավ հայ ժողովուրդը։ Հայկական մի քանի գնդեր փորձեցին հետապնդել թշնամուն։ Հանդուգն քաջերից բաղկացած մի խումբ դարան մտավ մի կիրճի մոտ, որտեղից անցնելու էր եգիպտական հեծելազորը։ Սրանք 6000 թշնամի կոտորեցին և զգալի քանակությամբ գերիներ վերցրին։ 600 զինվորներից բաղկացած մի ուրիշ խումբ Ջահան գետի ափին հարձակվեց մամլուքների վրա (որոնք վերադառնում էին Այասում գրաված ավարով) և մեծ ջարդ տվեցին նրանց։ Սակայն մամլուքների գերազանց ուժի առաջ ստիպված նահանջեցին մինչև Մսիս, ուր և տեղի ունեցած ճակատամարտում պարտություն կրեցին[23]։

Այասի գրավումը և հայկական բանակների պարտությունը հետևանք էին Կիլիկիայում տիրող ռազմա-քաղաքական և տնտեսական ճգնաժամի։ Կիլիկյան հայկական պետությունում գերիշխող վերնախավը չկարողացավ իր շուրջը համախմբել ոչ միայն հայ ժողովրդին, այլև իշխաններին։

Ներքին գահակալական կռիվներն ու կրոնական վեճերը, որոնք ունեին դավանաբանական սոցիալ-քաղաքական բովանդակություն, կենտրոնական իշխանությանը խանգարում էին թշնամու դեմ միավորելու երկրի մարդկային և նյութական միջոցները։

Անշուշտ, այդ պարտության գլխավոր պատճառներից մեկն էլ այն էր, որ մամլուքներն ու սելջուկները իրենց կրկնվող մանր ու խոշոր ասպատակություններով խլում էին հայ ժողովրդի աշխատանքով ձեռք բերած նյութական բարիքները, թուլացնում երկրի դիմադրական զորությունը։ Ընդ որում, սկսած 1320 թ. մինչև 1375 թ. արշավանքները կրկնվում էին 5—10 տարի ընդմիջումներով։

Այասի գրավումը մեծ արձագանք առաջացրեց Եվրոպայում և Մերձավոր Արևելքում։ Նոր թափ ստացավ պապի դիվանագիտական գործունեությունը Եվրոպայում՝ խաչակրաց նոր արշավանքներ կազմակերպելու համար։ Միաժամանակ նա չմոռացավ դավանափոխության նոր թղթեր հղել ոչ միայն Կիլիկիայի, այլև բուն Հայաստանի հոգևոր թեմերին[24]։

---

21 Ղ. Ալիշան, *Հայապատում*, էջ 532, տե՛ս նաև «Արաբական աղբյուրները...», էջ 289։

22 Տե՛ս Սամուել Անեցի, էջ 167, Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, էջ 191—192։

23 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 220։

24 Տե՛ս *Baronlus*, Annales eccles, t. XIV, p. 75—76,

Մոնղոլական իլխանությունը իր դաշնակցային պարտավորությունները կատարելու մի վերջին փորձ կատարեց։ 20000-անոց զորք ուղարկվեց իլխանության և Եգիպտոսի սահմանը՝ վերջինիս զգուշացնելով դադարեցնել արշավանքները և հաշտություն կնքել Կիլիկիայի հետ։ Հակառակ պարագայում նրանք սպառնում էին ռազմական գործողություններ սկսել Եգիպտոսի դեմ[25]։ Սակայն դա ավելի ցույց էր, քան իրական օգնություն։ Լևոն Հինգերորդը հաշտության բանակցություններ սկսեց Եգիպտոսի հետ այդ անբարենպաստ պայմաններում։ Կոստանդին կաթողիկոսի գլխավորությամբ Կահիրե ժամանած պատվիրակությունը 1323 թ. Նասիր սուլթանի հետ կնքեց հաշտության պայմանագիր՝ Կիլիկիայի համար ծանր պայմաններով։ Պայմանագրով Կիլիկիան պարտավորվում էր Եգիպտոսին վճարել տարեկան 1.200.000 արծաթ դիրհեմ։ Բացի այդ, հայերը հանձն էին առնում Եգիպտոսին վճարել Այասի նավահանգստից ստացված եկամուտների 50 տոկոսը և օտարականներին վաճառված աղի եկամտի կեսը։ Իսկ Եգիպտոսը պարտավորվում էր զորքերը հետ քաշել Կիլիկիայից և Եգիպտոսի ծախսերով վերաշինել ավերված քաղաքները, բացի Այասի ծովային բերդի ամրություններից[26]։

## 2. ՔԱՂԱՔԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԻ ԽՈՐԱՑՈՒՄԸ

Այասի ավերումը ուժեղ տպավորություն թողեց Արևմտյան Եվրոպայի քաղաքական, առևտրական և հոգևորական շրջանների վրա, որոնք շահագրգռված էին Կիլիկիայի շուկաներով և նրա վրայով՝ Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող տարանցիկ առևտրով։ Նրանք չէին հրաժարվել նաև Սիրիան ու Պաղեստինը նվաճելու մտքից և Կիլիկիան դիտում էին որպես հենակետ։ Սրանով պետք է բացատրել այն, որ Հովհան ԺԲ պապը կարգադրեց Կիլիկիային հատկացնել 30000 ֆլորին՝ իր ռազմական կարիքները հոգալու և Այասը վերանորոգելու համար[27]։

Հետագայում պապը դադարեցրեց այդ գումարի վճարումը, պատճառաբանելով, թե Հայոց թագավորը չի կատարում եկեղեցական ժողովի որոշումները ունիայի հարցում։ Կիլիկյան արքունիքը սրանից ոչ միայն անհրաժեշտ հետևություններ չարեց, այլև, ընդհակառակը, նորից բանակցություններ սկսեց պապի և եվրոպական երկրների հետ, վերջիններից խնդրելով ռազմական օժանդակություն։

Լևոն Ե, լատինասերների խորհրդով, 1329 թ. ձերբակալեց և գլխատել տվեց հայադավան ճակատը գլխավորող Կոռիկոսի տեր Օշին պայլին և նրա եղբայր Կոստանդին սպարապետին[28]։ Թեև այդ ոճիրի պարագաների և դրդա-

---

25 Տե՛ս Микаелян Т., История Киликийского армянского государства, стр. 453—454.

26 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 291, տե՛ս նաև Langlois V., Le trésor, p. 232.

27 Տե՛ս Langlois V., Le trésor..., p 232.

28 Տե՛ս Սմբատ Սպարապետ (շարունակող) Պատմութիւն, 1856, էջ 124, Սամուէլ Անեցի (շարունակող), էջ 158, «Մանր ժամանակագրություններ», հատ. I, էջ 88, «Արաբական աղբյուրները...», էջ 247—248։

պատճառների մասին աղբյուրները հաղորդում են հակասական տեղեկություններ, սակայն գլխավորն այն է, որ Լևոն Ե դրանով նպատակ ուներ իշխանությունից հեռացնել հակալատին տարրերին։ Դա հավանական է դառնում նաև այն պատճառով, որ մեկ տարի հետո Լևոն Ե ամուսնանում է Սիկիլիայի թագավոր Ֆիլիպ Ա-ի դստեր հետ և գլխատված իշխանների փոխարեն Ջիվան Լուսինյանին նշանակում է պայլ, իսկ վերջինիս եղբորը՝ Բոհեմունդին, Կոռիկոսի տեր[29]։ Ինչպես նշվեց վերևում, սրանք 1321 թ. աքսորված էին Կիպրոս՝ Օշին պայլի կողմից։ Այս բոլորի հետևանքը եղավ այն, որ արքունիքում զորեղացան լատինամոլ տարրերը․ Վերջիններս Լևոն Ե-ին հորդորում էին բացահայտորեն վարել արևմտյան քաղաքականություն։ Լսելով սրանց, Լևոն Ե 1331 թ. հատուկ դեսպանություն է ուղարկում Եվրոպա խաչակրաց նոր արշավանք կազմակերպելու խնդրանքով։

Եգիպտական սուլթանությանը առիթներ էին հարկավոր և նա վերոհիշյալ միջոցառումները դիտեց որպես 1323 թ. հաշտության պայմանագրի խախտում և զորք ուղարկեց Այասի շրջակայքը։ Եգիպտական զորքը ասպատակեց այդ վայրերը և ավարով ետ վերադարձավ[30]։

1335 թ. լսելով, որ Ֆրանսիայի Ֆիլիպ Զ թագավորը պատրաստվում է խաչակրաց արշավանքի[34], մամլուքները Հալեպի ամիր Ալթուն Բուղային հրամայեցին ասպատակել Կիլիկիայի սահմանամերձ շրջանները։ Պատերազմական գործողությունները շարունակվեցին 1336 և 1337 թվականներին։ Ալթուն Բուղայի հալեպյան զորքերը գրավեցին Մամեստիա, Ադանա, Այաս և Տարսոն քաղաքները, հրկիզեցին շատ բնակավայրեր, կողոպտեցին երկրի հարստությունը և գերեցին բազմահազար մարդկանց։ Հայոց թագավորը ստիպված եղավ, հաշտություն կնքելու նպատակով, պատվիրակություն ուղարկել Մելիք Նասիրի մոտ։ Եգիպտական սուլթանը բանտարկեց պատվիրակության կազմում եղած Բաղդին Մարաջախտին, արքունի պահակախմբի պետ իշխան Սիրունին և քարտուղար Վասիլին, ապա, ծանր պայմաններ առաջարկելով, համաձայնեց հաշտության պայմանագիր կնքել։ Այդ համաձայնագրով սուլթանին էր մնում Այասը, Ջահանից արևելք գտնվող հողերն իրենց բազմաթիվ բերդերով ու քաղաքներով։ Այս կորուստները խիստ ծանր եղան Կիլիկիայի թագավորության համար, որը, ինչպես ասում է Իբն Վարդին՝ «անհոգի մի դիակ էր դառնում կորցնելով այդ երկիրը»[32]։

Այդ պայմանագրով Լևոն Ե Ավետարանով երդվեց ընդհատել հարաբերությունները պապի և Ֆրանսիայի թագավորի հետ, սակայն նա չհաշտվեց իր պետության ծվատմանը, ուստի շուտով գաղտնի բանակցություններ սկսեց Բենեդիկտոս ԺԲ պապի հետ։ Վերջինս նրան ազատեց վերոհիշյալ երդումից և դրա փոխարեն պահանջեց իրականացնել ունիան, խոստանալով տնտեսական և ռազմական օգնություն։ Պապի կողմնակիցներն անբավարար

---

29 Տե՛ս Չամչյան, հատ. III, էջ 333։

30 Տե՛ս Микаелян Г., նշված աշխատություն, էջ 455։

31 Տե՛ս Tournebize, նշված աշխատ., էջ 234։

32 «Արաբական աղբյուրները...», էջ 287։

գտնելով Լևոն Ե-ի համագործակցությունը Արևմուտքի հետ, սպանեցին նրան[33]։

Լևոն Ե-ի մահից հետո լատինական տարրերը երկիրը ղեկավարելու համար իշխանության գլուխ դրեցին Ջիվան Լուսինյան պայլի եղբորը՝ Գվիդոն Լուսինյանին, որն այն ժամանակ գտնվում էր Կ. Պոլսում[34]։ Մինչև նրա գալը, երկիրը ժամանակավորապես կառավարեց Ջիվան Լուսինյան պայլը։ 1343 թ. Գվիդոն Լուսինյանը «հայկական ծեսով» օծվում է Կիլիկիայի թագավոր՝ Կոստանդին Գ անունով[35] և շարունակում է Լևոն Ե-ի արևմտասեր քաղաքականությունը։ 1343 թ. պապի մոտ ուղարկվեց նոր պատվիրակություն։ Պապը խոստացավ օգնել, եթե հայերը անհապաղ ի կատար ածեին եկեղեցական ժողովների ընդունած որոշումները։ Գվիդոն Լուսինյանը դրական պատասխան ուղարկեց Պապին[36] և հայերին ստիպեց ընդունել կաթոլիկությունը։ Նա իշխանությունից հեռացրեց ունիայի հակառակորդներին, ապա փորձեց արքունիքում վերացնել հայոց լեզուն[37]։ Միաժամանակ նա անհաշտ թշնամական քաղաքականություն էր վարում Եգիպտոսի և կարամանցիների դեմ։ Նրա արտաքին քաղաքականության պատճառով 1343—1344 թթ. թուրքմենները քանիցս ասպատակեցին Սսի երկիրը, կոտորեցին, գերի վերցրին շատ շատերին։ 1343 թ. Եգիպտոսի հալեպյան գնդերը, գրավելով հարուստ և բազմամարդ Ադանան, կողոպտեցին ու մեծ ավարով վերադարձան[38]։

Գվիդոն Լուսինյանի արտաքին և ներքին քաղաքականությունից դժգոհ հայ իշխանները, ժողովրդի օժանդակությամբ և իշխան Օշին Բակուրանի գլխավորությամբ, 1345 թ. սպանեցին նրան՝ Ադանայի իր պալատում[39]։ Այդ մասին Աբու-լ-Ֆիդայի ժամանակագրության մեջ կարդում ենք. «Հիջրի 746 թ. (1345 մայիսի 4—1346 ապրիլ 3) հայերը սպանեցին թագավոր Ֆրանկ Քունդսթաբլին, որը անկարող էր վարելու գործերը և չէր պաշտպանում երկիրը, որի հետևանքով մուսուլմանները ավերներ էին գործում»[40]։

Բացի Գվիդոնից, ապստամբները սպանեցին նաև նրա եղբորը՝ Կոռիկոսի կոմս Բոհեմունդին և 300 այն ֆրանկ ասպետներին, որոնց իր հետ Կիլիկիա էր բերել Գվիդոնը[41]։ Այսպիսով, հայերը ձախողեցին լատինական տարրերի Կիլիկիան ֆրանկացնելու փորձերը։

Գվիդոնի սպանությունից հետո «իշխանական խորհուրդը» թագավոր ընտրեց մեծ մարաջախտ, Բաղդինի որդի Կոստանդինին[42]։ Թեև ֆրանկ ժամա-

---

33 Տե՛ս Tournebize, նշված աշխ., էջ 659, տե՛ս նաև Г. Микаелян, նշված աշխ., էջ 457—458։

34 Տե՛ս Հովհաննես Դարդել, ժամանակագրութիւն, էջ 31—32։

35 Տե՛ս Rüdt-Callenberg W., The Rupenides, Hethumides and Lusignans, Paris 1963, p. 74.

36 Տե՛ս Հովհաննես Դարդել, ժամանակագրութիւն, էջ 42։

37 Տե՛ս «Արաբական աղբյուրները», էջ 288, տե՛ս նաև Г. Микаелян, նշված աշխ., էջ 461։

38 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 249։

39 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 249, տե՛ս նաև Հ. Տեր-Ղազարյան, Հայկական Կիլիկիա, էջ 289։

40 Տե՛ս «Արաբական աղբյուրները...», էջ 249։

41 Տե՛ս նույն տեղում, էջ 288, տե՛ս նաև Հ. Տեր-Ղազարյան, էջ 289։

42 Տե՛ս Հովհաննես Դարդել, ժամանակագրութիւն, էջ 52։

*նակագիրը չի նշում նրա կապը Հեթումյան արքունի ընտանիքի հետ[43], սակայն ամենայն հավանականությամբ Կոստանդինը ազգակցական կապեր ուներ Հեթումյանների հետ[44]։*

*Կոստանդին Դ-ի (1345—1363) իշխանության ժամանակ Կիլիկիայի միջազգային դրությունը խիստ վատացավ։ Եգիպտոսի մամլուքների և թուրքմենների չդադարող հարձակումները մշտական սպառնալիք էին ստեղծում Կիլիկիայի հայկական թագավորության բուն իսկ գոյությանը։*

*Գվիդոնի սպանության լուրը դժգոհություն առաջացրեց Եվրոպայում։ Կլիմենտ Զ պապը Ավինիոնում գտնվող Կիլիկիայի պատվիրակներին հասկացրեց, որ Կիլիկիային ռազմական և տնտեսական օգնություն կտրվի միայն այն ժամանակ, եթե հայերը անմիջապես ընդունեն կաթոլիկություն[45]։*

*Կոստանդին Դ, հավատ ընծայելով Կլիմենտ Զ-ի խոստումներին, 1345 թ. Սսում հրավիրեց եկեղեցական ժողով։ Այդ ժողովին մասնակցում էին բոլոր թեմերի առաջնորդներն ու եպիսկոպոսները, բացի բուն Հայաստանի հոգևորականությունից[46]։ Ժողովը ձևականորեն ընդունեց ունիան՝ հույս տածելով օգնություն ստանալ Եվրոպայից։*

*Արևմուտքի հետ կապի վերականգնումը նորից սուր ծառայեց, որպեսզի Կիլիկիայի դեմ ելնեն թուրքմեններն ու մամլուքները։ Վերջիններս 1346 թ. համատեղ արշավանք սկսեցին Կիլիկիայի վրա։ Նույն տարվա վերջում «թուրքմենները խաբեությամբ տիրեցին Կապանի բերդին, որը Սսի երկրի ամենաուժեղ բերդերից էր՝ Ռումի երկրին սահմանակից։ Այնտեղ գտնվող մարդկանց սպանեցին, իսկ կանանց ու երեխաներին գերի վերցրին։ Սսի նոր թագավորը՝ Կոստանդինը փութաց փրկելու բերդը, բայց թշնամին հանկարծակի հարձակվեց հայերի վրա, շատերին սպանեց, իսկ մնացածներին էլ փախուստի մատնեց»[47]։*

*Միաժամանակ հանկարծակի Կիլիկիա ներխուժեցին մամլուքները՝ Հալեպի Նաիբի գլխավորությամբ։ Չդիմանալով թշնամիների երկուստեք հարձակումներին, Կիլիկիան ստիպված եղավ զիջել Կապան ամրոցը։ Կապան բերդի տեր դառնալու շուրջ թշնամիների միջև սկսվեց գզվռտոց. հայերն օգտվելով դրանից, նույն տարում վերագրավեցին այն[48]։*

*Պապը շուտով իր լրտեսների միջոցով տեղեկացավ, որ Կիլիկիայում չեն իրագործում Սսի եկեղեցական որոշումները՝ հայ ժողովրդի լուրջ դիմադրություն ցույց տալու պատճառով, ուստի նա պատվիրակներ ուղարկեց Կիլիկիա և նորից պահանջեց իրագործել այդ որոշումները, որպեսզի կաթոլիկ Եվրոպան օգներ Կիլիկիային[49]։ Այդ ժամանակ Եվրոպայում շարունակվում էր հարյուրամյա պատերազմը՝ Ֆրանսիայի և Անգլիայի միջև։ Պապի բոլոր փոր-*

---

43 *Տե՛ս նույն տեղում։*

44 *Տե՛ս Չամչյան, հատ. 3, էջ 349,* Rüdt-Collenberg W., p. 73.

45 *Տե՛ս* „Documents arméniens", t. II, p. 27.

46 *Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն Ա, էջ 1870—1909։*

47 *«Արաբական աղբյուրները...», էջ 249։*

48 *Տե՛ս նույն տեղում, էջ 250։*

49 *Տե՛ս* „Documents arméniens", t. II, p. 28.

ձերը հաշտեցնել վերջիններիս՝ կատարելապես ձախողվեցին[50]։ Հետևաբար պապի խոստումները խաչակրաց արշավանք կազմակերպելու մասին զուրկ էին որևէ հիմքից։ Եգիպտական սուլթանին, որ աչալուրջ հետևում էր պատվիրակների երթևեկին, առիթ էր հարկավոր վերսկսելու պատերազմական գործողությունները, ուստի նա այդ ամենը դիտեց որպես 1337 թ. պայմանագրի խախտում և 1347 թ. մեծաթիվ զորքով հարձակվեց Կիլիկիայի վրա։

Հայկական զորքերը քաջ ու հմուտ Լիպարիտ զորավարի առաջնորդությամբ ջախջախեցին մամլուքների առաջապահ գնդերը։ Կիպրոսի ֆրանկ թագավորությունն իր նավատորմը ուղարկեց Կիլիկիային օգնելու և համատեղ ուժերով Այասը վերագրավելու։ 1347 թ. աշնանը հայ-կիպրական զինված ուժերը՝ գրոհելով ծովից և ցամաքից, գրավեցին Այասը[51]։

Կիլիկյան հայկական պետությունը փորձեց հաշտության պայմանագիր կնքել և վերջ տալ պատերազմին, իսկ դրամական ռազմատուգանք վճարելով Եգիպտոսին, Այասը պահել Կիլիկիայի կազմում։ Վենետիկյան Դոժը, իր տնտեսական շահերն ավելի բարձր դասելով, քան կիլիկյան հայկական պետության ապահովությունը, ինչպես նաև վախենալով, թե Կիլիկիայի կողմից հաշտարար միջնորդի դերում հանդես գալը կվատթարացնի Վենետիկի և Եգիպտոսի առևտրական հարաբերությունները, հրաժարվեց հանձն առնել այդ դերը։

Հաշտության պայմանագիր կնքելու փորձերի ձախողումից հետո եգիպտական նավատորմը ծովից գրոհեց Այասի վրա և վերագրավեց այն[52]։ Գրեթե միևնույն ժամանակ Կարամանցի թուրքերը գրավեցին Պապեռոն անառիկ ամրոցը Տարսոնի մատույցներում։

1348 թ. Ասիայում, Աֆրիկայում և Եվրոպայում մահ ու սարսափ տարածող սև ժանտախտից անբաժին չմնաց նաև Կիլիկիան։ Ընդ որում եգիպտական արշավանքները, վերահաս ժանտախտն ու սովը, պատճառ դարձան հայ բնակչության մասնակի արտագաղթին[53]։ Այս ժամանակ, սակայն, Եգիպտոսում ծավալվեցին գահակալական կռիվներ։ Կոստանդին Դ շտապեց օգտվել դրանից։ Կիլիկյան բանակը 1349 թ. Հռոդոսի ս. Հովհաննեսի օրդենի ասպետների օգնությամբ ջախջախեց Կիլիկիայի սահմանամերձ շրջաններն ասպատակող Հալեպի էմիրի հրոսակներին, հետապնդեց նրանց և գրավեց Ալեքսանդրիա քաղաքը՝ Իսոսի ծոցի հարավում[54]։ Սակայն դաշնակից բանակները չկարողացան զարգացնել իրենց առաջխաղացումը և ստիպված եղան նահանջել։

Նույն՝ 1349 թ. Կոստանդին Դ օգնություն հայցելու նպատակով նոր դեսպանություն ուղարկեց Ավինյոն՝ պապի մոտ։ Վերջինս Կիպրոսի թագավորությանը, Հռոդոսի ս. Հովհաննեսի օրդենին և Ջենովայի պապական նավատորմի ծովակալին կոչ արեց անհապաղ ռազմական օգնություն ցույց տալ Կիլիկիային։ Սակայն խոստացված օգնությունը նույնպես չիրագործվեց։

50 Տե՛ս նույն տեղում, հատ. I, էջ 708։
51 Տե՛ս նույն տեղում։
52 Տե՛ս նույն տեղում, հատ. I, էջ 706։
53 Տե՛ս նույն տեղում, էջ 710։
54 Տե՛ս նույն տեղում։

1355 թ., հաղթահարելով ներքին գահակալական երկպառակությունները, Եգիպտոսի մամլուքները վերսկսում են իրենց հերթական արշավանքը Կիլիկիայի վրա։ Նրանք գրավում են Տարսոն և Ադանա քաղաքները և մեծ ավարով վերադառնում Սիրիա։

1360 թ. Հալեպի ամիրա Բեկ Թեմուրի զորքերն արշավում են Կիլիկիա և վերջնականապես գրավում են վերոհիշյալ քաղաքները։ Ի նշանավորումն այդ քաղաքների գրավման, էմիրը թողարկեց հատուկ դրամներ[55]։ Այդ քաղաքների կորստով Կիլիկիան գրեթե մեկուսացվեց Միջերկրական ծովից և կանգնեց տնտեսական ու ռազմական անելանելի վիճակի առաջ, քանի որ Դաշտային Կիլիկիան էր ապահովում Կիլիկիայի բնակչության սննդամթերքի հիմնական մասը և ուներ ռազմագիտական խոշոր նշանակություն։

Նույն թվականին կարամանցի թուրքմենները հյուսիս-արևմուտքից ներխուժեցին Կիլիկիա և պաշարեցին Արևմուտքին կապող Կոռիկոս ամրոց-նավահանգիստը։ Քաղաքի բնակիչները հուսակտուր դիմեցին Կիպրոսին։ Վերջինս թեև քաղաքն ազատեց պաշարումից, սակայն գրավելով այն՝ ենթարկեց իրեն[56]։

Ռազմական պարտության հետևանքով երկրում նորից բորբոքվեց ունիթոռների և հակաունիթոռների պայքարը։ Նույնիսկ վեճերն ընդունեցին զինված ընդհարման բնույթ։ Այդ պայմաններում դեռևս շարունակվում էին նամակագրությունները Ավինիոնի և Սսի միջև։

Համոզվելով, որ պապի այդ բոլոր խոստումները այլ նպատակներ են հետապնդում, Մեսրոպ կաթողիկոսի նախաձեռնությամբ, Կոստանդին Դ թագավորը 1360 թ. Սսում հրավիրեց եկեղեցական նոր ժողով։ Վերջինս՝ չեղյալ հայտարարեց եկեղեցական նախկին ժողովների որոշումները՝ ունիայի հարցում և դատապարտեց պապի վարքագիծը[57]։

Այսպիսով, պապականության փորձերը՝ XIII—XIV դարերում Կիլիկիայում կաթոլիկություն տարածելու, հայ և կաթոլիկ եկեղեցիների միություն ստեղծելու ուղղությամբ վերջնականապես ձախողվեցին։

## 3. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԱՆԿՈՒՄԸ

Կոստանդին Դ թագավորի մահից (1363) հետո՝ Կիլիկյան հայկական թագավորության 10-ամյա քաղաքական պատմությունը սերտորեն կապված է Կիպրոսի թագավորության պատմության հետ։

Սսի 1361 թ. եկեղեցական ժողովի կողմից պապականության քաղաքականության դատապարտումից հետո հայ իշխող ավագանին, հատկապես՝ ֆրանկասերները, սկսեցին իրենց հույսերը կապել Կիպրոսի թագավորության օգնության հետ։ Վերջինս XIV դարի կեսերից, շնորհիվ իր ուժեղ նավատորմի, փաստորեն մնացել էր այն միակ ուժը, որ կարող էր լուրջ ախոյան դառ-

55 Տե՛ս „Documents arméniens", t. II, p. 32.

56 Տե՛ս նույն տեղում, հատ. I, էջ 711։

57 Տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, մասն Բ, էջ 1922։

նալ Եգիպտոսին։ Բացի այս, Կիպրոսի թագավոր Պետրոս Ա (1359—1369), հույսը դնելով Եվրոպայի վրա, պատրաստվում էր նոր խաչակրաց արշավանք կազմակերպել Եգիպտոսի դեմ[58]։ Հենվելով հայ լատինասեր տարրերի վրա, նա ցանկանում էր զավթել Կիլիկիան և դառնալ միաժամանակ Կիլիկիայի թագավոր։ Սակայն Պետրոս Ա-ի ձգտումների իրականացմանը խանգարում էին ոչ միայն եգիպտական մամլուքները, այլև կիլիկյան գահի ինքնակոչ հավակնորդները՝ Գվիդոն Լուսինյանի եղբայր Ջիվանի երկու որդիները՝ Բոհեմունդը և Լևոնը։ Նրանք գտնվում էին Կիպրոսում և իրենց հավակնությունների կենսագործման հույսը կապում էին Կիլիկիայի լատինասեր տարրերի հետ։ Դժգոհ 1361 թ. Սսի եկեղեցական ժողովի որոշումներից, վերջիններս սադրում էին պետական հեղաշրջում հօգուտ Լուսինյան եղբայրների։ Սադրանքներն այս անգամ վերջացան անհաջողությամբ։ Շուտով Վենետիկում մահացավ Բոհեմունդ Լուսինյանը[59], իսկ Լևոն Լուսինյանի գործունեությունը զսպվեց Պետրոս Ա-ի գաղտնի մտադրություններով։ Եթե հավատալու լինենք Լևոն Լուսինյանի խոստովանահայր՝ լատին պատմիչ Հովհաննես Դարդելին, դեռևս 1363—1365 թթ., իբր թե, Ուրբանոս Ե պապը հայ իշխանների խնդրանքով Ջիվանի անդրանիկ որդու՝ Բոհեմունդի մահից հետո Լևոն Լուսինյանին ճանաչել է Կիլիկյան հայկական պետության թագավոր[60]։ Սակայն պատմիչի ասելով՝ այդ գործին խանգարել էր Պետրոս Ա։

1365 թ.՝ կիլիկյան գահը երկու տարի թափուր մնալուց հետո, հայ իշխանները «եդին այլ ումն թագաւոր զորդին պարոն Հեթմոյ, որ կոչեցաւ Կոստանդին թագաւոր»[61], Աղբյուրները հաստատում են նրա կապը Կոստանդին Դ-ի և հետևապես Հեթումյան արքունի տան հետ[62]։

Կոստանդին Ե-ի թագավորության ժամանակ Կիլիկիայի մեծ մասը, բացի Լեռնային Կիլիկիայից և Սսից, գրավված էր մամլուքների և թուրքմենների կողմից։ Ծովային Կիլիկիայում, բացի Կոռիկոս նավահանգստից, իր տիրապետությունն էր հաստատել Եգիպտոսը։ Վերջինիս դեմ Պետրոս Ա 1365 թ. սկսեց ծովային պատերազմ։ Այդ պատերազմը արկածախնդրական էր այն իմաստով, որ Կիպրոսը բավարար ուժեր չուներ Եգիպտոսին ծովում ջախջախելու և իր ժամանակավոր հաղթանակներն ամրապնդելու։ Միաժամանակ դա առիթ էր դառնալու, որպեսզի Եգիպտոսն արագացներ Կիլիկիայի հոգեվարք ապրող թագավորության կործանումը։

1365 թ. կիպրական նավատորմը ժամանակավորապես գրավեց Ալեքսանդրետ և Ադալիա նավահանգիստները, սակայն կողոպտելով դրանք, ստիպված եղավ նահանջել[63]։

1367 թ. Պետրոս Ա ծրագրում էր Կոստանդին Ե-ի հետ համատեղ գործողությունների դիմել՝ Այասը վերագրավելու համար։ Կոստանդին Ե չկարողացավ մասնակցել այդ արշավանքներին[64]։ Կիպրական զորքերը ափ դուրս

58 Տե՛ս Հովհաննես Դարդել, Ժամանակագրութիւն, էջ 57։

59 Տե՛ս նույն տեղում, էջ 58։

60 Տե՛ս նույն տեղում։

61 Հովհաննես Դարդել, էջ 58—59։

62 Տե՛ս Rudt-Collenberg W., p. 73, Annotation, 169.

63 Տե՛ս „Documents arméniens", t, I, p. 712.

64 Տե՛ս նույն տեղում։

եկան Այասի մոտ, բայց ութ օր տևող համառ մարտերից հետո չկարողացան գրավել Այասի բերդը և ստիպված եղան նահանջել։ Կոստանդին Ե, ըստ երևույթին, չէր ցանկանում խախտել Եգիպտոսի հետ կնքված հաշտության պայմանագիրը կամ վախենում էր, թե Այասի գրավումից կօգտվեր միայն Կիպրոսը և Այասին կվիճակվեր Կոռիկոսի բախտը։ Սակայն Կոստանդինի չեզոքությունը չարժանացավ Եգիպտոսի մամլուքների գնահատանքին։ Վերջիններս իրենց մանր ասպատակություններով նոր չարիքներ բերեցին բազմաչարչար կիլիկեցիներին։ Այդ ասպատակությունների հետևանքով հայերի մի մասը վերցրեց գաղթականության ցուպը՝ հեռացավ Հռոդոս և հունական այլ քաղաքներ[65]։

Պետրոս Ա համոզվելով, որ սեփական ուժերով չի կարող իրականացնել իր մտադրությունը, 1367 թ. երկրորդ անգամ մեկնեց Արևմտյան Եվրոպա՝ ռազմական օգնություն խնդրելու և միաժամանակ Եգիպտոսի դեմ եվրոպական պետությունների դաշնակցություն ստեղծելու համար։

1369 թ. Պետրոս Ա վերադարձավ ձեռնունայն և Նիկոսիայում սպանվեց իր ապստամբ պարոնների կողմից։ Այսպիսով, Կիպրոսի թագավորության օգնությանն ապավինող հայ լատինասեր տարրերի հույսերն ի դերև ելան։ Նորից հայացք հառելով Եվրոպայի վրա, այս անգամ ֆրանկասերները ծրագրում էին Կոստանդին Դ-ի այրուն՝ Մարիամին ամուսնացնել եվրոպացի որևէ հայտնի իշխանի հետ, հուսալով, թե վերջինս կկարողանար շոշափելի ռազմական օգնություն ստանալ Եվրոպայից և դրանով փրկել Կիլիկիան վերահաս կործանումից։

Կոստանդին Դ-ի այրին՝ Մարիամը նամակներով դիմեց պապին, Նեապոլին և Վենետիկին։ 1369 թ. հոկտեմբերի 11-ի թվակիր պատասխան-նամակում Վենետիկի դոժը խոստանում էր Կիլիկիայի մասին հատուկ կետ մտցնել այն հաշտության պայմանագրում, որը շուտով կնքվելու էր Եգիպտոսի և Ջենովայի միջև։

Ուրվագծվող հաշտության պայմանագիրը պիտի երաշխավորեր մշտական խաղաղություն՝ Կիլիկիայի և Եգիպտոսի միջև։ Սակայն հակասությունները Վենետիկի և Ջենովայի միջև շարունակվեցին, և այնպես էլ հաշտության պայմանագիրը չկնքվեց։ Հետագա դեպքերը երկբայելի են դարձնում, թե որքանով Եգիպտոսը հանձն կառներ երաշխավորել կիլիկյան հայկական թագավորության ամբողջականությունն ու անկախությունը։

Մինչդեռ Մարիամ թագուհու սուրհանդակները դեգերում և թակում էին եվրոպական արքունիքների դարպասները, այստեղ, Մերձավոր Արևելքում, մամլուքները 60000-անոց բանակով, Հալեպի Իշեկ Թիմուր և Տարսոնի Մանչուկ ամիրաների գլխավորությամբ, սպառնում էին հողմացրիվ անել Լեռնային Կիլիկիայի բերդերն ու ամրոցները։ Նրանց գլխավոր հարվածն ուղղված էր Սսի դեմ։ Սկսվեց Սսի երկարատև պաշարումը։

Սսի համար մղված մարտերում իրենց հերոսական սխրագործություններով աչքի ընկան հայոց սպարապետ Լիպարիտը և ամուսիններ Հեթումն ու Ջարմանդուխտը։ Լիպարիտ սպարապետը ավելի քան քսան տարի ծառայեց

---

65 Տե՛ս Микаелян Г., նշված աշխատ., էջ 472։

հայկական բանակում։ Սսի մոտ, կռիվներից մեկի թեժ պահին գետի կամուրջից անցնելով, նա անձնվիրաբար գրոհեց թշնամու վրա։ Այդ ժամանակ կամուրջի պաշտպանությունը ստանձնել էր Կոստանդին թագավորը։ Ոսոխին հաջողվեց աքցանի մեջ առնել Լիպարիտի փոքր ջոկատը։ Տեսնելով վաղահաս վտանգը, Լիպարիտը նահանջեց և ուղղվեց դեպի կամուրջը՝ չիմանալով, որ Կոստանդինը յուրայիններով լքել էր կամուրջը։ Կամուրջի մոտ անհավասար մարտում հերոսական մահով ընկավ անվանի զորավարը։ Նրա մասին ներբողներ են հյուսել Հովհաննես Թլկուրանցին[66] և Սարգիս Քերթողը։

Թշնամիների դեմ մղված մարտերում աչքի ընկավ նաև Հեթումը, որը գյուղացիական ջոկատների գլուխ անցած թշնամուն հարվածներ էր հասցնում և՛ թիկունքից, և՛ ճակատից։ Վերջինիս մահից հետո, նրա գործը շարունակեց և հերոսական մահով ընկավ նրա կինը՝ Ջարմանդուխտը[67]։

Թեև մամլուքները մտան Սիս, հրդեհեցին քաղաքը, սակայն չկարողանալով գրավել Սսի բերդը, ստիպված եղան նահանջել։ Շուտով երկրում բռնկվեց սով[68]։

Այդ արշավանքից հետո Կոստանդին Ե ձգտում էր խաղաղություն պահպանել Եգիպտոսի հետ, բայց նրան խանգարում էին լատին տարրերը՝ Մարիամ թագուհու գլխավորությամբ։ Վերջինս, 1371 թ. նոր պատվիրակություն ուղարկեց Պապի և Տարենտի իշխան Ֆիլիպի մոտ։ Գրիգոր ԺԱ պապը Ֆիլիպին հղած իր նամակում գրում է. «Մենք տեսնում ենք, որ բոլոր քրիստոնեական ժողովուրդները... ներքաշված են պատերազմների ջրապտույտի մեջ և հնարավորություն չունեն շտապ օգնություն ցույց տալ թագուհուն»[69]։

Թեև Կոստանդին Ե թագավորն անձնապես պետական ձեռներեց գործիչ չէր, սակայն նրա խուսանավելու քաղաքականությունը Եգիպտոսի նկատմամբ հեռատես էր։ Իմանալով նրա մտադրության մասին, հակառակորդները թույլ չտվեցին, որ նա հաշտության նոր պայմանագիր կնքեր Եգիպտոսի հետ։ Այնուհետև Կոստանդին Ե-ին մեղադրելով դավաճանության մեջ, ընդհանուր դժգոհության մթնոլորտում, ֆրանկասեր և լատինամոլ իշխանները 1373 թ. դավադրաբար սպանեցին նրան։ Նորից իրենց հույսերը դնելով Արևմտյան Եվրոպայի օգնության վրա, նրանք պատվիրակություն ուղարկեցին Կիպրոս՝ Լևոն Լուսինյանի մոտ, նրան հրավիրելու Սիս՝ գահը հանձնելու համար։ Մինչև վերջինիս գալը՝ ժամանակավոր իշխանության գլուխ կանգնեցրին Կոստանդին Դ-ի այրուն՝ Մարիամ թագուհուն[70]։

Լևոն Լուսինյանը թեև ծնվել էր Կիլիկիայում 1342 թ., բայց իր հորեղբոր՝ Գվիդոն Լուսինյանի սպանությունից հետո՝ 1345 թ. տեղափոխվել էր Կիպրոս։ Ինչպես նրա խոստովանահայր Հովհաննես Դարդելն է գրում, նա հավատարիմ կաթոլիկ և նվիրված զավակն էր Հռոմի եկեղեցու[71], Դրանով էլ

---

66 Տե՛ս Ղ. Ալիշան, *Հայապատում*, էջ 540, տե՛ս նաև Ակինեան Ն., *Քաջն Լիպարիտի պատմութիւնը տաղերու և գրույցներու մեջ*, «Հանդէս ամսօրեայ», 1933, էջ 129—138։

67 Տե՛ս *Микаелян Г.*, նշվ. աշխատ., էջ 482, տե՛ս Ղ. Ալիշան, *Հայապատում*, էջ 227։

68 Տե՛ս „Documents Arméniens", t. I, p. 718.

69 *Baronius*, Annales eccles, t. XXVI, p. 613.

70 Տե՛ս Հովհաննես Դարդել, *Ժամանակագրություն*, էջ 68։

71 Տե՛ս „Documents arméniens", p. 23.

պայմանավորված էին նրա հարաբերություններն Արևմտյան Եվրոպայի և պապականության հետ։ Մինչև Լևոնը Կիլիկիա կուղևորվեր, 1373 թ. ջենովացիները գրավում են Ֆամագուստան և Կիպրոսին ստիպում վճարել 40000 բյուզանդ ռազմատուգանք[72]։ Պատերազմում Կիպրոսի կրած պարտությունը և թուլացումը նպաստավոր էին Եգիպտոսի համար։

Լևոն Լուսինյանը նույնպես գերի էր ընկել ջենովացիների ձեռքը և ազատվել 9000 դուկատ փրկավճարով[73], Կիպրոսի թագուհի Էլեանորայի աջակցությամբ և եվրոպացի 100 զինվորների ուղեկցությամբ, շրջանցելով մամլուքների կողմից գրավված հողերը, նա գաղտագողի ուղևորվում է Սիս և հասնում այնտեղ 1374 թ. սեպտեմբերի 14-ին[74]։

Հայ իշխաններն ու հոգևորականները Պողոս կաթողիկոսի գլխավորությամբ պահանջեցին, որ Լևոնը թագավոր օծվի ըստ հայկական օրենքների և սովորության։ Լևոնը մերժեց այդ պահանջը։ Նա պատճառաբանեց, թե Կիլիկիան պաշարված է թշնամիներով, ուստի հարկավոր է օծվել կաթոլիկ ծիսակատարությամբ, որպեսզի հայերը վստահություն ներշնչեն եվրոպացիներին և դրանով էլ ապահովեն վերջիններիս օգնությունը։ Հայերը թեև պնդում են իրենց առաջարկը, սակայն երկկողմանի համաձայնության գալով, Լևոնին թագավոր են օծում նախ լատին ծիսակատարությամբ և ապա Պողոս կաթողիկոսի ձեռքով՝ հայկականով[75]։

Այդ դավանաբանական վեճերը հետագայում ավելի սուր բնույթ ստացան, երբ Լևոն Զ դիմեց Եվրոպայի օգնությանը և դրա փոխարեն խոստացավ կաթոլիկություն տարածել Կիլիկիայում։

1374 թ. աշնանը Լևոն Զ-ի թագավորության մեջ մտնում էին միայն Սիս քաղաքը, Անազարբա և Վահկա բերդերը ու Լեռնային Կիլիկիայի մի քանի մարզերը։

Կիլիկիան այդ ժամանակ շրջապատված էր մի կողմից՝ Թուրքմեն կարամանցիների, իսկ մյուս կողմից՝ Եգիպտոսի մամլուքների ու Հալեպի ամիրայի զորքերով։ Սսի վրա այդ զորքերի հարձակման նախօրեին երկրի տնտեսությունը և բնակչության սննդի գործը գտնվում էր շատ ծանր վիճակում։ Մոտ ութ տարի Սսի դաշտերը թշնամիների ասպատակությունների հետևանքով մնացել էին անմշակ[76]։

Հետևաբար Սսի բնակչությունը ենթարկված էր կրկնակի պատուհասի՝ մի կողմից թշնամին էր սպառնում ֆիզիկապես ոչնչացնել նրան, մյուս կողմից՝ սովը։ Սովի ճիրաններից փրկելու համար Լևոն Զ Թուրքմենների առաջնորդ՝ Դավուտ Բեկին համոզում է թույլ տալ դրսից սննդամթերք մուծելու Սիս, սակայն Լևոնի շուրջ համախմբված դավադիրները խանգարում են։ Վերջինները Դավուտ Բեկին հայտնում են Լևոն Զ-ի ինչ-որ «չար» մտադրության մասին։ Ուստի Թուրքմենները ձերբակալում են Լևոն Զ-ի դեսպաններին և խափանում Սսի մատակարարման գործը։ Հայերն ստիպված են լինում գիշերով

72 Տե՛ս Հովհաննես Դարդել, Ժամանակագրություն, էջ 75—78։

73 Տե՛ս նույն տեղում, էջ 82—84։

74 Տե՛ս նույն տեղում, էջ 92—99։

75 Տե՛ս նույն տեղում, էջ 114—115։

76 Տե՛ս նույն տեղում, էջ 115—117։

*հարձակվել թշնամու պահակախմբի վրա, ճանապարհ բացել և հնարավորություն ստեղծել մթերք բերելու Սիս։*

*Լևոն Զ-ի նախաձեռնությամբ հաշտություն է կնքվում Դավուտ Բեկի հետ[77]։ Սակայն մամլուքյան զորքերի հրամանատար Աբուբաքրը, որին սուլթանը 15000-անոց բանակով 1374 թ. ուղարկել էր Սիսը գրավելու, չհամաձայնեց հաշտություն կնքել և 1375 թ. հունվարին նորից պաշարեց Սիս մայրաքաղաքը և պահանջեց ռազմական տուրք։ Հայերը թշնամու գերազանցող ուժերին դիմադրում են խիզախորեն, բայց երկար դիմանալ չեն կարողանում։ 1375 թ. փետրվարին, թշնամու ուժերը համալրվում են Հալեպի Իշիկ Թեմուր էմիրի 15000-անոց բանակով, որոնք միասին փետրվարի 24-ին գրավում են Սիսը[78]։*

*Դրսից ոչ մի օգնություն չստանալով հայերը չեն կարողանում պահել քաղաքը, հրկիզում են այն և քաշվում Սսի վերին ամրոցը, որը ամրացված էր աշտարակներով և հանդիսանում էր քաղաքի անառիկ միջնաբերդը։ Թշնամիների մի քանի գրոհները ավարտվում են անհաջողությամբ։ Գրոհներից մեկի ժամանակ վիրավորվում է Լևոն Զ։ Ֆրանսիացի վարձկան զինվորները, հրապուրվելով թշնամու առաջարկած ոսկու կաշառքից, որոշում են հանձնել միջնաբերդը։ Հայերը, սակայն, հարձակվում են թշնամու վրա, նորից գրավում աշտարակը և պատժում դավաճաններին[79]։ Երկար մաքառումից հետո, ռազմամթերքի և սննդամթերքի պակասը բերդի անվեհեր պաշտպաններին ստիպում է 1375 թ. ապրիլի 16-ին հանձնել միջնաբերդը[80]։*

*Իր և իր ընտանիքի համար Հալեպի ամիրից ստանալով կյանքի ապահովության երաշխավորություն, Լևոն Զ հանձնվեց։ Գերի վերցվածների թըվում էին Պողոս կաթողիկոսը, Մարիամ թագուհին և այլ մեծամեծներ։ Հալեպի ամիր Իշիկ-Թեմուրի ուղեկցությամբ գերվածները տարվում են Կահիրե[81]։*

*Արաբ պատմագիրները մեծ ուրախությամբ են արձանագրում Սսի անկման լուրը։ Հայ պատմիչները իրավացիորեն այդ դեպքը դիտում են որպես հայ պետականության վախճան[82]։*

*Լևոն Լուսինյանը Իշիկ-Թեմուրի ուղեկցությամբ հասնում է Կահիրե և երկու շաբաթ հետո ներկայացվում Եգիպտոսի սուլթանին։ Սուլթանը ազատ է արձակում գերիներին, այդ թվում Լևոնին և Պողոս կաթողիկոսին։ Կաթողիկոսին և մյուս իշխաններին թույլ տրվեց վերադառնալ Սիս, իսկ Լևոն Զ-ին արգելվեց դուրս գալ Կահիրեից։ Լևոնը այնտեղից շարունակ դիմումներ էր գրում պապին և արևմուտքի թագավորներին՝ խնդրելով վերջիններիս միջնորդությունը՝ իր ազատության և գահի վերականգնման համար։ Ի վերոհուսալքված, նա իր խոստովանահայր Հովհաննես Դարդելին ուղարկում է Եվրոպա։ Վերջինիս հաջողվում է համոզել Կաստիլիայի թագավորին՝ նվերնե-*

77 *Տե՛ս նույն տեղում, էջ 116—117։*

78 *Տե՛ս նույն տեղում, էջ 121—122։*

79 *Տե՛ս* „Documents arméniens", t. II, p. 76—78.

80 *Տե՛ս նույն տեղում։*

81 *Տե՛ս նույն տեղում։*

82 *Տե՛ս նույն տեղում։*

րով դեսպաններ ուղարկելու Եգիպտոսի սուլթանի մոտ։ Սուլթանն ընդունում է նվերները, ազատ արձակում Լևոն Զ-ին, որը 1382 թ. Հռոդոս կղզու վրայով հասնում է Եվրոպա։

Լևոն Զ մոտավորապես 11 տարի շրջագայեց եվրոպական երկրներում՝ խնդրելով նոր խաչակրաց արշավանք կազմակերպել Եգիպտոսի դեմ։ Ջեռնունայն վերադառնալով Փարիզ, հուսահատ վիճակում 1393 թ. նոյեմբերի 29-ին վախճանվեց և թաղվեց այնտեղ[83]։

Ինչպես տեսանք, 1375 թ. ապրիլին Սիս քաղաքն իր շրջապատով անցավ եգիպտական մամլուքների գերիշխանության տակ։

Աղբյուրները կցկտուր տեղեկություններ են հաղորդում Կիլիկիայում տեղի ունեցող հետագա դեպքերի մասին։ Այնուամենայնիվ այդ հաղորդումներից հայտնի է դառնում, որ 1375—1376 թվականներին Եգիպտոսի սուլթանի կողմից, որպես Սսի կառավարիչ նշանակված է եղել ոմն Եագուպ՝ Հակոբ Շահամիրա անունով[84]։

Սակայն հայերը, չհաշտվելով երկրում ստեղծված իրադրության հետ, առանձին շրջաններում՝ հատկապես Լեռնային Կիլիկիայում շարունակում են պայքարը թշնամու դեմ։

1375—1424 թթ., որպես երկրի կառավարիչ հիշատակվում է Կոստանդին Դ թագավորի թոռ՝ Կոստանդին իշխան զորավարի անունը[85]։

Լեռնային Կիլիկիայի առանձին վայրերում իրենց անկախ իշխանությունները շարունակում էին պահպանել մի շարք հայ իշխաններ, որոնցից հիշատակվում են Օշինի որդի Թորոսը[86], Ստեփանոս իշխանը[87], Կոստանդին Դ-ի թոռան որդին՝ Թորոսը (մահացած 1425 թվականի օգոստոսի 9-ին)[88] և Կարապետ՝ Սսի իշխան (1402 թ.)՝ նույնպես Կոստանդին Դ թագավորի թոռներից[89]։

Այսպիսով, Կիլիկյան հայկական թագավորության անկումից հետո (1375), մոտավորապես 50 տարի, հայերը թեև կարողացան պաշտպանել իրենց ինքնուրույն գոյությունը, սակայն նեղվելով թուրքմենների և մամլուքների միջև մղվող պատերազմներից և դրանց հետևանքով ստեղծված ծանր դրությունից, ստիպված թողեցին իրենց երկիրը և գնացին «Ֆրանկստան»՝ Կիպրոս, Հռոդոս, Իտալիա, Ֆրանսիա և այլ երկրներ։ Իր անտիպ ժամանակագրության մեջ Մաղաքիա դպիրը 1402 թ. ներքո գրում է. «Ի սոյն ժամանակի որ յետ բառնալոյ թագաւորութեան հայոց ի Սսոյ ժողովեցան թագաւորազունք և իշխանք և բազումք ի ժողովրդոց, մտեալ ի նաւ գնացին ի Ֆրանկըստան»[90]։ Երկու տարի անց, 1404 թ. ներքո Կիլիկիայի ժամանակագիրը հաղորդում է. «Մեծ ժողով եղեւ Կիլիկեցոցն ի դուռն Կարապետ կաթողիկոսին,

---

83 Տե՛ս Հովհաննես Դարդել, Ժամանակագրություն, էջ 125—135։

84 Տե՛ս Rüdt-Collenberg W., նշված աշխատ., էջ 75։

85 Տե՛ս Rüdt-Collenberg W., էջ 77, Սամուել Անեցի, էջ 170, Ալպոյաճյան Ա., Պատմութիւն հայ գաղթականութեան, Կահիրէ, 1955, հատ. II, էջ 555։

86 Տե՛ս Rüdt-Collenberg W., p. 77.

87 Տե՛ս նույն տեղում։

88 Տե՛ս նույն տեղում, էջ 79ա, տե՛ս նաև Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 261։

89 Տե՛ս Rüdt-Collenberg W., էջ 79։

90 Rüdt-Collenberg W., էջ 79ա, տե՛ս նաև Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 542։

որ վասն գալստեան Ռամազանին և այլ պատերազմաց ձանձր
թենէ; և տեսեալ զաւերումն իւրեանց երկրին և զօրանալն անհ
յայնկոյս ծովուն, տուեալ ԼՌ (30000)... Երեքշաբթի գնաց պա
թոռն Կոստանդին թագաւորին, և չորեքշաբթի գնաց պարոն
ցունքն նոցա Յովհաննէս և Վահան, Գրիգոր և Ստեփանոս
մեծատանց և յիշխանաց և ի պարոնաց և ի թագաւորի ցեղի
կին, ոչ արու և ոչ էգ, համայնքն իւրաքանչիւր ցեղիս և ազ
ցին (իմա՝ քոչեցին)։ Եւ յետ երթալոյն իշխանացն և մեծատա
ցեալ աղքատք և չքաւորք որ ոչ ունէին զկարողութիւն փախչե
յունիսի վեցն»[91]։

Ներքին երկպառակություններից ու պայքարից, գա
կողմնորոշման անպտուղ վեճերից թուլացած Կիլիկյան հայկ
նը, շրջապատված մահմեդական պետություններով և իշխա
մշտապես ենթակա նրանց դաժան հարվածներին, XIV դարո
օգնություն չստանալով դաշնակից և այդ ժամանակ կործա
պետությունից, ինչպես և խոստումնառատ, բայց և սեփակա
մուտ Եվրոպայից, տնտեսապես, քայքայված քաղաքական
հարկադրված էր մեն-մենակ մաքառել եգիպտական մա
մանյան թուրքմենների և նրանց դաշնակիցների դեմ, և որ
ու հերոսական լիներ նրա ինքնապահպանման գոյամարտը
ները հյուծվեցին, թուլացան, մաշվեցին և հարկադրված
ստոխների մի քանի անգամ գերակշիռ ուժերի առջև։

Հիմնված լինելով Միջերկրականի ափին, Ասիայի և
նագծի վրա, ռազմա-առևտրական ճանապարհների խաչաձ
լիկիայի հայկական պետությունը աչքի ընկնող տնտեսակ
մշակութային զարգացում ապրեց, ծավալուն կապեր
թյուններ ստեղծեց Եվրոպայի և Ասիայի շատ երկրների
մեծ դեր խաղաց հայ ժողովրդի դարավոր պատմության
գոյությունը, այն ժամանակ, երբ մայր հայրենիքում հա
զրկված էին պետականությունից, հայ ժողովրդի անկա
շինարար գործունեության փառավոր ապացույցը և հաստ

Կիլիկիայի հայկական թագավորության անկմամբ
վրդի պետական գոյության նաև այս նշանավոր էջը։ Հ
պես բուն Հայաստանում, նույնպես և Կիլիկիայում երկ
ընկավ օտարի լուծը, տնտեսական, քաղաքական և մշ
անկումը։

91 Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 542։

որ վասն գալստեան Ռամազանին և այլ պատերազմաց ձանձրացեալ ի նեղութենէ, և տեսեալ զաւերումն իւրեանց երկրին և զօրանալն անհաւատից, անցան յայնկոյս ծովուն, տունս ԼՌ (30000)... Երեքշաբթի գնաց պարոն Կարապետն թոռն Կոստանդին Թագաւորին, և չորեքշաբթի գնաց պարոն Ասլպեկն և իրիցունքն նոցա Յովհաննէս և Վահան, Գրիգոր և Ստեփաննոս և ոչ ոք մնաց ի մեծատանց և յիշխանաց և ի պարոնաց և ի թագաւորի ցեղիցն. ոչ այր և ոչ կին, ոչ արու և ոչ էգ, համայնքն իւրաքանչիւր ցեղիս և ազգականօքն կոչեցին (իմա՝ քոչեցին)։ Եւ յետ երթալոյն իշխանացն և մեծատանցն ի Սիս մնացեալ աղքատք և չքաւորք որ ոչ ունէին զկարողութիւն փախչելոյ՝ եառուն զՍիս, յունիսի վեց»[91]։

Ներքին երկպառակություններից ու պայքարից, դավանաբանական և կողմնորոշման անպտուղ վեճերից թուլացած Կիլիկյան հայկական պետությունը, շրջապատված մահմեդական պետություններով և իշխանություններով ու մշտապես ենթակա նրանց դաժան հարվածներին, XIV դարում ոչ մի իրական օգնություն չստանալով դաշնակից և այդ ժամանակ կործանվող մոնղոլական պետությունից, ինչպես և խոստումնառատ, բայց և սեփական շահերին հետամուտ Եվրոպայից, տնտեսապես, քայքայված քաղաքականապես բզկտված, հարկադրված էր մեն-մենակ մաքառել եգիպտական մամլուքների, կարամանյան թուրքմենների և նրանց դաշնակիցների դեմ, և որքան էլ երկարատև ու հերոսական լիներ նրա ինքնապաշտպանման գոյամարտը, նրա պաշտպանները հյուծվեցին, թուլացան, մաշվեցին և հարկադրված եղան տեղի տալ ոսոխների մի քանի անգամ գերակշիռ ուժերի առջև։

Հիմնված լինելով Միջերկրականի ափին, Ասիայի և Եվրոպայի սահմանագծի վրա, ռազմա-առևտրական ճանապարհների խաչաձևման վայրում, Կիլիկիայի հայկական պետությունը աչքի ընկնող տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացում ապրեց, ծավալուն կապեր և փոխհարաբերություններ ստեղծեց Եվրոպայի և Ասիայի շատ երկրների հետ և քաղաքական մեծ դեր խաղաց հայ ժողովրդի դարավոր պատմության մեջ։ Նրա 300-ամյա գոյությունը, այն ժամանակ, երբ մայր հայրենիքում հայերը մեծ մասամբ զրկված էին պետականությունից, հայ ժողովրդի անկախության ձգտման և շինարար գործունեության փառավոր ապացույցը և հաստատումը եղավ։

Կիլիկիայի հայկական թագավորության անկմամբ փակվեց հայ ժողովրդի պետական գոյության նաև այս նշանավոր էջը։ Հայ ժողովրդին, ինչպես բուն Հայաստանում, նույնպես և Կիլիկիայում երկար դարերով բաժին ընկավ օտարի լուծը, տնտեսական, քաղաքական և մշակութային դարավոր անկումը։

---

91 Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 542։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

# ԴՊՐՈՑՆ ՈՒ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ

*XII—XIV դարերում, ինչպես և նախկինում, գործում են հասարակական և մասնավոր դպրոցներ։ Կրթական գործը նկատելիորեն ընդարձակվել էր։ Սմբատ Սպարապետի Դատաստանագրքում նշվում է, որ նախնական ուսումնառությունը պետք է լիներ ձրի և շատերին մատչելի։ «Կու հրամայէ օրէնքս, որ բնաւ վարդապետ վարձ չառնու վասն գրոց կարդալոյ կամ այլ գիտութեան եկեղեցոյ ուսմանց, իսկի չէ պատեհ վարձ առնուլ և ապա ուսուցնել։ Ապա կու հրամայէ օրենքս զորբերն և զտառապելքն ստածել և խնամել և անուշացնել ի գործ, որ շատք դիմեն ու գան ի յուսումն»*[1]*։*

*Զարգանում են նախորդ դարերում ստեղծված բարձրագույն տիպի կրթական կենտրոնները՝ վարդապետարանները, հիմնադրվում են նորերը՝ թե բուն Հայաստանում, և թե, մանավանդ, Կիլիկիայում։ Հանդես են գալիս անվանի ուսուցիչներ և ուսուցչապետներ, որոնց ջանքերով վարդապետարաններն ու համալսարանները վերաճում են գիտության կաճառների։ Այս ժամանակաշրջանում առավել քան ընդգծվում են ուսումնագիտական կենտրոնների ու համալսարանների հասարակական դերն ու նշանակությունը։*

## 1. ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՍՈՒՄՆԱԳԻՏԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆՆԵՐԸ

*Անիի բարձրագույն կրթական օջախներից Հովհաննես Իմաստասերի գլխավորած վարդապետարանը նոր՝ արտակարգ ծաղկում է ապրում XII դարում։*

*Ուսումնագիտական այս կաճառում իբրև դասընթացներ կարդացվել են մատենագրություն, պատմագրություն, ուսումնագիտական երկերի մեկնության արվեստ («վարդապետական վերլուծութիւն»), քերականություն, տոմարագիտություն, աստղաբաշխություն, երկրաչափություն, թվաբանություն և երաժշտություն։*

*Անիի վարդապետարանը, Հովհաննես Իմաստասերի ուսուցչապետության ժամանակաշրջանում, տվել է բազում շրջանավարտներ («բարունակք յոք-*

---

1 *Смбат Спарапет*, Судебник, стр. 76—77.

նապտուղք»), որոնք աշխատանքի էին մեկնում Հայաստանի տարբեր գավառները[2]։

Հովհաննես Իմաստասերն ընդհանրացրեց և սիստեմի բերեց վարդապետների ուսումնական ծրագիրը։ Նա «ստուգված» կամ հանձնարարելի գրքերի ցուցակ կազմեց, որը մեր բանասիրության մեջ հայտնի է «Սարկավագյան մատենացանկ» անունով։ Այդ ցանկում, բացի Հին ու Նոր կտակարաններից և աստվածաբանական մատյաններից, ընդգրկված էին նաև փիլիսոփայության, տրամաբանության, ճարտասանության ու քերականության ուսուցմանը վերաբերող գործեր։ Հովհաննես Իմաստասերը դպրությունն ու գիտությունը հարստացրեց երևույթների ու իրողությունների հետազոտման՝ փորձաքննական մեթոդով, պնդելով, որ «փորձն է հաստատուն և աներկբայ»։

Սա, անշուշտ, հեղաշրջող տեսություն էր միջնադարի համար։ Մեծ արժեք ու նշանակություն ուներ նաև նրա մի այլ եզրակացությունը, ըստ որի բավական չէ նվաճումների յուրացումը, պետք է կարողանալ զարգացնել դրանք. «ոչ է պարտ միայն հնագիտակ լինել, այլև ինքնբաւ՝ ըստ շնորհացն Աստուծոյ»[3]։ Դա, ըստ էության, գիտությունը առաջ մղող նոր մեթոդի առաջադրումն էր։

Անիի ուսումնագիտական կենտրոնների ուսուցչապետները ոչ միայն ուսուցանել են ճշգրիտ գիտություններ, այլև իրենք թարգմանել, մանավանդ հեղինակել են երկեր՝ տոմարագիտության, աստղաբաշխության, երկրաչափության, թվաբանության ու մաթեմատիկայի վերաբերյալ։ Անիի ուսումնագիտական կենտրոնները հարստացրել են հայոց մատենագրությունը նաև պատմագրական, փիլիսոփայական և քերականական երկերով ու չափածո արվեստի նմուշներով։

**Այրիվանքի ուսումնագիտական կենտրոնը** XII դարում սկսում է աշխուժանալ, իսկ XIII դարում ապրում է նշանակալից զարգացում. ունեցել է հարուստ մատենադարան։ XIII դարում այս կենտրոնը գլխավորում էր նախ Հովհաննես Գառնեցին, ապա Մխիթար Այրիվանեցին։ Գառնեցուց հայտնի են բարոյա-դաստիարակչական շուրջ 150 խրատներ։ Նա ունի նաև աստվածաբանական բնույթի երկեր։

Մխիթար Այրիվանեցին նոր բարձունքի է հասցնում Այրիվանքի ուսումնագիտական կենտրոնը, համալրում՝ վարդապետական դասընթացները։ Նրա մանկավարժական հմտության առհավատչյան է մի մեծարժեք և ստվարածավալ ճառընտիր։ Սույն ձեռնարկ-ժողովածուն իրագործվել է ըստ Հովհաննես Իմաստասերի մատենացանկի։ Մխիթար Այրիվանեցին 170 օրվա ընթացքում համալրել է «լայն գրեանք» և «նուրբ գրեանք» անուններով հայտնի այն բոլոր աշխատությունները, որոնք միջնադարում վարդապետական ուսումնառության հիմք ու ծրագիր են հանդիսացել։

**Սանահինի ուսումնագիտական կենտրոնում** գործել են ականավոր ուսուցչապետներ ու մատենագիրներ, որոնցից էր Գրիգոր Տուտեորդին (XII դ.)։ Կիրակոս Գանձակեցին նրան բնութագրում է իբրև «այր երևելի»[4]։ Նրա հեղի-

---

2 Գարեգին Ա կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 336—337։

3 Ղ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց հայոց, հատ. Բ, էջ 262։

4 Կիրակոս Գանձակեցի, էջ 90։

*նակությունը ճանաչված էր նաև Կիլիկիայի արքունիքում և կաթողիկոսարանում։ XIII դ. Սանահինի ուսուցչապետների մեջ կարկառուն դեմք հանդիսացավ Աբասի որդի Գրիգորը։ Միանգամայն ճիշտ ըմբռնելով, որ «գիտութիւն գրոց ծով է անեզր և անհաս և չիք զբաւանդակն իմանալ ումեք ըստ արժանւոյն, այլ զսակաւս ի բազմացն»[5], նա տվեց «լայն» և «նուրբ» երկերի մատենագիտական տեսությունը՝ նրանցից յուրաքանչյուրի ստեղծման հակիրճ պատմությամբ։ Այս աշխատությունը մեր բանասիրության մեջ հայտնի է «Պատճառաց գիրք» խորագրով։ Սա աստվածաբանության, եկեղեցու հայրերի գործունեության պատմության, փիլիսոփայության, քերականության ու ճարտասանության վերաբերյալ ներածական բնույթի տեսական աշխատություն է։ «Պատճառաց գիրքը» դասագրքի նշանակություն ուներ բարձրագույն ուսումնառության համար։ Պատահական չէ, որ այն գնահատվել է որպես «բովանդակ» հայ մատենագրության մեջ եզակի երևույթ»[6]։*

*Սանահնում նշանակալի բարձրության է հասնում գրչության արվեստը։*

**Հաղբատի ուսումնագիտական կենտրոնը** *XII—XIV դարերում մեծ հեղինակություն էր վայելում։ Լևոն Գ թագավորը, «մայրավանք» Հաղբատը մեծարում էր արքայական նվերներով, հոգում էր նրա նյութական ծախսերը և այնտեղ էր առաքում «հազվագյուտ» գրչագրեր[7]։*

*Հաղբատի դպրոցում էր կրթվել և մեծանուն գիտնականի հմտություն ձեռք բերել Հովհաննես Իմաստասերը։*

*«...սնեալ և դաստիարակեալ առ սրբասնունդ քեռւոյն իւրոյ ի վանսն Հաղբատ...։ Յառաջագոյն տուաւ ի վարժս երաժշտական հոգևոր ուսմանց»,— վկայում է վարքագիրը[8]։ Հաղբատի դպրոցի նախկին սանն այնտեղ դասախոսություններ է կարդացել ճշգրիտ գիտությունների, մասնավորապես՝ տոմարագիտության, մաթեմատիկայի, աստղաբաշխության ու երաժշտության վերաբերյալ։*

*Դավիթ Քոբայրեցին նույնպես Հաղբատի ականավոր ուսուցչապետներից էր։ Նա մեր մատենագրության մեջ հայտնի է առավելապես որպես մեկնիչ և ճարտասանական արվեստի տեսաբան։ Կիրակոս Գանձակեցին Հաղբատի գիտուն և «երևելի» ուսումնականների շարքում հիշատակում է նաև Իգնատիոսին ու Վարդանին։*

*Երկար ժամանակ այստեղ ուսուցչապետություն է արել նաև իրավաբան Դավիթ Ալավկաորդին, որին Կիրակոս Գանձակեցին «սուրբ լուսավորիչ» է կոչում, հիշելով նրա «Կանոնական օրինադրությունները» ժողովածուն[9]։ Այս հուշարձանի արժանիքը գերազանցապես կայանում է XII դարի հայ հասարակական կյանքի, բարքերի ու սովորույթների արտացոլման մեջ։ 1106—1113*

---

5 *Մատենադարան, ձեռագիր № 1879, թերթ 3ա։*

6 Հ. Տաշյան, Հ. Գաբրիելյան, *Սրբազան պատարագամատոյց հայոց, էջ 177—178։*

7 Հ. Ոսկյան. *Գուգարքի վանքերը, էջ 285։*

8 Գարեգին Ա կաթողիկոս, *Յիշատակարանք ձեռագրաց, էջ 335։*

9 Կիրակոս Գանձակեցի, *էջ 116։*

թվականների մի հիշատակության մեջ ասված է. «Էր և յարևելս Սարկաւագ վարդապետն Հաղբատացին և անուանին Դաւիթ որդին Ալլաւկայ. և այլք»։

Վարդան Արևելցին ևս դասախոսություններ է կարդացել Հաղբատում և մեկնություններ գրել այնտեղ։ Նշանավոր պատմիչ, մատենագիր, աստվածաբան լինելով հանդերձ, նա եղել է նաև դպրության տեսաբան ու քերական։ Հաղբատում, ի շարս այլ առարկաների, նա կարդացել է հայ դպրության առաջացման ու զարգացման տեսություն։



Հաղբատի աղբյուրը

Հաղբատի ուսուցչապետներից էր Հովհաննես Երզնկացին (Պլուզը)՝ Վարդան Արևելցու ամենաշնորհալի աշակերտներից մեկը՝ հայտնի իբրև քերական, փիլիսոփա, խրատաբան և բանաստեղծ։ Նրա գիտական-մանկավարժական հեղինակությունը կարճ ժամանակում լայն ճանաչում է գտնում։ Հաղբատում նա դասավանդել է իմաստասիրություն, բնագիտություն, աստղաբաշխություն, տոմարագիտություն, քերականություն,

Այս շրջանում ևս Հաղբատի ուսումնագիտական կենտրոնը մեծ հռչակ ու հեղինակություն էր վայելում գրչության արվեստի իր բարձր մակարդակով։

Հաղարծինի ուսումնագիտական կենտրոնը XIII դարում հիշատակվում է առաջատար մշակութային օջախների շարքում։ Այդ կենտրոնը հիշում են Կիլիկիայի կաթողիկոս Կոստանդին Ա Բարձրբերդցին՝ իր շրջաբերականում[10], Ստ. Օրբելյանը[11] և ուրիշներ։ Հաղարծինն առանձին փայլ և հռչակ է ձեռք բերում Խաչատուր Տարոնեցու ուսուցչապետության ժամանակ[12]։

Նոր Գետիկի կամ Գոշավանքի վարդապետարանն իր ծաղկումն ապրում է XII—XIII դարերում, խոշոր իրավաբան, գիտնական, մատենագիր և ուսուցչապետ Մխիթար Գոշի օրոք։ Վերջինս իր վարդապետարանը նախ հաստատում է Կարին քաղաքում, այնուհետև փոխադրում Գանձակ։ Շուտով նրա շուրջն են համախմբվում շատ աշակերտներ։ Սակայն Գանձակում նրա գործունեությունը խափանվում է, և նա մեկնում է Արցախ՝ ապաստանելով Հաթերքի իշխան Վախթանգի մոտ։ Այստեղից էլ տեղափոխվում է Գետիկ վանքը, որը 1191 թ. երկրաշարժի պատճառով ավերվում է։ Զաքարե իշխանի օժանդակությամբ, Մխիթար Գոշը մերձակա Տանձուտ ձորում հիմնադրում է Նոր Գետիկի վարդապետարանը, որը հետագայում կոչվում է Գոշավանք։ Մխիթար Գոշի հեղինակությունը լայն ճանաչում է գտնում՝ «Եւ էլ համբաւ իմաստութեան նորա ընդ ամենայն աշխարհս. և բազումք աշակերտէին նմա յուսումն վարդապետութեանն»[13]։ Այստեղ են ուսում ստացել մեր դպրության կարկառուն ներկայացուցիչներ Վանականը, Կիրակոս Գանձակեցին և ուրիշներ։ Գոշավանքը բարձրագույն տիպի ուսումնական կենտրոն էր և իր սաներին հասցնում էր «գիտնականի» մակարդակի։ Վանականի մասին ասված է. «...և եմուտ յաշակերտութիւն մեծափառ վարդապետին Գոշին Մխիթարայ. և ուսաւ ի նմանէ զամենայն մեկնութիւնս հին և նոր կտակարանաց աստուածային գրոց. և եղեալ գիտնական՝ արժանացաւ մեծագոյն աստիճանի վարդապետութեանն»[14]։

Գոշավանքը նաև գրչության արվեստի օջախ էր։ Կիրակոս Գանձակեցին հայտնում է, որ Մխիթար Գոշին հաջորդած ուսուցչապետ Մարտիրոսը «շինեաց և գրատուն մի գեղեցկաշէն յարկօք՝ արուեստաւոր ունելով զհիւսն Մխիթար»[15]։ Այստեղ մանրանկարներով ու ծաղկազարդումներով հարուստ բազմաթիվ գրչագրեր են ստեղծվել ու բազմացվել։

XIII դարի առաջին կեսում ծաղկում և մեծ հռչակ է ձեռք բերում նաև Խորանաշատի վարդապետարանը։ Ուսումնագիտական այս կենտրոնը փաստորեն ծնունդ է Գոշավանքի, քանի որ նրա հիմնադիր Հովհաննես Վանական վարդապետը ուսանել էր Գոշավանքում։

---

10 Կիրակոս Գանձակեցի, էջ 319։
11 Ստ. Օրբելյան, էջ 342։
12 Կիրակոս Գանձակեցի, էջ 211։
13 Նույն տեղում, էջ 209։
14 Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 463։
15 Կիրակոս Գանձակեցի, էջ 222։

Առաջին տարիներին Հովհաննես Վանականի դպրոցը գտնվելիս է եղել Երգևվան բերդի հանդիպակաց վանքում։ Սակայն շուտով այն ավերում են սուլթան Ջալալեդդինի զորքերը, ուստի Վանականն, իր աշակերտների հետ միասին՝ «բազում» գրչագրերով ապաստան է գտնում Տավուշ բերդի մոտ՝ բարձր ժայռի կատարին իր նախաձեռնությամբ փորած քարայրներում (այստեղից՝ նրա Տավուշեցի մականունը)։

Ժամանակի ուսումնականները հավաստում են, որ Հովհաննես Վանականը գիտելիքների լայն ընդգրկումների և ստեղծագործական մեծ կարողությունների տեր («...Ծննդական մտօք և յարմար բանիւք») անձնավորություն է եղել, իսկ մանկավարժական հմտությամբ գերազանցել է իր ժամանակակիցներին։ Վարդան Արևելցին նրան բնութագրում է իբրև «համբաւատենչ և արդիւնական» գիտնականի ու «փառասէրեալ» հեղինակություն։ Վանականը պատկառանք է ազդել ոչ միայն գիտական իմացությամբ, այլև իր վարքագծով։ «...Բազումք դեգերէին առ նա ուսման աղագաւ ո՛չ միայն վարդապետական բանի,— վկայում է Կիրակոս Գանձակեցին,— այլ ամենայն կեանք նորա և շարժումն անգիր օրէնք էին տեսողացն։ Եւ զայս ո՛չ թէ ականջալուր միայն ասեմ, այլ և ականատես, զի բազում ժամանակս կացաք առ նմա ի վարժս կրթութեանն»[16]։ Այս նշանավոր ուսուցչապետի վարքը տեղ է գտել «Հայսմավուրքում», ուր նա բնութագրվում է իբրև «...ժուժկալ և անձանձիր ուսուցանող...»։

Խորանաշատի վարդապետարանում առանձնապես զարգացել է պատմագիտությունը։ Ինքը՝ Վանական վարդապետը գրել է «Նետողաց ազգի» (իմա մոնղոլների) շուրջ 30-ամյա պատմությունը, որը դժբախտաբար մեզ չի հասել. պահպանվել են նրա աշակերտների՝ Կիրակոս Գանձակեցու, Վարդան Արևելցու և Գրիգոր Ակներցու պատմագրական երկերը։

Իր հիմնադրի և ուսուցչի՝ Վանականի մահով (1251 թ.) Խորանաշատի կենտրոնը մարեց։

**Կայենաձորի և Խորվիրապի** վարդապետարաններն աչքի են ընկնում Վարդան Արևելցու ուսուցչապետության ժամանակաշրջանում։ Ի դեպ, Վարդան Արևելցու դպրոցը համարյա շարժական բնույթ է ունեցել՝ Խորվիրապ, Հաղբատ, Սաղմոսավանք, Թեղենյաց մենաստան, Աղջոնց վանք և նորից Խորվիրապ։ Վարդան Արևելցին հեղինակել է պատմագրական մի շարք աշխատություններ, որոնք մեծ արժեք են ներկայացնում։

Վարդան Արևելցու մոտ՝ Խորվիրապում սովորել են շուրջ 40 աշակերտներ։ Չհաշված նախակրթական («քահանայական») երեք տարիները, ուսումնառությունը տևել է վեց տարի, որը համապատասխանում էր բարձրագույն կրթության դասընթացներին։ Այս դպրոցի ծրագրի մեջ մտնում էր ոչ միայն աստվածաբանական գրականություն, այլև հունական անտիկ փիլիսոփաների, տրամաբանների, ճարտասանների, քերականների աշխատությունների և դրանց շուրջ գրված մեկնողական երկերի խորաքնին ուսուցումը։

---

16 Նույն տեղում, էջ 218։

Այս դպրոցի ականավոր սաներից են Գևորգ Սկևռացին, Հովհաննես Երզնկացին, Ներսես Մշեցին և Գրիգոր Բալուեցին։ Առանձնապես նշանակալից դեր են կատարել առաջին երեքը։ Ներսես Մշեցին, հետագայում, փոխարինելով իր ուսուցչապետին, ղեկավարում է Վարդան Արևելցու դպրոցը՝ բարձրացնելով այն նոր մակարդակի։

Կեչառույքի (այժմ Ծաղկաձոր) վանքն սկզբնապես գտնվել է Պահլավունիների, ապա Խաղբակյան-Պռոշյանների տիրույթում։

XII—XIII դարերում վանքը մեծ համբավ էր ձեռք բերել։ Նրա երևելի ուսուցչապետներն են եղել Գրիգոր Մոնոնիկը, Ներսեսը, Մխիթարը, Թադեոսը, Աթանասը և մանավանդ մատենագիր ու բանաստեղծ Խաչատուր Կեչառեցին։ Ստեփանոս Օրբելյանը հավաստում է, որ Խաչատուր Կեչառեցին «անյաղթ հռետոր», «քանիբուն» և համրաճանաչ գիտնական էր[17]։ Կեչառույքի ուսումնագիտական կենտրոնի փայլը խամրում է իր այս մեծահամբավ ուսուցչապետի մահվամբ։

Գլաձորի համալսարանը ուշագրավ երևույթ էր միջնադարի ուսումնագիտական կենտրոնների շարքում։

Վարդան Արևելցու մահից հետո նրա երբեմնի շնորհալի աշակերտ Ներսես Մշեցին[18] 1280-ական թվականներին վերակառուցում է նրա դպրոցը՝ հիմնելով Աղբերց վանք ուսումնագիտական կենտրոնը, որը հետագայում՝ Եսայի Նչեցու օրոք, վերաճում է համալսարանի՝ անվանվելով Գլաձորի համալսարան։

Հենց առաջին տարիներից էլ դրսևորվում են Եսայի Նչեցու կազմակերպչական և իմացական արտակարգ ընդունակությունները։ Նրա հեղինակությունն ու համբավն արագ տարածվում է ինչպես Արևելյան Հայաստանում, այնպես էլ Կիլիկյան հայկական թագավորության սահմաններում։

Գլաձորի համալսարանը շատ բանով գերազանցեց ինչպես բուն Հայաստանի, այնպես և Կիլիկիայի ուսումնագիտական բոլոր կենտրոններին։ Այն լիովին համապատասխանում էր միջնադարում ծնունդ առած մտավոր համալսարանական (universitas) հաստատություններին։ Հատկանշական է, որ Գլաձորի համալսարանը, ժամանակակից ուսումնականների գնահատմամբ, բնութագրվել է «երկրորդ Աթենք», «իմաստության մայրաքաղաք», «իմաստության գահ» և այլ որակումներով։

Գլաձորի համալսարանի սան Հակոբ Թագորցին պատկառանքով գրում է. «...Համարձակիմ զսա կոչել երկրորդ Աթենք և մայրաքաղաք ամենայն իմաստից»։ Մխիթար Երզնկացին Գլաձորի համալսարանը բնութագրում է իբրև «մայր իմաստության»[19] և «իմաստության տուն»[20]։

---

17 «Ողբք և Հառաչանք», էջ 30։

18 «Յայսմաւուրք», էջ 358։

19 Ղ. Ալիշան. Սիսական, էջ 133։ Ի դեպ «Երկրորդ Աթենք» անվանումը ամենևին էլ պատահական չէ, որքանով առնչվում է վաղ միջնադարի հռոմեական կրթական սիստեմի ուսումնական բարձրագույն դպրոցների հետ, որոնք կոչվել են «Աթենական հաստատություններ»։

20 «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», էջ 104։

Ձեռագրական առաջին աղբյուրը, որ բնութագրում է Գլաձորի դպրոցն իբրև համալսարան, 1321 թվականից է. «...Ի վարժապետութեան սուրբ և բազմերջանիկ քաջ հռետորաց հայոց երկուց ամոլաց ճշմարիտ հաւատոց մեբոց՝ Դաւթի և Եսայեայի, ի հռչակաւոր և սուրբ մենաստան համալսարանիս Գլաձորոյ...», գրում է Կիւրեղ ռաբունապետը[21]։

Գլաձորի համալսարանի մասին խոսում է նաև մատենագիր Հովհան Քռնեցին. «Արդ՝ ես Յոհանես Քռնեցի, յետ որոյ պարապեալ էի ի համալսարանն մեծ վարդապետին Յիսայու, որ էր ի մէջ հայոց յոյժ հռչակելի. նա ես ի ձեռանէ նորին առեալ էի զգաւազանն...»[22]։ Այնուհետև, իր դասընկեր գիտնականներին թվարկելիս, Հովհան Քռնեցին հայտնում է. «...ժողովեալք էին բազում վարդապետք աշակերտակիցք իմ ի միում համալսարանի...»[23]։

Հատկանշական է, որ այս անգամ «համալսարան» անվանումը Գլաձորին վերագրողն այնպիսի անձնավորություն է, որը մի քանի առիթներով այցելել է Հռոմ, տեսակցել պապի հետ, տեղյակ է եղել ժամանակի եվրոպական բարձրագույն կրթական հաստատություններին ու նրանց ուսումնագիտական կյանքին։

Գլաձորի համալսարանն ունեցել է առնվազն 9 «րաբունապետներ» (ուսուցչապետներ) և 13—15 «րաբուններ» (դասախոսներ)։

Գլաձորի համալսարանի անմիջական հովանավորներն ու խնամակալներն են եղել Պռոշյանները, ինչպես նաև Օրբելյանները։

Գլաձորի համալսարանն ունեցել է երեք «ուսումնարաններ». ա) երաժըշտության, բ) գրչության արվեստի և գ) հասարակական բնական գիտությունների, որը կոչվում էր նաև «ուսումնարան ներքին և արտաքին գրոց»։

Գլաձորի համալսարանի հիմնական խնդիրը եղել է սաներին «տեսական» և «գործնական» գիտություններ ավանդելը և վարդապետական աստիճան շընորհելը։ Եսայի Նչեցին վկայում է. «...Ետու գրել զսա... և ընծայեցի... յիշատակ... մանաւանդ աշակերտեալ մանկանց, զոր ծնաք բանիւն երկամբք, որ դեգերին ի կրթութիւն տեսական և գործնական իմաստից...»[24]։

Գլաձորի համալսարանի դասագրքերի զգալի մասը համապատասխանել է միջնադարի եվրոպական համալսարանների ուսումնական ծրագրերում ընդգրկված ձեռնարկ-դասագրքերին։ Այսպես ասելով նկատի ունենք մասնավորապես անտիկ աշխարհի մտածողների աշխատությունները և դրանց վերաբերյալ մեկնությունները։

Գլաձորի համալսարանի դասընթացների լրիվ յուրացումը, բնականաբար, պիտի հավաստվեր ինչ-որ պաշտոնական ձևակերպմամբ, Այն իրականացվում էր «վարդապետական աստիճանի» շնորհումով։ Այս աստիճանի շնորհումը տեղի էր ունենում հանդիսավոր այն արարողությունների ժամանակ, երբ

---

21 F. Conybeare, A Catalogue of Armenian Manuscripts in the British Museum p. 22,

22 Կղեմես Գալանոս, Միաբանութիւն Հայոց եկեղեցւոյ ընդ Հռոմայ, հատ. Ա, Հռոմ, 1690, էջ 518—520։

23 Նույն տեղում։

24 Մատենադարան, ձեռագիր № 6289, թերթ 238բ։

*շրջանավարտները երևան էին գալիս ավարտաճառերով՝ առաջադրված թեզերի քննությամբ ու վերլուծությամբ։*

*Այս հարցում ևս ընդհանրություն կար Գլաձորի համալսարանի և եվրոպական համալսարանների միջև։*

*Գլաձորի համալսարանը բացառիկ նշանակություն ունեցավ բարձրագույն ուսումնական գործի կազմակերպման, հայ մշակույթի զարգացման և տարածման բնագավառում։*



Մատթեոս՝ պատկերված իբրև գրիչ, գրչության պարագաներով

*Գլաձորի համալսարանը համահայկական ճանաչում գտավ և տվեց մեծ թվով շրջանավարտ-մտավորականներ, որոնք այստեղ էին գալիս «յաղագս փափագման իմաստասիրական արուեստից» և այստեղից գնում էին երկրի տարբեր գավառները տարածելու գիտություն, հայրենասիրություն և մաքառելու հայ ժողովրդի հոգևոր ավանդույթների, նաև դավանանքի պահպանման համար։*

*Համալսարանի գոյատևումն ու ճակատագիրը, անշուշտ, սերտորեն կապված էր երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական իրադարձության ընթացքի հետ։ XIV դարի 30-ական թվականների վերջին, Հուլավյանների պետության քաղաքական ճգնաժամի սրման և անկման ժամանակաշրջանում առաջացած*

ծանր և անելանելի վիճակը համակել էր նաև Սյունիքը։ Կործանվեցին հայկական իշխանական տները, որոնց թվում և Պռոշյաններինը։ Գլաձորի համալսարանի գոյությունը հովանավոր-Պռոշյաններին կորցնելու, ներքին անապահովության և նորանոր ասպատակությունների հետևանքով, 1340-ական թվականներից հետո դարձավ անհնարին։ Սակայն բարձրագույն կրթական հաստատություն ունենալու պահանջը և ջանքերը դեռևս սպառված չէին։ Իր նշանակությունը, մասամբ և տնտեսական զորությունը պահպանում էր Տաթևի վանքը՝ Սյունիքում, որտեղ և Գլաձորի համալսարանի ավանդույթներով կազմավորվեց Տաթևի համալսարանը։

## 2. ԿԻԼԻԿԻԱՅԻ ՈՒՍՈՒՄՆԱԳԻՏԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆՆԵՐԸ

Հայ մշակույթի ծաղկումն ու բարգավաճումը Կիլիկիայում սկսվում է XII դարից և իր բարձրակետին հասնում XIII—XIV դարերում։

Մտավոր կյանքի կազմակերպման ու զարգացման համար Կիլիկիայում նկատելի նախանձախնդրություն են ցուցաբերել իշխաններն ու թագավորները, իշխանուհիներն ու թագուհիները։

Կիլիկիայի խոշոր մտածողներից Վահրամ Րաբունին (XIII դ.) հավաստում է, որ Թորոս իշխանը ոչ միայն բազմաթիվ եկեղեցիներ է կառուցել, այլև՝ վարդապետարաններ, դրանց թվում՝ ժամանակի առավել հռչակավոր ուսումնագիտական կենտրոններ Դրազարկն ու Մաշկևորը[25]։

Դրազարկը հիմնադրվել է XII դարում։ Այն Կիլիկիայի վարդապետարաններից ամենահինն է և առաջնակարգ տեղ է գրավել գրչության արվեստով։ Կիլիկիայի մանրանկարչության երկու խոշորագույն ծաղկողներից մեկը՝ Սարգիս Պիծակը այս կենտրոնի սանն է։

Դրազարկը հայտնի է եղել նաև երաժշտագիտական կրթության բարձր մակարդակով։ 1241 թ. մի հիշատակարանում ասված է. «Կատարեցաւ Երգարանս Տաղաց ձեռամբ Յոհաննիսի՝ յետին և յոգնամեղի՝ ի թուականիս հայոց ՈՃՂ (1241) ի վանս մեծ ուխտի և հռչակաւոր անապատս Դրազարկ կոչեցեալ»[26]։ Մի փոքր ավելի ուշ, այս կենտրոնի ղեկավարությունն ստանձնում է Թորոս երաժիշտը, որը հիշատակարաններում բնութագրվում է որպես «Թորոս դասապետ»։ Իբրև Դրազարկի ուսուցչապետ հիշատակվում է «Հովսեփ երաժըշտապետը»։ Ի դեպ, «երաժշտապետ» մականունն ինքնին պերճախոս վկայություն է այն բանի, որ Դրազարկում երաժշտագիտությանը առաջնակարգ տեղ է տրվել։

Դրազարկը լեզուների դասավանդման և ընդհանուր զարգացման տեսակետից ևս իր ժամանակի առաջավոր բնագծում է գտնվել և դիվանագետներ է տրամադրել Կիլիկիայի հայկական թագավորությանը։

Նշված «Թորոս դասապետի» մասին մեզ հասած տվյալներից պարզվում է, որ նա ոչ միայն դպրությանականավոր ներկայացուցիչ է եղել, այլև պե-

---

25 Հ. Ոսկյան, Կիլիկիայի վանքերը, էջ 159։

26 Գարեգին Ա. Կաթողիկոս, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 945։

տական գործիչ. Լևոն Գ և Հեթում Բ թագավորների օրոք նա երկար ժամանակ Կիլիկյան հայկական թագավորության դեսպանն էր Անգլիայում[27]։

Դրազարկում առժամանակ գործել են նաև խոշորագույն առակագիր Վարդան Այգեկցին, Հեթում Ա թագավորի եղբայր ուսուցչապետ Բարսեղը (Բասիլիկոս) և ուրիշներ։

Թորոս իշխանի հիմնադրած մյուս նշանավոր վարդապետարանը Մաշկեվորն է: Տարաբախտաբար նրան վերաբերող հիշատակությունները սակավ ու կցկտուր են։

Կիլիկիայի ուսումնագիտական բարձրագույն հաստատությունները կենտրոնացված են եղել Սև լեռան շրջակայքում։ Հենց այն փաստը, որ Մխիթար Գոշը, Արևելյան Հայաստանում վարդապետական իր ուսումնառությունը ձեռք բերելուց հետո, առավել կատարելագործման նպատակով Սև լեռան կենտրոններն է մեկնում[28], պերճախոս վկայություն է այդ դպրոցների բացառիկ հեղինակության։

Բացի Մաշկևորից, Սև լեռան նշանավոր ուսումնագիտական կենտրոններից են եղել Պաղահծոնը, Արեգը, Շուղրը։

Պաղաճոնը («Դրախտ աստուծոյ») ըստ երևույթին եղել է հոռմական վանք, որին տիրել են հայերը։ Այստեղ դասախոսություններ են կարդացել ուսուցչապետներ Գևորգ Մեղրիկը, Գրիգոր Լոռեցին, Կիրակոս գիտնականը, Գրիգորն ու Մատթեոսը։ Ավելի ուշ ականավոր մատենագրականներից այստեղ է ուսանել Գրիգոր Վկայասերը։ Պաղահծոնը եղել է նաև գրչության օջախ, որտեղ ընդօրինակված ձեռագրերից առանձին նմուշներ հասել են մեզ։

Արեգի ուսումնագիտական կենտրոնից քիչ ձեռագրեր են պահպանվել։ Առժամանակ այն եղել է կաթողիկոս Գրիգոր Վկայասերի կայանը։

Շուղր կոչված ուսումնագիտական կենտրոնում են իրենց կրթությունը ձեռք բերել մեր մատենագրության հսկաներ Ներսես Շնորհալին, Գրիգորիսը և ուրիշներ։ Կիլիկիայի ուսումնականների շրջանում Շուղրը մեծ համբավ վայելող վարդապետարաններից է եղել։

Վարդկան, Քարաշիթ, Բարսեղյանց, Շափիրին և Պաղակծիակ ուսումնագիտական կենտրոնները նույնպես Սև լեռան նշանավոր վարդապետարաններից են։

Մլեհ իշխանը հիմնադրել է Մեծքար ուսումնագիտական կենտրոնը՝ Բերդուս գյուղի արևմտյան մասում։ Սամուել Անեցին Մեծքարի հետագա հովանավորող է համարում Լևոն Բ թագավորին, որը «Սիրէր զեկեղեցիսն Աստուծոյ և զվանորայս՝ և զեկեղեցականս, մանաւանդ զվարդապետս, որ և տուն կարգեաց վարդապետաց վասն վարժելոյ զմանկունս՝ զտուրք ուխտն Մեծքար կոչեցեալ»[29]։

Այս կենտրոնի ուսուցչապետներից հիշվում է Հակոբ «վարժապետը»։ Այստեղ դասախոսություններ է կարդացել Հովհաննես Երզնկացի Պլուզը։

---

27 Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 234—235։

28 Կիրակոս Գանձակեցի, էջ 208։

29 Սամուել Անեցի, էջ 152։

Ուսումնագիտական կենտրոններին բարոյական ու նյութական մեծ աջակցություն և հովանավորություն են ցույց տվել Հեթում Ա թագավորը և նրա կին Զաբել թագուհին։ Հեթում Ա-ի պատվերով Վարդան Արևելցին գրել է հանրագիտարանային բնույթ ունեցող «Ժղլանք» աշխատությունը, ինչպես և «Յաղագս մեկնութեան քերականի» երկը։ Զաբել թագուհու հոգատարության մասին վկայում է Վահրամ Րաբունին. «Երանելին Զապէլ թագուհին, որոյ ողորմութեանն և առատ պարգևացն որ առ ուսումնականսն՝ պտուղ է մերս նուաստութիւն, և ես վեհագունից քան զմեզ. ընդ որում՝ զանձառ բարութիւնսն ընկալցի փոխարէն»[30]։ Հովհաննես անունով մի հիշատակագիր Հեթումյան շրջանի Կիլիկիան բնութագրում է իբրև «երկիր իմաստասիրաց և ուսումնասիրացն»[31]։

Ակների նշանավոր վարդապետարանը կառուցել է տվել Լևոն Գ թագավորը (1270—1289)։ Ուշագրավ է, որ ուսումնագիտական այս կենտրոնի ծրագիրն ու կանոնադրությունը մշակել է ինքը՝ Լևոն Գ թագավորը, որով և ղեկավարվել է վարդապետարանը իր գոյության ամբողջ ընթացքում։ Ակների ուսումնագիտական կենտրոնը հայտնի է եղել նաև իր գրչության արվեստով. այստեղ բազմաթիվ ձեռագրեր են արտագրվել և զարդարվել շքեղ մանրանկարներով։

Լևոն Գ թագավորը եղել է Կիլիկիայի դպրության զարգացման ամենախոշոր հովանավորը։ Ուսման ու գիտության նկատմամբ նրա հակումն այնքան ակնբախ է եղել, որ ժամանակակիցները նրան «գրասէր» են հորջորջել։ Նրա օրոք աննախընթաց աշխուժություն է նկատվում ուսումնագիտական կյանքում, բուռն ծաղկում են ապրում արվեստն ու գիտությունը։ Կարևոր է նշել, որ Լևոն Գ թագավորը «ոչ միայն զհամազգի վանորեայսն այսպէս փարթամացոյց, այլ և զայլալեզու քրիստոնէից, զԱսորւոց և զՖռանկաց, այլ և զՅունացն և զՎրացն...»[32]։ Մի այլ հիշատակագիր հավաստում է, որ Լևոն Գ թագավորը կազմակերպել է բազմաթիվ ընտիր և հազվագյուտ բնագրեր հավաքելու և դրանք թարգմանել տալու գործը. «եւ ժողովել զամենայն գրեանս յամենայն տիեզերաց, անթիւ բազմութեամբ, և ետ թարգմանել զամենեսեան միանդամայն»[33]։

Լևոն Գ թագավորը՝ դպրության զարգացման ու հարստացման մտահոգությամբ հազվագյուտ ու ընտիր գրչագրեր է պատվիրել և նվիրաբերել ոչ միայն Կիլիկիայի, այլև պատմական Հայաստանի, մինչև անգամ հայկական գաղթաշխարհի ուսումնագիտական կենտրոններին[34]։

Կիլիկիայի ուսումնագիտական կենտրոնները ամբողջ հայ իրականության մեջ աչքի էին ընկնում լեզուների ուսուցմամբ։ Եվ դա ինքնըստինքյան հասկանալի է։ Աշխարհագրական դիրքի և ծովային առևտրի հարուստ ու բազմազան գործառնությունների շնորհիվ օտար լեզուների իմացությունը Կիլիկիա-

30 Ղ. Ալիշան, *Յուշիկք*, հատ. Ա, էջ 135—136։
31 Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 224։
32 Նույն տեղում, էջ 515։
33 Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 515։
34 Նույն տեղում, էջ 519։

յում, բնականաբար, դարձել էր հարկադրական պահանջ։ Կիլիկիայի ուսումնականներից ոմանք մինչև անգամ եթովպերեն են իմացել[35]։ Պարզվում է, որ հայ ուսումնականները հմուտ են եղել ոչ միայն օտար լեզվից հայերենի և հայերենից օտար լեզվի, այլև օտար լեզվից մեկ այլ օտար լեզվի թարգմանելու արվեստում։



Ձեռագրի արծաթե կազմ, Կիլիկիա

Ուսման և գիտության զարգացմանը նպաստել է նաև Լևոն Գ-ի կինը՝ Կեռան թագուհին, որի «հրամանաւ» պատվիրած գրչագրերը պահպանվել են առ այսօր։ Նա եղել է նաև առանձին նշանավոր ուսումնականների հովանավորը։

Ուսումնագիտական կենտրոնի հիմնադիր ու հովանավորող է եղել Օշինի որդի Լևոն Ե թագավորը (1320—1342)։ Նրա հրամանով են թարգմանվել Անտիոքի Ասիզները։

35 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 519։

Պատահական չէ, որ գրչության արվեստի սկզբունքներն ու հիմնական դրույթները տեսականորեն մշակվեցին ու ընդհանրացվեցին հատկապես Կիլիկիայում։ Հայ գրչության բնագավառում տիպարային գրչագրեր ընդօրինակելու թերևս եզակի փորձը կատարել են Կիլիկիայի ուսումնականները, որոնք և մշակել են ընդհանուր և պարտադիր կանոններ։

Նշանավոր են եղել նաև Սսի ուսումնագիտական կենտրոնները: Սիսը, որ հետագայում Կիլիկիայի հայկական թագավորության մայրաքաղաքն էր դարձել, մշակութային ակնառու կենտրոն էր, որտեղ բուռն զարգացում է ապրել դպրությունը, փիլիսոփայությունը, տրամաբանությունը, աստվածաբանությունը, ճարտասանությունը, քերականությունը, երաժշտությունը, տոմարագիտությունը, երկրաչափությունը, աստղաբաշխությունը, գրչության արվեստը, մանրանկարչությունը, թարգմանական և ազգային գրականությունը, պատմագրությունը։ Այստեղ գործող վարդապետարանների հետ միասին ըստեղծվել է նաև համալսարան, որ հիշատակվում է Ներսես Լամբրոնացու անունով։ Ժամանակի հռչակավոր գիտուններն ու րաբունապետներն են զեկուցումներ և դասախոսություններ կարդացել Սսի համալսարանում։ Այստեղ եւ ուսումնառության իդեալը եղել է աթենական կրթությունը։ Այս իմաստով և առհասարակ հատկանշական է թե ինչպես է Ներսես Շնորհալին ձևակերպել դարձրագույն կրթության պահանջը.

Զի հրահանգից վարժարանի
Չեմ տակուին ներկուռ բանի։
Յաթենականըն քաղաքի
Ջանձն իմաստից ոչ կըրթեցի.
Ուր լըսարանըն Պղատոնի,
Եւ չափ ոտից Հոմերովնի.
Ուր ստորոգօղն Արիստոտէլ,
Տաօըն բանիւ գըրօղն էի.
Ուր հոյլք ամէն հըռետորի,
Ժողովարան ճարտասանի,
Ներհըմտութիւն քերականի,
Բայի քերումըն քերթողի...[36]։

Անտիկ գիտության նկատմամբ հայ մշակույթի գործիչների նման ուշադրությունը չափազանց բնութագրական է։ Չէ՞ որ Եվրոպայում Վերածննդի առաջացման նախադրյալներից մեկը ոչ այլ ինչ էր, եթե ոչ առանձին հակումը դեպի անտիկ գիտություն, այլ կերպ ասած՝ թարգմանություն և ուսումնասիրություն՝ հին աշխարհի լավագույն մտածողների կոթողային երկերի։

---

36 Ներսես Շնորհալի, Բանք չափաւ, Վենետիկ, 1928, էջ 540։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## 1. ԺԱՄԱՆԱԿԱԳԻՐՆԵՐ

*XII—XIV դարերում հայ պատմագրության մեջ, ընդհանուր պատմագրական երկերի կողքին, նշանակալից դերով հանդես եկավ ժամանակագրությունը։*

*Ժամանակագրությունները պատմական երկեր են, որոնք տալիս են փոքրինչ ավելի ընդարձակ և համեմատաբար կապակցված շարադրանք։ Ժամանակագրությունների սկզբնամասերը հիմնականում քաղագրական բնույթ են կրում։ Ինքնուրույն և մանրամասն շարադրանքն սկսվում է միայն հեղինակի ժամանակաշրջանին մոտ պատմահատվածից։ Այս մասում հեղինակը ձգտում է կարճ քաղվածքներ անել, բավարարվել ականատեսների պատմածով, իր տեսածով ու լսածով։ Ժամանակագիրներն ու տարեգիրները, լինելով իրենց դարի զավակը, արտահայտել են դարի ոգին ու գաղափարախոսությունը, հաշվի առնելով ոչ միայն հոգևորականության, այլև աշխարհիկ վերնախավի շահերը։*

*Ժամանակագիրների թվում եղել են և այնպիսիները, որոնց երկերն աչքի են ընկնում փաստական նյութի հարստությամբ, ինչպես և նկատելիորեն առաջավոր գաղափարներով։*

Մատթեոս Ուռհայեցին *(XI—XII դդ.) հայ ժամանակագրության աչքի ընկնող հեղինակներից է։ Երկար տարիների մեղվաջան աշխատանքով նա կարողացել է որոնել, զանազան աղբյուրներից ժողովել իրեն հետաքրքրող դեպքերը, տարեթվերը, հնարավորության դեպքում դրանք ճշգրտել և ժամանակագրական հաջորդականությամբ շարադրելով ստեղծել ծավալուն ու արժեքավոր մի երկ[1]։ Այն ընդգրկում է 952—1136 թվականներն ընկած ժամանակահատվածի իրադարձությունները։ 1136 թ. հետո Ուռհայեցու Ժամանակագրությունը շարունակել է Քեսունցի Գրիգոր երեցը և ավարտել 1162 թ. դեպքերով։*

*Ուռհայեցու Ժամանակագրությունն ունի տարածական լայն ընդգրկում և կարևոր աղբյուր է Մերձավոր Արևելքի մի շարք երկրների՝ Փոքր Ասիայի, Ասորիքի, Միջագետքի, Հայաստանի, Վրաստանի, X—XII դարերի պատմու-*

---

[1] Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։*

թյան վերաբերյալ։ Հայրենասեր հեղինակին հուզել են հայրենիքին ու ժողովրդին՝ Բյուզանդիայի, սելջուկ-թուրքերի, խաչակիրների պատճառած աղետներն ու արհավիրքները։ Նրա երկում հաճախ հանդես է գալիս «...նույն ոգին և զգացմունքը, ինչ որ Արիստակես Լաստիվերտցու մոտ, միայն ոչ բուռն սաստկությամբ, ավելի զուսպ ու նստած՝ քաղաքական դրության և հայության վիճակի պայծառ հասկացությամբ»[2]։ Նա «փոխեփոխ բեմ է հանում բազմաթիվ վայրերի ու բերդերի տերեր, մեծ ու փոքր բռնակալներ—հույն ու հայ, արաբ ու թուրք, եգիպտական թե վրացական, նաև խաչակիր տիրակալներ։ Սրանք շարունակ արշավանքներ են գործում, իրար հետ պատերազմների մեջ են... Ամենքն ամենքի դեմ են։ Երկիրը գտնվում է շարունակ խռովահույզ ու մրրկածուփ վիճակի մեջ։ Եվ հետևանքը լինում է երկրի ավերում, ժողովուրդների բնաջնջում, տնտեսական քայքայում, սով»[3]։ Ժամանակագիրը սիրով է լցված հանդեպ այն ամենը, ինչ որ ժողովրդի օգտին է, լինի դա հայի թե օտարի գործ, և ատելություն է տածում դեպի նվաճողները, ավերիչներն ու հարստահարիչները, մասնավորապես դեպի բյուզանդացիներն ու սելջուկ-թուրքերը։ Առաջիններին ատում է այն բանի համար, որ զավթելուց հետո Հայաստանն անպաշտպան էին թողել Արևելքից խուժող սելջուկների առաջ[4], իսկ երկրորդներին՝ նրանց գործած դաժանությունների ու ավերածությունների, կեղեքումների պատճառով։ Ուռհայեցու բացատրությունը սելջուկ-թուրքերի արագ ծավալված հաջողությունների մասին, մինչև այսօր էլ պահպանել է իր արժեքը[5]։

Ուռհայեցին ուրախացել է խաչակիրների գալով, սակայն տեսնելով նրանց կատարած ավերածություններն ու բռնությունները, ատելությամբ է լցվել նաև նրանց նկատմամբ։

Նկարագրելով դառն արհավիրքներն ու կոտորածները, Ուռհայեցին ներկայացրել է նաև սխրալի գործեր, երբեմն իսկական փոքրիկ վիպակներ, զրույցներ՝ ժողովրդական ոգով և ըմբռնումներով։ Այդպիսիներից է, օրինակ, Սասունի անկախության համար մարտնչող Թոռնիկ Մամիկոնյանի սխրանքների նկարագիրը։

Ուռհայեցին ցավով է նկարագրել Վասպուրականի թագավորության անկումը և Սենեքերիմ թագավորի Սեբաստիա գաղթելու առթիվ ասում է. «Եւ անտերացաւ աշխարհն Հայոց ի թագաւորաց և յիշխանաց»։

Նրա երկում պահպանվել են չափազանց կարևոր պատմական մի քանի փաստեր, որոնց մասին հայ և օտար աղբյուրներում ոչինչ չի հանդիպում։ Օրինակ, Չմշկիկ կայսրի գրած թուղթը՝ Աշոտ Ողորմած թագավորին, կամ Գագիկ Բ-ի՝ ս. Սոֆիայի եկեղեցում արտասանած ճառը՝ հայ-բյուզանդական եկեղեցիների միջև եղած վեճերի առթիվ, Արծն քաղաքի կործանման որոշ մանրամասնությունները և այլն։

Իր ժամանակի զավակ Ուռհայեցին հավատ է ընծայել նաև սնոտիապաշտական զանազան զրույցների, պատկերացումների, կապված երկնային նշան-

---

2 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, գ. 2, Երևան, 1946, էջ 65։

3 Նույն տեղում, էջ 67։

4 Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 135։

5 Տե՛ս Մ. Աբեղյան, նշված, աշխ., էջ 69։

*նիրի, գիսավոր աստղերի, երկրաշարժի, երաշտի, սովի, մահտարաժամի, անասունների անկման հետ, դրանք համարելով դժբախտությունների չարագուշակ ազդարարներ։*

*Մատթեոս Ուռհայեցու լեզուն պարզ է ու անպաճույճ, մեջ բերած փաստերը հարուստ են ու արժեքավոր։*

**Սամուել Անեցին** *(XII դ.) հաջորդ նշանավոր ժամանակագիրն է, որի մասին շատ քիչ տեղեկություններ են պահպանվել։ Նրա ժամանակագրությունը*[6] *սկսվում է Ադամից և հասցվում մինչև 1180 թ.։ Այնուհետև շարունակել են անհայտ հեղինակները և հասցրել մինչև XVII դարի երկրորդ կեսը։ Անեցին իր երկում բերել է նաև բազմաթիվ ժողովուրդների պատմություններից քաղած չափազանց համառոտ տարեգրություններ։*

*Սամուել Անեցին իր ժամանակագրությունը շարադրել է Գրիգոր Տղա կաթողիկոսի հանձնարարությամբ։ Նա մեծապես օգտվել է Եվսեբիոս Կեսարացու և Մովսես Խորենացու երկերից՝ առաջինի նման դասդասելով եղելությունները ըստ տարեթվերի։*

*Սամուել Անեցու ժամանակագրությունը Հայաստանի XII դարի պատմության կարևոր աղբյուր է, անցուդարձերի հորձանքում գտնվող ականատեսի բավականին ստուգապատում գործ, որն առանձին քաղաքական իրադարձությունների վերաբերյալ հաղորդում է այլ աղբյուրներից անհայտ տեղեկություններ։*

**Մխիթար Անեցին** *(XII—XIII դդ.) գրել է երեք մասից կազմված «Պատմություն»*[7]*, առաջին մասն ընդգրկում է Հայոց Պարույր թագավորից մինչև նախավերջին Բագրատունի թագավորն ընկած ժամանակաշրջանը, երկրորդը՝ XI—XII դարերը, իսկ երրորդը՝ խաչակրաց արշավանքները։ Այն վերջից պակասավոր է։ Վարդան Արևելցին և Ստեփանոս Օրբելյանը վկայում են, որ նա գրել է հայերի, պարսիկների, վրացիների և արաբների մասին։ Մխիթարի Պատմության մեզ հասած գլուխներում հիմնականում արծարծված են կրոնա-դավանաբանական բնույթի հարցեր։ Այդ գլուխներից մեկը նվիրված է պատմության տեսական հարցերին։ Այնտեղ Մխիթար Անեցին տվել է պատմագիտական սկզբունքների մշակման մի շարք արժեքավոր դրույթներ։ Պատմությունը, ըստ նրա, իրական եղելությունների արտադրյալն է, անցյալի ու ներկայի ճանաչման և ապագայի կանխատեսման գիտություն։ Պատմության հիմնական տարրերը վեցն են՝ դեմք, իր, տեղ, ժամանակ, եղանակ և պատճառ։ Նախորդ պատմիչներից գրեթե ոչ մեկը նման ընդհանրացում չի արել։ Ըստ Անեցու, պատմություն գրելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել հին և նոր պատմությունները, տիրապետել տրամաբանելու, մտքերը ճիշտ շարադրելու եղանակներին, հին լեզուներին, ցուցաբերել զգուշավոր մոտեցում աղբյուրների նկատմամբ և այլն։*

---

6 *Տե՛ս «Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչև ի ներկայս ծայրաքաղ արարեալ» առաջաբանով, համեմատությամբ, հավելվածներով և ծանոթություններով Արշակ Տեր-Միքելյանի, Վաղարշապատ, 1893։*

7 *Տե՛ս «Մխիթարայ Անեցւոյ Պատմութիւն», Ս. Պետերբուրգ, 1879։*

**Մխիթար Այրիվանեցին** *(XIII դ.) թողել է մի համառոտ ժամանակագրություն՝ սկսած Ադամից մինչև 1289 թ.*[8]*, որը մյուս ժամանակագրությունների նման տոգորված է մի կողմից՝ կրոնական, մյուս կողմից՝ հայրենասիրական ոգով*[9]*։ Այն հիմնականում համառոտ քաղագրություն է, թեև հանդիպում են նաև այնպիսի փաստեր ու նյութեր, որոնք այլ աղբյուրներից հայտնի չեն։*

*Հայաստանի և Կիլիկիայի հայկական պետության պատմության, մանավանդ XII դարի իրադարձությունների ուսումնասիրության համար կարևոր աղբյուր է նաև Ասորվոց կամ Անտիոքի պատրիարք* **Միքայել Ասորու** *ժամանակագրությունը*[10]*։*

*Ընդարձակ այդ երկը, որը ասորերենից հայերեն է թարգմանվել դեռևս 1245—48 թթ., Ադամից սկսելով ընդգրկում է մինչև 1195 թ. դեպքերը։ Վաղ շրջանների մասին տեղեկությունները համառոտ են, իսկ ավելի ուշ ժամանակների, հատկապես XII դարի մասին՝ ավելի մանրամասն։ Արժեքավոր է նրանով, որ հնարավորություն է ընձեռում հայ մատենագիրների տեղեկությունների վավերականությունը ստուգել նաև օտար հեղինակի միջոցով։*

*Այս ժամանակագրության ասորական բնագիրը և դրա արաբերեն բառացի թարգմանությունը գտնվել են միայն XIX դարի վերջերին, իսկ դրանից առաջ այն ծանոթ է եղել միայն հայերեն թարգմանությամբ։*

## 2. ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ XIII ԴԱՐՈՒՄ

*Հայ պատմագրությունը նոր փայլով հանդես եկավ XIII դարում։ Նրա զարգացման այս փուլը բնորոշվում է հարցերի լայն ընդգրկմամբ, բազմաբովանդակ բնույթով, մատուցման ձևերով ու եղանակներով, վերջապես պատմիչների մի փայլուն համաստեղության առաջացմամբ։*

**Վանական վարդապետ Տավուշեցին** *(XIII դ.) իր ժամանակաշրջանի հայ պատմագրական դպրոցի հիմնադիրն է։ Նրա դպրոցում են իրենց ուսումնառությունն ստացել հայ պատմագրության այնպիսի անվանի ներկայացուցիչներ, ինչպիսիք են Կիրակոս Գանձակեցին, Վարդան Արևելցին, Գրիգոր Ակներցին։*

*Նրա աշակերտները մեծ երախտագիտությամբ ու դրվատանքով են խոսում նրա մասին։*

*1236 թ. Վանական վարդապետն իր աշակերտ Կիրակոսի և ուրիշների հետ գերվում է մոնղոլների կողմից, հետո փրկավճարով ազատվում, վերադառնում Խորանաշատ վանքը, նորոգում այն և շարունակում իր գործունեությունը։ Նրա աշակերտներ Վարդան Արևելցին և Կիրակոս Գանձակեցին վկայում են, որ Վանականը գրել է իր ապրած օրերի և հատկապես մոնղոլական նվաճումների պատմությունը։*

*«Արդ,— ասում է Վարդան Բարձրբերդցին,— ...զոր ինչ արարին ազգն նետողաց ընդ աշխարհս և ընդ իշխանութիւնս, որ յայսմ կողմանէ ծովուն*

---

8 *Տե՛ս «Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց», Մոսկվա, 1860։*

9 *Տե՛ս* Մ. Աբեղյան, *նշված աշխատ., էջ 206։*

10 *Տե՛ս «Տեառն Միխայէլի պատրիարգի Ասորւոց, Ժամանակագրութիւն», Երուսաղեմ, 1871։*

*մեծի, ընդ Պարսս և ընդ Աղուանս, ընդ Հայս և ընդ Վիրս և ընդ աշխարհն՝ Հոռոմոց կոչեցեալ. ուր էին բնակեալ Հայք և Ասորիք և Յոյնք, Տաճիկք և Թուրքմանք, գրեալ են մանրամասնաբար փառաւորեալ հայրն մեր Վանական վարդապետ, և հարազատ մեր՝ Կիրակոս վարդապետն հօրն համանըման»*[11]*։ Վանականը իբրև ականատես գրել է նաև Անիի 1204 և 1205 թթ. ժողովների պատմությունը*[12]*։*

Կիրակոս Գանձակեցին *(XIII դ.) իր ժամանակի առավել խոշոր և նշանավոր պատմիչներից է*[13]*։ Նա ծնվել է XIII դ. սկզբին Գանձակ քաղաքում, մահացել 1271 թ.։ Նրա «Պատմութիւն Հայոց» երկն սկսվում է IV դարից և հասնում մինչև 1265 թ.։ Նրա «Պատմության» առաջին մասը քաղված է նախորդ շրջանի գրավոր աղբյուրներից, այստեղ համառոտ շարադրված է հիմնականում հայ եկեղեցու, իսկ որոշ դեպքերում՝ քաղաքական իրադարձությունների պատմությունը։ Երկրորդ մասն սկսվում է 1197 թ. և ավարտվում 1265 թ.։*

*Գանձակեցին գիտակցել է ստանձնած գործի դժվարությունը, քանի որ իր նախորդներն ունեցել են «տեղի ինչ բուռն հարկանելոյ, կամ թագավոր երեվելի և կամ նահապետութիւնք ազգաց յայտնի», իսկ ինքը զուրկ է եղել այդ ամենից*[14]*։*

*Մարդկային բնության մեջ, ըստ Գանձակեցու, կա արարչի խնամքով հաստատված մի կիրք՝ քննության ենթարկել անցյալ իրադարձություններն ու գալիքը*[15]*, իսկ դրան հասնել հնարավոր է միայն երկար ջանասիրությամբ և աշխատասիրությամբ՝ աստվածային բանին ականջ դնելով և «գրոց պատմութեանց» անաչառ քննությամբ։ Դարի կրոնական ըմբռնումներին համապատասխան, պատմիչը գտնում է, որ նախախնամությունն է շարժում մարդկային հասարակության պատմության անիվը*[16]*։*

*Կիրակոս Գանձակեցու երկը չափազանց կարևոր է մանավանդ Հայաստանում ու Մերձավոր Արևելքում մոնղոլների տիրապետության շրջանի պատմության լուսաբանման համար։ Այնտեղ հանգամանորեն շարադրված են մոնղոլներից խույս տվող Ջալալ ադ-Դինի ասպատակությունները, մոնղոլական արշավանքները, Անդրկովկասի ու Փոքր Ասիայի նվաճումը, մոնղոլների վարած արտաքին պատերազմներն ու ներքին հակամարտությունները, հայ ժողովրդի դառը վիճակը, ինչպես նաև հայրենասեր հեղինակի ատելությունը՝ նվաճողների նկատմամբ։*

*Գանձակեցին սրտի խոր կսկիծով ու խտացած գույներով է նկարագրում նվաճողների ներքին՝ ագրարային և հարկային քաղաքականության պատճառած ավերիչ հետևանքները, ժողովրդի տառապանքները, ապրումները, զանգվա-*

---

11 Վարդան, *էջ 146—147։*

12 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 178։*

13 *Կիրակոս Գանձակեցու կյանքի և գրական-հասարակական գործունեության մասին մանրամասն տե՛ս Կ. Մելիք-Օհանջանյանի «Պատմության» համար գրած Առաջաբանը, էջ Ե—ՃԻԵ։*

14 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 8։*

15 *Տե՛ս նույն տեղում, էջ 3։*

16 *Տե՛ս նույն տեղում, Կ. Մելիք-Օհանջանյանի Առաջաբանի ՀԶ ՀԷ էջերը։*

ծային կոտորածները, գերեվարումը, գաղթը, ամայացումը, սովը, համաճարակը, տնտեսության, հատկապես գյուղատնտեսության քայքայումը, գյուղացու ընչազրկությունը։ Կարևոր են նրա վկայությունները՝ տեղական ֆեոդալների նկատմամբ մոնղոլների վարած քաղաքականության և դրա հետևանքների մասին։ Կիրակոս Գանձակեցու ուշադրությունից չեն վրիպել նաև Արևմտյան Հայաստանի քաղաքական, սոցիալ-տնտեսական իրադարձությունները, ինչպես և Կիլիկիայի հայկական թագավորության, Իկոնիայի սուլթանության և Մոնղոլական պետության փոխհարաբերությունները։

Կիրակոս Գանձակեցու Պատմությունը բազմաբովանդակ հուշարձան է, նրանում արժեքավոր նյութեր կան նաև եկեղեցու ներքին կյանքի՝ դպրոցների ու դպրության, գիտության ու մատենագրության, արվեստի ու արհեստի, ճարտարապետության, տնտեսության ու շինարարության, եկեղեցական ժողովների և դավանաբանական պայքարի, հայ և հույն, վրացի, հայ և լատին եկեղեցիների փոխհարաբերության պատմության մասին։

Գանձակեցու երկասիրությունը կարևորագույն աղբյուրներից է XIII դարի 50-ական թվականների Հայաստանի սոցիալ-դասակարգային հակամարտությունների, ինչպես նաև մոնղոլների դեմ Անդրկովկասի ժողովուրդների մղած ազատագրական պայքարի պատմության լուսաբանման համար։ Նրա մեջ արտացոլում են գտել նաև մոնղոլների նիստ ու կացը, հավատալիքներն ու սովորույթները, մասամբ՝ լեզուն։

Պատմիչը ատելությամբ էր լցված նաև շահասեր, անձնասեր աշխարհիկ ու հոգևոր իշխանների նկատմամբ, որոնք ոչ միայն չկանգնեցին թշնամու դեմ[17], այլև գործակցեցին մոնղոլ նվաճողներին՝ «վասն իւրեանց շահելոյ»[13] և զրկելով, կողոպտելով իրենց ենթակա բնակչությանը «տուն գանձուց» էին կազմում[19]։

Կիրակոսի երկը՝ իր ժամանակաշրջանի պատմության ստուգապատում աղբյուր է։

**Վարդան Արևելցին** *(ծննդ. թ. անհայտ, մահ. 1271 թ.)* իր «Պատմութիւն տիեզերական» կամ «Հաւաքումն պատմութեան»)[20] երկն սկսում է «անսկիզբ» ժամանակներից և հասցնում մինչև 1267 թ.։ Այն՝ հայ պատմագրության մեջ ընդհանուր պատմություն շարադրելու երկրորդ փորձն է։ Հայոց պատմությունը Արևելցին սկսում է բաբելոնյան աշտարակաշինությունից, Հայկից ու Բելից։ Զանազան ազգերի նախնի պատմությունը նա շարադրել է շատ համառոտ, հաճախ լոկ անունների ու տարիների թվարկմամբ։ Որքան մոտենում է XI դարին, այնքան նրա շարադրանքը հարստանում է։ «Պատմութիւն տիեզերականը» մոնղոլական արշավանքների և անդրկովկասյան երկրների նվաճման, նրանց տիրապետության առաջին տասնամյակների պատմության հիմնական աղբյուրներից է։ Հանգամանորեն շարադրելով քաղաքական իրադարձությունների պատմությունը Վարդան Արևելցին որոշ տեղեկություններ

---

17 Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, էջ 254։

18 Տե՛ս նույն տեղում, էջ 362։

19 Տե՛ս նույն տեղում, էջ 253—254։

20 «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ», Վենետիկ, 1862։

է հաղորդում նաև նվաճողների ներքին քաղաքականության մասին։ Կարևոր են առանձնապես նրա մոտ պահպանված վկայությունները մոնղոլների հարկային քաղաքականության մասին։

Հուլավու խանի հետ անձնական կապերը և նրա կողմից հովանավորվելը հայրենասեր պատմիչին չի խանգարել՝ մոնղոլ խաներին մեծարելու հետ միասին ցույց տալ հայրենիքին ու ժողովրդին հասած արհավիրքների դառը պատկերը, նվաճողների վարած քաղաքականության ավերիչ հետևանքները։ Խոշոր մտածողը տակավին XIII դարում հասկանում էր արդեն Արևմտյան երկրների և պապականության նենգ ու շահադիտական վերաբերմունքի էությունը՝ հայ ժողովրդի նկատմամբ։ Պատմիչը նշում է, որ Հայաստանի կրոնական և աշխարհագրական միջավայրը շատ աննպաստ է եղել, և որ դժբախտությունները՝ մերձավոր այլադավան թշնամուն դիմակայելիս, դեպի հեռավոր հավատակից բարեկամը կողմնորոշվելը լիարժեք չի եղել հեռավորության պատճառով[21]։

Մեծ համբավ վայելող վարդապետ-քարոզիչը և հայրենասերը աշխատել է իր հեղինակությունն օգտագործել՝ մեղմելու հայրենիքի ու սեփական ժողովրդի ծանր վիճակը։ Այդ իմաստով հետաքրքիր է Հուլավու խանի և նրա միջև 1264 թ. տեղի ունեցած զրույցը։ Հուլավուի այն հարցին. «...զոր ինչ ունիս ասելոյ ասա՛», պատասխանում է. Աստված ամեն ազգի իշխանություն է տվել աշխարհի վրա. քեզանից առաջ եղած (իշխանավորները) աշխարհավեր են եղել և աղքատների վրա անողորմ ծանր բեռ են դրել. նրանք (աղքատները) հոգոց են հանել և լացել աստծու առջև. աստված առել է իշխանությունը և այլ ազգի տվել։ «Թէ դուք աշխարհաշէն լինիք և աղքատաց ողորմած, ի ձեզանէ չառնու...»[22] իշխանությունը, եզրակացրել է Վարդանը, ապա նա խորհուրդ է տվել խանին՝ իր պալատում և պետության մեջ պաշտոնները տալ աստծուց երկնչող և հավատարիմ մարդկանց, որոնք ստակ տեսնելուց չկուրանան, շահով ու կաշառքով չառաջնորդվեն, խաբեբայությամբ չպարապեն։ Հուլավուի՝ թանկարժեք զգեստներ և շատ ոսկի տալու առաջարկին՝ Վարդանը պատասխանում է. «...մեք մեծ մարդ և աստիճանի տէր չեմք, լուր աբեղայ մի եմք... ոսկին մեզ և հողն մի է. մեք ա՛յլ մեծ ուզեմք, որ վայել է քո մեծութեանդ—ողորմութիւն ի վերայ աշխարհի...»։ Այնուամենայնիվ, երբ Հուլավուն դրամական նվեր և հանդերձանք է տալիս, նա ասում է. «Այլղան, այդ դրամդ հատանի և հանդերձդ մաշի, մեք անհատանելի և անմաշելի խնդրեցաք պարգևք»[23]։ Այնուհետև ասվում է, թե երբ Հուլավուի մահից հետո նրա կինը մարդ է ուղարկել Վարդանի մոտ և հարցրել՝ ամուսնու մահվան կապակցությամբ պատարագ անի, թե ոչ, նա պատասխանել է. «Ձէ պարտ պատարագ առնել, այլ ողորմութիւն և հարկաց թեթևութիւն առնէք»[24]։

---

21 «Նորին Վարդանայ վարդապետի ասացեալ բան գովեստի պատմագրաբար վասն Սրբոյն Սահակայ և Մեսրոպայ և այլոց թարգմանչացն», տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 7, 1964, էջ 377։

22 Վարդան, էջ 157։

23 Նույն տեղում, էջ 158։

24 Նույն տեղում, էջ 160—161։

Հայրենիքի համար ստեղծված օրհասական օրերին նա ձգտել է ըստ հնարավորին մեղմել օտարի դաժան լուծը։

**Գրիգոր Ակնեցին** *(XIII դ.)*[25] *նույնպես Վանականի սաներից էր, Վարդան Արևելցու և Կիրակոս Գանձակեցու դասընկերը։ Նա գրել է ոչ մեծ ծավալի «Պատմութիւն վասն ազգին նետողաց» երկը*[26]*։ Այն բովանդակում է 53 տարվա պատմություն (1220—1273)։*

*Բացի մոնղոլների վարած պատերազմական գործողությունների և նրանց պատճառած ավերածությունների նկարագրից, Գրիգոր Ակներցու երկասիրության մեջ կան շատ կարևոր տեղեկություններ Հայաստանի, Կիլիկիայի և հարևան երկրների ներքին կյանքի՝ հարկահանման վայրագ ու բիրտ ձևերի, դրանց ծանր ու կործանարար հետևանքների, մոնղոլների կառավարման սիստեմի, տեղական իշխողների նկատմամբ նրանց վարած հատուկ քաղաքականության մասին։*

*Պատմիչը հետաքրքրական տեղեկություններ է տալիս մոնղոլների մարտավարության, արտաքինի, լեզվի, նիստ ու կացի մասին։*

*Ակներցին իր երկը հորինել է պարզ ու հասարակ, կենդանի լեզվով։ Նա մանրամասն ու սրտառուչ պատմել է եգիպտական մամլուքների Կիլիկիա ներխուժելու, արքայորդի Թորոսի սպանվելու, մյուս արքայորդի Լևոնի գերվելու մասին։*

**Ստեփանոս Օրբելյանը** *(մահ. 1304 թ.) XIII դարի հայ պատմիչների համաստեղության ամենափայլուն դեմքն է։ Նա Սյունյաց հոգևոր թեմի առաջնորդն էր, Օրբելյան իշխանական տան ներկայացուցիչը։ Ստեփանոս Օրբելյանի «Պատմութիւն նահանգին Սիսական» երկն*[27] *իր բնույթով բացառիկ նշանակություն ունի։ Նրանում տրված է Սյունիքի տեղագրությունը, Սյունյաց նախարարության առաջացումը, նրա խաղացած դերը՝ Արշակունիների տիրապետության ժամանակաշրջանում, քրիստոնեության տարածումը Սյունիքում, երկրի համառոտակի պատմությունը՝ մինչև IX դարը։ Այնուհետև, վավերագրական և փաստական հարուստ նյութերի հիման վրա, հանգամանորեն շարադրված է Սյունիքի և նրա վանքերի քաղաքական, տնտեսական ու մշակութային կյանքի, Սյունյաց թագավորության, հայ Օրբելյանների իշխանության պատմությունը։ Այդ մեծարժեք երկն ավարտվում է XIII դարի վերջին (1297) տեղի ունեցած դեպքերի նկարագրությամբ։ Ստեփանոս Օրբելյանը չափազանց արժեքավոր տեղեկություններ է հաղորդում Սյունիքի ներքին կյանքի, հողատիրության, գավանաբանական պայքարի, սոցիալ-տնտեսա-*

---

25 *Անցյալում «Պատմութիւն վասն ազգին նետողաց» երկի հեղինակումը թյուրիմացաբար վերագրվել է ոմն Մաղաքիա աբեղայի։ Հետագայում պարզվել է, որ նրա հեղինակն է Ակներցի Գրիգոր եպիսկոպոսը։ Ակադեմիկոս Կ. Մելիք-Օհանջանյանը հնարավոր է համարում, որ Գրիգորի մականունը լինի ոչ թե Ակներցի (Կիլիկիայի Ակներ վանքից), այլ Ականեցի կամ Ականցի, կապվելով Խաչենի Ականայ վայրի հետ։* (*Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Առաջաբան, էջ ԻԱ, ծան. 2*)*։*

26 *Տե՛ս «Մաղաքիայ Աբեղայի պատմութիւն վասն Ազգին Նետողաց», Ս. Պետերբուրգ, 1870։*

27 Ստեփանոս Օրբելյան, *Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910։*

կան նորմերի, օտար տիրապետությունների կառավարման սիստեմների, վարած քաղաքականության, տեղական և քոչվոր ազնվականության միջֆեոդալական հակամարտությունների և շատ այլ կարևոր հարցերի մասին։ Ստեփանոս Օրբելյանը նույնպես, Վարդան Արևելցու նման, վայելում էր մոնղոլ տիրակալների հովանավորությունը, սակայն նա էլ լռության չի մատնել հայրենիքին ու ժողովրդին մոնղոլների պատճառած սարսափները, արհավիրքներն ու տառապանքները, տնտեսական կյանքի անկման փաստերը և անաչառ կերպով տվել է ապրած դարը ժամանակների իրական պատկերը։

Ստեփանոս Օրբելյանը իր Պատմությունը չի հորինել ավանդական պատմագրության ձևով։ Ի տարբերություն նախորդների, նա չի սկսել առասպելական շրջանից։ Հին ժամանակների պատմության նկատմամբ նա առանձին զգուշություն է ցուցաբերել. մի կողմ է թողել աստվածաշնչյան նախնական պատմվածքները։ «Փափագելի է մեզ,— գրել է Ստեփանոս Օրբելյանը,— այժմ թողուլ զամենայն սնոտիապատում վէպս հնոցն, և բուռն հարուլ միայն զերջանկալէտ բարեպաշտութեանց և նախագահ նախակարգութեանց վեհափառ տէրանցն Սիւնի և ցեղին Սիսակայ...»[28]։

Ստեփանոս Օրբելյանը Խորենացուց հետո հայ առաջին պատմիչն է, որ փորձ է արել տալ պատմության գիտական շարադրանքը։ Մեծ չափերով օգտըվել է իշխանական դիվանի փաստաթղթերից, կաթողիկոսական շրջաբերականներից, հրովարտակներից, եկեղեցիների կալվածագրերից, վիմական արձանագրություններից, գրքերի հիշատակարաններից՝ բոլորն էլ՝ պատմական, վավերական աղբյուրներ։ Նման մոտեցմամբ Ստեփանոս Օրբելյանը մի գլխով բարձր է իր նախորդ և հետնորդ շատ պատմիչներից։ Նա օգտագործել է նաև բանավոր աղբյուրներ՝ ժողովրդական զրույցներ, վանքերի ծագման ու ճըգնավորների մասին որոշ հրաշապատում ավանդություններ, և իբրև դարի զավակ հավատացել է հրաշքներին, բայց գիտակցել է, որ դրանք պատմություն չեն[29]։

Սյունյաց նահանգի պատմությունը նա շարադրել է Հյուսիսային Հայաստանի, Վրաստանի և Մերձավոր Արևելքի պատմության մեջ տեղի ունեցած առավել խոշոր անցքերի անդրադարձումներով, ուստի նրա երկը մեծ արժեք է ներկայացնում ոչ միայն Հայաստանի, այլև հարևան ժողովուրդների պատմության համար։

Իբրև ֆեոդալական դասակարգի գաղափարախոս, Օրբելյանի համար ժողովուրդը՝ աշխատավոր մարդիկ «խառնիճաղանջ ամբոխ» են, ուստի չեն կարող լինել պատմություն ստեղծողներ. նրանք միայն պատմության առարկան են։ Այդ մոտեցմամբ նա առավելապես նկարագրել է աշխարհիկ և հոգևոր ֆեոդալների գործունեությունը, արել նրանց պատմությունը։ Հակառակորդի գրքերից նա անդրադարձել է նաև Սյունիքի սոցիալական շարժումներին, հաղորդելով շատ կարևոր տեղեկություններ։

---

28 Ստ. Օրբելյան, էջ 14։

29 Տե՛ս Մ. Աբեղյան, նշված աշխ., էջ 312։

* * *

*Պատմագրությունը Կիլիկիայում ևս ունեցել է իր ներկայացուցիչները, մասամբ զիջելով բուն Հայաստանի պատմագրությանը և հետ մնալով Կիլիկիայում զարգացած գիտության ու մշակույթի մյուս ճյուղերից։*

Սմբատ Գունդստաբլը *(XIII դ.) Կիլիկյան հայկական թագավորության պետական ականավոր գործիչ, օրենսգիր ու պատմագիր է, որի գրչին «Դատաստանագրքից» բացի պատկանում են նաև մի քանի այլ գործեր։ Նրա պատմագիտական հիմնական երկասիրությունը «Տարեգիրքն» է՝[30] 951—1276 թթ. դեպքերի նկարագրությամբ։ Այնտեղ համառոտակի շարադրված է Բյուզանդիայի X դարի վերջի և XI դարի առաջին կեսի քաղաքական իրադարձությունների, Բագրատունիների թագավորության վերջին շրջանի, սելջուկ-թուրքերի, մոնղոլների, Եգիպտոսի մամլուքների արշավանքների պատմությունը։ Համեմատաբար ավելի հանգամանորեն են շարադրված Կիլիկյան հայկական թագավորության քաղաքական իրադարձությունները։*

*Սմբատի տարեգրության սկզբի մասը համառոտումով առնված է Ուռհայեցու Ժամանակագրությունից։*

Հեթում պատմիչը *(XIII դ. վերջ—XIV դ. սկիզբ) երկրորդ աշխարհիկ հեղինակն է կիլիկյան հայ պատմագրության մեջ։ Հայտնի է որպես քաղաքական-հասարակական և դիվանագիտական խոշոր գործիչ։ Հեթում Բ թագավորի հանձնարարությամբ նա իլխանների արքունիքում դիվանագետի դեր է կատարել և մասնակցել Եգիպտոսի դեմ մղված հայ-մոնղոլական արշավանքներին։ Նրա «Պատմութիւն թաթարաց» երկը[31] ոչ միայն թաթարների, այլև միջնադարյան Արևելքի պատմությունն է։ Այնտեղ տրված է Ասիայի 14 երկրների պատմա-աշխարհագրական տեսությունը. որպես այդպիսին այն միջնադարում եվրոպական երկրների համար կարևոր աղբյուր է ծառայել Ասիայի, Կովկասի, Հարավային Ռուսաստանի պատմության, աշխարհագրության, տնտեսության, քաղաքական կյանքի, ինչպես նաև մոնղոլների պատմության հետ ծանոթանալու համար։ Հեթումն այն հորինել է Կղեմես Ե պապի հանձնարարությամբ։ Պատմա-աշխարհագրական տեղեկություններով հարուստ այդ երկը մտնում էր ընդհանուր պատմության բնույթ կրել։ Այն իր ժամանակի հասկացողությամբ տեղեկատու ձեռնարկ է լայն ընդգրկմամբ և առանձնապես կարևոր աղբյուր մոնղոլա-իրանական պետության, նրա և Եգիպտոսի միջև մղված պատերազմների մասին։ Աշխատության վերջին մասը, որն ընդգրկում է իլխանության քաղաքական պատմությունը, հեղինակը շարադրել է՝ ելակետ ունենալով հայկական պետության և Հեթումյանների շահերը։ Դրանով են բացատրվում առանձին դեպքերում երևույթների ու իլխաններից ոմանց գործունեության ոչ օբյեկտիվ գնահատումների փաստերը։*

*Հեթումը, որպես ազդեցիկ քաղաքագետ, կողմնակից էր մոնղոլների, Հռոմի պապի և եվրոպական պետությունների դաշինքի ստեղծմանը՝ ընդդեմ մամլուքների և սելջուկների։ Նա գտնում էր, որ նման դաշինքը և Եգիպտոսի տնտեսական բլոկադան կապահովեն Կիլիկյան թագավորության անվտանգու-*

---

30 *«Սմբատայ Սպարապետի Տարեգիրք», Վենետիկ, 1956։*

31 *Նույնը, Վենետիկ, 1842։*

թյունը։ Նրա Պատմությունը վերջանում է XIII դարի վերջին և XIV դարի սկզբին Մերձավոր Արևելքում տիրող ռազմա-քաղաքական դրության նկարագրությամբ։

Հեթումի երկասիրությունը, որը գրված է եղել միջնադարյան ֆրանսերենով, ճանաչում է գտել դեռևս միջին դարերում, շատ անգամ վերահրատարակվել է, թարգմանվել ֆրանսերեն, հոլանդերեն, իտալերեն և անգլերեն, հայերեն (1842)։

Հեթումը ֆրանսերենից թարգմանել է «Պատմութիւն Քրոնիկոնին» և գրել է ազգաբանական աշխատություններ։ «Քրոնիկոնին»-ը 1294 տարվա իրադարձությունների նկարագրությունն է՝ սկսած մեկ թվականից մինչև 1294 թվականը։ Նրանում տեղեկություններ են հաղորդված Հռոմի կայսրերի ու պապերի, ֆրանսիական պատմության Մերովինգյան և Կարոլինգյան շրջաձևռագրերի վերջում, առանձին հատվածներից հետո, սկսած IX դարից, թագավորությունների ու իշխանությունների մասին։ 1173 թվականից սկսած տրված են տեղեկություններ նաև Կիլիկիայի հայկական թագավորության մասին։ Հեթումը, որպես պատմիչ, իր ընդգրկած հարցերով ու մատուցման ձևերով ուշագրավ երևույթ էր հայ պատմագրության մեջ։

## 3. ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ԱՅԼ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

**Մանր ժամանակագրությունները՝** գրված XIII—XIV և հետագա դարերում նույնպես հետաքրքիր ու հարուստ նյութ են պարունակում հատկապես Հայաստանի և հայ ժողովրդի քաղաքական պատմության մասին։

Նրանց մեջ հաճախ հանդիպում ենք ավելի մանրամասն և ուշագրավ տեղեկությունների՝ միջֆեոդալական պայքարի, ինչպես նաև օտար նվաճողների տիրապետության, վարած ներքին քաղաքականության, ծանր հարկապահանջության, պատճառած ավերածությունների, մարդկանց բնաջնջման ու գերեվարման, սովի, համաճարակի, արտագաղթի, կենցաղային առանձին երևույթների և շատ այլ հարցերի մասին։

Ժամանակագիրները գրի են առել անցյալի կամ հաճախ էլ՝ գերազանցորեն ժամանակակից դեպքերը, մեծ մասամբ իրենց գավառի, քաղաքի, գյուղի, վանքի շրջակայքում տեղի ունեցած իրողությունները։

XIV դարից սկսած, անընդհատ պատերազմների քաղաքական ծրերում և հարափոփոխ իրադրության պայմաններում, պատմությունը գրի էր առնվում գերազանցապես մանր ժամանակագրությունների ձևով[32]։

XIII դարում Արևելյան Հայաստանի, Կիլիկիայի, Վրաստանի քաղաքական իրադարձությունների, ինչպես նաև Զաքարյանների մղած ազատագրական պատերազմների, մոնղոլական և մամլուքյան նվաճումների, Հուլավյանների գահակալական կռիվների պատմության կարևոր աղբյուր է Սամուել Անեցու ժամանակագրության շարունակող **Ստեփանոս եպիսկոպոսի** «Տարե-

---

32 Վ. Ա. Հակոբյան, Մանր ժամանակագրություններ, հատ. 1, էջ 12։

գրությունը»[33]։ Այն սկսվում է 1193 թ. և ավարտվում 1290 թ. դեպքերի գրառմամբ։

XIII դարի Անանուն տարեգրի «Ժամանակագրությունը»[34], որն սկսվում է IV դարից և հասցվում է մինչև 1236 թ., արժեքավոր աղբյուր է հատկապես մոնղոլների կողմից Հայաստանի նվաճման պատմության համար։

Կիլիկյան հայկական թագավորության ներքին կյանքի, ֆեոդալական կենտրոնախույս և կենտրոնաձիգ ուժերի պայքարի, խաչակիրների արշավանքների, նրանց ստեղծած թագավորությունների ու իշխանությունների պատմության համար կարևոր աղբյուր է Հեթում Բ թագավորի «Տարեգրությունը»[35]։

Սելջուկյան նվաճումների, Հայաստանի պետականության վերականգնման, մոնղոլների արշավանքների ու տիրապետության՝ հատկապես XIII դարի 60-ական թվականների վերջից սկսած մինչև 1309 թ. Հայաստանի և Կիլիկիայի քաղաքական իրադարձությունների պատմության չափազանց արժեքավոր աղբյուր է Անանուն Սեբաստացու «Տարեգրութիւնը»[36]։

Կիլիկյան հայկական պետության XIII դարի վերջին տասնամյակների պատմության կարևոր աղբյուր են նաև Ներսես Պալիենցի ժամանակագրական հատվածները[37]։ Նրանք պարունակում են հետաքրքիր ու արժեքավոր տեղեկություններ եգիպտացիների կողմից 1292 թ. Հռոմկլայի գրավման, 1290—1300 թթ. Եգիպտոսի դեմ մղված հայ-մոնղոլական պատերազմների մասին։

Միջին դարերում գրավոր երկի մի ուշագրավ ձև էին նաև թղթերը: Դրանք նույնպես կարևոր սկզբնաղբյուրներ են հայ միջնադարի հասարակական-քաղաքական ու հոգևոր մտքի զարգացման մակարդակի, իշխող աշխարհիկ ու հոգևոր խավերի աշխարհայեցողության, գործող իրավական նորմերի, ավանդույթների, սովորույթների, հասարակական կյանքում ու կենցաղում արմատացած հասարակական չարիքների, իշխող բարքերի, նրանց դեմ մղված պայքարի և շատ այլ հարցերի մասին։ Նրանց հեղինակներն են ժամանակի ականավոր աշխարհիկ ու հոգևոր գործիչները։

XII դարի Հայաստանի և Կիլիկիայի սոցիալ-տնտեսական կյանքի պատմության ուսումնասիրության համար չափազանց կարևոր աղբյուր է Ներսես Շնորհալու «Թուղթ ընդհանրականը»[38]։ Այն շատ հարուստ է ու բազմաբովանդակ։ Շնորհալին այդտեղ տալիս է տիրող բարքերի ընդարձակ պատկերը, բնութագրում իր ժամանակի հասարակության ինը խավերը, նշում նրանց կենցաղի, վարքագծի արատավոր կողմերը, կարդում անհրաժեշտ խրատներ։ «Թղթում» մեծ տեղ է տրված հոգևորականությանը. կաթողիկոսը նշավակում է նրանց հոռի բարքերը՝ ագահությունը, կաշառակերությունը, առևտրով ու վաշխառությամբ զբաղվելը, սեփական տնտեսություն վարելը և այլն։ Պատմության համար առանձին նշանակություն ունեն նաև Շնորհալու և Գրիգոր Տղայի այն թղթերը, որոնք վերաբերում են հայկական և հունական եկեղեցի-

33 Տե՛ս նույն տեղում, էջ 32—50։
34 Տե՛ս նույն տեղում, էջ 22—27։
35 Տե՛ս նույն տեղում, էջ 74—89։
36 Տե՛ս «Մանր ժամանակագրություններ», հատ. 2, էջ 118—153։
37 Տե՛ս նույն տեղում, էջ 176—189։
38 Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, Էջմիածին, 1865։

ների այսպես կոչված «Միության խնդրին»։ Դրանցից արժեքավոր է հատկապես Գրիգոր Տղա կաթողիկոսի Թուղթը ուղղված Գրիգոր Տուտեորդում, ուր արտացոլված են Հայաստանի ազատագրված տերիտորիաների բնակչության կյանքի բարվոքված պայմանները և ամիրայությունների տիրապետության տակ գտնվողների ծանր վիճակը[39]։

Վիմական արձանագրությունների թիվը XII—XIV դարերում պատկառելի չափեր է ընդունում և հաշվվում է հազարներով։ Արձանագրություններ փորագրվել են ճարտարապետական շենքերի, խաչքարերի և այլ կոթողային հուշարձանների, տապանաքարերի վրա ամենաբազմազան առիթներով և բովանդակությամբ, ուստի նրանք միջնադարի սոցիալ-տնտեսական ու քաղաքական կյանքի պատմության ուսումնասիրության համար չափազանց կարևոր նշանակություն ունեն[40]։ Արձանագրությունները պարունակում են հարուստ փաստական նյութեր, ինչպես երկրի տնտեսական կյանքի՝ հարկային և ագրարային քաղաքականության, հարկերի տեսակների, նրանց էության և չափերի, աշխարհիկ և հոգևոր կալվածատիրության, հողերի և անշարժ ունեցվածքի առ ու ծախքի, նվիրատվությունների, հասարակության սոցիալական կառուցվածքի մեջ առաջացած փոփոխությունների, ֆեոդալական տների, մեծատունների քաղաքային վերնախավի դիրքի և դերի, շինարարության, հայ մշակույթի, տարբեր բնագավառների, այնպես էլ քաղաքական անցքերի վերաբերյալ։

Նկատելի չափով պաշտոնական, իսկ ընդհանրապես վավերական բնույթ կրող վիմագիր արձանագրությունները բազմաբովանդակ, ստույգ, այդ պատճառով էլ անգնահատելի պատմական սկզբնաղբյուրներ են։

Հիշատակարանները հանդիսանում են Հայաստանի և Մերձավոր Արևելքի շատ երկրների միջին դարերի պատմության ուսումնասիրության համար կարևորագույն աղբյուր[41]։

Ձեռագրի գրիչներն ու պատվիրատուները, կազմողներն ու նորոգողները, ձեռագրերի վերջում, առանձին հատվածներից հետո, սկսած IX դարից, թողել են սեղմ ու համառոտ նշումներ։ Հետագա դարերի հիշատակարաններն ավելի ընդարձակ են ու փաստալից։ Գրիչները հայտնել են գրչագրական, կենսագրական տեղեկություններ և, որ կարևորն է, շատ հաճախ, նկարագրել

---

39 Տե՛ս «Գրիգոր կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ Նամականի», Վենետիկ, 1835, «Պատասխանի թղթոյն Վարդապետին Գրիգորի Տուտէորդւոյն...», Վենետիկ, 1865։

40 Տե՛ս «Վիմական տարեգիր», Կ. Ղաֆադարյան, Հովհաննավանքը և նրա արձանագրությունները, Երևան, 1948, նույնի՝ Սանահնի վանքը և նրա արձանագրությունները, Երևան, 1957, նույնի՝ Հաղբատ. ճարտարապետական կառուցվածքները և վիմական արձանագրությունները, Երևան, 1963, «Դիվան հայ վիմագրության», պրակ 1, Անի քաղաքը, կազմեց Հ. Ա. Օրբելի, Երևան, 1966։ Պրակ 2, Գորիսի, Սիսիանի և Ղափանի շրջանները, կազմեց Ս. Գ. Բարխուդարյան, Երևան, 1960։ Պրակ 3, Վայոց Ձոր, Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջաններ, կազմեց Ս. Գ. Բարխուդարյան, Երևան, 1967։ Պրակ 4, Գեղարքունիք, Կամոյի, Մարտունու և Վարդենիսի շրջաններ, Երևան, 1973։

41 Տե՛ս Գարեգին Ա կաթողիկոս, Հիշատակարանք ձեռագրաց, հ. Ա, Անթիլիաս, 1951, «ԺԴ դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Խաչիկյան, Երևան, 1950, «ԺԵ դարի հիշատակարաններ», մասն Ա, 1955, մասն Բ, 1958, մասն Գ, 1967։

ժամանակի պատմական, քաղաքական անցուդարձը, երկրի վիճակը և այլն[42]։ Նրանց մեծագույն մասը, լինելով հասարակության ստորին խավերի ներկայացուցիչներ, ավելի մոտ է կանգնած եղել ժողովրդին, բաժանել նրա ճակատագրի դառնությունները և, իբրև ականատես, ճշմարտացի նկարագրել մեկ կամ մի քանի տարվա կարևոր իրադարձությունները, տվել են դրանց դիպուկ գնահատականը։ Նրանք գրանցել են նաև կենցաղային արժեքավոր մանրուքներ, որոնք անտեսվել կամ վրիպել են միջնադարյան պատմագիրների տեսադաշտից։

Հիշատակարաններում հարուստ փաստական նյութ է պահպանված հայ ժողովրդի և Հայաստանի տարբեր շրջանների ու հարևան երկրների դրության, տնտեսության ճյուղերի, հարկերի ու հարկահանման ձևերի, բնակչության կոտորածների, գերեվարման, քաղաքների ու գյուղերի ամայացման մասին։ Զափազանց արժեքավոր տեղեկություններ են հաղորդում ֆեոդալական տների ու նրանց ներքին հակամարտությունների, եկեղեցական կալվածատիրության, աշխատավոր ժողովրդի կեղեքված ու ընչազուրկ վիճակի, երկրի տնտեսական քայքայման ու անկման, կրոնական հալածանքների ու այլ հարցերի մասին։

Հիշատակարանները ուշագրավ նյութ են հաղորդում բնակավայրերի, տեղանունների, զանգվածային արտագաղթերի, ինչպես նաև գաղթի ուղիների, նոր գաղթավայրերի և այլ իրողությունների մասին։ Այնտեղ առատ տեղեկություններ կան գրչության կենտրոնների, միջնադարյան վարդապետարանների ու դպրոցների վիճակի, ուսուցման մեթոդների և առհասարակ մշակութային կյանքի վերաբերյալ։

Հիշատակարանների՝ որպես պատմական սկզբնաղբյուրների նշանակությունը շատ ավելի մեծ է XIV—XVI դարերի պատմության ուսումնասիրման համար, երբ հայ պատմագրությունը թույլ դրսևորումներ ունեցավ։

**Վարքագրությունները և վկայաբանությունները**՝ մեծապես արտացոլում են օտար նվաճողների տիրապետության ժամանակաշրջաններում հայ ժողովրդի ազգային-կրոնական հալածանքների, բռնությունների, տառապանքների պատմությունը և հարուստ փաստական նյութ են պարունակում[43]։

Գրիգոր Բալուեցու (1290), Գրիգոր Եպիսկոպոս Կարնեցու (1321), Ամենավագ Դերջանցու (1335), Սեբաստիայի Ստեփան արքեպիսկոպոսի (1387), Ավագ Սալմաստեցու (1390) և շատ ուրիշների վարքագրություններում պահպանվել են հավաստի փաստեր՝ սելջուկ և մոնղոլ նվաճողների պատճառած ավերածությունների, նրանց խարդախությունների ու չարաշահումների մասին։ Այնտեղ նկարագրված են գլխավորապես քրիստոնյաների հալածանքները, բռնի դավանափոխության միջոցառումները, դավանանքի համար սահմանված հատուկ հարկի, ապօրինի հարկերի ու տուրքերի գանձման վայրագ ձևերը և շատ այլ մանրամասնություններ։

**Առակները, պատմական վիպասանությունները, ճառերն ու քարոզները** նույնպես արժեքավոր աղբյուրներ են Հայաստանի և Մերձավոր Արևելքի շատ

---

42 Տե՛ս «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», էջ VII։

43 Անտոնյան Հ., Մանանդյան Հ., Հայոց նոր վկաները, Վաղարշապատ, 1903։

երկրների XII—XIV և հետագա դարերի պատմության ուսումնասիրության համար։

Գեղարվեստական գրականության առանձին կոթողների մեջ ևս բավականաչափ նյութ կա երկրի սոցիալ-տնտեսական և պատմա-քաղաքական վիճակի վերաբերյալ։ Այդպիսիներից են, օրինակ, Մխիթար Գոշի, մանավանդ, Վարդան Այգեկցուն վերագրվող առակները, ինչպես նաև Ներսես Շնորհալու «Վիպասանությունը»[44]։ Վերջինիս մեջ դրսևորված է Ներսես Շնորհալու ջերմ հայրենասիրությունը, միաժամանակ և ատելությունը հայրենիքի թշնամիների դեմ։

Նշանավոր է նաև Շնորհալու «Ողբ Եդեսիոյ»[45] քերթվածքը, գրված սելջուկների կողմից Եդեսիա քաղաքը 1144 թ. գրավելու և ավերելու առիթով։

Շնորհալուց 150 տարի հետո, Կիլիկիայում, նշանավոր փիլիսոփա Ռաբունին միևնույն ձևով ստեղծել է «Ոտանաւոր պատմութիւն Ռուբինեանց» աշխատությունը[46]։

Պատմական ատաղձ, ուստի և պատմագիտական արժեք ունեն նաև Ֆրիկի՝ արտաքին և ներքին ճնշումների դեմ բողոք արտահայտող բանաստեղծությունները։

XII—XIV դարերի հայ պատմիչների, տարեգիրների, ժամանակագիրների, գրիչների, գրողների թողած գործերը կարևոր սկզբնաղբյուրներ են ոչ միայն հայ ժողովրդի՝ բուն Հայաստանի, Կիլիկյան հայկական պետության, այլև Կովկասի և ընդհանրապես Մերձավոր Արևելքի երկրների պատմության ուսումնասիրության համար։

---

44 «Ներսիսի Շնորհալւոյ Բանք չափաւ», Վենետիկ, 1830։
45 «Ողբ Եդեսիոյ յօրինեալ տեառն Ներսիսի Կլայեցւոյ», Տփխիս, 1829։
46 «Վահրամայ Րաբունւոյ ոտանաւոր պատմութիւն Ռուբինեանց», Փարիզ, 1859։

ԳԼՈՒԽ ՔԱՌԱՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

# Ի Ր Ա Վ Ո Ւ Ն Ք

## 1. ՀԱՅ ԻՐԱՎՈՒՆՔԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

XII—XIV դարերի հայ իրավունքի աղբյուրներն են՝ Կանոնագիրքը, դատաստանագրքերը. որոշ նյութեր պահպանվել են նաև մատենագրության մեջ, վիմական արձանագրություններում և ձեռագրերի հիշատակարաններում։

Հայոց Կանոնագրքի մասին խոսք եղել է նախորդ հատորում, ուստի այստեղ դրան չենք անդրադառնա։

Դավիթ Ալավկաորդու «Կանոնները» իր ժամանակի կանոնական գրականության ուշագրավ հուշարձաններից է։

Դավիթ Ալավկաորդին Գանձակեցի էր։ Նրա ծննդյան թվականը հայտնի չէ, իսկ մահվան վերաբերյալ սկզբնաղբյուրները տարբեր տվյալներ են նշում, հայտնի է, սակայն, որ նա 1140 թ. արդեն մեռած էր։

Դավիթ Ալավկաորդին իր կանոնները գրել է Արքայություն անվամբ մի քահանայի խնդրանքով, նրա կանոնների թիվը ամբողջական ընդօրինակություններում 97 է[1]։ Կանոնները գրվել են ի պատասխան քահանաների առօրյա գործունեության մեջ ծագած հարցերի, որով և պայմանավորվել է ընդգրկված խնդիրների շրջանակը։ Դրանց զգալի մասը վերաբերում է այնպիսի հարցերի, որոնք կենցաղային մաքրակեցության տեսակետից ժամանակի համար կարևոր են եղել. օրինակ՝ մկնանկ սննդի մասին կանոնները։ Թերևս այդ է պատճառը, որ հայագիտության դասականներն անցյալում (Մ. Չամչյան, Հ. Տաշյան և այլք) ըստ արժանվույն չեն գնահատել Դավթի կանոնները։ Դրանք կարևոր սկզբնաղբյուր են հայ իրավունքի պատմության, մասնավորապես՝ դատական, քրեական և քաղաքացիական իրավունքների, ինչպես նաև միջնադարյան հայ կենցաղի, հասարակական-քաղաքական մտքի պատմության համար։ Դավիթը հայտնում է որոշ մտքեր, որոնք շատ առաջադիմական էին ժամանակի համար և ունեին հասարակական մեծ հնչեղություն, օրինակ՝ աշխատանքի պաշտպանության վերաբերյալ կանոնները։

Դավիթ Ալավկաորդու կանոնները գործնականում, հավանաբար, կիրառ-

---

[1] Տե՛ս Ա. Աբրահամյան, Դավիթ Ալավկաորդու կանոնները, ուսումնասիրություն և բնագիր, առանձնատիպ «Էջմիածին» ամսագրից, 1953. անգլերեն թարգմանությունը տե՛ս C J. F. Dowsett, The Penitential of David of Ganjak, Louvain, 1961.

վել են։ Մխիթար Գոշը, իր Դատաստանագիրքը կազմելիս, օգտվել է Դավթի մի շարք կանոններից, որոնք կարևոր նշանակություն ունեն և՛ իրենց իրավական բովանդակությամբ, և՛ հասարակական արժեքով։

Մխիթար Գոշի Դատաստանագիրքը հայ միջնադարյան իրավունքի գլուխգործոցն է։

Գոշի ծննդյան թվականը նույնպես հայտնի չէ։ Կիրակոս Գանձակեցին հաղորդում է. «Հռչակաւորն այն և մեծիմաստն գիտութեամբ՝ էր ի քաղաքէն Գանձակայ... զվարդապետական պատիւ ժառանգեալ»։ Մխիթարն ապրել է շատ երկար. «Եհաս ի խորին ծերութիւնն... և փոխեցաւ յաստեացս... ալեւորեալ և լի աւուրբք»[2]։ Քանի որ նա մահացել է 1213 թ., ուստի վկայությունների համաձայն պետք է ծնված լինի XII դարի 20—30-ական թվականներին[3]։

Մխիթար Գոշի գրական ժառանգության մեջ առանձնանում են Առակները և Դատաստանագիրքը։

Դատաստանագրքի ստեղծումն այս դարաշրջանում պայմանավորված էր ժամանակի հրամայական պահանջով։ Հյուսիս-արևելյան Հայաստանը և Կիլիկիան ապրում էին վերելք կյանքի բոլոր բնագավառներում՝ տնտեսական, շինարարական, քաղաքական, մշակութային. բարգավաճում էին քաղաքներն ու քաղաքային կյանքը, հասարակական-տնտեսական հարաբերությունները շատ ավելի բարդ կերպարանք էին ստացել։ Բուն Հայաստանում և Կիլիկիայում հայ ժողովուրդը մղում էր ազատագրական լարված պայքար, վերականգնելու սեփական իշխանությունն ու պետականությունը։ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը այդ լարման հոգևոր արտահայտությունն էր։ Իր Դատաստանագրքով Մխիթարն ընդառաջում էր ցանկալի գալիքին ու սահմանում ապագա թագավորության իրավական հիմունքները։ Սակայն Մխիթարի մտահոգության անմիջական առարկան, այնուամենայնիվ, ներկան էր։ Անհրաժեշտ էր կարգ ու կանոն սահմանել խիստ բարդ կերպարանք ընդունած և շատ կողմերով խաթարված իրականության մեջ։ Նա ձգտում էր սեփական օրենսդրությամբ երկրի ներսում ամրապնդել արդարադատությունն ու խաղաղությունը, կայունացնել հասարակական համակեցությունը և դրանով նաև համախմբել իր ժողովրդի ուժերը ընդդեմ արտաքին թշնամու։

Դատաստանագիրքը գրվել է 1184 թ.։ Այն հասել է մեզ հայկական և այլալեզու մի քանի խմբագրություններով։ Հայկական խմբագրությունները երեքն են, որոնք կազմվել են 1184—1265 թթ. միջև ընկած ժամանակահատվածում։ Առաջին խմբագրությունը համարվում է հեղինակայինը։ Այդ խմբագրությունները միմյանցից տարբերվում են թե ներքին-էական և թե արտաքին-ձևական հատկանիշներով[4]։

---

2 Կիրակոս Գանձակեցի, էջ 219—220։

3 Նույն տեղում, էջ 207։

4 Նախ հրատարակվել է երկրորդ խմբագրությունը. «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց», իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբք Վահան ծ. վարդապետի Բաստամեանց, ի Վաղարշապատ, 1880 (սակայն իրականում լույս է տեսել 1884 թ.)։ Վերջերս հրատարակվեցին նաև հեղինակային և երրորդ խմբագրությունների գիտականքննական բնագրերը. «Մխիթար Գոշ. Գիրք դատաստանի», աշխատասիրությամբ Խոսրով Թորոսյանի, Երևան, 1975։

*Հայ ժողովրդի հասարակական-տնտեսական հարաբերությունների, նիստ ու կացի, վարք ու բարքի, ապրելակերպի, զբաղմունքի, առօրյա հոգսերի, ունեցվածքային և հասարակական փոխհարաբերությունների, մի խոսքով՝ ներքին կյանքի տարբեր կողմերի վերաբերյալ Դատաստանագիրքը տալիս է առատ նյութ ու բազմակողմանի տեղեկություններ։ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը որպես միջնադարյան իրավունքի նշանավոր գործ առաջնակարգ տեղ է գրավում աշխարհի ճանաչված օրենսդրական հուշարձանների շարքում։*

*Մխիթար Գոշի Դատաստանագիրքը պաշտոնապես չի հաստատվել ազգային լիազոր իշխանությունների կողմից, չնայած դրան, այն կյանքի ուղեգիր է ստացել և գործադրվել հայ իրականության մեջ շուրջ 700 տարի*[5]*։*

*Գոշի Դատաստանագրքում կան մարդասիրական բնույթի առաջադիմական օրենքներ։ Նա պահանջում է, որ ստրուկի կամ ճորտի կյանքի դեմ ոտնձգողը քրեական պատասխանատվության ենթարկվի, անկախ նրանից, թե ով է հանդգնողը և սոցիալական աստիճանակարգության մեջ ինչ դիրք է գրավում։ Մխիթար Գոշը շատ առաջ է անցնում իր դարից*[6]*։ Իրավունքի պատմության մեջ Դատաստանագիրքը առաջիններից է, որ սահմանում է, ժամանակակից արտահայտությամբ, աշխատանքի պաշտպանության կամ աշխատանքի անվտանգության վերաբերյալ օրենքներ։ Օրինակ, Մխիթարը սահմանում է. «Ու եթէ աւելի քան զօրէնն անգթաբար հրամայիցէ գործել եւ այնու վնաս մահու հասցէ ի տերանց ընդ հարկիւ անկելոց, պարտապան լիցի արեան դատաստանի գերագունից տերանց»*[7]*։*

*Միջնադարյան իրավունքի մեջ գոյություն ուներ մարդու և անձի հակադրությունը, եթե մարդ էին և՛ ստրուկը, և՛ ճորտը, և՛ ազատը, ապա անձ էր միայն ազատը։ Այս հակադրությունը միջնադարում, սոցիալ-տնտեսական հիմքից բացի, ուներ նաև կրոնական հիմք։ Մարդը ոչ միայն ազատ էր կամ ստրուկ, ազնվական կամ կախյալ գյուղացի, այլև պատկանում էր այս կամ այն դավանանքին՝ քրիստոնյա, մահմեդական և այլն։ Ինչպես մահմեդական, նույնպես և քրիստոնեական օրենքները այլադավանի համար սահմանում էին ավելի խիստ պատժաչափ։ Այդ օրենքը կա նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքում, սակայն Մխիթար Գոշը չի հանդուրժում ոտնձգությունը մարդու կյանքի դեմ՝ անկախ նրանից՝ քրիստոնյա՞ է նա, թե մահմեդական, որովհետև նրանց երկուսին էլ միավորում է «մարդ» հասկացության մեջ, երկուսի կյանքն էլ հավասարապես պաշտպանելով քրեա-իրավական միջոցներով։*

---

5 *Բացի բուն Հայաստանից Գոշի Դատաստանագիրքը, լատիներեն համառոտ թարգմանությամբ, 1519 թ. գործադրության մեջ մտավ լեհահայ գաղութում։ Շատ չանցած Դատաստանագրքի լատինական խմբագրությունը թարգմանվեց Ղրիմի թաթարերեն։ XVIII դարի կեսերին Աստրախանի հայկական գաղութը, օգտվելով նաև Մխիթար Գոշի Դատաստանագրքից, կազմեց մի նոր օրենսգիրք, որը հաստատվեց ցարական կառավարության կողմից և գործադրվեց հարավային Ռուսաստանի հայության մեջ մինչև դատական ռեֆորմները։*

*XVIII դ. սկզբներին, վրաց արքայազն Վախթանգը (Վախթանգ Զ) էջմիածնից խնդրում է Մխիթար Գոշի Դատաստանագրքից մի օրինակ և թարգմանել տալով վրացերեն, մտցնում է իր օրենսգրքի մեջ, իսկ Վախթանգ Զ-ի Դատաստանագիրքը գործում էր ամբողջ վրաց պետության մեջ։*

6 *Տե՛ս И. Орбели,* Басни средневековой Армении, М.—Л.

7 Մխիթար Գոշ, *Գիրք դատաստանի, էջ 49։*

Հռոմեական, ինչպես և ժամանակի եվրոպական իրավունքի համար ելակետը անձն էր, ուստի չկա մարդ առհասարակ, կա ստրուկ և տեր, ճորտ և ազնվական։ Հայկական իրավունքի ելակետը մարդն էր՝ անկախ այն բանից՝ նա իշխող էր, թե ենթակա։ Մարդու և անձի հակադրության վերացման ուղղությամբ առաջին մեծ քայլը պետք է լիներ խտրականության վերացումը կյանքի քրեա-իրավական պաշտպանության բնագավառից և Մխիթար Գոշը արել է պատմական այդ քայլը։ Իհարկե, Մխիթար Գոշն իր ամբողջ գործունեությամբ ընդհանրապես և իր Դատաստանագրքով՝ մասնավորապես, տիրապետող կարգերի պաշտպանն էր, ուստի նա չէր կարող անել ավելին, քան թույլ էին տալիս դարի ու տիրող կարգերի պայմանները։ Բայց և այն, ինչ արել է Մխիթար Գոշը մեծ է իր դարի համար ընդհանուր չափանիշով։

Սմբատ Սպարապետի Դատաստանագիրքը նույնպես ցույց է տալիս, որ XII—XIII դարերում ազգային օրենսգիրքը հայ ժողովրդի համար, իրոք, դարի հրամայական պահանջ էր դարձել և այդ պահանջը զգում էին թե՛ իշխող վերնախավը և թե՛ ժողովրդական զանգվածները՝ ինչպես մայր հայրենիքում, այնպես էլ Կիլիկիայում։ Կիլիկյան խոշոր գործիչ և մատենագիր Ներսես Լամբրոնացին արձանագրել է. «Յամս քահանայապետութեանն Հայոց Գրիգորի… թուին ՈԽԲ (1193) …խնդիր եղև առ նոյն սրբազանն ի քաղաքաց և ի գաւառաց բնակչաց՝ քաղաքական օրինացն… որով ընտրեսցեն զիրաւունս…»։ Ապա. «ոչ գտաք օրէն, բայց միայն զկանոնականս… Իսկ քաղաքի օրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս և ոչ առ իշխանս…»[8]։

Մեծ Հայքում հարցը լուծվեց Մխիթար Գոշի Դատաստանագրքով։ Իսկ Կիլիկիայում զգացվող կարիքը ինչ-որ չափով բավարարելու համար Ներսես Լամբրոնացին հայերենի թարգմանեց հռոմական օրենքներ։ Հաջորդ քայլն այս ուղղությամբ կատարեց Սմբատ Սպարապետը՝ հավանաբար 1240—1253 թթ., նորից թարգմանելով «Անտիոքի ասիզները»[9]։ Սակայն որքան էլ ջանար Սըմբատ Սպարապետը շտկել Ասիզների բնագիրը, այնուամենայնիվ դրանք ևս միանգամայն անբավարար էին ամբողջ հասարակության սպասարկման համար, որովհետև թերի էին, ընդգրկում էին իրավահարաբերությունների շատ սահմանափակ բնագավառ և, գլխավորը, ազգային չլինելով, խորթ էին ժողովրդի վարք ու բարքին։

Սմբատ Սպարապետն ընմբռնել էր, որ միակ ելքը ազգային դատաստանագրքի ստեղծումն է. «Ես՝ Սմբատս,— գրում է նա,— բազում աշխատանօք աշխատեցայ ի դատաստանագիրքս… փոխեցի զսա ի հին եւ ի դժուարաբառ եւ յանհասկընալի գրոց ի մեր հեշտալուր եւ ի սովորական բառս, ի թւակա-

---

8 Գ. Զարբհանալյան, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, էջ 754—755։

9 Հայերեն բնագիրը ֆրանսերեն զուգահեռ թարգմանությամբ հրատարակել է Հ. Ղ. Ալիշանը, տե՛ս „Assises d'Antioche", Venise, 1876. «Անտիոքի ասիզների» հետ նույնատիպ «Երուսաղեմի ասիզները» էնգելսը բնորոշել է որպես ֆեոդալական կարգերի առավել դասական արտահայտություն (տե՛ս *К. Маркс* и *Ф. Энгельс,* Избранные письма, 1943, стр. 484), «Անտիոքի ասիզների» ֆրանսերեն բնագիրը կորել է, և այդ մեծարժեք հուշարձանը աշխարհին հայտնի է միայն Սմբատ Սպարապետի հայերեն թարգմանությամբ։

նութեանս Հայոց ՉԺԴ (1265) ամինս»[10]։ Հայագիտության մեջ ընդունված է, որ Սմբատի գլխավոր աղբյուրը Մխիթար Գոշի Դատաստանագիրքն է։ Բայց Սմբատը սոսկ թարգմանիչ չի եղել։ Նա հարցին մոտեցել է ստեղծագործաբար, Մխիթար Գոշի Դատաստանագիրքը համարեցրել է Կիլիկիայի պայմաններին, անհրաժեշտ փոփոխություններ է մտցրել նրա մեջ, մասամբ՝ ըստ էության, և հիմնովին՝ ըստ ձևի։ Ամենից առաջ, Սմբատը, որպես կանոն, Մխիթարի Դատաստանագրքից հանել է աստվածաշնչային-կանոնական հավելումները և բերել է զուտ իրավական-նորմատիվ նյութը. «Եւ զսիրտ բանիցն առեալ եդի համառօտաբար»։

Այնուհետև, Սմբատը փոխել է Մխիթար Գոշի Դատաստանագրքի համակարգը, ղեկավարվելով նյութի դասակարգման առարկայական սկզբունքով։ Շարադրանքի լեզուն Կիլիկիայում գործածական հայերենն է։

Սպարապետի Դատաստանագիրքը մեծարժեք հուշարձան է, նույնքան կարևոր, որքան և Մխիթար Գոշի Դատաստանագիրքը։ Բայց որովհետև այն չուներ ազգային համընդհանուր այն ընդգրկումը, ինչպիսին էր Մխիթար Գոշի Դատաստանագիրքը, բխում էր Կիլիկիայի տեղական պայմաններից և համարեցված էր նրան, ուստի Կիլիկյան հայկական պետության վերացումով շրջանառությունից դուրս եկավ նաև նրա Դատաստանագիրքը։

IX—XIII դարերի հայ մատենագիտությունը թեև սակավ տեղեկություններ է պարունակում ժողովրդի ներքին կյանքի վերաբերյալ, այդուհանդերձ, երբեմն հանդիպում են նաև իրավունքին վերաբերող փաստեր, որոնք զգալիորեն լրացնում ու հարստացնում են մեր պատկերացումները։

Հայագիտության մեջ վաղուց արդեն նշված է այն կարևորությունը, որ ունեն վիմական արձանագրությունները որպես սկզբնաղբյուր։ Հ. Օրբելին գրում է. «Նույնիսկ մի այնպիսի նշանավոր կենտրոնի, ինչպիսին Անին է, քաղաքային վարչության ներքին կառուցվածքի մասին մենք պատկերացում չէինք ունենա... եթե չլինեին վիմական արձանագրություններն իրենց տվյալներով՝ քաղաքային խորհուրդների, ավագների խորհրդի, աչքի ընկնող ավագների և այլնի մասին։ Առանց վիմական արձանագրությունների... առանց բազմաթիվ հարկային ու պարհակային տերմինների, ճանապարհային, մաքսային և այլ տուրքերի անվանումների վերլուծության, անհնար կլիներ գաղափար կազմել քաղաքի ֆինանսական կարգի մասին... Բացառիկ հարուստ նյութ են պարունակում վիմական արձանագրությունները նաև մասնավոր-իրավական հարաբերությունների բնութագրման համար. դրանք պայմանագրեր են հողատարածությունների համատեղ օգտագործման, ունեցվածքի բաժանման, կալվածագրերի մասին՝ բոլորը փորագրված վանքերի պատերին, որով և սրբագործվում ու հաստատվում են այդ վավերագրերը»[11]։

**Հիշատակարաններում** ևս երբեմն հանդիպում են իրավական կյանքի կոնկրետ փաստերի գրառումներ։ Դրանով իսկ հիշատակարանները դառնում են, թեև օժանդակ, բայց և կարևոր սկզբնաղբյուր հայ իրավունքի պատմության համար։

---

10 Սմբատ Սպարապետ, Դատաստանագիրք, էջ 4։

11 «Դիվան հայ վիմագրության», պրակ Ա, էջ VII։

## 2. ՔՐԵԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ[12]

*Միջնադարյան Հայաստանում հանցագործություն է համարվել ամեն մի գործողություն՝ ուղղված գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների, պետության, հասարակական կառավարման, ունեցվածքի և առհասարակ սեփականության, անձի կյանքի ու առողջության, եկեղեցու, տիրապետող գաղափարախոսության դեմ։*

*Հանցագործության պատճառները, ինչպես ամենուր, այնպես էլ IX—XIII դարերի Հայաստանում, ամենից առաջ, սոցիալ-տնտեսական էին, թեև տարածված մտայնությունն այն վերագրում էր մարդու մեղսականությանը, կրոնական ջերմեռանդության թուլացմանը, առ Աստված հավատի տկարությանը և այդ ամենի հետևանքով առաջացած բարքերի խաթարմանը։ Ստորին խավերի օրինախախտումները, մանավանդ դասակարգային ընդվզումները, տիրապետող իրավաըմբռնման համաձայն ծանր հանցագործություն էին։*

Հանցագործության ենթական *կարող էր լինել միայն մարդը։ Այս դրույթն այժմ կարող է տարօրինակ թվալ, բայց ժամանակի համար կարևոր նշանակություն ունի, որովհետև վկայում է հայ իրավական մտքի զարգացման մակարդակի մասին։ Ոչ միայն IX—XIII դարերում, այլև XIV—XV և նույնիսկ XVI դարում Եվրոպայում և այլ երկրներում հանցագործության ենթակա, այսինքն՝ հանցագործություն կատարող են համարվել նաև կենդանիները, միջատները, նույնիսկ անշունչ առարկաները[13]։*

*Մխիթար Գոշը սահմանում է, որ վնասակար կամ վտանգավոր կենդանին ոչնչացվի միայն ու միայն նրա համար, որպեսզի վերացվի վտանգի աղբյուրը, իսկ պատժում են մարդկանց (վնասի փոխհատուցումով և այլն), «յայտ է մարդկան լինել դատաստան, զի ոչ անմարմնոյ եւ ոչ զգայականաց է դատաստան»[14]։*

*Մարդուն քրեական պատասխանատվության ենթարկելու հարցն անպայման ենթադրում է իր գործողությունների համար հաշիվ տալու և նրանց հետևանքները գիտակցելու հոգեկան-մտավոր կարողություն, որը ամենից առաջ կապված է տարիքի հետ։ Տարբեր օրենսդրություններ տարբեր հասակ են նշել որպես սահմանակետ բացարձակ անմեղսունակության և հարաբերական կամ լրիվ մեղսունակության միջև։ Ըստ միջնադարյան հայկական իրավունքի բացարձակ անմեղսունակության սահմանը 10 տարին է, հարաբերական մեղսունակության հասակը՝ 10—15 տարին։ 15-ից բարձր լիակատար մեղսունակության հասակն է։*

*Տարիքը միակ պայմանը չէր։ Ի ծնե կամ հիվանդագին պատճառներով խանգարված գիտակցությունը, հայ իրավունքի համաձայն, քրեական պատասխանատվությունը բացառող հանգամանք է։*

---

12 *Միջնադարյան Հայաստանի քրեական իրավունքի մասին մանրամասն տե՛ս* Ա. Թովմասյան, *Հին և միջնադարյան հայ քրեական իրավունք, Երևան, 1962։*

13 «Уголовное право», М., 1948, стр. 316, *Канторович,* Процессы против животных в средние века, СПб., 1897, *K. Artma,* Tierstrafen und Tierprozesse, Insbruck, 1891.

14 Մխիթար Գոշ, *Գիրք դատաստանի, էջ 7։*

Միջնադարում մեղքը ընկալվել է երկու իմաստով՝ կրոնական և իրավական։ Աստծու պատվիրաններից ամեն մի շեղում՝ գործով, խոսքով, նույնիսկ մտովի համարվել է մեղք՝ այս բառի կրոնական-եկեղեցական իմաստով։ Թեև մարդու կողմից սահմանված օրինականությունը համարվել է ածանցված աստվածային օրինականությունից, բայց նրանք չէին նույնացվել, ուստի «մեղքը» իրավական իմաստով համարվել է միայն առաջինի խախտումը։ Հայ իրավունքը զանազանում է մեղքի երեք ձև. կամա՝ դիտավորություն, ակամա՝ անզգուշություն և խառն, որը պարունակում է դիտավորության և անզգուշության տարրեր։

Գործած մեղքերի համար սահմանվում էին տարբեր պատիժներ։ Քննվող ժամանակաշրջանի պատժային համակարգը հետևյալն է։ Հոգևոր-կանոնական պատիժներ՝ բանադրանք, նզովք, ապաշխարություն իր տեսակներով և զանազան պատիժներ հատկապես հոգևոր պաշտոնեության համար (աստիճանազրկում, պաշտոնազրկում և այլն)։ Մարմնավոր-աշխարհական պատիժներ՝ մահապատիժ, մարմնական պատիժներ, ազատությունից զրկող կամ սահմանափակող պատիժներ և գույքային-դրամական պատիժներ։ Կիրառվում էր նաև պատիժների համակցություն։

Պատիժը կոչված էր հատուցելու տուժողի կորուստը, կամ գոհացում տալու տուժողի վրիժառության բնական զգացումին, ապահովելու պետական-հասարակական շահը ոտնձգություններից, հանցագործի պատճառած չարիքի դիմաց նրան զրկելու կենսական որոշ բարիքներից, նաև ուղղելու, խրատելու և այդ բոլորով ազդելու հասարակության մյուս անդամների վրա ևս («առ ի խրատ այլոց»)։ Հավանաբար գիտակցվել է, որ պատժի ներգործուն ուժը ոչ թե նրա խստությունն է, այլ անխուսափելիությունը, ուստի հռչակվել է հանցանքի ու պատժի համաչափության սկզբունքը՝ «իսկ պատիժն ըստ վնասուն համեմատ լիցի»[15]։

Հանցագործը կրում էր երկու տեսակի պատիժ՝ մարմնական-նյութական, որը սահմանված էր Դատաստանագրքով, ենթակա էր դատարանի իրավասությանը և հոգևոր պատիժ, որը ենթակա էր միայն հոգևոր իշխանությունների, այսինքն, եկեղեցու իրավասությանը։ Այս երկփեղկման հիմքը դարձյալ մեղքի երկակի ըմբռնումն էր։ Հանցագործությունը մեղք էր երկու իմաստով՝ հոգու և մարմնի. նախ աստվածադիր օրինականության դեմ և ապա՝ մարդադիր։ Բայց, աստծուն բավարարելուց բացի, պետք էր բավարարել նաև տուժողին։ Մխիթար Գոշը նշում է, որ «կանոնք հոգւոյ ուղղիչ է, եւ դատաստան՝ մարմնոյ»։ Թեպետ դրանք իրարից բաժան են, բայց շատ գործերում միավորվում են, ինչպես հոգին և մարմինը, որոնք բնությամբ երկու են և իրար հետ չեն շփոթվում, բայց իրար խառնվելով դառնում են մեկ և բազմաթիվ գործեր կատարում են մի կամքով։ «Վասն այնորիկ թէպէտ պատահի միով սահմանաւ վարիլ, ոչ միմեանց լուծիչ են»[16]։ Կանոնական պատիժը չի վերացնում քրեա-իրավականը, ինչպես որ վերջինս էլ չի վերացնում կանոնականը։

15 Մխիթար Գոշ, Գիրք դատաստանի, էջ 150։

16 Նույն տեղում, էջ 6։

## 3. ԱՄՈՒՍՆԱ-ԸՆՏԱՆԵԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ

*Հին պատկերացումների համաձայն ամուսնությունը համարվել է աստվածային հաստատություն։ Բայց, ամուսնությունը ամենից առաջ այն կարևորագույն հաստատությունն է, որն ընտանիքի և հասարակական կյանքի հիմքն է կազմում և կոչված է ապահովելու մարդկային ցեղի վերարտադրությունը։*

*Ամուսնությունը պետք է բավարարի որոշ պայմաններ, որոնցից իրավական կարգավորման են ենթարկվում միայն ամենահիմնականները։ Օրենքով սահմանված պայմանները, որոնք կոչվում են նաև ամուսնական արգելքներ, անկախ նրանց աղբյուրից (կանոնական, պետական, սովորութային) քննվող ժամանակաշրջանի Հայաստանում (նաև քրիստոնեական աշխարհում) բաժանվում էին երկու խմբի՝ պայմաններ, որոնց (կամ թեկուզ մեկի) խախտման դեպքում ամուսնությունը համարվում էր անվավեր ու լուծելի, և պայմաններ, որոնց խախտման դեպքում ամուսնությունը թեև համարվում էր անվավեր, բայց ոչ լուծելի*[17]*։*

*Այն դեպքում, երբ օրենքը ամուսնական չափահասության համար որոշակի տարիք չի սահմանել, սովորութական իրավունքի համաձայն, այն տատանվել է տղաների համար՝ 12—14, աղջիկների համար՝ 10—12 տարիների միջև։ Թույլատրվել կամ ընդունվել է ամուսնությունը նաև ավելի փոքրահասակների միջև։ Հուստինիանոսի օրենսգրքով ամուսնական չափահասության տարիք սահմանված էր 14 տղամարդկանց և 12 կանանց համար։*

*Հայկական «Մաշտոց» կոչվող եկեղեցական գրքում սահմանված է. «Այլ լիցի փեսային ԺԴ (14) ամաց և հարսն ԺԱ (11) ամաց»։ Դժվար է ասել, այս սահմանումը V դարից է, թե հետագայի։ Ներսես Շնորհալի կաթողիկոսը սահմանում է 15 տարեկան հասակ տղայի և 12՝ աղջկա համար*[18]*։*

*Ըստ Մխիթար Գոշի Դատաստանագրքի տղան կարող է ամուսնանալ 14 տարեկան հասակից, երբ ի վիճակի է տնտեսություն վարել կամ պարապել առևտրով*[19]*։*

*Այս հարցին անդրադառնում է նաև 1243 թ. Սսում գումարված եկեղեցական ժողովը, սահմանելով. «Փեսայն մի՛ պակաս քան զչորեքտասան ամն, և հարսն՝ քան զերկոտասան»*[20]*։*

*Մխիթար Գոշի Դատաստանագրքի մի այլ հոդվածից ակնհայտ է դառնում, որ ավելի սովորական էր 18 տարեկան տղայի և 15 տարեկան աղջկա ամուսնությունը, որովհետև դա է համարվել որդեծնության հասուն տարիքը*[21]*.*

**Մենամուսնություն.** *տղամարդը պետք է ունենա մի կին և կինը՝ մի ամուսին։ Օրինական ամուսնության մեջ գտնվողը իրավունք չունի երկրորդ ամուսնության։*

---

17 *Այս պայմանների մասին մանրամասն տե՛ս* Վ. Բաստամեանց, *Ամուսնութիւնը ըստ Հայոց եկեղեցական իրաւաբանութեան, «Փորձ», 1880, № 6—12, 1881, № 4—6։*

18 *Տե՛ս* «Թուղթ ընդհանրական», *էջ 84։*

19 Մխիթար Գոշ, *Գիրք դատաստանի, էջ 13—14։*

20 Կիրակոս Գանձակեցի, *էջ 305։*

21 Մխիթար Գոշ, *Գիրք դատաստանի, էջ 311։*

**Դավանանք.** *ամուսնացողները պետք է նույն դավանանքն ունենան։*

**Ամուսնացողների ազատ կամքը.** *Հայ կանոնական թե աշխարհական օրենսդրությունը առաջին հայրապետներից ու եկեղեցական ժողովներից ըսկըսած միշտ շեշտել է, որ ամուսնությունը պետք է լինի կողմերի կամավոր ցանկությամբ և նախապես միմյանց տեսնելով։*

**Ծնողների համաձայնություն.** *Ամուսնանալու համար անհրաժեշտ էր ամուսնացողների ծնողների համաձայնությունը։ Այս հարցում տարբեր էր բաժան և անբաժան զավակների իրավական դրությունը։ Բաժան զավակների ամուսնության համար ծնողների համաձայնությունը թեև նույնպես անհրաժեշտ էր, բայց դրա բացակայությունը չէր կարող իրավական արգելք հանդիսանալ ամուսնանալու համար։*

**Չհասություն.** *Արյունակցական կամ իրավաբանական որոշ կարգի բարեկամությունը նույնպես արգելք է եղել ամուսնության։*

*Ամուսնությունն արգելող ազգակցության աստիճանը տարբեր ժամանակաշրջաններում տարբեր է եղել։*

*Մեր առաջին հայրապետների ու եկեղեցական ժողովների կանոններում չհասության որոշակի աստիճանը սահմանող ընդհանուր կանոն չենք գտնում։ Առաջինը Շահապիվանի ժողովն է (447 թ.), որը սահմանում է. «Արդ մի ոք... զքոյր կամ զքեռորդի կամ զեղբաւրորդի կամ զհօրքոյր կամ զայլ ոք յազգի անդ իւրում մինչև ի չորրորդ ծնունդն կին զոք մի իշխեսցէ առնել»*[22]*։*

*Շահապիվանի ժողովի որոշումները քրիստոնեական աշխարհի առաջին պաշտոնական փաստաթուղթն է, որ սահմանում է ամուսնությունն արգելող ազգակցության որոշակի աստիճան։*

*Այս հարցին անդրադարձել է նաև Դվինի երկրորդ ժողովը, որն արգելում է ամուսնությունն արդեն հինգերորդ աստիճանում։ Այս կարգը, հավանաբար, ընդհանուր ընդունելություն չի գտել կամ դիմադրության է հանդիպել, ուստի Պարտավի ժողովը (768) նորից վերադարձել է Շահապիվանի որոշմանը, արգելելով ամուսնությունը միայն մինչև չորրորդ աստիճան*[23]*։ Ներսես Շնորհալին նոր կարգ է մտցնում։ Ամուսնության համար նա բացառում է գծերից յուրաքանչյուրում չորս ծնունդ, այլ կերպ՝ թույլատրում է ամուսնությունը միայն 9—10-րդ աստիճանում։ Համենայն դեպս, միջնադարում Շնորհալուն հասկացել են նաև այդպես։ Շնորհալու որոշումից շատ չանցած, հայոց եկեղեցին 1243 թ. Սսի ժողովով չհաստատեց այդ կարգը և սահմանեց նորը. «Զպսակն ընտրութեամբ արասցեն՝ վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան»*[24]*։*

*Մխիթար Գոշը ևս արգելում է ամուսնությունը կողմնագիծ ազգականների միջև մինչև չորրորդ աստիճանը։ Չհասության նույն աստիճանն է սահմանում, Մխիթարից հետո, նաև Հովհաննես Երզնկացին։*

*Մնում է միայն ավելացնել, որ ամուսնությունը ուղղագիծ ազգականների միջև ինչպես արտաքին, այնպես էլ մեր եկեղեցու կողմից արգելված էր առհասարակ։*

---

22 *«Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի, էջ 446—447։*
23 *Տե՛ս «Կանոնագիրք Հայոց», խմբեց Ա. Ղլտճյան, էջ 170։*
24 Կիրակոս Գանձակեցի, *էջ 304—305։*

**Առողջական վիճակ.** *որոշ կարգի հիվանդներ ամուսնանալու իրավունք չունեն (հոգեկան հիվանդներ, անբուժելի բորոտներ, կույր կինը և այլն)։*

**Ամուսինների անձնական և գույքային հարաբերությունները.** *Մխիթար Գոշի Դատաստանագրքում սահմանված էր նաև, որ տղամարդը տան գլուխն է, որին ենթարկվում են ընտանիքի մյուս բոլոր անդամները, մասամբ իրավունքի ուժով, մասամբ՝ բարոյականության։ Կինը բացառություն չի կազմում. «զի ամենայնիւ իշխան լիցի այրն ի վերայ կնոջն որպէս յայլսն, նմանապէս յամուսնանալն»*[25]*։ Բայց, տղամարդու իշխանությունը ինքնանպատակ բռնակալություն չէ կամ անկաշկանդ կամայականություն։ Տղամարդն է վարում ընտանիքի տնտեսությունը, նա է ներկայացնում ընտանիքը արտաքին աշխարհում, ուստի նրա իշխանությունը բխում է ընտանիքի ընդհանուր ղեկավարման՝ հասարակարգով պայմանավորված, օրենքով սահմանված, սովորույթով սրբագործված կոչումից։ Նրա իրավունքները զուգակցված են պարտականություններով ճիշտ այնպես, ինչպես կնոջ պարտականությունները լրացված՝ իրավունքներով։*

*Ամուսինը պարտավոր է հարգել իր կնոջը, մարդկային լինել նրա նկատմամբ, հոգալ նրա բոլոր կարիքները, ապահովել նյութական բարեկեցությունը, խնամել հիվանդանալու դեպքում, հոգալ բուժման համար անհրաժեշտ ծախսերը, պահպանել ամուսնական հավատարմությունը և այլն։ Արժե նշել, որ եվրոպական մի շարք երկրների օրենսդրությունները իրավունք էին տալիս ամուսնուն ծեծել կնոջը՝ նրան խրատելու-ուղղելու նպատակով։ Այնինչ, ըստ Մխիթար Գոշի Դատաստանագրքի, ամուսինը ոչ միայն իրավունք չուներ դաժանությամբ վարվել կնոջ հետ, ծեծել նրան, այլև նման արարքների համար նա կարող էր պատասխանատվության ենթարկվել։*

*Կնոջ իրավունքների համեմատական հավասարությունը տղամարդու հետ, համենայն դեպս նրանց իրավունքների ոչ այնքան մեծ տարբերությունը հիմնված էր, թերևս,* *ամուսինների* **գույքային հարաբերությունների** *վրա։ Մխիթար Գոշի Դատաստանագրքից երևում է, որ ամուսինների մինչամուսնություն ունեցած գույքը նրանց անձնական սեփականությունն էր։ Ամուսնանալու պահից արդեն ընտանիքում կինն ուներ իր նյութական-գույքային հենարանը, որը և կնոջ իրավունքների երաշխիքն էր ամուսնու հանդեպ և ընտանիքում։ Կնոջ գույքը գոյանում էր նրա բաժինքից և այն նվերներից, որ ստանում էր ամուսնուց ու նրա բարեկամներից մինչամուսնությունն ու դրանից հետո, և որոնք կոչվում էին «երեսաց տեսոյ»։ Բաժինքն ու երեսաց տեսոն կնոջ սեփականությունն էին և մնում էին մինչև վերջ։ Կնոջ սեփականությունը տնօրինում էր տղամարդը («լինի ի ձեռս առնն»), բայց այն երբեք չէր ձուլվում ամուսնու կամ նրա ընտանիքի գույքի հետ։ Կնոջ գույքի աճի կամ շրջանառությունից ստացված եկամտի մի մասը (օրինակ՝ նրա բերած անասունների աճի կեսը) ավելանում էր կնոջ գույքին և միայն մյուս կեսն էր անցնում տղամարդուն, այն էլ «յաղագս աշխատելոյ ի պահելն»։ Ամուսինների գույքային հարաբերությունների ավելի պարզ պատկերը իրավական հուշարձանները տա-*

---

25 Մխիթար Գոշ, *Գիրք դատաստանի, էջ 37։*

լիս են տավելապես ամուսնալուծության հարցերը կարգավորելու առիթով։ Կնոջ մահվամբ, եթե անզավակ է եղել, նրա ամբողջ գույքը անցնում էր իր ծնողներին, իսկ եթե զավակներ է ունեցել, անցնում էր սրանց և ոչ ամուսնուն։ Երբ մահանում էր տղամարդը, ընտանիքի գույքից անջատվում էր կնոջ սեփականությունը և միայն մնացածն էր կարգավորվում ժառանգության իրավունքով։ Ապահարզանի դեպքում, եթե այն տեղի էր ունենում արտաքին պատճառներով (որդեծնության անկարողություն և այլն), կինը ստանում էր իր ամբողջ գույքը, իսկ եթե ներքին պատճառներով, ապա այն կողմը, որից բխում էր անհամերաշխությունը, տալիս էր մյուս կողմին նաև իր սեփական գույքի մի մասը «վասն անարգութեան պսակին»։

Ամուսնությունը լուծվում էր ամուսիններից մեկի մահվամբ կամ մահացած ճանաչվելու հետևանքով և կամ ապահարզանով։ Ամուսիններից մեկի մահից հետո ողջ մնացած ամուսինը կարող էր նորից ամուսնանալ՝ միայն որոշ ժամանակ անց։

Ապահարզանի օրինական պատճառներն են. ամուսնական անկարողություն կամ ամլություն, զանազան հիվանդություններ, որոնք անբուժելի են կամ կարող են ազդել սերնդի վրա, չհավատություն, կրոնափոխություն, անբարոյական վարք, փոխադարձ ատելություն և այլն։

Դատաստանագրքով կարգավորվում էին նաև ծնողների և զավակների անձնական և գույքային հարաբերությունները: Ծնողները պարտավոր են «որչափ ձեռնհաս իցեն», պահել իրենց զավակներին, հոգալ նրանց կարիքները «մինչեւ ի կատարմանն հասակի»։ Զավակները պարտավոր են հարգել իրենց ծնողներին լսել նրանց, անհրաժեշտության դեպքում խնամել։ «Անզգամ» որդիներից ծնողները կարող են հրաժարվել, զրկել ժառանգությունից։ Հայրերի հանցագործության համար որդիները պատասխանատու չեն և հակառակը։ Ընտանիքի հիմնական գոյամիջոցների (օրինակ՝ հող) օտարման մասին հայրը միանձնյա վճիռ չի կարող կայացնել, դրա համար անհրաժեշտ է նաև չափահաս զավակների համաձայնությունը։ Հոր կենդանության ժամանակ չափահաս որդիները կարող են բաժանվել ծնողներից, և վերջիններս պետք է «որ ինչ եւ հասանէ յընչից իւրեանց, տացեն նոցա սիրով եւ նստուսցեն զնոսա ուրոյն» [առանձին]. գործում է անդրանկության իրավունքը։

Ժառանգումը լինում է առանց կտակի և ըստ կտակի։ Երբ հանգուցյալը ի դեպ մահվան որևէ կարգադրություն չի արել իր ունեցվածքի վերաբերյալ, այն անցնում է ժառանգներին գործող օրենքների կամ սովորութական իրավունքի համաձայն։ Ըստ օրենքի (առանց կտակի) ժառանգման սկզբունքը արենակցական անմիջական կամ ընդհանուր կապն է ժառանգատուի հետ. «այլ զի սերմն ոչ է հօրն՝ ոչ ժառանգէ»[26]։ Առաջին կարգի ժառանգները զավակներն են, այնուհետ՝ հայրը, եղբայրը, «ապա թէ չիցէ եղբայր, հօրեղբայրն ժառանգիցէ, Եւ թէ չիցէ հօրեղբայր, այլ ընտանի մերձաւոր ժառանգիցէ ի ցեղէ հօրն»[27]։ Սկզբունքն է «զցեղ հօրն առնէ ժառանգ և ոչ մօրն», այդ պատ-

26 Մխիթար Գոշ, Գիրք դատաստանի, էջ 75։
27 Նույն տեղում, էջ 73։

ճառով «մայր եւ քոյր եւ կին՝ ոչ ժառանգեն, այլ մասունս առնուն»[28], ժառանգության իրավունքի սահմանը մերձավոր ազգականությունն է, ուստի Դատաստանագիրքը որոշում է և այդ սահմանը. «մինչ ի չորրորդ զարմն»[29]։ Եթե չկան ժառանգներ մինչև ազգակցության չորրորդ աստիճանը, ժառանգությունը համարվում է տիրազուրկ գույք և անցնում է պետությանը, մասնավորապես՝ եկեղեցու դատավորներին։

Ժառանգատուի տղաներն ու աղջիկները ժառանգում են հավասարապես, մի տարբերությամբ։ Չամուսնացած («որ տակաւին ի տան իցէ») քույրը ժառանգում է եղբայրներին հավասար չափով, ամուսնացած («արտաքս գնացեալ») քույրը՝ եղբոր բաժնի կեսի չափով կամ, ինչպես Մխիթար Գոշն է ասում. «Երկու դուստր առն եղեալքն միոյ որդւոյ առցէ բաժին»[30]։ Պատճառն այն է, որ ամուսնացած աղջիկը հոր տնից արդեն բաժինք է ստացել և եթե նա մյուսների հետ հավասար չափով նաև ժառանգություն ստանա, ապա հոր տնից նրա ամբողջ ստացածը ավելին կլինի, քան եղբայրներինը, կամ դեռ չամուսնացած քույրերինը, իսկ դա «ոչ է արդարադատութիւն»։

Ժառանգումն ըստ կտակի կատարվում է բացարձակապես ժառանգատուի կամքով, որը սահմանափակված չէ. «զամենայն ինչ զտան իւր եւ զհոգւոյ եւ զթաղման իւրոյ խօսեսցի ըստ հաճոյից իւրոց»[31]։ Մխիթար Գոշի Դատաստանագիրքը սահմանում է նաև այն կարգը, որով պետք է բաժանվի ժառանգությունը, երբ ժառանգները մեկից ավելին են և ժառանգության այն չափը, որ պետք է անցնի ժառանգներից յուրաքանչյուրին։ Ժառանգման ենթակա ամեն ինչ համարվում է մի ամբողջություն, ամբողջական մի զանգված, մի միավոր, որը կոտորակվում է ըստ ժառանգների թվի, բայց ժառանգության մեկ վեցերորդ մասն անցնում է մորը, մնացածը բաժանվում զավակների միջև։

## 4. ԴԱՏԱՐԱՆԱԿԱԶՄՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԴԱՏԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ

Մխիթար Գոշի Դատաստանագրքի և այլ տվյալների հիման վրա քննվող ժամանակաշրջանի հայկական դատարանային համակարգը ներկայացնում է հետևյալ պատկերը[32].

1. Պետական դատարաններ. ա) թագավորական (իշխանապետական), բ) իշխանական, գ) ստորին։ 2. Ավատական դատարաններ. ա) դասային, բ) տերունական։ 3. Հոգևոր-եկեղեցական դատարաններ. ա) կաթողիկոսական, բ) եպիսկոպոսական, գ) քահանայական։ Եկեղեցական դատարաններին պետք է ավելացնել եկեղեցական ժողովները, որոնք դատական մարմին չլինելով, ունեին նաև դատական իրավասություն (այս ժամանակաշրջանի Կի-

---

28 Նույն տեղում։

29 Նույն տեղում։

30 Նույն տեղում, էջ 74։

31 Նույն տեղում, էջ 107։

32 Մանրամասն տե՛ս Խ. Թորոսյան, Դատարանային համակարգը միջնադարյան Հայաստանում ըստ Մխիթար Գոշի Դատաստանագրքի, Տեղ. ՀԳԱՀԳ, 1965, № 12, էջ 91—97։

լիկիայի հայկական պետության դատարանային համակարգը որոշ չափով տարբերվում է վերը ներկայացվածից)։ Վերջապես պետք է նշել նաև մի դատարան, որը թեև կար իրականում, բայց տեղ չի գտել դատարանային համակարգում. խոսքը ծերոց ատյանի մասին է, որը հիշատակված է Մխիթար Գոշի առակներից մեկում, պղնձագործի և երկաթագործի առնչությամբ։

Ծերոց ատյանը համքարային մարմին էր և կարգավորում էր միայն համքարությունների և համքարության անդամների միջև ծագած վեճերը։

Հայագիտության մեջ արտահայտվել է այն տեսակետը, թե Հայաստանում չի գործել վճռաբեկության իրավունքը և, հետևաբար, չի եղել վճռաբեկ ատյան: Մինչդեռ, ինչպես պետական, այնպես էլ հոգևոր-եկեղեցական դատարանների համակարգում վերընթաց գծով յուրաքանչյուր դատարան նախորդի համար միաժամանակ վերադաս և վճռաբեկ ատյան էր։ Վճռաբեկության իրավունքը իրավաբանական բարձր զարգացման չափանիշ է համարվում։

Հայագիտության մեջ եկեղեցու մենաշնորհն է համարվել ոչ միայն օրենսդրական գործունեությունը, այլև դատիրավասությունը։ Ըստ այդմ, աշխարհական մարմինները կամ չեն ունեցել դատական իշխանություն կամ երկրորդական է եղել նրանց դերը նշված բնագավառում[33]։ Այդ պատճառով իրավական համարյա բոլոր վեճերի ընդդատությունը սխալմամբ վերագրվել է հոգևոր ատյաններին։

Հայկական պետականության պայմաններում դատական իրավասության բարձրագույն կրողը եղել է աշխարհական գերագույն իշխանավորը՝ թագավորը։ Հոգևոր ատյաններից բացի, եղել է աշխարհական դատարանների համակարգ իր ընդդատության գործերով, որոնք ընդգրկում էին քրեական արդարադատության համարյա ամբողջ բնագավառը և քաղաքացիականի մի մասը։ Սակայն օտար տիրակալության ժամանակ, եթե պահպանվել է աշխարհական համազգային իշխանությունը (կամ հայկական առանձին իշխանություններ), դատական իրավասությունը բաժանված է եղել նրանց և հոգևոր մարմինների միջև, ինչպես նախորդ դեպքում, բայց կաթողիկոսի դերի որոշ ուժեղացմամբ և երկուսի համար էլ այն ընդհանուր սահմանափակումով, որ պայմանավորված էր օտար տիրապետությամբ։

Հայ իրավունքի պատմության մեջ հոգևորականությունը եղել է դատական իրավասության միակ կրողը այն բոլոր դեպքերում, երբ ազգային մարմնավոր իշխանություն չի եղել, իսկ այդպիսի իրավասություն արտոնվել է տիրողների կողմից։

Հոգևոր և աշխարհական դատարաններին ընդդատյա գործերի շրջանակն ինքնին արդեն ցույց է տալիս այդ դատարաններից յուրաքանչյուրի տեսակարար կշիռը արդարադատության իրականացման բնագավառում։ Եզնիկ Կող-

---

33 Տե՛ս Վ. Բաստամյանց, Մխիթարայ Գոշի Դատաստանագիրք Հայոց, Յառաջաբանութիւն, Ա. Գարագաշյան, Քննական պատմութիւն հայոց, մասն Բ, Թիֆլիս, 1895, Խ. Սամուելյան, Մխիթար Գոշի Դատաստանագիրքն ու հին հայոց քաղաքացիական իրավունքը, Վիեննա, 1911, Նույնի՝ «Հին հայ իրավունքի պատմությունը, Երևան, 1939, «Կանոնագիրք հայոց», հատ. Ա, աշխատասիրությամբ Վ. Հակոբյանի, Երևան, 1964, Առաջաբան, և այլն։

բացին գրում է. «Բնութեամբ են՝ ասեն՝ չարիք, և ոչ կամածինք։ Ասեմք. եթէ բնութեամբ իցեն, ընդէ՞ր օրէնք ի թագաւորաց դնիցին, և սաստք ի յիշխանաց, և պատիժք ի դատաւորաց. ո՞չ ապաքէն վասն կարճելոյ չարեացն...»[34]։ Կողբացուց և այլուստ հայտնի[35] նույնանման մի շարք վկայությունների համաձայն քրեական արդարադատությունը և քաղաքացիականը նշանակալի չափով աշխարհական դատարանների իրավասությանն են ենթակա։ Ինքը՝ թագավորն է վրեժ պահանջում իր սահմանած օրենքների խախտման համար, իշխանն է սաստում, և դատավորը՝ պատժում։ Բոլոր դեպքերում, առհասարակ, վրեժ են պահանջում ոչ թե «եպիսկոպոսօք», այլ «իշխանօք»։ Ուստի քրեական գործերը ենթակա էին ոչ թե հոգևոր, այլ աշխարհական դատարանների իրավասությանը։

Այդ հարցի վերաբերյալ ավելի մանրամասն ու ամբողջական պատկերացում կարելի է կազմել Մխիթար Գոշի Դատաստանագրքից։ Այսպես, Դատաստանագրքի երկրորդ հոդվածում, խոսելով դավաճանության, «տերումի գանձի» գողության և սպանության մասին, Մխիթարը գրում է. «Զայդոսիկ թագաւորն դատիցի... Իշխանաց մի՛ լիցի սպանողսն սպանանել առանց հրամանի թագաւորաց, իսկ զգողսն խրատել (իմա պատժել) իշխան լիցի»։

Ամփոփելով այս կարգի վկայությունները, կարող ենք ասել, որ աշխարհական դատարաններին ընդդատյա էին՝ թագավորի, իշխանների, ազատների, հողատերերի ու շինականների փոխադարձ հարաբերությունների ու պարտավորությունների, հարկային, պետական-հպատակային և տերունական-ենթակայական հարաբերությունների, զինապարտության, պատերազմական ավարի բաժանման, գույքային և պայմանագրային հարաբերությունների, առ ու վաճառքի կարգավորման, հասցված վնասի փոխհատուցման, աշխատանքի անվտանգության պահպանության, դավաճանության, լրտեսության, սպանության, ավազակության, դրամանենգման, դրամահատության, շուկայական խարդախության, գողության, մարմնական վնասվածքների պատճառման և նման այլ գործերը։

Հոգևոր ատյաններին ընդդատյա էին միայն այն գործերը, որոնք վերաբերում էին եկեղեցու ներքին կյանքին, ամուսնա-ընտանեկան իրավունքին, նաև այն արարքները, որոնցում բացակայում է մեղքը քրեա-իրավական իմաստով և որոնք, հետևապես, հանցագործություն չեն, թեև ունեն դրա արտաքին հատկանիշները, օրինակ՝ սպանության անմեղսունակության վիճակում, սպանության անհրաժեշտ պաշտպանության ժամանակ և այլն։

Եկեղեցուն ընդդատյա գործերի ցանկն արդեն ցույց է տալիս, որ հոգևոր դատարանը չի ունեցել այն նշանակությունը, որ վերագրվել է նրան։ Եկեղեցական դատարանն զբաղվել է գերազանցապես եկեղեցու և հոգևորականության հետ կապված գործերով։ Աշխարհական գործերի խիստ նեղ բնագավառն է ընդդատյա եղել նրան սահմանափակված առավելապես ամուսնա-ընտանեկան իրավունքով։

---

34 «Եզնըկայ Կողբացւոյ Եղծ աղանդոց», Թիֆլիս, 1914, էջ 42—43։
35 Տե՛ս, օրինակ, Շահապիվանի ժողովի 20-րդ կանոնը։

Հայկական թագավորության, իշխանապետության կամ իշխանությունների գոյության պայմաններում աշխարհական դատարաններն առաջնակարգ նշանակություն են ունեցել արդարադատության իրականացման գործում ոչ միայն այն պատճառով, որ միաժամանակ դատավորներ էին իրենք՝ մարմնավոր բարձրագույն ու տեղական իշխանության ներկայացուցիչները, այլև այն կարևոր փաստի զորությամբ, որ նրանց ձեռքին էր հարկադրանքի ուժը՝ այս բառի զինական-ռազմիկանական իմաստով։ Հանգամանք, առանց որի իրավունքը ոչինչ էր և որով պայմանավորված էր նաև հոգևոր դատարանի գործու նշանակությունը։

Երկու բնույթի (հոգևոր և աշխարհիկ) դատարաններից յուրաքանչյուրն ուներ գործունեության իր բնագավառը, որի սահմաններում նրանք իրարից իրավականորեն անկախ էին։ Այդ դատարանների իրավական գերազանցության հարցն ընթանում էր յուրաքանչյուրի համար իր գծով, երկուսի համար էլ հանգելով աշխարհական բարձրագույն իշխանությանը։ Այդպես էր ըստ իրավունքի։ Ինչ վերաբերում է դատա-իրավական գործնական առօրյային, ապա այս դեպքում որոշիչը ոչ այնքան իրավունքն էր, որքան իշխող դասակարգի երկու դասերի ուժերի իրական հարաբերությունը՝ ամբողջ երկրի ծավալով ընդհանրապես և յուրաքանչյուր տվյալ շրջանում՝ մասնավորապես։

Մխիթար Գոշի Դատաստանագրքում զգալի տեղեկություններ են պահպանվել դատարանի կառուցվածքի մասին, որոնք վերաբերում են գլխավորապես եպիսկոպոսական դատարանին։ Աշխարհական դատարանի կառուցվածքին վերաբերող տվյալները շատ ավելի աղքատ են, կցկտուր։ Սակայն նըկատված է արդեն, որ ինչպես ուրիշ երկրներում, այնպես էլ Հայաստանում, հոգևոր դատարանը կառուցված է եղել աշխարհական դատարանի սկզբունքներով, ուստի մեկի կառուցվածքը պատկերացում է տալիս նաև մյուսի մասին։

Դատարանի կառուցվածքի մասին Դատաստանագրքում և այլուր եղած փաստերը վերաբերում են հիմնականում երեք կետի. ա) դատարանի կազմը, անդամների իրավունքներն ու պարտականությունները, պաշտոնեությունը, բ) դատավորի անձն ու բարոյական հատկությունները, գ) դատավորի վարձատրությունը։

Դատարանը կազմված էր առնվազն երեք հոգուց՝ նախագահ և ատենակալներ։ Իհարկե, դատարանը կարող էր և իրականում, հավանաբար, հանդես է եկել նաև ի դեմս մեկ անձի՝ իշխանի, եպիսկոպոսի և այլնի, բայց սովորականն այն է, որ դատարանը բազմանձնյա է. «Եւ դատաւորին պարտ է... երկուս կամ երիս արս փորձած գիտնականս ունել ի դատաստանին»[36]։ Դատաստանագրքից իմանում ենք, որ փորձառու այդ գիտնականները կարող են լինել «յորոյ եւ իցէ կարգաց», այսինքն՝ և՛ աշխարհական, և՛ հոգևորական. «գործակցօք վարեսցին՝ աշխարհականաւք, եւ քահանայիւք, և վարդապետօք փորձագունիւք»[37]։ Հոգևորականներից ատենակալ կարող էին լինել միայն փորձված վարդապետներն ու քահանաները։ Աշխարհականներից ատենակալներ կարող էին լինել տանուտերերը։ Հոգևորականներն էլ կարող էին լինել ատե-

36 Մխիթար Գոշ. Գիրք դատաստանի, էջ 30.
37 Նույն տեղում, էջ 9։

նակալ աշխարհական դատարաններում։ Ատենակալներին ընտրում-նշանակում էր դատարանի նախագահը։ Ատենակալների իրավունքները որոշակիորեն սահմանված չէին։ Ըստ Դատաստանագրքի նրանք մասնակցում էին, որպեսզի «իրաւամբք լիցի դատաստանն» և «վկայք լիցին իրաւանց դատաստանին»։ Անշուշտ, դատարանի նախագահը միշտ էլ կարող էր իր կարծիքին վճռի ուժ տալ, բայց ընդհանրապես վճիռը կայացվում էր «ատենիւ»։ Ատենակալների կարծիքը կարևոր նշանակություն ուներ և կարող էր ազդել վճռի վրա։

Դատավոր դառնալու համար անհրաժեշտ պայմանները կարելի է խմբավորել երեք կետի շուրջ՝ ա) սոցիալական, բ) տարիքային, գ) կրթականբարոյական։

Հ. Կարստը գրում է. «Դատավորի պաշտոնը օրենքով մատչելի է ընդհանրապես ամեն մի հայորդու, լինի կղերական թե աշխարհական, որ չափահաս է»[38]։ Փաստերը նման եզրակացության հիմք չեն տալիս։ Նախ, դատավոր չէին կարող լինել կանայք։ Բացի դրանից, տեսանք արդեն, որ դատավորներ էին թագավորը, կաթողիկոսը, իշխանը, եպիսկոպոսը։ Սրանք բոլորն էլ տիրող դասակարգի ներկայացուցիչներն էին և՛ պաշտոնական դիրքով, և՛ մանավանդ, իրենց սոցիալական կացությամբ։ Ինչ վերաբերում է աշխարհական և հոգևոր ստորին դատարանների դատավորներին, ապա պետք է ասել հետևյալը։ Հայ քահանաները, սովորաբար հասարակ խավի զավակներ են եղել։ Քահանա դառնալով նրանք, ճիշտ է, անցել են արտոնյալ դասի շարքերը, բայց շատ բանով էլ մնացել են իրենց միջավայրի, իրենց շրջապատի ներկայացուցիչը։

Աշխարհական ստորին դատարանների դատավորները կամ հատուկ պաշտոնյաներ էին՝ քաղաքներում, կամ գեղջավագներն էին՝ գյուղերում։ Նրանք էլ, անշուշտ, ունևոր խավի ներկայացուցիչներ էին։ Բայց, պետք է նկատի ունենալ, որ ստորին դատարանները երկրորդական նշանակություն ունեին։ Արդարադատությունն իրականացնող հիմնական օղակները իշխանական և եպիսկոպոսական դատարաններն էին, որոնք գտնվում էին տիրապետող դասակարգի ձեռքին։

Դատավոր կարող էր լինել 25-ից ոչ պակաս տարիք ունեցող անձը։ Պահանջվում էր, որ նա լինի հմուտ, քաջուսումն, գիտուն, օրենսգետ, բարեառաքինի, աննախանձ, ուղղամիտ, զգաստ, անաչառ, համբերող և այլն։

Հոգևոր ատյանի դատավորները վարձատրվում էին եկեղեցու հաշվին, աշխարհական դատավորները՝ պետության։ Դատավորների մշտական ու կայուն վարձատրությունը՝ պարտվող կողմից գանձվող տուգանքի մի մասն էր։

Դատարանն ուներ նաև այլ պաշտոնյաներ՝ քարտուղար, գրագիր, դատարանում կարգ ու կանոն ապահովողներ և այլն։

Միջնադարյան Հայաստանում, որպես կանոն, դատավարություն կարող էր սկսվել այն ժամանակ, երբ շահագրգռված կողմը դիմում էր դատարանին. դա նշանակում է, որ դատավարության հիմքում ընկած էր մասնավոր մեղադրանքի սկզբունքը։

---

[38] *J. Karst*, Sempadscher Kodex aus dem 13. Jahrhundert...., zweiter Band, Kommentar, Strassburg, 1905, S. 362.

*Անհատապես ոչ ոքի դեմ չուղղված, բայց ընդհանուրի շահը խախտող հանցագործությունների դեպքում, եթե մասնավոր մեղադրող չկար, հետապնդման նախաձեռնությունը վերցնում էին իշխանության մարմինները։ Կողմերը կամ իրենք էին ներկայանում դատարան կամ մեկը դատարան էր բերում մյուսին։ Անհրաժեշտության դեպքում միջամտում էին իշխանության մարմինները։ Կողմերից մեկի բացակայության դեպքում դատաքննություն չէր կատարվում։ Կողմերը պետք է ներկա լինեին անձամբ. նրանց փոխարինել չէր թույլատրվում։*

*Դատաքննության ժամանակ դատարանն ու կողմերն ունեին իրենց հատուկ տեղերը. կենտրոնում, ավելի բարձր՝ դատարանը, ներքևում, ավելի ցածր՝ կողմերը ծնկաչոք։ Մինչև բուն դատաքննության անցնելը, դատարանը փորձում էր հաշտեցնել կողմերին, գործը վերջացնել խաղաղությամբ։ Դատաքննությունն սկսվում էր կողմերի դատախոսությամբ, այնուհետև հարցաքննվում էին վկաները և քննվում ապացույցները։ Կողմերը կարող էին վկաներին բացարկ հայտնել, մասնավորապես այն դեպքում, երբ տվյալ մարդն առհասարակ չէր կարող վկա լինել։*

*Վճիռը կարող էր կայացվել ու հայտարարվել անմիջապես կամ դատաքննությունից օրեր անց։*

*Դատական ապացույցներն էին՝ խոստովանությունը, վկաների ցուցմունքները, փորձագետների (գիտակ անձանց) եզրակացությունը, գրավոր փաստաթղթերը և երդումը (բացառիկ դեպքերում)։ Վկաների թիվը չէր կարող երկուսից պակաս լինել։*

*Դատարանի առաջ կողմերը հավասար էին համարվում, անկախ նրանց սոցիալական դիրքից և դասային պատկանելությունից։ Դա, ի՛հարկե, հարցի ձևական-իրավական կողմն էր, իսկ ըստ էության, օրենքներն ու դատարանը գործիք էին իշխող դասակարգի ձեռքին և կոչված էին ծառայելու նրանց շահերին, ամրապնդելու տիրող կարգերը։ Միջնադարյան գրականության մեջ քիչ չեն և վկայություններ այն մասին, որ դատավորները «կաշառանօք թիւրէին» իրավունքն ու արդարադատությունը։*

## 5. ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԴՐՍԵՎՈՐՈՒՄՆԵՐԸ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

*Մատենագրական աղբյուրներում կան արտադրության գործիքների և տնտեսության ճյուղերի զարգացման աստիճանը բնութագրող բավականին շատ տեղեկություններ։ Երկրագործության, գյուղատնտեսական մթերքների վերամշակման, արհեստների և առևտրի նշանակալից զարգացման պայմաններում աստիճանաբար անիմաստ էր դառնում գանձակուտակումը, որը բնորոշ էր գերազանցապես վաղ միջնադարին։ XIII դարի պատմիչ Կիրակոս Գանձակեցու համակրանքն արժեն ոչ թե Լոռվա իշխան Շահնշահի կողմն է, որը «զըրկեալ և կողոպտեալ էր զիւր հնազանդեալսն և անդ կազմեալ տուն գանձուց ամրագոյն, զոր ոչ էր հնար ումեք տեսանել, զի նեղ արարեալ էր զերան գբին, որ միայն արկանելոյն էր բաւական, իսկ հանելոյ ոչ ևս»[39], այլ՝ գոր-*

39 Կիրակոս Գանձակեցի, էջ 253—254։

ծունյա առևտրական Ռեմեկի, որն իր միջոցները շրջանառության մեջ էր դնում դրանք ավելի մեծացնելու նպատակով։

Միջնադարյան Հայաստանի սոցիալ-տնտեսական կյանքի երևույթներն ու օրինաչափությունները իրենց բազմակողմանի արտահայտությունները գտել են Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի Դատաստանագրքերում (XII—XIII դդ.), որոնց հեղինակները մասամբ և փորձել են բացատրել այդ երևույթները։

Մոնղոլների տիրապետության ժամանակաշրջանում, երբ նկատելիորեն տուժեցին ոռոգելի երկրագործությունը, քաղաքային կյանքն ու արհեստագործությունը՝ օտար տիրողների կիսաքոչվորական անասնապահական տընտեսաձևի հետևանքով, հայ հեղինակները հանդես եկան տնտեսության առաջավոր ձևերի պաշտպանի դերում։ «Զի ամէն աշխարհս անասնով մէն չկարեն ապրիլ զէտ զթուրքմանն, ու այդ իրքդ է, որ ապականէ զերկիր»[40]։

Մխիթար Գոշը, Սմբատ Սպարապետը և այլ հեղինակներ լավ էին գիտակցում ոչ միայն հողի արդյունավետ օգտագործման, այլև քաղաքային կյանքի, արհեստային արտադրության և առևտրի զարգացման անհրաժեշտությունը։ Օրենսդիրները սահմանել են բազմաթիվ օրենքներ տնտեսական գործունեության այդ բնագավառների կարգավորման վերաբերյալ։ Լինելով իշխող դասակարգի գաղափարախոսներ և գոյություն ունեցող կարգերի պաշտպաններ, նրանք միաժամանակ տեսնում էին սոցիալական ներհակությունների սրումը և ձգտում էին մեղմել շահագործման աստիճանն ու սոցիալական պայքարը։

Առևտրական հարաբերությունների քննարկման ընթացքում Մխիթար Գոշը նշում է, որ ապրանքների շուկայական գները սահմանելիս պետք է հաշվի առնել առաջարկի և պահանջարկի փոխհարաբերությունը, քանի որ բերքառատ տարիներին շուկայում ապրանքների առատությունն առաջացնում է էժանություն։ Մխիթար Գոշը, ապա և Սմբատ Սպարապետը վարձու մշակների վարձի չափը նույնպես պայմանավորված էին համարում բերքի առատության կամ պակասության աստիճանով և դրա հետ կապված՝ ապրանքների գների մակարդակով։ «Իսկ վարձաւոր մշակացն վարձն ի յեղանակս առատութեան և նուազութեանն դատիցի. առաւելեալն ի նուազն լիցի, և պակասեալն՝ յառաւելուլն»[41]։ Վարձատրության մակարդակի հարցը շոշափվում է նաև Ներսես Շնորհալու (XII դ.) աշխատություններում, հատկապես թղթերում։ Նա տերերից պահանջում է իրենց ծառաներին և ենթակա մարդկանց համար, «առատագոյն կերակրօք լցուցանել զնոսա աշխատութիւն անդր և չափով և մի՛ յանչափս, որպեսզի կարող լինիցին վաստակօք իւրեանց զաղքատանաց կեանս զտանց և զորդւոց իւրեանց լցուցանել»[42]։ Այս նշանակում է, որ Շնորհալին աշխատուժի պահպանման և աշխատավորների սերնդի վերարտադրության համար կենսամիջոցների նվազագույնը համարում էր տերերի ու աշխա-

40 Սմբատ Սպարապետ, Դատաստանագիրք, էջ 169։

41 Մխիթար Գոշ, Գիրք դատաստանի, էջ 146։

42 Ներսես Շնորհալի, Թուղթ ընդհանրական, Էջմիածին, 1865, էջ 94։

տավորների միջև բնականոն հարաբերությունների պահպանման կարևորագույն պայմանը։

Մխիթար Գոշի, Սմբատ Սպարապետի և Ներսես Շնորհալու վերոհիշյալ դրույթներն ու դատողությունները ինքնին դուռ են բացում իրական և անվանական աշխատավարձի հասկացությունների բնութագրության համար, ռռանցում առկա են այն գլխավոր տարրերը, որոնք ավելի ուշ ժամանակներում ձևավորվեցին որպես աշխատավարձի տեսություն։

Զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի հայ մատենագրության խոշորագույն դեմքերից մեկը՝ Տաթևի համալսարանի դասապետ (ռեկտոր) Գրիգոր Տաթևացին էր (1346—1409), որը հանրագիտարանային բնույթի իր մեծածավալ աշխատություններում թողել է նաև սոցիալ-տնտեսական երևույթների վերին աստիճանի ուշագրավ վերլուծություններ։ Տնտեսագիտական մտքի պատմության համար առանձնապես արժեքավոր են նյութական բարիքների արտադրության և դրանք ստեղծող աշխատանքի առանձնահատկությունների նրա վերլուծությունները։ Որպես բնատնտեսության ժամանակաշրջանի մտածող, Տաթևացին գերազանցապես ընդգծում է նյութական բարիքների սպառողական հատկանիշների՝ որպես մարդկանց պահանջմունքները բավարարելու միջոցի կարևորությունը։ Նա տարբերում է մարմնական և հոգևոր պահանջմունքները, որոնց բավարարման համար հասարակությունը կազմակերպում է նյութական բարիքների արտադրություն, կրոն ու գիտություն[43]։ Մարմնական պահանջմունքները՝ առաջին անհրաժեշտության և «ի զարդարանս վայելչութեան» պահանջներն են, դրան համապատասխան առաջին կարգի բարիքը «այն է, որ թէ լինի, ապրի մարդ և թէ ոչ լինի՝ մեռանի. որպէս հուր և ջուր և այլն։ Իսկ վայելչականն այն է, որ թէ լինի՝ ոչ կենդանացուցանէ զմարդն. և թէ ոչ լինի՝ ոչ մեռանի. որպէս արծաթն, ոսկին, ակն, մարգարիտն և այլն»[44]։ Բայց զարգացած ապրանքային հարաբերությունները հեղինակին օգնում են տեսնելու, որ «վաճառեալ գտանեմք արծաթովն կերակուր, ըմպելի և զայլն»[45]։ Այսինքն՝ ազնիվ մետաղները հանդես են գալիս նաև որպես հասարակական արժեքներ, որոնց ֆետիշային բնույթը մեծ վարպետությամբ է բացահայտում Տաթևացին։ Արծաթասիրության տենչն անսահման է հենց այն մոգական ուժի շնորհիվ, որի առջև խոնարհվում են բոլոր հեղինակությունները։ Եվ այդ է պատճառը, որ մարդիկ կուռքի նման պաշտում են արծաթը և հանուն արծաթի «զոհէին զուստերս և զդստերս իւրեանց. և սոքա սպանանեն զմիմեանս վասն արծաթոյ»[46]։

Գրիգոր Տաթևացու մոտ մարդկանց կարիքների բավարարումը հանդես է գալիս որպես հասարակության զարգացման զսպանակ։ Կարիքը և՛ արտադրության կազմակերպման, և՛ աշխատանքի բաժանման, և՛ արհեստների ու գիտության զարգացման խթանն է, իրական ու բարոյական նորմաների ըստեղծման հիմքը, հասարակական ներդաշնակության ելակետն է ընդհան-

---

43 Գրիգոր Տաթևացի, Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, Կոստանդնուպոլիս, 1741, էջ 105։

44 Նույն տեղում, էջ 258։

45 Նույն տեղում։

46 Նույն տեղում։

րապես։ Կարոտությունը (կարիքը) հանդիսանում է մեծագույն բարիք «վասն մեզ պատճառի», գրում է Տաթևացին, որոնցից են այն, որ «վասն կերակրոյ և պիտոյից զբաղիցիմք, և հոգամք. զի մի՛ դատարկացեալ ի գործոյ ի մեղս պարապիցիմք.. Վասն պիտոյից մեր զանասունս խնամեսցուք... Կարօտ արար զմեզ բնական պիտոյիցն, զի բանիւ և իմաստութեամբ գտցուք արուեստիւ զկերակուր, զգեստ, զյարկն և զայլսն»[47]։

Աշխատանքը նույնպես Տաթևացին դիտում է որպես սոսկ սպառողական արժեքների արտադրության պրոցես, որը, սակայն, չի խանգարում նրան արժեքավոր դատողություններ անելու աշխատանքի բնույթի ու առանձնահատկությունների մասին։ Ստեղծագործական աշխատանքի ձգտումը ծնվում է մարդու հետ միասին, որը նա չի կարող «թաքուցանել ի մարմնի. այլ միշտ եռայ զեռայ կայտռալով և ջանայ զամենայն ի գործ արկանել»[48]։ Աշխատանքը Տաթևացին համարում է բացառապես մարդու բարեմասնությունը, որով և մարդը տարբերվում է կենդանական աշխարհից։ Մարդկային աշխատանքը համեմատելով մրջյունի աշխատանքի հետ, Տաթևացին նշում է մի շարք տարբերություններ։

1. Նախ, որ մրջյունն է «անբան զեռուն և մարդն բանական և իմաստուն»[49]։ Այսինքն՝ մրջյունի գործունեության դրդապատճառը բնազդն է, իսկ մարդու աշխատանքը նախապես մտածված, գիտակցական գործունեությունն է։ «Զորօրինակ՝ արուեստաւոր ոք կամիցի դրոշմել ի քարեայ պատկեր, նախ նկարէ ի միտս իւր զձև պատկերին, և ապա հատանէ զքարն և տաշէ և դրոշմէ զկերպն ըստ այնմ նմանութեանն, որ էր ի միտս ձևացեալ»[50]։ Իր միտքը ավելի պարզելու համար Տաթևացին բերում է նաև ճարտարապետի աշխատանքի օրինակը, երբ «նախ ձևանայ ի միտքն և յետոյ շինէ զտաճարն ըստ այնմ ձևոյ»[51]։

2. Մարդու և մրջյունի աշխատանքի հաջորդ տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ մրջյունը «ոչ ունի գործի վաստակաց. ոչ ձեռն և ոչ եզն. ոչ երկաթ, և կամ այլ ինչ։ Եւ մարդս ունի զորսա»[52]։ Այսինքն, մարդը ներգործում է բնության վրա աշխատանքի գործիքներով, որոնց պատրաստումը և գործադրությունը նյութական բարիքներ արտադրելու նպատակով Տաթևացին համարում է մարդու ամենամեծ բարեմասնություններից մեկը, որից զուրկ են կենդանիները։ Մրջյունը «ոչ կարէ վաստակել և գործել զերկիր. այլոց վաստակաց ընկեր լինի. և ժողովէ ի կալոյ, ի յարտոյ; ի խոտոյ, և յայլոց»[53]։

3. Մարդու աշխատանքի մյուս առանձնահատկությունն այն է, որ նա հասարակական բնույթ ունի, որը բխում է մարդու էությունից՝ «ի շինուածոյ կազմութեանց մարդոյս. զի մարդս ոչ է ինքնաբաւական. այլ կարօտ է ստեղ-

---

47 Գրիգոր Տաթևացի, *Համառօտ հաւաքումն յԱռակաց գրոց Սողոմոնի*, Մատենադարան, ձեռագիր № 1264, թերթ 370աբ։

48 Գրիգոր Տաթևացի, *Գիրք որ կոչի Ոսկէփորիկ*, Կոստանդնուպոլիս, 1746, էջ 17։

49 Գրիգոր Տաթևացի, *Գիրք, քարոզութեան որ կոչի Ամառան հատոր*, էջ 105։

50 Գրիգոր Տաթևացի, *Գիրք հարցմանց*, Կոստանդնուպոլիս, 1729, էջ 258։

51 Նույն տեղում, էջ 163։

52 Գրիգոր Տաթևացի, *Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր*, էջ 106։

53 Նույն տեղում։

ծիլ և միմեանց օգնական լինիլ»։ Հասարակության անդամները փոխադարձաբար լրացնում են մեկը մյուսի կարիքներն ու պետքերը, որոնք բազմազան են։ «Որպես յայտ է ի գեօղս և ի քաղաքս՝ որք ի մի վայր ժողովիմք և զկարօտութիմս միմեանց լնումք»[54]։

Հասարակական աշխատանքի բովանդակության հարցին Տաթևացին հաճախ է անդրադառնում բազմաթիվ առիթներով։

4. Մարդու աշխատանքի մեջ Տաթևացին տեսնում է բարոյական, սոցիալական տարրեր, որոնցից զուրկ է կենդանու գործունեությունը։ Աշխատանքը մարդու համար կենսական անհրաժեշտություն է։ «Անաշխատ մարդն՝ հանապազ մարմնով ծանրանայ և թուլանայ և տկարանայ յառողջութենէ։ Վասն այսց և այլ բազում օգտութեանց՝ խրատեն զմեզ արիանալ ի գործս»[55]։ Տաթևացին հատկապես հանգամանորեն է պարզաբանում աշխատանքի նշանակությունը սոցիալական չարիքների, մեղքերի դեմ պայքարելու տեսակետից։ Դատարկապորտությունը և ծրիակերությունը «մայր է ամենայն չարեաց և մեղաց»[56] և «որ վաստակի՝ յայսմանէ ի զատ մնայ»[57]։ Աշխատավորների և ծրիակերների այս հակադրության կապակցությամբ Տաթևացին հանդես է գալիս իր ժամանակաշրջանի հատուկ հասարակական բարքերի թյուր կողմերի անխնա քննադատությամբ։

Գրիգոր Տաթևացու աշխատություններում կան ուշագրավ դրույթներ ու դատողություններ՝ արժեք, գին և շահույթ հասկացությունների մասին։ Աշխատանքի բաժանման ծավալման ու խորացման հիման վրա զարգացած փոխանակային հարաբերություններն ու դրամաշրջանառությունը անհրաժեշտաբար պահանջում են տնտեսական գործառնությունները չափակցել, համադրել և համեմատել։ Թովմա Աքվինացու ժամանակներից տնտեսագիտության մեջ արծարծվող արդարացի փոխանակության հասկացությունը Գրիգոր Տաթևացու մոտ հանդես է գալիս իր որոշակի բովանդակությամբ։ Մարդկանց տնտեսական հարաբերությունների համեմատության հարցը հեղինակը լուսաբանում է «չափեր ու կշիռներ», «արժեք», «գին», «նիհն ըստ հասարակաց» չափամիավորների օգնությամբ։ Բոլոր տեսակի տնտեսական գործառնությունները չափակցելի են, գրում է Գրիգոր Տաթևացին,

Առևտուրը, արհեստագործությունը, վարձու մշակությունը, փոխատվությունները արդարությամբ ու փոխադարձ օգտակարությամբ են կատարվում այն դեպքում, երբ արտահայտվում են կոնկրետ չափամիավորներով, որոնք տեսանելի և շոշափելի են կամ ունեն կոնկրետ որոշակիություն։ Առաջին խումբի չափամիջոցներն են ծավալի, ծանրության, երկարության չափերը. «Ի բնական օրէնս քաղաքաց՝ իմաստութեամբն գտին օրինակ արդարութեան. զկշիռն, զչափն, զկանգունն։ Զի կշիռն՝ զծանր, և զթեթևութիւն որակացն հաւասարէ ի տեսութիւն աչաց։ Նոյնպէս կանգունն՝ զքանակն չափէ»[58]։ Տնտեսական գործարքների մի նշանակալի մասը չի կարելի կշռել կամ չափել կանգունով.

54 Նույն տեղում, էջ 423։
55 Նույն տեղում, էջ 105։
56 Նույն տեղում, էջ 108։
57 Նույն տեղում, էջ 105։
58 Նույն տեղում, էջ 138։

դրանք ունեն այլ չափամիջոցներ ինչպիսիք են՝ գին, արժեք, նիհ (սակագին) կատեգորիաները։ «Արդարութիւն է առ մարդիկ ի վաճառս. ի չափ՝ ի կշիռս՝ ի յարւեստս՝ ի մշակութիւնս՝ ի փոխն և ի տուրս՝ արդար լինիլ։ Ի վաճառս՝ ոչ գին ի վեր ասել. և ոչ քան զնորայն գին ի վայր գնել, այլ զաժէնն»[59]։ Այսպիսով, փոխանակային գործարքների ժամանակ չափը և կշիռները օգտագործվում են ապրանքների քանակական որոշակիության հետ կապված օրինականությունը պահպանելու համար, իսկ արժեքն ու գինն էլ կամ նիհը արտահայտում են արդեն այլ՝ արժեքային բնույթի հարաբերություններ։ Բերված տողերը մեզ որոշ պատկերացում են տալիս արժեքի ու գնի փոխհարաբերության մասին, բայց խնդիրն այն է, որ պարզվի գնի հիմքը՝ արժեքի չափը։ Գնի մակարդակը կախված է «նախ ի պատուական նիւթն, թէ մեծագին լինի»[60], Այսինքն՝ ապրանքը պետք է բարձր գնով վաճառվի, եթե պատրաստված է թանկարժեք հումքից, որը արժեքի հիմնական տարրերից մեկն է։ Այնուհետև, գների մակարդակը կախված է նաև տեղից ու ժամանակից, որը կարելի է հասկանալ երկու կերպ. առաջին՝ փոփոխությունը որպես շուկայական կոնյունկտուրայի հետևանք, որը խստիվ մերժվում է Տաթևացու կողմից։ «Այլ որ ի դէմս մարդոյն թէ կարիք լինի թանկ վաճառէ, կամ որ ոչ արժէ՝ զգինն ի վեր ասէ թէ քան զհասարակաց նիհն առաւել խնդրէ... այնպիսին դանիրաւ շահն ստանայ»[61], Հետևաբար, գների հիմքը ոչ թե առաջարկի ու պահանջարկի հարաբերությունն է, այլ արժեքը, որի բովանդակության որոշակի մեկնաբանությունը թեև չկա, բայց Տաթևացու վերոհիշյալ բացատրությունններն ինքնին տնտեսագիտության զարգացման կարևորագույն նվաճումներից մեկն են։

Շահույթի հարցը Տաթևացին քննարկում է կապված արտադրության ճյուղերի դասակարգման հետ։ Նա տարբերում է զբաղմունքի չորս բնագավառ. գյուղատնտեսություն, արդյունագործություն, առևտուր և վաշխառություն, որտեղ ներդրված գումարները վերադառնում են աճած, մեծացած «շահ և գլուխ»[62] միասին։ Հասարակական տեսակետից ամենաշահավետ ճյուղը գյուղատնտեսությունն է, որը եղել է մարդու առաջին զբաղմունքը նույնիսկ դրախտում, իսկ «այլ արւեստք յետոյ ի ճարտար մտաց, և վասն կարեաց գտան»[63]։ Այս տողերում հիմնականում ճիշտ է ընկալված աշխատանքի երկրորդ հասարակական բաժանման՝ երկրագործությունից արհեստների անջատման պատմական ընթացքը, որը սակայն Տաթևացին, իդեալիստական մոտեցմամբ համարում է «ճարտար մտաց և կարեաց» արդյունք։ Տաթևացին, այնուհետև, հանգամանորեն վերլուծում և փառաբանում է գյուղատնտեսության բարեմասնությունները, որտեղ արտադրվում են ամբողջ մարդկության կարիքների մեծագույն մասի բավարարման համար անհրաժեշտ նյութական բարիքները[64]։

---

59 Նույն տեղում, էջ 131։
60 Նույն տեղում, էջ 139։
61 Գրիգոր Տաթևացի, Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, էջ 139։
62 Գրիգոր Տաթևացի, Գիրք հարցմանց, էջ 375։
63 Գրիգոր Տաթևացի, Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, էջ 109։
64 Տե՛ս Նույն տեղում, էջ 110։

*Հասարակական օգտակարության տեսակետից երկրորդ տեղը գրավում են արհեստները, որոնք բնության նյութերը փոխելով «գեղեցկացուցանեն զանազան նկարիւք և ճարտարութեամբ»[65]։ Արհեստների հասարակական դերն ու նշանակությունը ցույց տալու հետ միասին, Տաթևացին ընդգծում է դրանց՝ որպես աշխատավորների արդար վաստակի աղբյուրի կարևորությունը և խորհուրդ է տալիս ծնողներին իրենց տղաներին արհեստ սովորեցնել, որովհետև «զի թէ արուեստ չգիտէ տղայն՝ գող լինի և աւազակ. և ի սպանումն երթայ»[66]։*

*Առևտրի մասին մեր հեղինակը ընդհանուր առմամբ բացասական վերաբերմունք ունի։ Առևտրականները դառնում են «յայլոց յաղքատութենէ փարթամ» ոչ համարժեքային փոխանակության միջոցով, որը նա որակում է որպես գողություն. «Նոյնպէս որ ի վաճառն տանի, զրկող է, զի որ քան զարժէսն ի վեր ծախէ և պակաս գնէ, գող է և զրկող»[67]։ Բայց փոխանակային հարաբերությունները զարգացել էին այն աստիճան, որ առևտրի անհրաժեշտությունը անտեսել հնարավոր չէր։ Արտադրության տարբեր ճյուղերի, քաղաքի և գյուղի միջև ապրանքափոխանակությունը հասարակության բնականոն զարգացման անհրաժեշտ պայմաններից մեկն է, և Տաթևացին ընդունում է, որ այս դեպքում առևտուրը բարի է, երբ «իրս տայ, և իրս առնու»[68], այսինքն, երբ մի ապրանք (սպառարժեք) փոխանակվում է մեկ ուրիշի հետ, կամ մի բնակավայրից (գյուղից) փոխադրվում է մի այլ տեղ (քաղաք)[69]։*

*Մարդկանց զբաղմունքի ճյուղերից ենթե լավագույնը գյուղատնտեսությունն է, ապա վատթարագույնը վաշխառությունն է, երբ եկամուտը ստացվում է «բռնութեամբ և զրկելով»։ Տոկոսի բնույթը Տաթևացուն անմատչելի է, առեղծվածային։ Նա չի գտնում այն հարցի պատասխանը, թե որտեղից է ըստացվում այդ տոկոսը. «ասեն թէ՝ արծաթն նիւթ վաճառոյ է. և այնու շահի»[70], այսինքն, տոկոսը արծաթի գինն է։ Բայց Տաթևացին չի հաշտվում այս դրույթի հետ, որովհետև փոխ տված արծաթը չի վաճառվում, դրամատերը չի զրկվում փոխ տված դրամագլխի սեփականատեր լինելուց։ Մյուս կողմից, «արծաթն անծին է, վասն որոյ ոչ է շահ»[71]։ Պտուղ կարող են տալ ծառն ու տունկը, ծնել կարող են կենդանի օրգանիզմները, բայց ոչ անշունչ մետաղը. «արծաթ ոչ ծաղկի և ոչ պտղաբերէ և ոչ ծնանի որպէս երկիր՝ որպէս անասուն՝ որպէս ծառ և տունկ»[72], Այսպիսով, արծաթը ճուտ հանելու կենսաբանական հատկություն չունի, բայց այդ ճուտը առկա է։ Եվ հանելուկը մնում է*

---

65 Գրիգոր Տաթևացի, *Գիրք քարոզութեան որ կոչի Ձմեռան հատոր, Կոստանդնուպոլիս, 1740, էջ 156։*

65 Գրիգոր Տաթևացի, *Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, էջ 454։*

67 *Տե՛ս նույն տեղում, էջ 25։*

68 *Տե՛ս նույն տեղում, էջ 97։*

69 *Տե՛ս նույն տեղում, էջ 139։*

70 Գրիգոր Տաթևացի, *Գիրք հարցմանց, էջ 375։*

71 *Նույն տեղում։*

72 Գրիգոր Տաթևացի, *Գիրք քարոզութեան որ կոչի Ամառան հատոր, էջ 258։*

*անլուծելի, որը սակայն չի նսեմացնում հարցադրման նշանակությունը. մի հարց, որի առեղծվածը լուծվեց նոր ժամանակներում։*

*Գրիգոր Տաթևացին թեև չկարողացավ ըմբռնել տոկոսի էությունը, բայց լավ էր հասկացել վաշխառուական կապիտալի քայքայիչ դերը։ Նա ցույց է տալիս, որ վաշխառուները իրենց սարդոստայնում խեղդում են բազմաթիվ մեծ ու փոքր տնտեսատերերի։*

*Գրիգոր Տաթևացու տնտեսագիտական հայացքների քննությունը ցույց է տալիս, որ Տաթևացու տեղը և դերը միջնադարյան տնտեսագիտության զարգացման մեջ մեծ է և՛ սոցիալ-տնտեսական երևույթների ընդգրկման ծավալի, և՛ դրանց վերլուծության խորության տեսակետից։ Բազմավաստակ գիտնականը այդ երևույթների ուսումնասիրության բնագավառում ասում է իր ինքնուրույն, ծանրակշիռ խոսքը և դրանով իսկ հանդիսանում միջնադարյան տնտեսագիտական մտքի խոշորագույն դեմքերից մեկը։*

*Տնտեսագիտական գաղափարները իրենց արտահայտություններն են ունեցել նաև ժողովրդական ստեղծագործություններում, որոնք ընդգրկում են հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի ամենատարբեր բնագավառների հարցերը, տալով դրանց ինքնատիպ լուծում։*

*Նյութական բարիքների արտադրությունը և ստեղծագործական աշխատանքը կազմում են աշխատավորների կյանքի բովանդակությունը, և միանգամայն օրինաչափ է, որ այդ բնագավառի հարցերի լուսաբանումը ծավալուն տեղ է գրավում ժողովրդական ստեղծագործությունների բոլոր ժանրերում (վեպ, հեքիաթ և այլն)։*

*Ապրանքային հարաբերությունների զարգացման պայմաններում փողը դառնում է հարստության ընդհանրական ձև։ Փողային հարստությունների կուտակման հիման վրա է, որ ծավալվում է մարդկանց արտադրական և առևտրական գործունեությունը։ Զարգացած ֆեոդալիզմի շրջանում առևտրի անհրաժեշտությունն այնքան ակնհայտ է, որ նրանից ստացվող շահույթն արդեն չի համարվում ապօրինի*[73]*։*

*Տնտեսական ձեռներեցությունը դրվատելու հետ միաժամանակ, ժողովրդական իմաստությունը տեսնում էր նաև դրա բացասական կողմը՝ շահամոլության հակահասարակական բովանդակությունը։*

*Շահամոլության հետ միասին ժողովրդական մտածողության ներկայացուցիչները անխնա դատապարտում են նաև ֆեոդալական հասարակության վերնախավերի պորտաբուծությունը գտնելով, որ նրանք աշխատավորների հաշվին ապրելով հանդերձ, ավերում են աշխարհը*[74]*։*

*Ժողովրդական մտածողությունը չէր սահմանափակվում ֆեոդալական հասարակության ներհատուկ հակասությունների մերկացմամբ և ապագայի նկատմամբ լավագույն երազներով միայն։ Նա հասել էր կեղեքողների դեմ անհաշտ պայքար մղելու գիտակցությանը, մի պայքար, որ ժողովուրդը դա-*

---

73 *Տե՛ս Н. Марр,* Сборник притч Вардана, ч. III, СПб., 1894, стр. 184.

74 *Տե՛ս «Ժողովածոյք առակաց Վարդանայ», մասն Բ, էջ 151—152։*

րերով մղել է թե՛ օտար և թե՛ ներքին տիրակալների ու կեղեքիչների դեմ։ Իշխողների և աշխատավոր ժողովրդի շահերի անհաշտելիությունը և սոցիալական պայքարի անխուսափելիությունը իրենց արտահայտությունն են գտել ժողովրդական բազմազան և բազմաթիվ ստեղծագործություններում, մանավանդ ժողովրդական առակներում և «Սասնա ծռեր» էպոսի տվյալ դարաշրջանում առաջացած ծալքերում։

ԳԼՈՒԽ ՀԻՍՈՒՆԵՐՈՐԴ

# ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆ

*Երկրի ընդհանուր տնտեսական վերելքը, քաղաքների և արհեստների զարգացումը նկատելիորեն նպաստեցին հասարակության կյանքի նյութական պայմանների վերարտադրության հետ կապված բնական գիտությունների՝ հանքաբանության, քիմիայի (ալքիմիա), կենսաբանության, բժշկագիտության, աշխարհագրության, տիեզերագիտության, երկրաչափության առաջադիմությանը։ Այդ ամենի հիման վրա հետագա զարգացում ապրեց փիլիսոփայական մտքի բնագիտական ուղղությունը։ Այն, կապված լինելով փորձնական ճշգրիտ գիտությունների հետ, համեմատաբար ավելի քիչ էր տուրք տալիս կրոնին և աստվածաբանությանը։ Նրա մեջ էին հասունանում մատերիալիստական մտածելակերպի սաղմերը, որոնք շուտով սնունդ պիտի տային առաջադիմական մի այլ ուղղության՝ նոմինալիզմին։*

## 1. ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Բնագիտական ուղղությանն է պատկանում XII դարի հայ ականավոր բժշկագետ Մխիթար Հերացին։ Նրա «Ջերմանց մխիթարութիւն» երկը բժշկագիտական մտքի կարևոր հուշարձան լինելով, միաժամանակ փիլիսոփայական միտքը արգասավորում է նոր գաղափարներով։*

*Մարդու օրգանիզմի, նրա կառուցվածքի և հիվանդությունների ուսումնասիրման ու բուժման պահանջը գիտնականներին ստիպում էր հետազոտել իրական երևույթները և հնարավորին չափ ձերբազատվել քարացած, սխոլաստիկ պատկերացումներից։*

*Մարդկային օրգանիզմի գործունեությանը Մ. Հերացին տալիս է մատերիալիստական բացատրություն։ Ըստ նրա, մարմինը և հոգին սերտորեն շաղկապված են միմյանց ու կազմում են միասնական ամբողջություն։ Մ. Հերացու ըմբռնումով հոգու գործունեության հիմքը նյութական է։ Հետևելով Արիստոտելի և Հիպոկրատի կողմից առաջադրված բաժանմանը, Հերացին գտնում է, որ հոգին բաղկացած է երեք մասից՝ բուսական, կենդանական և բանական։*

Հոգեկան երևույթները Հերացին բացատրում է նյութական պատճառներով, մարդու մարմնում կատարվող կենսական պրոցեսներով և արտաքուստ նրա (մարդու) վրա ազդող հանգամանքներով։

Մխիթար Հերացու գիծը շարունակեց անվանի հայ բժիշկ-գիտնական Գրիգորիսը (XIII—XIV դդ.)։ Բնագիտական մտքի այս ականավոր ներկայացուցիչը քաջ ծանոթ էր Հերացու աշխատություններին և, հետևելով նրա մշակած առաջավոր սկզբունքներին, մարդու օրգանիզմը գիտում էր նրան շրջապատող միջավայրի ու կյանքի պայմանների հետ կապված։ Բոլոր հիվանդությունները նա բացատրում էր բնական, նյութական պատճառներով, իսկ նրանց բուժումը՝ մարդու ներքին ուժերի ու հեղուկների հավասարակշռության վերականգնումով, ինչպես և արտաքին պայմաններով։ Մխիթար Հերացուց հետո բժշկագիտական մտքի այս խոշորագույն ներկայացուցիչը, չնայած երկրում տիրող անբարենպաստ պայմաններին, շարունակում էր պահպանել բնագիտական հոսանքի նվաճած (ժամանակի համար բարձր) մակարդակն ու առաջադիմական բնույթը։ Այս երկու բժշկապետներն առավել ուժեղ էին իրենց փորձնական գիտությամբ, որն զգալի նյութ էր տալիս փիլիսոփայական եզրակացությունների և ընդհանրացումների համար։

Այդ տեսակետից ուրույն տեղ է գրավում XIII դարի երկրորդ կեսի ականավոր գործիչ և փիլիսոփա Հովհաննես Երզնկացին. Նա ընդհանրացրեց բնական գիտությունների նվաճումները, արեց հեռու գնացող փիլիսոփայական եզրակացություններ և հանդիսացավ զարգացած ֆեոդալիզմի ժամանակաշրջանի հայ փիլիսոփայության բնագիտական ուղղության ամենախոշոր ներկայացուցիչը[1]։

Հովհաննես Երզնկացին (կամ Պլուզը) բազմակողմանի և հանրագիտակ մտածողներից էր։ Նա թողել է հարուստ գրական ժառանգություն և, փիլիսոփայությունից բացի, շոշափելի ավանդ է մուծել քերականագիտության, աստվածաբանության, տիեզերագիտության, բանաստեղծության և մշակույթի այլ բնագավառներում։ Նրա բոլոր երկերում առկա է փիլիսոփան, որին հետաքրքրում են օրինաչափությունները, երևույթների պատճառն ու հետևանքը, ներքին էությունը և նրանց դրսևորման ձևերը։ Հովհաննես Երզնկացու հայացքներում ցայտուն է ողջամիտ, իրապաշտական մոտեցումը դեպի բնությունը, բնական երևույթները մեկնաբանելիս՝ աստվածաբանական պատճառաբանություններից խուսափելու ձգտումը։

Անտարակույս, Հովհաննես Երզնկացին, ինչպես բոլոր միջնադարյան մտածողները, չէր կարող աստծո գաղափարը չդիտել որպես ելակետ։ Նա համեմատում է բնությունը մի արհեստավորի հետ, որն ինքնուրույն ստեղծում է բոլոր գոյություն ունեցող իրերը[2], բայց այդ արհեստավորն իր հերթին ստեղծված է աստծո կողմից։ Հետաքրքրական է, որ բնության երևույթների, իրերի առաջացման ու քայքայման, երկնային շարժման և փիլիսոփայական այլ կարևորագույն հարցերի բացատրության ժամանակ Երզնկացին արդեն չի

---

1 Տե՛ս Գ. Գրիգորյան, Յովհաննես Երզնկացու փիլիսոփայական հայացքները, Երևան, 1962։

2 Տե՛ս Ս. Արևշատյան, Հովհաննես Երզնկացու իմաստասիրական անհայտ աշխատությունը, «Բանբեր Մատենադարանի», հատ. 4, 1958, էջ 310։

դիմում աստծո գաղափարին, այլ երևույթները մեկնաբանում է հենց իրենց հատկանիշների ու օրինաչափությունների բացահայտմամբ։ «Աստղերի, երկնային գոտու և տարրերի զուգակցումից են առաջանում բոլոր կենդանիները, բույսերը և հանքանյութերը. Նույնպես դրանից է կախված նրանց փոփոխությունը, այսինքն ոչնչացումը»[3],— ասում է Երզնկացին։

Առանց աստծո միջամտության բնությունը հանդես է գալիս որպես բոլոր իրերի արարիչ, որպես «լինելության և ապականության», գոյացման և ոչնչացման պատճառ։ Բնության հիմքում ընկած է նյութը, որը, ի տարբերություն առանձին վերցրած գոյերի, չի ենթարկվում ոչնչացման, նա իր բնույթով հավիտենական է։

Ուշագրավ է, որ XIII դարում հայ մտածողը առաջ է քաշում մի գաղափար, որն իր մեջ սաղմնային ձևով պարունակում է նյութի պահպանության օրենքը. նա պնդում է, թե նյութը իր էությամբ անապականելի, անոչնչանալի է, իսկ երբ ոչնչանում է որևէ իր կամ բաղադրություն, ապա այդ դեպքում փոխվում է միայն տվյալ նյութի տեսակը, նրա բաղադրիչ մասերն անցնում են այլ իրերի կամ տարրերի։ «Այսպես, օրինակ, աղը, որ բաղկացած է հողից և ջրից, երբ փոխում է իր տեսակը, որ անվանում են ոչնչացում, նրա խոնավությունը դուրս գալով գոլորշիանում է... իսկ հողային մասը դառնում է քամու ճարակ. և այս աչքով կարելի է տեսնել, թե ինչպես աղը, հանդիպելով կրակի ջերմությանը, հօդս է ցնդում։ Այսպես և այլ մարմինները, կորցնելով իրենց տեսակը (ձևը), ոչնչանում են»[4]։

Երզնկացին այնուհետև հանգում է կարևոր եզրակացության. «Իսկ մաքուր գոյացությունը և նյութն ամենևին ենթակա չեն ապականության»[5]։ Ուրեմն նյութը, իրերի սուբստրատը հավերժ է և անոչնչանալի, փոխվում կամ ոչնչանում է նյութեղեն իրերի այս կամ այն տեսակը, բայց պահպանվում է անհետացած իրի նյութը, որն անցնում է մյուս իրերին. նա ձեռք է բերում նոր տեսակ և այդպես շարունակում իր հավերժական գոյությունը։

Երզնկացու այս հանճարեղ կռահումը, անշուշտ, բխում է փորձնական գիտելիքներից, որոնք սնունդ էին տալիս բնափիլիսոփայական հոսանքում ծնվող նոր, մատերիալիստական թեքում ունեցող գաղափարներին։

Բաժանելով նյութը չորս տեսակի, Երզնկացին ամենից բարձր է դասում «առաջին նյութը», որը չի ենթարկվում զգայական ընկալման. նա է այն անոչնչանալի սուբստանցը, «որից սկիզբ են առնում բոլոր իրերը»[6]։ Երզնկացին շատ պարզորոշ բնութագրում է նյութական սուբստանցը որպես ելակետ իր բնափիլիսոփայության. «Եթե չլիներ նյութը, որտեղի՞ց պիտի առաջանային գոյացությունները, և եթե չլիներ գոյացությունը, որտեղի՞ց պիտի առաջ գար հնարավորությունը, և եթե չլիներ հնարավորությունը, որտեղի՞ց պիտի առաջանար իրականությունը։ Այս իսկ պատճառով պարզ է, որ սրանց շնորհիվ գոյացան բոլոր արարածները»[7]։

---

3 Նույն տեղում, էջ 305։

4 Նույն տեղում։

5 Նույն տեղում։

6 Նույն տեղում, էջ 304։

7 Նույն տեղում, էջ 311։

Նյութական գոյացության և տարրերի խնդիրը քննելիս, անշուշտ, դրսևորվում է Հովհաննես Երզնկացու հայացքների կարևոր, բայց միայն մի կողմը։ Նրա մատերիալիստական հակումների մասին ոչ պակաս արժեքավոր տեղեկություններ է տալիս նրա իմացաբանությունը։

Մարդը ճանաչում է աշխարհը չորս ձևով, ասում է Հովհաննես Երզնկացին «բանականությամբ, փորձելով, զգայությամբ և հավատալով»[8]։ Առաջին տեղում է գտնվում բանական, ռացիոնալ ճանաչումը՝ «խելացն իմացումը», որը սակայն կարող է գործել հենվելով զգայական ճանաչողության վրա, բայց ոչ անմիջականորեն. բանականության և զգայության միջև գտնվում է փորձը, որն իր մեջ պարունակում է երկու կողմերի՝ բանական և զգայական ճանաչողության որոշ հատկանիշներ։ Դրանց միջոցով նա կարողանում է կամրջի դեր կատարել զգայական ընկալումների և վերացական մտածողության միջև։

Միջնադարի բազմաթիվ այլ մտածողների պես Հովհաննես Երզնկացին ճանաչողության ձևերի և աստիճանների մեջ է մտցնում նաև հավատը, որը սակայն զբաղվում է ոչ թե բնության ու գոյերի ճանաչումով, այլ գերբնական, աստվածային երևույթներով։ Մի այլ տեղ Հովհաննես Երզնկացին արդեն հիշատակում է միայն զգայական և բանական ձևերը, բաց թողնելով հավատը որպես ճանաչման միջոց[9]։ Այս հանգամանքը ցույց է տալիս, որ Հովհաննես Երզնկացին տատանվում է՝ ընդունե՞լ հավատը որպես ճանաչման ձևերից մեկը, թե ոչ։ Նա ավելի հակված է այն հանելու ճանաչողության ոլորտից, որովհետև միայն գերբնական աշխարհով զբաղվող հավատը, իր իսկ Հովհաննես Երզնկացու կարծիքով, սահմանափակվում է աստվածային գոյացություններով, որոնք պետք է ընդունվեն առանց ապացույցների և պատճառաբանման, այսինքն, փաստորեն նա հաստատում է, որ մարդկային միտքը մտնում է մի ասպարեզ, ուր արգելվում է գիտության մուտքը։

Մեզ շրջապատող աշխարհը, ըստ Հովհաննես Երզնկացու, զգալապես ընկալվող աշխարհն է, և մարդը ստեղծված է այնպես, որ նրա հինգ զգայարաններից ոչինչ չի կարող խուսափել։ Աշխարհում անճանաչելի բան չկա, որովհետև գոյություն ունեցող իրերի թվում չկա որևէ բան, որ ենթակա չլինի այս հինգ զգայարաններին[10]։ Զգայարանների միջոցով աշխարհի բոլոր գոյերը իրենց ողջ բազմազանությամբ՝ գույներով, ձևերով, հոտերով, ձայներով, որակներով՝ «ինչպես քաղաքի դարպասներով մտնում են մեր մտքի հրապարակը»[11]։ Զգայարաններն այն միակ դարպասներն են, որոնցով արտաքին աշխարհից ստացված հաղորդումները կարող են թափանցել բանականության քաղաքը։

Որպես բնագետ-փիլիսոփա, որին հայտնի է մարդու անատոմիան, Երզընկացին ճշգրտում է բանականության տեղադրությունը, դրանով իսկ փակելով ճանապարհը հոգու և մտքի մասին եղած հակագիտական դատողությունների առաջ. «է տեղի բանականին ուղեղ գլխոյն, որ յերիս բաժանի փորուածս»։ Գլխի առաջին փորվածում կամ խոռոչում է գտնվում զգայական ըն-

---

8 Նույն տեղում, էջ 303։

9 Տե՛ս նույն տեղում, էջ 308։

10 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 2773, թերթ 1բ։

11 Նույն տեղում, թերթ 103բ։

կալման կենտրոնը, երկրորդում՝ «իմացողական» կենտրոնը կամ ռացիոնալ ճանաչման բաժինը, որն ընդունում է առաջին մասից եկող հաղորդումները, ճանաչում իրը կամ երևույթը ամբողջ իր էությամբ և փոխանցում ստացված արդյունքը գլխուղեղի երրորդ բաժինը, «հիշողական» կենտրոնը, որը տեղադրված է գանգի հետևի մասի փորվածքում[12]։

Այսպիսով, Հովհաննես Երզնկացին հստակորեն գծագրում է հոգու կառուցվածքը, ավելի ճիշտ, նրա ամենաբարդ ճանաչողական հատվածը, որի աղոտ և անորոշ նկարագիրը միջնադարյան գրականության մեջ սնունդ էր տալիս աստվածաբանական անպտուղ դատողությունների։ Նույն եղանակով նա նկարագրում է նաև մյուս օրգանները, որտեղ գտնվում են հոգու բուսական և կենդանական մասերը՝ լյարդը և սիրտը։

Իր փիլիսոփայական եզրակացությունները Հովհաննես Երզնկացին սերտորեն կապում է մարդակազմության հետ, փորձնական եղանակով ստացված գիտելիքների հետ։

Փորձնական գիտելիքներով և դիտարկումներով զինված, Հովհաննես Երզնկացին բացատրում է հոգեկան աշխարհը, խուսափելով այս հարցում սպասելի աստվածաբանական մշուշից, և ընդգծում հոգու սերտ կապը նյութականի հետ։ Ուղեղին հասնում է ամենանուրբ կերակուրը, արյան լավագույն մասը[13]։ Առանց այդ «կենդանական զորության» և սննդի, հոգեկան գործունեությունն անհնարին է։ Երբ այն կա, կա և կյանք։

Ի տարբերություն կրոնա-աստվածաբանական ընդունված մեկնաբանության, նա պաշտպանում է մարմնի հաճախ ոտնահարվող իրավունքները։ Մարմինը ոչ չար է, ոչ էլ արհամարհանքի արժանի. «մարմինը չար չէ,— հաստատում է նա,— եթե այդ այդպես չլիներ, ապա կստացվեր, որ հոգին ավելի չար է, որովհետև նա է մարմնի առաջնորդը և դաստիարակը»[14]։ Այս դրույթն իր արտացոլումը գտավ Երզնկացու բանաստեղծություններում։

Հովհաննես Երզնկացու բնափիլիսոփայությունը մի նշանակալից երևույթ էր հայ միջնադարյան փիլիսոփայության մեջ։ Հենվելով բնական գիտությունների նվաճումների վրա, Երզնկացին ուժեղացրեց մատերիալիզմի շիթը իր ժամանակի գաղափարախոսության մեջ և հանդիսացավ հայ փիլիսոփայության մեջ բնագիտական ուղղության ամենացայտուն դեմքերից մեկը։

## 2. ՆՈՄԻՆԱԼԻՍՏԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ

Միջին դարերում փիլիսոփայության հիմնական հարցը՝ ոգու թե մատերիայի առաջնության խնդիրն իր համար սողանցք բացեց նաև դեպի միջնադարյան սխոլաստիկ փիլիսոփայությունը՝ նպաստելով նրա աշխարհականացմանը։ Այդ գործին մեծապես նպաստել են նոմինալիստների և «ռեալիստների» կատաղի վեճերը, որոնց պայքարի պատմությունը կազմում է միջնադարյան փիլիսոփայության ամենաբովանդակալից էջերից մեկը։

---

12 Տե՛ս նույն տեղում, թերթ 106բ։

13 Տե՛ս նույն տեղում, թերթ 214բ։

14 Նույն տեղում, թերթ 74ա։

Նոմինալիստների և նրանց հակառակորդ «ռեալիստների» պայքարը Հայաստանում, ինչպես և Եվրոպայում, առաջին հայացքից, ընթանում էր մի մասնավոր հարցի շուրջը՝ ինչպիսին է ընդհանուր հասկացությունների, կամ «ունիվերսալիաների» բնությունը, այսինքն՝ որն է առաջնային և ռեալ գոյություն ունեցողը, ընդհանուր հասկացությունը, թե առանձնակի իրը։ «Ռեալիստներն» այն տեսակետին էին, թե ռեալ գոյություն ունեն ընդհանուր հասկացությունները, նրանք առանձնակի իրերի նախագաղափարներն են, որոնց գոյությունից էլ կախված է իրերի լինելությունը։ Ի հակադրություն դրան, նոմինալիստները պնդում էին, որ «ունիվերսալիաները»՝ ընդհանուր հասկացությունները, առանձնակի իրերի կամ երևույթների լոկ անուններն են (լատ. nomen—անուն, nominalis—անվանական)։ Ըստ նոմինալիստների, ռեալ գոյություն ունեն միայն առանձնակի իրերը, առարկաները։

Այսպիսով, նոմինալիզմն ու «ռեալիզմը» հանդիսացան այն երկու հուները, որոնցով սկսեցին իրենց համար ուղի հարթել մատերիալիստական և իդեալիստական հոսանքները։ Նրանց միջև տեղի ունեցող պայքարը նպաստում էր փիլիսոփայական մտքի ինքնուրույնացմանը։ Մատերիալիստական տենդենցներ կրող նոմինալիզմի պատմությունը մեծ հետաքրքրություն է ներկայացնում գիտության և առանձնապես փիլիսոփայության պատմության ուսումնասիրման համար։ Չնայած նրա ներկայացուցիչների ուղղափառ հավատիացումներին, նոմինալիզմը փաստորեն ձեռք էր բերում հակաեկեղեցական բնույթ։

Միջնադարյան Հայաստանի փիլիսոփայական մտքի պատմության մեջ նոմինալիստական հայացքները կազմում են նրա ամենաարժեքավոր հատվածը. իսկ դա վկայում է, որ Հայաստանում, ինչպես և զարգացած ֆեոդալիզմի այլ երկրներում, մատերիալիստական մտածելակերպի սաղմերը, հետզհետե ուժեղանալով, մարմնավորվեցին նոմինալիստական հայացքներում, որոնք «մատերիալիզմի առաջին արտահայտությունն են ընդհանրապես» (Կ. Մարքս)։

Նոմինալիստական ուսմունքները Հայաստանում երևան եկան և զարգացան XIII—XIV դարերում։ Նրանց առաջացումը պատահական չէր. այն պայմանավորված էր ինչպես սոցիալ-քաղաքական կյանքում տեղի ունեցող երևույթներով, այնպես էլ հայ փիլիսոփայական մտքի նախորդ շրջաններում կուտակված գաղափարական նախադրյալներով։

Նոմինալիստական հայացքների սաղմեր Հայաստանում կային դեռևս վաղ ֆեոդալիզմի շրջանում, մասնավորապես ականավոր հայ նորպլատոնական Դավիթ Անհաղթի (V—VI դդ.) փիլիսոփայության մեջ, որի համար բնորոշ են երևույթները փորձով և զգայությամբ ճանաչելու հակումները։

Փորձի և ճանաչողության զգայական աստիճանի կարևոր նշանակության մասին է խոսում նաև Անանիա Շիրակացին՝ VII դարի ականավոր բնագետն ու մաթեմատիկոսը։ Հին հայկական փիլիսոփայության մեջ բնագիտության ուղղության հիմնադիրը լինելով, Շիրակացին առանձնապես շեշտում է կոնկրետ իրերի և բնական երևույթների առաջնությունը՝ նրանց մասին մեր ունեցած գիտելիքների նկատմամբ։ Դրա հետ է կապված՝ նրա փորձնական գիտելիքների նշանակության շեշտումը արտաքին աշխարհի ճանաչման գործում։ Շիրակացու գործերը հիմք հանդիսացան միջնադարյան Հայաստանում ճշգրիտ գի-

տելիքների, բնագիտության և դրանց հետ կապված փորձա-զգայական ճանաչողության հետագա զարգացման համար։ Այդ գիծը շեշտված է XI—XII դդ. ականավոր բնագետ Հովհաննես Սարկավագ Իմաստասերի մոտ, որը թեև չի զբաղվել ունիվերսալիաների հարցով, սակայն նրա երկերում հանդիպում ենք այդ խնդրի ուղղակի նոմինալիստական լուծմանը. քննելով առանձինի և ընդհանուրի առնչակցության հարցը, նա գտնում է, որ կոնկրետ, եզակի իրերը և համապատասխանաբար եզակիի, անհատի հասկացությունները առաջնային են ու նախապատվություն ունեն ընդհանուրի՝ սեռի և տեսակի նկատմամբ, որովհետև «առաջինք և առաւել գոյացութիւնք ասին անհատք»[15]։

Հայկական փիլիսոփայության մեջ նոմինալիզմի՝ որպես ինքնուրույն փիլիսոփայական հոսանքի առաջին խոշոր ներկայացուցիչը հանդիսացավ XIII դարի երկրորդ կեսի Կիլիկիայի հայկական թագավորության քաղաքական գործիչ Վահրամ Ռաբունին։

Նրա բեղուն գրչին են պատկանում հետևյալ փիլիսոփայական գործերը. «Լուծմունք Ստորոգութեանց Արիստոտէլի», «Մեկնութիւն գրոցն (Արիստոտէլի), որ ասի «Պերիարմենիաս», «Մեկնութիւն Սահմանաց գրոցն Դաւթի Անյաղթի», «Լուծմունք Պորփիւրի Ներածութեան», «Լուծմունք Արիստոտէլի Վասն աշխարհաց գրոց», «Մեկնութիւն գրոցն Գրիգորի Նիւսացւոյ Վասն կազմութեան մարդոյ» և փիլիսոփայա-աստվածաբանական մեկնություններ՝ նվիրված Դիոնիսիոս Արեոպագացու գործերին[16]։

Վահրամ Ռաբունին հետևում է Արիստոտելի իմացաբանությունից եկող մատերիալիստական տենդենցին։ Մեկնաբանելով նրա «Կատեգորիաները» Վահրամ Ռաբունին, որը թեև հիմնականում միջնադարյան սխոլաստիկ փիլիսոփայության ներկայացուցիչ էր, արտահայտում է մի շարք կարևոր մատերիալիստական դրույթներ։ Այսպես, քննելով մարդկային գիտակցության և արտաքին աշխարհի փոխհարաբերության հարցը, նա գրում է. «Արտաքին (աշխարհում) գտնվում է զգալին և ճանաչելին, որովհետև մարդու և կենդանու մեջ է գտնվում զգայությունը, իսկ զգալին ոչ թե մարդու մեջ է, այլ նրանից դուրս, ինչպես, օրինակ, քարը և փայտը, ծովը և քաղաքը, պտուղները և ամեն ինչ։ Այսպես և ճանաչելին գտնվում է ճանաչողությունից և այն ունեցողներից դուրս»[17]։ Այս հարցի պարզորոշ մատերիալիստական լուծումը բխում է Ռաբունու նոմինալիզմից։

Դնելով ընդհանուրի և եզակիի, ունիվերսալիաների և առանձին իրերի առնչակցության խնդիրը, նա այն լուծում է նոմինալիստական դիրքերից։ Հետաքրքրական է, որ Վահրամ Ռաբունին, հետևելով Արիստոտելին, այնուամենայնիվ չի խճճում ընդհանուրի և եզակիի փոխհարաբերության հարցը և առանց տատանումների առաջնությունը տալիս է եզակի, անհատ իրին։

Ինչպես հայտնի է, Արիստոտելն ինքը՝ առաջ քաշելով առաջին և երկրորդ գոյացությունների, այսինքն, մի կողմից առանձին իրի, իսկ մյուս կողմից

---

15 «Յովհաննու քահանայի Յաղագս նշանակ հաւատոյ Նիկիականն 318 թ.», Մատենադարան, ձեռագիր № 2751, թերթ 218ա։

16 Տե՛ս Դ. Գրիգորյան, Վահրամ Ռաբունու փիլիսոփայությունը, Երևան, 1969։

17 Վ. Րաբունի, Լուծմունք Ստորոգութեանց Արիստոտէլի, Մատենադարան, ձեռ. № 4268, թերթ 359ա։

տեսակի և սեռի առնչակցության խնդիրը, առաջնություն տվեց առանձին կամ անհատ իրին, բայց նրա տատանումները հետագայում հիմք տվեցին այն բանին, որ միջնադարում նրա տեսակետը դարձավ կատաղի վեճերի առարկա. նրա վրա էին հենվում ինչպես նոմինալիստները, այնպես էլ նրանց հակառակորդ «ռեալիստները»։

Վահրամ Րաբունին գիտակցում է Արիստոտելի այդ տատանումը և մեկնաբանելով նրա դրույթը նոմինալիզմի դիրքերից, միաժամանակ իր քննադատական վերաբերմունքն է ցուցաբերում իրեն ժամանակակից «ռեալիստների» ըմբռնման վերաբերյալ։

Նոմինալիստորեն լուծելով ունիվերսալիաների խնդիրը, Վահրամ Րաբունին փաստորեն շոշափում է փիլիսոփայության հիմնական հարցը և տալիս այստեղ դրա մատերիալիստական լուծումը. «Սեռերն ու տեսակները,— գրում է նա,— չեն կարող գոյանալ առանց անհատի, իսկ անհատը գոյանում է և նրանց կարիքը չի զգում. երբ միայն Ադամը գոյություն ուներ, ո՞վ կարող էր խոսել նրա տեսակի մասին, քանի որ տեսակը մարդկանց բազմությունից է առաջանում, որովհետև տեսակը հոգնակի է և ոչ եզակի։ Քեզ օրինակ կարող են ծառայել արեգակը, լուսինը և երկիրը, որովհետև նրանք եզակի են և անհատ են անվանվում, և չկան բազում արեգակներ, որ տեսակ լինեն առաջինին, և ոչ էլ բազում լուսիններ ու աշխարհներ։ Այսպես ուրեմն, անհատը կարող է մնալ և լինել առանց տեսակների և պատահական հատկանիշների, իսկ տեսակները (առանց անհատների)՝ երբեք»[18]։ Այս պատասխանը բնորոշ է Վահրամ Րաբունու փիլիսոփայության համար։ Նույնպիսի պատասխան է տալիս նա այդ հարցին Պորփյուրի «Ներածութեան» նվիրված լուծմունքի մեջ, ասելով. «Ընդհանուրն ինքն ոչ է ըստ ինքեան, այլ էանայ ի մեր խորհուրդս, մնայ, ոչ ջնջի»[19], այսինքն, ընդհանուրը գոյություն ունի մարդու մտածողության մեջ, որպես նրա ճանաչողական ընդհանրացնող ունակության արդյունք։

Րաբունու տրամաբանության և իմացաբանության մեջ առաջին անգամ նոմինալիզմը հանդես եկավ որպես առանձին փիլիսոփայական հոսանք, որը հաջորդ դարում՝ Տաթևի դպրոցի ներկայացուցիչների երկերում հասավ իր զարգացման գագաթնակետին։

Նոմինալիստական ուղղությունը, սերտորեն կապված լինելով բնափիլիսոփայության հետ և հենվելով նրա գիտական ճանաչողական նվաճումների վրա, խարխլում էր միջնադարյան սխոլաստիկայի հիմքերը և փիլիսոփայությունը որոշ չափով ազատում աստվածաբանության գերիշխանությունից։

---

18 Նույն տեղում, թերթ 348ա։

19 Վ. Րաբունի, Լուծմունք «Ներածութեանն» Պորփիւրի, Մատենադարան, ձեռագիր № 1931, թերթ 18ա։

ԳԼՈՒԽ ՀԻՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հասարակության նյութական և հոգևոր կյանքում տեղի ունեցած փոփոխությունները նպաստավոր պայմաններ էին ստեղծել նաև գեղարվեստական գրականության, մասնավորապես քնարերգության զարգացման, ինչպես և գրական նոր ժանրերի առաջացման համար։ Ժողովրդական բանահյուսությունը պահպանելով հին ժառանգության լավագույն գանձերը, դրանք հարստացնում է նոր ու նորօրակ ստեղծագործություններով, որոնց մեջ հատուկ տեղ են գրավում գուսանա-ժողովրդական, ինչպես և անհատական հայրենները։ Գրավոր դպրության անդաստանում առաջվա պես ուշադրության կենտրոնում մնում էին Շարական ժողովածուները՝ հարստանալով հատկապես կիլիկյան բանաստեղծների գործերով։ Որոշիչ նշանակություն ունեցան Գանձարան և Տաղարան ժողովածուները։ Առաջացան Գանձարանների հիմնական խմբագրությունները՝ իրենց տարատեսակներով և գանձային ու տաղային միավորների առատությամբ։ Բանաստեղծական խոսքը, անհամեմատ բազմազան տեսակներով և հարուստ երաժշտությամբ, ողողեց հայոց եկեղեցու արարողությունները, թափանցելով նաև բնակչության, մանավանդ քաղաքացիների առօրյա կենցաղը։

Գանձարանային տաղերին զուգահեռ այդ ժամանակ էր, որ առանձին ճյուղով սկսեցին երևան գալ արտաեկեղեցական տաղերը, բանքերը, խրատները՝ սկիզբ դնելով անհատական ու համահավաք նորանոր տաղարանների, որոնց մեծ ապագա էր սպասում։ Հասարակական ընթերցանության համար ձևավորվեց մի նոր դպրություն, որն առանձին զարկ ստացավ Կիլիկիայում, Երզնկայում և այլ վայրերում։ Իշխում էին հոգևոր թեմաները, սակայն զարգացող աշխարհականացմամբ առաջ մղվեցին մարդու և բնության, հոգու և մարմնի, հայրենիքի և ազատության թեմաները։ Գրականությունը անդրադարձնում էր երկրի և ժողովրդի վիճակը, հասարակական նշանակության կարևոր հարցեր, նպաստում հայ ժողովրդի մտավոր առաջընթացին և մշակույթի զարգացմանը։ Ֆրիկը, Հովհաննես և Կոստանդին Երզնկացիները, Հովհաննես Թլկուրանցին և ուրիշներ որոշակի բեկում առաջացրին մեր հնամենի քնարերգության առաջընթացի գործում։ Նշանակալից երևույթ էր այս շրջանում միջին հայերենի, որպես գրական լեզվի երևան գալը։

*Նույն ժամանակների գրական մեծագույն նվաճումներից մեկը պիտի համարել առակագրության ձևավորումն ու զարգացումը։ Առաջինը եղավ Մխիթար Գոշը Հյուսիսային Հայաստանում, ապա՝ Վարդան Այգեկցին՝ Կիլիկիայում։ Իսկական աշխարհիկ գրականության լիարժեք կոթողներ էին նրանց կազմած առաջին առակագրքերը, որոնք այնպես էլ մնացին չգերազանցված հայ գրականության պատմության մեջ։*

*XII—XIV դարերի գեղարվեստական արձակ գրականության պատկերը թերի կլիներ, եթե չհիշեինք նաև թարգմանական հուշարձանների յուրատեսակ ազգայնացման երևույթը։ Ալեքսանդր Մակեդոնացու, Պղնձե քաղաքի, Փահլուլ թագավորի պատմությունն հենց այս շրջանումն է, որ էական կերպարանափոխություն են ապրում՝ շնորհիվ նրանց մեջ մուծվող հայկական «կաֆա» կոչված երգերի։*

*Այս շրջանում ևս մեծ դեր էր վիճակված հոգևոր բնույթի զանազան ժողովածուներին, հատկապես զարգացող ճառընտիրներին, Հայսմավուրքներին, նոր վարքագրություններին, որոնք յուրովի նպաստում էին գեղարվեստական արձակի զարգացմանը։*

*Գեղարվեստական գրականության առանցքային հարցերում XII—XIV դարերը մեծ դեր խաղացին նաև ժողովրդական բանահյուսության ըստ ամենայնի օգտագործման առումով։ Այստեղ նկատի ունենք ինչպես թեմաների, ժանրերի, այնպես էլ արվեստի, լեզվի հարստություններից օգտվելու համարձակ փորձերը։ Մեծ զարգացում ապրեց հանգարվեստը։*

*XII—XIV դարերում էր, որ հայ բանաստեղծները կերտեցին բազմատեսակ ստեղծագործություններ, սկսած հանելուկների քառյակներից, կաֆաների ութնյակներից, մինչև Ֆարման Մանկան հերոսական ու սիրային մեծածավալ պոեմը։*

*Դժվար է նկատել միջնադարյան դասական որևէ գրական տեսակ ու թեմա, արվեստի էական առանձնահատկություն, որը կյանքի կոչված չլիներ այս շրջանում, թեև դրանից շատերը առավել մշակվեցին, կատարելագործվեցին, խորացան ու հարստացան հետագայում*[1]*։*

## 1. ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ ԵՎ ՀԱՅՐԵՆՆԵՐ

**Ժողովրդական երգը** *սակավ դեպքերում է, որ տեղավորվում է ժամանակի կոնկրետ հատվածի մեջ։ Այդուամենայնիվ, հնարավոր է մեզ հասած համապատասխան ժառանգության մեջ նկատել որոշ մաս՝ կապված հատկապես XII—XIV դարերի հետ։*

*1268 թ. գերությունից ազատված Կիլիկիայի Լևոն արքայորդու մասին այն ժամանակներում ստեղծվել է հայրենասիրական մի գեղեցիկ երգ։ Այդտեղ դրվատվում է Լևոնը որպես ազգային հերոս, որն օտարների ճնշումից*

1 *IX—XVIII դարերի հայ գրականության ամբողջական պատկերը, որոշ բացերով, տե՛ս* Մ. Աբեղյան, *Երկեր, Գ (1968 թ.) և Դ (1970 թ.) հատորներում։*

չի ընկճվել և չի հավատափոխվել։ Ապա գովք է ասվում գերությունից նրա ազատվելու մասին։ Սրտառուչ է հատկապես գերյալի վիճակը.

Լէոնն ի բերդին նստել,
Դաստակն՝ աշից ու կու լար.
— Քերվան, որ ի Սիս կերթաս,
Դուն խապար տանիս պապային...

Նույն ժամանակների և նույն ոգու արտահայտությունը պիտի համարել «Վայրի հաւուկ...» բառերով սկսվող երգը, որտեղ փառաբանվում է գերված անանուն հերոսը։ Նրան ոչ մի կերպ չեն կարողանում կաշառել։ Նա էլ է տըխուր, նրա մտորումներն էլ կապված են հայրենիքի ու հարազատների հետ.

Ջուրախանայ սիրտ բաժանելոյս յընկերացս, որ չեմ յիմ երամս.
Սրտաբեկեալ և մեջակոտոր, ճար չունիմ, զի՞նչ լինիմ գերիս...

Նա մի երազանք ունի.

Ապա՝ լինի, որ թռչիմ ազատ, վերանամ, խառնիմ յիմ երամս....

Գերվելու, ապա՝ դիմադրելու և ազատվելու մասին եղած այս երգերը կապված են XII—XIV դարերի հետ։ Որոշ ժամանակ անց հիմնականում իշխում է գերությունը և՛ երկրում, և՛ դրսում՝ ծնունդ տալով «Կռունկի» նման երգերին և պանդխտության ողբերին։

Հայրենները հայ հին ու միջնադարյան բանաստեղծության մեջ մի ուրույն բնագավառ են կազմում։ Նրանք մեր անցյալի քնարերգության գլուխգործոցներն են։ Հայրենները հորինված են հատուկ տաղաչափությամբ, հիմնականում, աշխարհիկ թեմաներով, ժողովրդական մտածողությամբ, խոսակցական լեզվով, փոքր ծավալով և բարձր արվեստով։ Նրանք ունեցել են երաժշտական եղանակներ և երգվել նվագարանների զուգակցությամբ։

Հայրենների հնագույն արձագանքներին հանդիպում ենք դեռևս V դարում գրի առնված նախաքրիստոնեական երգերի փշրանքներում.

Հատուած գնացեալ Վարդգէս
Մանուկն ի Տուհաց գաւառէն,
ԶՔասախ գետով եկեալ,
Նստեալ զՇրէշ բլուրով...

Նույնքան հին ծագում ունեն ծիսական հայրենները՝ գրի առնված միջնադարում և հատկապես XIX—XX դարերում։ Հայրենային ուշագրավ արձագանքների ենք հանդիպում նաև Սասնա Ծռերի «Ողորմի»-ներում և երգային մյուս հատվածներում։

Դեռ միջին դարերում հայրենները կոչվել են անտունիներ՝ հետագայում, հատկապես Ակնում, պահպանվելով մեծ մասամբ այդ անվան տակ։ Թե ինչո՞ւ են նրանք հայրեն կամ անտունի կոչվել, դեռևս գոհացուցիչ պատասխան չկա։

Հայրենների ընդհանուր հիմքն ունի ժողովրդական կամ գուսանա-ժողովրդական ծագում։ X—XIV դարերում, զարգացող քաղաքային կյանքի,

արհեստների և առևտրի ծաղկման, ինչպես և աշխարհիկ ոգու հզորացման շնորհիվ, հայ ճարտարապետության, քանդակագործության, մանրանկարչության, բանաստեղծության բուռն վերելքի շրջանում, իրենց ծաղկման գագաթնակետին են հասնում նաև գուսանական հայրենները։ Գուսանները, լինելով բնությունից օժտված երգիչ-բանաստեղծներ, հին հայրենների օգտագործմամբ, հորինում էին գրական մշակումի մակարդակի հասնող հայրենների նորանոր շարքեր, որոնք մտնելով ընդհանուր շրջանառության մեջ, բռնում էին ժողովրդականացման ուղին և նոր որակ հաղորդում հայրենների գանձարանին։

Փորձելով որոնել հայրենների ստեղծման ու զարգացման ավելի կոնկրետ միջավայր, պետք է մատնացույց անել ժամանակի խնջույքները, տոնախմբությունները, ուխտավայրային հավաքները, ծիսական արարողությունները և երիտասարդական կամ, ինչպես ընդունված էր ասել, կտրճվորաց միությունները։ Բոլոր դեպքերում երիտասարդական ավյունի արդյունք է նրանց մեծագույն մասը։ Դրա ապացույցը սիրո երգերն են՝ մանկունք, կլտրիճ, տղա, աղջիկ, աղվոր, մորճ և նման այլ բառերի առատությամբ, որոնցով դիմել են միմյանց հայրենների ստեղծողներն ու կատարողները։

Հայրենների հարստությունն իր հմայքի շնորհիվ դեռևս X դարից արժանանում է հայ բանաստեղծների ուշադրությանը։ Վերջիններս, սկսած Գրիգոր Նարեկացուց մինչև XVII դարի բանաստեղծները, շարունակում են ոչ միայն օգտվել հայրենների առանձնահատկություններից, այլև երբեմն գրել հայրենների սեփական շարքեր։ Որպես օրինակ կարելի է հիշել Ներսես Շնորհալու մի քանի հանելուկները, Հովհաննես Երզնկացու, Ֆրիկի, Վարդան Բարձրբերդցու, Հովհաննես Թլկուրանցու, Հովասափ Սեբաստացու և այլոց հայրենների շարքերը։ Բացառիկ արժեք են ներկայացնում Խաչատուր Կեչառեցու, Ֆրիկի, Գրիգորիս Աղթամարցու, Զաքարիա Գնունեցու և ուրիշների գրած հայրենանման կաֆաները՝ մուծված միջնադարյան թարգմանական գեղարվեստական արձակի մի շարք նմուշներում («Պատմություն Աղեքսանդրի Մակեդոնացվո», «Պղնձե քաղաքի պատմություն», «Պատմություն Փահլուլ թագավորին» և այլն)՝ որպես երգ։ Քիչ չեն դեպքերը, երբ անհատական վերոհիշյալ հայրեն-կաֆաները ներմուծվել են գուսանա-ժողովրդական հայրենների շարքերի մեջ, որպես նրանց բաղկացուցիչ մաս, իսկ հայրեններն էլ կոչվել են կաֆա։

Ահա այս լայնահուն ու համաժողովրդական բնագավառն է, որ անկախ ամենաանբարենպաստ պայմաններից, մեծամեծ կորուստներով հանդերձ, գոյատևել է ինչպես գրավոր, այնպես էլ բանավոր եղանակով և հասել մեզ։

Երկար ժամանակ, սկսած 1880-ական թվականներից, այն թյուր կարծիքն էր իշխում, թե հայրենների ողջ հարստությունը պատկանում է XVI դարի աշուղ Նահապետ Քուչակին, Չնայած հենց սկզբից էլ այդ շփոթությունը հանդիպեց լուրջ առարկությունների, սակայն, ավանդական դարձող սովորությամբ, հայրենները հավաքվեցին Քուչակի անվան տակ։ Երբ հակասող փաստերն ավելի շատացան և հարցի պատմա-գիտական կողմն սկսեց լրջորեն վնասվել, Մ. Աբեղյանը հատուկ հատորով հիմնավորեց հայրենների բուն

հարստության գուսանա-ժողովրդական ծագումը[2]։ Հետագայում երևան եկան նորանոր մեծարժեք փաստեր, որոնք վերստին համոզեցին մեծանուն գիտնականի կարծիքը։

Իրենց շոշափած հարցերով հայրենները կարող են բաժանվել մի քանի խմբի. ա) ծիսական, բ) սիրո, գ) պանդխտության, դ) խոհա-խրատական։

Ծիսական հայրենները՝ հնագույններն են. ահա մի նմուշ, ուր անհասկանալի կրկնակներն ու հնագույն պատկերացումների մնացուկները մեզ տեղափոխում են դեպի հեռավոր դարերը։ Ըստ երևույթին, հետագայում այն հարմարեցվել է Քրիստոս աստծու գովքին.

Ա՜յ իմ աստուածատուր, ա՜յ, կտրիճ, էղաւղ, օ՜յ,
Ասլա ո՞ր մար որ զքեզ բերել, ընկալ, օ՜յ.
Թէ զինք մարդ-մարըն չէ, ա՜յ, բերել, էղաւղ, օ՜յ,
Ոչ կնիկ դայեկ սընուցեր, ընկալ, օ՜յ.
Թէ եղն ի մօրին, ա՜յ, բերել, էղաւղ, օ՜յ,
Խրկագվին կաթով սընուցեր, ընկալ, օ՜յ,
Աստղունք իր օրօրքն, ա՜յ, տըւել, էղաւղ, օ՜յ,
Լուսինկան ի լուսն է հաներ, ընկալ, օ՜յ,
Յիսուս ինքնսան այլ եղեր, էղօյտէ,
Որդանան գետըն մըկըրտել, ընկալ, օ՜յ,
Կընքել, իր անունն, ա՜յ, դրել, էղօյտեղ,
Այս անուն[3] մեր նոր թագաւոր, ընկալ, օ՜յ։

Դուրս թողնելով կրկնակային ձայնարկությունները, որ ընդգծել ենք, ստանում ենք կնունքի հայրեն։

Հայրենների լավագույն մասն ու մեծագույն հարստությունը նվիրված է սիրո թեմային։ Այդ հայրեններում մերթ հանդիպում ենք սիրող երիտասարդին, մերթ նաև նրա սիրուհուն, իսկ մերթ էլ նրանց խանգարող մի երրորդ անձնավորության։ Այս առումով սիրո հայրենների ամբողջությունը կարծես մի գողտրիկ սիրավեպ է՝ իր ներքին սյուժեով ու գործող երեք անձերով։ Ուշադիր լինելիս դժվար չէ նկատել, որ միմյանց սիրող տղան ու աղջիկը ժողովրդի ընտրյալներն են՝ իրենց ազնվագույն զգացմունքներով, անձնազոհ նվիրվածությամբ, առօրյա հոգս ու կարիքով, իսկ երրորդ ուժը մերթ երկիր ներխուժած օտար թշնամին է, մերթ երկրի ունևոր տերը, մերթ էլ ուղղակի մի ուրիշ երիտասարդ։ Ըստ այդմ էլ, հայրենները տոգորված են մերթ հայրենասիրական, մերթ սոցիալական, մերթ էլ կենցաղային տրամադրություններով։ Բոլոր դեպքերում էլ, սակայն, առաջնայինը՝ սերն է, որը մղում է պայքարի.

---

2 Տե՛ս Մ. Աբեղյան, Երկեր, Բ, Երևան, 1967, էջ 9—280։

3 Ամեն մի կոնկրետ դեպքում «Այս անուն» բանաձևի փոխարեն տրվել է կնքվողի անունը (բնագիրը տե՛ս Ա. Մնացականյան, Հայկական միջնադարյան ժողովրդական երգեր, էջ 126)։

Հա՜յ իմ սերկևիլ մորճիկ,
Ցի՞նչ ատէն էիր սիրելու.
Ջար փուշն է ի քեզ պատած,
Որ չկայ ճարակ մտնելու.
Ջար փուշ սպառողին ճկրում՝
Ես հագնեմ ճօշան կռուելու.
Գամ, մտնում ու վարդ քաղեմ,
Թող հոգեկս ի տեղըն ելնու։

Պանդխտության հայրեններում արտացոլված ենք գտնում կամ առևտրավաճառական նպատակներով պանդխտած, կամ օտար թշնամուց հալածված կամ էլ աղքատության ստիպումով հեռավոր ափեր մեկնած երիտասարդների հոգու ծանր ապրումները։ Ահա մի հայրեն, ուր կամովին պանդխտող երիտասարդը մտահոգված է իր սիրուհու ճակատագրով.

Ջիմ եարն էմանէթ կուտամ՝
Ի վարգին մէջըն պահեցէք.
Թ՚երթամ ու շուտով դառնամ՝
Ջամանաթս ի տէր հասուցէք.
Թ՚երթամ, խարիպուկ մեռնիմ՝
Վարդըն ձեզ, ըզտէրն յիշեցէք։

Խոհա-խրատական հայրենները հագեցված են ժողովրդական փիլիսոփայությամբ ու առօրեական մտորումների իմաստավոր ամփոփումներով։ Գողտրիկ է, օրինակ, մահվան թեմային նվիրված հետևյալ հայրենը.

Մահալօքս ի վար կուգի,
Նա տեսայ չոր գանգ մի պառկած.
Ոտոքս ալ թապալ տվի,
Նայ երեսս ի վեր ծիծաղաց.
Դարձաւ պատասխան երետ,
Ի՞նչ կանես, կտրիճ շփացած.
Երէկ քեզի պէս էի,
Այսօր գիս այս հալս է ձգած։

Հայրենների մեջ լավագույն եղանակներով են վերարտադրված ոչ միայն մարդկային հոգու ապրումները, կնոջ գեղեցկության հմայքն ու սիրո ուժը, այլև բնության հրաշալիքները, Բնությունն էլ հաճախ անձնավորված մասնակցում է զարգացվող տրամադրությունների բացահայտմանը.

Սուրբ Աստուածածնա տօնին,
Որ իջաւ տիլպէրն ի յեգին...
Քաղեց զիւր հոռոմ լունին,
Լուկ ելից ի շար շմաթին.

*Շմաթն ալ ի վեր քաշեց,*
*Լուկ ցաթեց շաուիղն ի յեգին.*
*Խաղողն ալ զիր պէյթն ասաց,*
*Թէ. «Հասայ սրտիս մուրատին.*
*Օր մի՝ կիւզէլի ծոցին,*
*Քանց հազար՝ Ներքև տերևին։*

*Հայրենները հարուստ են պատկերավոր մտածողության և բանաստեղծական նուրբ ընկալումների բացառիկ անակնկալներով.*

*Քո ծոցն առաւօտ նըման,*
*Քանի որ բացեմ՝ լուսանայ...*

*Հայրենների մշակույթը համաժողովրդական (իմա ժողովրդա-գուսանական և անհատ հեղինակների) հարստություն է՝ սերած հայ ժողովրդի դարավոր ընթացքի ճանապարհին, որպես նրան դեպի լույսն ու բարին, դեպի ազնիվն ու վսեմը առաջնորդող նվագ։ Այն ոչ թե մի անհատի, այլ հարյուրհազարների բարձր ճաշակի, նուրբ ընկալումների, խոր զգացմունքների և իմաստուն մտածողության յուրահատուկ բյուրեղացումն է։*

## 2. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀՅՈՒՍԻՍ-ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*XII—XIII դարերում Հյուսիսային Հայաստանի և Հայոց Արևելից կողմանքի միավորմամբ ստեղծված վարչա-քաղաքական նոր միավորը, հատկապես Զաքարե և Իվանե եղբայրների իշխանության տարիներին, մեծ դեր խաղաց հայ ժողովրդի պատմա-քաղաքական, տնտեսական և մշակութային կյանքում։ Միայն հզորացող Կիլիկյան Հայաստանն էր, որ այդ ժամանակ, ինչպես նաև հաջորդ հարյուրամյակում, կարողացավ ոչ միայն մրցել Հյուսիսային Հայաստանի քույր դպրոցների հետ, այլև հզորանալով համընթաց քայլել եվրոպական առաջավոր երկրների շարքում։ Նկատելի է հայ դըպրության այդ երկու խոշոր հատվածների փոխադարձ կապը և բարերար ազդեցությունը՝ միմյանց վրա։*

Մխիթար Գոշի *(մեռ. 1213 թ.) գրական ժառանգության մեջ Դատաստանագրքից բացի, կան նաև առակներ, մեկնություններ, աղոթքներ, թղթեր։*

*Մխիթար Գոշը հիմնադիրը հանդիսացավ գեղարվեստական արձակի մի ողջ ուղղության՝ հայ առակագրության։ Ժողովրդական լայն զանգվածներին դաստիարակելու, համախմբելու և լուսավորելու քաղաքացիական մեծ պարտքի զգացման արդյունքն է 190 առակ պարունակող նրա ժողովածուն[4]. «Ոչինչ պատուական, քան զհասարակաց օգուտն». ահա նրա նշանաբանը։ Այս կարևոր նպատակին հասնելու համար նա, բնականաբար, պիտի դիմեր հենց*

---

[4] *Տե՛ս* Մխիթար Գոշ, *Առակներ, հրտ. էմ. Պիվազյան, Երևան, 1951։*

իրեն՝ ժողովրդին, օգտվելով նրա հարուստ բանահյուսության գանձարանից։ Ճիշտ է, ասում է Մխիթար Գոշը, առակներն ստեղծված են առասպելաբար, այսինքն, ստեղծագործական երևակայությամբ, «սակայն թանձրամտաց առաւել ախորժելի երևին, որոյ աղագաւ զսակաւդ յօժարեցաք գրել»։

Առակների մի զգալի մասում շեշտված է ազգային ինքնագիտակցության և օտարներին դիմադրելու գաղափարը։

«Հասարակաց օգտին» հետամուտ Մխիթար Գոշն իր ժամանակի զավակն էր և գտնում էր, որ «իշխան մեր են մարդիկ կարգեալ յԱստուծոյ» և նրանց պետք է հնազանդվել, «զի յԱստուծոյ կարգաւորեալ է՝ տկարի հնազանդ լինել հզօրի»[5], պետք չէ քննիչ և դատին լինել իշխանավորների գործերին, որովհետև «այնոքիւք լուծանին կարգ իշխանութեան»[6]։ Գոշը միաժամանակ տեսնում էր սոցիալական ճնշումն ու կեղեքումը և դատապարտում էր «չարաց տերանց», որոնք իրենց հպատակներին «կենօք տանջին և մահուամբ», կամ ««բռնակալ իշխաններին», որոնք «զգողս պատժեն, և ինքեանք բռնակալութեամբ զնոյն գործէն»[7]։ Նա իշխանության գլուխ կանգնած թագավորի պարտքն էր համարում ժողովրդին արտաքին թշնամիներից և ներքին բռնակալներից պաշտպանելը։

Մի առակում ասված է. Առյուծի ոտքը ջարդվել էր և նա տրտնջում էր բոլոր կենդանիներից, թե ես ձեր իշխանն եմ, դուք իմ հարկատուները, ինչո՞ւ այժմ պատարագ չեք անում, որ ես բժշկվեմ։ Կենդանիները պատասխանում են. «Ի քէն ոչինչ գտաք պահպանութիւն, ոչ յարջոյ և ոչ ի գայլոյ և ոչ յայլ ինչ գազանէ. նաև ոչ դու իսկ ի մեզ խնայեցեր. այլ մեզ պատարագել Աստուծոյ արժան է, որ այդպիսի չարեաց զքեզ պատահեցոյց»[8]։

Գոշը տեղին համարելով աշխարհական և եկեղեցական չար առաջնորդների չարիքի մեջ ընկնելը, որոնք «տանջելով զհնազանդեալս, և ոչ յայլոց պահեն ի վտանգէ», արդարացի է համարում նաև նրանց դեմ ընդվզելը. «...հզօրք զտկարս արհարամրհին, և ոչ երկնչին, սակայն իմաստութեամբ զօրանան փոքունք, և յաղթեն հզօրաց»[9]։

Բայց նա ավելի կողմնակից է սոցիալական համերաշխության և ազգային ուժերի համախմբման, ուստի հորդորում է իշխողներին սահման դնել իրենց ճնշումներին ու կեղեքումներին. անհրաժեշտ է համարում պայքարը ներքին հակասությունների, խարդախությունների, անհամերաշխությունների, գժտությունների, շահամոլության և անարդարությունների դեմ։ Նա չի խնայում ոչ աշխարհիկ և ոչ էլ հոգևոր գործիչներին։ Առակներում հատուկ ուշադրություն է նվիրված թագավորության ազգապահպան դերին և նրա ուժեղացման գաղափարին։

Մխիթար Գոշն իր առակներում պաշտպանում է նաև ազգային եկեղեցու շահերը, ձգտելով միաձույլ քրիստոնեական հասարակության՝ հատկապես օտար նվաճողներին դիմադրելու նպատակով։

---

5 Նույն տեղում, էջ 81։

6 Նույն տեղում, էջ 74։

7 Նույն տեղում, էջ 92։

8 Նույն տեղում, էջ 87—88։

9 Նույն տեղում, էջ 114։

Մխիթար Գոշի առակների միջոցով գրավոր դպրության ներաշխարհն են մուծվում առօրյա կյանքը և երկրային շատ ըմբռնումներ։ Բնությունն առակներում խոսուն, ավելի բազմերանգ ու խտացված է, քան նախընթաց շրջանի գրական որևէ երկում։ Փոխադարձ զրույցի և կենդանի եռուզեռի մեջ են ծաղիկներն ու ծառերը, պտուղներն ու սերմերը, մրջյունն ու արջը, երկինքն ու երկիրը։ Եվ այդ բոլորի մեջ՝ հասարակության կյանքն է, մարդու առօրյան, նրա բարեփոխման երազանքը։

Մխիթար Գոշը մեծ հմտությամբ կարողացել է մշակել հատուկ ոճ՝ կուռ ու սեղմ, ասես, մաթեմատիկական ճշգրտությամբ հավասարակշռելով ձևն ու բովանդակությունը։

Չնայած այստեղ էլ լեզուն գրաբարն է, սակայն այդ առակներն, ամենայն իրավամբ, հայ աշխարհիկ դպրության երախայրիքներից են։

XIII—XIV դարերում, անկախ վարչա-տնտեսական և աշխարհագրական ներքին սահմաններից, ձևավորվում է գրական մի մեծ շրջան ևս, որը կարող է դիտվել որպես Սյունիք—Արարատյան։ Այստեղ նկատի ունենք Մխիթար Այրիվանեցուն, Ստեփանոս Օրբելյանին, Խաչատուր Կեչառեցուն, Տեր-Ստեփանոսին, Տերտեր Երևանցուն և ուրիշների։ Այս բանաստեղծների համար բնորոշը մնում է հայրենասիրական, ապա նաև հոգևոր գաղափարների, բնության և բարոյա-խրատական թեմաների մշակումը՝ փոքրիկ տաղերից, գանձերից մինչև ծավալուն պոեմները։

**Մխիթար Այրիվանեցին** (1222—1289/91) եղել է ժամանակի անվանի գրագետներից մեկը, թողնելով բավականին հարուստ և բազմակողմանի գրական ժառանգություն։ Նրանից պահպանված ժամանակագրությունից բացի, կարևոր նշանակություն ունեն չափածո ստեղծագործությունները։ Դրանք հիմնականում եկեղեցական պետքերի, մասնավորապես գանձարան ժողովածուների համար գրված գանձեր (նաև փոքրաթիվ տաղեր) են՝ նվիրված զանազան սրբերի ու հոգևոր տոների։

Առաջին գանձերն ու տաղերը գրել է Գրիգոր Նարեկացին։ Հավանաբար XII—XIII դարերում, Կիլիկիայում կազմվում են առաջին ընդհանուր գանձարանները և աստիճանաբար տարածվում նաև Մայր Հայրենիքում։ Այստեղ հայտնի տեղական առաջին գանձարանը կապվում է Մխիթար Այրիվանեցու անվան հետ։ Մխիթար Այրիվանեցին թողել է շուրջ երեք տասնյակ գանձ ու տաղ։ Սահակ Պարթևին և Մեսրոպ Մաշտոցին ձոնված գանձի մեջ հեղինակը նախ խոսում է աստվածային արարչության, գրերի գյուտի՝ առհասարակ գրականության և գիտության զարգացման, ապա հայոց գրերի մասին.

Հայ գիր յօրինեալ...
Վռամշապուհ ձգտեալ...
Մեսրոպ հմտացեալ,
Գիր վըրաց զուգեալ
Ու աղուանից տըուեալ...

*Մխիթար Այրիվանեցու գանձերից երկուսը նվիրված են եկեղեցական Նորավարտ որմնանկարչության օրհնությանը, իսկ մյուսը՝ Նորավարտ ձեռագրերի։*

*Մխիթար Այրիվանեցին չի փայլում բանաստեղծական մեծ շնորհքով, բայց ունի գեղեցիկ ու պատկերավոր առանձին ստեղծագործություններ՝ ժողովրդական կենցաղի, առօրյայի համ ու հոտով։ Ահա, թե ինչպես է նա նկարագրում Նորաստեղծ ձեռագիրը՝ որպես «հարս»—եկեղեցուն նվիրվող զարդարանք.*

*Սա՝ տարփ գոտոյ քոյտ միջոյ*
*Եւ շաղք հերաց քում հիւսոյ,*
*Ոսկի խնձոր խաղալոյ*
*Եւ վարդ ծոցոյ յարակայ...*

*Մխիթար Այրիվանեցու սեփական գանձերը և նրա գանձարանը ժամանակին մեծ կարևորություն են ունեցել։*

**Ստեփանոս Օրբելյանը** *(մեռ. 1304 թ.) բացի «Պատմություն նահանգին Սիսական» աշխատությունից, գրել է նաև այլ գործեր, այդ թվում՝ պոեմանման մի ընդարձակ քերթված՝ հայրենասիրական-քաղաքական բովանդակությամբ։ Նրա էությունը բնութագրելու առումով անհարկի չէր լինի մեջ բերել պոեմի խորագիրը՝ «Բան բարառնական... Ողբ ււաղականք և ձայն աշխարհականք լցեալ անհում հեծեծանօք վասն աւերման աշխարհիս Հայոց և բնաւին սպառելոյ հայրապետութեան և թագաւորութեան համագունդ իշխանութեամբ։ Շարեալ չափաբան բերմամբ՝ հոմերական արհեստիւ Ստեփաննոսէ Սիւնեաց այցելուէ»։ Խորագրի այս ձևը գալիս է Գրիգոր Նարեկացու մատյանից, պոեմի ողբերգական ձևը՝ Ներսես Շնորհալու «Ողբ Եդեսիոյ», Գրիգոր Տղայի «Ողբ Երուսաղէմի» պոեմներից, իսկ բուն բովանդակությունը և առաջադրված գաղափարները բխում են իր ժամանակի պատմական իրականությունից։ Այստեղ կենտրոնական դեմքը էջմիածինն է՝ հոգևոր իշխանության երբեմնի սիրտը։ Նա հալածված ու լքված կնոջ կերպարանքով ողբում է իր ծանր վիճակը և պահանջում, որ իր շուրջը համախմբվեն Հայոց բոլոր եկեղեցիները։ Այստեղ արդեն նկատելի է ոչ այնքան լաց ու կոծի պարագան, որքան կաթողիկոսական աթոռը Կիլիկիայից էջմիածին տեղափոխելու և երկրի ազատագրության հույսի քաղաքական ծրագիրը.*

*Թողումք զողբանքըս ցաւագին,*
*Առնենք աւարտ, լալեաց բանին,*
*Յուսահատիլ չէ՛ պարտ բնաւին...*

*Ստեփանոս Օրբելյանի նպատակն էր, որ ազգը*

*Կանգնէ զաթոռ թագաւորին*
*Եւ զգաւազան պատրիարգին...*

Սույն հայրենասիրական ողբը հեղինակին պատվիրել է անվանի գործիչ ու բանաստեղծ Խաչատուր Կեչառեցին։ Դա ցույց է տալիս, որ շոշափվող գաղափարները նաև ուրիշներինն էին՝ ծնված ոչ միայն Սիսականի լեռներում, այլև Այրարատ նահանգում և ուրիշ գավառներում։

Սույն պոեմում ավելի, քան ժամանակի գրական որևէ հուշարձանում, փայփայվում է համահայաստանյան, միացյալ, ամբողջական պետության գաղափարը։

**Խաչատուր Կեչառեցին** *(1260—1330-ական թթ.)* Ստեփանոս Օրբելյանի ժամանակակիցն ու գրչակիցն է։ Նրա գործունեության հիմնական վայրը եղել է Կեչառիսի (Ծաղկաձոր) մենաստանը, որն այն ժամանակ մտնում էր Պռոշյանների տիրույթների մեջ։ Խաչատուր Կեչառեցին իր ժամանակի նշանավոր վարդապետներից ու բանաստեղծներից մեկն էր։ Նա ունեցել է նաև նկարչական ձիրք։ Նրա բանաստեղծությունների[10] մի զգալի մասում դրսևորված է ժամանակի պատմա-քաղաքական իրականությունը և հայրենի երկրի ազատագրության ու ինքնուրույնության գաղափարը.

Սոքօք հանդերձ աղաչեա զՈրդի՝
Փրկիլ ըզմեզ յազգէն հագարի,
Զթագ և զաթոռ մեր Հայոց ազգի,
Բարձր առնելով մինչև յօր վերջի...

Նա մերթ հիշում է Սադուն Աթաբեկին, մերթ վրաց Դեմետրե թագավորին, մերթ էլ իր տոհմական նախնուն՝ պարոն Պռոշին.

Զպարոն Պռօշն՝ զարդ հեծելի,
Որ զերկաթի դուռն առնէր փոշի...

Խաչատուր Կեչառեցին քաղաքական-հայրենասիրական տրամադրություններից բացի, երգել է հոգևոր գաղափարներ, ինչպես նաև բնությունը։ Կոստանդին Երզնկացու նման, թերևս հենց միաժամանակ, նա ևս դիմում է վարդի ու սոխակի մոտիվի մշակմանը։ Այստեղ օգտագործված է դրամատիկական ձևը, ուր նամակագրական կապի մեջ են վարդը, սոխակը, մասամբ նաև այգեգործը։ Խաչատուր Կեչառեցին կարողանում է իր նախորդների մոտ նկատվող ընդարձակ, ծանոթ ու կրկնություններով լի բանաստեղծությունների փոխարեն տալ ավելի ամփոփ, չափի որոշակի զգացումով շարադրված երգեր։ Այս ճանապարհին նա ևս կանգնում է հայրենների օգտագործման անհրաժեշտության առջև՝ կազմելով առանձին տաղաշարք։ Ահա մի նմուշ.

Աշխարհս էր ի ծով նըման,
    Զիս ի վայր տարաւ յանգիման.
Կենցաղս էր յալեանց նըման,
    Զիս ի մէջ էառ քան զընդան.

---

10 Տե՛ս Մ. Թ. Ավդալբեգյան, Խաչատուր Կեչառեցի, Երևան, 1958։

Սէրն էր անդընդոց նըման,
Զիս ի վայր քարշեց փոշիման.
Աւուրքս էր ծաղկի նըման,
Որ անցաւ երազի նըման։

Մեծ է Խաչատուր Կեչառեցու դերը հատկապես Ալեքսանդր Մակեդոնացու պատմության խմբագրման, կաֆայափորման և բարառնությունններով հարստացնելու գործում։ Դա, հիմնականում, գեղարվեստական արձակին նոր տեղ տալու, այն ավելի ընդունելի ու գրավիչ դարձնելու մի հաջող փորձ էր, որը մեծ սիրով գարգացրին հաջորդ սերունդները։ Հավանաբար Ալեքսանդրի պատմությունը մանրանկարներով զարդարելու արվեստն էլ հայ մատենագրության մեջ սկիզբ է առել նույն հեղինակից։

Ֆրիկի (XIII—XIV դդ.) մասին կենսագրական որոշակի տեղեկություններ չկան։ Այդ առումով կցկտուր փաստեր են տալիս նրա բանաստեղծությունները[11]։ Որոշ տվյալներ Ֆրիկին առնչում են Արևելյան Հայաստանի և մասնավորապես Արցախ—Սյունիք լեռնաշխարհի հետ։ Մի բանաստեղծության խորագրում հիշված է Ֆրիկի հոր անունը՝ «Թագվոշ» (այսինքն, «Թագվորշահ»), ինչպես նաև հորեղբոր անունը՝ Դողոն։ Մի ուրիշ խորագիր նրան կոչում է «ճարտար աշխարհական»։ Հեղինակը քանիցս հիշեցնում է, որ ինքը նյութական բավականին հարուստ միջոցներ է ունեցել, որոնք, սակայն, խլվել, կողոպտվել են մոնղոլ տիրակալների կողմից, նա նույնիսկ ընկել է ծանր պարտքերի տակ և հարկի դիմաց գրավ դրել որդուն.

Ժողովեցի շատ մի բարի,
Ըռզակ արի զնա թաթարի...
Դըրի զիմ որդին գրաւ,
Ուստի՞ ճուղայ՝ գընալուն...

Ինչպես իր անձնական ծանր կացությունն ու վիշտը, այնպես էլ հայրենի երկրի վիճակն, անսպառ նյութ են հանդիսացել Ֆրիկի բանաստեղծությունների համար։ Լիցքավորված ժամանակի հասարակական-քաղաքական խորապես հուզող ու ցնցող տրամադրություններով, Ֆրիկը դառնում է նրանց ամենանշանավոր դրսևորողն ու նրանցով պայմանավորված մարտիկ-քաղաքացին։ Բուռն հայրենասիրություն, անզուսպ ատելություն դեպի մոնղոլ բռնակալները, ինչպես նաև բողոք՝ սոցիալական անարդարությունների դեմ—ահա Ֆրիկի բանաստեղծությունների բուն ոգին։

Ոչ մի բանաստեղծ այնքան հստակորեն չի վերարտադրել օտար կեղեքիչների դեմ ժողովրդի մեջ եղած դժգոհությունը, որքան Ֆրիկը.

---

11 Ֆրիկ (Ժողովածու), Երևան, 1937, Ֆրիկ, Բանաստեղծություններ, Երևան, 1941, Ֆրիկ, Դիւան, կազմեց՝ Տիրայր արք. Մելիք-Մուշկամբարյան, Նյու-Յորք, 1952։

*Այլ կամք ի ձեռն անօրէնի,*
*Որ կու վարեն անգին գերի.*
*Որքա՞ն քակեն յեկեղեցի...*
*Քանի՞ կանայք առնեն այրի,*
*Եւ որքա՞ն որբ՝ քրիստոնէի...*
*Որքա՞ն արիւն հեղուն յերկրի,*
*Քանի՞ առնեն բան խոտելի.*
*Որքա՞ն տանջին զմեզ յաշխարհի*
*Եւ կեղեքէն զկեանս մեր յայտնի...*

*Այս տողերը նաև տրտունջ են աստծու հասցեով։ Չէ՞ որ նա է այգ ամենի տնօրենը, նա է, որ տեսնում է ու լռում.*

*Եւ դու Ներես յամենայնի*
*՚Ի անտես առնես զմեզ ի վշտի.*
*Եւ ո՛չ խնդրես վրէժ յայտնի...*
*Եղեգն չեմք, կամ խոտ վայրի,*
*Որ խանձ արկեալ ես կրակի...*

*Այրող տառապանքի կենդանի պատկերների ենք հանդիպում նաև հետևյալ տողերում.*

*Տէ՛ր, դու տեսար երկնից ի վայր,*
*Զինչ քո ծառայքն քարշեցին...*
*Քըսան տարի դար քաշեցաք.*
*Որ հալեցաւ ոսկր ու մորթին։*
*Լոկ շնչաւոր եմք մընացել*
*Խելք, զգայարանք ի մեզ չերևին...*

*Այս տողերը միաժամանակ վկայում են, թե բանաստեղծական խոսքը հասարակական ինչպիսի մեծ ու հայրենանվեր ծառայության էր կոչված։ Նման հալածանքներ հայ ժողովուրդը առաջ էլ էր տեսել, սակայն, բանաստեղծական այսպիսի խռովք, ժողովրդի լայն զանգվածների հոգում հարազատ, նրանց սրտից բխած ու նրանց բառ ու բանով շաղախված այսպիսի կենդանի խոսք ասվում էր առաջին անգամ։*

*Ֆրիկը սոցիալական բանաստեղծության հիմնադիրը եղավ միջնադարյան Հայաստանում։ Թարմ, անմիջական, ժողովրդական ու մարդկային ձայնով է հնչում նրա բողոքը.*

*Մէկն ի պապանց՝ պարոնորդի,*
*Մէկն ի հարանց մուրող լինի...*
*Մէկին հազար ձի ու ջորի,*
*Մէկին ոչ ուլ մի, ոչ մաքի...*
*Մէկն ի ղրկանացն հարստի,*
*Մէկն յիւրայնոցն աղքատասցի...*

Բողոքի ձայն հնչեցնել աստծո առջև, չի նշանակում մեղադրել նրան. բանաստեղծի համար հենց սկզբից «Աստված արդար է յիրաւի»։ Նրան հուզում, փոթորկում է երկրային անարդար, հակասական, անհավասար վիճակը, մըղելով հավասարության ու արդարության երազանքին։ Այս խոշոր ու առաջադիմական հարցն է, որ առաջին անգամ այնքան որոշակիորեն մարմնավորվում է մեր բանաստեղծության մեջ։

Ֆրիկի պատկերացմամբ, Աստծուց բացի, կա նաև նրա կամքով գործող մի ուրիշ գերբնական ուժ, ճակատագիրը, «ֆալաքը», «չարխը», «բախտի անիվը»։ Ուստի նա իր բողոքն ուղղում է նաև վերջինիս դեմ, այս անգամ արդեն նրան մեղադրելու նպատակով.

Է՜յ, չարխ, ես քեզ ոնց ատամ, երբ չունիս, զոչ ոք կարեոր.
Է՞ր չես դու առներ բըորդ դատաստան, ա՜յ ծուռ դատաւոր.
Ֆալա՜ք, դու ծռին ընկեր, 'ւ ըղորդին ես խիստ նննգաւոր...

Թվում է, թե ամեն ինչ ճիշտ է նկատված, հարվածը տեղին է ու շեշտակի. սակայն հեղինակի կրոնական պատկերացումները նրան տանում են դեպի աստվածային ամենազորության գաղափարը։ Չէ՞ որ ճակատագիրն էլ կախված է աստծուց. այդ միջնորդն էլ նույն աստծու կամքով է գործում, ուստի՝

Ֆալաքըն պացխուն կու տայ. Մի՛ հաջեր անգէտ հալեոր...
Զգիտե՞ս, թէ Արարչէն լինի՝ զով կամի՝ առնէ մեծաւոր...

Բանաստեղծն իսկույն ընկրկում է, որովհետև հավատացած է, թե ի վերջո «Հրամանն յԱստուծոյ» լինի։

Մնում է նորից խաղաղվել, հետևել աստվածային իմաստության ձայնին, աղոթել մեղքերի թողության համար, արհամարհել երկրային բարիքները, որովհետև

Աղքատ իմաստուն լաւ է, քան զհազար անգէտ գանձաւոր...
Մօտ յԱստուած աղքատ լաւ է, քան զհազար հարուստ մեղաւոր...

Ահա միջնադարցու ընդհանուր սահմանափակության այն դարավոր շըրջագիծը, որից դուրս գալու ոչ մի դռնակ չէր թողնված նույնիսկ ամենահանդուգն ու ամենապայծառ մտածողների համար։

Ֆրիկը գրել է նաև հոգևոր բնույթի բազմաթիվ մեծարվեստ բանաստեղծություններ։ Դրանց մեջ առանձին հմայք ունեն նրա խոհա-խրատական հայրենները և նրանց նմանությամբ ու ոգով շարադրած տաղաշարքերը։ Բնորոշն այն է, որ նա այստեղ անկեղծորեն վերարտադրում է իր սեփական համոզմունքի ու զգացմունքի արգասիքները՝ բանաստեղծական մեծ վարպետությամբ։

Մեծ է այսպիսի երկերի նշանակությունը նաև մարդկային հոգու նորանոր ծալքերը, նրա զգացմունքային ներաշխարհի այլևայլ երանգները, ինչ-

պես նաև բանաստեղծի խոսքի հմայքն ու արվեստը ուսումնասիրելու տեսակետից։ Անձնական խոհն ու ապրումները դրսևորելու, իսկական քնարերգություն կերտելու առումով վերջիններս անհամեմատ ավելի բարձր նշանակություն ունեն։ Ֆրիկը, գալով ժողովրդական խավերից, յուրատեսակ դիրք է բռնում հոգու և մարմնի հարաբերության հարցի նկատմամբ, գտնելով, որ գեռ երկար պիտի մտորել՝ ա՞յս աշխարհին, թե հանդերձյալին նախապատվություն տալու մասին.

Ֆրի՛կ, շահ ու զէն արա, իմացի՛ր, թէ ո՛րն կու պիտի...

Այս ծանր ու լրջագույն հարցը պահանջում է անձամբ մտորել, սուզվել սեփական խոհերի ու իմացությունների ծովը և համոզմունքով գտնել փրկության մարգարիտը։ Սա արդեն բոլորովին նոր ուղի էր, քան այն, որը տանում էր դեպի պատրաստի պատգամների չոր ու ցամաք չափաբերությունը։

Այն մեծ ուժը, որ կա Ֆրիկի հայրենասիրական և սոցիալական երգերում մի բառով կարող է կոչվել կենսասիրություն։ Այն՝ նույն ուժով, բայց յուրատեսակ տեսքով առկա է նաև նրա մյուս բոլոր երգերում՝ մինչև իսկ կյանքից ու աշխարհից հրաժարվելու կոչերում։

**Տերտեր Երևանցին** *(1290/1300—1350/1360 թթ.)* ծնվել է Երևանում, Սարգիս քահանայի ընտանիքում։ Սովորել է Բջնիից ոչ հեռու Թեղենյաց վանքում՝ Հակոբ վարդապետի մոտ։ Մոնղոլական բռնատիրության ծանր հալածանքները նրա առջև ես բացում են պանդխտության ուղիները։ 1330—40-ական թվականներին նա հանգրվանում է Ղրիմի տարբեր քաղաքներում և զբաղվում գրչությամբ։ Նրա ձեռագրերից մեկում, ի շարս իր չափածո գրվածքների, պահպանված են նաև կենսագրական այսպիսի տողեր.

ԶՏէրտէր գրիչս Երևանցի,
Որք և այրի, խեղճ և լալի,
Յաշխարհն եկի այս մուղալի...
Ի քաղաքէն այն պատուական,
Որ իր անունն է Երևան...
Ի մեծ դաշտէն էջմիածնի,
Ի ստորոտէն Արարատի...

Նրա գրչին է պատկանում դրամատիկական բնույթի մի ուշագրավ պոեմ՝ խաղողի, գինու և իմաստասերի վիճաբանության մասին։ Այն գրված է պարզ ու դյուրըմբռնելի ոճով, աստվածաշնչային որոշ գիտելիքների համեմունքով և Հովհաննես Սարկավագի «Սարյակ» բանաստեղծության ոգով։ Վիճում են խաղողն ու գինին՝ ժամանակի վարդապետական մտքի դեմ և հաղթանակում։

Գինին բացատրում է, որ ինքը եկել է ոչ թե չար, այլ բարի նպատակով, այն է, սգավորներին մխիթարելու, սեղանները զարդարելու, տրտմությունը փարատելու, օտարներին սիրաշահելու համար։ Իմաստասերը վեճը տանում

է կրոնական հունով, գինին տալիս է իրեն արդարացնող պատասխաններ, ստիպելով, որ իմաստասերն ի վերջո պարտվի.

Իմաստասերն ասէ. — Գինի, ըզքեզ գտրովեցի,
Քաղցր և անուշ բաժակ բարի.
Ես մեղայ սուրբ արարիչին,
Որ քեզ ստեղծեց բաժակ բարի,
Քաղցըր պտուղ յայժ ցանկալի...

Տերտեր Երևանցու այս պոեմը մեր միջնադարյան գրականության անդաստանում երևան եկող այն թարմաշունչ ստեղծագործություններից է, որոնք մի կողմից աշխարհականացման, իսկ մյուս կողմից թատերականացման տարրեր էին մուծում նրա մեջ։

Անանուն Սյունեցին (XIII—XIV դդ.) մի մեծարժեք պոեմի հեղինակ է. նա այդ ստեղծագործության համար նյութ է ընտրել պատմական մի ուշագրավ իրադարձություն[12]։ Ըստ երևույթին մոնղոլական Սահիպ դիվանիներից մեկն ունենալով մոնղոլուհի կին՝ Էլ-Խութլու անունով, ամուսնացած է եղել նաև հայուհու հետ, որից և ունեցել է Ստեփանոս անունով զավակ։ Վերջինս մեծացել է որպես հայ, ստացել դպրական ու զինվորական բարձր կրթություն, նշանակվելով Սյունյաց աշխարհի հոգևոր և աշխարհիկ առաջնորդ (պարոնտեր)։ Նրա մոնղոլուհի մայրացու՝ Էլ-Խութլուն, հավանաբար, մեծ դեր է խաղացել Սյունիքի հարստահարման գործում։

Ժողովուրդը ըմբոստացել է նրանից և դրդել Ստեփանոսին՝ սպանելու նրան.

Բա՛րձ դու ի կենաց
Ջմայրն ամեն չարեաց.
Մերժեայ ի կենաց զէլ-Խութլուն,
Լեր երկայնակեաց։

Ստեփանոսն սպանում է նրան, բանտարկվում և ենթարկվում մահապատժի։ Հայրենի Սյունիքը ողբում է իր հերոսին.

Հուր բորբոքեցաւ
Ցեղեզեց Ձորին,
Հրդեհեալ կիզեաց զամենայն
Բնակիչք երկրին...

Ցնցող է հարազատ մոր վշտի նկարագրությունը։

Բանաստեղծը կարողացել է նաև անձնավորել, խոսեցնել հերոսի անտեր մնացած ձիուն, որն ախոռի սալարկը ղոփելով վրնջում էր.

12 «Բանբեր Մատենադարանի», № 8, 1967, էջ 291—317։

*Բացէ՛ք զդրուենին,*
*Երթամք, թէ հանիմք օգնական*
*Սիւնեաց իշխանին... .*

Զուսպ, բայց խորապես հուզող այս պոեմի մեջ մեծ արվեստով վերարտադրված է ժամանակի հայ իրականության դրամատիկ էջերից մեկը։

## 3. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Արևմտյան Հայաստանում այս ժամանակաշրջանում նշանակալից էր Բարձր Հայքի Եկեղյաց գավառի կամ Երզնկայի տնտեսական ու հոգևոր վերելքը։ Հատկապես Երզնկա քաղաքում մեծ թափով զարգացան արհեստները, առևտուրը, կրթական օջախները, պատշաճ հովանավորության արժանանալով տեղի իշխանական տոհմի կողմից։ Առանձին դեր էր վիճակված Երզընկայի եղբայրական միությունների, համքարությունների, որոնք խոշոր դեր էին կատարում առևտրի ու արհեստների զարգացման գործում։ Ուսումնական հաստատություններում ու գրչօջախներում գիտությունն արգասավորվում էր ինչպես հին ու հարուստ ժառանգության ավանդներով, այնպես էլ նոր հայացքների ներթափանցմամբ։ Այս գործում մեծ էր հատկապես Կիլիկիայի դերը։ Երզնկան կապված էր Եվրոպայի մատույցներում բարձրացող հայկական այդ նոր պետության հետ թե առևտրական և թե մտավոր ուժեղ կապերով։

Երզնկան միայն վերցնողի դերում չէր, այլ որոշ հարցերում՝ նաև փոխհատուցողի։ Հիշենք XIII դարի ականավոր գործիչ Հովհաննես Երզնկացուն, որը Կիլիկիա մեկնեց բարոյա-կրթական դասախոսություններ կարդալու և կաթողիկոսի պատվերով քերականական մեկնություն գրելու։

Երզնկան հատկապես XIII—XIV դարերում երևան հանեց նաև անվանի մտավորականների, գիտնականների ու բանաստեղծների մի ամբողջ բույլ։ Նրանցից են Հովհաննես, Կոստանդին, Կիրակոս, Գևորգ, Մովսես Երզնկացիները և շատ ուրիշներ։

**Հովհաննես Երզնկացին** (Պլուզ. XIII դ.) անվանի մանկավարժ, հասարակական խոշոր գործիչ, հմուտ գիտնական, փիլիսոփա և շնորհալի բանաստեղծ էր։ Անցյալի դպրության գանձարանում առանձին տեղ են գրավում նրա ոչ միայն փիլիսոփայական, տիեզերագիտական, քերականական, կանոնական, մեկնողական, այլև քերթողական գործերը, ներբողները, թըղթերը, խրատները, ճառերն ու քարոզները։ Այդ բոլորի միջով, դարի ու միջավայրի ոգուն համընթաց, անցնում է նաև դպրության զարգացման և աշխարհականացման ջիծն ու գաղափարը։ Թարմ շնչով են գրված նրա չափածո ստեղծագործությունները[13], որոնց լեզուն բացառությամբ որոշ տաղերի, ժամանակի խոսակցական լեզուն է։

---

13 Տե՛ս Արմենուհի Սրապյան, *Հովհաննես Երզնկացի*, Երևան, 1958։

Հովհաննես Երզնկացին որպես ընթերցողների, նկատի ունի հասարակական լայն խավերին, ավելի շուտ քաղաքային բնակչությանը, արհեստավորներին, առևտրականներին, մեծատուններին և մտավորականներին։ Այդ են ազդարարում նրա բանաստեղծությունների խորագրերը. «...ի խրատ աշխարհականաց», «...ի խրատ իմաստնոց և կատարելոց», «...Ի խնդրոյ Յակոբայ մանկտաւագի Երզնկացւոյ» և այլն։ Դա նշանակում է, որ հասարակական պահանջն էլ իր հերթին էր մեծացել գրականության ու բանաստեղծության նկատմամբ։

Երզնկայի եղբայրությունների համար գրավոր կանոններ է մշակել ինքը՝ Հովհաննես Երզնկացին։ Ապա այդ եղբայրության երիտասարդական զինված ջոկատի կտրիճների ավագը, որ կոչվում էր «մանկտավագ» հանդես է գալիս որպես բանաստեղծության պատվիրատու։ Մեզ է հասել այդ մեծարժեք բանաստեղծությունը, որն ունի «Յակոբ զարթիր ի քնոյ մեղաց...» կրկնակը։ Բայց Հակոբը միակ պատվիրողը չի եղել։ Հովհաննես Երզնկացու մի այլ բանաստեղծության վերջում կարդում ենք.

Այս եղբայրս, որ գրածս ուզեց և ես յանձն առի,
Ի պատճառ եղբայրութեան սիրով գրեցի...

Նման տողեր կան նաև մի այլ խրատաշարքում, ուր նկատի է առնված քարավաններին ուղեկցող ջոկատի ումն պետ, ղեկավար.

Այս եղբայրս, որ զայս ուզեց, և ես գրեցի,
Ի վերայ ճամփու էր նա, ու ես շտապով լի...

Նշված բանաստեղծությունները խրատների երկար շարքեր են, որոնց մեջ քարոզված են ժամանակի հոգևոր գործչի և գիտնականի բարոյախոսական հայացքները։

Հովհաննես Երզնկացու խրատական բանաստեղծությունների մեջ հատուկ տեղ են գրավում նրա գրած հայրենները, որոնք նույնպես ծնունդ են եղբայրությունների հետ կապվող իրականության։ Դրանք գուսանական և ժողովրդական հայրենների նման խոհա-խրատական քառյակ-ութնյակներ են։ Ուշագրավ է, որ այստեղ էլ ամեն առիթով երևում են եղբայրություններն ու նրանց անդամները.

Դաւիթ Մարգարէն ու արքայն
Զսիրելէաց ըզսէրն է գովել,
Ընցգոմ վայելուչ, աղւոր
Են եղբայրքն ի մէկտեղ եկել.
Զեր գալդ է բարի եղբայրք...
Հազար երնեկ այս աւուրս,
Որ մեկտեղ ենք մենք ժողովել...

Հովհաննես Երզնկացին ունի նաև ուրիշ ստեղծագործություններ կրոնական թեմաներով։

Գիտական առումով մեծ նշանակություն ունի բանաստեղծի երկնային մարմիններին նվիրած մի քերթվածը, գրված Թիֆլիսում՝ Ապլոց իշխանի խնդրանքով 1284 թ.։

Երզնկայում ծնված գրական այս առողջ հոսանքը բոլորովին նոր որակ ու շունչ ստացավ նույն ժամանակների մի ուրիշ բանաստեղծի՝ Կոստանդին Երզնկացու գրչի տակ։

Կոստանդին Երզնկացին (XIII—XIV դդ.)[14] ևս սերտ կապերի մեջ է եղել վերոհիշյալ եղբայրությունների հետ՝ արձագանքելով նրանց առօրյային ու տրամադրություններին.

Եղբարք մի կան հետ մեզ սիրով,
Աշխարհի բան ուզեն գրով,
Նայ ես վասն այն յայտնի ձայնով
Սիրո բաներս ասցի յոլով...

Այսպիսով, հոգևոր գործիչներն անգամ ընդհուպ մոտենում են կյանքին, մարդկային ամենախոր զգացմունքներին։ Ազդակը նորից ստորին շերտերից է, առևտրական, արհեստավորական խավերից և մասնավորապես կտրճվորաց միություններից, եղբայրություններից։ Ահա կյանքի թելադրանքով գրականության մեջ մտնող կենսասիրության ցայտուն օրինակ։ Մի երևույթ, որի հասարակական գործոններն ու ազդակները մշակութային այլ կենտրոններում այսպես հստակորեն չեն նշմարվում։

Հոգևոր երգերի՝ «Աչքն ծով ի ծով» Աստվածամոր և հայրենների՝ «Աննման աղուոր»-ի կողքին կանգնում է նրանց երրորդ քույրը՝ գրավոր դպրության «Մորմ»-ը (դալար ճյուղը, այսինքն, դեռատի աղջիկը).

Ջերդ զլուսին սուրաթ բոլոր,
Շուրջ զերեսին մազերն ոլոր,
Անով արեր է՛շատ մոլոր՝
Ոնցտի լուսով յիս ցաթեցաւ...
Ջնա երբ ի խաղ տեսնում նազով՝
Լուսին սուրաթ, սիահ մազով,
Ես իւր դէմն ելնեմ սազով
Եւ թէ ծառայ լինիմ կամաւ...

Մաքուր սիրային այսպիսի երգերից բացի, Կոստանդին Երզնկացին գրում է նաև սիրո այլաբանական երգեր, որոնց մեջ սերը երկիմաստ է, պտտվում է մի կողմից վարդի և սոխակի ավանդական սիրավեպի շուրջը, իսկ մյուս կողմից՝ Քրիստոս աստծու գաղափարի։ Ըստ հեղինակի մի շարք նախազգուշացումների, էականն այդ երկերում Քրիստոսի գովքն է։ Նա նույնիսկ գրում է առանձին բանաստեղծություն. «Մեկնութիւն վարդին համառօտ։ Վասն ան-

14 Տե՛ս Կոստանդին Երզնկացի, Տաղեր, աշխատասիրությամբ Արմենուհի Սրապյանի, Երևան, 1962։

գիտաց շինեցի, զի կարծէին եթէ մարմնա(ւ)որ էր բանք վարգիս. և վասն այն գրեցի» խորագրով։ Ըստ այդմ էլ կարդում ենք.

Նշբա՛յր, ականչ դիր ու լըսէ,
    որ ես ասեմ ըզմեկնութիւն...
Եւ կարմիր վարդըն վառեալ՝
    այն էր Յիսուս՝ Հօր միածին...

Այս այլաբանության ձևը նոր չէր. գալիս էր Գրիգոր Նարեկացուց, որն իր մի բանաստեղծության մեջ սայլի, եզների, սայլապանի, սայլին բարձած բուրումնավետ խրձերի նկարագրին տալիս է հատուկ մեկնություն.

Սայլն ի Սինեայ երկրորդ օրենքն էր Մովսէսի...
Եւ այն մանուկ խորտիշագեղն՝
Այն Յովհաննէսն էր Մկրտիչն.
Եւ այն չորս կուրծն սայլին՝
Աւետարանն էր Քրիստոսի...

Իր հերթին ստեղծագործության այդ ձևն էլ գալիս էր ժողովրդական բանահյուսությունից, որտեղ, սակայն, այն ազատ էր կրոնական երանգավորումից։

Գրականության մեջ խորացող և արմատակալող այս ընթացքը՝ նրա աշխարհականացմանն օգնող ազդակներից մեկն էր։ Կոստանդին Երզնկացին, հետևելով Գրիգոր Նարեկացուն և այլոց, բոլորովին ինքնուրույն եղանակով ու նոր արվեստով էր մշակում հին մոտիվները։ Այս եղանակով էր, որ Կոստանդին Երզնկացու գրչի տակ բանաստեղծության նյութ դարձան գարունը, բնությունը, վարդն ու սոխակը, արևը, լույսը, առավոտը և այլն։ Անկախ իրենց փոխաբերական իմաստից, նրանք գովք էին նաև հենց այդ բոլոր երևույթների։ Բավական էր մի փոքրիկ քայլ, մի անցում ևս և ամեն ինչ կըստանար իր բնական տեսքը։ Այդ քայլն էլ կատարում է հենց ինքը՝ Կոստանդին Երզնկացին՝ առաջին անգամ տալով սիրո ու բնության անաղարտ, գողտրիկ ու «յոլով» (մեծ թվով) երգեր։

«Ահա եղև պայծառ գարուն», «Ահա հոտն գար գարնան» և այլ երգերում բանաստեղծը նկատի ունի իսկական բնության զարթոնքն ազդարարող կենարար գարունը։ Դրանցից առաջինում գարնան գալը նկարագրվում է հիմնականում թռչունների, ծաղիկների, ջրերի, իսկ երկրորդում՝ հատկապես սիրո և խնջույքի հոգեպարար դրվատանքով։ Ահա այստեղից է, որ սկիզբ է առնում «Տաղ գարնան և ուրախութեան» կամ «Տաղ գարնան և սիրոյ» կոչված երգերի հեղեղը, ողողելով հետագա դարերի տաղարանները։

Մըտրուգ, դու սազէ՛ զշաղթայն,
Որ մորճըն խաղայ մոյտան.
Ա՛յ մորճ ու բարակ 'ւ երկայն,
Քո տեսն ի ջուսին նման։

Աչերդ է ի ծով նման,
Ունքերդ՝ աղեղան լարման,
Կանգնել սուրաթիդ փասպան,
Վախեմ, թէ խոցես մահուան։

Ինչպես Կոստանդին Երզնկացուն, այնպես էլ նրա հետնորդներին ճիշտ հասկանալու նպատակով անհրաժեշտ է, սակայն, հատուկ ուշադրություն դարձնել աշխարհիկ տրամադրություններով տոգորված և այսպիսի անխառն երգերի վրա, և փոխաբերական իմաստով ծնվածների։ Մեծ էր նաև վերջիններիս հեղաշրջող դերը՝ թե՛ գաղափարական և թե՛ գեղարվեստական առումով։

Ահա մի քանի տող «Բանք վարդի օրինակաւ ղՔրիստոս պատմէ» բանաստեղծությունից, ուր այնքան շռայլաշող գարնան նկարագրության ենք հանդիպում.

Այսօր եղև պայծառ գարուն,
    ցնծան ծաղկունք և յօրդորին...
Թէ՝ սէր է ծառն ու սէր ծաղիկն,
    ու սէր հաւուն ձայնն ի ծառին,
Սէր է վարդն ու սէր պլպուլն՝
    սիրով նըստել ի վրայ վարդին.
Սիրով են գոյն ու գոյն
    ու գեղեցիկ այն ծաղկընին.
Վասըն սիրոյ փոքրիկ հաւերն
    ի ծաղկընուն վերայ նստին...

Կոստանդին Երզնկացու երգերում լայն առումով է բանաստեղծության նյութ դառնում նաև հեղինակի անձնական, անհատական վիշտը։ Բանաստեղծը գանգատվում է իր դեմ հարուցված հալածանքներից։ Նշմարելի են, հիմնականում, երկու կարգի հակառակորդներ, որոնցից պաշտպանվում է բանաստեղծը՝ երկուսին էլ համարելով խենթ ու հիմար։ Մի խմբի ներկայացուցիչները հակադրվել են Կոստանդին Երզնկացուն, որպես աշխարհիկ երգեր շարադրողի։ Եվ հենց նրանց պատասխանելու և նրանցից պաշտպանվելու արդյունք են նրա մեկնությունների մի մասը և որոշ բանաստեղծություններ՝ ամբողջապես.

Ոմանք չար են հետ ինձ
    ու նախանձով են յիմ վերայ...
'Ի ոմանց պատեհ թըւի
    զարիմս հեղուլ իր կամ լինայ...

Միջին դարերում յուրաքանչյուր նոր գաղափարի առաջամարտիկ արժանանում էր հալածանքի և հաճախ պաշտպանվում նաև Քրիստոսի հետ կապված թվացող կամ հնարովի տեսիլքով։ Ահա նման տեսիլքի օգնությանն է դիմել Կոստանդին Երզնկացին, պատմելով, թե ինչպես Քրիստոսը՝

*Ելնէ ի յաթոռոյն*
*և դընէ զոտն ի յիմ վերայ.*
*Կոխէ զիս և քայլէ...*

*Այդ այցելությունից հետո է, ահա, որ*

*Եղև յանկարծակի*
*ինձ բան խօսիլ՝ ով ուզենայ,*
*Այնպէս, որ ես ի յիմ*
*խօսից շարելն զարմացայ...*
*Իմ բանս ի յայն լուսոյն*
*եկել առ իս՝ ինձ մանանայ...*

*Եթե Գրիգոր Նարեկացին նման եղանակով առաջ էր մղում իր քրիստոնեական նոր հայացքը՝ ի պաշտպանություն մարդ արարածի, ապա Կոստանդին Երզնկացին Քրիստոսի հովանավորությամբ առաջ էր քաշում սիրո և բնության իր անաղարտ դայլայլանքը։ Հիրավի, մեծ երևույթ։*

*Կոստանդին Երզնկացին ունի նաև ուրիշ բնույթի բանաստեղծություններ, խրատներ, որոնք հիմնական գծերով հարազատ լինելով հանդերձ իր ժամանակակիցների, մասամբ նաև նախորդների համանման ստեղծագործություններին, դարձյալ տոգորված են նոր, ինքնատիպ մտածողությամբ ու աշխարհընկալումով։*

*Իր ամբողջությամբ Կոստանդին Երզնկացու քնարերգությունը մեր գրականության երկարամյա առաջընթացի և աշխարհականացման առաջին հասուն պտուղն է, հյութեղ ու լիարժեք երախայրիքը։ Հայ գրականության աշխարհականացման հետևողական երևույթը, Երզնկայի երկնակամարի տակ, XIII—XIV դարերում հասավ մի նոր, աննախընթաց որակի ու մակարդակի։*

## 4. ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ

*Կիլիկյան Հայաստանը, որն իր զորության ու ծաղկման գագաթնակետին հասավ XII—XIV դդ., հատուկ դեր խաղաց հայ ժողովրդի ոչ միայն քաղաքական ու տնտեսական, այլև մշակութային կյանքում։ Նշված դարերում այստեղ իրենց բուռն զարգացումն ապրեցին մանկավարժությունը, գրչության արվեստը, պատմագրությունը, փիլիսոփայությունը, բանաստեղծությունը, երաժշտությունը, մանրանկարչությունը, ճարտարապետությունը և մշակույթի մյուս բնագավառները։ Ծնվեցին այնպիսի մեծություններ, ինչպիսիք էին Գրիգոր Մեծ Վկայասերը, Ներսես Շնորհալին, Գրիգոր Տղան, Ներսես Լամբրոնացին, Վարդան Այգեկցին, Թորոս Ռոսլինը և շատ ուրիշներ։ Դա միանգամայն բնական էր, որովհետև այստեղ էին կուտակվել մայր հայրենիքի հոգևոր նվաճումների բազմադարյան ավանդույթները, որպեսզի վերընձյուղեին Արևմտյան Եվրոպայի վերընթաց մշակույթի հարևանությամբ։ Հիշենք նաև, որ Հյուսիս-Արևելյան Հայաստանում այդ ժամանակ հայ ժողովրդի ձեռք բերած նվաճումները նույնպես հրապարակ հա-*

նեցին նոր մշակույթ և անվանի մտավորականների ամբողջ բանակ՝ Հովհաննես Սարկավագ, Մխիթար Գոշ, Հովհաննես Վանական, Վարդան Արևելցի, Կիրակոս Գանձակեցի, Ստեփանոս Օրբելյան, Խաչատուր Կեչառեցի և ուրիշներ, որոնք սերտ կապերի մեջ էին Կիլիկյան Հայաստանի գործիչների հետ։

Ահա այս նոր հոսանքի և աննախադեպ առաջընթացի ամենանշանավոր դեմքը Կիլիկիայի կողմերում՝ Ներսես Շնորհալին էր։

**Ներսես Շնորհալին** (1100/1102—1173 թթ.) ծնվել է Կիլիկիայի և Ասորիքի միջև ձգված Սև լեռան ճյուղերից մեկի վրա՝ Տլուք գավառի Ծովք կոչված դղյակում։ Նա սերել է Պահլավունիների տոհմից, եղել է անվանի բանաստեղծ, փիլիսոփա, մանկավարժ, թարգմանիչ, ինչպես նաև զորավար ու հասարակական գործիչ Գրիգոր Մագիստրոսի թոռնորդին։ Կրթությունն ստացել է Քեսունի մոտ գտնվող Կարմիր վանքի դպրոցում՝ ճանաչված գիտնական Ստեփանոս Մանուկ Վարդապետի մոտ, իսկ հետո կատարելագործվել ինքնաջան աշխատասիրությամբ։

Պատմական դեպքերի բերումով այն ժամանակ, որպես միակ պաշտոնական հաստատություն, նաև օտարների կողմից ճանաչվում էր Հայոց կաթողիկոսարանը, ուր և անցավ Ներսես Շնորհալու գործունեության ողջ շրջանը։ Սկզբում նա իր եղբայր՝ Գրիգոր Գ կաթողիկոսի գլխավոր օգնականն էր, իսկ հետո նրա հաջորդը՝ նրա գահի վրա։ Մեռավ այդ պաշտոնում և թաղվեց Հռոմկլայի հայկական դամբարանում։

Ներսես Շնորհալուց պահպանվել է գրական հարուստ ժառանգություն, որը բաժանվում է երկու մասի. արձակ և չափածո։ Առաջինն ընդգրկում է հեղինակի քաղաքական-հասարակական գործունեության հետ կապված թղթերը, նամակները, ինչպես նաև զանազան մեկնություններ, իսկ երկրորդը՝ բանաստեղծական խոհերի ու զգացմունքների մարմնացումները։ Այդ երկուսի միջից է, որ երևում է բանաստեղծ-քաղաքացու համեմատաբար ամբողջական ու լիարժեք կերպարը։

Արձակ գործերի մեջ հատուկ տեղ ունի նրա «Թուղթ ընդհանրական»-ը, որն ուղղված է հայ ժողովրդի բոլոր խավերին ու խմբավորումներին և նպատակ ունի եթե ոչ վերացնել, գոնե մեղմել նրանց ներքին սոցիալական ծայրահեղ հակասությունները, պաշտպանել ճնշվածներին՝ անլուր կեղեքումներից ու ստորացումներից։ Չէ՞ որ բոլոր մարդիկ աշխարհ են գալիս հավասարազոր իրավունքով, պնդում էր նա։ Իր ժամանակի համար դա, իրոք, առաջադեմ հայացք էր՝ հղի ավելի հեռուն տանող հետևանքներով։ Շնորհալու թղթերի մի այլ խումբ արդյունք է դիվանագիտական հարաբերությունների։ Այստեղ ուշագրավ են Բյուզանդիայի նվաճողական նպատակներից և ուժի դիրքերից արված առաջարկներին՝ Ներսես Շնորհալու հակադրած հավասարության հիմքերով բանակցելու պահանջները, որոնք նույնպես առաջավոր հայացքներ էին։

Մեծ արժեք ունեն Ներսես Շնորհալու՝ կրթության և լուսավորության բնագավառների գծով տարած աշխատանքները։ Զմոռանանք, որ նշված բոլոր դեպքերում էլ նա հանդես էր գալիս ոչ թե որպես մտավորական քաղաքացի,

ջողություններով, ավելի էր ամրապնդում Կիլիկյան Հայաստանի պետականության հիմքերը, միաժամանակ և հեղինակությունը՝ հարևան երկրներում։ Գրիգոր Տղան նրա լավագույն խորհրդատուն և զինակիցն էր և ամեն ջանք գործի էր դնում, որ նրան տեսներ արքայական գահի վրա։ Հենց այնքանը բավական էր, որ Գրիգոր Տղան թողներ մայր հայրենիք վերադառնալու երազանքը, որ փայփայում էին իր նախորդները՝ ընդհուպ մինչև Ներսես Շնորհալին։ Նա հասավ այն առողջ գիտակցությանը, թե պիտի եկեղեցական շահագրգռվածությունն ու դավանաբանական վեճերը ստորադասվեն ժողովուրդների խաղաղության, նրանց բարեկամության շահերին։ Ուստի ուղիներ էր որոնում ձեռք բերելու ինչպես ներքին գործիչների, նույնպես և բյուզանդական, եգիպտական ղեկավարների և Հռոմի պապի համաձայնությունը[18]։

Գրիգոր Տղայի գրական ժառանգությունը բաղկացած է մի շարք բանաստեղծություններից, պոեմներից[19] և թղթերից։ Եկեղեցական պետքերի համար՝ և ոչ մի տող, ոչ մի շարական, ոչ մի գանձ։ Ամեն ինչ նվիրված է հասարակական-քաղաքական կյանքի հրատապ հարցերին։ Եթե նրա «Ողբ Երուսաղեմի» պոեմը նման էր Ներսես Շնորհալու «Ողբ Եդեսիոյ»-ին, ապա նաև զգալիորեն տարբեր էր նրանից, որովհետև այդտեղ, անիրական հուշերի ու երազանքների փոխարեն, դրվատված էր Կիլիկիայի հզորացումը և նրա ռազմիկ պաշտպանի՝ Լևոն իշխանի սխրալի պատկերը։ Պոեմի այդ մասը բոլորովին նոր երևույթ էր մեր դպրության մեջ։

Գրիգոր Տղան երրորդ և վերջին հեղինակն է մեր բանաստեղծների շարքում, որ փորձել է ստեղծել իր «Մատեան ողբերգութեանը»՝ Գրիգոր Նարեկացու հետևությամբ։ Այստեղ ողբի գլխավոր դրդապատճառը իր ժամանակն է, իր անձնական փոթորկանքը, իր պահանջը՝ երկնային տիրոջից։ Ինչպես երևում է, հեշտ չեն անցել երկարամյա մաքառումները՝ հանուն եկեղեցական միաբանության։ Խաբված և հուսալքված բանաստեղծը երկրում չգտնելով իր ցանկացած խաղաղությունը, դիմում է աստծուն, հարցնելով, ումի՞ց խնդրել փրկության վահան, անվտանգության սաղավարտ, հաղթության նետ, խաղաղության զենք, որովհետև բոլորն էլ նման են իժի, մանավանդ՝

Ցանականացն ասեմ դժընդակաց
Եւ զկնի եկողացն....

Դժնդակ հույներից հետո եկողներին հիշելով, նա նկատի ունի Հռոմի պապին. որը նույնպես չարդարացրեց իր խոստումները և մանավանդ բանաստեղծի ակնկալությունները։

Գրիգոր Տղան ունի նաև մի շարք փոքրածավալ բանաստեղծություններ, որոնք մշակվում էին առաջին անգամ և պիտի օրինակ դառնային հաջորդ սերնդի բանաստեղծներին։ Այստեղից է, որ սկիզբ է առնում անձնական մըտորումների իսկական բանաստեղծությունը.

18 Տե՛ս «Գրիգոր կաթ. Տղայ կոչեցելոյ Նամականի», Վենետիկ, 1865։

19 Գրիգոր Տղա, Բանաստեղծություններ և պոեմներ, աշխատասիր. Ա. Շ. Մնացականյանի, Երևան, 1972։

*Քո լիս գիտութիւն,*
*Բայց խամրացեալ է,*
*Քո երկիւղ բարեաց,*
*Այլ շիջանի միշտ.*
*Է և լիս Հոգի,*
*Բայց տկարացեալ է,*
*Ունիմ և լոյս պայծառ,*
*Բայց խաւարեալ է...*

**Ներսես Լամբրոնացին** *(1153—1198 թթ.) ինքնատիպ հեղինակ է։ Կրթվել է Ներսես Շնորհալու և Գրիգոր Տղայի մոտ, կատարելագործվելով նաև ինքնազարգացմամբ։ Եղել է իր ժամանակի հայ իրականության խոշոր մտածողներից մեկը։ Զբաղվել է մեկնություններով, իրավաբանական գրականությամբ, թարգմանություններով, բանաստեղծություններ գրելով, եկեղեցական կարգն ու արարողությունները վերանայող փորձերով, ինչպես նաև մանկավարժությամբ.*

*Ներսես Լամբրոնացու գրական ժառանգությունը բավականին հարուստ է*[20]*։ Գեղարվեստական գրականությանը մատուցած նրա ծառայությունները նոր շունչ են հաղորդել ինչպես չափածոյի, այնպես էլ արձակի բնագավառին։ Առանձնապես արժեքավոր է նրա արձակը, որն աչքի է ընկնում ոչ այնքան նյութի թարմությամբ, որքան երևույթների խոր ընդգրկումով և նոր մոտեցումով, լեզվի սրությամբ և հարստությամբ։ Նա հատուկ նշանակություն է տալիս գործող անձանց տրամախոսությանը՝ մոտենալով դրամատիկական ժանրին։ «Երգ երգոց»-ի, «Սաղմոսների», «Մատեան ողբերգութեան» և այլ երկերի մեկնությամբ նա հանդես է գալիս նաև գրական տեսաբանի դերում, զարգացնելով գրականագիտական միտքը։*

**Վարդան Այգեկցին** *(XII—XIII դդ.) աշխատել է նախ Կիլիկիայի Սովք ու Տլուք գավառներում, ապա Այգեկ մենաստանում։ Նրա գրական ժառանգության մեջ հատուկ տեղ են գրավում առակները և քարոզները։ Դրանք սկզբում հանդես եկան միասին. քարոզների մեջ Վարդան Այգեկցին օգտագործեց ժողովրդից առնված և մշակված զանազան առակներ, որով և ստեղծեց գեղարվեստական արձակի մի նոր տեսակ։ Շուտով, սակայն, առակներն անջատվեցին քարոզներից, հարստացան նորանոր նմուշներով և կազմեցին առանձին ժողովածուներ*[21]*։ Դրանց մեջ կան այնպիսիները, որոնք ներմուծված են ուրիշ հեղինակների կողմից՝ տարբեր ժամանակներում։*

*Առակների գաղափարական բովանդակությունը հասարակական կյանքն է, նրա խոտելի ու հիվանդագին կողմերի սուր, սպանիչ քննադատությունը և առողջ ու առաջատար երևույթների խրախուսանքը։*

---

20 *Զգալի մասը տե՛ս «Ներսեսի Լամբրոնացւոյ Ատենաբանութիւն և թուղթք, և ճառք» (Գրիգոր Տղայի վերոհիշյալ Նամականիի հետ միասին)։*

21 *Տե՛ս* Ն. Մառ. *Ժողովածոյք առակաց Վարդանայ (երեք հատորով, տպագրված Ս. Պետերբուրգում, 1899 և 1894 թթ.)։*

Վարդան Այգեկցու առակներում հատուկ տեղ են գրավում սոցիալական խնդիրները. քննադատվում և ծաղրի է ենթարկվում ուժեղի և ուժի իրավունքը։ Աղքատը աղոթելով աստծուն նրանից ինչք է խնդրում, բայց «թագաւորքն և բռնաւորքն, զինչ ունի, զան ալ կողոպտեն և թալնեն»[22]։ Իշխողների կատարած ճնշումների, կեղեքումների մերկացմանն է վերաբերում «իշխան և այրի կին» առակը, որտեղ այրի կինը աղոթում է չար ու զրկող տիրոջ երկարակեցության համար։ Իշխանավորի հարցին, թե ինչո՞ւ է այրի կինը աղոթում նրա համար, երբ ինքը միայն չարիք է պատճառում, պատասխանը լինում է. «քո հայրն վատ մարդ էր, ես անիծեցի՝ նա մեռաւ, դու նստար ի նորա տեղն այլ խիստ չար. կու վախեմ, թէ մեռնես, նայ քո որդին այլ խիստ լինի չար»[23]։ Անխնա քննադատության են ենթարկվում հոգևոր ու աշխարհիկ հարստահարիչները, ընդհուպ մինչև նրանց տեսքով մարմնավորված երկնային սրբերը։ Սուրբ Գեորգի և աղվեսի մասին ստեղծված առակում ծաղրվում են նրանք, ովքեր կաշառակերությամբ են զբաղվում և՛ այս կյանքում, և՛ մահից հետո որպես սրբեր։

Առակների մեջ պաշտպանված ենք գտնում հատկապես աշխատավոր զանգվածների շահերը, ազնիվ աշխատանքը, ինչպես և նրանց ինքնագիտակցության աճը՝ իրենց, իբրև նյութական բարիքներ արտադրողների դերի մասին։ Ձիու և եզան վեճի մեջ նախապատվությունը տրվում է եզին, իսկ բարոյականում ասվում է. «թէ աշխատաւորն ոչ աշխատի, որպէս եզն, նայ մեռանի ձին և հեծնող նորա»[24]։ Եկեղեցու և ջրաղացի վեճի մեջ դրսևորված է այն միտքը, թե նյութականը առաջնային է, իսկ հոգևորը՝ երկրորդական։ Ջրաղացը պատասխանում է իր սրբությամբ պարծեցող եկեղեցուն՝ «մի՛ մոռանար, որ գիշեր ու ցերեկ կու աշխատիմ և կու դատիմ, որ կոյ ուտին քահանայք ու ժողովուրդն և ապա գան առ քեզ-աղօթել և երկիր պագանել աստուծոյ»[25]։

Վարդան Այգեկցու առակներն անհամեմատ ավելի լայն դուռ էին բացում աշխարհիկ կյանքի ու ըմբռնումների առջև՝ դեպի գրավոր դպրությունը։ Առօրյա կյանքն ու հասարակական հարաբերությունները, իրենց բոլոր մանրամասներով ու բարդություններով առնված են գրական առավել սուր ժանրի ոլորտը, ուր ծալք առ ծալք բացահայտվելով ցույց են տալիս հասարակական կյանքի արատներն ու խոցերը։

Վարդան Այգեկցու առակները բացառիկ նշանակություն ունեցան նաև իրենց խոսակցական լեզվով, ժողովրդական բառ ու բանով, ոճով ու ոգով։ Նրանց շնորհիվ ավելի ևս ձևավորվեց ազգային առակագրության ժանրը, հաճախ ճյուղավորվելով և վերաճելով մանրապատումների, զրույցների, վիպակների, նպաստելով վերջիններիս ինքնուրույնացման և զարգացման ընթացքին։

Միջնադարյան գեղարվեստական արձակի բնագավառում առակներն անդրանիկ ավարտուն ստեղծագործություններն էին՝ իրենց ամփոփ ու կուռ

22 Տե՛ս «Ժողովածոյք առակաց Վարդանայ», հատ. Բ, էջ 196։

23 Նույն տեղում, էջ 328։

24 Նույն տեղում, էջ 151—152։

25 Նույն տեղում, էջ 151։

կառուցվածքով և գտնված ձևով։ Ճիշտ է, գրական այդ տեսակի համար գոյություն ուներ ժողովրդական բանահյուսության և հին աշխարհի մեծ փորձը, սակայն Մխիթար Գոշն ու Վարդան Այգեկցին էին, որ եղած փորձի հմուտ օգտագործմամբ, ստեղծեցին հայկական գեղարվեստական արձակի այդ ժանրը։ Այն իր կատարելությամբ նրանց գրչի տակ հանդիսացավ ոչ միայն ընկերզրնավորում, այլև անգերազանցելի գագաթնակետ։ Առակներն իրենց ամբողջությամբ հայ գրականության դասական համարվելու իրավունք ունեցող հազվագյուտ արժեքներից են։

ԳԼՈՒԽ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

# ԲԺՇԿԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ

## 1. ԿԵՆՍԱԲԱՆԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐԸ X—XIV ԴԱՐԵՐՈՒՄ

*Բժշկագիտությունը լինելով կենսաբանական գիտություն, բոլոր դարաշրջաններում էլ կրել է նրա ձեռք բերած նվաճումների բարերար ազդեցությունը, հետևաբար միջնադարյան Հայաստանի բժշկագիտության վիճակը և առաջադիմությունը բացահայտելու համար անհրաժեշտ է թռուցիկ ակնարկ նետել նույն ժամանակաշրջանի հայ հեղինակների կենսաբանական հայացքների վրա։*

*Հայոց գրերի գյուտից հետո բնագիտական, կենսաբանական և բժշկագիտական միտքը ևս Հայաստանում զարգանում է հին Հայաստանի, Հռոմի, հելլենիստական երկրների, Բյուզանդիայի և Արևելքի ժողովուրդների, մասնավորապես արաբական բժշկագիտության, ձեռք բերած նվաճումների ազդեցության և փոխազդեցության ոլորտում։ Դրանով հանդերձ կենսաբանության և բժշկագիտության աննախընթաց վերելքը Հայաստանում XI—XIV դարերում կրում է ինքնատիպության ցայտուն կնիք։ XI դարի առաջին նշանավոր գիտնականը, որ անդրադարձել է պատմա-բնագիտական, կենսաբանական, բժշկագիտական ինչպես ընդհանուր, նույնպես և առանձին հարցերի, Գրիգոր Մագիստրոսն է։ Նա առաջադիմական այն միտքն է հայտնում, թե սաղմը բովանդակում է աճման, զարգացման և հետագա ձևավորման ներթաքուն հնարավորություններ, և սերմնառության ժամանակ «իւրաքանչիւր ոք զիւրն բերէ բնութիւն և ձև... բայց ոչ թէ այս միայն մեզ մարդկային սեռի պատահեալ է բնութեան, այլ ամենայն կենդանական սեռի»[1]։*

*Կենսաբանական մտքի առաջադիմության մասին են վկայում նաև Հովհաննես Իմաստասերի (XI—XII դդ.) մի շարք ասույթներն ու դատողությունները։ Հետևելով հատկապես Արիստոտելին և Անանիա Շիրակացուն, իր մի աշխատության մեջ նա գրում է. «Մահ է պատճառ աճականաց ի ծնընդեան, զի մի՛ ապականեսցին սեռք և տեսակք կենդանեաց, այլ փոխանորդութեամբ մնասցէ ամենայն առանց եղծման և ապականութեան...»[2]։ Ըստ էության, Հովհաննես Իմաստասերն այստեղ տարբերային ձևով դիալեկտիկական մոտե-*

---

[1] «Գրիգոր Մագիստրոսի թղթերը», էջ 114։

[2] «Հովհաննես Իմաստասերի մատենագրությունը», էջ 303։

*ցում է ցուցաբերում՝ ծնունդը և մահը դիտելով հակադրությունների միասնության մեջ։*

*XI—XIII դարերի հայ գիտնականները բուսական ու կենդանական աշխարհի զարգացման հարցերը քննարկել են՝ նկատի ունենալով նաև ժառանգականության, արտաքին միջավայրի և ժամանակի գործոնների ազդեցությունը։ «Յաղագս բնութեան մարդոյ» խիստ արժեքավոր աշխատության հեղինակը, խոսելով պտղի աճման և զարգացման մասին, գրում է. «Իսկ իր ստեղծանիլ մանկան ըստ բնութեան հօրն գոյանայ թէ ի մաղձոյ կամ այլ ինչ ունենայ ցաւ հիւանդական՝ ըստ այն գոյանա մարմնոյն խառնուածք...»[3]։ Սակայն բացի ժառանգական հատկություններից, խոշոր նշանակություն ունեն նաև արտաքին միջավայրի պայմանները, սնունդը, մանավանդ մատաղ մանկան կամ բույսի համար[4]։*

*Հովհաննես Երզնկացի Պլուզը (XIII դ.), անդրադառնալով կենսաբանական հարցերի, արտահայտում է վերին աստիճանի ուշագրավ մտքեր։ Նա գրում է. «Ինչ որ երկնքի տակ գոյություն ունեն՝ շարժական են և փոփոխելի. ժամանակի ընթացքում են առաջ եկել ստեղծման օրենքով և ժամանակի ընթացքում են ոչնչանում քայքայման օրենքով»[5]։ Ըստ Երզնկացու, բույսերի բազմապիսի գույներն ու բուրմունքները, ինչպես նաև մրգերի, պտուղների զանազան համերն ու հոտերը պայմանավորված են բնության մեջ արտաքին միջավայրի՝ հողի, ջերմության, ջրի, սնող հյութերի ազդող ներգործություններով։ Նրա կարծիքով երկիրն է, այսինքն՝ բնությունը «նոր տեսակի ու ձևի գեղեցկություններ վերածնում»[6]։*

*Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանի ձեռագիր մատյաններում արծարծվել է նաև ինքնածնության գաղափարը[7]։ Հանրահայտ է, որ ինքնածնության մասին տեսակետները հարատևեցին գրականության մեջ մինչև XIX դարի կեսերը[8]։*

*Միջնադարյան հայ մատենագրության մեջ պահպանված այս և նման այլ փաստեր կասկած չեն թողնում, որ կենսաբանության վերաբերյալ ըմբռնումները ազդել են ինչպես տեսական, այնպես էլ կիրառական բժշկագիտության վրա[9]։*

## 2. ԲԺՇԿԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ ԵՎ ՏԵՍԱԿԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

*Հայաստանում բժշկագիտության ինքնուրույն զարգացմանը ամենից առաջ նպաստեցին «բժշկանոց»-ները[10], որտեղ բժշկական մասնագիտությունը սո-*

3 *Մատենադարան, ձեռագիր № 453, թերթ 8ա։*

4 *Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 453, թերթ 44ա—44բ։*

5 *Մատենադարան, ձեռագիր № 2173, թերթ 320ա—321բ։*

6 *Նույն տեղում։*

7 Գրիգորիս, *Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց*, Երևան, 1962, էջ 39։

8 *Л. Пастер,* Исследования о брожениях (пер. с франц.), М.—Л., 1937.

9 *Տե՛ս* Ա. Կծոյան, *Բժշկագիտությունը Հայաստանում XI—XIV դարերում, Երևան, 1968, էջ 71։*

10 *Տե՛ս* Լ. Ս. Խաչիկյան, *Դիահերձումները հին Հայաստանում*, ԳԱ *Հասարակական գիտությունների բաժ. «Տեղեկագիր», 1947, № 4, էջ 83—90։*

վորում էին հատուկ ծրագրով։ «Կարգ ուսումնականին» կոչվող այդ ծրագրերի համաձայն բժշկագիտությունը թույլատրվում էր սովորել հանրագիտական 7 առարկաներ (քերականություն, ճարտասանություն, թվաբանություն, երաժշտություն, աստղաշափություն և այլն) անցնելուց հետո։ Ապա սովորում էին մարդու անատոմիան և մարդու բնության որպիսությունը, այսինքն, նորմալ բնախոսությունը (ֆիզիոլոգիան), դեղագիտությունը և դեղապատրաստուկների զուգորդման արվեստը (ռեցեպտուրան), հիվանդությունների պատճառագիտությունը և ախտածնությունը, հիվանդի բուժման և խնամքի ձևերն ու կերպերը։

Բժշկագիտության ուսուցումը պատշաճ տեղ էր գրավում Անիի, Սանահնի, Տարոնի, Սսի, Տաթևի և այլ դպրոցներում։ Ուսուցումը հիմնականում տարվում էր գործնական ցուցադրական եղանակով։ Հետաքրքրական է նշել, ինչպես վկայում են Հովհաննես Երզնկացի Պլուզը[11] և Վահրամ Ռաբունին[12] (XIII դ.), որ բժշկագիտության զարգացման նպատակով մահվան դատապարտված հանցագործներին ենթարկում էին կենդանի հատումների (vivisectio), որը զգալի չափով նպաստեց անատոմիայի և հատկապես ֆիզիոլոգիայի զարգացմանը։ Ի դեպ, պատմական նույն ժամանակաշրջանի Եվրոպայում, գիտությունների բնագավառում իշխող սխոլաստիկայի և դոգմատիզմի հետևանքով, մարդակազմությունը (անատոմիա) և բնախոսությունը որպես գիտություն գոյություն չունեին։ Այդ դարերի սխոլաստիկայի մասին ամերիկացի Օտտո Լ. Բեթմանը գրում է, որ եվրոպական համալսարաններում ժամերով վիճաբանում էին, թե ձին քանի ատամ ունի, փոխանակ բաց անելու ձիու բերանը և հաշվելու նրա ատամները[13]։

Հայաստանում բժշկագիտությունը զարգանում էր գերազանցապես կյանքի փորձի, դիտողականության և կուտակված փաստերի ընդհանրացման ճանապարհով։

Ինչպես գիտության և մշակույթի տարբեր բնագավառի գործիչները, այնպես էլ հիշյալ ժամանակաշրջանի հայ բժիշկները իրենց գործունեության մեջ հետևել են Հովհաննես Իմաստասերի ձևակերպած այն պահանջին, որի համաձայն՝ «Առանց փորձի կարծիքն հաւատարմանալ ոչ կարասցին և փորձն է հաստատուն և աներկբայ»[14]։

Բժշկագիտության զարգացմանը զգալիորեն նպաստել է նաև հայ բժիշկների լայն ծանոթությունը հին աշխարհի և միջնադարյան Արևելքի բժշկագիտությանը։ Նրանք հաճախ վկայակոչում կամ մեջբերումներ են կատարում համաշխարհային բժշկագիտության դասական հեղինակների՝ Հիպոկրատի, Արիստոտելի, Գալենի, Փիլիպոսի, Պավլոս Էգինացու, Մահամեդ Զաքարիայի որդու, ալ-Ռազիի (Ռազեսի), Իբն Սինայի (Ավիցեննայի) և այլոց գործերից։

---

11 Տե՛ս նույն տեղում։

12 Տե՛ս Գ. Գրիգորյան, *Միջնադարյան Հայաստանում դիահերձման գոյությունը հաստատող մի նոր փաստ*, «Բանբեր մատենադարանի», 1963, № 6, 293—295։

13 Տե՛ս *Otto L. Bettmann*, A pictorial of Medicine, 76.

14 Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, Բ, Երևան, 1944։

Մխիթար Հերացին, չհամաձայնվելով Գալենի ամենաաչքի ընկնող աշակերտներից մեկի՝ բժշկապետ Փիլիպոսի հետ, գտնում է, որ թոքախտ հիվանդությունը, առանց ջերմաստիճանի բարձրացման, ընթանում է ոչ միայն ծերերի, այլև երիտասարդների և միջին տարիքի մարդկանց մոտ՝ երկարատև տենդային հիվանդության և հյուծման հետևանքով[15]։

Այստեղ Հերացին անձնական փորձի ճանապարհով հանգել է գիտական ճիշտ տեսակետի, որն ընդունելի է նաև մեր օրերում։

Մեր բժշկապետը, նրա օրինակով նաև Գրիգորիսը և հայ մյուս բժիշկները սկսեցին խիստ զգուշորեն մոտենալ, հատկապես տենդերով տառապողների բուժման սիստեմում ընդունված, արյուն բաց թողնելու սովորությանը, որը Եվրոպայում դարեր հետո էլ խրախուսվում էր։ Այդ կապակցությամբ Մխիթար Հերացին գրում է. «...և ես տեսայ ի յիմ ժամանակս, որ ի կատարել ժամն հիւանդութեան երակն առին (այսինքն, արյուն բաց թողեցին) և մեռան շատք. Չէ պատեհ՝ յորժամ հիւանդն վատուժ լինի, արիւն հանել, թէպէտ և տարիքն և ժամն օգն լինին»[16]։

Այսպիսով, միջնադարյան հայ բժիշկները, հենվելով իրենց կողմից կիրառված հերձումների տվյալների վրա և քննադատաբար օգտագործելով համաշխարհային գրականությունը, XI—XIV դարերում բժշկագիտական մի շարք կարևոր և սկզբունքային նշանակություն ունեցող հարցերի վերաբերյալ հասան զգալի նվաճումների և ճիշտ եզրահանգումների՝ անելով նաև արժեքավոր կռահումներ, որոնք հետագայում ստացել են իրենց գիտական հիմնավորումը։

Մեր բժշկարաններում մարդակազմությանը վերաբերող նյութերից, պատմական առումով գիտական արժեք են ներկայացնում նյարդային համակարգությանը, ողոսկրին, աչքին, ներքին բոլոր օրգաններին, ինչպես նաև իրար նկատմամբ նրանց գրաված դիրքին (տեղագրական անատոմիա) և հյուսվածաբանության վերաբերյալ նկարագրությունները։

XI—XIII դարերի հայ բժիշկներին հայտնի է եղել ոչ միայն գլխուղեղի, ողնուղեղի և ծայրամասային նյարդերի միջև եղած անատոմիական կապը, այլև դրանց բնախոսական համագործակցության հանգամանքը։ Ավելին, նրանք այն համոզման են եղել, որ մարդու բոլոր օրգան-համակարգությունների բնախոսական գործունեությունը ղեկավարում է գլխուղեղը։

XIII դարի բժշկապետ Գրիգորիսը գրել է. «Գլուխն թագաւոր է ամէն մարմնոյն»[17]։ Մի այլ առիթով նա գլխուղեղը կոչում է «զգայարանաց զգայարան»[18]։ «Ուղեղն գլխոյն իբրև զհիմն տան, կամ իբրև զարմատ ծառոց... զի որպէս հիմն տան, եթէ խախտեսցի ի նմա[նէ], բոլոր տունն կործանի, և որպէս արմատ ծառոյ, որ թէ վնասեսցի՝ բոլոր ծառն գօսանայ...»,— գրում է մի ուրիշ բժիշկ[19]։ Այնուհետև նույն հեղինակը պատասխանում է այն ըս-

---

15 Մխիթար Հերացի, Ջերմանց մխիթարութիւն, Վենետիկ, 1832, էջ 36։
16 Նույն տեղում, էջ 66։
17 Գրիգորիս, Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց, էջ 51։
18 Նույն տեղում, էջ 4։
19 Մատենադարան, ձեռագիր № 453, թերթ 9ա։

կըզբունքային հարցին, թե որ ուժի շնորհիվ է, որ գլխուղեղը ղեկավարում է օրգանիզմի կենսական, բնախոսական գործողությունները։ Նրա կարծիքով այդ ուժը առաջանում է մարդու սննդից կամ կերակրանյութերից, որոնք նրա մարսողական օրգաններում ենթարկվում են նյութափոխանակության, ապա բազմաստիճան պրոցեսների և գլխուղեղում շարունակվող բարդ վերամշակումից հետո, նրանցից զատվում, անջատվում է ոսկու նման բարձրորակ նըրբագույն մի նյութ, գոլորշի, որը գլխուղեղից անցնելով կենդանության երակների, այսինքն, նյարդերի մեջ, տարածվում է մարմնի բոլոր օրգան-համակարգություններում և պայմանավորում նրանց կենսական բնախոսական գործունեությունը։ «...Մաքրագոյն զօրութիւն կերակրոցն,— գրում է նա,—յղեղն իջանէ, և յղեղէն ամէն ոսկերքն սփռի ի ձեռն կենդանութեան երակաց»[20]։

Կասկածից վեր է, որ քննարկվող հարցի նկատմամբ հեղինակը հանդես է բերում ավելի իրական մատերիալիստական ըմբռնում։

Հայ հեղինակներից շատերն այն տեսակետին են եղել, որ գլխուղեղը օժտված է կենսական բնախոսական բազմաթիվ «կայաններով»—կենտրոններով։ Եվ եթե դրանցից, այսինքն՝ գլխուղեղում գտնվող կայան-կենտրոններից որևէ մեկը վնասվում է, ապա մյուսը՝ ուժեղանում, սրվում է իր գործունեությամբ։

Մի անանուն հեղինակ գրում է, որ հինգ զգայարաններից աչքը իր հաղորդումներով ամենից ավելի է զբաղեցնում գլխուղեղին։ Երբ աչքը գլխուղեղին է հաղորդում որևէ իրողություն, այն ժամանակ գլխուղեղն անուշադրության է թողնում մյուս զգայական օրգանների հաղորդումները, քանի որ իր ուշադրությունն անմիջապես ու ամբողջապես բևեռում է առաջինի վրա։ Այնուհետև հեղինակը ասում է, որ գլխուղեղը սկսում է զբաղվել մյուս զգայական օրգանների հաղորդումներով սոսկ այն ժամանակ, երբ ազատվում է առաջինով զբաղված լինելուց, այսինքն՝ աչքի հաղորդած զգայելիքով[21]։

Այսպիսով, ակնհայտ է դառնում, որ մեր միջնադարյան հեղինակները կռահել են գլխուղեղի բնախոսական գործունեության այն հատկությունը, որ մակածության (ինդուկցիայի) հետևանքով արգելակվում են նրա մյուս կենտրոնները։

Հայ բժիշկները բավականաչափ լայն պատկերացումներ ունեին մարդու օրգան-համակարգությունների և հատկապես գլխուղեղի բնախոսական բազմազան գործունեությունների ու կապերի վերաբերյալ։ Այսպես. օրինակ, բժշկապետ Գրիգորիսը, քննարկելով մարդու մոտ համրություն առաջացնող պատճառագիտության և ախտածնության հարցերը, նշում է, որ գլխուղեղում զարգացող նորագոյացությունը (ուռուցք) նույնպես կարող է առաջացնել համրություն։ Նա գրում է. «Եւ կամ ուռեց լինի յղեղն և ինքն հասնի յայն ջլիսն (այսինքն՝ նյարդն) և խափանէ զխօսն»[22]։ Սա շատ կարևոր կռահում էր գլխուղեղում խոսքի կենտրոնի գոյության վերաբերյալ։

---

20 Նույն տեղում, թերթ 9բ։

21 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր, № 453, թերթ, 11ա։

22 Գրիգորիս, Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց, էջ 99։

*Մի շարք հիվանդությունների, օրինակ՝ մարմնի մի կողմի կաթվածի (լուծանքի), դիմային նյարդի բորբոքման և այլ տառապանքների ախտածընությունը մեկնաբանել են գլխուղեղի համապատասխան հատվածներում տեղի ունեցող ախտահարումներով։*

*Հովհաննես Երզնկացին (Պլուզ) գլխուղեղին վերագրում է ոչ միայն տեսողական և այլ զգայարանների միջոցով հաղորդումներ ընդունողի, այլև դրանք մշակման ենթարկողի, վերարտադրողի և ընկալողի հատկություններ*[23]. *«Տեսողական աւանդէ իմացողականին զտեսեալն, իսկ իմացողական, որ և խորհեցողականն՝ ունի զհինգն առեալ և դատեալ առաքէ առ յիշողականն»*[24]։

## 3. ԱԽՏՈՐՈՇՄԱՆ ԵՎ ԲՈՒԺՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ

*XI—XIII դարերից մեզ հասած հայկական բժշկական մատյանների մանրազնին ուսումնասիրությունից պարզ երևում է, որ համապատասխանաբար առաջադիմել էին նաև կլինիկական բժշկագիտությունը, ախտաբանությունը, հիգիենան, վարակի և հպավարակայնության վերաբերյալ գիտելիքները։ Հիվանդությունների պատճառագիտության և ախտածնության հարցերի քննության խնդրում հայ բժիշկները մերժելով միստիկա-մոգական ըմբռնումները, հիվանդությունների առաջացումը սերտորեն կապել են արտաքին միջավայրի հետ՝ մարդու վրա բացասաբար ազդող աշխարհագրական դիրքի, կլիմայական պայմանների, սննդանյութերի, ճաշերի ու ջրի որակական հատկությունների, սնվելու կարգի, աշխատանքի բնույթի, հիվանդի տարիքի, նրա խառնվածքի, մարմնի ուժի և կառուցվածքի, սովորությունների, նյարդա-հոգեկան վիճակի, ժառանգականության և այլ գործոնների խաղացած դերի հետ։ Այսպես, թոքախտի ծագման վերաբերյալ Մխիթար Հերացին գրում է. «Եւս առաւել պատճառ այս լինի՝ որպէս տուգն և հոգսն և մտավարժութիւնն, ահն և երկիւղն, ցանկութիւնն և զիպն, տաքութիւնն և շատ կարդալն և ցորեկին անօթի կենալն և պակաս կերակրիլն, և որ սացին նման են»*[25]*։ Մաշկային ախտահարումների մասին բժշկապետ Գրիգորիսը գրում է. «Ընծային ի յաղի և ի կծու կերակրոց, և յանպատրաստ կենալոյ ի լուանալոյ, և սպրկիկ հանդերձէ։ Ընծային այս քերս ի ծերսն, վասնզի ծերքն բնութեամբն վատուժ են և իւրեանց հալողականքն և փոփոխական զօրութիւնքն պաքսեալ է»*[26]։

*XII—XIV դարերի հայ բժիշկները, հիվանդությունների ախտածնության հարցում չմնացին հին և միջնադարյան բժշկագիտության մեջ ընդունված պաշտոնական միակ ուսմունքի՝ հեղահյութային (հումորալ) ախտաբանության մակարդակին։ Այսպես, Մխիթար Հերացին առաջարկում է «բորբոսային ջերմերը» ախտածնության նոր տեսակետ։ Դրա համաձայն նա ընդունում է հեղահյութային ուսմունքի՝ ոչ թե օրգանիզմի չորս հեղուկների (ար-*

---

23 *Մատենադարան, ձեռագիր № 2173, թերթ 106։*

24 Գ. Գրիգորյան, *Հովհաննես Երզնկացու փիլիսոփայական հայացքները, էջ 102—103։*

25 Մխիթար Հերացի, *Ջերմանց մխիթարութիւն, էջ 35։*

26 Գրիգորիս, *Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց, էջ 39։*

յան, լորձի և դեղին ու սև լեղիների) քանակական անհավասար տեղաշարժերի սկզբունքը, այլ դրանց հետ կատարվող որակական փոփոխությունների՝ «բորբոսացնելու» երևույթի փաստը։ Այսպես օրինակ. նա գտնում է, որ տիֆային հիվանդություններ առաջանում են արյան բորբոսնելուց[27]։

Ենթադրվում է, որ Մխիթար Հերացին «բորբոսային ջերմ» հասկացությամբ կռահել է վարակ առաջացնող նյութի գոյությունը, որն անտածին է։

Մխիթար Հերացու առաջ քաշած «բորբոսային» տեսությունը ընդունել և զարգացրել են նրան ժամանակակից և հետագա հայ բժիշկները։ Բացի սուր վարակիչ հիվանդություններից, բժշկապետ Գրիգորիսը «բորբոսային» երևույթով է մեկնաբանում նաև մարմնական, այսինքն՝ սովորական, վարակիչ չհամարվող շատ հիվանդությունների ախտածնությունը։ Գիտակցելով, որ կյանքում գոյություն ունեն վարակի և հպավարակայնության հանգամանքներ, Գրիգորիսը մշակում է վարակի փոխանցման ուղիների վերաբերյալ հետևյալ դասակարգումը. ա) երբ առողջ մարդը շփվելով անմիջականորեն հիվանդի հետ, ինքն էլ է հիվանդանում, բ) երբ առողջ մարդն ընդունում է վարակը այն իրերի միջոցով, որոնք օգտագործել է հիվանդը, գ) երբ առողջ մարդը վարակվում է հիվանդից որոշ տարածության վրա՝ օդի միջոցով։ Նշանակոմ է, որ վարակի, նրա փոխանցման ուղիների և հպավարակայնության մասին գիտական գաղափարները, որ Եվրոպայում հայտնի դարձան Ջոլամո Ֆրակաստորոյի 1546 թվականին հրատարակած աշխատության միջոցով, քաջ հայտնի էին Հայաստանում, դրանից շուրջ երեք դար առաջ[28]։

Ջուրը նույնպես համարվել է վարակի աղբյուր։ Մեր հեղինակների կարծիքով ճանճը, մուկը, կատուն, շունը, գայլը և այլն նույնպես սննդամթերքների և կահկարասիքի հետ առնչվելով դրանց հաղորդում են հիվանդածին հատկություն։

Ախտորոշման համար հայ բժիշկները հիվանդներին քննելու ընթացքում գործադրում էին ա) հիվանդին աչքով զննելու, բ) նրա մարմնի, հատկապես փորի խոռոչի օրգանների, զարկերակի շոշափման, գ) հատկապես փորի ընդբախման, դ) փորի և կրծքավանդակի անմիջնորդականորեն ունկնդրության—իսկ երբեմն էլ գործիքային հետազոտման եղանակներ։

Հիվանդությունների ախտորոշման, կանխապիտության, բուժման և կանխարգելման առումով, մեծ նշանակություն է տրված եղել նաև մեզի, խուխի, կղկղանքի և այլ արտաթորանքների ֆիզիկական հատկությունների հետազոտությանը։ Կլինիկական այդ կարևորագույն խնդիրների պարզաբանման գործում մեր բժիշկները պատշաճ ձևով գնահատել և լայն չափերով օգտագործել են նաև հիվանդի հարցափորձի եղանակը, նույնիսկ կազմել են հարցափորձի ցուցակ-հարցարաններ[29], որոնք քիչ են տարբերվում այժմ օգտագործվող հարցարաններից։ XII—XIII դարերի հայ բժիշկները առաջադիմական դիրքերից են քննության առել հիվանդությունը, որպես ախտաբանական

---

27 Մխիթար Հերացի, *Ջերմանց մխիթարութիւն*, էջ 64։

28 *Տե՛ս* Ա. Կծոյան, *Բժշկագիտությունը Հայաստանում XI—XIV դդ.*, էջ 299։

29 *Տե՛ս* Մխիթար Հերացի, *Ջերմանց մխիթարութիւն*, էջ 143, *տե՛ս նաև «Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց»*, էջ 183—185։

երևույթի և բուժման սիստեմի մշակման հանգուցային հարցը։ Նրանք տրամագծորեն հակառակ տեսակետին են եղել, քան հին ժամանակներից մինչ ուշ միջնադարը բժշկագիտության մեջ ամենալայն ազդեցություն թողած Կլավդիոս Գալենը։ Ըստ Գալենի հիվանդությունը մարմնի այս կամ այն օրգանի մեկուսացված տառապանքն է՝ ողջ մարմնի օրգան-համակարգությունների ներդաշնակ գործունեության շղթայից դուրս։ Մինչդեռ Մխիթար Հերացին ճիշտ է ըմբռնել մի կողմից մարդու կենսական պրոցեսների և արտաքին միջավայրի պայմանավորվածության և մյուս կողմից նրա օրգան-համակարգությունների, ինչպես նորմալ բնախոսական գործունեությունների, այնպես էլ ախտաբանական երևույթների միջև գոյություն ունեցող կապը։ Մխիթար Հերացին նշում է, որ հիվանդությունների դեպքում ինչ-որ չափով տուժում է բոլոր օրգան-համակարգությունների բնախոսական գործունեությունը, այսինքն՝ մարմինը ամբողջապես և ոչ թե նրա այս կամ այն օրգանը միայն[30], իսկ բժշկապետ Գրիգորիսը ասում է, որ մի անդամի տկարությունից «ամէն մարմինն վշտանայ». կամ «միոյն տրտմութիւն միւսոյն լինի»[31]։ Գրիգորիս բժշկապետը նկարագրել է նաև ստամոքսամուտքի հատվածի քաղցկեղային նորագոյացությունը, որի պատճառով ոչ միայն ստամոքսը, այլև մյուս օրգաններն են հրաժարվում սննդից[32]։

Բժշկագիտության մեջ սկզբունքային բնույթ կրող երկրորդ հարցը, որի նկատմամբ միջնադարյան հայ բժիշկները նոր մոտեցում են ցուցաբերել, վերաբերում է հիվանդի ապաքինության համար մշակված գործելակերպին։ Բանն այն է, որ Գալենը, հետևելով Արիստոտելից փոխ առնված՝ «Բնության մեջ ոչինչ տեղի չի ունենում առանց նպատակի» սկզբունքին, գտնում է, որ ինչպես բնության մեջ կատարվող բոլոր երևույթները, այնպես էլ մարդու նորմալ բնախոսական ֆունկցիաները և ախտաբանական պրոցեսները տեղի են ունենում նպատակադրված ձևով, ինչ-որ ուժի կողմից, ուստի նա կանխորոշված ու բացարձակ նպատակադրության հիմունքով էլ մշակում է հիվանդությունների բուժման իր սկզբունքը։ Այսպես, հիվանդության զարգացումը բաժանելով չորս փուլի, Գալենն ասում է, որ բժիշկը պետք է միջամտի ոչ շուտ քան դրա երրորդ փուլում, երբ կհամոզվի, որ հիվանդը այլևս չի կարողանում հաղթահարել հիվանդությունը[33]։ Դրան հակառակ բժշկապետ Մխիթար Հերացին մերժելով Գալենի մեթոդը՝ պաշտպանել է այն առաջավոր տեսակետը, ըստ որի յուրաքանչյուր թեթև համարվող հիվանդություն անգամ անհրաժեշտ է սկզբից ևեթ բուժել, այլապես կարող է զարգանալ և դառնալ անհաղթահարելի. «...զի սակաւ հիւանդութիւնն յորժամ անփոյթ լինի և յամէ, զօրացեալ բազմանայ և յաղթէ մարմնոյն»[34]։

Ինչպես Հիպոկրատը, Ավիցեննան և ընդհանրապես բոլոր ժամանակների բժշկագիտության ասպարեզի խոշորագույն մտածողները, այնպես էլ Մխի-

---

30 Տե՛ս Մխիթար Հերացի, Ջերմանց մխիթարութիւն, էջ 3։

31 Գրիգորիս, Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց, էջ 116։

32 Տե՛ս նույն տեղում, էջ 130։

33 Տե՛ս Ա. Կծոյան. Մխիթար Հերացի, Երևան, 1968, էջ 50—51։

34 Մխիթար Հերացի, Ջերմանց մխիթարութիւն, էջ 2։

թար Հերացին, բժշկապետ Գրիգորիսը, բժշկագիտությունը բաժանելով երկու հիմնական բնագավառների՝ կանխարգելական և բուժական, առաջնությունը հատկացնում են կանխարգելականին։

Ընդհանուր բժշկագիտության զարգացման պատմության տեսակետից XI—XIII դարերի մեր բժշկական հուշարձանները խիստ արժեքավոր են նաև այն առումով, որ նկարագրում են, թե այս կամ այն հիվանդության ժամանակ ախտաբանական ինչ բնույթի ու որակի փոփոխություններ են տեղի ունենում մարդու օրգան-համակարգություններում։ Այսպես օրինակ, Մխիթար Հերացին, Գրիգորիսը և առհասարակ միջնադարյան հայ մյուս բժիշկները, վերին շնչառական ուղիների, շնչափողի հիվանդության դեպքում որպես ախտաբանական անատոմիական հիմք նշում են դրանց բորբոքային երևույթները՝ լորձաթաղանթի արտափքում, կարմրություն, շնչուղիների նեղացում և լորձունքի արտադրություն։ Թոքաբորբերի մասին բժշկապետ Գրիգորիսը գրում է, որ «թոքերի շնչական երակները, այսինքն՝ թոքերի շնչական մակերեսը լցվում է լորձային, լորձաթարախային և արյունային հեղուկով, որը և դժվարացնում է շնչառության և արտաշնչման ֆունկցիաները»[35]։

Իսկ «թոքին պինդ ուռուցք», «թոքին սառ ուռուցք» կամ «թոքին խէշիփար» հատուկ տերմինների տակ նկարագրում են թոքերի քաղցկեղը։ Նրանց ծանոթ է եղել ընդհանրապես մարդու մյուս օրգան-համակարգությունների քաղցկեղային հիվանդությունը։ Այնուհետև «թոքին գան» կամ «թոքին խոցնալոյն» հատուկ տերմիններն արտահայտել են՝ թոքային տուբերկուլյոզ, թոքերի քայքայվող ներսփռանքային պրոցեսը, որն ըստ Մխիթար Հերացու «քակէ և հալէ և դատարկէ զճրագուն և զմիսն»[36]։ Պլևրիտների դեպքում նկատի են ունեցել միջպլևրալ խոռոչում կուտակվող հեղուկը, պլևրալ թերթիկների մակերեսին հանգես եկող բշտիկները և թերթիկների կպումները։ Դիզենտերիայի ախտաբանական անատոմիայի հիմքը նրանք համարել են աղիքների լորձաթաղանթների վրա երևացող «բշտիկները» և «գաները», այսինքն. խոցերը[37] և այլն։

Ի դեպ, միջնադարյան հայ բժշկական մատենագրության ուսումնասիրությունը ցույց է տվել, որ «ջերմերը», այսինքն՝ սուր վարակիչ հիվանդությունները համեմատաբար ավելի լայն և մանրամասն են լուսաբանված։ Հենց այն հանգամանքը, որ գրեթե մեր բոլոր հեղինակներն էլ սեղմ կամ ընդարձակ էջեր են նվիրել ջերմերին, ցույց է տալիս, որ այդ համաճարակային հիվանդությունները տարածված են եղել և մշտապես մեծամեծ վնասներ են պատճառել մարդուն[38]։

Միջնադարյան Հայաստանում սուր վարակիչ ախտաբանության վերաբերյալ ամենահին լավագույն սկզբնաղբյուրը, անշուշտ, պետք է համա-

---

35 Գրիգորիս, Քննութիւն բնութեան մարդոյ և նորին ցաւոց, էջ 107։

36 Մխիթար Հերացի, Ջերմանց մխիթարութիւն, էջ 47։

37 Ավելի մանրամասն տե՛ս մեր «Патолого-анатомические представления армян-врачей в эпоху расцвета феодальных отношений», «Известия» АН Арм. ССР. отд. биол. и сельск. наук, 1959, № 6.

38 Տե՛ս Ա. Կծոյան, Մալարիայի էնդեմիկ օջախներ Հայաստանում (տե՛ս ՀՍՍՀ ԳԱ բնագիտության և տեխնիկայի պատմությունն Հայաստանում, Երևան, 1965, № 3։

րել Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» դասական երկը։ Իր տեսակի մեջ եզակի այդ բժշկարանում նա մանրամասնորեն տալիս է մալարիայի, տիֆային հիվանդությունների, թոքային պալարախտի, բնական ծաղկի, կարմիր քամու, ժանտախտի, հինգ, վեց և տասնմեկօրյա նոպայաձև տենդերի և այլ համաճարակային տառապանքների պատճառագիտության, ախտածնության կլինիկական պատկերը բնորոշող ախտանիշները, բուժման, սննդի և խնամքի նկարագրությունը[39]։

Բժշկագիտության պատմաբան է. Զայդելը «Ջերմանց մխիթարութիւն» գրքի գերմաներեն թարգմանության առաջաբանում գրել է. «Երբ մենք առանց կանխակալ կարծիքի համեմատում ենք «Ջերմանց Մխիթարութիւն»-ից ընդամենը մի քանի տասնյակ տարի առաջ գրած Հելդեգարդի «Բնագիտությունը» մեր հայ վարպետի հասած արդյունքի հետ, ապա տեսնում ենք, որ վճռականորեն վերջինիս պետք է հանձնենք դափնեպսակը՝ բնության ավելի արմատական իմացության, ավելի հետևողական և ավելի ինքնուրույն մտածողության, ինչպես նաև սխոլաստիկական նախապաշտամունքներից զերծ լինելու համար»[40]։

XI—XIII դարերում Հայաստանում զարգացող տեղագրական անատոմիայի և բնախոսության բնագավառում ձեռք բերած որոշակի գիտելիքները զգալի չափով խթանում են նաև վիրաբուժության զարգացմանը։ Փաստերը ցույց են տալիս, որ այդ ժամանակաշրջանում հայ բժիշկները կատարել են մի շարք վիրաբուժական ակտիվ միջամտություններ։ Ուշագրավ է, որ բարդ և երկար ժամանակ պահանջող վիրահատական գործողությունները նրանք կատարել են հիվանդի մոտ ընդհանուր անզգայացում առաջացնելուց հետո։ Այսպես, օրինակ, ազդոսկրի բաց կոտրվածքի վիրահատական բուժման մասին Մաշտոցի անվան Մատենադարանի № 8382 բժշկարանի հեղինակը հանձնարարում է նախ՝ անզգայացնել («շատ քուն զուգէ») և ապա՝ բաց կոտրվածքը փակ դարձնել՝ պատռվածքը կարելով, քնի ներգործության պահին կոտրած ծայրանդամը ձգել-տեղադրել, վիրակապ դնել և տուժված ծայրանդամից ծանրություն կախելով հիվանդին պառկեցնել։

Հեղինակի առաջարկած վիրահատական գործողություններից և ոչ մեկի դեմ չի առարկի նույնիսկ մեր օրերի վիրաբույժը։ Մի այլ ձեռագրից իմանում ենք, որ ընդհանուր անզգայացում առաջացնող դեղամիջոցը պատրաստվում էր բույսերից[41]։

Վիրաբուժության երկրորդ կարևոր նվաճումը պետք է համարել այն հանգամանքը, որ որպես կարելանյութ օգտագործում էին մետաքսաթելը. «Վասն չղատածի, որ թրով կամ սրով խոցեալ լինի, տե՛ս զխոցն, թէ մեծ է՝ ապրիշումով կարէ...»[42]։

Փոքր բացվածք ունեցող թարմ վերքերը բուժելիս եզրերն իրար են մոտեցրել և սոսնձային հատկություն ունեցող նյութերով կպցրել միմյանց, որից հետո վերքի վրա գրել են ախտահանիչ հատկություն ունեցող դեղամիջոցնե-

39 Տե՛ս Մ. Կծոյան, Մխիթար Հերացի, Երևան, 1968։

40 *E. Seidel*, Mechitares „Trost bei Fiebern", Leipzig, 1908.

41 Տե՛ս Մատենադարան, ձեռագիր № 245, թերթ 274բ։

42 Մատենադարան, ձեռագիր № 8382, թերթ 14ա։

րից և զանազան բուսական յուղերից պատրաստած սպեղանիով վիրակապ ու երեք օր վերքը բաց չեն արել։ Իսկ խորը և թարախային արտադրանք ունեցող վերքերը բուժել են բաց եղանակով՝ դրանց հատակը իջեցնելով «պատրույգ»։ Վերջինս պատրաստել են հականեխիչ ու տտիպ դեղանյութերով և որպես կանոն եռացրել են «հոռոմ ձեթի» կամ մի այլ յուղի մեջ։

Ընդհանուր բժշկագիտության և հատկապես վիրաբուժության զարգացման տեսակետից չափազանց ուշագրավ է, որ մեր բժիշկները կրծքագեղձի և ծնկահոդի թարախ-արյունային բորբոքումների ժամանակ, երբ պրոցեսը դեպի մակերեսը զարգանալով ծակում և խուղակ է ստեղծում (որոնցից շարունակաբար սկսում է հոսել թարախ-արյունային արտադրանքը), առաջարկել են դիմել ակտիվ միջամտության, այսինքն՝ բուժել խոր կտրվածքներ առաջացնելու եղանակով և ոչ թե իզուր սպասել ապաքինման։ Այս առթիվ հետաքրքրական է հետևյալ փաստը. «Թե ծիծ է՝ կտրէ և պատրուքէ, թէ ի ծունկն է և կամ յանդամն՝ իւրյն ծակն մի վստահանար, այլ պատռէ»[43]։

Բժշկարաններում տրված են բազմաթիվ բարդ հիվանդությունների վիրաբուժական միջամտությունների նկարագրություններ[44]։

Հերձումների կիրառությունը խթանում է նաև մանկաբարձության և գինեկոլոգիայի զարգացմանը Հայաստանում։ XI—XIV դարերում հայ բժիշկները քաջ ծանոթ են եղել կնոջ միզասեռական օրգանների անատոմիային և բնախոսությանը։ Նրանք կատարել են կնոջ ներքին զննում, որը հնարավորություն է ընձեռել ախտորոշելու կանացի բազմազան հիվանդություններ, դրանց թվում խրոնիկ բորբոքային երևույթները, քաղցկեղային ուռուցքները, ֆիբրոմիոմաները, պոլիպները, բացատրելու անբերրիության պատճառները և այլն։

Ավելի հետաքրքրականն այն է, որ մեզ զբաղեցնող ժամանակաշրջանում հայ բժիշկները կատարել են մանկաբարձական այնպիսի բարդ վիրահատումներ, ինչպիսիք են պտղաշրջում, պտղահատում, կեսարյան հատում և ակտիվ այլ գործողություններ, այստեղ ևս շուրջ երեք դարով կանխել են եվրոպական բժշկագիտությանը[45]։

Միջնադարյան Հայաստանում՝ հիվանդի բուժման սկզբունքները մշակելիս, ելնում էին մի շարք հանգամանքներից։ Ամենից առաջ նկատի էին ունենում հիվանդի տարիքը, աշխատանքի բնույթը, նրա դիմադրողական ուժերը, խառնվածքը, սովորությունները, տարվա որ եղանակին հիվանդացած լինելը և այլն։ Հաճախ կիրառել են ախտանշագիտության սկզբունքը, այսինքն՝ գլխացավերի, լուծի, հազի, տաքության, փորկապության և ախտաբանական այլ երևույթների դեմ ուղղված դեղորայքային, ֆիզիոթերապևտիկ և սննդի կանոնավորման միջոցառումներ։ Այնուհետև ելնում էին նաև Հիպոկրատեսի մշակած հակառակը-հակառակով բուժելու սկզբունքից. այսինքն՝ աշխատանքը պետք է փոխարինել հանգստով՝ և հակառակը՝ հանգիստը՝ աշխատանքով, ցուրտը տաքով և այլն։ Կամ՝ եթե ստամոքսի լցվածությունից է՝ դատարկել,

43 Մատենադարան, ձեռագիր № 8382, թերթ 105—106ա։

44 Արևմտաեվրոպական երկրներում վիրաբուժական նման միջոցառումները մեծ դժվարությամբ իրենց համար ճանապարհ հարթեցին շատ ավելի ուշ՝ 16-րդ դարում։

45 Տե՛ս Գ. Գ. Հարությունյան, Մանկաբարձությունը և գինեկոլոգիան Հայաստանում հնագույն ժամանակներից մինչև սովետական շրջան (դոկտ. դիս. 1952, ձեռագիր)։

*թեթևացնել այն, եթե մրսելուց է՝ ծածկել, տաքացնել, եթե պատճառը՝ սուգն ու տխրությունն է՝ ուրախացնել և այլն։ Այս առթիվ բժշկապետ Մխիթար Հերացին գրում է. «Որ ի սիրտ է ելել՝ անուշացո և հանդարտացո, և որ տըրտմել է՝ սրտաճեշտացո և ուրախացո. և որ հոգս ունի՝ փարատէ զհոգս և անհոգացո... և զամէն մէկի պատճառ իւր հակառական բժշկէ»[46]։*

*Հայ բժիշկները լայնորեն օգտագործել են բուսական, հանքային և կենդանական ծագում ունեցող դեղամիջոցներից զուգորդված դեղապատրաստուկներ։ Օրինակ, բժիշկ Գրիգորիսը իր բժշկարանում ունի առանձին բաժին, ուր բերում է արտաքին և ներքին գործածության 330 բավականին բարդ դեղատոմսերի շարադրանք։*

*Փորձի հիման վրա նրանք կարողացել են պատրաստել քրտնաբեր, հակաջերմ, խուխաբեր, միզամուղ, ցավամոք և այլ հատկություններով օժտված դեղապատրաստուկներ, ինչպես նաև հապ, եփուկ, քամուկ, թուրմ, օծանելիք, սպեղանի, մոմեր և այլն։ Նրանք օգտագործում էին ափիոն, կամֆորա, ծծումբ, սնդիկ, աղոե, երկաթ, պղնձարջասպ, արծաթ և այլն։ Բուժական միջոցներից էին նաև ջրաբուժությունը (լոգանքների, թրջոցների, ջուր ցանելու ձևով), մասաժները, զանազան տեսակի հոգնաները)։ Մեծ տեղ են հատկացրել ներշնչման միջոցով բուժական եղանակներին, ինչպես և երաժշտության օգտագործմանը։*

*Այսպիսով, Հայաստանում XI—XIV դարերում բժշկագիտությունը ունեցել է զարգացման մատերիալիստական միտում, այն խարսխված է եղել կիրառական բժշկականության տվյալների վրա, որից արված եզրակացությունները բանական են և ունեն գիտական մեծ նշանակություն բժշկության ընդհանուր պատմության մեջ։*

---

46 Մխիթար Հերացի, *Ջերմանց Մխիթարութիւն*, էջ 15։

ԳԼՈՒԽ ՀԻՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

# ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

*XII դարի երկրորդ կեսից քաղաքաշինությունն ու ճարտարապետությունը ևս աչքի ընկնող զարգացում են ապրում, նշանավորելով ճարտարապետական կառուցողական արվեստի նոր՝ նվաճումներով առավել հարուստ մի փուլ։*

*Թեև կենտրոնական Հայաստանում այդ շրջանը 4—5 տասնամյակ է տևում և ընդհատվում է մոնղոլների ներխուժման հետևանքով, սակայն Հայաստանի առանձին մասերում, հատկապես Վայոց ձորում, ինչպես նաև Կիլիկյան հայկական թագավորության սահմաններում, այն շարունակվում է նաև XIII դարի երկրորդ կեսին, նույնիսկ XIV դարում։*

*Շինարարական բեղմնավոր գործունեությամբ առանձնապես աչքի են ընկնում Զաքարե Ամիրսպասալարը, Իվանե Աթաբեկը և նրանց հաջորդները, որոնք վերաշինում են Անին, Լոռին, Ամբերդը և ուրիշ քաղաքներ ու ամրոցներ, հիմնադրում մի շարք վանքեր։ Զաքարյանների հետ միասին շինարարական լայն գործունեություն են ծավալում նաև Վաչուտյան, Խաղբակյան (Պռոշյան), Օրբելյան և այլ տոհմերի ներկայացուցիչները, վանական միաբանությունները, իսկ Կիլիկիայում՝ Ռուբինյան և Հեթումյան հարստությունները։*

*Կառուցողական աշխատանքներում ներգրավվում են նաև մեծահարուստներ (օրինակ, Տիգրան Հոնենցը՝ Անիում, Սահմադինը՝ Մրենում)։*

## 1. ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՏԿԱՆԻՇՆԵՐԸ

*Արվեստների ու ճարտարապետության զարգացման գործում ինչպես նախորդ շրջանում, այնպես էլ այժմ, պահպանելով իր առաջատար դերը Հայաստանի մյուս քաղաքների ու ֆեոդալական կենտրոնների նկատմամբ, շարունակում էր բարգավաճել Անին։ Այս պատմաշրջանում Անին հարստացավ եկեղեցական ու աշխարհիկ նոր շենքերով։ Դրանց թվում աչքի ընկան Տիգրան Հոնենցի, Կուսանաց վանքի, Լուսավորչի, Բախտաղեկի և այլ եկեղեցիները, Պարոնի և Սարգսի պալատները, վաճառատուն-հյուրատունը և այլ*

շենքեր։ Միաժամանակ քաղաքի արվարձաններում աճեց աշխատավոր բնակչությանը պատկանող խղճուկ հետնախորշերի ու բնակելի քարայրների թիվը։

Եկեղեցական ճարտարապետությունը Անիում զարգանում էր՝ սերտորեն կապակցված քաղաքացիականի հետ, ենթարկվելով միևնույն գեղարվեստական սկզբունքներին, ընդհանուր ակունքներից կազմավորելով իր արտահայտչական միջոցների հարստությունը։ Այս հանգամանքը հիմք է ծառայել Ն. Մառին նշելու Անիի ճարտարապետության յուրահատուկ, զուտ քաղաքային ոճը[1]։ Վերջինիս բնորոշ հատկանիշներից մեկը գեղատեսիլությունն էր, արտահայտված ճարտարապետական-գեղարվեստական միասնական միջոցներով, ձևերի ու հարդարման հարստությամբ, շեշտված դեկորատիվությամբ, որը կիրառվում էր վարպետորեն, չափի զգացողությամբ։

Քննվող ժամանակաշրջանում, քաղաքներից բացի, ճարտարապետության և շինարարական արվեստի զարգացման ոչ պակաս կարևոր կենտրոններ էին նաև վանքային համալիրները։ Արագորեն կառուցապատվելով, սրանք համալրվում էին նոր տիպի շինություններով՝ զանգակատներով, կրկնահարկ եկեղեցի-դամբարաններով, գավիթ-ժամատներով, աշխարհիկ շենքերով (գրատներ, դպրոցներ, սեղանատներ), կոմունալ և տնտեսական բնույթի շինություններով (բաղնիքներ, աղբյուրներ, մառան-մթերանոցներ, արհեստանոցներ) և այլ շենքերով[2]։

XIII—XIV դարերում ավարտվում է միջնադարյան Հայաստանի նշանավոր վանքերի՝ Տաթևի, Սանահինի, Հաղպատի, Կեչառիսի, Հաղարծնի, Հառիճի, Օհանավանքի, Մակարավանքի և շատ ուրիշ վանքային խմբերի կազմավորումը, որոնք այժմ ներկայանում են որպես բազմապիսի շենքերից բաղկացած, գեղարվեստական ամբողջական ու տարածականորեն ներդաշնակ ճարտարապետական համակառույցներ։

Նույն սկզբունքով կազմավորվում են նաև վանքային նոր համակառույցներ՝ Գեղարդավանքը կամ Այրիվանքը, Գոշավանքը կամ Նոր-Գետիկի վանքը, Ամաղուի Նորավանքը, Սաղմոսավանքը, Մշկավանքը, Դադի վանքը, Տեղերի, Նեղուցի, Կիրանց, Առաքելոց, Դեղձնուտի, Խորանաշատի, Խորակերտի, Գանձասարի և այլ վանքեր, որոնք նոր նվաճումներ են բերում միջնադարյան Հայաստանի եկեղեցական ճարտարապետությանը։

Դարաշրջանի ճարտարապետական-շինարարական մտքի աչքի ընկնող նվաճումներն իրենց հարուստ ու բազմակողմանի դրսևորումները գտնում են գերազանցապես քաղաքների ու վանքային խմբերի աշխարհիկ շենքերում։

Ժողովրդական ճարտարապետության բարերար ազդեցությունը քաղաքացիական շենքերի ճարտարապետական ձևերի կազմավորման վրա ընթանում էր ոչ թե շենքերի կառուցվածքի և ձևերի ուղղակի փոխառության, այլ ստեղծագործական վերաիմաստավորման ճանապարհով։ Ժամատներում կամ գավիթներում, իր արտահայտությունը գտավ հայկական ժողովրդական բը-

---

[1] *Н. Я. Марр*, Ани, стр. 35.

[2] Տե՛ս *Н. М. Токарский*, Архитектура Арменпп IV—XIV вв., стр. 280—315.

նակարանի՝ գլխատան հիմնական ճարտարապետական հորինվածքը, որն այժմ երևան է գալիս բազմազան ձևերով և տարբերակներով[3]։

Ժողովրդական ճարտարապետության ազդեցությունը առանձնապես ցայտուն արտահայտություն է գտնում վանքային համալիրներին կից կառուցված աշխարհիկ շենքերում (սեղանատներում, գրատներում, դպրոցներում), ինչպես նաև քաղաքային խանապար-իջևաններում, պանդոկ-հյուրանոցներում, որոնք, անկախ իրենց տարբեր բնույթից, հանդես են բերում ժողովրդական բնակարանի ճարտարապետությունից սերվող ընդհանրություն[4]։

Աշխարհիկ բնույթ են ստանում նաև շենքերի ճարտարապետական հարդարանքները, մուտքերի, պատուհանների, խորշերի և այլ մասերի բարձրաքանդակները։ Աշխարհիկ գաղափարախոսության ու նրանով թելադրվող արտահայտչական միջոցների մուտքը եկեղեցական ճարտարապետության մեջ, վերջինիս տալիս է ավելի կենսառատ գծեր, իր հատկանիշներով մոտենում աշխարհիկ ճարտարապետությանը։

Եկեղեցական շենքերն իրենց չափերով մեծ չեն։ Լայն տարածում է գտնում դրսից ուղղանկյուն, ներսից խաչաձև հատակագիծը՝ փոքր-ինչ ձգված արևելքից արևմուտք, նաև խաչաձև-գմբեթավոր կառուցվածքը՝ առանց ներքին անջատ մույթերի, որի միասնական ու հավաք ծավալները վերասլաց են, դինամիկ։ Ավանդական այս տիպը որոշ ձևափոխությամբ, հարում է VI—VII դարերի գմբեթավոր սրահներին (Պտղնի, Արուճ)։

Բագրատունյաց դարաշրջանում սկիզբ առած դեկորատիվությունը (որն արտահայտվում էր պատի հարթությունների և գմբեթների թմբուկների հարուստ հարդարմամբ բարակ որմնասյուներով, կամարներով, քանդակներով և այլ միջոցներով) քննվող ժամանակաշրջանում ավելի է ընդհանրանում ու դառնում դարաշրջանի ճարտարապետական հատկանիշ։

Հարդարման միջոցները լայն կիրառություն են գտնում հատկապես եկեղեցիների բազմապիսի շքամուտքերի պարակալների ու բարավորների վրա, զգալիորեն ճեղացված լուսամուտների շուրջը՝ առանձին դեպքերում հնչելով իբրև ինքնանպատակ պաճուճանք։ Ճարտարապետության մեջ գեղատեսիլության սկզբունքի հետագա զարգացումն ու արմատավորումը, բացի զարդարվեստի միջոցներից, թելադրում է դիմելու բազմերանգ շինանյութի օգտագործմանը, որով շենքը կամ նրա առանձին մասերը ստանում են երանգային արտահայտչություն։ Դրա դրսևորումն է տարբեր գույնի բնական քարերից ձևավոր շարվածքի կիրառությունը եկեղեցիների և ժամատների շքամուտքերի բարավորներում (Մակարավանք, Մշկավանք, Հառիճավանք, Թադեոս առաքյալի վանքը (Մակուի մոտ), Անիի հյուրանոցի շքամուտքը և այլն)[5]։

---

3 Տե՛ս *С. Х. Мнацаканян*, Архитектура армянских притворов, стр. 7—17.

4 Տե՛ս Վ. Հարությունյան, *Միջնադարյան Հայաստանի աշխարհիկ ճարտարապետությունը*, Հայկ. ՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր», № 8, 1957, էջ 80—82։

5 Տե՛ս *А. Л .Якобсон*, Очерк истории зодчества Армении V—XVII вв., стр. 99, 135. *Ш. Р. Азатян*, Порталы в монументальной архитектуре Армении IV—XIV вв. (автореферат), 1972.

Եկեղեցական շենքերը հարստանում են նոր տիպի կառուցվածքներով, ինչպիսին էին կրկնահարկ եկեղեցի-դամբարանները (Նորավանքի Բուրթելաշեն, Եղվարդի, Աստվածածնի և այլ եկեղեցիներ), ինչպես և Եղեգիսի Զորաց անդահլիճ եկեղեցին, որոնք կառուցվել են XIII դարի վերջում և XIV դարի սկզբներին։

Միջնադարյան Հայաստանի եկեղեցական ճարտարապետության նորույթների թվին են պատկանում նաև զանգակատները։ Սրանց հանդես գալը, ըստ երևույթին, պետք է բացատրել քաղաքային կյանքի բարգացմամբ և աշխարհիկ գաղափարախոսության զարգացման հետևանքով՝ եկեղեցու ազդեցության թուլացմամբ, երբ առաջացել էր հավատացյալներին զանգահարությամբ աղոթքի հրավիրելու անհրաժեշտությունը։ Զանգակատները, որոնք վանական համակառույցներում կանգնեցվում էին առանձին (Հաղբատ) կամ շենքերին կից (Սանահին), իրենց ուղղաձիգ ծավալներով հարստացնում են ողջ խմբի ուրվանկարը։

Քննվող ժամանակաշրջանում զգալի հաջողություններ ձեռք բերվեցին շինարարական արվեստի ու ծածկերի ձևերի կատարելագործման ասպարեզում, որոնց շնորհիվ ավելի շեշտվեց ճարտարապետական ու կառուցողական ձևերի ներդաշնակ միասնությունը։ Այդ տեսակետից ակնառու են վանական ժամատները կամ գավիթները, գրատներն ու սեղանատները՝ իրենց ծածկերի, միմյանցից տարբեր, մեկը մյուսից հետաքրքիր կառուցվածքային լուծումներով, որոնք վկայում են շինանյութի հնարամիտ օգտագործման, քարե կառուցվածքների զարգացման բարձր մակարդակի մասին[6]։

Ամենից տարածված տիպը գլխատուն հիշեցնող չորս սյունանի ժամատներն են, քառակուսի կամ քառանկյունի հատակագծով։ Դրանց լավագույն օրինակները Սանահինի, Հաղբատի և Գեղարդի վանքերի ժամատներն են, որոնք ունեն տարբեր տիպի ծածկեր՝ բաց երդիկով, իսկ առաստաղի մակերեսը բաժանվում է տարբեր մասերի, որոնց ծածկերի ճարտարապետական ձևավորումն ու հարդարանքը աչքի են ընկնում հնարամիտ բազմազանությամբ և հարստությամբ։

Բացի առավել տարածված չորս սյունանի ժամատներից, հանդիպում են նաև երկսյունանի և անսյուն ժամատներ, ծածկի կառուցվածքի միանգամայն այլ լուծումներով։

Շինարվեստի նվաճումները առավել ցայտուն մարմնավորում են գտել աշխարհիկ շենքերի ծածկերում՝ իրականացված խաչաձևվող կամարների միջոցով։ Ծածկի նշված եղանակին անցնելը, ամենայն հավանականությամբ, թելադրվում էր սյուներով չմասնատված ներքին միասնական տարածություն ունենալու անհրաժեշտությամբ։ Հանդիպակաց պատերի զույգ որմնամույթերից բարձրացող երկու, միմյանց զուգահեռ կամարների հատմամբ կենտրոնում առաջացած քառակուսին ծածկում էր երդիկավոր գմբեթով։ Հիշատակված տիպի ծածկը կիրառված է բազմաթիվ շենքերում և իբրև լավագույն օրինակ կարելի է նշել Հաղարծնի վանքի սեղանատան ծածկը։ Միջնադարյան Հայաստանի ճարտարապետությունն ունի կառուցողական արվեստի բարձր մակար-

---

[6] *Տե՛ս J. Baltrusaitis*, Le probléme de l'ogive et l'Arménie, Paris, 1936.

դակի նաև շատ ուրիշ օրինակներ, ինչպիսին էին տարբեր հատակագիծ կառուցվածք ունեցող քարավանատները, կամուրջները, մեծաթռիչք թաղակապ ծածկերով կամուրջները, հակաերկրաշարժային գոտիների և կամարների կիրառությունը և այլն։

## 2. ԱՆԻ ՔԱՂԱՔԻ ԵՐԿՐՈՐԴ ԾԱՂԿՈՒՄԸ։ ԱՇԽԱՐՀԻԿ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ

XII դարի վերջերին՝ սելջուկյան տիրապետությունից ազատագրվելուց հետո, Անին ապրեց իր երկրորդ նշանակալից ծաղկումը։ XIII դարի սկզբներին՝ համեմատաբար խաղաղ 3—4 տասնամյակների ընթացքում քաղաքի նոր տերերը՝ Զաքարյանները, ֆեոդալական ավագանու և քաղաքային մեծահարուստների մասնակցությամբ ծավալում են բեղմնավոր շինարարական գործունեություն։ Վերաշինվում և ամրացվում են քաղաքի պարիսպները, կառուցվում են նոր շատ եկեղեցիներ, պալատներ, բնակելի տներ, խանապարներ, փնդուկներ, կուղպակ-արհեստանոցներ և այլն։

Պահպանված վիմական արձանագրությունները վկայում են, որ Անիի Սմբատյան պարիսպների վերականգնմանը մասնակցել են քաղաքի բնակիչները, նույնիսկ՝ կանայք (Մամախաթուն, Շանուշ)։ Հանձն առնելով առանձին պարսպամասերի կամ բուրգերի վերաշինությունը, նրանք իրավունք են ստացել այդ մասին թողնելու համապատասխան արձանագրություն[7]։

Զաքարյանների տիրապետության շրջանի շինարարական գործունեության արդյունք են բազմաթիվ քաղաքացիական, տնտեսական-արտադրական և եկեղեցական շենքերն ու կառուցվածքները, որոնք հանդես են գալիս ճարտարապետական արտահայտչականության սկզբունքորեն նոր հատկանիշներով, քաղաքացիական և եկեղեցական շենքերի ճարտարապետության միասնությամբ։

Քաղաքացիական շենքերից նախ և առաջ հիշատակության արժանի է այսպես կոչված Պարոնի պալատը։ Ենթադրաբար Զաքարյաններին պատկանող պալատական այս շենքը քաղաքի կողմից երկհարկանի էր, կիրճի կողմից եռահարկ, ըստ որում առաջին կիսանկուղային հարկը հատկացված է եղել տնտեսական նպատակների։

Հատակագծային հորինվածքի կենտրոնում տեղավորված է 10×10 մ չափերի քառակուսի մի սրահ, որի շուրջը դասավորված են մեծ ու փոքր սենյակներ։ Պալատի բոլոր պատերը՝ ինչպես ներքին, այնպես էլ արտաքին, շարված են սրբատաշ տուֆով։ Շենքի վրա աչքի են ընկնում երկհարկ շքամուտքերը իրենց արտահայտիչ ձևերով՝ ներքևինը նուրբ ստաղաքանդակներով, վերևինը՝ բաց և մուգ գույնի քարերի շախմատաձև շարվածքով, ընդգծում էին շենքի նշանակությունը[8]։

---

7 Տե՛ս *И. А. Орбели*, Избранные труды. стр. 114.

8 Նույն տեղում, էջ 122—123։

Պալատական մեկ այլ շենք բացվել է 1905 թ. պեղումների ժամանակ՝ զվարթնոցատիպ եկեղեցուց հյուսիս։ Այն նույնպես ունեցել է հոս ջրամուտք՝ աստղաձև քարերից կատարված երեսապատումով[9]։ Այս տիպի ջրամուտքերը նախասիրված էին Անիի հատկապես քաղաքացիական շենքերում։



Անիի իշխանական պալատի վերին և ներքին հարկերի հատակագծերը



Անիի հյուրատան (վաճառատան) ջրամուտքը

Քննվող ժամանակաշրջանի Անիի քաղաքացիական ճարտարապետության ուշագրավ հուշարձան է հյուրատունը (ըստ Ն. Մառի և Հ. Օրբելու) կամ վա-

9 Վերակազմությունը տե՛ս Թ. Թորամանյան, Նյութեր..., հատ. I, էջ 100։

հյուրատունը (ըստ Թ. Թորամանյանի), որի մնացորդները բացվել են 1903 թ. պեղումների ժամանակ[10]։




Անիի հյուրատան (վաճառատան) հատակագիծը

Այդ մնացորդները ցույց են տալիս, որ միևնույն դարում, կողք-կողքի կանգնեցվել է երկու շենք, որոնցից յուրաքանչյուրը ներկայացնում էր սրբատաշ քարերով սալարկված երկարավուն բաց սրահ։ Յուրաքանչյուր բակի կենտրոնում եղել է ամբողջական քարից կերտված մեկական ջրավազան։ Սրահի երկարությամբ՝ մայթանման բարձրությունների ուղղությամբ, պատերի երկայնքով, երկու կողմից դասավորված են եղել 2,5 մ լայնությամբ և 5մ խորությամբ 9-ական թաղակապ ծածկով բաժանմունքներ կամ խցեր. 18 խուց՝ ամեն մի սրահում։ Սրանք ակներևաբար առանձնասենյակներ էին («համարներ»), եթե շենքը հյուրատուն էր, կամ կուղպակներ՝ եթե շենքը վաճառատուն էր։ Սրահներից մեկը եղել է երկհարկանի։ Երկուսն էլ ունեցել են շքամուտք, որոնցից մեկի վերակազմությունը կատարել է Թ. Թորամանյանը[11]։ Այս շքամուտքը (ինչպես Պարոնի պալատում) բաղկացած էր իրար վրա դրված երկու քանդակազարդ շքամուտքերից, որոնց վերևում՝ աջ և ձախ կողմե-

10 Տե՛ս И. А. Орбели, նշված աշխ., էջ 118—119, Թ. Թորամանյան, Նյութեր..., հատ. I, էջ 350։

11 Տե՛ս «Ани», աղ. XXXVI, նկ. 147։

րից, պատի վրա, եղել են վիշապների ու թևավոր առյուծների բարձրաքանդակներ։

Նոր քաղաքի տարածության վրա՝ Տիգրան Հոնենցի եկեղեցուց փոքր-ինչ հյուսիս, բացվել են քաղաքի բաղնիքներից մեկի մնացորդները։ Այն բաղկացած է եղել ուղղանկյուն հատակագծի մեջ ամփոփված օժանդակ բնույթի սենյակներից։ Սպասարկող մասը, ըստ հատակագծի, համաչափ էր, քառակուսի։ Կենտրոնում ամփոփված քառակուսի գմբեթածածկ մի սրահի չորս կողմերում տեղավորված էին մեկական թաղածածկ սենյակներ, որոնք լողացողների համար ծառայում էին որպես հանդերձարան-հանգստարան[12]։

Մատենագրական աղբյուրներում և վիմական արձանագրություններում հիշատակված են Անիի բազմատեսակ արտադրական շենքեր՝ արհեստանոցներ, ձիթհանքներ, ջրաղացներ, մառաններ, շտեմարաններ և այլն[13]։

XIII դարի Անին առանձնապես ուշագրավ է իր բարձրարվեստ եկեղեցական հուշարձաններով։ Սրանք ակնհայտորեն երևան են գալիս իբրև դարաշրջանի գեղարվեստական ըմբռնումներին համապատասխանող գեղատեսիլ ոճի բարձր արտահայտություններ, միաժամանակ լինելով ճարտարապետության մեջ տարբեր միջոցների (գույնի, որմնանկարչության, զարդարվեստի ու քանդակի) վարպետորեն համադրելու շատ վառ օրինակներ։ Նշված հատկանիշներն առավել ցայտուն կերպով մարմնավորված են 1215 թ. կառուցված ս. Գրիգոր եկեղեցու հորինվածքի և հարդարանքի մեջ։

Անիի նշանավոր մեծահարուստ Տիգրան Հոնենցի միջոցով կառուցված այս եկեղեցին ունի XIII դարին բնորոշ հատակագծային հորինվածք։ Ուղղանկյան պարագծով ու ներսից խաչաձև գմբեթավոր սրահ է։ Եկեղեցուն կից՝ արևմտյան կողմից, ավելի ուշ կառուցվել է մի գավիթ, որը բաց կամարակապ ճակատներով մի նախասրահ է։

Տիգրան Հոնենցի եկեղեցին Զաքարյանների շրջանի Անիի լավագույն կոթողներից է, բնորոշ է վերասլաց ձևերով, հարուստ հարդարանքով՝ բարձրարվեստ քանդակներով ու որմնանկարներով։ Այն որոշակի ազդեցություն է ունեցել Անիի ու Հայաստանի այլ վայրերի նույն ժամանակաշրջանի եկեղեցական ճարտարապետության վրա։ Այդ եկեղեցու արտաքին պատերը ինչպես և գմբեթի բազմանիստ սլացիկ թմբուկը մշակված են նրբին կիսասյուներով ու սրանց վրա հենվող կամարաշղեղներով։ Քանդակագործական արվեստի տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում կամարամիջոցներում տեղավորված բարձրաքանդակային բարդ հորինվածքները, որոնք հմտորեն զուգորդում են թռչունների, եղնիկների ու այլ կենդանիների պատկերները՝ բուսական և երկրաչափական նուրբ զարդաքանդակների հետ։ Եկեղեցին և գավիթը ներսից զարդարված են բարձրարվեստ որմնանկարներով՝ Հին Կտակարանի և պատմական թեմաներով։

Տիգրան Հոնենցն է կառուցել տվել նաև Կուսանաց վանքի ս. Հռիփսիմե գողտրիկ եկեղեցին, որը տեղադրված է Ախուրյանի գեղատեսիլ կիրճի թեք

---

12 Տե՛ս Վ. Հարությունյան, *Անի քաղաքը*, էջ 80—81, *О. Х. Халпахчьян*, Гражданское зодчество Армении, стр. 215.

13 Տե՛ս Հ. Խ. Խալփախչյան, *Հայաստանի արտադրական կառուցվածքները*, էջ 41։



Ս. Գրիգոր (Տիգրան Հոնենցի) եկեղեցին, Անի

լանջին։ Սա եկեղեցական մի ինքնատիպ շինություն է՝ հատակագծում պայտաձև, վեց աբսիդներով ու արևմտյան կողմից ուղղանկյուն նախասրահով։ Աբսիդների կիսագլանաձև ծավալները փունջ են կազմում շրջանաձև հիմքի վրա վեր սլացող բազմանիստ թմբուկի տակին։ Այս գողտրիկ եկեղեցին՝ ճիշտ գտնված մասշտաբներով, գեղատեսիլ բնության հետ ունեցած ներդաշնակ կապով, նրբաճաշակ հարդարանքով ու ծավալային հարուստ ձևերով, պիտի դասվի Անիի XIII դարի առաջին քառորդի լավագույն եկեղեցիների շարքը։

Նոր քաղաքի մասում, Աշոտյան պարիսպներից դեպի հյուսիս բացված Աստվածամոր (կամ Հոռոմ Տիրուհու) և վրացական եկեղեցիները եղել են կրկնահարկ՝ առաջին հարկում դամբարան, իսկ երկրորդում՝ աղոթատեղի։

Այսպիսով, Անին, ինչպես նախորդ, նույնպես և այս շրջանում հանդես է գալիս որպես քաղաքաշինական արվեստի՝ քաղաքացիական ու եկեղեցական ճարտարապետության առաջադիմական գաղափարներով տոգորված ոճաստեղծ մի կենտրոն։



Անիի Կուսանաց անապատը Ախուրյանի ձորում

## 3. ԿԱՐԱՎԱՆԱՏՆԵՐ ԵՎ ԿԱՄՈՒՐՋՆԵՐ

Քիչ թե շատ բարեկարգ ու ապահով ճանապարհների, ինչպես նաև կամուրջների ու կարավանատների շինարարությունը դիտվում էր որպես կարևոր միջոցառում և իրականացվում էր որոշակի ծրագրով։ Կարավանատների և կամուրջների շինարարությունը կատարվում էր, ինչպես պետության, այնպես էլ անհատ իշխանավորների կամ քաղաքների մեծահարուստների միջոցներով։ Կարավանատները տեղադրվում էին կարավանային ճանապարհների ուղղությամբ, միմյանցից սովորաբար մեկ օրվա ճանապարհ հեռավորության վրա։

Կարավանատներից հատակագծային և ծավալա-տարածական հորինվածքը աղերս ունի ժողովրդական ճարտարապետության հետ և կազմավորվել է վերջինիս որոշակի ազդեցությամբ։ Կարավանատների պարզ տիպը՝ միադահլիճ կարավանատունը համեմատելի է գոմերի հետ, որոնց հատա-

կագծային և կառուցվածքային ավանդույթները հին են, ինչպես և բնակարաններինը։



Լեռնանցքի կարավանատան հատակագիծը (Եղեգնաձորի շրջան)

Միջնադարյան Հայաստանի կարավանատները կարելի է բաժանել երկու հիմնական տիպերի՝ միադահլիճ և բազմադահլիճ։ Միադահլիճ կարավանատները իրենց հերթին լինում էին միանավ և եռանավ, իսկ բազմադահլիճ կարավանատները՝ բակավոր և անբակ։ Վերջիններս, ըստ երևույթին, ծառայում էին նաև որպես տոնավաճառի և ապրանքափոխանակության տեղեր։ Միջնադարյան Հայաստանում ամենատարածվածը միադահլիճ-եռանավ կարավանատներն էին[14]։

---

14 Վ. Հարությունյան, *Միջնադարյան Հայաստանի կարավանատներն ու կամուրջները*, Երևան, 1960, էջ 11—68։

Միջնադարյան կարավանատներից առավել բնորոշը պարզագույն միանավ շենքերն են։ Դրանցից բնորոշ է Լեռնանցքի (Աղքենդի) կարավանատունը, կառուցված Գեղարքունիքից Վայոց ձոր տանող հին կարավանային ճանապարհի վրա, Սելիմի (Սուլեմայի) լեռնանցքի հարավային ստորոտին։ Սրա կողքով անցնող ոլորապտույտ ճանապարհը լեռնանցքի գագաթին հանգում էր հաջորդ հանգրվանակետին՝ Սելիմի նշանավոր կարավանատանը։



Սելիմի կարավանատան հատակագիծը

Լեռնանցքի (Աղքենդի) կարավանատունը երկարավուն մի շենք է՝ կառուցված ներսից սրբատաշ, իսկ արտաքուստ անձև բազալտե քարերով։ Դահլիճի թաղակապ ծածկը հենվում է վեց թաղակիր կամարների վրա և ունի մի քանի երդիկ։ Պատերի երկայնքով պատրաստված են մսուրներ անասունների համար։

Առավել տարածված են միադահլիճ-եռանավ կարավանատները։ Միայն Սովետական Հայաստանի տարածքում այդ տիպի կառույցներից պահպանվել են Սելիմի (1332 թ.), Յայջիի (1343 թ.), Թալիշի «Քյոր Օղլու Թավլա», (XII դարի վերջ), Արայի գյուղի մոտ (1213 թ.), Ներքին Ջրափիի և Աղավնաձորի կարավանատները։ Նույնատիպ կարավանատներ կային նաև Արևմտյան Հայաստանում։ Դրանցից գրականության մեջ հայտնի են Վաղարշակերտինը[15] և «Հեքիմ խանը» (1216 թ.)՝ Մալաթիա-Սվազ մայրուղու վրա[16] և ուրիշներ։

Եռանավ կարավանատների մասին կարելի է գաղափար կազմել Սելիմի կարավանատան օրինակով, որը համեմատաբար լավ է պահպանվել։ Ըստ շինարարական արձանագրության այն կառուցվել է Չեսար Օրբելյան իշխանի կողմից՝ 1332 թ.։

Կարավանատունը տեղադրված է Սելիմի (Սուլեմա) լեռնանցքի գագաթին, ծովի մակերևույթից 2410 մ բարձրության վրա։ Բաղկացած է հաջորդաբար կառուցված երեք մասերից՝ բուն կարավանատնից, սրա արևելյան

---

15 Տե՛ս Հ. Դ. Ալիշան, Այրարատ, էջ 25։

16 Տե՛ս K. Erdmann, Das Anatolische Karavansaray des 17 Jahrhunderts, Berlin, 1961, S. 63—67.

ճակատին կցած նախասրահից (որի մեջ բացվում է կարավանատան մուտքը) ու նախասրահին կից մի թաղակապ մատուռից։ Հիմնական շենքի բավականաչափ ընդարձակ դահլիճը (26×13 մ ներքին չափերով) յոթ զույգ ցածրադիր մույթերի տեղադրությամբ, բաժանված է երեք երկայնական մասերի կամ նավերի, միջինը՝ 5,3 մ, իսկ կողմնայինները՝ 3,05—3,2 մ լայնությամբ։ Բոլոր երեք նավերը թաղակապ են և միասին ամփոփված են երկթեք կտուրի տակ։ Պատերի երկայնքով տեղադրված են մսուրները։ Դահլիճի արևմտյան ծայրին մարդկանց համար երկու փոքր սենյակներ կան։ Թե դահլիճը և թե նախասրահը լուսավորվել են թաղերի գագաթին բացված երդիկներից։

Կարավանատան՝ ընդհանուր առմամբ պարզ ու խստաշունչ արտաքին ճարտարապետության ֆոնի վրա, իր հարուստ ձևերով ընդգծված է նախասրահի ստալակտիազարդ շքամուտքը։

Մեզ հայտնի բազմադահլիճ կարավանատներից են Ներքին Թալինի Աթարբեկյան գյուղի (Նախկին Քարվանսարա) և Զորի (Սուրմալուի գավառ) կարավանատները։ Սրանք բնորոշ են իրենց ավելի մեծ չափերով և տարողությամբ, սակայն միանգամայն տարբեր՝ իրենց հատակագծային ու ծավալա-տարածական հորինվածքով։

Զորի կարավանատան հորինվածքը կազմավորվել է աստիճանաբար։ Նախապես կառուցված առաջին եռանավ դահլիճին, նրա երկայնական առանցքով, նույն դարում, կցվել են ևս երկու դահլիճներ։ Կարավանատան ընդհանուր երկարությունը 65 մ է, լայնությունը 25 մ։

Ամբողջ երկարությամբ երեք դահլիճներն առնված են երկթեք կտուրի տակ։ Արտաքին երկայնական պատերը խուլ են, անպաճույճ։ Սրանք ամրացված են միմյանցից որոշ հեռավորությամբ կիսագլանաձև բուրգերով (ինչպես Թալիշի կարավանատանը), որոնք ողջ կառուցվածքին փոքրիկ ամրոցի տեսք են հաղորդում։

Արտաքին պարզ ու խստաշունչ ճարտարապետության մեջ միակ գեղարվեստական շեշտը կարավանատան երկայնական առանցքի վրա բացված ուղղանկյուն, բայց սլաքաձև կամարով պսակված շքամուտքն է, նեղ ճակատային պատի կենտրոնում, որի բարավորը ամբողջովին կազմված է աստղաձև ու ռոմբաձև քանդակազարդ քարերից։

Միջնադարյան Հայաստանի՝ իր չափերով ամենախոշոր (37×73 մ) կարավանատան ավերակները պահպանվել են Թալինի մոտ։ Այն բաղկացած է երեք հիմնական մասերից՝ մեծ քառակուսի բակից և նրա արևելյան ու արևմտյան կողմերում գտնվող եռանավ դահլիճներից։ Նախապես, իբրև ինքնուրույն կարավանատուն, կառուցվել է արևելյան կողմի եռանավ դահլիճը (որի հարավ-արևելյան անկյան մոտ կա մի սենյակ մարդկանց համար), ապա հաջորդաբար՝ սրա երկայնական պատին կից, արևմտյան կողմից, ավելացվել են հիշատակված բակն ու երկրորդ եռանավ դահլիճը, սակայն այնպես, որ ողջ հորինվածքն ստացել է ամբողջական տեսք և թողնում է միասնական մտահղացման տպավորություն։

Բավականաչափ մեծ (14,6×35,5 մ, 15,1×35 մ) և ներսում ինը զույգ մույթերի վրա հենվող ծածկով երկու եռանավ դահլիճների միջև տեղավոր-

ված է բակը՝ ինքնուրույն մուտքով և ներսի պատերի պարագծով դասավորված թաղակապ կուղպակներով։ Անիից մի անցում հեռավորությամբ այս կարավանատունը, ամենայն հավանականությամբ, ծառայում էր որպես տոնավաճառի և ապրանքափոխանակության վայր։



Ներքին Թալինի կարավանատան հատակագիծը

Կարավանային ճանապարհների սպասարկման համար կարևոր նշանակություն ունեին նաև կամուրջները, որոնց, ինչպես և կարավանատների շինարարությունը առանձին թափ է ստանում հատկապես Զաքարյանների ժամանակ։ Ինժեներական առումով սրանք բավական համարձակ կառուցվածքներ էին, մի կամ մի քանի թռիչքով (աչքով)[17]։

Միջնադարյան Հայաստանի ամենամեծ կամուրջները կառուցվել են գերազանցապես Ախուրյան գետի վրա։ Դրանցից խոշորագույնը Բագրատունիների թե Զաքարյանների ժամանակ կառուցված Ներքին Ջրափի (Ջրփլուի) կամուրջն է՝ միջնադարյան Հայաստանի կամրջաշինության գլուխգործոցը։

Այս մեծ կամուրջը (ընդհանուր երկարությունը 125 մ, բարձրությունը՝ 30 մ), որը միևնույն ժամանակ ջրանցույցի դեր էր կատարում, կառուցված է բացառիկ դժվարին տեղանքում։ Այն համարձակորեն ձգված է եղել մեծ թեքությամբ դեպի գետն իջնող աջ ափից մինչև բարձր և ուղղաձիգ ժայռոտ ձախ ափը՝ կամարային մի խոշոր բացվածքով (31,0 մ), գոտկելով ողջ լայնությունը։ Կամրջի ամբողջ երթևեկային մասը հենվում էր միմյանց հետ կամարներով կապված երեք երկայնական պատերի վրա։ Այսպիսով կամրջի ողջ կառուցվածքը սնամեջ էր, որպիսի հանգամանքը ծառայում էր կառուցվածքի թեթևությանը, սեյսմոկայունությանը և նյութի խնայողությանը։ Ճակատային պատերին թողնված ոչ մեծ բացվածքները ծառայում էին միջկամարային

---

17 Տե՛ս Վ. Հարությունյան, *Միջնադարյան Հայաստանի կարավանատներն ու կամուրջները*, էջ 68—125, *О. Х. Халпахчьян,* Инженерные сооружения Армении, Мосты, архитектурное наследие, № 17, стр. 77—107.

անամեջ տարածությունների օդափոխման և կառույցը խոնավությունից զերծ պահելու նպատակին։



Ներքին Ջրափի կամուրջը Ախուրյանի վրա



Սանահինի կամուրջը

Քննվող ժամանակաշրջանի ուշագրավ կամուրջներից է՝ մինչև մեր օրերը բավականաչափ լավ պահպանված Սանահնի կամուրջը՝ Դեբեդ գետի վրա։ Այս կամուրջը կառուցել է Վանենի թագուհին 1192 թ. իր վաղամեռիկ ամուսնու՝ Գուգարաց աշխարհի Աբաս թագավորի հիշատակին։ Սա նույնպես կանգնած է դժվարին տեղանքում. լեռնային սրընթաց, գարնան ու աշնան ամիսներին խիստ վարարող Դեբեդ գետն այստեղ սեղմվում է երկու ժայռոտ ափերի միջև՝ ստանալով նվազագույն լայնություն։ Կամուրջը տեղի բարդ ռելիեֆին հարմարեցնելու նպատակով այն կառուցել են կամարային մի լայն (18 մ)

բացվածքով, որը աստիճանաձև, գեղեցիկ անցումներով, միմյանց է կապում գետի ձախ (ցածր) և աջ (բարձր) ափերը։

Նպատակահարմարության և գեղեցիկի զուգակցության լավ օրինակներ կարելի է տեսնել միջնադարյան Հայաստանի նաև ուրիշ ինժեներական կառուցվածքներում։

## 4. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ. ՎԱՆՔԱՅԻՆ ՀԱՄԱԼԻՐՆԵՐ

Ինչպես նշվեց, միջնադարյան Հայաստանի մի շարք վանքեր, հիմնադրըվելով դեռևս X—XI դարերում, իրենց զարգացումն են ապրում XII—XIV դարերում։ Համալրվելով եկեղեցական ու աշխարհիկ նոր շենքերով, դրանք ամբողջանում են ու դառնում բազմաբնույթ շենքերից բաղկացած բարդ կառուցախմբեր, ուր փայլուն կերպով լուծված է ներդաշնակությունը տարբեր բնույթի շենքերի փոխադարձ կապի, հատակագծային-տարածական հորինվածքի միասնության և տեղանքի։

Սանահնի վանքում՝ դեռևս X դարում կառուցված Ամենափրկիչ և ս. Աստվածածին եկեղեցիներին կից, արևմտյան կողմից կառուցվում են նախ Ամենափրկիչ եկեղեցու գավիթը (1181), ապա նախագավիթը (1211)[18]։ Դրանցից առաջինը 4 սյունանի գավիթների դասական օրինակ է։ Նրա քառակուսի հատակագծի կենտրոնում, միմյանցից հավասար հեռավորության վրա, տեղադրված չորս հաստահեղույս սյուները, կամարներով կապված են միմյանց ու ներսի պատերին կից կիսասյուների հետ, կրում են գավթի ծածկը, որի կենտրոնական մասը կոնաձև է ու երդիկավոր։

Սանահնի նախագավիթն իր հատակագծային հորինվածքով ու ծածկի ձևերով եզակի կառուցվածք է հայկական գավիթների մեջ։ Նախագավթի լայն դահլիճը, երկու շարք կազմող երեքական սյուներով, բաժանված է երեք հավասար մասերի։ Նրանցից յուրաքանչյուրը ծածկված է թաղերով, իսկ իրար զուգահեռ երեք թաղերից յուրաքանչյուրը՝ երկթեք տանիքով։

XIII դարում, նախագավթի հյուսիս-արևմտյան անկյան մոտ կառուցված զանգակատունը, իր աշտարակաձև ծավալով ընդգծում է Սանահնի վանքի վերասլաց ուրվապատկերը։

Սրանից անջատ, հարավ-արևելյան կողմում 1189 թ. կառուցվել է դամբարանի երկարավուն թաղակապ, երկթեք տանիքով ծածկված և արտաքին պարզ ճարտարապետություն ունեցող շենքը։ Այստեղ են թաղված Իվանե և Զաքարե եղբայրների պապ Վահրամը և հայրը՝ Սարգիս իշխանը։ Այստեղ է թաղվել նաև Զաքարե Ամիրսպասալարը։ Դամբարանի ներսում՝ արևելյան կողմից, Սարգիս իշխանի գերեզմանի գլխին կանգնեցված է խաչքար՝ 1187 թ. արձանագրությամբ։

---

18 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, *Սանահնի վանքը և նրա արձանագրությունները*, Երևան, 1957, *O. Kh. Ghalpakchian—Adriano Alpago Novello*, Sanahin, Milano, 1970.

Փոքր-ինչ արևելք, կանգուն վիճակում պահպանվել է նույնատիպ ս. Հակոբ եկեղեցին՝ հարուստ շքամուտքով, իսկ սրա կողքին՝ հյուսիսային կողմից, աստիճանավոր գեղեցիկ պատվանդանի վրա 1184 թ. կանգնեցված է Տուտեորդու նշանավոր խաչքարը, որը լավագույնն է Սանահնի վանքի խաչքարերից։ Վանքի սահմաններում կան նաև այլ հուշարձաններ։ Ս. Հակոբ եկեղեցու արևելյան կողմում գտնվում են XIII դարին բնորոշ երկխորան ս. Հարություն եկեղեցին և բազմաթիվ խաչքարեր։



Սանահնի վանքը, ընդհանուր տեսարան

1255 թ. է շինվել Սանահնի վանքի աղբյուրը։ Սրահաձև, թաղակապ և ճակատի կողմից կամարավոր երկու բացվածքներով այս կառուցվածքը տեղադրված է Սանահնի վանքի հիմնական խմբից հարավ-արևմուտք, անտառապատ լեռան ստորոտին և մինչև այժմ գործում է։

Հաղբատի վանքն ավելի բազմակառույց է, հարուստ միջնադարյան հայ ճարտարապետության համար եզակի նշանակություն ունեցող շենքերով[19]։ Դրանց մեջ առաջնակարգ տեղ է գրավում ս. Նշան եկեղեցու (976—991) ժամատունը (1210), որը տեղադրված է եկեղեցու արևմտյան կողմում՝ ս. Գրիգոր և ս. Աստվածածին եկեղեցիների միջև, որի ընդարձակ դահլիճը ծածկ-

---

[19] Տե՛ս *О. Х. Халпахчьян*, Архитектурные памятники Ахпата. сб. Архитектура республик Закавказья, М., 1951, стр. 321—355, Վ. Ղաֆադարյան, *Հաղպատ, Երևան, 1963*, *Stephan Mnazaganian, Adriano Alpago Novello*, Hakhpat, Milan, 1968.

ված է խաչաձևվող կամարներով։ Ծածկի նման կառուցվածքը, սերվելով ժողովրդական ճարտարապետության սկզբունքներից, միևնույն ժամանակ մի կարևոր նորամուծություն էր միջնադարյան Հայաստանի ճարտարապետության մեջ։

Նույնպիսի ծածկ ունեն նաև XIII դարի երկու աշխարհիկ շենքեր՝ գրատունը և սեղանատունը։ Գրատունը ծածկված է խաչաձևվող զույգ կամարներով և լուսավորվում է երդիկից։ Սեղանատունը, որը տեղավորված է վանքի հյուսիս-արևելյան պարսպի մեջ, ըստ էության կրկնում է գրատան կառուցվածքը, այն տարբերությամբ, որ նրա հատակագիծը կազմում է երկու քառակուսի և ունի երկու երդիկ։



Հաղպատի զանգակատունը

Հաղպատի վանքի նշանավոր հուշարձաններից է մեծ ժամատունը՝ կառուցված 1257 թ., վանքի առաջնորդ Համազասպ եպիսկոպոսի օրոք, որը կոչվում է նաև Համազասպի ժամատուն։ Իր չափերով (333 քմ) սա ամենից խոշորն է միջնադարյան Հայաստանի 4 սյունանի երդիկավոր ժամատների մեջ։ Հատկանշական է, որ կառուցված է ոչ թե եկեղեցուն կից, այլ առանձին, հավանաբար, որպես վանքային դպրոց կամ ժողովատեղի։

Իր ճարտարապետական անկրկնելի ձևերով հոյակապ է Հաղբատի զանգակատունը (1245)։ Կանգնեցված է նույնպես առանձին, մի բարձրադիր մասում, գրատնից փոքր-ինչ հյուսիս-արևելք։ Շնորհիվ իր տեղադրության և եռահարկ վերասլաց ծավալային ձևերի հարստության, սա ընկալվում է որպես ողջ համակառույցի նկատմամբ իշխող ուղղաձիգ մի հորինվածք։

Վանքի պարիսպների ներսում են գտնվում XIII դարին պատկանող ս. Աստվածածին եկեղեցին և խաչքարեր։

Պարիսպներից դուրս՝ դեպի արևելք, բարձրադիր մասում, որը հասնում է մինչև անտառապատ լեռան փեշերը, տեղադրված են աղբյուրը, ապա Դրսեվանքը։ Առաջինը մի սրահաձև շենք է, երկթեք տանիքի տակ առնված թաղակապ ծածկով և ճակատային կողմից կամարակապ 3 բացվածքներով։ Կառուցվել է 1258 թ.։

Եզակի հուշարձանների բարձրարվեստ ճարտարապետությամբ Հաղբատի վանքը իրավացիորեն համարվում է միջնադարյան Հայաստանի վանքային համալիրներից լավագույնը։

Կեչառիսի կամ Կեչառույքի վանքը (Ծաղկաձորում) նույնպես XII—XIII դարերում ապրում է կառուցապատման մի նոր շրջան։ Վանքի ս. Գրիգոր գլխավոր եկեղեցուց (1033) և արևմտյան կողմում XII դարի վերջում կամ XIII դարի սկզբին շինված 4 սյունանի ժամատնից բացի, այստեղ կառուցվում են երեք նոր եկեղեցիներ։ Դրանցից առաջինը, որը ս. Նշան է կոչվում (XII դ.), ոչ մեծ եկեղեցի է, կանգնեցված գլխավոր տաճարին զուգահեռ՝ հարավ-արևելյան կողմից։ Սրա կողքին՝ հարավից Վասակ Խաղբակյան կամ Պռոշյան իշխանը 1214 թ. կառուցել է տվել Կաթողիկե եկեղեցին, որը ոչ մեծ չափերի գմբեթավոր շինություն է, դարաշրջանին բնորոշ հարդարանքներով։ Վանքի ս. Հարություն կոչվող չորրորդ եկեղեցին (1220) կանգնեցված է առանձին, անտառը տանող ճանապարհի մոտ, հիմնական խմբից դեպի հարավ-արևմուտք։ Այս փոքրիկ եկեղեցին ունի նախասրահ, արևմտյան կողմից դեպի այն տանող կամարային երկու բացվածքներ, ուղղաձիգ համաչափություններ ու արտաքին պարզ ճարտարապետություն։

Վանքի տարածության վրա կանգնեցված են XII—XIII դարերին պատկանող խաչքարեր և մահարձաններ։ Դրանցից մեկը, որը գտնվում է ս. Նշան եկեղեցու արևելյան կողմում, նվիրված է Կաթողիկե եկեղեցու կառուցող Վեցիկ ճարտարապետի հիշատակին։

Հաղարծնի վանքում ս. Գրիգոր (XI դարի սկիզբ) և ս. Աստվածածին (1071) եկեղեցիներին՝ արևմտյան կողմից կցվել են մեկական նույնատիպ (4 սյունանի) գավիթներ[20], որոնցից կանգուն է մնացել միայն առաջինը։

Ս. Գրիգոր եկեղեցու հարավային կողմից կցված է միանավ բազիլիկի նմանվող թաղակապ երկթեք տանիքով մի մատուռ, իսկ դրանից մի քանի մետր դեպի արևելք՝ ս. Ստեփաննոս կոչվող խաչաձև հատակագծով ոչ մեծ եկեղեցին (1244)։ Այստեղ կան նաև այլ մատուռներ, շատ խաչքարեր։

---

20 Տե՛ս *А. Л. Якобсон*, Из истории зодчества средневековой Армении (Агарцин, Сагмосаванк, Нор-Гетик), Ежегодник Института истории искусств, стр. 317—327.



Կեչառիսի վանքը



Հաղարծնի վանքը

Հաղարծնի վանքի կարևորագույն հուշարձանը և միջնադարյան Հայաստանի աշխարհիկ ճարտարապետության գլուխգործոցը սեղանատան շենքն է, կառուցված 1248 թ.՝ Մինաս ճարտարապետի կողմից։ Սա, որ հավանաբար, նախատիպ է հանդիսացել Հաղբատի վանքի սեղանատան համար, ներկայացնում է ընդարձակ մի դահլիճ։ Կենտրոնում տեղադրված ցածրադիր զույգ մույթերը դահլիճի տարածությունը բաժանում են հատակագծում քառակուսի երկու հավասար մասերի։ Ցածրադիր մույթերի և ներքին որմնամույթերի վրա հենվում է ծածկի՝ իրականացված փոխադարձաբար միմյանց հատող զույգ կամարներով։ Կամարների հատումից առաջացած երկու քառակուսիների մեջ բացված են իրարից տարբեր ու գեղեցիկ անցումներով դահլիճը լուսավորող երդիկներ։



Հառիճավանք

Հառիճավանքի հետագա կառուցապատումը (VII դարից այստեղ գոյություն է ունեցել կենտրոնագմբեթ խաչաձև տիպի եկեղեցի) նույնպես տեղի է ունեցել XIII դ. սկզբին։ Իվանե և Զաքարե եղբայրներն այստեղ նախապես կառուցել են գմբեթավոր սրահների տիպի գլխավոր եկեղեցին (1201), որը 4 անկյուններում ունի կրկնահարկ խորաններ։ Պատերն արտաքուստ հարդարված են դարաշրջանին բնորոշ քանդակներով։

Փոքր-ինչ ավելի ուշ՝ նույն XIII դարում, եկեղեցու արևմտյան կողմից կառուցվել է Հառիճավանքի ժամատունը, որն իր մեջ է առել VII դարի եկեղեցու հյուսիսային աբսիդը։ Պատկանելով չորս սյունանի ժամատների տիպին, այս հուշարձանը, այնուամենայնիվ, ունի որոշ առանձնահատկություններ։

*Վանքի հիմնական խմբից հարավ, ձորակի եզրին, ափից պոկված մի ժայռաձերպի վրա պահպանվել է կառուցման թվականն անհայտ մի մատուռ։*

**ՀՈՎՀԱՆՆԱՎԱՆՔԸ** *Վաչուտյան իշխանները կառուցել են դեռևս վաղ միջնադարում, Քասախ գետի անդնդախոր կիրճի եզրին, մինչ այդ կառուցված և բազմիցս վերանորոգված միանավ բազիլիկ եկեղեցու կողքին*[21]*։*

*Վաչե Վաչուտյան իշխանի օրոք (1216—1221) բազիլիկ եկեղեցու հարավային պատին կից կառուցվում է գմբեթավոր սրահատիպ գլխավոր եկեղեցին։*

*Ավելի ուշ՝ 1247—1250 թթ., Վաչեի որդի Քուրդ իշխանը գլխավոր եկեղեցու արևմտյան կողմում կառուցել է տալիս մի ժամատուն։ Շենքն ունի յուրօրինակ դեկորատիվ հարդարանք, իսկ երդիկը պսակված է սյունազարդ թմբուկի վրա հենվող վեղարաձև ծածկով։*

*Վանքի պարիսպներով շրջապատված տարածության վրա և դրսում կան XIII դարին վերաբերող խաչքարեր ու կոթողներ։*

**ՄԱԿԱՐԱՎԱՆՔԸ** *կազմավորվել է X դարին վերագրվող մի ուղղանկյուն, ներքուստ խաչաձև եկեղեցու շուրջ*[22]*։*

*1204 թ. կառուցվում է հին եկեղեցուն նույնատիպ վանքի գլխավոր ս. Աստվածածին եկեղեցին, սակայն, ավելի մեծ չափերով և հարուստ ճարտարապետական ձևերով։ Եկեղեցու ներսում ավագ սեղանի կիսաբոլորշյան պատը մշակված է ռիթմիկ դասավորված 13 նույնատիպ խորշերով։ Հարուստ ձևավորում ունի նաև բեմահարթակի ճակատային պատը։ Նա ամբողջովին ծածկված է բուսական և կենդանական պատկերների նրբակերտ քանդակներով։*

*Եկեղեցու արտաքին ճարտարապետության մեջ առանձնապես աչքի է ընկնում արևմտյան շքամուտքը՝ իր կուռ համաչափությամբ, հարուստ ձևերով և շարվածքում բազմագույն քարերի օգտագործմամբ։ Բարձր վարպետության կնիք են կրում նաև եկեղեցու արտաքին ճակատների և մանրամասների բազմաթիվ ու բազմապիսի քանդակները։*

*Մակարավանքի քառասյուն ժամատունը, կառուցված XIII դարի առաջին կեսին, էապես տարբերվում է նույնատիպ այլ ժամատներից՝ իր ներքին ճարտարապետական ձևերի բարձր կատարելությամբ, նրբին և բազմազան զարդաքանդակներով։ Ժամատան արևմտյան շքամուտքը գլխավոր եկեղեցու շքամուտքի հետ ոճական միասնություն է կազմում։*

*Մակարավանքի երրորդ եկեղեցին կառուցվել է գլխավորից ավելի շուտ՝ 1198 թ.։ Ներքուստ խաչաձև է, դրսից ութանիստ՝ գմբեթավոր կառուցվածք է խարսխված բոլորակ պատվանդանի վրա։*

*Նույն ժամանակաշրջանին են վերաբերում կիսավեր վիճակով մեզ հասած պարիսպները, մատուռը, միաբանության բնակարանները, աղբյուրը և բազմաթիվ խաչքարեր։*

---

21 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, *Հովհաննավանքը և նրա արձանագրությունները*, Երևան, 1948։

22 Տե՛ս Հ. Եղիազարյան, *Սովետական Հայաստանի պատմական հուշարձանները, Ե, Իջևանի շրջան (ուղեցույց)*, Երևան, 1947, էջ 8—11։

*Մակարավանքի ճարտարապետական համալիրը տեղադրված է անտառապատ լեռան վրա և իր բարձրարվեստ կառուցվածքներով ներդաշնակված է տեղանքին ու ընկալվում է որպես գեղատեսիլ բնության բաղկացուցիչ մասը։*

**Այրիվանքը կամ Գեղարդավանքը:** *Միանգամայն ինքնատիպ և նշանավոր համալիր է։ Իր վիմափոր և վերգետնյա եկեղեցիներով, դամբարանով, մատուռով, հարյուրից ավելի խցերով, տնտեսական բազմաբնույթ շենքերով, ժայռերին փորագրված ու առանձին կանգնեցված տասնյակ գեղաքանդակ խաչքարերով, Գեղարդավանքն, իրոք, ճարտարապետական հրաշալիք է, եզակի օրինակ*[23]*։*



Այրիվանք (Գեղարդ)

*Հիմնադրվել է դեռևս վաղ-միջնադարում, սակայն հին շենքերից համարյա ոչինչ չի պահպանվել։ Պարիսպներով շրջապատված համալիրի գլխավոր եկեղեցին կառուցված է 1215 թ. Իվանե Աթաբեկի և Զաքարե Սպասալարի օրոք։ Ոչ մեծ չափերի այս շենքը կրկնում է իր ժամանակի հայկական եկեղեցիների առավել տարածված հորինվածքը։ Հատակագծում ուղղանկյուն է, չորս անկյուններում կրկնահարկ խորաններով (որոնց շնորհիվ հատակագիծը ներքուստ խաչաձև է դառնում). ծածկված է բարձր թմբուկի վրա սրածայր վեղարով պսակված գմբեթով։ Ներքին ճարտարապետության մեջ իշխում են շենքին վերասլացություն հաղորդող կառուցվածքային պարզ և հստակ ձևերը։ Արտաքին ճարտարապետությունը նույնպես կուռ է և միասնական, բնորոշ է շեշտված դեկորատիվությամբ։ Իր նրբակերտ ու շքեղ քանդակներով առանձնապես աչքի է ընկնում հարավային շքամուտքը։*

*Գլխավոր եկեղեցու արևմտյան կողմին կից, փոքր-ինչ ուշ՝ XIII դարի 20-ական թթ. կառուցվել է ընդարձակ ժամատունը կամ գավիթը։ Սա քառասյուն ժամատների լավագույն օրինակներից մեկն է։ Կառուցված է բարձր վարպետությամբ, հատկապես ուշագրավ է չորս սյուների վրա հենվող նրա կենտրոնական ծածկը՝ իրականացված քարակերտ հորինվածքի ստալակտիտներով։*

*Գեղարդավանքում շինարարական հետագա գործունեություն են ծավալել Պռոշյան կամ Խաղբակյան իշխանները, որոնք կառուցել են ավել վի-*

---

28 Գար. արքեպիսկոպոս Հովսեփյան, *Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, մասն առաջին, Վաղարշապատ, 1928, էջ 86—136, Н. Токарский,* Гегард, М., 1948, *А. Саинян,* Гарни и Гегард, М., 1948.

մատուռ եկեղեցիները, դամբարանը։ Դրանցից առաջին նշանավոր կառուցվածքներն են ամբողջական ժայռազանգվածի մեջ փորված երկու եկեղեցիները՝ իրենց տարբեր, բայց շատ ուշագրավ ներքին տարածական լուծմամբ։ Այդ աշխատանքը մեծ վարպետությամբ ու հնարամտությամբ իրականացրել է տաղանդավոր ճարտարապետ Գալձագը։ Առաջին վիմափոր եկեղեցին (որի մուտքը ժամատան հյուսիս-արևմտյան անկյունից է) կառուցվել է XIII դարի կեսերին, Խաղբակյան Պռոշ իշխանի միջոցներով։ Սա քառակուսի հատակագիծ ունի (արևելք-արևմուտք առանցքով՝ փոքր-ինչ շեղված դեպի հյուսիս), արևելյան կողմից կիսաշրջան խորանով։ Հյուսիսային պատի մեջ, լայն խորշի հատակին, ավազան է փորված որի մեջ են հոսում սուրբ ու բուժիչ համարված ստորերկրյա ջրերը։

Վիմափոր այս եկեղեցու ներքին ճարտարապետության մեջ վերարտադրված են XIII դարին բնորոշ ծածկի երկու զույգ խաչաձևվող կամարները, որոնց խաչաձևումից առաջացած քառակուսուց անցում է կատարված դեպի երդիկը։

Վիմափոր մյուս եկեղեցին, որ կառուցվել է 1283 թ., բաղկացած է ոչ մեծ չափերի նախասրահից կամ գավթից և բուն եկեղեցուց։

Հատակագծում քառանկյունի նախասրահի մասն է կազմում մի խորշ, որը մուտքի դիմաց անջատված է հիմնական տարածությունից՝ կենտրոնում կանգնած ժայռակերտ սյունով ու նրա երկու կողմերի կամարային բացվածքներով։ Սյան վերևում, ուղղաձիգ հարթության վրա, գտնվում է բարձրաքանդակների մի խումբ՝ ցլի գլուխ, երկու առյուծ և թևատարած արծիվ, մագիլներում գառ բռնած։ Դա պատկերում է Խաղբակյան իշխանների տոհմական զինանշանը։

Երկրորդ վիմափոր եկեղեցին ստեղծելիս, ճարտարապետը նպատակ է դրել վերարտադրելու վանքի գլխավոր եկեղեցու հորինվածքը։ Սա նույնպես հատակագծով խաչաձև է, ունի վերասլաց գմբեթավոր կառուցվածք։ Գմբեթը ներսից զարդարված է որմնասյուներով, կամարներով ու քանդակներով։

Գեղարդավանքի ամենամեծածավալ վիմափոր կառուցվածքը՝ ընդարձակ ժամատուն-հանգստարանն է, կառուցված 1288 թ.։ Այն փորված է մյուս կառուցվածքներից ավելի բարձր գտնվող մի ծավալուն ժայռազանգվածի մեջ, որի արևմտյան կողմը ծածկված է բազմաթիվ գեղաքանդակ խաչքարերով։

Ժայռափոր ժամատունն իր հատակագծային ու ծավալա-տարածական հորինվածքով պատկանում է քառասյուն գավիթների տիպին։ Կենտրոնական քառակուսու գմբեթային ծածկի գագաթը պսակված է երդիկով։ Հետագայում ժամատունն օգտագործվել է իբրև դամբարան։

Բացի IX—XI դարերում հիմնադրված և XII—XIV դարերում համալրված վանքերից, մի շարք վանքեր առաջացել և ձևավորվել են XII—XIII դարերում։

Գոշավանքի կամ Նոր-Գետիկի վանքի համալիրը ամբողջովին ձևավորվել է XII—XIII դարերում[24], ուստի իր ճարտարապետությամբ ավելի միաս-

[24] «Խորհրդային Հայաստանի պատմական հուշարձանները», Դիլիջանի շրջան, Երևան, 1937. էջ 14—18, *В. М. Арутюнян, С. А. Сафарян,* Памятники армянского зодчества, стр. 60—61, *А. Л. Якобсон,* Из истории зодчества средневековой Армении (Агарцин, Сагмосаванк, Нор-Гетак), «Ежегодник Института истории искусств», М., 1952, стр. 342—356.

նական է։ Մխիթար Գոշը հիմնադրել է Նոր Գետիկի վանքը ավերված Գետիկ վանքի տեղում, սկսելով վանքի գլխավոր եկեղեցու՝ ս. Աստվածածնի կառուցմամբ (1191), որը գմբեթավոր սրահի տիպի եկեղեցի է, ներքին ու արտաքին պարզ, անպաճույճ ճարտարապետությամբ։

Ժամատունը կառուցվել է եկեղեցու արևմտյան կողմից 1200—1203 թթ.՝ նույնպես Մխիթար Գոշի օրոք և պատկանում է քառասյուն ժամատների տիպին, այն տարբերությամբ, որ արևելյան կողմի երկու անկյուններում (ինչպես Գեղարդավանքի ժամատունը) ունի ոչ մեծ չափերի երկու ավանդատներ։

Գլխավոր եկեղեցու տիպը և արտաքին ճարտարապետությունն է կրկնում ավելի փոքր չափեր ունեցող ս. Գրիգոր եկեղեցին, որի կառուցումն ավարտվել է 1241 թ.։

Ս. Լուսավորիչը Գոշավանքի երրորդ եկեղեցին է, կառուցված ժամատան հարավային պատին կից, XIII դարի կեսին։ Կառուցել է իշխան Գրիգոր Տղան, որի միջոցներով ավարտվել է նաև ս. Գրիգոր եկեղեցու շինարարությունը։ Այս գողտրիկ եկեղեցին իր ժամանակի համար արտասովոր, միանավ բազիլիկի տիպի է, երկթեք կտուրի տակ առնված թաղակապ ծածկով։ Մյուս երկու եկեղեցիներից տարբերվում է նաև իր արտաքին բացառիկ դեկորատիվ ճարտարապետությամբ, նուրբ քանդակներով։

Ճարտարապետական տեսակետից ուշագրավ հուշարձաններից է գրատուն-զանգակատունը։ Երկնահարկ այս շենքի առաջին հարկը որպես գրատուն կառուցվել է 1241 թ., նման է Հաղբատի վանքի գրատանը։ Քառակուսի հատակագծում հանդիպակաց ներքին պատերը իրար են կապված զույգ ցածրադիր որմնամույթերի վրա հենվող հուժկու կամարների միջոցով, որոնք փոխադարձաբար խաչաձևվելով կրում են գրատան ծածկն ու վերնաշենքը։ Ներսի պատերի մեջ խորշեր կան՝ ձեռագրեր պահելու համար։ Վերնաշենքը, որպես զանգակատուն, կառուցվել է 1291 թ.։ Ծածկի կառուցվածքում անցումը դեպի բազմանկյունի լայն երդիկը, ինչպես հազարաշեններում, կատարված է շեղակի գրված քարե հեծանների միջոցով։

Հիմնական խմբից դեպի հարավ-արևմուտք՝ ձորակի լանջին, XIII դարում կառուցվել է ևս երկու շենք։ Դրանցից մեկը՝ «Հռիփսիմե» երկսեղան, անհամաչափ ծավալով և մուտքով, իր տեսակի մեջ եզակի եկեղեցին է, պարզ և անպաճույճ ճարտարապետությամբ։ Սրանից քիչ վեր Մխիթար Գոշի դամբարանն է։ Վանքի տարածության վրա կան ավելի փոքր հուշարձաններ՝ մատուռներ և մահարձաններ։

**Նորավանքը** *(Ամաղու գյուղում)* Վայոց ձորի նշանավոր վանքերից է, միջնադարյան Հայաստանի աչքի ընկնող հոգևոր և մշակութային կենտրոններից մեկը։ Առանձնահատուկ է իր կառուցվածքների բազմազանությամբ, գունային և ճարտարապետական միասնությամբ, բարձրարվեստ զարդաքանդակներով, նրբակերտ խաչքարերով։

Նորավանքը հիմնադրել է Վահանավանքի առաջնորդ Հովհաննես եպիսկոպոսը, որն այստեղ է փոխադրվել 1205 թ.։ XIII—XIV դարերում այն հաջորդաբար կառուցապատվել է Օրբելյան իշխանական տոհմի տարբեր ներկայացուցիչների ջանքերով։ Պարիսպների մեջ ամփոփված վանքային խում-

քը բաղկացած է չորս եկեղեցիներից, կրկնահարկ-դամբարան-եկեղեցուց և ժամատնից։ Պարիսպներից դուրս՝ արևելյան և հյուսիս-արևելյան կողմերում, կիսավեր վիճակում պահպանվել են վանքապատկան շենքեր՝ մատուռներ, հյուրատուն, ձիթհան։ Համալիրի հարավային կողմում գտնվող ս. Կարապետ հին եկեղեցին, որը IX—X դարերին է վերագրվում, բոլորովին ավերակ է։ Լիպարիտ Օրբելյան իշխանը 1216—1223 թթ. հին եկեղեցու հյուսիսային պատին կից կառուցել է տալիս ս. Կարապետ նոր եկեղեցին։ Սա գմբեթավոր սրահ տիպին է պատկանում՝ արտաքուստ քառանկյունի, ներքուստ խաչաձև հատակագծով, ուղղանկյուն խաչաթևերով և չորս անկյուններում կրկնահարկ ավանդատներով։

Ս. Կարապետ եկեղեցու ժամատունը, որը արևմտյան կողմից կցված է եկեղեցուն, կառուցել է իշխան Սմբատ Օրբելյանը 1261 թ.։ Ժամատունը քառանկյունի հատակագիծ ունի, ներքին պատերին՝ երկուական որմնասյուներ, որոնք միմյանց և անկյունային որմնասյուների հետ կապված են կամարներով։ Դրանց վրա հենվում է եռդիկավոր թաղակապ ծածկը։ Ժամատան շքամուտքը զարդարված է աշխարհիկ և կրոնական բարձրաքանդակներով։

Ավելի ուշ՝ 1275 թ., Տարսայիճ Օրբելյանը իր եղբոր՝ Սմբատի գերեզմանի վրա, ս. Կարապետ եկեղեցու կողքին, հյուսիսային կողմից կառուցել է տվել ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին, որի մեջ հետագայում թաղվել են նույն տոհմի մի քանի իշխաններ։ Այն միանավ բազիլիկի տիպի է, թաղակապ ու երկթեք կտուրով, արևմտյան կողմից սյունազարդ շքամուտքով։

Ամաղուի Նորավանքի ճարտարապետական հոյակապ համակառույցի գլուխգործոցը և միջնադարյան հայ դասական ճարտարապետության կարապի երգը, հիմնական խմբից դեպի հարավ-արևելք առանձին տեղադրված ս. Աստվածածին եկեղեցին է։ Սա շինվել է 1339 թ., իշխան Բուրթել Օրբելյանի կողմից, ուստի նաև Բուրթելաշեն է կոչվում։ Դրսից ուղղանկյուն, ներսից խաչաձև առաջին հարկը ծառայել է որպես Օրբելյանների տոհմական դամբարան, իսկ ներսից ու դրսից խաչաձև երկրորդ հարկը՝ որպես եկեղեցի։

Արտաքին ճարտարապետությունը բնութագրվում է շեշտված դեկորատիվությամբ ու մանրամասների արտակարգ նրբությամբ, որ վկայում է կառուցող Մոմիկ ճարտարապետի բարձր վարպետությունը, քանդակագործական մեծ տաղանդը։

Ձևերի կատարելության տեսակետից հատուկ ուշադրության է արժանի արևմտյան ճակատը։ Այստեղ ճարտարապետը կարողացել է ստեղծել կուռ և անսասան մի հորինվածք, հնարամտորեն միմյանց հետ համադրելով առաջին հարկի դամբարանը տանող շքամուտքը, պատի երկու անկյունների մոտից դեպի կենտրոն բարձրացող և երկրորդ հարկի մուտքի հարթակին երկու կողմերից հարող կոնսոլ աստիճաններն ու եկեղեցու շքամուտքը։ Երկու շքամուտքերն էլ ձևավորված են բացառիկ նրբությամբ կերտված զարդաքանդակներով ու թռչնապատկերներով։ Դամբարանի մուտքի վրա պատկերված է բազկաթոռին բազմած Աստվածամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին։ Աջ և ձախ կողմերից կանգնած են հրեշտակներ։ Եկեղեցու մուտքի բարավորը ծածկող բարձրաքանդակի թեման Քրիստոսն է, երկու կողմերից՝ Պողոս և Պետրոս առաքյալները։




Նորավանքի ս. Աստվածածին դամբարան եկեղեցին

Կրկնահարկ շենքը երբեմն պսակվել է սյունազարդ գմբեթով, ինչպես Եղվարդի ս. Աստվածածին եկեղեցին։ Դատելով պահպանված առանձին սյուներից, սրանք քանդակազարդ են եղել, ըստ որում, բարձրաքանդակները պատկերել են Բուրթել իշխանին և իր ընտանիքի անդամներին։

Վանքի տարածության վրա գտնվում են բազմաթիվ բարձրարվեստ խաչքարեր, որոնցից լավագույնները Մոմիկ վարդապետի ճարտար ձեռքերով են ստեղծված։

Ամաղուի Նորավանքի ճարտարապետական հրաշակերտ կոթողների գեղարվեստական ուժը բազմապատկվում է շնորհիվ այն հմայիչ բնական միջավայրի, որի հետ նա ներդաշնակ միասնություն է կազմում, հանդիսանալով բարձրաբերձ վառ կարմիր ժայռերի ու խոր կիրճերի անբաժանելի զարդը։



Գանձասարի վանքը

Վանական համալիրների թիվը վերը նկարագրվածներով չի սպառվում։ Իրենց ինքնատիպությամբ ուշագրավ ճարտարապետական խմբեր են կազմում, օրինակ, Սաղմոսավանքը, Խորանաշատի, Տեղերի կամ Դղրի վանքը՝ Բյուրականի մոտ, Խորակերտի վանքը՝ Լալվար լեռան արևմտյան փեշերին, Առաքելոց վանքը՝ Իջևանի շրջանում և նրանից ոչ հեռու գտնվող Կիրանց վանքը, որը միջնադարյան Հայաստանի միակ վանական համալիրն է՝ կառուցված թրծած աղյուսից և աչքի է ընկնում իր վերասլաց ձևերով, մանավանդ սլացիկ գմբեթով, որի ութանիստ թմբուկի լուսամուտների կողքերի հարթությունները հարդարված են ջնարակած գույնզգույն աղյուսներով։

Պատմական Արցախի առավել նշանավոր համալիրներ են Գանձասարի և Դադի վանքերը։

Գանձասարի վանքը հիմնադրվել է Խաչենի ավագ իշխան Հասան Ջալալ Դոլայի և նրա կին Մամքանի նախաձեռնությամբ և միջոցներով։ Պարիսպներով շրջափակված վանքի համակառույցի մեջ են մտնում եկեղեցին (1216—1238), նրան արևմտյան կողմից կցված ժամատունը (1261) և վանքապատկան շենքերը (վեհարան, բնակելի խցեր, սեղանատուն, շտեմարաններ և այլն)[25]։

Շրջապատի գեղատեսիլ բնությամբ, եկեղեցու պատերի և թմբուկի հարդարման միջոցներով (դեկորատիվ կամարներ, բարձրաքանդակներ), ինչպես նաև ժամատան շքամուտքի հարուստ ձևերով ու ծածկով (իրականացված խաչաձևվող կամարների միջոցով) Գանձասարի վանքը միջնադարյան հայկական ճարտարապետության լավագույն հուշարձանախմբերից մեկն է։

Դադիվանքը, համաձայն ավանդության, հիմնադրել է Թադեոս առաքյալի աշակերտ Դադին։ Բայց վանքի համալիրի մեջ մտնող շենքերը հիմնականում XII—XIII դարերին են պատկանում։ Այն բաղկացած էր կենտրոնագմբեթ եկեղեցուց, կառուցված Վախթանգ իշխանի կին Արզուխաթունի կողմից 1214 թ., նույն Արզուխաթունի կառուցել տված գավթից (սյունազարդ սրահով) և զանգակատնից՝ կառուցված 1283 թ.։

Վանքային համալիրի արևմտյան խմբի կազմում մտնում են մի կիսավեր եկեղեցի (1181), նրա թաղածածկ գավիթը (1224) և առաջնորդարանը (1211)։

Ինչպես Գանձասարի, նույնպես Դադիվանքի համակառույցը հիանալիորեն ներդաշնակված է շրջապատի գեղեցիկ բնության հետ։

Եկեղեցական ճարտարապետության վերաբերյալ մեր պատկերացումները թերի կլինեին առանց XIII դարի վերջի և XIV դարի առաջին քառորդի մի քանի խիստ ինքնատիպ եկեղեցական շենքերի քննության, որոնց վրա առավել ցայտուն է դրոշմված ժամանակի ստեղծագործական նոր որոնումների կնիքը։

Աշտարակի Մարիանե կամ Մարինե եկեղեցին (կանգնեցված 1281 թ. պատմական հուշարձաններով հարուստ հին բնակավայրի հյուսիս-արևելյան մասում) մեկն է եկեղեցական այն շենքերից, որոնց վրա առանձնապես ակնառու կերպով կարելի է տեսնել նոր հովերի արտահայտությունը։ Այս եկեղեցում սովորական՝ արտաքուստ ուղղանկյուն, ներքուստ խաչաձև հատակագծի վրա բարձրանում է ծավալա-տարածական մի հորինվածք, որն աչքի է ընկնում իր շեշտված վերասլացությամբ, մանավանդ, թմբուկի արտասովոր բարձրությամբ և նրա պսակը հանդիսացող վեղարի աննախադեպ սրությամբ։

Եղվարդի ս. Աստվածածին կրկնահարկ դամբարան-եկեղեցին (1321—1328) զարգացնելով Գոշավանքի գրատան-զանգակատան հորինվածքը, ձևավորում է եկեղեցական շենքի մի նոր տիպ։ Սրա եռաստիճան ծավալային հորինվածքի հիմքում դամբարանի խորանարդաձև ծավալն է, որի վրա առա-

---

[25] Տե՛ս *А. Л. Якобсон,* Из истории армянского средневекового зодчества (Гандзасарский монастырь XIII в.), стр. 144—168.

չին ստտիճանը պսակող շղթայաձև գոտուց հետո, խաչաձև հատակագծի վրա, բարձրանում է երկրորդ հարկի ծավալը։ Սրա կենտրոնում, նույնպես շղթայաձև գոտով ավարտվող գլանային հիմքից, վեր են խոյանում սյունազարդ թմբուկն ու գմբեթի վեղարը։ Այսպիսով, դամբարան-եկեղեցու ծավալա-տարածական ողջ հորինվածքը կուռ է, օրգանական։

Եկեղեցական ճարտարապետության ուշագրավ նորույթ պիտի համարել Ալայազի (Վայոց Ձոր) ս. Ստեփաննոս կամ Ձորաց եկեղեցին՝ կառուցված XIII դարի վերջին՝ Տարսայիճ Օրբելյանի որդի, պատմիչ Ստեփանոս Օրբելյանի կողմից։ Հակառակ ավանդական կանոններին, այս եկեղեցին միակն է, որ աղոթասրահ չունի։ Այսինքն՝ եկեղեցու շենքը ներկայացված է լոկ արևելյան մասով՝ կիսաշրջան աբսիդով և երկու կողմից ավանդատներով։

## 5. ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԻԼԻԿԻԱՅՈՒՄ

Հայկական իշխանության, ապա թագավորության առաջացումը Կիլիկիայում խոշոր նշանակություն ունեցավ այս երկրի տնտեսական կյանքի, ներքին ու արտաքին առևտրի՝ մանավանդ միջազգային տարանցիկ առևտրի և քաղաքների զարգացման համար։ Այստեղ XII—XIV դարերում առաջացան մի շարք քաղաքներ, նավահանգիստներ և բազմաթիվ բերդեր։

Կիլիկիայի քաղաքները, մանավանդ բերդերը տեղադրված էին առավել հարմար վայրերում՝ ծովախորշերի, առևտրական մայրուղիների, լեռնանցքների վրա և հայտնի էին իրենց անառիկությամբ։

Կիլիկիայում մեծ և միջին քաղաքների թիվը հասնում էր տասի, որոնցից առանձնապես հայտնի էին Սիս մայրաքաղաքը և Միջերկրական ծովի ամենաաշխույժ նավահանգիստներից մեկը՝ Այասը։

Ծովափնյա քաղաքներ Այասը, Կոռիկոսը, Անամուրը և այլն, որպես կանոն ունեին ցամաքային և ծովային ամրոցներ, որոնցից վերջինը ափից ոչ հեռու գտնվող երբեմնի արհեստական կղզու վրա։ Ամրոցները շրջապատված էին կրկնակի պարիսպներով[26]։

Քաղաքներից բացի, հատկապես նրա լեռնային մասում կային հարյուրից ավելի բերդեր ու ամրոցներ, որոնք կարևոր դեր կատարեցին Կիլիկյան հայկական պետության կազմավորման, ամրացման ու անկախության գործում։

Ձնայած տեղական հնամենի, անտիկ և բյուզանդական ավանդների շնորհիվ առաջացած որոշ առանձնահատկություններին, Կիլիկիայի հայկական պետության ժամանակաշրջանի քաղաքաշինական, ճարտարապետական և շինարարական արվեստը, արվեստի մյուս բնագավառների նման կազմում էր հայկական միջնադարյան մշակույթի օրգանական բաղկացուցիչ մասը։

---

26 Կիլիկիայի քաղաքների ու ամրոցների վերաբերյալ տեղեկությունները քաղված են հայրենական և օտար աղբյուրներից, այդ թվում՝ Հ. Ղ. վ. Ալիշան, Սիսուան, Վենետիկ, 1885, Ս. Էփրիկյան, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, Վենետիկ, 1903, «Կիլիկիա», Պետերբուրգ. 1894։

## ՔԱՂԱՔՆԵՐ

**Սիսը**, Կիլիկյան հայկական թագավորության մայրաքաղաքը, ինչպես միջնադարյան այլ քաղաքներ, առաջացել է հին ամրոցի տեղում։ Այստեղ, դաշտավայրին իշխող եռագագաթ մի սարի կատարին, կար հավանաբար դեռ հռոմայեցիների կողմից կառուցված ամրոց։ 1114 թ. տեղի ունեցած երկրաշարժի հետևանքով ավերված ամրոցը վերականգնվում է Ռուբինյան Թորոս Ա և Թորոս Բ իշխանների կողմից։ Հետագայում Լևոն երկրորդը (1187—1219), գնահատելով տեղանքի բացառիկ նպաստավոր պայմանները, Սիսը հիմնովին ամրացնում, կառուցապատում և դարձնում է տերության մայրաքաղաքը։ Այն բաղկացած էր միջնաբերդից և սարի հյուսիսային թեք լանջին տեղավորված բուն քաղաքից, երկուսն էլ ապահովված պաշտպանական կառուցվածքների ինքնուրույն սիստեմներով։ Միջնաբերդը եռամաս էր, յուրաքանչյուր մասը տեղավորված սարի առանձին գագաթներին։ Բոլոր մասերը միացված էին միմյանց հետ մի սալահատակված փողոցով։ Հարավային կողմից գտնվում էր ներքին ամրոցը՝ թագավորական դղյակով. հանդերձ։ Սրա պատերից մեկի վրա պահպանված է հայատառ արձանագրություն Հեթում թագավորի անվան հիշատակությամբ։ Եռամաս միջնաբերդը պաշտպանված էր հզոր ու եռակի պարիսպներով ու առանձին կանգնած դիտաշտարակով։

Համաձայն մատենագրական և այլ աղբյուրների, Լևոն Բ-ի պալատը գտնվում էր քաղաքի հյուսիսային մասում։ Սա դոնժոնավոր[27] պարիսպներով շրջապատված մի կառուցվածք էր, բակի կենտրոնում կլոր հատակագծով ու աշտարակաձև պալատով։ Վերջինիս կազմի մեջ մտնում էին հանդիսավոր սրահներ, բնակելի սենյակներ, գրադարան, օժանդակ մասեր։ Պալատի տարածքի վրա էր գտնվում ս. Սոֆիայի եկեղեցին՝ կառուցված Հեթում Ա-ի օրոք։ Պալատական համալիրից դուրս գտնվում էր ընդարձակ մի այր, որը ծառայում էր որպես շտեմարան կամ բանտ։

Սսի կաթողիկոսարանը ս. Լուսավորիչ եկեղեցու և պալատի ու այլ շինությունների հետ միասին գտնվում էր քաղաքի հարավային մասում։ Կարևոր շենքերից հիշատակվում են Լևոն Բ-ի դստեր՝ Զաբելի կողմից 1241 թ. հիմնադրված հիվանդանոցը, Ներսես Լամբրոնացու համալսարանը, լատինական դպրոցը և այլն[28]։

Այժմ Սիսը Կոզան անվամբ մի փոքրիկ քաղաք է Թուրքիայում։

**Անազարբա (Անավարզա)** Սսից հետո իր մեծությամբ Դաշտային Կիլիկիայի երկրորդ քաղաքն էր։ Այն գտնվում էր Սսից հարավ-արևելք 25 կմ հեռավորությամբ։ Կազմավորվելով դեռևս անտիկ շրջանում, տարբեր ժամանակներում այն հայտնի է Կեսարիա, Դիոկեսարիա, Հուստինիանոպոլիս անուններով. իր երկարատև պատմության ընթացքում այն չորս անգամ ավերվել է երկրաշարժից ու վերաշինվել։

---

27 Դոնժոն՝ ամրոցի ամենաբարձրադիր, անառիկ աշտարակաձև մասը։
28 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 211—236։

XII դարում դառնում է Ռուբինյան իշխանների նստավայր։ Թորոս Առաջինը (1100—1129) նորոգում է Անազարբայի ամրոցը և այնտեղ կառուցում Զորավորաց եկեղեցին։ Ավելի մեծածավալ քաղաքաշինական աշխատանքներ կատարվում են Լևոն Բ-ի օրոք, երբ հիմնովին վերանորոգվել է ամրոցը, և քաղաքը շրջապատվել պարիսպներով[29]։

Անազարբան բաղկացած էր միջնաբերդից ու քաղաքից։ Դրանց տեղադրության և փոխադարձ կապի տեսակետից ակնհայտ է ընդհանրությունը Վասպուրականի մայրաքաղաք Վանի հետ։ Այստեղ ևս միջնաբերդը տեղադրված էր շրջապատի հարթավայրի վրա՝ 200—300 մետր բարձրությամբ վեր խոյացող բավական մեծ չափերի անառիկ մի ժայռազանգվածի հարթադագաթին։ Միջնաբերդի անկանոն պարագծով ձգվում էին 2,5 կմ ընդհանուր երկարություն ունեցող երկտակ պարիսպները։ Միջնաբերդից մի խորը խանդակով (խրամատ) անջատվում էր Կլա կոչված ներքին բերդը։ Այստեղ կարելի էր մուտք գործել շարժական սանդուղքների միջոցով։ Ներքին բերդի պարիսպների վրա պահպանվել է Լևոն Բ-ի անվան հիշատակությամբ հայատառ արձանագրություն։

Զորավորաց եկեղեցին գտնվում էր միջնաբերդից դուրս, քաղաք տանող ճանապարհին կար մի այլ, ներկայումս ավերակ եկեղեցի։

Անազարբա քաղաքը, որը տարածվում է ժայռազանգվածի արևմտյան փեշերի և ընդարձակ հարթավայրի վրա, պաշտպանված էր հզոր պարիսպներով։ Նրանց ներսում պահպանվել են պաշտամունքային և քաղաքացիական հուշարձանների, իսկ պարիսպներից դուրս՝ հռոմեական մի ջրանցույցի մնացորդներ։

**Մամեստիան** կամ Մսիսը Դաշտային Կիլիկիայի քաղաքներից էր, առաջացած անտիկ շրջանում։ Հայերի Կիլիկիա գաղթելու սկզբնական շրջանում այն հատկացվում է Խաչիկ Արծրունու որդի Աբլղարիբ իշխանին։ Լևոն Բ-ի թագավորության օրոք ծաղկում է ապրում, հանձնվելով թագավորի եղբոր փեսա՝ Հեթումին։ Մամեստիան աստիճանաբար ձեռք է բերում վարչական և առևտրական կենտրոնի նշանակություն, որին նպաստեց քաղաքը Միջերկրական ծովը թափվող Ջիհուն (Պիրամոս) գետի ափին գտնվելու հանգամանքը։ Նավարկելի գետով այստեղ էին թափանցում վաճառականները Վենետիկից և Ջենովայից։

Գտնվելով Արևելյան Կիլիկիայի դաշտավայրային մասում, քաղաքը մայրուղիներով կապված էր Այաս, Ադանա, Տարսոն քաղաքների և Սիս մայրաքաղաքի հետ։ Գետի ու բարձրադիր ափին տեղադրված քաղաքի պարիսպների հարավ-արևելյան անկյունում, մի փոքր բլրի վրա, գտնվում էր ինքնուրույն պարիսպներով ներփակված դղյակը, որը, հավանաբար, միջնաբերդի դեր էր կատարում։ Քաղաքապարիսպների առաջ երեք կողմից (բացի գետի) փորված էր խրամատ, որը լցվում էր գետի ջրով։ Մամեստիայի մատույցները պաշտպանում էին Շամիրամաբերդը (16 կմ դեպի հյուսիս )և Օձաբերդը (10 կմ դեպի հյուսիս-արևելք)[30]։ Երկու անգամ (1266, 1322) մամլուք-

29 Տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 236—244։
30 Նույն տեղում, էջ 245—252։

*ները գրավում և ավերում են Մամեստիան, ընդ որում, երկրորդ գրավումից հետո քաղաքը սկսում է լքվել։*

*Այասը Կիլիկիայի նավահանգստային քաղաքներից ամենանշանավորն էր։ Հիմնադրվել է հույների կողմից և կոչվել* Էգեաս: *Որպես նավահանգըստային քաղաք, հայտնի է եղել նաև հռոմեական նվաճումների շրջանում։*

*Կիլիկիայի հայկական թագավորության ժամանակ արդեն Այաս անունով նավահանգստային այս քաղաքն ընդարձակվում է և ձեռք է բերում կարևոր նշանակություն Միջերկրականի ավազանում։ Մամլուքները երկու անգամ (1332, 1347) այն գրավում են և ավերում։*

*Այասը տեղադրված էր Ալեքսանդրետյան (Հայկական) ծովախորշի հյուսիս-արևմտյան ափին, մի հրվանդանի վրա։ Ծովի կողմից նավահանգիստը պաշտպանված էր ափից մոտ 1,5 կմ հեռավորության վրա գտնվող կղզիներով։ Դրանցից հարավայինի վրա էր պարիսպներով շրջապատված ծովային ամրոցը։ Սա կապված էր առափնյա ամրոցի հետ, կղզուց մինչև ափը ձգված ամբարտակի միջոցով։ Առափնյա ամրոցն ավելի մեծ էր, ուներ անկանոն քառանկյուն ձև ու պարագծով ամփոփված էր կրկնակի պարիսպների մեջ։ Սրանց ներքին պատերն զգալիորեն բարձր էին, իրենց կազմում ունեին հատակագծում ուղղանկյուն և կիսաշրջան բուրգեր։ Արտաքին, բավական ավերված, պարիսպներից առաջ արևմտյան և հյուսիս-արևմտյան կողմերում մի ժամանակ գոյություն է ունեցել խրամատ[31]։*

Կոռիկոսը *հանդիսանում էր Կիլիկյան թագավորության երկրորդ նավահանգստային քաղաքը, հիմնադրված հնագույն ժամանակներում։ Այստեղ որոշ շինարարական աշխատանքներ կատարվել են բյուզանդական Հուստինիանոս կայսեր օրոք։*

*Առավել մեծածավալ քաղաքաշինական աշխատանքներ Կոռիկոսում իրականացվել են Լևոն Բ-ի օրոք, որի մասին է վկայում ծովային ամրոցի պատերին փորագրված 1206 թ. արձանագրությունը։ XIII դարում նավահանգըստային այս քաղաքն ապրում է մեծ ծաղկում և քաղաքաշինական աշխատանքների հետագա ծավալում։*

*Կոռիկոսը գտնվում էր Այասից 150 կմ հարավ-արևմուտք։ Քաղաքատարածությանը արևմտյան կողմից սահմանակից էին բարձր լեռան զառիթափ լանջերը, իսկ հարավից՝ ծովը։ Մյուս կողմերից քաղաքը պաշտպանված էր պարիսպներով։ Դրանցից արևելյանը, որը սարալանջից ձգվում էր դեպի ծովը, 400 մետր երկարություն ուներ։ Քաղաքից դուրս, հրվանդանաձև մի սարահարթի վրա, տեղադրված էր միջնաբերդը։ Բացի այդ, քաղաքն օժտված էր առափնյա և ծովային ամրոցներով։ Դրանցից առաջինը տեղադրված էր ժայռոտ, 2,5 հեկտար տարածությամբ մի թերակղզու վրա։ Նրա անմատչելիությունն ապահովված էր ծովի և պաշտպանական կրկնակի, բրգավոր կառուցվածքների համակարգով՝ մոտավորապես մեկ կիլոմետր ընդհանուր երկարությամբ։ Ցամաքի կողմից պարիսպներից առաջ փորված էր խորը խրամատ ու վրան ձգված շարժական մի կամուրջ։ Առափնյա ամրոցում կային քաղա-*

---

31 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան, էջ 356—367։*

*քացիական ու եկեղեցական շենքեր, շտեմարաններ, ջրհորեր և ավազաններ՝ ջրի պաշարի համար։*

*Նավահանգիստը ընկած էր ամրոցից դեպի արևմուտք։ Այն 750—800 մետր երկարություն ունեցող մի պատով կապվում էր ծովային ամրոցի հետ։ Վերջինս կառուցված էր ափից 200 մետր հեռու գտնվող մոտավորապես կես հեկտար մեծությամբ եռանկյունաձև մի կղզու վրա, որը շրջապատված էր բըրգավոր պարիսպներով (որոնց կառուցումը, համաձայն պահպանված արձանագրության, սկսվել էր Լևոն Ա-ի օրոք)*[32]*։ Կոռիկոսից բացի, Կիլիկիան ունեցել է նաև նավահանգստային այլ ամրոց քաղաքներ, որպիսիք էին Անեմուրը, Ալայան (Կորակեսիոնը կամ Կալոնորոսը), Սիդեն, Աղալիան և այլն*[33]*։*

## ԱՄՐՈՑՆԵՐ

*Գուգլակը Կիլիկիայի բազմաթիվ պաշտպանական ամրոցներից մեկն էր։ Սա գտնվում էր Գուգլակ լեռնանցքում, Փոքր Ասիայից դեպի Մերձավոր Արևելք տանող մայրուղու վրա։ Տեղադրված էր 450 մետր բարձրություն ունեցող գահավեժ կիրճերով շրջապատված մի սարահարթի գագաթին, դեպի ուր տանում էր միակ ճանապարհը՝ հարավ-արևմտյան կողմի համեմատաբար մատչելի լանջով։ Շնորհիվ իր բացառիկ անառիկության ու ռազմավարական կարևոր նշանակության, Դուռն Կապան Կիլիկիոյ, Գուգլակ Հայոց անունն է ստացել։*

*Ամրոցի արևելքից-արևմուտք ձգված 200 մետր երկարություն և 70 մետր լայնություն ունեցող հարթ տարածությունը շրջափակված էր կիսակլոր բուրգերով և շուրջ 700 մետր ընդհանուր երկարություն ունեցող պարիսպներով։ Ամրոցն օժտված էր դեպի կիրճն իջնող գաղտնուղիով։ Վաղուց լքված ամրոցում այժմ պահպանվել են պարսպապատերի հարավային և արևմտյան հատվածներ, բնակելի և օժանդակ շինություններ, ջրավազանների և հրդեհից վնասված դղյակի մնացորդներ*[34]*։*

Մուդ *ամրոցը տեղադրված էր Արևմտյան Կիլիկիայի այն ճանապարհի կեսին, որը կտրելով Կիլիկյան Տավրոսը, Լարանդիան կապում էր Սելևկիա քաղաքի հետ։ Ամրոցը շրջափակված էր ուղղանկյուն բուրգեր ունեցող պարիսպներով։ Մի լրացուցիչ պարսպով ամրոցը բաժանված էր փոքր և մեծ (կամ արտաքին ու ներքին) մասերի։ Սրանք կապված էին միմյանց հետ ներքին պարսպում թողնված դարպասով։ Բացի այդ, ամրոցն ուներ երկու արտաքին դարպասներ։ Դոնժոնաձև դղյակը ընկած էր արևմտյան կողմում։ Սա աշտարակաձև, հատակագծում շրջանաձև, ներքուստ եռահարկ մի կառուցվածք էր, հաստ պատի մեջ ամփոփված սանդուխքներով։ Ամրոցի ներսում պահպանվել են նաև եկեղեցու, սյունաշարի, կամարաշարի, բաղնիքի և այլ շինությունների մնացորդներ*[35]*։*

---

32 *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Սիսուան, էջ 332—342։*

33 *Տե՛ս նույն տեղում, էջ 308—323։*

34 *Տե՛ս նույն տեղում, էջ 123—127։*

35 *Տե՛ս նույն տեղում, էջ 287—289։*

Լամբրոնը՝ Հեթումյանների տոհմական դղյակը, մեծ համբավ ուներ իր բացառիկ անառիկությամբ։ Սա ևս բաղկացած էր վերին և ներքին մասերից, որոնցից առաջինը տեղավորված էր ժայռազանգվածի կատարին, իսկ ներքինը՝ ավելի ցածրադիր մի սարահարթի վրա։ Բնականից խիստ պաշտպանված տեղանքը կարիք ուներ լոկ առանձին հատվածներում լրացուցիչ բերդավոր պարիսպների։ Դեպի դղյակի առավել անառիկ մասը տանում էին հաջորդաբար բացվող հինգ դարպասները[36]։

Կիլիկիայի անառիկ ամրոցներից էին նաև Օձաբերդը, Բարձրբերդը, Կանչիբերդը, Թոմլուբերդը, Վահկան, Պապեռոնը, Սեհունը, Թիլ-Համդունի բերդը, Լևոնկլան, Կամ-Կալեն և այլն, որոնք կարևոր ռազմավարական նշանակություն ունեին երկրի պաշտպանության համար։

---

36 Տե՛ս նույն տեղում։

ԳԼՈՒԽ ՀԻՍՈՒՆՋՈՐՍԵՐՈՐԴ

# ԱՐՎԵՍՏ

*Հայ արվեստը զարգանում էր ճարտարապետական արվեստի, ինչպես նաև արհեստների հետ կապակցված, բաց և ինքնուրույն ճանապարհով, տալով նշանավոր ստեղծագործություններ՝ քանդակագործության, որմնանկարչության, մանրանկարչության, կիրառական արվեստների, երաժշտության և այլ բնագավառներում։*

## 1. ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

*Ճարտարապետական հուշարձանների դեկորատիվ հարդարման ծաղկումը, ինչպես և հազարավոր նրբակերտ խաչքարերի պատրաստումը մեծապես նպաստեցին քանդակագործության զարգացմանը։ Դեկորատիվ սկզբունքի լայն կիրառումը նպաստեց բուսական, մանավանդ երկրաչափական զարդաքանդակների մանրացմանը։ Ստեղծվեցին տեխնիկագործական նրբությամբ բարդ ու ներդաշնակ ոճով հուշարձաններ։*

*Բարդ հյուսվածքավոր և բազմազան մոտիվներով զուգորդվող զարդանախշերը ոճական ու գաղափարական միասնության են ցուցաբերում ձեռագրերի ծաղկազարդման արվեստի հետ։ Զարդապատկերային այս նոր արվեստը դրսևորվում է կառուցվածքների շքամուտքերի, պատուհանների և հատկապես ճակատային հարթությունների դեկորատիվ հարթաքանդակներում։*

*Քանդակը, կապված լինելով ճարտարապետության հետ, ենթարկվում է նրա ընդհանուր սկզբունքներին՝ նպաստելով կառուցվածքի կերպարային լուծումներին։ Այսպես են, օրինակ, Տիգրան Հոնենցի կառուցած և Բախտաղեկ կոչված եկեղեցիներն Անիում, Գեղարդավանքը, Մակարավանքը, Մարմաշենը, Նոր-Գետիկը (Գոշավանքը), Կեչառիսը և այլն[1]։*

---

[1] *Токарский Н. М.*, Архитектура Армении IV—XIV вв., Ереван, 1961.

Բացի զարդաքանդակներից, ինչպես և պաշտամունքային բովանդակություն ունեցող խմբաքանդակներից, երբեմն պատկերված են նաև հայտնի պատմական անձնավորություններ։ Դրանցից հիշատակության արժանի են Զաքարե և Իվանե եղբայրների կտիտորական բարձրաքանդակները՝ Հառիճավանքի եկեղեցու արևելյան ճակատի խորշում։



Անիի Տիգրան Հոնենցի եկեղեցու քանդակներից

XIII դարի քանդակագործության հետաքրքիր հուշարձաններից է Գանձասարի (Լեռնային Ղարաբաղ) եկեղեցու (1216) դեկորատիվ հարդարանքը։ Առանձնապես ուշագրավ են գմբեթի թմբուկի պատկերաքանդակները, որոնց աշխարհիկ և կրոնական թեմաները միահյուսող ամբողջ ցիկլը կազմում է որոշակի համակարգ։ Այսպես, արևմտյան ճակատի պատկերագրական ինքնատիպ կառուցվածքով ներկայացված են խաչելության տեսարանը, Ադամի և Եվայի քանդակները, որոնք արտահայտելով հոգու փրկության գաղափարը. միաժամանակ շաղկապված են կտիտորական քանդակների հետ։ Այստեղ ներկայացված են Հասան Ջալալն ու իր որդին՝ եկեղեցու մոդելը ձեռքերին, ապա՝ իշխանուհիներ, իշխանական տոհմի ներկայացուցիչներ և այլ անձինք։ Իրենց հորինվածքով և գաղափարական բովանդակությամբ այս քանդակները սերում են Աղթամարի, Հաղբատի, Անիի Գագիկ Բագրատունու կտիտորական քանդակներից։ Իրավամբ, Գանձասարը ճարտարապետության ու քանդակագործության շաղկապվածության մի փայլուն օրինակ է։

Ուշագրավ հուշարձաններից են նաև Աղչոց (ներկայիս Աբովյանի շրջան) ս. Ստեփանոս վանքի Պողոս-Պետրոս եկեղեցու (1270) քանդակները։ Դրանք տեղադրված են եկեղեցու դռան աջ և ձախ կողմերում և պատկերում են Պողոս-Պետրոս առաքյալներին։ Այս քանդակները, որպես պատկերագրական նմուշներ, եզակի են հայկական միջնադարյան քանդակագործության մեջ։

Դրանք թեև իրենց ոճական առանձնահատկություններով դուրս չեն ժամանակի ընդհանուր ըմբռնումներից, բայց յուրովի նախապատրաստում են հետագա շրջանի՝ մասնավորապես Սյունիքի քանդակագործական հուշարձանների ոճական ուղղությունը։

Ճարտարապետական հուշարձանների դեպի վեր ձգվածության սկզբունքին համապատասխան առանձնակի նշանակություն է ստանում հուշարձանի դեկորատիվ հարդարանքը։ Գծային հյուսվածքավոր ձգված խաչերը ծածկում են շենքերի ճակատային հարթությունները, պատուհանների պարակալները (Արփա, Սպիտակավոր, Ամաղու-Նորավանք, Եղվարդ և այլն)։

Առավել աչքի ընկնող երևույթը՝ շքամուտքերի ձևավորումն է, որն ստանում է առանձնակի հնչեղություն։ Շքամուտքերի ճակատաքարերի (բարավորների) վրա զետեղվում են պատկերագրական հետաքրքրություն ներկայացնող քանդակներ։ Այս շրջանում որոշակի նշանակություն են ստանում դամբարան-եկեղեցիները, դրանով իսկ պայմանավորվում է ոչ միայն ճարտարապետական կառուցվածքային բնույթը, այլև պատկերաքանդակների թեմատիկ բովանդակությունը (Ամաղուի-Նորավանքը, Եղվարդը և այլն)։

XIII—XIV դարերի սահմանագլխում Սյունիքում կառուցվում են եկեղեցիներ ու վանքային համալիրներ, որոնց շքամուտքերի քանդակները, իրավամբ, պետք է համարել հայկական միջնադարյան մշակույթի փայլուն էջերից մեկը։ Այստեղ արդեն դեկորատիվ հարդարանքը, ճարտարապետական հորինվածքին համարյա հավասարազոր նշանակություն ու արժեք է ստանում, իսկ տաճարի կերպարային լուծումն ամբողջականանում է քանդակների ու ճարտարապետական ձևերի զուգորդման մեջ։ Դրանցից հնագույնը 1261 թ. կառուցած Ամաղու-Նորավանքի ս. Կարապետ եկեղեցու Օրբելյան իշխանների տոհմական դամբանատան գավթի կամ ժամատան քանդակներն են։ Շքամուտքի վրա պատկերված է Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին։ Դրանցից վերև Տիրակալի կիսանդրին է՝ Ադամի գլուխը ձեռքին, ձախ կողմում քանդակված է խաչելության տեսարան։ Այս հորինվածքը հազվագյուտ պատկերագրական նմուշ է, որը չի հանդիպում մյուս ժողովուրդների արվեստում։

Արենիի (Արփա) 1321 թ. կառուցված եկեղեցու արևմտյան մուտքի կիսակամար բարավորի վրա Մոմիկը քանդակել է գահավորակին բազմած Տիրամոր պատկերը՝ մանուկ Հիսուսը գրկին։ Եկեղեցու ներսում, գմբեթակիր առագաստների վրա, քանդակված են ավետարանիչների խորհրդանիշերը։ Հավանաբար նույն՝ 1321 թ. է կառուցվել նաև Եղեգնաձորի Սպիտակավոր ս. Աստվածածին եկեղեցին, որի շքամուտքի ճակատի քարի վրա նույնպես քանդակված է Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին։ Եկեղեցու ներսում, գլխավոր խորանի վերևում, քանդակված է Քրիստոսը, իսկ գմբեթում՝ Քրիստոսն ու ավետարանիչները։ Առանձին բեկորներով պահպանվել են «բարեխոսի» (Դեիսուս) պատկերագրական սխեմա ներկայացնող խմբաքանդակից որոշ հատվածներ։ Սպիտակավորի քանդակների մեջ ուշագրավ են աշխարհիկ բովանդակություն ունեցող քանդակները։ Հյուսիսային պատի ճակատին է եղել Էաչի Պռոշյանին ու նրա ավագ որդուն՝ Ամիր-Հասանին պատկերող խմբաքանդակը։ Այդտեղ Էաչին նստած է ձեռքին՝ կտիտորական քանդակներին բնորոշ եկե-

ղեցու մոդելի փոխարեն՝ աղեղ։ Կողքին՝ Ամիր-Հասանն է։ Եկեղեցու մոդելի բացակայությունը նշում է քանդակի գաղափարական բովանդակության տար-



**Պետրոս Առաքյալի բարձրաքանդակը, Աղջոց վանք**

բերությունը նախորդ շրջանի կտիտորական քանդակներից։ Պահպանվել է նաև Ամիր-Հասանին որսի ժամանակ պատկերող քանդակը։



Գեղարդի եկեղեցու քանդակազարդ մուտքը

Իր քանդակագործական հարդարանքով առավել ամբողջական է Ամաղու-Նորավանքի 1339 թ. Բուրթել իշխանի կառուցած երկհարկանի դամբարան-եկեղեցին։ Առաջին հարկի մուտքի ճակատակալ քարի վրա քանդակված է դարձյալ Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին, Գաբրիել և Միքայել հրեշտակապետների միջև։ Երկրորդ հարկի շքամուտքի ճակատաքարի վրա քանդակված է Քրիստոսը՝ Պողոս և Պետրոս առաքյալների միջև։ Աբսիդի գմբեթում աղավնակերպ Սուրբ Հոգին է և Տիրամայրը՝ հրեշտակների միջև։

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում նաև եկեղեցու գմբեթակիր սյուների վրա եղած քանդակները։ Դրանցից պահպանվել են Տիրամայրը գահի վրա՝ Հիսուսը գրկին, ապա հավանաբար Բուրթել իշխանը՝ եկեղեցու մոդելը ձեռքին և մի այլ պատկեր, երկար հագուստով, մեջքին՝ լայն գոհարազարդ գոտի, գլխին՝ խույրաձև գլխարկ (հավանաբար հոգևորական է)։ Այստեղ փաստորեն գործ ունենք սովորական դարձած կտիտորական խմբաքանդակ ներկայացնող հորինվածքի հետ։ Անշուշտ, Տիրամոր քանդակով սյունը կենտրոնականն է, իսկ խնդրատուի դիրքով պատկերված եկեղեցու հովանավոր իշխանները տեղավորված են եղել դրա երկու կողմերին։ Այսպիսով, երեք առանձին քանդակներ շաղկապվելով իրար հետ ներկայացնում են կտիտորական հայցվորների։ Ի տարբերություն նախորդ շրջանի կտիտորական քանդակների (Աղթամար և այլն), որտեղ հայցվորը դիմում է Քրիստոսին, այստեղ ընդգծվում է Աստվածածնի բարեխոս լինելու հանգամանքը։



Ամիր Հասանը որսի ժամանակ

Եկեղեցու արևմտյան ճակատի մուտքը շրջապատող և ճակատային հարթության սոսկ դեկորատիվ նշանակություն ունեցող բարակ սյուներն ու կամարները, նրբագույն զարդանկարները, երկրորդ հարկը տանող երկկողմանի աստիճանները և վերջապես մուտքերի ճակատաքարերի հոյակապ խմբաքանդակները ներկայացնում են ոճական ու հորինվածքային կուռ միասնություն։ Ճարտարապետական ու դեկորատիվ նշանակություն ունեցող առանձին էլեմենտների և համամասնությունների զարմանալի ներդաշնակ հարաբերակցու-



Մոմիկի քանդակած խաչքարը, Նորավանք

թյունը հուշարձանը դառնում է միջնադարյան արվեստի դասական նմուշներից մեկը։ Բացի այդ, ոճական ինքնատիպության ու տեղական առանձնահատկությունների ամբողջականությունը հնարավորություն է տալիս խոսելու ոչ միայն Սյունիքի գեղարվեստական ու ճարտարապետական որոշակի դպրոցի մասին, այլև վեր հանելու առանձին վարպետների ինքնատիպ գործունեությունը։ Դրանցից հատկապես նշանավոր է Մոմիկ վարդպետը։

Շնորհալի գրիչ և մանրանկարիչ, ճարտարապետ ու քանդակագործ Մոմիկը ապրել է Սյունյաց աշխարհի Վայոց Ձորում։ Նրա մասին ստույգ հիշատակություններ ունենք 1282—1321 թթ. մեզ հասած մատենագիր և վիմագիր հուշարձաններում։ Մոմիկի բարձր տաղանդի արգասիք են Արենի (Արփա) գյուղի ս. Աստվածածին եկեղեցին ու թերևս Նորավանքի Բուրթելաշեն երկհարկանի փառահեղ դամբարան-եկեղեցին՝ իրենց բարձրարվեստ պատկերաքանդակներով։ Նորավանքում պահպանվել են նաև Մոմիկի ձեռակերտ հոյակապ խաչքարերը։ Նրա բազմակողմանի ստեղծագործությունը կազմում է միջնադարյան հայ մշակույթի նշանավոր էջերից մեկը։

Հայկական միջնադարյան մշակույթի յուրահատուկ արտահայտությունները՝ խաչքարերը XII—XIV դարերում ավելի լայն կիրառություն ստացան, առաջացնելով նոր տիպեր և քանդակագործական արվեստի իսկական գլուխգործոցներ[2]։ Այս շրջանում խաչքարերը հաճախ զարդարում էին ճարտարապետական խոշոր կառույցները, դրվում են նաև երկթեք տանիքով խորշաձև մատուռանման կառույցի մեջ առնված խաչքարեր։

Խաչքարերն ուշագրավ են նաև իրենց վիմագիր արձանագրություններով, որոնք պարունակում են հուշարձանը ստեղծելու ճիշտ ժամանակի, քարակոփ վարպետի, հուշարձանը կանգնեցնելու նպատակի մասին ստույգ տեղեկություններ։

Նախորդ շրջանի խաչքարերի պարզ քանդակները ավելի ու ավելի բարդանում են, ճոխանում, բուսական ձևերն ավելի են ոճավորվում, երկրաչափական ձևերը հասնում են վերին աստիճանի բարդ, միաժամանակ հիացմունք առաջացնող նրբին ու արտահայտիչ հորինվածքների, որոնք աչքի են ընկնում անկրկնելի բազմազանությամբ։

Թե խաչքարերի զարդաքանդակային արվեստը ինչպիսի բարձր կատարելության է հասել XII—XIII դարերում՝ վկայում են Սանահնի, Հաղպատի, Գեղարդի և ուրիշ վայրերի շատ խաչքարերը։ Գոշավանքի քանդակագործ Պավղոսի (1291) ու Նորավանքի Մոմիկ վարդպետի պատրաստած խաչքարերը քարի վրա գեղարվեստական փորագրության իսկական գլուխգործոցներ են։

Խաչքարերի գեղարվեստական ձևավորումը չի սահմանափակվում միայն զարդապատկերային մոտիվներով։ Հաճախ խաչքարերի վերին մասում քանդակվում է թեմիկ պատկերներ։ Դրանցից նշանավոր է Հաղպատի փոքր գավթի 1273 թ. վանքի առաջնորդ Հովհաննեսի, Թումանյանի 1281 թ., Վարամ վարդապետի ձեռակերտ խաչքարերը և այլն։ «Քարագործ», «կազմող», «յօրինող»,

---

[2] L. Azarian, Khatchkar, Milano, 1969, Լ. Ազարյան, Հայկական խաչքարեր, Էջմիածին, 1973։

ագծող» և այլ կոչումներով հայտնի վարպետները քանդակել են հազարավոր խաչքարեր՝ թողնելով մի հարուստ և բարձրարվեստ ժառանգություն։



Ուքանանց իշխանական տան դամբարանի խաչքարերից, Հաղբատ



Գոշավանքի խաչքարը, քանդակագործ Պավղոս

## 2. ՈՐՄՆԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

Ճարտարապետության և դրա հետ սերտորեն կապված գեղանկարչության զարգացման հիմնական օջախը հանդիսացավ Անին[3]։ Այնտեղ պատկերազարդվում էին ոչ միայն նորակառույց տաճարները, այլև հները։ Անիում

[3] *Н. Марр*, Ани, *նույնի* Фресковое изображение парона Хутлу-Буги в Ахпате («Христианский восток», т. I, вып. III). *Дурново Л. А., նշված աշխատ.., էջ 32—33։*

որմնանկարներով են զարդարվել նաև աշխարհիկ շինությունները ու պալատները։ Միջնաբերդի պալատական համակառույցի պեղումներից հայտնաբերվել են XII—XIII դարերին վերաբերող որմնանկարչության առանձին բեկորներ՝ հեծյալների խմբի, բարձրաստիճան անձնավորությունների, ինչպես և ծաղիկների պատկերներով։ XII դարում նորոգվում և հավանաբար այդ ժամանակ էլ որմնանկարներով զարդարվում է 1036 թ. կառուցված Փրկչի եկեղեցին։ Ութ խորան ունեցող, շրջանաձև հատակագծով այդ եկեղեցին ամբողջովին ծածկված է եղել որմնանկարներով։ Պահպանվել է նկարիչ վարպետի՝ Սարգիս Փառշիկի անունը։ Գլխավոր խորանում պատկերված է Փրկիչը՝ հրեշտակներով շրջապատված։ Պահպանվել են նաև ավետարանիչների պատկերներ և խորհրդավոր ընթրիքը ներկայացնող որմնանկարներ։ Սարգիս Փառշիկն իրեն նկարել է Մատթեոս ավետարանիչի առջև ծնկաչոք և թողել է հայերեն մակագրություն։

Անիի, ինչպես և ընդհանրապես ժամանակի հայկական գեղանկարչության մասին համեմատաբար ամբողջական պատկերացում են տալիս Տիգրան Հոնենցի միջոցներով 1215 թ. կառուցած Գրիգոր Լուսավորիչ եկեղեցու որմնանկարները։ Ինչպես եկեղեցին, այնպես էլ գավիթը ամբողջովին ծածկված են եղել որմնանկարներով։ Գմբեթի վրա ներսից պատկերված է համբարձման տեսարանը, իսկ թմբուկի վրա՝ երկու շարքով թևատարած սրբապատկեր (օրանտ)՝ հրեշտակների, առաքյալների և մարգարեների հետ։ Առագաստների վրա պատկերված են եղել ավետարանիչները։ Գլխավոր խորանում (աբսիդ)՝ Հայցվորի (դեիսուս), Հաղորդման տեսարանները, իսկ դրանից ցած՝ սրբերի պատկերները։ Ողջ արևմտյան պատը ծածկված է եղել Գրիգոր Լուսավորչի և Տրդատ Թագավորի կյանքը պատկերող դրվագներով (Տրդատը դատում է Գրիգոր Լուսավորիչին։ Գրիգոր Լուսավորիչն օրհնում է Տրդատին և այլն)։

Արվեստի տեսակետից հետաքրքիր են նաև գավթի որմնանկարները։ Այստեղ Երկրորդ գալստյան տեսարանը ներակյացնող պատկերագրական ինքնատիպ հորինվածքի հետ մեկտեղ պատկերված են խաչից իջեցման և ողբի տեսարանները։

Եկեղեցին, հավանաբար, հայ քաղկեդոնական է, հանգամանք, որը պայմանավորել է որմնանկարների ընդհանուր բնույթը և անդրադարձրել հատկապես Տրդատի ու Գրիգոր Լուսավորչի կյանքին նվիրված տեսարանների վերարտադրման վրա։ Բանն այն է, որ Գրիգոր Լուսավորչի մասին զրույցը (ինչպես նշել է Ն. Մառը) այստեղ ներկայացված է քաղկեդոնական տարբերակով, որի համաձայն Գրիգորը հանդես է գալիս ոչ միայն որպես հայերի, այլև աբխազների, վրացիների ու աղվանների լուսավորիչ։ Դրվագներից մեկում նա պատկերված է այդ երկրների թագավորների ուղեկցությամբ։

Անիում որմնանկարչության առանձին բեկորներ հայտնաբերվեցին նաև 1892 թ. պեղված Բախտաղեկի եկեղեցում։ Դրանք արված են եկեղեցու հետագա վերանորոգման ժամանակ, թերևս XIII—XIV դդ.։ Եկեղեցու թմբուկի վրա եղել են մարգարեների, իսկ առագաստում՝ ավետարանիչների նկարները։ Արևելյան կամարի վրա պատկվերված են եղել հրեշտակապետներ Միքայելը և Գաբրիելը։ Կամարներին և կիսասյուներին եղել են սրբերի ու եկե–

ղեցու հայրերի պատկերներ։ Պեղումների ժամանակ հայտնաբերվել են. նաև Քրիստոսի, այսպես կոչված՝ «անձեռակերտ» պատկերը (պետք է ենթադրել, որ այն տեղադրված է եղել գմբեթում), ավետման տեսարանը և հատվածներ ծննդյան տեսարանից։ Այս որմնանկարները հետաքրքրություն են ներկայացնում նաև ոճական ու գունային հարաբերությունների ինքնատիպությամբ և աղերս են ցուցաբերում XI—XII դդ. բյուզանդական որմնանկարչության հետ։



Տրդատի շքերթը վրաց և աբխազաց թագավորների հետ, որմնանկար Անիի Տիգրան Հոնենցի եկեղեցուց

Ի դեպ, Զաքարյանների շրջանի հայկական որոշ հուշարձանների որմնանկարչությունը մեծ ընդհանրություններ ունի վրացական և բյուզանդական արվեստի հետ։ Դա արտահայտվել է ոչ միայն որմնանկարների վրա եղած վրացերեն արձանագրություններով (Տիգրան Հոնենցի եկեղեցի, Կիրանց, Ախթալա), այլև ոճական ակնառու ընդհանրություններով։ Այդ տեսակետից ուշագրավ են Ախթալայի որմնանկարները, որոնք արտահայտել են բյուզանդական արվեստի և տեղական (քաղկեդոնական) սովորույթների արձագանքները։

Ախթալայի որմնանկարները երկու շերտ ունեն։ Առաջինը, որը ավետարանային բազմաթիվ տեսարաններով ու սրբերի կյանքը պատկերող դրվագներով ծածկում է ամբողջ տաճարը, վրացերեն արձանագրություններով ու ոճով ընդհանրություն է ցուցաբերում վրացական արվեստի հետ։ Վերին շերտը, որը պահպանվել է գլխավոր խորանում, պատկերում է գահին բազ-

ման Տիրամայրը՝ մանուկ Հիսուսը գրկին, ինչպես նաև Հաղորդման տեսարանը, մարգարեների և առաքյալների պատկերները, ուղեկցում է հունարեն ար-



Խուրլու Բուղա, որմնանկար Հաղբատից

ձանագրություններով և մերձենում է բյուզանդական արվեստին։ Այս նույն շրջանին են վերաբերում նաև Քոբայրի (Ալավերդու շրջան) քանդված եկեղեցու արևելյան խորանում պահպանված որմնանկարների ու Հաղբատի տաճա-

րի հարավային պատին պահպանված հոգեգալստյան տեսարանը և Պարոն Խութու Բուղայի (1313—1314) պատկերը։

Եթե Իջևանի շրջանում գտնվող Կիրանց եկեղեցին իր ճարտարապետությամբ և որմնանկարներով անմիջականորեն առնչվում է հայ քաղկեդոնական շրջանների մտածողության հետ, ապա ժամանակի հուշարձանների թվում առանձնակի տեղ են գրավում Կիրանցից ոչ հեռու գտնվող Առաքելոց եկեղեցու որմնանկարները։ Եկեղեցու հյուսիսային պատին պատկերված է հեծյալ՝ երեխան գրկին, հավանաբար ս. Սարգսի կյանքից մի հատված։ Գլխավոր խորանում գահին բազմած Տիրամայրն է՝ մանուկ Հիսուսը գրկին։

XIV դարի սկզբներին պետք է վերագրել Արցախի Դադի վանքի որմնանկարները։ Եկեղեցին կառուցել է իշխանուհի Արզու խաթունը 1214 թ.։ Որմնանկարները, սակայն, կատարված են 1312 թ. վերանորոգման ժամանակ։ Այստեղ հարավային պատին պահպանվել են մի սրբի, Քրիստոսի և Աստվածածնի պատկերները։ Հյուսիսային պատին նկարված է Ստեփանոսի քարկոծման տեսարանը։

## 3. ՄԱՆՐԱՆԿԱՐՉՈՒԹՅՈՒՆ

Հայ մանրանկարչությունը նախորդ դարերի համեմատությամբ XII դարի վերջին քառորդում և հատկապես XIII դարում մեծ վերելք ապրեց[4]։ Դրան խթան հանդիսացան բուն Հայաստանում ստեղծված տնտեսական, քաղաքական նպաստավոր պայմանները և հատկապես Կիլիկյան հայկական պետության ամրապնդումն ու զարգացումը։

Հայ ժողովրդի պատմության այս շրջանն ընդհանրապես նշանավորվում է համազգային մշակույթի բարձր վերելքով։ Դրա լավագույն արտահայտություններից է գրքային գեղանկարչությունը։ Առաջանում են մի քանի գեղանկարչական դպրոցներ ինչպես բուն Հայաստանում, նույնպես և Կիլիկիայում, որտեղ հայ մանրանկարչությունն իր փայլուն հաջողություններն է ունենում[5]։

Կիլիկիայում ստեղծված գրքի ձևավորման արվեստը յուրահատուկ տեղ ունի նաև միջազգային առումով։ Կիլիկիայում գրված և մեզ հասած ձեռագրերի մեծ քանակը վկայում է, թե որքան կարևոր նշանակություն էր տրվում ձեռագրերի ստեղծմանը, հավաքմանն ու պահպանմանը։ Ձեռագրերի հիշատակարանները վկայում են, որ Ներսես Շնորհալու, Ներսես Լամբրոնացու, Հովհաննես Արքայեղբոր, Թագուհի Կեռանի, Հեթում Բ-ի, կաթողիկոս Կոստանդինի, Սմբատ Սպարապետի և այլոց պատվերով գրված ու պատկերազարդված են շատ մատյաններ, որոնք իրենց բարձրարվեստ մանրանկարներով և թանկարժեք կազմերով հարստացրել են բարձր խավի ներկայացուցիչների գրադարանները։

---

4 Տե՛ս «Հայկական մանրանկարչություն», ներածական հոդվածը և նկարների բացատրությունները Լ. Ա. Դուռնովոյի, Երևան, 1969։

5 Տե՛ս Լ. Ազարյան, Կիլիկյան մանրանկարչությունը XII—XIII դդ., Երևան, 1964։

*XII դարի երկրորդ կեսից և XIII դարում ձևավորվում են Դրազարկի, Սկևռայի, Ակների, Գռների, Բարձրբերդի և հատկապես Հռոմկլայի մանրանկարչական դպրոցները, որտեղ աշխատել են բազմաթիվ նկարիչներ՝ Գրիգոր Մլիճեցին, Կոստանդինը, Վարդանը, Կիրակոսը, Հովհաննեսը, Թորոս Ռոսլինը, Սարգիս Պիծակը և ուրիշներ։*

*Վաղ շրջանի կիլիկյան մանրանկարչությունն, ըստ էության, վերարտադրում է բուն Հայաստանի մանրանկարչության սովորույթները։*



Մանրանկար 12-րդ դ. 1-ին կես, Կիլիկիա

*Հիմք ունենալով ազգային հարուստ ավանդույթները և օգտագործելով հարևան երկրների, մանավանդ, բյուզանդական արվեստի նվաճումները, Կիլիկիայի նկարիչներն ստեղծում են գրքի գեղարվեստական ձևավորման առանձնահատուկ ոճ, որին բնորոշ են նրբագեղ պլաստիկ ձևերն ու գունային ակնահաճո համադրությունները։ Այդ ամենը հարդարանքին հաղորդում են արտակարգ հմայք։ Խորանները հեռանում են իրենց ճարտարապետական-կառուցվածքային բնույթից։*

*Կիլիկյան մանրանկարիչների մոտ բարձր զարգացման է հասնում զարդանկարչությունը, որը խիստ բազմազան է և երբեք չի կրկնվում։ Պատկերագրությունը, չնայած հիմնականում մնում է կանոնիկ սխեմաների շրջանակներում, սակայն, ընկալում է նաև այնպիսի նորություններ, որոնք դուրս են գալիս միջնադարյան պատկերագրության ընդունված շրջանակներից։*

*Լամբրոնյան իշխանների հոգևոր կենտրոն Սկևռան XII դարի երկրորդ կեսից դարձավ կիլիկյան մանրանկարչության նոր ոճի հիմնական օջախներից մեկը։ Մեզ հայտնի են Սկևռայում աշխատող երեք մանրանկարիչներ՝ Վարդանը, Կոստանդինը և Գրիգոր Մլիճեցին։ Վարդանի ստեղծագործություն-*

ները չեն պահպանվել։ Կոստանդինի աշխատանքներից հայտնի է Վենետիկի Մխիթարյանների մատենադարանում գտնվող 1193 թ. ավետարանը՝ նկարազարդված Ներսես Լամբրոնացու և նրա եղբոր՝ Հեթումի համար։ Ավելի մանրամասն գիտենք Գրիգոր Մլիճեցու մասին, որի անվան հետ է կապվում չորս կամ հինգ ձեռագիր։ Նրա գործերից ամենանշանավորը պետք է համարել Երևանի Մատենադարանում պահպանվող 1173 թ. Գրիգոր Նարեկացու «Մատյան ողբերգության» երկի պատկերազարդումը։ Ձեռագիրը գրվել և պատկերազարդվել է Ներսես Լամբրոնացու պատվերով։ Այս ձեռագիրը բացառիկ է, քանի որ այն ոչ միայն Գրիգոր Նարեկացու «Մատյանի» մեզ հասած հնագույն օրինակն է, այլ կրում է Գրիգոր Նարեկացուն պատկերող մանրանկարներ։ Գրիգոր Մլիճեցին Գրիգոր Նարեկացուն պատկերել է չորս անգամ տարբեր մեկնաբանություններով. Նարեկացին՝ փիլիսոփա, Նարեկացին՝ աղոթող, Նարեկացին՝ ճգնավոր և վերջին մանրանկարում Նարեկացին՝ Քրիստոսից օրհնվելիս։ Նարեկացու բարդ անհատականության դրսևորումը նման եղանակով նոր երևույթ էր, որով էլ այդ մանրանկարները եզակի տեղ են գրավում հայկական միջնադարյան արվեստի մեջ։

XII դարի վերջին տասնամյակի կիլիկյան մանրանկարչությունը բնութագրող հուշարձաններից է նաև 1193 թ. Կոստանդին նկարչի ձեռքով պատկերազարդված Ավետարանը և 1197 թ. Գրիգոր Մլիճեցու ձեռքով ծաղկած «Լվովի ավետարանը»։ Կոստանդինը և Գրիգոր Մլիճեցին իրենց ստեղծագործությամբ կիլիկյան մանրանկարչության մեջ մի նոր փուլ բացեցին։

XIII դարն ընդհանրապես հայկական մանրանկարչության ամենածաղկուն շրջանն է, իսկ Կիլիկիայի մշակութային զարգացումը դարի երկրորդ կեսից նշանավորում է հայ մշակույթի առավել բարձր վերելք՝ համազգային ընդգրկումով։ XIII դարի երկրորդ կեսին լայն գործունեություն են ծավալում Ակների, Գռների ու Բարձրբերդի գրչատները։ Այդ վանքերի և այնտեղ ծավալված մատենական գեղանկարչության բարգավաճումը յուրովի կապվում է Հեթում Ա թագավորի եղբոր՝ Հովհաննես եպիսկոպոսի անվան հետ (մահացել է 1289 կամ 1295 թ.)։ Միայն նրա պատվերով գրվել և պատկերազարդվել են բազմաթիվ ձեռագրեր, հաճախ էլ ձեռագրերը նա ինքն էր արտագրում՝ հավանաբար և ծաղկազարդում։ Մի շարք գրիչներ ու մանրանկարիչներ Հովհաննես Արքաեղբորը համարում են իրենց ուսուցիչը։ Ինչպես երևում է, նա գլխավորել է մի ամբողջ դպրոց։ Այս խմբի կենտրոնական հուշարձաններից է Մատենադարանում պահպանվող 1266 թ. «Ժողովածուն»։ Ձեռագիրը գրվել է Բարձրբերդում, Ստեփանոս քահանայի ձեռքով՝ Հովհաննես եպիսկոպոսի համար։ Փոքրադիր այս ձեռագիրը, ամբողջությամբ վերցրած, գրքի գեղարվեստական ձևավորման մի կատարյալ օրինակ է։

Հովհաննես եպիսկոպոսի անվան հետ կապված ձեռագրերի մանրանկարները դրսևորում են գրքի հարդարման նոր ու յուրահատուկ սկզբունքներ։ Հակառակ եղած սովորույթների, երբ ավետարանը զարդարվում էր 12 խորաններով, ավետարանիչների նկարներով ու տերունական պատկերներով, Ակներում, Գռներում ու Բարձրբերդում պատկերազարդված մատյանների հիմնական հարդարանքը հանդիսանում էին առաքյալներ, մարգարեներ և այլ սրբերի կամ անձանց առանձին պատկերները։

Հռոմկլան կիլիկյան մանրանկարչության գլխավոր կենտրոնն է դառնում միայն XIII դարի երկրորդ կեսում։ Այդ կենտրոնի շնորհիվ XIII դարի 50-ական թվականներից հետո կիլիկյան մանրանկարչությունը հանդես է գալիս ընդհանուր, միասնական ոճով։

Հռոմկլայում պատկերազարդված հնագույն ձեռագիրը 1166 թ. ավետարանն է, որը բնութագրվում է որպես անցման շրջանի հուշարձան։ Այնտեղ ստեղծագործող մանրանկարիչ և գրիչ Կիրակոսի նկարազարդած 1244, 1248, 1249 թթ. ձեռագրերը վկայում են կիլիկյան մանրանկարչության մեծ առաջընթացի մասին։ Հաջորդ հուշարձանը 1253 թ. ավետարանն է՝ գրված և հավանաբար պատկերազարդված Հովհաննեսի ձեռքով։ Հովհաննեսը և Կիրակոսը հանդիսացան XIII դարի 40—60-ական թվականների կիլիկյան մանրանկարչության նշանավոր ներկայացուցիչները։ Նրանց հաջորդած մի շարք վարպետների պատկերազարդած մատյաններում հայկական մանրանկարչությունը հասավ իր բարձրակետին։ Այս շրջանում է, որ փոխվում է կիլիկյան ձեռագրերի ձևավորման բնույթը։

XIII դարի երկրորդ կեսից սկսած խորանների, լուսանցազարդերի գլխազարդերի կողքին ձեռագրերում ավելի մեծ տեղ են գրավում ավետարանական թեմաները։ Հիմնականում պահպանելով բյուզանդական պատկերագրության հորինվածքը, կիլիկյան վարպետները բազմաթիվ նորություններ են մտցնում նախապես սահմանված կառուցվածքային ձևերի մեջ, հանրահայտ թեմաներին տալով ինքնատիպ մեկնաբանություն։ Այս առումով առանձնապես պետք է նշել այսպես կոչված «8 մանրանկարիչների ավետարանը»։ Մատենադարանում պահվող այս ձեռագիրն աչքի է ընկնում ոչ միայն մանրանկարների առատությամբ, այլև նրա նկարազարդմանը մասնակցող, հավանաբար երկու սերնդի՝ մի քանի նկարիչների ստեղծագործության բարձր արվեստով։

Կիլիկյան և ընդհանրապես հայկական մանրանկարչության բարձր կատարելության օրինակներ են նաև XIII դարի 60—70-ական թվականներին վերագրվող մեկ այլ ձեռագրի մանրանկարները (Մատենադարան, № 9422)։ Այս ձեռագրի խորանները ձևավորված են անսահման երևակայությամբ, թեմատիկ մանրանկարներն օժտված են գեղարվեստական բարձր արժանիքներով։ Առանձնապես ուշագրավ է «Ավետում» մանրանկարը։ Աստվածամոր հեզանազ դիրքը, հրեշտակի թեթև ու սլացիկ շարժումը, նրբագեղ, ակնհաճո գույներն ու ողջ հորինվածքը, տեսարանին հաղորդում են այնպիսի քնարական տրամադրություն, որը վայել է իտալական վաղ վերածննդի խոշոր վարպետներին։ Հիշարժան է նաև 1286 թվականի Հեթում Բ թագավորի համար գրված և պատկերազարդված Ճաշոցը։ Այս ձեռագրի բազմաթիվ մանրանկարների գեղանկարչական ձևերի թեթևությունը, զարդապատկերների արտակարգ երևակայությամբ կատարված զուգորդությունները և ձևավորման կատարելությունը վկայում են, որ գործ ունենք շատ խոշոր վարպետի հետ։

Հայկական միջնադարյան մշակույթի խոշորագույն դեմքերից է Թորոս Ռոսլինը։ Պահպանվել է նրա ձեռքով պատկերազարդված 7 ձեռագիր, որոնք ընդգրկում են 1256—1268 թթ.։ Ռոսլինի ձևավորած հնագույն ձեռագիրը, որը հասել է մեզ, «Զեյթունի ավետարանն» է։ 1256 թ. հիշատակարաններից հայտնի է դառնում, որ այդ տարիներին Ռոսլինն արդեն ինքնուրույն վարպետ

էր և ուներ օգնականներ։ Հայտնի է նաև, որ Ռոսլինի պատկերազարդած ձեռագրերը կատարվել են Կոստանդին Ա կաթողիկոսի կամ նրա մերձավորների պատվերներով։ Որ Թորոս Ռոսլինը իբրև ժամանակի ամենանշանավոր նկարիչ կապված է եղել պալատական շրջանների հետ, վկայում են Լևոն Գ




Հովհաննես Ավետարանիչ, մանրանկարը Թորոս Ռոսլինի

թագավորի երկու մանրանկար-դիմանկարները։ Առաջինում Թորոս Ռոսլինը Լևոնին պատկերել է պատանի հասակում, երբ նա դեռ թագաժառանգ էր, իսկ

*երկրորդում, որը կատարված է 1262 թ., Լևոնին պատկերել է Կեռան թագուհու հետ։*

*Թորոս Ռոսլինի մանրանկարների հիմնական առանձնահատկությունը դառնում է խորը դրամատիզմն ու վեհաշուք պաթոսը։ Ռոսլինի ստեղծագործության հիմնական ներգործող ուժը պատկերվող անձերի հոգեբանական ապրումների, ներքին լարվածության վերարտադրության մեջ է։ Սա իր հերթին բերում է կերպարների բազմազանություն և կանոնական սխեմաները խախտելու ձգտում, առաջացնելով նաև ինքնատիպ արտահայտչական ձևեր ու եղանակներ։ Կրոնական, կանոնի վերածված թեմաների հոգեբանական կողմի դրսևորումով Թորոս Ռոսլինը, որոշ առումով, դուրս է գալիս մարդու աշխարհիկ կյանքի նկատմամբ եղած քրիստոնեական գաղափարաբանության սահմանափակումներից։ Պատկերելով կանոնիկ դարձած թեմաներ, նա հասնում է կատարվող գործողության դրամատիկ էության ակնհայտ խորացման, ցուցաբերելով ներաշխարհի բացահայտման մեծ կարողություն։ Այս խնդրում նա մնում է անգերազանցելի, թերևս ոչ միայն հայկական մանրանկարչության մեջ։*

*Նորը Թորոս Ռոսլինի մանրանկարներում հանդես է գալիս ոչ միայն նախօրոք սահմանված կանոնական սխեմաներից կատարված շեղումով, կամ այդ սխեմաների մեջ նոր դրվագների մուծումով, այլև ավետարանային թեմաների ինքնուրույն մեկնաբանությամբ։ Ցուցաբերելով նման մոտեցում, Թորոս Ռոսլինը Հիսուսի մուտքը Երուսաղեմ հանրահայտ թեմայի պատկերագրության մեջ սովորական տոնական տրամադրությունը փոխարինում է վեհաշուք հանդիսավորությամբ և տագնապալից տրամադրությամբ, ասես կանխագուշակելով այն ողբերգական դեպքերը, որոնք պետք է հաջորդեին դրան։*

*1266 թ. «Մաշտոցում» Ռոսլինի վարպետությունը հասնում է իր բարձրակետին։ Կատարման թեթևությունը, աղատ ձևերը, կուռ գծանկարը խոսում են նկարչի մեծ վարպետության մասին։*

*Թորոս Ռոսլինի պատկերազարդած վերջին ձեռագիրը (1268) նրա ամենահասուն գործերից է։ Հոգեբանական ու դրամատիկական տարրերի խորացումը, մարդու աշխարհիկ էությունը սահմանափակող քրիստոնեական գաղափարաբանությունից դուրս գալու ձգտումը, նույնիսկ պատկերագրական սխեմաների պահպանման դեպքում, մնում են Ռոսլինի ստեղծագործության բնորոշ կողմերը։ 1268 թ. հետո Թորոս Ռոսլինի անունն այլևս ոչ մի տեղ չի հիշատակվում։ Հավանաբար նա մեռել է 70-ական թվականներին։*

*XIII դարի 60—70-ական թվականներին Հռոմկլայում և Սսում գործում էին մի շարք նկարիչներ, որոնք իրենց վարպետությամբ ու ինքնատիպությամբ չեն զիջում Թորոս Ռոսլինին։ Մեզ անհայտ այդ մանրանկարիչների ստեղծագործության հիմքում ընկած է գծապլաստիկ ոճը և կատարողական բարձրարվեստ տեխնիկան։ Սակայն որքան էլ կատարյալ են այդ ձեռագրերի մանրանկարները, այնուամենայնիվ դրանցում զգացվում է նախօրոք սովորած ու ամենայն ճշգրտությամբ պահպանվող կանոնիկ ձևերի կրկնություն և պալատական բարձր խավի ճաշակի ազդեցությունը։ Այս առումով, հանդիսանալով կիլիկյան մանրանկարչության բարձր զարգացման վերջնակետը, դրանք արդեն պարունակում են այն սաղմերը, որոնց զարգացման հետագա*



Մանրանկարներ Թորոս Ռոսլինի

ընթացքը պետք է հանգեցներ XIV դարի առաջին կեսի ոճին, որը ձևավորվեց Սարգիս Պիծակի ստեղծագործությամբ։

XIII դարի վերջերից և XIV դարի առաջին կեսից Կիլիկիան հայկական երբեմնի զորեղ պետությունը չկարողացավ դիմագրել օտար նվաճողների արշավանքներին և 1375 թ. դադարեց գոյություն ունենալուց։ Այդ հանգամանքներն անդրադարձան մանրանկարչության զարգացման վրա, և XIV դարի առաջին տասնամյակից սկսած այն կորցրեց իր վաղեմի ստեղծագործական ուժը։ XIV դարի կիլիկյան մանրանկարիչները սահմանափակվում էին նախօրոք պատրաստի սխեմաների վերարտադրությամբ։ Թեմատիկ տերունական մանրանկարներում այլևս չեն զգացվում վառ երևակայության այն ազատ ձևերը, այն մեծ թռիչքը, և վերջապես թեմայի ներքին էության բացահայտման ձգտումը, որոնցով այնպես հագեցված էր XIII դարի երկրորդ կեսի գրքի գեղարվեստական ձևավորման կիլիկյան արվեստը։ Չոր գծանկարը, վառ գույները, չափից ավելի ոսկու օգտագործումը, դինամիկայի բացակայությունը դառնում են XIV դարի կիլիկյան մանրանկարչության բնորոշ գծերը։ Այնուամենայնիվ, XIV դարի կիլիկյան մանրանկարչությունը, մասնավորապես զարդարվեստի, կատարողական տեխնիկայի ու էջի ընդհանուր ձևավորման բնագավառում, զգալի նվաճումների հասավ։ Այս ուղղության ամենանշանավոր ներկայացուցիչը հանդիսացավ մանրանկարիչ Գրիգոր Պիծակի որդին՝ Սարգիս Պիծակը։

Սարգիս Պիծակը հիշատակվում է 1301—1353 թթ.։ Նա հիմնականում աշխատել է Սիս մայրաքաղաքում և հավանաբար համարվել է պալատական նկարիչ։ Նրա պատկերազարդած ձեռագրերից պահպանվել են մոտ 18-ը, որոնցից մեկում պատկերված է Կիլիկիայի թագավոր Լևոն Ե դատավարության ժամանակ, իսկ մի ուրիշում՝ թագուհի Մարիունին։ Սարգիս Պիծակի մանրանկարներն ուշագրավ են իրենց չափազանց վառ գույներով, գրաֆիկական ոճով, հորինվածքի ու կատարողական ձևերի նույնատիպ կրկնություններով, ինչպես և զարդանկարչական տպավորություն ստեղծելու ձգտմամբ։ Նա մի վարպետ է, որը ժառանգել էր իր նախորդների բարձր տեխնիկական, սովորույթներն ու մասնավորապես զարդարվեստի ասպարեզում ձեռք բերած նվաճումները։ Այս ամենը իրավունք են տալիս Սարգիս Պիծակին դասելու հայկական մանրանկարչության առաջնակարգ ներկայացուցիչների շարքը՝ կիլիկյան մանրանկարիչների փայլուն համաստեղության վերջին ներկայացուցիչը։

* * *

XII դարի վերջում և XIII դարի սկզբներին, մշակույթի մյուս բնագավառներին համընթաց, գրքային գեղանկարչությունը վերելք ապրեց նաև բուն Հայաստանում։ Ստեղծվեցին մի շարք աչքի ընկնող գործեր։ 1205 թ. ստեղծված «Մշո ճառընտիր» մեծածավալ նկարազարդ ձեռագիրը, որոշ առումով, շարունակում է XI դարի մանրանկարչության սովորույթները։

Տնտեսական վերելք ապրող քաղաքներում առաջ եկած նոր մանրանկարիչները ձգտում էին արվեստի մեջ ներմուծել աշխարհիկ մոտիվներ և ավետարանական թեմաների մեջ դնել յուրօրինակ մեկնաբանություն։ Այդպիսիք



Մանրանկար Հաղբատի Ավետարանից, 1211 թ.

են մանրանկարիչ Մարգարեի ձեռքով 1211 թ. պատկերազարդված «Հաղբատի ավետարանի» մանրանկարները։ Ձեռագիրը պատվիրել են Սահակ և Առաքել եղբայրները, որոնց պատկերները տեղավորված են խորաններից մեկում։ Մեկ ուրիշ խորանի վրա Մարգարեն պատկերել է նվագող պատանի, իսկ երրորդ խորանում՝ մի աղջիկ և մի երիտասարդ։ «Քրիստոսի մուտքը Երուսաղեմ» մանրանկարում ավետարանական զրույցը, հիշեցնում է հանդիսավոր ծիսական երթ միջնադարյան մեծ քաղաքի փողոցում։



Վասակ իշխանը որդիների հետ. Թարգմանչաց ավետարանից, 1232 թ.

Բուն Հայաստանի մանրանկարչության նախորդ շրջանի ավանդույթներն իրենց հետագա զարգացումն են գտել մանրանկարիչ Գրիգորի գործերում,

որոնց թվում աչքի է ընկնում 1232 թ. նկարազարդված «Թարգմանչաց ավետարանը»։

XIII դարի վերջերին և XIV դարում հայ մանրանկարչությունը զգալի հաջողություններ է ունենում մասնավորապես Սյունիքի և Վասպուրականի գրչության կենտրոններում։ Գլաձորի և Վասպուրականի մանրանկարչական դպրոցներում ստեղծվում են այնպիսի հուշարձաններ, որոնք կրելով ընդհանուր ազգային բնույթ, միաժամանակ հանդես են բերում տվյալ դպրոցներին բնորոշ առանձնահատկություններ։

Գլաձորի մանրանկարչական դպրոցը ձևավորվեց XIII դարի վերջերին և XIV դարի սկզբներին։ Այստեղ գրվել ու նկարազարդվել են բազմաթիվ ձեռագրեր[6]։



Թարգմանչաց ավետարան, ավետման տեսարանի մասը

Գլաձորի մանրանկարչական դպրոցի առաջին ու թերևս ամենախոշոր ներկայացուցիչը Մոմիկ վարդապետն է, որի գործունեությունն ընդհանրապես նշանավորում է XIV դարի հայ մշակույթի բարձրակետերից մեկը։

Մոմիկի անվանն առաջին անգամ հանդիպում ենք 1282 թ., երբ նա Կիլիկիայի թագուհի Կեռանի համար պատկերազարդում է մի նոր ավետարան։ Հավանաբար այս վաղ շրջանում նա աշխատել է Կիլիկիայում և արդեն մեծ հեղինակություն է ձեռք բերել։ Հետագայում Մոմիկի գործունեությունը հիմնականում ընթանում է Գլաձորում, ուր 1292 թ. պատկերազարդում է մի ձեռագիր, որի մանրանկարների ոճը մեծ աղերս է ցուցաբերում քանդակագործության հետ։ Նրա լավագույն գործերից է Ստեփանոս Օրբելյանի համար 1302 թ. գրված և հոյակապ պատկերազարդված Աստվածաշունչը։

Մոմիկը յուրացրել էր կիլիկյան մանրանկարչության լավագույն ավանդույթները։ Սակայն նրան չէր հրապուրում կիլիկյան ձեռագրերի արտաքին

6 Տե՛ս Ա. Ն. Ավետիսյան, Հայկական մանրանկարչության Գլաձորի դպրոցը, Երևան, 1971։

վորյալ ուստի և նա մեքենայորեն չկրկնեց Կիլիկիայում իր տեսածն ու սովորածը։ Այդ նույն հեղինակն էր, որը, ինչպես տեսանք, իր փայլուն շնորհքը դրսևորեց քանդակագործության ասպարեզում։

Գլաձորի մանրանկարչական դպրոցի մյուս ներկայացուցիչը Թորոս Տարոնացին էր (Մշեցի)՝ Եսայի Նչեցու աշակերտը։ Դեռ 1307 թ. Թորոս Տարոնացին իր ուսուցչի համար ծաղկազարդում է մի ձեռագիր։ Սակայն նրա լավագույն գործն է Մաշտոցի անվան Մատենադարանում պահվող, դարձյալ Եսայի Նչեցու համար 1318 թ. հոյակապ պատկերազարդումով աստվածաշունչը, որի խորաններից մեկում ծաղկողը պատկերել է Եսայի Նչեցուն ու նրա աշակերտ Հովհաննես Երզնկացուն։ Այդ մանրանկարչից մեզ հասած վերջին ձեռագիրը պատկանում է 1346 թ.։

Թորոս Տարոնացին իր պատկերազարդումների ընթացքում մնալով բուն Հայաստանի մանրանկարչական սովորությունների շրջանակներում (գլխազարդերի, գլխատառերի ու բուսական մոտիվների բազմազանությամբ), դրսևորում էր նաև կիլիկյան մանրանկարչության ազդեցությունը։ Չի բացառվում, որ Թորոս Տարոնացին եղել է Կիլիկիայում և մոտիկից ծանոթացել կիլիկյան մանրանկարչության նվաճումներին։ Սակայն, օգտագործելով կիլիկյան մանրանկարչության շատ սկզբունքներ, նա վարպետությամբ լրացրել ու զարգացրել է դրանք բուն Հայաստանի մանրանկարչությանը բնորոշ գեղանկարչության ինքնատիպ ձևերով։ Թորոս Տարոնացին, միահյուսելով կիլիկյան և բուն Հայաստանի մանրանկարչության ավանդույթները, փաստորեն, ստեղծել է մի ինքնատիպ ոճ։ Նրա ստեղծագործության մեջ մաքուր զարգանկարչական տարրերի առկայությունն ու արտաքին գունային տպավորություն ստեղծելու ձգտումը (որը նրան ավելի մոտեցնում է XIV դարի սկզբների կիլիկյան մանրանկարչությանը), որոշ առումով հետին պլան են մղում երևույթների ներքին էության բացահայտումը։ Չնայած դրան, Թորոս Տարոնացու արվեստը գրավիչ է իր անկեղծությամբ ու գեղանկարչական տարրերի առկայությամբ։ Նա, հիրավի, մնում է XIV դարի հայկական մանրանկարչության խոշոր ներկայացուցիչներից մեկը։

Կիլիկյան մանրանկարչության հետ ավելի սերտ հարաբերություններ է ցուցաբերում ժամանակի մի-ուրիշ խոշոր մանրանկարիչ՝ Ավագը, որը կատարողական հստակությամբ ու վարպետությամբ, թերևս գերազանցում է Թորոս Տարոնացուն։ Հայտնի է, որ նա աշակերտել է Եսայի Նչեցուն. 1350 թ. նա արդեն վարպետ էր։ Ավագը շատ է շրջել և աշխատել տարբեր գրչատներում։ Նրա անվան հետ կապված ձեռագրերը հիմնականում պատկերազարդվել են Փայտակարանում, Կիլիկիայում, Սուլթանիայում, Օրթա-Բազարում և այլուր։ Այդ ձեռագրերի հարուստ մանրանկարները ցույց են տալիս, որ Ավագը սերտորեն կապված է պատկերագրական կանոնիկ ձևերի հետ, թեպետ առանձին դեպքերում նա հանդես է բերում բավականին ազատ դիտողականություն։ Բացի այդ, իր գործունեության վաղ շրջանում նա ավելի հակվում է [illegible]ղեալի գեղանկարչական ձևերը։ Հետագայում, հավանաբար, աշխատելով Կիլիկիայում ու կատարելագործելով իր վարպետությունը՝ պրոֆեսիոնալ առումով ավելի պահպանողական է դառնում թե տեխնիկայի բնագավառում և թե

պատկերագրական կանոնիկ ձևերում։ Նրա ստեղծագործություններում ուժեղանում են նաև գրաֆիկական տարրերը։

Ավագի մանրանկարներին, բարձր տեխնիկայի հետ մեկտեղ, բնորոշ են շարժումով հորինվածքները։ Իրենց շարժումների մեջ ազատ պատկերները արտահայտիչ են ու կենդանի։ Թորոս Տարոնացու ստեղծագործության հատուկ գեղանկարչական տարրերի առկայության հակառակ, Ավագի մոտ գերիշխում է անհանդիստ գծային ռիթմը, որը մի կողմից նրան մոտեցնում է XIII դարի վերջին քառորդի կիլիկյան մանրանկարչությանը, իսկ մյուս կողմից՝ անհանգիստ լարվածություն ստեղծելով, ընդգծում է մանրանկարի զգացողական կողմը։

Այս բոլորի հետ մեկտեղ, Ավագն առանձնանում է իր ժամանակակիցներից նաև նրանով, որ հակում է ցուցաբերում դեպի դիմանկարչությունը։ Դեռ 1329 թ. ձեռագրում հոգեգալստի տեսարանում նա պատկերել է իրեն և ձեռագրի պատվիրատուին, իսկ 1337 թ.՝ Ներսես Շնորհալուն և պատվիրատու Սարգիս եպիսկոպոսին։ 1358 թ. Աստվածաշնչում, որը փաստորեն Ավագի լավագույն գործը պետք է համարել, ծննդյան տեսարանում պատկերել է պատվիրատու Սուլխաթմիշին ու նրա կնոջը։ Կանոնիկ հորինվածքներում կոնկրետ անհատներ ներկայացնելիս, Ավագը հեռանում է մանրանկարչության հատուկ պատկերաձևից՝ ընդգծելով տվյալ կերպարի անհատականությունը։

## 4. ԿԻՐԱՌԱԿԱՆ ԱՐՎԵՍՏ

XII—XIII դարերից մեզ են հասել կիրառական արվեստի զգալի թվով առարկաներ, որոնք նշանավորում են արվեստի այս բնագավառի զարգացման նոր, ավելի բարձր աստիճանը[7]։ Այստեղ նկատվող հիմնական փոփոխությունը անցնում էր ավելի խոշոր, պարզ ու զուսպ ձևերից դեպի նկարի, մանավանդ զարդաձևերի խիստ ոճավորված, բարդ ու նրբին հորինվածքը։ Այդ կարգի բացառիկ ստեղծագործություն է Մշո Առաքելոց եկեղեցու քանդակազարդ դուռը, որն արվեստի գլուխգործոց է։ 1916 թ. այն Մուշից փոխադրվեց Անդրկովկաս և այժմ զարդարում է Հայաստանի պետական պատմական թանգարանի ցուցասրահներից մեկը։ Դուռը երկփեղկ է (չափերն են 2,02×1,42 մ), յուրաքանչյուր փեղկի վրա փորագրված է երեքական ութանիստ բազմանկյունի, որոնց կենտրոնում զետեղված է ութ թևավոր աստղ, իսկ աստղերի կենտրոնում վարդյակ՝ ութական պսակաթերթերով։ Բազմանկյունիները զուգորդված են շեղանկյունիների շղթայի հետ։ Դռան փեղկերը երիզված են մարգարտաշար զարդաշրջանակով։

Վերին աստիճանի բարձր արվեստով և հատուկ շքեղությամբ է զարդարված դռան պարակալը, որի վրա բուսական ճոխ զարդերի մեջ քանդակված են իրական և առասպելական բազմաթիվ կենդանիներ, գազաններ, այդ թվում՝ ձիեր, ցուլ, փիղ, առյուծներ, վագրեր, ավանակ, մարդագլուխ թռչուններ և այլ կենդանիներ։ Այսպիսով ստեղծվել է քառանկյունի շրջանակի մեջ իրար

[7] «Декоративное искусство средневековой Армении», стр. 45—55

Հետևից շարժվող կենդանիների ու գազանների մի ինքնատիպ հորինվածք։ Այս լայն շրջանակից ներս գտնվում է երկրորդ շրջանակը, որի վրա փորագրված են մարգարտաշարեր և բուսական զարդեր. դրանք աչքի են ընկնում իրենց նուրբ, հնարամիտ ու ճաշակով կատարված զարդամոտիվներով։



Մանրանկար 1378 թ. Ավետարանից, ավետում

Դռան պարակալի վերին մասում փորագրված են հեծյալ և հետիոտն մարդկանց պատկերներ, ինչպես և թռչուններ։ Հեծյալներից մեկը նիզակա-

հարում է նժույգի ոտքերի տակ տարածված վիշապին։ Դռան վրա փորագրված արձանագրությունից իմանում ենք, որ արվեստի այս հոյակապ ստեղծագործությունը պատրաստել են Տեր Թորոսը, Գրիգորը և Ղուկաս գծողը՝ 1134 թ.։



Մշո Ս. Առաքելոց եկեղեցու փայտե քանդակազարդ դուռը

Աչքի ընկնող գործ է նաև Սևանի Առաքելոց եկեղեցու դուռը, որը քանդակել է Հովհաննես հյուսնը 1176 թ.։ Մեկփեղկանի այս դռան վրա քանդակված է խաչ, որով այն քանդակազարդ խաչքարի տպավորություն է թողնում.

Փեղկը եզերող շրջանակի և դռան պարակալի վրա նույնպես նուրբ երկրաչափական քանդակներ են արված։



Տաթևի վանքի փայտե քանդակազարդ դուռը

Մեկփեղկանի է նաև Տաթևի վանքի դուռը, որի հորինվածքի կենտրոնը նույնպես խաչն է՝ դրված քանդակազարդ վահանից վերև։ Երկրաչափական և բուսական բարձրարվեստ, իրար չկրկնող, նուրբ քանդակներով են զարդարված ինչպես դռան փեղկը, նույնպես և պարակալը։ Տեր Հայրապետ քանդակագործ-հյուսնը 1253 թ. նորոգել է եկեղեցու դուռը, այսինքն հնի տեղ նորն է դրել, երևան բերելով գեղագիտական մեծ ճաշակ և շնորհք։

XIV դարի և էլ ավելի հին ժամանակների արվեստի հետ են կապված Ղրիմի հայկական եկեղեցիների մի քանի դռները, որոնք այժմ պահպանվում են Թեոդոսիայում և Պետական էրմիտաժում (Լենինգրադ)։

*Փայտի գեղարվեստական փորագրության բարձրարվեստ նմուշներ են նաև Անիից փրկված գրակալները։ Դրանցից մեկը 1161 թ. գործ է. նրա վերին մասի երկու կողմերին կան նուրբ երկրաչափական քանդակներ, իսկ ներքևի մասերում՝ գեղաքանդակ շրջանակների համակցություն։*




Գրակալներ 12—13-րդ դդ. Անի

*XIII դարի գրակալները (որոնցից մեկը 1272 թվականից է) նախորդների նման ունեն երկրաչափական փորագրություններ։ Ուշագրավ է վերին մասում գտնվող խաչը, որի ներքևի թևը հենվում է փորագիր շրջանակի վրա, վերջինս էլ զետեղված է առյուծի մեջքի վրա։ Խաչի թևից երկու կողմերը տարածվում են նռան ճյուղերը։*

*Անիի Բագրատունիների պալատի ավերակների մեջ գտնվել են տախտակների փայտյա կամարների մասեր, որոնց վրա պատկերված են բուսական զարդեր, կենդանիներ և թռչուններ։*

XII—XIII դարերում գիպսից զարդեր փորագրելու սովորությունը համարյա անհետանում էր, տեղի տալով կաղապարի օգնությամբ թափվող զարդերին։ Անիում գտնվել են այնպիսի զարդեր, որոնք կազմում են պատուհանի ամբողջ շրջանակներ։ Դրանք ներկայացնում են վեցանիստ բազմանկյուններից և վեցթևանի աստղերի համադրություն, որոնց արտաքին մակերեսները ծածկված են խիստ ոճավորված բուսական զարդերով։ Դվինում գտնվել են գիպսե վարդյակներից և բուսական այլ զարդաձևերից կազմվող գոտիներ, որոնք շենքերը զարդարել են ներսից։ Հանդիպում են նաև կենդանիների, գազանների ու թռչունների պատկերներով գիպսե զարդեր։ Գեղարվեստական բարձր արվեստով և ճաշակով է ձևավորված Դվինի միջնաբերդում պեղումների ժամանակ բացված մի բնակելի շենքի խորշը, զարդարված կաղապարով թափված գիպսե հոյակապ պատկերներով։ Խորշի արտաքին շրջանակի վրա պատկերված է գազանների վազք։ Բուսական զարդամոտիվների մեջ նրբին ձևերով և համաչափ զետեղված են գազանների պատկերներ՝ ութական շրջանակի ուղղահայաց կողերին, հինգ՝ վերին մասում։ Խորշի բացվածքի վերին անկյուններում եղել են մեկական թևավոր առյուծներ՝ մարդու գլխով և թագով[8]։ Դրանք կարծես հայերեն ձեռագրերի մանրանկարներից ընդօրինակված լինեն։

Դվինի այս խորշի ձևավորումը, Մշո Առաքելոց եկեղեցու դռան հորինվածքը և քանդակները, արվեստի նմանօրինակ ստեղծագործությունները և սելջուկյան փոքրասիական պետության մայրաքաղաք Կոնիայի ամենանշանավոր ճարտարապետական հուշարձանների վրա շինարար ու քանդակագործ հայ վարպետների անունների առկայությունը վկայում են այն խոշոր դերի մասին, որ խաղացել են հայ ճարտարապետներն ու արհեստավորները սելջուկյան համարված արվեստի առաջացման ու ձևավորման մեջ։

Մետաղի գեղարվեստական մշակման և ձևավորման նախկին եղանակներից XII—XIII դարերում լայն կիրառություն է ստանում ոսկեզօծումը, ոսկեգույն համաձուլվածքների ստացումը։ Միօրինակությունից խուսափելու պահանջից առաջ է գալիս հիմնական կաղապարին փոքրիկ կաղապարներ կցելու հնարանքը, որով կարելի էր ձուլելիս նույն իրի վրա տարբեր մասեր ավելացնելով այն տարբերակել մյուսներից։

Գեղարվեստական մետաղագործության հոյակապ գործ է Հաղարծնի կաթսան, որը կշռում է 350 կգ։ Կաթսայի ետ ծռված լայն շուրթի պսակի վրա փորագրված է հայերեն արձանագրություն, պատրաստման թվականի (1232) նշումով։ Կաթսան ունի չորս կանթ, որոնք ներկայացնում են առյուծների ամբողջական արձանիկներ։ Գեղարվեստական ձևավորում ունեն նաև կաթսայի ոտքերը։

Առյուծաձև կանթերով փոքրիկ կաթսա գտնվել է Դվինում։

Անիի համար բնորոշ գեղարվեստական մշակում ունի բրոնզե մի մեծ ձուլածո զանգ, որի վրա տեսնում ենք խաչի պատկեր և այլ զարդեր։

8 Տե՛ս Կ. Ղաֆադարյան, Դվին քաղաքը և նրա պեղումները, էջ 129—132։

Անիում և Դվինում հայտնաբերվել են պղնձե աշտանակներ, ջրամաններ, ճրագներ, որոնք զարդարված են դրվագմամբ կամ փորագրությամբ։ Անիում գտնված մի ջրամանի վրա, դրվագման և փորագրման եղանակով, պատկեր-



Խաչ, կաղապարով պատրաստված գիպսե պատկերներով

ված են առյուծ, հովազ, վագր, եղնիկներ, թռչուններ և այլ կենդանիներ՝ բուսական և երկրաչափական զարդերի զուգորդությամբ։ Կենդանիները և գա-

ռանները պատկերված են վազքի կամ շարժման մեջ։ Անիում գտնվել են նաև կահույքի բրոնզե ձուլածո ոտքեր՝ լուսան կենդանու գլխով։

Կիրառական արվեստի ուշագրավ գործեր են Ամբերդում գտնված բրոնզյա հավանգները, որոնց վրա հանդիպում են կենդանիների և գազանների պատկերներ, բուսական ու երկրաչափական զարդեր։ Հավանգներից մեկի 12 նիստերի վրա ձուլումից հետո քանդակված են երկրաչափական և բուսա-



Բրոնզե կաթսա, Հաղարծնի վանքից

կան նուրբ զարդեր, դրանցից ներքև՝ յուրաքանչյուր նիստի վրա՝ մի գազան։

Միջին դարերում շատ սովորական էին արծաթից, պղնձից, նաև ոսկուց պատրաստված եկեղեցական թասերը, մասնատուփերը և այլ առարկաներ։ Ոսկերիչ և արծաթագործ վարպետները երբեմն պատրաստում էին արվեստի գլուխգործոցներ։ Մեծ արժեք ունեն էջմիածնի վանքի թանգարանում պահվող XII—XIII դարերի մի քանի մասնատուփերը։

Արվեստի հոյակապ գործ է «Խոտակերաց սուրբ Նշանն» իր պահարանտուփով։ Պահարանի վրա դրվագված արձանագրությունից պարզվում է, որ այն պատրաստվել է 1300 թ. Պռոշ իշխանի թոռ Հասանի որդի Էաչիի պատվերով։ Այն արծաթից է, ոսկեջրած, չափերը 42×26,5×4,2 սմ. ունի երկու

դուռ, որոնք բացվում են կամարի տակ։ Ներսում, համապատասխան փոսի մեջ, դրված է խաչը, ընդելուզված թանկագին քարերով։ Ամբողջ պահարան-



Մասնատուփ արծաթից, 13-րդ դար

տուփը դրսից և ներսից շքեղորեն զարդարված է պատկերներով, բուսական ու ծրկրաչափական նուրբ ու բարձրարվեստ զարդերով՝ կատարված դրվագմամբ և գծագրմամբ։ Դրսից (կամարից վերև) գեղեցիկ մեդալիոնի մեջ դրվագված է Հիսուսը, նրանից աջ ու ձախ՝ մեկական հրեշտակ՝ մանկահասակ աղջիկների տեսքով։ Դռնակների վրա դրվագված են Գրիգոր Լուսավորչի և Հովհաննես Մկրտչի պատկերները, սրանցից ձախ և աջ՝ Տիրամայրը և Հովհաննես Մկրտիչը։ Տուփի ներքևի անկյուններում պատկերված են Պողոս և Պետրոս առաքյալների անդրիները, իսկ նրանց միջև՝ պատվիրատու Ճաչի իշ-

*խանի պատկերը՝ մինչև գոտին։ Դռնակների կամարի և եզրերի վրա արված են ռճավորված բուսական զարդեր և արձանագրություններ։ Դռնակները ներսից զարդարված են Միքայել և Գաբրիել հրեշտակապետների պատկերներով։ Խաչի ֆոնը հանդիսացող ոսկեզօծ հարթությունը ծածկված է բուսական զարդերով, արմավենիներով և հնգատերև՛ճյուղերով։ Խաչի ցածի թևից ներքև, ձևավորված կիսաշրջանի մեջ, պատկերված են երկու եղջերու, որոնք՝ գլուխները ետ ծռած, կրծում են իրենցից վերև գտնվող տերևները։*



**Խոտակերաց ս. Նշանն իր տուփով**

*Այս պահարանի վրա դրվագված մարդկային պատկերներն ւսրտահայտիչ են, ժամանակի արվեստին համապատասխան՝ երկարուկ, սլացիկ, զգեստների նուրբ ծալքավորումով*[9]*։*

*Միջնադարյան հայ ոսկերչության մի երկու նմուշ էլ մեզ հասել է Կիլիկյան հայկական թագավորության վարպետների գործերից։ XII դարի վերջե-*

---

[9] *Տե՛ս Գ. վ. Հովսեփյան, Խոտակերաց ս. Նշան, մի նմուշ ԺԳ դարու հայ ոսկերչության, Հրատարակություն «Գեղարվեստ» հանդեսի, Թիֆլիս, 1912, տե՛ս նաև Բ. Առաքելյան, Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում, գիրք 1, էջ 175—176։*

րի կիլիկյան մի արծաթյա թաս գտնվել է Մերձուրալյան շրջանում և պահվում է Պետական էրմիտաժում (Լենինգրադ)։ Դա բարձրարվեստ և ուշագրավ ստեղծագործություն է։ Թասն ունի ոչ բարձր ոտք, ներսից 12 շատ կանոնավոր փոսիկ, որոնց դրսից համապատասխանում են ձվաձև ուռուցիկ ելուստները։ Սրանցից վեցի վրա դրվագված են կանացի գլխով թռչուններ գրիֆոններ, առյուծներ, այլ գազաններ և թռչուններ (երկուական՝ յուրաքանչյուր ելուստի վրա)։ Մնացած վեց ելուստների վրա փորագրված են հայկական ճարտարապետության մեջ հաճախ հանդիպող աստղերի և խաչերի համադրություններ։

Հայկական արվեստին հատուկ այս պատկերների բուսական և երկրաչափական գծերից տարբեր է թասի հատակին փորագրված տեսարանը, ուր պատկերված է Դավիթ Արքան, որի տավիղի նվագը հմայված լսում են ոչ միայն Բերսաբեն այլև գազաններն ու թռչունները։ Ձվաձև վեց ելուստների աստղերի միջև փորագրված հեծյալները պատկերված են անսովոր նեղ բաճկոնակներով և առանց գլխարկի։ Թասի վրա պատկերները դրվագված են, լրացուցիչ կերպով փորագրված, ոսկեզօծված և սևադած։ Վարպետի աշխատանքն աչքի է ընկնում ճիշտ ձևերով, համամասնություններով, դինամիկայով և հիացմունք պատճառող նրբությամբ։

Կիլիկյան վարպետների ձեռքով ստեղծված մի այլ առարկա գտնվել է Ազովի ծովի ափին՝ Բերդյանսկ (այժմ Օսիպենկո) քաղաքում։ Սև ու Ազովի ծովերի ափերը առևտրական կարավանների և նավերի այցելության սովորական վայրեր էին կիլիկյան հայերի համար։ Գտնվածը մի ամբողջ գանձ է եղել, բաղկացած մի քանի առարկաներից՝ թասերից, սափորից և մի ճանապարհորդական ջրամանից։ Վերջինս պատրաստված է ծովային խեցուց և արծաթից։ Նրա վերին մասում բռնակ ծառայող արծաթե ձևավոր թիթեղի վրա դրվագված է առյուծ կամ հովազ՝ կանգնած բուսական զարդերի մեջ, գլուխը ետ ծռած. խեցու կենտրոնական մասում փորագրված է կիլիկյան թագավորների կտրած դրամ հիշեցնող մի մեդալիոն, որի վրա դրվագված է խոյ (դրամների վրայի առյուծի փոխարեն), իսկ եզրերին շրջան է կազմում հայերեն մի արձանագրություն. «Շահուկ ծառայ Աստծոյ»։ «Շահուկ»-ը հավանաբար վարպետի կամ անոթի տիրոջ անունն է[10].

Կիրառական արվեստի բնորոշ գործեր են նաև կիլիկյան դրամները և արքայական կնիքը, որոնց վրա պատկերված են թագավորների դիմանկարները և խաչագավազան կրող առյուծ։

Կիլիկյան արծաթագործ-ոսկերիչների նշանավոր ստեղծագործություններից է Սկևռայի մասնատուփը (1293 թ.), որը շքեղորեն զարդարված է սրբապատկերներով, ամբողջ հասակով պատկերված մարդկանց բարձրադիր դրվագումներով, բուսական և երկրաչափական զարդերով և հայերեն ընդարձակ արձանագրությամբ։ Գտնվում է Պետական էրմիտաժում (Լենինգրադ)։

Կիրառական արվեստի ընդարձակ բնագավառ էր գործվածքների և գորգերի արտադրությունը։ XII—XIII դարերում լայնորեն օգտագործվում էին

---

[10] *И. А. Орбели*, Киликийская серебряная чаша конца XII в., «Избранные труды», стр. 323—330

*տարբեր գույնի, այդ թվում նաև ոսկեգույն ու արծաթագույն թելեր, որոնցով հյուսում էին գույնզգույն գործվածքներ՝ պարզ շերտերով, քառակուսիներով, վանդակներով, ինչպես և բարդ ծաղկանկարներով։*

*XII—XIII դարերի համար բնորոշ է գործվածքների զարդարումը փայտյա դրոշմիչների միջոցով։ Օգտագործելով տարբեր նկար կրող դրոշմիչներ և տարբեր գույների ներկեր, կարելի էր ստանալ բազմազան ու ճոխ նկարներով գունազեղ գործվածքներ։*



**Սկևռա արծաթե մասնատուփը 1293 թ.**

*Հայերեն ձեռագրերի կազմերի աստառները՝ դրոշմազարդ (դաճածո) գործվածքներն են՝ արժեքավոր ինչպես նկարների, նույնպես և երանգների հարստությամբ և բարձր արվեստով։ Զարդերը գերազանցապես բուսական և երկրաչափական բնույթ են կրում։ Հանդիպում են նաև կենդանիների, թռչունների և մարդկանց պատկերներ։ Եկեղեցական զգեստների, մանավանդ վարագույրների վրա տպվում էին սրբապատկերներ և կրոնական ամբողջական տեսարաններ։ Գետիկի Նորակառույց վանքի համար Արզու խաթունը իր դուստրերի հետ միասին այծի նրբամազից պատրաստում է մի գեղեցիկ վարագույր՝ խորանի ծածկույթ, որի վրա ներկերի ու «քանդակակերպ նկարների» միջոցով պատկերված են եղել տեսարաններ Փրկչի կյանքից, ինչպես նաև զանազան սրբապատկերներ։ Արզու խաթունը նման վարագույրներ կամ ծածկույթներ նվիրել է նաև Հաղբատին, Մակարավանքին և Դադիվանքին*[11]*։*

---

11 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 215—216։*

Միջնադարյան հայ կինը իր շնորհքը փորձել է նաև ասեղնագործության բնագավառում։ Անիի մի քարայր-դամբարանում, որը հավանաբար Տիգրան Հոնենցի հանգստարանն է եղել, պեղվել է մանկահասակ աղջնակի գերեզման։ Գտնված է մետաքսե զգեստ՝ զարդարված ոսկեթել ձեռագործ վարդյակներով և նուրբ շղարշից գլխաշոր, որի վրա ասեղնագործությամբ պատկերված են իրար մոտեցող խրոխտ տեսքով հովազ և առյուծի կորյուն։ Աղջնակի գլխի տակի, հավանաբար, բարձի ծածկույթի վրա ասեղնագործված են թռչող թռչուններ։ Բոլոր պատկերներն էլ աչքի են ընկնում բարձրարվեստ կատարումով[12]։

Միջին դարերում մեծ համբավ հանած հայկական գորգերից մեզ հասել է ընդամենը մեկ-երկու նմուշ։ Վիեննայում պահվող գորգը, որն ունի 1202 թ. հայերեն արձանագրություն, իր ընդհանուր տեսքով ասես կրկնում է հայերեն ձեռագրերի սյունազարդ խորանները՝ կարմիր և ոսկեգույն-դեղին երանգների գերակշռությամբ։ Գորգի արտաքին շրջանակի ոսկեգույն ֆոնի վրա, ինչպես և խորանի ճակատին հանդիպում է հայկական զարդարվեստի համար բնորոշ բազմազան պարզ ու ոճավորված բուսական զարդերի մի ամբողջ համադրություն։ Կարմիր և կապույտ եռատերև ոճավորված ճյուղերով կազմված երկրորդ շրջանակը ձևավորում է գորգի կենտրոնական խորանատիպ զարդը։ Գորգի զարդերն աչքի են ընկնում հստակությամբ, նրբությամբ և երանգների շատ հաճելի ներդաշնակումով[13]։

Կիրառական արվեստի ընդարձակ բնագավառ էր նաև խեցեգործությունը։ Սովորական, առանց ջնարակի խեցեղենը հարդարվում էր կարմիր, դեղնավուն, շագանակագույն, բաց գույնի և այլ երանգների կավի շփոթ քսելու և փայլեցնելու եղանակով, երբեմն էլ ստացել են տարբեր գույնի շերտեր կամ զարդեր։ Սովորական խեցեղենի գեղարվեստական մշակման այս հին ձևերին այժմ ավելացել էր դրոշմազարդումը՝ քարե գլանաձև և կլոր կնիքների օգնությամբ։ Խեցեղենի զարդարման այս ձևը՝ առաջանալով XI դարում, XII—XIV դարերում լայն կիրառություն ստացավ։ Ամենից ավելի դրոշմազարդված են կարմիր, փայլեցրած ոչ մեծ կարասները, մանավանդ նրանց գոտիները, որոնց վրա դրոշմված են կենդանիների, գազանների և մարդկանց պատկերներ, բուսական ոճավորված զարդեր և այլ մոտիվներ։ Այդպիսի դրոշմազարդ կարասներ, առանձին դեպքերում հայերեն արձանագրությամբ, գտնվել են Դվինում, Անիում, Գառնիում, Լոռիում, Ամբերդում և այլուր։

Ջնարակած խեցեղենի զարդարման մեջ տիրապետող է դառնում տարբեր գույների համադրությունը գծագիր զարդի հետ, որը զուգ չափերով երևան գալով դեռևս X դարում, գերակշռող է դառնում XI—XIII դարերում։ Ջնարակած թասերը երբեմն զարդարվում են մարդկանց, թռչունների, կենդանիների և գազանների պատկերներով։ Իրենց արվեստով աչքի են ընկնում Անիում գտնված թասերը՝ կնոջ, սոխակների, արծվի, ցուլի, առյուծի պատկերներով։

---

[12] Տե՛ս *И. А. Орбели*, Каталог Анийского музея древностей, «Избранные труды», стр. 44—45.

[13] Տե՛ս *Alois Riegl*, Ein orientalischer Teppich vom Jahre 1202, Berlin, 1895. Տե՛ս նաև Բ. Առաքելյան, նշված աշխ., հատ. I, էջ 292—293։

Դվինում հայտնաբերված թասերը զարդարված են արագիլի, կանացի գլխով թռչունների և մարդկանց պատկերներով։

Հախճապակյա անոթների արտադրության մեջ, իբրև նորություն, երևան է գալիս վերադիր զարդը, որով անոթի մակերեսի հարթությունը սյուների գծերի միջոցով բաժանվում է մասերի, առաջացնելով լույս ու ստվերի խաղ. երբեմն էլ վերադրվում են վարդյակներ, անգամ՝ մարդկանց դիմակներ։ Հախճապակու որոշ տեսակների վրա արվում էին մարդկանց, թռչունների, սիրինների և այլ էակների պատկերներ։ Վերադիր զարդեր անելը սովորական է դառնում նաև ապակեգործության մեջ, երբեմն էլ այն կատարվում էր տարբեր գույնի ապակիների վերադրումով։



**Հովազի և Առյուծի կռվանքի ռելիեֆով ասեղնագործ պատկերներ, Անի 13-րդ դար**

Գրքերի կաշե կազմերի զարդարումը կատարվում էր ինչպես թաց կաշվի վրա արված գծագրությամբ, նույնպես և մետաղյա ձողերի (նկատները) ծայրին եղած զարդերի դրոշմների համադրությամբ։

Հայտնի են ոսկուց և արծաթից հմուտ ոսկերիչների պատրաստած բարձրարվեստ ամբողջական մետաղե կազմեր։

Այսպիսով, ֆեոդալական հասարակության՝ մանավանդ քաղաքների և քաղաքային կյանքի զարգացման շնորհիվ, ընդարձակվել էր տնտեսական, կենցաղային, կրոնական և այլ կարգի իրերի ու առարկաների արտադրությունը։ Մի շարք բնագավառներում վարպետներն իրենց արհեստը բարձրացրել էին արվեստի աստիճանին։ Այդ հանգամանքը և բնակչության տարբեր խավերի գեղագիտական ճաշակի բավականաչափ զարգացած լինելը՝ մանավանդ քաղաքներում, պայմանավորեցին կիրառական արվեստի զարգացման բարձր մակարդակ։

## 5. ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ

Հին ժամանակներից եկող հայ գեղջուկ երգ-երաժշտությունը[14] X—XIV դարերում իր զարգացման ավելի բարձր փուլն է թևակոխում։ Այս շրջանումն է, որ «վերջնականապես սահմանվում են գեղջուկ երգի ժանրերը, ինչպես և մշակվում նրա ձևերը»[15]։ Երգն իր գրեթե բոլոր տեսակների մեջ ապրում է բովանդակության խորացման, հուզականության աստիճանի բարձրացման ու հորինվածքի կատարելագործության նշանակալի ընթացք՝ կապված մնալով անցյալի լավագույն ավանդույթներին[16]։

Հայ ժողովրդական երգերի ուշ ձայնագրություններից երևում է, որ քննարկվող ժամանակաշրջանում հայ գեղջուկ երգերում առավելագույն չափով բարձրացել էր քնարական նախասկզբի դերը։ Առավել անխառն վիճակում այն դրսևորվել է բուն քնարական ստեղծագործություններում, որոնք այս շրջանում ստանում են «երգ» հատուկ անունը (ի տարբերություն գուսանական «խաղերին» ինչպես և ուսումնական հեղինակների «տաղերին»)։ Քնարականությունը ներթափանցել էր նաև գրեթե մյուս բոլոր, նույնիսկ աշխատանքային, երգերի մեջ ու խաչաձևվելով, մասնավորապես, վիպական նախասկզբի հետ, առաջ բերել վիպա-քնարական երգի ժանրը, ոչ առանց գուսանական արվեստի ազդեցության։

Գուսանական արվեստի ազդեցության հետքերն ավելի պարզ երևում են հայ գեղջուկ վիպական ստեղծագործությունների մեջ, որոնցից լոկ փշրանքներ են հասել մեզ։ «Սասնա ծռեր» դյուցազներգությունը թեև հարատևել է մինչև մեր օրերը, բայց երաժշտական տեսակետից, տարաբախտաբար, «անկման և խանգարման» վիճակում։ Մինչդեռ հնում այն պատմել են վարպետ գուսան-վիպասանները՝ գործիքային նվագակցությամբ, «թիվ» ասելով ու մեջընդմեջ երգելով ոտանավոր հատվածներ։ Հին գուսանական արվեստի ազդեցությունը շատ ավելի անաղարտ պահած վիպական հոյակապ մի երգ է «Մոկաց Միրզան»։

X—XIV դարերում ծաղկել էր նաև քաղաքային-ժողովրդական և գուսանական երաժշտությունը։ Արիստակես Լաստիվերտցին, Անիի քաղաքային ճոխ կյանքը նկարագրելիս, նշում է, թե «ուրախական երգոց և բանից միայն լինէին հանդէսք. ուր և ձայնք փողոցն և ծնծղայիցն և այլ երգեցողական արուեստիցն զլսողացն անձինս լի առնէին ուրախական բերկրանօք»[17]։

Անիին է ուղղում խոսքը Ներսես Շնորհալին, ասելով՝ «Դըստերըք քո պաճուճալի, յերգ և քընար՝ միշտ ի խաղի»։ Գրիգոր Տղան ևս քաղաքային կյանքն է ակնարկում, երբ գրում է. «Ո՞ւր բամբռասացքըն գովստին, կատակերգուքն ի ժողովին, ուր ջնարահարք երգարանին»։ Մատթեոս Ուռհայեցին վկայում է, որ հայոց զորքերը Աշոտ Բագրատունու մահից հետո (XI դար) նույնիսկ «ատեցին զարուեստս պատերազմի... սիրեցին զքարքուտ և զերգըս

---

14 Երաժշտության մասին ավելի մանրամասն տե՛ս «Լրաբեր», 1971, № 5, էջ 29—44։

15 Տե՛ս *Х. Кушнарев*, Вопросы истории и теории армянской монодической музыки. стр. 150.

16 Տե՛ս նույն տեղում, էջ 157—158։

17 Արիստակես Լաստիվերտցի, էջ 59։

*գուսանաց», որն և երկրորդում է Սմբատ Սպարապետն էլ, խոսքը մասնավորելով հայ իշխանների շուրջը։ Նույնպիսի տրամադրություններ, տարբեր ժամանակներում, ունեցել են նաև Կիլիկյան հայ զորականները, ինչպես երևում է այստեղ այցելած Մարկո Պոլոյի մի արտահայտությունից ևս։ Եվ դա հասկանալի է, քանի որ Կիլիկիայում նույնպես ունեցել ենք գուսանական զարգացած արվեստ, չխոսելով այն մասին, որ մայր Հայաստանից էլ այստեղ էին գալիս գուսանական խմբեր, որոնցից մեկի հետաքրքիր ելույթների ականատեսն է ֆրանսիացի պատմիչ և ճանապարհորդ Ժան Սիր դը-Ժուանվիլը[13]։*

*Միջնադարյան քաղաքային գուսանական երգն ու երաժշտությունը կատարելապես աշխարհիկ բնույթ ունեին, ուստի Ներսես Շնորհալին, իր դիրքի բերումով, ստիպված կարգադրում է. «ի ժամ կատարելոյ զսուրբ պըսակն՝ երգք գուսանացն լռեալ դադարեսցեն մինչև ելցեն յեկեղեցւոյն», այլապես «դիւական երգքն խառնեսցին ընդ աստուածային երգոցն»։ Հովհաննես Երզնկացին (Պլուզը) մի առիթով աշխարհիկ-գուսանական արվեստը «մարդկային» է անվանում, ի հակադրություն «աստուածայինին»։ Ակնարկելով գուսանական սիրո երգերը, թատերականացված պարերն ու խաղերը և դրանց ունկընդիր-հանդիսականներին, Մատթեոս Ջուղայեցին գըրում է. «յամենայն աւուր լկտիքն ու յանդգունքն ի քաղաքի ժողովին և ազգի ազգի աղտեղութիւն առնեն, որ երեկոյի ժամուն սայրան ասեն», այնինչ Հակոբ Ղրիմեցին «երաժշտական իմաստասէր» բազմանշանակ խոսքերով է որակում գուսաններին։*



Ոսկորե սրինգ, Դվին

*Անկախ այս հակասականությունից, իրողություն է, որ քննարկվող պատմաշրջանում, մանավանդ քաղաքային կյանքում, շատ էր մեծացել գուսանական երգ ու նվագի դերը, շատ էին լայնացել նրա ներգործության շրջանակները։ Ժանրային տեսակետից այդ երգերն իրենցից ներկայացրել են հարուստ, և իր բաղկացուցիչների մեջ հստակորեն տարանջատված մի պատկեր՝ «ողբերգականությամբ լի պանդխտության երգերից մինչև թեթևագույն տեսակի ստեղծագործությունները»[19]։*

*Հորինվել են նաև պատմական երգեր. մեզ են հասել, օրինակ, Հեթում Ա-ի որդի Լևոնի գերվելու կամ «Մսրա թալանի» առիթով հորինված երգերի խոսքերը։ Զգալի է հին ձեռագրերից քաղված, ինչպես և նորագույն ժամանակներում Ակնի շրջակայքում գրի առնված սիրո, ուրախության, գովքի, նաև լացի, պանդխտության և ուրիշ «հայրենների» կամ «անտունիների» թիվը։*

---

[18] *Jean Sire de Jounville*, Histoire de Saint Louis..., Paris, 1874, p. 286—288 (*Տե՛ս* Տիրայր Արքեպիսկոպոս, *Ցրիկ, Դիվան, Նյու-Յորք, 1952, էջ 233*)։

[19] Ք. Քուշնարյան, *նշվ. աշխ., էջ 199—200*։

Քննարկվող պատմաշրջանում բարձր զարգացման է հասնում նաև հայ գյուղական, մանավանդ ժողովրդա-քաղաքային ու ավելի՝ գուսանական գործիքային նվագը։ Այդ են վկայում նույնիսկ պրոֆեսիոնալ երգարվեստի մի ամբողջ շարք նմուշներ՝ շարականների եղանակների, տաղերի ու մեղեդիների բարդ կառուցվածքը և գործիքային ձայնակցության գեղեցիկ նմուշների առկայությունը։ Հատկանշական է, որ մեր մատենագիրները հաճախ են հիշում երաժշտական գործիքներն ու գործիքային նվագը։ Այսպես՝ Հովհաննես Երզնկացին ծանրակշիռ դատողություններ ունի «չորեքաղեան», իսկ Առաքել Սյունեցին՝ ութլարանի քնարի մասին։ Հակոբ Ղրիմեցին տալիս է գործիքային նվագի բարձրարվեստ կատարման մանրամասն նկարագրությունը։ Երաժշտական գործիքների նոր անուններ են թվարկում և՛ Հովհաննես Երզնկացին, և՛ Հակոբ Ղրիմեցին, և՛ Առաքել Սյունեցին։

Գեղջուկ ժողովրդական և քաղաքային ու գուսանական իրապաշտ արվեստի սնուցիչ հողի շնորհիվ հայ հոգևոր պրոֆեսիոնալ երգարվեստն ընդունում է նկատելի առաջադիմություն։ Վերջնականապես ձևավորվում է նրա ազգային ինքնատիպ դեմքը, հնարավորին չափով հագենում է ժողովրդա-աշխարհիկ առողջ կենսազգացողությամբ, և բարձրանում է իր դարաշրջանի երաժշտական արվեստի տեխնիկա-գեղարվեստական բարձր մակարդակին։

Դա տեղի ունեցավ երաժշտական դարավոր ժառանգության առկայության շնորհիվ։ Այս շրջանում ևս Հայաստանի բարձրագույն տիպի դպրոցներում (Սանահին, Տաթև, Անի, Նարեկա վանք) մյուս առարկաների հետ միասին ավանդվում էր երգ-երաժշտություն։ Հայտնի էին մի շարք երաժիշտներ՝ Խաչիկ Վարդապետը, Դանիել երաժիշտը, Հակոբ վարդապետ Սանահնեցին, Թեոդորոս Ալախոսիկը (որն անվանված է «մեծ երաժիշտ») և ուրիշներ։

Քննվող ժամանակներին բնորոշ է տաղերի արվեստի ծաղկումը, որը հաստատուն հիմքեր ստեղծեց երաժշտության հետագա զարգացման համար։ Տաղերին հատուկ է հուզականությունը, ոգեշունչ բարձր տրամադրությունը, տոնական հանդիսավորությունը։ Դրանք բարդ հորինվածքով բազմաճյուղ ազատ ոճի մեղեդիով երգեր են։ Տաղերը, որոնց գեղեցիկ նմուշների հանդիպում ենք Գրիգոր Նարեկացու մոտ, նախապատրաստեցին XII—XIV դարերի հայ երաժշտության նոր վերելքը, մասնավորապես երաժշտական բազմերանգության զարգացումը։ Բուն Հայաստանում բարձրագույն տիպի հին դպրոցների կողքին առաջացել էին նորերը (Նոր-Գետիկ, Մշո-Առաքելոց կամ Ղազարա վանք-դպրոցները, Գլաձորի համալսարանը), որտեղ երաժշտությունը ավանդվող գլխավոր առարկաներից մեկն էր։ Հայտնի են բազմաթիվ տեսաբան-դասախոս «փիլիսոփա» երաժիշտների և ստեղծագործող երգահանների անուններ, որոնց շարքում առանձնապես աչքի են ընկել և մեծ համբավ են հանել Հաղարծնի վանահայր Խաչատուր Տարոնեցին («այր սուրբ և առաքինի և դիտութեամբ հռչակեալ՝ մանաւանդ երաժշտական արուեստիւ»), Հովուց Թառի հայր Դլիա վարդապետը («այն որ գեղեցիկ կարգաւորեաց զպաշտօն վանից իւրոց, որպէս թէ ամենեցունց ընդ մի բերան հնչել՝ եթէ բարձր և կամ ցած», Խոր Վիրապի դպրոցի ուսուցչապետ Վարդան Արևելցին, Հովհաննես Երզնկացի Պլուզը։

